# 2008 ՄԱՐՏ 1-Ը
# ԸՍՏ *LRAGIR.AM*-Ի, *A1+*-Ի ԵՒ *ՀԵՏՔԻ*
# (10-ամեակին առիթով)

Հաւաքեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԺԵ.

ԳԱՀԻՐԷ
2018

# 2008 ՄԱՐՏ 1-Ը
# ԸՍՏ *LRAGIR.AM*-Ի, *A1+*-Ի ԵՒ *ՀԵՏՔ*-Ի
# (10-ամեակին առիթով)

Հաւաքեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԺԵ.

ԳԱՀԻՐԷ
2018

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

2008 Մարտ 1-ի յայտնի դէպքերու առաջին տասնամեակին շարժառիթով, փափաքեցայ ի համադրել երեք ընդդիմադիր առցանց լրագիրներու՝ *Lragir.am*, *Ա1+* եւ *Հետք*, հրապարակած լուրերը՝ իրենց բնագրային հարազատութեամբ։

Մարտ 1-ի ձայնը չհնչեց պաշտօնական Սփիւռքի մէջ։ Բացի լուրերու խստօրէն ընտրուած ու մաղուած մկրատումներէ, ան գրեթէ աննկատ մնաց Սփիւռքի մէջ։ Լուրերուն բնագիրները՝ զորս հարազատ բնօրինակութեամբ ամփոփուած են այստեղ, ցոյց կու տան՝ որ կատարուածը շատ աւելի լայն ու խոր էր քան սփիւռքեան պատկերումները։

Իրադարձութեան բնաբանը կը հանդիսանար 2008 Փետրուար 19-ի նախագահական ընտրութիւններուն ակնյայտ զեղծարարութիւնները։ Սերժ Սարգսեանի գլխաւոր մրցակից Լեւոն Տէր-Պետրոսեան կը մերժէ ընդունիլ յայտարարուած արդիւնքները եւ ժողովուրդին կը հրաւիրէ հանրահաւաքի։ Փետրուար 20-ին կը սկսին հանրահաւաքները՝ որոնք շուտով կը վերածուին համընդհանուր ըմբոստութեան, առանց ոչ մէկ նշոյլ ցոյց տալու յանգելու կամ տկարանալու։ Մարտ 1-ին իշխանութիւնը կը դիմէ բռնութեան եւ կը յաջողի ցրուել ցուցարարները։ Կը զոհուի տասը անձ։ Ռոբերտ Քոչարեան կը յայտարարէ արտակարգ դրութիւն։

Բայց, ամէն բանէ առաջ, ասիկա նէօլիպերալ քաղաքականութեան դէմ կատարուած ըմբոստութիւն մըն էր, հակասականօրէն իր գլուխը ունենալով այդ նոյն նէօլիպերալիզմին բոլոր նախադրեալները պատրաստած, թէեւ տակաւին Ռոբերտ Քոչարեանի միապետական դրամատիրութեան աստիճանին չհասած, Լեւոն Տէր-Պետրոսեանը։

Կը բաւէ մատնանշել, որ Մարտ 1-ը ծնունդ տուաւ աքթիւիստական կարեւոր շարժումներու, որոնք երբեմն հասան նշանակալի ձեռքբերումներու («Աքթիւիզմը Հայաստանի մէջ (2007-2012-ի առաջին կէսը)», *Զահակիր*, 27 Մարտ 2014, թիւ 1721 - 29 Մայիս 2014, թիւ 1725)։ Չխօսելու համար այլընտրանքային մտաւորականութեան մասին։

Սոյն հրատարակութիւնը Լեւոն Տէր-Պետրոսեանի պաշտպանողական մը չէ բնաւ, որուն ներքին ու արտաքին քաղաքականութիւններուն համակրող մը չեմ եղած երբեք։ Այլ Հայաստանի ներքին հասարակական շերտի մը հանդէպ ունեցած համակրութեանս արձագանգն է, շերտ մը՝ որ գիտցաւ շարժիլ՝ ձգտելու ազատագրուած մտաւոր-հոգեւոր-ֆիզիքական կեցութեան մը, որուն անհրաժեշտութիւնը տարիներէ ի վեր կը խմորուէր ու կը զարգանար։

Մարտ մէկի սփիւռքեան քննադատութիւն մը, կամ համակրութիւն մը անոր նախորդող ժողովրդական շարժումին հանդէպ, արդարեւ, փոխադարձ կարեւոր

խնդիր մը պիտի առաջադրէ: Արդեօ՞ք սփիւռքահայ միութիւններն ու կազմակերպութիւնները իրենց ղեկավարներուն եւ ժողովականներուն ընտրութեան համար կը հետեւին ժողովրդավարական սկզբունքներու, արդեօ՞ք սփիւռքահայ ընտրուածները նախապէս ի վերուստ որոշուած ու սահմանուած անձեր չեն՝ որոնք, միեւնոյնն է, ընտրութեամբ կամ առանց ընտրութեան, ղեկավարութեան գլուխը պիտի հասնէին, արդեօ՞ք սփիւռքի մէջ նախընտրական իրական մրցակցութիւն տեղի կ'ունենայ ղեկավարներու թեկնածուներուն միջեւ, արդեօ՞ք յետընտրական մեկնաբանութիւններով սփիւռքը կը լուսաբանէ իր ընտրական գործընթացքը՝ եթէ վերջինս երբեւէ տեղի ունեցած ըլլայ, արդեօ՞ք սփիւռքահայ ղեկավարները խորքային հաշուետուութիւն կը ներկայացնեն իրենց գործունէութեան մասին, արդեօ՞ք սփիւռքահայ միութիւնները չեն ղեկավարուիր մենատիրական միջոցներով, արդեօ՞ք սփիւռքահայ վերնախաւը մեծահարուստ դասի խօսնակը չէ՝ նման հայաստանեան օլիկարկիք համակարգին: Վերջապէս, արդեօ՞ք սփիւռքահայ հասարակութիւնը՝ Հայաստանի հասարակութեան նման, երբեւէ շարժած է իրական բողոք արտայայտելու *իր* ղեկավարներուն հանդէպ եւ առաջարկել-պարտադրելու այս կամ այն պահանջին գործադրութիւնը:

Հարցումներ, որոնց պատասխանները բազմանշանակ կրնան ըլլալ:

Արդարեւ, հայաստանի հասարակութիւնը շատ աւելի առաջ անցած է սփիւռքահայ հասարակութենէն: Եւ այս պատճառով, մարտ մէկեան շարժում մը արձագանգ պիտի չգտնէր սփիւռքահայերուն մօտ:

Հ. ԱՒԱԳԵԱՆ

# ՄԱՐՏ 1-Ի ԶՈՀԵՐԸ




**Դաւիթ Աֆրենտ Պետրոսեան**՝ ծնած 1975-ին:
*Վնասուածքի բնոյթ*՝ հրազէնային վնասուածք կրծքավանդակի աջ կէսի ետեւի մակերեսին: Մարմինէն հանած են 1 գնդակ (9 մմ.):
Վիրաւորուած է Պարոնեան փողոցի թիւ 2 շէնքի մօտ:




**Գրիգոր Յովհաննէս Գէորգեան**՝ ծնած 1980-ին:
*Վնասուածքի բնոյթ*՝ հրազէնային վնասուածք, գանկի միջանցիկ վնասուածք:
Վիրաւորուած է Պարոնեան-Լէօ փողոցներու խաչմերուկի դալանին դիմաց, դիպուկահարի հարուածով:




**Տիգրան Յովսէփ Խաչատրեան**՝ ծնած 1985-ին:
*Վնասուածքի բնոյթ*՝ գանկուղեղային բաց-կոյր վնասուածք: Գանկի խոռոչէն հանած են մետաղի կտոր: Մահացած է Չերիոմուխա յատուկ միջոցի կիրառումի հետեւանքով:
Վիրաւորուած է Պարոնեան-Լէօ փողոցներու խաչմերուկի դալանին դիմաց:




**Արմէն Վաչագան Ֆարմանեան**՝ ծնած 1974-ին։
*Վնասուածքի բնոյթ*՝ գանկուղեղային բաց-կոյր վնասուածք։ Գանկէն հանած են օտար մարմին։ Ըստ պաշտօնական վարկածին, մահուան պատճառը եղած է Չերիոմուխա պայթուցիկը։
Վիրաւորուած է Պարոնեան փողոցի թիւ 24 շէնքի դիմաց։




**Գոռ Սարգիս Քլոյեան**՝ ծնած 1979-ին։
*Վնասուածքի բնոյթ*՝ բեկորային վնասուածք ձախ աճուկային շրջանը։ Մարմինէն հանած են մետաղի կտորներ։ Ըստ պաշտօնական վարկածին, մահուան պատճառը եղած է Չերիոմուխա պայթուցիկը։
Վիրաւորուած է Մաշտոց պողոտայի եւ Գրիգոր Լուսաւորիչ փողոցներու խաչմերուկի կամուրջին վրայ։




**Յովհաննէս Ղարիբ Յովհաննիսյան**՝ ծնած 1961-ին։
*Վնասուածքի բնոյթ*՝ հրազէնային վնասուածք կրծքավանդակի ձախ կէսի առջեւի մակերեսին։ Մարմինէն հանած են 1 գնդակ (5.45 մմ.)։
Վիրաւորուած է Մաշտոց պողոտայի եւ Գրիգոր Լուսաւորիչ փողոցներու խաչմերուկի կամուրջին վրայ։




**Զաքար Սարիբէկ Յովհաննիսեան**՝ ծնած 1977-ին:
*Վնասուածքի բնոյթ*՝ հրազէնային վնասուածք որովայնի շրջանին: Մարմինէն հանած են 1 գնդակ (9 մմ.):
Վիրաւորուած է Մաշտոցի պողոտայի շուկայի մօտ՝ Մակարով ատրճանակի հարուածով:




**Սամուէլ Էդիկ Յարութիւնեան**՝ ծնած 1979-ին:
*Վնասուածքի բնոյթ*՝ գանկուղեղային բաց-թափանցող վնասուածք, գանկի կոտրուածք:
Մահացու վիրաւորուած է Մաշտոցի գետնանցումին վրայ՝ ԱԿՄ ատրճանակի հարուածով:




**Համլէտ Աղասի Թադեւոսեան**՝ ծնած 1977-ին: Ոստիկանութեան զօրքերու հրամանատար:
*Վնասուածքի բնոյթ*՝ բեկորային վնասուածք վերջին եւ ստորին վերջոյթներու շրջանին:
Վիրաւորուած է Մաշտոց պողոտայի եւ Գրիգոր Լուսաւորիչ փողոցներու խաչմերուկին մօտ, Լուսաւորիչ փողոցի թիւ 17 շէնքին դիմաց, նռնակի պայթիւնի հետեւանքով:




**Տիգրան Էդիկ Աբգարեան**՝ ծնած 1989-ին։ Ոստիկանութեան ներքին զօրքերու զինծառայող։

*Վնասուածքի բնոյթ*՝ վիզի միջանցիկ հրազէնային-գնդակային վնասուածք։

Վիրաւորուած է Լէօ փողոցի Սուին որսորդական խանութի մօտ։

# 2008 ՄԱՐՏ 1-Ը
# ԸՍՏ *LRAGIR.AM*-Ի, *A1+*-Ի ԵՒ *ՀԵՏՔ*Ի

*Lragir.am*
http://www.lragir.am/index/arm/0/home/view

*A1+*
http://www.a1plus.am/

*Հետք*
http://hetq.am/arm/

## 19 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

### ԸՆՏՐՈՒԹԻՒՆ Է ԱՅՍՕՐ

*Lragir.am,* 10:40

Փետրուարի 19-ին, առաւօտեան ժամը 8.00-ին Հայաստանի Հանրապետութեան ամբողջ տարածքում բացուել են ընտրական 1923 տեղամասերը, ուր Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիները կատարելու են Հայաստանի նախագահի հերթական ընտրութիւնը: Այն հինգերորդն է անկախ Հայաստանի պատմութեան ընթացքում: Առաջին եւ երկրորդ ընտրութիւններին՝ 1991 եւ 1996 թուականներին, նախագահ է ընտրուել Լեւոն Տէր-Պետրոսեանը, երրորդ եւ չորրորդ ընտրութիւններին՝ 1998 եւ 2003, նախագահ է ընտրուել Ռոբերտ Քոչարեանը:

Հայաստանի նախագահի հինգերորդ ընտրութեանը առաջադրուած է 9 թեկնածու՝ Լեւոն Տէր-Պետրոսեան, Արթուր Բաղդասարեան, Սերժ Սարգսեան, Վահան Յովհաննիսեան, Վազգէն Մանուկեան, Արտաշէս Գեղամեան, Տիգրան Կարապետեան, Արամ Յարութիւնեան, Արման Մելիքեան: Ընտրողը պէտք է կողմնորոշուի, թէ նրանցից որ մէկը առաջիկայ հինգ տարիներին Հայաստանում կը կարողանայ ապահովել առաւել ազատ, առաւել արդար, առաւել օրինական եւ առաւել բարեկեցիկ իրականութիւն:

Նախագահի ընտրութիւնն աւարտուելու է փետրուարի 19-ին, ժամը 20.00-ին: Ընտրութեան նախնական արդիւնքը Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը պարտաւոր է հրապարակել ընտրութեան աւարտից 24 ժամ անց: Ընտրութեան աւարտից երեք օր անց ԿԸՅ-ն պարտաւոր է հրապարակել ընտրութեան վերջնական արդիւնքը, իսկ ընտրութեան աւարտից եօթ օր անց՝ ամփոփել ընտրութեան արդիւնքը եւ կազմել արձանագրութիւն: Յատկանշական է, որ բացառութեամբ 1991 թուականի, Հայաստանի նախագահի նախորդ բոլոր ընտրութիւնները եղել են վիճայարոյց եւ ընդդիմութիւնը երբեք չի

ճանաչել դրանց պաշտօնական արդիւնքը:

## ԽԱԽՏՈՒՄՆԵՐԸ ՍԿՍՈՒԵԼ ԵՆ...

*A1+,* 10:41

Տաւուշի մարզի այն ընտրատարածքներում, որտեղ զինուորականներ են քուէարկում, որպէս դիտորդ գրանցուած են զինուորական հրամանատարներ՝ քաղաքացիական հագուստով: Մասնաւորապէս, Լուսաձոր գիւղի տեղամասում զինուորական սպայ Փաշայեան Արմէնը գրանցուած է Ազատ Հասարակութիւն ինստիտուտի կողմից որպէս դիտորդ: Իսկ Ակնաղբիւր գիւղի 40/35 տեղամասում սպայ Մայիլեան Արկադին է գրանցուած որպէս դիտորդ:

Այստեղ քուէախցիկը դրուած է հակառակ կերպ՝քուէարկողները թիկունքով կանգնում են դէպի յանձնաժողովը, սպայ Մայիլեան Արկադին կանգնած է քուէախցիկի կողքը, եւ հետեւում է զինուորականները ինչպէս են քուէարկում: Իսկ մէկ բեռնատար մեքենայ, զինուորներով լիքը, քուէարկելով Լուսաձոր գիւղում, այնուհետեւ շարժուեցին դէպի Ակնաղբիւր գիւղի 40/35 ընտրատարածք, եւ նոյն զինուորները այժմ քուէարկում են այս գիւղում: Այս ամէնին ականատես է Նիկոլ Փաշինեանը, որը դէպքի վայրում է:

## ԺՈՒՌՆԱԼԻՍՏՆԵՐԻ ԱՍՊԱՐԷԶ ԱԿՈՒՄԲԻ ԴԻՏԱՐԿՈՒՄՆԵՐԸ ԳԻՒՄՐԻՈՒՄ, ԼՌՈՒԹԵԱՆ ՕՐԸ

*Lragir.am,* 10:50

Փետրուարի 18-ին,առաւօտեան ժամը 10:30-ից մինչեւ 19:00-ը Գիւմրիում գործող Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը աւելի քան 25 հեռախօսազանգ է ստացել քաղաքացիներից, որոնք պատմում են ընտրական զանազան օրինախախտումների մասին: Այդ ընթացքում մօտ 50 հեռախօսային ահազանգ ստացել է *ԳԱԼԱ* հեռուստաընկերութիւնը: Մասնաւորաբար քաղաքացիները պատմում են, որ թեկնածուներից մէկի շտաբներում 5000-ական դրամ ընտրակաշառք է բաժանւում ընտրողներին:

Ահա այն տարածքները, որոնց վերաբերեալ ահազանգեր են ստացուել.

Մուշ-2՝ ոմն Յասմիկ, Տեքստիլի ակումբի հարեւանութեամբ, պոլիգոններ՝ Վ. Խաչատրեան փողոց, Նորաւան, Ստրոմմաշինա՝ ունիվերսամի հարեւանութեամբ, Թետչէրի փողոց՝ Արեւիկ խանութի դիմաց, Թետչէրի եւ Մանուշեան փողոցի խաչմերուկ, Գծի ետեւ թաղամաս, նախկին առուտրի վարչութեան տարածք, Էլցանցի վարչական շէնք՝ Շարայ Տալեան փ., եւ այլն:

Մարդիկ հիմնականում զոյգերով, եռեակներով ու քառեակներով հաւաքւում են նշուած հատուածներում, մտնում են ընտրակաշառքի բաժանման վայրեր՝ շտաբներ, տեղական հիմնարկներ եւ այլն, եւ 2-5 րոպէից՝ ելնում ու հեռանում: Ընտրակաշառքի բաշխման իւրաքանչիւր կէտում այդ եռուզեռը տեւում է մօտ մէկ-մէկուկէս ժամ:

Հետզհետէ ահազանգեր են ստացւում նորանոր թաղամասերից: Ախուրեանի տարածաշրջանի Մուսայէլեան գիւղից ահազանգող մի տիկին, պատմեց, որ իրենց գիւղի ընտրողների մօտաւորապէս 90 տոկոսին 5000-ական դրամ ընտրակաշառք են տուել, պահանջել են ստորագրել համապատասխան ցուցակում, ձայների հսկողութեան համար կաշառուած ընտրողներին են յանձնել նաեւ 2 սմ x 3 սմ չափսերով սպիտակ թղթի կտոր, որի վրայ գրուած է ընտրողի անունը: 5000-ական դրամը տալու հետ միաժամանակ

խստօրէն յորդորել են համապատասխան թեկնածուին քուէարկելուց յետոյ ծրարի մէջ դնել ոչ միայն քուէաթերթիկը, այլեւ այդ կտրօնը, որպէսզի հեշտ լինի վերահսկել: Այս մեթոդով փաստօրէն հնարաւոր կը լինի յստակօրէն հսկել ընտրակաշառքի «աշխատանքը», մարդիկ, ովքեր արդէն ստացել են կաշառքը կամ ստիպուած են վարուել այնպէս, ինչպէս հրամայուել է, կամ ստիպուած են առանց «կտրօնի» քուէարկել, ու դրանով բացայայտել պատուէրը չկատարելը: Հասկանալի է, որ այս մեթոդը յաջողութիւն կ՚ունենայ միայն այն դէպքում, երբ վստահուած անձանց ու դիտորդների հսկողութիւն չլինի: Միւս կողմից, եթէ այս տեղամասում վստահուած անձանց կոշտ հսկողութիւն լինի, ապա կաշառքի նպատակ թեկնածուի օգտին զնուած քուէն, ծրարին մէջ յայտնաբերուած կտրօնի պատճառով, կը դառնայ անվաւեր, բայց կաշառառուները այլ թեկնածուի օգտին կը կարողանան քուէարկել միայն այն դէպքում, երբ կը վերադարձնեն ստացած կաշառքը ու պատրաստ կը լինեն կոնֆլիկտի: Իսկ գիւղերում նման վարքի հաւանականութիւնը մօտ է 0-ի:

Ըստ ահազանգողների, քուէարկութեան օրը կիրառուելու են մի քանի հնարքներ. անձնագրերը ունենալու են ցելոֆանապատած վերջին էջ, կամ անձնագրի կազմը լինելու է ցելոֆանից, որի վրայ խփուելու է քուէաթերթիկ ստանալու մասին կնիքը, իսկ յետոյ այդ նոյն անձնագիրը կարող է «մասնակցել» այլ քուէարկութեան: Ահազանգել եւ պատմել են անձնագրի վերջին էջը գունաւոր պատճենելու եւ այդ պատճենուած էջը կնքելու տարբերակի մասին:

Ժամը 17-ից 19:20-ի հատուածում Գիւմրու Գծի ետեւ թաղամասում, ուր հաւաքւում են երթուղային միկրօաւտօբուսները, աննախադէպ ակտիւութիւն էր տիրում, մօտ 50-120 հոգի, փոքր խմբերով դեգերում էին այսուայս կողմ, սպասելով ինչ-որ բանի, ահազանգողները պատմում էին, որ նրանք դրամի հերթական խմբաքանակին են սպասում, եւ պարբերաբար ինչ-որ մէկը գալիս ու բոլորին հրահանգում էր «կուչկա չլինել» եւ աչքի չընկնել: Ախուրեանի մի խումբ բնակիչներ իրենց վրդովմունքն էին յայտնում այստեղ՝ Մշակոյթի Պալատի մօտ՝ Կոմիտասի արձանից ոչ հեռու, սեւ Վոլգա մեքենայի միջից ընտրակաշառքի բաշխման մասին:

ժամը 19-ի դրութեամբ այստեղ աննախադէպ եռուզեռ էր, մարդիկ զոյգերով ու եռեակներով գնում ու գալիս էին: Ահազանգերով յիշատակուած տարածքների հարեւանութեամբ գործող հիմնականում թաղային խանութները չեն հասցնում սպասարկել յաճախորդներին: Ըստ խանութպանների, ժամը 15-16-ից յետոյ, մարդիկ սկսել են ինտենսիւօրէն փակել իրենց ունեցած պարտքերը: Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի ներկայացուցիչները ահազանգերին հետեւելով այցելել են աւելի քան 20 տարածքներ, այդ թւում՝ Ախուրեան, եւ համոզուել մարդկային կուտակումների ու շտաբներ մարդկանց ինտենսիւ այցելութիւնների մասին տեղեկութիւնների ճշմարտացիութեան մէջ:

*ԳԱԼԱ ՀԸ*-ն ժամը 15-ին, 16-ին, 17-ին, 18-ին եւ 19-ին արտակարգ լրատուական թողարկումներ է կազմակերպել (լրատուական թողարկումները սովորաբար լինում էին ժամը 18-ին, 20-ին եւ 22-ին), որոնցում ներկայացուել են ահազանգերի մեծ մասը, իրաւապահների ուշադրութիւնն է հրաւիրել այս ահազանգերին, նոյնիսկ մի հարցազրոյց է հեռարձակել, որում լրագրողի հարցին, թէ ինչքա՞ն են տալիս..., մի տիկին պատասխանում է «...հէչ, խուլիգան բան՝ 5000 դրամ»: Շիրակի մարզի դատախազութիւնը, ժամը 17-ին մօտ, արձագանքելով *ԳԱԼԱ ՀԸ* լրատուական թողարկմանն ու իրենց ուղղուած կոչին,

պաշտօնապէս դիմել է ՀԸ տնօրինութեանը, խնդրելով իրեն տրամադրել հեռուստարն-կերութիւնում առկայ փաստերը: Այլ թեկնածուներից մի քանիսի ներկայացուցիչների եւ լրագրողների կարծիքով, այս պասիւ դիրքորոշման փոխարէն, եթէ դատախազութիւնը օպերատիւ գործողութիւնների ձեռնամուխ լինէր, ապա կէս ժամում ընտրողների կաշառման առնուազն 10 դէպք կը բացայայտէր: Դատելով այն հանգամանքից, որ, հետզհետէ, մութն ընկնելուն զուգընթաց, մարդկանց հոսքերը համապատասխան շտաբներ ինտենսիւանում է եւ նուազելու միտում չունի, իրաւապահները որեւէ օպերատիւ գործողութիւն չեն կատարում: Ստացւում,է որ այս մարմինները սպասում են, որ ինչ-որ մէկը, *ԳԱԼԱ* ՀԸ-ն կամ լրագրողներն են անելու իրենց աշխատանքը՝ փաստեր են հայթայթելու եւ դնելու նրանց սեղանին:

Որոշ թաղամասերում ընտրակաշառքը բաժանուել է տնից-տուն այցելութիւններով: Այցելել են հիմնականում զոյգերով, մարդկանց բաժանել են ընտրողը՝ 5000 դրամ նոմինալ գումար, ստորագրել են տուել համապատասխան ցուցակներում: Տնից-տուն այցելութիւնների ժամանակ, օրինակ տեքստիլ թաղամասում, այցելուներից մէկը, ըստ ականատեսների, եղել է երեւանցի, միւսը տեղացի, ով լաւ է իմացել թէ ուր են մտնում: Տեքստիլում տեղական ուղեկցի անունը Ռուզդան է եղել, Մուշ-2 թաղամասում՝ Յասմիկ: Բալատոն վարժարանի ետնամասում մի տնակի մէջ Գիւմրիում յայտնի մի երաժիշտ է բաժանել կաշառքը: Երկու տատիկ Լ. Բարսեղեանի հետ զրոյցում պատմեցին, որ իրենց ընտանիքների անդամներին մօտ 3 շաբաթ առաջ են ցուցակագրել, եւ այսօր կանչել են դրամն ստանալու: Նրանցից մէկն ասաց, թէ իրեն վճարել են առձեռն 15000 դրամ՝ իր եւ ընտանիքի 2 անդամների համար, ինքն ստորագրել է 15000 դրամի դիմաց: Թղթադրամները, որ ցոյց տուեց տիկինը, մի 10.000-անոց էր եւ 5.000-անոց, դրանք նոր չէին: Մօտ 70-ամեայ կինը պատմեց, որ կաշառատուն դրամը հանում էր իր գրպանից եւ ոչ թէ որեւէ դարակից կամ պահարանից: Տիկինն ասաց, թէ միեւնոյն է ինքն ընտրելու է ոչ այն մէկին որի համար ստացել է կաշառքը: Ըստ *ԳԱԼԱ* ՀԸ հաղորդման, իր ունեցած ահազանգերով, ընտրակաշառքի մասին շրջանառւում են լուրեր, թէ դրանց իրական նախատեսուած չափերը կազմել է 30.000-45.000 դրամ, այսպէս. 33 ընտրատարածքի տեղամասերում 40.000-45.000 դրամ՝ քուէն, 34 ընտրատարածքի տեղամասերում՝ 35.000-40.000 դրամ՝ քուէն, իսկ 35 ընտրատարածքում՝ մօտ 30.000 դրամ, այնինչ ընտրողներին տալիս են հազիւ 5.000-10.000 դրամ, այսինքն բաժանողները «արանքում փայ են հանում իրենց»:

Լուրեր են ստացւում նաեւ այն մասին, որ քուէարկութեան օրը ուսումնական հիմնարկներ՝ ԲՈՒՀ-եր, քոլէջներ եւ անգամ դպրոցներ են կանչուել աշխատակազմերն ու ուսանողները՝ իրենց անձնագրերով: Ընդ որում տարբեր հաստատութիւնների աշխատակազմերի «կանչի» ժամերը տարբեր են սկսած առաւօտեան 11-ից մինչեւ 16-ը:

## ԱԿՏԻՒՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ՏՈՒԵԱԼԸ ԿԸ ՀՐԱՊԱՐԱԿՈՒԻ ԿԷՍՕՐԻՆ

*Lragir.am,* 10:55

Հայաստանի Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի անդամ Համլէտ Աբրահամեանը տեղեկացրել է, որ ընտրողների մասնակցութեան առաջին տուեալը ԿԸՅ կը հրապարակի կէսօրին: Նրա տեղեկացմամբ, առայժմ ԿԸՅ չի ստացել որեւէ բողոք ընտրական գործընթացի խախտման վերաբերեալ:

## ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆԸ Կ’ՈՂՋՈՒՆԻ ԱՐԴԱՐ ԸՆՏՐՈՒԱԾԻՆ

*Lragir.am,* 11:00

Հայաստանի նախագահի թեկնածու Վազգէն Մանուկեանն այսօր քուէարկելուց յետոյ լրագրողներին ասել է, թէ ինքը տրամադրուած է յաղթելու, սակայն արդար ընտրութեամբ ցանկացած թեկնածուի յաղթանակը:

## ՎԱՀԱՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԸ ՎՍՏԱՀ Է ԻՐ ՅԱՂԹԱՆԱԿԻՆ

*Lragir.am,* 11:05

Հայաստանի նախագահի ՀՅԴ թեկնածու Վահան Յովհաննիսեանն այսօր քուէարկելուց յետոյ լրագրողներին ասել է, թէ վստահ է իր յաղթանակի հարցում: Ինչ վերաբերում է հնարաւոր դժգոհութիւններին, Վահան Յովհաննիսեանն ասել է, թէ միայն դժգոհութիւնը քիչ է, եւ խախտումների մասին տեղեկութիւնները պէտք է հիմնաւորուեն փաստաթղթերով: Նա յոյս է յայտնել, որ ընտրութիւնը կ’անցնի հանգիստ եւ արդար:

## ՏԻԳՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԸ ՔՈՒԷԱՐԿԵՑ

*Lragir.am,* 11:29

Հայաստանի նախագահի թեկնածու Տիգրան Կարապետեանն այսօր իր քաղաքացիական պարտքը կատարելու էր եկել 4-ամեայ որդու հետ: Քուէարկելուց յետոյ նա լրագրողներին ասել է, թէ քուէարկում է ազատ ու արդար Հայաստանի օգտին:

## ԾԵԾԵԼ ԵՆ *Ա1+*-Ի ՕՊԵՐԱՏՈՐԻՆ

*A1+,* 11:34

10 րոպէ առաջ Զաւարեան 6 հասցէում փորձել են կոտրել *Ա1+*-ի տեսախցիկը: Մի խումբ սեւազգեստ, սեւ գլխարկներով հաստավիզ խմած երիտասարդներ մօտեցել են մեր օպերատորին, հէնց նա դուրս է եկել մեքենայից: Նրանք ծեծել են օպերատորին, խլել են տեսաերիզը, կոտրել, յետոյ փորձել են կոտրել տեսախցիկը, որը նրանց չի յաջողուել:

Այդ ժամանակ երիտասարդներից մէկը, տեսնելով մեքենայում նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի բուկլէտը, սկսել է հայհոյել: Նա հայհոյանքներ է տեղացել նաեւ *Ա1+*-ի օպերատորի եւ մեքենայում գտնուող *Ժամանակ-Երեւան* թերթի լրագրողի հասցէին:

Ի դէպ, երբ դէպքի առթիւ զանգահարել են ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ գրասենեակ, ասել են, թէ ազատ դիտորդ չունեն:

## ԾԵԾՈ՞ՒՄ ԵՆ

*A1+,* 11:44

«Աբովեանի 28/06 եւ մնացած գրեթէ բոլոր ընտրատեղամասերում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց, յանձնաժողովի անդամներին եւ դիտորդներին ծեծի են ենթարկում եւ բռնի ուժով դուրս են հանում ընտրատեղամասերից, ոստիկանութիւնը ընդհանրապէս չի միջամտում», - այդ մասին հաղորդում են ՍԴՀԿ-ից: Այս պահին մեր նկարահանող խումբը մեկնել է դէպի վայր:

## ՕՍԿԱՆԵԱՆՆ ԸՆՏՐԵԼ Է ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԿԱՅՈՒՆՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am,* 11:48

Հայաստանի արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանն այսօր քուէարկելուց յետոյ լրագրողներին ասել է, թէ յուսով է, որ կը լինի լաւ ընտրութիւն: Նրա խօսքով, ընտրութեանը պէտք է տարբերակել 3 փուլ. առաջինը նախընտրական փուլն է, երկրորդը քուէարկութեան օրը եւ երրորդը՝ յետընտրական ժամանակաշրջանը:

Օսկանեանը յոյս է յայտնել, թէ քուէարկութեան յաջորդ օրը նոր էջ ենք բացում, եւ կը շնորհաւորենք նոր նախագահին: Օսկանեանն ասել է, թէ ինքը քուէարկել է յանուն խաղաղութեան, շարունակականութեան, կայունութեան եւ անվտանգութեան: Նա ասել է, թէ ցանկալի է, որ ընտրութիւնն աւարտուէր մէկ փուլով, սակայն դա ժողովրդի որոշելիքն է: Օսկանեանն ասել է, թէ ինքը յետընտրական ժամանակաշրջանի համար որոշ մտավախութիւններ ունի, սակայն յուսով է, որ սխալ դուրս կը գայ, եւ մենք կը շնորհաւորենք նոր նախագահին:

## Ո՞Վ Է ԿՈՏԻԿԸ

*A1+,* 11:54

Միջադէպ է տեղի է ունեցել Արաբկիրի 5/20 տեղամասում: Այստեղ հարուածել են Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Տիգրան Քարգուլեանին, ապա ոստիկանների միջամտութեամբ հարկադրաբար դուրս բերել ընտրատարածքից: Տիգրան Քարգուլեանը *Ա1+*-ին յայտնեց, որ այս ամէնը սկսուել էր դեռ առաւօտեան ժամը 7-ին:

Նա երբ ներկայացել է ընտրատեղամաս, պարզել է, որ ընտրատարածքի սեյֆը բաց է: Տիգրան Քարգուլեանը նշում է, որ ինքը տեղեկացուած է եղել որ այդ նոյն տեղամասում նախորդ օրը անհետացել կամ փոխուել է կնիքը, ինչի վերաբերեալ դիմում-բողոք է կազմել: Ըստ նրա՝ ծեծկռտուքի հեղինակը Կոտիկ անունով մէկն է, որը այս ամէնը սարքել է՝ տեղեակ լինելով դիմում-բողոքի մասին:

Վստահուած անձը չի պատասխանել ոստիկանների - յանձնաժողովի անդամի հրմշտոցին, իրավիճակը չսրելու համար: Կոտիկը այս ընտրատեղամասում չի քուէարկում - նրա անունն ու ազգանունը յայտնի չէ:

## ՏՈՒԵԱԼՆԵՐ ԴԵՌ ՉԵՆ ՏՐԱՄԱԴՐԵԼ

*Lragir.am,* 11:59

ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը տեղեկացնում է, թէ 2008 թուականի փետրուարի 18-ին *Գալա* հեռուստաընկերութեան եթերում հեռարձակուել է լուրերի յատուկ թողարկում, որի ընթացքում հեռարձակուել է Գիւմրի քաղաքում եւ Շիրակի մարզում ընտրակաշառքներ բաժանելու մասին տեսանիւթ՝ առանց կոնկրէտ փաստեր մատնանշելու: Հեռարձակուած տեսանիւթում մատնանշուած փաստերը ստուգելու համար՝ Շիրակի մարզի դատախազը նոյն օրը՝ 18.02.08թ., գրաւոր դիմել է *Գալա* հեռուստաընկերութեան տնօրէն Վ. Խաչատրեանին՝ խնդրելով, ՀՀ քրէական դատավարութեան օրէնսգրքի 179-րդ յօդուածով սահմանուած կարգով, տրամադրել տեսանիւթի հիմքերը: Մատնանշուած յօդուածի համաձայն՝ «Յանցագործութիւնների մասին հաղորդումներ հրապարակած կամ ըստ պատկանելութեան ուղարկած լրատուութեան միջոցները, ինչպէս նաեւ այդ հաղորդումների հեղինակները պարտաւոր են հետաքննութեան

մարմնի, քննիչի, դատախազի պահանջով ներկայացնել յանցագործութեան մասին հաղորդումը հաստատող՝ իրենց մօտ եղած նիւթերը»:

Շիրակի մարզի դատախազի գրութիւնը 18.02.08թ.՝ ժամը 16:30-ի սահմաններում ստացել է անձամբ Վ. Խաչատրեանը, սակայն 19.02.08թ.՝ ժամը 11:30-ի դրութեամբ որեւէ փաստ կամ տուեալ դատախազութեանը չի ներկայացրել:

## ՔՈՉԱՐԵԱՆԻ ԴԵՐԸ ՅԱՅՏՆԻ ԿԸ ԴԱՌՆԱՅ ԱՊՐԻԼԻ 9-ԻՆ

*A1+,* 12:10

Այսօր 10:45-ին Երեւանի Պարոնեան փողոցը փակ էր, Սպանդարեանի անուան թիւ 24 դպրոցում տեղակայուած 9/11 տեղամասում բոլոր ընտրութիւններին քուէարկում են բարձրաստիճան պաշտօնեաները:

Այսօր ժամը 11:00-ին այստեղ իր քաղաքացիական պարտքը պէտք է կատարէր Ռոբերտ Քոչարեանը: Նրան ուղեկցող շարասիւնը ժամը 11:00-ին հասաւ տեղամաս: Քոչարեանն՝ ընտանիքի անդամների հետ կատարեց իր պարտքը: Այնուհետեւ պատասխանեց լրագրողների հարցերին: «Ոչ մէկի մօտ կասկած չի յարուցում, թէ ում եմ տուել իմ ձայնը. քուէարկել եմ Հայաստանի կայունութեան եւ բարգաւաճման օգտին», - ասաց Ռոբերտ Քոչարեանը՝ այնուհետեւ աւելացնելով. «Ժողովրդավարութեան յետագայ ճանապարհի համար ամէն մի ընտրութիւն փորձութիւն է, որը մենք պէտք է անցնենք աւելի ուժեղացած: Եւ ես համոզմունք ունեմ, որ այս ընտրութիւնն այդպիսին է լինելու: Ժողովրդավարութեան ամրապնդման տեսանկիւնից հերթական լուրջ առաջընթացն ենք արձանագրելու»:

Նա տեղեկացրեց, որ տրամադրութիւնը տեղին է եւ համոզմունք ունի, որ ամէն ինչ լաւ է լինելու: «Կանխատեսումներ չեմ ուզում անել: Ցանկանում եմ, որ ամէն ինչ աւարտուի մէկ փուլով», - ասաց Ռոբերտ Քոչարեանը՝ աւելացնելով, որ փուլերի քանակը ընտրողը պէտք է որոշի իր քուէարկութեամբ:

Նա նաեւ նշեց. «Փետրուարի 20-ին առաւօտեան ժամը 9:00-ին գործի եմ գնալու»: Իսկ թէ ինչ զգացողութեամբ է լքում նախագահի աթոռը, Ռոբերտ Քոչարեանը պատասխանեց. «Ապրիլի 9-ին կը պատասխանեմ այդ հարցին յաջորդ դերիս անցնելուց յետոյ»: Ասաց եւ հեռացաւ տեղամասից, որի դիմաց հաւաքուած էին Երեւանի ոստիկանապետը, Կենտրոնի ոստիկանապետը, ուժային կառոյցների ներկայացուցիչներ:

Ի դէպ, Ռոբերտ Քոչարեանի քուէարկութեան ժամանակ մարդկանց մուտքը ընտրատեղամաս եւ քուէրակութիւնն արգելուել էր:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԲԱՑԱՌՈՒՄ Է ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆԵՐԸ

*Lragir.am,* 12:16

Հայաստանի վարչապետ Սերժ Սարգսեանն այսօր քուէարկելուց յետոյ յայտարարել է, թէ էական չէ՝ քանի փուլով կ'անցնի ընտրութիւնը: Կարեւորն, ըստ Սերժ Սարգսեանի, որ ընտրութիւնը լաւ անցնի, եւ վերաբերմունքն ու գնահատականները լաւ լինեն: Պատասխանելով հարցին, թէ յաղթելու դէպքում կառավարութիւն ձեւաւորելիս ներգրաւելու է միայն իր թիմին, թէ այլ ուժերի եւս, վարչապետը պատասխանել է, թէ արդէն կայ կառավարութիւն, որն 9 ամիս արդիւնաւէտ աշխատում է, եւ չի կարծում թէ էական

փոփոխութիւններ կը լինեն: Նրա խօսքով, այդ կառավարութիւնը կազմաւորելիս արդէն ներգրաւել են տարբեր ուժերի, մասնաւորապէս ՀՅԴ եւ Բարգաւաճ Հայաստան կուսակցութիւնները:

Պատասխանելով մէկ այլ հարցի, Սերժ Սարգսեանը բացառել է Հայաստանում յեղափոխական զարգացումները: Իսկ յետընտրական պայքարը լինելու է իր ծրագրի իրականացման պայքար, ասել է Սերժ Սարգսեանը:

Ռուսաստանցի մի լրագրող հարցրել է վարչապետին, թէ ով է յաղթելու ընտրութեանը: Սերժ Սարգսեանն ասել է, թէ այդ լրագրողը նոր է Հայաստանում, այլապէս կ'իմանար, որ ինքը երկար ժամանակ է ասում է, թէ ով է յաղթելու:

## ԽՆԴԻՐ ՉԻ ԵՂԵԼ

*A1+,* 12:17

Արմաւիրի թիւ 21 ընտրատարածքում կայ 68 ընտրական տեղամաս, առաւօտեան մինչեւ ժամը 10 ընտրողները պասիւ էին, ասում են ընտրատեղամասային ընտրական յանձնաժողովների նախագահները եւ աւելացնում, որ արդէն իսկ ընտրողների ակտիւ մասնակցութիւնը նկատելի է: Քիչ առաջ 21/07 ընտրատեղամասում իր քաղաքացիական պարտքը կատարեց Արմաւիրի մարզպետ Աշոտ Ղահրամանեանը: Մարզպետի կարծիքով՝ ընտրութիւններին ակտիւ մասնակցութիւնը ամենակարեւոր պայմանն է, իսկ արմաւիրցիները բաւականին ակտիւ են եւ կարեւորում են իրենց ձայնի արժէքը:

Թիւ 21 ընտրատարածքում ընտրողների ընդհանուր թիւը համաձայն ընտրացուցակների կազմում է 86 230 ընտրող: Ժամը 11-ի դրութեամբ թիւ 21 ընտրատարածքում ընտրութիւններին մասնակցել է 7 121 ընտրող: Ընտրատարածքային ընտրական յանձնաժողովի նախագահ Գայեանէ Սուքիասեանը վստահեցնում է, որ յանձնաժողովն առայժմ դիմում բողոքներ չի ստացել: Ընտրողների մասնակցութիւնը Գայեանէ Սուքիասեանը գնահատում է բաւարար: Ընտրացուցակների հետ կապուած խնդիրներ նոյնպէս չկան: Դատարանի միջոցով իրենց ընտրելու իրաւունքը վերականգնող քաղաքացիներ դեռ չկան: Ընտրութիւնների ընթացքից գոհ են նաեւ Ընտրութիւնը Քոնն Է, Արմաւիրի զարգացման կենտրոն ՀԿ-ների դիտորդներն ու թեկնածուների վստահուած անձիք:

## ԺԱՄԸ 12-Ի ԴՐՈՒԹԵԱՄԲ ՔՈՒԷԱՐԿԵԼ Է ԸՆՏՐՈՂՆԵՐԻ 11,2 ՏՈԿՈՍԸ

*Lragir.am,* 12:35

Հայաստանի ԿԸՅ անդամ Համլէտ Աբրահամեանի տուեալով, ժամը 12-ի դրութեամբ քուէարկել է ընտրողների 11.2 տոկոսը կամ 265 533 մարդ:

## ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ ՇՏԱԲԻ ԱՐՁԱՆԱԳՐԱԾ ԽԱԽՏՈՒՄՆԵՐԸ

*Lragir.am,* 12:40

Ըստ Վազգէն Մանուկեանի վստահուած անձ Նոնա Նարինեանի, թիւ 3/29 տեղամասում ժամը 10:30-ից 11:00-ի սահմաններում 50-60 մարդ քուէարկել են միանգամից լրացուցիչ ցուցակով: Քուէարկողներն եղել են Վանաձորից, Հրազդանից, Կոտայքի մարզի Ակունք գիւղից եւ այլ բնակավայրերից:

Ըստ վստահուած անձ Նոնա Նարինեանի, թիւ 3/29 տեղամասում ժամը 12:00-ի սահմաններում 20-30 մարդ քուէարկել են միանգամից լրացուցիչ ցուցակով: Քուէար-

կողներն եղել են հիմնականում Շիրակի մարզից:

Ըստ Մալաթիա-Սեբաստիա շտաբի պետ Մարգարիտա Մանուկեանի տեղեկատըւութեան 8/8 տեղամասում փորձել են քուէաթերթիկ դուրս հանել տեղամասից, որի պատճառով ծեծկռտուք է տեղի ունեցել յանձնաժողովի նախագահի եւ որոշ վստահուած անձանց միջեւ: Ոստիկանութեան միջամտութիւնից յետոյ միջադէպը կանխուել է:

Համաձայն Գիւմրիի պատասխանատու՝ Վահան Թումասեանի յայտնած տեղեկատուութեան՝ քաղաքի տեղամասերի առջեւ գումարներ են բաժանում ընտրողներին: Փաստն արձանագրուել է տեղական *Գալա* հեռուստաընկերութեան կողմից:

## ԵԹԷ ԿԵՂԾԻՔՆԵՐ ԼԻՆԵՆ, ՀԱՅԱՍՏԱՆԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԱԾ Է

*Lragir.am,* 12:44

Եթէ Հայաստանի նախագահն ընտրուի կեղծիքների արդիւնքում, կը նշանակի, որ երկիրը դատապարտուած է: Այս մասին այսօր լրագրողներին յայտարարեց Հայաստանի նախագահի թեկնածու, Օրինաց Երկիր կուսակցութեան ղեկավար Արթուր Բաղդասարեանը՝ իր ընտրատեղամասում քուէարկելուց յետոյ, տեղեկացնում է *Նովոստի-Արմենիան*: «Ես յուսով եմ, որ երկրի ղեկավարի ընտրութիւնները կ'անցնեն բաց, ազատ եւ թափանցիկ մթնոլորտում, եւ ժողովուրդը կը կարողանայ ընտրել իր երկրի նախագահին», - ասաց նա:

Բաղդասարեանը նշեց, որ իր նախընտրական շտաբում «թէժ գիծ» է գործում, որի հեռախօսահամարներով բոլոր ցանկացողները, այդ թւում ԶԼՄ-ների ներկայացուցիչները, կարող են օպերատիւ տեղեկատուութիւն ստանալ քուէարկութեան ընթացքի մասին:

## ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԱՆՑ ՔԱՂԱՔԻՑ ՀԱՆԵԼ ԵՆ

*A1+,* 13:11

Լեւոն Տէր-Պետրոսեանը Աբովեանում այլեւս վստահուած անձինք չունի: Նրանց բոլորին բռնի ուժով հաւաքել եւ տեղափոխել են քաղաքից դուրս: Այդ մասին *A1+*-ին յայտնեց ՀՀ առաջին նախագահ, նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Կոտայքի մարզի համակարգող խորհուրդը:Այս պահին մեր թղթակիցը Աբովեանում փորձում է գտնել կորած վստահուած անձանց հետքերը:

## ՏԵՂԱՓՈԽԵԼ ԵՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑ

*A1+,* 13:12

Մալաթիա-Սեբաստիա համայնքի 8/21տեղամասում ծեծել են Արման Մելիքեանի վստահուած անձ Պարգեւ Մնացականեանին, որին այժմ տեղափոխել են հիւանդանոց: Նա ականատես է եղել, որ մարզից եկած մարդ ու կին փորձել են քուէարկուած քուէաթերթիկը գցել տուփի մէջ, իսկ մաքուրը՝ դուրս բերել ընտրատեղամասից: Ըստ Տէր-Պետրոսեանի շտաբի՝ Պարգեւ Մնացականեանին ծեծել են Սերժ Սարգսեանի վստահուած անձինք:

Իսկ ահա Արթուր Բաղդասարեանի շտաբի պետ Հեղինէ Բիշարեանը տեղեկացրել է, որ առկայ են կեղծ անձնագրեր:

## ԶԱՆԳԱՀԱՐԷՔ՝ 080-080-804

*A1+*, 13:13

Քաղաքացիական Հասարակութեան ինստիտուտ, Քաղաքացիական Նախաձեռնութիւնների Ազատ Ամբիոն եւ Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Հայաստանի կոմիտէ հասարակական կազմակերպութիւնների համատեղ ջանքերով ՀՀ քաղաքացիների տեղեկացուածութիւնը բարձրացնելու նպատակով ստեղծուել է «Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ 2008»-ը: Այս նախաձեռնութեան նպատակն է քաղաքացիներին տրամադրել անվճար իրաւաբանական խորհրդատուութիւն եւ պաշտպանութիւն:

Յունուարի 15-մարտի 15-ը ժամանակահատուածում կը գործի հեռախօսային անվճար թէժ գիծ՝ 080-080-804:

Յանկացած քաղաքացի, այդ թւում եւ՝դիտորդ, վստահուած անձ, ընտրական յանձնաժողովի անդամ, այս համարով զանգելով կարող է իրաւաբանից սպառիչ պատասխան ստանալ ընտրութիւններին վերաբերող եւ իրեն յուզող հարցերի վերաբերեալ:

Այսօր, բուն քուէարկութեան օրը ողջ հանրապետութեան տարածքում շրջում են 40 «Իրաւական շտապ օգնութեան» մեքենաներ՝ իրաւաբան, քաղաքացիական ակտիւիստ, դիտորդ:

Ահազանգի դէպքում այս արագ արձագանքման խմբերը թէժ գծով ստացուած ահազանգերով կը լինեն տեղերում եւ կ’ապահովեն քաղաքացու իրաւունքների պաշտպանութիւնը:

## ԿԸՅ-Ն ՀՐԱԺԱՐՒՈՒՄ Է ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ՀԵՌԱԽՕՍԱԶԱՆԳԵՐԻՆ

*A1+*, 13:14

Քուէախցիկները տարբեր ընտրատեղամասերում տարբեր կերպ են դրուած: Այն, որ օրէնքով սահմանուած է, որ ընտրողը պէտք է կանգնի դէմքով դէպի յանձնաժողովը, շատ ընտրատեղամասերում չի պահպանւում: Օրինակ՝ 1/17, 10/28:

Քուէախցիկների այդ դիրքը ընտրողին կաշկանդում է, քանի որ եւեւում նստածները առանց դժուարութեան կարող են տեսնել, թէ ում է ընտրում քաղաքացին: Օրէնսդրութեան վերաբերեալ որոշ մանրուքներ ճշտելու համար զանգահարեցինք Կենտրոնական Ընտրական Յանձնաժողով: Նշենք, որ վերջինս երկու օրերի ընթացքում այնտեղ այնքան էլ պատրաստակամ չեն պատասխանում մեր հեռախօսազանգերին: Երէկ այդպէս էլ ԿԸՅ մամլոյ խօսնակի հեռախօսը չպատասխանեց, իսկ այսօր երբ վերջապէս նա վերցրեց հեռախօսը, եղաւ այս պատասխանը. «Մենք անընդհատ եթերում ենք, կարող էք հետեւել, հիմա երկար խօսել չեմ կարող»:

Իսկ քուէախցիկների վերաբերեալ նշեց, թէ դրանք պէտք է լինեն այնպէս, որ ընտրողը լինի դէմքով դէպի յանձնաժողովը, իսկ այն տեղամասերում, որտեղ դա իրականացնել հնարաւոր չէ, յանձնաժողովից պէտք է ժապաւէնով առանձնացուի: «Եթէ դիմում-բողոքներ լինեն, մենք քայլեր կը ձեռնարկենք», - հնչեց ԿԸՅ մամուլի պատասխանատուի շուրթերից, եւ առանց երկրորդ հարցը լսելու՝ հեռախօսը անջատեց:

## «ՆԱ ԷԼ ՊԷՏՔ Է ԻՆՁ ՀԵՏ ԼԻՆԻ»

*A1+*, 13:15

Նախագահի թեկնածու, ՀՅԴ Բիւրոյի անդամ Վահան Յովհաննիսեանը ժամը 10:00-ին կնոջ հետ միասին Գրիբայեդովի անուան դպրոցում տեղակայուած 10/07 ընտրատեղամասում ընտրեց ինքն իրեն:

Նրա տրամադրութիւնը վատ չէր. «Անձրեւ է գալիս, իմ սիրած եղանակն է»: Ի՞նչ է ակնկալում ընտրութիւններից: «Արդարութիւն եմ ուզում: Ուզում եմ, որ մի երկու օրից յետոյ ժողովուրդը կարողանայ ասել, որ վերջապէս արդար ընտրութիւն եղաւ: Եւ նոյնիսկ նա, ում ցանկացած նախագահը չլինի, այնուամենայնիւ բաւարարուած լինի, որ ընտրութիւնները անցել են արդար, գոնէ առաջինը, մէկ անգամ»:

Արդար չլինելու դէպքում ի՞նչ կ՚անի Վահան Յովհաննիսեանը. «Արդար չանցնելը պէտք է ֆիքսուած լինի, ապացուցուած լինի փաստաթղթային ձեւով: Եթէ դուք ունէք այս բոլոր փաստաթղթերը, դիմէք դատարան»:

Իսկ կը միանա՞յ այն միւս թեկնածուներին, ովքեր կը դժգոհեն ընտրութիւնների արդիւնքներից. «Նրանց դժգոհութիւնը պէտք է հիմնաւորուած եւ արդարացուած լինի, այլապէս պարզապէս դժգոհութեան անունով որեւէ ակցիայի միանալու պատճառ չունենք»:

Ընտրութիւնների արդիւնքներով եթէ երկրորդ փուլում յայտնուեն նախորդ եւ ներկայ իշխանութիւնները, ո՞ւմ է սատարելու Վահան Յովհաննիսեանը. «Ինքս ինձ»: Իսկ կը լինի՞ երկրորդ փուլ. «Չգիտեմ: Կախուած է ժողովրդի կամքից»: Որքան ձայներ կը հաւաքի Վահան Յովհաննիսեանը. թեկնածուն նշեց, թէ ինչքան ժողովուրդը կը տայ, այդքան էլ կը հաւաքի:

Ի դէպ, նա այսօր մեկնաբանեց իր մասին շրջանառուող անեկդոտներից մէկը: Ապարանցին իմանում է, որ կինը Վահանի հետ է, նրանից բաժանւում է, ասաց. «Սխալ է անում, նա էլ պէտք է ինձ հետ լինի ու նրանց ընտանիքում կը տիրի անդորր»:

## ԶՐԿՈՒՄ ԵՆ

*A1+*, 13:17

Հայ հեռուստադիտողը զրկուած է *Եուրանիւզ*ով դիտել ՀՀ նախագահի ընտրութիւնների վերաբերեալ տեսանիւթեր: Այն պահին, երբ պիտի եթեր գնայ այդ տեսանիւթը, եթեր է տրւում *Արմնիւզ*ի նիւթը:

Միայն նրանց է յաջողւում դիտել *Եուրանիւզ*ի տեսանիւթը, ովքեր ունեն արբանեակային ալեհաւաք:

## «ԳԻՒՄՐԻՈՒՄ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԽԱՅՏԱՌԱԿՈՒԹԻՒՆ ԵՆ»

*A1+*, 13:19

Գիւմրիում երէկուանից մասսայաբար բաժանւում է ընտրակաշառք: Այս մասին *Ա1+*-ին յայտնեցին Գիւմրիի *ԳԱԼԱ* հեռուստաընկերութիւնից, որտեղ երէկուանից սկսած ձայնագրում են բոլոր ահազանգերը: Ի դէպ, դրանց թիւը 100-ից անցնում է, արուած ձայնագրութիւնը մօտ 4 ժամ է:

Այսօր առաւօտից հեռախօսազանգերի տարափը եւս չի դադարում: «Բոլորը մեզ են

զանգահարում, չգիտես ինչու եւ խնդրում են, թէ մի բան արէք, քանի որ խայտառակութիւն է, այսպիսի ընտրութիւն դեռ չի եղել», - *Ա1+*-ին յայտնեց *ԳԱԼԱ*-ի գործադիր տնօրէն Կարինէ Յարութիւնեանը:

Ահազանգերից մէկը վերաբերում էր նրան, որ ընտրատեղամասերից մէկի դիմաց կանգնած են եղել Գազէլներ, աւտոմեքենաներ, որտեղից ընտրակաշառք են բաժանում բոլոր նրանց, որոնք գալիս մտնում են այդ մեքենաների մէջ եւ ընտակաշառքը վերցնելով՝ մտնում են ընտրատեղամաս:

«Մենք այդ մեքենաներից շատերի համարները նոյնիսկ ունենք: Պատկերացնում էք՝ լկտիութիւնը հասել է այն գագաթնակէտին, որ ոստիկանութեան մեքենան ընտրակաշառքի մեքենայի կողքին կանգնած ոչ մի կերպ չի արձագանքել այդ ամէնին: Ի դէպ, ընտրակաշառքի բաժանման մեխանիզմի մէջ ներքաշուած են նաեւ մարզպետարանի, քաղաքապետարանի աշխատակիցներ, որոնք կարգաւորում են ընտրակաշառքի բաժանումը», - *Ա1+*-ին ասաց *ԳԱԼԱ*-ի քաղաքական մեկնաբան Դերենիկ Մալխասեանը:

Նորաւան թաղամասի 18 դպրոցից էլ ահազանգ է ստացուել այն մասին, որ ուսմասվարն ուսուցիչների հետ միասին կազմակերպում է կրկնակի քուէարկութիւն: Դպրոցի յետեւի մասից մարդկանց հանգիստ ներս են մտցնում, քանի որ յանձնաժողովում իրենց մարդիկ են, ու տեղի է ունենում կրկնակի քուէարկութիւն: «Այսինքն՝ ընտրուած մարդիկ, ետեւից մտնելով, նորից քուէարկում են ու առջեւի դռնից դուրս գալիս», - տեղեկացրեց Դերենիկ Մալխասեանը:

Սովխոզ թաղամասից էլ ահազանգել են, որ բնակիչներին տներից ստիպողաբար հանում են եւ ուղարկում քուէարկութեան: Այս պարագայում, սակայն, ընտրակաշառք կամ բաժանում են, կամ՝ ոչ:

Մի շարք թաղային հեղինակութիւններ 10-րդ դպրոցում բաց քուէարկութիւն են կազմակերպել՝ գումարը բաժանել են ու յետոյ ընտրողի գլխի վերեւը կանգնած ստուգել, թէ ում օգտին նա քուէարկեց:

Գիւմրիի բոլոր բիւջէտային հիմնարկներին ղեկավարներ էլ հրահանգել են իրենց աշխատակիցներին՝ ընտրութիւնը կատարել մինչեւ ժամը 13:00-ն: «Այնուհետեւ՝ այդ ժամին աշխատակիցներն իրենց անձնագրերով պարտաւոր են ներկայանալ աշխատատեղի: Ընդ որում՝ եղել են նաեւ աշխատանքից ազատուելու սպառնալիքներ, եթէ մարդիկ անձնագրերը չյանձնեն», - *Ա1+*-ին փոխանցեց Կարինէ Յարութիւնեանը: Իսկ ԱԺ Գիւմրիի մի շարք պատգամաւորներ էլ, որոնք այստեղ ունեն որոշ սեփականութիւններ, նորից աշխատանքից ազատման սպառնալիքով, աշխատակիցներին պարտադրել են բերել իրենց ու իրենց հարազատների անձնագրերը:

Ի դէպ, հեռուստաընկերութեան տեսախցիկը հասցնում է ֆիքսել այն ամէնը, ինչ տեսնում է: Բայց մարդիկ, տեսնելով տեսախցիկը, անմիջապէս փախչում են կամ մտնում շէնքերի արանքները, մուտքերի մէջ: Իսկ այլ բնոյթի խոչընդոտներ չեն եղել:

Ի դէպ, Գիւմրիից Երեւան բերող երթուղայիններ մինչեւ ժամը 11:00-ը չեն եղել: Այդ ժամից յետոյ Երեւանից եկող երթուղայիններն էլ նորից ետ են դարձել: Ինչ վերաբերում է քաղաքային տրանսպորտին, ապա Գիւմրիի քաղաքապետարանին ենթակայ երթուղայիններն ու մարզպետարանի հաշուեկշռին նստած աւտոբուսները սպասարկում են մարդկանց ընտրատեղամասից շտաբ եւ յետ տանելուն:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՔՈՒԷԱՐԿԵԼ Է ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՕԳՏԻՆ

*Lragir.am*, 13:28

Հայաստանի նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօր քուէարկելուց յետոյ պատասխանել է լրագրողների հարցին եւ յայտարարել, թէ իր տեղեկութիւններով, շատ վատ բաներ են կատարւում: Տէր-Պետրոսեանն ասել է, թէ գաղտնիք է՝ ում օգտին է քուէարկել, աւելացնելով, թէ իր քուէն տուել է ազատութեան օգտին: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտնել է նաեւ, թէ ընտրութիւնն անցնելու է 1 փուլով, եւ յաղթելու է ինքը: Իսկ ձայներին տէր կանգնելու մասին հարցին առաջին նախագահն ասել է, թէ բոլորն են պարտաւոր տէր կանգնել իրենց ձայներին:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆՆ ԸՆԴՈՒՆԵԼ Է ՊԻՏԷՐ ՍԵՄՆԵՔԻՒՆ

*Lragir.am*, 13:31

Այսօր ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանն իր գրասենեակում ընդունեց Հարաւային Կովկասում Եւրոմիութեան յատուկ ներկայացուցիչ Պիտէր Սեմնեքիին: Հանդիպման ընթացքում քննարկուել են ՀՀ նախագահի ընտրութիւնների ընթացքին առընչուող մի շարք հարցեր, տեղեկացնում են ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակից:

## ԻՐԱՒԱԿԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԻՒՆ. «ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ-2008»-Ը ԱՐԴԷՆ 100 ԱՀԱԶԱՆԳ Է ՍՏԱՑԵԼ

*Lragir.am*, 13:33

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը փետրուարի 19-ի ժամը 12:30-ի դրութեամբ ստացել է մօտ 100 ահազանգ տարբեր օրինախախտումների վերաբերեալ: Նախաձեռնութեան Շտապ Իրաւական Օգնութեան մեքենաները մեկնել են դէպքի վայրեր: Որոշ ահազանգեր չեն հաստատուել: Որոշ դէպքերում ահազանգողները հրաժարուել են ներկայանալ:

Ներկայացնում ենք ստացուած ահազանգերից մի քանիսը: Երեւանի կենտրոնում 25 հոգանոց աւտօբուսը մարդկանցով լի շրջում է ընտրատեղամասից-ընտրատեղամաս: Թիւ 11/03 ընտրատեղամասում՝ 255 մանկապարտէզ ընտրողների կուտակումներ են: Արտաշատում՝ կուտակումներ են: 11/17 տեղմասում դիտորդները արձանագրել են լցոնումներ, կազմել արձանագրութիւններ: Դէպքի վայր ժամանած «Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» Իրաւական Շտապ Օգնութեան մեքենայի անձնակազմին սպառնացել են: Մարտունի քաղաքի 24/15 եւ 24/14 տեղամասերում բաց քուէարկութիւն է եղել: Կազմուել է արձանագրութիւն: 162 դպրոցում տեղակայուած 7/18 տեղամասում ձերբակալել են դիտորդին: 13/28 ընտրատեղամասում լցոնումներ են եղել: Քուէարկել է մի 14 տարեկան երեխայ, կազմւում են անհրաժեշտ բողոքը: Մալաթիա-Սեբաստիայի 8/21 ընտրատեղամասում արձանագրուել են լցոնում, կան ծեծուած մարդիկ, որոնցից մէկին՝ Պարգեւ Մնացականեանին տեղափոխել են հիւանդանոց: Պատրաստւում է հաղորդագրութիւն դատախազութեան համար:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆՆ ԷԼ Է ՊԱՅՔԱՐՈՒՄ

*A1+*, 13:41

Այսօր 9/11 ընտրական տեղամասում իր քաղացիական պարտքը կատարեց նախագահի թեկնածու, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանը իր տիկնոջ եւ դստեր հետ: Լրագրողների այն հարցին, թէ ինչ է նշանակում ընդդիմութեան յայտարարութիւնը, որ իրենք պայքարելու են մինչեւ վերջ, Սերժ Սարգսեանը պատասխանեց, որ այսօր մինչեւ ժամը 20:00 եւս կարող է նշանակել պայքար մինչեւ վերջ:

Հարցին, թէ իր կարծիքով քանի փուլով են անցնելու ընտրութիւնները, թեկնածուն պատասխանեց, որ կարեւորը այն չէ, թէ քանի փուլ կը լինի, այլ այն, որ ընտրութիւններն անցնեն լաւ եւ վստահութիւնը մեծ լինի: Սերժ Սարգսեանը պատասխանելով հարցին, թէ ինչ նոր ուժեր կը լինեն կառավարութիւնում, ասաց, որ չի կարծում, թէ էական փոփոխութիւններ կը լինեն կառավարութեան կազմում, քանի որ այն կազմաւորուել է 9 ամիս առաջ եւ լաւ արդիւնքներ է տուել. «Էական այդպիսի փոփոխութիւնները չգիտեմ, թէ ինչով պէտք է պայմանաւորուած լինեն, բայց որ մենք օգտագործում ենք բոլոր ուժերը, դա փաստ է: Մենք կարող էինք միայնակ ձեւաւորել կառավարութիւնը, բայց դիմեցինք Բարգաւաճ Հայաստանին եւ Դաշնակցութեանը»:

Իսկ կա՞յ արդեօք յեղափոխական իրավիճակ Հայաստանում հարցին՝ Սերժ Սարգսեանը պատասխանեց, որ այդպիսի իրավիճակ չի տեսել եւ չի տեսնում. «Իսկ մենք պայքարում ենք մեր ծրագրերի իրականացման համար»:

Մինչ այս պահը թիւ 9/11 ընտրական տեղամասում քուէարկել են մօտ 180 ընտրող, ըստ յանձնաժողովի նախագահի՝ ընտրութիւնը անցնում է հանգիստ եւ խաղաղ մթնոլորտում, միայն չափից աւելի շատ լրագրողներն էին խոչընդոտում իրենց ներկայութեամբ յանձնաժողովի աշխատանքներին:

Այս տեղամասում իր քաղաքացիական պարտքը կատարեց նաեւ արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանը: «Ես յուսով եմ, որ լաւ ընտրութիւն կը լինի եւ ընտրութիւնները կ'անցնեն օրինական: Յոյս ունեմ, որ յաղթողին բոլորս կը շնորհաւորենք», - ասաց նախարարը: Նրա կարծիքով, կը յաղթի այն թեկնածուն, որն աւելի արժանի է, իսկ ինքը քուէարկել է յանուն խաղաղութեան շարունակականութեան, անվտանգութեան եւ Հայաստանի զարգացման: Օսկանեանը նկատեց, որ ցանկալի է՝ ընտրութիւններն աւարտուեն մէկ փուլով, սակայն եթէ երկրորդ փուլ լինի, պէտք է դրան պատրաստ լինենք: «Եկէք յուսանք, որ ամէն ինչ լաւ կը լինի եւ մենք կը շարունակենք մեր գործունէութիւնը», - ասաց արտաքին գործերի նախարարը:

ի դէպ, նկատենք որ եթէ առաջին տիկին Բելլա Քոչարեանը, նրանց դուստրը եւ հարսը տեղամասից դուրս եկան առանց ծաղիկների, ապա Սերժ Սարգսեանի դստերը եւ տիկնոջը յանձնաժաղովի նախագահն անձամբ նուիրեց վարդերի մեծ փունջ: Ի դէպ, եւ Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի քուէարկութեան ընթացքում տեղամասում էր ՌԴ դաշնային խորհրդի ներկայացուցիչ Վլադիմիր Ռուշայլոն:

## «ԻՆՉ-ՈՐ ՀԱՏՈՐ Է ԲԱՑԻՈՒՄ»

*A1+*, 13:49

Բարձր տրամադրութեամբ Գրողների Միութեան շէնքում տեղակայուած ընտրատեղամասում իր օգտին քուէարկեց նախագահի թեկնածու, ԱԺՄ առաջնորդ Վազգէն

Մանուկեանը: Վերջինս նրա քուէարկութեանը ներկայ լրագրողներին հաւաստիացրեց, որ ընտրութիւնների արդարութիւնն ու մաքրութիւնը կախուած է մեր 100-1000-աւոր քաղաքացիների կամքից ու ցանկութիւնից. «Ես մեր ժողովրդին հաւատում եմ եւ հաւատում եմ, որ յաղթանակ կը լինի»:

Ինչո՞վ են կարեւոր այս ընտրութիւնները. «2008թ. նախագահական ընտրութիւնները որպէս նախագահական ընտրութիւններ կարեւոր են եւ համոզուած եմ, որ 20-ամեակի մէջ ինչ որ հատոր փակւում է, ինչ որ հատոր է բացւում, կարեւոր է այդ առաջին էջի վրայ ինչ կը գրուի»: Իսկ Վազգէն Մանուկեանի ընտանիքը ինչպէ՞ս է այս ամէնին վերաբերւում, նա ասաց, որ ընտանիքը միշտ եղել է քաղաքականութեան մէջ, դեռեւս 1998 թ. Ղարաբաղ Կոմիտէի բոլոր նիստերը անցկացուել են իրենց տանը եւ նրանք սովոր են այս իրավիճակին:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՇՏԱԲԻ ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 13:59

Նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի կենտրոնական շտաբը հանդէս է եկել մեկնաբանութեամբ, որում մասնաւորապէս ասւում է. «Վաղ առաւօտից ինտերնէտ որոշ կայքերում պարբերաբար լուրեր են տեղադրւում, թէ իբր ՀՀ նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի վստահուած անձինք ծեծի են ենթարկում Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցներին: Սերժ Սարգսեանի կենտրոնական շտաբից հաղորդում են, որ այդ միջադէպերի շղթան Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի կողմից նախապէս ծրագրուած մարտավարութիւն է, որի թիրախ են հանդիսանում հէնց Տէր-Պետրոսեանի կողմնակիցները: Ճշտուած է, որ Տէր-Պետրոսեանի կողմնակիցները իրենք են ծեծի ենթարկում իրենց վստահուած անձանց եւ օպերատիւ կերպով այդ տեղեկութիւնը տեղադրում իրենց հետ համագործակցող լրատուամիջոցների կայքերում: Նպատակը պարզ է. ամէն-ինչ անել ստուեր նետելու ընտրութիւնների վրայ»:

Սերժ Սարգսեանի շտաբը նաեւ տեղեկացնում է, թէ Մալաթիա-Սեբաստիայի 08/21 ընտրատեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի 4-5 անդամներ դաժան ծեծի են ենթարկել նոյն տեղամասի յանձնաժողովի նախագահ Հրաչ Պետրոսեանին: Միջադէպի առնչութեամբ վերջինս յայտարարութիւն է տուել ՆԳ մարմիններին:

## ՉԿՆՔՈՒԱԾ ԵՒ ՉՍՏՈՐԱԳՐՈՒԱԾ ՏԵՂԵԿԱՆՔՆԵՐ

*Lragir.am*, 14:12

Ըստ Վազգէն Մանուկեանի վստահուած անձ Սամուէլ Գալստեանի, թիւ 10/25 տեղամասում (Խուլ-Համրերի Մշակոյթի Պալատ) 10-15 մարդ փորձել են քուէարկել՝ ձեռքներին ունենալով չկնքուած եւ չստորագրուած տեղեկանքներ: Վստահուած անձանց ահազանգով եւ պահանջով յանձնաժողովի անդամները կանխել են անօրինական քուէարկութեան փորձը, նրանցից երկուսի ձեռքից վերցուել են տեղեկանքները:

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*A1+*, 15:00

Յարգելի ընթերցող, մեր կայքի խափանումները պայմանաւորուած են այցելուների աննախադէպ թուով, ինչպէս նաեւ, համակարգչահէնների «յարձակումներով»: Հայցում

ենք Ձեր ներողամտութիւնը, ու տեղեկացնում, որ խափանումների ժամանակ օրուայ լրահոսին կարող էք հետեւել http://www.elections.a1plus.am/, կայքում:

Այնտեղ կարող էք նաեւ ծանօթանալ այն խախտումներին ու յայտարարութիւններին, որոնք անում են թեկնածուների նախընտրական շտաբերը, դիտորդները, ոստիկանութիւնը, դատախազութիւնը:

Յարգելի թեկնածուներ եւ նրանց աջակցող ուժեր, դիտորդներ, եթէ դուք արձանագրել էք խախտումներ, ապա այն կարող էք ուղարկել մեզ info@a1plus.am եւ a1plus@a1plus.am էլեկտրոնային հասցէներով:

## ՔՈՒԷԱՐԿԵՑ ՆՈՐ ՍԿԶԲԻ ԺԱՄԱՑՈՅՑԸ ՄԻԱՑՆԵԼՈՒ ՕԳՏԻՆ

*A1+*, 15:03

Նախագահի թեկնածու, ՕԵԿ առաջնորդ Արթուր Բաղդասարեանը 10/28 ընտրատեղամաս եկաւ կնոջ հետ եւ քուէարկեց Նոր Հայաստանի օգտին: Նրա տրամադրութիւնը բաւականին բարձր էր: Իսկ թէ ինչ՞ւ Նոր Հայաստանի, որպէսզի, ըստ նրա՝ «վերջ դրուի աղքատութեանն ու ամենաթողութեանը», որ նշանակում է նոր ռազմավարութիւն ու նոր նպատակներ մեր ազգի ու երկրի համար. «Ի վերջոյ, ես քուէարկեցի նոր սկզբի ժամացոյցը միացնելու օգտին, որը նշանակում է յաջողութիւններ ու հնարաւորութիւններ մեր բոլոր օջախների ու հայրենակիցների համար»:

Քուէրակութիւնից յետոյ Արթուր Բաղդասարեանը օրը անցկացնելու էր ՕԵԿ նախընտրական գրասենեակում եւ «սպասելու է լաւ լուրերի»: Իսկ լաւ լուրերի յոյսեր կա՞ն. «Ես բազմիցս ասել եմ, որ ընտրակեղծիքներով ու ընտրակաշառքներով ընտրուած Հայաստանի նախագահը նշանակում է մեր երկիրը դատապարտել: Յանկանում եմ, որ ընտրութիւնները անցնեն բաց, ազատ եւ թափանցիկ, եւ ժողովուրդը կարողանայ ընտրել իր նախագահին»:

Ի դէպ, ըստ նախագահի թեկնածուի՝ իր ընտրութեան պահին արդէն արձանագրուել են որոշ խախտումներ:

## «ԻՄ ՁԱՅՆԵՐԻՆ ԴՈՒՔ ԷՔ ՏԷՐ ԿԱՆԳՆԵԼՈՒ»

*A1+*, 15:06

«Ես յաղթելու եմ առաջին փուլում 99 տոկոս ձայներով», - իր քուէարկութիւնից յետոյ լրագրողների հարցերին պատասխանելիս ասաց ՀՀ առաջին նախագահ, նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Նա քուէարկութեան եկել էր կնոջ եւ թոռների ուղեկցութեամբ: Տէր-Պետրոսեանի քուէարկած ծրարը քուէատուփի մէջ նետեց փոքրիկ Յակոբը:

Լրագրողների հարցերին պատասխանելիս Լեւոն Տէր-Պետրոսեանը ընդգծեց, որ իր տեղեկութիւններով, արդէն «շատ վատ բաներ են կատարւում», նոյնիսկ իրեն հարց ուղղած լրագրողին խորհուրդ տուեց շրջել տեղամասերով եւ տեսնել, թէ ինչ է կատարւում»: Յանուն ինչի՞ էք քուէարկել՝ հարցին՝ Տէր-Պետրոսեանը պատասխանեց՝ «յանուն ազատութեան»: Իսկ լրագրողի հարցին, թէ ինչպէս են տէր կանգնելու իրեն տրուած ձայներին, Տէր-Պետրոսեանը պատասխանեց. «Իմ ձայներին դուք էք տէր կանգնելու»:

Նա չցանկացաւ մեկնաբանել Սերժ Սարգսեանի յայտարարութիւնը, թէ պայքար

մինչեւ վերջ կարող է նշանակել պայքար մինչեւ այսօրուայ վերջ՝ ժամը 20.00-ն, ասելով, որ «աւելի լուրջ գործեր ունի, քան Սերժին մեկնաբանելը»: Իսկ մեր հարցին, թէ ինչ է նշանակում պայքար մինչեւ վերջ՝ իր պատկերացմամբ, Լեւոն Տէր-Պետրոսեանը պատասխանեց. «Մինչեւ ընտրութիւնների օրինական հաստատագրումը»:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԸ ԱՐՁԱՆԱԳՐՈՒՄ Է ՏՈՏԱԼ ԸՆՏՐԱԽԱԽՏՈՒՄՆԵՐ ԵՒ ՅԱՅՏԱՐԱՐՈՒՄ, ՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՉԿԱՅ

*Lragir.am*, 15:11

Քրէական իշխանութիւնը չունենալով ընտրութեանը յաղթելու այլ շանս, ամբողջ հանրապետութեան տարածքով մէկ դիմել են տարբեր տեսակի ընտրակեղծիքների, այդ թւում կիրառելով նաեւ ֆիզիկական բռնութիւն: Այդ մասին փետրուարի 19-ի կէսօրին հրաւիրած մամուլի ասուլիսի ընթացքում յայտարարել է նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի մամուլի խօսնակ Արման Մուսինեանը: Մասնաւորապէս, Աբովեան քաղաքի 28/06 ընտրատեղամասում ծեծի են ենթարկուել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անիձինք Գուրգէն Եղիազարեանը, Երջանիկ Աբգարեանը, Համբարձում Եղիազարեանը եւ Ռուբէն Միրումեանը: Նրանց ծեծել են ձեռքի մետաղէ կաստէտներով: Ծեծուածները մասնակցել են մամուլի ասուլիսին եւ յայտարարել, որ Աբովեան քաղաքում տիրում է զանգուածային ահաբեկութեան մթնոլորտ, իրենք առաւօտեան ստանալով տեղեկութիւն, որ իրավիճակն Աբովեանում ուղղակի անվերահսկելի է, միանգամից մեկնել են այնտեղ: Տեղում պարզել են, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց ուղղակի դուրս են հրաւիրում ընտրատեղամասերից եւ ասում, որ վերադառնալու դէպքում նրանց համար ուղղակի վատ կը լինի: Բացի այդ, Աբգարեանն ու Եղիազարեանը պարզել են նաեւ, որ այդ ընտրատեղամասում արդէն արկղի մէջ կայ մօտ 500 քուէաթերթիկ, մինչդեռ քուէարկութեանը մասնակցել է ընդամէնը 124 մարդ: Ընտրատեղամասում փորձելով կազմել այդ մասին արձանագրութիւն, Երջանիկ Աբգարեանն ու Գուրգէն Եզիազարեանը ծեծի են ենթարկուել 7-8 անձանց կողմից, որոնց Երջանիկ Աբգարեանը տալիս է «հաստավիզ», «բուղա» բնորոշումը: Գուրգէն Եղիազարեանը յայտարարում է, որ նրանք մօտեցել են իրենց եւ որոշ ժամանակ զրուցելուց եւ հարցեր տալուց յետոյ ուղղակի միանգամից սկսել են հարուածել: Եղիազարեանի խօսքով, այդ միջադէպին, երբ ընտրատեղամասում իրենց են մօտեցել այդ «հաստավզերը», հետեւել է մի 25-26 տարեկան ոստիկանութեան սերժանտ, որին ուղղակի նրանք հրամայել են մի կողմ քաշուել, իսկ յետոյ ընդհանրապէս դուրս գալ ընտրատեղամասից: Գուրգէն Եղիազարեանն ասում է, որ այդպիսի վիճակում է Աբովեանի ամբողջ ոստիկանութիւնը:

Լեւոն Տէր-Պետրոսեանի մամուլի խօսնակ Արման Մուսինեանը նշում է, որ զանգուածային ընտրախախտումներ են տեղի ունենում Աբովեան քաղաքում, Էրեբունի համայնքում, Արտաշատ քաղաքում: Արման Մուսինեանի խօսքով, կարելի է ասել, որ այդ տեղերում ընտրութիւն ուղղակի տեղի չի ունենում: Նման վիճակ է նաեւ Աւան համայնքում: Էրեբունիում ընտրախախտումների գործընթացն, ըստ Արման Մուսինեանի, իրականացւում է թաղապետի եւ ոստիկանապետի գլխաւորութեամբ, իսկ յանձնաժողովների նախագահներին հրահանգուած է արձանագրութիւններ չկազմել:

Աւանի տեղամասերից մէկից, 08 001 պետհամարանիշի Ֆոլցվագէն Տվարէ մակնիշի մեքենայով առեւանգել են Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձին ու տարել

Հարսնաքար հիւրանոցային համալիր, որը պատկանում է ԱԺ պատգամաւոր Ռուբէն Հայրապետեանին:

Առաւօտեան Երեւանում ծեծի է ենթարկուել *Ա1+* հեռուստաընկերութեան օպերատորը, ով փորձել է նկարել Խաչատուր Սուքիասեանի տան մերձակայքում հաւաքուած խմբերին, որոնք ըստ Արման Մուսինեանի, այնտեղ են հաւաքուել Կենտրոնի թաղապետ Գագիկ Բեգլարեանի հրահանգով:

Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսնակը նշել է, որ Թալինում յայտնաբերել են կեղծ անձնագիր, իսկ Արարատեան առաջին զանգուածի 8/01 ընտրատեղամասում յայտնաբերուել է կարուսէլի դէպք, այն ֆիքսել են, վերցրել են Սերժ Սարգսեանի անունով քուէարկուած քուէաթերթիկները, որոնք բաժանւում էին քաղաքացիներին, որպէսզի նրանք այդ քուէաթերթիկները նետեն արկղի մէջ, իսկ մաքուրը դուրս բերեն իրենց հետ:

Գումի շուկան, ըստ Արման Մուսինեանի, վերածուել է ոստիկանութեան անձնագրերի բաժնի, ուր տարւում են գիւղացիներ, ստանում են 9-րդ ձեւ եւ տարւում են Երեւանի տարբեր տեղամասեր քուէարկութեան:

Երեւանից էլ մարդկանց են մեքենաներով քուէարկութեան տանում Սպիտակ, ասում է Արման Մուսինեանը: Նրա խօսքով, տարածուած են զանգուածային ընտրակաշառքի բաժանումները եւ քարոզչութիւնը Սերժ Սարգսեանի օգտին:

Փաստելով, որ ընտրախախտումները զանգուածային են ու բազմաբնոյթ, Լեւոն Տէր-Պետրոսեանի մամուլի խօսնակը նշել է, որ արդէն իսկ այդ ամէնից կարելի է եզրակացնել, որ Հայաստանում ընտրութիւն տեղի չի ունենում, այլ առկայ է ընտրութեան անուան տակ իշխանութիւնը կրկին զաւթելու փորձ: Սակայն դա, ըստ Արման Մուսինեանի, իշխանութեան վերջին ջղաձգումներն են, որոնք չեն կարող յաջողութիւն ունենալ: Խախտումների փաստերը հաւաքւում են եւ ներկայացուելու են համապատասխան պետական մարմիններին, միջազգային դիտորդներին ու հանրութեանը: Սակայն քանի որ Տէր-Պետրոսեանի թիմը համոզուած է, որ անգամ այդ դէպքում յաղթանակը լինելու է իրենցը, Արման Մուսինեանը յայտարարում է, որ բոլոր ընտրակեղծարարներն անպայման պատասխանատուութիւն են կրելու, որովհետեւ նրանց արածը քրէական յանցանք է:

## ԾԵԾՈՒՄ ԵՆ ՈՍՏԻԿԱՆԱՊԵՏԻ ՀԱՐԱԶԱՏԻ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

*Lragir.am*, 15:15

Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի մամուլի խօսնակ Արման Մուսինեանը փետրուարի 19-ին լրագրողներին տեղեկացրել է, որ Վարդաձոր գիւղի տեղամաս են ներխուժել 50 հարբած անձինք, որոնք դաժան ծեծի են ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց: Արման Մուսինեանի տուեալով, այդ խումբը գլխաւորել է Հայաստանի ոստիկանապետ Հայկ Յարութիւնեանի մօրաքրոջ որդին: Արման Մուսինեանը տեղեկացրել է նաեւ, որ Ճամբարակի քաղաքապետն իրականացնում է բաց քուէարկութիւն:

## ՆՈՐ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ԸՆՏՐԱԽԱԽՏՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Lragir.am*, 15:16

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը շարունակում է ստանալ ընտրախախտումների վերաբերեալ ահազանգեր:

Ժամը 14:30-ի դրութեամբ ստացուել են նոր տեղեկութիւններ: Մասնաւորապէս Երեւանի թիւ 34/24, 34/25, 34/26 տեղամասեր միկրօաւտօբուսներով ընտրողներ են բերում եւ հէնց տեղամասերի մօտ ընտրակաշառք տալիս Սերժ Սարգսեանին ընտրելու համար: Մի քաղաքացի տեսել է, թէ ինչպէս է ընտրատեղամասի մատոյցներում BMW մակնիշի մի մեքենայից ընտրակաշառք բաժանւում:

Մասիսի Նիզամի գիւղի թիւ 16/44 ընտրատեղամասում յանձնաժողովի նախագահը չի թոյլատրում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձին ծանօթանալ արձանագրութեանը:

Սեւան քաղաքում հիւանդանոցում ստացիոնար բուժում անցնող հիւանդ ընտրողների ցուցակը աւելացել է 40 մարդով:

6/29 տեղամասի ընտրողներից մէկը բողոքել է, որ իր բնակարանի վրայ կեղծ հաշուառուած մարդ կայ, ով մասնակցել է ընտրութեանը:

Թիւ 4/24 ընտրատեղամասում ծեծկռտուք է եղել:

Երեւանի թիւ 100 դպրոցում արձանագրուել է կարուսէլ: Կազմուել է արձանագրութիւն:

Էրեբենու 13/11 տեղամասում արձանագրուել է բաց քուէարկութիւն եւ լցոնումներ:

ԱԺ պատգամաւոր Արսէն Աւագեանը յայտնել է, որ Աբովեան-Պուշկին փողոցներում 57 երթուղային տաքսիների մեքենաներով քաղաքացիներին տեղափոխում են ընտրատարածքներ: Իրաւական շտապ օգնութեան մեքենան մեկնել է, սակայն երթուղային տաքսիներ չեն եղել: Նոյն 57 երթուղային տաքսիների մեքենաներ են նկատել նաեւ Ջոն Կիրակոսեանի անուան դպրոցի մօտ:

## 38 ԴԻՄՈՒՄ ԺԱՄԸ 15-Ի ԴՐՈՒԹԵԱՄԲ

*Lragir.am*, 15:19

2008 թուականի փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութեան կապակցութեամբ փետրուարի 19-ի ժամը 15.00-ի դրութեամբ ընտրողների ցուցակներում ուղղումներ կատարելու պահանջով ՀՀ ընդհանուր իրաւասութեան դատարաններ մուտքագրուել են հետեւեալ դիմումները.

1. Լոռու մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 26 դիմում, որոնք բաւարարուել են:

2. Սիւնիքի մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որը մերժուել է:

3. Արաբկիր եւ Քանաքեռ-Զէյթուն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 6 դիմում, որոնք մերժուել են:

4. Աջափնեակ եւ Դաւթաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որն ընթացքի մէջ է:

5. Աւան եւ Նոր Նորք համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 3 դիմում, որոնք բաւարարուել են:

6. Կենտրոն եւ Նորք-Մարաշ համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որն ընթացքի մէջ է:

2008 թուականի փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութիւնների կապակցութեամբ նոյն օրուայ ժամը 15.00-ի դրութեամբ ՀՀ վարչական դատարան ընտրական վէճերով

դիմումներ չեն մուտքագրուել: Այդ մասին տեղեկացնում է Վճռաբեկ Դատարանի մամուլի քարտուղար Ալինա Ենգոյեանը:

## ԾԵԾԵԼ ԵՆ *ՀԺ*-Ի ԼՐԱԳՐՈՂԻՆ

*A1+*, 15:19

Այսօր Էրեբունու թիւ 43 դպրոցում տեղակայուած 13/16 տեղամասում ոստիկանութեան աչքի առջեւ ծեծի է ենթարկուել *Հայկական ժամանակ* օրաթերթի թղթակից Լուսինէ Բարսեղեանը: Վերջինս ընդամէնը տեղեկացել է, որ մի խումբ քուէաթերթիկներ են փախցրել յանձնաժողովի նախագահի սենեակ եւ թաքցրել տեղում: Երբ Տէր-Պետրոսեանի ներկայացուցիչը եւ յանձնաժողովում Ժառանգութեան անդամ Արմէն Մարտիրոսեանը պահանջել են արձագնագրութիւն կազմել, յանձնաժողովի նախագահը չի կատարել, *Հայկական ժամանակ*ի լրագրողը փորձել է յանձնաժողովի նախագահից ճշտել ինֆորմացիան:

Դրան ի պատասխան յանձնաժողովի նախագահ Վասիլ Աֆեանն ուղղակի ներս է հրաւիրել ոստիկաններին, որոնք փորձել են լրագրողին հեռացնել տեղամասից: Այդ ընթացքում լրագրողը շարունակել է կատարել իր մասնագիտական պարտքը, ինչի արդիւնքում տեղամաս ներխուժած մի երիտասարդ նախ լուսանկարել է լրագրողին, ապա նաեւ նրա ձեռքից խլել ֆոտոապարատն ու ձայնագրիչը եւ սկսել ոտքերով եւ ձեռքերով հարուածել Լուսինէ Բարսեղեանին: Այս ամէնին ականատես են եղել եւ չեն խոչընդոտել ոստիկանները:

## «ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՆ ՈՒՂԵԿՑՈՒԵԼՈՒ ԵՆ ՀՈԳԵԲԱՆԱԿԱՆ ՃՆՇՈՒՄՆԵՐՈՎ»

*A1+*, 15:20

Աւան համայնքում առաւօտեան ժամը 10:30-ի տուեալներով ընտրութիւնների մասնակցութեան բաւականին մեծ ակտիւութիւն էր նկատւում: Ինչպէս *Ա1+*-ին տեղեկացրեց Աւանի թիւ 1/13 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահ Արշաւիր Բաբայեանը, այդ ժամին մօտ 200 մարդ արդէն կատարել է իր ընտրութիւնը: Այս ընտրատեղամասում, ի դէպ, ընտրողների ընդհանուր թիւը 1928 է, իսկ լրացուցիչ ցուցակներով՝ 119: Ըստ Արշաւիր Բաբայեանի՝ այս մարդիկ հիմնականում այլ քաղաքներից են՝ Վանաձոր, Գիւմրի եւ այլն, որոնք մայրաքաղաքում կամ վարձով են ապրում, կամ աշխատանքի բերումով են այստեղ:

Յանձնաժողովի նախագահի վստահեցմամբ՝ դեռ ոչ մի դժգոհութիւն կամ խնդիր չի եղել, քանի որ ցուցակները մաքսիմում մաքրուած են եւ գտնւում են լաւ վիճակում՝ մահացածներ, գրանցումից դուրս եկած էլ չկան:

Այս ընտրատեղամասում ներկայ էին միայն Լեւոն Տէր-Պետրոսեանի, Վահան Յովհաննիսեան, Սերժ Սարգսեանի վստահուած անձինք: Առաւօտեան տեղամաս այցելել էին նաեւ միջազգային դիտորդները:

Աւանի թիւ 1/15 ընտրատեղամասում, որը գտնւում էր թիւ 171 դպրոցում, ընտրութիւն էին կատարում Աւանի համայնքապետ Տարօն Մարգարեանը եւ Երեւանի քաղաքապետ Երուանդ Զախարեանը, որը եւս Աւանի բնակիչ է:

Տարօն Մարգարեանի վստահեցմամբ՝ ընտրութիւնները բնականոն հունով են ընթա-

նում: «Համայնքի կողմից համապատասխան գույքը տրամադրուել է, ձեւաւորուել են ընտրատեղամասերը: Ունենք մի տեղամաս, որը յատուկ յարմարեցուել է հաշմանդամների համար. ստեղծուել են թեքահարթակներ անուասայլակների համար», - *Ա1+*-ին ասաց Աւանի համայնքապետը:

Երուանդ Զախարեանն անկեղծացաւ՝ ասելով, որ ՀՀԿ-ի թեկնածուն առաջին փուլով պէտք է յաղթի: «Ես Աւանի բնակիչ եմ եւ այստեղ եմ քուէարկում եւ քուէարկում եմ յօգուտ երկրի կայուն զարգացման, ի նպաստ մեր ժողովրդի: Ընտրութիւնների ընթացքը մասնակցութեան առումով բաւականին խոստումնալից է: Նոր ճշտեցինք, որ այս պահի դրութեամբ մօտ 2 500 մարդ մասնակցել է ընտրութեան», - ասաց Երեւանի քաղաքապետը:

Այս ընտրատեղամասում ներկայ էին միայն Լեւոն Տէր-Պետրոսեանի, Արթուր Բաղդասարեանի, Սերժ Սարգսեանի, Արտաշէս Գեղամեանի վստահուած անձինք: Նրանք բոլորը գոհ էին ընտրութիւնների ընթացքից: Միայն Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Գոռ Խլղաթեանը նշեց, որ, ճիշտ է, ընտրատեղամասում ընթացքը բնականոն է գնում, իսկ թէ ինչ է կատարւում դրսում, չգիտի: «Ընտրութիւններն ուղեկցուելու են հոգեբանօրէն ճնշումների, վախի եւ սարսափի մթնոլորտում: Սեփական փորձից ելնելով՝ դա գիտեմ», - *Ա1+*-ին ասաց նա:

Ի դէպ, երկու ընտրատեղամասում էլ մարդիկ ընտրութիւն էին կատարում յանձնաժողովին մէջքով կանգնած. քուէախցիկների դիրքն այդպիսին էր:

## ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶՈՒԹԻՒՆԸ ՀԵՐՔՈՒՄ Է

*Lragir.am*, 15:27

Հայաստանի Գլխաւոր Դատախազութիւնը հերքել է տարածուած տեղեկութիւնը Տաւուշի մարզի Լուսաձոր եւ Ակնաղբիւր գիւղերում զինծառայողների քուէարկութեան ընթացքում ընտրախախտումների վերաբերեալ:

Մասնաւորապէս, դատախազութիւնը տեղեկացնում է, որ «ստուգումների արդիւնքում պարզուել է, որ խախտումների մասին տեղեկատուութիւնը չի համապատասխանում իրականութեանը»: Մասնաւորապէս, դատախազութիւնը նշում է, որ Հայաստանի Քրէական Օրէնսգրքում ոչ մի սահմանափակում չկայ զինծառայողների դիտորդական առաքելութեան համար, եթէ նրանք չեն աջակցում որեւէ թեկնածուի: Տուեալ դէպքում, փաստում է դատախազութիւնը, նշուած անձինք չեն պաշտպանում որեւէ թեկնածուի եւ ընտրատեղամասերում գտնւում են քաղաքացիական հագուստով, ոչ աշխատանքային օրը: Գլխաւոր Դատախազութիւնը հաղորդում է նաեւ, որ խախտում չի եղել քուէախցիկների տեղակայման հարցում: Գլխաւոր Դատախազութիւնը պատասխանում է նաեւ այն տեղեկութեանը, որ զինծառայողները աւտօբուսներով տեղափոխւում են ընտրատեղամասից տեղամաս եւ մի քանի քուէարկութիւն իրականացնում: «Զինուորական մասից զինծառայողները չորս աւտօբուսներով տեղափոխւում են ընտրական տեղամաս եւ յետ դառնում, եւ միեւնոյն աւտօբուսը կարող է գտնուել տարբեր տեղամասերում», ասուած է Գլխաւոր Դատախազութեան յայտարարութեան մէջ:

## ԱՐԴԷՆ ԿԱՅ 36,48 ՏՈԿՈՍ

*Lragir.am*, 15:49

Հայաստանի Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի տուեալով, փետրուարի 19-ին ժամը 14-ի դրութեամբ նախագահի ընտրութեանը մասնակցել է ընտրողների 36,48 տոկոսը: Այդ մասին լրագրողներին է յայտնել ԿԸՅ անդամ Էդգար Սարատիկեանը: Տուեալները ստացուել են բոլոր 1923 տեղամասերից: ԿԸՅ տուեալով, ընտրութեանը արդէն մասնակցել է 864 952 մարդ: Համաձայն ոստիկանութեան տուեալի, Հայաստանում կայ 2 միլիոն 328 հազար 320 ընտրող:

## ԱՐԱՄՈՒՍՅԻ ՔԱՋ ՊԱՏԱՆԻ

*Lragir.am*, 16:01

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը տարածել է նախագահի ընտրութեան օրուայ ժամը 15.30-ի դրութեամբ ունեցած տեղեկատուութիւնն ընտրութեան ընթացքում արձանագրուած խախտումների վերաբերեալ: Մասնաւորապէս, Վանաձոր քաղաքացի Իշխան Մանուկեան որդին վերադարձել է բանակից, հաշուառումից հանուած է, սակայն դատարանը ընտրացուցակներում վերականգնուելու դիմումը վարոյթ չի ընդունում: Ընտրացուցակներում վերականգնուելու դիմումները վարոյթ չեն ընդունում նաեւ Վանաձորի, Գիւմրիի, Երեւանի Շէնքաւիթ եւ Կենտրոն-Նորք-Մարաշ համայնքների դատարանները:

Թիւ 13/13 ընտրատեղամասում մարդկանց տանում են քուէարկութեան՝ Առաջ Հայաստան կարգախօսով դրօշներով:

Թիւ 3/27 ընտրատեղամասի մօտ կարմիր OPEL մակնիշի մեքենայում նստած մարդիկ ընտրացուցակներ ունեն, ընտրողների մի մասը քուէարկութիւնից առաջ նրանց է մօտենում:

Շիրվանզադէի անուան դպրոցում՝ 5/21 ընտրատեղամասում մի խումբ երիտասարդների մի քանի անգամ քուէարկել են, սակայն յանձնաժողովը նրանց անձնագրերում կնիք չի դնում:

Դիտորդների՝ կնիք դնելու պահանջին ի պատասխան յանձնաժողովից սպառնացել են. տուն չէք հասնի:

Աշտարակի 14/7 տեղամասում վստահուած անձ Սօնա Մալխասեանին ամէն կերպ ահաբեկելով փորձում են դուրս հանել ընտրատեղամասից: Ժամը 15:30-ի դրութեամբ Սօնա Մալխասեանը դեռ ընտրատեղամասում է:

Ժամը 15:30–ի մատոյցներում 162 դպրոցում տեղակայուած ընտրատեղամասում ծեծկռտուք է եղել:

Արամուսի թիւ 27/25 ընտրատեղամասում զանգուածային լցոնումներ են:

## ՀԱՇՄԱՆԴԱՄՆԵՐԸ ՉԵՆ ԿԱՐՈՂԱՆԱԼՈՒ ԸՆՏՐԵԼ

*A1+*, 16:48

Այն հաշմանդամները, որոնք ապրում են բարձրայարկերում ազատ տեղաշարժուելու խնդիր ունեն: Ազատ տեղաշարժուելու մատչելիութեան բացակայութեան պատճառով նրանք զրկուել են ընտրատեղամաս գնալու եւ ընտրելու հնարաւորութիւնից: «Նրանք մատչելիութեան խնդիր ունեն եւ բացարձակապէս չեն կարողանում մասնակցել ընտրու-

թիւններին», - *Ա1+*-ի հետ զրոյցում ասաց Ողնաշարի Վնասուածքով Հաշմանդամների Վերածնունդ բարեգործական հիմնադրամի գործադիր տնօրէն Միշա Մկրտչեանը:

Նրա ասելով՝ այսօր տարբեր կազմակերպութիւններ «ճչում, գոռում են, թէ դպրոցներում, նախընտրական տարածքներում ստեղծուել են յարմարութիւններ»: «Իսկ ո՞ւր են այդ յարմարութիւնները, որոնցով հաշմանդամները պէտք է հասնեն ընտրատարածք: Բնակարանից փողոց դուրս գալու յարմարութիւնների մասին է խօսքս, երբ վերելակները յարմարեցուած չեն՝ շատ նեղ են անուասայլակների համար, աստիճանները շատ են ու դժուարանում են իջնելիս: Եթէ իջաւ էլ փողոց, ապա ինչպէ՞ս է հասնելու ընտրատեղամաս», - նշեց Մկրտչեանը, որը եւս հաշմանդամ է:

Նա, սակայն, ինքն իր համար կարողացել է յարմարութիւններ ստեղծել, լուծել որոշ խնդիրներ՝ օրինակ՝ իր համար վերելակ է պատրաստել, համապատասխան պայմաններ ստեղծել մեքենայի մէջ եւ այլն: «Իսկ ովքեր չեն կարողանում կամ ի վիճակի չեն նման պայմաններ ստեղծել, ո՞նց պիտի լուծուի այդ հարցը: Մանաւանդ դա վերաբերում է կանանց եւ աղջիկներին, որոնց մօտ այդ խնդիրն առաջնահերթ բարդ է: Ընդհանրապէս, ոչ մի բան մատչելի չէ այդ անուասայլակների համար», - դժգոհեց Միշա Մկրտչեանը:

Նա չի ժխտում, որ մի քանի ընտրատեղամասերի անմիջապէս մուտքի մօտ ինչ-որ պայմաններ ստեղծուել են՝ մի քանի թեքահարթակներ, որ հաշմանդամը կարողանայ բարձրանալ ու հասնել մինչեւ ընտրատուփ: «Իսկ մինչեւ այնտեղ հասնե՞լը: Հաշմանդամն ինչպէ՞ս պէտք է իջնի բարձրայարկից, ինչպէ՞ս պէտք է գնայ հասնի այնտեղ», - աւելացրեց Մկրտչեանը:

Նա յիշում է, որ երբ մի անգամ ակցիա կազմակերպեցին ու մայրաքաղաքի մի մասի մայթերն յարմարեցրին անուասայլակների համար: «Գնանք նայենք, թէ ամսուայ մէջ քանի հաշմանդամ է օգտւում այդ մայթերից: Առաջնահերթ խնդիրը կայ շէնքում, շքամուտքում, բակում, որը լուծուած չէ՝ ինչպէ՞ս բնակարանից գնայ հասնի թէկուզ ամենամօտ կրպակը», - նկատեց բարեգործական հիմնադրամի ղեկավարը: Նա բերեց Նոր Նորքի զանգուածում ապրող վզի կոտրուածքով հաշմանդամ դարձած Սերոբ Միքայէլեանի օրինակը, որն ապրում է միայնակ: Հաց առնելու կամ միւս բաների համար նա ամէն անգամ հարեւաններին է դիմում: «Դա սարսափելի վիճակ է: Ես կարող եմ նման շատ մարդկանց տուեալներ ու հասցէներ տալ, որոնք ի վիճակի չեն, հնարաւորութիւն չունեն գնալ ընտրութեան», - ասաց Միշա Միքայէլեանը:

Հարցի առնչութեամբ դիմեցինք ընտրական իրաւունքի խնդիրներով անվճար իրաւաբանական օգնութեան թէժ գծի իրաւաբաններին: Մեզ պատասխանեցին, որ հաշմանդամների քուէրակութիւնն ապահովելու կարգը պէտք է սահմանի Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը, իսկ ընտրատեղամասի համապատասխան կահաւորանքի եւ միւս յարմարութիւնների պատասխանատուն համայնքի ղեկավարն է: «Եթէ հաշմանդամը հնարաւորութիւն չունի բարձանալու, ապա թեքահարթակներ պէտք է լինեն, որոնցով ապահովեն նրա ընտրութեան հնարաւորութիւնը: Հակառակ դէպքում պէտք է բողոքարկուի նրանց անգործութիւնը, որ այդ պայմանները չեն ապահովել», - *Ա1+*-ի հարցին պատասխանեցին թէժ գծից:

## «ԱՆՁՆԱԳՐԵՐՆ Է ԽԼՈՒՄ»

*A1+*, 16:49

*Ա1+*-ը ահազանգ էր ստացել, որ Արաբկիրի 2/23 ընտրատեղամասում խոչընդոտւում

է վստահուած անձանց, ապա յանձնաժողովի անդամների գործունէութիւնը: Ապա ընտրատեղամաս մեկնելով՝ պարզեցինք, որ քիչ առաջ միջադէպ էր տեղի ունեցել յանձնաժողովի Ժառանգութիւն կուսակցութեան կողմից նշանակուած անդամի եւ յանձնաժողովի նախագահի միջեւ:

Յանձնաժողովի անդամներից Ժասմին Ալեքսանեանը, ում հետ եւ պատահել էր միջադէպը, ասաց, որ իրեն յանձնաժողովի նախագահը արգելում է նայել անձնագրերին եւ ճշտել գրանցումը:

«Ես կասկածում եմ այս մարդիկ գրանցուած են այստեղ, թէ ոչ, իրաւունք ունեմ նայել անձնագրերը, սակայն...», - ասաց նա:

Յանձնաժողովի նախագահ Նունէ Դաւթեան հակադարձեց տեղի ունեցածը՝ ասելով, որ ընդհակառակը, բողոքող յանձնաժողովի անդամն է խոչընդոտում իրենց գործունէութեանը:

«Ինքը ընտրողների ձեռքներից անձնագրերն է խլում, ուղղակի չգիտեմ ինչի են անում, ցուցակներ են բերել դրսից, ընտրողների անուններ են հարցնում», - ասաց նա, ապա աղմուկ բարձրացրեց ու կանչեց բոլոր ներկայ գտնուող անդամներին եւ վստահուած անձանց հաստատելու իրենց ասածը:

Ընտրատարածքից դուրս գալիս մեզ թաքուն մօտեցաւ Արտաշէս Գեղամեանի վստահուած անձը, ով համաձայնեց խօսել մեզ հետ բոլորի աչքից հեռու:

«Բոլոր գործառոյթներին չեն թողնում մասնակցես, ոչ մի փաստաթուղթ չի թողնում մօտիկից նայել, ես ունեմ փաստաթղթեր, որտեղ նշուած է քաղաքից բացակայողների եւ մահացած մարդկանց անունները, լրացուցիչ ցուցակ ունենք, դրա համար էլ երբ յայտնում ենք, որ կասկածում ենք, շատ անշնորհք եւ անտակտ ձեւով բոթում են» - վրդովուած պատմեց նա, ապա նշեց, որ միջադէպ չի եղել, ուղղակի սադրում են:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ԲՌՆՈՒԹԻՒՆ ԵՆ ԿԻՐԱՌԵԼ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

*Lragir.am*, 16:52

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը շարունակում է ստանալ ընտրախախտումների վերաբերեալ նոր ահազանգեր, ընդ որում շատ ահազանգեր նոյն ընտրատեղամասերից են:

Նոր ընտրախախտումներ են արձանագրուել Էրեբունի համայնքում: 13/16 ընտրատեղամասում անվերահսկելի վիճակ է, բաց քուէարկութիւն, լցոնումներ: Տեղում են բազմաթիւ դիտորդներ, Ժառանգութիւն կուսակցութեան պատգամաւոր Զարուհի Փոստանջեանը, սակայն օրինախախտումները շարունակւում են: «Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան իրաւական շտապ օգնութեան անձնակազմի ներկայութեամբ ոստիկանները բռնութիւն են գործադրել Զարուհի Փոստանջեանի նկատմամբ: Փաստաբան Լիզա Գրիգորեանը այս ամէնը հաւաստող տեսաերիզ ունի: 3/20 ընտրատեղամասի մօտ կանգնած է 99 SS 888 համարանիշով սեւ PRADO մեքենայ, մարդիկ նախքան քուէարկելը մօտենում են այդ մեքենային: Մալաթիա-Սեբաստիայի 174 դպրոցում տեղակայուած թիւ 7/12 ընտրատեղամասում «Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան իրաւական շտապ օգնութեան մեքենաներից մէկի անձնակազմի անդամ, լրագրող Էլմիրա Մարտիրոսեանը

նկարահանել է լցոնման դէպք։ Տեղում ներկայ ոստիկանները լրագրողի ձեռքից վերցրել են ֆոտոխցիկը եւ հանել յիշողութեան քարտը։ Բազմաթիւ ահազանգեր են գալիս, որ յանձնաժողովի նախագահները ընդդիմադիր վստահուած անձանց թոյլ չեն տալիս ստուգել ընտրողների անձնագրերը։

## ՎԱՐԴԵՆԻՍՈՒՄ ԲԱՑ ՔՈՒԷԱՐԿՈՒԹԻՒՆ Է ԸՆԹԱՆՈՒՄ

*A1+*, 16:50

Վարդենիսից ահազանգ ստացուեց, որ ընտրական տեղամասերում չափից աւելի շատ են կուտակումները, փոքր տեղամասում մօտ 100 հոգի, անգամ քուէարկողից երկու քայլ հեռաւորութեան վրայ երիտասարդներ են եղել հաւաքուած։

Իսկ 2-րդ միջնակարգ դպրոցում տեղակայուած 23/41 տեղամասում, որի յանձնաժողովի նախագահն է Աշոտ Բարսեղեանը, բաց քուէարկութիւն է ընթանում. «Բոլոր տեղամասերում բաց քուէարկութիւն է ընթանում, իսկ տեղամասի դիմաց 5 հազարական դրամներ են բաժանում, յետոյ նոր ընտրողները մտնում են տեղամաս», - ասաց Վարդենիսում աշխատող մեր լրագրողը։ Ի դէպ, նա նաեւ տեղեկացրեց, որ ոչ մի թեկնածուի վստահուած անձը տեղերում չի պայքարում, միայն Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք եւ յանձնաժողովի անդամներն են փորձում պայքարել։

«Օրինակ, փորձում են արձանագրութիւն կազմել, սակայն ոչ մէկը չի ստորագրում», - յայտնեց մեր լրագրողը։ Ի դէպ, նոյն Վարդենիսից տեղեկութիւն ստացանք, որ Գեղարքունիքի մարզպետ Նուէր Պօղոսեանն անձամբ հրաւիրել է իր մօտ Վարդենիսի դպրոցների եւ հիմնարկ ձեռնարկութիւնների տնօրէններին, եւ հրահանգել քուէարկել թեկնածուներից մէկի օգտին։ Իսկ երաժշտական դպրոցի տեղամասի մօտ Շուրա Վարդանեան անունով մէկը, ըստ մեր տեղի լրագրողի, 5 հազարական դրամներ են բաժանում։

## ՄԱՐԴ Է ԹԱՔՆՈՒՄ՞Ծ

*A1+*, 16:50

Վանաձորում երէկուանից զանգուածաբար ընտրակաշառք է բաժանւում։ Այսօր ամբողջ քաղաքի տարածքով շրջում են գծից դուրս եկած միկրօաւտոբուսներ՝ լի մարդկանցով։ Հիմնականում միջինից բարձր տարիքի անձինք են, որոնք ընտրական տեղամասերին են մօտենում համախմբուած։ Պարզեցինք, որ նրանք տեղափոխւում են տարբեր թաղամասերից, սակայն մարդիկ խուսափում են ասել, թէ ում նախաձեռնութեամբ են գալիս։ Թիւ 29/9 ընտրական տեղամասում քաոսային իրավիճակ էր տիրում։

Դրսում հաւաքուած էր մօտ 30-40 մարդ, իսկ ներսում նրանց թիւը հասնում էր 50-60-ի։ 15 րոպէի ընթացքում տեղամասին մօտեցան մէկ աւտօբուս եւ 2 միկրօաւտօբուսներ՝ լցուած մարդկանցով։ Մտնելով ներս՝ արձանագրեցինք բաց քուէարկութեան փաստ, ինչը հաստատեց նաեւ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձը։ Նկարահանող խմբին նկատելուց յետոյ միայն յայտնուեց ոստիկանը, ով սկսեց վերահսկել ներսուդուրս անողների մուտքը։ Իսկ յանձնաժողովի նախագահի տեղակալը, տեսնելով մեզ, յանկարծ սկսեց կարգ սահմանել եւ ժողովրդին դուրս հրաւիրել տեղամասից՝ արդարանալով, թէ իրենք են ներս խցկւում։

Մի քանի երիտասարդներ էլ մօտեցան մեզ՝ խնդրելով չնկարահանել։ Առհասարակ

ընտրական յանձնաժողովներում քուէարկութեան ընթացքից դժգոհ են միայն Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձիք: Նրանք ուղղակի անզօր են գտնւում զանգուածային անկարգութիւնների կանխարգելման հարցում: Թիւ 29/9 ընտրատեղամասում իրավիճակը անձամբ «հսկում» է քաղաքապետի եղբայր Մէյրան Դարբինեանը:

«Այստեղ քուէախցիկի ետեւում մարդ է թաքնուած, նա նայում է եւ զաղտնի հասկացնում, ով Լեւոնին է ընտրում քուէատուփի մօտ միտումնաւոր փչացնում են քուէաթերթիկը կամ ուղղակի չեն կնքում», - ասել է դիտորդների մէկը, որը չի յայտնել իր անունը:

## «ՅԱՏՈՒԿ ՄԱԶԵՐՍ ՍԱՐՔԵԼ ԷԻ...»

ԱՆԻ ՄԱԹԵՒՈՍԵԱՆ
Գիւմրի

*A1+*, 16:51

«Յատուկ մազերս սարքել էի, օր գայի ընտրէի Արթուր Բաղդասարեանին: Բայց անունս հէչ մէ տեղմ չկար», - ասում է Յասմիկ Զուլանեանը, ով Արեւիկ գիւղից եկել էր Գիւմրի ընտրութեան, սակայն իր անունը ոչ մի ընտրատեղամասում չգտնելով, պիտի վերադառնար իր ժամանակաւոր կացարան: «Գրանցումս փոխել եմ, բայց առաջուայ սաղ ընտրատեղամասերը գնացել եմ: Ուր գնացի, անունս չկար: Մտել եմ տեղամաս, հարցրել եմ, ասել են, որ անունս ցուցակում չկայ», - ասում է յուսահատուած տիկին Յասմիկը: «Հմի էլ պոէզիս կը սպասեմ, օր գիւղ երտամ: 800 դրամ տրանսպրտի փող եմ ծախսել: Շատ գուզէի ընտրէի, բայց դէ ի՞նչ էնեմ՝ չիդէմ. սա էնեմ, - արտայայտուեց զրուցակիցս ու բարձրաձայնեց. - Արթուր ջաաան, մեռնիմ ջանիդ: Նկարդ բդի դնեմ ծոցս ու պառկիմ», - ասաց նախագահի այս թեկնածուի երկրպագուն:

Իսկ երբ 67-ամեայ տիկին Յասմիկի հետ ընտրակաշառքից էի խօսում, մօտ 50 տարեկան մի տղամարդ մօտեցաւ մեզ ու հարցրեց ինձ՝ ինչքա՞ն կուտաս: Պարզելուց յետոյ, որ լրագրող եմ ու ընտրախախտումների մասին եմ գրում, շարունակեց իր հարցաքննութիւնը:

«Ինչքա՞ն փող կուտաս, որ հմի ես «դակազատ» էնեմ, օր էքան բաժնել են», - իր «արդարացի» հարցի պատասխանն էր ակնկալում այս տղամարդը:

## ՏԵՂԵԿԱՑՆՈՒՄ ԵՆ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՇՏԱԲԻՑ

*Lragir.am*, 16:59

Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մակէյեանը իր համախոհների հետ քիչ առաջ ներխուժել է Գիւմրիի թիւ 34/06 ընտրատեղամաս, հայհոյանքներ ու սպառնալիքներ տեղալով՝ ահաբեկել է յանձնաժողովի անդամներին, տեղեկացնում են Գիւմրիի Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբից:

## ԿԸՅ-Ն ՍՏԱՑԵԼ Է ԵՐԿՈՒ ԲՈՂՈՔ ԵՒ ՄԷԿ ԶԵԿՈՒՑԱԳԻՐ

*Lragir.am*, 17:16

Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը փետրուարի 19-ին երկու բողոք է ստացել եւ մէկ զեկուցագիր, կապուած նախագահի ընտրութեան հետ: Այդ մասին լրագրողներին է ասել ԿԸՅ քարտուղար Աբրամ Բախչագուլեանը: Նրա խօսքով, ԿԸՅ-ն ստացել է

բողոք այն մասին, որ 10/35 ընտրատեղամասում առաւօտեան ժամը 10-ի դրութեամբ արդէն ամփոփուել են ընտրութեան արդիւնքները: «Այդ ընտրատարածքը հանդիսանում է ձերբակալուած եւ կալանաւորուած անձանց քուէարկութեան տեղամաս, որոնց ընդհանուր թիւը կազմում է 25 մարդ: 10.00-ի տուեալով նրանք քուէարկել էին եւ ընտրական յանձնաժողովը ամփոփել է քուէարկութեան արդիւնքները, սակայն դեռ չի հրապարակել դրանք», ասում է Աբրամ Բախճագուլեանը: Այդ մասին տեղեկացնում է ԱՌԿԱ գործակալութիւնը:

Բախչագուլեանի խօսքով, նշւում է այն, որ ընտրական յանձնաժողովի ղեկավարը հրաժարւում է հրապարակել քուէարկութեան արդիւնքները: «Ընտրական յանձնաժողովը ճիշտ է վարուել, քանի որ համաձայն օրէնքի, քուէարկութեան արդիւնքները կարող են հրապարակուել 20.00-ից ոչ շուտ, երբ հանրապետութեան ամբողջ տարածքում կ'աւարտուի քուէարկութիւնը», յայտարարել է Աբրամ Բախչագուլեանը:

Երկրորդ բողոքը, նրա խօսքով, վերաբերել է 20/13 ընտրատեղամասին, ըստ որի, ընտրական յանձնաժողովի առաջին նիստի արձանագրութիւնը չի համապատասխանում պատճենի հետ: «Սակայն ԿԸՅ պարզել է, որ փաստաթղթերի մէջ չկայ անհամապատասխանութիւն ընտրատեղամասային յանձնաժողովի նախագահի, տեղակալների եւ քարտուղարի ընտրութեան վերաբերեալ», յայտարարել է ԿԸՅ քարտուղարը: Նա հաղորդել է նաեւ, որ ԿԸՅ-ն ստացել է ԿԸՅ անդամի զեկուցագիր այն մասին, որ ընտրատեղամասեր նրա այցելութեան ժամանակ պարզուել է, որ 8.00-ի տուեալով 4/22 եւ 4/46 ընտրատեղամասերում կայացուել է ընտրատեղամասային յանձնաժողովի անդամների գործառոյթների բաժանման ընդամէնը մէկ վիճակահանութիւն: «ԿԸՅ ուղղել է այդ թերութիւնը, եւ տուեալ պահին տուեալ ընտրատեղամասերում վիճակահանութիւնը կատարուած է ընտրատեղամասային յանձնաժողովների անդամների գործառոյթների իրականացման համար», ասել է Աբրամ Բախչագուլեանը:

## «ԾԱՌՈՒԿԵԱՆԻ ՏՂԵՐՔՆ ԵՆ ԾԵԾԵԼ»

*A1+*, 17:22

*Ա1+*-ը քիչ առաջ վերադարձաւ Աբովեան քաղաքից, որտեղ հանդիպեց նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց հետ, ում դաժան ծեծել էին: Կոտայքի մարզի կենտրոնական շտաբի պատասխանատուներ Երջանիկ Աբգարեանին, Գուրգէն Եղիազարեանին եւ նրա որդուն ծեծել էին ընտրատարածքներ կատարած նրանց շրջայցերից մէկի ժամանակ 28/06 ընտրատեղամասի բակում:

Նրանք պատմեցին, որ բոլոր ընտրատեղամասերում խախտումներ են լինում եւ իրենց վստահուած անձանց գործունէութիւնը ոչ միայն խոչընդոտում են, այլեւ արձանագրութիւն չեն կազմում այդ մասին:

«Մենք բանակցում էինք, որ արձանագրութիւն կազմեն: Այդ ժամանակ արդէն ինչ-որ հաստավիզներ էին գնում-գալիս, իսկ երբ մի ուրիշ խումբ մտաւ, չեմ ճանաչում դրանց, երիտասարդ, թափով տղերք էին, հարցում էին՝ ինչ էք անում այստեղ, ովքեր էք, եւ երբ ասացինք, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք ենք, ինչ-որ տեղ զանգեցին, ապա երբ պտտուեցի, Գուրգէնին գետնին էին գցել ու հարուածում էին ոտքերով», - պատմեց Երջանիկ Աբգարեանը, ով ողջ ընթացքում նոր բամբակներ էր դնում՝ քթի եւ ճանկռոտած մատների արիւնահոսութիւնը կասեցնելու համար:

Նա նշում է, որ հէնց այս տղաների խումբը եկաւ, իրենց առաջարկեցին դուրս գալ ընտրատարածքից եւ դրսում շարունակել, որպէսզի չխանգարեն ընտրողներին: Ապա մնացեալը տեղի է ունեցել տարածքի բակում:

«Դէ ձիւն էր եկել, մեզ գցել էին գետնին, որդուս էլ կողքս էին ծեծում ու ամենալկտի բառերով վիրաւորում», - շարունակեց Գուրգէն Եղիազարեանը, ով, ի դէպ, խորհուրդ էր տալիս ընտրատեղամաս չգնալ` վախենալով, թէ խցիկը կը կոտրեն եւ իրենց ասածն էլ չի հասնի հանրութեանը:

«Բնականաբար ես անձամբ չգիտեմ, բայց բոլորն էլ կողքից ասացին, որ Ծառուկեանի տղերքն են», - նշեց Երջանիկ Աբգարեանը: Նրանք ոստիկանութեանը ուղղուած դիմում կազմեցին:

*Ա1+*-ը այցելեց նաեւ 28/06 ընտրատեղամասը եւ խօսեց յանձնաժողովի նախագահի Սեդա Միքայէլեանի հետ, ում հաւաստմամբ եւ ընտրատարածքում ոչ մի միջադէպ չի եղել, ամէն ինչ հարթ է ընթանում ընտրատեղամասում եւ թէ դրսում ինչ է կատարւում իրենք տեղեակ չեն ու պատասխանատու չեն:

Ընտրատարածքում էր նաեւ Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանցից Խաչիկ Մարտիրոսեանը: «Ժամը 9:30-ի կողմերում մեր վստահուած անձին եւ տեղական դիտորդի աիաբեկելով տեղամասից դուրս են հանել, տարել են քաղաքի ինչ-որ մաս ու բաց թողնել, ապա նա ներկայացել է շտաբ եւ փոխարինողը ես եմ եկել», - պատմեց Խաչիկ Մարտիրոսեանը: Նա նաեւ նշեց, որ բաւականին երկար ժամանակ իրենց կողմից ոչ մի վստահուած անձ կամ դիտորդ չի եղել եւ հիմա տեսնում է, որ քուէատուփը համարեայ լիքն է, եզրակացութիւնները բացասական են:

Նշենք, որ մեր` ընտրատարածքում ներկայ գտնուելու ժամանակ, 3-4 երիտասարդներ էին դռան մօտ կանգնել ու միւսները մեր յետեւում լսում էին` ինչ ենք հարցնում յանձնաժողովի անդամներից ու դիտորդներից: Երբ հետաքրքրուեցինք, թէ ովքեր են եւ ինչ իրաւունքով են ներկայ ընտրատեղամասում, նրանցից մէկը ներկայացաւ որպէս թեկնածու Արման Մելիքեանի վստահուած անձ` Զօհրաբ Գրիգորեան անունով եւ ասաց, որ «լաւ է, որ հարցնում-մարցնում ես, նայի հա, յանկարծ չգրես»:

## ԺԱՄԸ 17-Ի ԴՐՈՒԹԵԱՄԲ ԴԻՄՈՒՄՆԵՐ

*Lragir.am*: 17:25

2008 թուականի փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութիւնների կապակցութեամբ նոյն օրուայ ժամը 17.00-ի դրութեամբ ընտրողների ցուցակներում ուղղումներ կատարելու պահանջով ՀՀ ընդհանուր իրաւասութեան դատարաններ մուտքագրուել են հետեւեալ դիմումները.

1. Լոռու մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 31 դիմում, որոնք բաւարարուել են:

2. Սիւնիքի մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որը մերժուել է:

3. Արաբկիր եւ Քանաքեռ-Զէյթուն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 10 դիմում, որից 7-ը մերժուել է, 3-ը բաւարարուել:

4. Աջափնեակ եւ Դաւթաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որը մերժուել է:

5. Աւան եւ Նոր Նորք համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 5 դիմում, որոնք բաւարարուել են:

6. Կենտրոն եւ Նորք-Մարաշ համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որն ընթացքի մէջ է:

7. Էրեբունի եւ Նուբարաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան մուտք է եղել 4 դիմում, որոնք կարճուել են՝ հայցից հրաժարուելու հիմքով:

Սիւնիքի մարզի, Արաբկիր եւ Քանաքեռ-Զէյթուն համայնքների, ինչպէս նաեւ Աջափնեակ եւ Դաւթաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարաններին ներկայացուած ընդհանուր թւով ինը դիմումները մերժուել են՝ հաշուի առնելով ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 10-րդ յօդուածի 3-րդ մասի առաջինից երրորդ պարբերութիւնների պահանջները: ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 10-րդ յօդուածի 3-րդ մասի մէկից երրորդ պարբերութիւններով կարգաւորւում են ընտրողների ցուցակում ընտրելու իրաւունք ունեցող այն անձանց ընդգրկելու հարցը, ովքեր կա՛մ հաշուառում չունեն, կամ գտնւում են իրենց հաշուառման համայնքի տարածքից դուրս: Մասնաւորապէս՝ հաշուառում չունեցող եւ ընտրելու իրաւունք ունեցող անձինք պէտք է քուէարկութեան օրուանից մինչեւ 21 օր առաջ իրենց համայնքի ղեկավարին, իսկ քուէարկութեան օրուանից ոչ ուշ, քան մինչեւ 15 օր առաջ նաեւ լիազօր մարմնի կամ նրա համապատասխան ստորաբաժանման ղեկավարին Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի սահմանած կարգով յայտ ներկայացնեն ընտրողների ցուցակ ընդգրկուելու վերաբերեալ: Իսկ հաշուառում ունեցող, սակայն իրենց համայնքի տարածքից դուրս գտնուող ընտրելու իրաւունք ունեցող քաղաքացիները քուէարկութեան օրուանից մինչեւ 7 օր առաջ լիազօր մարմնի կամ նրա համապատասխան ստորաբաժանման ղեկավարին ներկայացնում են դիմում՝ ըստ հաշուառման վայրի ընտրողների ցուցակից ժամանակաւորապէս դուրս գալու մասին՝ նշելով քուէարկութեան օրը գտնուելու վայրի հասցէն: Մինչդեռ դիմում ներկայացրած անձինք չեն պահպանել ՀՀ Ընտրական Օրէնսգրքի վերը նշուած պահանջները, որի հետեւանքով անհնարին է դառնում դատական կարգով դիմողներին ընտրացուցակներում ընդգրկելը: Դիմողները պէտք է հետեւողական լինէին իրենց իրաւունքների իրականացման հարցում: Այս առումով որեւէ պետական կամ տեղական ինքնակառավարման մարմին կամ պաշտօնատար անձ նրանց իրաւունքները չի խախտել:

2008 թուականի փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութիւնների կապակցութեամբ նոյն օրուայ ժամը 17.00-ի դրութեամբ ՀՀ վարչական դատարան ընտրական վէճերով դիմումներ չեն մուտքագրուել: Այս մասին տեղեկացնում է ՀՀ Վճռաբեկ Դատարանի մամուլի քարտուղար Ալինա Ենգոյեանը:

## ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՈՒՌՃԱՑՈՒԱԾ ՏՈՒԵԱԼՆԵՐ

*Lragir.am*, 17:31

Փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնների հասարակական վերահսկողութեան նպատակով Ժառանգութիւն կուսակցութեան գրասենեակում շուրջօրեայ գործող կենտրոնը ընտրողների մասնակցութեան ցուցանիշների վերաբերեալ Հանրապետութեան 41 ընտրատարածքային ընտրական յանձնաժողովների Ժառանգութիւն կուսակցութեան անդամներից ստացուած տեղեկատուութեան հիման վրայ ամփոփել է

վիճակագրութիւնը ժամը 11:00-ի դրութեամբ: Այն վկայում է որոշ ընտրատարածքների դէպքում ԿԸՅ-ի կողմից մասնակցութեան ցուցանիշների ուռճացման դէպքերի մասին: Ստորեւ տոկոսներով բերուած են այն անճշտութիւնները, որոնք դիտուել են պաշտօնապէս հրապարակուած ցուցանիշների հետ. 3-րդ ընտրատարածք՝ 0,01 %, 5-րդ ընտրատարածք՝ 3,49%, 10-րդ ընտրատարածք՝ 0,01%, 14-րդ ընտրատարածք՝ 0,4%, 16-րդ ընտրատարածք՝ 0,04%, 19-րդ ընտրատարածք՝ 0,1%, 33-րդ ընտրատարածք՝ 0,38%, 40-րդ ընտրատարածք՝ 2,91%:

## ՍԱՄՈՒԷԼ ԱԼԵՔՍԱՆԵԱՆՆ Է ԱՀԱԲԵԿՈ՞ՒՄ

*A1+*, 17:42

Մալաթիա-Սեբաստիա համայքնում այսօր գրեթէ բոլոր տեղամասերից ահազանգեր էին ստացւում, որ խախտումներ են տեղի ունենում: Համայնքի բնակիչները պատմում էին, թէ ինչպէս է ԱԺ պատգամաւոր Սամուէլ Ալեքսանեանը թանկարժէք մեքենաներից բաղկացած շքախմբով շրջում եւ լցոնումներ կատարում:

*Ա1+*-ին ահազանգել էին, որ Դանիէլ Վարուժանի անուան դպրոցում տեղակայուած տեղամասում Սամուէլ Ալեքսանեանը մօտ 70 անձանց ուղեկցութեամբ ծեծի էր ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց, որոնք փորձել էին խոչընդոտել նրան լցոնումների ընթացքում: Ոստիկանները եւ յանձաժողովի անդամները նշեցին, որ ոչինչ էլ չի եղել, իսկ Արթուր Բաղդասարեանի վստահուած անձը՝ Վիկտոր Ուսունցը ասաց հետեւեալը. «Բոլորի աչքի առաջ մարդկանց ծեծեցին, պեչատը ձեռքներից առան, կալոդով բերին լցրին»:

Մալաթիա-Սեբաստիայում Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի ղեկավար Վահագն Խաչատրեանը անընդմէջ ահազանգեր էր ստանում, որոնցից մէկն էլ վերաբերւում է 07/01 ընտրատեղամասին: *Ա1+*-ը, ժամանելով այս տեղամասը, ականատես եղաւ, թէ ինչպէս էին մարդկանց Գազէլներով բերում տեղամաս, իսկ մանկապարտէզում տեղակայուած 07/01 տեղամասում «ասեղ գծելու տեղ» չկար: Խառնաշփոթ այս իրավիճակում ՀՀԿ-ի շքանշանով մի անձնաւորութիւն մարդկանց շշուկով ասում էր, որ մօտենան 3-րդ սեղանին: Երբ *Ա1+*-ի թղթակիցը հարցրեց, թէ ով է նա եւ ինչու է նման հրահանգներ տալիս, շքանշանով անձը պատասխանեց, որ խառը վիճակ է, ուստի մարդկանց օգնում է:

07/05 ընտրատեղամասում դիտորդ Աշոտ Մկրտչեանը պատմեց հետեւեալը. «Մի խումբ մարդիկ Ջիփերով եւ այլ մեքենաներով եկան, ընտրական յանձնաժողովի անդամին ծեծի ենթարկելով՝ տարան: Վերցրեցին քուէաթերթիկներ քուէարկեցին: Այս վայրագութիւններին միլիցիան չխառնուեց: Բացի այդ խլեցին նաեւ իմ բջջային հեռախօսը»:

Ի դէպ, երբ փորձեցինք ստանալ Սամուէլ Ալեքսանեանի մեկնաբանութիւնը, մեզ չյաջողուեց. նա հեռախօսազանգերին չպատասխանեց: Սակայն *Ա1+*-ի լրագրողը համայնքի եկեղեցու մօտ տեսել է նրա սլացող աւտօշարասիւնը:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻ ՇՏԱԲԸ ԱՐՁԱՆԱԳՐՈՒՄ Է ԽԱԽՏՈՒՄՆԵՐ

*Lragir.am*, 17:50

Փետրուարի 19-ին ժամը 15.00-ից յետոյ հանրապետութեան տարբեր ընտրատարածքներում սկսուել է մարդկանց ահաբեկման, սպառնալիքների եւ ծեծկռտուքի մթնո-

լորտ, կատարուել են զանգուածային լցոնումներ եւ այլ ընտրախախտումներ: Դիմում ենք ԿԸՅ-ին եւ իրաւապահ մարմիններին՝ միջոցներ ձեռնարկել իրավիճակը կանոնակարգելու ուղղութեամբ: Ստորեւ ներկայացնում ենք մի շարք փաստեր.

1. Թիւ 28 ընտրատարածքի 16 ընտրական տեղամասում, որն ընդգրկում է թիւ 5 մսուր-մանկապարտէզը, տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահը սպառնալիքներով եւ ահաբեկման ճնշման տակ դուրս է վտարել ՕԵԿ յանձնաժողովի անդամ Անահիտ Թամարեանին, պահանջել է, որ հետ չվերադառնայ եւ կատարել է քուէաթերթիկների լցոնում:

2. Թիւ 7 ընտրատարածքի 05 ընտրական տեղամասում, յանձնաժողովի նախագահը, որը նոյն դպրոցի տնօրէնն է, իր համախոհ մի խումբ անձանց հետ սպառնացել է ՕԵԿ յանձանաժողովի անդամ Լեւոն Պօղոսեանին, ճնշման տակ դուրս է վտարել, առեւանգել նրան եւ պահանջել, որ ետ չվերադառնայ եւ կատարել է քուէաթերթիկների լցոնում:

3. Գեղարքունիքի մարզի Զոլաքար, Ն. Գետաշէն, Ծակքար, Զորագիւղ գիւղերում կազմակերպուած ճնշումներ են գործադրւում ՕԵԿ յանձնաժողովի անդամների վրայ՝ սպառնալիքներով կատարելով լցոնումներ:

4. Էրեբունի թիւ 13/1 տեղամասում տեղի է ունեցել քուէաթերթիկների զանգուածային լցոնում, մարդկանց ահաբեկում:

5. Էրեբունի թիւ 13/16 տեղամասում տեղի է ունեցել ծեծկռտուք, յանձնաժողովի անդամների ահաբեկում, քուէաթերթիկների զանգուածային լցոնում:

6. 7/25 տեղամասում դռները ժամը 14:30-15:00 շրջանակներում փակուել է, կատարուել է քուէաթերթիկների զանգուածային լցոնումներ:

7. Էրեբունի համայնքի 11/06 տեղամասում թ.45 դպրոցում յանձնաժողովի անդամներին ահաբեկելու ճանապարհով կատարուել են զանգուածային լցոնումներ:

8. Մալաթիա-Սեբաստիա համայնքի 8/17 տեղամասում ծեծի են ենթարկուել վստահուած անձինք, կատարուել է քուէաթերթիկների լցոնում:

9. Թ.28/7 տեղամասում ահաբեկել եւ առեւանգել են յանձնաժողովի անդամների եւ վստահուած անձանց եւ կատարել լցոնումներ:

10. Թ.17 ընտրատարածքում 17/1, 17/2 եւ 17/3 ընտրատեղամասերում կազմակերպուած խմբերով մտել են ընտրական տեղամասեր եւ կազմակերպել են լցոնումներ:

Այս ամէնից զատ տարբեր բնակավայրերում տեղի է ունենում ընտրակաշառքների զանգուածային բաժանման գործընթաց, որոնց առնչութեամբ համապատասխան կադրեր արդէն իսկ ցուցադրել է *Գալա* հեռուստաընկերութիւնը:

## ԸՆՏՐՈՂՆԵՐԻՆ ԿԱՆՉՈՒՄ ԷԻՆ

*A1+*, 17:59

*Ա1+*-ը տեղեկութիւններ ունէր, որ Առինջ գիւղում ընթանում է բաց քուէարկութիւն: Երբ այցելեցինք Առինջի 28/26 ընտրատեղամասը, դրա դիմաց եւ ներսում հսկայական հերթեր էին գոյացել եւ անուններով կանչում էին մարդկանց: Յանձնաժողովի նախագահ Լիովա Սարգսեանը հաւաստեց, որ ընտրատարածքում ակտիւութիւնը հսկայական է, ընտրատարածքում գրանցուած 1961 ընտրողներից 1000-ից աւելն արդէն ընտրել է: Մեր ընտրատարածքում գտնուելու ժամանակ նկատեցինք, որ քուէարկութիւնը ոչ թէ բաց է, այլ ընտրողներից շատերը դեռ քուէաթերթիկը վերցնելու պահին արդէն նշումներ էին

անում, ապա նոր գնում քուէախցիկ:

Առինջի առաջին անգամ ընտրողներին մէկական մեխակ էին նուիրում եւ յանձնաժողովի անդամները ասացին, որ բարեբարններն են տրամադրել՝ մտածելով առաջին անգամ ընտրողների մասին:

Ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահ Սուրէն Չալիկեանի խօսքերով՝ իրենց մօտ ոչ մի միջադէպ չի եղել. «Ոչ մի արձանագրութիւն չենք կազմել, ոչ մի արտառոց բան, Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձն էլ, հէնա, նոր բերել, նստացրել ենք»:

## ԺԱՄԸ 17-Ի ԴՐՈՒԹԵԱՄԲ ՅԱՐՈՒՑՈՒԵԼ Է 5 ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾ

*Lragir.am*, 18:03

2008 թուականի փետրուարի 19-ին տեղամասերի ընտրական յանձնաժողովների, ՀՀ նախագահի թեկնածուների վստահուած անձանց լիազօրութիւնների իրականացմանը խոչընդոտելու վերաբերեալ ստացուած գրաւոր հաղորդումների քննարկման արդիւնքում՝ ժամը 17-ի դրութեամբ յարուցուել է 5 քրէական գործ:

- Աբովեան քաղաքի թիւ 28/06 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահը եւ անդամները արձանագրութիւն են կազմել այն մասին, որ ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Ռուզաննա Մովսիսեանը ինքնակամ հեռացել է ընտրատարածքից, որից յետոյ ընտրատարածք մուտք են գործել նոյն թեկնածուի վստահուած մի խումբ անձինք, վիրաւորել իրենց, խոչընդոտել ընտրական յանձնաժողովների աշխատանքներին: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 5-րդ կէտի յատկանիշներով: Լ. Տէր-Պետրոսեանի մամուլի քարտուղարի տարածած այն տեղեկատուութիւնը, թէ այս տեղամասում քուէարկութեանը մասնակցել է 124 ընտրող, սակայն քուէատուփում կայ 500 քուէաթերթիկ, իրականութեանը չի համապատասխանում: Նշուած տեղամասի քուէատուփը չի բացուել եւ քուէաթերթիկների հաշուառում չի կատարուել, իսկ 28/06 ՏԸՅ անդամների վկայութեամբ որեւէ լցոնում տեղի չի ունեցել:

- Աբովեան քաղաքի թիւ 28/07 ընտրատեղամասի ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Լարիսա Թորոսեանը դիմել է Կոտայքի ոստիկանութեան բաժին՝ յայտնելով, որ փետրուարի 19-ին՝ ժամը 07:30-ի սահմաններում, ընտրական տեղամաս են մտել 3 անծանօթ անձինք, դուրս են բերել իրեն ընտրական տեղամասից, որոնցից մէկը իրեն ծեծի է ենթարկել՝ ասելով, որ չխառնուի ընտրական յանձնաժողովի աշխատանքներին: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի յատկանիշներով: Կատարւում է նախաքննութիւն:

- Մալաթիա-Սեբաստիա համայնքի 8/20 ընտրատեղամասում ՀՀ նախագահի թեկնածու Արման Մելիքեանի վստահուած անձ Պարգեւ Մնացականեանը դիմել է ոստիկանութիւն՝ յայտնելով, որ իրեն եւ նշուած տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահ Հրաչ Պետրոսեանին մի խումբ անձինք ծեծի են ենթարկել՝ խոչընդոտելով ընտրական յանձնաժողովի աշխատանքները: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ եւ 6-րդ կէտերով: Նախաքննութիւնը շարունակւում է:

- Լոռու մարզի Արեւածագ գիւղի թիւ 32/53 տեղամասում ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձն Էդմոն Գէորգեանը ալկոհոլ օգտագործած

վիճակում խոչընդոտել է նոյն տեղամասի ընտրական յանձնաժողովի աշխատանքներին: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի յատկանիշներով, կատարւում է նախաքննութիւն:

- 2008 թուականի փետրուարի 19-ին՝ ժամը 14-ին Շիրակի մարզի Մարալիկ քաղաքի թիւ 36/34 ընտրական տեղամասի մօտ, հաւաքուած բազմութեան ներկայութեամբ, ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Անիի տարածքի նախընտրական շտաբի պետ Յարութիւն Ուռուտեանը ծեծել եւ մարմնական վնասուածքներ է պատճառել ՀՀ նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի վստահուած անձ Սուրէն Աւետիսեանին եւ խոչընդոտել վերջինիս լիազօրութիւնների իրականացմանը: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ կէտի յատկանիշներով: Նշուած քրէական գործերով նախաքննութիւնն իրականացնում է ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնը: Այս մասին տեղեկացնում է ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը:

## ՊԱՌԿԵԼ Է ՔՈՒԷԱՏՈՒՓԻ ՎՐԱՅ (video)

*A1+*, 18:16

11/10 ընտրատեղամաս, որը տեղակայուած է 35 դպրոցում, մի խումբ երիտասարդներ ներխուժել են եւ քաշքշել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Ժորա Ազարեանին: Պարզուել է, որ նրանք գողացել են կնիքը եւ փորձել են լցոնումներ իրականացնել: Ժորա Ազարեանը թոյլ չի տուել, ինչի համար խփել են տղային:

Երբ *Ա1+*-ի տեսախցիկը սկսել է նկարել, նրանք փախել են: Այնուհետեւ երբ մեր նկարահանող խումբը դուրս է եկել ընտրատեղամասից, յարձակուել են՝ ցանկանալով տեսախցիկը վերցնել, ինչը չի յաջողուել:

Քիչ առաջ *Ա1+*-ը ահազանգ ստացաւ, որ էլի այդ երիտասարդները մտել են, ծեծել են Ժորա Ազարեանին, փորձել են լցոնում անել, սակայն Ժառանգութիւնը ներկայացնող յանձնաժողովի անդամ Նարինէ Ազարեանը չի թողել, մարմնով պառկել է քուէատուփի վրայ:

Ի դէպ, հակառակ այս ամէնին յանձնաժողովի նախագահ Հրանուշ Ղազարեանը ասել է, թէ ամէն ինչ նորմալ է, ոչ մի խախտում չկայ:

## ՅԱՐՈՒՑՈՒԵԼ ԵՆ 5 ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

*A1+*, 18:23

2008 թուականի փետրուարի 19-ին տեղամասերի ընտրական յանձնաժողովների, ՀՀ նախագահի թեկնածուների վստահուած անձանց լիազօրութիւնների իրականացմանը խոչընդոտելու վերաբերեալ ստացուած գրաւոր հաղորդումների քննարկման արդիւնքում ժամը 17-ի դրութեամբ յարուցուել է 5 քրէական գործ:

Աբովեան քաղաքի թիւ 28/06 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահը եւ անդամները արձանագրութիւն են կազմել այն մասին, որ ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Ռուզաննա Մովսիսեանը ինքնակամ հեռացել է ընտրատարածքից, որից յետոյ ընտրատարածք մուտք են գործել նոյն թեկնածուի վստահուած մի խումբ անձինք, վիրաւորել իրենց, խոչընդոտել ընտրական յանձնաժողովների աշխատանքներին:

Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 5-րդ կէտի յատկանիշներով:

Լ. Տէր-Պետրոսեանի մամուլի քարտուղարի տարածած այն տեղեկատուութիւնը, թէ այս տեղամասում քուէարկութեանը մասնակցել է 124 ընտրող, սակայն քուէատուփում կայ 500 քուէաթերթիկ, իրականութեանը չի համապատասխանում: Նշուած տեղամասի քուէատուփը չի բացուել եւ քուէաթերթիկների հաշուառում չի կատարուել, իսկ 28/06 ՏԸՅ անդամների վկայութեամբ որեւէ լցոնում տեղի չի ունեցել:

Աբովեան քաղաքի թիւ 28/07 ընտրատեղամասի ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Լարիսա Թորոսեանը դիմել է Կոտայքի ոստիկանութեան բաժին՝ յայտնելով, որ փետրուարի 19-ին՝ ժամը 07:30-ի սահմաններում, ընտրական տեղամաս են մտել 3 անծանօթ անձինք, դուրս են բերել իրեն ընտրական տեղամասից, որոնցից մէկը իրեն ծեծի է ենթարկել՝ ասելով, որ չխառնուի ընտրական յանձնաժողովի աշխատանքներին: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի յատկանիշներով: Կատարւում է նախաքննութիւն:

Մալաթիա-Սեբաստիա համայնքի 8/20 ընտրատեղամասում ՀՀ նախագահի թեկնածու Արման Մելիքեանի վստահուած անձ Պարգեւ Մնացականեանը դիմել է ոստիկանութիւն յայտնելով, որ իրեն եւ նշուած տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահ Հրաչ Պետրոսեանին մի խումբ անձինք ծեծի են ենթարկել խոչընդոտելով ընտրական յանձնաժողովի աշխատանքները: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ եւ 6-րդ կէտերով: Նախաքննութիւնը շարունակւում է:

Լոռու մարզի Արեւածագ գիւղի թիւ 32/53 տեղամասում ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձն Էդմոն Գէորգեանը ալկոհոլ օգտագործած վիճակում խոչընդոտել է նոյն տեղամասի ընտրական յանձնաժողովի աշխատանքներին: Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի յատկանիշներով, կատարւում է նախաքննութիւն:

2008 թուականի փետրուարի 19-ին ժամը 14-ին Շիրակի մարզի Մարալիկ քաղաքի թիւ 36/34 ընտրական տեղամասի մօտ, հաւաքուած բազմութեան ներկայութեամբ, ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Անիի տարածքի նախընտրական շտաբի պետ Յարութիւն Ուռուտեանը ծեծել եւ մարմնական վնասուածքներ է պատճառել ՀՀ նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի վստահուած անձ Սուրէն Աւետիսեանին եւ խոչընդոտել վերջինիս լիազօրութիւնների իրականացմանը:

Դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ կէտի յատկանիշներով:

Նշուած քրէական գործերով նախաքննութիւնն իրականացում է ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնը:

## ԴԻՄՈՒՄՆԵՐ ԺԱՄԸ 18-Ի ԴՐՈՒԹԵԱՄԲ

*Lragir.am*, 18:27

2008 թուականի փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութիւնների կապակցութեամբ նոյն օրուայ ժամը 18.00-ի դրութեամբ ընտրողների ցուցակներում ուղղումներ կատարելու պահանջով ՀՀ ընդհանուր իրաւասութեան դատարաններ մուտքագրուել են հետեւեալ

դիմումները.

1. Լոռու մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 31 դիմում, որոնք բաւարարուել են:

2. Սիւնիքի մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որը մերժուել է:

3. Արարատի եւ Վայոց-Ձորի մարզերի ընդհանուր իրաւասութեան դատարան մուտք է եղել 1 դիմում, որը բաւարարուել է:

4. Արաբկիր եւ Քանաքեռ-Զէյթուն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 14 դիմում, որից 12-ը մերժուել է, 2-ը բաւարարուել է մէկ վճռով:

5. Աջափնեակ եւ Դաւթաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որը մերժուել է:

6. Աւան եւ Նոր Նորք համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 6 դիմում, որոնք բաւարարուել են:

7. Կենտրոն եւ Նորք-Մարաշ համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 3 դիմում, որից 2-ը բաւարարուել է, 1-ը ընթացքի մէջ է:

8. Էրեբունի եւ Նուբարաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան մուտք է եղել 5 դիմում, որոնցից 4-ը կարճուել են հայցից հրաժարուելու հիմքով, 1-ը մերժուել:

Ընդամէնը ՀՀ ընդհանուր իրաւասութեան դատարաններ մուտք է եղել 62 դիմում, որից 42 դիմում բաւարարուել է, 4-ը կարճուել, 15-ը մերժուել, 1-ը ընթացքի մէջ է: Յիշեցնենք, որ ընդհանուր իրաւասութեան դատարաններին ներկայացուած ընդհանուր թւով 15 դիմումները մերժուել են՝ հաշուի առնելով ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 10-րդ յօդուածի 3-րդ մասի առաջինից երրորդ պարբերութիւնների պահանջները: ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 10-րդ յօդուածի 3-րդ մասի մէկից երրորդ պարբերութիւններով կարգաւորւում են ընտրողների ցուցակում ընտրելու իրաւունք ունեցող այն անձանց ընդգրկելու հարցը, ովքեր կա՛մ հաշուառում չունեն, կամ գտնւում են իրենց հաշուառման համայնքի տարածքից դուրս: Մասնաւորապէս՝ հաշուառում չունեցող եւ ընտրելու իրաւունք ունեցող անձինք պէտք է քուէարկութեան օրուանից մինչեւ 21 օր առաջ իրենց համայնքի ղեկավարին, իսկ քուէարկութեան օրուանից ոչ ուշ, քան մինչեւ 15 օր առաջ նաեւ լիազօր մարմնի կամ նրա համապատասխան ստորաբաժանման ղեկավարին Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի սահմանած կարգով յայտ ներկայացնեն ընտրողների ցուցակ ընդգրկուելու վերաբերեալ: Իսկ հաշուառում ունեցող, սակայն իրենց համայնքի տարածքից դուրս գտնուող ընտրելու իրաւունք ունեցող քաղաքացիները քուէարկութեան օրուանից մինչեւ 7 օր առաջ լիազօր մարմնի կամ նրա համապատասխան ստորաբաժանման ղեկավարին ներկայացնում են դիմում՝ ըստ հաշուառման վայրի ընտրողների ցուցակից ժամանակաւորապէս դուրս գալու մասին՝ նշելով քուէարկութեան օրը գտնուելու վայրի հասցէն: Մինչդեռ դիմում ներկայացրած անձինք չեն պահպանել ՀՀ Ընտրական Օրէնսգրքի վերը նշուած պահանջները, որի հետեւանքով անհնարին է դառնում դատական կարգով դիմողներին ընտրացուցակներում ընդգրկելը: Դիմողները պէտք է հետեւողական լինէին իրենց իրաւունքների իրականացման հարցում: Այս առումով որեւէ պետական կամ տեղական ինքնակառավարման մարմին կամ պաշտօնատար անձ նրանց իրաւունքները չի խախտել: 2008 թուականի փետրուարի 19-ին ՀՀ

նախագահի ընտրութիւնների կապակցութեամբ նոյն օրուայ ժամը 18.00-ի դրութեամբ ՀՀ վարչական դատարան ընտրական վէճերով դիմումներ չեն մուտքագրուել: Այս մասին տեղեկացնում է ՀՀ Վճռաբեկ Դատարանի մամուլի քարտուղարը:

## ՈՂՋ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

*Lragir.am*, 18:31

ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի գնահատմամբ, Հայաստանի նախագահի ընտրութեան օրուայ, փետրուարի 19-ի երկրորդ կէսին ընտրախախտումները, բռնութիւններն ու ահաբեկումները ծաւալուել են նոր թափով, ինչը հետեւանք է այն բանի, որ իշխանութիւնը գիտակցում է ընտրութեանը յաղթելու որեւէ հնարաւորութեան բացակայութիւնը:

Այդ կապակցութեամբ, նկատի ունենալով հանրապետութեան ամբողջ տարածքով ծայր առած բռնութիւնների ու ընտրակեղծիքների շղթան, Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը հանդէս է եկել յայտարարութեամբ, ասելով, որ արձանագրուող ահաբեկումների, բռնութիւնների ու ընտրակեղծիքների տոտալ կիրառումը կարող է իրավիճակը դուրս բերել վերահսկողութիւնից, ինչի համար ամբողջ պատասխանատուութիւնը Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբը դնում է իշխանութեան վրայ:

Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի անդամ, Այլընտրանք հասարակական-քաղաքական նախաձեռնութեան ղեկավար Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, որ եթէ քաղաքացիները դառնում են անօրինութիւնների զոհ եւ ոստիկանութիւնը ոչինչ չի անում նրանց այդ անօրինութիւնից պաշտպանելու համար, ապա նրանք արդէն ստիպուած են մտածել ինքնապաշտպանութեան մասին: Մասնաւորաբար, Նիկոլ Փաշինեանը նշել է Աւանի տեղամասերից մէկից իրենց վստահուած անձանց՝ Գարիկ Ղազարեանին եւ Արսէն Խանամիրեանին առեւանգելու փաստը: Թէեւ նրանց արդէն բաց են թողել, սակայն Նիկոլ Փաշինեանը նշում է, որ նրանց ընկերները վրդովուած են եւ ցանկութիւն են յայտնել պատասխան տալ իրենց ընկերներին առեւանգողներին, եւ Տէր-Պետրոսեանի շտաբին մեծ ջանքերի գնով է յաջողւում զսպել այդ երիտասարդներին, յետ պահելով նրանց համարժէք գործողութիւններից:

Նիկոլ Փաշինեանի եւ Լեւոն Տէր-Պետրոսեանի մամուլի խօսնակ Արման Մուսինեանի խօսքով, տոտալ բռնութիւններին ու ընտրակեղծիքներին իրենց պատասխանը լինելու է քաղաքական ու իրաւական դաշտում, օգտագործելու են օրէնքով սահմանուած բոլոր միջոցները, որպէսզի հասնեն նրան, որ ընտրութեան արդիւնքը ի վերջոյ արտացոլի քաղաքացիների կամքը:

## ԾԵԾԵԼ ԵՆ ԱԺ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԻՆ

*A1+*, 18:37

Հերթական միջադէպը տեղի է ունեցել Էրեբունու 13/16-րդ ընտրատեղամասում: Այստեղ էին Ժառանգութիւն կուսակցութեան պատգամաւորներ Վարդան Խաչտրեանը, Զարուհի Փոստանջեանն ու Արմէն Մարտիրոսեանը՝ ահազանգի հետքերով:

«Յանձնաժողովի նախագահը փակուել էր իր սենեակում եւ դուրս չէր գալիս: Իրավիճակը հսկում էին 4 ոստիկաններ, որոնք ոչ միայն չէին պահպանում 50 մետրը,

այլեւ մարդկանց խմբերով բերում էին ընտրատարածք», - *Ա1+*-ին պատմեց Զարուհի Փոստանջեանի օգնական, դիտորդ Սեդա Մելիքեանը, որը նրանց հետ մեկնել էր:

Պատգամաւոր Զարուհի Փոստանջեանը փորձել էր պարզել յանձնաժողովի նախագահից, թէ ինչու է վերահսկողութիւնը ոստիկանների ձեռքում, վերջինս պատասխանել է, թէ «չի կարողանում, ինչ անի»:

Սեդա Մելիքեանը նշեց, որ յետոյ այն երիտասարդը, որ մարդկանց խմբերով բերում էր ընտրատարածք, մօտեցել եւ խլել է Զարուհուց ֆոտոապարատը եւ հրել: Ապա վրայ է հասել ոստիկանութեան մայորը, ով եւ հարուածել է Զարուհի Փոստանջեանին: Դէպքի կապակցութեամբ Ժառանգութիւն կուսակցութիւնը այս պահին դիմում է կազմում՝ դատախազութեանը ներկայացնելու համար: Նրանք դիմել են նաեւ Մարդու Իրաւունքների պաշտպանի գրասենեակ:

Նշենք, որ Էրեբունու նոյն ընտրատարածքում էին ծեծել *Հայկական ժամանակ* օրաթերթի լրագրող Լուսինէ Բարսեղեանին:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԱՆՑ ՀՐԱՀԱՆԳՈՒԱԾ Է ՉԴԻՄԵԼ ԲՌՆՈՒԹԵԱՆ

*Lragir.am*, 18:34

Փետրուարի 19-ի երեկոյեան, նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը պատասխանել է Սերժ Սարգսեանի շտաբի տարածած այն հաղորդագրութեանը, ըստ որի Տէր-Պետրոսեանի թիմակիցներն իրենք են ուժ կիրառում սեփական վստահուած անձանց հանդէպ, որպէսզի այդպիսով ստեղծեն լարուած մթնոլորտ, դրա համար մեղադրելով իշխանութեանը: Լեւոն Տէր-Պետրոսեանի մամուլի խօսնակ Արման Մուսինեանն այդ տեղեկութիւնը որակելով ստայօդ, ասել է, որ եթէ Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցները համարձակուէին որեւէ ընտրատեղամասում որեւէ անօրինական բան կատարել, ապա իշխանութիւնն անմիջապէս ուղղակի կը կալանաւորէր նրանց: Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի անդամ, Այլընտրանք հասարակական նախաձեռնութեան անդամ Նիկոլ Փաշինեանը անդրադարձել է այն հաղորդագրութեանը, ըստ որի Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք ծեծել են ընտրատեղամասային յանձնաժողովներից մէկի նախագահին: Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, որ այդպիսի բան լինել չի կարող, քանի որ Լեւոն Տէր-Պետրոսեանի կենտրոնական նախընտրական շտաբը իրենց բոլոր անդամներին ու վստահուած անձանց հրահանգել է որեւէ դէպքում ուժ չկիրառել ընտրական որեւէ յանձնաժողովի որեւէ անդամի վրայ:

## ՏԵՂԻ Է ՈՒՆԵՆՈՒՄ ՔՐԷԱԿԱՆ ՅԵՂԱՇՐՋՈՒՄ

*Lragir.am*, 18:41

Իշխանութիւնը փետրուարի 19-ի նախագահի ընտրութեանը դիմեց տոտալ ընտրակեղծիքների, որովհետեւ քաղաքացիների ակտիւութիւնը վկայեց, որ այս ընտրութեանը Սերժ Սարգսեանը յաղթելու որեւէ շանս չունի: Այդ մասին յայտարարել է նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը: Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանի խօսքով, իշխանութեանը յուսահատ կեղծիքի է մղել նաեւ էքզիտպոլերի արդիւնքը, որը ցոյց է տալիս, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը ջախջախիչ պարտութեան է մատնում Սերժ Սարգսեանին: Նիկոլ Փաշին-

եանի խօսքով, դա է պատճառը, որ իշխանութիւնը անցել է զանգուածային լցոնումների, որովհետեւ Սերժ Սարգսեանը ձայն չի ստանում, խայտառակ է լինում: «Սերժ Սարգսեանն այսօր կազմակերպել է քրէական յեղաշրջում», յայտարարել է Նիկոլ Փաշինեանը, ասելով, որ ընտրակեղծիքների առաջին գծում քրէական տարրերն են, որոնց թիկունքը ապահովում է ոստիկանութիւնը: Նիկոլ Փաշինեանը նշում է, որ ընտրակեղծարարները շրջում են կարմիր բերետաւոր յատուկ ջոկատայինների ուղեկցութեամբ: Նիկոլ Փաշինեանի գնահատմամբ, տեղի ունեցածն ուղղակի ոտնձգութիւն է սահմանադրական կարգի հանդէպ: Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմակիցները յայտարարում են, որ այդ ամէնին իրենց պատասխանը լինելու է օրէնքի սահմաններում, հզօր, հուժկու, հիմնուած քաղաքացիների կամքի վրայ:

## ԳՈՒՄ-Ի ՇՈՒԿԱՅՈՒՄ ՏԵՂԵԿԱՆՔ ԵՆ ՏՈՒԵԼ

*Lragir.am*, 18:43

Նոր ահազանգեր, որ ստացուել են «Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան թէժ գծով: Վանաձոր 29/12 եւ 29/11 ընտրատեղամասերի դիմացի խանութում ընտրակաշառքներ են բաժանուել:

Արտաշատի 17/10 ընտրատեղմասում ընտրող Կարինէ Իւանեանը նկատել է լցոնման փաստը եւ բարձրաձայնել. ընտրական ողջ յանձնաժողովով ծեծել են կնոջը:

Ազատականութիւն եւ Ժողովրդավարութիւն դիտորդական առաքելութեան ղեկավար Նունէ Վարտունին ԳՈՒՄ-ի շուկայի մօտ նկարահանել է թէ ինչպէս են մեքենաներով եւ աւտօբուսներով քաղաքացիներին բերում շուկայ եւ հէնց շուկայից տեղեկանք էին ստանում ըստ բնակութեան վայրի քուէարկելու մասին: 17:00–ի մատոյցներում գրողների միութեան մօտ Նունէ Վարտունին նկարահանել է ընտրատեղամասից ընտրատեղամաս շրջող մեքենաներ, ինչից յետոյ նրան է մօտեցել 01 SS 907 համարանիշով սպիտակ ՆԻՎԱ, որից դուրս եկած երիտասարդները վերցրել են ֆոտոխցիկը:

## ԾԵԾԵԼ ԵՆ ՆԱԵՒ ՄԵԼԻՔԵԱՆԻ ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԻՆ

*Lragir.am*, 18:45

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը հրապարակել է տեղեկութիւն, որ Մալաթիա Սեբաստիա համայնքի թիւ 8/21 ընտրատարածքում ծեծի է ենթարկուել նախագահի թեկնածու Արման Մելիքեանի վստահուած անձը: Լրագրողների հարցին, թէ ինչու են այդ թեկնածուի վստահուած անձին ծեծել, եթէ նա այդքան էլ մեծ մրցակից չէ իշխանական թեկնածուին, Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանն ասել է, որ ծեծում են բոլոր նրանց, ով կը համարձակուի փորձ անել կանխել ընտրախախտումները:

## ԱՐԴԷՆ ՔՈՒԷԱՐԿԵԼ Է 57.14 ՏՈԿՈՍԸ

*Lragir.am*, 18:48

Հայաստանի ԿԸՅ-ի հրապարակած վերջին տուեալների համաձայն, ժամը 17:00-ի դրութեամբ նախագահի ընտրութեան քուէարկութեանը մասնակցել է 1 մլն 354 հազար 664 քաղաքացի կամ ընտրողների 57.14%-ը:

## ՄՏԱՆ, ԼՑՈՆԵՑԻՆ, ԳՆԱՑԻՆ

*Lragir.am*, 19:00

Փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնների հասարակական վերահսկողութեան նպատակով Ժառանգութիւն կուսակցութեան գրասենեակում շուրջօրեայ գործող կենտրոնը ահազանգեր է ստացել նոր ընտրախախտումների մասին:

Կենտրոնի տարածած հաղորդագրութեան մէջ նշւում է, որ ժամը 12:00-ից յետոյ կենտրոնն ընդամէնը արձագանքել է առաւել կոպտագոյն փաստերին, մինչդեռ ընտրակաշառքի բաժանման, բաց քուէարկութեան մասին տեղեկութիւններն ու ահազանգերը չեն պակասել:

Զէյթունի ուսանողական հանրակացարանի մօտակայքում գտնուող Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբում Երեւանի յարակից մարզերի գիւղերից բերուած ընտրողներին տրւում են հաշուառուած լինելու մասին տեղեկանքներ:

ԱԺ պատգամաւորներ Զարուհի Փոստանջեանը, Վարդան Խաչատրեանը, Արմէն Մարտիրոսեանը բռնութեան են ենթարկուել ընտրատեղամասում այն բանից յետոյ, երբ փորձել են պարզաբանել ընտրական յանձնաժողովում տիրող իրավիճակը: Նրանք նկատել են, որ ինչ-որ մէկը ուղղորդում է ընտրութիւնները, փորձել են նկարահանել: Հէնց այդ պահին յարձակման են ենթարկուել յանձնաժողովում գտնուող անձանց, ոստիկանների կողմից: Ոստիկանները հարուածներ են հասցրել պատգամաւորներին:

Թիւ 9/16 տեղամասում յանձնաժողովի նախագահի տեղակալ Համլէտ Կարապետեանը փորձել է խանգարել դիտորդի եւ լրագրողի աշխատանքներին, սպառնացել է, եւ յանձնաժողովի նախագահի հետ միասին դիմել են ընտրատեղամասում գտնուող ոստիկաններին եւ պահանջել *Հայկական ժամանակ* թերթի լրագրողին ու ԱԺ պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանին դուրս հանել ընտրական տեղամասից: ԱԺ պատգամաւորը զանգահարել է Էրեբունու ոստիկանութիւն եւ պահանջել կարգի հրաւիրել օրինազանց յանձնաժողովականներին: Քիչ անց Մարտիրոսեանը նկատել է քուէաթերթիկների տրցակով մարդու, ով փորձել է լցոնել քուէատուփը: Այդ պահին տեղամաս է ժամանել շրջանի ոստիկանապետը, մի քանի ոստիկանների հետ միասին յարձակուել պատգամաւորի վրայ, նրան ու *Հայկական ժամանակ* թերթի լրագրող Լուսինէ Բարսեղեանին քաշքշելով, խփելով, հայհոյանքներով հանել ընտրատեղամասից: Յանցագործութեան մասին հաղորդագրութիւն է տրուել դատախազութիւն:

Մալաթիա Սեբաստիայի 7/25 ընտրատեղամասի ընտրողներից տեղեկացնում են, որ իրենց քուէարկութեան ժամանակ Դանիէլ Վարուժանի անուան դպրոցում տեղակայուած ընտրական տեղամաս է ներխուժել 50-70 մարդ՝ ԱԺ պատգամաւոր Սամուէլ Ալեքսանեանի մերձաւոր շրջապատի գլխաւորութեամբ, բռնութիւն գործադրել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձի նկատմամբ, լցոնել է քուէատուփը եւ հեռացել: Յանձնաժողովի անդամները որեւէ դիմադրութիւն ցոյց չեն տուել: Չեն միջամտել նաեւ ընտրատեղամասում գտնուող ոստիկանները:

Խախտումների մասին հաղորդագրութիւնները տարածել է Ժառանգութիւն կուսակցութեան գրասենեակը:

## ԳԱԶԷԼՆԵՐՈՎ ՄԱՐԴԿԱՆՑ ԵՆ ԲԵՐՈՒՄ

*A1+*, 19:03

Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի աշխատակիցները քիչ առաջ *Ա1+*-ին տեղեկացրին, որ իրենք ականատես են եղել եւ լուսանկարել են, թէ ինչպէս են Գազէլներով մարդկանց բերել 114 դպրոցի 2 տեղամասեր՝ 10/19 եւ 10/20, որտեղ նրանք քուէարկել են: Շտաբի աշխատակիցների փոխանցմամբ՝ մարդկանց տարել են 9-րդ ձեւ, որի միջոցով մարդիկ քուէարկել են միանգամից մի քանի ընտրատեղամասերում: Շտաբի աշխատակիցների փոխանցմամբ՝ նոյն մեքենան այդ նոյն մարդկանց տեղափոխել է նաեւ Խնկոյ Ապոր գրադարանում տեղակայուած ընտրատեղամաս:

## ԽՈՉԸՆԴՈՏԵԼ ԵՆ *ՀԱՅՔ* ՕՐԱԹԵՐԹԻ ԼՐԱԳՐՈՂԻՆ

*A1+*, 19:05

Գումի շուկայի մօտից այսօր առաւօտեան մարդկանցով լի աւտօբուսներ էին տեղափոխում մօտակայ ընտրատեղամասեր: Այս մասին իմանալով՝ *Հայք* օրաթերթի լրագրող Սամուէլ Աւագեանը փորձում է տեղում պարզել որոշ մանրամասներ: «Մենք տեղեկացել էինք, որ մարդկանց, որոնք հիմնականում շուկայի աշխատողներ են, ինչ-որ թղթեր են բաժանում եւ բոլորի ձեռքին տեղեկանքի նման մի բան կար: Մօտեցանք հարցրինք՝ ով էք, ուր էք գնում, ընտրութեան էք գնում, թէ ոչ: Այդ հարցից բոլորը խառնուեցին իրար», - *Ա1+*-ին պատմեց *Հայք*ի լրագրող Սամուէլ Աւագեանը:

Շատ չանցած՝ նրան է մօտենում այս ամէնի, այսպէս ասած՝ կօորդինատորը եւ ասում, թէ աւտօբուսում եղած մարդիկ չեն կարող պատասխանել նրա հարցերին: Լրագրողին նա առաջարկում է գնալ շուկայի ներս, որտեղ պատասխանատուն կը տայ բոլոր հարցերի պատասխանը: «Ընդ որում՝ կօորդինատորը չի ասում, թէ ընտրութեան չենք ուղարկում մարդկանց, այլ ընդամէնն ասաց, որ բոլոր հարցերը լուծւում են ներսում», - ասաց Սամուէլ Աւագեանը:

Այդ կօորդինատորը լրագրողին ուղեկցում է Գումի շուկայի տնօրէնի սենեակ: Սամուէլ Աւագեանին ընդառաջ դուրս է գալիս մի մարդ եւ ներկայանում իբրեւ տնօրէն: Նա լրագրողին վստահեցրել է, որ ինքը մարդկանց ընդամէնը օգնում է, քանի որ նրանք շրջաններից են եկել այստեղ առեւտուր անելու ու չեն կարող իրենց բնակութեան վայրում քուէարկել, բայց ունեն համապատասխան տեղեկանք: «Մենք ընդամէնը ցանկացանք իմանալ, թէ այդ ինչ տեղեկանքներ են, ով է դրանք բաժանում, ինչքան մարդ է ստացել: Բայց այստեղ սկսուեց վիճաբանութիւն: Տնօրէնը հէնց սկզբից բարձր տոնով, ագրեսիւ ձեւով, ոչ կիրթ վերաբերմունք ցոյց տուաւ: Նրա ամենամեղմ բառը «տղերք ջանն էր»: Յետոյ ասաց, թէ ոստիկան կայ իմ սենեակում նստած, ու տարաւ սենեակ», - նշեց *Հայք*ի լրագրողը:

Լրագրողն, այնուհետեւ, ձայնագրիչը դնում է սեղանին, որ ձայնագրի ոստիկանին, քանի որ կարծել է, որ տեղեկանք բաժանողը հէնց նա է եղել: Սակայն պարզւում է, որ ոստիկանն ինքը եւս եկել է հետաքննութիւն անցկացնելու, քանի որ Կենտրոնի բաժանմունք ահազանգել ու բողոքել են: «Ուզում էի տնօրէնին հարց տալ, յարձակուեց ինձ վրայ, ձայնագրիչս վերցրեց, սկսեց քաշքշել, վուլգար արտայայտութիւններ ասել, բայց չհայհոյեց: Ասաց, որ ես իբր ուժով եմ եկել մտել իր սենեակ ու հիմա 20 վկայ կը բերի եւ կ'ապացուցի, որ ուժով եմ մտել սենեակ, որ օրէնքը իբր ես եմ խախտում: Ես էլ ասացի՝

ինչ ուզում ես արա, միայն թէ իմ ձայնարկիչը ետ տուր», - պատմեց Սամուէլ Աւագեանը:

Նրա վստահեցմամբ՝ ոստիկանն իրեն պաշտպանելու փոխարէն, սկսել է մեղադրել, թէ ինչու է առանց թոյլտուութեան ձայնագրում: «Ես էլ ասացի՝ գաղտնի չեմ ձայնագրում, ձայնարկիչը դրել եմ սեղանին: Ես ինչպէ՞ս կարող էի բանաւոր խօսացածը հիմք ընդունելով՝ նիւթ գրել, եթէ հիմք չէր լինելու», - յիշում է Աւագեանը: Դրանից յետոյ նա անմիջապէս գնում է ոստիկանութիւն՝ դէպքի առնչութեամբ բացատրութիւններ տալու: «Ես ընդամէնը իմ մասնագիտական պարտքն էի որոշել անել, երբ ձայնարկիչն ուժով խլեցին ինձնից: Դա մի՞թէ օրէնքի խախտում չէ: Անպայման պէտք է բռնութի՞ւն լինէր, որ խախտում համարուէր: Քննիչն ինձ ասում է, թէ միգուցէ դա այնքան էլ այդպէս չի եղել, քանի որ դա նրանց սենեակն է եղել, իրենց թոյլտուութիւնը չեմ ունեցել ձայնագրելու, կամ էլ նրանք իրօք տեղեակ չէին, որ ձայնագրում եմ», - ասում է լրագրողը:

Կատարուածի առթիւ ընթանում է նախաքննութիւն:

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՓՈՍՏԱՐԿՂ

*Lragir.am*, 19:05

Փետրուարի 19-ին հաղորդագրութիւն է տարածել նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի Մոնիտորինգի խմբի համակարգող Ռուբէն Թորոսեանը: «Այն ժամանակ, երբ ընտրական ընտրատեղամասերում զանգուածային օրինախախտումներ էին տեղի ունենում, *Հանրային ռադիոյի* «Ռադիոլուր» ծրագրով ժամը 17-21 հաղորդում հեռարձակուեց, որում ՀՀ նախագահի թեկնածու Արտաշէս Գեղամեանը բացայայտ քարոզչութիւն էր իրականացնում ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի դէմ: Գրեթէ նոյնը հեռարձակուեց նաեւ այդ ծրագրով ժամը 18-21-ին: Այդ մասին տեղեկացրել եմ ՄԻ Պաշտպանի Գրասենեակին եւ ՀՀ Գլխաւոր Դատախազութեան համապատասխան աշխատանքային խմբին, որի ղեկավարն անձամբ ընդունեց այդ տեղեկատուութիւնը», ասուած է Ռուբէն Թորոսեանի տարածած հաղորդագրութեան մէջ:

## ՃԱՆԱՊԱՐՀԻՑ ՏԱՐԱՆ

*A1+*, 19:07

Յայտնի օպերային երգչուհի Արաքս Դաւթեանը վրդովուած զանգահարեց *Ա1+* եւ պատմեց, որ այսօր թիւ 83 դպրոցում տեղակայուած ընտրատարածք գնալիս ականատես է եղել, որ Օրբելի փողոցում իր դիմացից դէպի ընտրատեղամաս քայլող մարդկանց է մօտեցել 06 US 727 պետհամարանիշի սպիտակ գոյնի Նիվա աւտոմեքենայ եւ հարցրել, թէ անձնագիր ունե՞ն իրենց մօտ: Դրական պատասխան ստանալով՝ բոլորին նստեցրել է իր մեքենան ու քշել ընտրատեղամաս, որոնց երգչուհին հանդիպել է նոյն 83 դպրոցում՝ արդէն քուէարկելիս:

ԿՈՂՊԵԼ ԵՆ ԶՈՒԳԱՐԱՆԸ

Իսկ ահա Նոր Հաճըն Աւանի թիւ 27/02 ընտրատեղամասում կողպէքով փակել են տեղի միակ զուգարանի դուռը, որի պատճառով յանձնաժողովականներն ու վստահուած անձինք բնական կարիքները հոգալու համար ստիպուած թողնում են ու այս ու այն կողմում զուգարան փնտրում:

## ԿՆԻՔԸ ՉԿԱՐ

*A1+*, 19:11

Նորք-Մարաշ Սրտաբանական կենտրոնում հիւանդներն իրենց քաղաքացիական պարտքը կատարեցին, երբ շրջիկ քուէատուփը բերուեց այնտեղ: Ընտրութեան ընթացքին հետեւում էին Ժառանգութիւն կուսակցութիւնը եւ թեկնածու Սերժ Սարգսեանին ներկայացնող վստահուած անձինք:

Հիւանդներն հիմնականում քուէարկում էին բաց, իսկ երբեմն Սերժ Սարգսեանի վստահուած անձը համապատասխան «ուղղութիւն» էր տալիս՝ բնականաբար իր թեկնածուի օգտին: «Ի՞նչ էք կարծում, ինչ իմաստ ունի գաղտնի քուէարկութիւնը, ինձ թւում է չունի», - վստահեցնում էր Սերժ Սարգսեանի վստահուած անձ Գագիկ Կարապետեանը:

Սակայն առաջին իսկ հիւանդի քուէարկութիւնից յետոյ պարզուեց, որ ծրարի վրայ դրոշմող կնիքը չկայ: «Ես ի՞նչ մեղաւորութիւն ունեմ, 10/01 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահը պէտք է տար, չի տուել դժգոհեց Սերժ Սարգսեանի վստահուած անձ Գագիկ Կարապետեանը: Ժառանգութիւն կուսակցութեան վստահուած անձը եւս տեղեկութիւն չունէր կնիքի վերաբերեալ. սկզբում անգամ անձնագրի համար նախատեսուած կնիքով էր կնքում ծրարը: Ի դէպ, որեւէ քայլ չձեռնարկուեց կնիքը բերելու համար: Նշենք, որ Նորքի հոգեբուժական կլինիկայում եւս շարժական արկղների միջոցով կատարուելու էր քուէարկութիւն:

## ԼՑՈՆՈՒՄ ԷԻՆ ՀԱՄԱՐ 8-Ի ՕԳՏԻՆ (video)

*A1+*, 19:18

Ժամը 18.00-ի սահմաններում Արաբկիրի 5/23 տեղամասում խառնաշփոթ էր. տեղամասի առջեւ հաւաքուած էին մի խումբ երիտասարդներ, իսկ տեղամասի ներսում՝ 10 երիտասարդ, ծխախոտներով եւ բարձր աղմուկով ինչ-որ բան էին անում: Յետոյ յայտարարեցին, որ իբր փչացած էլեկտրական լամպն են փոխում. մի հոգի կանգնած էր սեղանի վրայ, 4 հոգի «բռնել էին սեղանը», իսկ մի հոգի լցնում էր քուէարկած քուէաթերթիկներ: Ընդ որում՝ յանձնաժողովի նախագահը ներկայ էր այդ պահին եւ չէր միջամտում:

Յանկարծ քաղաքացիական բարձր գիտակցութեամբ մի ընտրող նկատելով, որ երիտասարդները քուէաթերթիկներ են լցնում տուփի մէջ, վազեց եւ հասցրեց խլել վերջին քուէաթերթիկը, որ փորձում էր երիտասարդը զցել քուէատուփի մէջ: «Ամօթ ձեզ, կեղծում էք ընտրութիւնները եւ անյարմար չէք զգում», - դիմելով յանձնաժողովի նախագահին ասաց միջին տարիքի այն ընտրողը, որը բնական պատճառով չներկայացաւ, բայց բացեց ծրարը եւ ներկայացրեց մեզ քուէաթերթիկը. «Տեսէք, քուէարկած էր 8 համարի օգտին, այսինքն, Սերժ Սարգսեանի»: Այս փաստը հաստատեց նաեւ յանձնաժողովի Ժառանգութեան ներկայացուցիչը: Այս ամէնը տեսագրուած է *Ա1+*-ի տեսախցիկով, եւ այն պահին, երբ երիտասարդ իրաւախախտները նկատեցին, որ մենք տեսանկարահանում ենք, յարձակուեցին օպերատորի վրայ:

Ի դէպ, մինչ այդ, երբ յանձնաժողովի նախագահը փորձեց կարգի բերել տղաներին, նրանք յարձակուեցին նաեւ այդ յանձնաժողովականի՝ Գագիկ Մանասեանի վրայ: Տղաները, այնուամենայնիւ, հեռացան սենեակից, բայց ոչ ընտրական տեղամասից, նրանք «դարանակալել էին» նոյն շէնքի երկրորդ յարկում, եւ սպասում էին մեզ, որպէսզի

տեսաերիզը խլեն օպերատորից: Ոստիկանների աջակցութեամբ սակայն, լրագրողներն անվնաս հեռացան տեղամասից:

Ի դէպ, նոյն այդ տեղամասում ընտրող Նինա Յակոբեանի փոխարէն արդէն քուէարկած էր, եւ երբ նա պահանջեց վերականգնել իր իրաւունքը, միայն իր յամառութեան շնորհիւ նրան սլաքների միջոցով թոյլատրեցին ստորագրել եւ քուէարկել:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՇՏԱԲԻ ՄԱՄՈՒԼԻ ԾԱՌԱՅՈՒԹԻՒՆԸ ՊԱՐԶԱԲԱՆՈՒՄ Է

*Lragir.am*, 19:36

Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի մամուլի ծառայութիւնը, անդրադառնալով Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանի վերջին յայտարարութիւններին, պարզաբանում է տարածել, որում մասնաւորապէս ասւում է, թէ «Պետութեան եւ պետականութեան հիմքերը չեն կարող սասանել ոչ Նիկոլ Փաշինեանը, ոչ Արման Մուսինեանը եւ ոչ էլ 1+1 բանաձեւի տակ ընկնող Լեւոն Տէր-Պետրոսեանի չափից աւելի մոլեռանդ հետեւորդները: Վստահ ենք, որ անգամ Լեւոն Տէր-Պետորսեանի ընտրազանգուածում գերակշռում են սթափ գիտակցութեամբ, պետութեան նկատմամբ յարգանք ունեցող օրինապաշտ մարդիկ, որոնք իրենց քաղաքական նախընտրութիւնը տարբերում են որոշ մարդկանց չբաւարարուած քաղաքական ակնկալիքներից: Կոչ ենք անում ՀՀ համապատասխան լիազօր մարմիններին ուշադրութիւն դարձնել Տէր-Պետրոսեանի շտաբի տարածած վերջին յայտարարութիւնում տեղ գտած ակնկարկներին, որոնք վերաբերում են քաղաքացիական անհնազանդութիւն հրահրելուն: Ինչ վերաբերում է էքզիթ-փոլերի տուեալներին, մենք ինքներս ունենք ընթացիկ համապատասխան տեղեկատուութիւն, որի մանրամասները, ելնելով օրէնքի պահանջներից, դեռ հրապարակել չենք կարող: Այդ տուեալները, սակայն, վկայում են Լեւոն Տէր-Պետրոսեանի ջախջախիչ պարտութեան մասին: Անդրադառնալով Ժառանգութեան կողմից ստեղծուած նախագահական ընտրութիւնների հասարակական վերահսկողութեան կենտրոնի ահազանգներին, արձանագրենք, որ տուեալ կենտրոնի տեղեկութիւնները չեն կարող համարուել անկողմնակալ լրահոս, հաշուի առնելով, թէ որ թեկնածուին է սատարում Ժառանգութիւնը:

## ԵՐԲ ԼՐԱԳՐՈՂԸ ՏԵՍԱՒ, ՅՐԵՑԻՆ

ԱՆԻ ՄԱԹԵՒՈՍԵԱՆ
Գիւմրի

*A1+*, 19:55

Գիւմրու թիւ 10-րդ դպրոցի 35/30 ընտրատեղամասի 25-30 հոգի խմբուած էին: «Ես կ'երթամ դպրոցի ետեւը, թող հերթով գան: Էսիզ ճի՛շտ չէ, կը հասկնաս: Ըսպէս պէտք չէ», - ճիշտ աշխատելաոճ էր թելադրում իր ենթականերին ընտրակաշառք բաժանողը: Նա 6-7 անձնագրեր միանգամից վերցնում էր, անգամ չստուգելով ու չգրանցելով անձնագրային տուեալները, մեծ «բարեհոգութեամբ» հաշւում էր գումարը: Խմբում 3 գլխաւորներ կային. առաջինը, ում մօտ էին փողերը, գնաց դպրոցի յետամաս, պահանջելով, որ մարդիկ երեք-երեք մօտենան:

Միւսը, թերեւս, աշխատախմբի «Հասարակութեան հետ կապերի գծով ղեկավարն»

էր, կամ ուղղակի նրա ծանօթներն էին բոլոր սպասողները: Ամէնուր կարելի էր լսել կանանց, ովքեր ասում էին՝ «Մուշ ջան, Մո՛ւշ»: Կանանցից մէկն էլ, երեւի որոշել էր Մուշեղին շատ հաճոյանալ ու նրան անուանեց. «Մուշեղ սպարապետ»: Մուշեղը մի լուրջ առաջադրանք ստացաւ. «Արագացրէ՛ք, ստեղ մի՛ կայնէք: Մխո՛», - սաստեց գումար բաժանողը, ենթարկուողն էլ թէ՝ հա, էղաւ: Խմբի երրորդ անդամը, որն այսքան էլ յայտնի չէր, որքան Մուշեղը, «կարգուկանոնն» էր ապահովում, կողքին կանգնած ոստիկանի փոխարէն, ով, իր աշխատանքն կատարելով, մէկ անգամ զգուշացրեց. «Ցրուէ՛ք ստեղից, ժողովուրդ: Հեռացէ՛ք»: Նա հասկացել էր, որ իրենց լրագրող էր մօտեցել:

«Ի՞նչ է որ ձեռդ, քո՛ւր: Հըլը կայնի, իմանանք՝ ո՞վ ես», - զայրացած բարձրաձայնեց երիտասարդը: Եկաւ «սպարապետ»-ը. «Ջապիս կենե՞ս»: «Հա՛, հա՛», - գոռացին մէկ-երկու կանայք: «Ի՞նչ «զապիս» է, հան հըլը հեռախօսդ»: Տեսաւ, որ անդրդուելի եմ. «Հա՛ն հեռախօսդ», - ասաց ու ձեռքը մտցրեց պայուսակիս մէջ, լաւ է՝ այն խլեցի:

Զգացի, որ ամէն րոպէն ճակատագրական կարող է լինել ու արագ քայլերով փորձեցի հեռանալ: «Քուրի՛կ ջան, ըդպէս բաներ չեն էնէ: Հըլը հան ընդիկ», - ճանապարհին մօտեցաւ ինձ այդ երրորդը: Ես էլ հարցրի, թէ նման բաներ կարելի՞ է անել, նա միամտօրէն պատասխանեց. «Բայց ի՞նչ են էրել օր»:

Շարունակում եմ ճանապարհս ու քիչ անց կրկին մօտենում է նա՝ այդ երրորդը. «Հա՛ն «զապիսդ» ու մեր մօտը ջնջէ», - հրամայական ասաց նա: Քայլերս արագացնում եմ: Մի քանի ակնթարթից կողքով կիպ անցնող տաքսի եմ նկատում. ներսում՝ կրկին նա: Սլանում եմ՝ համարեայ վազելով: Կարողացայ արագ բախել Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի դուռը:

## ԱՌԱՋԻՆ ԱՐԴԻՒՆՔԸ՝ ՇՈՒՏՈՎ

*A1+*, 19:56

Այսօր ուղիղ ժամը 20-ին Ալ□□ֆա-ԳԱ ընկերութիւնը *Ա1+*-ի կայքում կը հրապարակի exit poll-ի արդիւնքները: Այն կատարուել է 100 բնակավայրերում, 132 ընտրատեղամասերում: Հարցմանը մասնակցել է 3000 հոգի: Հարցումը կատարուել է *Ա1+*-ի եւ *Ժամանակ Երեւան* թերթի պատուէրով:

## ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՄԲ Կ’ՈՐՈՇԵՆ

*A1+*, 19:57

Քանաքեռ համայնքի 3/21 տեղամասում Քրիստինէ Թորոսեանը եւ քոյրը՝ Էլիզան, գնացել են տեղամաս, որպէսզի կատարեն իրենց քաղաքացիական պարտքը. «Սակայն այնտեղ յայտնաբերեցինք, որ մեր փոխարէն քուէարկած է, պարզաբանեցին, որ սխալմունք է եղել», - մեզ պատմեց Քրիստինէ Թորոսեանը:

«Ես որպէս այս երկրի քաղաքացի, ուզում եմ ունենալ մեր պետութեան ապագայի կերտման հարցում իմ դերը, եւ ուզում եմ քուէարկել», - ասաց տիկին Թորոսեանը: Ցանձնաժողովի նախագահ Կուլախազեան Համասփիւռը տեղեկացրել է, որ կարող են ոստիկանութիւնում վերականգնել իրենց ընտրելու իրաւունքը: Այդ կապակցութեամբ կազմուել է արձանագրութիւն, իսկ ՀՀ վերոյիշեալ երկու քաղաքացիները գնացին ոստիկանութիւն, որտեղ նախ բացատրութիւն տուեցին, ապա նաեւ հնարաւորութիւն՝ ընտրելու:

Ի դէպ, յանձնաժողովի նախագահը տեղեկացրել է, որ վիճակահանութեամբ երկու քուէթաթերթիկ անվաւեր կը համարուի: Իսկ Թորոսեան քոյրերը ստորագրել են նախօրօք դրուած ստորագրութեան վրայ եւ կատարել իրենց պարտքը:

## ԿԵՂԾ ԱՆՁՆԱԳԻՐ ԵՆ ՅԱՅՏՆԱԲԵՐԵԼ

*A1+*, 19:57

Անհանգիստ է նաեւ Ջէյթունում. *Ա1+*-ին ահազանգել էին, որ կեղծ անձնագրեր են յայտնաբերուել եւ Ժողովրդավարական Ուղի կուսակցութեան անդամ, Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Վարդան Գրիգորեանը յայտնեց, որ Ջէյթունում մէկ ժամուայ պարբերականութեամբ նոյն մեքենաներն են շրջում եւ նոր մարդիկ բերում ընտրատարածքներ:

«Շատ դէպքեր եղան, երբ ուղղորդում են ընտրողներին, իսկ Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի ակտիւիստները՝ յատկապէս Քեթրին եւ Տոնուս ընկերութիւններից, իրենց Ջիպերով անընդհատ շրջում են տեղամասերում, ցուցումներ են տալիս», - ասաց Վարդան Գրիգորեանը:

Իսկ Ջէյթունի 3/25 ընտրատեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Յովհաննէս Քիրամինջեանը յայտնաբերել է կեղծ անձնագրեր, սակայն արձանգրութիւն չի կազմուել:

«Ընտրատեղամաս էին ներխուժել մի մարդ եւ կին, կեղծ անձնագրի 33-րդ էջով, որը նկատեց կնքողը, բայց այնուամենայնիւ կնքեց: Ես արձանագրեցի խախտումը, արձանագրութիւն կազմեցինք, սակայն որի տակ հրաժարուեցին ստորագրել յանձնաժողովի անդամները եւ վստահուած անձինք, նաեւ այդ պահին ընտրատեղամասում գտնուող ԿԸՅ յանձնաժողովի անդամները», - *Ա1+*-ին պատմեց Յովհաննէսը:

## ՀԱՅՀՈՅԵԼ Է ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻՆ

*A1+,* 19:59

Վաղ առաւօտից մեր նկարահանող խմբերը այցելում են Վանաձորի տարբեր ընտրական տեղամասեր եւ գրանցում բազմաթիւ խախտումներ: Միկրոաւտօբուսներով ընտրողներին տեղամաս փոխադրելու եւ ընտրատեղամասերի մօտ կուտակումները արդէն փոխարինւում են զանգուածային դրամ բաժանելով:

Թիւ 30/11 տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Գրիգոր Յակոբեանը մեզ յայտնեց, որ ողջ օրուայ ընթացքում տեղամասում կատարուել է բաց քուէարկութիւն: Սերժ Սարգսեանի վստահուած անձ, ոմն Վահէն, Գրիգոր Յակոբեանի հաւաստմամբ, քուէարկութեան սկզբից եղել է ընտրողների թիկունքում եւ ցուցումներ տուել:

Ի դէպ, տեղամասի քուէախցիկների դիրքը չէր համապատասխանում ԸՕ պահանջներին: Գրիգոր Յակոբեանը բողոք է ներկայացրել յանձնաժողովի նախագահին, սակայն մնացել անարձագանք: Յանձնաժողովի նախագահ Աւագ Աւագեանն էլ մեզ յայտնեց. «Օրէնքում գրուած է, որ վստահուած անձը կարող է ցանկացած տեղ քայլել, ցանկացած գործընթացի մասնակցել, առանց խանգարելու մեր աշխատանքներին»:

Ի դէպ, մեզ տեղեկացրին, որ Սերժ Սարգսեանի վստահուած անձը անվայելուչ արտայայտութիւններ եւ հայհոյանքներ է ուղղել տեղամաս այցելած լրագրողներին՝ ԵԱՀԿ երկարաժամկէտ դիտորդների ներկայութեամբ:

## ԱՌԱՋԱՏԱՐԸ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆՆ Է

*A1+*, 20:01

Ալֆա-ԳԱ ընկերութիւնը հրապարակեց exit poll-ի արդիւնքները: Այն կատարուել է 100 բնակավայրերում, 132 ընտրատեղամասերում:

Լեւոն Տէր-Պետրոսեան - 54, 2%

Սերժ Սարգսեան - 24,4%

Վահան Յովհաննիսեան - 8,4%

Արթուր Բաղդասարեան - 8,2 %

Վազգէն Մանուկեան - 1,5%

Արտաշէս Գեղամեան - 1,3%

Տիգրան Կարապետեան - 1%

Արամ Յարութիւնեան - 0,5%

Արման Մելիքեան - 0,5 %

Հարցմանը մասնակցել է 3008 հոգի, որից պատասխանել է 2767-ը:

## ԱՐԱՄ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԸ ՍՊԱՌՆԱՑԵԼ Է, ԱՍՈՒՄ Է ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԸ

*Lragir.am*, 20:28

Երեւանի թիւ 16 դպրոցում տեղակայուած 13/02 ընտրատեղամաս է ներխուժել Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանը, որը սկսել է ընտրատեղամասում սպառնալ, գոռալ եւ հայհոյել: Վերջինս Սերժ Սարգսեանի վստահուած անձին սպառնացել է, որ ինքը անձամբ է նրա հետ հաշուեյարդար տեսնելու: Ինչպէս փոխանցում է 13/02 ընտրատեղամասում Սերժ Սարգսեանի վստահուած անձը, մինչ ընտրատեղամասից դուրս գալը Արամ Կարապետեանը յայտարարել է, թէ ինքը այնպէս է անելու, որ Սերժ Սարգսեանին բոլոր սատարողները երկրից փախնեն:

## ԾԵՐԵՐԻ ՓՈԽԱՐԷՆ ՈՒՄ ՈՒԶՈՒՄ ՔՈՒԷԱՐԿՈՒՄ ԵՆ

*A1+*, 20:31

Ժամը 16:00-ի սահմաններում արտաքնապէս հանգիստ մթնոլորտ էր Նորքի թիւ 10/01 ընտրատեղամասում, մինչդեռ եթէ մի քանի ժամ տեղում հետեւես ընտրութեանը, ապա կը տեսնես, որ տեղի են ունենում կեղծիքներ: Այդ պահի դրութեամբ ընտրութեանը մասնակցել էին շուրջ 732 մարդ: Սակայն մինչ յանձնաժողովի նախագահ Հայկազ Յակոբեանը մեզ թուեր էր հրապարակում, տեղամաս էին մտնում մարդիկ մի քանի անձնագրերով, ինչին չէր արձագանքում վերջինս: «Կարող է տան մի անդամը մի քանի անձնագրեր պահել իր ձեռքում», - պատասխանեց նա: Անձնագրերի տէրերը, մօտենալով քուէախցին, հայեացքները գամել էին մի մարդու, որը եւս մօտեցաւ քուէարկելու ու միաժամանակ նայում էր, թէ նրանք ում են ընտրում: Երբ յանձնաժողովի նախագահի ուշադրութիւնը այդ կողմ էինք հրաւիրում, ասում էր, թէ ես ձեր հետ էի խօսում եւ ոչինչ չեմ նկատել:

*Ա1+*-ի ներկայ գտնուելու պահին, ներս մտաւ մի մարդ, որը երկրորդ անգամ էր եկել եւ երբ դիտորդներից մէկը հարցրեց, թէ դուք նոր էիք եկել, ինչու կրկին եկաք, վերջինս թողեց եւ հեռացաւ: Ի դէպ, այս տեղամասում յանձնաժողովի անդամների, վստահուած անձնանց մեծամասնութեան եւ դիտորդների պահուածքը տարօրինակ էր: Երբ *Ա1+*-ը

իւրաքանչիւր կասկածելի բան արձանագրելով հարցեր էր տալիս, յանձնաժողովի քարտուղարը, որը 50 անց կին էր, խորհուրդ տուեց. «Աղջիկ ջան, ես քեզանից շատ կեանք տեսած եմ ու քեզ ասեմ, որ քո սառելը, չարչարուելը անիմաստ է: Մէկ է որոշողը ոչ ես եմ, ոչ դու, մեր ժողովուրդը արդէն վաղուց որոշել է ու ամէն ինչ որոշուած է»:

Վահան Յովհաննիսեանի վստահուած անձը *Ա1+*-ին ասաց, որ իրենք շահագրգռուած են, որ նորմալ անցնի. «Չնչին են լինում խախտումները: Կուտակում են առաջանում, 4-5 անձնագրեր են բերում, ընդամէնը այդքանը»: ՕԵԿ վստահուած անձը եւս որեւէ խախտում չարձանագրեց, այլ խորհուրդ տուեց անձամբ գտնուել տեղում եւ տեսնել:

Փաստօրէն, այս տեղամասում գլխաւոր կեղծարարութիւնը տեղի էր ունենում ծերանոցի ծերերի ընտրութեան ժամանակ: Երազ մակնիշի աւտոմեքենայով, որի յետեւում, ի դէպ, press նշան կար, տեղամաս էին բերւում մօտակայ ծերանոցի տարեցները, որոնց վատ տեսնելու, չլսելու պատճառով նրանց քուէախուց էին ուղեկցում իրենց դայեակները եւ շատ անգամ առանց հարցնելու նրանց փոխարէն քուէարկում: *Ա1+*-ի ներկայութիւնը խուճապի մատնեց ծերանոցի աշխատակիցներին, վերջիններիս հետ եկած մի կին, որը ներկայացաւ որպէս նրանց հոգեբան, առանց վարանելու ելք ու մուտք էր գործում ընտրատեղամասում, ուղղորդում տարեցներին: Հետաքրքիր միջադէպ արձանագրուեց: Երբ դայեակը մեզ տեսնելով տարեցներից մէկին հարցրեց, թէ ում ընտրեմ քո փոխարէն, վերջինս պատասխանեց. «Ում որ ասել էիք: Սերժ Սարգսեանին»: Մի ծեր կին էլ, որը ասաց, թէ ուզում է Լեւոն Տէր-Պետրոսեանին ընտրել, դայեակը առանց քուէախցիկ ուղեկցելու նրա փոխարէն ընտրութիւն կատարեց եւ նետեց քուէաթերթիկը քուէատուփի մէջ: Երբ յանձնաժողովի նախագահի ուշադրութիւնն այդ փաստի վրայ հրաւիրեցինք, նա ասաց, թէ նման բան չի տեսել, մինչդեռ դա փաստեցին հաւաքուած վստահուած անձինք: «Ծերանոցից մարդիկ եկել են այստեղ, հերթեր են առաջացել, մէկը չի տեսնում, միւսը տեսնում է, նրանց տեղը քուէարկում են: Տեսայ նաեւ, որ առանց կնոջ քուէարկելու իրենք գցեցին տուփը», - փաստեց Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Աշոտ Միրաղեղեանը:

Աւտոմեքենայով տարուող եւ կրկին բերուող ծերերի միւս խմբին մեր ներկայութեան պահին քուէարկութեան չհրաւիրեցին, իսկ երբ դուրս եկանք շէնքից, կրկին սկսուեց ծերերի հոսքը:

Ի դէպ, յանձնաժողովի նախագահի հաւաստմամբ, այստեղ ընտրութեան է մասնակցում շուրջ 140 տարեց մարդ:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԸ ԳՐԱՆՑԵԼ Է ԱՊՕՐԻՆՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 20:34

Ես՝ ՀՀ նախագահի թեկնածու Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձ, Պահպանողական Կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանս, յայտարարում եմ, որ ս/թ. փետրուարի 19-ին՝ ընտրութեան օրը, ժամը 12:30-ի սահմաններում Գիւմրի քաղաքի Գ. Սարեանի անուան դպրոցի տարածքում տեղակայուած ընտրատեղամասի դիմաց խմբուած անձանց մօտ տրցակով անձնագրեր տեսնելով՝ տեսանկարահանեցի այն առանց պետհամարանիշի ԲՄՎ մակնիշի մեքենան, որի միջից դուրս եկած անձինք նստեցին Ժիգուլի 06 մակնիշի 45US478 պետհամարանիշի աւտոմեքենան, ուր բաժանե-

ցին անձնագրերը: Նկատելով մեր նկարահանումը՝ ԲՄՎ-ի վարորդը արագ հեռացաւ, քիչ անց վերադարձաւ նոյն մեքենայով իր հետ բերելով այլ երիտասարդների, ովքեր փորձեցին կանգնեցնել մեր մեքենան: Մեր արագ հեռանալուց յետոյ նրանք որոշ ընթացք հետեւեցին մեզ: Սա մեր իրաւունքներն իրացնելու հակաօրինական կանխման փորձ էր, որն ուղեկցուեց ահաբեկմամբ: Պատասխանատուութիւնը կատարուածի եւ յետագայ ընթացքի համար կրում են պատկան մարմինները: Սոյն փաստերի տեսագրութիւնը տրամադրուած է *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեանը:

ՊԿ Նախագահ՝ Միքայէլ Հայրապետեան

Յ.Գ. Սոյն յայտարարութիւնը եւ տեսագրութիւնը օրուայ երկրորդ կէսից պարբերաբար հեռարձակւում է Գիւմրիի *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեամբ:

## «ՌՈՒԲԷՆ ՀԱՅՐԱՊԵՏԵԱՆԸ ԾԵԾԵԼ Է ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԱՆՑ»

*A1+*, 20:36

Նիկոլ Փաշինեանը *Ա1+*-ին տեղեկացրեց, որ 1/4 ընտրատեղամասի Լեւոն Տէր-Պետրոսեանի 2 վստահուած անձանց՝Արսէն Խանամիրեանին եւ Գարիկ Ղազարեանին մեքենայով տարել են Հարսնաքար համալիր: Վստահուած անձանց Հարսնաքարում դիմաւորել է Ռուբէն Հայրապետեանը 20-30 մարդկանց հետ, ովքեր դաժան ծեծի են ենթարկել նախագահի թեկնածուի վստահուած անձանց:

ԹԱՂԻ «ԼԱՒ ՏՂԵՐՔԸ» ԿԱՇԱՌՔ ԵՆ ԲԱԺԱՆՈՒՄ

Շէնգաւիթ համայնքում բնակիչներին այսօր առաւօտեանից բաժանել են ընտրակաշառք՝ 5000 դրամի չափով: Մեզ հետ զրուցած բնակիչները հրաժարւում էին ներկայանալ եւ թոյլ չէին տալիս *Ա1+*-ի լրագրողին ձայնագրել խօսակցութիւնը. «Դիկտաֆոնդ անջատի, կը պատմեմ», - ասում էին նրանք: Ձայնագրիչը անջատելուց յետոյ շէնգաւիթցիները նախ արդարանում էին՝ ասելով, որ փող վերցրել են, բայց Սերժ Սարգսեանի օգտին չեն քուէարկելու, յետոյ պատմում էին, որ փող բաժանողներն իրենց թաղի «լաւ տղերքն» են եղել: «Ես չէի էլ ուզում վերցնել, եկան տուն, փողը դրեցին սեղանին ու ասեցին, որ բարեգործական ակցիա է, - պատմում էր Շէնգաւիթցի մի կին, - դէ որ սաղ շէնքի մարդիկ վերցրեցին, ես խի՞ չպիտի վերցնէի»: Այդ նոյն կինը խօսակցութեան վերջում *Ա1+*-ի լրագրողին զգուշացրեց՝ ասելով. «Եթէ էտ տղերքն իմացան սրա մասին, ասելու եմ, որ ես էտենց բաներ չեմ ասել»: Մէկ այլ Շէնգաւիթցի էլ պատմեց, որ այդ նոյն տղերքը ընտրակաշառք էին բերել անցած տարուայ ընտրութիւններում Հանրապետական Կուսակցութեանն ընտրելու համար, այսօր էլ՝ կուսակցութեան նախագահ Սերժ Սարգսեանի համար: «Անցած անգամ էլ իրանց ասածին չէի ընտրել, էսօր էլ չեն ընտրելու», - արդարացաւ Շէնգաւիթ համայնքի բնակիչը:

## «ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՅԱՂԹՈՒՄ Է»

*A1+*, 20:40

«Իշխանութիւնը յուսահատ փորձեր է անում, անխուսափելի պարտութիւնից փրկուելու, որովհետեւ բոլոր ուսումնասիրութիւնները ցոյց են տալիս, որ Տէր- Պետրոսեանը հսկայական առաւելութեամբ յաղթում է նախագահական ընտրութիւններում», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանը:

Նա անդրադարձաւ ընտրատեղամասերում ծեծերին, լցոնումներին եւ խախտումնե-

րին:

«Եւ ընդհանրապէս կայ քաղաքականութիւն, որ յանձնաժողովի իշխանական անդամները, յանձնաժողովի նախագահները որեւէ արձանագրութիւն չեն ստորագրում, իրենք ունեն հրաման, չստորագրել այնպիսի յայտարարութիւն, որտեղ ինչ-որ բան այնպէս չէ», - ասում է Նիկոլ Փաշինեանը:

Իսկ ՀԺԿ-ական Գրիգոր Յարութիւնեանը գտնում է, որ պետական մեքենան իշխանութիւնները ամբողջովին օգտագործեցին ՀՀ-ում բռնի ընտրութիւններ անցկացնելու, կեղծելու ի օգուտ իշխանական թեկնածուի:

«Իշխանութիւնները գնում են այս ճանապարհով, սակայն իրենց չի յաջողուելու: Մենք թոյլ չենք տալու շարունակել մեր երկրում բռնապետութիւն, իրենց չի յաջողուելու եւ ժողովուրդը իր քուէի տէրն է լինելու», - ասում է Գրիգոր Յարութիւնեանը:

Ի դէպ, այսօր Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը յայտարարութեամբ է հանդէս եկել, որտեղ նշւում է, որ «ՀՀ նախագահի ընտրութիւնների առաջին իսկ ժամերից գրանցուեց ընտրողների բացառիկ ակտիւութիւն: Դրանից սարսափած իշխանութիւնը սկսեց կիրառել ընտրախախտումների իր ողջ զինանոցը՝ ընտրակաշառքներ բաժանելուց մինչեւ կոպիտ ուժի գործադրում: Վստահուած անձանց ուժով են դուրս են տարել տեղամասերից: Աւաբեկիչների խմբերը յաճախ շրջում են ոստիկանութեան ակտիւ ջոկատայինների ուղեկցութեամբ: Օրինախախտումները արձանագրւում են օտարերկրեայ եւ տեղական դիտորդների կողմից»:

**«ՌՈՒԲԷՆ ՀԱՅՐԱՊԵՏԵԱՆԸ ԾԵԾԵԼ Է ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԱՆՑ»**

20:36

Նիկոլ Փաշինեանը *Ա1+*-ին տեղեկացրեց, որ 1/4 ընտրատեղամասի Լեւոն Տէր-Պետրոսեանի 2 վստահուած անձանց՝ Արսէն Խանամիրեանին եւ Գարիկ Ղազարեանին մեքենայով տարել են Հարսնաքար համալիր: Վստահուած անձանց Հարսնաքարում դիմաւորել է Ռուբէն Հայրապետեանը 20-30 մարդկանց հետ, ովքեր դաժան ծեծի են ենթարկել նախագահի թեկնածուի վստահուած անձանց:

ԹԱՂԻ «ԼԱՒ ՏՂԵՐՔԸ» ԿԱՇԱՌՔ ԵՆ ԲԱԺԱՆՈՒՄ

Շէնգաւիթ համայնքում բնակիչներին այսօր առաւօտեանից բաժանել են ընտրակաշառք՝ 5000 դրամի չափով: Մեզ հետ զրուցած բնակիչները հրաժարւում էին ներկայանալ եւ թոյլ չէին տալիս *Ա1+*-ի լրագրողին ձայնագրել խօսակցութիւնը. «Դիկտաֆոնդ անջատի, կը պատմեմ», - ասում էին նրանք: Ձայնագրիչը անջատելուց յետոյ շէնգաւիթցիները նախ արդարանում էին՝ ասելով, որ փող վերցրել են, բայց Սերժ Սարգսեանի օգտին չեն քուէարկելու, յետոյ պատմում էին, որ փող բաժանողներն իրենց թաղի «լաւ տղերքն» են եղել: «Ես չէի էլ ուզում վերցնել, եկան տուն, փողը դրեցին սեղանին ու ասեցին, որ բարեգործական ակցիա է, - պատմում էր Շէնգաւիթցի մի կին, - դէ որ սաղ շէնքի մարդիկ վերցրեցին, ես խի՞ չպիտի վերցնէի»: Այդ նոյն կինը խօսակցութեան վերջում *Ա1+*-ի լրագրողին զգուշացրեց՝ ասելով. «Եթէ էտ տղերքն իմացան սրա մասին, ասելու եմ, որ ես էտենց բաներ չեմ ասել»: Մէկ այլ Շէնգաւիթցի էլ պատմեց, որ այդ նոյն տղերքը ընտրակաշառք էին բերել անցած տարուայ ընտրութիւններում Հանրապետական Կուսակցութեանն ընտրելու համար, այսօր էլ՝ կուսակցութեան նախագահ Սերժ Սարգսեանի համար: «Անցած անգամ էլ իրանց ասածին չէի ընտրել, էսօր էլ չեն ընտրելու», - արդարացաւ Շէնգաւիթ համայնքի բնակիչը:

## ՇՆՈՐՀԱՒՈՐԱՆՔ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆԸ

*Lragir.am*, 20:48

Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի պետ Ալիկ Արզումանեանը փետրուարի 19-ին Հայաստանի նախագահի ընտրութեան աւարտից անմիջապէս յետոյ յայտարարել է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը յաղթել է հանրապետութեան ամբողջ տարածքում եւ քաղաքացիների ճնշող մեծամասնութիւնն իր ձայնը տուել է նրան: Թէեւ տեղի են ունեցել տոտալ ընտրակեղծիքներ, ահաբեկումներ, բռնութիւններ, սակայն Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի պետը յայտարարում է, որ այս անգամ իշխանութեանը չի յաջողուելու գողանալ քաղաքացիների քուէն, որովհետեւ հասարակութիւնը գիտէ, թէ ում է ձայն տուել, գիտէ իր ձայնի արժէքը եւ տէր է կանգնելու իր ձայնին: Ալիկ Արզումանեանը յայտարարել է, թէ շնորհաւորում է հասարակութեանն այդ յաղթանակի կապակցութեամբ: Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանն էլ ասել է, որ փետրուարի 20-ին, ժամը 15-ին Տէր-Պետրոսեանի համախոհները հաւաքուելու են Մատենադարանի մօտ հանրահաւաքի, տօնելու համար իրենց յաղթանակը: Որպէս յաղթանակի ապացոյց, Տէր-Պետրոսեանի շտաբը ներկայացնում է մամուլում հրապարակուած Ալֆագա ընկերութեան անցկացրած էքզիտ պոլի արդիւնքը, ուր մօտ 3000 քաղաքացու շրջանում անցկացուած յետընտրական հարցումը պարզել է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը նախագահի ընտրութեանը ստացել է 54 տոկոս ձայն, իսկ երկրորդ տեղում ընթացող Սերժ Սարգսեանն ընդամէնը 24 տոկոս:

## ԴԻՏՈՐԴԸ ՉԷՐ ՆԿԱՏԵԼ

ԱՆԻ ՄԱԹԵՒՈՍԵԱՆ
Գիւմրի

*A1+*, 20:50

Գիւմրու թիւ 34/34 ընտրատեղամասի մօտակայքում առաջին հայեացքից ամէն ինչ հանգիստ էր: Հատուկենտ ընտրողներ էին ներկայանում ու ընտրական գործընթացը հնարաւոր կը լինէր պասիւ գնահատել, եթէ մի կին չմօտենար տեղամասի մուտքին: Նախասրահում բացի ինձնից միջազգային դիտորդների վարորդն էր ու նրա ծանօթներից մէկը: Վերջինս ընտրական իր պարտքը կատարելուց յետոյ վարորդին խոստովանեց. «Հէչ մարդու չընդրի: Ըդպէս սպիտակ թուղթն եմ քցէ, գիտէ՞ս», - պատմում էր նա:

Քիչ անց մի կին մտաւ այդ նոյն նախասրահ ու հարցրեց, այդ «ոչ մէկին չընտրած» տղամարդուն. «Հ՞ը, մեզի հէչ բան չէ՞ս ուզէ ըսես»: Նա էլ թէ՝ չէ: Շատ համոզելուց յետոյ տղամարդը նրանց ասաց, որ հեռու գնան ու սպասեն իրեն: Այդպէս էլ արեցին: Փոքր ինչ դրսում զրուցելուց յետոյ (չկարողացայ նկատել՝ որտեղ) նրանք վերադարձան: Կինը յապաղում էր: Ներսից մի յանձնաժողովական մօտեցաւ ու հարցրեց՝ ինչի՞ էք սպասում, սա էլ թէ՝ աղջկաս: «Կը սպասեմ, օր իրար հետ մտնինք, ընտրենք», - ստեց կինը:

Երբ ընտրատեղամասի մօտակայքում մօտեցայ վերոնշեալ կնոջն ու հարցրի, թէ ինչո՞ւ է սպասում, հռետորաբար նշեց. «Ընձի էլ շատ հարցեր կը հետաքրքրեն, բայց ես քեզի չեմ հարցնէ»:

Այս ընթացքում այս ընտրատեղամասում միջազգային երկու դիտորդներ էին ներկայ: Երբ նրանցից մէկին հարցի, թէ ինչպէ՞ս է գնահատում նախընտրական վիճակը, նա ասաց, որ ամէն ինչ նորմալ է, սակայն կոնկրէտ մեկնաբանութիւններ դեռեւս իրաւասու

չի անելու, այլ ինձ հարցրեց. «Դուք որեւէ բան նկատել էք, այդ միամիտ հարցին ի պատասխան նրան հաղորդեցի, որ հէնց հիմա՝ մեզնից մի քանի մետր հեռաւորութեան վրայ փող են բաժանում՝ 5000 դրամի չափով ու մանրամասնեցի, որ դա շուրջ 12 եւրո է: «Բայց բաժանողները ինչո՞ւ կարող են համոզուած լինել, որ հէնց իրենց ասած թեկնածուին կ'ընտրեն», - զարմացած հարցրեց ֆրանսուհին:

Միջազգային դիտորդները վաղը կը ներկայացնեն իրենց նախընտրական եզրակցութիւնը:

## «ՁԵԶ ԳՑԵԼՈՒ ԵՆ»

ԱՆԻ ՄԱԹԵՒՈՍԵԱՆ
Գիւմրի

*A1+*, 21:48

«Եթէ մինչեւ օրուայ առաջին կէսը հիմնական խախտումները կուտակումներն էին ընտրական տեղամասերում, մասսայաբար ընտրակաշառքների բաժանումն էր, ապա մենք օրուայ երկրորդ կէսին արձանագրեցինք նաեւ լցոնման դէպք», - յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանի Գիւմրու շտաբի անդամ Աշոտ Զաքարեանը ու փաստարկեց, - կոնկրէտ Գիւմրի քաղաքի 41 դպրոցում տեղակայուած ընտրական տեղամասում մեր վստահուած անձը արձանագրել է լցոնման դէպք: Եթէ չեմ սխալւում՝ 350 թերթիկ են զցել: Արձանագրութիւն կազմուել է, չնայած այն բանի, որ յանձնաժողովականները միաբերան ժխտում են, որ նման փաստ չի արձանագրուել»:

Տեղամասի իրադրութեանը նա անձամբ է ծանօթացել. «Երբ ահազանգն եղաւ, ես ինքս գնացի տեղամաս. ընդամէնը պէտք էր տեսնել յանձնաժողովականների դէմքերի արտայայտութիւնը», - երեկոյեան տեղի ունեցած ասուլիսին ներկայացրեց նա:

Լեւոն-Տէր Պետրոսեանի լիազօրուած անձն անդրադարձաւ նաեւ Արթիկ, Մարալիկ քաղաքներում կատարուած դէպքերին:

«Գիւմրիից Գազէլ մեքենաներով տեղափոխուել են ընտրողներ Մարալիկ քաղաք: Տեղի է ունեցել է քաշքշուկ, ինչի արդիւնքում Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի 2 պատասխանատուները ձերբակալուել են ու տարուել են ոստիկանութիւն», - Ժուռնալիստների Ասպարէզ ակումբում տեղի ունեցած ասուլիսի ընթացքում յայտարարեց պրն Զաքարեանն ու մէկ այլ փաստ արձանագրեց, ինչը կատարուել է Գիւմրու 31-րդ դպրոցում. «Մեր վստահուած անձանց՝ երկու երիտասարդ տղաների այդ ընտրատեղամասից ստիպողաբար դուրս են հանել: Ու այս գործում իր կարեւոր մասնակցութիւնն է ունեցել Գիւմրի քաղաքում յայտնի Չուբար Զարզարեանը»:

Բանախօսն հարկ համարեց բոլոր ընտրակեղծարարներին զգուշացնել. «Լաւ իմացէ՛ք՝ վաղը-միւս օրը Հայաստանի ողջ ժողովուրդը որոշում է կայացնելու՝ ազատուել ներկայ իշխանութիւնից: Տիկնա՛յք, պարոնա՛յք, ընտրակեղծարարնե՛ր, Դուք մնալու էք «քաւութեան նոխազի» կարգավիճակում, -ու պարզաբանեց, - իմացէ՛ք, ձեզ քցելու են: Էդ մարդիկ փախնելու են Հայաստանից, էդ մարդիկ Հայաստանում ոչինչ չունեն»:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԹԻՄԸ ԱՐՁԱՆԱԳՐԵՑ ԻՐ ՅԱՂԹԱՆԱԿԸ

*A1+*, 21:52

ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը յաղթեց առաջին փուլով: Այս մասին

քիչ առաջ յայտարարեց Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը եւ շնորհաւորեց ՀՀ բոլոր քաղաքացիներին: «Ի հեճուկս իշխանութեան, աւազակապետութեան մենք յաղթել ենք հանրապետութեան ողջ տարածքում: Մեր ստացած տուեալները ապացուցում են, որ եղել է շատ բարձր մասնակցութիւն եւ ընտրութեանը մասնակցածների ճնշող մեծամասնութիւնը իր ձայնը տուել է մեր թեկնածուին՝ հանրապետութեան հիմնադիր նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանին», - յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի պետ Ալեքսանդր Արզումանեանը:

Նա նշեց, որ գործող իշխանութիւնները ինչպէս 2003թ., 2005թ., 2007թ.-ին անելու են ամէն ինչ, որպէսզի կարողանան կեղծել, եւ աւելացրեց. «Վստահ եմ, որ այս անգամ հասարակութիւնը գիտի, թէ ում է իր ձայնը տուել, գիտի իր ձայնի արժէքը, կարեւորութիւնը եւ թոյլ չի տալու որ որեւէ մէկը հերթական անգամ իրենից գողանայ իր քուէն: Այս յաղթանակի համար ես ուզում եմ շնորհաւորել հասարակութեանը, եւ վստահ եմ, որ բոլորդ էլ տիրապետում էք իրավիճակին եւ գիտէք, թէ ինչ քայլեր են իրականցրել իշխանութիւնները»:

Ալեքսանդր Արզումանեանը չի կասկածում, որ իշխանութիւններն իրենց բռնութիւնները Տէր-Պետրոսեանի թիմի նկատմամբ կը շարունակեն նաեւ քուէները հաշուելու ընթացքում: Շարունակելով Արզումանեանի խօսքը՝ Նիկոլ Փաշինեանը հրապարակեց իր ձեռքի տակ եղած խախտումների ու բռնութիւնների դէպքերը: Փաշինեանը նաեւ անդրադարձաւ Աբովեան քաղաքում Երջանիկ Աբգարեանի եւ Գուրգէն Եղիազարեանի եւ նրա որդուն ծեծի ենթարկելու փաստին. «Հեռուստատեսութեամբ անընդհատ թմբկահարւում է, որ Երջանիկ Աբգարեանը, Գուրգէն Եղիազարեանը եւ նրա որդին դէպքի առթիւ ցուցմունք չեն տալիս»: Ցոյց տալով իր ձեռքի տակ ունեցած փաստաթուղթը՝ Փաշինեանն ասաց. «Իմ ձեռքի տակ է Կոտայքի մարզի ոստիկանութեան բաժնի պետ Վ. Դանիէլեանին ուղղուած դիմումը, որի հեղինակներն են Երջանիկ Աբգարեանը, Գուրգէն Եզիազարեանն ու նրա որդին: Ոստիկանութիւնում թողուած են նաեւ նրանց հեռախօսահամարները, սակայն ոստիկանութիւնից որեւէ մէկը չի հետաքրքրուել այդ միջադէպերով»:

Նիկոլ Փաշինեանը անդրադարձաւ այն փաստին, որ Տէր-Պետրոսեանի շտաբի նախորդ ասուլիսին ի պատասխան, որտեղ բազմաթիւ խախտման կոնկրէտ դէպքեր հրապարակուեցին, յաջորդեց Սերժ Սարգսեանը նախընտրական շտաբի յայտարարութիւնը. «Այնտեղ որեւէ փաստ չկայ: Մենք դրանից եզրակացրեցինք, որ նրանց շտաբը երեւէ ասելիք չունի: Այսինքն՝ հաստատուեց մեր ողջ տեղեկատուութիւնը բռնութիւնների եւ խախտումների վերաբերեալ»: Խախտումների վերաբերեալ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի վերջին տեղեկատուութեան համաձայն՝ քուէարկութեան աւարտից յետոյ հանրապետութեան բազմաթիւ ընտրական տեղամասեր հոսանքազրկուել են՝ մասնաւորապէս՝ Մեղրիում եւ Երեւանի Էրեբունու զանգուածներում:

«Բոլոր տեղամասերում մենք մասնակցութեան հաշուառում ենք կատարել եւ այն թուերը, որ ԿԸՅ-ն ներկայացրել է ժամը 17.00-ի դրութեամբ, որ ընտրութիւններին մասնակցել է շուրջ 1 միլիոն 360 հազար, դա բացարձակապէս չի համապատասխանում իրականութեանը, դա բացարձակ ուռճացուած տուեալներ են: Խօսքը զնում մի քանի հարիւր հազար մասնակցի թիւ կեղծելու մասին: Դա մեզ թոյլ է տալիս ասել, որ հաշուելու ընթացքում ինչ-ինչ գործողութիւններ են նախապատրաստւում», - աւելացրեց Գրիգոր Յարութիւնեանը:

## ԱՐԴԷՆ ԱՆՋԱՏՈՒՄ ԵՆ ԼՈՅՍԵՐԸ

*Lragir.am*, 20:58

Տեղեկութիւններ կան, որ Երեւանի Էրեբունի մասիւում, ինչպէս նաեւ Մեղրիում, քուէարկութեան աւարտից յետոյ, երբ պէտք է սկսէր ձայների հաշուելու գործընթացը, տեղամասերում անջատել են էլեկտրամատակարարումը: Այդ մասին փետրուարի 19-ին, ժամը 20-ից յետոյ հրաւիրած մամուլի ասուլիսի ընթացքում յայտարարել է նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանը: Նա հաղորդել է նաեւ ընտրախախտումների ու բռնութիւնների մասին մի քանի տեղեկութիւն եւս: Նիկոլ Փաշինեանն օրինակ հաստատել է, որ Աւանի ընտրատեղամասերից մէկում, Ազգային Ժողովի պատգամաւոր Ռուբէն Հայրապետեանի հրահանգով առեւանգել են Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց՝ Գարիկ Ղազարեանին ու Արսէն Խանամիրեանին, նրանց ձեռնակապ տարել եւ մի քանի ժամ պահել Հարսնաքար հիւրանոցային համալիրի նկուղում, որը պատկանում է նոյն Ռուբէն Հայրապետեանին: Նիկոլ Փաշինեանը տուել է նաեւ Արաբկիրի թաղապետ Յովհաննէս Շահինեանի անունը, ասելով, որ նա եւ իր համախոհները Արաբկիրի թիւ 4/26 տեղամասում ծեծի են ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձին:

Լեւոն Տէր-Պետրոսեանին սատարող ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանն էլ նշել է, որ իրենք զուգահեռ հաշուարկ են արել ընտրութեանն ընտրողների մասնակցութեան վերաբերեալ եւ կարող են ասել, որ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի պաշտօնական տուեալը, որ վերաբերում է ընտրութեանը մասնակցութեան ծաւալին, իրականում ուռճացուած է մի քանի հարիւր հազարով: Գրիգոր Յարութիւնեանը ասել է, թէ դա հիմք է տալիս ենթադրելու, որ ամենայն հաւանականութեամբ ձայների հաշւարկման գործընթացում իշխանութիւնն ինչ որ մեքենայութիւն է կատարելու: Սակայն Գրիգոր Յարութիւնեանը յայտնել է նաեւ, թէ ինքը վստահ է, որ Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք, որոնք ամբողջ օրուայ ընթացքում հերոսաբար ու անձնուիրաբար պայքարել են կեղծիքների դէմ, նոյն պայքարը կը տանեն նաեւ հաշուարկման կարեւոր գործընթացում: Գրիգոր Յարութիւնեանը նաեւ նկատել է, որ քուէարկութեան օրուայ ընթացքում միայն Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք են պայքարել ընտրակեղծիքների դէմ, ինչը հաստատում է նախագահի մէկ այլ թեկնածու Արտաշէս Գեղամեանի օրերս արած յայտարարութիւնը, թէ ութ թեկնածուները պայքարում են մէկի դէմ:

## ԱՅԴ ԻՐԱՒՈՒՆՔԻՑ ԷԼ ԶՐԿԵՑԻՆ

*A1+*, 21:59

Օտարման գօտու բնակիչները զրկուել են ոչ միայն իրենց բնակարաններից, այլ նաեւ ընտրական իրաւունքից: Այսօր Բուզանդի փողոցի բնակիչներին թոյլ չեն տուել քուէարկել, որից յետոյ նրանք ստիպուած են եղել դիմել տարբեր ատեաններ, վերջում նաեւ դատարան: Սակայն հէնց դատարանը ի վերջոյ զրկել է նրանց ընտրական իրաւունքից:

Ֆորում իրաւունքի կենտրոնի նախագահ Տիգրան Տէր-Եսայեանը, ով Եւրոդատարանում ներկայացնում է Բիւզանդի փողոցի բնակիչներից մի քանիսի շահերը, *Ա1+*-ին յայտնեց, որ սա ուղղակիօրէն նրանց քաղաքացիական իրաւունքների ոտնահարումն է:

Նշենք, որ Բուզանդի բնակիչները իրենց անձնագրում ունեն գրանցման կնիք, որով համարւում են Կենտրոն համայնքի բնակիչ եւ օգտւում են ընտրական իրաւունքից:

«Բուզանդի բնակիչներին ընտրական տեղամասում թոյլ չեն տուել քուէարկել, անձնագրային բաժնից թոյլտուութիւն են ուզել, իսկ անձնագրային բաժինը առիթից օգտուել է, որ իրենք եկել են իրենց մօտ, փորձել է ընդհանրապէս գրանցումից դուրս հանելու կնիք խփել, որից յետոյ նրանք դիմել են դատարան», -ասաց Տիգրան Տէր-Եսայեանը, ում հաւաստմամբ նման խնդրի առաջ կանգնել են հարիւրաւոր, աւելի ստոյգ՝ ողջ օտարման գօտու բնակիչները, թէեւ դատարան են դիմել 30 քաղաքացի: «Դատարանը մերժել է իրենց ընտրական իրաւունքը վերականգնել փորձող քաղաքացիներին այն պատճառաբանութեամբ, որ իրենք պէտք է ներկայացնեն տեղեկանք տուեալ տեղամասում իրենց գրանցուած լինելու մասին: Տարօրինակ է՝ գրանցման կնիք կայ անձնագրում, բայց տեղեկանք են ուզում ոստիկանութիւնից», - պատմեց ընթացքի մասին փաստաբանը:

Յատկանշական է, որ 2007թ խորհրդարանական ընտրութիւններին այսպիսի խնդիրներ չեն ծագել ու Բուզանդի բոլոր բնակիչները օգտուել են իրենց ընտրական իրաւունքից: Յիշեցնենք, որ օրեր առաջ պետական կարիքների համար օտարման գօտու բնակիչները յայտարարել էին, որ չեն ընտրելու Սերժ Սարգսեանին:

## ԵՐԿՈՒՍՆ ԱՄԲՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԻ ԴԷՄ

*Lragir.am*, 21:02

Արդեօք հնարաւոր է քաղաքացիական պատերազմ, հաշուի առնելով ընտրակեղծիքների այն ծաւալը, որին բախուել է նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմը, դրան գումարած այդ թիմի վստահուած անձանց հանդէպ ֆիզիկական բռնութիւնները: Այդ մասին լրագրողները փետրուարի 19-ին, նախագահի ընտրութեան քուէարկութեան աւարտից յետոյ հրաւիրած մամուլի ասուլիսի ընթացքում հարցրել են նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամներին: Շտաբի անդամ, ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանը յայտարարել է, թէ քաղաքացիական պատերազմը բացառւում է, թէկուզ եւ այն պատճառով, որ Հայաստանում քաղաքացիների երկփեղկում չկայ եւ իշխանութիւնը ունի միայն քրէական, ոչ թէ քաղաքացիական յենարան: Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանն էլ յայտարարել է, որ քաղաքացիական պատերազմն անհնար է, որովհետեւ չեն կարող երկու մարդը կռուել մի ամբողջ ժողովրդի դէմ:

## ՄԻԱՅՆ ԱՌԱՋԻՆ ՓՈՒԼ

*Lragir.am*, 21:06

Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբում տեղի ունեցած մամուլի ասուլիսի ժամանակ լրագրողները հարց են ուղղել երկրորդ փուլի հաւանականութեան մասին: Շտաբի անդամ Գրիգոր Յարութիւնեանն այդ հարցին պատասխանել է, որ երկրորդ փուլով իշխանութիւնը թերեւս ցանկանում է խափանել առաջին փուլում Լեւոն Տէր-Պետրոսեանի յաղթանակը, ինչը չի ստացուի, քանի որ Տէր-Պետրոսեանի թիմը բոլոր քաղաքական ու իրաւական մեթոդներով տէր է կանգնելու առաջին փուլում տարած յաղթանակին: Գրիգոր Յարութիւնեանը նշել է, որ ունեն տասնեակ, հարիւրաւոր, հազարաւոր ընտրակեղծիքների մասին փաստեր, արձանագրուած, որոնց հիման վրայ էլ վարելու են պայքարը, իսկ այն յանձնաժողովների նախագահներն

ու անդամները, որոնք մասնակցել են ընտրակեղծիքներին կամ նպաստել դրանց, անպայման ենթարկուելու են քրէական պատասխանատուութեան: Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանն էլ յայտարարել է, որ արդէն իսկ որոշ տեղամասերում ձայների հաշուարկի գործընթացից առաջ անջատելով էլեկտրաէներգիայի մատակարարումը, իշխանութիւնը թերեւս պատրաստւում է «երկրորդ փուլ ստեղծելուն»: Սակայն Նիկոլ Փաշինեանն ասում է, որ իրենք հասնելու են այն բանին, որ արձանագրուի Լեւոն Տէր-Պետրոսեանի յաղթանակն առաջին փուլում: Նիկոլ Փաշինեանի խօսքով, պայքարելու են այնքան, մինչեւ որ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը դադարեցնի կեղծիքները:

## ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՏԿԵՐՆ ԸՍՏ ՊՈՊՈՒԼՈՒՍԻ EXIT POLL-Ի

*Lragir.am*, 21:09

Բրիտանական Պոպուլուս հարցախուզային ընկերութիւնն անցկացրել է ՀՀ նախագահական ընտրութիւնների վերաբերեալ էքզիթ փոլ: Հայաստանում հարցազրոյցներն անցկացուել են 126 ընտրական տեղամասերում: Տեղամասերի ընտրանքը կատարել է Populus-ը: Տեղամասերն ընտրուած են ըստ այն սկզբունքի, թէ որքանով են դրանցում գրանցուած արդիւնքները համապատասխանել վերջին խորհրդարանական ընտրութիւնների արդիւնքներին: Նախնական արդիւնքներով, ձայների 57.1 տոկոսով առջեւում է ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանը: Երկրորդ տեղում Լեւոն Տէր-Պետրոսեանն է, ձայների 17.4 հարիւրերորդականով, երրորդում է ՕԵԿ առաջնորդ Արթուր Բաղդասարեանը, 14.6 տոկոսով: Չորրորդ տեղում է Վահան Յովհաննիսեանը ձայների 5.98 տոկոսով: Միւս թեկնածուների հաւաքած ձայները չեն անցնում 1.6 տոկոսը:

## ԱՄՓՈՓԵՑԻՆ ՆԱԵՒ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԸ

*Lragir.am*, 21:11

2008 թուականի փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութիւնների կապակցութեամբ նոյն օրուայ ժամը 20.00-ի դրութեամբ ընտրողների ցուցակներում ուղղումներ կատարելու պահանջով ՀՀ ընդհանուր իրաւասութեան դատարաններ մուտքագրուել են հետեւեալ դիմումները.

1. Լոռու մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 38 դիմում, որից 36-ը բաւարարուել է, 2-ը մերժուել:

2. Սիւնիքի մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որը մերժուել է:

3. Արարատի եւ Վայոց-Ձորի մարզերի ընդհանուր իրաւասութեան դատարան մուտք է եղել 1 դիմում, որը բաւարարուել է:

4. Արաբկիր եւ Քանաքեռ-Զէյթուն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 13 դիմում, որից 11-ը մերժուել է, 2-ը բաւարարուել է մէկ վճռով:

5. Աջափնեակ եւ Դաւթաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 1 դիմում, որը մերժուել է:

6. Աւան եւ Նոր Նորք համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան ստացուել է 8 դիմում, որից 7-ը բաւարարուել է, 1-ը մերժուել:

7. Կենտրոն եւ Նորք-Մարաշ համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան

ստացուել է 31 դիմում, որից 3-ը բաւարարուել է, 28-ը մերժուել է:

8. Էրեբունի եւ Նուբարաշէն համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարան մուտք է եղել 5 դիմում, որոնցից 4-ը կարճուել են հայցից հրաժարուելու հիմքով, 1-ը մերժուել:

Ընդամէնը ՀՀ ընդհանուր իրաւասութեան դատարաններ մուտք է եղել 98 դիմում, որից 49 դիմում բաւարարուել է, 4-ը կարճուել, 45-ը մերժուել: 2008 թուականի փետրուարի 19-ին ՀՀ նախագահի ընտրութիւնների կապակցութեամբ նոյն օրուայ ժամը 20.00-ի դրութեամբ ՀՀ վարչական դատարան ընտրական վէճերով դիմումներ չեն մուտքագրուել: Դատական վէճերի մասին տուեալները տրամադրել է Վճռաբեկ Դատարանի մամուլի քարտուղար Ալինա Ենգոյեանը:

## ՀՐԱՊԱՐԱԿՈՒԵԼ Է ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻ ՆԱԽՆԱԿԱՆ ՏՈՒԵԱԼԸ

*Lragir.am*, 21:22

Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը հրապարակել է Հայաստանի նախագահի փետրուարի 19-ի ընտրութեան մասնակիցների նախնական տուեալը, որ ստացուել է բոլոր 1923 ընտրատեղամասերից: Ըստ այդմ, ժամը 20-ի դրութեամբ նախագահի ընտրութեանը մասնակցել է 1 միլիոն 641 հազար 672 մարդ, որը կազմում է Հայաստանի ընտրողների 69,25 տոկոսը: Արժէ նշել, որ հանրայայտ հայաստանցի սոցիոլոգ Ահարոն Ադիբէկեանն ընտրութիւնից օրեր առաջ հրապարակեց իր մի ուսումնասիրութեան տուեալ, որով նախանշեց, որ Հայաստանի նախագահի ընտրութեանը մասնակցութիւնը տատանուելու է ընտրողների 54-ից 69 տոկոսի սահմանում:

## ԻՐԱՒՈՒՆՔ ՈՒՆԷՔ

*Lragir.am*, 21:26

Ողջ օրուայ ընթացքում «Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը բազմաթիւ հեռախօսազանգեր էր ստանում ԶԼՄ–ների ներկայացուցիչներից, ովքեր խնդրում էին պարզել, քուէարկութեան աւարտից՝ փետրրուարի 19-ի ժամը 20:00-ից յետոյ լրագրողները իրաւունք ունեն մտնել ընտրատեղամաս: ՀՀ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի իրաւաբան Սեւակ Յովհաննիսեանը տեղեկացրեց, որ ԶԼՄ-ների ներկայացուցիչները կարող են մտնել ընտրատեղամասեր՝ անգամ դրանց փակուելուց յետոյ, ձայների հաշուարկի ժամանակ: Մեր իրաւաբանները պարզաբանեցին, որ ժամը 20:00–ից ընտրատեղամասերը փակւում են միայն ընտրողների համար: Դիտորդները եւ վստահուած անձինք ունեն այն իրաւունքները, ինչ ունէին քուէարկութեան ողջ ընթացքում:

## ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՈՒ «ՊԱՏՄՈՒԹԵԱՆ» ՄԻՋԵՒ

*Lragir.am*, 21:38

Եւ այսպէս, Հայաստանի նախագահի հերթական, հինգերորդ ընտրութիւնն արդէն կիսով չափ պատմութիւն է: Քուէարկութիւնն աւարտուել է եւ ընտրատեղամասային յանձնաժողովներն արդէն ձեռնմուխ են եղել ձայների հաշուարկին: Ինչպէս եւ բոլոր ընտրութիւնները, այդպէս էլ 2008 թուականի փետրուարի 19-ի ընտրութիւնն արդէն իսկ

արդիւնքի հրապարակումից շատ առաջ կասկածի տեղիք տուեց թէ դրա անմիջական մասնակիցների եւ թէ հասարակութեան շատ խմբերի մօտ, քանի որ ընտրութեան ընթացքում տեղեկութիւններ տարածուեցին զանգուածային ընտրախախտումների, բռնութիւնների, ահաբեկումների մասին: Դրանք կարծես թէ դարձել են Հայաստանի ընտրութիւնների անբաժան ուղեկիցը, բայց ամէն անգամ այդ տեղեկութիւնները, այդ երեւոյթները, չնայած իրենց «սովորականութեանը», հանրութեան համար դառնում են նոր հիասթափութիւնների պատճառ: 2008 թուականի ընտրութիւնը, յամենայն դէպս իր քուէարկութեան աւարտի պահին, դեռ աւելի շատ տալիս է հիասթափութեան, քան առաջընթացի մասին մտորումների տեղիք: Թէ ինչպէս կ'ամբողջանայ գործընթացը, պարզ կը լինի առաջիկայ օրերին, երբ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը կ'ամփոփի ընտրութեան արդիւնքը, երբ պետական համապատասխան մարմինները կ'արձագանքեն ընդդիմութեան բողոքներին, եւ այդժամ հասարակութիւնը կ'որոշի՝ գործ ունէր ընտրութիւն-2008-ի, թէ «պատմութիւն-2008»-ի հետ:

## ՕԳՆՈՒԹԵԱՆ ԿԱՄ ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԵՆԹԱՐԿՈՒԱԾՆԵՐԻ ՑՈՒՑԱԿ

*A1+*, 22:10

Երեւանի Աւան համայնքը բացառիկ է: Աւանում առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմին մեծ դժուարութեամբ յաջողուել է ձեռք բերել ընդամէնը մէկ շտապ, որը ղեկավարում է Յովհաննէս Իգիթեանը: «Ընդհանրապէս մենք այստեղ աշխատում ենք ոչ թէ Սերժ Սարգսեանի դէմ, այլեւ պետութեան եւ յատկապէս Աւանի թաղապետարանի դէմ: Մենք Աւանի բնակիչներս հարկատու լինելով՝ հարկ ենք վճարում պետութեանը, որ աշխատի մեր դէմ», - ասաց Յովհաննէս Իգիթեանը:

Նա նշեց, որ դեռեւս 3 օր առաջ Տէր-Պետրոսեանի համակիր հանրապետականները իրենց յայտնել են, որ թէ ինչպէս պէտք է անցկացնեն պայքարը. «Աւանում ընդհանրապէս չկայ գաղափարական պայքար: Կայ թաղապետարան, թաղապետարանի աշխատողներ եւ այլ լկտի չինովնիկներ եւ կրիմինալի հասնող մարդիկ: Նրանք ուղղակի մտնում էին մարդկանց բնակարանները՝ մարդկանցից պահանջում անձնագրեր: Այն մարդիկ, ովքեր հրաժարւում էին անձնագիր տալ, համարում էին լեւոնական, իսկ անձնագրեր տուողներին՝ վախկոտ կամ սերժական: Այս հիմունքներով էլ կազմուել են ցուցակներ»:

Յովհաննէս Իգիթեանը նշեց, որ հէնց այդ ցուցակները ձեռքերին՝ Աւանի թաղապետարանի աշխատակիցները այսօր մտել են մարդկանց բնակարանները եւ մարդկանց իջեցրել ներքեւ. «Մենք ունենք այդ փաստերը: Ունենք մի քանի նման ցուցակներ, որտեղ մարդկանց ստորագրել են տուել եւ տարել ընտրութեան: Մեր ձեռքի տակ կայ նաեւ ցուցակ, որտեղ նշուած է՝ «Նարեկացի 41 շէնքի օգնութեան ցուցակ», որոնք օգնութիւն են ստացել՝ 30 հազար դրամ, գազի հաշուիչ, ճամբար, դեղորայք: Այսինքն՝ սոցիոլապէս անապահով վիճակում գտնուող մարդկանց օգնել են պետութեան, կամ հիմնադրամի՝ մեր բոլորիս հաշուին, եւ այսօր այդ մարդկանց յիշեցնելով մի քանի ամիս կամ տարի առաջ տուած օգնութիւնը՝ ստիպելով իջեցրել են ներքեւ իրենց պատկանող տաքսիներով՝ Z, Միլենա, եւ անվճար տարել քուէարկելու: Դա արդէն կաշառակերութեան մի տեսակ է եւ քրէօրէն պատժելի արարք»: Յովհաննէս Իգիթեանը վստահ է, որ Աւան

համայնքում նոյն կերպ էր կազմակերպուել նաեւ 2007թ.-ի խորհրդարանի ընտրութիւնները: Անկախ առկայ բազմաթիւ խախտումների եւ բռնութեան դէպքերի, որոնք Յովհաննէս Իգիթեանը պատրաստւում է ներկայացնել համապատասխան մարմիններին: Նա վստահ է, որ բռնութիւնների իրականացնողները վստահ են, որ ընտրուելու է Սերժ Սարգսեանը, սակայն նշեց. «Իհարկէ, բացառւում է, որ Սերժ Սարգսեանը յաղթի, եւ բոլոր դէպքերում այդ մարդիկ պատժուելու են՝ անկախ նրանից, թէ ով կը յաղթի ընտրութիւններում»:

## ԱՅՍ ԴԷՊՔՈՒՄ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆՆ Է

*A1+*, 22:12

Բրիտանական Populus հարցախուզային ընկերութիւնը անցկացրել է ՀՀ նախագահական ընտրութիւնների վերաբերեալ էքզիթ Փոլլ:

Հայաստանում հարցազրոյցներն անցկացուել են երկրով մէկ տեղակայուած 126 ընտրական տեղամասերում: Տեղամասերի ընտրանքը կատարել է Populus-ը: Տեղամասերն ընտրուած են ըստ այն սկզբունքի, թէ որքանով են դրանցում գրանցուած արդիւնքները համապատասխանել վերջին խորհրդարանական ընտրութիւնների արդիւնքներին:

Նախնական արդիւնքներով ձայների 57.1% ձայնով առջեւում է ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանը:

Երկրորդ տեղում Լեւոն Տէր-Պետրոսեանն է՝ 17.4%, երրորդում՝ ՕԵԿ առաջնորդ Արթուր Բաղդասարեանը՝14.6%-ով: Չորրորդ տեղում է Վահան Յովհաննիսեանը՝ ձայների 5.98%-ով: Միւս թեկնածուների հաւաքած ձայները չեն անցնում 1.6 տոկոսը:

**69,25 ՏՈԿՈՍ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆ**

22:23

Ժամը 20:00-ի տուեալներով, նախագահական ընտրութիւնների քուէարկութեան մասնակցել է ընտրելու իրաւունք ունեցող Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիների 69,25 տոկոսը՝ 1642057 ընտրող:

Մայրաքաղաքում քուէարկել են ընտրողների 69, 47 տոկոսը:

## ԱՌԵՒԱՆԳԵԼ ԵՆ ՌՈՒԲԷՆ ՀԱՅՐԱՊԵՏԵԱՆԻ ՀՐԱՀԱՆԳՈՎ (video)

*A1+*, 22:43

Աւան համայնքի թիւ 87 դպրոցի՝ 1/4 ընտրատարածքի դիմացից այսօր ժամը 13:00-ին առեւանգել են Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց՝ Գարիկ Ղազարեանին եւ Արսէն Խանամիրեանին: «Նրանց առեւանգել են 08001 համարանիշով սեւ ջիպով եւ տարել են Հարսնաքար օբիեկտ եւ դաժան ծեծի ենթարկել», - *Ա1+*-ին պատմեց Աւան համայնքում Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի պետ Յովհաննէս Իգիթեանը: Նա նշեց, որ դէպքից անմիջապէս յետոյ տեղեակ են պահել համապատասխան մարմիններին, սակայն որեւէ միջամտութիւն չի եղել:

«Միայն ազատամարտին մասնակցած մեր երկրապահ ընկերների միջամտութիւնից յետոյ՝ մեզ յաջողուեց ազատ արձակել առեւանգուածներին, որոնք մարմնական ծանր վնասուածքներ էին ստացել: Հարսնաքարում նրանց ծեծել էին ամենավերջին՝ գերմանական ֆաշիստներին բնորոշ դաժանութեամբ: Այսինքն՝ նրանք ձեռքերը շղթայել են եւ միանգամից 20-30 հոգով յարձակուել վրանները»: Յովհաննէս Իգիթեանի համար անհաս-

կանալի է, թէ ինչ էին ցանկանում նրանք իմանալ Տէր-Պետրոսեանի վստահուած անձանցից. «Մեր դռները բաց են եւ որեւէ գաղտնիք չունենք: Նրանք կարող էին զանգահարել եւ մեզանից իմանալ ամէն ինչ»: Յովհաննէս Իգիթեանը վստահեցրեց, որ նոյնիսկ այս վիճակում Աւան համայնքում յաղթելու է Տէր-Պետրոսեանը. «Նրանց մնում է ընդամէնը մի բան անել վերցնել դատարկ սպիտակ թղերը եւ վրան իրենց ուզած թիւը գրել»:

*Ա1+*-ը հանդիպեց Տէր-Պետրոսեանի առեւանգուած վստահուած անձանց հետ: Նրանց դէմքի վրայ բազմաթիւ կապտուկներ եւ պատռուածքներ կային: Արսէն Խանամիրեանը ընդհանրապէս հրաժարուեց պատմել տեղի ունեցածի մասին եւ լուսանկարուել: Նրա փոխարէն պատմեցին ընկերները: 080001 համարանիշով սեւ Ջիպը կանգնել է Աւանի թիւ 87 դպրոցի մօտ եւ Արսէն Խանմիրեանին եւ Գարիկ Ղազարեանին հրաւիրել մեքենայ՝ խօսելու: Նրանք էլ նստել են, քանի որ վարորդն իրենց ծանօթ է եղել: Մեքենան միանգամից շարժուել է դէպի Հարսնաքար օբիեկտ: Հարսնաքարում նրանց դիմաւորել անձամբ Աժ պատգամաւոր Ռուբէն Հայրապետեանը իր 25-30 թիկնապահներով:

*Ա1+*-ին պատմեցին, որ Ռուբէն Հայրապետեանը Գարիկ Ղազարեանին ասել է. «Դու իմ դէմ ես դուրս եկել եւ հարուածել»: Տեղում շղթայել են Արսէն Խանամիրեանին եւ Գարիկ Ղազարեանին եւ 25-30 հոգով սկսել ծեծել՝ հէնց Հարսնաքարի յետեւի մասում: Ծեծելուց յետոյ նրանց մէկ ժամից աւել պահել են Հարսանքարի նկուղային յարկում, իսկ այնուհետեւ ազատ արձակել: «Ես Ռուբէն Հայրապետեանին դէմ չեմ դուրս եկել: Ես 1996թ-ին Հայրապետեանի հետ եմ եղել եւ դէմ եմ դուրս եկել Տէր-Պետրոսեանին: Այսօր ես պաշտպանում եմ Տէր-Պետրոսեանին, որովհետեւ ես ուզում եմ, որ իմ երեխաները ապրեն նորմալ երկրում: Իմ ցանկութիւնը, չի նշանակում, որ ես դէմ եմ դուրս եկել Ռուբէն Հայրապետեանին», - ասաց նա:

## ԱՐԱՄ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԸ ԵՂԵԼ Է ԿՈՌԵԿՏ

*Lragir.am*, 23:01

Նոր Ժամանակներ կուսակցութիւնը փետրուարի 19-ի գիշերը հերքում է տարածել Ռեգնում գործակալութեան եւ *Lragir.am* կայքի այն տեղեկատուութեան առնչութեամբ, ըստ որի ՆԺԿ ղեկավար Արամ Կարապետեանը նախագահի ընտրութեան քուէարկութեան օրը մտել է 13/02 ընտրատեղամաս եւ սպառնալիքներ է տեղացել, հայհոյել, աղմկել, ինչպէս նաեւ յայտարարել, թէ ինքն այնպէս կ՚անի, որ Սերժ Սարգսեանին բոլոր սատարողները փախնեն այս երկրից: Այդ միջադէպի մասին հաղորդագրութիւն տարածել էր Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբը, յղում անելով 13/02 ընտրատեղամասի իրենց վստահուած անձին: Նոր Ժամանակները այդ միջադէպի մասին ի պատասխան հանդէս է եկել յայտարարութեամբ: Նոր Ժամանակներ կուսակցութեան լրատուական ծառայութիւնն Արամ Կարապետեանի անունից յայտարարում է, որ յիշեալ լրատուամիջոցներին տրամադրուած տեղեկատուութիւնը չի համապատասխանում իրականութեանը: Մենք, իհարկէ, գոհ ենք, որ յատկապէս Սերժ Սարգսեանի թիմակիցները մազաչափ անգամ չեն կասկածում ՆԺԿ նախագահի տղամարդկութեան ու քաջութեան վրայ, սակայն իրենց ստոր աշխատանքային մեթոդներն ու պահուածքն Արամ Կարապետեանին վերագրելը համարում ենք քաղաքական անառակութեան դրսեւորում: Յայտնում ենք, որ Արամ Կարապետեանը այցելել է մի շարք ընտրատեղամասեր եւ իրեն պահել է շատ կոռեկտ, իսկ նրա բոլոր գործողութիւնները կրել են օրինական բնոյթ, ինչն արձանագրուել է նրա

կողմից այցելած բոլոր ընտրատեղամասերում: Յայտնում ենք նաեւ, որ ՆԺԿ նախագահը դիմելու է Գլխաւոր Դատախազութիւն, որպէսզի պարզուի, թէ ով է յիշեալ տեղեկատուութեան մէջ նշուած անանուն վստահուած անձը, եւ թէ ինչ ճանապարհներով է նման ստայօղ տեղեկատուութիւնը տրամադրուել յիշեալ լրատուամիջոցներին», ասուած է ՆԺԿ տարածած յայտարարութեան մէջ:

## ԿԸՅ-Ն ՀԱՂՈՐԴՈՒՄ Է

*A1+*, 23:13

Հէնց նոր ԿԸՅ նախագահ Գարեգին Ազարեանը հրապարակեց 38 ընտրատեղամասերից ստացուած տուեալները՝ ժամը 10.51-ի դրութեամբ: Այդ տեղամասերում ընտրութիւններին մասնակցել է 8469 ընտրող:

Լեւոն Տէր-Պետրոսեան - 673
Սերժ Սարգսեան - 6490
Վահան Յովհաննիսեան - 375
Արթուր Բաղդասարեան - 685
Վազգէն Մանուկեան - 13
Արտաշէս Գեղամեան - 19
Տիգրան Կարապետեան - 29
Արամ Յարութիւնեան - 10
Արման Մելիքեան - 18
145 քուէաթերթիկ համարուել է անվաւեր:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ ԵՆ ԸՆՏՐԵԼ

*A1+*, 23:31

Մի քանի տասնեակ հասարակական կազմակերպութիւններ միաւորող Ալեանս հասարակական նախաձեռնութիւնը ներկայացրել է իր կողմից իրականացրած exit-poll արդիւնքները:

Հանրապետութեան մայրաքաղաքի, Էջմիածինի, Աբովեանի եւ Շիրակի մարզի թուով 100 տեղամասերում հարցման ենթարկուած 3055 քաղաքացիներից 37.7 տոկոսն ընտրել է Լեւոն Տէր-Պետրոսեանին, իսկ 35.4 տոկոսը՝ Սերժ Սարգսեանին:

Միւս թեկնածուների ստացած ձայները կազմել են համապատասխանաբար Արթուր Բաղդասարեանը՝ 15.5 տոկոս, Վահան Յովհաննիսեանը՝ 6.4 տոկոս, Վազգէն Մանուկեանը՝ 2.9 տոկոս, Արտաշէս Գեղամեանը՝ 1.3 տոկոս, Տիգրան Կարապետեանը՝ 1.2 տոկոս: Իսկ Արամ Յարութիւնեանն ու Արման Մելիքեանը ստացել են հարցուածների 0.2 տոկոսի քուէն:

Հարցուածների ենթարկուածների 27 տոկոսի կարծիքով ընտրութիւնների երկրորդ փուլի հաւանականութիւնը մեծ է, իսկ 73 տոկոսի կարծիքով նման զարգացումը քիչ հաւանական է:

## ՀՈՍԱՆՔԱԶՐԿՈՒՄ ԵՆ

*A1+*, 23:43

Այս պահին հոսանքազրկուած են Մալաթիա-Սեբաստիա համայնքի 8/25, 8/26

ընտրատեղամասերը: Ընդորում՝ այս տեղի է ունեցել այն բանից յետոյ, երբ քուէաթերթիկների հաշուարկի արդիւնքում յաղթելիս է եղել Լեւոն Տէր-Պետրոսեանը: 8/27 ընտրատեղամասում եւս Ողաղարեցուել է հաշուարկը, երբ էլի առջեւում է եղել Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Ներկայացնենք եւս մի քանի տուեալ՝ Արգաւանդի 16/16 ընտրատեղամասում արձանագրուել է հետեւեալ արդիւնքը՝ Լեւոն Տէր-Պետրոսեան՝ 411, Սերժ Սարգսեան՝ 230:

Մարմարաշէնում՝ Լեւոն Տէր-Պետրոսեան՝ 321, Սերժ Սարգսեան՝176:

Նորագիւղում՝ Լեւոն Տէր-Պետրոսեան՝ 499, Սերժ Սարգսեան՝321:

## ՅԱՂԹՈՒՄ Է ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ

*A1+*, 23:48

Երեւանի Չարենցի անուան դպրոցում տեղակայուած 9/18 ընտրատեղամասում աւարտուեց քուէաթերթիկների հաշուարկը:

Լեւոն Տէր-Պետրոսեան - 406
Սերժ Սարգսեան - 383
Վահան Յովհաննիսեան - 125
Արթուր Բաղդասարեան - 107
Վազգէն Մանուկեան - 58
Արտաշէս Գեղամեան - 114
Տիգրան Կարապետեան - 0
Արամ Յարութիւնեան - 0
Արման Մելիքեան - 0

Ընտրութիւններին մասնակցել է 1136 հոգի:

## «ԲԱՆԴԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒՄ ԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՇԱՀԻՆԵԱՆԸ»

*A1+*, 23:52

Այսօր ժամը 19.30-ի սահմաններում *Ա1+*- ը ահազանգ ստացաւ, որ 4/26 տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց ծեծի են ենթարկել եւ դուրս հանել տեղամասից: Տեղամասում մեզ դիմաւորեց յանձնաժողովի նախագահը եւ տեղեկացրեց, որ ժամը 19-ի սահմաններում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք դուրս են եկել եւ այլեւս չեն վերադարձել: ՕԵԿ-ի, ՀՅԴ-ի եւ միւս յանձնաժողովականներն ու վստահուած անձինք վստահեցնում էին, որ իրենք տեղամասի ներսում ոչինչ չեն լսել:

Ի դէպ, մեզ հետ ահազանգով տեղամաս էին ժամանել նաեւ դիտորդներ ԱՊՀ, ԵԱՀԿ եւ ԵԽԽՎ առաքելութիւններից: Նրանք սակայն տեղում ոչինչ չյայտնաբերելով՝ զրուցել էին իրենց պատկերացմամբ՝ ընդդիմադիր ՕԵԿ-ի յանձնաժողովի անդամի եւ վստահուած անձի հետ, որոնք հերքել էին ծեծի կամ որեւէ խախտման փաստ, զրուցել էին նաեւ տեղամասի տարածքում հերթապահութիւն իրականացնող ոստիկանների հետ, որոնք բնականաբար եւս հերքել էին ծեծի փաստը:

Աւելին, ժամը 20.00-ին, երբ փակուեց ընտրական տեղամասը, առանց Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց սկսեցին ամփոփել քուէարկութեան գործընթացը: 20.10-ից տեղամաս ժամանեց ՀՀ նախկին վարչապետ, Տէր-Պետրոսեանի շտաբի անդամ Հրանտ Բագրատեանը՝ նախագահի թեկնածուի վստահուած անձի հետ: Յանձնաժողովի

նախագահը յամառօրէն չէր բացում դուռը եւ չէր լսում Բագրատեանին: Նա նաեւ հրաժարւում էր մեզ դուրս թողնել տեղամասից՝ վստահեցնելով, որ նախ մենք մտել ենք եւ իրաւունք չունենք դուրս գալ, ապա, երբ մենք իրազեկեցինք յանձնաժողովի նախագահին մեր իրաւունքների մասին, պատճառաբանեց, որ եթէ դուռը բացի կարող են «լցուել ներս»:

«Լցուողները» 3 հոգի էին, որոնցից պաշտպանուելու նպատակով յանձնաժողովի նախագահը ահազանգեց ոստիկանութիւն, որ մի «100 հոգի շրջապատել են իրենց»: 5 րոպէ անց ոստիկանութեան մեծ ջոկատ՝ 5 աւտոմեքենայով, ընդ որում մէկը՝ ԵՐԱԶ, ժամանեցին դէպքի վայր, կարգի հրաւիրելու իրենց սահմանադրական իրաւունքները պաշտպանել փորձող 3 հոգու: Նրանց համար էլ անսպասելի էր այն, ինչ տեսան տեղում՝ 3 հոգի, եւ երկու լրագրող: Ի դէպ, մինչ մեր տեղամասից դուրս գալը, մենք փորձեցինք ԿԸՅ-ից պարզաբանում ստանալ, թէ ինչու մեզ թոյլ չեն տալիս դուրս գալ տեղամասից: Եւ երբ մեր բջջային վրայ զանգ եկաւ, եւ մեզ խնդրեցին փոխանցել յանձնաժողովի նախագահին, պարզուեց, որ զանգահարողը ոչ թէ ԿԸՅ-ից էր, այլ Հրանտ Բագրատեանը, որը այլ ելք յանձնաժողովի նախագահի հետ խօսելու չէր գտել: Այս փաստը ԵԱՀԿ եւ ԱՊՀ դիտորդական առաքելութիւնը որակեց որպէս ճնշում յանձնաժողովի վրայ եւ գրանցեց *Ա1+*-ի լրագրողի եւ օպերատորի անունները, որպէս «իրաւախախտներ» եւ խոստացան, որ մեր անունները կը զետեղուեն իրենց զեկոյցներում: Իսկ երբ մենք հարցրինք, թէ իրենց արդեօք չի՞ հետաքրքրում, թէ որտեղ են Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք, Անդրէյ Սմիրնովը ԱՊՀ դիտորդական առաքելութիւնից եւ Մոսկովկովա Տատեանան ԵԱՀԿ առաքելութիւնից պատասխանեցին, որ ծեծի փաստ իրենք չեն յայտնաբերել, դա եղել է կեղծ ահազանգ, ոստիկաններն էլ հերքել են ծեծի փաստը, իսկ մեր գործունէութիւնը նրանց թուաց ակնյայտ խոչընդոտում:

Մենք դիտորդներին ներկայացնում ենք այն մարդկանց դէմքերը, որոնք ծեծի են ենթարկուել: *Ա1+*-ը նրանց հետ զրուցեց Արաբկիրի Տէր-Պետրոսեանի շտաբում: Նրանք պատմեցին, թէ ինչպէս են մի քանի աւտոմեքենաներով, մօտ 40 ջիպ աւտոմեքենաներով լցուել տեղամասի բակ եւ ծեծի ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձին եւ դիտորդին, ներսում գտնուող դիտորդին էլ դուրս են հրաւիրել եւ բառացի ասել՝ «Տէր-Պետրոսեանի մարդիկ ստեղ անելիք չունեն, էլ յետ չգաք»: Տեղամաս ներխուժած եւ վստահուած անձանց ծեծի ենթարկած «բանդան», ըստ տուժողների, «ղեկավարել է անձամբ Արաբկիրի թաղապետ, ՀՀԿ խորհրդի անդամ Յովիկ Շահինեանը»:

Ի դէպ, դիտորդները, որոնք ամբողջ օրուայ ընթացքում հետեւել էին ընթացքին, մեզ հետ զրոյցում վստահեցրին, որ «1200 ձայնից 800-ը Տէր-Պետրոսեանի օգտին են քուէարկուած, դրա համար են խառնուել»:

«Կատարուածը այլանդակութիւն է, այն սկսուեց 6.30-ից, երբ յանձնաժողովի սեյֆերը բացուած էին, առանց յանձնաժողովի անդամների, այլանդակութիւնը շարունակուեց, ամբողջ ընթացքում Ջիպեր կային, որոնք պտտւում էին տեղամասից տեղամաս, լցնում, կեղծում, ահաբեկում, եւ գագաթնակէտը 4/26-ն էր, երբ 60- 70 ջիպով յարձակուել էին տեղամասի վրայ, դուրս հրել բոլոր, ոչ միայն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց, ծեծել-ջարդելով, գետնին արիւնլուայ պառկեցնելով, ահաբեկելով շարունակել իրենց գործը: Ոստիկանութիւնը դեռ գործ չի յարուցել: Սա գռեհկութեան, չոբանութեան արտայայտութիւն էր, որ այստեղի խուլիգանը հաւաքուած՝ լակոտների կրիմինալի հետ խառն-

գարում են ամբողջ պրեցեսը», - այսօր յայտարարեց Արաբկիրի Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի պետ Արամ Մանուկեանը:

## ԵԽՍ ՄԷԿ ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾ

*A1+*, 23:58

ՀՀ Նախագահի ընտրութիւնների ընթացքում թիւ 13/16 ընտրական տեղամասում ընտրութեանը մասնակցող անձանց՝ դիտորդներ Արմէն Մարտիրոսեանի, Զարուհի Փոստանջեանի եւ Վարդան Խաչատրեանի, ինչպէս նաեւ լրագրող Լուսինէ Բարսեղեանի լիազօրութիւնների իրականացմանը խոչընդոտելու, որը զուգորդուել է բռնութեան գործադրմամբ, դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ կէտի յատկանիշներով:

Նախաքննութիւնն իրականացնում է ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնը, արդիւնքների մասին կը յայտնենք լրացուցիչ:

## ՎԱԽԵՆՈՒՄ ԵՆ ԴՌԱՆ ԱՄԷՆ ՄԻ ԶԱՆԳԻՑ

*A1+*, 23:59

Շէնքի 2 յարկ բարձրանալիս հարեւանը դուռը բացեց, ապա հետաքրքրուեց, թէ ինչ է իրականում եղել:

«Լեզուն կուլ էր գնացել, քաշքաշ ընկաւ աստիճաններին, ես վախեցայ հարցնել ինչ է եղել, հիմա էլ դուռը չեմ ծեծում», - ասաց հարեւանուհին: Ապա, երբ դուռը ծեծեցինք ու ներս մտանք, փոքր երեխաները թաքնուեցին սենեակում՝ վախենալով, թէ կարող է իրենց պապիկի յետեւից գուցէ եկած լինենք:

*Ա1+*-ը այցելել էր Աբովեանում առաւօտեան ծեծուած թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Սիմակ Դաւթեանին, ում դեռ առաւօտեան ծեծի էին ենթարկել:

53-ամեայ Սիմակ Դաւթեանը երկու անգամ սրտի կաթուած է ունեցել եւ դաժան ծեծից յետոյ պարզապէս կորցրել է գիտակցութիւնը, ապա ուշքի գալով՝ տուն հասել:

*Ա1+*-ի հետ խօսելուց առաջ նա ժամանակ խնդրեց իրեն կարգի բերելու, ապա կարճ ժամանակում դժուարութեամբ պատմեց, թէ ինչ է իրականում տեղի ունեցել: Ըստ նրա առաւօտեան ընտրատարածքում, երբ հանել են կնիքը, այն թանաքոտել են նախքան ստուգելը ու ինքը բարձրաձայնել է, ապա արձանագրութիւն կազմել, որի տակ ստորագրել են ինքը եւ երկու դիտորդ:

«Յետոյ յանձնաժողով նախագահ Մարինան ինչ-որ տեղ զանգեց եւ ընդհամէնը մի 2 րոպէ յետոյ մի 5-6 սափրագլուխներ մտան ընտրատարածք եւ ինձ զոռով քաշեցին դուրս ու սկսեցին հարուածել մէջքիս գլխիս ու տենց զոռով մտցրին մեքենան ու մեքենայի մէջ սկսեցին ծեծել, երեւի մի 15-20 մետր քշեցին, յետոյ կանգնեցին, ասացին, որ եթէ այսպէս շարունակես, ընտանիքդ կ'ոչնչացնենք», - պատմեց Սիմակ Դաւթեանը:

Ապա նա նշեց, որ շտապօգնութեան առաջին օգնութիւնից յետոյ ուշքի է եկել ու նոր կարողացել է բացատրել՝ ինչ է կատարւում: Նշենք, որ նրա ընտանիքը խիստ ահաբեկուած էր եւ անգամ ակնարկում էին, որ զգոյշ գրենք այս մասին, որ այլեւս չվնասեն իրենց:

## 20 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

### ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՁԱՅՆԵՐՆ ՈՒԶՈՒՄ ԵՆ ԱՆՎԱՒԵՐ ՃԱՆԱՉԵԼ (video)

*A1+*, 00:35

Ժամը 23:56-ի դրութեամբ՝ Պուշկինի 3 հասցէում տեղակայուած 10/24 ընտրատեղամասում բացարձակ առաջատարներ են նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը՝ 159 ձայնով եւ Սերժ Սարգսեանը՝ 152 ձայնով: Նրանց յաջորդում է Արթուր Բաղդասարեանը՝ 58 ձայնով, այնուհետեւ Վահան Յովհաննիսեանը՝ 35, Վազգէն Մանուկեանը՝ 30:

10/24 տեղամասում համեմատաբար քիչ ձայներ են հաւաքել նախագահի թեկնածուներ Տիգրան Կարապետեանը՝ 7 ձայն, Արտաշէս Գեղամեանը՝ 6 ձայն, Արման Մելիքեանը՝ 4 ձայն եւ Արամ Յարութեանը՝ 3 ձայն:

Տեղական ընտրական յանձնաժողովի նախագահ Արմէն Աւետիսեանը բացայայտօրէն փորձում էր ամէն կերպ անվաւեր ճանաչել նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի ձայները: Երբ Լեւոն Տէր-Պետրոսեանի անուան դիմացի վանդակում դրուած V նշանը մի փոքր դուրս եկած էր լինում վանդակի տարածքից, 10/24 ընտրատեղամասի նախագահն այդ ընտրաթերթիկը դնում է մի կողմ եւ յայտարարում, որ այն անվաւեր է: Յանձնաժողովի անդամներ Ժառանգութիւն եւ Օրինաց Երկիր կուսակցութեան անդամների շնորհիւ Լեւոն Տէր-Պետրոսեանի ձայները ոչ թէ անվաւեր ճանաչւեցին, այլ պէտք է դրուեն քուէարկութեան արդիւնքները հաշուելուց յետոյ: Իսկ երբ նոյն իրավիճակում էր «յայտնւում» նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանը, յանձնաժողովի նախագահ Արմէն Աւետիսեանն այն ոչ միայն անվաւեր չէր ճանաչում, այլեւ փորձում էր այնպէս անել, որ այն նոյնիսկ քուէարկութեան չդրուի՝ անմիջապէս ճանաչուելով անվաւեր: Արմէն Աւետիսեանի նման վարմունքը արժանանում էր Ժառանգութեան եւ Օրինաց Երկիր կուսակցութիւնների անդամների դժգոհութեանը: Հէնց այդ պատճառով էլ քուէարկութիւնը ձգձգւում է: Այս պահի դրութեամբ թիւ 10/24 ընտրատեղամասում հաշուած է միայն ձայների կէսը:

### ԹՈՒԵՐ, ԹՈՒԵՐ

*A1+*, 01:11

Եւս մի քանի արդիւնք:

Երեւանի 10/17 ընտրատեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկել է 280 ընտրող, Սերժ Սարգսեանի օգտին՝ 221, Արթուր Բաղդասարեանի օգտին՝ 74 հոգի:

Երեւանի 9/7 ընտրատեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանը ստացել է 453, Սերժ Սարգսեանը՝ 369, իսկ Արթուր Բաղդասարեանը՝ 183 քուէ:

Արտաշատի ենթաշրջանի Գետազատ գիւղում Լեւոն Տէր-Պետրոսեանը հաւաքել է 404, Սերժ Սարգսեանը 242 , իսկ Արթուր Բաղդասարեանը՝ 150 ձայն:

Ի դէպ, այս պահի ԿԸՅ տուեալներն այսպիսին են՝ Սերժ Սարգսեան՝ 143690, Լեւոն Տէր-Պետրոսեան՝ 35633, Արթուր Բաղդասարեան՝ 34687, Վահան Յովհաննիսեան՝ 13873 ձայն:

## ԺԱՄԸ 11-ԻՆ՝ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ՄՕՏ

*A1+*, 01:55

Վաղը ժամը 15-ին Մատենադարանին յարակից հրապարակում տեղի կ'ունենայ Լեւոն Տէր-Պետրոսեանին սատարող ուժերի հրաւիրած հանրահաւաքը: Սակայն հաշուի առնելով ընտրական լարուածութիւնը եւ ԿԸՅ հրապարակած տուեալները, որոնք, ըստ թեկնածուի վստահուած անձանց, չեն համապատասխանում իրականութեանը, Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը իր համակիրներին ժամը 11.00-ին հրաւիրում է Մատենադարանի մօտ:

## *Ա1+*-Ի ՕՊԵՐԱՏՈՐԻՆ ԱՐԳԵԼԵԼ ԵՆ ՆԿԱՐԱՀԱՆԵԼ

*A1+*, 02:02

*Ա1+*-ի օպերատորին արգելել են մուտք գործել թիւ 3/21 ընտրատեղամաս, որտեղ արդէն սկսուել էր ձայների հաշուարկը: Մեր օպերատորի այն դիտարկմանը, որ ըստ Ընտրական Օրէնսգրքի ՁԼՄ-ի ներկայացուցչին թոյլատրւում է մուտք գործել ընտրատեղամաս ցանկացած ժամի, ընտրատեղամասի յանձնաժողովի անդամներից մէկը պատասխանել էր վիրաւորական արտայայտութիւններով:

Նշուած անձնաւորութիւնը ոչ միայն թոյլ չէր տուել մուտք գործել ընտրատեղամաս, այլեւ արգելել էր նկարահանել ընտրատարածքից դուրս:

## «ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԿՐԻՄԻՆԱԼ ՅԵՂԱՇՐՋՄԱՆ ՓՈՐՁ Է ԱՐԻՈՒՄ»

*A1+*, 02:34

«Հայաստանում փորձ է արւում իրականացնել կրիմինալ յեղաշրջում, որովհետեւ այսօր Սերժ Սարգսեանը յստակ յենւում է կրիմինալի վրայ եւ ամբողջ պրոցէսը կազմակերպուած է կրիմինալի միջոցով: Մեր թեկնածուն յաղթել է եւ մենք յետագայ քաղաքական զարգացումներում առաջնորդուելու ենք՝ ելնելով այս իրողութիւնից», - այսօր ժամը 00.30-ին հրաւիրած ասուլիսի ժամանակ յայտարարեց Նիկոլ Փաշինեանը:

Ըստ շտաբի պատասխանատուների՝ Լեւոն Տէր-Պետրոսեանը առաջին փուլում յաղթել է, բայց այս պահին հեռուստատեսութիւնը հրապարակում է այն տեղամասերի տուեալները, որտեղ կարողացել են կեղծել Սերժ Սարգսեանի օգտին, իսկ այն տեղամասերի տուեալները, որտեղ յաղթել է Տէր-Պետրոսեանը, եւ արձանագրուած են արդիւնքներն ու ստորագրուած արձանագրութիւնները, չեն հրապարակւում: Այդպիսիք շատ են՝ օրինակ, Նորագաւիթում յաղթել է Տէր-Պետրոսեանը, Մետաքսում, Ալափարս գիւղում, Նոյեմբերեանի բոլոր բնակավայրերում եւ այլն:

«ԿԸՅ-ն յայտարարել է մասնակիցների 1 մլն 642 հազար թիւը, իսկ մեր տեղերից ստացուած տուեալները մեզ թոյլ են տալիս յայտարարել, որ այդ թիւը առնուազն 500 հազարով չափազանցուած է, եւ սա ըստ էութեան կեղծիքի համար շատ հզօր ռեզերվ է ստեղծել», - այդ կեղծիքի ռեզերվը օգտագործելու ձեւերը մանրամասնեց Այլընտրանք հասարակական նախաձեռնութեան համակարգող Նիկոլ Փաշինեանը: Ձայների հաշուարկման ընթացքում բաւականին տարածուած երեւոյթ են եղել հոսանքազրկումները, մասնաւորապէս Մեղրի քաղաքը ամբողջ շրջակայքով հոսանքազրկուել է քուէարկութեան աւարտից անմիջապէս յետոյ, 13/08 տեղամասը ձայների հաշուարկի արդիւնքում հոսանքազրկուել է երեք անգամ, 12/31 տեղամասը կրկին հոսանքազրկուել է, ընդ որում

հոսանքազրկումները շատ հետաքրքիր արդիւնքներ է ունենում:

«60,70,100 ձայնի հաշուարկով Տէր-Պետրոսեանը առաջատարի դիրքերում է, հոսանքազրկումից յետոյ արդիւնքը փոխւում է, երկրորդ հոսանքազրկումից յետոյ աւելի է փոխւում, երրորդից յետոյ ընդհանրապէս փոխւում է», - ասաց Նիկոլ Փաշինեանը: Տեղամասերը անառիկ ամրոցի նման են. 3/21 տեղամաս չեն թողել լրագրողներին, այս տեղամասում 350 քուէաթերթիկ անվաւեր է համարուել Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկած: Վստահուած անձը կապ է հաստատել եւ տեղեկացրել, որ ներսում մի խումբ հանրապետականներ են եղել: 22.20-ի տուեալներով Աւանի մի շարք տեղամասերում չի կատարւում, միայն 4 տեղամասում են հաշուել արդիւնքները:

Նիկոլ Փաշինեանը տեղեկացրեց, որ Դաւթաշէն համայնքի 5/12 տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց խոստացուել է ընտրակաշառք 1 մլն դրամի չափով՝ հնարաւորութիւն ստեղծելու համար, որ իրենց ուզած թուերը գրեն: «Ընդ որում, երբ նա հրաժարուել է վերցնել գումարը, ներսում նրան են ծեծի ենթարկել, դրսում՝ աւտոմեքենան ջարդուփշուր արել», - յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի մամուլի խօսնակ Արման Մուսինեանը: Երեւանում, գործնականում բոլոր տեղամասերում առաջատարի դերում է եղել Տէր-Պետրոսեանը, բայց հոսանքազրկուած տեղամասերում պատկերը որոշակի փոփոխութիւն է կրել: Ընդ որում, դիտորդները տարբեր պատճառաբանութիւններով չեն կարողանում այցելել այն տեղամասեր, որտեղ ծեծի են ենթարկւում վստահուած անձինք: Մեր հարցին, թէ արդեօք բռնութիւնների ենթարկուած անձինք ոստիկանութիւն դիմում են եւ ցուցմունքներ տալիս են, Նիկոլ Փաշինեանն ասաց, որ շտաբի անդամները շատ անգամ չեն դիմում ոստիկանութիւն, բայց մամուլի հրապարակումները բաւարար են, որպէսզի ընդունուի հաղորդում որպէս կատարուած յանցագործութեան մասին:

«Ռուբէն Հայրապետեանի հետ կապուած դէպքի մասին յայտարարեցինք եւ մինչեւ հիմա որեւէ արձագանք չկայ», - ասաց Նիկոլ Փաշինեանը: Որեւէ փաստի կապակցութեամբ որեւէ արձագանք չկայ. «Ստեղծուել է մի վիճակ, երբ ապօրինութիւնների դէմ պայքարող համակարգը այսօր այս պահին, փաստացի կաթուածահար է, նա զբաղուած է իշխանական թեկնածուի կեղծման համակարգը սպասարկելով»:

Նիկոլ Փաշինեանը տեղեկացրեց, որ փետրուարի 20-ին, ժամը 15.00-ին նշանակուած հանրահաւաքը տեղի կ'ունենայ, իսկ թէ ինչ ընթացք կ'ունենայ այն, պարզ կը լինի տեղում:

Ի դէպ, մեր այն հարցին, թէ Սերժ Սարգսեանը յայտարարեց, որ Հայաստանում չկայ յեղափոխական իրավիճակ, ինչպիսին է այդ առումով իրենց գնահատականը, Նիկոլ Փաշինեանը պատասխանեց. «Յեղափոխական իրավիճակ ասածը լայն հասկացութիւն է. այսօր Հայաստանում ստեղծուած է մի իրավիճակ, երբ քաղաքացին սեփական իշխանութեանը տէր լինելու եւ սեփական իշխանութիւնը վերականգնելու խնդիր ունի, եթէ խօսենք յեղափոխութեան մասին որպէս հասարակական ֆորմացիայի մեխանիզմ, իհարկէ յեղափոխական իրավիճակ չկայ, որովհետեւ ոչ մէկը չի ասում կապիտալիզմից անցնենք սոցիալիզմի: Խնդիրը հետեւեալի մէջ է, երկրում գործող քաղաքական, պետական համակարգը ըստ էութեան բռնազաւթուած է՝ կրիմինալ յեղաշրջման փորձ է արւում եւ քաղաքացիները այդտեղ համարժէք արձագանքելու խնդիր ունեն»:

## ԾԵԾՈՂՆԵՐԸ ՌՈՒԲԷՆ ԳԷՈՐԳԵԱՆԻ ԵՂԲՕՐՈՐԴԻՆԵՐՆ ԵՆ

*Ա1+*, 02:34

Դաւիթաշէնի նախկին թաղապետ Ռուբէն Գէորգեանի եղբօր՝ Սամուէլի տղաները՝ Արտիոմ եւ Արթուր Գէորգեանները դաժան ծեծի են ենթարկել Դաւիթաշէնում Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի ակտիւիստներից Արթուր Վարդանեանին:

Ինչպէս *Ա1+*-ին տեղեկացրեց Դաւիթաշէնի Տէր-Պետրոսեանի կենտրոնական շտաբի պետ Միքայէլ Մարտիրոսեանը, Դաւիթաշէնի 2րդ թաղամասի 5/12 ընտրատարածքի յանձնաժողովի անդամ Սաթենիկ Խաչատրեանից ահազանգ են ստացել, որ Սերժ Սարգսեանի կողմնակիցները ճնշումների են ենթարկում՝ սկզբում կաշառքի տեսքով, իսկ այնուհետեւ ահաբեկելով Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց: Արթուր Վարդանեանը փորձել է դիտորդներին տեղեակ պահել տեղի ունեցածի մասին: Տէր-Պետրոսեանի շտաբից, որն, ի դէպ, միակն է Դաւթաշէնում, նա 2 անձի հետ մեքենայով գնացել է թիւ 5/12 ընտրատարածք:

Ընտրատարածքի մօտ 02-002 Պորշ եւ 50-002 Տոյոտա մակնիշի ջիպերից դուրս են եկել Արտիոմ եւ Արթուր Գէորգեաններն եւ իրենց համակիրների հետ դաժան ծեծի են ենթարկել Տէր-Պետրոսեանի շտաբի 3 ակտիւիստներին՝ Արթուր Վարդանեանին, Գէորգ Սարգսեանին եւ ԱԺ պատգամաւոր՝ Սասուն Միքայէլեանի եղբօր որդուն:

Արթուր Վարդանեանը *Ա1+*-ին նաեւ տեղեկացրեց, որ իրենց ծեծի ենթարկողները վերցրել են իրենց անձնագրերը եւ բջջային հեռախօսները: Նրանք ջարդուփշուր են արել նաեւ Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Գէորգ Սարգսեանի մեքենան:

## «ՅԱՐՈՒԹԻՒՆ ՓԱՄԲՈՒԿԵԱՆԸ ԶԷՆՔ Է ՀԱՆԵԼ»

*Ա1+*, 03:14

Աջափնեակ համայնքի թիւ 126 դպրոցում տեղակայուած թիւ 6/25 ընտրական տեղամասի դիմաց այսօր Աջափնեակի ոստիկանապետը ԱԺ պատգամաւոր Արման Սահակեանի եւ մի շարք այլ պաշտօնեաների ներկայութեամբ ծեծի է ենթարկել Տէր-Պետրոսեանի համակիր երկրապահների:

«Ահազանգ ստացանք եւ մինչեւ հասանք թիւ 126 դպրոց, արդէն այն տեսանք, որ ծեծ ու ջարդ էր: Ծեծում էին մեր երկրապահի տղաներին», - *Ա1+*-ին յայտնեց Աջափնեակում Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբից Եուրի Դուլգարեանը: Շարունակելով տեղի ունեցածի նկարագրութիւնը՝ նա ասաց. «Ներկայ էին ոստիկաններ, որոնք ընդհանրապէս չէին միջամտում: Այնտեղ էր նաեւ ՀՀԿ-ից ԱԺ պատգամաւոր Արման Սահակեանը՝ Գալուստ Սահակեանի որդին, ԱԺ պատգամաւոր Յարութիւն Փամբուկեանը, Աջափնեակի ոստիկանապետ Արամ Տէր-Թովմասեանը: Վերջում, ոստիկանապետի խօսքերն էին. «Բա, որ տենց բան կար մեզ ինչի չէին շուտ ասում»»:

Միջադէպի պատճառն այն է եղել, որ 6/25 ընտրատարածքում ոստիկանների ներկայութեամբ հանրապետականները փորձել են բաց քուէարկութիւն անցկացնել: Տէր-Պետրոսեանի կողմնակիցները փորձել են կանխել խախտումը եւ այդ փաստի առթիւ արձանագրութիւն կազմել: Այդ վիճաբանութեան առիթ է դարձել, որի արդիւնքում դաժանօրէն ծեծի են ենթարկել Տէր-Պետրոսեանին աջակցող երեք երկրապահի, նրանցից մէկը, ըստ ականատեսների, նաեւ կոտրուածքներ ունի եւ ուղեղի ցնցում է ստացել: Ծեծի ենթարկուածները հրաժարուեցին լուսանկարուել՝ ասելով, որ իրենք կը լուծեն իրենց

խնդիրները: Ի դէպ, երկրապահները մեզ նաեւ տեղեկացրեցին, որ դէպքի վայրում Աժ պատգամաւոր Յարութիւն Փամբուկեանը առաջինն է զէնք հանել եւ կոթով հարուածել Տէր-Պետրոսեանի կողմնակիցներին: Երկրապահները *Ա1+*-ին նաեւ տեղեկացրեցին, որ Արման Սահակեանը փորձել է հարուածներից պաշտպանել կոտրուածքներ ստացած երկրապահին, սակայն արդէն ուշ է եղել: Ըստ երկրապահների՝ Յարութիւն Փամբուկեանը եղել է ալկոհոլի ազդեցութեան տակ:

## ՍԱՐԳՍԵԱՆՆ ՈՒ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՀԱՒԱՍԱՐ ԵՆ

*Ա1+*, 03:23

Երեւանի Կենտրոն համայնքի 10/24 եւ 9/21 ընտրատեղամասերում ձայների հաշւարկն աւարտուել է:

9/21 ընտրատեղամասում նախագահի թեկնածուներ Լեւոն Տէր-Պետրոսեանն ու Սերժ Սարգսեանը հաւաքել են գրեթէ հաւասար ձայներ՝ Լեւոն Տէր-Պետրոսեան՝ 394, Սերժ Սարգսեան՝ 400:

10/24 ընտրատեղամասի ձայների հաշւարկի արդիւնքում՝ առաջատար է Լեւոն Տէր-Պետրոսեանը՝ 368, Սերժ Սարգսեանը՝ 359 ձայն:

Յիշեցնենք, որ այս ընտրատարածքային ընտրական յանձնաժողովի նախագահը ջանք չէր խնայում, որպէսզի անվաւեր ճանաչէր Լեւոն Տէր-Պետրոսեանի ձայները: Այժմ որոշւում է մի քանի տասնեակ քուէաթերթիկների «ճակատագիրը», որոնցում քուէարկուած նշանը մի փոքր դուրս է եկել վանդակից:

Նշենք, որ այս ընտրատեղամասում նման իրավիճակում յայտնուել է ոչ միայն միայն Լեւոն Տէր-Պետրոսեանը, այլեւ Սերժ Սարգսեանը, Արթուր Բաղդասարեանը, Վահան Յովհաննիսեանը եւ Վազգէն Մանուկեանը: Բայց աւելի շատ «վտանգաւոր գօտում» գտնուող քուէաթերթիկներ ունի Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Յանձնաժողովը՝ ի դէմս նախագահ Արմէն Աւետիսեանի, հաւանաբար այդ քուէաթերթիկները կը ճանաչի անվաւեր:

## ՋԱՐԴՈՒՓՇՈՒՐ ԵՆ ԱՐԵԼ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԸ

*Ա1+*, 03:34

Այսօր Մալաթիա-Սեբաստիա համայնքում ջարդուփշուր են արուել Սեբաստիա փողոցի վրայ գտնուող ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի դռան ու պատուհանի ապակիները: Վայրագութեան հեղինակները թողել են նաեւ իրենց հետքերը՝ շտաբի մուտքի մօտ՝ իրենց կերակուրի մնացորդները, որի մի մասն էլ կանխել էին դռնից եւ լուսամուտներից: Տէր-Պետրոսեանի պաստառը չէր վնասուել միայն շատ բարձր փակցուած լինելու պատճառով:

Ի դէպ, *Ա1+*-ը փորձեց այցելել նաեւ Տէր-Պետրոսեանի աւերուած շտաբի հարեւանութեամբ տեղակայուած թիւ 7/21 ընտրատարածք, երբ տեղի էր ունենում ձայների հաշւարկ: Փակ դռների մօտ մեզ դիմաւորեց մի քննաթաթախ ոստիկան, որը հրաժարուեց բացել դուռ ասելով. «Մի հատ հարցնեմ յանձնաժողովի նախագահից գամ»: Մի քանի րոպէ յետոյ ոստիկանը վերադարձաւ եւ ասաց. «Համաձայն չէ»:

Երբ ոստիկանի բացատրեցինք, որ յանձնաժողովի նախագահի համաձայն լինել-չլինելու խնդիր չկայ, Ընտրական Օրէնսգրքի համաձայն՝ լրագրողը կարող է ներկայ

գտնուել ընտրական բոլոր գործընթացներին, այդ թւում քուէների հաշուելուն եւ նկարահանումներ կատարել, ոստիկանը ասաց. «Դէ որ տենցա, մի հատ էլ հարցնեմ»: Կրկին վերադառնալով՝ նա ասաց. «Յանձնաժողովի նախագահը ասում ա, դուք ո՞ր հեռուստաընկերութիւնից էք»: Ստիպուած էինք բացատրել, որ ԸՕ-ի այդ իրաւունքը տուել է բոլոր ԶԼՄ-ներին՝ առանց խտրականութեան: Մեր յամառութիւնը ստիպեց 7/21 ընտրական յանձնաժողովի նախագահ Արտիոմ Նարեկացեանին անձամբ մօտենալ եւ փակ դռան յետեւից պատասխանել մեր հարցերին:

Իմանալով, որ մենք *Ա1+*-ից ենք՝ պարոն Նարեկացեանը խիստ հիասթափուեց եւ ասաց. «Ես ուզում եմ 1 րոպէ շուտ գործս պրծնեմ, տուն գնամ, իսկ դուք ուզում էք մեզ խանգարել»: ԸՕ-ի մասին յիշատակելը աւելորդ էր՝ Նարեկացեանն ասաց. «Շուտ գայիք, մտնէիք, հիմա չեմ բացի, ժամին նայէք», եւ հեռացաւ:

Ի դէպ, թիւ 7/21 ընտրատարածքը երէկ միակը չէր, որտեղ ընտրական յանձնաժողովի հանրապետական նախագահները հրաժարուեցին բացել դռները եւ ներս թողնել ԶԼՄ-ներին, իսկ ոմանք էլ նոյնիսկ տարածքից դուրս էին հանում Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց, յատկապէս չվաճառուողներին:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՀԱՒԱՔՈՒՄ Է 50 ՏՈԿՈՍԻՑ ԱՒԵԼԻ

*Lragir.am*, 09:17

Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը փետրուարի 20-ին առաւօտեան ժամը 9-ին հրապարակել է այդ պահի դրութեամբ 1891 ընտրատեղամասից ստացուած տուեալների հիման վրայ Հայաստանի նախագահի ընտրութեան նախնական արդիւնքը: Ըստ այդ տուեալի, նախագահի ընտրութեանն առայժմ առջեւում է Սերժ Սարգսեանը, ով ԿԸՅ տուեալով հաւաքել է 51,66 տոկոս ձայն: Երկրորդ տեղում Լեւոն Տէր-Պետրոսեանն է, որը ստացել է այների 21,02 տոկոսը, երրորդը Արթուր Բաղդասարեանն է ձայների 16, 3 տոկոսով, իսկ չորրորդը Վահան Յովհաննիսեանն է 6,4 տոկոսով: Այդ տուեալը ստացուել է 1891 տեղամասերի ձայների հաշուարկից յետոյ: Հայաստանի նախագահի ընտրութիւնն անցկացւում է 1923 տեղամասերում:

## ԵԹԷ ՆՈՅՆԻՍԿ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ՃԱՆԱՉԵՆ

*Lragir.am*, 09:27

Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Նիկոլ Փաշինեանը փետրուարի 19-ի լոյս 20-ի գիշերը հրաւիրած մամուլի ասուլիսի ընթացքում յայտարարել է, որ եթէ նոյնիսկ միջազգային դիտորդները դրական գնահատեն քուէարկութիւնը եւ ճանաչեն Հայաստանի նախագահի փետրուարի 19-ի ընտրութեան արդիւնքը, դա չի ազդի մինչեւ վերջ գնալու եւ ընտրութեանը իրենց թեկնածուի արդար յաղթանակն ամրագրելու վճռականութեան վրայ: Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, որ իրենց տրամադրութեան տակ են ընտրակեղծիքներն ու բռնութիւնները հաստատող բազմաթիւ փաստեր, եւ իրենք հասնելու են դրանց իրաւաբանօրէն հաստատմանը: Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամի խօսքով, ուռճացուած է նաեւ ընտրութեանն ընտրողների մասնակցութեան վերաբերեալ ԿԸՅ հրապարակած տուեալը, ըստ որի ընտրութեանը մասնակցել է աւելի քան 1 միլիոն 600 հազար ընտրող: Նիկոլ Փաշինեանն ասել է, որ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը մօտ կէս միլիոնով աւելի թիւ է

ցոյց տուել իրական պատկերի համեմատ: Միջազգային դիտորդները Հայաստանի նախագահի ընտրութեան վերաբերեալ իրենց նախնական եզրակացութիւնը կը ներկայացնեն փետրուարի 20-ին ժամը 16-ին, իսկ մինչ այդ, նոյն օրը ժամը 12-ին իրենց եզրակացութիւնը կը ներկայացնեն ԱՊՀ դիտորդները:

## ՕԵԿ ՀԱՐՑՈՒՄԸ ՎԿԱՅՈՒՄ Է ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻ ԱՌԱՋԱՏԱՐՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

*Lragir.am*, 09:39

Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը տեղեկացնում է, որ Օրինաց Երկիր կուսակցութիւնը մի շարք հասարակական կազմակերպութիւնների հետ համատեղ իրականացրել է Exit Poll ելքի հարցում շուրջ 50.000 քաղաքացիների շրջանում Երեւանում եւ բոլոր մարզերում: Ստացուած արդիւնքները դասակարգուել են հետեւեալ համամասնութեամբ. Արթուր Բաղդասարեան – 35%, Սերժ Սարգսեան – 33%, Լեւոն Տէր-Պետրոսեան – 20,5%, Վահան Յովհաննիսեան – 7,0%: Միւս թեկնածուները հաւաքել են ընտրողների ձայների չորս տոկոսը:

«Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը տեղեկացնում է, որ արդէն հրապարակուած էքզիթ պոլի երկու արդիւնքների համաձայն, որոնց մի դէպքում Սերժ Սարգսեանն է յաղթել առաջին փուլում, միւս դէպքում Լեւոն Տէր-Պետրոսեանը չեն արտացոլում իրականութիւնը: Աւելին, իշխանական քարոզչամեքենայի ակտիւ պրոպագանդումը առաջին փուլով ընտրութիւնները աւարտելու մասին եւս մէկ անգամ փաստում է, այն իրողութիւնը, որ ընտրութիւնների արդիւնքում կատարուած կեղծիքների եւ զանգուածային լցոնումների նպատակը մէկ փուլով ընտրութիւնների արդիւնքների ամփոփման խնդիր էր հետապնդում: Առաջին փուլով ընտրութիւնները աւարտելու մասին էր ընտրութիւններից առաջ խօսում նաեւ միւս թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը, ինչը նոյնպէս չի համապատասխանում իրականութեանը: Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը յայտարարում է, որ ուշադիր հետեւում է ձայների հաշուման գործընթացին եւ դրանց աւարտից յետոյ նախագահական ընտրութիւնների առնչութեամբ հանդէս կը գայ համապատասխան յայտարարութեամբ», ասուած է նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի գրասենեակի տարածած հաղորդագրութեան մէջ:

## ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶՈՒԹԻՒՆԸ ՅԱՐՈՒՑԵԼ Է ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾ

*Lragir.am*, 09:44

«Հայաստանի նախագահի ընտրութիւնների ընթացքում թիւ 13/16 ընտրական տեղամասում ընտրութեանը մասնակցող անձանց՝ դիտորդներ Արմէն Մարտիրոսեանի, Զարուհի Փոստանջեանի եւ Վարդան Խաչատրեանի, ինչպէս նաեւ լրագրող Լուսինէ Բարսեղեանի լիազօրութիւնների իրականացմանը խոչընդոտելու, որը զուգորդուել է բռնութեան գործադրմամբ, դէպքի առթիւ յարուցուել է քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ կէտի յատկանիշներով: Նախաքննութիւնն իրականացնում է ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնը, արդիւնքների մասին կը յայտնենք լրացուցիչ»: Այդ մասին ասուած է Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղար

Սոնա Տռուզեանի տարածած հաղորդագրութեան մէջ: Ազգային Ժողովի վերոյիշեալ պատգամաւորները եւ լրագրող Լուսինէ Բարսեղեանը ծեծի էին ենթարկուել Երեւանի Էրեբունի համայնքում:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԻ ԱՐՁԱՆԱԳՐԱԾ ՄԻ ՇԱՐՔ ԽԱԽՏՈՒՄՆԵՐ. ՓԵՏՐՈՒԱՐԻ 19, ԺԱՄԸ 20-Ի ԴՐՈՒԹԵԱՄԲ

*Lragir.am*, 10:12

Առաւօտեան Դաւթաշէնի 5/14 եւ 5/15 ընտրատեղամասերում (Ա. Նաւասարդեանի անուան դպրոց) թիւ 30 համարի երթուղային տաքսիներով քաղաքացիներին բերում էին քուէարկելու:

Առաւօտեան Գումի շուկայ էին բերում գիւղացիներ, որոնց տրւում էր 9-րդ ձեւ, այնուհետեւ այդ մարդկանց ուղարկում էին 10/11, 10/17 եւ 10/05 ընտրատեղամասեր, մտցնում էին լրացուցիչ ցուցակներ, եւ նրանք քուէարկում էին Ս. Սարգսեանի օգտին:

11/09 եւ 11/10 ընտրատեղամասերի մօտ երկու եղբայր գումար էին բաժանում, որոնցից մէկի անունը Յարութ է: Տեղեկութիւնը ստացուել է 10:50:

13/08 եւ 13/06 ընտրատեղամասերում կուտակումներ են նկատւում եւ կատարւում է Սերժ Սարգսեանի բացայայտ քարոզչութիւն: Տեղեկութիւնը ստացուել է 10:00:

Ազգային Անվտանգութեան մեկուսարանում ընտրութիւնը աւարտուել է ժ. 10.00, իսկ արձանագրութիւնը կազմուել է 20:30-ով: Տեղեկութիւնը ստացուել է 10:10:

12/06 ընտրատեղամասում, քուէախցիկում քուէարկողը ամբողջովին տեսանելի է, յանձնաժողովի անդամներից մէկը անընդհատ շրջում է քուէարկողների կողքով: Տեղեկութիւնը ստացուել է 09:00-ին:

8/08 ընտրատեղամասում ԱԺ պատգամաւոր Սամուէլ Ալեքսանեանի քրոջ որդին փող է բաժանում Սերժ Սարգսեանին ընտրելու համար: 11:00: Այստեղ մի մարդ առանց անձնագրի քուէրակել է մի քանի անգամ:

28/06 ընտրատեղամասում ժամը 11:01 դաժան ծեծի են ենթարկուել Լ. Տէր-Պետրոսեանի լիազօրուած անձինք Երջանիկ Աբգարեանը, Ռուբէն Միրումեանը, Համբարձում Եղիազարեանը եւ Գուրգէն Եղիազարեանը:

11:00-11:30 սահմաններում Խաչատուր Սուքիասեանի տան առջեւ հաւաքուած ոստիկանները ծեծի են ենթարկել *Ա1+* հեռուստաընկերութեան օպերատոր Յովսէփ Յովսէփեանին եւ բռնագրաւել նրա տեսախցիկի տեսաերիզը:

Հայէլեկտրօ գործարանում այսօր առաւօտեան բաժանում էին պարգեւավճարներ աշխատողներին որպէս ընտրակաշառք, գումարներ էին բաժանւում նոյնիսկ այն աշխատողներին, որոնք այլեւս չեն աշխատում:

Գիւմրի քաղաքում 33/75 ընտրատեղամասում թիւ 10 դպրոցում գումար էին բաժանում «թիւ 8 թեկնածուին» ընտրելու համար:

Մալաթիա-Սեբաստիա համայնքի 7/04 տեղամասի ընտրախցում դրուած են 2 գոյնի գրիչներ՝ կապոյտ եւ կարմիր:

Աւան համայնքում տաքսի ծառայութիւնների մեքենաները ցուցակներով մարդկանց տարել են ընտրատեղամասեր: Տէր-Պետրոսեանի շտաբին յաջողուել է ձեռք բերել այդ ցուցակներից մէկը, որտեղ նշուած են ընտրողները, դիմացը դրուած են + կամ -: Դրանից յետոյ անյայտ անձինք ներխուժել են Լ. Տէր-Պետրոսեանի Աւանի շտաբ՝ փորձելով ետ

վերցնել ցուցակը, ինչը իրենց չի յաջողուել: Լ. Տէր-Պետրոսեանի շտաբը ահազանգել է ոստիկանութիւն, ժամը 11.50-ի սահմաններում ոստիկանութիւնը դէպքի վայրում էր:

Շիրակի մարզի Բաւրա գիւղի 33/02 ընտրատեղամասերում բաժանուել են գունաւոր ֆլոմաստէրներ, որոնցով էլ կատարուել է քուէարկութիւնը:

Էրեբունի համայնքի 13/16, 13/17, 12/34 ընտրատեղամասերում քուէատուփերի բացման ժամանակ ոստիկանները փորձում են հեռացնել Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց:

Դաւթաշէն համայնքի 5/3 ընտրատեղամասում ընտրատեղամասերում քուէատուփերի բացման ժամանակ ոստիկանները փորձում են հեռացնել Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց:

Քանաքեռ-Զէյթունի 3/25 ընտրատեղամասում 190 մանկապարտէզում մասսայական բերման են ենթարկւում ընտրողները, թիւ 19 երթուղով համարները 1919տ, 1450տ: Նոյն ընտրատեղամասում մարդիկ են գալիս արդէն կնքուած անձնագրերով:

3/14 տեղամասում (136 դպրոց) քուէաթերթիկներով ծրարները լցւում էին արկղի մէջ:

7/21 ընտրատեղամասում (92 դպրոց) երթուղային տաքսիով մարդկանց բերում էին քուէրակութեան Մալաթիա-Սեբաստիա համայնքի 7/08 ընտրատեղամասում: 15 չլրացուած քուէաթերթիկներ առանց ծրարների անհետացել են:

Սիլիկեան թաղամասի 7/31 եւ 7/32 ընտրատեղամասերի մօտ մարդկանց կուտակումներ են առաջացել այն պատճառով, որ մարդկանց են տեղափոխում երթուղային տաքսիներով:

Ք. Էջմիածին թիւ 19/17 ընտրատեղամասում զինուորական Գալստեան Ալբերտի մօտ (1982թ. ծնուած) եղել է մի տրցակ զինուորական գրքոյկներ: Երբ Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձը ցանկացել է ստուգել դրանք, յանձնաժողովի նախագահը փորձել է ճնշում գործադրել վստահուած անձի վրայ (զօրամաս Ս ՌԻ 029696):

Էրեբունու գրեթէ բոլոր տեղամասերում առկայ են 15-ից աւելի մարդիկ, ընտրատեղամասերի դիմաց կուտակումներ են, վստահուած անձանց դրսի մարդիկ սպառնում են, յանձնաժողովի նախագահները ոչ մի արձանագրութիւն չեն արձանագրում:

Վարդաշէնում եւ Նուբարաշէնում ընտրատարածք են բերուել հոգեկան հիւանդներ, որոնք քուէախցիկ էին մտնում մի քանի հոգով:

6/11 ընտրատեղամաս մարդկանց բերում են երթուղային տաքսիներով եւ քուէախցիկ են մօտենում մէկից աւելի մարդիկ՝ պատճառաբանելով իբր լաւ չեն տեսնում, սակայն ընտրողների մեծամասնութիւնը երիտասարդներ են:

12/22 ընտրատեղամասում առաւօտեան չիրկիզուող պահարանը բացուելուց յետոյ պարզուել է, որ կնիքը գտնւում է թաց վիճակում:

7/27 ընտրատեղամասում քուէարկութիւնը գաղտնի չէ, որովհետեւ տեղի թաղային հեղինակութիւնները հսկում են քուէարկութիւնը քուէախցիկների մօտ: Նաեւ որոշ զինուորականներ քուէարկել են եւ անձնագրերով, եւ զինուորական գրքոյկներով: Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձիք փորձել են միջամտել, բայց յանձնաժողովի նախագահը չի արձանագրել արձանագրութեան մատեանում:

Նոր Նորքի 9-րդ զանգուածում մարդկանց աւտօբուսներով էին բերում թիւ 2/33 եւ 2/34 ընտրատեղամասեր: Յանձնաժողովի գրեթէ բոլոր անդամները ենթարկւում են Սերժ Սարգսեանի վստահուած անձ՝ Լիովա Սարգսեանին եւ սպառնում էին մեր վստահուած

անձանց:

5/33 ընտրատեղամասում մի քանի անձնաւորութիւններ քուէատուփ են գցել մէկից աւելի քուէաթերթիկներ: Երբ Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձը պահանջել է յանձնաժողովի նախագահից արձանագրութիւն կազմել ընտրատարածքում, վստահուած անձին են մօտեցել անյայտ մարդիկ եւ սպառնացել նրան:

Արաբկիր համայնքի 5/20 ընտրատեղամասում ծեծի են ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ՝ Տիգրան Թաքգէօզեանին:

Աւան համայնքի 87 դպրոցում գտնուող 1/03 ընտրատարածքից 08 001 պետ. համարանիշներով Volkswagen Touareg մեքենայով առեւանգել է Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Արսէն Խանամիրեանին եւ դաժան ծեծի ենթարկուել Հարսնաքար ռեստորանային համալիրում:

Աւան համայնքի Չարենց թաղամասի 13 շէնքի բնակիչներին 5 համարի երթուղային տաքսիներով (պետ. համարանիշները՝ 0049, 0053) մարդկանց տարել են ընտրատարածքներ:

Էրեբունու շրջանի 13/16 ընտրատարածքում ծեծի է ենթարկուել *Հայկական ժամանակ* թերթի լրագրող Լուսինէ Բարսեղեանը:

3/10 ընտրատեղամասում, երբ դիտորդները խախտում են նկատել եւ փորձել են արձանագրել, դիտորդներին ընտրատարածքից դուրս են հրաւիրել:

14/11 ընտրատեղամասում տեղի են ունենում լրիւ բաց քուէարկութիւններ:

13/27 ընտրատեղամասում ոմն Աշոտ (մականունը՝ Փիղ) եւ նրա հետ եւս մի քանի հոգի երթուղային տաքսիներով մարդկանց բերում են ընտրատեղամաս, մարդկանց բացայայտ ընտրակաշառք են բաժանում:

Քանաքեռ-Զէյթուն համայնքի 3/14 եւ 3/18 ընտրատեղամասերում 11 OL 240 եւ 11 OL 424 պետհամարանիշներով մեքենաներից կաշառք էին բաժանում:

Գեղարքունիքի մարզի Վարդաձոր գիւղում (ընտրատեղամաս 22/37) 50 հոգի հարբած վիճակում ներխուժել են ընտրատեղամաս, ծեծի ենթարկել 4 յանձնաժողովի անդամների, ապա նրանց դուրս տարել:

Մալաթիա-Սեբաստիայի 8/21 ընտրատեղամասում դաժան ծեծի է ենթարկուել Արման Մելիքեանի վստահուած անձը՝ Պարգեւ Մնացականեանը, որը հիմա բուժում է ստանում Մալաթիա բժշկական կենտրոնում:

Նոյն ընտրատեղամասից ոստիկանութիւն է տարուել Ազատութիւն եւ Ժողովրդավարութիւն հ/կ դիտորդական առաքելութեան դիտորդ Վարդան Սամսոնեանը:

Վերին Արտաշատ գիւղում (ընտրատեղամասեր 17/32 եւ 17/33) գիւղապետ Աշոտ Ղազարեանի եւ գիւղատնտես ոմն Կարոյի կոչով եւ սպառնալիքների ներքոյ տեղի է ունենում բաց քուէարկութիւն:

Աբովեանի 28/16 ընտրատեղամասում յանձնաժողովի ՕԵԿ անդամ Անահիտ Թամարեանը առաւօտից պայքարում է լցոնումների դէմ, որի արդիւնքում բռնի ուժով վերջինիս ընտրատեղամասից դուրս են շպրտել:

Աբովեանի 28/2 տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Սիմակ Դաւթեանին պատճառել են մարմնական ծանր վնասուածքներ եւ դուրս են գցել: Նոյն տեղամասում նրան փորձել է փոխարինել Արարատ Ազարեանը, սակայն նրան թոյլ չեն տուել:

Աբովեանի 28/6 ընտրատեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Ռուզաննա Մովսիսեանին առեւանգել են եւ տարել անյայտ ուղղութեամբ:

Աբովեանի 28/7 ընտրատեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Լարիսա Թորոսեանին առեւանգել են եւ ենթարկել ծեծի: Վերջինս համապատասխան ցուցմունք է տուել Աբովեանի ներքին գործերի բաժանմունքում:

Աբովեանի 28/10 տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Պօղոս Բաղալեանին սպառնացել են հաշուեյարդար տեսնել, եթէ նա շարունակի արձանագրել ընտրախախտումները:

Աբովեանի 28/15 տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Դաւիթ Դաբաղեանին ենթարկել են ծեծի:

Աբովեանի 28/6 ընտրատեղամասում Ազատութիւն եւ Ժողովրդավարութիւն ՀԿ դիտորդ Կարինէ Յովհաննիսեանին ահաբեկելով դուրս են բերել տեղամասից եւ այլեւս թոյլ չեն տուել շարունակել աշխատանքը:

Աբովեանի 28/16 տեղամասում Ազատութիւն եւ Ժողովրդավարութիւն ՀԿ դիտորդ Վարուժան Մելիքեանին ՕԵԿ-ի վստահուած անձի հետ կանչել են դուրս, այնուհետեւ կատարել լցոնումներ:

Նոյն տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Գրետա Խաչատրեանին ձեռքերը ոլորելով դուրս են տարել:

Տեղամասում ամէն ինչ կատարւում է յանձնաժողովի նախագահ, թիւ 5 մանկապարտէզի վարիչ Արշալոյս Գրիգորեանի զանգերով եւ ցուցումով: Նա է հրաւիրում մարդկանց՝ վստահուած անձանց ծեծելու եւ ահաբեկելու համար:

Այսօր ժամը 2-ի սահմաններում Մարալիկում Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի պետին տարել են ոստիկանութիւն եւ մի քանի ժամ պահել այնտեղ:

Արաբկիրում՝ 4/10 տեղամասում, յանձնաժողովի նախագահը քուէախցի մօտ բացայայտ հսկում էր քուէարկութիւնը:

Նոր Հաճնում՝ ՀՀԿ գրասենեակի մօտ, 17.00-ի սահմաններում, բաժանում են ընտրակաշառք 5000 դրամի չափով:

Վայոց Ձորի Աղաւնաձոր գիւղում (39/16 տեղամաս) Մաթեւոսեան ազգանունով մէկը 4-5 անգամ մասնակցել է քուէարկութեանը: Եղել են նաեւ դէպքեր, երբ ընտրողի անձնագրում չի եղել գրանցման նշում: Լուրը հաղորդուել է նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Եղեգնաձորի շտաբից 17:04:

Աբովեանում 99LO888, 09LU111 պետ. համարանիշի մեքենաներով շարունակաբար մարդիկ են բերուել 28/14 ընտրատեղամաս:

Աբովեանի 28/16 ընտրատեղամասում Օրինաց Երկիր կուսակցութեան ներկայացուցիչ Մարօ Մինասեանին դուրս են հրաւիրել, տարել այլ սենեակ, որոշ ժամանակ յետոյ յետ են բերել, երբ քուէատուփը լցուած է եղել:

Շէնգաւիթ համայնքի 11/03, 11/04, 11/20, 11/21, 11/27, 11/28, 11/26, 11/31, 11/32, 11/01 ընտրատեղամասեր համընդհանուր բերման ենթարկուած մարդկանց եւ գումարներ բաժանելու ֆոտօ կադրեր կան:

Վերը նշուած տեղամասերում միջինը 60-70 մարդկանց կուտակումներ են եղել:

Ժամը 15.30-ի սահմաններում Երեւանի Արաբկիր համայնքի տարածքում 06US727 պետհամարանիշի Նիվա մակնիշի աւտոմեքենայով ինչ-որ մարդիկ իրականացնում են

հրապարակային քարոզչութիւն Սերժ Սարգսեանի օգտին եւ մարդկանց տեղափոխում են տեղամասեր:

Ժամը 15.30-ի սահմաններում Երեւանի թիւ 5/24 տեղամասում 2851Տ պետհամարանիշով Գազել մակնիշի միկրոաւտոբուսով ընտրողներ են տեղափոխում:

Տաւուշի մարզի Կողբ համայնքի 40/05 տեղամաս որպէս դիտորդ է ներկայացել Գէորգ Ենոքեանը: Պարզուել է, որ նա զինծառայող է, Կողբ համայնքում տեղակայուած զինուորական գնդի հրամանատար է, ունի զինուորական գնդապետի կոչում:

Ժամը 16.00-ի սահմաններում Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի որոշ անձինք ծեծի են ենթարկել թիւ 11/10 ընտրական տեղամասում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձին, միաժամանակ գողացել են նոյն տեղամասի յանձնաժողովի դրօշմակնիքը:

Ժամը 16.20-ի սահմաններում Երեւանի թիւ 7/04 եւ 7/05 տեղամասերում ԱԺ պատգամաւոր Սամուէլ Ալեքսանեանի ենթակաները ծեծի են ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց եւ դուրս են հանել տեղամասերից:

Արագածոտնի մարզի Վարդենուտ գիւղի գիւղապետ Կամօ Սահակեանը հաւաքել է գիւղի 250 ընտրողների անձնագրերը եւ յետ է վերադարձրել իւրաքանչիւրի մէջ դնելով 5000 դրամ, իսկ Հանքաւանի գիւղապետ Ժիրայր Աւետիսեանը հաւաքել է 230 անձնագիր եւ վերադարձրել է 5000-ական դրամներով:

Փետրուարի 18-ի լոյս 19-ի գիշերը ՀՀ նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի Արագածոտնի մարզի նախընտրական շտաբի աշխատակիցները մասսայաբար ընտրակաշառքներ են բաժանել Արագածոտնի մարզի Ծիլքար, Ռիա Թազա, Մռաւեան գիւղերում:

Երեւան քաղաքի թիւ 2/22 տեղամասում որպէս դիտորդ հանդէս է գալիս ռազմական ինստիտուտի շտաբի պետ Վարդան Յարութիւնեանը:

Առաւօտեան 9.30-ի սահմաններում ՀՀ ոստիկանութեան Կենտրոնի ոստիկանապետ Արթուր Մեհրաբեանը ապօրինաբար ոստիկանութիւն բերման է ենթարկել Տէր-Պետրոսեանի քաղաքային շտաբի անդամ Վարդգէս Սարգսեանին, որի մեքենայի վրայ ամրացուած է եղել եռագոյն դրօշը:

Գեղարքունիքի մարզի Ճամբարակի թիւ 23/21 տեղամասում, որտեղ քուէարկում են հիմնականում զինուորականներ, առաւօտեան ժամը 10-ի դրութեամբ անկացւում էր բաց քուէարկութիւն:

Գեղարքունիքի մարզի 23/24 տեղամասում քաղաքապետի ներկայութեամբ բաց քուէարկութիւն է տեղի ունենում:

Արմաւիր քաղաքի թիւ 21/05 տեղամասում առաւօտեան ժամը 8-00-ի դրութեամբ օգտագործուած է եղել կնիքը:

Կազմուած է արձանագրութիւն, որի տակ ստորագրել են Արթուր Բաղդասարեանի, Արտաշէս Գեղամեանի եւ Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք: Յանձնաժողովի նախագահը հրաժարուել է ստորագրել արձանագրութիւնը եւ գրանցել գրանցամատեանում: Տէր-Պետրոսեանի վստահուած անձը փաստի առթիւ դիմել է դատախազութեանը:

Տաւուշի մարզի Դեբետաւան գիւղի թիւ 40/16 տեղամասում, որը տեղակայուած է եղել դպրոցի շէնքում, առաւօտեան չիրկիզուող պահարանը չի եղել տեղում: Քուէաթերթիկները եւ կնիքները չիրկիզուող պահարանով, որի փականի կնիքները բաց են եղել,

առաւօտեան բերուել են գիւղապետարանից: Կազմուած է արձանագրութիւն վստահուած անձանց կողմից, տեղեակ են պահուել դիտորդական առաքելութեան ներկայացուցիչները:

Երեւանի Նոր Նորքի թիւ 2/6 տեղամասում, որը տեղակայուած է թիւ 50 դպրոցում, ՀՀ նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի կողմնակիցները խմբերով առաւօտեան ժամը 10-ի մօտակայքում եկել են քուէարկութեան Հանրապետական Կուսակցութեան կարգախօսի դրօշներով:

Լոռու մարզի Սպիտակի տարածաշրջանի Նոր Խաչակապ գիւղի թիւ 29/23 տեղամասում առաւօտեան չիրկիզուող պահարանը տեղում չի եղել: Քուէաթերթիկները եւ կնիքները չիրկիզուող պահարանով, որի փականի կնիքները բաց են եղել, առաւօտեան բերուել են գիւղապետարանից: Կազմուած է արձանագրութիւն վստահուած անձանց կողմից, տեղեակ են պահուել դիտորդական առաքելութեան ներկայացուցիչները:

Արարատի մարզի Արեւաբոյր, Մխչեան, Ծաղկաշէն գիւղերում գիւղապետերը գտնըւում են ընտրական տեղամասերում եւ անցկացնում են բաց քուէարկութիւն: Վստահուած անձինք կազմել են արձանագրութիւններ:

Կոտայքի մարզի 26/31 տեղամասում անցկացւում է բաց քուէարկութիւն:

Երեւանի 07/19 տեղամասում յայտնաբերուել է կեղծ անձնագիր, Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձին բռնի կերպով չի թոյլատրուել կազմել արձանագրութիւն եւ բռնագրաւել անձնագիրը:

Երեւանի 4/03 տեղամասում, որը տեղակայուած է Աղոնցի 11 հասցէում, զինուորներին բերել են ընտրատեղամասեր, դրսում անձնագրեր են բաժանել, որ մասնակցեն ընտրութիւնների:

Երեւանի Նար-Դոսի անուան դպրոցում (10/11 ընտրատեղամաս) ժամը 11.00-ի դրութեամբ Հանրապետական Կուսակցութեան անդամները իրականացնում էին քարոզչութիւն:

Երեւանի 191 դպրոցում տեղակայուած 8/22 ընտրական տեղամասի մատեաններում հրապարակաւ ՀՀ նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի օգտին քուէարկելու համար բաժանւում է ընտրակաշառք:

Երեւանի Կենտրոն համայնքի 10/11 տեղամասում Գազէլ մակնիշի 16-26, 13-81 պետհամարանիշի մարդատար մեքենաներով մարդկանց տեղափոխում են քուէարկութեան:

**ՎԱՆԱՁՈՐՈՒՄ ՔՈՒԷԱԽՑԻԿՆԵՐԸ ՍԽԱԼ ԷԻՆ ՏԵՂԱԴՐՈՒԵԼ**

Առաւօտեան ժամը 08:00-ի սահմաններում Վանաձորի Տարօն թաղամասի բոլոր ընտրատեղամասերում տեղադրուած են եղել օրէնքով սահմանուած կարգի խախտումով: Այս մասին մեր թղթակցի հետ զրոյցում տեղեկացրեց Ժառանգութիւն կուսակցութեան ընտրութիւնների հասարակական վերահսկողութեան կենտրոնի պատասխանատու Ստեփան Սաֆարեանը: Նրա խօսքով, դէպքի մասին տեղեկութիւնը ստացուել է Ժառանգութիւն կուսակցութեան տարածքային ստորաբաժանման ղեկավար Գառնիկ Սահակեանից: «Նրա ահազանգով Վանաձորի Հէլսինկեան Ընկերակցութեան ղեկավար Արթուր Սաքունցը եւ այլոք պարտադրել են յանձնաժողովի անդամներին կատարել օրէնքի պահանջը եւ ապահովել գաղտնի քուէարկութիւնը», աւելացրեց նա:

Այսօր Էրեբունու թիւ 43 դպրոցում տեղակայուած 13/16 տեղամասում ոստիկանութեան աչքի առջեւ ծեծի է ենթարկուել *Հայկական ժամանակ* օրաթերթի թղթակից Լուսինէ

Բարսեղեանը: Վերջինիս ընդամէնը տեղեկացել է, որ մի խումբ քուէաթերթիկներ են փախցրել յանձնաժողովի նախագահի սենեակ եւ թաքցրել տեղում: Երբ Տէր-Պետրոսեանի ներկայացուցիչը եւ յանձնաժողովում Ժառանգութեան անդամ Արմէն Մարտիրոսեանը պահանջել են արձանագրութիւն կազմել, յանձնաժողովի նախագահը չի կատարել, ՀԺ-ի լրագրողը փորձել է յանձնաժողովի նախագահից ճշտել ինֆորմացիան: Դրան ի պատասխան յանձնաժողովի նախագահ Վասիլ Աֆեանն ուղղակի ներս է հրաւիրել ոստիկաններին, որոնք փորձել են լրագրողին հեռացնել տեղամասից: Այդ ընթացքում լրագրողը շարունակել է կատարել իր մասնագիտական պարտքը, ինչի արդիւնքում տեղամաս ներխուժած մի երիտասարդ նախ լուսանկարել է լրագրողին, ապա նաեւ նրա ձեռքից խլել ֆոտոապարատն ու ձայնագրիչը եւ սկսել ոտքերով եւ ձեռքերով հարուածել Լուսինէ Բարսեղեանին: Այս ամէնին ականատես են եղել եւ չեն խոչընդոտել ոստիկանները:

Հրազդանում տեղի են ունեցել զանգուածային ընտրակաշառք: 25/31 տեղամասի ներսում ոստիկաններ կային: Երբ լրագրողը յիշեցրել է, որ օրէնքով թոյլատրելի չէ, ոստիկանները պատասխանել են, որ յանձնաժողովի նախագահն է ներս կանչել: Տէր-Պետրոսեանի վստահուած անձին արձանագրութիւն կազմել չի յաջողուել:

25/1 ընտրատեղամասում (թիւ 4 դպրոց) առաւօտ շուտ դպրոցի տնօրէնը մտել է ներս եւ փոխել կահոյքի դասաւորութիւնը: Գրուել է արձանագրութիւն:

Հրազդանում վստահուած անձանց տեղեկացմամբ յանձնաժողովի նախագահները հրաժարւում են վերցնել արձանագրութիւններ եւ դիմում բողոքներ: Հրազդանի քաղաքապետ Դանիէլեան Արամը փոխքաղաքապետի եւ ԱԱԾ աշխատակիցների հետ շրջում է տեղամասերում եւ սպառնում Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց:

Լեռնանիստ գիւղում 25/32 ընտրատեղամաս են մտել սեւ գլխարկներով եւ բաճկոններով հաստավիզ տղաներ, որի կապակցութեամբ բողոքել է ժառանգութեան ներկայացուցիչը: Ներս մտածները սպառնացել են եւ ասել սաղիդ կը ձերբակալենք: Միջամտել է Սասուն Միքայէլեանը եւ կանխել միջադէպը: Ըստ ականատես լրագրողի նրանք սպիտակ Նիվայով էին, որի վրայ փակցուած էր Առաջ Հայաստան դրօշը: Լրագրողը նախապէս փորձել է ճշտել նրանց ով լինելը, սակայն նրանք չեն ներկայացել, ասելով, որ եկել ենք կարգ պաշտպանենք:

Գիւմրիի 34/07 ընտրատարածքում կանաչ, առանց պետ. համարանիշի մեքենայի մէջ ընտրակաշառք են բաժանել:

Աւանի 1/06 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահը 40 րոպէ բացակայել է տեղամասից, անդամները չեն իմացել նրա գտնուելու վայրը: Կազմուել է արձանագրութիւն:

Աւանի 1/18, 1/19 ընտրատեղամասերում հաշուարկը կատարելու պահին հոսանքազրկուել է տեղամասերը:

Էրեբունի եւ Նոր Նորք թաղամասերը 19:50-20:10 հոսանքազրկուել են: Վեց ամիս է էլեկտրաէներգիան մատակարարւում է 24 ժամ:

Դաւթաշէնի 5/09 ընտրատեղամասում քուէատուփի մօտ նստած է եղել թաղապետի բարեկամը եւ հետեւել ընտրութիւններին:

Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Գորիսի շտաբի ներկայացուցիչ Սամուէլ Յարութիւնեանը հաղորդում է, որ Գորիսում եւ Սիւնիքի մարզի այլ բնակա-

վայրերում ընտրախախտումները հիմնականում կատարւում են կեղծ անձնագրերով, կեղծ զինգրքոյկներով եւ 9-րդ ձեւերով։ Տղամարդիկ գալիս են զինուորական գրքոյկներով քուէարկում եւ նոյն մարդիկ յետոյ նկատւում են նաեւ այլ տեղամասերում։ Ընդհանուր առմամբ Սամուէլ Յարութիւնեանն իրավիճակը համարում է լարուած։

15:05 - Անդրանիկի 129 շէնքի դիմաց հաւաքուած են 70 համարի երթուղային տաքսիներ, որոնք բնակիչներին տեղափոխում են շէնքի հարեւանութեամբ գտնուող տեղամաս՝ թիւ 190 դպրոց։ Մի խումբ երիտասարդ տղաներ շրջապատել են մեքենաները եւ մեր թղթակցին թոյլ չեն տուել մօտենալ եւ զրուցել բնակիչների հետ։

15:02 Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Եղուարդի շտաբից վըստահուած անձ Գրիգորեան Սերիոժան հաղորդում է, որ քաղաքի NN 26/03 եւ 26/04 ընտրատեղամասերում քուէախցիկները կախուած են պատից, ինչը հնարաւորութիւն է տալիս յանձնաժողովի անդամներին եւ նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի վստահուած անձանց տեսնելու, թէ ով ինչպէս է քուէարկում։ «Փողերը բաժանում են ու կանգնած նայում, որ անպայման իրանց թեկնածուին քուէարկեն», ասում է վստահուած անձը։

Եղուարդի շտաբի ներկայացուցիչ Խաչիկ Սիմոնեանը յայտնեց, որ 26/04 տեղամասում քուէարկում են լրացուցիչ ցուցակներով։ Անգամ դէպք է եղել, որ ցուցակում գրուած աղջկայ անուան դիմաց ստորագրում ու քուէարկում է տղայ։

15:00 - Գաւառի 20/37 տեղամասում ծեծի են ենթարկուել Լ. Տէր-Պետրոսեանի ներկայացուցիչներ Սամուէլ Գէորգեանը եւ Ջուլիկ Սերգոյեանը։

14:55 - ԱԺՄ կուսակցութեան Երեւանի կենտրոնական շտաբի պատասխանատու Անահիտ Աւոյեանի խօսքերով՝ ընտրութիւններն ընթանում են կոպիտ ընտրախախտումներով։ «Ամէն ինչ էլ անում են՝ լցոնումներ, ծեծ, կրկնակի քուէրակութիւն։ Բացայայտ խախտումներ են անում ու դրանք կատարելագործել են», ասում է նա։

14:52 - Նոր Նորքի 2/6 տեղամասում յանձնաժողովի նախագահն ու 8 անդամները ոչինչ չեն ձեռնարկում խախտումները կանխելու համար։ Մարդիկ քուէախցիկում քուէարկում են երկու եւ աւելի հոգով։

Այգեստանի 9/03 ընտրատեղամասում մարդկանց մեծ հոսք կայ։ 47 համարի երթուղային տաքսիները անընդմէջ նոր մարդիկ են բերում։ Պարզուել է, որ Կերամիկա խանութների ցանցի ողջ անձնակազմը նոր անձնագրերով է ընտրել։

Մեղրի քաղաքը իր շրջակայքով հոսանքազրկուել է քուէարկութեան աւարտից անմիջապէս յետոյ։

Մալաթիայի 7/5, 7/11, 7/15, 7/24, 8/06, 8/27 ընտրատարածքներում հաշուարկները կանգնեցուել են։

Քանաքեռ-Զէյթուն 3/16, 3/17 ընտրատարածքներում Տէր-Պետրոսեանը հաւաքել է առաւելագոյն ձայներ, բայց յանձնաժողովը չի ստորագրում։

## ԵՐԵՒԱՆ ՄՏՆՈՂ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ ՀՍԿՈՂՈՒԹԵԱՆ ՏԱԿ ԵՆ

*Lragir.am*, 10:31

Մեր տեղեկութիւններով, այսօրուանից խիստ հսկողութիւն է սահմանուել Երեւան մտնող ճանապարհների վրայ։ Մայրուղիներին տեղակայուել են ուժեղ հսկողութեան պոստեր։

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՑ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

*Lragir.am*: 12:24

Հայաստանի նախագահի մամուլի գրասենեակը տարածել է Ռոբերտ Քոչարեանի շնորհաւորանքը Սերժ Սարգսեանին՝ ընտրութեանը տարած յաղթանակի համար: Դրանում ասւում է.

Յարգելի պարոն Սարգսեան,

Սրտանց շնորհաւորում եմ Ձեզ 2008 թուականի նախագահական ընտրութիւններում տարած համոզիչ յաղթանակի կապակցութեամբ: Ազատ եւ արդար ընտրութիւններում Ձեր ստացած քուէն Հայաստանի Հանրապետութեան արագընթաց զարգացմանն ու ժողովրդավարացմանը միտուած բարեփոխումների շարունակականութեան քուէն է:

Հայաստանի տնտեսութեան աճի տեմպերի պահպանումը, աղքատութեան յաղթահարումն ու կեանքի նոր որակի ապահովումը, Հայաստանի միջազգային ներգրաւուածութեան խորացումը, Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան արդար եւ վերջնական կարգաւորումը Ձեր առջեւ ժողովրդի կողմից դրուած բազմաթիւ խնդիրներից միայն մի քանիսն են: Վստահ եմ, որ Դուք Ձեր բոլոր գիտելիքներն ու հմտութիւնները ներդնելու էք այդ նպատակների իրականացման գործում:

Համոզուած եմ, որ Ձեր պաշտօնավարման առաջիկայ տարիները կը նշանաւորուեն պետութեան կայունութեան ամրապնդմամբ եւ հասարակութեան ներսում հանդուրժողականութեան խորացմամբ: Հայաստանը օժտուած է բացառիկ մարդկային ներուժով, որը պէտք է լիարժէք ծառայի մեր Հայրենիքի առաջընթացին:

Մաղթում եմ Ձեզ քաջառողջութիւն, եռանդ եւ ուժ՝ պետութեան բարձրագոյն պաշտօնում ժողովրդին Ձեր ծառայութիւնները մատուցելու համար:

Ամենաջերմ բարեկամական մաղթանքներով՝

ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆ

## ՄԱԱ ՄՏԱՀՈԳ Է ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻ ՀԱՆԴԷՊ ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԴԷՊՔԵՐՈՎ

*Lragir.am*, 12:27

Մամուլի Ազգային Ակումբն իր խոր մտահոգութիւնն է յայտնում փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութիւններում լրագրողների նկատմամբ արձանագրուած բռնութիւնների առիթով: Տեղի ունեցածը վկայում է, որ Հայաստանում լրագրողների նկատմամբ բռնութիւնները կրում են շարունակական եւ համակարգուած բնոյթ՝ խորացնելով անպատժելիութեան մթնոլորտը: Մամուլի Ազգային Ակումբը պահանջում է դատաիրաւական մարմիններից օրէնքի ողջ խստութեամբ պատժել մեղաւորներին՝ անկախ նրանց պաշտօնական դիրքից, եւ պաշտպան կանգնել Հայաստանում մարդու իրաւունքներին եւ հիմնարար ազատութիւններին: Միաժամանակ, Մամուլի Ազգային Ակումբը կոչ է անում գործընկերներին աներկիւղ կատարել իրենց մասնագիտական պարտքը՝ տեղի չտալով տարաբնոյթ ճնշումների առջեւ՝ յանուն Հայաստանի Հանրապետութեան:

## ԱՊՀ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ՏՈՒԵՑԻՆ ԻՐԵՆՑ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԸ

*Lragir.am*, 12:35

Հայաստանի նախագահի ընտրութիւնը դիտարկող ԱՊՀ դիտորդական առաքելու-

թիւնը փետրուարի 20-ին հրապարակել է ընտրութեան վերաբերեալ իր նախնական եզրակացութիւնը, որն ինչպէս եւ ակնկալւում էր, դրական է: ԱՊՀ դիտորդները արձանագրում են, որ փետրուարի 19-ին տեղի ունեցած նախագահի ընտրութիւնը եղել է բաց ու ազատ, իսկ ԿԸՅ-ն ու Հայաստանի գործադիր իշխանութիւնն ապահովել են քաղաքացիների ազատ կամարտայայտման իրաւունքի իրականացման հնարաւորութիւնը, իսկ ընտրութիւնն էլ անցել է Հայաստանի Ընտրական Օրէնսդրութեան համաձայն: ԱՊՀ դիտորդներն իհարկէ նշում են, որ իրենց եզրակացութիւնը կայացրել են միայն իրենց տեսածի հիման վրայ, եւ միջնորդաւորուած ինֆորմացիան եզրակացութիւնը կազմելիս հաշուի չեն առել: ԱՊՀ դիտորդական առաքելութիւնը կարծում է նաեւ, որ ընտրութիւնները կարեւոր գործօն են հանդիսացել Հայաստանի ժողովրդավարացման գործում: ԱՊՀ դիտորդական առաքելութիւնը յայտարարում է, որ գրանցուած թերութիւնները եղել են տեխնիկական եւ չեն ազդել ընտրութեան արդիւնքի եւ քաղաքացիների կամքի արտայայտման վրայ: Եզրակացութեան հեղինակները կոչ են անում միւս դիտորդական առաքելութիւններին եւս միանալ իրենց գնահատականին:

## ԿԸՅ-Ն ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ Է

*A1+*, 12:48

Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը հրապարակել է 1923 ընտրատեղամասերից 1891 ստացուած տուեալները: Համաձայն դրանց՝ ժամը 10-ի տուեալներով ՀՀ նախագահական ընտրութիւններին մասնակցել է 1 միլիոն 669 հազար 114 ընտրող: Ներառուած չեն Մեղրիի եւ Աշոցքի 10 ընտրատեղամասերի տուեալները, որոնք ուշանում են յիշեալ շրջաններում ձնաբքի պատճառով:

Քիչ առաջ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի նախագահ Գարեգին Ազարեանը հրապարակեց, որ 1923 ընտրատեղամասերից 1891-ում քուէաթերթիկների հաշուարկման արդիւնքներով՝ Սերժ Սարգսեանը ստացել է 863 544 , Լեւոն Տէր-Պետրոսեանը՝ 351 306, Արթուր Բաղդասարեանը՝ 272 256, Վահան Յովհաննիսեանը՝ 100 876, Արտաշէս Գեղամեանը՝ 7473, Վազգէն Մանուկեանը՝ 20 939, Արման Մելիքեանը՝ 4353, Տիգրան Կարապետեանը՝ 9754, Արամ Յարութիւնեանը՝ 3092 ձայն:

## ՕԵԿ-Ը ԵՒ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆԸ ՉԵՆ ՍՏՈՐԱԳՐԵԼ: ԴԱՇՆԱԿՑԱԿԱՆԻ ՅԱՏՈՒԿ ԿԱՐԾԻՔԸ

*Lragir.am*, 12:52

Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը փետրուարի 20-ին, ժամը 12-ին հրապարակել է Հայաստանի նախագահի ընտրութեանը արդիւնքը, որ ստացուել է բոլոր 1923 տեղամասերից ստացուած արդիւնքների մշակումից: ԿԸՅ այդ տուեալով, Հայաստանի նախագահի ընտրութեան առաջին փուլում փաստացի յաղթում է նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանը, ով հաւաքել է 50 տոկոսից աւելի ձայն: Ընտրութեանը պաշտօնական տուեալով մասնակցած 1 միլիոն 670 հազար 656 քաղաքացիներից Սերժ Սարգսեանի օգտին քուէարկել է 863 554 ընտրող: Երկրորդ տեղում է Լեւոն Տէր-Պետրոսեանը, որի օգտին է քուէարկել 331 306 ընտրող: Քուէարկութեան արդիւնքով վաւեր է ճանաչուել 1 633 599 քուէաթերթիկ, 34 849 հազար քուէաթերթիկ ճանաչուել է անվաւեր, իսկ անճշտութիւնների թիւը 6 438 է: ԿԸՅ այդ արձանագրութիւնը ստորագրել են ինը անդամից վեցը:

Չեն ստորագրել Ժառանգութեան ու Օրինաց Երկրի ներկայացուցիչները, իսկ ՀՅԴ ներկայացուցիչ, յանձնաժողովի նախագահի տեղակալ Համլէտ Աբրահամեանը յայտնել է յատուկ կարծիք:

## «ՄԻՆՉԵՒ ԼԵՒՈՆԻՆ ՆԱԽԱԳԱՀ ՉՃԱՆԱՉԵՆ, ՏՈՒՆ ՉԵՆՔ ԳՆԱՅ»

*A1+*, 12:54

Մատենադարանի մօտ արդէն հինգ հարիւրից աւել մարդիկ են հաւաքուել, ովքեր եկել են իրենց բողոքն արտայայտելու ընդդէմ կեղծուած ընտրութիւնների. «Խայտառակ ձեւի սուտ են խօսում, անամօթ շան որդիները», - բորբոքուած բղաւում է տիկին Լիւսեան, ով պատմում է, թէ ինչպէս են երէկ իրենց շէնքի բոլոր բնակիչներին 5000 դրամ բաժանել Սերժ Սարգսեանին ընտրելու համար: «Թքեմ կաշառք վերցնողների երեսին», - ասում է տիկին Լիւսեան: «Լրիւ սուտ թուեր են ասում հեռուստացոյցով, մենք դրանց չենք հաւատում», - ասում է Ասիա տատիկն ու բոլորին կոչ անում «էդ երկու ղարաբաղցիներից պատիւ պահանջել»:

56-ամեայ Կարապետն էլ համոզուած է, որ յաղթել է Լեւոն Տէր-Պետրոսեանը. «Եթէ գնան էդ ձայները նորից հաշուեն, կը տեսնեն, որ Լեւոնն ա յաղթել»: Մատենադարանի մօտ հաւաքուածները միաբերան ասում են, որ յանուն արդարութեան պայքարելու են մինչեւ վերջ. «Էս մեր վերջին շանսն ա ժողովուրդ, պայքարելու ենք մինչեւ վերջ, մինչեւ Լեւոնին նախագահ չճանաչեն, տուն չենք գնայ», - հաւաքուածներին կոչ էր անում 44-ամեայ Սարգիսը, ով պատրաստ է շաբաթներով նստացոյց անել: Նշենք, որ հաւաքուածների թիւը գնալով աւելանում է:

Մատենադարանին յարակից հրապարակում արդէն հաւաքուել են բազմաթիւ ուսանողներ, ովքեր նոյնպէս վճռական են տրամադրուած. «Էդ ով ա իրեն լաւ տղու տեղ դրել, կնոջ վրայ ձեռք է բարձրացնում, թող գան մեր հետ խօսեն, տեսնենք էդքան դուխները կը հերիքի», - *Ա1+*-ին ասաց 21-ամեայ Դաւիթը, ով ընկերների հետ եկել է կանգնելու ժողովրդի կողքին:

Քիչ առաջ ելոյթ ունեցաւ Նիկոլ Փաշինեանը, ով յայտարարեց արձանագրուած բազմաթիւ ընտրակեղծիքների տուեալները:

Նշենք, որ վաղ առաւօտուանից Մատենադարանի մօտակայքում հաւաքուել են 50-ից աւելի ոստիկաններ:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԸ ՀԱՒԱՔՒՈՒՄ ԵՆ

*Lragir.am*, 13:01

Մատենադարանի մերձակայքում առաւօտեան ժամը 11-ից հաւաքւում են նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցները: Ժամը 13-ի դրութեամբ արդէն հաւաքուել էր մի քանի հազար մարդ, որոնք սպասում են ժամը 15-ին մեկնարկելիք հանրահաւաքին: Այդ ընթացքում քաղաքացիները Երեւանում նկատել են ոստիկանութեան զօրքերի տեղաշարժ: Ոստիկանական խմբերի կուտակումներ են նկատուել նաեւ Մատենադարանին յարող որոշ բակերում:

## ԹՈՅԼ ՉԵՆ ՏԱԼԻՍ ԵՐԵՒԱՆ ԳԱԼ

*A1+*, 13:09

Աբովեան-Երեւան երթուղային տաքսիները գծից դուրս են բերուել: Աբովեանի քաղաքացիները ժամը 11:00-ից Երեւան քաղաք աշխատանքի կամ դասերի ժամանելու հնարաւորութիւն չունեն: Կանգառներում հաւաքուած են հարիւրաւոր մարդիկ, որոնք զայրացած են տրանսպորտի բացակայութեան պատճառով:

«Այ մարդ, հա, հասկացանք, այսօր հանրահաւաք է, չեն ուզում, որ մարդիկ իրենց արդարութեան համար պայքարեն, բայց գոնէ կարող են աշխատանքի թոյլ տալ, ինչով գնամ գործի», - դժգոհում էր Աբովեանցի Սիմակը: Պետրոսն էլ նշեց. «Տաքսի էլ կանչում ենք, էլի չի գալիս կամ էլ եկողները այնպիսի գին են ասում, որ ձեռնտու չի լինում»:

Սեւան-Երեւան մայրուղու վրայ ոստիկանական խիստ հսկողութիւն է: Ոստիկանները արգելում են քաղաքից դուրս գան երթուղային տաքսիները, իսկ երբ մարդատար մեքենաների մէջ տեսնում են երկուսից աւելի մարդ, կանգնեցնում են, ստուգում, այնուհետեւ նոր թոյլ տալիս գնալ:

## ԱՐԳԵԼԵԼ ԵՆ ՎԵՐԱՀԱՇՈՒԱՐԿԵԼ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՁԱՅՆԵՐԸ

*A1+*, 13:47

Աշտարակի 14/2 ընտրատեղամասում նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Ռազմիկ Բոցինեանը *Ա1+*-ին պատմեց, որ ինքը երէկ պահանջել է վերահաշուարկել նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի ձայները, քանի որ զգացել է, որ հաշուարկի ժամանակ կեղծիքներ են արուել. «Ինձ ոստիկանները սպառնացին, որ եթէ բերանս չփակեմ, կը տանեն կը նստացնեն, բայց ես նստելուց չեմ վախենում», - ասում է Ռազմիկ Բոցինեանը:

Նա արձանագրութիւն է կազմել այն մասին, որ յանձնաժողովի նախագահ Գէորգ Խաչատրեանը արգելել է վերահաշուարկել Սերժ Սարգսեանի ձայները, սակայն նախագահը չի ստորագրել արձանագրութեան տակ:

«Էդ Գէորգ Խաչատրեանը Հանրապետութեան նախագահի աշխատակազմի աշխատող է, որ ինքը չստորագրեց, միւսներն էլ վախեցան ստորագրել, մենակ Ժառանգութեան ներկայացուցիչը ստորագրեց», - ասում է Տէր-Պետրոսեանի վստահուած անձը: Նա նշուած արձանագրութիւնը փոխանցել է միջազգային դիտորդներին:

## «ՅԱՆՑԱԳՈՐԾ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ»

*A1+*, 13:47

«Այս ընտրութիւնները համարում եմ յանցագործ», - *Ա1+*-ին յայտնեց իրաւապաշտպան Վարդան Յարութիւնեանը:

Նա սա կապում է իշխանութիւնների կողմից ծաւալուած բռնութիւնների, յանցագործութիւնների հետ, քանի որ, ըստ նրա, ամբողջ ընտրական պրոցէսը ուղեկցուել է քրէական յանցագործութիւններով, ուժի կիրառմամբ: «Ես կարծում եմ, որ ամբողջ հասարակութիւնն է պատրաստում քայլերի, հասել է այն պահը, որ հնարաւոր չէ լռել կամ կուլ տալ այս ամէն ինչը»:

Իրաւապաշտպանի խօսքերով՝ «իշխանութիւնները ոչ միայն համոզուած էին, որ չեն յաղթել, հիմա էլ գիտեն, որ չեն յաղթել եւ դեռ հարց է, կը կարողանան իրենց յայտարարած

թուերը ամրագրել, թէ ոչ իրենց օգտին»: Վարդան Յարութիւնեանը համոզուած է, որ երկու ամիս առաջ սկսած ժողովրդական շարժումը անպայման կը հասնի իր արդիւնքին:

Իսկ Հելսինկեան Ասոցիացիայի նախագահ Միկա Դանիէլեանը նշեց, որ այս ընտրութիւնները անցել են կեղծիքներով՝ ոչ պարզ, թափանցիկ, լցոնումներով ու ծեծերով: «Կրիմինալը այնքան է, որ անիմաստ է խօսել այլ գաղափարների մասին», - ասաց նա

Ի դէպ, Միկա Դանիէլեանը դատապարտեց երէկ ընտրատեղամասերում լրագրողների աշխատանքի խոչընդոտման դէպքերը:

## 20 ՏԱՐԻ ԱՌԱՋ

*A1+*, 13:50

Ռոբերտ Քոչարեանի ուղերձը Հայաստանի Հանրապետութեան եւ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան ժողովրդին Ղարաբաղեան շարժման 20-ամեակի կապակցութեամբ

Յարգելի հայրենակիցներ,

Այսօր յիշարժան օր է՝ Ղարաբաղեան շարժման մեկնարկի 20-ամեայ տարեդարձը: Այդ շարժումն Արցախի ժողովրդի ինքնորոշման համար մղած պայքարի նորագոյն փուլն է, որով նշանաւորուեց մեր ազգային զարթօնքը:

Ղարաբաղեան շարժումը խաղաղ եւ օրինական պահանջի արտայայտում էր: Դրան հակադարձուեցին կոտորածներ, տեղահանումներ եւ լայնամասշտաբ ռազմական գործողութիւններ: Մեզ պարտադրած պայմաններում այն վերաճեց ազգային-ազատագրական ինքնապաշտպանական պատերազմի:

Արցախեան ազատամարտը տուեց բազմաթիւ հերոսներ եւ պահանջեց անդառնալի զոհեր: Սակայն այն նաեւ կոփեց մեր ժողովրդի կամքն ու խորացրեց անկախութեան այլընտրանքի բացակայութեան համոզմունքը: Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան անկախութիւնն այլեւս ոչ միայն ազգային ինքնութեան պահպանման միջոց է, այլեւ՝ սեփական հողում խաղաղ զարգանալու միակ իրական երաշխիքը:

Շարժման հասակակիցների սերնդին անծանօթ է անկախութիւնից տարբերուող որեւէ այլ կարգավիճակ: Պետական շինարարութեան գործում Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւնն արձանագրել է լուրջ նուաճումներ: Դրանք են ե՛ւ պետական կառոյցների կայացածութիւնը, ե՛ւ ժողովրդավարութեան ամրապնդումը, ե՛ւ տնտեսութեան աճն ու արդիւնաւէտութիւնը:

Եւս մէկ անգամ շնորհաւորելով Ղարաբաղեան շարժման 20-ամեակի կապակցութեամբ՝ իմ անկեղծ երախտիքն եմ յայտնում բոլոր նրանց, ովքեր արել եւ անում են ամէն բան Արցախի առաջընթացի համար: Մաղթում եմ խաղաղութիւն, բարգաւաճում եւ նորանոր նուաճումներ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան պետական շինարարութեան մէջ:

## ԴԵՍՊԱՆԱՏՆԵՐԸ ՈՉ ՍՈՎՈՐԱԿԱՆ ՌԵԺԻՄՈՎ

*Lragir.am*, 13:51

Մեր տեղեկութիւններով, Երեւանում հաւատարմագրուած որոշ դիւանագիտական առաքելութիւններ այսօր աշխատում են ոչ սովորական ռեժիմով: Մասնաւորապէս, որոշ ներկայացուցչութիւններում աշխատանքն աւարտուելու է ժամկէտից շուտ, ժամը 3-ին:

## «Ո՞Ր ՄԷԿՆ ԱՍԵՄ»

*A1+*, 13:56

«Այնքան մեծ է հիասթափութիւնս, որ ոչինչ չեմ ուզում պատմել: Շատ-շատ ընտրութիւնների եմ մասնակցել, բայց նման խայտառակ ընտրութիւնների չեմ հանդիպել: Սա ամէն ինչից վեր էր՝ փնթի ձեւով կազմակերպուած ընտրութիւններ: Ազատ, արդար կոչել դրանք հնարաւոր չէ, քանի որ ամէն ինչ էլ կար՝ լիքը ընտրախախտումներ», - *A1+*-ին պատմեց «Ընդդէմ իրաւական կամայականութեան» ՀԿ-ի դիտորդ Վերոնիկա Մելիքեանը:

Տիկին Մելիքեանի յուսահատութիւնն այն աստիճանի է հասել, շատ խախտումներ ուղղակի չի արձանագրել, քանի որ երբ տեսել է համատարած խոշոր խախտումները, մանրերի մասին արդէն էլ հարկ չի համարել ասել: «Եթէ յանձնաժողովի նախագահը մի կուսակցութեան անդամ է, միւս անդամներն էլ անորոշ, անդէմ մարդիկ էին, հասկանում ես, որ դու այդտեղ էլ տեղ չունես: Ես զտայ, որ ամէն ինչ արդէն հաշուած է եւ մեր ներկայութիւնն աւելորդ էր: Ամէն տեղ, այսպէս ասած՝ ախպէրական ներկայութիւնն էր», - վրդովուած պատմում է տիկին Մելիքեանը:

Իրենց ՀԿ-ն շրջիկ դիտորդութիւն է իրականացրել եւ հասցրել են լինել շատ ընտրատեղամասերում ու ֆիքսել բազմաթիւ խախտումեր: Օրինակ՝ Ջոն Կիրակոսեանի անուան դպրոցի մօտ նկատել է իր հիմնական գծից դուրս եկած 57 համարի երթուղայինը: «Ես մօտեցայ, ասացի՝ ի՞նչ էք անում եւ անմիջապէս հաւաքուեցին իմ շուրջը», - ասում է Վերոնիկա Մելիքեանը:

Չկալովի անուան դպրոցում կրկնաքուէարկութեան փաստի է նա ականատես եղել: Նա ֆիքսել է նաեւ մի մարդուն մի ընտրատեղամասից միւս տեղ տեղափոխելը, ինչպէս նաեւ արհեստականօրէն ստեղծուած հերթերը: «Ես այդ ամէնի ականատեսն եմ եղել: Որոշ տեղամասեր էլ մտնում ես, կարծես տնական զրոյց լինէր: Թիւ 114 դպրոցում ցուցակները յանձնաժողովի ետեւում էին փակցուած, ինչպէս նաեւ այստեղ մի մարդու դիմաց արդէն ստորագրուած էր, նաեւ մարդիկ չգիտէին՝ որ ընտրատեղամասում են քուէարկելու: Իմ կարծիքով՝ չի բացառւում, որ նրանց բերում էին եւ այստեղ, եւ այլ տեղ: Նար-Դոսի դպրոցում էլ վատ կազմակերպուածութիւն կար, ընտրական պայմանների պակաս: Աբովեանի անուան դպրոցում էլ այնպիսի հերթ էր ժամը 11:00-ին, որ ԵԱՀԿ դիտորդները չէին կարողանում ներս մտնել: Այնքան ակնյայտ էին այդ խախտումները, որ նոյնիսկ տհաճ էր», - յիշում է նա:

Հասարակական Երկխօսութիւնների ու Նախաձեռնութիւնների Կենտրոն ՀԿ-ի գործադիր տնօրէն Ռուզաննա Սեդրակեանն այս պահի դրութեամբ որեւէ կոնկրէտ տեղեկութիւն չկարողացաւ տալ, քանի որ իրենց դիտորդները դեռ նոր են հաւաքւում: Սակայն մինչ այդ հեռախօսով կապը բոլորի հետ կարողացել են պահել եւ գրանցել բոլոր խախտումները:

Այն, որ ընտրակաշառք է բաժանուել, դրա մասին ՀԿ-ն տեղեկացուած եղել է: «Մի կին նոյնիսկ մօտեցել է մեր դիտորդին ու ասել, թէ զումարս տուէք, գնամ, քանի որ Վանաձորից եմ: Մեր դիտորդն ասել է, որ եթէ չես ուզում խնդիր ունենալ, հեռու գնայ», - հումորով վերապատմում է նա:

Ռուզաննա Սեդրակեանը զարմացել էր որոշ տեղամասերում դիտորդների՝ չափից աւելի անտեղեակութիւնը: «Նրանք նոյնիսկ չեն իմացել, թէ ում են ներկայացնում: Նոյնիսկ ասել են, թէ մարզպետարանն են ներկայացնում, յետոյ պարզուել է, որ դիտորդ

են», - պատմում է նա:

Ընտրութիւնը Քոնն Է ՀԿ-ի մամուլի քարտուղար Յասմիկ Սարգսեանը եւս որեւէ տուեալ այս պահի դրութեամբ չկարողացաւ ասել, քանի որ բոլոր ընտրախախտումների, մարդկանց կուտակումների ահազանգերը նախ պէտք է ամփոփուեն ըստ խախտումների տեսակների: Սակայն նա, այնուամենայնիւ, մի ընտրախախտում առանձնացրեց. «Դիտորդների նկատմամբ որոշակի վերաբերմունքի վերաբերեալ ունենք ահազանգեր: Ծեծ չի եղել, բայց մէկ-երկու դէպքերում գործունէութեան սահմանափակման դէպքեր եղել են»:

## ՆԱԽԱԳԱՀԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՆԱԽՆԱԿԱՆ ՏՈՒԵԱԼԸ

*Lragir.am*, 14:00

Հայաստանի Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը մշակել է քուէաթերթիկների 100 տոկոսը: Ըստ ԿԸՅ-ի տուեալների, Սերժ Սարգսեանի օգտին տրուել է 863 հազար 544 ձայն, կամ 52,8 տոկոսը, Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին՝ 351 հազար 306 ձայն, 21,5 տոկոս, Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանի օգտին՝ 272 հազար 256 ձայն, 11,66 տոկոս, ՀՅԴ թեկնածու Վահան Յովհաննիսեանի օգտին քուէարկել է 100 հազար 876 ընտրող կամ 6,12 տոկոսը: ԱԺՄ նախագահ Վազգէն Մանուկեանը ստացել է 20 հազար 939 ձայն կամ 1,28 տոկոս, Ազգային Միաբանութիւն կուսակցութեան նախագահ Արտաշէս Գեղամեանը՝ 7 հազար 473 ձայն կամ 0,46 տոկոս, Ազգային Համաձայնութիւն կուսակցութեան նախագահ Արամ Յարութիւնեանը՝ 3 հազար 92 կամ 0,19 տոկոս, Արման Մելիքեանը՝ 4 հազար 359 կամ 0,27 տոկոս, Ժողովրդական կուսակցութեան նախագահ Տիգրան Կարապետեանը՝ 9 հազար 754 կամ 0,6 տոկոս: Ըստ ԿԸՅ, ընտրութիւններին մասնակցել է 1 միլիոն 670 հազար 656 մարդ, տարածքային ընտրական յանձնաժողովներին տրուել է 2 միլիոն 390 հազար քուէաթերթիկ, մարուել է 720 հազար 254-ը, անվաւեր է ճանաչուել 34 հազար 849-ը: ԿԸՅ նախագահը յայտնեց, որ անճշտութիւնների քանակը կազմում է 6 հազար 438:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 14:25

Հայաստանի նախագահական ընտրութիւնները բացառիկ կարեւոր նշանակութիւն ունեն մեր երկրի ու ժողովրդի համար եւ կարեւոր քայլ են ժողովրդավարութեան զարգացման եւ երկրի հեղինակութեան բարձրացման գործում: Ցաւօք, փետրուարի 19-ի քուէարկութիւնը արձանագրեց բազմաթիւ ընտրակեղծիքներ եւ ընտրախախտումներ, աւելին, ընտրական գործընթացը ուղեկցուեց ընտրական յանձնաժողովների անդամների եւ վստահուած անձանց ահաբեկման, շանտաժի եւ ծեծի ենթարկելու բազմաթիւ օրինակներով, ինչը կանխելու մասին մենք դեռեւս օրուայ երկրորդ կէսին հանդէս եկանք յայտարարութեամբ: Բազմաթիւ ընտրական տեղամասերում զանգուածային լցոնումների, ընտրակաշառքների համատարած բաժանման, բաց եւ կրկնակի քուէարկութիւնների եւ ՕԵԿ յանձնաժողովի անդամների կողմից ներկայացուած գրաւոր բողոքների գրանցելուց զանգուածային հրաժարուելու, բազմաթիւ տեղամասերում ձայների հաշւման ընթացքում կատարուած կեղծիքները կասկածի տակ են դնում ընտրութիւնների ազատութիւնը, օրինականութիւնը եւ արդարութիւնը: Մենք յայտարարում ենք, որ սկսում ենք

ընտրութիւնների արդիւնքների վերանայման եւ բողոքարկման գործընթաց՝ պահանջելով անվաւեր ճանաչել աւելի քան հարիւր ընտրական տեղամասերի քուէարկութեան արդիւնքները, կատարել ձայների վերահաշուարկ աւելի քան երկու հարիւր ընտրական տեղամասերում, որի արդիւնքում էականօրէն բարձրանալու են մեր թեկնածուի ձայները, ինչը իր հերթին էական ազդեցութիւն կ'ունենայ ընտրութիւնների վերջնական արդիւնքների վրայ: Դիմում ենք ՀՀ իշխանութիւններին՝ միջոցներ ձեռնարկել չխոչընդոտելու համար օրէնքով սահմանուած կարգով քուէարկութեան արդիւնքների վերանայումը: Յայտնում ենք, որ ՀՀ սահմանադրութեան եւ օրէնքների խախտմամբ մինչեւ ընտրութիւնների արդիւնքների վերջնական ամփոփումը քուէարկութեան իրական պատկերի վերհանմանը խոչընդոտելու եւ աղաւաղելու փորձերը յղի են հասարակական առճակատման վտանգով: ՕԵԿ գրասենեակում կայանալիք ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի մամլոյ ասուլիսի ընթացքում կը տրուեն լրացուցիչ գնահատականներ եւ պարզաբանումներ:
ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ԹԵԿՆԱԾՈՒ ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

## ՏԻԳՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԸ ՀԵՌՈՒՍՏԱՑՈՅՑ ՉԻ ՄԻԱՑՆՈՒՄ

*A1+*, 15:05

«Ես չեմ միացնում հեռուստացոյց, պատկերացնո՞ւմ էք», - այսօր *Ա1+*-ին ասաց նախագահի թեկնածու, Ժողովրդական Կուսակցութեան նախագահ Տիգրան Կարապետեանը: Նա չափազանց հիասթափուած է երէկ անցկացուած ընտրութիւններից. «Համատարած փող էին բաժանում»: Իսկ փաստեր արձանագրե՞լ էք՝ հարցին պատասխանեց. «Ո՞նց կարելի է փաստել փող բաժանելը: Գնամ ձեռքը բռնե՞մ: Համատարած բաժանել են: Ում կողմից՝ ետի հէչ վէջս ա: Եթէ մի պետութեան մէջ 95 տոկոս ժողովուրդը կարող է գնուել, այդ ժամանակ չգիտեմ»:

Ապա յաւելեց. «Նոր ենք ուշքի գալիս: Ցամենայնդէպս մարդիկ, մեր աշխատողները, կուսակիցները գալիս էին, ասում էին մարդկանց խի ես փող վերցրել, ասում է հա վերցրեցի, բայց հօ ձայնս չտուեցի: Չի էլ ասում, թէ չեմ վերցրել: Ցամենայնդէպս, տխուր բան է»:

Ըստ ԿԸՅ նախնական արդիւնքների՝ նախագահի թեկնածու Տիգրան Կարապետեանը հինգերորդն է: «Մեր վստահուած անձինք կը գան շրջաններից, ամփոփենք, տեսնենք ինչ ենք անում, մեր մարտավարութեան մասին կ'ասենք: Օրէնքի շրջանակներում բողոքարկելու ենք ամէն դէպքում», - վստահեցրեց Տիգրան Կարապետեանը:

Իսկ այն, որ Ռոբերտ Քոչարեանը մինչեւ ԿԸՅ վերջնական արդիւնքների հրապարակումը, արդէն շնորհաւորում է նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանին, Տիգրան Կարապետեանը ասաց. «Եթէ դա անօրէն է, դատապարտում եմ, բայց չեմ լսել, քանի որ հեռուստացոյց չեմ միացնում»:

## ԱԶԱՏ ՈՒ ԱՐԴԱՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՈՒՐՈՒԱԿԱՆԸ

*A1+*, 5:06

Ռոբերտ Քոչարեանի բնորոշմամբ՝ ազատ եւ արդար ընտրութիւններից յետոյ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի մօտ յայտնուել են յատուկ ջոկատայիններով լցուած մեքենաներ: Ոստիկանները զինուած են մահակներով:

Ի դէպ, այսօր *Ա1+*-ին շատ դժուարութեամբ են թողել մտնել ԿԸՅ:

Շէնքը հսկող ոստիկանները ինչ-որ տարօրինակ եռուզեռի մէջ են եղել ու մեր լրագրողին շատ դժկամութեամբ թողել մտնել ներս եւ հանդիպել ԿԸՅ անդամ Աբրամ Բախչագուլեանին: Վերջինս *Ա1+*-ի լրագրողին ասել է, թէ իրենք արդէն նախնական արդիւնքները յայտնել են, հիմա հանգստանում են:

Իսկ այս պահին Լեւոն Տէր-Պետրոսեանին սատարող ուժերը հանրահաւաք են հրաւիրել Մատենադարանին յարակից հրապարակում: Հրապարակն արդէն լեփ-լեցուն է: Թէեւ այսօր տրանսպորտը գրեթէ կաթուածահար է. շատ դժուար է գտնել երթուղային տաքսի ծայրամասերից կենտրոն հասնելու, առաւել եւս մարզերից Երեւան հասնելու համար:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԸ ՉԻ ՃԱՆԱՉՈՒՄ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԱՐԴԻՒՆՔԸ

*Lragir.am*, 15:38

Այսօր ժամը 15-ին Երեւանում, Մատենադարանի յարակից տարածքում մեկնարկել է նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների հանրահաւաքը: Մասնակիցների շարքը ձգւում է մինչեւ Նաիրի կինոթատրոն: Հանրահաւաքին հրապարակուել է Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի յայտարարութիւնը: Դրանում ասւում է, թէ Տէր-Պետրոսեանի շտաբը չի ճանաչում փետրուարի 19-ի ընտրութեան Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի հրապարակած արդիւնքը, եւ պահանջւում է նոր ընտրութիւն: Յայտարարութեան մէջ ասւում է նաեւ, որ շարունակելու են պայքարը մինչեւ երկրում օրինական ընտրութեան հաստատումը եւ ժողովրդի արժանապատուութեան վերականգնումը:

## «ՍԵՐԺԻԿՆ ԱՒԵԼԻ ՇՈՒՏ ԻՐ ԾՈԾՈՐԱԿԸ ԿԸ ՏԵՍՆԻ»

*Ա1+*, 16:04

Մատենադարանի մօտ Լեւոն Տէր-Պետրոսեանի հրաւիրած հանրահաւաքը բացեց Այլընտրանք հասարակական-քաղաքական նախաձեռնութեան ներկայացուցիչ Նիկոլ Փաշինեանը:

Նա իր խօսքում նշեց, որ իրենք արդէն յաղթել են եւ պահանջում են անվաւեր ճանաչել ընտրութիւնները: «Իշխանութիւններն, այս հանրահաւաքը տեսնելով, պէտք է երկրորդ փուլ անցկացնել: Սակայն դա մեզ պէտք չէ, մեզ հարկաւոր է, որ այս ընտրութիւնները ճանաչել անվաւեր», - ասաց Փաշինեանը՝ աւելացնելով, որ իրենք գնալու են մինչեւ վերջ: Նրա ասածներին հաւաքուածներն արձագանքեցին՝ «Լեւոն», «Սերժիկ հեռացիր», «Հայլուր, հեռացիր» կոչերով: Ընդհանրապէս՝ Մատենադարանում շատ տաք, շիկացած մթնոլորտ է:

Մարդկանց բազմութիւնն այնքան մեծ է, որ փակել է ոչ միայն ամբողջ փողոցը, այլեւ հասնում է մինչեւ կինօ Նաիրի:

Փաշինեանը վերջում իր խօսքն աւարտեց՝ ասելով. «Սերժիկն իր ծոծորակը կը տեսնի, բայց նախագահի պաշտօնը չի տեսնի»:

## ԹՈՂ ՄՏԱԾԵՆ ՆՐԱՆՔ, ՈՎՔԵՐ ՎԱՏ ԲԱՆ ԵՆ ԱՐԵԼ

*Lragir.am*, 16:19

Մատենադարանի մօտ տեղի ունեցող Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների հանրահաւաքում ելոյթ է ունեցել Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Զաւէնի Սարգսեանը: Նա ասել է, թէ առաւօտեան իր 14 ամեայ դուստրը դիմել է իրեն ու ասել՝ դու մի մտածիր, դու լաւն ես, թող նա մտածի, ով վատ բան է արել: Արամ Սարգսեանը դիմել է հանրահաւաքի մասնակիցներին՝ մի մտածէք, տեսնում եմ տխուր էք, դուք որ հաւաքուել էք այստեղ, դուք լաւն էք, թող մտածի նա, ով կեղծել է ընտրութիւնը: Արամ Սարգսեանն ասել է, թէ այս պետութիւնը դժուար է պետութիւն անուանել, բանտ էլ չի, որովհետեւ բանտում ոստիկանը ոստիկան է, բանտարկեալը՝ բանտարկեալ, իսկ այստեղ ոստիկանն ու կրիմինալը միասին են, եւ ով հովանաւորում է այս ամէնը, չի մտածում, որ մի օր էլ իր զաւակն է փողոցում դէմ հանդիման լինելու կրիմինալին եւ դառնալու նրա զոհը: Ձեր խնդիրը հայրենիքը փրկելն է: Պէտք է զինուել համբերութեամբ եւ սառը դատողութեամբ պայքար կազմակերպել, որ կարողանանք յաղթել ռեժիմին: Դրա հնարաւորութիւնը կայ, ասել է Արամ Սարգսեանը:

Իր հերթին, Ոգու Փորձութիւն երկրապահական կազմակերպութեան ղեկավար Սասուն Միքայէլեանն իր ելոյթում ասել է, որ խնդրում են Լեւոն Տէր-Պետրոսեանին առաջնորդել պայքարը յաղթանակ ձեռք բերելու համար: Այս պայքարը պէտք է յաղթանակով աւարտուի, ասել է Սասուն Միքայէլեանն ու յորդորել մարդկանց չյուսահատուել, որովհետեւ «մեզ առաջնորդում է այնպիսի մարդ, որն այն դաժան տարիներին մեզ ազատութիւն պարգեւեց: Ինչպէս մեզ կ'ասի Լեւոն Տէր-Պետրոսեանը, այնպէս էլ կ'անենք մէկ մարդու պէս: Բերելու ենք այն երկիրը, որ երազել են մեր նահատակ ընկերները», ասել է Սասուն Միքայէլեանը:

## ՄԻՒՍ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԸ ԴԵՌ ԿԱՐՈՂ ԵՆ ՓՐԿԵԼ ԻՐԵՆՑ ԴԷՄՔԸ

*Lragir.am*, 16:25

Ելոյթ ունենալով Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների հանրահաւաքում, Երկրապահ կամաւորական միութեան փոխնախագահ Միասնիկ Մալխասեանը յայտարարել է, թէ Հայաստանի նախագահի թեկնածուները երկրապահներին առաջարկում էին կանգնել իրենց կողքին: Միասնիկ Մալխասեանի խօսքով, երկրապահները ժողովրդի կողքին են, եւ այսօր համոզուել են, որ նախագահի միւս թեկնածուներն իշխանութեանն են օգնում: Սակայն Միասնիկ Մալխասեանն ասում է, թէ դեռ ուշ չէ, եւ այդ թեկնածուները կարող են կանգնել ժողովրդի կողքին եւ փրկել իրենց դէմքը:

## «ՆԱՀԱՆՋԵԼՈՒ ՏԵՂ ՉՈՒՆԵՆՔ»

*A1+*, 16:26

«Տեսնում եմ, որ տխուր էք, բայց մի տխրէք, ժողովուրդ», - ահա այս խօսքերով սկսեց իր ելոյթը Մատենադարանին յարակից հրապարակում Հանրապետութիւն կուսակցութեան առաջնորդ Արամ Սարգսեանը: Նա պատմեց, որ այսօր իր 14-ամեայ աղջիկն առաւօտեան ասել է. «Հայրիկ, դու մտածելու բան չունես, թող մտածեն այն մարդիկ, ովքեր վատ գործեր են անում»: Ըստ Արամ Սարգսեանի՝ այսօր այստեղ մարդիկ հաւաքուել են լաւ գործի համար:

Նա նաեւ աւելացրեց, որ «Առաջ, Հայաստան» գոռացողները երէկ ցոյց տուեցին իրենց դէմքը: Նա միախմբման կոչ արեց՝ հաւատացնելով, որ այդ դէպքում պայքարն արդիւնք կը տայ:

Նա ամօթանք տուեց նրանց, ովքեր 5 հազար դրամով վաճառեցին իրենց ձայնը՝ համարելով, որ նրանք նոյնքան պիտի ամաչեն, ինչպէս գումար բաժանողները:

«Նահանջելու տեղ չունենք», - ասաց Արամ Սարգսեանը:

Իսկ Նիկոլ Փաշինեանը յայտնեց, որ հանրահաւաքից յետոյ երթ է լինելու, որն աննախադէպ է լինելու նախորդներից:

## ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԸ ՊԱՐԶԱԲԱՆՈՒՄՆԵՐ ԿԸ ՏԱՅ

*A1+*, 16:28

Այսօր, ժամը 14:00-ին, ՕԵԿ գրասենեակում ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը հանդէս պիտի գար ընտրութիւնների արդիւնքների վերաբերեալ յայտարարութեամբ: Այդ մասին լրագրողներին տեղեկացրել էր Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը՝ իր տարածած մամլոյ հաղորդագրութեամբ: Սակայն երբ լրագրողները ժամանել են գրասենեակ՝ ՕԵԿ մամուլի խօսնակ Սուսաննա Աբրահամեանը յայտնել է, որ այսօր լրագրողների ներկայութեամբ յայտարարութիւն չի արուելու: Իսկ յայտարարութիւնն էլ իրենք տարածել են էլեկտրոնային տարբերակով:

Իսկ այդ յայտարարութեամբ շտաբը դիմում է ՀՀ իշխանութիւններին՝ «միջոցներ ձեռնարկել չխոչընդոտելու համար օրէնքով սահմանուած կարգով քուէարկութեան արդիւնքների վերանայումը: Յայտնում ենք, որ ՀՀ սահմանադրութեան եւ օրէնքների խախտմամբ մինչեւ ընտրութիւնների արդիւնքների վերջնական ամփոփումը քուէարկութեան իրական պատկերի վերհանմանը խոչընդոտելու եւ աղաւաղելու փորձերը յղի են հասարակական վտանգով»:

Շտաբը տեղեկացնում է, որ ՕԵԿ գրասենեակում կայանալիք ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի մամլոյ ասուլիսի ընթացքում կը տրուեն լրացուցիչ գնահատականներ եւ պարզաբանումներ:

## «ՆԱՀԱՆՋԵԼՈՒ ՏԵՂ ՉՈՒՆԵՆՔ»

*A1+*, 16:26

«Տեսնում եմ, որ տխուր էք, բայց մի տխրէք, ժողովուրդ», - ահա այս խօսքերով սկսեց իր ելոյթը Մատենադարանին յարակից հրապարակում Հանրապետութիւն կուսակցութեան առաջնորդ Արամ Սարգսեանը: Նա պատմեց, որ այսօր իր 14-ամեայ աղջիկն առաւօտեան ասել է. «Հայրիկ, դու մտածելու բան չունես, թող մտածեն այն մարդիկ, ովքեր վատ գործեր են անում»: Ըստ Արամ Սարգսեանի՝ այսօր այստեղ մարդիկ հաւաքուել են լաւ գործի համար:

Նա նաեւ աւելացրեց, որ «Առաջ, Հայաստան» գոռացողները երէկ ցոյց տուեցին իրենց դէմքը: Նա միախմբման կոչ արեց՝ հաւատացնելով, որ այդ դէպքում պայքարն արդիւնք կը տայ:

Նա ամօթանք տուեց նրանց, ովքեր 5 հազար դրամով վաճառեցին իրենց ձայնը՝ համարելով, որ նրանք նոյնքան պիտի ամաչեն, ինչպէս գումար բաժանողները:

«Նահանջելու տեղ չունենք», - ասաց Արամ Սարգսեանը:

Իսկ Նիկոլ Փաշինեանը յայտնեց, որ հանրահաւաքից յետոյ երթ է լինելու, որն աննախադէպ է լինելու նախորդներից:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԸ ԵՐԹ ԵՆ ԱՆՈՒՄ ԴԷՊԻ ԿԸՅ

*Lragir.am*, 16:52

Փետրուարի 20-ին Մատենադարանի առջեւ տեղի ունեցած հանրահաւաքից յետոյ կազմակերպիչները եւ մասնակիցները երթ են անում դէպի Կենտրոնական Ընտրական Յանձնաժողով, որտեղ ԿԸՅ-ին է յանձնուելու նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի յայտարարութիւնը: Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբը պահանջում է չեղեալ յայտարարել ընտրութեան արդիւնքը, որ հրապարակել է ԿԸՅ-ն եւ անցկացնել նոր ընտրութիւն:

## ՄԵՏՐՈՆ ԷԼ ԵՆ ՓԱԿԵԼ

*A1+*, 17:56

Այսօր մետրոպոլիտէնի գնացքները չեն կանգնում Երիտասարդական եւ Բաղրամեան կանգառներում: Սա յաւելում նաեւ այն բանի, որ այսօր երթուղային տաքսիները գրեթէ անհետացել են:

«Լաւ, սենց ոնց կը լինի, Մասիւից տաքսի են հազիւ գտել, եկել Խանջեան աշխատանքի», - դժգոհում է Շուշաննան: Իսկ Արմանը յաւելում է. «Հօ պատանդ չենք: Մեզ զրկել են ազատ տեղաշարժուելու իրաւունքից»:

Երեւանի կենտրոնական փողոցներում այսօր ամենաշատը կարելի է հանդիպել խմբերով հաւաքուած ոստիկանների: Վերջիններից մի խումբ ժամը 15:40-ի սահմաններում մտան մետրոյի Հանրապետութեան Հրապարակ կայարան եւ շարժուեցին դէպի հանրահաւաքի վայր:

Կառավարութեան շէնքի յետնամասում խմբուած ոստիկաններից մէկին հարցրեցինք, թէ ինչո՞վ է պայմանաւորուած նրանց այսքան առատութիւնը: Վերջինս յոգնած պատասխանեց. «Դէ հանրահաւաք կայ, դրա համար պատրաստ սպասում ենք»: Ի դէպ, վերջինս նկատեց, որ ասել են, թէ հանրահաւաքին շատ մարդ է հաւաքուել:

## «ԵՍ ԱՆՁԷՆ ԵՄ ԼԻՆԵԼՈՒ»

*A1+*, 17:59

Նիկոլ Փաշինեանը, դիմելով Մատենադարանի մօտ հաւաքուածներին, յայտարարեց, որ այսօր մեր ապագան կախուած չէ Գալուստ Սահակեանի ու Տարօն Մարգարեանի երթուղիներից: Յիշեցնենք, որ այսօր գրեթէ բոլոր երթուղիները չեն աշխատում եւ մարդկանց թոյլ չեն տալիս այստեղ գալ, իսկ այդ երթուղիների գծերի տէրերը իշխանութիւնների ներկայացուցիչներն են:

Այնուհետեւ ելոյթ ունեցաւ Դաւիթաշէնում Տէր-Պետրոսեանի վստահուած անձը՝ Սլաւիկ Մալխասեանը: Նա տարեց մարդ է եւ հաւաքուածներին պատմեց, թէ համայնքի նախկին թաղապետ Ռուբէն Գէորգեանի վարորդի՝ Խաչիկը երէկ ընտրութիւնների ժամանակ ինչպիսի ընտրակեղծիքներ է արել, ինչ բռնութիւններ է իրականացրել: «Ո՞ւմ կարելի է դիմել այսօր նման այլանդակութիւնների համար՝ ոչ ոքի: Իշխանութիւնները

դա ապացուցեցին», - յայտարարեց Մալխասեանն՝ հաւաքուածներին խնդրելով միաւորուել հիմա ու արդարութիւն հաստատել, քանի որ այլ կերպ հնարաւոր չէ:

Նա նաեւ նշեց, որ ուրիշ տեղ չի գնալու, քանի դեռ այս հարցը չի լուծուել:

Ի դէպ, հանրահաւաքին ներկայ էին նաեւ արտասահմանեան լրատուամիջոցների ներկայացուցիչներ:

Նիկոլ Փաշինեանն յիշեցրեց, թէ ԱԺ պատգամաւոր Ռուբէն Հայրապետեանն ինչպէս է ծեծել Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց: Ելոյթ ունեցաւ նաեւ նրա կողմից ծեծուածներից մէկի եղբայրը՝ Արթուր Խանամիրեանը, խնդրելով մարդկանց միաւորուել, քանի որ գտնում է, որ այս երկրում միայն ժողովուրդը կարող է օրինականութիւն հաստատել եւ այս իշխանութիւնների դէմ միասին պէտք է պայքարել:

Ելոյթ ունեցաւ Մուշեղ Սաղաթէլեանը՝ կոչ անելով ինչպէս ժամանակին մահապարտներին, համախմբել: «Ես քաղաքականութեամբ չեմ զբաղւում, ես զինուոր եմ, բայց միայն փողոց դուրս գալով է հնարաւոր: Ոչինչ, թող մի քանիսի գլուխն էլ ուտեն, թող առաջինը ես զոհուեմ, բայց մինչեւ վերջ ենք գնալու ու ես անզէն եմ լինելու», - ասաց նա՝ աւելացնելով, որ այսօր հաւաքուածների հոգիները միացել են այդ երկու հոգու՝ Սերժ Սարգսեանի եւ Ռոբերտ Քոչարեանի դէմ պայքարելու համար, որոնց ձեռքին ժողովուրդը խաղալիք է դարձել:

## ԵԱՀԿ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԳՏՆՈՒՄ ԵՆ, ՈՐ ԵՂԵԼ Է ԱՌԱՋԸՆԹԱՑ

*Lragir.am*, 17:00

Փետրուարի 20-ին ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութիւնը հրապարակել է Հայաստանի նախագահի ընտրութեան նախնական գնահատականը: Ըստ այդ գնահատականի, Հայաստանի նախագահի ընտրութիւնն անցել է Եւրոպական չափանիշներին համապատասխան: ԵԱՀԿ դիտորդները նոյնիսկ առաջընթաց են արձանագրել ժողովրդավարութեան առումով: Դիտորդական եզրակացութեան մէջ ասուած է, որ ընտրութիւնը համապատասխանել է միջազգային կառոյցների առաջ մեր երկրի ստանձնած պարտաւորութիւններին, թէեւ կարիք կայ որոշակի բարելաւումների, որպէսզի առկայ մի քանի հարցերը վերանան: Իսկ հարցերին, թէ ինչպէս են մեկնաբանում այն տեղեկութիւնները, որ ծեծուել են վստահուած անձինք, կատարուել են ահաբեկումներ, լցոնումներ, դիտորդները պատասխանել են, որ իրենք գնահատում են ընդհանուր ընտրական գործընթացը, իսկ առանձին դէպքերի մասին իրենց էլ տեղեկացնում են, բայց երբ իրենք փաստ են ուզում, ապա դրանք չեն ներկայացւում: Յիշեցնենք, որ մի քանի ժամ առաջ ընտրութեան վերաբերեալ իրենց գնահատականն էին հրապարակել ԱՊՀ դիտորդները, ովքեր արձանագրել են, որ նախագահի ընտրութիւնն անցել է Հայաստանի ընտրական օրէնսդրութեան համաձայն:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ՄԵՆՔ ՈՒՆԵՆՔ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՅՍՏԱԿ ԾՐԱԳԻՐ

*Lragir.am*, 17:05

Այսօր Մատենադարանի մօտ տեղի ունեցած հանրահաւաքում ելոյթ է ունեցել Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա յայտարարել է, թէ որեւէ արտառոց բան չի պատահել. հերթական անգամ տեղի են ունեցել նորմալ խայտառակ ընտրութիւններ: Հերթական անգամ բիրտ

ուժը բռնութիւն է կիրառել մեր ժողովրդի ընտրելու կամքի հանդէպ: Չնայած բիրտ ուժի կիրառմանը, ժամը 8-ի դրութեամբ ժողովրդի թեկնածուն արդէն յաղթել էր:

Ժամը 8-ից յետոյ սկսուեցին բռնութիւններ, որ գողանան յաղթանակը: Սակայն վստահուած անձինք քաջաբար պայքարում էին դրա դէմ: Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, այս ընտրութիւնների համար պատասխանատուութիւն են կրում միջազգային դիտորդներն ու կազմակերպութիւնները, որոնք ժամանակին անտեսել են Ընտրական Օրէնսգրքի առաջարկուող այն փոփոխութիւնները, որոնք թոյլ չէին տայ կեղծիքներ կատարել:

Տէր-Պետրոսեանը յայտարարել է, թէ այս ընտրութեանը ժողովուրդը պայքար էր մղում 8 թեկնածուների դէմ, եւ ընտրութեան համար պատասխանատու են նաեւ 8 թեկնածուները: Պատասխանատու են նաեւ օլիգարխները: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, թէ Սերժ Սարգսեանի յաղթանակը նշանակում է կրիմինալի յաղթանակ, Թոխմախի Միերի, Մխչեանի Մուկի, Չոռնի Գագոյի, Կրակեմ Հրաչի, Դոդի Գագոյի, Նեմեց Ռուբոյի, Լֆիկ Սամոյի եւ այլ մականունաւորների յաղթանակը: Նա ասել է, թէ Սերժի շրջապատում որեւէ նորմալ անունով մարդ չկայ, բոլորը մականունաւոր են: «Սերժ Սարգսեանի առաջ, Հայաստանը նշանակում է մականունաւորների առաջ, Հայաստան: Ես 100 տոկոսով վստահ եմ, ոչ մի կասկած չունեմ, որ Հայաստանը առաջ է տանելու ժողովուրդը: Մենք ունենք գործողութիւնների յստակ ծրագիր», յայտարարել է Տէր-Պետրոսեանը:

Դիմելով հանրահաւաքի մասնակիցներին, նա ասել է, թէ Ռոբերտ Քոչարեանը եւ Սերժ Սարգսեանը հաստատ հետեւում են հանրահաւաքին եւ «թող չկասկածեն, որ մենք մեր յստակ ծրագրով առաջ ենք գնալու, հասնելու ենք մեր յաղթանակին, եւ թող չկարծեն, որ մեզ կարող են հանել հաւասարակշռութիւնից: Մենք գնալու ենք շատ զուսպ, հանդարտ, վստահ, չենք ընկրկելու եւ հասնելու ենք այն բանին, որ այսօր, վաղը, միւս օրը տօնենք ընտրութիւնների յաղթանակը: Հաւատացնում եմ, երաշխաւորում եմ իմ թիմակիցների անունից, որ ոչ մի բիրտ ուժ չի կարողանալու խանգարել մեզ հասնել երկրում օրէնքի իշխանութեան հաստատմանը», ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ԱՆՆԱԽԱԴԷՊ ԵՐԹԸ ՊԱՐՈՒՐԵԼ ԷՐ ԵՐԵՒԱՆԻ ՓՈՔՐ ԿԵՆՏՐՈՆԸ

*Lragir.am*, 18:07

Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի կազմակերպած հանրահաւաքից յետոյ Երեւանի փողոցներում տեղի է ունեցել աննախադէպ երթ, որը մեկնարկել է Մատենադարանի մօտից, անցել Մաշտոցի Պողոտայով, Ամիրեան փողոցով, Հանրապետութեան Հրապարակով, Նալբանդեան փողոցով, Կորիւնի փողոցով եւ հասել Կենտրոնական Ընտրական Յանձնաժողով: Երթին մասնակցել է մօտ 200 հազար մարդ: Երբ երթի առաջին շարքերը Նալբանդեան եւ Կորիւնի փողոցներով անցել ու արդէն հասել էին ԿԸՅ շէնքին, վերջին շարքերը դեռեւս գտնւում էին Թումանեան-Նալբանդեան խաչմերուկում: Հետաքրքրական է, որ երբ ցուցարարները «Լեւոն նախագահ» եւ «Սերժիկ հեռացիր» վանկարկումներով անցնում էին Նալբանդեան փողոցի վրայ գտնուող ոստիկանութեան շէնքի մօտից, թերեւս շէնքում էին գտնւում ԱՊՀ դիտորդական առաքելութեան ներկայացուցիչները: Բանն այն է, որ ոստիկանութեան շէնքի դիմաց կայանել էին ԱՊՀ դիտորդներին սպասարկող Մերսեդէս մակնիշի երկու մեքենայ, որոնցից մէկը մասնաւորապէս սպասարկում էր ԱՊՀ դիտորդական առաքելութեան անդամ Վլադիմիր Ռուշայլոյին:

## ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՈՒՂԵՐՁԸ

*Lragir.am*, 18:21

Ռոբերտ Քոչարեանի ուղերձը Հայաստանի նախագահի 2008 թուականի փետրուարի 19-ի ընտրութիւնների կապակցութեամբ

Սիրելի հայրենակիցներ,

2008 թուականի փետրուարի 19-ին կայացան Հայաստանի Հանրապետութեան Նախագահի ընտրութիւնները: Ընտրութիւններն անցան ազատ եւ արդար, Հայաստանի Հանրապետութեան օրէնսդրութեանը համապատասխան ու Հայաստանի ստանձնած միջազգային պարտաւորութիւնների ոգուն համահունչ: Շնորհակալութիւն եմ յայտնում ընտրական յանձնաժողովների բոլոր անդամներին, վստահուած անձանց, դիտորդներին, բայց առաջին հերթին ձեզ՝ ընտրողներիդ, ընտրութիւնները պատշաճ մակարդակով անցկացնելու համար: Դա կարեւոր մի փորձութիւն էր մեր պետութեան ամրացող ժողովրդավարութեան համար:

Ընտրութիւնները միշտ քաղաքական հակասութիւնների կիզակէտ են եւ կարող են յանգեցնել լարման աստիճանի բարձրացման, հասարակութեան պառակտուածութեան: Սակայն քաղաքական պայքարում արժանապատիւ պարտութիւն կրելը եւս ժողովրդավարական մշակոյթի կարեւոր բաղադրիչ է: Կարեւոր է, որ ընտրութիւններին յաջորդող այս շրջանում Հայաստանի Հանրապետութեան իւրաքանչիւր քաղաքացի գիտակցի, որ Հանրապետութեան Նախագահը չի կարող կիսել հասարակութիւնը իւրայինների եւ օտարների: Համոզուած եմ, որ Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուած Սերժ Սարգսեանը կարողանալու է համախմբել հասարակութիւնը, ձեւաւորել փոխըմբռնման եւ հանդուրժողականութեան մթնոլորտ: Չնայած առկայ լուրջ ձեռքբերումներին, Հայաստանի Հանրապետութեան առջեւ դեռեւս ծառացած են բազմաթիւ լուրջ մարտահրաւէրներ: Մեր ժողովուրդն ունի դեռեւս լիարժէք չօգտագործուած մեծ ներուժ: Հայաստանի Հանրապետութիւնը պէտք է դառնայ աշխարհի ամենամրցունակ եւ արագ զարգացող պետութիւններից մէկը: Դրա համար անհրաժեշտ է համախմբուածութիւն եւ հետեւողական աշխատանք:

## ՍԱՐԿՈԶԻՆ ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

*Lragir.am*, 18:28

ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Ֆրանսիայի Հանրապետութեան նախագահ Նիկոլա Սարկոզին, որում, մասնաւորապէս, ասուած է.

«Յարգելի պարոն վարչապետ,

Ջերմօրէն եւ անկեղծօրէն շնորհաւորում եմ Ձեզ նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ: Առաջին իսկ փուլում նշանակալի առաւելութեամբ Ձեր արձանագրած յաջողութիւնը վկայում է այն աջակցութեան մասին, որ Դուք վայելում էք Ձեր երկրում: Ես ողջունում եմ հայ ժողովրդի ընտրութիւնը, որն այս քուէարկութեամբ վերահաստատեց Ձեր կառավարութեան կողմից իրականացուող քաղաքական բարեփոխումները շարունակելու եւ Եւրոպային մերձենալու կամքը:

Վստահ եղէք, որ Հարաւային Կովկասում կայունութեան ու խաղաղութեան ամրապնդման հարցում կարող էք շարունակել յենուել Ֆրանսիայի հաստատակամ աջակցութեան վրայ: Ֆրանսիան, որը Մինսկի խմբի համանախագահող երկրներից մէկն է, կը

շարունակի ջանքեր գործադրել Լեռնային Ղարաբաղի բարդ հակամարտութեան տեւական եւ փոխադարձաբար ընդունելի լուծում գտնելու ուղղութեամբ:

Օգտուելով առիթից, կ'ուզենայի յայտնել, որ անձնապէս մեծ կարեւորութիւն եմ տալիս Ձեր երկրի հետ հաստատուած համակողմանի համագործակցութեան զարգացմանն ու խորացմանը:

Ֆրանսիայի ժողովրդի եւ անձամբ իմ անունից սրտանց եւ ջերմօրէն յաջողութիւն եմ մաղթում Ձեզ, Հայաստանին եւ հայ ժողովրդին:

Ընդունէք խնդրեմ, յարգելի պարոն վարչապետ, խորին յարգանքներիս հաւաստիքը»:

## «ԺՈՂՈՎՐԴԻ ԹԵԿՆԱԾՈՒՆ ԱՐԴԷՆ ՅԱՂԹԵԼ Է» (video)

*A1+*, 18:41

«Ոչ մի արտառոց բան տեղի չի ունեցել: Հերթական անգամ տեղի են ունեցել նորմալ խայտառակ ընտրութիւններ: Հերթական անգամ բիրտ ուժը բռնութիւն է գործադրել մեր ժողովրդի կամքի վրայ», - այսօր Մատենադարանի մօտ հաւաքուած 200 հազարից աւելի հաւաքուածներին դիմեց ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը՝ նրանց դիմելով՝ ազատ քաղաքացիներ:

Տէր-Պետրոսեանը բոլորին վստահեցրեց, որ իշխանութիւններն այսօր բոլորից լաւ գիտեն, թէ ինչ է կատարուել: «Ես ուզում եմ շեշտել ընդամէնը մի քանի հանգամանք. առաջին՝ չնայած իշխանութունների եւ քրէական աշխարհի գործադրած բոլոր ջանքերին՝ ընտրակաշառքներին, քուէարկութեան ընթացքում բռնութիւններին, լցոնումներին, չնայած այդ ամէնին երեկոյեան ժամը 20.00-ին ժողովրդի թեկնածուն արդէն յաղթել է», - ասաց Տէր-Պետրոսեանը: «Լեւոն նախագահ, Լեւոն նախագահ», - արձագանքներից յետոյ ժողովրդի թեկնածուն շարունակեց. «Ամէն ինչ տեղի է ունեցել ժամը 20.00-ից յետոյ:

Ժամը 20.00-ից յետոյ փնտրեցին, մտածուեցին եւ հրապարակուեցին այն թուերը, որոնք այսօր յայտնի են: Ամէն ինչ տեղի ունեցաւ բռնի ուժի միջոցով, ծեծի, ջարդի, ահաբեկումների միջոցով, մեր վստահուած անձինք, մեր դիտորդները հերոսաբար մինչեւ վերջ տեղամասերում կատարեցին իրենց գործը: Բոլոր տեղամասերը, մանաւանդ նրանք, որտեղ իշխանութիւնները գիտէին, որ ջախջախիչ պարտութիւն էին կրել՝ շրջապատուած էին պետութեան ներկայացուցիչներով, տեղական ինքնակառավարման մարմինների գլուխներով, քրէական, գողական տարրերով, որոնց պաշտպանում էր ոստիկանութիւնը, անվտանգութեան ծառայութիւնը եւ յատուկ զօրքերը:

Հնգաշերթ շրջափակման էին ենթարկել բոլոր տեղամասերը եւ, ինչ-որ կատարուեց՝ կատարուեց ժամը 20.00-ից յետոյ մինչեւ առաւօտեան: Առաջին, ամենաանօրինական եւ ամենայանցագործ խնդիրը լուծեց ԿԸՅ-ն՝ ժամը 20.00-ին արդէն հրապարակելով, որ ընտրութիւններին մասնակցել է 1 միլիոն 640 հազար մարդ: Մեր ամենաճշգրիտ հաշիւներով՝ մենք ամենայն պատասխանատուութեամբ յայտարարում ենք՝ Հայաստանի ողջ ընտրողների թիւը 1 միլիոն 700 հազար է: Նորից ամենայն պատասխանատուութեամբ յայտարարում ենք՝ ընտրութիւններին, իրականում, մասնակցել է 1 միլիոն 100 հազար մարդ»:

Տէր-Պետրոսեանը վստահեցրեց, որ իշխանութիւնների յայտարարած 1 միլիոն 640 հազարի՝ 500 հազարը այն թիւ է, որի մասին նա մշտապէս ահազանգել է. «Այն ինչ տեղի է ունեցել եւ 1998թ. եւ 2003թ.-ին: Այսինքն, իշխանութիւնները սկզբից եւեթ տպագրել էին

500 հազար յաւելեալ քուէաթերթիկ: Այդ զգուշացումը մենք կատարել էինք միջազգային կազմակերպութիւններին եւ դիտորդներին, եւ ցաւով ասում եմ, որ եւ միջազգային կազմակերպութիւնները եւ դիտորդները լրջօրէն չվերաբերուեցին մեր զգուշացմանը»: Ընտրակեղծիքներում իշխանութիւնների երկրորդ գործօնը Տէր-Պետրոսեանը համարեց կեղծ անձնագրերի եւ գրանցման կեղծ թերթիկների մասսայական բաժանումը. «Սրա դէմն առնելու առաջարկը մենք արել էինք:

Ընդամէնը մատի թանաքոտումը լուծում էր այդ հարցը, եւ ոչ ոք չէր կարող կրկնակի քուէարկութիւն կատարել: Դժբախտաբար, միջազգային կազմակերպութիւնները եւ դիտորդական խմբերը լրջօրէն չվերաբերուեցին նաեւ այս առաջարկին: Ես գտնում եմ՝ Հայաստանում անցկացուած այս խայտառակ ընտրութիւնների մէջ եւ միջազգային կազմակերպութիւնները եւ դիտորդները նոյնպէս պատասխանատու են»:

## «ՄԵՆՔ ՊԱՐՏԱՒՈՐ ԵՆՔ» (video)

*A1+*, 19:06

Մատենադարանի յարակից հրապարակում հանրահաւաքին ԱԺ պատգամաւոր Սասուն Միքայէլեանը իր ելոյթը սկսեց Վազգէն Սարգսեանի խօսքերով. «Այս երկրի սահմանները փրկուած են արիւնով, եւ մենք իրաւունք չունենք եւ մենք պարտաւոր ենք երկիրը կառուցել»:

Կրկին դիմելով ժողովրդին՝ յիշատակեց Վազգէն Սարգսեանի եւս մէկ խօսք. «Յաղթանակած ժողովրդին վայել չէ ապրել այսպիսի իրավիճակում»: Նա նշեց, որ յաղթանակած ժողովրդին թոյլ չտանք, որ այս իշխանութիւնները պառակտեն եւ ստրկացնեն: Վերջինս դատապարտեց երէկուայ բռնութիւնները եւ վստահեցրեց, որ մինչեւ վերջ պատրաստ են գնալ:

Այնուհետեւ բոլորի անունից Սասուն Միքայէլեանը խնդրանքով դիմեց Լեւոն Տէր-Պետրոսեանին. «Խնդրում ենք ձեզ առաջնորդել մեր արդար պայքարը»:

Ելոյթ ունեցաւ նաեւ ՀՀՇ վարչութեան նախագահ Արարատ Զուրաբեանը. «Ես չեմ հաւատում այն իշխանութիւններին, որոնք խօսում են առաջընթացի, զարգացման մասին, արտաքին ճանապարհների բացման, իսկ երկրի ներսում ճանապարհները ժողովրդի առաջ փակւում են»:

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆԵ՞Լ ԵՆ, ԹԷ՞ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՄՕՏԵՑՈՒՄ

*A1+*, 19:07

Այսօր ընտրութիւնների միջազգային դիտորդական առաքելութիւնը հրաւիրած ասուլիսում յայտարարեցին, որ փետրուարի 19-ի ընտրութիւնները հիմնականում համապատասխանել են երկրի ստանձնած միջազգային պարտաւորութիւններին, չնայած անհրաժեշտ են յետագայ բարելաւումներ գոյութիւն ունեցող մարտահրաւէրներն անդրադառնալու համար:

Դիտորդները յայտարարեցին, որ Հայաստանի իշխանութիւնները իրական ջանքեր են գործադրել նախորդ ընտրութիւններում նշուած թերութիւններին անդրադառնալու համար: «Սակայն յետագայ բարելաւումների եւ քաղաքական կամքի անհրաժեշտութիւն կայ», - նշեց ԵԱՀԿ խորհրդարանական վեհաժողովի փոխնախագահ եւ ԵԱՀԿ ԽՎ

պատուիրակութեան ղեկավար Անն-Մարի Լիզանը: Ու թէեւ նրա խօսքում նշւում էր «հիմնականում համապատասխանել է», սակայն նա նկատեց, որ հանրային վստահութեան պակաս կայ ընտրական գործընթացների վերաբերեալ: Եւրոդիտորդները ընդգծեցին պետութեան եւ կուսակցութիւնների գործառոյթների միջեւ յստակ տարանջատման բացակայութիւնը, ինչպէս նաեւ. «Քուէների հաշուարկման գործընթացը չի նպաստել մասնակիցների շրջանում կասկածների նուազեցմանը», - ասաց տիկին Լիզանը: Դիտորդական առաքելութիւնների ղեկավարները բարձր գնահատեցին ընտրողների ակտիւ մասնակցութիւնը: Նրանք նկատեցին, որ հայ ընտրողը իրական քաղաքական այլընտրանքների միջեւ ընտրութիւն կատարելու լաւ հնարաւորութիւն է ունեցել: Նախնական զեկոյցում նշուած է նաեւ, որ թեկնածուները կարողացել են ազատ կերպով արտայայտել իրենց տեսակէտները եւ ակտիւ քարոզարշաւ են վարել:

«Համեմատած նախորդ նախագահական ընտրութիւնների հետ զգալի առաջընթաց է գրանցուել ընտրական գործընթացների նախապատրաստման, անցկացման գործում: Այդուհանդերձ, ընտրական ողջ միջավայրը եւ գրանցուած միջամտութիւնները դեռեւս պէտք է ուշադրութեամբ գնահատուեն», - ասաց Եւրախորհրդարանի պատուիրակութեան ղեկավար Մարի Ան Իսլէր Բիզանը, սակայն նաեւ յաւելեց՝ «ԵՄ-ն իր հարեւանութեան քաղաքականութեան միջոցով կը շարունակի աջակցել Հայաստանում ժողովրդավարութեան ամրապնդման գործընթացին»: Բաւականին լարուածութիւն կար ընտրութիւնների մթնոլորտի տեսակէտից, հնարաւոր չէ դրա մասին այսօր խօսել եւ գնահատել առանց կարողանալու յետադարձ հայեացք գցել: Տիկին Բիզանը յայտարարեց, որ իրենք շահագրգռուած են մեզանում ժողովրդավարութեան կայացման հարցում, նա անգամ փորձ արեց համեմատել մեզ Աֆրիկայի հետ, որտեղ տեղամասեր են եղել, որ 100 տոկոսանոց ընտրութիւններ են ընթացել: Նա կոչ արեց արագ լուծել հակամարտութիւնը Ադրբէջանի հետ, եւ յարաբերութիւններ հաստատել Թուրքիայի հետ:

ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ ընտրութիւնների դիտորդական առաքելութեան ղեկավար Գերտ Արենսը մի քանի անգամ վստահեցրեց, որ սա դեռ միայն շատ նախնական զեկոյց է, եւ իրենք դեռ կը մնան Հայաստանում դիտարկելու գոյութիւն ունեցող մեխանիզմներով ընտրութիւններին առնչուող վէճերի լուծման գործընթացը:

Իսկ ԵԽԽՎ պատուիրակութեան ղեկավար Ջոն Պրեսկոտն էլ շեշտեց ընտրատեղամասերում քուէների հաշուարկման ընթացքի հետ կապուած կասկածները եւ կրկին ընդգծեց, որ զեկոյցը նախնական է: Նա նաեւ տեղեկացրեց, որ իրենք աշխատել են ՀՀ կառավարութեան, կուսակցութիւնների, եւ նախընտրական շտաբերի հետ: *Ա1+*-ի հարցին, թէ հնարաւո՞ր է, որ իրենց վերջնական զեկոյցը խիստ տարբերուի նախնականից, ինչպէս եղաւ Վրաստանում, դիտորդները կոմպլեմենտար պատասխան տուեցին, որ, իհարկէ, իրենք չեն ասում, որ լիովին համապատասխանել է եւրոպական չափանիշներին: «Մենք ասում ենք հիմնականում համապատասխանել են», - ասաց Ջոն Պրեսկոտը: Իսկ մեր միւս հարցին, թէ տեղեակ են վստահուած անձանց եւ լրագրողների դէմ բռնութիւնների դէպքերին, ասացին, որ տեղեակ են: «Բայց շատ անգամ ասում էին կրակոցներ են եղել, բայց դեռ պէտք է վստահ լինել, որ դրանք կապուած էին ընտրութիւնների հետ», - ասաց Ան Մարի Լիզանը: Իսկ *Ա1+*-ի միւս հարցը այն մասին էր, որ չե՞ն կարծում, թէ ընտրութիւններին տրուած նման գնահատականներով անվստահութիւն են սերմանում եւրակառոյցների նկատմամբ, ուղղակի մոռացութեան տուեցին եւ չպատասխանեցին:

## «ԵՐԷԿ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԸՆՏՐԵՑ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ»

*A1+*, 19:26

«Բազմաթիւ ընտրութիւններ կեղծած վարչախումբը հերթական անգամ վիրաւորում է ժողովրդի արժանապատուութիւնը», - այսօր Մատենադարանի հարթակից յայտարարեց ՀԺԿ նախագահ Ստեփան Դէմիրճեանը: Նա ընդգծեց, որ ընտրութիւնները կեղծելու իշխանութիւնների մեթոդները չեն փոխուել. «Ընտրակաշառքներ, լցոնումներ, տարատեսակ կեղծիքներ եւ բռնութիւններ, բռնութիւններ նոյնիսկ կանանց նկատմամբ»:

Ստեփան Դէմիրճեանն իր զօրակցութիւնը յայտնեց բոլոր նրանց, ովքեր անտեսելով իշխանութիւնների բռնութիւններն ու ճնշումները՝ պայքարել ու պայքարում են յանուն արդարութեան: «Այս վարչախումբը կեղծիքների համար օգտագործեց նաեւ քրէական տարրերին, ընդորում՝ ոստիկնութեան թողտուութեամբ: Նա, ով ապաւինում է քրէական տարրերին, թող դառնայ կրիմինալ նախագահ, իսկ ժողովուրդը երէկ ընտրել է Լեւոն Տէր-Պետրոսեանին», - յայտարարեց Ստեփան Դէմիրճեանը:

Ի պատասխան հաւաքուածների այն հարցին, թէ ի՞նչ ենք անելու՝ Ստեփան Դէմիրճեանն ասաց. «Պատասխանը դուք արդէն տուել էք: Նահանջելու տեղ չկայ: Յանուն արժանապատուութեան, յանուն մեր ազատութեան, մեր հաւաքական կամքը, մեր հաւաքական խումբը յաղթելու է, մենք մաքրելու երկիրն այդ սրիկաներից»:

## ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԹԷԵՒ ԱՍԵԼ ԵՆ, ԲԱՅՑ ՈՐՈՇՈՒՄ Է ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

*Lragir.am*, 19:57

Այս պահին Երեւանի Ազատութեան Հրապարակում շարունակւում է Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների հանրահաւաքը: Այլընտրանք հասարակական քաղաքական նախաձեռնութեան անդամ Նիկոլ Փաշինեանն իր ելոյթում անդրադարձել է ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդների նախնական գնահատականին: Նրա խօսքով, թէեւ դիտորդներն ընդհանուր առմամբ դրական գնահատական են տուել, այնուամենայնիւ, ինչպէս եւ 2003թ., նրանք ասել են, թէ ընտրութեան արդիւնքներն ընդունելը կամ չընդունելը Հայաստանի ժողովրդի իրաւունքն է, եւ նա է որոշում:

## ՅԱՐՈՒՑՈՒԵԼ Է 8 ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾ

*Lragir.am*, 20:06

2008թ. փետրուարի 19-ին տեղի ունեցած ՀՀ նախագահի ընտրութիւնների ընթացքում թոյլ տրուած խախտումների վերաբերեալ Հայաստանի Հանրապետութեան յատուկ քննչական ծառայութիւնում, ըստ քննչական ենթակայութեան ընթացք տալու համար, ստացուել է 11 հաղորդում, դիմում, որոնց հիման վրայ նախապատրաստուած նիւթերով յարուցուել է 8 քրէական գործ, միւսների քննարկումը շարունակւում է:

Յարուցուած քրէական գործերից մէկով պարզուել է, որ Լոռու մարզի Արեւածագ գիւղի 32/53 ընտրական տեղամասում ՀՀ նախագահի թեկնածու Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Էդմոնդ Գէորգեանն, ալկոհոլ օգտագործած վիճակում, խոչընդոտել է ընտրական յանձնաժողովի աշխատանքներին, ինչի համար նրան առաջադրուել է մեղադրանք ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 1-ին մասով նախատեսուած արարք կատարելու համար: Նրա նկատմամբ որպէս խափանման միջոց է ընտրուել ստորագրութիւն չհեռանալու մասին:

Մէկ այլ քրէական գործով պարզուել է, որ ՀՀ Նախագահի թեկնածու Ս. Սարգսեանի վստահուած անձ Սուրէն Աւետիսեանին ծեծի է ենթարկել, մարմնական վնասուածք պատճառել եւ նրա լիազօրութիւնների իրականացմանը խոչընդոտել Շիրակի մարզի Մարալիկ քաղաքի 36/34 ընտրական տեղամասում ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի ներկայացուցիչ Յարութիւն Ուռուտեանը: Վերջինս ձերբակալուել է:

ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում ձեռնարկւում են անհրաժեշտ միջոցառումներ՝ ընտրախախտումների վերաբերեալ նիւթերով նախապատրաստումը եւ յարուցուած քրէական գործերի նախաքննութիւնը հնարաւորինս սեղմ ժամկէտներում իրականացնելու համար, տեղեկացնում է ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը:

## ԿԱԹՈՂԻԿՈՍԸ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ Է ՅՂԵԼ

*Lragir.am*, 20:14

ՀՀ նախագահ ընտրուելու առիթով ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել եւ Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնից իր հայրապետական օրհնութիւնն է յղել Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Երկրորդը, յայտնում են Մայր Աթոռի տեղեկատուական համակարգից:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՔՈՉԱՐԵԱՆԻՑ ԱՌԱՋԱՐԿ ՉԻ ՍՏԱՑԵԼ

*Lragir.am*, 20:24

Հայաստանի նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը քիչ առաջ Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող հանրահաւաքում յայտարարել է, թէ Եւրամիութեան երկրների մի քանի դեսպաններ իրեն ասել են, որ Ռոբերտ Քոչարեանն իրենց ասել է, թէ բանակցութիւններ է վարում Տէր-Պետրոսեանի հետ: Լեւոն Տէր-Պետրոսեանը դեսպաններին պատասխանել է, թէ չի մեկնաբանում այդ տեղեկութիւնը: Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշեցրեց, որ ինքը բաց քաղաքականութիւն է վարում եւ յայտարարեց, թէ Ռոբերտ Քոչարեանն իրեն որեւէ առաջարկ չի արել:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ՍԱ ԼՈՒՐՋ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆ Է

*Lragir.am*, 20:51

Փետրուարի 20-ին, Հայաստանի նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Մատենադարանում սկսուած հանրահաւաքը, որ շարունակուել է աննախադէպ երթով, աւարտուել է Ազատութեան Հրապարակում տեղի ունեցած հանրահաւաքով: Երթի մօտ 200 հազար մասնակիցները գրեթէ ամբողջութեամբ հասել են Ազատութեան Հրապարակ, ուր մէկ ժամ անց տեղի է ունեցել հանրահաւաքը: Տեղի է ունեցել այնտեղ, ուր ըստ տեղեկութիւնների պէտք է փետրուարի 20-ին տեղի ունենար Սերժ Սարգսեանի յաղթանակի հանրահաւաքը, սակայն, ինչպէս նշել է Նիկոլ Փաշինեանը, այն տեղի չի ունեցել մասնակիցների բացակայութեան պատճառով: Իսկ Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքին, Ազատութեան Հրապարակում, մասնակցել է նոյնքան մարդ, որքան փետրուարի 16-ի նրա նախընտրական վերջին հանրահաւաքին: Փետրուարի 20-ի երթից յետոյ տեղի ունեցած հանրահաւաքին Արամ Մանուկեանը, ով 1991 թուականին հռչակեց Հայաս-

տանի անկախութիւնը, Լեւոն Տէր-Պետրոսեանին հռչակել է Հայաստանի Հանրապետութեան նոր նախագահ:

Հանրահաւաքի մասնակիցները պահանջում էին, որ արդէն այսօր, Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորութեամբ կատարեն գործողութիւններ, որոնք կ՚ամրագրեն այն յաղթանակը, որը գողացուել է ժողովրդից: Այդ պահանջները հնչել են բոլոր ելոյթների ժամանակ, որ հնչել են Ազատութեան Հրապարակում տեղի ունեցած հանրահաւաքի ժամանակ: Սակայն վերջում ելոյթ ունեցած Լեւոն Տէր-Պետրոսեանը քաղաքացիներին հանգամանալից բացատրել է իրավիճակը: Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, խնդիրը յստակ է՝ ժողովուրդը յաղթել է եւ տէր է կանգնելու իր յաղթանակին: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ ինքը կանգնելու է մինչեւ վերջ, եթէ անգամ իր կողքին ոչ ոք չմնայ: Նա նորից կրկնել է Մատենադարանի հանրահաւաքում ասուածը, որ ունեն գործողութիւնների յստակ ծրագիր եւ վստահ է, որ հետեւողական գործողութիւններով հասնելու են երկրում օրէնքի իշխանութեան հաստատման: Սակայն ժողովրդի մի մասը կրկին վանկարկում էր «այսօր», «Բաղրամեան» բացականչութիւնները: Ի պատասխան դրան, Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, ներողութիւն խնդրելով այդ գնահատականի համար, որ իրենք աւելի իրազեկուած են, քան քաղաքացիները:

Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ Հայաստանի նախագահի ընտրութեանը միջազգային դիտորդների ու Եւրամիութեան երկրների դեսպանների տուած գնահատականը նպաստաւոր վիճակ է ստեղծում իրենց համար: «Սա լուրջ քաղաքականութիւն է եւ ես գիտեմ իմ անելիքը», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, ասելով, որ թող ոչ ոք չկասկածի, որ ժողովրդի հետ միասին հասնելու են իրենց նպատակին՝ «ամենախելօք, ամենաճշգրիտ եւ ամենավճռական քայլերով»: Լեւոն Տէր-Պետրոսեանը հանրութեանը յայտնել է, որ փետրուարի 21-ին, Ազատութեան Հրապարակում ինքը հրաւիրում է քաղաքացիներին հանրահաւաքի: «Վաղը, ժամը 15-ին դուք ականատես կը լինէք չափազանց կարեւոր իրադարձութեան: Մենք պայքարելու ենք մինչեւ վերջ, եւ ուրեմն՝ պայքար, պայքար մինչեւ վերջ», իր ելոյթը եզրափակել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## «ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆՆ ՈՒՆԻ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՅՍՏԱԿ ԾՐԱԳԻՐ» (video)

*A1+*, 21:24

Այսօր Մատենադարանի հարթակից Լեւոն Տէր-Պետրոսեանը նկարագրեց գործող իշխանութիւնների էութիւնը. «Վերից վար կոռումպացուած մի համակարգ, որը գործում է ոչ թէ օրէնքներով, այլ գողական աշխարհի կանոններով: Դրա լաւագոյն ապացոյցը երէկուայ ընտրութիւններն էին: Իշխանութեան եւ քրէական աշխարհի այսպիսի սերտաճում, ինչ որ մենք տեսանք երէկ, երեւի աշխարհի ոչ մի երկրում գոյութիւն չունի: Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը այս կտրուածքով կարող են յաւակնել Գինէսի գրքում արձանագրուելու համար»: Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ իրականում ժողովուրդը պայքարում էր ոչ թէ Սերժ Սարգսեանի դէմ, այլ՝ մնացեալ 8 թեկնածուների դէմ:

«Մնացեալ 8 թեկնածուները հաւասարապէս պատասխանատու են այն խայտառակութեան համար, որը տեղի ունեցաւ երէկ»: Տէր-Պետրոսեանը յատուկ ընդգծեց նաեւ օլիգարխների դերը. «Նրանք իւրովի պատռեցին իրենց դիմակը: Նրանցից յատկապէս մի քանիսը»: Մինչ օլիգարխներին անդրադառնալը՝ Տէր-Պետրոսեանը խօսեց առաջիկայ

անելիքների մասին եւ վստահեցրեց. «Պէտք է յստակ պատկերացնենք՝ Սերժ Սարգսեանի յաղթանակը լինելու է քրէական աշխարհի յաղթանակը: Սերժ Սարգսեանի յաղթանակը լինելու է Թոխմախի Միերի, Մխչեանի Մկան, Չոռնի Գագոյի, Կրակեմ Հրաչի, Դոդի Գագոյի, Նեմեց Ռուբոյի, Լֆիկ Սամոյի յաղթանակը, եթէ ես մոռացայ, կարող էք նրանց գումարել: Միեւնոյն է՝ ինչ էլ գումարէք, նրանք բոլորն էլ մականունաւոր մարդիկ են լինելու: Սերժ Սարգսեանի շրջապատում ոչ մի նորմալ անունով մարդ չկայ: Վստահ եղէք՝ Սերժ Սարգսեանի նախագահութիւնը լինելու է քրէական այս մականունաւոր մարդկանց իշխանութիւնը: Սերժ Սարգսեանի առաջ Հայաստանը՝ Միերի, Նեմեցի, Դոդի եւ միւսների առաջն է: Բայց ես վստահ եմ, 100 տոկոսով վստահ եմ, որ Հայաստանը առաջ է տանելու այս ժողովուրդը»:

Տէր-Պետրոսեանը վստահեցրեց, որ այսօր Մատենադարանի մօտ հաւաքուածների լիցքն ու էներգիան անհրաժեշտ երկրին տէր կանգնելու համար եւ ասաց. «Մենք ունենք գործողութիւնների յստակ ծրագիր»: Նա հաւաքուածներին նաեւ տեղեկացրեց, որ Սերժ Սարգսեանն ու Ռոբերտ Քոչարեանն, պետական ապարատի բազմաթիւ պաշտօնեաներ մասնակցում են այսօրուայ հանրահաւաքին. «Իրենք ունեն համապատասխան տեխնիկա, բայց թող չկասկածեն, որ մենք՝ մեր յստակ ծրագրով հասնելու ենք մեր լիակատար յաղթանակին: Եւ թող չմտածեն, որ մեզ կարող են հանել հաւասարակշռութիւնից: Ոչ: Մենք գնալու ենք շատ զուսպ, հանդարտ, վստահ, առանց կասկածելու մեր վերջնական յաղթանակին»: Տէր-Պետրոսեանը հաւաքուածներին վստահեցրեց. «Այս անգամ չենք ընկրկելու եւ հասնելու ենք նրան, որ այսօր, վաղը, միւս օրը տօնելու ենք 1998թ., 2003թ. եւ 2008թ. յաղթանակը»:

Նա ընդգծեց, որ այդ յաղթանակը լինելու է ոչ միայն իր, եւ իր սատարողների, այլեւ Կարէն Դէմիրճեանի եւ Վազգէն Սարգսեանի յաղթանակը. «Ես ուզում եմ վստահութիւն յայտնել եւ երաշխաւորել, իսկ ես ձեզ բոլորիդ համարում եմ իմ թիմակիցը, ոչ մի բիրտ ուժ չի կարողանալու մեզ խանգարել այս երկրում հաստատել հերթական օրէնքի իշխանութիւն»: Տէր-Պետրոսեանը հաւաքուածներին յայտնեց, որ այսօրուայ միջոցառումը երկար է տեւելու:

## ԵՐԹԸ ՎԵՐԱԾՈՒԵՑ ՀԱՆՐԱՀԱՒԱՔԻ (video)

*A1+*, 21:26

Այսօր Երեւանի կենտրոնական փողոցների բնակիչներն իրենց տան պատուհաններից դիտում էին, թէ ինչպէս է մարդկանց բազմահազարանոց շարքն անցնում իրենց տան մօտով եւ գոռում. «Պայքար, պայքար մինչեւ վերջ», «Լեւոն նախագահ», «Սերժիկ հեռացիր»: Նրանց մի մասը միանում էր երթի մասնակիցներին, իսկ միւսները նրանց «աջակցում» էին պատուհաններից: Մաշտոցի Պողոտայով եւ Ամիրեան փողոցով մարդկանց հոծ խումբը մօտեցաւ Կառավարութեան շէնքին եւ ամօթանք տուեց այն շրջապատած ոստիկաններին:

«Միացէք մեզ, դուք հա՞յ էք, թէ՞ ազգի թշնամի», - ոստիկաններին կոչ էին անում մարդիկ: Երթը շարունակուեց Սախարովի հրապարակով եւ Նալբանդեան փողոցով՝ հասնելով Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի շէնք: Այստեղ նրանց արդէն կազմպատրաստ սպասում էին ոստիկանները, ինչն աւելի բարկացրեց մարդկանց: «Ստւտասաններ», «դաւաճաններ», - այսպէս էին որակում ԿԸՅ-ի անդամներին: Երթի

մասնակիցները կանգ առան Ազատութեան Հրապարակում, որտեղ էլ այժմ շարունակւում է կէսօրին սկսուած հանրահաւաքը:

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆ

*A1+*, 21:34

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ, ՓԵՏՐՈՒԱՐԻ 19, 2008 Թ.**
**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՆԱԽՆԱԿԱՆ ՅԱՅՏՆԱԲԵՐՈՒՄՆԵՐԻ ԵՒ ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ**

Ք. Երեւան, 20 փետրուարի, 2008 թուական: Հայաստանում փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնների՝ Ընտրութիւնների Միջազգային Դիտորդական Առաքելութիւնը (ԸՄԴԱ) հանդիսանում է ԵԱՀԿ-ի Ժողովրդավարական Հաստատութիւնների եւ Մարդու Իրաւունքների Գրասենեակի (ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ), ԵԱՀԿ Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԱՀԿ ԽՎ), Եւրախորհրդի Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԽ ԽՎ) եւ Եւրոպական Խորհրդարանի (ԵԽ) համատեղ նախաձեռնութիւնը:

Ընտրութիւնները գնահատւում են ելնելով ԵԱՀԿ-ի եւ Եւրախորհրդի նկատմամբ ստանձնած պարտաւորութիւններից, ինչպէս նաեւ ժողովրդավարական ընտրութիւնների անցկացման չափանիշներից եւ ազգային օրէնսդրութիւնից: Նախնական յայտնաբերումների եւ եզրակացութիւնների վերաբերեալ սոյն յայտարարութիւնը ներկայացւում է նախքան ընտրական գործընթացի աւարտը, այդ թւում՝ վերջնական արդիւնքների ամփոփումը եւ յայտարարումը, ընտրութիւնների օրուան յաջորդող հնարաւոր բողոքների եւ բողոքարկումների վարոյթը եւ նորընտիր Նախագահի կողմից իր պաշտօնի ստանձնումը: Ընտրութիւնների վերջնական գնահատականը մասամբ կախուած կը լինի ընտրական գործընթացի մնացած փուլերի անցկացումից, ինչպէս նաեւ ընդհանուր առմամբ ժողովրդավարական գործընթացին վերաբերող պարտաւորութիւնների իրականացման գործում ընտրութիւնների մասնակիցների ընդհանուր ներգրաւուածութիւնից: ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ը կը ներկայացնի համակողմանի ամփոփիչ զեկոյց՝ ներառեալ հնարաւոր բարեփոխումների առաջարկութիւնները, ընտրական գործընթացի աւարտից մօտ երկու ամիս անց: ԵԱՀԿ ԽՎ-ն իր զեկոյցը կը ներկայացնի 2008 թուականի փետրուարի 21-ին՝ մշտական յանձնաժողովի նիստի ժամանակ եւ ԵԽ ԽՎ-ն՝ 2008 թուականի ապրիլ ամսուայ իր Լիակազմ նիստի ժամանակ:

ԸՄԴԱ-ում ներկայացուած հաստատութիւնները շնորհակալութիւն են յայտնում Հայաստանի Հանրապետութեան իշխանութիւններին եւ յայտնում պատրաստակամութիւն շարունակել աջակցել նրանց եւ քաղաքացիական

հասարակութեանը Հայաստանում ժողովրդավարական ընտրութիւնների անցկացման հարցում:

**ՆԱԽՆԱԿԱՆ ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆՆԵՐ**

Հայաստանի Հանրապետութեան նախագահի փետրուարի 19-ի ընտրութիւնները մեծապէս անցկացուեցին ԵԱՀԿ-ի եւ Եւրախորհրդի նկատմամբ ստանձնած պարտաւորութիւնների եւ չափանիշների համաձայն: Բարձրաստիճան պետական պաշտօնեաները իրական ջանքեր են գործադրել նախորդ ընտրութիւններում նշուած թերութիւնները

վերացնելու ուղղութեամբ՝ ներառեալ օրէնսդրական դաշտը, եւ պարբերաբար յայտնել են ժողովրդավարական ընտրութիւններ անցկացնելու իրենց մտադրութեան մասին: Այդուհանդերձ, յետագայ բարելաւումներ եւ համարժէք քաղաքական կամք է պահանջւում մնացեալ մարտահրաւէրներին անդրադառնալու համար, այն է՝ պետութեան եւ կուսակցութեան գործառոյթների միջեւ յստակ տարբերակման բացակայութիւն, ընտրական գործընթացի նկատմամբ հանրութեան վստահութեան պակաս եւ ընտրութիւնում մրցողների նկատմամբ հաւասար վերաբերմունքի ապահովում: Քուէների հաշուարկի գործընթացը չնուազեցրեց ընտրութիւնների մասնակիցների ունեցած կասկածները:

ԿԸՅ-ն ապահովել է թափանցիկութեան բարձր մակարդակ՝ բացառութեամբ բողոքների քննութեանը, որոնց մեծ մասամբ անդրադառնում էին ոչ պաշտօնական նիստերում: Չնայած համապատասխանութեանը Ընտրական Օրէնսգրքին՝ այս գործընթացին ներկայ չէին թեկնածուների վստահուած անձինք, դիտորդներ եւ լրատուամիջոցներ, ինչը սասանում էր վստահութիւնը:

Ինը թեկնածուների գոյութիւնն ընտրողներին տալիս էր իրական ընտրութեան հնարաւորութիւն: Շատ թեկնածուներ ակտիւ քարոզարշաւ են ծաւալել, եւ հնարաւորութիւն են ունեցել քննարկել իրենց ծրագրերը ընտրողների հետ: Իշխանութիւնները ջանքեր են գործադրել քարոզարշաւի համար անարգել մթնոլորտ ապահովելու համար: Հանրահաւաքների, միաւորումների եւ արտայայտման ազատութիւնը ընդհանուր առմամբ յարգուել է, սակայն մի քանի դէպքերում խոչընդոտուել է քաղաքացիների՝ քարոզարշաւի միջոցառումներին մասնակցութեան իրաւունքի իրագործումը: Վարչապետը շարունակել է պաշտօնավարումը՝ նախագահական քարոզչութիւն իրականացնելիս, ինչը նրան շնորհել է քարոզչական առաւելութիւններ:

Յունուարի 21-ին մեկնարկած պաշտօնական քարոզարշաւի ընթացքում լրատուամիջոցները հիմնականում արդարացի վերաբերմունք են դրսեւորել բոլոր թեկնածուների նկատմամբ: Թեկնածուների լուսաբանումը մեծամասամբ եղել է դրական կամ չէզոք, մինչ մէկ թեկնածուի լուսաբանումը հեռարձակուող լրատուամիջոցներով եղել է մեծապէս բացասական՝ ներառեալ հանրային լրատուամիջոցներով: Լրատուական թողարկումները մեծապէս զուրկ էին գործող իշխանութիւնների նկատմամբ քննադատական տեսակէտերից:

Նախընտրական գործընթացի դրական կողմերը ներառեցին՝

- Ընդհանուր առմամբ բազմակարծութիւնը ապահովւում էր: Բարելաւուած իրաւական դաշտի ներքոյ թեկնածուների գրանցումը ներառական էր եւ առանց խտրականութեան:

- Թեկնածուներն իրենց տեսակէտները կարող էին ազատ կերպով արտայայտել հանրային հանդիպումների ժամանակ եւ ակտիւ քարոզարշաւ էին վարում:

Ընտրական մարմինները լաւ կազմակերպուած եւ պատրաստուած էին եւ իրագործում էին փոփոխուած օրէնսդրական դրոյթները:

- Համակողմանի դասընթացների ծրագիր է իրականացուել Տեղամասային Ընտրական Յանձնաժողովների (ՏԸՅ-ների) համար՝ շեշտադրելով քուէների հաշուարկի ճիշտ կարգը:

- 2007 թուականի դեկտեմբերի օրէնսդրական փոփոխութիւններով յստակեցուել է դատարանների իրաւասութիւնների տարաբաժանումը:

Լրատուամիջոցները հեռարձակել են սոցիալական գովազդներ, եւ տարբեր բարձրաստիճան պաշտօնեաներ ընդգծել են ընտրողների ընտրութեան ազատութեան, քուէի գաղտնիութեան եւ քուէաթերթիկի անվտանգութեան համար առկայ երաշխիքները, այդպիսով նպաստելով հանրութեան վստահութեանը:

- Ընտրողների ազգային ռեգիստրի որակի եւ ճշտութեան աւելացման ուղղութեամբ ջանքերի գործադրումը շարունակուել է:

- Ընտրութիւնների դիտորդական տեղական խմբերի մեծ թիւ է գրանցուել՝ հանդիսանալով ակտիւ եւ ներգրաւուած հասարակական սեկտորի ցուցանիշ:

Այդուհանդերձ, հետեւեալ հարցերը մտահոգութեան տեղիք են տուել՝

- Ընտրական յանձնաժողովների ղեկավար «եռեակների» (նախագահ, փոխնախագահ, քարտուղար) մեծամասնութեան կազմը մտահոգութիւն է առաջացրել մէկ քաղաքական շահի կողմից ընտրութիւնների կազմակերպման վրայ հնարաւոր վերահսկողութեան կապակցութեամբ:

- Նախընտրական միջավայրի լարուածութիւնը գնալով սաստկանում էր՝ ներառեալ հասարակական կարգի խախտման դէպքեր քարոզարշաւային միջոցառումների ժամանակ եւ մի քանի յարձակումներ նախընտրական գրասենեակների եւ ակտիւիստների վրայ: Մտահոգութիւն կայ, որ հանրային սեկտորի աշխատողների՝ ճնշման առումով հասարակութեան խոցելի զանգուածի ընտրութիւնը կարող է հետեւանքներ ունենալ նրանց անձնական կենսամակարդակի համար: Սա հարց էր առաջացնում քաղաքացիների՝ առանց պատժուելու վախի կարծիք ունենալու հնարաւորութեան վերաբերեալ:

- Քաղաքացիների անձնագրային տուեալների զուր հաւաքագրումը ստեղծեց հանրութեան մէջ անհանգստութիւն հնարաւոր ընտրակեղծիքների վերաբերեալ: Սա բարդացուել էր նաեւ հնարաւոր ընտրակաշառքների, քուէի գաղտնիութեան պակասութեան եւ այլ մարդկանց փոխարէն քուէարկելու մասին չհիմնաւորուած յայտարարութիւնների շարունակական բնոյթով:

- Հեռուստատեսութեան եւ Ռադիոյի Ազգային Յանձնաժողովը (ՀՌԱՀ) աղեկվատ կերպով չի իրականացրել իրաւական դրոյթներին լրատուամիջոցների համապատասխանութեան վերահսկման իր լիազօրութիւնները:

- Ընտրութիւնների օրը այցելած ընտրատեղամասերի գերակշիռ մեծամասնութիւնում տեղամասի բացումն ու քուէարկութիւնը ընդհանուր առմամբ գնահատուել են որպէս դրական: Քուէարկութիւնն ընթացել է յարաբերականօրէն հանգիստ մթնոլորտում, չնայած լարուածութիւն կամ անկարգութիւններ են նկատուել այցելած տեղամասերի մօտ 6 տոկոսում, որոնց հետեւանքով երբեմն եղել են բռնութեան դէպքեր: Ոչ լիազօրուած անձանց ներկայութիւն է գրանցուել այցելած տեղամասերի աւելի քան 10 տոկոսում: Այցելուած տեղամասերի մօտ 3 տոկոսում նկատուել է միջամտութիւն ընտրական գործընթացին՝ մեծ մասամբ թեկնածուների վստահուած անձանց կողմից:

- Բարելաւուել էր քուէի գաղտնիութիւնը, սակայն պահանջւում է յետագայ առաջընթաց, յատկապէս զինուորականների քուէարկութեան մասով: Չնայած նուազող բնոյթ ունենալուն՝ խմբակային քուէարկութիւնը շարունակում էր խնդիր հանդիսանալ: Առանձին դէպքերում լուրջ խնդիրներ են նկատուել, այդ թւում՝ քարոզելու, ընտրողների ընտրութեան վրայ ազդելու փորձեր, ընտրողների ահաբեկում, «վերահսկուող քուէարկութիւն», քուէների առք ու վաճառք եւ ընտրողների տեղափոխում մէկ տեղամասից

միւսը: Շատ փոքր թուով այցելած տեղամասերում է, որ պաշտօնական բողոքներ են արձանագրուել:

Ձայների հաշուարկի ընթացքը գնահատուել է որպէս «վատ» կամ «շատ վատ» այցելած տեղամասերի մօտ 16 տոկոսում: Նշուած խնդիրների թւում էին՝ իւրաքանչիւր թեկնածուի օգտին տրուած քուէների թուի բարձրաձայն չյայտարարելը, վաւեր քուէների ոչ հետեւողական տարբերակելը, բջջային հեռախօսների օգտագործումը եւ արդիւնքների արձանագրութիւնների հանրային ցուցադրման յաճախակի ձախողումը: ԲՄԴԱ դիտորդները զեկուցել են արձանագրութեան մէջ գրանցուող տուեալների միտումնաւոր կեղծման մասին այցելած ընտրատեղամասերից մի քանիսում:

## ՆԱԽՆԱԿԱՆ ՅԱՅՏՆԱԲԵՐՈՒՄՆԵՐ

*A1+*, 21:35

**Նախապատմութիւն**

2008 թուականի փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնները հինգերորդն էին անկախացումից ի վեր: Գործող նախագահ Ռոբերտ Քոչարեանը, պաշտօնավարել է երկու յաջորդական ժամկէտներում եւ, համաձայն Սահմանադրութեան, այլեւս չէր կարող մասնակցել ընտրութիւններին որպէս թեկնածու: Եթէ առաջին փուլում թեկնածուներից որեւէ մէկը չստանայ ձայների բացարձակ մեծամասնութիւնը, ապա առաջին փուլից 14 օր յետոյ ձայների առաւել քանակ ստացած երկու թեկնածուների միջեւ կ՚անցկացուի ընտրութիւնների երկրորդ փուլ:

2007 թուականի խորհրդարանական ընտրութիւնները գնատահուել են որպէս ընտրութիւններ, որոնք «բարելաւում ցուցաբերեցին եւ մեծամասամբ անցկացուեցին ժողովրդավարական ընտրութիւնների անցկացման համար ԵԱՀԿ եւ այլ միջազգային չափանիշների համաձայն», մինչդեռ 2003 թուականի նախագահական ընտրութիւնները չեն համապատասխանել այս չափանիշներին:

Այս ընտրութիւնների շրջանում մի շարք առիթներով բարձրաստիճան պետական պաշտօնեաներ յայտնել էին ԵԱՀԿ եւ Եւրոպայի Խորհրդի նկատմամբ ստանձնած պարտաւորութիւններին ու չափանիշներին համապատասխան ժողովրդավարական ընտրութիւններ անցկացնելու իրենց մտադրութեան մասին: Համաձայն իշխանութիւնների՝ այս մտադրութիւնը նաեւ փոխանցուել էր պետական կառավարման ստորին օղակներին:

Նախընտրական շրջանում նկատելի էր ընտրական գործընթացի նկատմամբ վստահութեան պակաս: Արւում էին լայնատարած յայտարարութիւններ, այդ թւում նաեւ «քուէների գնման», բազմակի քուէարկութեան հնարաւորութիւնների, յաւելեալ քուէաթերթիկների տպագրման, ընտրակեղծիքներ կատարելու համար անձը հաստատող փաստաթղթերի թողարկման եւ ընտրողներին ստիպելու մասին: Դրանց մեծ մասը հնարաւոր չեղաւ հիմնաւորել եւ, որոշ դէպքերում, դրանք չափազանցուած էին: Հանրութեան վստահութիւնը բարձրացնելու նպատակով պետական պաշտօնեաների (այդ թւում Մարդու Իրաւունքների պաշտպանի, Գլխաւոր Դատախազի եւ ԿԸՅ նախագահի կողմից) եւ ընտրութիւնների մասնակիցների կողմից արուել են մի շարք հանրային յայտարարութիւններ, որոնցում ընտրողները վստահեցւում էին ընտրութեան ազատութեան, քուէի գաղտնիութեան, ընտրախախտումների համար նախատեսուած իրական պատիժների եւ ընտրական գործընթացի արդարացիութեան մասին:

Վարչապետ Սարգսեանի թեկնածութիւնը նախագահական ընտրութիւններում փետրուարի 16-ի հեռուստատեսային հարցազրոյցում արժանացել է Նախագահ Ռոբերտ Քոչարեանի հաւաստմանը, ինչպէս նաեւ նրա Հանրապետական Կուսակցութեան կոալիցիոն գործընկեր Բարգաւաճ Հայաստանի աջակցութեանը: Ընդդիմադիր Ժառանգութիւն կուսակցութիւնը սատարում էր Լեւոն Տէր-Պետրոսեանի թեկնածութեանը:

**Իրաւական դաշտը**

Հայաստանի Սահմանադրութիւնը երաշխաւորում է քաղաքացիական եւ քաղաքական իրաւունքներ եւ հիմնարար ազատութիւններ: Ընտրական Օրէնսգիրքը՝ բարեխիղճ իրագործման դէպքում լաւ հիմքեր է ապահովում ժողովրդավարական ընտրութիւնների անցկացման համար: Որոշ թոյլ կողմեր, այնուամենայնիւ, դեռ մնում են: 2007 թուականի նոյեմբեր/դեկտեմբեր ամիսներին արուած օրէնսդրական փոփոխութիւնները անդրադարձել են նախկինում ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ի եւ Եւրախորհրդի Վենետիկեան յանձնաժողովի կողմից արուած մի շարք առաջարկութիւններին:

Ամենանշանակալի փոփոխութիւններից են՝ ինքնաառաջադրուելու իրաւունքի ներմուծումը, հնարաւոր թեկնածուների կողմից աջակցական ստորագրութիւնների հաւաքման անհրաժեշտութեան վերացումը, թեկնածուներից պահանջուող գրաւի չափի աւելացումը մինչեւ 8 միլիոն դրամ (մօտ 17,000 եւրօ), քաղաքացիներին «փաստացի» բնակութեան վայրում՝ հաշուառման վայրի փոխարէն քուէարկելու հնարաւորութեան ընձեռումը, քուէարկութեան ժամանակ ընտրողների անձը հաստատող փաստաթղթի ստուգումն ու կնքումը (բազմակի քուէարկութիւնը կանխելու նպատակով) եւ մէկ անձի կողմից միայն մէկ այլ ընտրողին օժանդակութիւն ցոյց տալու հնարաւորութիւնը:

**Ընտրութիւնների կազմակերպումը**

Ընտրութիւնները կազմակերպուել են ԿԸՅ-ի, 41 Ընտրատարածքային Ընտրական Յանձնաժողովների (ԸԸՀ) ու 1,923 Տեղամասային Ընտրական Յանձնաժողովների (ՏԸՅ) կողմից: ԿԸՅ-ն եւ ԸԸՀ-ները հիմնական մարմիններ են, մինչդեռ ՏԸՅ-ները նշանակւում են ժամանակաւորապէս: ԿԸՅ-ն ունի ութ անդամ, որից հինգը նշանակւում են Ազգային Ժողովում ներկայացուած կուսակցութիւնների խմբակցութիւնների կողմից, մէկ անդամ նշանակւում է նախագահի կողմից, իսկ ՀՀ դատարանների նախագահների խորհուրդը նշանակում է երկու «դատական ծառայող»: ԿԸՅ իւրաքանչիւր անդամ առաջադրել է մէկ ԸԸՀ անդամ, որն, իր հերթին, առաջադրել է մէկական անդամ իւրաքանչիւր ՏԸՅ-ում (այսուհետ՝ «առաջադրման շղթայ»): Իւրաքանչիւր յանձնաժողով ունի նախագահ, փոխնախագահ եւ քարտուղար («եռեակը»), ովքեր ընտրուել են իւրաքանչիւր յանձնաժողովի առաջին նիստի ժամանակ: Համաձայն օրէնքի ընտրական յանձնաժողովների բոլոր անդամները պէտք է որակաւորում անցած լինեն:

ԸԸՀ եռեակների եւ ՏԸՅ նախագահների գերակշիռ մեծամասնութիւնն ընտրուել է Հանրապետական Կուսակցութեան, Բարգաւաճ Հայաստանի եւ Նախագահի առաջադրման շղթաներով նշանակուած անձանցից: Սա մտահոգութիւն է առաջացնում մէկ քաղաքական շահի կողմից ընտրութիւնների կազմակերպման վրայ հնարաւոր վերահսկողութեան կապակցութեամբ:

ԿԸՅ-ն եւ ԸԸՀ-ների մեծ մասը լաւ էին կազմակերպուած եւ նախապատրաստուած ընտրութիւնների անցկացման համար: Նրանց նախապատրաստական աշխատանքները կատարուել են օրէնքով սահմանուած ժամկէտներում: Համակողմանի ջանքեր են

գործադրուել մինչ ընտրութիւնները ՏԸՅ անդամներին ուսուցանելու ուղղութեամբ, կազմակերպուել են մօտ 164 ՏԸՅ դասընթացներ: ՏԸՅ եռեակները յաւելեալ դասընթացներ են անցել քուէների հաշուարկի եւ արձանագրութիւնների կազմման ընթացակարգերի մասին: ԿԸՅ-ի եւ ոստիկանութեան, որ պատասխանատու է ընտրողների գրանցման համար, նախաձեռնութեամբ կազմակերպուել էր սոցիալական գովազդների հեռարձակում հեռուստատեսութեամբ:

ԿԸՅ-ն ընտրական գործընթացը կազմակերպել է, ընդհանուր առմամբ, թափանցիկ կերպով, ի թիւս այլոց, թողարկելով որոշումներ եւ տեղեկատուութիւն, անցկացնելով մամլոյ ասուլիսներ եւ կազմակերպելով արդիւնքների հրապարակումը ՏԸՅ մակարդակով: ԿԸՅ-ն միայն մի քանի նիստ է ունեցել, բայց դրանց մասնակցել են դիտորդներ, թեկնածուների ներկայացուցիչներ եւ լրատուամիջոցներ: Այն ընդունել է Ընտրական Օրէնսգիրքը համալրող բազմաթիւ որոշումներ՝ ներառեալ քուէաթերթիկի անվտանգութիւնն ապահովող լրացուցիչ գործօնների ներմուծման մասին որոշումը:

**Թեկնածուների գրանցումը**

Բոլոր ինը նախագահական հնարաւոր թեկնածուները գրանցուեցին իրաւական յստակ դրոյթների համաձայն, որոնք կիրառուեցին ներառական կերպով եւ առանց խտրականութեան:

Թեկնածուների ընտրանին հնարաւորութիւն էր ընձեռում քաղաքական բարձր մրցակցութիւն ունենալու համար եւ ընտրողներին տալիս էր իրական ընտրութեան տարբերակներ: Թեկնածուներն էին՝ Արթուր Բաղդասարեան (Ազգային Ժողովի նախկին խօսնակ եւ Օրինաց Երկիր կուսակցութեան առաջնորդ), Արտաշէս Գեղամեան (Ազգային Միաբանութիւն Կուսակցութեան առաջնորդ), Տիգրան Կարապետեան (Ժողովրդական Կուսակցութեան առաջնորդ), Արամ Յարութիւնեան (Ազգային Համաձայնութիւն կուսակցութեան առաջնորդ), Վահան Յովհաննիսեան (Խորհրդարանի փոխխօսնակ եւ Հայ Յեղափոխական Դաշնակցութիւն կուսակցութեան թեկնածու), Վազգէն Մանուկեան (նախկին վարչապետ եւ Ազգային Ժողովրդավարական կուսակցութեան առաջնորդ), Արման Մելիքեան (ինքնաառաջադրուած թեկնածու), Սերժ Սարգսեան (գործող վարչապետ եւ իշխող Հանրապետական Կուսակցութեան թեկնածու) եւ Լեւոն Տէր-Պետրոսեան (նախկին Նախագահ եւ ինքնաառաջադրուած թեկնածու):

Ընտրական Օրէնսգիրքը իւրաքանչիւր թեկնածուի իրաւունք է տալիս նշանակել վստահուած անձանց եւ նրանց շնորհում է իրաւունքների լայն բազմազանութիւն՝ այդ թւում նաեւ ընտրական յանձնաժողովների որոշումների բողոքարկման իրաւունքը: Թեկնածուներից ոմանք օգտուել են այս դրոյթից եւ գրանցել մեծաթիւ վստահուած անձանց:

**Ընտրողների գրանցումը**

Համաձայն օրէնքի՝ ոստիկանութիւնն է (անձնագրերի եւ վիզաների վարչութիւնը՝ ՕՎԻՌ) պատասխանատու Ընտրողների Ազգային Ռեգիստրի վարման համար, որը թարմացւում է շարունակական հիմունքներով: Շարունակում էին գործադրուել ջանքեր ընտրացուցակների ճշտութեան եւ որակի բարելաւման ուղղութեամբ: Կիրառուել են մի շարք միջոցներ, ներառեալ ոստիկանութեան կողմից դռնից դուռ ճշգրտման այցերը, ԿԸՅ կայքում եւ ընտրական տեղամասերում հանրային հրապարակումը, ինչպէս նաեւ ընտրացուցակում իրենց ներգրաւումը ստուգելու համար գործող թէժ գիծը: Ըստ

փետրուարի 17-ի տուեալների՝ գրանցուել էին 2,328,320 ընտրող: ՕՎԻՌ-ի համաձայն՝ փետրուարի 18-ի դրութեամբ 19,024 անձինք են գրանցուել իրենց փաստացի բնակութեան հասցէում քուէարկելու համար: Համաձայն ԿԸՅ պաշտօնական կայքում հրապարակուած տուեալների՝ իրենց փաստացի բնակութեան հասցէում քուէարկման համար գրանցուած անձինք հեռացուել են ընտրացուցակից, որում գրանցուած են եղել իրենց հաշուառման հասցէով:

**Նախընտրական քարոզարշաւ**

Թեկնածուների մեծ մասը ակտիւ քարոզարշաւ էին իրականացնում, սակայն միայն պարոն Յովհաննիսեանը, պարոն Սարգսեանն ու պարոն Տէր-Պետրոսեանն էին, որ իրականացնում էին իրենց քարոզարշաւը ամբողջ երկրով մէկ: Ընդհանուր առմամբ, թեկնածուները հնարաւորութիւն ունէին արտայայտել իրենց քարոզարշաւի ուղերձը առանց միջամտութեան, եւ տեղաշարժման ու հաւաքների ազատութիւնը հիմնականում չի խախտուել: Սակայն, գրանցուել է վեց դէպք, երբ ստեղծուել են անհիմն խոչընդոտներ քարոզչական միջոցառումներին քաղաքացիների մասնակցելուն՝ երբեմն գիւղապետերի, տրանսպորտային ընկերութիւնների սեփականատէրերի կամ ոստիկանների հրամանով: Այս դէպքերը կապուած էին գործող իշխանութիւններին ընդդիմադիր երկու թեկնածուների՝ պարոն Բաղդասարեանի եւ պարոն Տէր-Պետրոսեանի քարոզչական միջոցառումների հետ:

Որպէս քարոզչական միջոց, թեկնածուները օգտագործում էին պաստառներ եւ գովազդային Վահանակներ՝ պարոն Սարգսեանի քարոզչական նիւթերի մեծ տեսանելիութեամբ Երեւանում եւ մարզային կենտրոնների մեծ մասում:

Օրէնքով, համայնքային ղեկավարները պարտաւոր էին յատկացնել իւրաքանչիւր տեղամասի տարածքում առնուազն մէկ տեղ, որտեղ թեկնածուները կարող էին փակցնել քարոզչական նիւթեր: Օրէնքի այս դրոյթը ոչ հետեւողական կերպով է կիրառուել՝ որոշ քաղաքապետեր յատկացրել էին այդ տեղերը, իսկ ոմանք՝ ոչ: Պաստառները յաճախ փակցւում էին «չյատկացուած» տեղերում, եւ, ի տարբերութիւն 2007 թ. խորհրդարանական ընտրութիւնների, պարբերաբար հեռացւում էին անյայտ անձանց կողմից: Պարոն Սարգսեանի քարոզչական նիւթերը նոյնպէս փակցւում էին չյատկացուած տեղերում՝ հանրային շէնքերի ներսում եւ դրանց վրայ եւ չէին հեռացւում:

Քարոզարշաւի ընթացքի հետ քարոզչութեան լեզուն դարձաւ աւելի բարկ: Լեւոն Տէր-Պետրոսեանը յաճախ ուղղում էր նսեմացնող արտայայտութիւններ Սերժ Սարգսեանի եւ Ռոբերտ Քոչարեանի հասցէին, իսկ վերջիններս սուր քննադատում էին պարոն Տէր-Պետրոսեանի նախագահութիւնը ու նրա ընթացիկ քարոզարշաւը: Նախընտրական միջավայրի աճող լարուածութիւնն աւելացուեց պարոն Տէր-Պետրոսեանի քարոզարշաւի չորս ակտիւիստների նկատմամբ բռնութեան եւ երեք թեկնածուների (պարոն Բաղդասարեանի, պարոն Սարգսեանի եւ պարոն Տէր-Պետրոսեանի) նախընտրական շտաբերի վրայ ութ յարձակումների դէպքերով:

Իրական դաշտը ապահովում է հաւասար քարոզչութեան հնարաւորութիւններ: Այն արգելում է «պաշտօնական դիրքի ցանկացած չարաշահումը ընտրութիւնների ժամանակ առաւելութիւն ստանալու համար»: Այն արգելում է ազգային եւ տեղական ինքնակառավարման պաշտօնեաներին իրենց դիրքն օգտագործել քաղաքացիների կամքի ազատ արտայայտութեան վրայ ազդեցութիւն գործելու համար անհաւասար

պայմաններ ստեղծելով կամ կողմնակալութիւն ցուցաբերելով:

Այն չի սահմանում, թէ երբ եւ ինչ պայմաններով կարող են պետական եւ տեղական ինքնակառավարման պաշտօնեաները մասնակցել թեկնածուի քարոզչութեանը:

Տեղական ինքնակառավարման մարմինների պաշտօնեաների կողմից մէկ թեկնածուի նկատմամբ աւելի բարենպաստ մօտեցումը բերեց պետութեան եւ քաղաքական կուսակցութեան գործառոյթների միջեւ բաժանման աղօտացմանը: Սա, օրէնքի մէջ պարզութեան պակասութեան հետ մէկտեղ, ստեղծեց փաստացի անհաւասար քարոզչութեան պայմաններ: Քաղաքի համայնքների ղեկավարներից եւ քաղաքապետերից շատերը ակտիւ քարոզում էին պարոն Սարգսեանի օգտին: Մինչ նրանցից ոմանք արձակուրդ էին վերցրել, միւսները դա չէին արել: Հանրապետական Կուսակցութիւնը որպէս նախընտրական շտաբեր օգտագործում էր մի շարք կուսակցութեան գրասենեակներ, որոնք գտնւում էին տեղական ինքնակառավարման շէնքերում:

Պարոն Սարգսեանի քարոզչական միջոցառումներից մէկի ընթացքում, ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ ԸԴԱ դիտորդները ականատես են եղել համազգեստով ոստիկանների, որոնք բաժանում էին Հանրապետական Կուսակցութեան դրօշներ: Մէկ այլ միջոցառման ժամանակ, պարոն Սարգսեանի ոստիկանական կորտէժը կրում էր նմանատիպ դրօշներ: Հակասութիւն էր առաջանում նրա վերաբերեալ, որ Սերժ Սարգսեանը ակտիւօրէն քարոզում էր՝ շարունակելով գործել որպէս վարչապետ: ԿԸՅ-ն պարզաբանեց, որ վարչապետը կարող է քարոզչութիւն իրականացնել առանց պաշտօնը թողնելու: Պարոն Սարգսեանը իր պաշտօնական դիրքի շնորհիւ ստացաւ լրացուցիչ լուսաբանում եւ քարոզարշաւի առաւելութիւն:

Մտահոգութիւն կայ, որ հանրային սեկտորի աշխատողների՝ ճնշման առումով հասարակութեան խոցելի զանգուածի ընտրութիւնը կարող է հետեւանքներ ունենալ նրանց անձնական կենսամակարդակի համար: Սա հարց էր առաջացնում քաղաքացիների՝ առանց պատժուելու վախի կարծիք ունենալու հնարաւորութեան վերաբերեալ: ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ ԸԴԱ-ն ստացել է երեք անմիջական վկայութիւն հանրային աշխատողների կողմից, ում նրանց վերադասները կարգադրել էին մասնակցել պարոն Սարգսեանի նախընտրական միջոցառումներին: Եւս երկու դէպքում տեղական ինքնակառավարման մարմինների աշխատակիցներին ասել էին, որ նրանք կարող են թողնել աշխատանքը, որպէսզի մասնակցեն նրա հանրահաւաքներին: Հանրային սեկտորի եւ տեղական ինքնակառավարման աշխատողները, յատկապէս դպրոցական ուսուցիչները, մեծ թւով մասնակցել են պարոն Սարգսեանի հանրահաւաքներին՝ յաճախ աշխատանքային ժամերին:

Քաղաքացիների անձնագրային տուեալների զուր հաւաքագրումը ստեղծեց հանրութեան մէջ անհանգստութիւն հնարաւոր ընտրակեղծիքների վերաբերեալ: Մէկ դէպքում, ուսուցիչները խնդրել էին դպրոցականներին դպրոց բերել իրենց ծնողների անձնագրային տուեալները: Մէկ այլ դէպքում, նման տուեալներ հաւաքագրելու համար նախատեսուած թերթիկը պարունակում էր «Հանրապետական Կուսակցութիւն» անուանմամբ աղիւսակ, ինչը թոյլ է տալիս ենթադրել, որ հաւաքագրուող տուեալները օգտագործուել են այդ կուսակցութեան կարիքների համար: Հնարաւոր ընտրակաշառքների, քուէի գաղտնիութեան պակասութեան եւ այլ մարդկանց փոխարէն քուէարկելու մասին չհիմնաւորուած յայտարարութիւնները շարունակական բնոյթ էին կրում քարոզարշաւի ընթացքում եւ

ազդում էին հանրային վստահութեան վրայ:

**Լրատուամիջոցները**

Հեռուստատեսութիւնը տեղեկատուութեան ամենաազդեցիկ աղբիւրն է հանդիսանում, սակայն լրատուամիջոցների ազատութեան գծով ԵԱՀԿ ներկայացուցիչը նշել է, որ հեռարձակման բնագաւառում սահմանափակ բազմակարծութիւնը շարունակում է մեծ խնդիր հանդիսանալ: Մինչ կարեւոր առաջընթաց է գրանցուել օրէնսդրութեան բարելաւման ուղղութեամբ, 2007 թուականի դեկտեմբերին Եւրոպայի խորհրդի Գլխաւոր Քարտուղարը նշել է, որ «հայկական լրատուամիջոցների ներկայ իրավիճակը ընդհանուր առմամբ չի համապատասխանում Եւրոպայի խորհուրդի չափանիշներին»:

Գրաքննութիւնն արգելւում է օրէնքով: Այդուհանդերձ, Քրէական Օրէնսգիրքը պարունակում է դրոյթներ, որոնք ազատազրկում կամ տուգանք են նախատեսում զրպարտութեան եւ վիրաւորանքների համար: Համաձայն Ընտրական Օրէնսգրքի, հանրային եւ մասնաւոր լրատուամիջոցները պարտաւոր են «անկողմնակալ եւ գնահատականներից զերծ» տեղեկատուութիւն ներկայացնել թեկնածուների քարոզարշաւների մասին, ինչպէս նաեւ «հաւասար պայմաններ երաշխաւորել զանգուածային լրատուամիջոցների մատչելիութեան առումով»:

Քարոզարշաւի պաշտօնական ժամանակահատուածում ընտրութիւններին առնչուող միջոցառումների լայնածաւալ լուսաբանում էր իրականացւում, այդ թւում նաեւ նախագահի ելոյթները, հեռարձակուող լրատուամիջոցների նորութիւնների, անվճար եւ վճարովի գովազդների եւ բազմապիսի թոք շոուների միջոցով: Լեւոն Տէր-Պետրոսեանը հրաժարուել է յայտնուել վերջիններիս եթերում, իսկ Սերժ Սարգսեանը մասնակցութեան իր իրաւունքն իրականացրել է միայն մէկ անգամ: Թեկնածուների միջեւ հեռուստաբանավէճեր տեղի չեն ունեցել:

Թեկնածուները կարող էին իրենց ուղերձները փոխանցել *Հ1*-ով (մինչեւ 60 րոպէ իւրաքանչիւր թեկնածուի համար) եւ *Հանրային ռադիոյով* (մինչեւ 120 րոպէ իւրաքանչիւր թեկնածուի համար) տրամադրուող անվճար եթերաժամում: Այս առումով հանրային լրատուամիջոցները համապատասխանել են իրենց իրաւական պարտաւորութիւններին, այդուհանդերձ Հանրային Հեռուստատեսութիւնը անվճար եւ վճարովի հեռարձակումն իրականացրել է ժամը 17:15-ից սկսած, ինչը կրկին անգամ դուրս է ամենամեծ հեռուստալսարանն ապահովող հեռուստաժամից (primetime-ից)՝ չնայած նախկին քննադատութեանը:

*Հ1*-ը ողջամիտ արդարացիութիւն է ցուցաբերել բոլոր ինը թեկնածուների լուսաբանմանը յատկացուած ժամանակի առումով: Թեկնածուները ստացել են բոլոր ինը թեկնածուներին յատկացուած ընդհանուր ժամանակի հետեւեալ տոկոսները՝ 21 տոկոս (պարոն Տէր-Պետրոսեան), 19 տոկոս (պարոն Սարգսեան), 14 եւ 13 տոկոս (պարոն Բաղդասարեան եւ պարոն Գեղամեան): Մինչ պարոն Տէր-Պետրոսեանի լուսաբանման տոնը հիմնականում պարունակում էր բացասական ակնարկներ, միւս ութ թեկնածուները ներկայացւում էին ընդհանուր առմամբ դրական կամ չէզոք կերպով:

Մոնիթորինգի ենթարկուած վեց մասնաւոր հեռուստաալիքներից հինգը Սերժ Սարգսեանին յատկացրել են ամենամեծ ծաւալի լուսաբանումը՝ հիմնականում նախագահական թեկնածուի կարգավիճակում: Մասնաւորապէս, *Արմենիա* հեռուստատեսութիւնը նրան է յատկացրել որեւէ այլ թեկնածուի լուսաբանման ծաւալի մօտ

կրկնակի չափը: Նրա լուսաբանումն աւելի դրական էր, քան միւս թեկնածուներինը, եւ լուրերի հեռարձակումները հազուադէպ էին թողարկում նրան կամ կառավարութեան քաղաքականութեանն ուղղուած քննադատական ակնարկներ: Նրա հանրահաւաքները հետեւողական կերպով ցուցադրւում էին մէկօրեայ ուշացումով եւ պարունակում էին նմանատիպ կադրեր: Սա ստեղծում էր տպաւորութիւն, որ կիրառւում էին յատուկ խմբագրական քաղաքականութիւններ եւ հարցերի տեղիք տալիս լրատուամիջոցների խմբագրական անկախութեան վերաբերեալ: Մոնիթորինգի ենթարկուած հեռուստա-ալիքները մեծ առումով զերծ էին մնում միւս ութ թեկնածուներից եօթի հասցէին քննադատական ակնարկներ անելուց:

Թեկնածուներից մէկը՝ Լեւոն Տէր-Պետրոսեանը, մոնիթորինգի ենթարկուած հեռուստակայաններով ստացել է լայնատարած բացասական լուսաբանում, յատկապէս *Հ1*, *Հ2*, *ԱԼՄ*, *Կենտրոն* եւ *Երկիր մեդիա* հեռուստատեսութիւնների կողմից: Մասամբ, այս լուսաբանումն առաջացաւ, քանզի Նախագահ Քոչարեանը եւ թեկնածուներից ոմանք՝ մասնաւորապէս Արտաշէս Գեղամեանը, յաճախակի քննադատում էին նրան: Ի հակառակ դրան, գրեթէ բոլոր հեռարձակուող լրատուամիջոցներն իրենց լրատուական հաղորդումներում անտեսում էին պարոն Տէր-Պետրոսեանի՝ գործող իշխանութիւններին քննադատող մեկնաբանութիւնները: *Հ1*-ը, իր լրատուական թողարկումներում ցուցադրում էր նրա քարոզարշաւի ուղերձների ընտրովի լուսաբանում՝ խեղաթիւրուած կադրերով, ստեղծելով անտարբեր եւ փոքրաթիւ քարոզարշաւի լսարանների տպաւորութիւն: Պարոն Տէր-Պետրոսեանի կողմից անվճար եւ վճարովի եթերաժամում ցուցադրուած կադրերը պատկերում էին ոգեշնչուած աջակցութիւն՝ մեծաթիւ մասնակցութեամբ հանրահաւաքների ժամանակ: Մինչ լրատուամիջոցները ջանքեր էին գործադրում բոլոր թեկնածուներին արդարացիօրէն վերաբերուելու ուղղութեամբ, այս գործօնները որոշակի մտահոգութիւնների տեղիք են տալիս լրատուամիջոցների՝ քաղաքացիներին լաւ իրազեկուած ընտրութիւն կատարելու համար անկողմնակալ տեղեկատուութիւն տրամադրելու ԵԱՀԿ պարտաւորութեան հանդէպ լիակատար իրականացման առումով:

Տպագիր մամուլն աւելի բազմակարծ եւ անկախ է, բայց սահմանափակ դեր է խաղում հանրութեան իրազեկման գործում՝ փոքր տպաքանակի պատճառով:

Միւս թեկնածուներին յատկացուել է ժամանակի հետեւեալ չափաբաժինը՝ Վահան Յովհաննիսեան եւ պարոն Մանուկեան՝ 11 տոկոս, Արամ Յարութիւնեան եւ Տիգրան Կարապետեան՝ 4 տոկոս ու Արման Մելիքեան՝ 3 տոկոս:

Պետական ֆինանսաւորում ունեցող Հայաստանի Հանրապետութիւնը պարոն Սարգսեանին տրամադրել է բոլոր թեկնածուներին յատկացուած մակերեսի 45 տոկոսը, որտեղ նա ներկայացուել է ընդհանուր առմամբ դրական լոյսի ներքոյ: Մասնաւոր սեփականութիւն հանդիսացող *Հայկական ժամանակը* Լեւոն Տէր-Պետրոսեանին է յատկացրել թեկնածուներին տրամադրուած տպագրական մակերեսի 56 տոկոսը՝ հիմնականում դրական լուսաբանմամբ:

**Դիմումներ եւ բողոքներ**

Վերջերս արուած օրէնքի փոփոխութիւնները պարզեցրել են դիմումներին եւ բողոքներին վերաբերող դրոյթները եւ դրանով լուծել 2007 թ. ընտրութիւններից յետոյ Սահմանադրական Դատարանի կողմից բարձրացուած իրաւասութեան հետ կապուած

հարցերը: Փոփոխուած օրէնսդրութիւնը նախատեսում է, որ նորաստեղծ Վարչական Դատարանները, եւ ոչ թէ Առաջին Ատեանի Դատարաններն են, պատասխանատու ընտրութիւններին վերաբերող բողոքների եւ բողոքարկումների քննութեան համար, բացառութեամբ ընտրացուցակներին առնչուող դէպքերի: Այսպիսով, քաղաքացիները վարչական որոշումների, ընտրական խախտումների եւ իրենց իրաւունքների սահմանափակումների դէմ կարող են իրաւական պաշտպանութիւն փնտրել մի շարք մարմիններում: Սակայն, Ընտրական Օրէնսգիրքը յստակ չի սահմանում, որ ընտրական յանձնաժողովները պէտք է պաշտօնական որոշումներ ընդունեն ստացուած բողոքների վերաբերեալ: Նրանից նոյնպէս պարզ չէ, թէ որ ընտրական իրաւախախտումներն են քրէական, որոնք վարչական, եւ, հետեւաբար, թէ որ դատարանն ունի դրանք քննելու իրաւասութիւն:

Չնայած, որ ԿԸՅ-ն պատասխանատու է հետեւել քարոզարշաւի համապատասխանութեանը դրան վերաբերող դրոյթներին, Հեռուստատեսութեան եւ Ռադիոյի Ազգային Յանձնաժողովը (ՀՌԱՀ) պէտք է հետեւի ԶԼՄ-ների համապատասխանութեանը: Գլխաւոր Դատախազը պատասխանատու է Քրէական Օրէնսգրքով նախատեսուած ընտրական խախտումները քննելու համար: Գլխաւոր Դատախազութիւնում ստեղծուել է աշխատանքային խումբ ընտրութիւններին առնչուող քրէական բողոքներին հետեւելու համար: Նրանք ստացել են ընդհանուր առմամբ 61 բողոք, որոնցից 22-ը ստացուել են լրատուամիջոցների նիւթերի վերանայումից, իսկ մնացածը՝ քաղաքացիներից, թեկնածուներից, ԿԸՅ-ից ու կուսակցութիւններից: 19 գործ գտնւում են քրէական հետաքննութեան մէջ:

Նախընտրական ժամանակաշրջանում ԿԸՅ-ն ստացել է 55 բողոք՝ դրանց մեծ մասը Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանցից: Հիմնականում ԿԸՅ-ը չի քննարկել բողոքներ իր պաշտօնական նիստերում, սակայն, փետրուարի 17-ին սեղմ ժամկէտում հրաւիրել է արտահերթ նիստ, որում քննարկել է բողոքների վերաբերեալ որոշումների նախագծերը: Մէկ որոշումով, ԿԸՅ-ն որոշեց, որ 25 բողոքներից ոչ մէկը չէր պարունակում քարոզարշաւի ընթացակարգերի խախտում: Տեղի ունեցաւ քիչ քննարկում կամ յղումներ բողոքներում նշուած փաստերին, եւ բողոքատուները ներկայ չէին: ԿԸՅ-ն նշեց, որ փորձել է տեղեկացնել բողոքատուներին: Սա հարցի տակ է դնում բողոքատուի համար այս իրաւական պաշտպանութեան արդիւնաւէտութիւնը:

Սահմանադրական Դատարանը քննել է թեկնածուների դիմումներով երկու գործ: Առաջինում այն որոշեց, որ Արման Մելիքեանը, որպէս նախագահի թեկնածու իրաւունք չունէր սահմանադրական դրոյթների հիման վրայ դիմել Հայաստանից դուրս քուէարկութիւն չլինելու մասին դրոյթի սահմանադրականութիւնը հարցի տակ դնելուն համարժէք բողոքով: Փետրուարի 11-ին դատարանը քննեց երկրորդ գործը՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի բողոքի հիման վրայ: Թեկնածուն պնդում էր, որ կանգնած է ,անյաղթահարելի խոչընդոտների առաջ, իր խօսքերով՝ հանրային հեռուստատեսութեան կողմից անհաւասար պայմանների տրամադրման պատճառով: Դատարանը գտաւ, որ այդ հանգամանքը Սահմանադրութեամբ նախատեսուած իմաստով «անյաղթահարելի խոչընդոտ» չի հանդիսանում, սակայն նշեց, որ այն կարող էր ընկնել այլ մարմինների իրաւասութեան ներքոյ:

Փետրուարի 6-ին Լեւոն Տէր-Պետրոսեանը բողոք ներկայացրեց ԿԸՅ՝ իր ընտրական

քարոզարշաւի *Հ1*-ի կողմից լուսաբանման վերաբերեալ, որում խնդրում էր հեռուստաալիքին բոլոր թեկնածուներին տալ հաւասար հնարաւորութիւններ: ԿԸՅ-ն բողոքը փոխանցել է ՀՌԱՀ-ին, որը փետրուարի 11-ին ֆորմալ հիմունքներով մերժել է բողոքը, նշելով, որ տրամադրուած ապացոյցները վերաբերում էին միայն մինչեւ քարոզարշաւի մեկնարկն ընկած ժամանակահատուածին:

**Կանանց մասնակցութիւնը**

Նախագահական թեկնածուներից ոչ մէկը կին չէ: Արթուր Բաղդասարեանի քարոզարշաւը ղեկավարւում էր կնոջ կողմից: Ազգային Ժողովի տասներկու անդամ եւ մէկ նախարար կին են: Չնայած որ ԿԸՅ-ի ութ անդամներից երկուսը կին են, ԸԸՀ-ների անդամներից միայն 36-ն են կին (մօտ 18 տոկոս): Վեց ԸԸՀ-ներ ամբողջովին բաղկացած են տղամարդկանցից եւ միայն երեք ԸԸՀ նախագահն են կին: Այցելած տեղամասերի 75 տոկոսում ՏԸՅ-ների նախագահները մեծ մասամբ տղամարդիկ էին եւ միայն իւրաքանչիւր չորս նախագահներից մէկն էր կին:

**Տեղական եւ միջազգային դիտորդներ**

Օրէնքը նախատեսում է միջազգային եւ տեղական ընտրութիւնների դիտորդներ: ԿԸՅ-ն հաւատարմագրել էր դիտորդներ վեց միջազգային կազմակերպութիւններից եւ աւելի քան 12,000 դիտորդ 39 հայկական ՀԿ-ներից, ներառեալ Ընտրութիւնը Քոնն է (որը նախատեսում էր գործուղել մօտ 4,000 դիտորդ) եւ Ազատ Հասարակութեան Ինստիտուտ (որը նախատեսում էր գործուղել մօտ 1,600 դիտորդ) ՀԿ-ները: Տեղական դիտորդները ներկայ էին այցելած ընտրական տեղամասերի 85 տոկոսում:

**Ընտրութիւնների օրը եւ քուէների հաշուարկը**

ԿԸՅ-ն յայտարարել է ընտրողների մասնակցութեան մօտ 69 տոկոս: Այցելած ընտրատեղամասերի գերակշիռ մեծամասնութիւնում տեղամասի բացումն ու քուէարկութիւնը (97 եւ 95 տոկոս համապատասխանաբար) ընդհանուր առմամբ գնահատուել են որպէս դրական: Այս թուերը գրեթէ նոյնն են 2007 թուականին գրանցուածին:

Քուէարկութիւնն ընթացել է յարաբերականօրէն հանգիստ մթնոլորտում, չնայած լարուածութիւն կամ անկարգութիւններ են նկատուել այցելած տեղամասերի աւելի քան 6 տոկոսում, որոնց պատճառ են, մասամբ, կարծես հանդիսացել վիճաբանութիւնները վստահուած անձանց եւ ՏԸՅ անդամների միջեւ, ինչպէս նաեւ կուտակումները (15 տոկոս): Մի քանի առանձին բռնութեան դէպքեր են զեկուցուել, այդ թւում՝ կրակոցներ Կոտայքի մարզի 27/30 տեղամասի տարածքում, որտեղ ներկայ էին ԸՄԴԱ դիտորդները: Դիտորդները ստացել են երկու վստահուած անձանց անմիջական վկայութիւնները, որոնք յարձակման են ենթարկուել Կոտայքի մարզի 28/07 տեղամասում եւ Աւան թաղամասում (Երեւան) եւ չորս ակտիւիստներից՝ Աբովեանից եւ Դաւիթաշէնից, որոնք պնդում էին, որ յարձակման են ենթարկուել եւ կրել ֆիզիկական վնասուածքներ: Երեւանի 07/05 տեղամասից անյայտ անձինք բռնի կերպով դուրս են հանել ՏԸՅ երեք անդամների: Ոչ լիազօրուած անձինք են նկատուել այցելած տեղամասերի աւելի քան 10 տոկոսում, այդ թւում նաեւ ոստիկանութեան աշխատակիցներ (մօտ 6 տոկոս) եւ տեղական կառավարման պաշտօնեաներ: Այցելած տեղամասերի մօտ 3 տոկոսում նկատուել է միջամտութիւն ընտրական գործընթացին՝ հիմնականում թեկնածուների վստահուած անձանց կողմից:

2007 թուականի ընտրութիւնների համեմատութեամբ ընդհանուր առմամբ բարելաւուել էր քուէի գաղտնիութիւնը, մասամբ քուէախցիկների տեղակայման նոր կանոննե-

րի արդիւնքում: Յետագայ առաջընթաց է պահանջւում յատկապէս զինծառայողների քուէարկութեան մասով: Չնայած նուազող բնոյթ ունենալուն՝ խմբակային քուէարկութիւնը շարունակում էր խնդիր հանդիսանալ այցելած տեղամասերի մօտ 9 տոկոսում եւ մօտ 2 տոկոսում որոշ ընտրողներ նշումներով քուէաթերթիկները ցոյց են տուել այլ անձանց:

Ընտրութիւնների օրը ՏԸՅ-ներն ունէին մինչեւ վեց ընտրացուցակ, այդ թւում նաեւ ընտրութիւնների օրը քուէարկելու համար գրանցուած անձանց «լրացուցիչ ցուցակը»: Ընտրութիւնների օրը գրանցուած անձանց թիւը հրապարակայնօրէն չի յայտարարուել: Համաձայն օրէնքի վերջին փոփոխութիւնների՝ ՏԸՅ պաշտօնական արդիւնքների արձանագրութիւնը չի պարունակում տեղեկատուութիւն գրանցուած ընտրողների թուի մասին, ինչը միայն թոյլ է տալիս ընտրողներին ՏԸՅ-ներում ընտրողների մասնակցութիւնը իմանալ բացարձակ թուերով, այլ ոչ տոկոսային արտայայտութեամբ, ինչը նուազեցնում է թափանցիկութիւնը:

Մի քանի առանձին դէպքերում լուրջ խնդիրներ են նկատուել որոշ այցելած տեղամասերում, այդ թւում՝ քարոզչութիւն (32 դէպք), ընտրողների ընտրութեան վրայ ազդելու փորձեր (18 դէպք), ընտրողների ահաբեկում (22 դէպք), մէկ անձի կողմից բազմաթիւ ընտրողներին «օժանդակութեան» ցուցաբերում, ընտրողի հետ ուղարկում անյարիր պատճառներով (13 դէպք) եւ նախապէս նշում ունեցող քուէաթերթիկով քուէարկութիւն (4 դէպք): Դիտարկուել է աւտօբուսի մէկ վարորդ 35/28 ընտրատեղամասի տարածքում (Շիրակի մարզ), որի ձեռքում կային բազմաթիւ անձնագրեր, եւ երկու միջադէպերում ԸՄԴԱ դիտորդները տեսել են ձեռքներում անձնագրեր ունեցող անձանց, որոնց հաւաքում էին Երեւանի շուկաներից մէկի մօտ:

Դիտորդները զեկուցել են ինը դէպքերի մասին, երբ անձանց տեղափոխել են մէկ ընտրատեղամասից միւսը:

ԸՄԴԱ-ն հաստատել է քուէների գնման մասին մի շարք յայտարարութիւններ: Փետրուարի 18-ին Վարդաբլուր գիւղում (ԸԸՀ թիւ 31, Լոռու մարզ) դիտորդները զրուցել են գիւղաբնակների հետ, ովքեր հաստատել են, որ իրենց առաջարկել են 5,000 դրամ (11 եւրօ) իրենց քուէների դիմաց: Քուէների գնման նմանատիպ տարբերակ է նաեւ նկատուել Բազումում (Լոռու մարզ): Երեւանի մի ընտրատեղամասի տարածքում դիտորդները տեսել են, ինչպէս են ընտրողները գումար ստանում մէկ մարդուց, ով նշումներ էր անում անուններով ցուցակի մէջ: Մի քանի զեկոյց նշել են հնարաւոր վերահսկուող քուէարկութեան դէպք, օրինակ՝ զինծառայողներին բաժանում էին տարբերուող թանաքով գրիչներ, քուէաթերթիկում նշում անելու համար: «Քուէատուփերի լցոնման» մէկ դէպքի են ականատես եղել թիւ 23/24 ընտրատեղամասում (Գեղարքունիքի մարզ), որտեղ թեկնածուի վստահուած անձը մօտ 15 քուէաթերթիկ է գցել քուէատուփի մէջ՝ ՏԸՅ անդամի կողմից դրանք կնքելուց յետոյ:

Վստահուած անձինք ներկայ էին գրեթէ բոլոր այցելած տեղամասերում: Չնայած թեկնածուներից մէկի վստահուած անձինք բազմաթիւ բողոքներ են ներկայացրել ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ ԸԴԱ, պաշտօնական բողոքներ գրանցուել են այցելած տեղամասերի միայն մօտ 2 տոկոսում: Մարդու Իրաւունքների պաշտպանի գրասենեակը փորձել է ճշտել իր կողմից ստացուած բողոքների փաստացի հիմքերը, եւ փոխանցել է մանրամասներ համապատասխան մարմիններին, այդ թւում՝ Ժառանգութիւն կուսակցութիւնից

խորհրդարանի երկու անդամների նկատմամբ Երեւանի 13/16 տեղամասում տեղի ունեցած յարձակման մասին տեղեկատուութիւնը: Գլխաւոր Դատախազը յարուցել է եօթ ընտրութիւններին վերաբերող Քրէական Գործ:

Քուէների հաշուարկի ընթացքը գնահատուել է որպէս «վատ» կամ «շատ վատ» այցելած տեղամասերի մօտ 16 տոկոսում: ԸՄԴԱ դիտորդների մօտ 18 տոկոսը զեկուցել են «նշանակալի ընթացակարգային սխալների» մասին, ինչը նշանակում է, որ դեռ մնում են որոշ զգալի խնդիրներ: Նշուած խնդիրների թւում էին՝ իւրաքանչիւր թեկնածուի օգտին եղած քուէների թուի բարձրաձայն չյայտարարելը (մօտ 22 տոկոս), վաւեր քուէների ոչ հետեւողական տարբերակելը (մօտ 10 տոկոս) եւ բջջային հեռախօսների օգտագործումը: Վստահուած անձինք եւ տեղական դիտորդները ընդհանուր առմամբ իրենց աշխատանքում չեն հանդիպել խոչընդոտների եւ կարողացել են դիտարկել քուէների հաշուարկման գործընթացները:

Չնայած ՏԸՅ-ների մօտ 15 տոկոսը դեռ դժուարութիւններ է ունեցել արդիւնքների արձանագրութիւնների լրացման գործում, սա բարելաւում է 2007 թուականի ընտրութիւններից յետոյ՝ վերագրելի բարելաւուած ուսուցանման ջանքերին: Մի քանի ընտրատեղամասերում ԸՄԴԱ դիտորդները զեկուցել են արձանագրութեան մէջ գրանցուող տուեալների միտումնաւոր կեղծման մասին եւ մի քանի ընտրատեղամասերում արձանագրութիւնները չեն լրացուել թանաքով: Այցելած ընտրատեղամասերի մօտ 27 տոկոսում արդիւնքները չեն ցուցադրուել հրապարակայնօրէն՝ ինչպէս որ պահանջւում է օրէնքով:

ԸՄԴԱ-ն դիտարկել է արդիւնքների ամփոփման գործընթացը բոլոր 41 ԸԸՀ-ներում: Արդիւնքների ամփոփման գործընթացն ընդհանուր առմամբ գնահատուել է որպէս դրական: Այնուամենայնիւ, գործընթացի կազմակերպմանն առնչուող խնդիրներ են նկատուել որոշ դէպքերում: Թւում էր, թէ շփոթմունք կար Երեւանի ԸԸՀ-ներում (ԸԸՀ-ներ 1-13) ՏԸՅ արձանագրութիւնների ամփոփման գործընթացի վերաբերեալ: Սա բարդացւում էր նրանով, որ խնդրի վերաբերեալ չկար ԿԸՅ ցուցում: Օրինակ՝ թիւ 2 ԸԸՀ-ից 35 ՏԸՅ արձանագրութիւններ ԿԸՅ են հասել առանց ԸԸՀ ակնարկների եւ կնիքի: Սոյն յայտարարութիւնը մատչելի է նաեւ հայերէն լեզուով: Սակայն անգլերէն տարբերակն է հանդիսանում միակ պաշտօնական փաստաթուղթը:

## ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ ԵՒ ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆ

*A1+*, 21:38

ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ը մեկնարկեց ընտրութիւնների իր դիտորդական առաքելութիւնը 2008 թուականի յունուարի 10-ին՝ 11 փորձագէտներով, որոնց թիւը յետագայում աւելացաւ մինչեւ 16, ինչպէս նաեւ մայրաքաղաքում եւ երկրի տարածքով մէկ տեղաբաշխուած 28 երկարաժամկէտ դիտորդներով: Ընտրութիւնների օրը 333 կարճաժամկէտ դիտորդներ են տեղաբաշխուել Ընտրութիւնների Միջազգային Դիտորդական Առաքելութիւնում (ԸՄԴԱ)՝ ներառեալ 48 անդամ ունեցող ԵԱՀԿ Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԱՀԿ ԽՎ) պատուիրակութիւնը, 29 անդամ ունեցող Եւրախորհրդի Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԽ ԽՎ) պատուիրակութիւնը, 6 անդամ ունեցող Եւրոպական Խորհրդարանի (ԵԽ) պատուիրակութիւնը: Ընդհանուր թուով դիտորդներ են ժամանել 42 ԵԱՀԿ անդամ

պետութիւններից: ԸՄԴԱ-ն դիտարկել է երկրի աւելի քան 1000 ընտրատեղամասերում ընթացող քուէարկութիւնը եւ 101 ընտրատեղամասերում քուէների հաշւումը (երկրի 1,923 տեղամասերից), ինչպէս նաեւ ՏԸՅ արդիւնքների տեղափոխումը ԸԸՀ-ներ եւ տեղամասերի փակուելուց յետոյ արդիւնքների ամփոփումը բոլոր 41 ԸԸՀ-ներում:

Տիկին Անն-Մարի Լիզանը (Բելգիա)՝ ԵԱՀԿ Խորհրդարանական Վեհաժողովի փոխնախագահ եւ ԵԱՀԿ ԽՎ պատուիրակութեան ղեկավարը, ԵԱՀԿ գործող նախագահի կողմից նշանակուել էր յատուկ համակարգողի պաշտօնում՝ ԵԱՀԿ կարճաժամկէտ դիտորդներին ղեկավարելու համար: Պարոն Ջոն Պրեսքոթը (Միացեալ Թագաւորութիւն) ղեկավարում էր Եւրախորհրդի Խորհրդարանական վեհաժողովի պատուիրակութիւնը, եւ Մարի Անն Իզլէր Բիգանը (Ֆրանսիա) ղեկավարում էր Եւրոպական Խորհրդարանի պատուիրակութիւնը: Դեսպան Գեռտ Արենսը (Գերմանիա) ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ ընտրութիւնների դիտորդական առաքելութեան ղեկավարն է:

ԸՄԴԱ-ն ցանկանում է իր երախտիքը յայտնել Հայաստանի Հանրապետութեան Արտաքին Գործերի նախարարութեանը եւ Ազգային Ժողովին՝ ընտրութիւնները դիտարկելու հրաւէրի, Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովին՝ հաւատարմագրման փաստաթղթերի տրամադրման համար, եւ այլ պետական եւ տեղական իշխանութիւններին՝ իրենց աջակցութեան եւ համագործակցութեան համար: ԸՄԴԱ-ն նաեւ ցանկանում է շնորհակալութիւն յայտնել ԵԱՀԿ-ի Երեւանեան գրասենեակին՝ առաքելութեան ընթացքում իրենց օժանդակութեան համար, ինչպէս նաեւ ԵԱՀԿ անդամ պետութիւնների ռեզիդենտ դեսպանատներին եւ այլ միջազգային հաստատութիւններին՝ իրենց համագործակցութեան եւ աջակցութեան համար:

Յաւելեալ տեղեկատուութեան համար խնդրում ենք դիմել՝

Պարոն Եէնս-Հազէն Էշենբեխէր՝ ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ի խօսնակ, Վարշաւայում (+ 48 22 520 0600) եւ Երեւանում մինչ փետրուարի 21-ը՝ (+ 374 94 46 4297) կամ տիկին Նիկոլա Շմիդտ՝ ընտրութիւնների գծով խորհրդատու, Վարշաւայում (+ 48 22 520 0600),

Պարոն Անդրէաս Բէյքէր, մամուլի պատասխանատու, ԵԱՀԿ ԽՈՒ Միջազգային քարտուղարութիւն, Կոպենհագէնում (+45 60 10 83 80) եւ Երեւանում (+ 374 94 43 7022);

Տիկին Նատալի Բարջելինի, ԵԽ ԽՎ քարտուղարութիւն, Ստրասբուրգում (+33 665 40 32 82),

Պարոն Թոմաս Գրունէթ, ընտրութիւնների դիտորդական ծառայութիւն, արտաքին քաղաքականութիւնների գլխաւոր քարտուղարութիւն, Եւրոպական Խորհրդարան, Բրիւսէլում (+32 49 89 83 369):

ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ ԸԴԱ գրասենեակ (մինչ 2008 թուականի մարտը)՝
Արմենիա Մարիոթ հիւրանոց
Ամիրեան 1, Երեւան 0010
Հեռ.՝ +374 (0)10 566 772 or 580 698
Ֆաքս՝ +374 (0)10 564 174
Էլ. Փոստ՝ office@odihr.am
ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ կայք՝ www.osce.org/odihr

## ԿԱԹՈՂԻԿՈՍԸ ՕՐՀՆԵՑ

*A1+*, 21:40

ՀՀ նախագահ ընտրուելու առիթով ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել եւ Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնից իր հայրապետական օրհնութիւնն է յղել Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Երկրորդը: Ամենայն Հայոց Կաթողիկոսի շնորհաւորական խօսքում մասնաւորապէս ասուած է.

«Մեծարգոյ պրն. Սարգսեան,

Յանուն Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան, Գերագոյն Հոգեւոր Խորհրդի եւ Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի միաբանութեան՝ շնորհաւորում ենք Ձեզ Հայաստանի Հանրապետութեան նախագահ ընտրուելու առիթով եւ Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնից բերում ենք Ձեզ Հայրապետական Մեր օրհնութիւնը:

Աստծոյ ողորմութեամբ մեր ժողովուրդը այսօր խաղաղութեան մէջ ազատ, նոր կեանք է կառուցում եւ լի է արդար յոյսով աւելի մօտ տեսնելու Հայաստանի բարօրութիւնն ու բարգաւաճումը: Այս տեսիլքով մեր ժողովրդի արժանաւոր շատ զաւակների հետ Դուք Ձեր ջանքն ու ներդրումն էք բերել Հայաստանի անկախութեան եւ Արցախի ազատագրութեան պայքարին, հայրենի պետականութեան ամրապնդմանն ու առաջընթացին ուղղուած վերակառուցումներին, որոնցով պատմական է մեր ժամանակը: Հաւատում ենք, որ պետական բարձր պաշտօններում ձեռք բերած տարիների փորձառութեամբ Դուք նոր յաջողութիւններով պիտի արգասաւորէք ՀՀ նախագահի Ձեր բարձր ու պատասխանատու առաքելութիւնը: Հայցում ենք Բարձրեալից, որ հանապազ օրհնի Ձեր ջանքերը՝ յանուն մեր Հայրենիքի բարօր ու երջանիկ կեանքի, մեր ժողովրդի իղձերի մարմնաւորման:

Թող Բաձրեալն Աստուած Սուրբ Հոգու ամենառատ շնորհներով զօրացնի Ձեզ՝ պարգեւելով քաջառողջ արեւշատութիւն, մշտանորոգ ուժ ու եռանդ:

Շնորհք, սէր եւ ողորմութիւն Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի եղիցին ընդ Ձեզ եւ ընդ ամենեսեան: Ամէն»:

## ՀՐԱՎԱՌՈՒԹԻՒՆ՝ ՀԱՆՐԱՀԱՒԱՔԻՑ ՅԵՏՈՅ

*A1+*, 21:44

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում աւարտուեց նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքը: Հանրահաւաքի աւարտից րոպէներ յետոյ Սերժ Սարգսեանը նշեց իր յաղթանակը՝ չափից աւելի աղմկոտ հրավառութեամբ:

Հրավառութիւնը տեղի ունեցաւ Հանրապետութեան Հրապարակից ոչ հեռու, ՀՀԿ-ի մօտ:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԱՆԱԿՆԿԱԼ Է ԽՈՍՏԱՆՈՒՄ ՎԱՂԸ ԺԱՄԸ 15-ԻՆ (video)

*A1+*, 21:53

«Մենք յաղթել ենք եւ այդ յաղթանակին տէր ենք կանգնելու», - այսօր Մատենադարանի մօտ ժամը 11.00-ին սկսուած միջոցառման վերջում, որն աւարտուեց Ազատութեան Հրապարակում երեկոյեան 20.30-ին, յայտարարեց ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Յիշեցնելով, որ ինքը բաց պայքար է մղում եւ ոչինչ չի պատրաստում

թաքցնել ժողովրդից՝ նա տեղեկացրեց. «Այսօր ԵՄ մի քանի դեսպաններ մեզ դիմել են մի հարցով՝ Ռոբերտ Քոչարեանն այդ դեսպաններին ասել է, որ թէ իբր այս պահին ինքը բանակցութիւնն է վարում ինձ հետ»: Տէր-Պետրոսեանը դեռ չէր հասցրել աւարտել իր տեղեկատուութիւնը, երբ հաւաքուածները արձագանքեցին. «Քոչարեան՝ սուտասան: Քոչարեանն իրաւունք չունի Ձեզ բանակցութիւնների հրաւիրել»: Հաւաքուածներին հանգստացնելով՝ Տէր-Պետրոսեանը շարունակեց. «Դա ձեր մեկնաբանութիւնն է, բայց քանի որ ասացի՝ ես բաց քաղաքականութիւն եմ վարում այս հրապարակից, պաշտօնապէս յայտնում եմ այդ դեսպաններին՝ այդպիսի բան չկայ, Ռոբերտ Քոչարեանը ինձ բանակցութիւնների առաջարկ չի արել»: Տէր-Պետրոսեանին չյաջողուեց շարունակել իր խօսքը՝ հաւաքուածները մօտ 5 րոպէ բղաւում էին. «Սերժիկ հեռացիր: Լեւոն նախագահ»: Հաւաքուածները Տէր-Պետրոսեանից պահանջեցին հէնց այսօր քայլեր իրականացնել, եւ նա վստահեցրեց. «Մենք չենք նահանջելու: Անձամբ ես, եթէ անգամ իմ կողքին ոչ ոք չմնայ, ես չեմ նահանջելու:

Մատենադարանի հանրահաւաքում ես նաեւ ասացի՝ հանգիստ եղէք, մենք ունենք գործողութիւնների յստակ ծրագիր եւ ես վստահ եմ, որ մենք այս երկում անպայման հաստատելու ենք օրէնքի իշխանութիւն»: Հաւաքուածները պահանջեցին. «Հիմա, հիմա, հիմա»: Եզրափակելով իր խօսքը՝ Լեւոն Տէր-Պետրոսեանն ասաց. «Վստահ եղէք, ներողութիւն, բայց մենք աւելի իրազեկուած ենք, քան՝ դուք: Դիտորդական այդ խմբերի եզրակացութիւնը, միջազգային արձագանքները չափազանց նպաստաւոր են մեզ համար եւ ողջ ժողովրդի համար: Սա լուրջ քաղաքականութիւն է, եւ ես գիտեմ իմ անելիքը: Ոչ ոք թող չկասկածի, որ մենք ձեզ հետ միասին անպայման հասնելու ենք մեր նպատակին՝ ամենախելօք, ամենաճշգրիտ, ամենավճռական քայլերով: Ուրեմն՝ վաղը ժամը 15.00-ին դուք ականատես էք լինելու չափազանց կարեւոր իրադարձութեան: Ուրեմն մենք պայքարելու ենք մինչեւ վերջ»: Հաւաքուածները արձագանքեցին. «Պայքար պայքար մինչեւ վերջ»: Տէր-Պետրոսեանի խօսքի աւատրից յետոյ Նիկոլ Փաշինեանը յայտարարեց. «Հանրապետութեան առաջին նախագահի հրահանգով վաղը ժամը 15.00-ին Ազատութեան Հրապարակում տաք հագնուած»: Հաւաքուածների հետ Փաշինեանը նաեւ պայման կապեց՝ այլեւս տեղեկատուութիւն չստանալ հայկական հեռուստաընկերութիւններից եւ տեղեկատուութեան աղբիւր դարձնել միայն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքները:

## ՆՐԱՆՔ ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ ԵՆ

*A1+*, 22:04

2008 թուականի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինը:

Այդ մասին հաղորդել է Ռուսաստանի Դաշնութեան նախագահի մամուլի քարտուղար Ալեքսէյ Գրոմովը:

* * *

Հայաստանի նախագահի ընտրութիւններում համոզիչ յաղթանակ տանելու կապակցութեամբ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է ԼՂՀ նախագահ Բակօ Սահակեանը: Բակօ Սահակեանը նշել է, որ Սերժ Սարգսեանի յաղթանակը խորհրդանշում է Հայաստանում կայուն տնտեսական համակարգի զարգացման եւ ժողովրդավարութեան

յաղթանակը: ԼՂՀ նախագահը վստահութիւն է յայտնել, որ Ս. Սարգսեանի փորձը, գիտելիքներն ու նուիրուածութիւնն ազգային եւ պետական շահերին՝ անմնացորդ կը ծառայեն Հայաստանի հզօրացման եւ բարգաւաճման վեհ գործին:

## «ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ՑՈՅՑ ՏԱԼ *Հ1*-ՈՎ» (video)

*A1+*, 23:25

**«ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ՑՈՅՑ ՏԱԼ *Հ1*-ՈՎ»**

«Լեւոն նախագահ», «Յաղթել ենք», «Սերժիկ հեռացիր» կոչերը չդադարեցին ողջ երթի ընթացքում, ապա շարունակուեցին Ազատութեան Հրապարակում:

Տեխնիկական խնդիրները լուծելուց յետոյ բեմ բարձրացաւ Նիկոլ Փաշինեանը, ով նախ ողջունեց հանրահաւաքի մասնակիցների վճռականութիւնը, ապա ոգեւորեց, նշելով, որ երթից յետոյ հանրահաւաքի մասնակիցների թիւը կտրուկ աճել է:

«Պահանջում ենք երթի ու հանրահաւաքի համակողմանի լուսաբանում, պահանջում ենք, որ ցոյց տան Հանրային Հեռուստաընկերութիւնով, նաեւ միւս ալիքներով», - ասաց Նիկոլ Փաշինեանը:

Ապա անդրադարձաւ դիտորդական առաքելութեան ներկայացուցիչների յայտարարութիւններին՝ նշելով, որ դրանք կարեւոր չեն, «ի վերջոյ ՀՀ ժողովուրդն է որոշում ընդունի այդ ընտրութիւնների արդիւքները, թէ ոչ»: Ապա նշեց, որ հրապարակում մարդիկ հաւաքուել են, քանի որ որոշում են կայացրել ազատուելու Քոչարեանասերժական կլանից:

Նիկոլ Փաշինեանը խօսեց նաեւ Աւան համայնքում առեւանգուած Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձի մասին: «Նա Փարիզից եկել էր պաշտպանելու իր Հայաստան վերադառնալու իրաւունքը, սակայն արդարութիւնը տեսնում էք, չէ՞...»:

Յետոյ նա խօսափողը փոխանցեց ուկրաինաբնակ նկարիչ Վարդանին, ում ցուցահանդէսը վերջերս էր կազմակերպուել Հայաստանում եւ ով միացել է շարժմանը: Նա նախ պատճառաբանեց, թէ ինչու է միացել շարժմանը:

«88-ին առաջին իսկ օրերից միացել եմ շարժմանը, առաջին իսկ ընտրութիւններին դէմ եմ քուէարկել Տէր-Պետրոսեանին, իսկ երէկ ես իմ կամքը արտայայտեցի ընտրատեղամասում, որ Լեւոնը նորից դառնայ ՀՀ նախագահ», - ասաց նկարիչ Վարդանը, ապա շարունակեց, նշելով, որ տարիները ցոյց տուեցին, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի օրօք աճում էր մի ընդդիմութիւն, որի ներկայացուցիչները Վազգէն Մանուկեանն ու Արշակ Սադոյեանն էին:

«Նրանք ունակ մարդիկ էին ու մեծ կարողութիւն ունեն, սիւներ էին, բայց այսօր փլուզում են այդ սիւները», - ասաց նա: Ապա շարունակեց. «Ես դէմ եմ եղել այդ իշխանութիւններին, բայց ես ազատ գործում էի՝ հրատարակում թերթ իմ ընկերների հետ, մշակոյթով զբաղւում, հէնց այդ ժամանակ ու թող վերադառնայ վերաիմաստաւորուած նորը»:

**ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ ՀՌՉԱԿԵՑԻՆ ՆԱԽԱԳԱՀ**

Ուշ երեկոյեան Ազատութեան Հրապարակում հանրահաւաքին խօսեցին Քաղաքագէտների Միութեան նախագահ Հմայեակ Յովհաննիսեանը, Սոցիալ Դեմոկրատական կուսակցութեան ատենապետ Լիւդմիլա Սարգսեանը, Հրանտ Բագրատեանը:

Նախ Հմայեակ Յովհաննիսեանը խօսեց այն մասին, որ անկախ նրանից, թէ ինչ

դժուարութիւնների առաջ են հիմա կանգնած, արդէն յաղթել են եւ միասնութեան շնորհիւ են յաղթել:

«Մենք, հաւատարիմ լինելով մեր զինակիցներին, ղեկավարներին եւ ժողովրդին շարունակելու իրենց կամքը պէտք է միասնական կամքով շարունակել, ամոքել այն արդիւնքը, որ նուաճեցինք, բեղմնաւոր բայց դժուար պաքար է սպասւում», - ասաց Հմայեակ Յովհաննիսեանը:

Ապա խօսեց Լիւդմիլա Սարգսեանը՝ իր ելոյթը նուիրելով երիտասարդութեան ոգեւորմանը եւ ասելով, որ հիմա յաղթանակի բերկրանք է զգում:

«Մենք միասին ենք, ճիշտ ենք, մենք միշտ յաղթող ենք: Այս ճանապարհին ոչ մէկը մեզ չի կարող կանգնեցնել: Այն արիութիւնն ու քաջութիւնը, որ տեսանք ժողովրդի կողմից, մեզ ոգեւորել ու յոյս է տուել, այսուհետեւ երբ կանգնում է ժողովուրդը, ոչ մի բարդութիւն չկայ այլեւս», - ասաց նա:

Ապա խօսեց, որ ինքը անկեղծ ցաւում էր, որ նոր սերունդը 88-ը չի տեսել. «Բայց այսօր ես ասում եմ, որ հպարտանում եմ նրանց քաղաքացիական գիտակցութեամբ, որ հպարտ կանգնած են մեր կողքին եւ գիտենք, որ մեր երկիրը տէր ունի ի դէմս այս երիտասարդների, մենք նրանց համար ենք կառուցում»:

Հրանտ Բագրատեանն էլ ասաց, որ այսօր ժամադրուել է ազատութեան հետ եւ երբեք չի ընկրնկի: «Երբեք չմտածէք, թէ մենք ընկրկելու ենք եւ տուն ենք գնալու եւ քանի որ մենք այսօր այստեղ ենք, հասել ենք սրան, թոյլ տուէք Լեւոն Տէր-Պետրոսեանին հռչակել նախագահ»:

## 21 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

### ՄԻՆՉ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ՓՈՐՁՈՒՄ ԷՐ ԿԱՆԳՆԵՑՆԵԼ ԺԱՄԱՆԱԿԸ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

*Lragir.am*, 10:35

Ակնյայտ է, որ նախագահի ընտրութիւնից դեռեւս մի քանի ամիս առաջ Հայաստանում ստեղծուել էր նոր քաղաքական իրավիճակ: Շատերի համոզմամբ, այդ քաղաքական իրավիճակի ճարտարապետը Լեւոն Տէր-Պետրոսեանն է, որն իր քաղաքական ակտիւութեամբ, մեծ քաղաքականութիւն իր վերադարձով (թէեւ խիստ վիճելի է, որ նա երբեւէ հեռացել է մեծ քաղաքականութիւնից) երկրում ձեւաւորեց բոլորովին նոր բարոյաքաղաքական իրականութիւն: Սակայն թերեւս ոչ թէ Լեւոն Տէր-Պետրոսեանն է այդ իրողութեան ճարտարապետը, այլ պարզապէս նա է, ով առաջինը, նոյնիսկ աւելի շուտ, քան իշխանութիւնը, հասկացաւ նոր իրողութեան նրբերանգները եւ փորձեց իր քաղաքական ծրագիրը կառուցել հէնց դրա վրայ: Աւելին, ինչպէս ցոյց տուեց նախագահի ընտրութեան ընթացքը, ինչպէս նաեւ բուն քուէարկութեան օրը, Լեւոն Տէր-Պետրոսեանը ոչ թէ առաջինն էր, որ հասկացել էր այդ ամէնը, այլ թերեւս նաեւ միակը՝ գոնէ առայժմ: Թէ իշխանութիւնը, թէ միւս այն քաղաքական ուժերը, որոնք մասնակցում էին նախագահի ընտրութեանը, ըստ երեւոյթին շարունակում են ապրել հին Հայաստանում: Դրա մասին են վկայում ընտրական այն բռնութիւններն ու ահաբեկումները, որոնք տեղի էին ունենում փետրուարի 19-ի ամբողջ օրուայ ընթացքում, մինչեւ անգամ լոյս փետրուարի 20-ի

գիշերը, եւ դրա մասին են վկայում նաեւ նախագահի միւս թեկնածուների գործողութիւնները թէ ընտրութիւնից առաջ եւ թէ ընտրութիւնից յետոյ, երբ նրանցից իւրաքանչիւրն առաջնորդւում էր ոչ թէ նրանով, ինչ կայ փաստացի, այլ նրանով, ինչ իրենք են տեսնում՝ երազում, հայելու մէջ, կամ սեփական շրջապատի աչքերում՝ դա արդէն էական էլ չէ: Կամ, գուցէ նոր իրավիճակը, հասարակական-քաղաքական նոր մթնոլորտը զգացել են նաեւ իրենք՝ իշխանութիւնը եւ կամայ թէ ակամայ իշխանութեանը ուղղակի կամ անուղղակի ծառայութիւն մատուցած միւս թեկնածուները, բայց այն, թէ իրեն ինչպէս պահեց նրանցից իւրաքանչիւրը նախագահական ամբողջ գործընթացի ժամանակ, վկայում է, որ եթէ անգամ հասկացել են, ապա միեւնոյն է, նրանք գտնուել են նոր իրողութեանը համարժէք արձագանքին անպատրաստ:

Իսկ որն է այդուամենայնիւ այդ նոր իրողութիւնը: Այդ ինչ է փոխուել Հայաստանում, որ մինչեւ հիմա չկար, կամ կար, ու արդէն չկայ, եւ կարիք կայ նոր մտածողութեան ու նոր մօտեցումների: Նախ, այդ նոր իրողութեան պատճառների մասին: Այդ նորի ճարտարապետը ժամանակն է: Այն փոխւում է, որքան էլ որ որոշ մարդիկ, անգամ իշխանութիւն ունեցող, փորձեն իրենց իշխանութիւնը ծառայեցնել ժամանակի ընթացքը կանգնեցնելուն: Աւելին, որքան աւելի աշխոյժ են այդ փորձերը, այդքան աւելի դինամիկ է փոխւում ժամանակը: Եւ քանի դեռ զբաղուած են ժամանակը կանգնեցնելու ջանքով՝ առաջնորդուելով «կանգ առ, ակնթարթ՝ դու այդպէս էլ ձեռնտու ես» սկզբունքով, չեն նկատում ժամանակի արագ փոփոխութիւնը: Հայաստանի իշխանութիւնն ու ընդդիմութիւնն արդէն տեւական ժամանակ զբաղուած էին հէնց դրանով՝ յամառօրէն թոյլ չտալ, որ ժամանակն առաջ գնայ երկրում: Մէկին ձեռնտու էր յաւերժական իշխանութիւնը, միւսին ձեռնտու էր յաւերժական ընդդիմութիւնը: Եւ բնական է, որ ժամանակի ընթացքում առաջանալու էր բոլորովին նոր որակի քաղաքականութեան անհրաժեշտութիւն: Ընդ որում, այդ որակը կարող էր եւ չլինել գերժամանակակից, կարող էր եւ չլինել նօու-հաու՝ անգամ Հայաստանի քաղաքական դաշտի մակարդակով, կարող էր նոյնիսկ լինել աւելի վատը, քան այն, ինչ առկայ էր մինչ այդ: Բայց այդ նոր որակը չէր կարող չլինել: Եւ այստեղ թերեւս խնդիրը ոչ այնքան որակն է, որքան նորը, որի հասարակական պահանջը չտեսնելու համար պէտք էր թերեւս լինել քաղաքականապէս կոյր: Թէ ժամանակի հետ որքան համահունչ կը մնայ փաստացի միակ տեսնող քաղաքական գործիչը, դժուար է այժմ ասել: Ցամենայն դէպս, նրա դրութիւնը այժմ ծանրանում է նրանով, որ նա վազքուղում մնացել է փաստացի մենակ, չունենալով որեւէ իրական մրցակից: Իսկ այդ դէպքում, ինչպէս յայտնի է, վազորդի արագութիւնն աննկատ սկսում է նուազել: Լեւոն Տէր-Պետրոսեանը հիմա կանգնած է այդ բարդ խնդրի առաջ՝ մենակ չմնալ ժամանակի մէջ, որովհետեւ այդ երկար միայնութիւնը կարող է դառնալ ժամանակի զգացումը կորցնելու պատճառ: Այսինքն, Լեւոն Տէր-Պետրոսեանին այժմ անհրաժեշտ է ձեւաւորել նոր, ժամանակին համահունչ քաղաքացիական, քաղաքական, հասարակական համակարգ, իր բոլոր բաղադրիչներով հանդերձ: Ընդ որում, դրա համար ամենեւին կարեւոր չէ պետական իշխանութիւնը, քանի որ Լեւոն Տէր-Պետրոսեանն այժմ ունի իշխանութեան տեսակներից ամենակարեւորը՝ քաղաքացիականը:

## ՊՈՒՏԻՆԸ, ՍԱՀԱԿԵԱՆԸ, ՍԱՀԱԿԱՇՎԻԼԻՆ

*Lragir.am*, 11:33

Սերժ Սարգսեանը շարունակում է ստանալ շնորհաւորանքներ: Նրան նախագահ ընտրուելու կապակցութեամբ շնորհաւորել են Ռուսաստանի, ԼՂՀ եւ Վրաստանի նախագահներ Վլադիմիր Պուտինը, Բակօ Սահակեանը եւ Միխայիլ Սահակաշվիլին:

## ԻՆՉ ԵՆ ՇՇՆՋԱԼՈՒ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԱԿԱՆՋԻՆ ԱՅՍ ՀԱՆԳՐՈՒԱՆԻՆ

ԳԷՈՐԳ ՍԱՐԳՍԵԱՆ

*Lragir.am*, 11:50

«Մենք պատասխանատուութեամբ յայտարարում ենք, որ ստեղծուած կացութիւնից միակ ելքը հնարաւոր բոլոր ընտրախախտումներն ու ընտրակեղծիքները բացառելը եւ իրապէս ազատ, արդար ու թափանցիկ ընտրութիւններ անցկացնելն է»: Սա մի հատուած է փետրուարի 13-ին ՀՅ Դաշնակցութեան Հայաստանի Գերագոյն Մարմնի յայտարարութիւնից: Բացի այդ, ՀՅԴ թեկնածուն եւ միւս պատասխանատուները մինչ ընտրութիւնը բազմիցս յայտարարել են, թէ թոյլ չեն տայ ընտրախախտումներ, կը պայքարեն մինչեւ վերջ եւ այլն:

Ընտրութիւններն անցան, սակայն ՀՅԴ առայժմ որեւէ կերպ չի արտայայտւում՝ արդեօք ընտրութիւններն անցան ազատ եւ արդար, չեղան ընտրակեղծիքներ, եւ այլն: Միայն ՀՅԴ ղեկավարներից Հրանտ Մարգարեանն է առայժմ արտայայտուել, թէ իրենք պարտուել են, ուսումնասիրում են վիճակը եւ մօտ օրերս հանդէս կը գան յայտարարութեամբ: Պարտութիւնը պարտութիւն, դա յարաբերական հասկացութիւն է, իսկ ազգային կուսակցութեան դիրքորոշումը եւ գնահատականն անցած ընտրութեանը այս օրերին շատերին է հետաքրքրում: Չէ որ ՀՅԴ միայն դաշնակցականներինը չէ, այն ազգային արժէք է, ինչպէս իրաւացիօրէն նշում են դաշնակցականները: Եւ ըստ այդմ՝ ազգին հետաքրքիր կը լինէր իմանալ՝ ի վերջոյ ինչ կարծիքի է ՀՅԴ անցած ընտրութեան մասին:

Նախագահի ընտրութեան նախօրէին, ՀՅԴ պատասխանատուների կեցուածքը յոյս էր ներշնչում, որ այդ կուսակցութիւնն, ի վերջոյ, ներկայ իշխանութեան հետ երկարատեւ ոչ միանշանակ գործակցութիւնից եւ Ղարաբաղում վարած վերջին տարիների անպատւաբեր գործունէութիւնից յետոյ, սկսում է քաղաքական ինքնուրոյն լուրջ գործունէութիւն ծաւալել: Մի կողմից, յարմարուողականութիւնը չի սազում այդ կուսակցութեան կերպարին, միւս կողմից գիտակցւում է ՀՅԴ առանցքային դերը Հայաստանի ներքաղաքական զարգացումներում:

Թէեւ կասկածներին՝ թէ ՀՅԴ խաղում է իշխանութեան խաղը, հանրութիւնն, այնուամենայնիւ, հակուած էր չհաւատալ դրան: Իր հերթին, իշխանութեանը խիստ մտահոգում էր ՀՅԴ պահուածքը, որը կարող էր վճռական դառնալ վերարտադրուելու ծրագրի իրագործման կամ տապալման համար: Ընտրութեան օրը, առաւօտեան Սերժ Սարգսեանը քուէարկելուց յետոյ յայտարարեց, թէ իր ընտրուելու դէպքում չի տեսնում կառավարութեան կազմը փոփոխելու անհրաժեշտութիւն, քանի որ ներկայ կառավարութիւնը աշխատում է արդիւնաւէտ: Եւ որպէս այլ քաղաքական ուժերի հետ համագործակցութեան օրինակ՝ բերել էր Բարգաւաճ Հայաստանի եւ ՀՅԴ օրինակը: Բարգաւաճը Բարգաւաճ, թերեւս դա համագործակցութիւն էլ չէ. խնդիրը Դաշնակցութիւնն է: Ինչ են

շշնջալու Դաշնակցութեան ականջին այս անգամ, կամ այս հանգրուանին։ Թերեւս դա հանրութեան համար էական չէ, որովհետեւ նա կուշտ է կայունութեան, շարունակականութեան, յանուն չգիտեմ ինչի կարգի արդարացումներից։ Հանրութեան համար կարող է էական լինել այն, որ չլինի այնպէս, որ գուցէ իր ականջին այս ամէնից յետոյ շշնջան հետեւեալը՝ հին ընկերների հետ չարժէ ճանապարհ գնալ։ Դա արդէն կը լինի Դաշնակցութեան իսկական պարտութիւնը։

## ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԳՈՒՑԷ ԵՐՐՈՐԴ ՄԻՋԱՆԿԵԱԼ ԶԵԿՈՅՑ ԷԼ ՀՐԱՊԱՐԱԿԵՆ

*Lragir.am*, 11:54

ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ը չի բացառում Հայաստանի նախագահական ընտրութիւնների վերաբերեալ երրորդ միջանկեալ զեկոյցի հրապարակումը։ Այս մասին չորեքշաբթի Երեւանում տեղի ունեցած մամուլի ասուլիսի ժամանակ յայտարարել է ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութեան ղեկավար, դեսպան Գերտ-Հենրիխ Արենսը, տեղեկացնում է Նովոստի-Արմենիա գործակալութիւնը։ «Մենք հրապարակել ենք երկու միջանկեալ զեկոյց։ Այսպիսով, ընտրութիւնների օրը՝ երէկ երեկոյից մինչ այս պահը, մենք մշակել ենք հազարաւոր զեկոյցներ, որոնք ստացել ենք կարճաժամկէտ դիտորդներից եւ աւելի ուշ կը ներկայացնենք համապատասխան դիտողութիւնները», ասել է նա։ Արենսը տեղեկացրել է, որ ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ երկարաժամկէտ դիտորդները կը մնան Հայաստանում՝ ընտրական գործընթացի աւարտը եւ գոյութիւն ունեցող մեխանիզմների միջոցով դատական վէճերի որոշումները վերլուծելու համար։ «Կարծում ենք, որ իրավիճակի լրացուցիչ ուսումնասիրման անհրաժեշտութիւն կայ։ Մենք կը պատրաստենք մէկ այլ միջանկեալ զեկոյց, սակայն՝ դեռեւս նախնական։ Սակայն, ամէն դէպքում, կը լինի վերջնական փաստաթուղթ, որի մէջ կը ներառուեն ամփոփիչ գնահատականները», ասել է նա։

## ՀԱՏՈՒԱԾՆԵՐ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆԻՑ

*Lragir.am*, 12:36

«Դիտորդները գտնում են, որ Հայաստանի իշխանութիւնները փորձել են նախորդ ընտրութիւններում նկատուած բացթողումները լրացնել, սակայն յետագայ բարելաւման անհրաժեշտութիւն կայ, ինչպէս նաեւ անհրաժեշտ է քաղաքական կամք լուծելու համար այնպիսի խնդիրներ, ինչպէս հասարակութեան վստահութեան պակասը ընտրական գործընթացի հանդէպ եւ պետութեան եւ կուսակցութեան գործառոյթների յստակ տարանջատման բացակայութիւնը։ Ձայների հաշուարկի ընթացքը ամենեւին չի փարատել շահագրգիռ անձանց կասկածները», ասուած է ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութեան յայտարարութեան մէջ, որը հրապարակուել է ԵԱՀԿ պաշտօնական կայքում փետրուարի 20-ին։ «Այս ընտրութեան շրջանակում մենք որոշ բարելաւում նշել ենք, սակայն դրա իրականացման եւ յատկապէս ձայների հաշուարկի հետ կապուած խնդիրները ժողովրդի վստահութիւնը թուլացրել են։ Ի վերջոյ, վերջնական ընտրութիւնը հայ ժողովրդի ձեռքերում է», յայտարարել է ԵԽԽՎ պատուիրակութեան ղեկավար Ջոն Պրեսկոտը։ «Նախորդ ընտրութեան հետ համեմատ նշանակալի առաջընթաց է եղել ընտրական գործընթացի նախապատրաստման եւ անցկացման առումով։ Սակայն ընդհանուր ընտրական մթնոլորտը եւ արձանագրուած միջամտութիւնները հանգամանալից գնահա-

տականի կարիք ունեն», յայտարարել է Եւրախորհրդարանի պատուիրակութեան ղեկավար Մարի Անն Իսլէր Բեգինը: «Ընտրութիւնը մէկ օրուայ միջոցառում չէ, եւ այսօրուայ մեր յայտարարութիւնը նախնական է: Մենք մնալու ենք Հայաստանում, որպէսզի դիտարկենք արձանագրութիւնների կազմման գործընթացը եւ հնարաւոր մեխանիզմներով ընտրութեան հետ կապուած վիճարկումների արդիւնքը: Այս գործընթացը պէտք է վեր հանի ընտրութեան այն ասպեկտները, որոնք յետագայ ուսումնասիրութեան կարիք ունեն»:

## ԵՒՐԱՄԻՈՒԹԻՒՆԸ ՅՈՅՍ ՈՒՆԻ

*Lragir.am*, 13:44

Եւրամիութիւնը յոյսեր է կապում ՀՀ նորընտիր նախագահ Սերժ Սարգսեանի ընտրութեան հետ այն կապակցութեամբ, որ կ'ակտիւանան ղարաբաղեան հակամարտութեան կարգաւորմանն ուղղուած ջանքերը, ասւում է ընդհանուր քաղաքականութեան եւ անվտանգութեան քաղաքականութեան հարցերով բարձրագոյն ներկայացուցիչ Խաւիէր Սոլանայի յայտարարութեան մէջ, հաղորդում է ՌԻԱ Նովոստին: «ՀՀ նոր նախագահի ընտրութիւնը նաեւ քայլեր ձեռնարկելու հնարաւորութիւն է՝ հարեւանների հետ յարաբերութիւնների բարելաւման նպատակով: Դա ներառում է ղարաբաղեան հակամարտութեան լուծմանը հասնելու համար ջանքերի վերսկսում», ընդգծւում է փաստաթղթի մէջ: Դրանում նշւում է, որ ԵՄ-ն այդ առումով սատարում է ԵԱՀԿ Մինսկի խմբի ջանքերը եւ անհրաժեշտ աջակցութիւն կը ցուցաբերի հակամարտութեան կարգաւորման գործընթացին: Սոլանան բաւարարուած է միջազգային դիտորդական առաքելութեան կողմից ՀՀ նախագահական ընտրութիւնների ընթացքի վերաբերեալ նախնական գնահականներից: Միաժամանակ նա կոչ է արել իշխանութիւններին՝ մանրակրկիտ հետաքննել արձանագրուած բոլոր խախտումները: ԵՄ բարձրագոյն ներկայացուցիչը ողջունել է նաեւ ընտրողների բարձր ակտիւութիւնը: Եւրամիութիւնը կողմնակից է Հայաստանի հետ համագործակցութեան յետագայ ամրապնդմանը՝ հարեւանութեան եւրոպական քաղաքականութեան հիման վրայ, ասւում է Սոլանայի յայտարարութեան մէջ:

## ՄԻ ՔԱՆԻ ՏԵՂԱՄԱՍԵՐՈՒՄ ԿԱՏԱՐՒՈՒՄ Է ՎԵՐԱՀԱՇՈՒԱՐԿ

*Lragir.am*, 14:10

Ինչպէս Ռեգնում գործակալութեանը տեղեկացրել է ՕԵԿ փոխնախագահ Հեղինէ Բիշարեանը, Հայաստանի նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի պահանջով մի քանի ընտրատեղամասերում կատարւում է նախագահի ընտրութեան վերահաշուարկ: Հեղինէ Բիշարեանը նշել է, որ կուսակցութեան ներկայացուցիչները ընտրական յանձնաժողովների անդամների հետ բացում են քուէատուփերը, եւ այդ գործողութիւնը տեղի է ունենում աւելի քան 100 տեղամասերում:

## ԵՐԹՈՒՂԱՅԻՆՆԵՐԻՆ ՀՐԱՀԱՆԳՈՒԱԾ Է ՉԱՇԽԱՏԵԼ

*A1+*, 14:32

Այսօր ժամը 13.00-ից 16.00 չի աշխատելու են Երեւանի կենտրոնով անցնող քաղաքային տրանսպորտը: Այդպիսի հրահանգ վարորդներին տուել է Երեւան Տրանս ՓԲԸ-ն. այդ մասին *Ա1+*-ի հետ զրոյցում ասաց վարորդներից մէկը, որն ուղղակի առանց տեղեկա-

նալու, որ երթուղայինում լրագրող կայ, հրահանգի մասին ասաց կանաչ լոյսի տակ կանգնած միւս երթուղայինի վարորդին: Երբ փորձեցինք ճշտել, թէ ով է որոշել, որ իրենք երեք ժամ չեն աշխատելու, ասաց Կա-դէ 6-ը, ապա տեղեկացրեց, որ դա քաղաքապետարանի տրանսպորտի վարչութեանն է պատկանում: Յետագայում պարզեցինք, որ Կա-դէ 6-ը նոյն Երեւան Տրանսն է, որի տնօրէնը ոչ բջջային հեռախօսազանգերին էր պատասխանում, ոչ քաղաքային:

Տեղեկացնենք, որ Երեւանում քաղաքային տրանսպորտի աշխատանքը կաթուածահարուել է փետրուարի 19-ից, երբ ամբողջ օրը քաղաքում անհնար էր գտնել որեւէ երթուղային տաքսի, իսկ 20-ին՝ ընդդիմութեան հանրահաւաքի օրը, առաւօտից մինչեւ ուշ երեկոյ Երեւանի կենտրոնով որեւէ երթուղային տաքսի չէր անցնում:

## ՆՍՏԱՑՈՅՑ Է ԼԻՆԵԼՈՒ

*A1+*, 15:15

«Տա՞ք էք հագնուել», - ահա այս բառերով դիմեց Ազատութիւն հրապարակում հաւաքուած ՀՀՇ վարչութեան նախագահ Արարատ Զուրաբեանը: Ըստ նրա՝ այսօր նստացոյց է լինելու:

Ազատութեան Հրապարակում հրաւիրուած է Լեւոն Տէր-Պետրոսեանի հաւաքը: Հրապարակն արդէն լեփ-լեցուն է: Ի դէպ, Արարատ Զուրաբեանը յայտարարել է, որ 9/31 ընտրատեղամասում վերահաշուարկ է եղել, եւ 400-ով աւելացել են Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկուած ձայները: Այդ ճշտելու համար դիմեցինք ԿԸՅ մամուլի քարտուղար Տաթեւիկ Օհաննեանին, որն ասաց. «Այդ տեղեկատուութիւնը հաւաքւում է ընտրատարածքներում, ԿԸՅ-ն այսպիսի տեղեկատուութիւն հաւաքելու համար պէտք է զանգի ընտրատարածքներ Ձեր նման», - ու անջատեց հեռախօսը:

Ոստիկանութիւնը յայտարարել է, որ այս հանրահաւաքը արտօնուած չէ եւ յղի է անկախատեսելի հետեւանքներով եւ կոչ է արել մարդկանց ցրուել: Արարատ Զուրաբեանը յայտարարել է, որ սա հանրահաւաք չէ, այլ նստացոյց, որի համար թոյլտուութիւն պէտք չէ:

## ՀԱՐԹԱԿ ԲԱՐՁՐԱՑԱՒ ՀԵՂԻՆԷ ԲԻՇԱՐԵԱՆԸ (video)

*A1+*, 15:28

Հէնց նոր Ազատութեան Հրապարակում հարթակ է բարձրացել Արթուր Բաղդասարեանի նախընտրական շտաբի պետ Հեղինէ Բիշարեանը: Հրապարակը վանկարկում է. «Միացէք, միացէք»:

Նա յայտարարեց, որ իրենց թեկնածուն՝ Արթուր Բաղդասարեանը միշտ եղել է ժողովրդի հետ, եւ այս պահին բոլոր ընտրատարածքներում տեղի են ունենում վերահաշուարկ, եւ կտրուկ աւելանում են «մեր թեկնածուների ձայները»: Ըստ նրա՝ «կը սպասենք, մինչեւ վերահաշուարկը», եւ այդ ժամանակ Արթուր Բաղդասարեանը համապատասխան յայտարարութիւն կ'անի:

«Մենք պէտք է միասին պայքարենք...», - սակայն նրա ձայնը խլացաւ «Լեւոն, Լեւոն» վանկարկումներից:

## ՎՌԱՋՈՂԸ ՏՂԱՅ ՉԻ ԲԵՐՈՒՄ

*Lragir.am*, 15:36

Երեւանի Ազատութեան Հրապարակում մեկնարկել է Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների հանրահաւաքը: Հրապարակը լեփ լեցուն է, մարդիկ դեռ հաւաքւում են: Բացելով հանրահաւաքը, Այլընտրանք նախաձեռնութեան անդամ Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, որ միջոցառումները դառնալու են անընդհատ, շուրջօրեայ: Նա յայտարարել է, թէ Ազատութեան Հրապարակը դառնալու է համաժողովրդական բողոքի շտաբ, որտեղից կառավարուելու են բողոքի ակցիաները:

Նիկոլ Փաշինեանը ասել է, որ գործողութիւնները ծրագրուած են եւ ամէն ինչ գործի կը դրուի ըստ անհրաժեշտութեան: Վստահէք մեզ, ասել է Նիկոլ Փաշինեանը եւ յիշեցրել ժողովրդական ասացուածքը՝ վռազողը տղայ չի բերում: Նա ասել է, որ որեւէ ինքնագործունէութիւն չպէտք է լինի, բոլոր գործողութիւնները լինելու են օրէնքի շրջանակներում, քանի չեն սպառուել բոլոր օրինական միջոցները:

Նիկոլ Փաշինեանը տեղեկացրել է, թէ այսօրուանից տարբեր ընտրատեղամասերում տեղի է ունենում ձայների վերահաշուարկ, եւ ամէնուր խայտառակ վիճակ է. Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկած թերթիկները դրուած են Սերժ Սարգսեանի տրցակում: Նիկոլ Փաշինեանը կրկնել է պահաջը՝ անվաւեր ճանաչել ընտրութիւնները եւ անցկացնել նոր ընտրութիւններ:

Նիկոլ Փաշինեանը յայտարարել է նաեւ, որ պահանջում են իշխանութիւնից՝ պատժել ընտրակեղծարարներին, Մխչեանի մկան լակոտները, Յովիկ Շահինեան, Աւանի օլիգարխ, Թոխմախի Միհերի փեսայ, բոլոր ընտրակեղծարարներին: Նիկոլ Փաշինեանի խօսքով, եթէ օրէնքով սահմանուած ժամկէտում պետութիւնը չկարողանայ պատժել, ապա մենք կ'անենք այն, ինչ միասին կ'որոշենք, այն, ինչ որ պէտք է: Միաժամանակ, Նիկոլ Փաշինեանը պահանջել է Հանրային հեռուստատեսութիւնից՝ ուղիղ եթեր տրամադրել ընդդիմութեան գործիչներին՝ ժողովրդին տեղեակ պահելու իրադարձութիւններին:

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔԻՆ ԵԼՈՅԹ Է ՈՒՆԵՑԵԼ ՕԵԿ ՓՈԽՆԱԽԱԳԱՀԸ

*Lragir.am*, 15:40

Երեւանի Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող հանրահաւաքում ելոյթ է ունեցել ՕԵԿ փոխնախագահի Հեղինէ Բիշարեանը, ով նաեւ Արթուր Բաղդասարեանի շտաբի ղեկավարն է: Նա տեղեկացրել է, որ ներկայում ընթանում է ձայների վերահաշուարկ, որին ՕԵԿ շտաբը լինելու է հետեւողական, եւ դրա աւարտից յետոյ կ'արուի յայտարարութիւն:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՏՐԱՄԱԴՐՈՒԹԻՒՆԸ ԲԱՐՁՐ Է

*A1+*, 16:20

«Այսօրուայ տաքն ու շոգը ժողովրդի համար ենք պատուիրել», - Ազատութեան Հրապարակում յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Ներկաները շատ ջերմ ընդունեցին սա: Լեւոն Տէր-Պետրոսեանը ասաց , որ իր տրամադրութիւնը հաւաքուածներից էլ բարձր է:

Իսկ Նիկոլ Փաշինեանը ոստիկանների այդ նկատողութեանը, որ հանրահաւաքն

արտօնուած չէ, արձագանքեց հարթակից եւ ասաց, որ Սերժ Սարգսեանը իրաւունք չունի օրէնքից խօսելու: «Իսկ օրինակա՞ն էր, երբ որ համազգեստաւոր ոստիկանները տեղամասերում պատգամաւոր էին ծեծում, օրինակա՞ն էր, երբ Նեմեց Ռուբօ անունով յանցագործը մարդիկ էր կալանաւորում եւ ծեծում նրանց, օրինակա՞ն էր, երբ Մխչեանի Մկան լակոտները մարդիկ էին ծեծում, օրինակա՞ն էր, երբ յանցագործ Յովհաննէս Շահինեանը իր բանդայով ծեծում էր վստահուած անձանց: Դրանից յետոյ Սերժ Սարգսեանը իրաւունք չունի խօսել օրէնքից», - ասաց Նիկոլ Փաշինեանը:

## ԱՐԱՄ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԸ ԵՐՋԱՆԻԿ Է

*A1+*, 16:39

«Սերժ Սարգսեանի յաղթանակը համարում եմ իմ եւ իմ ընտրողների յաղթանակը», - այսօր նման յայտարարութեամբ հանդէս եկաւ նախագահի թեկնածու, Ազգային Համաձայնութիւն կուսակցութեան առաջնորդ Արամ Յարութիւնեանը, որը ընտրութիւնների նախնական արդիւնքներով ստացել էր 3092 քուէ: Վերջինս լրատուամիջոցներին հրաւիրել էր յայտարարելու, որ անձամբ շնորհաւորում է Սերժ Սարգսեանին նախագահ ընտրուելու կապակցութեամբ: Չկարողանալով դառնալ իւրաքանչիւրի նախագահը, նա այդ բարեմաղթեց Սերժ Սարգսեանին:

«Յոյս ունեմ, որ նա կը դառնայ ոչ միայն բոլորի, այլ իւրաքանչիւրի նախագահը: Յոյս ունեմ, որ նա կ'առաջնորդուի ազգային համաձայնութեամբ: Այն պահին, երբ երկիրը գտնւում է նման վիճակում, կան արտաքին մարտահրաւէրներ, կան դեռեւս չլուծուած ներքին խնդիրներ կամ արտաքին խնդիրներ, մասնաւորապէս ղարաբաղեան հիմնահարցը, նա պարտաւոր է առաջնորդուել ազգային համաձայնութեամբ եւ յետագայ գործունէութեան ընթացում ծառայել ժողովրդին», - ասում է նա:

Ի տարբերութիւն այլ թեկնածուների, պարզւում է Արամ Յարութիւնեանին այնքան էլ չի մտահոգել, որ նա վերջին հորիզոնականում է: «Ենթադրենք ես հաւաքէի 10 տոկոս, բայց անցնէր հինը, ես չէի ուզի», - ասում է նա, իսկ ինչ վերաբերւում է իր ծրագրերի իրագործմանը, ապա յոյս ունի, որ դրանք Սերժ Սարգսեանը կեանքի կը կոչի: Իսկ ընտրութիւնների անաչառութեան վերաբերեալ նա կասկած չունի, քանի որ իրենց շտաբը որեւէ խախտում չի յայտնաբերել. «Ասում են, այստեղ մէկին ծեծել են, ինչի հաւատանք: Դա տեղական մարմինների խնդիրն է: Փաստերը պէտք է քննարկուեն: Ընտրութիւնները անցել են ժողովրդավարական, խախտումներ եղել են երկկողմանի»:

«Որպէս թեկնածու ուրախ եմ, որ չվերադարձանք յետ: Թեկնածուներից մէկն ասում էր, որ թող վերջին զոհը ես լինեմ, նոյն կերպ՝ թող ես մենակ ինձ ձայն տամ, բայց անցեալը յետ չդառնար», - անկեղծացաւ Արամ Յարութիւնեանը: Ի դէպ, Արամ Յարութիւնեանը խոստանում է շարունակել քաղաքականութեամբ զբաղուել, իսկ թէ ինչ պաշտօն է ուզում ներկայ իշխանութիւններից, վերջինս լռում է. «Աշխատանքի մասին խօսելը լուրջ չեմ համարում»:

## ՍՈՂԱՆԱՆ ԷԼ Է ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ

*A1+*, 16:40

Հայաստանում կանոնաւոր եւ մրցակցային նախագահական ընտրութիւններ անցկացնելու կապակցութեամբ, հայ ժողովրդին այսօր ուղերձ է յղել եւ շնորհաւորել Եւրամի-

ութեան ընդհանուր արտաքին քաղաքականութեան եւ անվտանգութեան հարցերով գերագոյն յանձնակատար Խավիէր Սոլանան: Շնորհաւորական խօսքում, մասնաւորապէս, ասուած է.

«Ես ցանկանում եմ շնորհաւորել Հայաստանի ժողովրդին՝ փետրուարի 19-ին մրցակցային նախագահական ընտրութիւններ անցկացնելու եւ մասնակցութեան բարձր աստիճանի համար: Գոհունակութիւնս եմ յայտնում նաեւ դիտորդների միջազգային առաքելութեան կողմից Հայաստանի նախագահական ընտրութիւնների ընթացքին տրուած նախնական գնահատականի կապակցութեամբ, որոնց կարծիքով՝ ընտրութիւնները համապատասխանել են ԵԱՀԿ-ի եւ Եւրոպայի խորհրդի պարտաւորութիւններին եւ չափանիշներին:

Ակնկալում եմ, որ բոլոր քաղաքական ուժերը ընտրութիւններից յետոյ կ'որդեգրեն պատասխանատու գործելաոճ: Բոլոր դժգոհութիւնները պէտք է մանրակրկիտ հետաքննուեն եւ պէտք է անդրադարձ կատարուի ընտրութիւնների արդիւնքում արձանագրուած բոլոր խախտումներին: Ցանկացած հակասութիւն պէտք է լուծուի երկխօսութեան միջոցով:

Եւրամիութիւնը հաւատարիմ կը մնայ Հայաստանի հետ յետագայ համագործակցութեան ամրապնդմանը՝ հիմնուելով Եւրոպական Հարեւանութեան Քաղաքականութեան վրայ:

Հայաստանի նոր նախագահի ընտրութիւնները նաեւ հարեւանների հետ յարաբերութիւնների բարելաւման քայլեր ձեռնարկելու հնարաւորութիւն են: Դա ներառում է ղարաբաղեան հակամարտութեան լուծմանն ուղղուած ջանքերի վերսկսումը: Եւրամիութիւնն աջակցում է ԵԱՀԿ Մինսկի խմբի ջանքերին եւ անհրաժեշտ օժանդակութիւն կը ցուցաբերի հակամարտութեան կարգաւորման գործընթացին»:

## ՆԵՐԿԱՅԱՑՐԻՆ ՊԱՀԱՆՋՆԵՐԸ

*A1+,* 16:44

Նիկոլ Փաշինեանը քիչ առաջ ներկայացրեց ժողովրդի պահանջները. «Մենք այս հրապարակից չենք հեռանայ, մինչեւ ընտրութիւնները անվաւեր չճանաչուեն, մինչեւ չձերբակալուեն յանցագործները, բոլոր նրանք, ովքեր փետրուարի 19-ին յանցագործութիւններ են կատարել՝ սկսած Մխչեանի Մկի լակոտներից, Թոխմախի Միերի փեսայից, վերջացրած Արաբկիրի թաղապետով»: Նիկոլ Փաշինեանը նաեւ ուղիղ եթեր է պահանջել Հանրային հեռուստատեսութեամբ:

## «ԴՈՒՔ *ՀԱՅԼՈՒՐԻ՞Ց* ԷՔ»

*A1+*, 16:46

«Սաղ սուտ են ասում, հաշուարկները հլը չէին պրծել, *Հայլուր*ն արդէն յայտարարում ա, որ Սերժը յաղթել ա, էդպիսի բան ո՞վ ա տեսել», - Ազատութեան Հրապարակում հաւաքուած մարդկանց պատմում էր տիկին Լիդան. «Հեռուստացոյցը սուտ ա, իմ հեռուստացոյցը Ազատութեան Հրապարակն ա»: Մէկ այլ քաղաքացի էլ արտայայտուեց նախագահ Ռոբերտ Քոչարեանի շնորհաւորանքի վերաբերեալ. «Էնի կեղծ ընտրուած նախագահ ա, դրա համար էլ միւս կեղծ ընտրուածին շնորհաւորում ա»:

Հրապարակում հաւաքուած մարդիկ ագրեսիւ են տրամադրուած, յատկապէս

*Հայլուր*ի նկատմամբ, որը Աբրահամ պապիկի խօսքերով՝ ժողովրդին իրար դէմ է տրամադրում. «Ամէն ինչ փոցնում են, եսիմ ինչեր են անում, գալիս իմ աչքով տեսնում եմ, գնում եմ տուն, տելեւիզոր եմ նայում, էնպէս են խաբում, որ մարդ իրա տեսածին սկսում ա չհաւատալ»: Մարդկանց բարկութիւնն այն աստիճանի էր հասել, որ նրանք Ազատութեան Հրապարակում հաւաքուած լրագրողներից շատերին հարցնում էին. «Դուք *Հայլուր*ի՞ց էք», իմացէք, եթէ *Հայլուր*ից լինէիք, ձեր գլուխը կը ջարդէինք»: Աւելի «դժուար է» օպերատորների գործը, որոնք զայրացած քաղաքացիներին բացատրում են, որ իրենք «մեղաւոր չեն», որ *Հ1*-ն այդպիսի կադրեր է ցոյց տալիս:

Քաղաքացիները մարտական են տրամադրուած, նրանք միաձայն պնդում են, որ եթէ պէտք լինի մի ամբողջ շաբաթ էլ կը կանգնեն հրապարակում: «Մենակ թէ պրծնենք, էս տականքներից», - ամփոփեց տիկին Յասմիկը:

## ՈՒՍԱՆՈՂՈՒԹԵԱՆԸ ԿՈՉ ԴԱՍԱԴՈՒԼԻ

*Lragir.am*, 16:47

Այսօր Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող հանրահաւաքում Հայաստանի պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը կոչ է արել ուսանողութեանը՝ դասադուլ անել: Այնուհետեւ ելոյթ ունեցաւ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ նոյնպէս կոչ արեց ուսանողութեանը վաղը դասադուլ անել եւ ժամը 3-ին միանալ հանրահաւաքին:

## ԿԸ ՊԱՏԺԵ՞Ն ԸՆՏՐԱԿԵՂԾԱՐԱՐՆԵՐԻՆ

*A1+*, 17:15

Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի մամուլի պատասխանատու Էդուարդ Շարմազանովը, մեկնաբանելով որոշ ընտրատեղամասերում վերահաշուարկի արդիւնքում յայտնաբերուած անճշտութիւնները, պարզաբանել է. «Հայաստանում սկսուել է ընտրութիւնների արդիւնքների բողոքարկման եւ վերանայման օրինական գործընթաց: Որոշ թեկնածուներ տարբեր ընտրատեղամասերում քուէարկութեան արդիւնքների վերաբերեալ կասկածներ ունենալով, պահանջել են վերահաշուարկ:

Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբը դատապարտում է բոլոր այն դէպքերը, որոնց ընթացքում կը պարզուի, որ ընտրական յանձնաժողովը միտումնաւոր խեղաթիւրել է ընտրողների ազատ կամարտայայտութեան արդիւնքը, անկախ նրանից, թէ ի օգուտ, կամ ի վնաս ո՞ւմ է դա արուել: Մեր թեկնածու Սերժ Սարգսեանը քանիցս յայտարարել է, որ հետամուտ ենք լինելու ՀՀ նախագահական ընտրութիւնների գործընթացը օրէնքի շրջանակում կազմակերպելուն, ուստի բոլոր ընտրակեղծարարները պէտք է կրեն օրէնքով սահմանուած պատիժ»:

Տեղեկատուութիւնը տարածել է Սերժ Սարգսեանի նախտընտրական շտաբի մամուլի ծառայութիւնը:

### ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՇՏԱԲԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 17:23

Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի մամուլի պատասխանատու Էդուարդ Շարմազանովը, մեկնաբանելով որոշ ընտրատեղամասերում վերահաշուարկի արդիւն-

քում յայտնաբերուած անճշտութիւնները, պարզաբանել է. «Հայաստանում սկսուել է ընտրութիւնների արդիւնքների բողոքարկման եւ վերանայման օրինական գործընթաց: Որոշ թեկնածուներ տարբեր ընտրատեղամասերում քուէարկութեան արդիւնքների վերաբերեալ կասկածներ ունենալով, պահանջել են վերահաշուակ: Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբը դատապարտում է բոլոր այն դէպքերը, որոնց ընթացքում կը պարզուի, որ ընտրական յանձնաժողովը միտումնաւոր խեղաթիւրել է ընտրողների ազատ արտայայտութեան արդիւնքը, անկախ նրանից, թէ ի օգուտ, կամ ի վնաս ո՞ւմ է դա արուել: Մեր թեկնածու Սերժ Սարգսեանը քանիցս յայտարարել է, որ հետամուտ ենք լինելու ՀՀ նախագահական ընտրութիւնների գործընթացը օրէնքի շրջանակում կազմակերպելուն, ուստի բոլոր ընտրակեղծարարները պէտք է կրեն օրէնքով սահմանուած պատիժ»:

## «ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՏԷՐ ԿԸ ԿԱՆԳՆԻ ԻՐ ԱՐԴԱՐ ՁԱՅՆԵՐԻՆ»

*A1+*, 17:24

«Ինչպէս եւ սպասւում էր, այս ընտրութիւնները ուղեկցուեցին բազմաթիւ կեղծիքներով, խախտումներով, լցոնումներով եւ բռնութիւններով, քանի որ առանց դրանց հնարաւոր չէր յաղթել», - *Ա1+*-ին ասաց երեւանցի Աշոտ Համբարձումեանը: Ըստ նրա՝ ընտրութիւնների ելքը նախօրօք է կանխորոշուած եղել:

*Ա1+*-ը հարցումների միջոցով մեր համաքաղաքացիներից փորձեց պարզել, թէ ինչպէ՞ս են գնահատում փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնները, դրանք արդա՞ր են անցել, թէ՞ խախտումներով: Անահիտ Պետրոսեանը նշում է, որ հէնց իր քուէարկութեան ժամանակ Արաբկիր համայնքում մի երիտասարդ քուէատուփի մէջ է գցել 5 քուէաթերթիկ, եւ նա հաստատ համոզուած է, որ դա արուել է Սերժ Սարգսեանի օգտին:

Իսկ Էդուարդ Խլղաթեանն էլ ասում է, որ երբ գնացել է քուէարկութեան իր անուան դիմաց արդէն ստորագրած է եղել. «Ես կարծում եմ, որ այդ ամէնը արուել է իշխանական թեկնածուի օգտին»:

Կարէն Վիրաբեանն էլ ասում է, որ ընտրութիւնների ընթացքում տեղի ունեցած բռնութիւնների եւ լցոնումների մասին իմացել է արտասահմանում ապրող իր բարեկամներից, որոնք էլ այդ մասին տեղեկացել են ինտերնէտից: «Իսկ մեր հեռուստաընկերութիւնները ցոյց են տալիս, որ ընտրութիւնները անցնում են թափանցիկ եւ առանց որեւէ խոչընդոտների, մենք կարելի է ասել գտնւում ենք լրատուական շրջափակման մէջ», - ցաւով նշեց:

Իսկ Մկրտիչ Սարգսեանն էլ պատմում է, որ այս իշխանութիւնները ցոյց տուեցին, որ իրենց համար գոյութիւն չունի ժողովրդի կարծիք, քուէ եւ անում են այնպէս, ինչպէս իրենց է յարմար. «Նրանք կարծում են, որ կարող են ժողովրդի հետ վարուել այնպէս, ինչպէս իրենց է յարմար՝ նրանց դնելով յիմարի տեղ»:

Իսկ Էդիկ Պօղոսեանն էլ նշեց, որ մասնակցում է առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի կազմակերպած հանրահաւաքներին եւ յոյս ունի, որ հայ ժողովուրդը տէր կը կանգնի իր արդար ձայներին եւ հայ ժողովուրդի նախագահ կը դառնայ իսկապէս ընտրուած թեկնածուն:

## ԳԻՒՄՐԻԻՑ ԳՆԱՑՔԸ ՉՄԵԿՆԵՑ

*A1+*, 17:30

Քիչ առաջ ճշտած տեղեկութիւններով, երթուղուց հանուել է Գիւմրի-Երեւան մարդատար գնացքը, որը պիտի Գիւմրուց շարժուէր 16:50-ին: Ըստ ականատեսների, շարժակազմը մտնելու է դեպօ:

*Ասպարէզ*

## ԾԵԾԵԼՈ՞Ւ ԵՆ

*A1+*, 18:09

«Եթէ հրաման տուեցին, պիտի ծեծենք», - անկեղծացան Կառավարութեան շէնքի ետեւում՝ Մելիք Ադամեան փողոցում կանգնած ոստիկանների մի քանիսը՝ չիմանալով, որ զրուցում է լրագրողի հետ: Նրանք ասացին, որ ամէն վայրկեան սպասում են հրամանի, քանի որ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախաձեռնած հանրահաւաքն արտօնուած չէ:

Իսկ ինչո՞ւ էք հաւաքուել այստեղ, մեր հարցին ի պատասխան սրամտեցին՝ ասելով, որ «Ոչինչ չկայ, աշխատավարձ ենք ստանում կամ տաք է եւ դուրս ենք եկել արեւի տակ տաքանալու»: Նրանք նաեւ նշեցին, որ երբեք ձեռք չեն բարձրացնի հայ ժողովրդի վրայ:

Ի դէպ, Մելիք-Ադամեան փողոցում հաւաքուած 200-ից աւելի ոստիկանները նստած էին մեքենաների եւ աւտօբուսների մէջ: Այն տպաւորութիւնն էր, թէ նրանք սպասում են հրամանի՝ շարժուելու, սակայն նրանք պատճառաբանեցին, որ ցուրտ է:

## ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՓՈԽՆԱԽԱՐԱՐՆԵՐԸ ՄԻԱՑԵԼ ԵՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ

*Lragir.am*, 18:48

Ազատութեան Հրապարակում ընթացող հանրահաւաքում մօտ կէս ժամ առաջ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ երէկ ինքը հանդիպել է պաշտպանութեան փոխնախարար, գեներալ լեյտենանտ Մանուէլ Գրիգորեանի հետ: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտնել է, որ իր ելոյթի պահին պաշտպանութեան փոխնախարարներ Մանուէլ Գրիգորեանը եւ Գագիկ Մելքոնեանը մի կողմից եւ ՀՀ Զինուած Ուժերի գլխաւոր շտաբի պետ Սէյրան Օհանեանը միւս կողմից բանակցութիւններ են վարում: Բանակցութեան իմաստն այն է, որ Մանուէլ Գրիգորեանը եւ Գագիկ Մելքոնեանը բանակի ղեկավարութեան անունից յայտարարում են, որ որպէս փոխնախարարներ կը կանգնեն ժողովրդի կողքին: Լեւոն Տէր-Պետրոսեանը վստահ է, որ բանակի միւս հրամանատարներն էլ կը կանգնեն ժողովրդի կողքին: Նա յայտնել է, որ Մանուէլ Գրիգորեանը եւ Գագիկ Մելքոնեանը յայտարարել են, որ թոյլ չեն տայ, որ բանակը խառնուի քաղաքականութեանը եւ դուրս գայ ժողովրդի դէմ, եւ Մանուէլ Գրիգորեանը եւ Գագիկ Մելքոնեանը հանդէս են գալիս որպէս հայ ժողովրդի անվտանգութեան երաշխաւոր: Այսօր նաեւ առաջին անգամ Երկրապահ կամաւորական միութեան փոխնախագահ Միասնիկ Մալխասեանը յայտարարել է, որ ԵԿՄ կանգնած է ժողովրդի կողքին:

## ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՓՈԽՆԱԽԱՐԱՐՆԵՐԸ ՄԻԱՑԱՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ (video)

*A1+*, 18:50

Հէնց նոր Լեւոն Տէր-Պետրոսեանը Ազատութեան Հրապարակում բացայայտեց այն անակնկալը, որը խոստացել էր երէկ: Ըստ նրա՝ ինքը հանդիպել է Հայաստանի պաշտպանութեան փոխնախարար, Արցախեան պատերազմի հերոս, գեներալ-լեյտենանտ Մանուէլ Գրիգորեանի հետ:

«Այս պահին գեներալ-լեյտենանտ Մանուէլ Գրիգորեանը, նրան միացած մի այլ փոխնախարար՝ գեներալ-լեյտենանտ Գագիկ Մելքոնեանը, ժողովրդի անունից եւ բանակի գլխաւոր շտաբի պետ, գեներալ-գնդապետ Սէյրան Օհանեանը բանակցութիւններ են վարում, - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը, - Բանակցութիւնների իմաստը հետեւեալն է, որ բանակի հրամանատարութիւնը յանձինս Մանուէլ Գրիգորեանի, Գագիկ Մելքոնեանի՝ յայտարարում է, որ (ես լիազօրուած եմ իրենց յայտարարութիւնը Ձեզ փոխանցել) իրենք որպէս բանակի փոխնախարարներ՝ կանգնած են ժողովրդի կողքին եւ պաշտպանելու եմ ժողովրդի վստահութեանը արժանացած թեկնածուին»:

Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի՝ Պաշտպանութեան փոխնախարարները յայտարարել են նաեւ, որ թոյլ չեն տայ, որ բանակը խառնուի քաղաքականութեանը եւ գործադրուի սեփական ժողովրդի դէմ»: «Մանուէլ Գրիգորեանը եւ Գագիկ Մելքոնեանը իրենց համարում են հայ ժողովրդի անվտանգութեան երաշխաւոր», - շարունակեց Լեւոն Տէր-Պետրոսեանը, ապա իր անունից վստահութիւն յայտնեց, որ բանակի ողջ հրամանատարութիւնը կը միանայ նրանց:

Լեւոն Տէր-Պետրոսեանի ելոյթից յետոյ, նրա հետ միասին Ազատութեան Հրապարակը թնդում էր «Մանուէլ, Մանուէլ», «Գագիկ, Գագիկ» վանկարկումներից:

## ՎՐԱՆԱՅԻՆ ՔԱՂԱՔ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*Lragir.am*, 19:45

Ազատութեան Հրապարակում հնչում է երաժշտութիւնը եւ տասնեակ հազարաւոր քաղաքացիներ պար են բռնել Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի, նրան աջակցող քաղաքական գործիչների հետ, տօնելով համաժողովրդական շարժման յաջողութիւնը: Տրամադրութիւնը յատկապէս բարձրացաւ այն բանից յետոյ, երբ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ համաժողովրդական շարժմանն իրենց աջակցութիւնն են յայտնել պաշտպանութեան փոխնախարարներ Մանուէլ Գրիգորեանն ու Գագիկ Մելքոնեանը: Դրանից յետոյ հասարակութիւնը սկսել է վանկարկել Լեւոն-Լեւոն, բայց Լեւոն Տէր-Պետրոսեանը յորդորել է բղաւել Մանուէլ-Մանուէլ: Քաղաքացիները լսել են նախագահի յորդորը եւ սկսել են վանկարկել Մանուէլ, Գագիկ, Լեւոն Տէր-Պետրոսեանն էլ նրանց հետ: «Իսկ հիմա Լեւոն», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, եւ հասարակութիւնը սկսել է վանկարկել Լեւոն:

Այնուհետեւ հարթակի լիդէրները ցանկութիւն են յայտնել պար բռնել քաղաքացիների առաջ: Երաժշտութիւնը միացրել են եւ մի քանի րոպէ անց լիդէրների պարին միացել է նաեւ բազմութիւնը: Այս պահին արդէն Ազատութեան Հրապարակում սկսւում են վրանային քաղաքի կազմակերպական աշխատանքները: Գիշերը հրապարակում լինելու է նստացոյց: Քաղաքացիները շարունակում են դեռեւս մնալ Ազատութեան Հրապարակում:

Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի անդամ Նիկոլ Փաշինեանը յայտարարել է նաեւ, որ հանրահաւաքի վերաբերեալ խօսք կայ Հայաստանի նախագահի ընտրութեան մասին ԱՄՆ Պետդեպի արձագանքում: Նիկոլ Փաշինեանը նշել է, որ ԱՄՆ Պետդեպարտամենտը ողջունել է, որ հանրահաւաքի մասնակիցները զերծ են մնում բռնութիւնների դիմելուց: Նիկոլ Փաշինեանն ասում է, որ դա համաժողովրդական շարժմանը տրուած նպաստաւոր միջազգային գնահատական է:

## ՄԻ ՏԵՂ՝ ՔԷՖ ՈՒՐԱԽՈՒԹԻՒՆ, ՄԻ ՏԵՂ՝ ՍԵՒ ԴՐՕՇՆԵՐ

*A1+*, 19:52

«Սա համաժողովրդական շարժում է. մեզ հետ են դասախօսներ եւ ուսանողներ, գործազուրկներ եւ մեծահարուստներ, մտաւորականներ, գրողներ, լրագրողներ, չկայ մի խաւ, որի ներկայացուցիչները մեր շարժման մասնակից չլինեն», - այսօր հանրահաւաքի ժամանակ յայտարարեց Այլընտրանք հասարակական նախաձեռնութեան համակարգող Նիկոլ Փաշինեանը: Նա ընդգծեց, որ հրապարակի զանգուածի մեծամասնութիւնը՝ 70 տոկոսը երիտասարդութիւն է:

«Իսկ սա նշանակում է, որ մենք պատրաստ ենք իրադարձութիւնների զարգացման ցանկացած սցենարի», - յայտարարեց Փաշինեանը: «Այո, այո, այո», - արձագանքեցին հանրահաւաքի մասնակիցները: Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանն էլ նկատելով, որ հայ ժողովուրդը «ընտրել է մտաւորական մարդու, ոչ թէ թերուս անգրագէտի», կոչ արեց երիտասարդութեանը՝ դասադուլ անել: Նա յայտարարեց, որ իրենք են ստանձնում պատասխանատուութիւնը եւ դրա հետ կապ չունի Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը: «Դա-սա-դուլ» սկսեց վանկարկել հանրութիւնը: Որից յետոյ Լեւոն Տէր-Պետրոսեանը մօտեցաւ բարձրախօսին եւ յայտարարեց, որ ինքն է ստանձնում պատասխանատուութիւնը դասադուլի համար, բայց փորձեց պարզել, թէ հաւաքուածների քանի՞ տոկոսն է ուսանող. պարզուեց, որ հանրահաւաքի մասնակիցների զգալի մասը ուսանող են, որոնք միաբերան վանկարկում էին «Դա-սա-դուլ»:

Հանրահաւաքի ընթացքում Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, որ Վարդենիսի մի քանի գիւղերի գիւղապետարանների վրայ կախուած եռագոյն դրօշներին կապել են սեւ ժապաւէններ՝ ի նշան սուգի:

ԿԸՅ-ում Ժառանգութեան ներկայացուցիչ Զոյա Թադեւոսեանը ելոյթ ունեցաւ եւ տեղեկացրեց, որ ինքը աղբի միջից յայտնաբերել է 1000 կնքուած ծրարներ, որոնք նախատեսուած էին Սերժ Սարգսեանի օգտին լցնելու համար, սակայն հասկանալով, որ չափը շատ են անցնում, թափել են աղբի մէջ: «Ազգի դաւաճանները նորից խանգարեցին, որ ձեր ձայները տեղ հասնեն», - ասաց Զոյա Թադեւոսեանը:

Նիկոլ Փաշինեանը խօսեց այն մասին, որ ժամանակին իրենք քննադատել են ընդդիմութեանը, այս բանն անելու, կամ այն բանը չանելու համար, բայց եթէ չլինէր նրանց պայքարը, այսօր այս հրապարակում այսքան մարդ չէր լինի, - ասաց Նիկոլ Փաշինեանը եւ հերթով թուարկեց իրենց կողքին կանգնած կուսակցութիւնների անունները:

Փաշինեանը յայտարարեց. «Մենք պէտք է 10 տարի պայքարած մարդկանց խօսք տանք, որ 10 տարի էլ պէտք լինի՝ կը մնանք այստեղ»: Բարձրախօսին մօտեցաւ Ոգու Փորձութիւն կազմակերպութեան փոխնախագահ Սասուն Միքայէլեանը եւ ասաց. «Մենք մտադրութիւն չունենք 10 տարի սպասելու», ինչին արձագանքեց հանրութիւնը՝ «հի-մա»

վանկարկումներով:

Նիկոլ Փաշինեանը խօսեց 9/31 տեղամասի վերահաշուարկի արդիւնքների մասին, ինչի արդիւնքում Սերժ Սարգսեանի ձայները՝ 709 ձայն, նուազել է 395-ի: 1 ձայն Գեղամեանից են վերցրած եղել, 22 ձայն Տիգրան Կարապետեանից, 1 ձայն Արամ Յարութիւնեանից, 50-ից աւելի ձայներ Վազգէն Մանուկեանից: «Այս բովանդակ թեկնածուների 90 տոկոսը քեզ էր ծառայում. այս մարդն անգամ իր թիմի նկատմամբ է անբարոյական», - ասաց Նիկոլ Փշինեանը, ապա աւելացրեց, որ «Խեղճ ու կրակ Արամ Յարութիւնեանը 1 ձայն էր ստացել, այն էլ Սերժ Սարգսեանը խլեց. սա է Սերժ Սարգսեանի մաւշտաբը. «Ամօթ քեզ, ամօթ քեզ դաստիարակողին», - ասաց Փաշինեանը: «Ամօթ», - վանկարկեցին հանրահաւաքի մասնակիցները: Այնուհետեւ 5 րոպէ ընդմիջում յայտարարեց, որի ընթացքում ուղիղ 5 րոպէ երգ ու պար, խրախճանք ու ոգեւորութիւն էր տիրում հրապարակում:

Ի դէպ, հարթակում էլ ուս ուսի պարում էին Խաչատուր Սուքիասեանը, Արարատ Զուրաբեանը եւ Նիկոլ Փաշինեանը: «Պարում է յաղթանակած ժողովուրդը, յաղթած թեկնածուի ընտրազանգուածը, դէ թող իրենք պարեն, երէկ համերգ էին հրաւիրել 10 հոգի մարդ եկաւ, չկարողացան համերգն անցկացնել», - ասաց Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը:

## 314 ՁԱՅՆ ԳՈՂԱՑԵԼ ԵՆ (video)

*A1+*, 19:55

Երեւանի Կենտրոնի թիւ 9/31 տեղամասում քուէարկութեան արդիւնքների այսօր կատարուած վերահաշուարկի ժամանակ աղաղակող խախտումներ են արձանագրուել:

Ընտրատարածքային ընտրական յանձնաժողովը, որը վերահաշուարկ է կատարել Օրինաց Երկիրը ներկայացնող տեղամասային յանձնաժողովի անդամ Հենրիկ Ստեփանեանի պահանջով, յայտնաբերել է, որ նախագահութեան թեկնածու Սերժ Սարգսեանի օգտին քուէարկել է ոչ թէ 709 ընտրող, ինչպէս պաշտօնապէս արձանագրուել է քուէարկութիւնից յետոյ, այլ ընդամէնը 395 ընտրող:

Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին, ըստ քուէարկութեան օրը կազմուած արձանագրութեան, քուէարկել է 376 ընտրող, մինչդեռ վերահաշուարկի արդիւնքում պարզուեց, որ իրականում նա ունի 392 քուէ:

Արթուր Բաղդասարեանը իրականում ստացել է 184 քուէ, մինչդեռ փետրուարի 19-ին արձանագրուել էր, որ նա ունի ընդամէնը 134 ձայն:

Հսկայական տարբերութիւն յայտնաբերուեց Վահան Յովհաննիսեանի դէպքում՝ արձանագրուել էր, որ նրա օգտին քուէարկել է ընդամէնը 3 ընտրող, այնինչ իրականում նրա օգտին քուէարկածների թիւր 120 է:

Ըստ պաշտօնական արձանագրութեան՝ Վազգէն Մանուկեանն ընդհանրապէս որեւէ ձայն չի ստացել, այնինչ այսօր պարզուեց, որ նրա օգտին այդ տեղամասում քուէարկել է 57 ընտրող:

Գրեթէ նոյնն է պատկերը Արման Մելիքեանի դէպքում՝ գրուել է 0 ձայն, իսկ այսօր պարզուել է, որ նրա օգտին 6 մարդ է քուէարկել:

Տիգրան Կարապետեանի օգտին տուած քուէները արձանագրութիւնում նուազեցուել են ուղիղ երկու անգամ՝ իրականում եղել է 22, իսկ գրուել է 11:

Արտաշէս Գեղամեանը իրականում ստացել է 7 ձայն, թէեւ արձանագրութիւնում գրուել էր 6:

Եւ վերջապէս Արամ Յարութիւնեանը, որի օգտին, ըստ արձանագրութեան, որեւէ մէկը չի քուէարկել, իրականում ունեցել է մէկ ընտրող:

Թիւ 9 ընտրատարածքային ընտրական յանձնաժողովի նախագահ Եղիշէ Տէրտէրեանը պատրաստւում է դիմել դատախազութիւն:

«Սա արտառոց, եզակի դէպք է», - ասաց նա *Ազատութիւն* ռադիոկայանի հետ զրոյցում:

## ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է ԱԿԱՄԱՅԻՑ, ՉԻՄԱՆԱԼՈՎ

*Lragir.am*, 19:56

Երեւանի թիւ 9/31 ընտրատարածքում կատարուած վերահաշուարկի ժամանակ, ինչպէս փետրուարի 21-ին յայտարարել է Այլընտրանք նախաձեռնութեան անդամ Նիկոլ Փաշինեանը, պարզուել է, որ Սերժ Սարգսեանի օգտին է գրուել անգամ Արամ Յարութիւնեանի ստացած մէկ ձայնը: Նիկոլ Փաշինեանի խօսքով, դա է Սերժ Սարգսեանը, որ գողացել է անգամ «խեղճ ու կրակ» Արամ Յարութիւնեանի մի ձայնը: Ի դէպ, փետրուարի 21-ի կէսօրին Արամ Յարութիւնեանը շնորհաւորել է Սերժ Սարգսեանին: Ըստ երեւոյթին, այդ պահին նա չէր կարող իմանալ իր գողացուած ձայնի մասին:

## ՎՐԱՆՆԵՐՆ ԱՐԴԷՆ ԱՄՐԱՑՒՈՒՄ ԵՆ (video)

*A1+*, 19:57

Ազատութեան Հրապարակում բեմահարթակի վրայ գտնուող մարդկանց տրամադրութիւնն այնքան բարձր է, որ Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, որ ուզում են պարել մարդկանց հետ միասին:

Երաժշտութիւնը բաձրացրին ու Լեւոն Տէր-Պետրոսեանն ու բեմահարթակին գտնուող բոլոր մարդիկ սկսեցին պարել: Այնուհետեւ՝ հաւաքուածներն այնքան գոռացին «Խաչիկ Սուքիասեան», որ վերջինս ստիպուած փոքրիկ ելոյթ ունեցաւ՝ ասելով. «Ես խոստանում եմ, որ դուք բարեկեցիկ էք ապրելու եւ մենք կանգնել էք մեր նախագահի կողքը ու մինչեւ վերջ կանգնած ենք մնալու»:

Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, որ հանրահաւաքի պաշտօնական մասն աւարտուեց եւ Ազատութեան Հրապարակում արդէն վրաններ են ամրացուելու:

Հրապարակում նաեւ բազմաթիւ ուսանողներ կան, որոնք նամակներ ուղարկեցին Նիկոլ Փաշինեանին՝ հաւաստիացնելով, որ վաղը դասի չեն գնալու: Այժմ արդէն մեծ քանակով ուտելիքի պաշար է բերւում հրապարակ, քանի որ մարդիկ գիշերը մնալու են այստեղ՝ վրաններում, նստացոյցի: Ենթադրւում է, որ մօտ 1000 մարդ կը նստի նստացոյցի:

## «ԸՆՏՐԱԽԱԽՏՈՒՄՆԵՐԸ ՍՏՈՒԵՐՈՒՄ ԵՆ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ»

*A1+*, 19:59

«Չնայած ընտրատեղամասերի զգալի մասում տիրող խաղաղ մթնոլորտին, օրինականութեան պահպանմանը, մեր կողմից դիտարկուել են մի շարք խախտումներ,

թերութիւններ, անճշտութիւններ եւ այլ մտահոգիչ փաստեր, որոնք ստուերում են ժողովրդավարական ընտրութիւնների վերաբերեալ մեր ակնկալիքները», - նշուած է Ընտրութիւնը Քոնն Է ՀԿ-ի նախնական զեկոյցում, որը ՀՀ նախագահական ընտրութիւնների ժամանակ իրականացնում էր դիտորդական առաքելութիւն:

Մտահոգիչ փաստեր ասելով՝ մասնաւորապէս առաքելութիւնը նկատի ունէր որոշ տեղամասերում վստահուած անձանց եւ ԶԼՄ-երի ներկայացուցիչների իրաւունքների սահմափակում, նրանց նկատմամբ բռնարարքների կիրառում, որոշ տեղամասերից դուրս իրար վիրաւորանքներ հասցնելու եւ ծեծկռտուքի դէպքեր, թաղային հեղինակութիւնների կողմից յանձնաժողովների անդամների, վստահուած անձանց եւ ԶԼՄ-երի ներկայացուցիչների հանդէպ ճնշումների գործադրում, ընտրողների վրայ անօրինական կերպով ներազդելու դէպքեր, որոշ ընթացակարգերի միտումնաւոր կերպով անտեսում եւ այլն:

«Այս եւ շատ այլ փաստեր մտահոգութեան տեղիք են տալիս եւ կարող են մի կողմից խորացնել ընտրողների հիասթափութիւնն ընտրական գործընթացների հանդէպ, միւս կողմից էլ հարուածել ընտրական գործընթացների անաղարտութեանը: Մեր գնահատմամբ քուէարկութեան ընթացքում տեղ գտած այս միջադէպերը պայմանաւորուած էին պաշտօնական քարոզարշաւի ընթացքում տիրող անհանդուրժողականութեամբ եւ ժողովըրդավարական ընտրութիւններին անյարիր ոչ քաղաքակիրթ մրցապայքարի անթոյլատրելի դրսեւորումներով, որոնց վերաբերեալ մեր մտահոգութիւնն արդէն արտայայտել ենք», - յայտարարեց Ընտրութիւնը Քոնն Է ՀԿ-ի մամուլի քարտուղար Յասմիկ Սարգսեանը:

Բացի այդ, ըստ ՀԿ-ի զեկոյցի՝ արձանագրուած խախտումները հետեւանք են նաեւ ընտրական կուլտուրայի անբաւարար մակարդակի: Այդ պատճառով Ընտրութիւնը Քոնն Է ՀԿ-ի ներկայացուցիչներն յայտարարեցին, որ հետեւողականօրէն հետեւելու են նաեւ յետընտրական գործընթացներին՝ հաւաստիանալու համար, որ ընտրական օրինախախտումների հեղինակները պատասխանատուութեան են ենթարկուելու օրէնքով սահմանուած կարգով: «Յոյս ունենք, որ իշխանութիւնները կը դրսեւորեն քաղաքական կամք՝ վերոյիշեալն իրագործելու համար», - ընդգծեց Յասմիկ Սարգսեանը: Ի դէպ, թիւ 11/07, 11/08 ընտրատեղամասերում մի քանի անյայտ երիտասարդներ խոչընդոտել են նաեւ Ընտրութիւնը Քոնն Է ՀԿ-ի դիտորդներին՝ սպառնալով եւ պահանջելով միայն «լաւ բան» գրել տիրող իրավիճակի մասին:

Այնուհետեւ՝ Ընտրութիւնը Քոնն Է ՀԿ-ի նախագահ Յարութիւն Համբարձումեանը սկսեց մէկ առ մէկ թուարկել այն բոլոր ընտրախախտումները, որոնք արձանագրել են իրենց դիտորդները 1923 ընտրատեղամասերում: Մէկ շաբաթից պատրաստ կը լինի ՀԿ-ի վերջնական զեկոյցը, որտեղ կը ներառուեն այն բոլոր տուեալները, որոնք կը ստացուեն Տաւուշից, Սեւանից, Սիսիանից, Գիւմրիից դեռ նոր վերադարձած դիտորդների արձանագրութիւնները:

Բացի բազմաթիւ ընտրախախումներից ՀԿ-ն արձանագրել է նաեւ մի շարք դրական իրողութիւններ: Օրինակ այն, որ զգալիօրէն բարելաւուել է ընտրողների ցուցակները, որի մասին վկայում է ընտրողների 69 տոկոսից աւելի ակտիւ մասնակցութիւնը: Դրական է գնահատուել նաեւ այն, որ ընդհանուր իրաւասութեան դատարաններ համեմատաբար քիչ քաղաքացիներ են դիմել:

## ԴԱՆԱԿԱՀԱՐԵԼ ԵՆ

*A1+*, 20:00

Կոտայքի մարզի Ալափարս գիւղում Լեւոն Տէր-Պետրոսեանը յաղթանակ է տարել եւ այս իրողութեան հետ չհամակերպուելով, մարզպետ Կովալենկօ Շահգալդեանի կողմնակիցները դիմել են այլ միջոցների:

«Կովալի բաշիբոզուկները երէկ յարձակուել եւ դանակահարել են Լեւոն Տէր-Պետրոսեանի Ալափարսի շտաբի պետի որդուն», - այսօր հանրահաւաքի ժամանակ յայտարարել է Նիկոլ Փաշինեանը եւ պահանջել «ձերբակալել այդ բաշիբոզուկներին եւ պատժել, այլապէս այլընտրանք չի մնայ, եւ ժողովուրդը իր ձեռքով կը պատժի նրանց»:

## ՊԱՐԶԱՊԷՍ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*A1+*, 20:02

Հայաստանի նախագահական ընտրութիւնների կապակցութեամբ ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղար Եաապ դէ Հուպ Սխեֆէրը հանդէս է եկել յայտարարութեամբ, որում մասնաւորապէս, ասուած է.

«Ես ոգեւորուած եմ Միջազգային Դիտորդական Առաքելութեան նախնական եզրակացութեամբ, որն արձանագրել է որոշակի առաջընթաց: Այնուամենայնիւ, արձանագրուել են նաեւ մտահոգութիւններ, եւ դրանց անպայմանօրէն պէտք է անդրադարձ արուի:

ՆԱՏՕ-ն պատրաստ է շարունակել աշխատել Հայաստանի հետ Անհատական Գործակցութեան Գործողութիւնների Ծրագրի շրջանակներում եւ աջակցութիւն ցուցաբերել ամրապնդելու Հայաստանի ժողովրդավարական ինստիտուտները»:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ ՇՆՈՐՀԱՒՈՐԱՆՔԻ ԽՕՍՔ ՉԿԱՅ

*Lragir.am*, 20:09

Հայաստանի նախագահի ընտրութեան կապակցութեամբ շարունակւում են Սերժ Սարգսեանին ուղղուած շնորհաւորանքները: Դրանցից մէկն էլ ուղարկել է ՆԱՏՕ գլխաւոր քարտուղար Եաապ դէ Հուպ Սխեֆէրը: Այդ մասին տեղեկացնում է կառավարութեան մամուլի ծառայութիւնը, ներկայացնելով շնորհաւորանքի տեքստը: «Ես ոգեւորուած եմ Միջազգային դիտորդական առաքելութեան նախնական եզրակացութեամբ, որն արձանագրել է որոշակի առաջընթաց: Այնուամենայնիւ, արձանագրուել են նաեւ մտահոգութիւններ, եւ դրանց անպայմանօրէն պէտք է անդրադարձ արուի: ՆԱՏՕ-ն պատրաստ է շարունակել աշխատել Հայաստանի հետ Անհատական Գործակցութեան Գործողութիւնների Ծրագրի շրջանակներում եւ աջակցութիւն ցուցաբերել ամրապնդելու Հայաստանի ժողովրդավարական ինստիտուտները», ասուած է ՆԱՏՕ գլխաւոր քարտուղարի ուղերձում:

Յատկանշական է, որ ուղերձը թէեւ համարւում է Սերժ Սարգսեանին ուղղուած շնորհաւորական, բայց դրանում չկայ ուղղակի Սերժ Սարգսեանին շնորհաւորելու որեւէ տող, առաւել եւս յաղթանակի կապակցութեամբ: Յատկանշական է նաեւ, որ նոյն այդ հանգամանքը առկայ է Եւրոպական Միութեան անվտանգութեան հարցերի յանձնակատար, ՆԱՏՕ նախկին գլխաւոր քարտուղար Խաւիէր Սոլանայի շնորհաւորական ուղերձի մէջ, ուր նոյնպէս բացակայում է Սերժ Սարգսեանի անունն ու կոնկրէտ յաղթանակի կապակցութեամբ նրան ուղղուած շնորհաւորանքը:

## ՆՍՏԱՑՈՅՑԸ ՄԵԿՆԱՐԿԵԼ Է

*A1+*, 20:11

Այս պահին Նիկոլ Փաշինեանը, որպէս ՀՀ ազատ քաղաքացի նստացոյց է յայտարարել Ազատութեան Հրապարակում: Հանրահաւաքի մասնակիցների թիւը մի փոքր նուազել է, բայց յատկանշական է, որ աւելացել է երիտասարդների քանակը: Մարդկանց մի մասը գնացել է՝ ուտելիք բերելու, իսկ տեղում արդէն 5 վրան է ամրացուած եւ աւելացւում են վրանների թիւը: Նիկոլ Փաշինեանը դիմելով ոստիկանութեանը՝ ասել է, որ եթէ Տէր-Պետրոսեանի շտաբի մօտ բողոքի ցոյց անող 4 հոգուն 4 խումբ ոստիկան էր հսկում, ապա ինքը պահանջում է, որ իրենց անվտանգութիւնն էլ ապահովեն: Երիտասարդները պարում են երգում, դրօշները ծածանում: Ազատութեան Հրապարակում երգ, ուրախութիւն է:

## ԳԻՒԼԸ ՆՈՅՆՊԷՍ ՀԱՍՑՐԵՑ

*Lragir.am*, 20:14

Թուրքիայի նախագահ Աբդուլահ Գիւլը շնորհաւորական ուղերձ է յղել Հայաստանի վարչապետ Սերժ Սարգսեանին՝ նախագահական ընտրութիւններում յաղթանակ տանելու կապակցութեամբ: Այդ մասին տեղեկացնում է կառավարութեան մամուլի ծառայութիւնը: «Իմ եւ Թուրքիայի ժողովրդի անունից ցանկանում եմ շնորհաւորել Ձեզ՝ Հայաստանի Հանրապետութեան նախագահ ընտրուելու կապակցութեամբ եւ մաղթել յաջողութիւն: Յուսով եմ, որ Ձեր նոր պաշտօնը հնարաւորութիւն կ'ընձեռի ստեղծելու մթնոլորտ՝ կարգաւորելու Հայաստանի եւ Թուրքիայի ժողովուրդների միջեւ յարաբերութիւնները, ովքեր ապացուցել են, որ կարող են դարեր շարունակ ապրել կողք-կողքի խաղաղութեան եւ ներդաշնակութեան մէջ: Ես անկեղծօրէն ցանկանում եմ, որ մեր ընդհանուր ջանքերը ստեղծեն մի եղանակ, որը հիմնուած կը լինի կայունութեան, փոխադարձ վստահութեան եւ համագործակցութեան վրայ, ինչն իր ներդրումը կ'ունենայ տարածաշրջանում խաղաղութեան եւ բարեկեցութեան հաստատմանը:

Օգտուելով այս առիթից՝ ես Ձեզ եմ փոխանցում իմ անկեղծ բարեմաղթանքները Ձեր առողջութեան եւ երջանկութեան, ինչպէս նաեւ հայ ժողովրդի խաղաղութեան եւ բարեկեցութեան համար», ասուած է Աբդուլա Գիւլի շնորհաւորական ուղերձում:

## ՊԵՏԴԵՊԱՐՏԱՄԵՆՏԸ ՄՏԱՀՈԳՈՒԱԾ Է

*A1+,* 20:20

Ամերիկայի Միացեալ Նահանգները մտահոգուած է Հայաստանի նախագահական ընտրութիւններում ձայների հաշուարկման ժամանակ տեղ գտած խնդիրների մասին հաղորդումներով: Այդ մասին յայտարարել է ԱՄՆ-ի Պետդեպարտամենտի խօսնակ Էդգար Վասկէսը:

«Մենք դեռեւս ուսումնասիրում ենք ընտրութիւնների անցկացման վերաբերեալ մեր ստացած տարբեր զեկոյցները», - ասել է Վասկէսը:

Նշելով, որ ԵԱՀԿ-ի ժողովրդավարական հաստատութիւնների եւ Մարդու Իրաւունքների գրասենեակի ղեկավարած դիտորդական առաքելութեան միջանկեալ զեկոյցում ընտրութիւնները համարուել են հիմնականում միջազգային չափանիշներին համապատասխանող, Պետդեպարտամենտի խօսնակը, միաժամանակ, յաւելել է. - «Մեզ մտահո-

գում են զեկոյցի որոշ տարրեր, այդ թւում դիտարկուած ընտրատեղամասերի 15 տոկոսում ձայների հաշուարկման բնութագրումը որպէս «վատ» կամ «շատ վատ»:

«Մենք հասկանում ենք, որ ընդդիմութեան բազմամարդ բողոքի ցոյցեր են անցկացւում: Մենք ողջունում ենք իշխանութիւններին եւ ընդդիմութեանը այդ հաւաքների հանդարտ եւ խաղաղ անցկացումը ապահովելու համար: Կոչ ենք անում բոլոր կողմերին պահպանել խաղաղ իրավիճակը եւ զերծ մնալ ապօրինի կամ բռնի գործողութիւններից», - ասել է նա:

*Ազատութիւն* ռադիոկայան

## «ՊԻՏԻ ԱՊԱՒԻՆԵՆՔ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԻՄԱՍՏՈՒԹԵԱՆԸ» (video)

*A1+*, 21:07

Ազատութեան Հրապարակի հարթակում Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ ընդդիմութեան միւս թեկնածուների շուրջպարից յետոյ՝ ելոյթ ունեցաւ Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը: «Քիչ առաջ բոլորս միասին պարում էինք: Պարում է նա, ով յաղթել է: Դէ, թող պարի այն նկարի մարդը», - ասաց նա՝ ցոյց տալով Ազատութեան Հրապարակի նորակառոյցի վրայ փակցուած Սերժ Սարգսեանի լուսանկարը:

«Իշխանութիւնները իրենք էլ իրենց յաղթանակին չեն հաւատում: Հայաստանի պատմութեան մէջ աւելի անարժան մարդիկ, քան էդ երկուսն են, երբեք չեն ղեկավարել այս երկիրը, եւ դրա համար մենք չպէտք է թոյլ տանք, որ ՀՀ նախագահ դառնայ այս նկարի մարդը, որովհետեւ իրենով վարկաբեկւում է մեր ողջ ժողովուրդը: Խնդիրը միայն բոյը, բուսը չէ, արտաքինը չէ: Այդ մարդը մի քանի ամիս առաջ գրել էր երկրի անվտանգութեան ծրագիրը, որի առաջին կէտը սկսում էր հետեւեալ կերպ՝ Հայաստանի համար ժողովրդավարութիւնն է», - ասաց նա:

Դիմելով Սերժ Սարգսեանին՝ Արամ Սարգսեանն ասաց. «Հիմա ինքը ո՞նց է պատկերացնում ժողովրդավարութիւնը, ձայները փողով գնելո՞վ ու այն արդա՞ր համարելով: Սափրազլուխ անուղեղներով ժողովրդին ահաբեկե՞լը ժողովրդավարութիւն են համարում: Էդ մարդիկ կամ ժողովրդավարութեան մասին ընդհանրապէս գիտելիք չունեն, կամ ստախօս են: Այդ մարդը իրաւունք չունի երկիր ղեկավարել»: Արամ Սարգսեանը հարթակից նաեւ դիմեց ոստիկաններին, որոնք փորձում էին խանգարել այսօրուայ հանրահաւաքը եւ խորհուրդ տուեց՝ իրենց պարտքը կատարել եւ յիշել, թէ ինչպէս են աշխատել փետրուարի 19-ին եւ ինչ բաժին ունեն ընտրութիւնները կեղծելու հարցում: «Մենք կանգնելու ենք այնքան ժամանակ՝ մինչեւ ես աւազակապետերը չհեռանան: Նստացոյց ենք անելու միասին: Էստեղ բոլոր հաւաքուածները իմ հարազատներն են՝ քոյրերս են, եղբայրներս են, մայրերս ու հայրերս են, հօրեղբայրներս ու մօրաքոյրերս»:

Արամ Սարգսեանը բոլորին կոչ արեց չանհանգստանալ եւ վստահեցրեց, որ Տէր-Պետրոսեանը ունի յստակ ծրագիր իր տարած յաղթանակն ամրագրելու համար. «Մենք պիտի ապաւինենք Լեւոն Տէր-Պետրոսեանի իմաստութեանը: Եթէ Տէր-Պետրոսեանը վստահ չլինէր, որ կը յաղթի, չէր մտնի քաղաքականութեան մէջ: Նա հաշուի էր առել նաեւ այս իրավիճակը: Յաղթում է նա, ով մինչեւ վերջ է պայքարում»:

**«ՓԱՐԱՔԱՐՆ ԷԼ ԵՆՔ ՓԱԿԵԼՈՒ»**

Այսօր Ազատութեան Հրապարակի հարթակից ժողովրդին ողջունեց նաեւ Նոր

ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանը: «Ես համոզուած եմ, որ գալու է պահը, երբ մենք միասին գնալու ենք այնտեղ, որտեղ լուծուելու է խնդիրը»: Արամ Կարապետեանը հաւաքուածներին կոչ արեց համբերել՝ նշելով, որ դա պահանջում է պայքարի տրամաբանութիւնը: «Երբ պայքարը սկսւում էր, շատ քչերն էին հաւատում, որ այսքան մարդ է հաւաքուելու: Եկէք ապաւինենք այն թիմին, որը տանում է պայքարը: Եթէ իշխանական խունտան, Սերժ Սարգսեանը լինէր լուրջ քաղաքական գործիչ, կը հասկանար, որ թերթերով ու հեռուստատեսութեամբ ցոյց տալով, որ իրեն շնորհաւորում են՝ դա շատ տրիվեալ եւ վատ բան է: Եանուկովիչին երկու անգամ շնորհաւորեցին, բայց նա նախագահ չդարձաւ, Շեւարդնաձէին շնորհաւորեցին, բայց նա նախագահ չդարձաւ»:

Դիմելով Սերժ Սարգսեանին՝ Արամ Կարապետեանն ասաց. «Պարոնայք, եթէ դուք քաղաքական գործիչներ լինէիք, կը հասկանայիք, որ մեր երկրի բախտը որոշւում է այստեղ՝ժողովրդի հետ: Եկէք այստեղ բանավիճէք, թող ժողովուրդը տեսնի, թէ ով յաղթեց: Մեր պայքարը լինելու է վերջնական»: Արամ Կարապետեանը կրկին յիշեցրեց Փարաքարը փակելու մասին, իսկ ամբոխը ոգեւորուած աւելացրեց. «Փարաքարն էլ ենք փակելու»:

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ Է 9/31 ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀԸ

*Lragir.am*, 21:25

ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնն այսօր ստացել է ՀՀ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի նախագահի հաղորդումը՝ թիւ 9/31 տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահի, տեղակալի, անդամների եւ այլոց կողմից Հայաստանի Հանրապետութեան Նախագահի 2008 թուականի փետրուարի 19-ի ընտրութիւնների քուէարկութեան արդիւնքներն աղաւաղելու եւ կեղծելու վերաբերեալ: Պարզուել է, որ Երեւանի 9/31 տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահ Էդուարդ Աղաջանեանը, նախագահի տեղակալ Ալվարդ Յովհաննիսեանը, քարտուղար Մարգարիտա Այվազեանը, յանձնաժողովի անդամներ Լեյլա Գրիգորեանը, Ռոզա Յովսէփեանը եւ այլոք ՀՀ նախագահի 2008 թուականի փետրուարի 19-ի ընտրութիւնների քուէարկութեան արդիւնքների վերաբերեալ արձանագրութիւնում մտցրել եւ իրենց ստորագրութիւններով հաստատել են ակնյայտ սխալ, աղաւաղուած տուեալներ՝ կեղծելով քուէարկութեան արդիւնքները: Դէպքի առթիւ ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 150-րդ յօդուածի յատկանիշներով, կատարւում է նախաքննութիւն: Յանձնաժողովի նախագահ Էդ. Աղաջանեանը ձերբակալուել է, տեղեկացնում է ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ՄԱՔՈՒՐ ՀՐԱՊԱՐԱԿ

*Lragir.am*, 21:59

Այսօր Ազատութեան Հրապարակում Նիկոլ Փաշինեանի կոչով հանրահաւաքի մասնակիցները հաւաքում են գետնին թափուած աղբը, լցնում տոպրակները եւ դրանք դասաւորում մի անկիւնում: Կենտրոն համայնքի թաղապետարանն ազատուեց այս մի հոգսից: Միւսները մնում են:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ՆՍՏԱՑՈՅՑ

*Lragir.am*, 22:03

Ազատութեան Հրապարակում արդէն վրաններ են բերուել: Բերուել է նաեւ սնունդ, կազմակերպիչները ժամանակ առ ժամանակ հարցնում էին՝ արդեօք բոլորին է հասել եւ ինչի կարիք ունեն ցուցարարները: Ընդհանրապէս, ամէն ինչ շատ լաւ է կազմակերպուած:

## ԻՆՉՊԷՍ ՄԻՇՏ՝ ՀԵՐՔՈՒՄ ԵՆ

*A1+*, 22:08

20.02.08թ.՝ ժամը 21:55-ին Չարենցաւանի հիւանդանոցից ոստիկանութիւնում հաղորդում է ստացուել, որ կրծքավանդակի յետեւի մասից կտրող-ծակող գործիքից ստացած մարմնական վնասուածքով իրենց մօտ է տեղափոխուել Ալափարս գիւղի բնակիչ Արման Իլիչի Մնացականեանը (ծնուած 1978թ.):

Դէպքի վայր է մեկնել օպերատիւ-քննչական խումբը եւ ձեռնարկուած միջոցառումների արդիւնքում պարզել, որ Ա. Մնացականեանը գործով չպարզուած անձանց հետ վիճաբանել է Ալափարս գիւղում, որի ժամանակ կտրող-ծակող գործիքից ստացել է մարմնական վնասուածք:

Դէպքի առթիւ ոստիկանութիւնում յարուցուել է քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի գործ 258-րդ 4-րդ մասի, 112-րդ յօդուածի առաջին մասի յատկանիշներով: Նախաքննութեամբ ձեռնարկուած օպերատիւ միջոցառումների արդիւնքում պարզուել է, որ Ա. Մնացականեանը վիճաբանել է ոմն Վարդանի հետ, որին յայտնաբերելու ուղղութեամբ ձեռնարկւում են օպերատիւ-որոնողական աշխատանքներ:

Նշուած դէպքը որեւէ առնչութիւն չունի ընտրական գործընթացի հետ եւ 21.02.08թ. տեղի ունեցած հանրահաւաքի ժամանակ Նիկոլ Փաշինեանի հնչեցրած այն յայտարարութիւնը, թէ դանակահարուածը Լեւոն Տէր-Պետրոսեանի՝ Ալափարս գիւղի նախընտրական շտաբի պետի որդին է, իրականութեան հետ որեւէ ընդհանրութիւն չունի: Լ. Տէր-Պետրոսեանի շտաբի պետը նշուած գիւղում հանդիսանում է Վարդան Հայրոյեանը: Աւելին՝ տուժող Ա. Մնացականեանի հօրեղբայրը ղեկավարում է ՀՀ Նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի Ալափարս գիւղի շտաբի աշխատանքները:
ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղար
Սոնա Տռուզեան:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. 20 ՏԱՐԻ ԱՆՑ

*Lragir.am*, 22:09

Ազատութեան Հրապարակում ուշ երեկոյեան տիրում է տօնական, յաղթական մթնոլորտ: Երաժշտութիւն, պար, հրավառութիւն, ոգեւորուած, շողշողուն դէմքեր: Այս նոյն հրապարակում 20 տարի անց նոյն ոգեւորութիւնն է եւ վճռականութիւնը:

## «ԴԻՏՈՐԴՆԵՐԻ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԸ ԿԱՐԵՒՈՐ ՉԷ»

*A1+*, 22:10

VIDEO http://www.youtube.com/a1plusnews/

Այսօրուայ հանրահաւաքի ընթացքում յատկապէս միջազգային ԶԼՄ-ների ներկայա-

ցուցիչները մօտենում էին ՀԺԿ նախագահ Ստեփան Դէմիրճեանին եւ հետաքրքրւում, թէ ինչ է պատրաստւում անել ընդդիմութիւնը, եթէ միջազգային դիտորդները իրենց վերջնական եզրակացութեան մէջ էլ մեղմ գնահատական տան ընտրութիւնների արդիւնքների վերաբերեալ:

«Ես նրանց պատասխանում եմ՝ կարեւորը մեր ժողովրդի գնահատականն է, իսկ ժողովրդի գնահատականը միանշանակ է՝ ընտրութիւններում յաղթել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Այս յանցագործ վարչախումբը պէտք է հեռանայ: Կեղծիքներ եւ բռնութիւններ իրագործած յանցագործները պէտք է պատասխան տան: Ժողովուրդը դուրս է եկել պայքարի՝ յանուն սեփական երկրում արժանապատիւ ապրելու իրաւունքի», - յայտարարեց Ստեփան Դէմիրճեանը:

Նա Ազատութեան Հրապարակում հաւաքուածներին վստահեցրեց, որ ոչ թէ դիտորդներից, այլ մեզանից իւրաքանչիւրից է կախուած ընտրութիւնների արդիւնքները. «Այսօրւայ հանրահաւաքը ցոյց է տալիս, որ իշխանութիւնը բռնազաւթած վարչախումբը որեւէ շանս չունի: Այս հանրահաւաքը մօտեցնում է յաղթանակի օրը: Մենք անպայման յաղթելու ենք»:

Ի դէպ, այսօր Ազատութեան Հրապարակում էին Տէր-Պետրոսեանի եւ նրան սատարող ընդդիմութեան առաջնորդների կողքին էին նաեւ նրանց ընտանիքի անդամները՝ կանայք ու երեխաները:

ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

Դերասան Երուանդ Մանարեանը շնորհակալութիւն յայտնեց Սերժ Սարգսեանին եւ Ռոբերտ Քոչարեանին եւ անսպասելի արեց այս յայտարարութիւնը. «Ես նրանց շնորհակալութիւն եմ յայտնում՝ այս վիճակը տեսնելու համար, այս հիանալի վիճակի համար, որ ես կարող եմ նայել բոլորին եւ մտածել՝ ինչ հիանալի երիտասարդութիւն ունենք: Սա ազգի, ոգու տեսլականն է: Ես համոզուած եմ, որ մեր ժողովուրդը այլեւս այս վիճակի առաջ չի կանգնելու»: Իր ելոյթը Երուանդ Մանարեանը աւարտեց արտասանելով, ինչպէս տարիներ առաջ յայտնի ֆիլմի դրուագում. «Պուստ, չտոբի րոզա ցվելա, պուստ չտոբի ֆիալկա ցվելա դլեա էտոյ լիւբուի...»:

## ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ ԵՆ

*A1+*, 22:11

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած համոզիչ յաղթանակի կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Բելառուսի Հանրապետութեան նախագահ Ալեքսանդր Լուկաշենկոն: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Համոզուած եմ, որ Ձեր փորձն ու բարձր մասնագիտական պատրաստուածութիւնը կը նպաստեն բարձրագոյն պետական պաշտօնում՝

Հայաստանի սոցիալ-տնտեսական կայուն զարգացման ապահովմանը, միջազգային ասպարէզում երկրի հեղինակութեան ամրապնդմանն ուղղուած Ձեր բարեյաջող գործունէութեանը:

Գոհունակութեամբ եմ նշում մեր պետութիւնների միջեւ փոխըմբռնման ու վստահութեան բարձր մակարդակը, երկկողմ համագործակցութեան ակտիւ բնոյթը, որն այսուհետ եւս կը զարգանայ ու կ՚ամրապնդուի՝ կառուցողական, փոխշահաւէտ գործընկերութեան

ոգով։

Ի սրտէ մաղթում եմ Ձեզ, յարգելի Սերժ Ազատի, քաջառողջութիւն, երջանկութիւն եւ յաջողութիւններ, իսկ Հայաստանի բարեկամ ժողովրդին՝ խաղաղութիւն եւ բարօրութիւն»։

* * *

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է նաեւ Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) գլխաւոր քարտուղար Նիկոլայ Բորդիւժան։ Շնորհաւորական խօսքում, մասնաւորապէս, ասուած է.

«Յարգելի Սերժ Ազատի,

Ընդունէք իմ անկեղծ շնորհաւորանքները՝ Հայաստանի Հանրապետութեան նախագահի բարձր պետական պաշտօնում Ձեր ընտրուելու կապակցութեամբ։

Խորապէս համոզուած եմ, որ պետութեան ղեկավարի պաշտօնում ակտիւ ու բեղմնաւոր Ձեր գործունէութեամբ, ելնելով Հայաստանի Հանրապետութեան ազգային անվտանգութեան շահերից եւ յենուելով ժողովրդի բարձր վստահութեան քուէի վրայ, Դուք կ'ապահովէք Հայաստանի դինամիկ զարգացումն ու բարգաւաճումը։

Բարձր գնահատելով Ձեր անձնական ներդրումը Կազմակերպութեան կայացման եւ հեղինակութեան ամրապնդման գործում, թոյլ տուէք երախտագիտութիւնս արտայայտել մշտական աջակցութեան ու ըմբռնման համար եւ յոյս յայտնել, որ Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում Դուք կը շարունակէք համակողմանիօրէն համագործակցել՝ մեր Կազմակերպութեան առջեւ ծառացած նպատակներին հասնելու, միջազգային անվտանգութեան ապահովմանն ուղղուած ՀԱՊԿ-ի ջանքերի խթանման գործում։

Մաղթում եմ Ձեզ՝ յարգելի Սերժ Ազատի, քաջառողջութիւն եւ մեծ յաջողութիւններ պատասխանատու պետական գործունէութեան մէջ՝ ի շահ Հայաստանի բարգաւաճման եւ հայ ժողովրդի բարեկեցութեան աճի»։

## ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ Է

*A1+*, 22:13

ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնն այսօր ստացել է ՀՀ կենտրոնական ընտրական յանձնաժողովի նախագահի հաղորդումը՝ թիւ 9/31 տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահի, տեղակալի, անդամների եւ այլոց կողմից Հայաստանի Հանրապետութեան Նախագահի 2008 թուականի փետրուարի 19-ի ընտրութիւնների քուէարկութեան արդիւնքներն աղաւաղելու եւ կեղծելու վերաբերեալ։

Պարզուել է, որ Երեւանի 9/31 տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահ Էդուարդ Աղաջանեանը, նախագահի տեղակալ Ալվարդ Յովհաննիսեանը, քարտուղար Մարգարիտա Այվազեանը, յանձնաժողովի անդամներ Լեյլա Գրիգորեանը, Ռոզա Յովսէփեանը եւ այլոք ՀՀ Նախագահի 2008 թուականի փետրուարի 19-ի ընտրութիւնների քուէարկութեան արդիւնքների վերաբերեալ արձանագրութիւնում մտցրել եւ իրենց ստորագրութիւններով հաստատել են ակնյայտ սխալ, աղաւաղուած տուեալներ՝ կեղծելով քուէարկութեան արդիւնքները։

Դէպքի առթիւ ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում յարուցուել է քրէական գործ ՀՀ

Քրէական Օրէնսգրքի 150-րդ յօդուածի յատկանիշներով, կատարւում է նախաքննութիւն: Յանձնաժողովի նախագահ Էդ. Աղաջանեանը ձերբակալուել է:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ԱՌԱՆՑ ՍԵՐԺԻ

*Lragir.am*, 22:13

Երեկոյեան 21.30-ին, երբ հարթակ բարձրացաւ Լեւոն Տէր-Պետրոսեանը, Լեւոն, Լեւոն, յաղթանակ, յաղթանակ վանկարկումներին յաջորդեց Սերժիկ հեռացիր վանկարկումը: Տէր-Պետրոսեանը մօտեցաւ բարձրախօսին եւ կատակեց. ես Սերժիկը չեմ:

## ՄԱՐԶԵՐԻՑ ՄԻԱՆՈՒՄ ԵՆ ՆՍՏԱՑՈՅՑԻՆ

*A1+*, 22:15

Այս պահին Երեւանի Ազատութեան Հրապարակում թեւածում է տօնական տրամադրութիւն. ամբողջ հրապարակի տարածքով շուրջպար են բռնել երիտասարդներ, տարեց մարդիկ, կին ու մանուկ: Նոյնիսկ կազմակերպել էին գունաւոր թղթերի եւ փուչիկների «հրավառութիւն»:

«Մեր շարժումը տուել է իր առաջին արդիւնքը. մարզերից մեզ տեղեկացրել են, որ սպասէք, գալիս ենք», - յայտարարեց Նիկոլ Փաշինեանը: Իսկ մօտ 200 հոգի քոչարիի կարգով՝ ուսուսի տուած, պարում էին Ազատութեան Հրապարակի երկայնքով մէկ: Լեւոն Տէր-Պետրոսեանը մի քանի րոպէով հեռացաւ հրապարակից եւ կրկին վերադարձաւ: Հանրութիւնը մեծ ոգեւորութեամբ է տրամադրւում գիշերել հրապարակում: Իսկ մարդկանց արդէն բաժանւում է սնունդ եւ տաք թէյ:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

*Lragir.am*, 22:20

Ամէն անգամ, երբ Նիկոլ Փաշինեանը մօտենում էր բարձրախօսին եւ ասում ժողովուրդ, ցուցարարների շարքերից լսւում էր հա, ցաւդ տանեմ արձագանքը:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ՍԹԱՓՈՒԹԵԱՆ ԳՕՏԻ

*Lragir.am*, 22:25

Ազատութեան Հրապարակը յայտարարուել է սթափութեան գօտի: Կազմակերպիչները պարբերաբար յայտարարում են, որ ալկոհոլ օգտագործած մարդիկ չմնան հրապարակում:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ՍԱՌՈՅՑԸ ՇԱՐԺՈՒԵՑ

*Lragir.am*, 22:33

Այսօր ցերեկը տեղի ունեցած հանրահաւաքում պահանջ էր դրուել իշխանութեան առջեւ՝ օրէնքով սահմանուած ժամկէտներում պատժել ընտրակեղծարարներին: Ցուցարարները ցնծութեամբ ընդունեցին լուրը, որ քրէական գործ է յարուցուել 9/31 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահ Էդուարդ Աղաջանեանի դէմ, որը ձերբակալուել է:

## 22 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

### ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ ՋԵՐՄ ՄԹՆՈԼՈՐՏ Է ՏԻՐՈՒՄ (video)

*A1+*, 00:56

Մարդիկ պարում են, անեկդոտներ են պատմում, զրկախառնւում, եւ չեն դադարում վանկարկել «Լեւոն նախագահ», «Սերժիկ հեռացիր»: Ժամը 2:00-ի դրութեամբ` հրապարակում հաւաքուած մարդկանց թիւը չի պակասել: Մարդիկ գնում են տուն, տաք հագուստ վերցնում եւ կրկին գալիս են հրապարակ: Առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանն էլ ժամանակ առ ժամանակ զրուցում է հաւաքուածների հետ, հարցնում, թէ ինչպէս են մարդիկ իրենց զգում եւ թէ արդեօ՞ք տաք են հագնուած: Հաւաքուածները նախագահին վստահեցնում են, թէ իրենք չեն մրսում եւ մինչեւ լուսաբաց հրապարակում են մնալու:

**ՏՈՒՆ ԳՆԱԼՈՒ ՄՏԱԴՐՈՒԹԻՒՆ ՉՈՒՆԵՆ**

Ազատութեան Հրապարակում հաւաքուած մարդկանց թիւը չի պակասում, քանի որ ոչ ոք չի պատրաստւում տուն գնալ: Հրապարակում շարունակւում են նոր վրաններ ամրացուել եւ մարդիկ խաղաղ նստացոյց են անում: Քիչ առաջ նրանք դիտում էին Լեւոն Տէր-Պետրոսեանի մասին պատմող տեսանիւթը: Առաջին նախագահին այժմ Ազատութեան Հրապարակում է, իրեն սատարողների հետ: Նստացոյցի մասնակիցները մաքրում են հրապարակի տարածքը, քանի որ այդտեղ են անցկացնելու ողջ գիշերը: Քիչ առաջ Նիկոլ Փաշինեանին մօտեցել են ոստիկաններ եւ խնդրել են չաղմկել: Սակայն ոստիկաններին տեսնելով մարդիկ աւելի բարձր են վանկարկել. «Լե-ւոն, Լե-ւոն», ինչից յետոյ ոստիկանները հեռացել են:

**ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ ԱՐԴԷՆ ՏԱՔ Է**

Մարդիկ վառել են խարոյկներ, բերել են վառարաններ, փոքրիկ գազօջախներ, ծածկոցներ, որոնց շնորհիւ չեն մրսում: Չնայած ցուրտ եղանակին` Ազատութեան Հրապարակում բաւականին տաք է: Ոմանք թէյ են պատրաստում եւ հիւրասիրում միւսներին, ոմանք թխուածքաբլիթ ու լաւաշ են բաժանում: Վրանների թիւն աւելացել է, մարդիկ չեն դադարում վանկարկել «Լեւոն նախագահ»: Բաւական է մէկը բղաւի, եւ բոլորը իրենց վրաններից միանում են. «Լեւոն նախագահ, Լեւոն նախագահ»: Մարդիկ ընտրախախտումների մասին եւս մէկ անգամ իրազեկուեցին հրապարակում հնչող *Ազատութիւն* ռադիոկայանից:

### ՀԱՆՐԱՀԱՒԱՔ ԱՄՆ-ՈՒՄ

*A1+*, 03:07

2008թ փետրուարի 21-ին Լեւոն Տէր-Պետրոսեանի աջակցութեան ԱՄՆ-ի կենտրոնը բողոքի ցոյց էր կազմակերպել ՀՀ գլխաւոր հիւպատոսութեան առջեւ: Ցոյցին մասնակցեցին ԱՄՆ-ում ժամանակաւորապէս բնակուող մօտ 500 ՀՀ քաղաքացիներ եւ Հայաստանի ճակատագրով մտահոգ, այսօրուայ համաժողովրդական շարժումը պաշտպանող ԱՄՆ (հայազգի) քաղաքացիներ: Ցոյցի մասնակիցներն իրենց զայրոյթն ու բողոքը յայտնեցին ընտրութիւնների իրական արդիւնքները կեղծելու, գործող իշխանութեան կողմից իշխանութիւնը բռնազաւթելու փորձ կատարելու դէմ: Ցոյցի մասնակիցները պահանջեցին

վերականգնելու իրենցից խլուած քուէարկելու իրաւունքը եւ չեղեալ յայտարարելու կեղծուած ընտրութիւնները, անցկացնելու նոր ընտրութիւններ: Յոյցի ժամանակ որոշում կայացուեց առաջիկայում մեծ հանրահաւաք անցկացնել Լոս Անջելէսում:

## ՎՐԱՆԱՅԻՆ ՔԱՂԱՔԻ ԱՌԱՋԻՆ ԳԻՇԵՐԸ

*Lragir.am*, 09:50

Երեւանի Ազատութեան Հրապարակում, ուր ձեւաւորուել է համաժողովրդական բողոքի վրանային քաղաք-շտաբը, գիշերն անցել է խաղաղ: Սակայն խաղաղութիւնն այս դէպքում յարաբերական հասկացութիւն է, որովհետեւ գիշերուայ մեծ մասը Ազատութեան Հրապարակում նստացոյցի հաւաքուած հազարաւոր մարդիկ երգել են, պարել, զրուցել պարբերաբար Հրապարակ այցելած առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ: Հրապարակում են եղել երիտասարդներ ու աղջիկներ, հասուն տարիքի կանայք եւ տղամարդիկ, անգամ թոշակառուներ, որոնք ամբողջ գիշերն անցկացրել են Ազատութեան Հրապարակում: Գիշերը հրապարակում է անցկացրել նաեւ գործարար Խաչատուր Սուքիասեանը, իսկ Նիկոլ Փաշինեանը գիշերը հրապարակում ցոյց տալով Վրաստանի դրօշը, ցուցարարներին տեղեկացրել է, որ դա ուղարկել են Վրաստանի հայ համայնքից:

## ԳԵՆԵՐԱԼԸ ՅԵՏ ՉԻ ԿԱՆԳՆԻ ԻՐ ԽՕՍՔԻՑ

*Lragir.am*, 09:53

Ի պատասխան առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի յայտարարութեան, որ պաշտպանութեան փոխնախարարներ գեներալ լեյտենանտներ Մանուէլ Գրիգորեանն ու Գագիկ Մելքոնեանը սատարում են համաժողովրդական թեկնածուին, այսինքն Լեւոն Տէր-Պետրոսեանին, հերքումով է հանդէս եկել պաշտպանութեան նախարարութեան մամուլի քարտուղար գնդապետ Սէյրան Շահսուվարեանը եւ ասել, թէ այդպիսի բան չի եղել, փոխնախարարները այդպիսի բան չեն ասել: Հարցի առնչութեամբ *Ազատութիւն* ռադիոկայանը դիմել էր Հանրապետութիւն Կուսակցութեան առաջնորդ, Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամ Արամ Զաւէնի Սարգսեանին, պարզելու համար իրավիճակը: Արամ Սարգսեանը ռադիոկայանին փոխանցել է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանն իր քաղաքականութիւն վերադարձից յետոյ, սկսած սեպտեմբերի 21-ից, ոչ մի բան հէնց այնպէս, պատահական չի ասում: Արամ Զաւէնի Սարգսեանի խօսքով, դա պաշտպանութեան նախարարութեան խնդիրն է, որ իրենք իրենց մէջ պարզեն իրավիճակը: Արամ Սարգսեանը նշել է միայն, որ ինքը գիտէ Մանուէլ Գրիգորեանին, եւ եթէ նա մի բան ասել է, ապա իր խօսքից յետ չի կանգնի:

## ԵՐԲ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԶՈՒՐԿ Է ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՑՈՒՄՆԵՐԻՑ

ՋԷՅՄՍ ՅԱԿՈԲԵԱՆ

*Lragir.am*, 10:05

Կարելի է ենթադրել, որ այն բանից յետոյ, երբ պաշտպանութեան փոխնախարարներ Մանուէլ Գրիգորեանն ու Գագիկ Մելքոնեանը յայտարարեցին, որ թոյլ չեն տալու բանակը խառնել քաղաքականութեանը, եւ փաստացի ցոյց տուեցին, որ Երկրապահ կամաւորական միութեան հետ կանգնած են Լեւոն Տէր-Պետրոսեանի կողքին, նրանք շատ մօտ

ապագայում դառնալու են իշխանական քարոզչութեան թիրախ: Հաւանաբար կը սկսուեն ցուցադրուել տեսանիւթեր, որոնց միջոցով կ՚արուի ամէն ինչ ցոյց տալու համար, թէ ինչ վատն են այդ գեներալները, ինչեր են նրանք արել: Չի բացառուում, որ նոյնիսկ կասկածի տակ կ՚առնուի օրինակ Մանուէլ Գրիգորեանի մասնակցութիւնը Ղարաբաղի պատերազմին, անկասկած կը յիշեն, որ նա մինչեւ յեղափոխութիւնը եղել է բեռնատարի վարորդ:

Սակայն փաստացի բացարձակապէս արդէն նշանակութիւն չունի, թէ ում մասին ինչ է ասում իշխանական քարոզչութիւնը: Դրա վառ վկայութիւնն այն է, որ երեք ամիս շարունակ Լեւոն Տէր-Պետրոսեանի մասին հեռուստաեթերից անընդհատ հնչեցուող բացասական գնահատականներն ու անցեալի ուրուականի երեւակումները բացարձակապէս ի զօրու չեղան խանգարել նրա հասարակական վարկանիշի բարձրացմանը, եթէ չասենք, որ այդ վարկանիշին մեծապէս նպաստեց հէնց այն, որ իշխանութիւնն անընդհատ փորձում էր վարկաբեկել Տէր-Պետրոսեանին ու նրա կողմնակիցներին, ընդ որում դա անել բաւական կոպիտ, անյարգալից տոնով:

Աւելին, իր հանրահաւաքներից մէկի ժամանակ, մինչեւ ընտրութիւնը, Լեւոն Տէր-Պետրոսեանն էլ խոստովանեց, որ պէտք է շնորհակալութիւն յայտնել Աստծուն, որ իրեն տրուել է հէնց այդպիսի մրցակից իշխանութիւն, որի ամէն մի գործողութիւնն իրականում նպաստում է իր վարկանիշի բարձրացմանը:

Դժուար է ասել, թէ ինչպիսին կը լինէր Տէր-Պետրոսեանի վարկանիշը, եթէ իշխանութիւնը ոչ թէ փորձէր նրան սեւացնել, միակողմանի քարոզչական յարձակում իրականացնէր, խուսափէր ցուցադրել Տէր-Պետրոսեանի հանրահաւաքները, այլ ուղղակի երկրում առկայ խնդիրների ծագման, ընթացքի եւ լուծման ուղիների վերաբերեալ քաղաքակիրթ, քաղաքական, ծրագրային հանդարտ բանավէճի մէջ մտնէր նրա հետ: Իհարկէ, կասկածից վեր է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանն իր վարկանիշը ձեռք բերեց առաւելապէս իր գործողութիւնների, իր մարտավարութեան, իր քաղաքական քայլերի շնորհիւ, եւ իշխանութեան սխալները ընդամէնը նպաստել են, ընդամէնը օգնել նրան այդ գործում, քանի որ Լեւոն Տէր-Պետրոսեանը հմտօրէն օգտուել է դրանցից:

Ընդհանրապէս, Տէր-Պետրոսեանի քաղաքական յաջողութեան «գաղտնիքը» թերեւս այն է, գոնէ մինչ այժմ, որ նա կարողացաւ դրսեւորել քաղաքական գործչի համար ամենից կարեւոր որակներից մէկը, եթէ ոչ ամենակարեւորը՝ նոյնիսկ աննպաստ հանգամանքներից քաղել առաւելագոյն օգուտը: Քաղաքականութեան մէջ, քանի որ այն եթէ կայ, ապա խորքում դինամիկ պրոցէս է, ընդհանրապէս չեն լինում աննպաստ հանգամանքներ: Լինում են պարզապէս հանգամանքներ, եւ քաղաքական գործչի խորաթափանցութիւնը, իրողութիւնները սթափ գնահատելու եւ վերլուծելու կարողութիւնն է, որ դրանք դարձնում է կամ նպաստաւոր, կամ աննպաստ, հետեւաբար դրանցից կամ տուժում է, կամ շահում: Նրանք, ովքեր չեն գիտակցում այդ ամէնը, ովքեր չունեն այդ խորաթափանցութիւնը եւ քաղաքականութեան մէջ առաջնորդուում են ընդամէնը մեծածախ կամ մանրածախ առեւտրի կանոններով, լաւագոյն դէպքում, եթէ չեն տուժում հանգամանքներից, իրենք են դառնում հանգամանք: Ըստ երեւոյթին հէնց այդ ընկալումներն են Հայաստանի ներկայիս քաղաքական իրավիճակի անկիւնաքարը: Դրանց խորութիւնն է դարձել ներկայիս իրողութիւնների ծաւալման հիմնական դրդապատճառը: Բայց ինչպէս նկատելի է Լեւոն Տէր-Պետրոսեանի գործողութիւններին իշխանութեան եւ մնացեալ քաղաքական դաշտի արձագանքից, որն արդէն դառնում է բացարաձակապէս ոչ ադեկվատ.

նրանք դեռեւս շարունակում են առաջնորդուել նոյն պատկերացումներով: Եթէ մինչ այդ դա ինչ որ տեղ արդարացի էր, որովհետեւ չկար կողմնորոշիչ, ապա այժմ արդէն պատկերացումների հնութիւնը քաղաքական դաշտի համար ոչ միայն սխալ է, այլ նոյնիսկ աններելի սխալ: Թէեւ խնդիրն այստեղ գուցէ հնութիւնն էլ չէ, այլ քաղաքական պատկերացումների ընդհանրապէս բացակայութիւնը: Պատկերացումներ կան, բայց դրանք քաղաքական անուանելը կը լինի շատ մեծ հաճոյախօսութիւն մեր քաղաքական կոչուող ուժերի համար:

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ ՔՈՆՆ Է. ՏԵՄՆԵՍ ՈՒՄՆ Է

*Lragir.am*, 10:37

Երէկ Երեւանում ասուլիս է տուել Ընտրութիւնը Քոնն Է հասարակական կազմակերպութիւնը, որը դիտորդական առաքելութիւն էր իրականացնում ընտրութեան ժամանակ: Այս կազմակերպութիւնն ընտրութիւններն ընդհանուր առմամբ դրական է գնահատել, նշելով որոշակի թերութիւններ: Սակայն սա չէ հետաքրքիրը: Օրերս Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակը ամփոփել է ընտրութեան դիտարկման արդիւնքը: Գրասենեակի տարածած հաղորդագրութեան մէջ հետաքրքիր փաստեր կան Ընտրութիւնը Քոնն Է կազմակերպութեան դիտորդների մասին:

Մասնաւորապէս, ՀՔԱ Վանաձորի գրասենեակի տուեալով, թիւ 29/08 ընտրատեղամասում Ընտրութիւնը Քոնն Է կազմակերպութեան դիտորդն աշխատել է Սերժ Սարգսեանի օգտին: Թիւ 30/02 տեղամասում, որ տեղակայուած էր թիւ 18 դպրոցում, Ընտրութիւնը Քոնն Է հ/կ դիտորդը այդ նոյն դպրոցի ռազմագիտութեան ուսուցիչն էր, իսկ դպրոցի տնօրէնը՝ յանձնաժողովի նախագահ: Կամ այսպիսի փաստ է նշում ՀՔԱ Վանաձորի գրասենեակը. թիւ 31/45 ընտրատարածքում դիտորդական առաքելութիւն է իրականացրել Ընտրութիւնը Քոնն Է հ/կ-ն ներկայացնող Գիլնարա Ֆրունզիկի Ռամազեանը (դիտորդական վկայական Գ1762), որը միաժամանակ հանդիսանում է ՀՀԿ-ի անդամ: ՀՔԱ Վանաձորի գրասենեակը առաջարկել է դադարեցնել Ընտրութիւնը Քոնն Է հ/կ-ի դիտորդական առաքելութիւնը եւ նրանց անդամներին դուրս հրաւիրել ընտրական տեղամասերից: Ահա այսպիսի բաներ:

## ՍԴՀԿ ՅԱՅՏՆՈՒՄ Է ԻՐ ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԶՕՐԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ

*Lragir.am*, 10:54

Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը, համայն սփիւռքահայութեան անունով կու գայ յայտնելու իր ամբողջական զօրակցութիւնը Հայաստանի մէջ թափ առած համաժողովրդական շարժումին ազատութեան ու արդարութեան համար իր մղած այս պայքարի ընթացքին, ու աւելի քան վստահ ենք անոր վերջնական յաղթանակին: Արտասահմանի մէջ ապրող հայ ժողովուրդի զաւակները վայրկեանը-վայրկեանին կը հետեւին մայր հայրենիքի մէջ տեղի ունեցող իրադարձութիւններուն եւ ժողովրդային վեհ շարժումի ստացած լայն տարողութեան: Մենք կը դատապարտենք ժողովուրդի ձայները գողնալու միջոցաւ հերթական յեղաշրջումը իրականացնելու փորձերը եւ վստահ ենք որ այդ քայլերը պիտի մատնուին ձախողութեան, շնորհիւ մեր բոլորի միասնականութեան: Մենք կը զգուշացնենք Հայաստանի

իշխանութիւններուն հեռու մնալ խաղաղ ժողովուրդի դէմ բռնամիջոցներ օգտագործելու ամէն տեսակի արկածախնդրական քայլերէ: Մենք կը պահանջենք Կետրոնական Ընտրական Յանձնաժողովէն հաստատել Լեւոն Տէր-Պետրոսեանի յաղթանակը որպէս ազգընտիր նախագահ: Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան սփիւռքեան կառոյցները իրենց բոլոր միջոցները ի սպաս դրած են Հայաստանի մէջ ժողովրդավարութեան վերահաստատման եւ բռնատիրական ռեժիմի տապալման գործին: Թէեւ հազարաւոր մղոններ իրարմէ հեռու, Հայ ժողովուրդի երկու հատուածները, վերջին տասնամեակին երբեք իրար այսքան մօտ եւ հարազատ չեն եղած, որքան այս պահուն: Մեր միտքը, մեր սիրտը ու մեր հոգին Հայրենիքի ժողովուրդի հետն է:
Կեցցէ Համաժողովրդային շարժումը
Կեցցէ Հայաստանը
Ս.Դ.Հ.Կ.Կեդրոնական Վարչութիւն
Լոս Անճելըս, Ամերիկայի Միացեալ Նահանգներ
Փետրուար 22, 2008

## ՈՒՍԱՆՈՂՈՒԹԻՒՆԸ ՄԻԱՆՈՒՄ Է ՇԱՐԺՄԱՆԸ

*Lragir.am*, 11:31

Քիչ առաջ տարբեր բուհերի ուսանողութիւնը երթով անցաւ Երեւանի կենտրոնի փողոցներով՝ պոլիտեխնիկից համալսարան, որից յետոյ շարժուեց դէպի հրապարակ:

## ԿԵԱՆՔԸ ՎՐԱՆԱՅԻՆ ՔԱՂԱՔՈՒՄ

*Lragir.am*, 11:39

Ազատութեան Հրապարակում փետրուարի 22-ի առաւօտեան շարունակւում էր այն երգն ու պարը, որը չէր դադարել ամբողջ գիշեր: Առաւօտեան ժամը 11-ի դրութեամբ աւելի քան հազար մարդ շարունակում էին երգել, պարել, ուրախանալ: Վրանների թիւը Ազատութեան Հրապարակում աւելանում է, արդէն հասնելով երկու տասնեակի: Առաւօտեան մարդիկ եւս մի քանի վրան էին խփում: Կան վրաններ, որոնց վրայ գրուած է այն բնակավայրի անունը, որտեղից որ եկել են քաղաքացիները, օրինակ Կոթի, Իջեւան: Թէեւ գիշերուայ հաւաքի մասնակիցներից շատերը գնացել էին փոքր ինչ հանգստանալու, այդուամենայնիւ Ազատութեան Հրապարակը աստիճանաբար նորից դառնում է աւելի ու աւելի մարդաշատ: Մարդիկ փոքր խմբերով նորից գալիս են հրապարակ: Աչքի է ընկնում նաեւ այն, որ գիշերուայ բազմահազարանոց նստացոյցից յետոյ հրապարակը բաւական մաքուր է: Հրապարակ են գալիս նաեւ քաղաքացիներ, որոնք իրենց հետ բերում են կերակուր, կարկանդակներ եւ հիւրասիրում ցուցարարներին:

## ԱՐՄԱՆ ՄԵԼԻՔԵԱՆԸ ԳՆԱՀԱՏԵՑ ՅԵՏԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎԻՃԱԿԸ

*Lragir.am*, 13:11

Հայաստանի նախագահի թեկնածու Արման Մելիքեանը գնահատել է 2008 թուականի փետրուարի 19-ին տեղի ունեցած նախագահի ընտրութիւնը, որին նա նոյնպէս մասնակցում էր եւ ինը թեկնածուների մէջ գրաւել էր նախավերջին տեղը, առաջ անցնելով նախագահի աւանդական թեկնածու Արամ Յարութիւնեանից: Արման Մելիքեանը նշում է, որ 2008 թուականի փետրուարի 19-ի նախագահի ընտրութիւնը սկզբունքային

նշանակութիւն է ունենալու Հայաստանի յետագայ ճակատագրի համար։

Արման Մելիքեանը փաստում է, որ թէ Լեւոն Տէր-Պետրոսեանի, եւ թէ իշխանութեան յաղթանակը չի լուծելու մեր երկրի առաջ ծառացած խնդիրները։ «Սկսած 1996 թուականից Հայաստանում ընտրութիւնները ընդդիմութեան կողմից դիտարկուել են որպէս օրէնքի շրջանակներում «յեղաշրջում» կատարելու հնարաւորութիւն, իսկ իշխանութիւններն իրենց կողմից օրէնքի տառին չհետեւելը բացատրում էին երկրում կարգուկանոնն ու օրինականութիւնը պահպանելու, երկրի անվտանգութիւնն ապահովելու անհրաժեշտութեամբ։ Այսօր ստիպուած ենք կրկնել, որ Հայաստանը օրէնքի երկիր չէ։ Հայաստանում գործող պետական կառավարման կոռուպցիոն համակարգը ձեւափոխել է մեր կեանքի բոլոր ոլորտները եւ օրէնքին կատարուող բոլոր յղումները անօգուտ են, քանի որ օրէնքի կիրառման ոլորտը բռնազաւթուած է, օրէնքը գործում է խիստ ընտրողաբար։ Այս պայմաններում 2008 թուականի փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնների ծնունդ հանդիսացող վիճայարոյց խնդիրները դժուար թէ կողմերին բաւարարող լուծում գտնեն ՀՀ արդարադատութեան համակարգի գործունէութեան շրջանակներում։ Այս պարագայում, որպէս հանգուցալուծում կարող է դիտարկուել պարզ ուժային դիմակայութիւնը Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների եւ ոստիկանական ուժերի միջեւ, ինչի արդիւնքում կամ տեղի կ'ունենայ բռնի իշխանափոխութիւն, կամ էլ իշխանութիւնները կը կարողանան բռնաճնշել այդ ընդվզումը եւ հետապնդման ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանին ու նրան սատարող առաւել աչքի ընկնող քաղաքական ու հասարակական գործիչներին։ Երկուսն էլ հաւասարապէս անընդունելի է եւ պետութեան համար կործանարար», յայտարարում է Արման Մելիքեանը։ Նա համարում է, որ իրավիճակի զարգացման ներկայիս միտումը պահպանելու դէպքում կարող են լինել ծանր հետեւանքներ, ընդհուպ քաղաքացիական պատերազմ ու պետականութեան կորուստ։

Արման Մելիքեանն առաջին հայեացքից անելանելի թուացող իրավիճակից առաջարկում է մի ելք, որը նրա խօսքով կարող է դիմակայութեան մէջ գտնուող քաղաքական ուժերի համար լինել անընդունելի, բայց Արման Մելիքեանն այդուամենայնիւ առաջարկում է.

«ա) որպէս յետընտրական շրջանի թիւ մէկ խնդիր ձեւակերպել երկրում անկախանալուց ի վեր սաղմնաւորուած ու ձեւաւորուած պետական կառավարման կոռուպցիոն համակարգի վերացումը եւ դրա փոխարէն բիզնէսից տարանջատուած ժողովրդավարական սկզբունքների վրայ հիմնուած, ուստի նաեւ՝ թափանցիկ գործող ու հաշուետու պետական կառավարման համակարգի ներդրումը,

բ) յստակ պէտք է ձեւակերպուի ընդդիմութեան դերն այս գործընթացում։ Ըստ իս, ճիշտ կը լինի, որ ընդդիմութեանը տրուեն մի շարք վերահսկողական բնոյթի պաշտօններ իրաւապահ մարմիններում, արդարադատութեան ոլորտում, պետբիւջէի ծախսերի վերահսկողութեան ոլորտում։ Այդպիսի նշանակումներ կարող են կատարուել նաեւ այլ ոլորտներում»։

Նախագահի թեկնածուի խօսքով, միայն այդպիսի մօտեցումը կը վերականգնի հանրութեան տարբեր հատուածների փոխադարձ վստահութիւնը, ինչպէս նաեւ քաղաքացու վստահութիւնը քաղաքական առաւել աչքի ընկնող ուժերի ու սեփական պետութեան հանդէպ։ «Վստահ եմ, որ ներքին երկխօսութիւն հաստատելու արդիւնքում կը կարողանանք նաեւ գտնել ԼՂ հիմնախնդրի լուծումը։ Ցանկացած այլ տարբերակ անպտուղ է եւ

պառակտիչ: Եթէ կողմերը բանակցելու ցանկութիւն արտայայտեն եւ վստահեն ինձ՝ համաձայնեցնելու քննարկուող հարցերի օրակարգը, իսկ ապա՝ կազմակերպելու կողմերի անմիջական հանդիպումը, ես պատրաստ եմ անել ինձնից կախուած ամէն ինչ փոխվստահութեան ու փոխըմբռնման եզրեր գտնելու համար», ասում է Արման Մելիքեանը:

## ԵՐԹԸ ՅՐԵՅԻՆ

*A1+*, 12:45

Այսօր տարբեր բուհերի մօտ 200 երիտասարդներ դասադուլ են արել: Նրանք պետական համալսարանի կենտրոնական մասնաշէնքի մօտից իջել են դէպի Հիւսիսային Պողոտայ՝ գոռալով «Դասադուլ է, միացէք մեզ»:

Բայց մօտ մէկ տասնեակ ոստիկանական մեքենաներով ոստիկաններ, որոնց ձեռքներին եղել են մահակներ, ցրել են նրանց: Ուսանողները դադարել են գոռալ, բայց դասի չեն գնացել, այլ Ազատութեան Հրապարակ:

Ի դէպ, Երեւանի պետական համալսարանում ամէն ժամ մտնում են լսարաններ եւ ստուգում, զգուշացնում ու ամէն կերպ համոզում ուսանողներին, որ ոչ մի տեղ չգնան:

## ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 13:39

**(մինչեւ ԿԸՅ վերջնական արդիւնքների հրապարակումը)**

Ես շնորհակալութիւն եմ յայտնում իմ ընտրողներին եւ համախոհներին, որոնց թիւը անհամեմատ աւելի է, քան պաշտօնական ներկայացուող տուեալները: Դա մեր հասարակութեան այն անկաշառ, սկզբունքային եւ մեզ գաղափարակից հատուածն է, այն յուսալի սերուցքը, որի վրայ հնարաւոր է կառուցել մեր երկրի ապագան: Դուք ինձ ձայն տալով՝ ձայն էք տուել իրական, արմատական փոփոխութիւնների օգտին:

Ինչ վերաբերում է ընտրութիւններին, ապա այն հակաժողովրդական համակարգը, որի հիմքը դրուել է 1995 թուականից, հերթական անգամ անցկացրեց ընտրութիւնները՝ մեզ արդէն ծանօթ բազմաթիւ խախտումներով (որոնց ծաւալը եւ ապացուցելու հնարաւորութիւնը դեռ ուսումնասիրում ենք):

Այժմ այդ արատաւոր համակարգը ստեղծողները անհաշտ պայքար են յայտարարել այդ համակարգից օգտուողների դէմ, որի մէջ ներքաշւում են բազմաթիւ ազնիւ մարդիկ, ովքեր անկեղծօրէն կարծում են, որ դա պայքար է երկրի ապագայի համար: Իրականում, ըստ իս, կազմակերպիչների համար դա պայքար է ատելութեան ալիքի վրայ ամէն գնով իշխանութեան հասնելու: Այդ պայքարից օգուտ չի ստանայ ո՛չ մեր պետութիւնը, ո՛չ մեր ժողովուրդը:

Կոչ եմ անում ազատութեան, արդարութեան ձգտող բոլոր մարդկանց չյուսահատուել ընտրութիւնների արդիւնքից՝ կրկին անգամ ականատես լինելով կեղծիքներին: Մեր պայքարը դեռ առջեւում է եւ մենք լի ենք վճռականութեամբ՝ վերափոխելու հասարակութեան գիտակցութիւնը դէպի իրական ազգային եւ համամարդկային արժէքներ, որի դէպքում է միայն հնարաւոր կառուցել նոր Հայաստան՝ հիմնուած Ազգային Ժողովրդավարական սկզբունքների վրայ:

Վազգէն Մանուկեան

## ՌՈՒԲԷՆ ԹՈՐՈՍԵԱՆՆ ԻՐ ՏԱՐԵՐՔԻ ՄԷՋ Է

*Lragir.am*, 14:20

Գերագոյն Խորհուրդ - Պատգամաւորական Ակումբ ՀԿ նախագահ, իրաւապաշտպան Ռուբէն Թորոսեանը փետրուարի 22-ին տարածել է հաղորդագրութիւն, որով տեղեկացնում է, որ նախագահի ընտրութեանը միջազգային դիտորդական առաքելութեան (ԸՄԴԱ) նախնական յայտարարութիւնում տեղ գտած ենթադրեալ կեղծիքների եւ ԿԸՅ նախագահի ենթադրեալ ապօրինութիւնների մասին հաղորդումներ է ներկայացրել Գլխաւոր Դատախազութիւն:

«1. Ընտրութիւնների Միջազգային Դիտորդական Առաքելութեան (ԸՄԴԱ) նախնական յայտարարութիւնում տեղ գտած ենթադրեալ կեղծիքների մասին, այն են՝ 1.1. ԸՄԴԱ-ն զեկոյցից՝ «ԿԸՅ-ն պարզաբանում է տուել, որ վարչապետը կարող է քարոզչութիւն իրականացնել առանց պաշտօնը թողնելու», Մեր պարզաբանումը՝ ԿԸՅ-ն նման որոշում չի ընդունել, 1.2. ԸՄԴԱ-ն զեկոյցից՝ «Նախընտրական ժամանակահատուածում ԿԸՅ-ն ստացել է 55 բողոք» Մեր պարզաբանումը՝ ԿԸՅ-ն այդ ժամանակահատուածում ստացել է առնուազն 88 դիմում բողոք, 1.3. ԸՄԴԱ-ն զեկոյցից՝ «ԿԸՅ-ն հաւատարմագրել է դիտորդներ 6 միջազգային կազմակերպութիւններից եւ 39 հայկական ՀԿ-ներից» Մեր պարզաբանումը՝ ԿԸՅ-ն ոչ մի դիտորդ ԸՕ պահանջների համաձայն չի հաւատարմագրել:

2. ԿԸՅ-ի նախագահի կողմից պաշտօնեական լիազօրութիւնների անցման մասին, այն է՝ Կոպտօրէն խախտելով ԸՕ 40.1-րդ յօդուածի պահանջները,ԿԸՅ-ի նախագահը, համաձայն օրէնքի պահանջների, չի կազմակերպել մեր թւով 54 դիմում-բողոքների քննարկումը, այդ թւում, զրկել է այդ քննարկումներին մասնակցելու մեր իրաւունքից: Աւելին, միջազգային դիտորդներին եւ ԿԸՅ համապատասխան կայքում տեղեկատուութիւն է ներկայացրել այդ դիմումներց միայն 24-ի մասին (տե՛ս սոյն հաղորդագրութեան 1.2. կէտը)», նշուած է Ռուբէն Թորոսեանի տարածած հաղորդագրութեան մէջ:

Նա տեղեկացնում է նաեւ, որ շուտով կը ներկայացնի նաեւ ԸՄԴԱ-ն նախնական Զեկոյցի վերաբերեալ դիտողութիւնները, որոնք վերաբերւում են Զեկոյցում տեղ գտած բազմաթիւ անճշտութիւններին եւ թերութիւններին, այդ թւում, Զեկոյցի անհամապատասխանութեանը ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութիւն իրականացնելու հրահանգի պահանջներին: «Նման փաստաթուղթ մեր կողմից ներկայացուել է նաեւ ԱԺ 2007թ. ընտրութիւնների վերաբերեալ ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ համապատասխան զեկոյցի կապակցութեամբ», ասում է Ռուբէն Թորոսեանի ղեկավարած ակումբի լրատուութիւնը:

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆԻՑ ՅԵՏՈՅ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՆԻՍՏՈՒՄ

*Lragir.am*, 14:35

Փետրուարի 19-ին նախագահի ընտրութեան պաշտօնական տուեալի համաձայն հայաստանի նախագահ ընտրուած Սերժ Սարգսեանն փետրուարի 22-ին տեղի ունեցած կառավարութեան նիստը սկսելուց առաջ շնորհակալութիւն է յայտնել կառավարութեան անդամներին եւ ի դէմս նրանց՝ բոլոր այն քաղաքացիներին, ովքեր օժանդակել են փետրուարի 19-ին հանրապետութիւնում ԵԱՀԿ-ի եւ Եւրամիութեան առջեւ ստանձնած պարտաւորութիւններին համապատասխան ընտրութիւններ անցկացնելու գործին: Այդ մասին տեղեկացնում է կառավարութեան մամուլի ծառայութիւնը: Սերժ Սարգսեանն ասել է, որ ներկայ պահին կարեւոր է, որպէսզի իրաւապահ մարմինները բծախնդրօրէն

քննութեան առնեն բոլոր այն փաստերը, որոնք կան ընտրախախտումների հետ կապուած: Վարչապետը չափազանց կարեւոր է համարել նաեւ, որ կառավարութեան անդամներն անյապաղ ձեռնամուխ լինեն նախանշուած ծրագրերի իրականացմանը: «Մենք յաւակնոտ ծրագրեր ունենք, եւ այդ ծրագրերը պէտք է բերեն նրան, որ իւրաքանչիւր ամիս մեր ժողովուրդն իրօք զգայ փոփոխութիւններ, պիտի բարեփոխումներն արագանան, սա կարեւորագոյն խնդիր է», ասել է Սերժ Սարգսեանը:

## HUMAN RIGHTS WATCH-Ը ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՓԱՍՏԵՐՆ ԱՐՁԱՆԱԳՐԵԼ Է

*A1+*, 14:59

Human Rights Watch միջազգային իրաւապաշտպան կազմակերպութիւնը Հայաստանի իշխանութիւններին կոչ է անում անյապաղ հետաքննել փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնների ընթացքում դիտորդների եւ լրագրողների նկատմամբ տեղ գտած բռնութեան դէպքերը: Այսօր կազմակերպութեան ինտերնէտային կայքում տեղադրուել է մօտ 3 էջանոց զեկոյց, որը վերնագրուած է *Հայաստան. Բռնութիւնները ընտրատեղամերում ստուերում են ընտրութիւնները. թիրախ են դարձել ընդդիմադիր ակտիւիստները, դիտորդները եւ լրագրողները*:

«Ընտրութիւնների օրը այս յարձակումների թիրախը դարձել են հէնց այն մարդիկ, ովքեր փորձել են ապահովել քուէարկութեան օրինական ընթացքը», - յայտարարել է Human Rights Watch-ի Եւրոպայի եւ Կենտրոնական Ասիայի հարցերով տնօրէն Հոլի Քարթները՝ աւելացնելով. - «Հայաստանի իշխանութիւնները պէտք է անկախ եւ շուտափոյթ հետաքննութիւն անցկացնեն՝ ապահովելու արդարութեան վերականգնումը եւ շեշտելու, որ մարդկանց վախեցնելը Հայաստանում անհանդուրժելի է»:

Զեկոյցում արձանագրուած են նաեւ մի շարք փաստեր, օրինակ՝ Երեւանի 13/16 ընտրատեղամասում *Հայկական ժամանակ*ի լրագրող Լուսինէ Բարսեղեանի, Ժառանգութեան պատգամաւորներ Արմէն Մարտիրոսեանի, Զարուհի Փոստանջեանի դէմ յարձակումները: Տեղ են գտել նաեւ Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց նկատմամբ բռնութիւնների մասին փաստերը՝ մասնաւորապէս Կոտայքի մարզում, *Ա1+*-ի օպերատորի աշխատանքի խոչընդոտման փաստը, եւ այլն:

Human Rights Watch-ը նաեւ յորդորում է ԵԱՀԿ-ին՝ մանրակրկիտ ուսումնասիրել ընտրական գործընթացում արձանագրուած բռնութիւնները եւ ապահովել, որպէսզի այդ միջադէպերը արձանագրուեն Հայաստանի նախագահական ընտրութիւնների վերաբերեալ ԵԱՀԿ-ի վերջնական զեկոյցում:

Զեկոյցն ամբողջութեամբ մեր անգլերէն էջում:

## ՄԻՆՉԵՒ ՀԱՆՐԱՀԱՒԱՔԻ ՍԿԻԶԲԸ (video)

*A1+*, 15:12

Այսօր վաղ առաւօտից դէպի Ազատութեան Հրապարակ էին ուղղուած մարդկանց հոծ խմբեր, ու թէեւ հանրահաւաքը յայտարարուած է ժամը 15-ին, բայց արդէն 2 ժամ առաջ հրապարակը լեցուն էր, բարձր հնչում էր երաժշտութիւնը, իսկ խումբ-խումբ մարդիկ շուրջպար էին բռնել:

Ամբողջ գիշեր բարձր տրամադրութիւնը թեւածել է Ազատութեան Հրապարակում: Եւ

նոյնիսկ ամենացուրտ պահին, առաւօտեան ժամը 4-ից 6-ը վեց հազարից աւելի մարդ եղել է հրապարակում: Իսկ ոստիկանները չեն ապահովել նստացոյցի մասնակիցների անվտանգութիւնը. մի որոշակի ժամի նրանք հրահանգուած հեռացել են հրապարակից:

«Այս պահի դրութեամբ սպասում ենք բարձրացուած հարցերի պատասխանին պետական իշխանութեան մարմինների կողմից: Ժամը 15-ին կը սկսուի հանրահաւաքը. այդ ժամին լրանում է առաջադրուած պահանջներին պատասխանելու ժամկէտը», - *Ա1+*-ին ասաց ՀՀ նախկին վարչապետ, Ազատութիւն կուսակցութեան նախագահ Հրանտ Բագրատեանը:

Նա համոզուած է, որ իշխանութիւնները կը պատասխանեն իրենց հարցերին. «Իրենք չեն կարող չպատասխանել, սա ժողովրդական շարժում է, մարդիկ իրենց պահուածքով ցոյց են տալիս, թէ իրականում ինչպիսի ընտրութիւն է տեղի ունեցել փետրուարի 19-ին», - ասաց Բագրատեանը: Անդրադառնալով «շնորհաւորանքների շքերթին»՝ Հրանտ Բագրատեանը նկատեց, որ «դրանց կէսը սուտ է. օրինակ, Սոլանան չի շնորհաւորել Սերժ Սարգսեանին, յայտարարութիւն է միայն արել: Այ, շնորհաւորել է Աբդուլահ Գիւլը, մարդը կոնկրէտ շնորհաւորել է Սերժ Սարգսեանին, նրան, երեւի, շնորհաւորել են իր մօրաքրոջ աղջիկները, հօրեղբօր տղաներ, Պաշտպանութեան Նախարարութեան վարչութեան պետեր»:

Հրանտ Բագրատեանի կարծիքով բոլորը հասկանում են, որ վիճակը շատ աւելի լուրջ է, քան կարող էին պատկերացնել. «Կամաց-կամաց իրական ինֆորմացիան, թէ ինչ խայտառակութիւն է եղել փետրուարի 19-ին, հասնում է բոլորին, եւ նոյնիսկ իշխանութիւններն են ապշել իրենց արածից: Երեւի Սերժ Սարգսեանը կարծում էր, թէ ձայներ ունի, բայց որտեղ վերահաշուարկ են անում, պարզւում է խայտառակ պատկեր. չեն կարող մարսել, եւ թոյլ տուէք ձեզ 100 տոկոսով վստահեցնել, որ իշխանութիւնները շատ խելօք, սուս ու փուս կը պատասխանեն առաջադրուած հարցերին, հիմա պարզապէս ժամանակ են ձգձգում, որ բոլորը յոգնեն, դադարեն պայքարելուց»: Հրանտ Բագրատեանը կարծում է, որ նման ձեւով իրավիճակի շարունակութիւնը օգուտ է շարժմանը, որովհետեւ «ունենալ քաղաքի կենտրոնում պերմանենտ 300 հազարանոց հանրահաւաքներ, դա կազմալուծում է պետական ապարատը, այն կամաց-կամաց կորցնում է վստահութիւնը կառավարիչների, գլխաւորների նկատմամբ եւ իշխանութիւնը ստիպուած կը լինի պատասխան տալ»: Իսկ ընտրական յանձնաժողովի նախագահի դէմ քրէական գործի յարուցումը սիմվոլիկ իրադարձութիւն է համարում Բագրատեանը. «Իրենք փորձում են ցոյց տալ, թէ իբր ինչ-որ բան անում են»:

ՆԳ նախկին նախարար, Հանրապետութիւն կուսակցութեան քաղխորհրդի անդամ Սուրէն Աբրահամեանից փորձեցինք ճշտել՝ հնարաւո՞ր է խաղաղ ցուցարարների նկատմամբ ուժի կիրառումը. «Սեփական ժողովրդի նկատմամբ ուղղակի ատելութեան կամ վրէժխնդրութեան զգացում պէտք է ունենան, որ կարողանան խաղաղ մարդկանց ուրախութիւնը խաթարեն», - պատասպանեց նա: Իսկ երբ յիշեցրինք ոչ պակաս ուրախ եւ խաղաղ դէպքերը 2004 թուականի ապրիլի 12-ին, նա պատասխանեց. «Հիմա մենք աւելի խելօք ենք»: Իսկ հնարաւո՞ր է, որ ՊՆ երկու փոխնախարարների՝ Մանուէլ Գրիգորեանի եւ Գագիկ Մելքոնեանի աջակցութիւնը շարժմանը, կանխի իրադարձութիւնների ոչ ցանկալի, ուժային զարգացումը, Սուրէն Աբրահամեանը պատասխանեց. «Ում մտքով, որ կ'անցնի իշխանական վերնախաւում՝ ժողովրդի նկատմամբ ուժ գործադրել, այդ

յայտարարութիւնը դրանց համար սառը ջրի նման կը լինի, միանշանակ»: Իսկ հնարաւո՞ր է, որ գեներալ Մանուէլ Գրիգորեանը բարձրանայ հարթակ՝ հարցին, Սուրէն Աբրահամեանը պատասխանեց. «Մանուէլը իր տեղը հանգիստ նստած է, հարթակ բարձրանալու անհրաժեշտութիւն չկայ, ամէն մարդ իր գործն է անում»:

## ԴԱՍԱԴՈՒԼԸ ԿԱՅԱՑԵԼ Է

*A1+*, 15:14

«Այսօր բոլոր ԲՈՒՀ-երը դասադուլ են յայտարարել, սակայն որոշ բուհերի ղեկավարներ խոչընդոտում են դասադուլին, - ասաց Հայաստանի Պահպանողական Կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը: Ըստ նրա, ամենալուրջ խոչընդոտները ստեղծում են Բրիւսովի անուան օտար լեզուների ինստիտուտի եւ Ժողտնտեսութեան ինստիտուտի ղեկավարութիւնը.

«Սակայն յուսանք, որ վաղը այնքան ողջամիտ կը լինեն ուսանողները, որ իրենց չեն դատապարտի ազատազրկման»: Նա պատմեց, թէ ինչպէս են այսօր տնտեսագիտական համալսարանում փակել դարպասները, իսկ «ԵՊՀ միջազգային յարաբերութիւնների ֆակուլտէտում նոյնիսկ լսարանների դռներն են փակել եւ թոյլ չեն տուել ուսանողներին անգամ տարրական սանիտարական պէտքերը հոգալ: Սա ուղղակի բարբարոսութիւն է», - *Ա1+*-ին ասաց Միքայէլ Հայրապետեանը: Ի դէպ, նա բարձրախօսով յայտարարեց, որ Հայաստանի ագրարային համալսարանի եւ անասնաբուժական ինստիտուտի ուսանողները հրապարակում են, սակայն նաեւ հրապարակ են ժամանել ֆակուլտէտների դեկանները, իրենց քարտուղարուհիների հետ: Հայրապետեանը բարձրախօսով նրանց տեղեկացրեց, որ դասադուլը սահմանադրական պայքարի ձեւ է եւ կոչ արեց նրանց հեռանալ «մկան ծակերը»:

Գիւմրիի պատասխանատու Պետրոս Մաքէյեանն էլ *Ա1+*-ին յայտնեց, որ Գիւմրի - Երեւան մայրուղու վրայ երեք հատուածում ոստիկանները զինուած սահմանափակում են մարդկանց ազատ տեղաշարժուելու իրաւունքը: Ի դէպ, նաեւ նկատեց, որ գիւմրեցիները լրատուական շրջափակման մէջ են եւ տեղեկատուութեան միակ աղբիւրը *Գալա* հեռուստաընկերութիւնն է, որի լրատուական թողարկումների ժամին հոսանքազրկում են հիմնական մարդաշատ թաղամասերը:

## ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԸ ՀԱՐԹԱԿՈՒՄ Է

*A1+*, 15:27

Հանրահաւաքը Ազատութեան Հրապարակում մեկնարկել է, անմիջապէս մեկնարկից յետոյ հրապարակ է ժամանել Ժառանգութիւն կուսակցութեան նախագահ, ՀՀ առաջին արտգործնախարար Րաֆֆի Յովհաննիսեանը: Նա բարձրացրել է Լեւոն Տէր-Պետրոսեանի ձեռքը եւ Ազատութեան լեփ-լեցուն հրապարակը ծփացել է «Րաֆֆի» եւ «Միացում» վանկարկումներից:

Հանրահաւաքի սկզբում ոստիկանները կրկին հանրահաւաքի կազմակերպիչներին տեղեկացրել են, որ սա արտօնուած հանրահաւաք չէ, եւ իրենք կատարում են քրէօրէն պատժելի արարք: Ոստիկաններին պարզաբանումներ են տուել Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մաքէյեանն ու ՀԺԿ մամուլի քարտուղար Ռուզան Խաչատրեանը: Իսկ հանրահաւաքը վարող Նիկոլ Փաշինեանը պատասխանել

է հարթակից. «Մենք հարթակում կանգնած քաղաքական գործիչներս Ազատութեան Հրապարակում անցկացնում ենք ոչ զանգուածային հրապարակային միջոցառում, որն անցկացնելու համար անհրաժեշտ չէ իրազեկել Երեւանի քաղաքապետարանին. մեր ոչ զանգուածային հրապարակային միջոցառումը ինքնաբուխ կերպով վերածուել է զանգուածային հրապարակային միջոցառման, եւ օրէնքը նման դէպքերում նախատեսում է, որ ոչ զանգուածային հրապարակային միջոցառումը անցկացւում է առանց իրազեկման»:

## «ԸՆԴԱՄԷՆԸ ԵՐԿՈՒ ՇԱԲԱԹ ՊԷՏՔ Է ԿԱՆԳՆԵԼ»

*A1+*, 15:32

«2003թ. ընտրութիւնների համեմատ այս անգամ ընդդիմադիր եւ առաւել որակեալ հատուածը գտնւում է մայրաքաղաքում», - այս համոզմանն է Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Ստեփան Սաֆարեանը, որը կարծում է. «Անգամ պատահական անցորդը կը նկատի, որ ինչպիսի ծանրակշիռ լուրջ հատուած է հաւաքուած Ազատութեան Հրապարակում՝ երիտասարդութիւն, մտաւորականութիւն, ոչ պատահական մարդիկ»:

Քաղաքագէտ Ալեքսանդր Իսկանդարեանի համոզմամբ՝ հիմա արդէն կարեւոր չէ, թէ փետրուարի 19-ին որքան ձեռքեր են քուէարկել, այլ կարեւոր է, ինչքան ոտքեր կը գան եւ կը կանգնեն հրապարակում: «Մեզ բոլորիս յայտնի է, թէ ինչ է պէտք անել ընտրութիւնների արդիւնքները փոխելու համար. 500.000 մարդիկ ընդամէնը երկու շաբաթ պէտք է գնան եւ կանգնեն հրապարակում», - ասում է նա:

Ստեփան Սաֆարեանը կարծում է, որ ներկայիս պայմաններում ընդդիմութիւնը միշտ ծնուելու է: Ըստ նրա՝ եթէ Ազատութեան Հրապարակում թափ առած այս ալիքը մի փոքր էլ մեծանայ, պետական իշխանութիւնը փակուղու մէջ կը յայտնուի:

Միջազգային դիտորդական գնահատականներին անդրադառնալով՝ ԱԺ պատգամաւորը նշեց, թէ դրանք էլ աւելի են թէժացնում վիճակը: «Խօսքը ԵԱՀԿ-ի մասին է: Որքան էլ պնդեն, թէ գնահատական չեն տալիս, յիշում ենք, որ պետդումայի ընտրութիւններից յետոյ հնչեցին շատ խիստ գնահատականներ ընտրութիւնների հետ կապուած, որոնք անցել էին առանց լրագրողների, պատգամաւորների ծեծի», - նշեց Ստեփան Սաֆարեանը, ապա յաւելեց, թէ տուեալ դէպքում հասարակութեան մէջ տարբեր գնահատականներ են հնչում՝ կաշառման եւ այլնի մասին. «Յետագայ զարգացումների համար ԱՄՆ պետդեպարտամենտի կոշտ գնահատականից յետոյ շնորհաւորանքների շքերթը ընդհատուեց: Կարծում եմ, որ վերջին իրադարձութիւնները, որոնք արդէն ծաւալւում են Երեւանում, որոշակի անկախատեսելութեան ռիսկեր են պարունակում եւ, որ ուրուական ընտրողներով կատարուած ընտրութիւնը ինքնին անկայունութեան ռեսուրս է, յատկապէս, երբ իշխանութիւնը գիտի, որ ինքը իրականում այդքան ընտրողներ չունի, իսկ ընտողը յստակ գիտի, թէ ում է քուէարկել»:

Ի դէպ, Ստեփան Սաֆարեանը ապշած է ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ զեկոյցից: Ըստ նրա՝ տարօրինակ, հակասական տեքստ է, շատ երկիմաստ, իսկ հասարակութիւնը կարծես իմունիտէտ ունի նման զեկոյցների:

## ՈՉ ԶԱՆԳՈՒԱԾԱՅԻՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄԸ ՎԵՐԱԾՒՈՒՄ Է ԶԱՆԳՈՒԱԾԱՅԻՆԻ

*Lragir.am*, 15:43

Ազատութեան Հրապարակում մեկնարկել է Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի հերթական հանրահաւաքը: Հրապարակում աւելի շատ մասնակից կայ, քան երէկ, հոսքը շարունակւում է: Այս հանրահաւաքին մասնակցում է նաեւ Ժառանգութիւն կուսակցութեան ղեկավար Րաֆֆի Յովհաննիսեանը:

Բացելով հանրահաւաքը, Նիկոլ Փաշինեանը յայտնել է, թէ այսօր առաւօտեան ոստիկաններ են եկել Ազատութեան Հրապարակ եւ ասել, թէ այս ակցիաները արտօնուած չեն եւ հակաօրինական են: Նիկոլ Փաշինեանի խօսքով, ինքը բացատրել է ոստիկաններին, որ 50 գործիչներ կազմակերպում են ոչ զանգուածային միջոցառում, որի համար քաղաքապետարանին իրազեկել պէտք չէ: Պարզապէս այդ ոչ զանգուածային միջոցառումները վերածւում են զանգուածայինի: Նիկոլ Փաշինեանն ասել է, որ խորհուրդ է տուել ոստիկաններին չյայտնուել նման անեկդոտային վիճակում:

## ՄԵԼԻՔԵԱՆԸ՝ ՄԻՋՆՈՐԴԻ ԴԵՐՈ՞ՒՄ

*A1+,* 15:45

«Ես այս ընտրութիւնները կարող եմ որակել որպէս փոխադարձ անհանդուրժողականութեան եւ ատելութեան ընտրութիւններ, քանի որ ըստ էութեան՝ հասարակութիւնն ընտրում էր ոչ թէ իր նախընտրելի նախագահին, այլ քուէարկում էր այն ՀՀ նախագահի թեկնածուի դէմ, ում չէր ուզում տեսնել այդ պաշտօնում», - այսօր յայտարարեց ՀՀ նախագահի թեկնածու Արման Մելիքեանը, որը հաւաքել էր 4359 ձայն:

Սա, ըստ նրա՝ նշանակում է, որ մեր թէ հասարակութիւնը, թէ պետութիւնը լրջօրէն հիւանդ են եւ բուժման կարիք ունեն: Իսկ առաջարկուող դեղատոմսերն այսօր բուժումը փոխարինում են մահապատժով: Այս պարագայում, ըստ Մելիքեանի՝ մենք պէտք է բռնենք ներքին երկխօսութեան ճանապարհը: «Մեր հասարակութիւնն իսկապէս խիստ բեւեռացման գործընթացի մէջ է, որը հիմա ծայրագոյն տեսք է ստանում: Հանրութեան մի զգալի հատուածն այս պահին Ազատութեան Հրապարակում է եւ պարբերաբար շարունակում է բողոքի ակցիաները: Դա նշանակում է, որ խնդիրը վերջնական լուծուած չէ: Հասել ենք այն եզրին, որից յետոյ կարող են սկսուել լուրջ բախումներ եւ հասարակութիւնն ու պետութիւնը լուրջ դեֆորմացիաների կ'ենթարկուեն: Մենք դա պէտք է կանխենք: Այս իրավիճակում չի կարող լինել ոչ ուժային, ոչ էլ իրաւական դաշտում ընդունելի ելքեր», - կարծում է Մելիքեանը:

Սակայն նա մէկ այլ առաջարկ ունի՝ եթէ իշխանական եւ ընդդիմադիր կողմերը ուզենան ու վստահեն իրեն նախնական ուղղութեամբ քայլեր կատարելու, ապա ինքը պատրաստ կը լինի միջնորդի դեր ստանձնել նրանց միջեւ: Նա արդէն հեռակայ կարգով դիմել է երկու կողմերին էլ եւ առաջարկի ընդունման հաւանականութիւնը բարձր է գնահատում: Այս հարցում Մելիքեանն ակնկալում է նաեւ հանրութեան աջակցութիւնը: Երկար տարիներ իրական, շահագրգիռ երկխօսութեան բացակայութիւնը, ըստ նրա՝ իշխանութեան թերացումն է, թէեւ Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցներն ու ընդդիմութեանը եւս լուրջ ցանկութիւն չեն դրսեւորել:

Իսկ թէ այս դրութեամբ ում կողմն է Արման Մելիքեանի համակրանքը, նա պատաս-

խանեց, որ ինքը մի համակրանք ունի, որ երկիրը խաղաղ լինի:

Ինչ վերաբերում է ընտրութիւնների արդիւնքներին եւ իր ստացած ձայներին, ապա նա նշեց, որ դրանք թուային առումով իր համար արդիւնք չեն, քանի որ աւելի կարեւոր է երկրի ներքաղաքական իրավիճակը եւ դրանից դուրս գալու ուղիները: «Կանխատեսումներ անելու խնդիր իմ առջեւ չեմ դրել. վերահաշուարկի ժամանակ ճշտգրտումներ վստահ եմ, որ կը լինեն: Ես ասում էի, որ ընտրութիւնների արդիւնքների հետ պարտուած կողմը չի կարող համակերպուի, լինի դա իշխանութեան, թէ ընդդիմութեան թեկնածուն», - ասում է Մելիքեանը: Նա նաեւ չի հետաքրքրուել՝ իր ձայների դէպքում ընտրակեղծիքներ եղել են, թէ ոչ: «Քանի որ այս հանգամանքներում սա արդէն երկրորդական խնդիր է», - աւելացրեց նա:

Իսկ թէ ինչու միանգամից նա հանդէս չէր եկել այս գնահատականներով, ապա նա նշեց, որ մի խնդիր ունէր լուծելու՝ իր սեփական խողովակներով, իր հնարաւորութիւններն օգտագործելով տեսնել, թէ ընտրատեղամասերում ինչպիսի պատկեր է եղել: «Անշուշտ եղել են բռնութիւններ, չարաշահումներ, բայց դրա հետ մէկտեղ իմ հաւաստի աղբիւրների վկայութեամբ Սերժ Սարգսեանը Լեւոն Տէր-Պետրոսեանի նկատմամբ առաւելութիւն ունեցել է: Սակայն իմ ունեցած տուեալների հիման վրայ չեմ կարող պնդել, թէ այդ առաւելութիւնն արդեօք բաւարա՞ր էր, որ առաջին փուլով ընտրութիւններն աւարտուէին», - ասում է Արման Մելիքեանը:

## ՇԱԽ ԵՒ ՄԱՏ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

*Lragir.am*, 15:48

Այսօրուայ հանրահաւաքում ելոյթ է ունեցել արտակարգ եւ լիազօր դեսպան Արման Նաւասարդեանը: Նրա խօսքով, մի քանի ամիս առաջ Լեւոն Տէր-Պետրոսեանը շախ յայտարարեց Շախմատի ֆեդերացիայի նախագահ Սերժ Սարգսեանին, իսկ փետրուարի 19-ին՝ մատ: Արման Նաւասարդեանը ասել է, թէ ինքը աշխատել է Տէր-Պետրոսեանի օրօք եւ անձամբ է տեսել, թէ ինչպէս էր նա յարաբերւում աշխարհի մեծերի հետ, ինչպէս հաւասարը հաւասարի հետ եւ ներկայացել որպէս մեծ ժողովրդի մեծ նախագահ: Արման Նաւասարդեանը վստահեցրել է, թէ Տէր-Պետրոսեանի օրօք Հայաստանը դուրս կը գայ դիւանագիտական ներկայիս փակուղուց:

## ԵԼՈՅԹ Է ՈՒՆԵՑԵԼ ՌԱՖԱՅԷԼ ՂԱԶԱՐԵԱՆԻ ԿԻՆԸ

*Lragir.am*, 15:53

Քիչ առաջ Երեւանի Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների հանրահաւաքում ելոյթ է ունեցել երջանկայիշատակ ակադեմիկոս Ռաֆայէլ Ղազարեանի կինը՝ Գրիգելդա Ղազարեանը: Նա պատմել է, որ իր ամուսինը իւրովի էր մեկնաբանում մտաւորական բառը, ասելով, թէ հայ որոշ մտաւորականների դէպքում այդ բառը պէտք է գրուի կոշտ ռ-ով: Ուր են մեր ակադեմիկոսները, մտաւորականները, հարցրել է Գրիգելդա Ղազարեանը եւ դիմել ռեկտորներին, որ այսօր փակել են ուսանողութեան ճանապարհը. միթէ նրանք չեն տեսնում ներկայիս անօրինականութիւնները:

## «ԻՍԿ ՈՐՏԵ՞Ղ ԿԱՐՈՂ Է ԳՏՆՈՒԵԼ ՄԱՆՈՒԷԼ ԳՐԻԳՈՐԵԱՆԸ»

*A1+*, 16:29

Երկրապահ Կամաւորականների Միութիւնը (ԵԿՄ) միշտ յայտարարել է, որ ժողովրդի կողքին է լինելու, ԵԿՄ-ն արդարութեան, ազատութեան կողքին է լինելու, եւ ԵԿՄ-ի անդամների մեծ մասը՝ 80-90 տոկոսը կողմնորոշուած է եղել այդպէս», - *Ազատութիւն* ռադիոկայանին տուած հարցազրոյցում ասաց ԵԿՄ-ի փոխնախագահ, Ազգային Ժողովի պատգամաւոր Միասնիկ Մալխասեանը: «Եւ ընտրութիւնների այդ խայտառակ ելքը մնացած մասին էլ գրեթէ կողմնորոշեց այդպէս, որ նրանք իրենց ժողովրդի կողքին պիտի լինեն», - յաւելեց նա:

«Ժողովրդի կողքին՝ նշանակում է Ազատութեան Հրապարակո՞ւմ, այնտե՞ղ, որտեղ հանրահաւաքներ են տեղի ունենում Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորութեամբ», - այս հարցին Մալխասեանը պատասխանեց. - «Այո: Այսօր ժողովուրդը՝ մեծ մասը, հիմնական մասը Ազատութեան Հրապարակում է, եւ այդ համաժողովրդական շարժումը այսօր ղեկավարում է Լեւոն Տէր-Պետրոսեանը»:

Այն հարցին, թէ ԵԿՄ-ի նախագահ Մանուէլ Գրիգորեանը նո՞յնպէս սատարում է Տէր-Պետրոսեանին, Միասնիկ Մալխասեանը արձագանքեց. - «Եթէ Երկրապահ Կամաւորականների Միութեան մեծ մասը ժողովրդի կողքին է, սատարում է արդարութիւնը, ապա որտե՞ղ կարող է գտնուել Մանուէլ Գրիգորեանը»:

Իսկ ի պատասխան յիշեցման, որ պաշտպանութեան նախարարութեան մամուլի խօսնակ Սէյրան Շահսուվարեանը հերքել է Մանուէլ Գրիգորեանի՝ Տէր-Պետրոսեանին սատարելու մասին տեղեկութիւնը, ԵԿՄ-ի փոխնախագահը յայտարարեց. - «Սէյրան Շահսուվարեանը Մանուէլ Գրիգորեան չի: Եթէ Մանուէլ Գրիգորեանը չի հերքում, Սէյրան Շահսուվարեանը իրաւունք ունի՞ նրա փոխարէն հերքելու»:

Մեկնաբանելով այն տեղեկութիւնները, որ երէկ ԵԿՄ-ում բանակցութիւններ են տեղի ունեցել Մանուէլ Գրիգորեանի եւ Զինուած Ուժերի գլխաւոր շտաբի պետ Սէյրան Օհանեանի միջեւ, Միասնիկ Մալխասեանը ասաց. - «Եղել է, կարծեմ, բայց ստոյգ տեղեկութիւն չեմ կարող ասել: Բնականաբար, հիմնական խնդիրը՝ բոլորն էլ շահագրգռուած են, որ այս հարցը լուծուի արդարացի՝ աւելորդ բախումներից խուսափելու համար: Բոլոր հայ սպաները, հայ գեներալները դրան են միտուած»:

## ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԸ ԴԻՄԵԼ Է ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԸՆԿԵՐՆԵՐԻՆ

*Lragir.am*, 16:39

Ազատութեան Հրապարակում ընթացող հանրահաւաքում ելոյթ է ունեցել Գլխաւոր Դատախազի տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը: Դիմելով մասնակիցներին, նա ասել է՝ դուք յաղթել էք եւ ունէք յաղթած նախագահ, եւ խորհուրդ է տուել այլեւս չասել առաջին նախագահ, քանի որ Լեւոն Տէր-Պետրոսեանը արդէն 3-րդ նախագահն է: Գագիկ Ջհանգիրեանի խօսքով, ինքը շատ ընտրութիւններ է տեսել եւ առնչուել, սակայն այն կեղծիքները, որ տեղի են ունեցել այս անգամ, չի եղել ոչ մի անգամ: Դիմելով հաւաքուածներին, Գլխաւոր Դատախազի տեղակալը խնդրել է տէր կանգնել իրենց ձայներին, քանի որ Լեւոն Տէր-Պետրոսեանը միայնակ ոչինչ չի կարող անել: Ի վերջոյ, այս հողի վրայ պէտք է հաստատուի օրէնքի իշխանութիւնը, ասել է Գագիկ Ջհանգիրեանը: Ազնիւ չէի լինի, եթէ

չխօսէի հոկտեմբերի 27-ի մասին, ասել է Ջհանգիրեանը եւ յայտարարել, թէ միանում է այդ մասով Լեւոն Տէր-Պետրոսեանի քաղաքական գնահատականներին, եւ որպէս իրաւաբան յայտարարում, թէ 27-ի գործի անջատուած մասով անօրինական կարճուած գործը պէտք է շարունակուի քննուել: Գագիկ Ջհանգիրեանը կրկին խնդրել է տէր կանգնել ձայներին եւ օգնել Տէր-Պետրոսեանին, եւ այդ դէպքում 27-ի գործը կը հասցնեն մինչեւ վերջ: Գագիկ Ջհանգիրեանը դիմել է Վազգէն Սարգսեանի բոլոր ընկերներին, ո՛ր կազմակերպութիւնում էլ որ հիմա ընդգրկուած են, կոչ անելով ոչ թէ սեղանների շուրջ կենացներ ասել, թքել-մրել, այլ ժամանակն է արդէն, օրը, ժամը հասել է: Ես դեռ դատախազ եմ եւ ես բռնութեան կոչ չէ, որ անում եմ, այլ խօսում եմ Հայաստանում օրինականութեան հաստատման մասին, եզրափակել է Գագիկ Ջհանգիրեանը:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ ՄԻԱՑԱՒ ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԸ

*A1+*, 16:42

Այս պահին Ազատութեան Հրապարակում է ՀՀ նախկին զինուորական դատախազ, այժմ ՀՀ Գլխաւոր Դատախազի տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը, որը յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանի շարժմանը միանալու մասին. «Սիրելի հայրենակիցներ, ես ազնիւ չէի լինի ինքս իմ հետ, եթէ «27»-ը չքննարկէի ձեզ հետ. ես միանշանակ միանում եմ Լեւոն Տէր-Պետրոսեանի տուած քաղաքական գնահատականներին. 27-ից անջատուած մասով քրէական գործի վարոյթը կարճուեց եւ կարճուեց քրէական դատավարութեան օրէնսգրքի կոպիտ խախտումներով. եւ այդ անջատուած մասով քննութիւնը արգելւում է, - ասաց Ջհանգիրեանը: - Ես ձեզ խոստանում եմ, որ եթէ դուք օգնէք ընտրուած նախագահին, օգնէք ինձ, կը հասնենք մենք մինչեւ վերջ»:

Այս խօսքերից յետոյ «Վի-վա», «վի-վա» վանկարկումներով հրապարակը թնդաց: «Ես դիմում եմ Վազգէնի բոլոր ընկերներին, Վազգէնի բոլոր զինակիցներին, բոլոր նրանց, ովքեր իրենց համարում են Վազգէնական, ես դիմում եմ բոլոր ազատամարտիկներին, անկախ նրանից, թէ նրանք այսօր ինչ անուան տակ են կանգնած՝ «Ոգու փորձութիւն» է, «Մահապարտ» է, «Երկրապահ» է, թէ ինչ: Տղաներ, բաւական է կենացներ ասելիս լաց լինէք, հայհոյէք, թքէք-մրէք. օրը եկել է, պահը հասել է»:

## ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԻ ԵԼՈՅԹԸ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*Հետք*

Թանկագին բարեկամնե՛ր, համաքաղաքացինե՛ր,

Ազգային իրաւատիրութեան այս հրապարակը, անտարակոյս, իրացնելու է մեր հաւաքական, քաղաքացիական եւ ազգային իրաւունքը:

Իրացնելու է ազգային միասնութեան այս թեւածող ոգով, ինչպէս նաեւ առաւել յստակ, առարկայական գնահատականներով ու զուսպ բառապաշարով: Իւրաքանչիւրս իրաւունք ունի սխալուելու կեանքի ընթացքում՝ թէ՛ այս հարթակում կանգնածները, թէ՛ ժողովուրդը, թէ՛ այստեղից բացակայողները: Բայց ոչ ոք չի կարող դատաւոր կանգնել հայ ժողովրդի ազատ ընտրութեան արգասիք հանդիսացող քուէին:

Մի քանի օր առաջ մենք միասին նշեցինք Արցախեան ազատամարտի պաշտօնական մեկնարկի 20-ամեակը, մի քանի օր անց նաեւ ոգեկոչելու ենք Սումգայիթեան եղեռնի

զոհերի յիշատակը: Եւ ահա այստեղ՝ այս հրապարակից մինչեւ ցանկացած սահման եւ Ստեփանակերտ, տիրող ազգային միասնութիւնն էր, որ մեզ տարաւ դէպի յաղթանակ: Ներկայ էր Հայաստանի առաջին նախագահ Տէր-Պետրոսեանը: Անուրանալի է սպարապետ Վազգէն Սարգսեանի, մեր պանծալի հրամանատարների, գեներալների, պաշտպանութեան բոլոր նախարարների աւանդը: Արցախեան ազատամարտում իրենց կեանքը տուեցին հերոսացած հազարաւոր հայ տղաներ ու աղջիկներ՝ երկրապահներ, ՀՀՇ-ականներ, հանրապետականներ, դաշնակցականներ, կոմունիստներ, անկուսակցականներ: Ժողովուրդը մէկ էր, եւ այս յաղթանակն էլ աներկբայօրէն կը դարբնուի, եթէ ժողովուրդը մէկ դառնայ՝ մէկ կամք եւ մէկ բռունցք: Եկէք մէկ րոպէ լռութեամբ յարգենք վառ յիշատակը միասնական ժառանգութիւնը հետնորդներին փոխանցած մեր մեծերի՝ սպարապետների, զօրավարների եւ բազմահազար շարքային հայորդիների, ովքեր անվարան մեծ յաղթանակի զոհասեղանին դրեցին իրենց կեանքը՝ յանուն հայրենիքի, հաւատի եւ ազատութեան:

Այդ տօնը նաեւ գործող վարչապետ Սերժ Սարգսեանինն է, ով նոյնպէս արժանի աւանդ է ունեցել Արցախի ազատագրական պայքարի մէջ, իսկ այսօր կանգնած է իր կեանքի ամենավճռորոշ ջրբաժանի առջեւ: Նա խօսում է արդարամտութիւնից, հրապարակաւ ներողութիւն է հայցում 17 տարիների ընթացքում կատարուած սխալների համար: Դա մեծ արժանիք է, իհարկէ, բայց հարկ չկայ յայտարարել, թէ միայն ուժեղն ունակ է ներողութիւն խնդրելու: Այստեղ ներողութեան ուժը սոսկ նախընտրական խոստման մէջ չէ, այլ արարքի, մարդու օրինակելի վարքագծում, թէ ինչպէս է նա կեանքի կոչելու իրապէս բարձր մարդկային այդ արժէքը՝ ներողամտութիւնը: Ով-ով, բայց նա հրաշալի գիտէ, որ հազարաւոր հայաստանցիներ իրաւազրկուել են սեփական երկրում, բազմաթիւ քաղաքացիներ եւ գործիչներ հետապնդւում են իրենց համոզմունքների համար: Ընտրութիւնները խեղաթիւրւում են, ժողովրդից խլւում է ազատ կամարտայայտութեան բնատուր իրաւունքը:

Այսօր նա պէտք է հարց տայ իրեն՝ արդեօք սա՞ է այն յաղթանակը, որին ինքն արժանի է, արդեօք սա՞ է այն քուէարկութիւնը, որով ընտրուելու է օրինաւոր երկրի օրինաւոր նախագահը եւ հնարաւո՞ր է արդեօք ժողովրդի վստահութեան քուէն ստանալ լցոնումների, բռնութիւնների եւ փաստագրուած այլեւայլ իրաւախախտումների միջոցով: Ուրեմն՝ ինչպէս ես իրենից ներողութիւն խնդրեցի, երբ խորհրդարանում վիրաւորեցի իր զգացմունքները, այնպէս էլ ինքը թող անձնական օրինակով ու վարքով ներողութիւն խնդրի եւ միանայ ընտրական գործընթացին ու արդիւնքների վերանայման այս շարժմանը: Նա պէտք է յաղթահարի իր խորհրդատուների, գուշակների եւ այլ «պայծառատեսների» թելադրանքը, վերանայ նրանց մեծարումի թմբիրից եւ, ի վերջոյ, վերադառնայ հայաստանեան ու արցախեան արժանայիշատակ գործերի ակունքներին: Սա, թերեւս, նրա կեանքի մեծագոյն փորձութիւնն է:

Ինչ վերաբերում է մեզ, ապա մենք բոլորս, սիրելի հայրենակիցներ, այսօր յաղթած ենք. Հայաստանում թափ է առնում քաղաքացիական կամքի, քաղաքական յանձնառութեան, տիրոջ իրաւուքի գիտակցման շարժումը: Դուք ապացուցեցիք, որ այո՛, տէր էք մեր ընտրութեանը, տէր էք մեր յաղթանակին, տէր էք մեր երկրին:

Մեզ միացնում է անցեալի ժառանգութիւնն իր նուաճումներով ու սխալներով հանդերձ վերաիմաստաւորելու եւ նորովի հունաւորելու հրամայականը, մեր ազգային ապա-

գան առաջընթացի ճշմարիտ մայրուղի դուրս բերելու անհրաժեշտութիւնը: Ապագային միտուած այդ մեծ վերադարձի գլխաւոր պատգամախօսը դարձաւ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Հաւաստիացնում ենք, որ Ժառանգութիւնը, ինչպէս ի սկզբանէ, այնպէս էլ մինչեւ յաղթանակ եւ անգամ նոր իշխանութեան ձեւաւորումից յետոյ կանգնելու է ոչ թէ հարթակում, այլ տարրալուծուելու է ժողովրդի մէջ՝ առաջին շարքից մինչեւ վերջինը: Մենք միասին կազմելու ենք այն հաւաքական խիղճը, համակշիռը, ուղեգիծը, ողնահարը, որոնցով ժողովուրդն այլեւս երբեք թոյլ չի տալու, որ մեզանում որեւէ ընտրութիւն կեղծուի, որ Հանրապետութեան քաղաքացու իրաւունքը որեւէ կերպ խախտուի սեփական տանը: Այնպէս կ'անենք, որ ոչ մէկը՝ երկրի ներսում, թէ դրսում, յետայսու չյանդգնի հարուածել կամ կասկածի ենթարկել Հայաստանի պետական ինքնիշխանութիւնը, ազգային շահը, քաղաքացու ազատութիւնն ու արժանապատուութիւնը:

Որովհետեւ առանձին վանկարկուած անուններից, կարգախօսներից, կուսակցութիւններից, կոչումներից վեհ ու վսեմ կայ տիեզերական մի սէր, Աստուածատուր մի հաւատամք, ժառանգական մի առաքելութիւն, հրաշակերտ մի արժէք՝ մեր Հայրենիքը, որը պատկանում է բոլորիս, եւ որի անունն է՝ այսօր եւ առյաւէտ, Հայաստան:

Հա-յաս-տա՛ն, Հա-յաս-տա՛ն, Հա-յաս-տա՛ն:

22 փետրուարի 2008թ.

## ԵՐԹ

*Lragir.am*, 16:57

Ազատութեան Հրապարակում հանրահաւաքի աւարտից յետոյ կազմակերպիչները կոչ արեցին ուսանողութեանը երթի, իսկ միւսներին՝ մնալ հրապարակում: Երթը Աբովեան եւ Թումանեան փողոցներով շարժւում է դէպի Գլխաւոր Դատախազութիւն: Երթի վերջին շարքերում գնում են Ոգու Փորձութիւն կազմակերպութեան անդամ երկրապահները: Այս պահին երթը հասել է կառավարութեան շէնքի մօտ, որի դիմաց կանգնած են մօտ 100 ոստիկաններ: Երթը խիստ բազմամարդ է, կառավարութեան շէնքի պատուհաններից նայում են աշխատակիցները: Երթի մասնակիցները վանկարկում են Լեւոն, նախագահ եւ Սերժ հեռացիր:

## ԵՐԹ ԴԷՊԻ ԴԱՏԱԽԱԶՈՒԹԻՒՆ

*A1+*, 16:58

Հէնց նոր սկսուեց երթ: Ազատութեան Հրապարակում հանրահաւաքի մասնակիցներից մի խումբ անջատուեց եւ երթով շարժւում է դէպի Գլխաւոր Դատախազութիւն՝ պահանջելու պատժել ընտրակեղծարարներին:

Ինչպէս *Ա1+*-ի թղթակիցն է հաղորդում, այս պահին արդէն մի քանի տասնեակ ոստիկանների՝ մահակներով զինուած դատախազութեան շէնքի մօտ սպասում են երթի մասնակիցներին:

## ՉԵՆՔ ՄՈՌԱՆԱՅ ՄԵՐ ՀՈԳՈՒ ՏԱՃԱՐՆԵՐՆ ԷԼ ՄԱՔՐԵԼ

*Lragir.am*, 17:09

Հայաստանի Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետ-

եանը հանրահաւաքում յայտարարել է, որ մեր ժողովրդի համար բոլոր ճակատագրական պահերին կաթողիկոսները կանգնել են ժողովրդի կողքին: 1999թ. հոկտեմբերի 27-ին ընտրուած կաթողիկոսը պէտք է լինէր այստեղ, ժողովէր իր հօտին, մինչդեռ նրա հօտը մականունաւորներն են, ասել է Միքայէլ Հայրապետեանը: Հիմա հասկանալի է, թէ ինչու են մարդիկ երես թեքում Հայ Առաքելական եկեղեցուց եւ դառնում աղանդաւոր: Աւգեան ախոռները մաքրելիս մենք չենք մոռանայ մաքրել մեր հոգու տաճարը հոկտեմբերի 27-երից, ասել է Միքայէլ Հայրապետեանը:

## ՉԵՆ ՆԵՐԿԱՅԱՑԵԼ, ՈՐ ՎԵՐԱՀԱՇՈՒԱՐԿԵՆ

*A1+*, 17:16

Մի շարք ընտրատեղամասերում շարունակւում է վերահաշուարկ:

1/3-րդ եւ 1/12-րդ ընտրատեղամասերում վերահաշուարկն աւարտուել է, իսկ 1/14-ում այն իրականացման փուլում է:

1/3-ում վերահաշուարկի արդիւնքներով, ըստ թիւ 1 ընտրատարածքի նախագահ Գեղամ Հայրապետեանի, Արթուր Բաղդասարեանի 2 անվաւեր թերթիկները դարձել են վաւեր, մէկ ձայն աւելացել է Վահան Յովհաննիսեանին՝ դառնալով 52: Մէկ ձայն աւելացել է Արմէն Մելիքեանին: Սերժ Սարգսեանի ձայները մնացել է նոյնը 458: Լեւոն Տէր-Պետրոսեանի ձայներից երեք ձայն համարուել է անվաւեր:

1/12-ում անվաւեր 31 քուէաթերթիկի թիւը վերահաշուարկից յետոյ դարձել է 37: Վերահաշուարկի արդիւնքում Արթուր Բաղդասարեանի օգտին աւելացել է մէկ ձայն՝ 181, երեք ձայն աւելացել է Սերժ Սարգսեանին՝ 540, երկու ձայն Լեւոն Տէր-Պետրոսեանին՝ 527:

Չնայած այսօր պէտք է վերահաշուարկ իրականացուէր նաեւ թիւ 5 ընտրատարածքում, սակայն այն տեղի չի ունեցել: Յանձնաժողովում Արթուր Բաղդասարեանի վստահուած անձ Մեդորա Չախմախչեանի հաւաստմամբ, պատճառն այն է, որ տարբեր պատճառաբանութիւններով չեն ներկայացել իշխանական թեւի 5 ներկայացուցիչները. «Մէկը հիւանդ է, միւսը մեռնելու վրայ է, ինչ կարող եմ ասել, քվորում չապահովելու համար չի բացուել, քանի որ երեք հոգով չունէինք իրաւունք»:

Իսկ երէկ բացել են 5/4 տեսամասը: «Մեծաթիւ էր անվաւերները: Ամէն դէպքում երեւում էր, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի ձայներից էր անվաւեր դարձուած, ինչի մասին չեմ կարող յստակ ասել: 114 անվաւեր, իսկ մնացած քուէաթերթիկները եղել են տեղում, միայն երկու ձայն աւելացաւ նրա ձայների վրայ», - փաստեց տիկին Չախմախչեանը:

## ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԻ ԵԼՈՅԹԸ ԱՆՀԵՏԵՒԱՆՔ ՉՄՆԱՑ

*Lragir.am*, 17:22

ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը տարածել է հաղորդագրութիւն, «Դատախազութեան մասին ՀՀ օրէնքն արգելում է դատախազներին զբաղուել քաղաքականութեամբ: Օրէնքի 7-րդ յօդուածն ուղղակի սահմանում է. «Դատախազը չի կարող լինել որեւէ կուսակցութեան անդամ կամ այլ կերպ զբաղուել քաղաքական գործունէութեամբ: Դատախազը ցանկացած հանգամանքներում պարտաւոր է դրսեւորել քաղաքական զսպուածութիւն եւ չէզոքութիւն»: Գագիկ Ջհանգիրեանը կոպտօրէն խախտել է օրէնքի պահանջը եւ ՀՀ Գլխաւոր Դատախազը միջնորդել է Հանրապետութեան նախա-

գահին ազատել նրան զբաղեցրած պաշտօնից եւ հեռացնել դատախազութեան համակարգից»:

## ԲԵՐՄԱՆ ԵՆԹԱՐԿՈՒԱԾ ՈՒՍԱՆՈՂՆԵՐԻՆ ԲԱՑ ԹՈՂԵՑԻՆ

*A1+*, 17:24

ԵՊՀ մի շարք ուսանողներ դժգոհում են ու բացատրութիւն պահանջում առաւօտեան տեղի ունեցած դէպքերի համար:

*Ա1+*-ին ուսանողները պատմեցին, որ առաւօտեան համալսարանի մօտ տեղի ունեցած քաշքշուկը իրականում այլ կերպ է տեղի ունեցել:

11-անց կէսի կողմերում մօտ 200 ուսանողներ տարբեր բուհերից, բայց հիմնականում՝ ԵՊՀ եւ Տնտեսագիտական Համալսարանի, անցել են ԵՊՀ հիմնական մասնաշէնքի մօտով ու ընդդիմութեանը միանալու, դասադուլի կոչեր արել, ապա խաղաղ երթով շարժուել են առաջ:

«Քանի որ մեծ դասամիջոցն էր, մենք էլ ողջ ֆակուլտէտով դուրս էինք եկել, ու ոստիկանութեանը 2 մեքենաներ կանգնեցին եւ 10-12 ոստիկաններ սկսեցին մեզ հրմշտել դէպի մասնաշէնք», - *Ա1+*-ին պատմեց ֆիզիկայի ֆակուլտէտի ուսանող Դանիէլ Իոնէսեանը: Յետոյ նշեց, որ երկար ժամանակ փորձում էին ոստիկանների բացատրել, թէ իրենք ինչու են դրսում եւ ուսանողութիւնը յետ չէր գնում՝ չհասկանալով, թէ ինչու են իրենց ստիպում ներս գնալ:

«Ասում էին, կապ չունի ու բրդում էին, յետոյ սկսեցին ուժ գործադրել, ոտքերով, ձեռքերով խփել, ցենզուրայից դուրս բառեր օգտագործել», - պատմեց ուսանողներից Արամը, նշելով, որ ահագին մարդկանց արդէն հարուածել ու վիրաւորել էին, երբ թողեցին հեռացան:

Ապա վրդովուած ուսանողութիւնը որոշել է բողոքարկել ոստիկանների գործողութիւնների օրինականութիւնը ու իւրաքանչիւրը դիմել իրենց դեկանատ:

«Մեզ դեկանի տեղակալ Վոլոդիա Վարդանեանը սպառիչ պատասխան տուեց, թէ եթէ խփում են փախէք, ապա դիմեցինք ուսխորհրդի նախագահին», - պատմեց Դանիէլը՝ նշելով, թէ ուսխորհրդի նախագահն էլ ասել է, որ գնան իրենց իրաւունքները պաշտպանեն, ինքն ինչ գործ ունի:

Շատերը համալսարանի ուսանողների շրջանում դժգոհութիւն են բարձրանում տարբեր առիթներով:

«Ռեկտորի ուժեղ հրահանգը, թէ բացակայողներին կը հեռացնեն համալսարանից նեարդայնացնում է, անընդհատ մտնում են լսարաններ, ստուգում», - ասում է ուսանողներից Անին, ապա նշում, որ հակառակ ազդեցութիւն է ունենում: Վարդանն էլ ասում է, որ հիմա իր ընկերներից շատերը միացել են Ազատութեան Հրապարակի նստացոյցին, «որովհետեւ արդէն համը հանում է ղեկավարութիւնը»:

Նշենք, որ առաւօտեան երթին մասնակից ուսանողներից ձերբակալել էին բժշկական համալսարանի երկու ուսանողի, քիչ առաջ արդէն բաց թողեցին:

Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Զարուհի Փոստանջեանը *Ա1+*-ին յայտնեց, որ իրեն տեղեկացրել էին ուսանողներին բերման ենթարկելու եւ շատերին էլ ծեծելու մասին եւ ինքը գնացել էր ոստիկանութեան բաժանմունք հանգամանքները պարզելու: Ապա ասաց, որ ուսանողները բժշկական համալսարանի ռազմաբժշկական

ֆակուլտէտից են եղել, իրար ծանօթ էլ չէին, մէկի անունը Սօս է եղել, միւսը՝ գիմրեցի տղան, խնդրել է ոչ մի տեղ իր անունը չյիշատակել:

«Նրանց պարզապէս բերման էին ենթարկել, բանաւոր խօսել եւ ասացին, որ 5 րոպէից բաց կը թողնեն, բայց այդ 5 րոպէն տեւեց 3 ժամ», - ասաց Զարուհի Փոստանջեանը, ապա նշեց, որ հիմա ամէն ինչ կարգի է այս երկու տղաների հետ, իսկ միւս ծեծուած ուսանողների մասին դեռ ճշտում է:

## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆԵՑԻՆ *Ա1+*-ԻՆ

*Ա1+*, 17:43

Այսօր Ազատութեան Հրապարակում հանրահաւաքի ժամանակ ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանը յայտարարել է, որ յատուկ շնորհակալութիւն է ուզում յայտնել *Ա1+*-ից 24-ժամեայ օպերատիւ աշխատանքի համար:

«*Ա1+*-ի ինտերնէտային կայքը այսօր աւելի շատ լսարան ունի, քան բոլոր հեռուստաընկերութիւնները միասին վերցրած», - ասել է նա՝ աւելացնելով, որ հազարաւոր մարդիկ պատկերացում են կազմում, թէ ինչ է տեղի ունենում երկրում հէնց այս կայքից:

## Կ'ԱԶԱՏԵ՞Ն ՊԱՇՏՕՆԻՑ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԻՆ

*Ա1+*, 17:48

«Դատախազութեան մասին» ՀՀ օրէնքն արգելում է դատախազներին զբաղուել քաղաքականութեամբ: Օրէնքի 7-րդ յօդուածն ուղղակի սահմանում է. «Դատախազը չի կարող լինել որեւէ կուսակցութեան անդամ կամ այլ կերպ զբաղուել քաղաքական գործունէութեամբ: Դատախազը ցանկացած հանգամանքներում պարտաւոր է դրսեւորել քաղաքական զսպուածութիւն եւ չէզոքութիւն»:

Գագիկ Ջհանգիրեանը կոպտօրէն խախտել է օրէնքի պահանջը եւ ՀՀ Գլխաւոր Դատախազը միջնորդել է Հանրապետութեան նախագահին ազատել նրան զբաղեցրած պաշտօնից եւ հեռացնել դատախազութեան համակարգից:

Հաղորդում է ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղար Սօնա Տռուզեանը:

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԿԵՂԾՈՒԱԾ ԵՆ

*Ա1+*, 18:11

Ազատութեան Հրապարակում «Լեւոն, Լեւոն» վանկարկող մարդիկ վստահեցնում էին, որ հաւաքուել են այնտեղ արդարութիւն վերականգնելու համար, քանի որ, նրանց խօսքերով, իրենց խաբել են:

«Մենք ցանկանում ենք, որ մեր տուած ձայները իրենց նպատակին ծառայեն կամ անցկացուեն նոր ընտրութիւններ, քանի որ սա կեղծուած է», - ասաց հանրահաւաքի մասնակից Հրաչեայ Մովսիսեանը: Իսկ Նարինէ Առաքելեանն էլ կարծում է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանն է մեր նախագահը, քանի որ նրա օգտին ոչ մի աւել քուէ չի գրուել, աւելին՝ դրանք իջեցուել են: «Եթէ արդար ընտրութիւններ լինէին, մենք այսօր այստեղ չէինք հաւաքուի», - վրդովուած պատմում է նա:

«Մեր ժողովուրդը կանգնած է պատմական ամենակարեւոր քայլի առջեւ եւ եթէ այսօր թոյլ տանք նման ընտրութեան արդիւնք, մենք մեղաւոր ենք լինելու մեր յետագայ սերնդի ապագայի համար», - ասում է Աշոտ Պետրոսեանը:

«Մեր երկրի նախագահը Լեւոն Տէր-Պետրոսեանն է», - այսպիսի կարծիք էին յայտնում բոլոր հարցուածները՝ նշելով, որ այնքան ժամանակ են մնալու հրապարակում մինչեւ արդարութիւնը յաղթի:

Ազատութեան Հրապարակում ուսանողները թէեւ նշում էին, որ իրենց մօտ շատ խիստ է դրուած բացակաների հարցը, այնուամենայնիւ, նրանք մասնակցելու են թէ դասադուլներին, թէ հանրահաւաքներին:

Մենուա Բրուտեանն ասում է, որ հանրահաւաքին կամ դասադուլին մասնակցելը դա միայն ուսանողի իրաւունքն է եւ որեւիցէ մէկը չի կարող արգելել դա: «Մենք ուզում ենք ցոյց տալ, որ ուսանողութիւնը համախմբուած է եւ մենք ենք լուծելու մեր խնդիրները եւ որեւէ մէկը չի կարող մեր կամքին բռնանալ», - ասաց նա:

ԵՊՀ ուսանող Լեւոն Բաբաջանեանը ասում է, որ պահանջում է, որ անվաւեր ճանաչեն ընտրութիւնները եւ նոր ընտրութիւններ անցկացնեն, քանի որ դրանք ուղեկցուել են կեղծիքներով եւ խախտումներով:

Իսկ Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը նշեց, որ Սեւանի որոշ գիւղերի ճանապարհներ չեն մաքրում, քանի որ վախենում են մարդկանց Երեւան գալուց: Հաւաքուածները նշում էին, որ այսօր համեմատաբար աւելի լաւ է աշխատել տրանսպորտը, թէեւ էլի ստիպուած են եղել սպասել:

Ի դէպ, քիչ առաջ մենք ահազանգ ստացանք, որ Հիւսիսային Աւտօկայանի մօտ կանգնեցնում են մարզերից եկող մեքենաները, եւ մարդկանց թոյլ չեն տալիս Երեւան մտնել:

## ԵԿՄ ԳՐԱՍԵՆԵԱԿԸ ԲԱԶՄԱՄԱՐԴ Է

*A1+*, 18:21

ԵԿՄ վարչութեան գրասենեակում են հաւաքուել ԵԿՄ բոլոր ստորաբաժանումների անդամները: Մի քանի շարքով խմբուած են երկրապահների աւտոմեքենաները, իսկ շէնքի առջեւ խմբուած էին համազգեստներով եւ քաղաքացիական հագուստով ԵԿՄ անդամները:

Բոլոր հեռուստաալիքներով երէկուանից հերքւում է, որ Պաշտպանութեան փոխնախարար, գեներալ-լեյտենանտ Մանուէլ Գրիգորեանը միացել է ժողովրդական շարժմանը:

Մեր հարցին՝ արդեօ՞ք միացել է շարժմանը, ԵԿՄ պատասխանատուներից մէկը *Ա1+*-ին ասաց. «Այո, Մանուէլ Գրիգորեանն ու ԵԿՄ-ն միշտ իր ժողովրդի հետ է»:

Երբ փորձեցինք պարզել, թէ հնարաւո՞ր է, որ ոստիկանութիւնը կամ բանակը դուրս գայ ժողովրդի դէմ, երկրապահները զարմացած հայեացքով ասացին՝ «մեր բանակը, մեր ոստիկանութիւնը մեր ժողովրդի դէ՞մ»:

Ի դէպ, ԵԿՄ շէնքում էր նաեւ պատգամաւոր, էջմիածնեցի գեներալ Սէյրան Սարոյեանը. նա հրաժարուեց մեզ որեւէ բան ասել:

Նկատենք, որ կառավարութեան եւ ՀՀԿ-ի շէնքերի արանքում հաւաքուած էին մի քանի գումարտակ ոստիկաններ:

## ԵԼԻՍԷԵԱՆ ՊԱԼԱՏԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԱ՞ՆՔ Է ՏԱՐԱԾԵԼ

ԼՈՒՍԻՆԷ ՊԵՏՐՈՍԵԱՆ

*A1+*, 18:31

ՀՀ նախագահի փետրուարի 19-ի ընտրութիւններում տարած յաղթանակի առթիւ Ֆրանսիայի նախագահի կողմից ՀՀ վարչապետին ուղարկուած շնորհաւորական ուղերձը կասկածայարոյց էր թէ ստացման օպերատիւութեան, թէ յատկապէս պրոտոկոլայինից տարբերուող տեքստի առումով:

Պարզւում է՝ Ելիսէեան Պալատի պաշտօնական կայքէջում www.elysee.fr ՀՀ ուղարկուած որեւէ ուղերձ՝ Ֆրանսիայի նախագահի անունից՝ շնորհաւորական կամ ոչ շնորհաւորական, Սերժ Սարգսեանին ուղղուած կամ որեւէ այլ անձի՝ գոյութիւն չունի: Գոյութիւն չունի բացարձակապէս ոչ միայն տեքստ, այլեւ անգամ լուր, թէ Ֆրանսիայի նախագահը շնորհաւորել է ՀՀ վարչապետին:

Եթէ ՌԴ նախագահի շնորհաւորանքի դէպքում չկար շնորհաւորանքի տեքստ բայց կար գոնէ լուր, ապա Ֆրանսիայի նախագահի դէպքում չկայ նոյնիսկ լուր, թէ Սերժ Սարգսեանին շնորհաւորանք է ուղարկուել: Ընդ որում պրն. Սարկոզիի կողմից օրուայ ընթացքում կատարուող բոլոր այցերի, հանդիպումների, քննարկումների, ուղերձների մասին լուրերը կայքէջում տեղադրւում են՝ օրը մի քանի անգամ թարմացուող թողարկումներով:

Ասենք, անցած տասնօրեակում նամակներ կամ ուղերձներ են ուղարկուել Բրազիլիայի նախագահին, Աֆղանստանի նախագահին, Կոսովոյի նախագահին, Պոլինէզեան կղզիներ, Արեւելեան Թիմոր եւ բոլորը՝ թէ լուրի տեսքով, թէ ուղերձների ամբողջական տեքստերով զետեղուած են կայքում:

Ինչպէս ասում են՝ մեկնաբանութիւններն աւելորդ են: Կարո՞ղ է Ֆրանսիայի նախագահի կողմից ՀՀ վարչապետին ուղարկուած լինել շնորհաւորական ուղերձ, այն էլ նախագահ ընտրուելու կապակցութեամբ, եւ դրա մասին չտրուի անգամ լուր: Իհարկէ, չի կարող:

ՀՀ կառավարութեան լրատուական ծառայութիւնում հաւատացրին, իբր իրենք «պատշաճ դիւանագիտական խողովակներով են ստացել»: Ուղերձը անմիջականօրէն ստացել են ՀՀ կառավարութիւնում՝ ֆաքսով, եւ պատկերացրէք՝ Սարկոզիի ստորագրութեամբ:

Ֆրանսիայի նախագահի պաշտօնական ձեւաթղթի տարբերանշանները թողած՝ զինանշան եւ այլն, նկատել են Սարկոզիի ստորագրութիւնը: Երեւի՝ նոյնիսկ «ճանաչել են» ստորագրութիւնը:

Աւելի լուրջ էր իհարկէ, թէ ինչ կ'ասեն Ֆրանսիայի դեսպանատանը: Երկու օրուայ ընթացքում մի քանի անգամ ունեցած հեռախօսազրոյցների սկզբում միանգամայն զարմացած էին, մանաւանդ երբ համոզուեցին, որ Ֆրանսիայի նախագահի կայքէջում շնորհաւորանքի մասին նոյնիսկ լուր չկայ, իսկ վերջում ամենաճիշտ լուծումը համարեցին, որ զանգահարուի Ելիսէեան պալատ՝ մամլոյ ծառայութիւն:

Իսկ Հայաստանում Ֆրանսիայի դեսպանատնից ողջ այս պատմութեան կապակցութեամբ պաշտօնապէս ասւում է միայն մէկ նախադասութիւն. «Դեսպանատունը հաստատում է ուղերձի փաստը, սակայն չի ցանկանում տալ մեկնաբանութիւն փոխանցման աղբիւրի առնչութեամբ»:

Այլ կերպ ասած՝ դեսպանատունը ոչ ուղերձի վաւերականութիւնն է հաստատում, ոչ բովանդակութեան իսկութիւնը, ոչ էլ դրա փոխանցման հետ որեւէ առնչութիւն: Ընդամէնը հաստատում է փաստը: Դա էլ չհաստատել, կը նշանակէր լռելեայն ասել, թէ ՀՀ կառավարութեան առնուազն լրատուական ծառայութիւնը ստում է:

## ԵՕԹ ՊԱՏԳԱՄԱՒՈՐ ՄԻԱՑԱՆ

*Lragir.am*, 18:38

Այս պահին Ազատութեան Հրապարակում շարունակուող հանրահաւաքին յայտնի դարձաւ, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախաձեռնած շարժմանն են միացել Ազգային Ժողովի 7 պատգամաւոր՝ Հանրապետական խմբակցութեան անդամ Մանուէլ Ղազարեանը, Հրանտ Գրիգորեանը, Սէյրան Սարոյեանը, Արմէն Մխիթարեանը, Բարգաւաճ Հայաստանի խմբակցութեան անդամ Կարօ Կարապետեանը եւ Տիգրան Ստեփանեանը, եւ Ռոստոմ Գասպարեանը:

## ԵՐԹԸ ԿԱՅԱՑԱՒ (video)

*A1+*, 19:07

Ազատութեան Հրապարակից բազմահազարանոց երթը, որն հիմնականում բաղկացած էր ուսանողներից ու երիտասարդներից, «Լեւոն, Լեւոն», «Սերժիկ հեռացիր» կոչերով Հանրապետութեան Հրապարակով հասաւ ՀՀ դատախազութեան շէնք: Նշենք, որ այսօր տարբեր բուհերի բազմաթիւ ուսանողներ ու առանձին ֆակուլտէտներ դասադուլ էին յայտարարել ու միացել Ազատութեան Հրապարակում գիշերած հազարաւոր ցուցարարների, որոնք սատարում են Լեւոն Տէր-Պետրոսեանին:

Դատախազութեան շէնքի մօտ արդէն նրանց էին սպասում ոստիկանութեան աշխատակիցները, որոնք խիտ շարքերով շրջափակել էին շէնքը: Երթը գլխաւորում էր Նիկոլ Փաշինեանը, որը երթի մասնակիցներին ի սկզբանէ կոչ արեց ոստիկանութեան հետ ոչ մի շփում չունենալ եւ ոչ մի թշնամական արտայայտութիւն թոյլ չտալ նրանց հասցէին, քանի որ. «Նրանք բոլորը մեր սերնդակիցներն են, մեր եղբայրները ու նրանք մեզ հետ միասին են», - յայտարարեց Նիկոլ Փաշինեանը:

Քիչ անց բազմութիւնից մէկը ինչ-որ բան փորձեց նետել ոստիկանութեան ուղղութեամբ, որն արժանացաւ երթի կազմակերպիչների դժգոհութեանը: «Ո՞վ էր դա: Իմացէք, հիմա մեր մէջ պրովոկատոր է: Մեր շարքերից հանէք», - կոչ արեց Նիկոլ Փաշինեանը:

Նա նշեց, որ այսօրուայ երթի նպատակն է իրենց բողոքն արտայայտել այսօր առաւօտեան դասադուլ յայտարարած մի խումբ ուսանողների ոստիկանութեան բաժիններ բերման ենթարկելու փաստը: «Մենք պահանջում ենք ազատ արձակել մեր ընկերներին», - կոչ արեց Փաշինեանը, որի խօսքերը խլացան «Ազատութիւն» վանկարկումների տակ: Երթի մասնակիցները պահանջում էին նաեւ քրէական գործեր յարուցել ու պատժել բոլոր ընտրակեղծարարներին:

Այնուհետեւ՝ դիմելով ոստիկանութեանը՝ Փաշինեանը նշեց, որ շատ կարեւոր բան ունի ասելու. «Սիրելի ոստիկաններ, քիչ առաջ Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած շարժմանը միացաւ այս շէնքում աշխատող մի շատ կարեւոր մարդ՝ ՀՀ Գլխաւոր Դատախազի տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը»: «Գագիկ, Գագիկ», - սկսեցին բղաւել երթի մասնակիցները եւ ոտքերով միահամուռ, համախմբուած դոփել:

Երթը դատախազութեան շէնքի մօտից Շահումեան Հրապարակով, ՀՀ Կենտրոնական բանկի մօտով, ՀՀ Կառավարութեան շէնքի մօտով ետ վերադարձաւ Ազատութեան Հրապարակ:

Կառավարութեան շէնքի մօտ եւս կանգնած էին ոստիկանութեան խիտ շարքեր: Այն փողոցները, որոտեղով անցնում էին երթի մասնակիցները, մարդիկ իրենց տան լուսամուտներից, պատշգամբներից ոչ միայն հետեւում էին նրանց, այլեւ միանում ընդհանուր կոչերին ու ձեռքերով թափահարում:

## ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ ԵՆ

*A1+*, 19:11

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի առիթով ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է Մարոկկոյի թագաւոր Մուհամէդ VI-ը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Մեծ հաճոյքով յղում եմ Ձեզ ջերմագին շնորհաւորանքներս Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ: Մաղթում եմ Ձեզ յաջողութիւն Ձեր այս վեհ առաքելութիւնն իրագործելու եւ հայ ժողովրդի յետագայ առաջընթացին ու բարգաւաճմանն ուղղուած Ձեր ջանքերում:

Օգտուելով առիթից՝ կը ցանկանայի գոհունակութիւն յայտնել մեր երկկողմ յարաբերութիւնների զարգացման կապակցութեամբ: Ակնկալում եմ գործակցել Ձերդ գերազանցութեան հետ՝ յետագայում եւս զարգացնելու բարեկամական կապերն ու համագործակցութիւնը մեր երկու երկրների միջեւ եւ նոր ազդակ հաղորդելու մեր յարաբերութիւններին բոլոր ոլորտներում՝ ի շահ մեր ժողովուրդների»:

* * *

Յունաստանի Հանրապետութեան նախագահ Կարոլոս Պոպուլիասը շնորհաւորական ուղերձ է յղել ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին, որում, մասնաւորապէս, ասուած է.

«Թոյլ տուէք շնորհաւորել Ձեզ Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ եւ յաջողութիւն մաղթել Ձեր պատասխանատու աշխատանքում եւ առաջիկայ մարտահրաւէրներին դիմակայելու գործում:

Համոզուած եմ, որ մեր երկու երկրների միջեւ աւանդաբար ձեւաւորուած բարեկամական կապերը յետագայ զարգացում կ՚ապրեն՝ ի շահ մեր ժողովուրդների»:

## ՎԱՀԱՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԸ ԿԱՅԱՑՐԵԼ Է ՀՐԱԺԱՐԱԿԱՆԻ ՈՐՈՇՈՒՄ

*Lragir.am*, 19:35

ՀՀ նախագահի թեկնածու Վահան Յովհաննիսեանի յայտարարութիւնը

Սիրելի հայրենակիցներ

Ես դիմում եմ Ձեզ անձամբ իմ անունից՝ որպէս ՀՀ նախագահի թեկնածու: Այս ամբողջ ընթացքում ես պայքարեցի բացառապէս քաղաքական մեթոդներով՝ յենուելով գաղափարական եւ բարոյական արժէքների վրայ: Ես ջանք չխնայեցի մրցակցութիւնը կառուցողական քաղաքական բանավէճի շրջանակներում պահելու, մեր քաղաքացիներին «յանուն», այլ ոչ թէ «ընդդէմ» կողմնորոշելու համար: Ես փորձեցի մեր քաղաքացիներին համոզել, որ յաղթանակը հնարաւոր է: Դա ինձ չյաջողուեց: Նախընտրական

պայքարի ողջ ընթացքում տիրեց ատելութեան ու անհանդուրժողականութեան, ահաբեկման ու սպառնալիքների մթնոլորտ: Դա չէր կարող իր դրօշմը չթողնել բուն ընտրութեան օրուայ վրայ: Տարաբնոյթ ընտրական խախտումները, ընտրակաշառքի համատարած բաժանումը, որոշ տեղամասերում կոպիտ բռնութիւնը, լցոնումները էլ աւելի խորացրին հասարակութեան մէջ ընտրութիւնից ընտրութիւն արմատաւորուող կասկածամտութիւնը եւ անվստահութիւնը:

Նորից սահմանափակուեց ժողովրդի քաղաքական կամքի ազատ արտայայտման իրաւունքը, ոտնահարուեց եւ վիրաւորուեց մեր քաղաքացիների արժանապատուութիւնը:

ՀՅԴ Գերագոյն մարմինը մանրամասն ուսումնասիրում է բոլոր մարզերից, ընտրատեղամասերից ստացուող զեկոյցները, որոնց հիման վրայ կը տայ իր գնահատականները եւ հանդէս կը գայ համապատասխան յայտարարութեամբ: Սակայն, անկախ այդ գնահատականից, ես կայացրել եմ իմ անձնական որոշումը: Ես հրաժարւում եմ ՀՀ ԱԺ փոխնախագահի պաշտօնից:

Հայրենակիցներ, իմ առաջադրումով եւ ընտրապայքարով ես փորձում էի Ձեզ ցոյց տալ ելքը ընտրութիւնից ընտրութիւն կրկնուող այս վիճակից: Դա ինձ չյաջողուեց: Բայց եթէ շատերն այս անգամ չտեսան ելքը, դա չի նշանակում, թէ այն գոյութիւն չունի: Ի վերջոյ, ինձ հաւատաց ու վստահեց առնուազն 100.000 մարդ, եւ դա ինձ հիմք է տալիս հպարտութեամբ հաստատելու, որ Հայաստանում ես ունեմ մտածող, հայրենասէր, հաւատարիմ, մաքուր եւ անկաշառ կողմնակիցների մի այնպիսի բանակ, որի հետ եւ յանուն որի հնարաւոր է պայքարել՝ նրանց արժանի Հայրենիք կառուցելու համար:

Շնորհակալութիւն բոլոր նրանց, ովքեր հաւատացին ինձ եւ տեսան իմ մատնանշած ելքը:

Շնորհակալութիւն նաեւ նրանց, ովքեր քուէարկեցին ազնուօրէն, իրենց կամքով՝ չազդուելով կուրացնող ատելութիւնից, վախից կամ ագահութիւնից: Եւ, իհարկէ, շնորհակալ եմ իմ դաշնակցական ընկերներին եւ կուսակցութեան համակիրներին, իմ բոլոր թիմակիցներին, որոնց նուիրումը, եռանդը եւ հաւատը ոգեւորում էին ինձ եւ տանում առաջ:

Ես Ձեզ հանդարտութեան եւ զսպուածութեան կոչ եմ անում: Նրանք, ովքեր այսօր փորձում են գնալ ընդվզումի ճանապարհով, պէտք է յիշեն եւ հասկանան, թէ ինչ յանցանք գործեցին եւ ինչ արհաւիրք բերեցին մեր ժողովրդի գլխին՝ կոպտօրէն կեղծելով 1996թ. նախագահական ընտրութիւնները, սանձազերծելով ընտրախախտումների ինքնակատարելագործուող մի մեքենայ, որը կանգնեցնել մինչ օրս չի յաջողւում: Բայց յաւերժ այսպէս չի լինելու:

Եւ ես կոչ եմ անում բոլորիդ սառնասիրտ վստահութեամբ պատրաստուել մեր յաղթանակին:

Իմ բոլոր մրցակիցներին ես ցանկանում եմ յաջողութիւն, իսկ Հայաստանի ապագայ Նախագահին նաեւ իմաստութիւն եւ վճռականութիւն՝ առաջիկայ տարիներին այնպիսի բարեփոխումներ կատարելու, որ յաջորդ ընտրութիւններում իշխանութիւնը պարտաւորուած չլինի ապաւինել փողին, իշխանական ռեսուրսին, նրա հետ յաճախ սերտաճած կիսաքրէական տարրերին, այլ հնարաւորութիւն ստանայ յենուել քաղաքական ուժերի եւ ժողովրդի վստահութեան վրայ: Իսկ Ձեզ՝ սիրելի հայրենակիցներ, ես կոչ եմ անում չվհատուել եւ չհիասթափուել: Ես Ձեզ հետ եմ եւ ուժեղ: Մեր պայքարը երկարատեւ պայքար է:
22.02.2008թ.

## ԻՇԽԱՆԱԿԱՆ ԱՆԱՏՈՄԻԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Ա. ԱՒԹԱՆԴԻԼԵԱՆ**

*Lragir.am*, 19:45

Ընտրութիւնները կարծես յետեւում են մնացել, սակայն չթուլացող քաղաքական լարուածութիւնը ստիպում է կարծել, թէ ամէն ինչ դեռ առջեւում է: Եւ հնարաւոր է, որ դա այդքան էլ հեռու չէ իրականութիւնից: «ԱՄԷՆ ԻՆՉ ԽԱՌՆՈՒԵԼ Է ՕԲԼՈՄՈՎՆԵՐԻ ՏԱՆԸ» Իրավիճակը, յիրաւի, պարադոքսալ է:

Իշխանական հիմնական կուսակցութիւնը, ՀՀԿ-ն բացարձակ մեծամասնութիւն է կազմում խորհրդարանում, տիրապետում է վարչական գրեթէ բոլոր հնարաւոր լծակներին, վայելում է նախագահական նստավայրի հրապարակաւ աջակցութիւնը, ունի գործնականում անսահմանափակ ֆինանսական եւ տեղեկատուական ռեսուրսներ, ի վերջոյ, առաջադրել է նախագահի սեփական թեկնածու, որին, գոնէ ըստ ԶԼՄ-ներով շրջանառուող սոցհարցումների՝ նախընտրում է ՀՀ ընտրողների զգալի հատուածը: Իսկ միւս կողմից տեսանք նրա նեարդային եւ անհաւասարակշիռ յայտարարութիւնները, քաղաքական անվստահ վարքագիծը, քարոզչութեան անհասկանալի ռազմավարութիւնը, անհամարժէք արձագանքները մրցակիցների գործողութիւններին, որոնք, ի վերջոյ, պսակուեցին նոյնքան անհամոզիչ «յաղթանակով»...

Մենք ականատես ենք քաղաքական ֆենոմէնի, որն աննախադէպ է Հայաստանի նորօրեայ պատմութեան մէջ, եւ որի բացատրութիւնն անկարող է տալ Երրորդ հանրապետութեան ընտրական փորձը: Ի՞նչ է սա. հանգամանքների անկանխատեսելի համընկնո՞ւմ, համակարգային ճգնաժամի ախտանի՞շ, թէ՞ նախապէս մշակուած քայլերի արդիւնք: Պատասխանը թերեւս կարելի է գտնել յետխորհրդային տարածքում ազգային իշխանութիւնների փոփոխմանն ուղղուած մեխանիզմների եւ ՀՀ ԱԺ նախորդ ընտրութիւնների վերլուծութեան շրջագծում:

«ՆԱՐՆՋԻ ՈՒ ՎԱՐԴԻ ԱՐԱՆՔՈՒՄ» աւտորիտար քաղաքական համակարգ, համապետական կեղծուած ընտրութիւններ, միջազգային հանրութեան կոշտ գնահատական, խաղաղ դիմադրութիւն երիտասարդական նախաձեռնութիւններ, փողոցային բազմահազարանոց ցոյցեր, իշխանութիւնների անարիւն փոփոխութիւն՝ ահա տեխնոլոգիաների այն ոչ լրիւ զինանոցը, որի «զոհն» են դարձել յետխորհրդային նուազագոյնը չորս անձնիշխանութիւն: Հասցէական գործողութիւնների միջոցով հասարակական համատարած ճնշման ձեւաւորումը դարձաւ միջկառավարական կազմակերպութիւնների անփոփոխ այցեքարտը: Ի՞նչն է հետաքրքիր. «ընտրական յեղափոխութիւնների» դադարը աւտորիտար ռեժիմների կողմից դիտուեց ոչ թէ որպէս մեթոդաբանական փոփոխութիւն, այլ՝ նախանշուած նպատակների ձախողում: Հաշուի չառնուեց նաեւ, որ կախուած ազգայինմշակութային առանձնայատկութիւններից, ժողովրդավարական գործընթացները կարող են ստանալ ոչ միայն հասարակական շարժման տեսք, այլեւ հանդէս գալ որպէս քաղաքական վերնախաւի ներքին, մեկուսի նախաձեռնութիւն:

ՊԱՐՏՈՒԱԾ ՅԱՂԹԱՆԱԿ ՀՀԿ-ին ներկայում պարուրած ճգնաժամը նիւթականացաւ 2007թ. մայիսի 13-ին, երբ պարզ դարձաւ, որ ընտրութիւնների արդիւնքում ձեւաւորուած ՀՀԿ խմբակցութիւնը տիրապետում է ԱԺ 131 մանդատներից 65-ին եւ ԲՀԿ-ի մէկ պատգամաւորի ներգրաւմամբ ունակ է կազմել կառավարութիւն: Գրեթէ ոչ ոք չանդրադարձաւ նման շռնդալից յաջողութեան խորքային յարուցիչներին, առաւել եւս չվերլուծուեցին

գրանցուած ցուցանիշների եւ կուսակցութեան ղեկավար Ս. Սարգսեանի 30%-անոց ակնկալիքների միջեւ համարեայ կրկնակի տարբերութեան պատճառները: Մինչդեռ մեծամասնական պատգամաւորական մանդատների նկատմամբ հանրապետականների «թուլութիւնը» հմտօրէն օգտագործուեց 2003թ. ստորագրուած Կոալիցիոն համաձայնագրի վերջնական ապասարումն իրականացնելու համար: Այլ կերպ՝ դրանով խախտուեց ներքաղաքական դաշտի կայունութեան առանցքը՝ իշխանական էլիտային ձեռնտու ձեւաչափով քաղաքական ռեսուրսների բաշխուածութեան սկզբունքը:

Կատարուեց Հայաստանի պատմութեան մէջ նախադէպը չունեցող իրադարձութիւն՝ իշխանութեան ներկայացուցիչները մօտ 10 օր բանակցեցին ԱԺ ընտրութիւններում երրորդ տեղը զբաղեցրած քաղաքական ուժի հետ կոալիցիայի կազմի մէջ նրան ներառելու համար, եւ անյաջողութիւն կրեցին (ՀՅԴ-ն հրաժարուեց պաշտպանել Սերժ Սարգսեանի թեկնածութիւնը գալիք նախագահական ընտրութիւններում եւ դարձաւ կառավարութեան, բայց ոչ կոալիցիայի անդամ): Ճակատագրի հեգնանքով երկու ճամբարների միջեւ անջրպետը ամբողջացրեց ՀՀ նախագահ Ռոբերտ Քոչարեանը, երբ արտայայտուեց (իմա՝ թելադրեց) ընտրութիւնները մէկ փուլով աւարտելու նպատայարմարութեան մասին՝ պատճառաբանելով, որ ընտրութիւնների երկրորդ փուլում իշխանական թեկնածուն ստիպուած է տարաբնոյթ պայմանաւորուածութիւններ ձեռք բերել տարբեր քաղաքական ուժերի հետ, որոնք կը դառնան անցանկալի կախուածութեան հիմք: Այս անզգոյշ յայտարարութեամբ նախագահը փաստացիօրէն քաղաքական ուժերին մերժեց տրամադրել «իրենց օրինական տեղը արեւի տակ»՝ դրանով իսկ առաջին պլան մղելով նրանց ինքնապահպանման բնազդը:

ԱՌԱՋ, ՀԱՅԱՍՏԱՆ... ՄԻԱՅՆԱԿ

Այս ամէնի արդիւնքում կարելի է յանգել հետեւութեան, որ նախընտրական, եւ արդէն իսկ յետընտրական վերադասաւորումների քարտէզը գծագրուել է ոչ թէ հայ քաղաքական ուժ(եր)ի քմահաճոյքով, այլ հանդիսանում է վերլուծական, կանխատեսական, ներազդելու առաւել մեծ պոտենցիալ ունեցող քաղաքական սուբիեկտների ծրագրի դրսեւորում: Այն կարելի է ձեւակերպել որպէս Հայաստանի քաղաքական դաշտի եւ իշխանական բուրգի բալանսի նպատակաուղղուած խախտում՝ ՀՀԿ-ի շուրջ քաղաքական վակվում ստեղծելու եւ այդ միջոցով յետընտրական շրջանում ցանկալի իշխանափոխութիւնն իրականացնելու վերջնական նպատակով: Առաւել ընդհանրական իմաստով այն, ինչ ներկայում կատարւում է Հայաստանում, կարելի է համարել եզակի քաղաքական էքսպերիմենտ, որի յաջող իրականացումը հնարաւորութիւն կը տայ մշակել անցումային (յատկապէս յետխորհրդային) երկրների քաղաքական վերնախաւերի փոփոխութեան այլընտրանքային, որակապէս տարբերուող տեխնոլոգիա: Ներկայում գծուած խրամատը չի ենթադրում երրորդ կողմի առկայութիւն, եւ խաղացողները ստիպուած են կատարել խիստ տհաճ ընտրութիւն՝ լինել իշխանութեան հետ, թէ ժամանակի:

## ԿԱՐՈՂ ԵՆ ՄԻԱՆԱԼ ՆԱԵՒ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆՆԵՐԸ

*Lragir.am*, 19:49

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած համաժողովրդական շարժմանը փետրուարի 22-ին, բացի Գլխաւոր Դատախազի արդէն նախկին

տեղակալ Գագիկ Ջհանգիրեանից, միացել է նաեւ հոկտեմբերի 27-ի գործը քննած Սամուէլ Յովհաննիսեանը: Լեւոն Տէր-Պետրոսեանը նաեւ յայտարարել է, որ ինքը ունի լուրջ հիմքեր ասելու, որ վաղը, միւս օրը համաժողովրդական շարժմանը կարող են միանալ նաեւ ոստիկանութեան բարձրաստիճան ներկայացուցիչներ: Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, այժմ առկայ են շփումներ նրանց հետ, կատարւում են լուրջ առաջարկներ, որոնք հիմք են տալիս ասելու, որ նրանք էլ կը կանգնեն ժողովրդի կողքին: Տէր-Պետրոսեանը նաեւ յայտարարել է, որ պետական հիմնարկների աշխատակիցների 99 տոկոսը, թէ ոստիկանութեան, թէ Ազգային Անվտանգութեան Ծառայութեան, թէ նախարարութիւնների, բացառութեամբ մէկ երկու բարձրաստիճան դէմքերի, միւսները կանգնած են ժողովրդի կողքին, ժողովրդի հետ են, ժողովրդի մասը:

## «ԿԱՐԻՔ ՉԿԱՅ ՇԱՀԱՐԿԵԼՈՒ»

*A1+*, 19:53

ՀՀ կառավարութեան տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի վարչութիւնից *Ա1+*-ին տեղեկացրին, որ Սերժ Սարգսեանին՝ ՀՀ նախագահի պաշտօնում ընտրուելու առթիւ Ֆրանսիայի նախագահ Նիկոլա Սարկոզիի շնորհաւորական ուղերձը ըստ պատշաճի փոխանցուել է Ֆրանսիայում ՀՀ-ի դեսպանատուն, որտեղից էլ ուղարկըւել է ՀՀ կառավարութիւն եւ ամենեւին կարիք չկայ այն շահարկելու:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԱՌԱՋԻՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

*Lragir.am*: 19:56

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը փետրուարի 22-ին տեղի ունեցած հանրահաւաքի ընթացքում յայտարարել է, որ օրուայ կարեւորագոյն ձեռքբերումն այն է, որ համաժողովրդական շարժմանը միացել են հազարաւոր ուսանողներ, որոնք, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, առաջիկայում կը տասնապատկուեն: Հէնց նրանց էլ Լեւոն Տէր-Պետրոսեանն ուղղել է իր առաջին հրամանագիրը, որպէս Հայաստանի նախագահ: Նա յայտարարել է, որ վաղուանից Հայաստանի բոլոր ուսանողների համալսարանը Ազատութեան Հրապարակն է: Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, թէ դա կարող են համարել իր առաջին հրամանագիրը նախագահի պաշտօնում: «Ասեմ, որ դա լաւ էլ համալսարան է», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, ասելով, որ ինքը եւ իր տարիքի շատ գործիչներ անցել են հէնց այդ համալսարանը 1988-ին: Տէր-Պետրոսեանը նաեւ յայտարարել է, որ իր համար եւ իր ընկերների համար մեծ պատիւ է, որ իրենք են լինելու այդ համալսարանի դասախօսներն ու պրոֆեսորները:

## ՄԻԱՑԱՆ

*A1+*, 19:57

Ազատութեան Հրապարակում յայտարարուեց, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախաձեռնած շարժմանն են միացել Ազգային Ժողովի 7 պատգամաւոր՝ ՀՀԿ խմբակցութեան անդամներ Մանուէլ Ղազարեանը, Հրանտ Գրիգորեանը, Սէյրան Սարոյեանը, Արմէն Մխիթարեանը, Բարգաւաճ Հայաստան խմբակցութեան անդամներ Կարօ Կարապետեանը, Տիգրան Ստեփանեանը, նաեւ անկախ պատգամաւոր Ռուստամ Գասպարեանը:

Միացել է նաեւ գեներալ-գնդապետ Գուրգէն Դարիբալթայեանը:

## ՈՒՂԻՂ ԿԱՊ ԿԱԼԱՆԱՎԱՅՐԻ ՀԵՏ

*Lragir.am*, 19:59

Փետրուարի 22-ին տեղի ունեցած հանրահաւաքի ժամանակ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, թէ այդ պահին ինքը հեռախօսով խօսում է «իրենց ընկեր», թալինցի ազատամարտիկ, ներկայում Նուբարաշէնի քրէակատարողական հիմնարկում ազատազրկուած Մկրտիչ Սափէյեանի հետ: Լեւոն Տէր-Պետրոսեանը հեռախօսով մօտեցել է խօսափողին եւ յայտարարել, որ Սափէյեանը ողջունում է հանրահաւաքը եւ ասում, որ ինքը համաժողովրդական շարժման կողքին է: Լեւոն Տէր-Պետրոսեանն էլ հանրահաւաքի անունից է ողջունել Մկրտիչ Սափէյեանին եւ ասել. «Մկրտիչ, ես հանրահաւաքի անունից ողջունում եմ քեզ, եւ ասում, որ քեզ անազատութեան մէջ մնալուն մնացել է մի քանի օր»:

## ԿԱՍԿԱԾԵԼԻ ԻՐ ՄԵՏՐՕՈՒՄ

*A1+*, 20:01

Երեւանի մետրօպոլիտենի թիւ 6 երթուղու No 0110-0111 ուղեւորներով բեռնուած գնացքը, համաձայն երթեւեկութեան գործող գրաֆիկի, ժամը 6:52-ին դուրս է եկել Գարեգին Նժդեհ կայարանից եւ, 3 շրջադարձ կատարելուց յետոյ, 9:25 մուտք է գործել էլեկտրահաւաքակայան՝ տեխզննում-2 անցկացնելու համար:

Տեխնիկական զննման արդիւնքում, համապատասխան աշխատակցի կողմից No 0110 վագոնի վերջնամասի ձախ անկիւնի նստատեղի տակ գտնուող արկղի մէջ յայտնաբերուել է սեւ գոյնի գլանաձեւ կասկածելի իր, ժամացոյցի մեխանիզմով: Մետրօպոլիտէնի ղեկավարութիւնը անմիջապէս դիմել է Ազգային Անվտանգութեան Ծառայութիւն, ում կողմից իրականացուած օպերատիւ միջոցառումների շնորհիւ, կասկածելի իրը վնասազերծուել է եւ ուղարկուել փորձաքննութեան՝ պարզելու, թէ դրանում առկա՞յ է պայթուցիկ նիւթ եւ այն գործի զցող սարքաւորում, թէ՝ ոչ: Հաղորդում է Մետրօպոլիտէնի վարչութիւնը:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՉԱՓԱԶԱՆՑ ԳՈՀ Է ԳՈՐԾԻ ԸՆԹԱՑՔԻՑ

*Lragir.am*, 20:15

Մենք չենք եկել իրար ոգեշնչելու եւ վճռականութեան կոչեր անելու, մենք հաւաքուել ենք գործ անելու: Այդպէս է սկսել իր փետրուարի 22-ի հանրահաւաքային ելոյթը Լեւոն Տէր-Պետրոսեանը: Հանրահաւաքը եղել է չափազանց մարդաշատ: Հետաքրքրական է, որ երբ դրա կէսից միայն ուսանողութեան եւ երիտասարդութեան մասնակցութեամբ երթ է տեղի ունեցել քաղաքում, երթի մի քանի տասնեակ հազար մասնակիցների պարագայում, Ազատութեան Հրապարակում մնացած մարդկանց բազմութիւնն ըստ էութեան չի էլ նուազել, հանրահաւաքը մնացել է մարդկանցով լեցուն:

Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարելով, որ համաժողովրդական շարժման մասնակիցների թիւն աւելանում է, յայտարարել է, որ ինքը չափազանց գոհ է այն գործի ընթացքից, որ կատարւում է: Նա ընդգծել է պաշտպանութեան փոխնախարար Մանուէլ Գրիգորեանի, Գլխաւոր Դատախազի արդէն նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանի իրենց միանալը, նշել փետրուարի 22-ին իրենց միանալու մասին Ազգային Ժողովի եօթ պատգամաւորների յայտարարութիւնը, որոնք միացել են իրենց: Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, որ այդպիսով, Ազգային Ժողովում համաժողովրդական շարժումն ունի մի հզօր

խմբակցութիւն, եթէ եօթ պատգամաւորին ենք գումարում նաեւ մինչ այդ եւս չորս պատգամաւորի միանալը, եւ նաեւ Ժառանգութիւն խմբակցութեան հանգամանքն ու պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանի դիրքորոշումը: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ այդպիսով, կարելի է փաստել, որ Ազատութեան Հրապարակը կազմում է պետութեան իշխանութեան մաս:

Լեւոն Տէր-Պետրոսեանի գնահատմամբ, ներկայիս իրավիճակը ստուգատես է, զտման պրոցէս: «Սա այն է, որ մեր ընկերները, որոնց մենք չէինք ճանաչում, բացայայտում են իրենց իրական դէմքը: Սա վեհացման եւ ստորացման ժամանակաշրջան է», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Լեւոն Տէր-Պետրոսեանի կողքին, դժուար է պատկերացնել մի քաղաքացի, որն ունի արժանապատուութիւն եւ չի կանգնում համաժողովրդական շարժման կողքին: Եթէ այդ մարդը չի կանգնում շարժման կողքին, ուրեմն դա, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, ազգի տականքն է: Նա ցաւ է յայտնել, որ տականքը շատ է, սակայն նշել է, որ ազատ քաղաքացիների, համաժողովրդական շարժման մասնակիցների աւելանալու հետ մէկտեղ այդ տականքը նուազելու է եւ քչանալով, մտնելու է իր բները: Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, վաղը այդ մարդկանց հարեւաններն իրենց բարեւ չեն տալու, կանայք թքելու են իրենց ամուսինների երեսին, երեխաները ամաչելու են իրենց հայրերի արածի համար: Սա ոգեղէնութիւն է, որ նիւթականացուելու է երկրում ժողովրդի իշխանութեան հաստատումով, համաժողովրդական շարժումը գնահատել է առաջին նախագահը, ասելով, որ Ազատութեան Հրապարակը Հայաստանի սիրտն է, եւ ժողովուրդը տիրապետում է այդ սրտին:

## ՈՒՍԱՆՈՂՆԵՐՆ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ ԵՆ

**ԼԵՆԱ ՆԱԶԱՐԵԱՆ**

*Հետք*

**Մենուա Բրուտեան**
*28 տարեկան*

«Ոչ մի օրէնքով՝ ո՛չ գողական, ո՛չ մարդկային, ո՛չ ժողովրդավարական օրէնքներով չի կարելի մարդուց խլել իր ընտրելու ձայնը: Դա չի վաճառւում: Խաբում են, առնում են փողով: Նենց սոցիալական վիճակ են ստեղծում, որ մարդիկ էդ կոպէկներին են նայել»: «Մենք պահանջում ենք վերականգնել մեր ազատ ընտրութիւն կատարելու իրաւունքը»: «Ես Լեւոնի նկատմամբ յատուկ համակրանք ունեմ: Ես տեսնում եմ, որ այսօր միայն նա կարող է համախմբել մարդկանց»:

«Մենք պէտք է հասնենք նրան, որ այս ընտրութիւնները չեղեալ յայտարարուեն: Մենք դա անելու ենք խաղաղ երթերի, նստացոյցերի միջոցով, ինչպէս ասել է մեր ընտրած նախագահը»:

**Լեւոն Բաբաջանեան**
*17 տարեկան*

«1988-ին մեր հայրերը պայքարել են արտաքին թշնամու դէմ, հիմա մեր թշնամին ներսում է, դա աւելի վատ է»:

«Մեզ վիրաւորում է, որ ինչ-որ օլիգարխների հպատակներ գալիս ծեծում են

վստահուած մարդկանց, տանում Սեւան: Այդ օրը ես ինքս տեսել եմ, որ կեղծումներ են եղել, մարդկանց ծեծել են, Արաբկիրի թաղապետը մեր շտաբի պետին ծեծեց իմ աչքի դիմաց: Ի՞նչ իրաւունքով»:

«Եթէ չհաւատայինք, այստեղ չէինք գայ: Այսօր բերետաւորները մեզ փորձեցին ճամփից շեղել, բայց չստացուեց, մենք եկանք այստեղ, որովհետեւ էս պահին պիտի այստեղ լինենք»:

«Մեր ընկերները զանգում ասում են, որ համալսարանների դռները փակում ու չեն թողնում, որ գան այստեղ»:

«Ես Լեւոն Տէր-Պետրոսեանի ֆանատիկը չեմ ու չեմ ասում, որ ինքը միշտ ճիշտ է եղել, բայց հիմա ժամանակն է թելադրում, որ մենք այստեղ իր կողքին լինենք»:

«Եթէ Լեւոն Տէր-Պետրոսեանը գայ, իշխանափոխութիւն չի լինի, որովհետեւ Ազգային Ժողովում հանրապետականներն են, բայց ես վստահ եմ, որ կառավարման մեխանիզմները կը փոխուեն: Հանրապետականների մէջ էլ լաւ մարդիկ կան, եթէ կառավարման մեխանիզմները փոխուեն, կառավարման որակն էլ կը փոխուի»:

«Սերժին ընտրողներ էլ կային, բայց նա չի յաղթել»:

**Իշխան Գէորգեան**
*18 տարեկան*

«Ինձ դուր չի գալիս, որ ամէն ինչ մի քանի մարդկանց ձեռքում է, ու միւսների բարեկեցութիւնը նրանցից է կախուած»:

«Ինձ համար կարեւոր է այստեղ գալ: Ես զգում եմ, որ այստեղ պիտի լինեմ»:

«Ես քաղաքականութեամբ չեմ հետաքրքրւում, ես իմ ու իմ ընկերների ապագայի մասին եմ մտածում: Բոլոր ընկերներս էլ լաւ սովորում են, ուզում եմ, որ նորմալ ապագայ ունենան»:

**Հայկ Խալափեան**
*19 տարեկան*

«Ես չեմ պատկերացնում՝ ինչ ընթացք կ'ունենայ, որովհետեւ ես հաւատում էի, որ կեղծումներ չեն լինի, ու ամէն ինչ այլ ընթացք կ'ունենայ: Բայց հիմա վստահ եմ, որ կեղծումներ են եղել»:

«Ուզում եմ փոխուի, այստեղ հեռանկար չկայ, ամէն ինչ մի քանի հոգի է որոշում»: «Ես պահանջում եմ երկրորդ փուլ եւ հեռուստաբանավէճ: Ես ուզում եմ, որ հեռուստաալիքները ցոյց տան՝ ինչ է կատարւում այստեղ, որ գիւղերի մարդիկ էլ իմանան»:

«Ցանկացած մէկին փողոցում բռնեն հարցնեն, կ'ասեն՝ ինչ կեղծիքներ են տեսել, եթէ այդ դիտորդները դա չեն տեսնում, այդ դէպքում ես չեմ հասկանում՝ նրանք ինչի՞ համար են եկել Հայաստան»:

«Ինչո՞ւ հեռուստաընկերութիւնները չեն լուսաբանում այս ամէնը, որ արդէն երեք օր է տեղի է ունենում, ինչո՞ւ դիտորդները չեն տեսնում այս ամէնը»:

«Իմ կարծիքով՝ Սերժ Սարգսեանը չի ընտրուել: Ես չեմ կարող ասել, որ Լեւոն Տէր-Պետրոսեանն է ընտրուել: Այդ պատճառով էլ պահանջում եմ երկրորդ փուլ»:

**Կարէն Յակոբեան**
*18 տարեկան*

«Ես կարծում եմ, որ կեղծիքներ են եղել: Ես ուզում եմ չեղեալ յայտարարուեն ընտրութիւնները: Իշխանութիւնները պէտք է հաշուի նստեն մեզ հետ»:

«Ես գոհ եմ մարդկանց արձագանքից:

Եթէ Սերժ Սարգսեանի միտինգներին բերում ու ներկայ-բացակայ էին անում, այստեղ մենք մեր կամքով ենք գալիս»:

## ՋՀԱՆԳԻՐԵԱՆՆ ԻՆՔՆ ՀՐԱԺԱՐՈՒԵՑ

*A1+*, 20:17

Մինչ ՀՀ Գլխաւոր Դատախազը միջնորդել է երկրի նախագահին պաշտօնանկ անել իր տեղակալ Գագիկ Ջհանգիրեանին, վերջինս ինքն է Ազատութեան Հրապարակում յայտարարել իր հրաժարականի մասին:

«Եթէ ես ելոյթ ունենայի վարչապետ Սերժ Սարգսեանի հանրահաւաքում, եթէ ես մասնակցէի նրա ընտրարշաւին, իմ պաշտօնական դիրքը չարաշահէի ի օգուտ նրա՝ ես կը մնայի իմ պաշտօնին եւ գուցէ աւելի բարձր պաշտօնի էլ արժանանայի: Բայց քանի որ ես ելոյթ եմ ունեցել Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքում՝ ես ազատուել եմ աշխատանքից», - նշել է նա՝ աւելացնելով, որ «այդ վշտին մի քանի օր կը դիմանայ»:

## ՋՀԱՆԳԻՐԵԱՆԸ ԽՈՍՏԱՆՈՒՄ Է ԴԻՄԱՆԱԼ ՎՇՏԻՆ

*Lragir.am*, 20:19

Գլխաւոր Դատախազի արդէն նախկին տեղակալ, նախկին զինդատախազ Գագիկ Ջհանգիրեանը փետրուարի 22-ին Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքում սատարման ելոյթով հանդէս գալուց յետոյ հեռացուել էր աշխատանքից: Գլխաւոր Դատախազը դիմել էր նախագահին, Ջհանգիրեանին հեռացնելու համար, նախագահն էլ բաւարարել է դիմումը: Գագիկ Ջհանգիրեանը հանրահաւաքում երկրորդ անգամ է հանդէս եկել ելոյթով եւ ասել, որ եթէ ինքը մասնակցէր Սերժ Սարգսեանի հանրահաւաքներին, եթէ իր պաշտօնական դիրքը չարաշահէր յանուն Սերժ Սարգսեանի, ապա իրեն ոչ միայն չէին ազատի զբաղեցրած պաշտօնից, այլ գուցէ նոյնիսկ պաշտօնի բարձրացում էլ լինէր: Իսկ երբ հանդէս է եկել Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքին, ապա ինձ անմիջապէս հեռացրին, յայտարարել է Գագիկ Ջհանգիրեանը, շարունակելով. «Բայց ոչինչ, ես այդ վշտին մի քանի օր կը դիմանամ»:

## ՆԱԽ ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻՆ

*A1+*, 21:13

Այսօր տեղի է ունեցել ՀՀ կառավարութեան նիստ, որը վարել է ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանը:

Մինչ օրակարգի հարցերին անցնելը, վարչապետը նախ շնորհակալութիւն է յայտնել կառավարութեան անդամներին եւ ի դէմս նրանց՝ ՀՀ բոլոր այն քաղաքացիներին, ովքեր օժանդակել են փետրուարի 19-ին հանրապետութիւնում անցկացնելու ԵԱՀԿ-ի եւ Եւրամիութեան առջեւ ստանձնած պարտաւորութիւններին համապատասխան ընտրութիւններ:

Սերժ Սարգսեանի հաւաստմամբ, ներկայ պահին կարեւոր է, որպէսզի իրաւապահ մարմինները բծախնդրօրէն քննութեան առնեն բոլոր այն փաստերը, որոնք կան ընտրախախտումների հետ կապուած: Վարչապետը չափազանց կարեւոր է համարել նաեւ, որ կառավարութեան անդամներն անյապաղ ձեռնամուխ լինեն նախանշուած ծրագրերի իրականացմանը:

«Մենք յաւակնոտ ծրագրեր ունենք, եւ այդ ծրագրերը պէտք է բերեն նրան, որ իւրաքանչիւր ամիս մեր ժողովուրդն իրօք զգայ փոփոխութիւններ, պիտի բարեփոխումներն արագանան, սա կարեւորագոյն խնդիր է», - ընդգծել է վարչապետը:

## 100 ՔՈՒԷԱԹԵՐԹԻԿ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՕԳՏԻՆ, ԲԱՅՑ ԱՆՎԱՒԵՐՆԵՐԻ ՄԷՋ (video)

*A1+*, 22:06

Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ նրան սատարող քաղաքական ուժերի հանրահաւաքի անունից ՀՀ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովին այսօր նամակ է յղուել, որում ասւում է.

Նախագահական ընտրութիւնները ինչպէս ընտրարշաւի, այնպէս էլ քուէարկութեան փուլում անցան խայտառակ ընտրախախտումներով՝ գերազանցելով անգամ ամենավատատեսական սպասումները: Դրան մեծապէս նպաստեցին ԿԸՅ-ի գործողութիւնները, կամ յանցաւոր անգործութիւնը, որը չնայած մեր շուրջ երեք տասնեակ դիմումների՝ ոչ միայն հրաժարուեց կայացնել ընտրութիւնների օրինական անցկացմանը նպաստող կարեւոր որոշումներ, այլեւ մեծապէս նպաստեց ընտրախախտումների կատարմանը:

Միայն քուէարկութեան փուլում գրանցուել են վստահուած անձերի եւ դիտորդների իրաւունքների բազմաթիւ եւ համընդհանուր սահմանափակումներ. սպառնալիք՝ այդ թւում զէնքի ցուցադրմամբ, ահաբեկում, ծեծ, ընդհուպ մինչեւ վստահուած անձանց առեւանգում եւ ապօրինի տեւական ազատազրկում:

Տեղի են ունեցել քուէարկութեան կարգի համատարած խախտումներ՝ լցոնումներ, բազմակի քուէարկութիւններ, այլ անձանց անձնագրերով եւ բացակայ ընտրողների փոխարէն քուէարկումներ, ընտրափաստաթղթերի, քուէաթերթիկների եւ կնիքների յափշտակումներ: Յատկապէս մարզերում տեղի է ունեցել ուղղորդուող քուէարկութիւն եւ բաց քուէարկութեան հարկադրում՝ ինչպէս յանձնաժողովի անդամների, այնպէս էլ տեղամասային կենտրոններում գտնուելու իրաւունք չունեցող անձանց կողմից:

Ընտրատարածքային յանձնաժողովները տարբեր պատրուակներով խոչընդոտներ են ստեղծել վստահուած անձանց կազմած վերահաշուարկի դիմումները ընդունելիս՝ սկսած պարզ հրաժարուելուց մինչեւ սահմանուած ժամերին ընտրատարածքները փակ պահելով: Այդուամենայնիւ, մեր վստահուած անձերին յաջողուել է յանձնել 300-ից աւելի վերահաշուարկի դիմումներ: Դրանցից այսօրուայ դրութեամբ ստուգուել է միայն մէկը՝ 5/4 ընտրատեղամասում, որի հետեւանքով պարզուել է, որ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանին կողմ քուէարկած 100-ից աւելի քուէաթերթիկ դրուած է եղել անվաւեր քուէաթերթիկների վրայ: Այդ փաստը պարզուելուց յետոյ յետագայ ստուգումն անհիմն դադարեցուել է՝ խուսափելու համար նմանօրինակ այլ փաստերի բացայայտումից:

Ընտրական յանձնաժողովներն ակնյայտօրէն ձգում են ժամանակը՝ վերահաշուարկի համար ներկայացուած դիմումներին ընթացք չտալու համար: Ընդ որում՝ այս ընթացքում

ընտրական յանձնաժողովները հաճոյքով ստուգում են 1 տոկոսից պակաս ձայներ հաւաքած թեկնածուների վստահուած անձանց մատնանշած տեղամասերը:

Այսինքն՝ ողջ ընտրական գործընթացում տեղի ունեցող խայտառակ օրինախախտումները շարունակւում են առ այսօր: Եթէ ԿԸՅ-ը չձեռնարկի անյապաղ ու կտրուկ միջոցներ, ապա վերջնականապէս դառնում է աւազակապետութեան վերարտադրման հիմնական գործիքը եւ յետնասինը՝ հաւասարապէս կիսելու է ինչպէս յետագայ իրադարձութիւնների, այնպէս էլ օրէնքով սահմանուած ողջ պատասխանատուութիւնը:

## 1700 ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

*A1+*, 22:13

Այսօր հանրահաւաքի ընթացքում Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, որ ԵՊՀ մի շարք ուսանողներ ու դասախօսներ ստորագրահաւաք-ակցիա են անցկացնում: Նրանք կոչ են անում իրենց միանալ այն բոլոր ուսանողներին եւ դասախօսներին, ովքեր չեն ցանկանում, որ Սերժ Սարգսեանը լինի ԵՊՀ խորհրդի նախագահ: Հանրահաւաքի ողջ ընթացքում անընդհատ նորանոր ԵՊՀ ուսանողներ մօտենում էին ու ստորագրում:

Ինչպէս *Ա1+*-ին տեղեկացրին ստորագրահաւաքի նախաձեռնողները. «Արդէն մօտ 1700 հոգի ստորագրել է, որոնցից 100-ը դասախօսներ են»: Ի դէպ նրանք նշեցին,որ ուսանողները շատ ոգեւորուած են եւ հանրահաւաքի մասնակից ուսանողներից ոչ ոք չի հրաժարւում միանալ ստորագրահաւաք-ակցիային:

«Անպայման առանց մի պահ իսկ մտածելու ստորագրեցի, ես ուզում եմ, որ մեր գիտական խորհրդի նախագահը դոկտոր-պրոֆեսոր լինի, որ մենք էլ իրենից օրինակ վերցնենք», - ասաց ԵՊՀ ուսանող Նարինէն:

## «ՎԱՂԸ ԱՆԱԿՆԿԱԼ ԿԸ ՄԱՏՈՒՑԵՆ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ՈՍՏԻԿԱՆՆԵՐ» (video)

*A1+*, 22:23

Ազատութեան Հրապարակում ժամը 21-ի սահմաններում, առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի ելոյթից յետոյ տեղի ունեցաւ հրավառութիւն: Հարթակում Լեւոն Տէր-Պետրոսեանն էր՝ իր երեք թոռնիկների հետ, իսկ հրապարակում տօն էր ու ցնծութիւն: Նախկին զինդատախազ Գագիկ Ջհանգիրեանից յետոյ շարժմանն իր աջակցութիւնը բերեց յատուկ գործերով քննիչ Սամուէլ Յովհաննիսեանը: Նա հետաքննել է հոկտմբերի 27-ի գործը եւ այսօր յայտարարեց, որ գործը այն տեղում է կանգնած, որ եթէ շարունակուի քննութիւնը, կը բացայայտուի ճշմարտութիւնը:

Ժողովուրդը առաւօտից անհամբերութեամբ սպասում էր ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի ելոյթին: Նա խօսեց եւ յատուկ ուշադրութիւն հրաւիրեց այն փաստին, որ բոլոր այն մարդիկ, ովքեր պայքարել են մեր ազգային անկախութեան համար, պայքարել են Արցախի ազատագրման համար, մէկը միւսի ետեւից կանգնում են մեր կողքին: «Ես չեմ կարծում, որ Հայաստանում կը գտնուի արժանապատուութիւն ունեցող որեւէ մարդ, որը դէմ դուրս կը գայ ժողովրդին եւ չկանգնի մեր կողքին: Ցաւում եմ, որ տականքը շատ է, բայց վստահ եղէք, որ որքան հզօրանում է մեր շարժումը, որքան համախմբւում է մեր ժողովուրդը, այդ տականքը նուազում, գնում մտնում է իր բները. նրանց ձայնը վաղը չի լսուելու, նրանց հարեւանները վաղը նրանց բարեւ չեն

տալու, դրանց երեխաները ամաչելու են իրենց ծնողների համար», - ասաց նա: «Այո», - բացականչեց հրապարակը:

Տէր-Պետրոսեանը տեղեկացրեց, որ իշխանութիւնները սպասում են, որ ժողովուրդը յոգնի: «Նրանց չի յաջողուի յոգնեցնել մեր ժողովրդին, յոգնածը, ահաբեկուածը իրենք են», - ասաց Տէր-Պետրոսեանը: Նա նկատեց, որ խորհրդարանի բոլոր ազատամարտիկ պատգամաւորները, Արցախեան պատերազմի հերոսները կանգնած են իրենց կողքին: Նա նկատեց, որ հրապարակի ժողովուրդն արդէն ԱԺ-ում ունի խոշոր ֆրակցիա՝ 10 պատգամաւորով, եւ եւս 7 հոգի՝ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորները: «Այսինքն, այս հրապարակը պետութեան իշխանութեան մաս է կազմում, իսկ պետական մարմինների անձնակազմերը, այդ թւում ոստիկանութիւնը, ԱԱ-ն, նախարարութիւնների մեծ մասը, նրանց աշխատակազմերի 99 տոկոսն այսօր մեր կողքին են, եթէ կան նրանց մէջ աւազակապետութեան հիմնասիւներ, քրէական տարրեր, ապա դրանք այդ մարմինների ամենաբարձրաստիճան մի քանի հոգին են, ոչ աւելի, - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը, - Վաղը դուք ականատես կը լինէք ոստիկանութեան ամենաբարձր պաշտօններ զբաղեցնող մարդկանց դիրքորոշման արտայայտութեանը, մենք ունենք լուրջ առաջարկներ, հաւաստիացումներ նրանց կողմից, որ նրանք կանգնած են մեր կողքին: Եւ ես ուզում եմ, որ մեր հրապարակը փառք ու պատիւ տայ ոստիկանութեան այդ ազնիւ ներկայացուցիչներին»: Ամբողջ հրապարակը մէկ մարդու նման ողջունեց եւ ծափահարեց ոստիկանութեան ներկայացուցիչներին:

«Ժողովուրդ, ես ասում էի, չէ՞, որ էս գործը հանգիստ է սիրում», - մօտեցաւ բարձրախօսին ԱԺ պատգմաւոր, գործարար Խաչատուր Սուքիասեանը: «Մինչ դուք երգում, պարում էք, Ռոբիկն ու Սերժիկը ճամպրուկներն են հաւաքում, - պարբերաբար ասում էր Նիկոլ Փաշինեանը, - Եկել է Արամ Կարապետեանի ժամը, եկել է Փարաքարը փակելու ժամը»: Հրապարակի հանրութիւնը սկսեց վանկարկել «Արամ, Արամ»:

Արամ Կարապետեանը նորից կոչ արեց յաղթանակի, եւ հաւաստիացրեց, որ մեր ժողովուրդը կ՚ապացուցի, որ տղամարդիկ կան մեր երկրում: «Ասում են ԳՈՒՄ-ում ճամպրուկները թանկացել են: Ոչինչ, մի տխրէք, թող դրանք գնան, յետոյ նորից գները կ՚իջնեն», - ասաց Հրանտ Բագրատեանը:

Իսկ ելոյթների արանքում հնչում էր երգ եւ երաժշտութիւն, հաւաքուածները, երիտասարդներ ու աղջիկներ, տարեցներ ու երեխաներ պարում էին, հարթակում շուրջպար բռնեցին շարժման առաջնորդները: Բոլորը միմեանց շնորհաւորում էին յաղթանակի կապակցութեամբ: Իսկ վրաններն Ազատութեան Հրապարակում աւելանում են:

## 23 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

### ԳԻՇԵՐԸ ՕՊԵՐԱՅԻ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*A1+*, 03:37

Գիշերը՝ ժ. 3-ի դրութեամբ, շարունակւում էր նստացոյցը Օպերայի Հրապարակում: Ցուցարարները շարունակում էին երգն ու պարը: Ցուցարարների հետ էր նաեւ Լեւոն Տէր-Պետրոսեանը. նա նոյնպէս, ողջ գիշերը մնալու է Օպերայի Հրապարակում, ցուցարարների հետ:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ՍՏՈՐԱԳՐԵՑ

*Lragir.am*, 11:38

Նախագահի մամուլի գրասենեակը տեղեկացնում է, թէ Ռոբերտ Քոչարեանը փետրուարի 23-ին հրամանագիր է ստորագրել Գագիկ Ջհանգիրեանին Հայաստանի Հանրապետութեան Գլխաւոր Դատախազի տեղակալի պաշտօնից ազատելու մասին: Հանրապետութեան նախագահի նոյն օրուայ մէկ այլ հրամանագրով, Գագիկ Ջհանգիրեանը զրկուել է արդարադատութեան առաջին դասի պետական խորհրդականի դասային աստիճանից:

## ԼՐԱՑՈՒՑԻՉ ԿԱՄՔ ՀԱՆՐԱՅԻՆ ՎՍՏԱՀՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

*Lragir.am*, 11:45

Հայաստանում 2008թ. փետրուարի 19-ին տեղի ունեցած նախագահական ընտրութիւնների անցկացման կապակցութեամբ, Եւրոպական Միութիւնը հանդէս է եկել յայտարարութեամբ, որում, մասնաւորապէս, ասուած է.

«Եւրոպական Միութիւնը շնորհաւորում է հայ ժողովրդին Հայաստանում մրցակցային նախագահական ընտրութիւններ անցկացնելու կապակցութեամբ: ԵՄ-ն նշում է Ընտրութիւնների Միջազգային Դիտորդական առաքելութեան նախնական զեկոյցը, որը եզրակացրել է, որ նախագահական ընտրութիւնները Հայաստանում, իբրեւ ժողովրդավարութեան կարեւոր մի քննութիւն երկրում, անցկացուել են հիմնականում ԵԱՀԿ եւ Եւրախորհրդի առջեւ ստանձնած պարտաւորութիւններին եւ ստանդարտներին համապատասխան:

ԵՄ-ն ողջունում է այն անկեղծ ջանքերը, որոնք ձեռք էին առնուել նախորդ ընտրութիւնների թերութիւնները վերացնելու ուղղութեամբ: Սակայն, ԵՄ-ն նաեւ նշում է, որ եղել են տեղեկութիւններ, որոնք մտահոգութիւն են առաջացրել ընտրական գործընթացի վերաբերեալ եւ որ յետագայ բարելաւումներ են անհրաժեշտ, որպէսզի լուծուեն առկայ թերութիւնները: ԵՄ-ն, մասնաւորապէս, դիտարկում է, որ համաձայն ԺՀՄԻԳ-ի, անհրաժեշտ է բարելաւել եւ լրացուցիչ քաղաքական կամք դրսեւորել ընտրական գործընթացի վերաբերեալ հանրային վստահութեան, պետական եւ կուսակցական գործառոյթների միջեւ յստակ տարանջատման եւ թեկնածուների համար հաւասար պայմանների ստեղծման հետ կապուած մտահոգութիւնների առնչութեամբ: ԵՄ-ն սպասում է նախագահական ընտրութիւնների վերջնական արդիւնքներին եւ կոչ է անում պատկան մարմիններին՝ եղած բողոքները պատշաճ ստուգելու եւ թերութիւնները վերացնելու ուղղութեամբ ձեռնարկել քայլեր»:

## ԳԻՒԼՆԱԶ ՏԱՏԻ ՀԵՔԻԱԹԸ ԲՈՇԻ ԹԱՂԻ ԻՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ԲԱԳՐԱՏ ԽԵՐՈՅԵԱՆ

*Lragir.am*, 12:03

Գիւլնազ տատը բնակւում է Լոռու մարզի Վանաձոր քաղաքի այսպէս կոչուած Բոշի թաղում: Վանաձորցիների համար գաղտնիք չէ, իսկ անտեղեակների համար էլ դժուար չէ ենթադրել, որ Բոշի թաղը սոցիալական մակարդակով զգալիօրէն զիջում է, ասենք, մայրաքաղաքի Հիւսիսային Պողոտայի բնակիչների ապրելակերպին: Սակայն, կայ

նաեւ դէպքերը իւրովի մեկնաբանելու իրաւունք, անկախ այն հանգամանքից, թէ որտեղի բնակիչ է՝ Վանաձորի Բոշի թաղի՞, թէ մայրաքաղաքի Հիւսիսային Պողոտայի, կամ թէ ի՞նչ պաշտօն ունի մեկնաբանողը: Միւս կողմից ակնյայտ է, որ դէպքերի իւրովի մեկնաբանութիւնը հիմնականում պայմանաւորուած է լինում սեփական փորձով կամ թէ գրաւած պաշտօնով, այսինքն՝ սեփական մաշկով:

Հիմա, դէպքերի բուն մեկնաբանութեան մասին. Ռեգնում գործակալութեանը Հայաստանի Ոստիկանութեան մամուլի ծառայութեան տրամադրած յայտարարութեան համաձայն, «Արիւնահեղութիւնից խուսափելու նպատակով Հայաստանի Ճանապարհային ոստիկանութեան աշխատակիցների կողմից թոյլ չի տրուել Սերժ Սարգսեանի կողմնակիցների մուտքը մայրաքաղաք՝ Երեւան»: Նոյն դէպքը, իմ կարծիքով, այսպէս կը մեկնաբանէր Գիւլնազ տատը՝ «Փողերը չեն տուել, խաբել են, եւ դրա համար էլ երթի մասնակիցները չեն մտել Երեւան եւ, կամ թէ, երթի մասնակիցներն այնքան էլ անշահախնդիր կողմնակից չէին», քանի որ նախագահական ընրութիւնների ընթացքում Գիւլնազ տատին ու Բոշի թաղի իր աւելի քան 20 հարեւաններին Վանաձորի քաղաքային իշխանաւորների ազգականները խոստացել էին վարձահատոյց լինել շտաբում՝ 5 հազարական դրամի չափով իւրաքանչիւրին: Գիւլնազ տատն ու հարեւաններն իրենց վրայ դրուած պետական նշանակութեան յանձնարարութիւնը կատարել են բարեխղճօրէն, բայց, ցաւօք, յանձնարարութիւն տուողները դեռեւս վարձահատոյց չեն եղել, եւ Գիւլնազ տատի բողոքները քաղաքային իշխանութիւններին դեռեւս անարդիւնք են: Աւելին, քաղաքային իշխանութեան ներկայացուցիչները պարզ ու մատչելի բառերով հասկացրել են Գիւլնազ տատին ու Բոշի թաղի իր աւելի քան 20 հարեւաններին, որ հին հայկական «քցելու» աղաթը դեռ կենդանի է:

## ԱՄՆ ՊԵՏԴԵՊԸ ԿՈՉ Է ԱՆՈՒՄ ԱՊԱՀՈՎԵԼ ՎԵՐԱՀԱՇՈՒԱՐԿԻ ԹԱՓԱՆՑԻԿՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 12:10

Հայաստանում նախագահական ընտրութիւնների անցկացման կապակցութեամբ, ԱՄՆ պետքարտուղարութեան անունից պաշտօնական մամլոյ յայտարարութեամբ է հանդէս եկել փոխխօսնակ Թոմ Քեսին: Յայտարարութեան մէջ, մասնաւորապէս, ասուած է. «Շնորհաւորում ենք հայ ժողովրդին փետրուարի 19-ին կայացած ակտիւ ու մրցակցային ընտրութիւնների կապակցութեամբ եւ նշում ԵԱՀԿ ժողովրդավարական հաստատութիւնների ու Մարդու Իրաւունքների գրասենեակի եւ Խորհրդարանական Վեհաժողովի կողմից տրուած նախնական գնահատականը, համաձայն որի ընտրութիւնները հիմնականում համապատասխանել են ԵԱՀԿ-ի եւ Եւրախորհրդի կողմից ընդունած ժողովրդավարական ընտրութիւնների չափանիշներին: Միաժամանակ պէտք է նշել, որ միջազգային դիտորդներն արձանագրել են զգալի խնդիրներ՝ կապուած ընտրական գործընթացների հետ: Այնուամենայնիւ, ընտրական մարմինները դրական են արձագանքել վերահաշուարկ կատարելու պահանջներին: Կոչ ենք անում Հայաստանի կառավարութեանն ապահովել այս վերահաշուարկների թափանցիկութիւնը, ուսումնասիրել բոլոր ենթադրեալ անճշտութիւններն ու քայլեր ձեռնարկել՝ բարելաւելու յետագայ ընտրութիւնները: Նաեւ յորդորում ենք բոլոր քաղաքական ուժերին շարունակել պահպանել օրէնքի գերակայութիւնը եւ գործել խաղաղ ու պատասխանատուութեամբ՝ յանուն

ժողովրդավարական Հայաստանի»:

## ՈՍՏԻԿԱՆԱՊԵՏԸ ՀՐԱԺԱՐԱԿԱՆ ՉԻ ՏՈՒԵԼ

*A1+*, 12:48

ՀՀ ոստիկանութիւնը քիչ առաջ յայտարարութեամբ հերքեց այն լուրերը իբր ՀՀ ոստիկանութեան պետ Հայկ Յարութիւնեանը եւ ոստիկանութեան ղեկավարութիւնը հրաժարական են տուել. «Յայտարարում ենք, որ լուրերը ստայօդ են եւ իրականութեանը չեն համապատասխանում»:

«ՀՀ ոստիկանութեան ղեկավարութիւնը, բոլոր ստորաբաժանումները անվերապահօրէն իրականացնում են օրէնքով սահմանուած իրենց գործառոյթները եւ պատրաստ են ամենայն վճռականութեամբ հակահարուած տալ հասարակական կարգի ցանկացած խախտման եւ իրավիճակի ապակայունացման իւրաքանչիւր փորձի՝ կանխելով սանձարձակութեան դրսեւորումները եւ պաշտպանելով քաղաքացիների սահմանադրական իրաւունքները», - ասւում է յայտարարութեան մէջ:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԻՆ ԱԶԱՏԵՑ

*A1+*, 13:03

Ռոբերտ Քոչարեանը փետրուարի 23-ին հրամանագիր է ստորագրել Գագիկ Ջհանգիրեանին Հայաստանի Հանրապետութեան Գլխաւոր Դատախազի տեղակալի պաշտօնից ազատելու մասին: Յիշեցնենք, որ նման միջնորդութեամբ հանդէս էր եկել Գլխաւոր Դատախազը այն բանից յետոյ, երբ Գագիկ Ջհանգիրեանը երէկ ելոյթ էր ունեցել Լեւոն Տէր-Պետրոսեանի հրաւիրած հանրահաւաքում: Սակայն Գագիկ Ջհանգիրեանն Ազատութեան հրապարակում յայտարարեց, որ ինքն է հրաժարական տալիս:

Նոյն օրուայ մէկ այլ հրամանագրով, Գագիկ Ջհանգիրեանը զրկուել է արդարադատութեան առաջին դասի պետական խորհրդականի դասային աստիճանից:

## ԻՍԿ ՆՐԱՆՔ ՇՆՈՐՀԱՒՈՐՈՒՄ ԵՆ

*A1+*, 13:21

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի առիթով Սերժ Սարգսեանին իր շնորհաւորական ուղերձն է յղել Քըրք Քըրքորեանը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Յարգարժան նորընտիր նախագահ Սերժ Սարգսեան,

Ընդունէք իմ ջերմ շնորհաւորանքները Հայաստանի երրորդ նախագահ ընտրուելու կապակցութեամբ: Ես յոյսով եմ, որ կատարուող ներդրումները եւ ստեղծուած աշխատատեղերը Դուք կ’օգտագործէք Հայաստանի տնտեսութեան զարգացման ուղղութեամբ: Աստուած թող տայ ուժ եւ եռանդ՝ իրականացնելու Ձեր բոլոր նախագծերը հայ ազգի բարեկեցութեան համար: Յանկանում եմ Ձեզ քաջառողջութիւն եւ յաջողութիւն, ինչպէս նաեւ խաղաղութիւն եւ բարգաւաճում Հայաստանին: Ես ակնկալում եմ լսել Հայաստանում դրական զարգացումների մասին՝ ամիսներ եւ տարիներ շարունակաբար»:

* * *

ՀՀ նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ, Սերժ Սարգսեանին իր շնորհաւորանքն է յղել Հայաստան համահայկական հիմնադրամի նախագահ, Լինսի

հիմնադրամի աւագ փոխնախագահ Յարութ Սասունեանը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Յարգարժան նորընտիր նախագահ Սերժ Սարգսեան,

Ցանկանում եմ Ձեզ շնորհաւորել Հայաստանի երրորդ նախագահ ընտրուելու կապակցութեամբ: Երկար տարիներ զբաղեցրած լինելով բազմաթիւ ղեկավար պաշտօններ, Ձեզանից ակնկալւում են մեծ նուաճումներ Հայ ժողովրդի բարեկեցութեան համար: Ես յուսով եմ՝ Դուք կը վերականգնէք նաեւ Սփիւռքի հետ յարաբերութիւնների նախարարի պաշտօնն ու կը նպաստէք, վերջերս ընդունուած Սահմանադրութեանը համապատասխան, օրէնքների հաստատմանը բոլոր քաղաքացիների համար, որպէսզի աշխարհի բոլոր հայերը կարողանան նպաստել բարգաւաճ հայրենիքի ստեղծմանը: Հայաստանը եւ Սփիւռքը գործելով միասին, կարող են իրականացնել աւելին՝ քան գործելով առանձին: Դուք կարող էք յոյս դնել ամբողջ հայութեան աջակցութեան վրայ՝ Ձեր հայրենասիրական պարտականութիւնների իրականացման ողջ ընթացքում: Եւս մէկ անգամ շնորհաւորում եմ Ձեզ՝ Ձեր յաղթանակի կապակցութեամբ»:

## ՆՐԱՆՔ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ ԿՈՂՔԻՆ ԵՆ

*A1+*, 13:43

Քիչ առաջ ՀՀԿ մամուլի ծառայութիւնը տարածեց հետեւեալ յայտարարութիւնը՝ ԲՀԿ պատգամաւորներ Կարօ Կարապետեանի եւ Տիգրան Ստեփանեանի անունից: Երէկ Ազատութեան Հրապարակում ընդդիմութեան հրաւիրած հանրահաւաքում յայտարարուել է, որ Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան խորհրդարանական խմբակցութեան անդամներ Կարօ Կարապետեանը եւ Տիգրան Ստեփանեանը միացել են Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած շարժմանը:

«Մենք վրդովուած ենք մեր անուան անհարկի շահարկումից եւ հարկ ենք համարում հանդէս գալ որոշակի պարզաբանումներով: Մենք պաշտօնապէս յայտարարում ենք, որ հաւատարիմ ենք Բարգաւաճ Հայաստանի որդեգրած քաղաքականութեանը, մենք կանգնած ենք մեր կուսակցութեան նախագահի կողքին, եւ երբեք չենք դաւաճանելու մեր սկզբունքներին ու նպատակներին: Մենք ճամբարափոխ լինող մարդիկ չենք եւ զուր են մեզ տարբեր կարգի սադրանքների մէջ ներքաշելու փորձերը: Մենք ընդամէնն ասել ենք, որ դէմ ենք երկրում անկայունութեան հրահրմանը, որը յղի է անկանխատեսելի հետեւանքներով, ինչը հարթակում կանգնած ուժերը որոշել են օգտագործել որպէս իրենց յայտնած սատարում: Azնիւ չէ: Բարգաւաճ Հայաստան կուսակցութիւնը Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան հետ միասին սատարել է նախագահի միասնական թեկնածուի եւ մենք մեր սկզբունքները չենք փոխելու: Որպէս Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան անդամներ պաշտօնապէս յայտարարում ենք, որ մեր դիրքորոշումը յստակ է, եւ որեւէ մէկը իրաւունք չունի մեր անունից յայտարարութիւն անելու: Մենք որեւէ մէկին նման լիազօրութիւն չենք տուել: Բարգաւաճ Հայաստան կուսակցութիւնը ամուր եւ կայուն է, իսկ այն սասանելու փորձերը՝ դատապարտուած», - ասուած է ՀՀԿ տարածած հաղորդագրութեան մէջ:

Երէկ յայտարարուել էր, որ համաժողովրդական շարժմանը միացել են նաեւ ՀՀԿ խմբակցութեան 4 պատգամաւոր, որոնց «մտափոխուելու» մասին այս յայտարարութեան մէջ չի ասւում:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ՄԱՅՐԱՄՈՒՏԻՑ ԼՈՒՍԱԲԱՑ

*Lragir.am*, 13:45

Համաժողովրդական շարժման շտաբի եւ վրանային քաղաքի վերածած Ազատութեան Հրապարակը անցկացրել է երկրորդ աշխոյժ գիշերը: Հրապարակն առաջին գիշերուայ համեմատ եղել է աւելի մարդաշատ: Վրանների թիւն արդէն հասնում է մօտ չորս տասնեակի, ընդ որում ներկայացնելով Հայաստանի տարբեր բնակավայրերը, Երեւանի տարբեր համայնքները: Մարդիկ անգամ ընտանիքներով ու երեխաներով են եկել Ազատութեան Հրապարակում գիշերելու: Գիշերը քաղաքացիները հրապարակում շարունակում էին երգել ու պարել: Տեղ տեղ խարոյկներ էին վառուել, շարժման կազմակերպիչները քաղաքացիներին ապահովել էին վառելափայտով: Բաժանւում էր նաեւ տաք թէյ, սուրճ, սնունդ: Ժամը երեքից յետոյ հրապարակ եկաւ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Մինչ այդ հրապարակում էին նրանց սատարող քաղաքական ուժերի ներկայացուցիչները, պատգամաւորներ, երկրապահներ: Մեծ էր երիտասարդութեան թիւը: Ազատութեան Հրապարակում ընդհանրապէս տպաւորութիւնն այն է, որ այն բոլորովին այլ պետութեան տարածք է, ուր տիրում է բոլորովին այլ մթնոլորտ: Առաւօտեան հրապարակում երաժշտութիւնն ու բարձր տրամադրութիւնը պահպանւում էր, մարդկանց հոսքը կրկին սկսել էր աւելանալ:

## ԵՕԹԻՑ ՀԱՆԱԾ ԵՐԿՈՒՍ

*Lragir.am*, 13:51

Փետրուարի 23-ին, Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի մամուլի ծառայութիւնից յայտարարութիւն է տարածուել ԲՀԿ խորհրդարանի խմբակցութեան անդամներ Կարօ Կարապետեանի եւ Տիգրան Ստեփանեանի ստորագրութեամբ: Յայտարարութիւնը վերաբերում է նախօրէին Ազատութեան Հրապարակում այն յայտարարութեանը, որ ի թիւս խորհրդարանի եօթ պատգամաւորների, Կարօ Կարապետեանն ու Տիգրան Ստեփանեանն էլ յայտնել են Լեւոն Տէր-Պետրոսեանին սատարելու մասին:

«Նախօրէին Ազատութեան Հրապարակում ընդդիմութեան հրաւիրած հանրահաւաքում յայտարարուել է, որ Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան խորհրդարանական խմբակցութեան անդամներ Կարօ Կարապետեանը եւ Տիգրան Ստեփանեանը միացել են Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած շարժմանը: Մենք վրդովուած ենք մեր անուան անհարկի շահարկումից եւ հարկ ենք համարում հանդէս գալ որոշակի պարզաբանումներով: Մենք պաշտօնապէս յայտարարում ենք, որ հաւատարիմ ենք Բարգաւաճ Հայաստանի որդեգրած քաղաքականութեանը, մենք կանգնած ենք մեր կուսակցութեան նախագահի կողքին, եւ երբեք չենք դաւաճանելու մեր սկզբունքներին ու նպատակներին: Մենք ճամբարափոխ լինող մարդիկ չենք եւ զուր են մեզ տարբեր կարգի սադրանքների մէջ ներքաշելու փորձերը: Մենք ընդամէնն ասել ենք, որ դէմ ենք երկրում անկայունութեան հրահրմանը, որը յղի է անկանխատեսելի հետեւանքներով, ինչը հարթակում կանգնած ուժերը որոշել են օգտագործել որպէս իրենց յայտնած սատարում: Ազնիւ չէ: Բարգաւաճ Հայաստան կուսակցութիւնը Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան հետ միասին սատարել է նախագահի միասնական թեկնածուի եւ մենք մեր սկզբունքները չենք փոխելու:

Որպէս Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան անդամներ պաշտօնապէս յայտա-

բարում ենք, որ մեր դիրքորոշումը յստակ է, եւ որեւէ մէկը իրաւունք չունի մեր անունից յայտարարութիւն անելու: Մենք որեւէ մէկին նման լիազօրութիւն չենք տուել: Բարգաւաճ Հայաստան կուսակցութիւնը ամուր եւ կայուն է, իսկ այն սասանելու փորձերը՝ դատապարտուած», ասուած է Կարօ Կարապետեանի եւ Տիգրան Ստեփանեանի յայտարարութեան մէջ: Յիշեցնենք, որ ԲՀԿ խմբակցութեան անդամների այդ յայտարարութիւնը տարածել է Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի մամուլի ծառայութիւնը:

## ՀՐԱՊԱՐԱԿԸ ՉԻ ԴԱՏԱՐԿՒՈՒՄ (video)

*A1+*, 14:01

Ազատութեան Հրապարակում այսօր ժամը 15-ին հրաւիրուած է հերթական հանրահաւաքը: Սակայն կարելի է ասել, որ այն արդէն սկսուած է, քանի որ ժամանակ առ ժամանակ հարթակ են բարձրանում ընդդիմադիր գործիչները եւ ելոյթ ունենում: Ոստիկանութիւնն էլ անընդհատ յիշեցնում է, որ հանրահաւաքն արտօնուած չէ:

Արդէն մի քանի օր հրապարակում կանգնած, վրաններում գիշերած մարդկանց մի մասը ելոյթներն է լսում, միւս մասը զրուցում է, մի մասն էլ թերթ է կարդում:

Ամբողջ գիշեր ցուցարարների հետ են եղել ընդդիմութեան առաջնորդները Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորութեամբ:

Հրապարակը ժամանակ առ ժամանակ թնդում է «Լեւոն, Լեւոն» վանկարկումներից՝ անկախ նրանից Լեւոն Տէր-Պետրոսեանն հրապարակում է, թէ ոչ:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 14:15

ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը ցաւով արձանագրում է, որ փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնները ինչպէս ընտրութիւնների նախապատրաստման, քուէարկութեան, քուէարկութեան արդիւնքների ամփոփման, այնպէս էլ դրանց բողոքարկման փուլերում ընթացել են ՀՀ ընտրական, Քրէական Օրէնսգրքերի, ՀՀ այլ օրէնքների կոպտագոյն խախտումներով, որոնք ուղեկցուել են ընտրական կեղծիքներով եւ զեղծարարութիւններով, յանձնաժողովների անդամների, թեկնածուների վստահուած անձանց, ընտրական գործընթացի այլ մասնակիցների՝ դիտորդների եւ ԶԼՄ ներկայացուցիչների, եւ վերջապէս, ընտրողների ահաբեկման, շանտաժի, ծեծի ենթարկելու, կաշառման եւ այլ անպարկեշտ դրսեւորումներով:

Յաւօք սրտի, մեր կողմից հնչեցուած եւ ոչ մի ահազանգ չի արժանացել համարժէք գնահատականի, որն աւելի է խորացրել ընտրական գործընթացներում տիրող անվստահութեան մթնոլորտը: Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի անտարբերութիւնը յանգեցրել է նրան, որ արդարութեան վերականգնման վերջին հնարաւորութիւնը, այն է՝ քուէարկութեան արդիւնքների բողոքարկման պատասխանատու փուլը նոյնպէս ուղեկցւում է առանձին ընտրատարածքային ընտրական յանձնաժողովների ապօրինի կամայական գործողութիւններով:

Մասնաւորապէս, բազմաթիւ ընտրատարածքային յանձնաժողովներում՝ թիւ 3, 8, 21, 23, 24, 38, մերժել են ընդունել Արթուր Բաղդասարեանի վստահուած անձանց դիմումները քուէարկութեան արդիւնքների վերահաշուարկի պահանջի մասին: Ընդունուած դիմում-

ներն արհեստականօրէն խոչընդոտել են քննարկել թիւ 5, 12, 24, 34, 35 եւ այլ ընտրատարածքներում, իսկ բազմաթիւ դէպքերում վերահաշուարկի սկսուած գործընթացը ձախողել են յանձնաժողովների մեծամասնութեան կողմից քվորում չապահովելու միջոցով:

Միայն Երեւանի թիւ 9/31 ընտրատեղամասում Արթուր Բաղդասարեանի վստահուած անձի վերահաշուարկի պահանջի վերաբերեալ դիմումի հիման վրայ, քուէարկութեան արդիւնքների ուսումնասիրութիւնը ցոյց է տուել, որ յանցագործութեան ճանապարհով Արթուր Բաղդասարեանի ձայները նուազեցուել են 50-ով: Համանման դէպքեր են արձանագրուել նաեւ թիւ 34, 35, 38 ընտրատարածքներում, թիւ 24/18, 24/19, 11/04, 11/15 եւ բազմաթիւ այլ ընտրական տեղամասերում: ԸԸՀ-ների կողմից ակնյայտ կերպով արհեստականօրէն ձգձգւում է մեր կողմից մատնանշուած ընտրական տեղամասերի արդիւնքների վերահաշուարկի գործընթացը՝ առաջնահերթութեան կարգով քննարկելով այն տեղամասերի արդիւնքները, որտեղ իրենց տեղեկութիւններով ընտրական կեղծիքների ծաւալը տպաւորիչ չէ:

Հաշուի առնելով այն հանգամանքը, որ վաղը, փետրուարի 24-ին լրանում է քուէարկութեան արդիւնքների վերահաշուարկի վերջնաժամկէտը, կոչ ենք անում ԿԸՑ-ին անյապաղ միջոցներ ձեռնարկել եւ յանձնարարել ԸԸՀ-ներին պատշաճ վերահաշուարկ իրականացնելու միջոցով վերականգնել ընտրութիւնների արդիւնքների իրական պատկերը, հակառակ դէպքում լուրջ կասկածի տակ կ'առնուի ընտրութիւնների լեգիտիմութիւնը, ինչը յղի է ոչ միայն հասարակական առճակատումների վտանգով, այլ նաեւ լուրջ վնաս է հասցնում երկրի միջազգային վարկին՝ խոցելի դարձնելով ներքին ու արտաքին մարտահրաւէրներին դիմակայելու հնարաւորութիւնը:

Այս կապակցութեամբ ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը դիմել է ԿԸՑ:

23 փետրուարի 2008թ.

## ՆԱԽԱՐԱՐՆ ԱՍՈՒՄ Է, ԹԷ ԿԵՂԾ Է

*A1+*, 14:47

ՀՀ պաշտպանութեան նախարար Միքայէլ Յարութիւնեանն այսօր յայտարարել է, ոչ ոքի չի յաջողուի բանակը ներքաշել քաղաքական գործընթացների մէջ՝ յաւելելով նաեւ, որ տարածուած լուրերն այն մասին, թէ ՀՀ պաշտպանութեան նախարարի տեղակալներ, գեներալ-լեյտենանտ Մանուէլ Գրիգորեանը եւ գեներալ-լեյտենանտ Գագիկ Մելքոնեանը սատարում են ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանին, չեն համապատասխանում իրականութեանը. «Այդ լուրերը կեղծ են, իսկ պաշտպանութեան նախարարի բոլոր տեղակալները զբաղուած են իրենց ծառայողական պարտականութիւնների կատարմամբ: Ես կոչ եմ անում բոլորին՝ զերծ մնալ նման սադրիչ յայտարարութիւններից: Բանակը չի զբաղւում քաղաքականութեամբ եւ կատարում է իր առջեւ դրուած խնդիրներն ու առաջադրանքները: Մենք ունենք գերագոյն գլխաւոր հրամանատար, պաշտպանութեան նախարար, որոնց հրամանները գործում են բոլորի համար՝ զինուորից մինչեւ հրամանատար, գեներալ, մինչեւ նախարարի տեղակալներ: Այնպէս որ, մի հաւատացէք նման յայտարարութիւնների, որոնք, միգուցէ, ընդդիմութեան ցանկութիւնն են, որը չի իրականանայ»:

«Նման սադրիչ յայտարարութիւններն արդէն հերքուել են զինուած ուժերի ղեկավար

կազմի կողմից՝ ի դէմս պաշտպանութեան նախարարի, նրա տեղակալների եւ գլխաւոր շտաբի պետի», - ասել է նա:

Յիշեցնենք, որ ՀՀ պաշտպանութեան նախարարի տեղակալներ, գեներալ-լեյտենանտ Մանուէլ Գրիգորեանը եւ գեներալ-լեյտենանտ Գագիկ Մելքոնեանը անձամբ յայտարարութեամբ հանդէս չեն եկել:

ԱՅՍՕՐ ՓԵՏՐՈՒԱՐԻ 23-Ն Է

ՀՀ պաշտպանութեան նախարար Միքայէլ Յարութիւնեանը՝ ՀՀ եւ ՌԴ զինուած ուժերի, ինչպէս նաեւ ՌԴ սահմանապահ զօրքերի բարձրաստիճան սպայակազմի ուղեկցութեամբ, այցելեց Յաղթանակ զբօսայգի եւ ՌԴ «Հայրենիքի պաշտպանի» օրուայ կապակցութեամբ ծաղկեպսակ դրեց Անյայտ Զինուորի գերեզմանին: Արարողութեանը ներկայ էին նաեւ մեծ Հայրենականի հայ եւ ռուս վետերաններ:

Իր շնորհաւորական խօսքում նախարարը շնորհաւորեց բոլորին այդ մեծ յաղթանակի առթիւ՝ կարեւորելով վերջինիս դերը 20-րդ դարի երկրորդ կէսին աշխարհում ընթացող զարգացումներում: Նախարարը նշեց նաեւ, որ ներկայիս հայ սպաների մեծ մասը ծառայել են Խորհրդային բանակում՝ լաւագոյնս դրսեւորելով իրենց ծառայութեան ընթացքում:

## ՀՅԴ-Ն ՅԵՏ ԿԸ ԿԱՆՉԻ՞ ԻՐ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻՆ

*A1+*, 14:50

Այսօր լուրեր տարածուեցին, որ հրաժարականի դիմում է ներկայացրել ՀՀ կրթութեան եւ գիտութեան դաշնակցական նախարար Լեւոն Մկրտչեանը: ՀՅԴ-ից տեղեկացանք, որ լուրերը չեն համապատասխանում իրականութեանը: Իսկ հարցին, թէ հնարաւո՞ր է, որ ՀՅԴ-ն Վահան Յովհաննիսեանի հրաժարականից յետոյ ետ կանչի իր նախարարներին, պատասխանատուներից մէկը նկատեց, որ ՀՅԴ-ն հանդէս կը գայ պաշտօնական յայտարարութեամբ՝ հաւանաբար երկուշաբթի օրը: Այն ժամանակ էլ ամէն ինչ յայտնի կը դառնայ:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. «ՆՐԱՆՔ ՆԵՐԽՈՒԺԵԼ ԵՆ ԻՄ ՍԵՓԱԿԱՆ ՏԱՐԱԾՔ» (video)

*A1+*, 15:14

Այսօր մի խումբ մարդիկ, հիմնականում կանայք նստացոյց են կազմակերպել առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի տան դիմաց: Դա այն խումբն է, որ նոյն վրաններով եւ պաստառներով նստացոյց էր կազմակերպել Տէր-Պետրոսեանի՝ Կորիւնի 13 հասցէում գտնուող նախընտրական շտաբի մօտ:

«Արդէն երկրորդ անգամն է, ինչ մի խումբ մարդիկ, այն մարդու գլխաւորութեամբ, ով կազմակերպել էր նման խայտառակ ցոյց մեր կենտրոնական շտաբի առջեւ եւ նոյն սցենարով ոստիկանութեան հետ մէկտեղ՝ տեղադրում են իրենց վրանները, պաստառները: Ես այստեղ ոչ մի բան չունեմ ասելու, բայց ինձ մտահոգում է ոստիկանութեան համագործակցութիւնն այդ ակցիայի մասնակիցների հետ», - *A1+*-ին ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա նշեց, որ իր տան դիմաց կազմակերպուած ակցիայի մասնակցում է Շահումեանի շրջանի ոստիկանութիւնը. «Ես քիչ առաջ խօսել եմ ոստիկանութեան աւագ սպայ փոխգնդապետ Վարդան Երեմեանի հետ եւ զգուշացրել, որ ես ՀՀ նախագահի

թեկնածու եմ եւ անձեռնմխելի եմ: Ցանկացած նման ակցիա իմ անձի դէմ ես համարում եմ նաեւ իմ ընտանիքի դէմ»:

Տէր-Պետրոսեանը նաեւ նշեց այն հանգամանքը, որ ակցիա անցկացնողները ներխուժել են իր սեփական տարածք եւ աւելացրեց. «Արդէն իրենք կատարել են օրէնքի կոպտագոյն խախտում՝ իմ սեփական հողի վրայ կատարուել է նման ակցիա: Ես չգիտեմ, թէ նրանք ինչ մարդիկ են: Դրանցից կարող է վտանգ սպառնալ: Իմ թիկնազօրը՝ 30 հոգի է. նրանք բոլորն էլ անվտանգութեան ծառայութեան սպաներ են եւ մտնում են պետական պաշտօնեաների անվտանգութեան ապահովման վարչութեան կազմի մէջ, որի պետն է գեներալ Գրիգորի Սարգսեանը: Սա է իրադրութիւնը»:

Նշելով, որ ակցիայի մասնակիցները, որոնք արդէն կոպիտ խախտումներ են կատարել ներխուժելով իր տարածքը Տէր-Պետրոսեանը զգուշացրեց. «Այդ մարդկանց մէջ կարող են լինել պրովոկատորներ, նրանք կարող են անցնել ցանկապատը, իսկ իմ թիկնազօրը պարտաւոր է պաշտպանել իմ անձն ու իմ ընտանիքը»:

Տէր-Պետրոսեանը ոստիկանութիւնից պահանջում է ցրել իր սեփական տարածքի վրայ կազմակերպած ոչ արտօնեալ ակցիան. «Ես կարծում եմ, որ ոստիկանութիւնը այնքան խոհեմ կը գտնուի, որ կը կատարի իմ պահանջը»: Նման իրավիճակում Տէր-Պետրոսեանի թիկնազօրը իրաւունք ունի նաեւ ուժ գործադրել՝ նրա սեփական տարածքում յայտնուածներին հեռացնելու առաջին նախագահի անձն ու նրա ընտանիքը պաշտպանելու համար: Ի դէպ, *Ա1+*-ը զրուցեց նաեւ Տէր-Պետրոսեանի տան մօտ յայտնուած ոստիկանների հետ, որոնք չցանկացան ներկայանալ, սակայն ասացին. «Մենք այստեղ ենք, որպէսզի այս հաւաքուած մարդկանց կարգի հրաւիրենք, եթէ նրանք փորձեն կարգը խանգարել»: Իսկ ինչո՞ւ նրանք չեն հեռացնում հաւաքուածներին եւ սպասում են, որ նրանք անկարգութիւն անեն. *Ա1+*-ի հարցին ոստիկաններից մէկը պատասխանեց. «Մենք այստեղ ենք, որովհետեւ սա մեր վարչական տարածքն է՝ Շահումեանի շրջանը»: Իսկ երբ *Ա1+*-ը նշեց, որ հաւաքուածներն արդէն կարգ են խախտել՝ ներխուժելով Տէր-Պետրոսեանի սեփական տարածք եւ ոստիկանները արդէն պարտաւոր են նրանց հեռացնել, նոյն ոստիկանը նշեց. «Էդ հարցը մեզ մի տուէք»: Իսկ Տէր-Պետրոսեանի տան դիմաց հաւաքուած կանայք մեզ տեսնելով՝ նախ յարձակուեցին մեզ վրայ ասելով՝ որ իրենք *Հ1*-ի լրագրողներին են սպասում, իսկ յետոյ սկսեցին բղաւել. «Մենք չենք ուզում, որ Տէր-Պետրոսեանը նախագահ դառնայ, բայց ինքը դառնում է»:

Բղաւող կինը ներկայացաւ Ամալեա անունով: Երբ նրան յիշեցրեցինք, որ ԿԸՅ-ի հրապարակած նախնական տուեալների համաձայն Սերժ Սարգսեանն է նախագահ, նրանք աւելի բորբոքուեցին. «Մենք Սերժ Սարգսեանի անունը չենք տուել: Ես Սերժի հետ գործ չունեմ: Դուք էք տալիս Սերժի անունը: Մենք ասում ենք, թող Լեւոն Տէր-Պետրոսեանը նախագահ չդառնայ»: Կանանց պահանջը տարօրինակ էր, քանի որ նրանք Լեւոն Տէր-Պետրոսեանի տան մօտ բղաւում են, որ կապ չունեն Սերժ Սարգսեանի հետ, բայց ուզում են, որ նախագահ չդառնայ Տէր-Պետրոսեանը: Իսկ Տէր-Պետրոսեանի տան մօտ նստած կանանց կողքին կանգնած էր Սերժ Սարգսեանի հանրահաւաքների ընթացքում կարգը պահպանող տղաներից մէկը, որ վիճաբանութեան մէջ մտաւ *Ա1+*-ի լրագրողներից մէկի հետ:

Ի դէպ, Լեւոն Տէր-Պետրոսեանի տան դիմաց հաւաքուած ցուցարարներին մօտեցան մօտ 100-ից աւելի Տէր-Պետրոսեանի համախոհներ եւ սկսեցին վանկարկել «Լեւոն-

Լեւոն»: Որոշ ժամանակ վանկարկելուց յետոյ նրանք ցրուեցին: Իսկ պիկէտի մասնակիցները եւ ոստիկանութեան աշխատակիցները մնացին առաջին նախագահի տան դիմաց:

## «ՄԱՀԱՑՈՂ ՕՐԳԱՆԻԶՄԻ ՎԵՐՋԻՆ ՃԻԳԵՐՆ ԵՆ»

*A1+*, 15:18

Նայելով Հիւսիսային Պողոտայի շէնքի վրայ փակցուած Սերժ Սարգսեանի նկարին, Հայաստանի պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը Ազատութեան Հրապարակում յայտարարեց.

«Իշխանութիւնը փոխուելուց յետոյ էլ այնտեղից նկարը պէտք է չհանել, որպէսզի սերունդները իմանան, թէ ինչպիսին չպիտի լինի մարդը, նախագահի թեկնածուն: Դրան նայելով մենք պէտք է ունենանք դրա հակառակը»: Միքայէլ Հայրապետեանը յայտարարեց, որ իրենք լուրեր ունեն Արտաշատից, Մարտունուց, որ խոչընդոտում են իրենց կողմնակիցներին գալ Երեւան:

«Բայց դրանք խոչընդոտներ չեն, դրանք մահացող օրգանիզմի վերջին ճիգերն են: Գերմանացի փիլիսոփան ասել է հէնց նրանց. «Զգուշացէք: Մի թքէք քամուն ընդդէմ, այլապէս դա իրենց երեսին է շպրտուելու»: Իսկ մենք քամին ենք լինելու, մեզ այլեւս կանգնեցնել չի լինելու», - ասաց նա: Ապա հաւաքուածներին հարցրեց, թէ իրենց պայքարը վերջ ունի՞, իսկ հաւաքուածները գոռացին՝ ոչ: «Ուրեմն պայքար, պայքար մինչեւ վերջ», - շարունակեց Միքայէլ Հայրապետեանը:

Ազատութեան Հրապարակում մարդկանց թիւն աւելանում է: Վերջիններիս Պահպանողական կուսակցութեան առաջնորդը վստահեցրեց, որ չվախենան ոստիկաններից, քանի որ նրանք իրենց եղբայրներն են: «Ոստիկանները այստեղ գտնուող եւ ոչ այստեղ գտնուող, ձեր եղբայրներն են եւ բացառուած է, որ ընդամէնը մի քանի ուսադիրաւորների պահանջով սեփական մայրերի, քոյրերի վրայ ձեռք բարձրացնեն: Նրանք ձեր մի մասնիկն են եւ միասնական ենք յանուն Հայրենիքի: Այստեղ ոստիկանները թող չամաչեն իրենց համազգեստից, գիտենք իրենք երկակիութիւնը, գիտենք, որ հոգով մեզ հետ են», - ասաց նա:

Ապա միացուեց բարձր երաժշտութիւն, որպէսզի հաւաքուածները հանգստանան, քանի որ, ըստ Միքայէլ Հայրապետեանի, շաբաթօրեայ հանգիստ են անցկացնում:

## ՎԱՐՉԱԿԱՆ ՎԱՐՈՅԹ ՄԻՔԱՅԷԼ ՀԱՅՐԱՊԵՏԵԱՆԻ ԴԷՄ

*A1+*, 15:19

Ազատութեան Հրապարակի հարթակին կանգնած Պահպանողական Կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանին մօտեցան մի քանի ոստիկաններ ու մի պաշտօնեայ: Մեզ յաջողուեց ձայնագրել նրանց ամբողջ խօսակցութիւնը: Դրանից պարզ դարձաւ, որ Երեւանի քաղաքապետարանի որոշմամբ նրանք եկել են զգուշացնելու, որ հրապարակային միջոցառումը պէտք է դադարեցուի, քանի որ այն առանց իրազեկման է իրականացւում: «Գործող օրէնքի համաձայն մենք պահանջում ենք այն դադարեցնել եւ այս փաստաթուղթը ձեզ ենք տալիս», - Հայրապետեանին ասաց պաշտօնեան:

Վաղը առաւօտեան ժամը 10:00-ին Հայրապետեանից նրանք պահանջեցին ներկայանալ ոստիկանութեան Կենտրոնի բաժին:

Միքայէլ Հայրապետեանը փորձեց պարզել, որ այս փաստաթուղթն յատկապէս ում է

ուղղուած: «Դուք ինձ որպէս անհատ քաղաքացի հրաւիրում էք, որպէս պարկեշտ քաղաքացի ես պատրաստ եմ ու կը ներկայանամ: Ես այդ փաստաթուղթը չեմ կարող վերցնել, դուք ինձ նման զգուշացում անելու իրաւունքը չունէք», - ոստիկաններին ասաց նա:

Ոստիկանութիւնը Հայրապետեանին տեղեկացրեց, որ նրա դէմ գործ է յարուցուել՝ չլիազօրուած ցոյցեր, միտինգներ կազմակերպելու համար: «Դրա համար էլ կանչում ենք բաժանմունք, պարզելու՝ միտինգի կազմակերպմանը մասնակցե՞լ էք, թէ ոչ», - ասացին նրանք:

Հայրապետեանը նրանց հարցրեց, թէ արդեօք կարող են ապացուցել, թէ ո՞ր հիմքով են իր դէմ վարչական վարոյթը սկսում: Սակայն, այնուամենայնիւ, նա համաձայնուեց ստորագրել ծանուցագիրը, որ այն ստացել է: Այնուհետեւ՝ պատասխանելով մեր հարցերին, նա ասաց, որ ծանուցագրում ոչ մի պատճառաբանութիւն նշուած չէր: «Կարծում եմ՝ պրոտոկոլային խախտում է: Պաշտօնեան չգիտեմ ով էր, բայց ես իմ երկրի ուսադիրները պարտաւոր եմ յարգել ու յարգեցի: Չարտօնուած հաւաքի մասին էր խօսքը գնում, որն ի դէպ ես եմ կազմակերպել, եւ ես մեծ հաճոյքով վաղը կը գնամ, կը ներկայանամ, քանի որ կոնկրէտ ինձ էր այն ուղղուած: Հիմա հարթակում ես եմ ներկայ իմ ընկերներից, եւ ես պատրաստ եմ նրանց փոխարէն ստորագրելու անձամբ, ինչից չհրաժարուեցի», - նշեց Միքայէլ Հայրապետեանը:

Այս մասին նա բարձրախօսներով տեղեկացրեց նաեւ հաւաքուածներին՝ հարց ուղղելով նրանց. «Ձեզ այստեղ է բերել քաղաքացիական իրաւունքի ոտնահարումը, այնպէ՞ս չէ, ուրեմն դուք այստեղ կանգնելու իրաւունք ունէք ճիշտ այնպէս, ինչպէս ցանկացած բժիշկ, ոստիկան»:

## ԸՆԿԵՐ ՎԱՀԱՆԻ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 15:21

Ընկեր Վահան, ինչու անձամբ քո անունից: Բա 120-ամեայ քո կուսակցութիւնն ու համատարած կաշառակերութեան հետ կապ չունեցող քո կուսակից՝ ամենահայրենասէր, ամենաազնիւ նախարարները: Առաջին հայեացքից կարելի էր ենթադրել, որ քո «ամենահայրենասէր», «ամենաազնիւ» ու «ամենասկզբունքային» կուսակցութիւնը շատ դանդաղ ու բծախնդրութեան հասնող մանրամասնութեամբ է ուսումնասիրում կեղծուած ընտրութիւնների արդիւնքները՝ տարիքի հետ կապուած, իհարկէ: Սակայն, հիմք ընդունելով պտտուող լուրերն այն մասին, որ ՀՅԴ ԳՄ-ն շատ լուրջ եւ բովանդակալից հանդիպում է ունեցել առայժմ ՀՀ նախագահ Ռոբերտ Քոչարեանի հետ, ինչպէս նաեւ ձեր «հայրենասիրական մղումներից» դրդուած, իհարկէ, միջնորդի դերում հանդէս գալու առաջարկութիւնը, կը ներէք, կարելի է ենթադրել, որ ժողովրդի գլխի տակ փափուկ բարձ դնելուց յետոյ, որը ընտրութիւնները կեղծած իշխանութեան, այդ թւում ՀՅԴ-ի, ամենամեծ փափագն է, ձեր կուսակիցների պորտֆէլներն առնուազն կը դառնան չորսը կամ հինգը:
Նախկին ՀՅԴ անդամ
ԲԱԳՐԱՏ ԽԵՐՈՅԵԱՆ

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔԸ ՄԵԿՆԱՐԿԵՑ

*A1+*, 15:41

Ազատութեան Հրապարակում մեկնարկուեց հանրահաւաքը: Մարդիկ դեռեւս շարու-

նակում են մօտենալ, սակայն այն արդէն բազմամարդ է:

Հանրահաւաքը վարում է Նիկոլ Փաշինեանը: Վերջինս հաւաքուածներին տեղեկացրեց, որ մի քանի մարդիկ պիկէտ են անում առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի տան դիմաց ու կոչ արեց Սերժ Սարգսեանին միանալ այդ պիկէտին: Ըստ նրա՝ պիկէտ անողներն ընդունում են, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը յաղթել է, այլապէս պիկէտ չէին անի: «Նրանք մարդկային ռեսուրս չունեն, քանի որ հաւաքել են մօրաքրոջ, հօրաքրոջ եւ այլ բարեկամների», - ասաց նա:

Այժմ ելոյթ է ունենում ՀԺԿ ներկայացուցիչ Ֆելիքս Խաչատրեանը, որը ներկայացնում է արձանագրուած ընտրակեղծիքները:

## ՑՈՅՑ ԼԻՆՈՒՄ Է ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԴԷՄ

*Lragir.am*, 15:50

Ազատութեան Հրապարակում մեկնարկել է Լեւոն Տէր-Պետրոսեանի հրաւիրած հանրահաւաքը: Իհարկէ, այս դէպքում մեկնարկելը յարաբերական հասկացութիւն է, որովհետեւ հանրահաւաքը ըստ էութեան մեկնարկել է դեռեւս փետրուարի 21-ին, եւ կրում է շարունակական բնոյթ արդէն երկու օր: Մարդկանց բազմութիւնն իհարկէ տարբեր ժամերի նուազում է, սակայն Ազատութեան Հրապարակում բողոքի ակցիան դարձել է շուրջօրեայ:

Փետրուարի 23-ին ելոյթ ունեցած Նիկոլ Փաշինեանը անդրադարձել է նոյն օրը Լեւոն Տէր-Պետրոսեանի տան մօտ տեղի ունեցած ցոյցին, որ անցկացնում են մի քանի անձ, որոնք մինչեւ նախագահի ընտրութիւնը ցոյց էին անում նաեւ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի մօտ, պահանջելով նրա հեռացումը քաղաքականութիւնից: Նիկոլ Փաշինեանը նշել է, թէ լաւ կը լինի, որ այդ մի քանի անձին միանան նաեւ Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը: Ընդհանրապէս, Փաշինեանի խօսքով, բողոքի ցոյցեր անում են իշխանութեան դէմ, այնպէս որ նորմալ է, որ այդ մարդիկ որոշել են ցոյց անել Լեւոն Տէր-Պետրոսեանի տան դիմաց: Ազատութեան Հրապարակում հաւաքուած բազմութիւնը շարունակում է աւելանալ, թէեւ հանրահաւաքի ակտիւ մասն արդէն սկսել է, բայց քաղաքացիները դեռ շարունակում են գալ հրապարակ:

## ԱՐԴԵՕՔ ՀԻՆ ԸՆԿԵՐՆԵՐԸ ՉԵՆ ՀՐԱԺԱՐՒՈՒՄ

*Lragir.am*, 15:58

Ազգային Ժողովի փոխնախագահ Վահան Յովհաննիսեանի հրաժարականի հանգամանքը կարող է սկսել ներքաղաքական բաւական լուրջ նոր գործընթաց, կամ բաւական առանցքային ճիւղաւորման տանել արդէն առկայ գործընթացը: Բանն այն է, որ Վահան Յովհաննիսեանի որոշումը Դաշնակցութեան վերնախաւում առաջացրել է բուռն արձագանք: Սակայն կարելի է նաեւ ասել, որ այդ բուռն մթնոլորտը առկայ է եղել մինչեւ այդ եւ հէնց դա է դարձել Վահան Յովհաննիսեանի հրաժարականի դրդապատճառ: Խնդիրն այն է, որ Վահան Յովհաննիսեանին դեռեւս նախագահի ընտրութիւնից առաջ Դաշնակցութեան որոշ շրջանակներ կասկածում էին նախագահի թեկնածու Սերժ Սարգսեանի օգտին աշխատելու համար: Աւելին, ըստ շարքային դաշնակցականներից շատերից ստացուած տեղեկութիւնների, որոշ բնակավայրերում դաշնակցութեան մի քանի ակտիւիստներ ակտիւ ներգրաւուած են եղել ընտրակաշառքի բաժանման գործի մէջ, բայց

ոչ թէ յօգուտ սեփական, այլ ՀՀԿ թեկնածուի:

Կասկածներն աւելի են խորացել այն բանից յետոյ, երբ ըստ էութեան լիակատար ձախողումից յետոյ Վահան Յովհաննիսեանը որեւէ էական արտայայտութիւն չարեց նախագահի ընտրութեան ընթացքի հետ կապուած: Դա էլ աւելի էր խորացրել ներկուսակցական կասկածը նրա գործունէութեան հանդէպ: Եւ թերեւս հէնց դա է պատճառը, որ Վահան Յովհաննիսեանը փետրուարի 19-ից միայն երեք օր անց որոշեց գնահատել ընտրութիւնը եւ հրաժարական տալ Ազգային Ժողովի փոխնախագահի պաշտօնից, որպէսզի դրանով ցրի կուսակիցների կասկածը Սերժ Սարգսեանի հետ գործակցելու կապակցութեամբ:

Յովհաննիսեանի հրաժարականը սակայն, որ պէտք է ցրէր ներկուսակցական կասկածները եւ լիցքաթափէր մթնոլորտը, էլ աւելի է թէժացրել այն, քանի որ առաջացել է նաեւ այդ հրաժարականի տրամաբանական շարունակութեան խնդիր, այն է, որ հրաժարական տան նաեւ Դաշնակցութեան նախարարները, առաւել եւս, որ դա բխում է շարքային դաշնակցականների պահանջից, որոնք նախագահի ընտրութիւնից առաջ լսելով մինչեւ վերջ գնալու կուսակցապետերի յայտարարութիւնները, ընտրութիւնից յետոյ գտնւում են ուղղակի շոկի մէջ, տեսնելով, թէ ինչպէս է փաստօրէն լռութիւն պահպանում սեփական կուսակցութեան վերնախաւը այդ ըստ էութեան խայտառակ ընտրութիւնից յետոյ: Սակայն շարքային այդ կուսակցականների պահանջը հակադրւում է այն կուսակցապետերի շահին, որոնք բաւական յարմար տեղաւորուել էին իշխանական համակարգում, ընդհուպ նախարարական պորտֆէլներին: Այդ իրավիճակն էլ դարձել է ՀՅԴ վերնախաւում բուռն քննարկումների պատճառ՝ հրաժարուել պորտֆէլներից, թէ ոչ:

Իհարկէ, գոյները կարող են թուալ մի փոքր խտացուած, բայց սեղանին դրուած է ՀՅԴ քաղաքական ապագայի խնդիրը, եթէ գերակայի ոչ թէ կուսակցութեան շարքերի, այլ վերնախաւի մի մասի շահը: Ընդ որում, այդ հակասութիւնը Դաշնակցութեան մէջ հասունանում էր դեռ շատ վաղուց, կարելի է ասել 2003 թուականին կազմած կօալիցիայի գործունէութեան կէսից, երբ ակնյայտ հակասութիւններ առաջացան ՀՅԴ խօսքի ու գործի մէջ, ընդ որում ոչ միայն Հայաստանում, այլ նաեւ Ղարաբաղի քաղաքական կեանքում այդ կուսակցութեան գործունէութեան առումով, երբ ըստ էութեան ընդդիմութիւն համարուող ՀՅԴ-ն Ղարաբաղում միացաւ «միասնական թեկնածու» օպերացիային, այն բանից յետոյ, երբ դրանից առաջ Ղարաբաղի խորհրդարանի ընտրութեանը կուսակցութիւնը փաստացի կրեց խայտառակ պարտութիւն: Դաշնակցութիւնը ներքին այդ հակասութիւններն ու տարըմբռնումները յաղթահարելու համար թերեւս ունի բաւական պատեհ հնարաւորութիւն, եթէ իհարկէ առաջնորդուի ոչ թէ քաղաքական կոմֆորմիզմի, այլ գաղափարական սկզբունքայնութեան դիրքից:

## ԱՆՀԵՏԱՑԱՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՔՈՒԷԱԹԵՐԹԻԿՆԵՐԸ

*A1+*, 16:41

Այսօր վերահաշուարկի ժամանակ թիւ 13/10 ընտրատեղամասում անհետացել է Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկուած քուէաթերթիկների փաթեթը: Երբ ԵԱՀԿ դիտորդը յանձնաժողովի նախագահից պահանջել է ցոյց տալ այդ փաթեթը, պարզուել է, որ այն անհետացել է սենեակից: Վերահաշուարկի ընթացքում բացայայտուել են մի շարք խախտումներ, մասնաւորապէս Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկուած քուէաթեր-

թիկները դրուել են այլ թեկնածուի տրցակում: Այս պահին *Ա1+*-ի լրագրողը այնտեղ է:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ ԿԸ ԼԻՆԵ՞Ն ՎԻՐԱՒՈՐԱՆՔՆԵՐ

*Ա1+,* 16:42

Ըստ հաւաստի տեղեկութիւնների՝ քիչ առաջ աւարտուել է Սերժ Սարգսեանի հանդիպումը ԱԺ ՀՀԿ եւ Բարգաւաճ Հայաստան խմբակցութիւնների հետ: Վարչապետը պատգամաւորներին առաջարկել է ստորագրել նախապէս պատրաստուած մի տեքստ ընտրութիւնների արդիւնքի մասին, որտեղ պարունակուել են բազմաթիւ վիրաւորական արտայայտութիւններ ընդդիմութեան հասցէին:

Պատգամաւորներից Վահէ Յովհաննիսեանն առարկել է՝ նշելով, որ ինքը կը ստորագրի միայն այն պայմանով, եթէ այնտեղից հանուեն բոլոր վիրաւորական արտայայտութիւնները եւ անպայման կոչ արուի՝ բացառել որեւէ ուժի կիրառում խաղաղ ցոյցերի ու երթերի մասնակիցների նկատմամբ:

Մեր տեղեկութիւններով՝ Սերժ Սարգսեանն առաջարկը պաշտպանել է, տեքստն այժմ խմբագրւում է եւ շուտով պատրաստ կը լինի հրապարակման:

## ՄԱԿ-ՈՒՄ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀԱՄԱԿԻՐՆԵՐ

*Lragir.am*, 16:46

Ազատութեան Հրապարակում մեկնարկած այսօրուայ հանրահաւաքում ելոյթ ունեցաւ Միաւորուած Աշխատանքային Կուսակցութեան խորհրդի անդամ Թամարա Գէորգեանը: Նա կոչ արեց բոլոր հայրենասէրներին միանալ ժողովրդական շարժմանը: Նրա խօսքով, թէեւ Միաւորուած Աշխատանքային Կուսակցութիւնը խորհրդի նիստում որոշում է կայացրել պաշտպանել Սերժ Սարգսեանի թեկնածութիւնը, այնուամենայնիւ կուսակցութեան մէջ շատ են Տէր-Պետրոսեանի համակիրները:

## ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՄՕՏ

*Ա1+,* 16:47

Ռոբերտ Քոչարեանն այսօր խորհրդակցութիւն է անցկացրել Զինուած Ուժերի բարձրագոյն հրամանատարական կազմի հետ: Խորհրդակցութեանը մասնակցել է նաեւ վարչապետ Սերժ Սարգսեանը:

Քննարկուել է վերջին օրերին երկրում ստեղծուած ներքաղաքական իրավիճակը:

Կայունութիւնը համարելով վերջին տարիների լրջագոյն ձեռքբերումներից մէկը, որի վրայ են կառուցուած երկրի հիմնական յաջողութիւնները, նախագահ Քոչարեանն ասել է, որ երբեւիցէ որեւէ մէկին թոյլ չի տայ վտանգել ներքաղաքական կայունութիւնը: «Երկրի նախագահը պատասխանատուութիւն է կրում եւ պատրաստ է լիարժէքօրէն այն կատարել: Վճռական եմ ձեռնարկել բոլոր միջոցները երկրում կարգ ու կանոնի պահպանման համար», - ընդգծել է Ռոբերտ Քոչարեանը: Այդ առնչութեամբ նա տուել է կոնկրէտ յանձնարարականներ:

Երկրի ղեկավարի խօսքով, իշխանութիւնն ընտրւում է միայն օրինական ճանապարհով, բռնութեամբ, զօրքայութեամբ իշխանութեան չեն գալիս եւ երբեք թոյլ չի տայ, որ որեւէ մէկը ստուերային դերակատարութիւն ունենայ կամ որեւէ մէկի քմահաճոյքներն ազդեն ներքաղաքական կայունութեան, քաղաքական գործընթացների վրայ: «Որեւէ

կառոյց չի կարող իրեն օրէնքից դուրս դնել եւ զբաղուել ապօրինի գործունէութեամբ», - շեշտել է նա:

ԶՈՒ բարձրագոյն հրամանատարական կազմը նշել է, որ բանակը միշտ էլ եղել է կայունութեան կարեւորագոյն երաշխիքներից մէկը եւ այսօր էլ անհրաժեշտութեան դէպքում կը ձեռնարկի երկրի սահմանադրական կարգի պահպանմանն ուղղուած քայլեր եւ պատրաստ է լիարժէք կատարել Գերագոյն Գլխաւոր Հրամանատարի բոլոր հրամանները:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ԽՈՐՀՐԴԱԿՑԵԼ Է ԶՈՒ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՀՐԱՄԿԱԶՄԻ ՀԵՏ

*Lragir.am*, 16:54

Նախագահի մամուլի գրասենեակը տեղեկացնում է, Ռոբերտ Քոչարեանն այսօր խորհրդակցութիւն է անցկացրել Զինուած Ուժերի բարձրագոյն հրամանատարական կազմի հետ: Խորհրդակցութեանը մասնակցել է նաեւ վարչապետ Սերժ Սարգսեանը: Քննարկուել է վերջին օրերին երկրում ստեղծուած ներքաղաքական իրավիճակը: Կայունութիւնը համարելով վերջին տարիների լրջագոյն ձեռքբերումներից մէկը, որի վրայ են կառուցուած երկրի հիմնական յաջողութիւնները, նախագահ Քոչարեանն ասել է, որ երբեւիցէ որեւէ մէկին թոյլ չի տայ վտանգել ներքաղաքական կայունութիւնը: «Երկրի նախագահը պատասխանատուութիւն է կրում եւ պատրաստ է լիարժէքօրէն այն կատարել: Վճռական եմ ձեռնարկել բոլոր միջոցները երկրում կարգ ու կանոնի պահպանման համար», ընդգծել է Ռոբերտ Քոչարեանը: Այդ առնչութեամբ նա տուել է կոնկրէտ յանձնարարականներ: Երկրի ղեկավարի խօսքով, իշխանութիւնն ընտրւում է միայն օրինական ճանապարհով, բռնութեամբ, զոռբայութեամբ իշխանութեան չեն գալիս եւ երբեք թոյլ չի տայ, որ որեւէ մէկը ստուերային դերակատարութիւն ունենայ կամ որեւէ մէկի քմահաճոյքներն ազդեն ներքաղաքական կայունութեան, քաղաքական գործընթացների վրայ: «Որեւէ կառոյց չի կարող իրեն օրէնքից դուրս դնել եւ զբաղուել ապօրինի գործունէութեամբ», շեշտել է նա:

ԶՈՒ բարձրագոյն հրամանատարական կազմը նշել է, որ բանակը միշտ էլ եղել է կայունութեան կարեւորագոյն երաշխիքներից մէկը եւ այսօր էլ անհրաժեշտութեան դէպքում կը ձեռնարկի երկրի սահմանադրական կարգի պահպանմանն ուղղուած քայլեր եւ պատրաստ է լիարժէք կատարել Գերագոյն Գլխաւոր Հրամանատարի բոլոր հրամանները, տեղեկացնում է մամուլի գրասենեակը:

## ՀԱՆԴԻՊԵԼ Է ՆԱԵՒ ՈՍՏԻԿԱՆՆԵՐԻՆ

*A1+*, 16:55

Ռոբերտ Քոչարեանն այսօր խորհրդակցութիւն է անցկացրել ոստիկանութեան ղեկավար կազմի հետ: Քննարկուել է վերջին օրերին երկրում ստեղծուած ներքաղաքական իրավիճակը եւ դրանից բխող իրաւապահ մարմինների կողմից հնարաւոր բոլոր գործողութիւնները:

Նշելով, որ այն, ինչ այսօր կատարւում է Հայաստանում արհեստական ներքաղաքական լարուածութեան ստեղծում է, Ռոբերտ Քոչարեանն ասել է. «քաղաքական պայքարում արժանապատիւ պարտութիւն կրելը եւս ժողովրդավարական մշակոյթի կարեւոր

բաղադրիչ է, որը, ցաւօք, Հայաստանում դեռեւս ձեւաւորուած չէ»:

Նա այսօր տեղի ունեցող գործընթացները գնահատել է իշխանութիւնն ապօրինի ճանապարհով զաւթելու փորձ. «Մեր գործողութիւնները լինելու են վճռական ու կտրուկ՝ ուղղուած երկրի կայունութեանն ու սահմանադրական կարգի պահպանմանը», - շեշտել է նա: Հանրապետութեան նախագահին այս առնչութեամբ համապատասխան յանձնարարականներ է տուել իրաւապահներին:

Ոստիկանութեան բարձրաստիճան ղեկավարները վստահեցրել են, որ ոստիկանութիւնն ունի միանգամայն բաւարար ներուժ ու կամք իրագործելու իրեն վերապահուած գործառոյթները, սադրանքները չէզոքացնելու եւ երկրի ներքին կարգ ու կանոնը պահելու համար:

## ԿԱԹՈՂԻԿՈՍՆ ԱՅՑԵԼԵԼ Է ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

*Lragir.am*, 17:02

Ինչպէս տեղեկացնում է կառավարութեան մամուլի ծառայութիւնը, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին է այցելել Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Ս.Տ. Գարեգին Երկրորդը՝ Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի միաբանների ուղեկցութեամբ: Վեհափառ Հայրապետը վարչապետ Սերժ Սարգսեանին վերստին շնորհաւորել է նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ եւ իր հայրապետական օրհնութիւնը բերել այդ առիթով: Նա նաեւ իր գոհունակութիւնն է յայտնել բարեյաջող զարգացող պետութիւն-եկեղեցի յարաբերութիւնների վերաբերեալ, յոյս յայտնելով, որ այսուհետ եւս այդ յարաբերութիւնները նոյնպիսի յաջողութեամբ կը զարգանան: Վեհափառ Հայրապետը յաջողութիւններ է մաղթել նորընտիր նախագահին՝ յանուն մեր Հայրենիքի բարօր եւ երջանիկ կեանքի ու մեր ժողովրդի իղձերի մարմնաւորման:

Ամենայն Հայոց Կաթողիկոսը եւ ՀՀ վարչապետն անդրադարձել են նաեւ յետընտրական գործընթացներին: Վեհափառ Հայրապետը, անընդունելի համարելով անհանդուրժողականութեան դրսեւորումները, յոյս է յայտնել, որ յետընտրական գործընթացները կը մնան բացառապէս օրէնքի շրջանակներում եւ կը յաղթանակեն խոհեմութիւնն ու ողջամտութիւնը: Շնորհակալութիւն յայտնելով շնորհաւորանքի, Հայրապետական օրհնութեան ու բարեմաղթանքի համար, Սերժ Սարգսեանը վստահեցրել է, որ իշխանութիւնները չափազանց շահագրգռուած են եւ ամէն ինչ անում են, որպէսզի յետընտրական զարգացումները մնան օրինականութեան շրջանակներում, եւ ընտրութիւնների արդիւնքներով պայմանաւորուած՝ ընտրողների կամքը չանտեսուի, ասուած է կառավարութեան մամուլի ծառայութեան հաղորդագրութեան մէջ:

## ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՒՈՒՄ ԵՆ ՆՈՐ ԵՐԹԻ

*A1+*, 17:09

Այսօր Ազատութեան Հրապարակի հարթակից ելոյթ է ունեցել իշխանութիւնների պատուէրով անազատութեան մէջ գտնուող Շուշիի առանձնակի գումարտակ հրամանատար Ժիրայր Սէֆիլեանի որդին 10-ամեայ Պետրոս Սէֆիլեանը. «Իմ հայրս ինձ ասում է, որ հայերը երբեք չպէտք է ստեն եւ իրենք էլ ստի հետ չյարմարուեն: Ռոբերտն ու Սերժիկը ուզում են տպաւորութիւն ստեղծել, որ հայ ժողովրդի մեծ նոր ծիլեր չկան, սակայն ի դէմս ինձ դուք տեսնում էք, որ հայ ժողովրդի մէջ նոր պայքարող սերունդ կայ»:

Այսօր ելոյթ է ունեցել ՍԴՀԿ նախագահ Լիւդմիլա Սարգսեանը եւ բոլոր պաշտօնեաներին կոչ արեց տղամարդկութիւն ցուցաբերել եւ միանալ իրենց: Այսօր Ազատութեան Հրապարակի հաւաքուածներին են միացել բազմաթիւ բարձր դասարանցիներ, որոնք յայտարարել են, որ միանում են համաժողովրդական պայքարին:

Ելոյթներից յետոյ Նիկոլ Փաշինեանը յայտարարեց նախապատրաստուող երթի մասին, որին մասնակցելու է Ազատութեան Հրապարակում հաւաքուածների մի մասը: Հիմնականում կանայք պատրաստւում են երթով գնալ դէպի ռադիոտուն՝ Հանրային հեռուստառադիոընկերութեանը ներկայացնելու իրենց պահանջները: Նրանք պահանջում են ուղիղ եթեր տրամադրել Տէր-Պետրոսեանին:

## ՆԳՆ ՂԵԿԱՎԱՐ ԿԱԶՄԸ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՄՕՏ

*Lragir.am,* 17:10

Նախագահի մամուլի գրասենեակի տեղեկացմամբ, Ռոբերտ Քոչարեանն այսօր խորհրդակցութիւն է անցկացրել ոստիկանութեան ղեկավար կազմի հետ: Քննարկուել է վերջին օրերին երկրում ստեղծուած ներքաղաքական իրավիճակը եւ դրանից բխող իրաւապահ մարմինների կողմից հնարաւոր բոլոր գործողութիւնները: Նշելով, որ այն, ինչ այսօր կատարւում է Հայաստանում արհեստական ներքաղաքական լարուածութիւն ստեղծում է, Ռոբերտ Քոչարեանն ասել է. «Քաղաքական պայքարում արժանապատիւ պարտութիւն կրելը եւս ժողովրդավարական մշակոյթի կարեւոր բաղադրիչ է, որը, ցաւօք, Հայաստանում դեռեւս ձեւաւորուած չէ»: Նա այսօր տեղի ունեցող գործընթացները գնահատել է իշխանութիւնն ապօրինի ճանապարհով զաւթելու փորձ. «Մեր գործողութիւնները լինելու են վճռական ու կտրուկ՝ ուղղուած երկրի կայունութեանն ու սահմանադրական կարգի պահպանմանը», շեշտել է նա: Հանրապետութեան նախագահն այս առնչութեամբ համապատասխան յանձնարարականներ է տուել իրաւապահներին: Ոստիկանութեան բարձրաստիճան ղեկավարները վստահեցրել են, որ ոստիկանութիւնն ունի միանգամայն բաւարար ներուժ ու կամք իրագործելու իրեն վերապահուած գործառոյթները, սադրանքները չէզոքացնելու եւ երկրի ներքին կարգ ու կանոնը պահելու համար, ասուած է մամուլի գրասենեակի հաղորդագրութեան մէջ:

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ ԱԱԾ-ԻՆ

*A1+,* 17:11

Ռոբերտ Քոչարեանն այսօր խորհրդակցութիւն է անցկացրել Ազգային Անվտանգութեան Ծառայութեան ղեկավար կազմի հետ:

Քննարկուել է վերջին օրերին երկրում ստեղծուած ներքաղաքական իրավիճակը եւ դրանից բխող անելիքները:

Տեղի ունեցող գործընթացները գնահատելով իշխանութեան զաւթմանն ուղղուած փորձ, Ռոբերտ Քոչարեանն ասել է, որ պատասխան գործողութիւնները լինելու են վճռական եւ կտրուկ: «Երկրի կայունութիւնը որեւէ պարագայում սակարկման առարկայ չէ», - շեշտել է նա: Նախագահի կողմից տրուել են համապատասխան յանձնարարականներ:

Ազգային Անվտանգութեան Ծառայութեան բարձրաստիճան ղեկավարները հաւաստացրել են, որ ծառայութեան բոլոր ստորաբաժանումներն անխափան գործում են եւ պատրաստ են լիարժէքօրէն կատարել տրուած բոլոր յանձնարարականները:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ԽՈՐՀՐԴԱԿՑԵԼ Է ԱԱԾ ՂԵԿԱՎԱՐ ԿԱԶՄԻ ՀԵՏ

*Lragir.am*, 17:19

Նախագահի մամուլի գրասենեակը տեղեկացնում է, թէ Ռոբերտ Քոչարեանն այսօր խորհրդակցութիւն է անցկացրել Ազգային Անվտանգութեան Ծառայութեան ղեկավար կազմի հետ: Քննարկուել է վերջին օրերին երկրում ստեղծուած ներքաղաքական իրավիճակը եւ դրանից բխող անելիքները: Տեղի ունեցող գործընթացները գնահատելով իշխանութեան զաւթմանն ուղղուած փորձ, Ռոբերտ Քոչարեանն ասել է, որ պատասխան գործողութիւնները լինելու են վճռական եւ կտրուկ: «Երկրի կայունութիւնը որեւէ պարագայում սակարկման առարկայ չէ», շեշտել է նա: Նախագահի կողմից տրուել են համապատասխան յանձնարարականներ: Ազգային Անվտանգութեան Ծառայութեան բարձրաստիճան ղեկավարները հաւաստիացրել են, որ ծառայութեան բոլոր ստորաբաժանումներն անխափան գործում են եւ պատրաստ են լիարժէքօրէն կատարել տրուած բոլոր յանձնարարականները:

## ՉԵՆ ՎԱԽԵՆՈՒՄ

*A1+*, 17:22

Ազատութեան Հրապարակում այսօր առաւօտից Լեւոն Տէր-Պետրոսեանի նախաձեռնած պայքարը շարունակւում էր:

Հաւաքուածների մէջ հանդիպեցինք 62-ամեայ Պետրոս Ջալաղեանին, որը նախկին ադրբէջանաբնակ է, սակայն 45 տարի է ապրում է Հայաստանի Բանանց գիւղում: Իր ասելով՝ շատ է ցանկացել գիշերը մնալ հրապարակում, սակայն առողջական խնդիրներ ունի՝ ինսուլտ է ստացել ժամանակին, սակայն առաւօտից գալիս ու մնում է մինչեւ երեկոյեան ուշ ժամերի:

Ներկայ իշխանութիւններին նա չի ընդունում, քանի որ նրանք առաջին օրուանից խախտել են օրէնքը: «Մենք ազգովին մի մարդու պէս կանգնած ենք ու յետ գնալու տեղ չունենք. թշնամին մեր տներն է մտել արդէն: Վախի մթնոլորտ ներշնչում էին, բայց Լեւոն Տէր-Պետրոսեանը բոլորին ոգեւորեց եւ այսօր նրա կողքին համախմբուած՝ վախեցող էլ չկայ՝ ոչ մի կրիմինալից, ոչ մի սափրազլուխից: Մենք կանգնելու ենք, որ մեր երիտասարդներին ոչ մէկը չկպչի: Տարեցներով ենք առաջ գնալու, եթէ պէտք լինի», - *Ա1+*-ն վստահեցնում էր նա:

*Կանչ* թերթի նախկին խմբագիր Հմայեակ Պետրոսեանը ոգեւորուած էր ծաւալուած պայքարով եւ նշեց, որ 10 տարուց աւելի լինելով այս շարժման ակունքներում՝ այսօր հպարտ է, որ իր նմանները հազարապատիկ աւելացել են: «Այն, ինչ երազում էինք, ինչի համար պայքարում էինք, այսօր այստեղ՝ Ազատութեան Հրապարակում արդիւնքները երեւում են: Այսօր հպարտանում ու ուրախանում ես, որ իբրեւ մասնակից՝ մի փոքրիկ կաթիլն էլ դու ես՝ բոլորից նուազ, բայց բոլորի հետ, բոլորից քիչ, բայց բոլորի հետ, թէկուզ յետին շարքերում, բայց միեւնոյն է՝ բոլորի հետ: Սա մի շարասիւն է, բայց դրա բոլոր մասերում էլ պատուաբեր է գտնուել», - *Ա1+*-ին ասաց նա:

Նա ծաւալուած պայքարի բոլոր օրերին այստեղ է անցկացրել եւ մի օր էլ գիշերել: Այս ընթացքում նա նոյնիսկ չի էլ հասցրել յոգնել, քանի որ համոզուած է, որ «պայքարի մէջ յոգնել չկայ, միայն նոր լիցքեր եւ ուժ ես ստանում»: «Բա էլ որտե՞ղ պէտք է ես լինէի: Հրապարակը մշտապէս մեզանով լցուած է եւ այդպէս պիտի լինի այնքան ժամանակ,

ինչքան այս հրապարակը կը կոչուի Ազատութեան Հրապարակ», - նշեց պարոն Պետրոսեանը:

60-ամեայ ինժեներ-էներգետիկ Յովիկ Յովհաննիսեանը գիշերը մինչեւ 24:00-ն Ազատութեան Հրապարակում է եղել: «Իմ առողջական վիճակը ու տարիքը չի ներում, թէ չէ կը մնայի հաստատ, խնդիր չկայ: Մինչեւ վերջ կանգնելու եմ, թէկուզ մի տարի, մինչեւ հեռանան այս իշխանութիւնները», - ասում է նա: Նա համոզուած է, որ մենք պարտադիր յաղթելու ենք եւ արդէն յաղթել ենք: «Մենք մեր յաղթանակն ենք արդէն տօնում եւ տօնելու ենք մինչեւ կրիմինալը հեռանայ Հայաստանից: Ուրիշ վճիռ չկայ, նրանց պէտք է պատժել օրէնքի խիստ ձեւով», - կարծում է Յովիկ Յովհաննիսեանը:

## ԵՒՐՈՊԱՅԻՑ ՉԷԻՆ ԿԱՐՈՂԱՆՈՒՄ ԶԱՆԳԵԼ

*A1+,* 17:23

Յատկապէս փետրուարի 19-ին, 20-ին, 21-ին երեկոյեան ժամը 22:00-ից յետոյ Ֆրանսիայից, Բելգիայից, Գերմանիայից ուղղակի հնարաւոր չի եղել զանգ կատարել Հայաստան:

*Ա1+*-ը ահազանգեր է ստացել արտասահմանում գտնուող մեր հայրենակիցներից, որ իրենք չեն կարող քաղաքային հեռախօսակապով խօսել Հայաստանում գտնուող իրենց մտերիմների հետ: Զանգահարելիս նրանք այնպիսի տպաւորութիւն են ստացել, որ հեռախօսակապի վրայ արգելք է դրուած:

ԱրմէնՏէլ ընկերութեան մամուլի պատասխանատու Նաիրա Նազարեանը *Ա1+*-ին ասաց, որ դրսից եկող զանգերն իրենք չեն կարող վերահսկել: Այսինքն՝ դա ենթադրում է, որ որեւէ արգելք ԱրմէնՏէլի կողմից չի կարող դրուել: «Իսկ համակարգի կողմից խափանումներ ոչ այդ, ոչ միւս օրերին չեն գրանցուել», - նշեց մամուլի պատասխանատուն:

Այս դէպքում ԱրմէնՏէլը եւրոպական երկրների բնակիչներին խորհուրդ է տալիս դիմել տեղական հեռախօսային օպերատորին, քանի որ միգուցէ նրանց մօտ խնդիրներ կան:

## ԻՆՉՈՒ ԵՆ ԼՌՈՒՄ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿՈՉՈՒԱԾՆԵՐԸ

ԲԱԳՐԱՏ ԽԵՐՈՅԵԱՆ
ՀՀ ԳԱԱ գիտաշխատող

*Lragir.am,* 17:30

Այսօր, երբ ժողովուրդը դուրս է եկել ստի ու կեղծիքի, կաշառակերութեան ու անբարոյականութեան դէմ (փառք Աստծոյ, երեւի թէ սկսեմ հաւատալ նաեւ Աստծոյ գոյութեանը՝ ի հակադրութիւն Հայ Առաքելական Եկեղեցու սպասաւորների), մինչեւ օրս պոռոտախօս ու պնակալեզ մտաւորական յորջորջուողները խուլ ու համրերի են կերպարանափոխուել: Որտեղ է հայ ժողովրդի ազգային արժէք յորջորջուող Գիտութիւնների Ազգային Ակադեմիան: Որտեղ են Ազատութեան Հրապարակում հաւաքուած հարկատուների հաշուին բարգաւաճող եւ իրենց անուանի գիտնական ներկայացնող, բայց իրականում միջակութիւնից էլ ցածր, պոռոտախօս ու տխտղոսաւոր գիտնականները: Ինչու չեն խօսում: Դեռեւս չեն կողմնորոշուել, անշուշտ: Քանի որ կամ ծեր են հիմնականում, կամ էլ առնետավազքի վարպետներ, Շահինեանից սկսած եւ Թոչունեանով վերջացրած: Չէ՞

որ դուք էք յաւակնում ազգի սերուցքի տիտղոսին։

## ԴԱՒԻԹ ԶԱԴՈՅԵԱՆԸ ԴՈՒՐՍ Է ԵԿԵԼ ՀՀԿ ԽՈՐՀՐԴԻՑ

*Lragir.am,* 17:53

Արարատի նախկին մարզպետ, նախկին պետնախարար Դաւիթ Զադոյեանը դուրս է եկել Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան խորհրդի կազմից։

## ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀՆԵՐԸ ՎԱՏԱՆՈՒՄ ԵՆ ԿԱՄ ՓԱԽՉՈՒՄ

*A1+,* 17:54

Թիւ 5 ընտրատեղամասային ընտրական յանձնաժողովում Ժառանգութեան անդամ Զոյա Թադեւոսեանը այսօր առաւօտեան ժամը 10-ից փորձում է մասնակցել վերահաշուարկի գործընթացին։ Զոյա Թադեւոսեանը *Ա1+*-ին յայտնեց, որ այսօր նախատեսուած էր վերահաշուարկ կատարել Դաւիթաշէն, Արաբկիր, Քանաքեռ-Զէյթուն համայնքների մի քանի ընտրական տեղամասերում։

«Դիմումները հերթականութեան գրանցուել են, սակայն քանի որ նրանք գիտեն, թէ որ տեղամասերում են եղել կոպիտ խախտումներ, իսկ այդ տեղամասերն են՝ 5/27, 5/21, ուստի յանձնաժողովի ոչ ընդդիմադիր անդամները ուղղակի միտումնաւոր թաքցրին գրանցամատեանները եւ սկսեցին բացել այն ընտրական տեղամասերի փաթեթները, որտեղ խախտումներն աւելի քիչ էին։ Յետոյ յանձնաժողովի իշխանական ներկայացուցիչները սկսեցին հերթով վատանալ, ու ես հասկացայ, որ ինչ-որ բան այն չէ։ Այսօր առաջին հերթին պէտք է բացուէր 5/27-ը, որտեղ ամենամեծ, աղաղակող եւ այլանդակ փաստեր են։ Այս պահին չկայ յանձնաժողովի նախագահը, քարտուղարը։ Մնացել է միայն յանձնաժողովի նախագահի տեղակալը»։

Զոյա Թադեւոսեանը *Ա1+*-ին նաեւ տեղեկացրեց, որ այս պահին բացել են 5/5 ընտրական տեղամասերի քուէաթերթիկների պարկը եւ Սերժ Սարգսեանի ձայների վրայ աւելացուած են գտել 27 անվաւեր քուէարթերթիկներ։ Զոյա Թադեւոսեանը դժուարացաւ ասել, թէ երբ կը վերադառնայ 5/27 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահը, որ հեռացել է եւ կազմալուծել աշխատանքը։ Ի դէպ, Դաւիթաշէնի թիւ 5/27 յանձնաժողովի նախագահը Արշակ Մանուկեանն է։ Յիշեցնենք, որ ընտրութիւնները կեղծելու համար արդէն կայ տեղամասային յանձնաժողովի նախագահի ձերբակալման մէկ դէպք՝ թիւ 9/31 ընտրական տեղամասում։

## ԼՔԵԼ Է ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆՆԵՐԻՆ

*A1+,* 17:59

Նիկոլ Փաշինեանը քիչ առաջ յայտարարեց, որ այսօր Հանրապետական Կուսակցութեան խորհրդի նիստի ժամանակ կուսակցութեան խորհրդի անդամ Դաւիթ Զադոյեանը դուրս է եկել նիստից եւ չի վերադարձել. «Նա ընդհանրապէս լքել է Հանրապետական Կուսակցութիւնը, եկէք ողջունենք նրան», - ասաց Նիկոլ Փաշինեանը։

## ԱՅՆ, ԻՆՉ ԿԱՏԱՐՒՈՒՄ ԷՐ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*A1+,* 18:02

**«ԽԵԼՔԻՆ՝ ԽԵԼՔՈՎ, ՈՒԺԻՆ՝ ՈՒԺՈՎ»**

Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանը շնորհաւորեց Ազատութեան Հրապարակում հաւաքուած տղամարդկանց տօնը եւ ասաց, որ հանրահաւաքին «աջակցում» է նաեւ բնութիւնը. «Դուք ինքներդ էլ տեսնում էք, թէ այսօր ինչպիսի արեւոտ եղանակ է», - ասաց Արամ Կարապետեանը: Նա յայտարարեց, որ պէտք է պայքարեն այնքան ժամանակ, մինչեւ Հայաստանում կայանան արդար ընտրութիւններ, իսկ Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը հեռանան քաղաքական դաշտից. «Նրանք իրենց քաղաքական հակառակորդներին թշնամի են համարում եւ ոչնչացնում են նրանց, որովհետեւ կրիմինալի վրայ են հիմնուած»: ՆԺԿ նախագահը նաեւ յայտարարեց, որ իրենք կարող են հակառակորդին դիմագրաւել ցանկացած եղանակին. «Մենք պատրաստ ենք պատասխանել խելքին խելքով, դուխին՝ դուխով եւ ուժին՝ ուժով»: «Հիմա, հիմա, հիմա», - հնչեց մարդկանց արձագանքը:

**ՄԱԿ-ԻՑ ԷԼ ԵՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ ՄԻԱՆՈՒՄ**

Այսօր Ազատութեան Հրապարակում ելոյթ ունեցաւ նաեւ Միացեալ Աշխատանքային Կուսակցութեան խորհրդի անդամ Թամարա Գէորգեանը, ով յայտարարեց, որ թէեւ կուսակցութեան նախագահ Գուրգէն Արսէնեանն իր մտերիմների հետ որոշել է սատարել Սերժ Սարգսեանին, ՄԱԿ-ի շատ անդամներ հէնց սկզբից էլ յայտարարել են, որ կանգնելու են առաջին նախագահի կողքին. «Սա մեր իրաւունքի պայքարն է, սա մեր հոգու պայքարն է», - յայտարարեց Թամարա Գէորգեանը: Նա նաեւ կոչ արեց բոլոր տղամարդ նախարարներին «թքել պաշտօնի վրայ եւ միանալ համաժողովրդական պայքարին»:

**«ԱՄԵՆԱՄԵԾ ԴՊՐՈՑՆ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՆ Է»**

Պահպանողական Կուսակցութեան ղեկավար ՄիքայէլՀայրապետեանը կոչ արեց մանկավարժներին եւ ուսանողներին դասադուլ անել այնքան ժամանակ մինչեւ ճանաչ-ւի Լեւոն Տէր-Պետրոսեանի յաղթանակը. «Ուսումնական հաստատութիւններում լոյս չկայ, այսօր լոյսն այստեղ է ճառագած, ամենամեծ դպրոցն Ազատութեան Հրապարակն է», - յայտարարեց Միքայէլ Հայրապետեանը:

**ԽՕՍԵՑ ՎԱՐԴԱՆ ՄԱԼԽԱՍԵԱՆԸ**

Հանրահաւաքի ժամանակ ուղիղ հեռախօսակապով ելոյթ ունեցաւ ազատազրկման դատապարտուած ազատամարտիկ Վարդան Մալխասեանը, ով ոգեւորեց հրապարակում հաւաքուածներին՝ կոչ անելու մինչեւ վերջ կանգնել առաջին նախագահի կողքին. «Պայքար, պայքար մինչեւ վերջ», - հնչեց ազատամարտիկի ձայնը, որից յետոյ մարդիկ վանկարկեցին «Վարդան, Վարդան»:

**ՀՐԱԺԱՐՒՈՒՄ ԵՆ ՀԱՅ ԱՍՏՂԵՐԻ ՀԱՄԵՐԳԻՆ ԳՆԱԼ**

Նիկոլ Փաշինեանը Ազատութեան Հրապարակում յայտարարեց, որ Լոս Անջելէսում բնակուող հայերը չեն ցանկանում մասնակցել օրերս ԱՄՆ-ում կայանալիք այն հայ երգիչների համերգին, ովքեր սատարում էին Սերժ Սարգսեանին. «Մարդիկ գնած տոմսերը ետ են վերադարձրել», - յայտարարեց Նիկոլ Փաշինեանը:

**ՀԱՆՈՒՄ ԵՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՀԱՄԱՐԱՆԻՇՆԵՐԸ**

Ըստ Նիկոլ Փաշինեանի՝ իշխանութիւնները հանում են հանրահաւաքին եկած աւտոմեքենաների համարանիշները: «Քոչարեանի եւ Սերժի մտքի գազաթնակէտն է», -

այսպէս որակեց Նիկոլ Փաշինեանը այդ քայլը եւ նշեց, որ հաւանաբար այդ համարանիշները «գողդ» են եղել, եւ «Սերժիկն ու Ռոբերտը հանել են, որ յետոյ ծախեն»:

## «ԵՒ ԹՈՂ ՓՈՐՁԻ ՈՐԵՒԷ ՄԷԿԸ...»

*A1+,* 18:51

Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանը ներկաներին յայտարարեց, որ եթէ ուզում են հասնել յաղթանակի, ուրեմն պէտք է չհեռանան այս հրապարակից:

Ըստ նրա՝ եթէ ուզում են հասնել նպատակի, այս հրապարակը գիշեր-ցերեկ պէտք է լինի լիքը մինչեւ պայքարի յաղթական աւարտը: Նա նշեց, որ ինչպէս նախորդ գիշերներին այսօր էլ, վաղը եւ որքան պահանջուի ինքն էլ մնալու է Ազատութեան Հրապարակում ու յայտարարեց ամբողջ աշխարհի առջեւ.

«Այս հրապարակի դէմ կատարուած որեւէ ոտնձգութիւն ոտնձգութիւն է ՀՀ նախագահի թեկնածուի անձի անձեռնմխելիութեան դէմ, ի դէմս որի ես եմ հանդէս գալիս, - յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանը, - Եւ թող փորձի որեւէ մէկը ոտնձգութիւն կատարի այս հրապարակի եւ Ձեր նախագահի անձեռնմխելիութեան նկատմամբ»:

«Կարող եմ հպարտութեամբ եւ պատասխանատուութեամբ նշել, որ մեր ծրագրերը մենք կատարել ենք ամենաանբիծ եւ ուղղագիծ ձեւով, չշեղուելով բացարձակապէս մեր պլաններից: Մեզ փորձել են շեղել, փորձել են պրովոկացիաների միջոցով՝ Թալինում, Արտաշատում, բայց մենք հասկացել ենք, որ դա մեր խաղը չէ, եւ մենք չենք ներքաշուի իրենց խաղի մէջ», - հաւաստել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Խօսելով Արեւմուտքի արձագանքի մասին, Լեւոն Տէր-Պետրոսեանը ասել է. - «Արեւմուտքը թքած ունի մեր դեմոկրատիայի վրայ, Արեւմուտքը անկեղծ չէ, որ ուզում է Հայաստանում դեմոկրատիա հաստատել: Նրան պէտք է թոյլ, ոչ լեգալ, բռնապետական իշխանութիւն, որպէսզի մշտապէս լծակներ ունենայ»:

## «ՈՉ ՍԵՐԺԻԿ, ՈՉ ԷԼ ՌՈԲԵՐՏ»

*A1+,* 19:00

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակ վերադարձան երթին մասնակիցները, որից յետոյ մէկ րոպէ լռութեամբ յարգեցին ԺՈՒԿ-ի նախագահ Մանուկ Գասպարեանի յիշատակը, ում մահուան 40-րդ օրն է այսօր լրանում: Այնուհետեւ ելոյթ ունեցաւ ժողովրդական դերասան Երուանդ Մանարեանը. «Մտաւորականութիւնը սատարում է առաջին նախագահին», - յայտարարեց Երուանդ Մանարեանը եւ կոչ արեց այսուհետ նորածիններին չկնքել Սերժ կամ Ռոբերտ անունով, այլ հայ ժողովրդի զաւակներին կոչել Հայկ՝ Հայկ Նահապետի անունով:

## ԳՈՂԱՑԱՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ 160 ՁԱՅՆ

*A1+*, 19:09

Նախագահի թեկնածու Արամ Յարութիւնեանի պահանջով, վերահաշուարկ էր իրականացւում 13/10 ընտրատեղամասում: Այն պահին, երբ *Ա1+*-ը ժամանեց ընտրատարածքային ընտրական յանձնաժողով, տարածքը լքում էր Սերժ Սարգսեանի վստահուած անձ ներկայացած Հրաչ Այվազեանը՝ ձեռքին քուէաթերթիկների տրցակը: Երբ տեսաւ մեզ, աւելի արագ սկսեց վազել, իսկ մի փոքր այն կողմ կանգնած ոստիկանները չշարժուեցին

անգամ իրենց տեղերից:

Չնայած սրան՝ յանձնաժողովի անդամներն ու նախագահը ասացին, թէ նման բան չեն տեսել եւ հնարաւոր էլ չէ: Մինչդեռ մի քանի վայրկեան անց պարզուեց, որ տեղամասից անհետացել են Լեւոն Տէր-Պետրոսեանի քուէաթերթիկների փաթեթը: Դա արձանագրեց նաեւ ԵԱՀԿ դիտորդը, որը գտնւում էր վերահաշուարկի վայրում: Վերջինս յանձնաժողովի նախագահից խնդրում էր, որ իրենց ցոյց տան Լեւոն Տէր-Պետրոսեանի փաթեթը, ինչը մի քանի րոպէ առաջ գտնւում էր սեղանի աջ անկիւնում:

Էրեբունի համայնքի թիւ 13 ընտրատարածքային յանձնաժողովի նախագահ Սէյրան Մկրտումեանը ասաց, որ ինքը չի տեսել, թէ որտեղ է այն եղել: Դրա համար փաթեթի բացակայութիւնը պատճառաբանեցին այն հանգամանքով, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի քուէաթերթիկները դրուած են եղել Սերժ Սարգսեանի փաթեթի մէջ, իսկ փաթեթ ընդհանրապէս չի բերուել ԸԸՅ: «Ես չեմ կարող ասել, կայ թէ չկայ: Կարող է պատահականօրէն խառը դրուած լինի, ես հիմա չեմ կարող ասել: Այս պահին չեմ յիշում, սակայն ըստ օրէնքի պէտք է լինէր: Չեմ տեսնում, չկայ: Չեմ տեսել», - արդարացաւ 13/10 ընտրատեղամասային յանձնաժողովի նախագահ Սարգիս Փալթաջանեանը, իսկ աւելի ուշ յաւելեց. «Կարող է մէկը օգտագործել է այդ փաթեթը այստեղ: Ասենք որպէս աղբի թուղթ»:

Սէյրան Մկրտումեանն էլ 10-րդ ընտրատեղամասում անճշտութիւնների մեծ թիւը մեկնաբանեց այսպէս. «Մեկնաբանւում է գերյոգնածութեամբ, ընտրողների թւով՝ 1400 ընտրող է մասնակցել: Ամսի 18-ից սկսած ցիկլի մէջ է մտնում, հնարաւոր է, որ նման բաներ էլ լինի: Վերահաշուարկը դրա համար է, որ ամէն ինչ պարզուի: Յանձնաժողովը դա միտումնաւոր չի արել»: Իսկ ո՞վ էր միջանցքով վազող Հրաչ Այվազեանը: «Յիշում եմ եւ ճանաչում եմ: Նա Սերժ Սարգսեանի վստահուած անձն է, բայց պնդում եմ, որ չի տարել որեւէ փաթեթ: Այսքան այստեղ նստած ինչ-որ մէկը պէտք է բան տանի՞: Վերջինս չի գրանցուած տեղում որպէս վստահուած անձ, բայց պէտք է գրանցամատեանը նայել, թէ որ տեղամասում է եղել վստահուած անձ», - ասաց Սէյրան Մկրտումեանը:

Այսպիսով՝ 13 ընտրատարածքի յանձնաժողովի նախագահը քանի որ այդպէս էլ չկարողացաւ ետ վերադարձնել գողացուած քուէաթերթիկների փաթեթը, նոր փաթեթ վերցրեց եւ մէջը տեղաւորեց Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկուած մնացած թերթիկները: Ի դէպ, մինչ *Ա1+*-ի տեսախցիկը նկարում էր վերահաշուարկը, երկու մարդ՝ մէկը հաստավիզ, դրսում հետեւում էին, թէ ինչ է տեղի ունենում: Երբ նրանց խնդրեցինք ներկայանալ, թէ ովքեր են, ասացին, որ անվտանգութեան աշխատակիցներ են, իսկ երբ փորձեցինք տեսախցիկով նկարել, վերջիններս մեծ արագութեամբ փախուստի դիմեցին:

Նշենք, որ վերահաշուարկի շնորհիւ պարզուել է, որ Սերժ Սարգսեանի 1005 ձայներից 165-ը իրեն չեն պատկանում: Նրանն են 840-ը, 4-ը անվաւեր են, մէկը Արման Մելիքեանինն է, իսկ մնացած 160-ը Լեւոն Տէր-Պետրոսեանինը: Սակայն քանի որ մի տրցակ քուէաթերթիկ առեւանգուեց Հրաչ Այվազեանի կողմից, տեղում եղած քուէաթերթիկների արդիւնքով Լեւոն Տէր-Պետրոսեանի ձայները այստեղ չփոխեց, մնաց 146, նոյնիսկ՝ ոչ 160:

Երեք ձայն աւելացաւ Արթուր Բաղդասարեանին, իսկ Վահան Յովհաննիսեանի ձայները, որ նշուած էին 53, պարզուեց ընդամէնը 38-ն էին:

## ՇՈՒՏՈՎ ԿԸ ՄԻԱՆԱՆ ՆԱԵՒ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԳԼՈՒԽՆԵՐ

*Lragir.am*, 19:16

Փետրուարի 23-ին, համազգային Շարժման շուրջօրեայ հանրահաւաքների երրորդ օրը ելոյթ ունենալով հանրահաւաքի հարիւր հազարաւոր մասնակիցների առաջ, նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ համազգային շարժմանն իրենց աջակցութիւն են յայտնում այլ պետութիւնների ազատական քաղաքական ուժերը, այդ թւում Ռուսաստանի աջ ուժերի Միութիւնը: Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է նաեւ, որ դրանից առաջ Շարժմանն իրենց աջակցութիւն էին յայտնել Բելոռուսի նախկին առաջնորդ Շուշկեւիչը եւ Բուլղարիայի նախկին նախագահը: Լեւոն Տէր-Պետրոսեանը 100 տոկոս վստահութիւն է յայտնել, որ Համազգային Շարժմանն աջակցութիւն կը յայտնեն նաեւ պետութիւնների գլուխներ, քանի որ նրանք չեն կարող հաշուի չառնել ժողովրդի արդար պայքարը: Այդ իմաստով, Լեւոն Տէր-Պետրոսեանը նկատել է, որ Շարժումն ունի երկու խնդիր, որը բխում է իշխանութեան ներկայիս մարտավարութիւնից: Իսկ իշխանութեան մարտավարութիւնը Լեւոն Տէր-Պետրոսեանը բնութագրել է երկու հիմնական նպատակի կտրուածքով: Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, իշխանութեան այդ նպատակներն են, վախեցնել հասարակութեանը եւ նաեւ ոգեշնչել իւրայիններին: Դրա համար, իշխանութիւնը տարածում է տեղեկութիւններ, թէ իբր պատրաստւում են հանրահաւաքները ուժով ցրելուն: Լեւոն Տէր-Պետրոսեանն իշխանութեան այդ մարտավարութիւնը համարել է բնական, ասելով, որ երկու բեւեռ եթէ պայքարում են, ապա ամէն մէկն ունի պայքարի իր սցենարը:

Կոնկրէտ իրենց սցենարի մասին, Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ հինգ ամիս է, ինչ անշեղ իրականացնում են իրենց սցենարը, եւ չնայած իրենց ուժային բախումների մէջ ներքաշելու իշխանութեան փորձին, հասկանում են, որ դա իրենց խաղը չէ, եւ խուսափել են ու յաջողելու են խուսափել այդ բախումների մէջ ներքաշուելուց: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ ցանկացած երկրում, ուր պաշտպանութեան փոխնախարարը եւ Գլխաւոր Դատախազի տեղակալը յայտարարէին ժողովրդական շարժմանը միանալու մասին, դա կը դիտուէր որպէս պատմական իրադարձութիւն, մինչդեռ հայ հասարակութիւնն ու իշխանութիւնը դժբախտաբար այդ երեւոյթը չեն ընկալում պետականութեան տեսանկիւնից: Մինչդեռ Մոսկուայի, Վաշինգտոնի, Փարիզի եւ Բեռլինի համար, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, այդ փաստը Հայաստանում իրավիճակի մասին պատկերացման փայլուն աղբիւր է: «Պետական մեքենան ջարդւում է», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Այդ տեսանկիւնից նա նկատել է, որ Ռոբերտ Քոչարեանը Մոսկուայում յայտարարել է, թէ մի քանի հարիւր մարդ է հաւաքուած հրապարակում, որոնք մի քանի օր գուցէ պարեն, երգեն, յետոյ կը յոգնեն ու կը գնան տուն: Լեւոն Տէր-Պետրոսեանն ի պատասխան ասում է, որ Ռոբերտ Քոչարեանն իր գաւառամտութեամբ փորձում է մոլորեցնել 500 տարուայ պետականութեան պատմութիւն ունեցող Ռուսաստանին, որն անկասկած իր բազմաթիւ աղբիւրներն ունի Հայաստանում իրավիճակի մասին պատկերացում կազմելու համար, եւ եթէ Ռոբերտ Քոչարեանը փորձում է իր խօսքով մոլորեցնել 500-ամեայ պետականութիւն ունեցող Ռուսաստանին, ապա ցոյց է տալիս, որ ինքը խոշոր փիլիսոփայութեան կրող է, հեգնանքով նկատել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Նա ժողովրդին կոչ է արել ամէն մէկն իր տեղում, իր հարազատների ու ընկերների

շրջանում եղած պաշտօնեաներին կոչ անել միանալ համաժողովրդական շարժմանը, ոչ թէ ծառայել այս իշխանութեանը, որը իր կառավարման տարիների ընթացքում վեր է հանել ազգի տականքը: Տէր-Պետրոսեանը նաեւ յայտարարել է, թէ իշխանութիւնը թող չփորձի ուժ կիրառել Ազատութեան Հրապարակի հանդէպ: Այդ ուժի կիրառումը Լեւոն Տէր-Պետրոսեանը դիտում է որպէս ոտնձգութիւն իր դէմ: «Թող փորձի որեւէ մէկը որեւէ ուժ կիրառել այս հրապարակի եւ ձեր նախագահի դէմ», հարթակից յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## «ՄԵՐ ՇԱՐԺՈՒՄԸ ՕՐԻՆԱԿ Է ԾԱՌԱՅԵԼՈՒ ԲՈԼՈՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՀԱՄԱՐ»

*A1+*, 19:21

Լեւոն Տէր-Պետրոսեանը քիչ առաջ Ազատութեան Հրապարակում յայտարարել է. «Մենք ստացել ենք բազմաթիւ միջազգային ազատական-դեմոկրատ յայտնի քաղաքական եւ մտաւոր գործիչների աջակցութեան ուղերձները մեր պայքարին: Մենք ստացել ենք ուղերձներ Բելոռուսիայի Գերագոյն Խորհրդի նախկին նախագահ Շեւչեւիչից եւ Բուլղարիայի առաջին դեմոկրատ պրեմիէր-մինիստր Դիմիտրովից: Դուք վստահ եղէք՝ այս ուժերի թիւը գնալով աճելու է, որքան մեր պայքարը կանգուն մնայ, այս աջակցութիւնը մեծանալու է, հզօրանալու է: Հարիւր տոկոսով ես վստահ եմ, շուտով նրանց են միանալու նաեւ այսօր գործող պետական գլուխներ, նախագահներ, որովհետեւ մեր շարժումը արժանի է ամենայն յարգանքի, մեր շարժումը օրինակ է ծառայելու բոլոր ժողովուրդների համար, որ ժողովուրդը կանգնի եւ մինչեւ վերջ պայքարի յանուն արդար գործի, այդ գործը չի կարող խափանուել: Մեր շարժումը նաեւ ոգեշնչման աղբիւր է լինելու բազմաթիւ երկրների համար, որտեղ ազատականները թւում են ընկճուած, անելանելի վիճակում, մեր պայքարը նրանց էլ է ոգեւորելու»:

**«ՅԱՋՈՂՈՒԵԼ Է ԵՒ ԿԸ ՅԱՋՈՂՈՒԻ»**

Հասարակութեան մէջ տարածուող շշուկների վերաբերեալ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է. «Այսօր դուք բազմաթիւ շշուկներ էք լսում, թէ իբր իշխանութիւնները ինչ-որ բռնութիւններ են ուզում գործադրել ժողովրդի դէմ: Ես բացատրեմ այդ երեւոյթի մեխանիզմը. իհարկէ, երբ պայքարի են ելնում երկու բեւեռ, իւրաքանչիւրը ունի իր ծրագիրը, իր սցենարները, մենք աշխատում ենք մեր սցենարով, մեր ծրագրով եւ ես ուզում պատասխանատուութեամբ նշել, որ 5 ամսուայ մեր պլանները մենք կատարել ենք ամենաանբիծ եւ ուղղագիծ ձեւով՝ բացարձակապէս չշեղուելով մեր ծրագրերից: Փորձել են շեղել, փորձել են բողոքարկումների միջոցով Թալինում, Արտաշատում, Չարենցաւանում եւ մղել կոշտ բախման միջոցով, բայց մենք հասկացել ենք, որ դա մեր խաղը չէ եւ մենք չենք ներքաշուի նրանց խաղի մէջ: Դա մեզ մինչեւ հիմա յաջողուել է եւ այսուհետ նոյնպէս կը յաջողուի»:

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔԸ ՈՂՋՈՒՆԵԼ Է ԲԱԿՕ ՍԱՀԱԿԵԱՆԻՆ

*Lragir.am*, 19:31

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը փետրուարի 23-ի հանրահաւաքին նորից անդրադարձել է այն խնդրին, որ ներկայիս իշխանութիւնը ստորութիւն է գործել սեպ խրելով հայաստանցիների ու ղարաբաղցիների միջեւ: Սակայն, Լեւոն Տէր-

Պետրոսեանը ողջունել է այն կեցուածքը, որ որդեգրել է ԼՂՀ ներկայիս նախագահ Բակօ Սահակեանը: Լեւոն Տէր-Պետրոսեանի գնահատմամբ, Բակօ Սահակեանի կեցուածքը չէզոք է ու այդ տեսանկիւնից ողջունելի, քանի որ ԼՂՀ նախագահի թոյլ չի տուել Հայաստանի ներքին գործերին ղարաբաղցիների որեւէ միջամտութիւն, ինչի հակառակն էր 2003 եւ 2004 թուականներին, երբ ԼՂՀ նախագահն էր Արկադի Ղուկասեանը եւ Ղարաբաղից Հայաստանի իշխանութիւնը քրէական տարրեր ու զինուժ էր բերում ժողովրդին ճնշելու համար: Լեւոն Տէր-Պետրոսեանն այդ համեմատութեան մէջ ողջունելով Բակօ Սահակեանի չէզոքութիւնը, ողջոյնի կոչ է արել նաեւ հանրահաւաքի հարիւր հազարաւոր մասնակիցներին, ովքեր ի պատասխան Լեւոն Տէր-Պետրոսեանի կոչի, ծափահարութիւններով ողջունել են ԼՂՀ նախագահ Բակօ Սահակեանին:

## ԵՐԹԻ ԷԻՆ ԴՈՒՐՍ ԵԿԵԼ ԿԱՆԱՅՔ

*A1+*, 19:39

Կանայք պահանջում են *Հ1*-ի օրինական գործունէութիւն եւ հանրային հեռուստառադիոընկերութեան խորհրդի նախագահի հրաժարականը: Նրանք երթով Ազատութեան Հրապարակից գնացին մինչեւ ռադիոտուն, ապա հակառակը:

Երթին մասնակցում էին հազարաւոր կանայք, իսկ նրանց շրջապատել էին հիմնականում երիտասարդ տղաները, որոնք ձեռքերը բռնած շրջան էին կազմել ու կանանց առել մէջը:

«Մենք պահանջում ենք ՀՀՌԸ խորհրդի նախագահի հրաժարականը, *Հ1* հեռացիր», - այս խօսքերով կանանց առաջնորդում էր ՍԴՀԿ նախագահ Լիւդմիլա Սարգսեանը, ում խօսքերին բուռն արձագանքում էին ներկայ կանայք՝ «հիմա» «հեռացիր» կոչերով: Նրա կողքին էր կանգնած նաեւ ՀԺԿ մամուլի քարտուղար Ռուզան Խաչատրեանը:

Ռադիոտան շէնքի մօտ քաղաքային ոստիկանութեան յատուկ ջոկատայիններն էին կանգնած, որոնք մեծ շառավղով փակել էին ռադիոտան մուտքը:

«Ամօթ», «ամօթ» էին գոռում հաւաքուած կանայք: ԵՊՀ-ի մօտով անցնելիս նրանց կոչերը սաստկացան, իսկ ահա մետրոյի Երիտասարդականի կանգառում կանգնածներին գոռում էին «միացիր», «հիմա»:

«Եթէ Արմէն Ամիրեանը մեզ արհամարհեց նաեւ իր կնոջը, քրոջը, դստերը, երբ կանայք են ոտքի կանգնում, արդէն վերջն է», -*Ա1+*-ին ասաց Վանաձորցի Սուսաննան, ով ծանր դրօշ էր թափահարում ողջ երթի ընթացքում:

«Այս երթը նշանակում է, որ մենք մեր եղբայրների, ամուսինների, որդիների կողքին ենք, էլ տուն չենք գնայ, մինչեւ արդարութիւն չհաստատուի», -*Ա1+*-ին ասաց մէկ այլ կին ակտիւիստ:

«Եթէ հազարաւոր կանայք են խառնուել գործին, կասկածից վեր է, որ յաղթելու ենք», - ասաց ուսանողուհի Աննան:

Նշենք, որ ողջ երթի ընթացքում կանանց ջերմ էին ընդունում եւ նրանց կոչերին արձագանքում բազմաթիւ մարդիկ, շատ վարորդներն էլ միացնում էին իրենց ազդանշանները եւ բռունցքներով պայքար ցոյց տալիս:

Ազատութեան Հրապարակ հասնելիս, հրապարակում ներկայ տղամարդիկ ջերմ ծափողջոյններով դիմաւորեցին իրենց բառերով ասած՝ «յաղթանակած կանանց»:

Արդէն հրապարակում էլ ելոյթ ունեցաւ ՀԺԿ մամուլի քարտուղար Ռուզան

Խաչատրեանը, ով դիմեց հաւաքուածներին «ՀՀ ազատ քաղաքացիներ» կոչով եւ ասելով, որ իրենց՝ կանանց պատգամը այլեւս իրողութիւն է:

«Եթէ մենք ուզում ենք մեր թոռներին ազատ քաղաքացի դաստիարակել, ուրեմն խօսքի ազատութիւն պիտի լինի եւ նրանք պէտք է հրաժարական տան: Մենք ուզում ենք, որ մեր երեխաները ստանան հայեցի դաստիարակութիւն, մուղամներ ու խուժանի, անգրագէտ փողոցայինի խօսք չլսեն հեռուստատեսութեամբ ու մեր արդարացի պահանջով յաղթել ենք», - ասաց ներկաներին նա, որին բուռն արձագանքեցին բոլորը. «հիմա», «հիմա»:

## ՀԵՐԹԱԿԱՆ ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻ ԴԷՄ (video)

*A1+*, 20:02

Այսօր հերթական բռնութիւնն է տեղի ունեցել լրագրողների պատգամաւորների, ԿԸՅ-ում Ժառանգութիւն խմբակցութեան անդամի նկատմամբ: Դաւիթաշէնի 5/21 տեղամասում այսօր առաւօտից պէտք է իրականացուէր վերահաշուարկի գործընթաց, սակայն 5/21-ի փոխարէն վերահաշուել էին այլ տեղամասի քուէաթերթիկները, որոնց արդիւնքում եւս նուազել էին Սերժ Սարգսեանի օգտին քուէարկած ձայները: Արձանագրութիւնը ստարագրելիս պարզուել է, որ այդ տեղամասի փոխարէն պէտք է ստուգէին 21-րդը, ինչից յետոյ, Ժառանգութեան եւ ՕԵԿ-ի անդամները պահանջեցին վերահաշուել 5/21-ի քուէաթերթիկները:

ԸԸՀ նախագահը այդ պահին յայտարարել է, որ ինքը վատ է զգում եւ հեռացել է, իր լիազօրութիւնները փոխանցել է տեղակալին՝ Ծատուրեանին: 16.30-ին յանձնաժողովի երեք անդամներ բերել են 5/21 տեղամասի քուէաթերթիկներով պարկերը: Ըստ *Առաւօտ*ի թղթակցի՝ հէնց այդ պահին տեղամաս են ներխուժել 10 յաղթանդամ տղաներ՝ ԱԺ պատգամաւոր Լեւոն Սարգսեանի (մականունը՝ Ալրաղացի Լեովիկ), գլխաւորութեամբ եւ պահանջել են դադարեցնել վերահաշուարկը: Այդ պահանջով հանդէս է եկել նաեւ Մաշտոցի քննչական բաժնի մի խումբ քննիչներ՝ մօտ 20 հոգի: Նրանք պահանջում էին դադարեցնել վերահաշուարկը: Այդ պահին յանձնաժողովի նախագահը եւ տեղակալը արձանագրութիւն են գրել, որ պարկը բացել է ԿԸՅ-ում Ժառանգութեան ներկայացուցիչ Զոյա Թադեւոսեանը: Այդ յայտարարութեան պատճառով վերահաշուարկը ապօրինաբար դադարեցուել է, իսկ ընդդիմութեան ներկայացուցիչ Զոյա Թադեւոսեանի նկատմամբ նիւթեր են նախապատրաստւում:

Ամէն ինչ այդքանով չի աւարտուել: Նոյն խումբը՝ Լեւոն Սարգսեանի եւ Մաշտոցի քննչական բաժնի աշխատակիցների գլխաւորութեամբ, տեղամասից դուրս են վռնդել լրագրողներին եւ անձեռնմխելի պատգամաւորներին. կոտրել են *Ա1+* հեռուստաընկերութեան տեսախցիկը, *Առաւօտ* եւ *ՉԻ* թերթերի ֆոտոլրագրող Գագիկ Շամշեանի լուսանկարչական ապարատը, քաշքշել եւ հարուածել են լրագրողներ Գագիկ Շամշեանին, *Առաւօտ*ի թղթակից Նաիրա Մամիկոնեանին, *Panorama.am* էլեկտրոնային թերթի թղթակից Արթուր Խեմչեանին, *Ա1+*-ի օպերատոր Սեւակ Գրիգորեանին: Այս ամէնը կատարուել է Մաշտոցի բաժնի Դաւիթաշէնի բաժանմունքի պետ Վարուժան Շաշիկեանի ներկայութեամբ:

Ի դէպ, *Ա1+*-ի տեսաերիզը խլել եւ կոտրել են տեղամասում գտնուող քննիչները:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ ՄԻԱՆՈՒՄ ԵՆ ՆԱԵՒ ԴԵՍՊԱՆՆԵՐԸ ԵՒ ԵՒՍ ՄԷԿ ՓՈԽՆԱԽԱՐԱՐ

*Lragir.am*, 20:18

Փետրուարի 23-ին իրենց հրաժարականի եւ Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանին միանալու մասին են յայտարարել է Իտալիայում, Իսպանիայում եւ Պորտուգալիայում Հայաստանի դեսպան Ռուբէն Շուգարեանը, Ղրղզստանում եւ Ուզբեկստանում Հայաստանի դեսպան Լեւոն Խաչատրեանը, Ուկրաինայում եւ Մոլդովայում Հայաստանի դեսպանորդ Ռազմիկ Խումարեանը եւ Հայաստանի արտաքին գործերի նախարարի տեղակալ Արմէն Բայբուրթեանը: Այդ մասին տեղեկութիւնը հնչել է Ազատութեան Հրապարակում տեղի ունեցած հանրահաւաքի ժամանակ: Տեղեկութիւնը հաստատել է նաեւ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի մամուլի խօսնակ Արման Մուսինեանը:

## ԳԱՖԷՍՋԵԱՆԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է

*A1+*, 20:23

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է նաեւ ամերիկահայ յայտնի բարերար, Գաֆէսջեան Ընտանիքի Հիմնադրամի նախագահ Ջերարդ Լ. Գաֆէսջեանը: Շնորհաւորական խօսքում, մասնաւորապէս, ասուած է.

«Ձերդ Գերազանցութիւն, շնորհաւորում եմ յաղթանակի կապակցութեամբ: Ես կիսում եմ հայ ժողովրդի վստահութիւնն առ այն, որ Դուք կարող էք Հայաստանն առաջ տանել: Ակնյայտ է Ձեր սէրը ժողովրդի եւ երկրի հանդէպ: Այն ամբողջապէս արտայայտուել է Հայաստանին եւ Ղարաբաղին Ձեր ծառայութիւններով:

Հայաստանը բազմաթիւ մարտահրաւէրների առաջ է, եւ ես աղօթում եմ Աստծուն, որ նա շարունակի օժտել Ձեզ ուժով եւ իմաստնութեամբ՝ այդ մարտահրաւէրներին յաջողութեամբ դիմակայելու համար: Ես լաւատեսօրէն շարունակելու եմ աշխատել Ձեզ հետ՝ ամրապնդելու համար Հայաստանի յաջողութիւնները, անվտանգութիւնը եւ ժողովրդավարութիւնը»:

## ՀՀ ՓՈԽԱՐՏԳՈՐԾՆԱԽԱՐԱՐՆ ԷԼ ՄԻԱՑԱՒ ՇԱՐԺՄԱՆԸ

*A1+*, 20:24

Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած շարժմանն են միացել ՀՀ արտաքին գործերի նախարարի տեղակալ Արմէն Բայբուրդեանը, եւ արտերկրում ՀՀ դիւանագիտական կորպուսի երեք ներկայացուցիչներ Ռուբէն Շուգարեանը, Լեւոն Խաչատրեանը եւ Ռազմիկ Խումարեանը: Այս մասին յայտարարել են Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող միջոցառման ընթացքում:

## ՉԿԱՐ ՄԷԿԸ, ՈՐ ՉՊԱՐԷՐ

*A1+*, 20:30

Ազատութեան Հրապարակում մարդկանց քանակը չպակասեց հանրահաւաքային ելոյթներից յետոյ: Այս ընթացքում հնչում է ուրախ երաժշտութիւն եւ մարդիկ խմբեր կազմած պարում են ու ոգեւորում կողքիններին: Չկայ մէկը, որ չպարէր:

Հարթակին շարունակում էին մնալ ՀՀՇ վարչութեան ղեկավար Արարատ Զուրաբ-եանը, ԺՈԻԿ փոխնախագահ Վարդան Գրիգորեանը եւ այլք: Քիչ առաջ հարթակ բարձրացաւ Նիկոլ Փաշինեանը եւ յայտարարեց, թէ. «Որեւէ մէկը կասկածո՞ւմ է, որ մենք յաղթելու ենք»: Հաւաքուածները միահամուռ գոռացին. «Ոչ, յաղթանակ»:

Այնուհետեւ նա հարթակից իջաւ մարդկանց մէջ ու սկսեց նրանց հետ շուրջպար բռնած պարել: Իսկ այս ամէնն ընթանում էր հրավառութեան ներքոյ:

## ՀՐԱՊԱՐԱԿԸ ՈՂՋՈՒՆԵՑ ԲԱԿՕ ՍԱՀԱԿԵԱՆԻՆ

*A1+*, 20:49

Այսօր հանրահաւաքի ժամանակ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ այս իշխանութիւնները կարողացան շատ դաժան սեպ խրել ղարաբաղցիների ու հայաստանցիների միջեւ: Ըստ նրա՝ բոլոր ղարաբաղցիներն այսօր աւելի շատ են տուժել Ռոբերտ Քոչարեանից ու Սերժ Սարգսեանից, քան հայաստանցիները:

Նա իր խօսքն, այնուհետեւ, ցանկացաւ աւարտել դրական մօտիւով՝ ըստ արժանւոյն գնահատելով Լեռնային Ղարաբաղի հանրապետութեան նորընտիր նախագահ Բակօ Սահակեանի կեցուածքը: Նա, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի՝ այս հարցում չափազանց արժանապատիւ կեցուածք է ընդունել, թոյլ չի տուել ղարաբաղցիների որեւէ միջամտութիւն մեր ներքին գործերին՝ ի տարբերութիւն 2003թ. եւ 2004թ.-ի: «Այս ընթացքում, երբ Արկադի Ղուկասեանի նախագահութեան օրօք Ղարաբաղից այստեղ տեղափոխուել էին յատուկ զօրքեր եւ քրէական տարրեր, որոնք հիմնականում իրականացրին 2004թ. ապրիլի 12-ի ջարդը: Ես ի պատիւ Բակօ Սահակեանի պէտք է ասեմ, որ նա ցուցաբերել է պետական այրին վայել դիրքորոշում: Ես ուզում եմ հիմա ծափերով ողջունէք նրան», - հաւաքուածներին կոչ արեց նա, որից յետոյ հրապարակը ծափերով ողջունեց Բակօ Սահակեանին:

**«ՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԵԾԱՄԱՍՆՈՒԹԻՒՆԸ ՄԵԶ ՀԵՏ Է»**

Լեւոն Տէր-Պետրոսեանը հանրահաւաքում յայտարարեց, որ «ՀՀ նախագահի կոչեցեալը Մոսկուայում յոխորտացել է, թէ դա մի մեծ բան չի, հրապարակում մի 200 հոգի է հաւաքւում ու հիմա գիշերները մի քիչ ասֆալտի վրայ կը պառկեն, կը ծխեն, կը յոգնեն ու մինչեւ կիրակի տուն կը գնան, կը վերջանայ՝ «հարց չկայ»»: «Ոչ, երբեք», - նրա ասածին արձագանքեցին հաւաքուածները:

«Այսինքն՝ նրան թւում է, որ Մոսկուան, Ռուսաստանը նորամուտ պետութիւն է: 500 տարուայ անընդհատ պետականութիւն ունեցող Ռուսաստանը այդ կոչեցեալ նախագահից շատ աւելի լաւ գիտէր իր բազմաթիւ աղբիւրներով, թէ ինչ է կատարւում մեր հրապարակում, ինչ է կատարւում մեր ողջ ժողովրդի հետ, մեր ողջ երկրում: Եթէ նա իր գաւառամիտ խելքով կարծում է՝ թիւրիմացութեան մէջ գցել Ռուսաստանի փորձուած, 500 տարուայ պետական աւանդոյթներ ունեցող պետութեան ղեկավարներին, ապա դա եւս մէկ նշան է, թէ որքան լուրջ, իմաստուն, փիլիսոփայ է մեր կոչեցեալ նախագահը», - մասնաւորապէս ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Նրա նշած «կոչեցեալ» նախագահի յաջորդ խնդիրն իր թիմին ոգեւորելն է՝ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը տեսնում են, որ պետական մեքենան ջարդւում է: առկայ համատարած հաւատարմութիւնն իշխանութիւններին, ըստ նրա՝ թուացեալ հաւատարմութիւն է: Այդ հաւատարիմներից մի մասը, ըստ Տէր-Պետրոսեանի՝ քանի որ յանցակից

էր աւազակախմբին, ըստ այդմ՝ ուրիշ այլ ելք չունէր ու մինչեւ վերջ պէտք է կառչած մնար այս իշխանութիւնից: «Քանի որ հասկանում են, որ աւազակախմբի կամ ծովահէնների նաւի խորտակման պարագայում իրենք բոլորն էլ պէտք է խորտակուեն», - նշեց Տէր-Պետրոսեանը:

Երկրորդ մասը հաւատարիմների, ըստ նրա՝ մոլորեալ են: Այս իշխանութիւններն այնպիսի մթնոլորտ են ստեղծել, բռնաբարելով ժողովրդի կամքը, կեղծելով եւ 1998թ., 2003թ. 2007թ. ընտրութիւնները՝ այնպիսի տպաւորութիւն էին թողել իրենց այդ նուիրեալների վրայ, որ իրենք ամենազօր են, իրենց դէմ խաղ չկայ: «Այո, նրանց նուիրեալներից շատերը մոլորուած են հէնց այս ստեղծուած մթնոլորտից: Իսկ նրանց զգալի մասը պարզապէս բթամիտ են: Ուղղակի անմեղսունակ բթամիտ, որ չեն կարողանում ամենապարզ իրավիճակը ճիշտ գնահատել», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Վերջին որակումը նրա ասելով՝ վերաբերում է վարչական, կառավարական օղակներին, իսկ միջին գօտում գտնուողները, ըստ նրա՝ մեզ նման մարդիկ են: «Վստահ եղէք այս շարքերում կան հազարաւոր պետական պաշտօնեաներ: Ձեզանից իւրաքանչիւրն առնուազը կը ճանաչի մէկին: Սա ինչի՞ նշան է. իսկ յետոյ կ'ասէք, թէ պետութիւնը մեզ հետ չէ: Ոչ պետութեան մեծամասնութիւնն էլ է մեզ հետ: Միայն պետութեան բռնակալներն են, որ մեզ հետ չեն եւ պէտք էլ չէ, որ այդ մարդիկ մեզ հետ լինեն: Մեզ պէտք չէ, որ լինեն յանցակիցներ, բթամիտներ, մոլորեալներ: Մենք հէնց դրանցից ազատուելու համար ենք գալիս», - յայտարարեց Տէր-Պետրոսեանը:

## ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԻ ԴԷՄ ԳՈՐԾՆ ՈՒՂԱՐԿԵՑԻՆ ՔՆՆՈՒԹԵԱՆ

*A1+*, 20:54

ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում աւարտուել է Լոռու մարզի Արեւածագ գիւղի 32/53 տեղամասային ընտրական յանձնաժողովի աշխատանքներին խոչընդոտելու դէպքի առթիւ յարուցուած քրէական գործի նախաքննութիւնը:

Նախաքննութեամբ պարզուել է, որ, սահմանուած կարգի համաձայն, 2008 թուականի փետրուարի 18-ին՝ ժամը 17-ին, թիւ 32/53 ընտրական տեղամասում սկսուել են ընտրութիւնների նախապատրաստական աշխատանքները, որին ներկայ է գտնուել նաեւ ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Գէորգ Դաւթեանը: Ժամը 19-ի սահմաններում, ընտրութեան քուէաթերթիկները հաշուելու եւ ստորագրելու ընթացքում, միջին աստիճանի ալկոհոլային հարբածութեան վիճակում, ընտրական տեղամաս է մտել ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի միւս վստահուած անձը՝ Արեւածագ գիւղի բնակիչ Էդմոն Գէորգեանը եւ տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահ Վահան Յովհաննիսեանը, յիշեցնելով ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 27 1-րդ յօդուածի 3-րդ մասի պահանջը, ըստ որի՝ ընտրական տեղամասում իւրաքանչիւր թեկնածու կարող է ունենալ 1 վստահուած անձ, խնդրել է Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց, որ նրանցից մէկը հեռանայ: ՏԸՅ նախագահի օրինական պահանջից յետոյ Գէորգ Դաւթեանը հեռացել է տեղամասից, որից յետոյ Էդմոն Գէորգեան, բողոքելով յանձնաժողովի նախագահի օրինական գործողութիւնների դէմ, վիճաբանել եւ շուրջ 1 ժամ խոչընդոտել է տեղամասային ընտրական յանձնաժողովի աշխատանքներին:

Ձեռք բերուած ապացոյցների հիման վրայ՝ Էդմոն Գէորգեանին մեղադրանք է

առաջադրուել ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 1-ին մասով: Էդ. Գէորգեանն ընդունել է ներկայացուած մեղադրանքը եւ տուել խոստովանական ցուցմունքներ:

Քրէական գործը ուղարկուել է Լոռու մարզի ընդհանուր իրաւասութեան դատարան՝ ըստ էութեան քննելու համար:

ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղար
Սօնա Տռուզեան

## ԽՈՒԶԱՐԿՈՒՄ ԵՆ ԵՒ ՍՏՈՒԳՈՒՄ ԱՒՏՕՄԵՔԵՆԱՆԵՐԸ

*A1+*, 21:31

Աշտարակ-Երեւան մայրուղում 6 ոստիկանական աւտոմեքենաներ՝ ԳԱԻ պոստի մօտ կանգնած, ստուգում են դէպի Երեւան եկող բոլոր աւտոմեքենաները, 16-րդ թաղամասից դէպի Աշտարակ տանող ճանապարհին էլ խուզարկւում են Երեւանից դուրս եկող եւ ՊՆ-ի ուղղութեամբ ճանապարհուող աւտոմեքենաները:

## «ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՆՈՐ ՀՐԱՊԱՐԱԿ»

*A1+*, 21:44

*Ա1+*-ը շարունակում է բազմաթիւ նամակներ ստանալ իր ընթերցողներից, որոնք արձագանքում են վերջին ներքաղաքական իրադարձութիւններին, բողոքում կամ դժգոհում, առաջարկում կամ քննադատում:

Ընթերցողներից մէկը խնդրում է մի նամակ փոխանցել Նիկոլ Փաշինեանին, որտեղ Գերմանաբնակ երիտասարդները գրում են. «Այսօր իր պապիկի 72 ամեակն է, բայց մենք չենք կարող շնորհաւորել նրան. նա մի քանի օր է, ինչ Ազատութեան Հրապարակում է»: Գրում են թոռներ Մարինէն, Հայկը, Լեւոնը, Սվէնն ու Սերգոն եւ յոյս յայտնում, որ վաղը օրէնքի իշխանութիւն կը հաստատուի երկրում:

Մէկ այլ ընթերցող էլ գրում է, որ *Ա1+*-ը կայքը միակ տեղն է, որտեղից հնարաւոր է ճշմարիտ ինֆորմացիա ստանալ եւ շնորհակալ է դրա համար:

Գերմանիայի Համբուրգ քաղաքից մի ընթերցող էլ գրում է, որ համարում է թէ ինֆորմացիոն բլոկադա է հիմա տիրում Հայաստանում եւ շնորհակալութիւն է յայտնում իր եւ իր ընկերների անունից օպերատիւ լուրերի համար, ապա խնդրում է վիդէօ նիւթեր տեղադրել աւելի շատ:

Մէկ այլ ընթերցող էլ ասում է, որ շնորհակալ է *Ա1+*-ի լրագրողներից անկողմնակալ լուսաբանման համար եւ հաշուի առնելով ընթերցողների քանակի աճով պայմանաւորուած ծանրաբեռնուածութիւնը իր պարտքն է համարում նոր հոսթինգ առաջարկել եւ պատրաստակամութիւն է յայտնում օգնել տեխնիկական հարցերով:

Մի ուսանող նամակով յայտնում է ուսանողների շրջանում առաջացած ստորագրահաւաքների մասին եւ նշում, որ ինքն ու ընկերները միացել են դրան:

Միւսը գրում է, թէ հեռուստատեսութեամբ միայն սերիալներ են ցոյց տալիս եւ ինքը ստիպուած է լինում կարդալ կայքի նիւթերը եւ պատմել իր շրջապատում:

Մուշեղ անունով ընթերցողն էլ ասում է, որ *Ա1+*-ը իր «Ազատութեան Հրապարակն է»:

## ԽՆԴՐԱՆՔ ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻՆ

*Lragir.am*, 21:47

Գերմանիայում բնակուող Մարինէն խմբագրութեան միջոցով դիմում է Նիկոլ Փաշինեանին: Մարինէի պապը՝ Թալինցի Իշխան Խուրշուդեանը երեք օր է գտնւում է Ազատութեան Հրապարակում, եւ իրենք չեն կարողանում շնորհաւորել նրա 72-ամեակը: Սակայն Մարինէն հպարտ է իր պապիկի համար եւ ասում է, որ իրենք էլ միանում են համաժողովրդական շարժմանը, որպէսզի Հայաստանում հաստատուի օրէնքի իշխանութիւն: Մարինէի խնդրանքն այն է, որ շնորհաւորեն իր պապիկի ծննդեան օրը:

## ԱՌԵՒԱՆԳԵԼ ԵՆ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԻՆ

*A1+*, 23:19

Այսօր երեկոյեան ժամը 22-ի սահմաններում Էջմիածին-Երեւան աւտօճանապարհին՝ Արգաւանդի խճուղու մօտակայքում, սեւ դիմակ հագած զինուորական հագուստներով մի խումբ անձինք առեւանգել են ՀՀ Գլխաւոր Դատախազի տեղակալ Գագիկ Ջհանգիրեանին, նրա եղբայր Վարդան Ջհանգիրեանին, վարորդ Լեւոն Պօղոսեանին եւ օգնական Կարէն Յովհաննիսեանին:

Նրանք տարուել են անյայտ ուղղութեամբ: Այդ մասին ահազանգում է Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը:

# 24 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ Է

*A1+*, 00:29

Չնայած ուշ ժամին եւ ցուրտ եղանակին՝ Ազատութեան Հրապարակում մարդկանց թիւը չի պակասել: Նրանք այսօր աւելի յարմարաւէտ են տեղաւորուել վրաններում, որոնց թիւն աճել է: Հրապարակում վրաններ են ամրացրել տարբեր մարզերից եկած մարդիկ: Նրանք պարում եւ ուրախանում են:

Բոլորը շատ սիրալիր են միմեանց նկատմամբ, հիւրասիրում են թխուածքաբլիթներ եւ անգամ տաք սպաս: Լեւոն Տէր-Պետրոսեանը, ինչպէս եւ խոստացել էր, նոյնպէս Ազատութեան Հրապարակում է, ինչն աւելի է ոգեւորում մարդկանց:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ՀԱՄԱԽՄԲՈՒՄ ԵՆ ՄԱՐԴԿԱՆՑ (video)

*A1+*, 03:07

Ազատութեան Հրապարակում հաւաքուածները շարունակում են վանկարկել «Լեւոն յաղթանակ», «Պայքար, պայքար մինչեւ վերջ»: Նիկոլ Փաշինեանը թէեւ խզուած ձայնով, այնուամենայնիւ շարունակում է ոգեւորել մարդկանց եւ պարբերաբար հարցնում է նրանց տրամադրութիւնը. «Ժողովուրդ, մրսո՞ւմ էք», - հարցնում է Նիկոլ Փաշինեանը, «Ոչ», - հնչում է պատասխանը: «Պատրա՞ստ էք պայքարել մինչեւ վերջ», - հարցին հնչած «Այո»-ն աւելի ուժգին է:

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակի մօտակայքում յայտնուած ոստիկանական

մեքենաները հաւանաբար շփոթութիւն առաջացրեցին մարդկանց մօտ: Սակայն ոստիկանները ընդամէնը հերթափոխ էին լինում, քանի որ Ազատութեան Հրապարակի մօտ առաւօտից կանգնած ոստիկանական մեքենաները հեռացան նոյն ուղղութեամբ, որով եկան նոր մեքենաները:

Ի դէպ, երբ ոստիկանները մօտենում են հրապարակին, մարդիկ անմիջապէս համախմբւում են:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԿՐԿԻՆ ՀԱՐԹԱԿ ԲԱՐՁՐԱՑԱՒ (video)

*A1+*, 03:38

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում կրկին հարթակ բարձրացաւ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նրա ներկայութիւնը մեծ ոգեւորութիւն է առաջացնում մարդկանց մօտ եւ նրան տեսնելով՝ մարդիկ աւելի ուժգին են վանկարկում. «Լեւոն նախագահ», «Լեւոն նախագահ»: Լեւոն Տէր-Պետրոսեանը մարդկանց կոչ արեց այլեւս բարձր չվանկարկել, այլ խաղաղուել: «Ես էլ գնում եմ իմ վրանում քնելու», - եզրափակել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, ինչից յետոյ մարդկանց տրամադրութիւնն աւելի է բարձրացել:

## ԳԱԳԻԿ ՋԱՀԱՆԳԻՐԵԱՆԻՆ ՏԱՐԵԼ ԵՆ ԱՆՅԱՅՏ ՈՒՂՂՈՒԹԵԱՄԲ

*Lragir.am*, 09:17

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբն ահազանգում է, որ փետրուարի 23-ի գիշերը ժամը 22-ի սահմանում զինուորական համազգեստով դիմակաւորուած անձինք Էջմիածին-Երեւան ճանապարհին կանգեցրել են Գագիկ Ջահանգիրեանի մեքենան եւ Ջահանգիրեանին, նրա եղբօրը, վարորդին ու օգնականին տարել են անյայտ ուղղութեամբ:

## ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ. ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԸ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆՈՒՄ Է

*Lragir.am*, 10:16

Հայաստանի Ոստիկանութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը, որը ներկայացնում ենք նոյնութեամբ.

«ՀՀ ոստիկանութեան Կազմակերպուած Յանցաւորութեան դէմ պայքարի գլխաւոր վարչութիւնում օպերատիւ տեղեկատուութիւն էր ստացուել, որ սեւ գոյնի ԲՄՎ X5 մակնիշի, 99 ՏԼ 555 պետհամարանիշի եւ արծաթագոյն ՎԱԶ 21010 մակնիշի, 80 ՍՍ 555 պետհամարանիշի աւտոմեքենաների մէջ գտնուող անձինք զինուած են եւ նպատակ ունեն ապակայունացնել իրավիճակը մայրաքաղաքում: Փետրուարի 23-ին, ժամը 23.00-ի սահմաններում, Արգաւանդի խաչմերուկի մօտ ԿՀԴՊ ԳՎ աշխատակիցների կողմից նշուած մեքենաները կանգնեցուել են: Ստուգելու ժամանակ մեքենաների մէջ գտնուող անձանց կողմից դիմադրութիւն է ցուցաբերուել, որի ընթացքում ԿՀԴՊ ԳՎ յատուկ նշանակութեան վարչութեան աշխատակից Ռաֆիկ Մուրադեանի հաշուեցուցակային զէնքից անզգուշաբար կրակոցներ են արձակուել, ինչի հետեւանքով թեթեւ մարմնական վնաս-

ւածքներ են ստացել նոյն վարչութեան աշխատակից Գէորգ Մալխասեանը, 3-րդ վարչութեան աւագ օպերլիազօր Տիգրան Կարապետեանը եւ դիմադրութիւն ցուցաբերած Վարդան Ջհանգիրեանը: ԿՀԴՊ ԳՎ բերման են ենթարկուել աւտոմեքենաներում գտնուողները՝ ՀՀ Գլխաւոր Դատախազի նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը, Վարդան Ջհանգիրեանը, Կարէն Յովհաննիսեանը եւ Լիովա Պօղոսեանը: Գագիկ Ջհանգիրեանի մօտից յայտնաբերուել է չեխական արտադրութեան ՉԶ-75 տեսակի ատրճանակ՝ լիցքաւորուած 14 փամփուշտով, 1-ը՝ փամփշտանոցում, Վարդան Ջհանգիրեանի մօտից՝ ՊՄՄ տեսակի ատրճանակ՝ լիցքաւորուած 8 փամփուշտով եւ փամփշտակալով, Կարէն Յովհաննիսեանի մօտից՝ Մակարով տեսակի ատրճանակ՝ լիցքաւորուած 8 փամփուշտով ու եւս մէկ փամփշտակալ՝ 8 փամփուշտով: Աւտոմեքենաների զննութեամբ յայտնաբերուել են որսորդական հրացան, Բրաունինգ տիպի ատրճանակ՝ 14 փամփուշտով, 1-ը՝ փամփշտանոցում, դաշոյն, ձեռնաշղթայ եւ զրահաբաճկոն: Վարդան Ջհանգիրեանը ձերբակալուած է: Փաստի առթիւ յարուցուել է քրէական գործ: Քննութիւնը վարում է ՀՀ ոստիկանութեան Քննչական Գլխաւոր Վարչութիւնը»:

## ԴԵՍՊԱՆՆԵՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 10:25

Մենք՝ ներքոստորագրեալներս, հաւատարիմ մնալով հայ դիւանագէտի կոչմանը, առաջնորդուելով Հայաստանի Հանրապետութեան եւ հայ ժողովրդի առջեւ մեր ունեցած պատասխանատուութեան զգացումով, մտահոգուած լինելով Հայաստանում ստեղծուած իրավիճակով, խորապէս յարգելով ՀՀ քաղաքացիների ընտրութեան իրաւունքը, համոզուած լինելով , որ միայն արդար եւ ազատ ընտրութիւնների ընտրութիւնների արդիւնքում ընտրուած նախագահը կարող է լաւագոյնս դիմագրաւել միջազգային ասպարէզում մեր պետութեան առջեւ առկայ մարտահրաւէրներին եւ էականօրէն բարձրացնել Հայաստանի իրական ժողովրդավարութեան հաստատման համար պայքարի ելած մեր հայրենակիցներին:

Կարեւորելով երկրում կայունութեան պահպանման եւ հասարակական համաձայնութեան անհրաժեշտութիւնը, մեր հայրենակիցներին, եւ յատկապէս երկրում հասարակական կարգի ու անդորրի ապահովման համար պատասխանատու բոլոր կառոյցների ներկայացուցիչներին կոչ ենք անում զերծ մնալ ուժի միջոցով խնդիրներ լուծելու գայթակղութիւնից, Հայաստանեան հեռուստաընկերութիւններին, եւ յատկապէս Հ1-ին կոչ ենք անում ապահովել իրադարձութիւնների անկողմնակալ եւ համակողմանի լուսաբանում եւ ուղիղ եթերի տրամադրում ներկայ ներքաղաքական ճգնաժամի յաղթահարման վերաբերեալ կառուցողական դիրքորոշում ունեցող բոլոր ուժերի ներկայացուցիչներին,

Կոչ ենք անում ինչպէս Հայաստանում, այնպէս էլ արտերկրում աշխատող մեր բոլոր գործընկերներին, միանալ մեր յայտարարութեանը:

ՀՀ արտաքին գործերի նախարարի տեղակալ, արտակարգ եւ լիազօր դեսպան Արմէն Բայբուրդեան:

Իտալիայում, Իսպանիայում եւ Պորտուգալիայում ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Ռուբէն Շուգարեան:

Ղազախստանում եւ Ղրղզստանում ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Լեւոն Խաչատրեան:

Ուկրաինայում եւ Մոլդովայում ՀՀ դեսպանութեան արտակարգ դեսպանորդ լիազօր նախարար Ռազմիկ Խումարեան:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ԱԶԱՏԵԼ Է ԴԵՍՊԱՆՆԵՐԻՆ

*Lragir.am*, 12:46

Նախագահի մամուլի գրասենեակը տեղեկացնում է, թէ Ռոբերտ Քոչարեանի փետրուարի 23-ի հրամանագրերով Արմէն ԲԱՅԲՈՒՐԴԵԱՆԸ ազատուել է Հայաստանի Հանրապետութեան արտաքին գործերի նախարարի տեղակալի պաշտօնից, զրկուելով արտակարգ եւ լիազօր դեսպանի դիւանագիտական աստիճանից, Լեւոն ԽԱՉԱՏՐԵԱՆԸ ազատուել է Ղազախստանի Հանրապետութիւնում, համատեղութեան կարգով, Ղրղզստանի Հանրապետութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպանի պարտականութիւններից, զրկուելով արտակարգ եւ լիազօր դեսպանի դիւանագիտական աստիճանից, Ռուբէն ՇՈՒԳԱՐԵԱՆԸ ազատուել է Իտալիայի Հանրապետութիւնում, համատեղութեան կարգով, Պորտուգալիայի Հանրապետութիւնում, Իսպանիայի Թագաւորութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպանի պարտականութիւններից, զրկուելով արտակարգ եւ լիազօր դեսպանի դիւանագիտական աստիճանից:

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ Է ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԻ ԵՂԲԱՅՐԸ

*A1+*, 12:57

**«Գագիկ Ջհանգիրեանը ոստիկանութիւնում է». Ոստիկանութեան յայտարարութիւնը**

ՀՀ ոստիկանութեան Կազմակերպուած Յանցաւորութեան դէմ պայքարի գլխաւոր վարչութիւնում օպերատիւ տեղեկատուութիւն էր ստացուել, որ սեւ գոյնի ԲՄՈՒ X5 մակնիշի, 99 ՏԼ 555 պետհամարանիշի եւ արծաթագոյն ՎԱԶ 21010 մակնիշի, 80 ՍՍ 555 պետհամարանիշի աւտօմեքենաների մէջ գտնուող անձինք զինուած են եւ նպատակ ունեն ապակայունացնել իրավիճակը մայրաքաղաքում:

Փետրուարի 23-ին, ժամը 23.00-ի սահմաններում, Արգաւանդի խաչմերուկի մօտ ԿՀԴՊ ԳՎ աշխատակիցների կողմից նշուած մեքենաները կանգնեցուել են: Ստուգելու ժամանակ մեքենաների մէջ գտնուող անձանց կողմից դիմադրութիւն է ցուցաբերուել, որի ընթացքում ԿՀԴՊ ԳՎ յատուկ նշանակութեան վարչութեան աշխատակից Ռաֆիկ Մուրադեանի հաշուեցուցակային զէնքից անզգուշաբար կրակոցներ են արձակուել, ինչի հետեւանքով թեթեւ մարմնական վնասուածքներ են ստացել նոյն վարչութեան աշխատակից Գէորգ Մալխասեանը, 3-րդ վարչութեան աւագ օպերլիազօր Տիգրան Կարապետեանը եւ դիմադրութիւն ցուցաբերած Վարդան Ջհանգիրեանը:

ԿՀԴՊ ԳՎ բերման են ենթարկուել աւտօմեքենաներում գտնուողները՝ ՀՀ Գլխաւոր Դատախազի նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը, Վարդան Ջհանգիրեանը, Կարէն Յովհաննիսեանը եւ Լիովա Պօղոսեանը:

Գագիկ Ջհանգիրեանի մօտից յայտնաբերուել է չեխական արտադրութեան ՉԶ-75 տեսակի ատրճանակ՝ լիցքաւորուած 14 փամփուշտով, 1-ը՝ փամփշտանոցում, Վարդան Ջհանգիրեանի մօտից՝ ՊՄՄ տեսակի ատրճանակ՝ լիցքաւորուած 8 փամփուշտով եւ փամփշտակալով, Կարէն Յովհաննիսեանի մօտից՝ Մակարով տեսակի ատրճանակ՝ լիցքաւորուած 8 փամփուշտով ու եւս մէկ փամփշտակալ՝ 8 փամփուշտով:

Աւտոմեքենաների զննութեամբ յայտնաբերուել են որսորդական հրացան, Բրաունինգ տիպի ատրճանակ՝ 14 փամփուշտով, 1-ը՝ փամփշտանոցում, դաշոյն, ձեռնաշղթայ եւ զրահաբաճկոն:

Վարդան Ջհանգիրեանը ձերբակալուած է:

Փաստի առթիւ յարուցուել է քրէական գործ:

Քննութիւնը վարում է ՀՀ ոստիկանութեան Քննչական գլխաւոր վարչութիւնը:

## ԼԵԳԻՏԻՄՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

*Lragir.am*, 13:11

Հայաստանի ԿԸՅ երեքշաբթի՝ փետրուարի 26-ին պէտք է յայտարարի փետրուարի 19-ի ընտրութեան վերջնական արդիւնքը: Ամենայն հաւանականութեամբ, ԿԸՅ կը յայտարարի նոյն թուերը, ինչ նախնական արդիւնքը: Սակայն նոյնիսկ այդ պարագայում առաջանում է իշխանութեան թեկնածուի լեգիտիմութեան խնդիրը: Նախ, ընտրութեան արդիւնքը փաստօրէն չեն ճանաչել ՀՅԴ, Օրինաց Երկիր եւ Ժառանգութիւն կուսակցութիւնները, ովքեր չեն ստորագրել ԿԸՅ արձանագրութիւնը (ՀՅԴ յատուկ կարծիք էր յայտնել): Ընտրութեան արդիւնքը չեն ճանաչում Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ միւս թեկնածուները, բացառութեամբ թերեւս Գեղամեանի եւ Արամ Յարութիւնեանի, որոնք միասին հաւաքել են ձայների մօտ 2 տոկոսը: Իր հերթին, նման իրավիճակում 52 տոկոսը, որ ըստ ԿԸՅ-ի հաւաքել է Սերժ Սարգսեանը, այն թիւը չէ, որ լեգիտիմութեան պաշար լինի: Ստեղծուած իրավիճակում, թերեւս, լաւագոյն ելքը կը լինէր, եթէ յայտարարուէր նոր ընտրութիւն, որը կը փրկէր թէ իշխանութեան դէմքը, թէ ինչ որ կերպ կը թուլացնէր առկայ վտանգաւոր լարուածութիւնը:

## ՍԱՄՈՒԷԼ ԳԷՈՐԳԵԱՆԸ ՀԱՑԱԴՈՒԼ Է ՅԱՅՏԱՐԱՐԵԼ

*Lragir.am*, 13:23

Քիչ առաջ Ղարաբաղ Կոմիտէի անդամ Սամուէլ Գէորգեանը Ազատութեան Հրապարակում յայտարարել է անժամկէտ հացադուլ:

## ՀԱՑԱԴՈՒԼԱՒՈՐՆԵՐՆ ԱՐԴԷՆ ՎԵՑՆ ԵՆ

*Lragir.am*, 13:44

Ազատութեան Հրապարակում անժամկէտ հացադուլ յայտարարած Ղարաբաղ Կոմիտէի անդամ Սամուէլ Գէորգեանին միացել են հանրահաւաքի եւս հինգ մասնակիցներ: Այս մասին յայտարարել է ՀՀՇ վարչութեան նախագահ Արարատ Զուրաբեանը: Նրանց անուններն են՝ Դաւիթ Համբարձումեան Վարդենիսից, Բարսեղեան Վահէ Ալաւերդիից, Արմէն Մխիթարեան Էջմիածնից, Ջոն Կարապետեան Երեւանից եւ Աղայեան Դաւիթ Մասիսից:

## ՀՀԿ ԵՒ ԲՀԿ ԽՄԲԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 13:59

Սիրելի հայրենակիցներ,

Փետրուարի 19-ին տեղի ունեցան նախագահական ընտրութիւններ, որոնց նախնական արդիւնքները Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը հրապարակեց յաջորդ օրը,

սահմանուած ժամկէտում: Այդ արդիւնքների համաձայն Հայաստանի Հանրապետութեան երրորդ նախագահ է ընտրուել Սերժ Սարգսեանը:

Եւրոպայի խորհրդի խորհրդարանական վեհաժողովի, ԵԱՀԿ խորհրդարանական վեհաժողովի, Եւրախորհրդարանի, ԱՊՀ խորհրդարանական վեհաժողովի, ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ի դիտորդական առաքելութիւնները արձանագրել են զգալի առաջընթաց նախորդ ընտրութիւնների համեմատ եւ տեղի ունեցած ընտրութիւնները գնահատել են որպէս համապատասխանող Եւրոպայի խորհրդին եւ ԵԱՀԿ-ին անդամակցելիս մեր երկրի ստանձնած պարտաւորութիւններին եւ միջազգային չափանիշներին: Երկրի նորընտիր նախագահին՝ Սերժ Սարգսեանին, եւ մեր ժողովրդին շնորհաւորել են Եւրամիութեան, ՆԱՏՕ-ի, այլ միջազգային կազմակերպութիւնների ղեկավարները, եւրոպական, ԱՊՀ, աշխարհի բազմաթիւ այլ երկրների նախագահներ:

Յետընտրական գործընթացը եւս ընթանում է օրէնքով սահմանուած կարգով: Իրաւապահ մարմիններն արագօրէն արձագանքել են արձանագրուած թերութիւններին եւ խախտումներին: Յարուցուել են քրէական գործեր, իրականցւում է մի շարք ընտրատեղամասերի քուէարկութեան արդիւնքների վերահաշուարկ: Այս թերութիւնները չեն կարող ստուեր գցել տեղի ունեցած ընտրութիւնների վրայ, քանզի թերութիւններ արձանագրւում են ցանկացած տեղում անցկացուող իւրաքանչիւր ընտրութեան ժամանակ: Մենք վստահ ենք, որ կը բացայայտուեն խախտումների հեղինակներն՝ անկախ իրենց կուսակցական պատկանելութիւնից, եւ կը ստանան արժանի գնահատական ու պատիժ:

Մեզ համար նոյնքան անընդունելի են նաեւ մաղձը, կեղծիքը, վրէժխնդրութիւնը, կոյր ատելութիւնն ու պառակտումը, որ փորձում են մեր հասարակութեանը պարտադրել անգամ իրենց պարտութիւնն ընդունելու արժանապատուութիւն չունեցող մարդիկ, ովքեր անպարկեշտօրէն հայհոյում են իրենց աhաբեկումներին ու շանտաժին չարձագանքած ու չաջակցածներին՝ սովորական քաղաքացիներից մինչեւ Ամենայն Հայոց Կաթողիկոս: Մեզ համար հաւասարապէս մերժելի են նաեւ նրանք, ովքեր ենթարկուելով սադրանքին ու շանտաժին, կեղծ հայրենասիրութեան քօղի տակ փորձում են տէրեր գտնել: Մենք համոզուած ենք, որ մեր հասարակութիւնն ըստ արժանւոյն կը գնահատի ժողովրդավարական գործընթացներին անյարիր այս դրսեւորումներն, իսկ անկարգութիւնների հրահրումն ու բռնութիւնները իրաւապահ մարմինների կողմից կը ստանան արագ արձագանք:

Մենք ափսոսում ենք մեր մի քանի հազար հայրենակիցների համար, որոնց զգացմունքները շահարկելով մոլորութեան մէջ են գցել ու գործիքի վերածել իրենց խորապէս ատողներն ու արհամարհողները, որոնց համար սրբութիւն չեն անգամ Հայաստանը, Արցախն ու մեր ժողովուրդը:

Մենք շնորհակալութիւն ենք յայտնում ձեզ՝ սիրելի հարենակիցներ, ընտրութիւններին աննախադէպ ակտիւութեամբ մասնակցելու համար, շնորհաւորում ենք նորանկախ Հայաստանի պատմութեան մէջ լաւագոյն ընտրութիւններ անցկացնելու կապակցութեամբ եւ վստահեցնում ենք, որ ամէն ինչ անելու ենք, որ մեր երկրի ու ժողովրդի համար սկսուող նոր փուլը լինի համազգային համախմբման, արդարութեան, բարեկեցութեան, փոխադարձ յարգանքի եւ սիրոյ շրջան:

ՀՀ Ազգային Ժողովի պատգամաւորներ՝

Թորոսեան Տիգրան Սուրիկի
Ծառուկեան Գագիկ Կոլեայի
Կարապետեան Կարէն Սարգսի
Սաֆարեան Արամ Վիլէնի
Աբրահամեան Գագիկ Արշաւիրի
Աբրահամեան Արմէն Արշաւիրի
Աբրահամեան Հէնրիկ Արգամի
Ադոնց Աւետ Ռոբերտի
Աղաբաբեան Աշոտ Սերիոժայի
Աւագեան Արսէն Դնեպրի
Այվազեան Վարդան Սուրէնի
Բոստանջեան Վարդան Բաբկէնի
Աշոտեան Արմէն Գէորգի
Գուլոյեան Մուրադ Արամի
Աւագեան Կարէն Կարլէնի
Ենոքեան Գոհարիկ Աղաբէկի
Արզաքանցեան Տիգրան Գրիշայի
Զաքարեան Ռոբերտ Սերգոյի
Արսէնեան Աշոտ Եղիշէի
Զօհրաբեան Նաիրա Վահանի
Բաբլոյեան Արա Սաէնի
Թովմասեան Ռոբերտ Թովմասի
Բաղալեան Վլադիմիր Մերուժանի
Կարապետեան Կարօ Երեմի
Բաղալեան Վոլոդեա Արամայիսի
Յակոբեան Վերսանդիկ Ֆրանսիկի
Բաղէյեան Մանուէլ Հէնրիկի
Յովհաննիսեան Վահէ Լաւրենտիի
Գասպարեան Մելիք Ապրեսի
Ղարագէօզեան Յարութիւն Արփիարի
Գէորգեան Նահապետ Բագրատի
Մադաթեան Հրանտ Ռոբերտի
Գրիգորեան Հրանտ Մերուժանի
Մախսուդեան Վահագն Վահրամի
Գրիգորեան Ռաֆիկ Խորէնի
Մանուկեան Մելիք Սարիբէկի
Դանիէլեան Արմէն Սերիոժայի
Մելիքեան Արմէն Ռաֆիկի
Դաւթեան Արտակ Լիւդվիկի
Մխիթարեան Արշակ Գարմէնի
Զօհրաբեան Զօհրաբ Սենիկի
Մնացականեան Մխիթար Էդուարդի

Զօհրաբեան Ռազմիկ Արտաւազդի
Պետրոսեան Արեւիկ Համլէտի
Թորոսեան Շիրակ Արտեմի
Սողոմոնեան Էռնեստ Միքայէլի
Կարախանեան Վազգէն Ղուկասի
Ստեփանեան Տիգրան Վաչիկի
Յակոբեան Յակոբ Ռաֆիկի
Տոնոյեան Աշոտ Ռոբերտի
Յակոբեան Հրանոյշ Հրանտի
Յակոբեան Վահէ Մաքսիմի
Համբարձումեան Արկադի Ստանիսլաւի
Հայրապետեան Ռուբէն Ռաֆիկի
Յարութիւնեան Դաւիթ Էդոնիսի
Յարութիւնեան Համլէտ Միքայէլի
Ղազարեան Մանուէլ Անդրանիկի
Ղուկասեան Արեգ Արշաւիրի
Ղուկասեան Արտիոմ Գէորգիի
Ճշմարիտեան Կարէն Եուրիկի
Մանուկեան Խաչիկ Վաղինակի
Մարգարեան Գրիգորի Սերիոժայի
Մելիքեան Սպարտակ Սէյրանի
Մինասեան Գագիկ Ենգիբարի
Մինասեան Մկրտիչ Յակոբի
Մխիթարեան Արմէն Աշոտի
Մովսիսեան Առաքել Աբրահամի
Նաղդալեան Հերմինէ Միքայէլի
Նիկոյեան Սամուէլ Պարգեւի
Շարմազանով Էդուարդ Յովսէփի
Պետրոսեան Ալեքսան Մակարի
Պետրոսեան Ռաֆիկ Գարեգինի
Պօղոսեան Սուրիկ Սիրակի
Պուրտոյեան Արմէն Եուրիկի
Սադոյեան Ռուբէն Ալֆրէդի
Սահակեան Արման Գալուստի
Սահակեան Գալուստ Գրիգորի
Սանոսեան Հայկ Արտեուշի
Սարգսեան Ալեքսանդր Ազատի
Սարգսեան Լեւոն Հրաչեայի
Սարգսեան Մարտին Գրիգորի
Սարգսեան Սամուէլ Ֆրունզէի
Սարիբէկեան Կարէն Բաղիշի
Սարոյեան Սեդրակ Ֆիրդուսի

Ստեփանեան Միշա Արտաշի
Վարդապետեան Տաճատ Մարտունի
Փամբուկեան Յարութիւն Կարոյի

## ՀԱՑԱԴՈՒԼ Է (video)

*A1+*, 14:15

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում հացադուլ են յայտարարել 6 հոգի:

Նրանք են՝ Ղարաբաղ Կոմիտէի անդամ Սամուէլ Գէորգեան, Դաւիթ Համբարձումեան (Վարդենիս), Արմէն Մխիթարեան (Էջմիածին), Ջոն Կարապետեան (Երեւան), Վահէ Բարսեղեան (Ալաւերդի), Դաւիթ Աղայեան (Երեւան):

Հացադուլ յայտարարելու վերաբերեալ իր յայտարութեան մէջ Ղարաբաղ Կոմիտէի անդամ Սամուէլ Գէորգեանը նշել է, որ «ընտրութիւն կոչուած խեղկատակութեամբ գործող վարչախումբը փորձում է վերարտադրուել», իսկ «բռնի վերարտադրութիւնը աղէտ է հայ ժողովրդի եւ պետականութեան համար»: Նա պահանջում է չեղեալ յայտարարել կեղծուած ընտրութիւնները, յայտարարել իրականում ընտրուած նախագահի անունը եւ «հեռանալ մեր սուրբ հողից»:

Ի դէպ, այս պահին Ազատութեան Հրապարակ մարդկանց հոսքը կտրուկ աւելացել է, ու թէեւ մինչեւ հանրահաւաքը 1 ժամ կայ, այն արդէն լեփ-լեցուն է:

## ՆՐԱՆՑ ԷԼ ՊԷՏՔ ՉԷ ԼԻՆԵԼ ԵՐԿՐԱՊԱՀ

*A1+*, 14:22

Պաշտպանութեան նախարարի մամլոյ քարտուղար Սէյրան Շահսուվարեանը քիչ առաջ տարածել է հետեւեալ յայտարարութիւնը.

2008թ. փետրուարի 19-ին կայացած նախագահական ընտրութիւններից յետոյ Երկրապահ Կամաւորական Միութիւն հասարակական կազմակերպութեան որոշ անդամներ՝ խախտելով ԵԿՄ-ի կանոնադրութիւնը, առանց վարչութեան համապատասխան որոշման, սկսել են զբաղուել Երկրապահին ոչ վայել գործունէութեամբ, որն անընդունելի է եւ վարկաբեկում է միութեան նշանակութիւնն ու հեղինակութիւնը, խոչընդոտում է մեր նորանկախ պետութեան յետագայ ամրապնդման եւ զարգացման գործընթացը: Նրանք օգտագործում են անազնիւ քաղաքական նպատակներով, իսկ ԵԿՄ ղեկավարութիւնը ոչ մի միջոց չի ձեռնարկում այդ ամէնը կանխելու ուղղութեամբ:

Այդ իսկ պատճառով՝ գնահատելով եւ արժեւորելով Երկրապահի դերն ու նշանակութիւնը, մեր զոհուած ազատամարտիկ-ընկերների բարի անունն ու յիշատակը, ինչպէս նաեւ առաջնորդուելով Հայրենիքի նկատմամբ ունեցած պարտքի մեծ զգացումով եւ մեր ժողովրդին անմնացորդ ծառայելու հաստատուն որոշմամբ, դադարեցնում ենք մեր անդամակցութիւնը կազմակերպութեանը:

Գեներալ-գնդապետ Սէյրան Մուշեղի Օհանեան
Գեներալ-մայոր Արշալոյս Զաւէնի Փայտեան
Գեներալ-մայոր Հայկազ Պապիկի Բաղմանեան
Գեներալ-մայոր Լեւոն Խաչիկի Երանոսեան
Գեներալ-մայոր Կամօ Աբգարի Աղաջանեան
Գեներալ-մայոր Սամուէլ Ջամիլի Կարապետեան

Գնդապետ Կորիւն Սերիոժայի Եղիազարեան
Գնդապետ Մուրադ Արշակի Աբրահամեան
Գնդապետ Ֆելիքս Սամուէլի Պօղոսեան
Գնդապետ Արթուր Մերուժանի Գրիգորեան
Գնդապետ Պօղոս Լիովայի Պօղոսեան
Գնդապետ Սամուէլ Սիրեկանի Յովսէփեան
Գնդապետ Սայէն Նորիկի Հայրապետեան
Գնդապետ Ներսէս Գուրգէնի Եղոյեան
Գեներալ-մայոր Աստուածատուր Աւետիքի Պետրոսեան

## «ԼԵՒՈՆ, ՆԱԽԱԳԱՀ»՝ ԿՈՉԵՐ ՓԱՐԻԶՈՒՄ

*A1+*, 14:42

Փարիզի ոստիկանապետի կողմից արտօնուած 4-ժամեայ բողոքի ցոյց է տեղի ունեցել երէկ Փարիզի հայկական դեսպանատան առջեւ, որին մասնակցել են մօտ 30 տարբեր տարիքի, մասնագիտութեան տէր ՀՀ քաղաքացիներ:

Պաշտօնական բողոք-նամակ է յանձնուել հիւպատոս պրն Վահրամեանին, որը թէ նամակը, թէ մասնակիցներին ընդունել է պատշաճ կերպով:

Ցոյցի ընթացքում ուսանողների կողմից հնչել են հետեւեալ յայտարարութիւնները. նրանք չեն պատրաստւում իրենց գիտելիքները ներդնել մի երկրում, որտեղ իշխում է անօրինականութիւնը եւ որ պայքարելու են մինչեւ վերջ Հայաստանում օրինականութեան եւ ժողովրդավարութեան վերականգնման համար:

Մարդիկ վանկարկում էին ֆրանսերէնով՝ «Լեւոն, նախագահ»:

«Ցոյցից յետոյ եղան մի քանի տասնեակ զանգեր, մարդիկ ցանկանում են միանալ մեր շարժմանը եւ առաջարկում իրենց օգնութիւնը: Այժմ պլանաւորւում են յետագայ անելիքները», - *A1+*-ին յայտնեց ցոյցի մասնակից Ժիրայր Թորգոմեանը:

## ՀԱՑԱԴՈՒԼ ՄԻՆՉԵՒ ՉՀԵՌԱՆԱՅ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ

*A1+*, 14:48

«Ես վիրաւորուած եմ առաջին հերթին որպէս Ղազարոս Աղայեանի ծոռ, ես չեմ կարող ապրել մի երկրում, որի նախագահը Սերժ Սարգսեանն է», - այսօր *A1+*-ին ասել է անժամկէտ հացադուլ յայտարարած Դաւիթ Աղայեանը: Նա հացադուլը կը դադարեցնի այն ժամանակ, երբ երկրից հեռանայ Սերժ Սարգսեանը եւ նախագահ հռչակուի յաղթանակած նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Միւս հացադուլաւոր Ջոն Կարապետեանն էլ տեղեկացել է, որ ուրիշ ելք չի տեսնում, ուզում է ապրել ազատ երկրում, եւ հացադուլից դուրս կը գայ միայն այն ժամանակ, երբ ժողովրդի ընտրած նախագահը կը հռչակուի որպէս ՀՀ նախագահ:

Արմէն Մխիթարեանը յայտարարեց, որ սարսափելի վիրաւորուած է Հանրային Հեռուստատեսութեան *Հայլուր* ծրագրից, որը ներկայացնում էր, իբր գիշերները կերուխում է, կեղտոտում են տարածքը. «Մենք այստեղ ենք ընտանիքներով, ես կնոջ ու երեխայիս հետ եմ գալիս, իսկ մեր շուրջն այնպէս ենք մաքրում, որ իրենք իրենց տները այդպէս չեն մաքրում»:

ԵԿՄ անդամ Դաւիթ Համբարձումեանը պայքարի առաջին օրից տուն չի գնացել, եւ

պայքարելու է այնքան ժամանակ, քանի դեռ համաժողովրդական շարժումը չի յաղթել:
Միւս հացադուլաւոր Վահէ Բարսեղեանը նկատեց, որ այս իշխանութիւններն ամէն ինչի ընդունակ են եւ այդ պատճառով ինքը բողոքի աւելի արդիւնաւէտ ձեւ չի գտել, քան հացադուլը. «Ես չեմ հաւատում, որ այս ծեծ ու ջարդից, առեւանգումներից, այլանդակութիւններից ու ապօրինութիւններից յետոյ կարող են կայունութիւնեան հաստատել»:

## ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ ՔՈՒԷԱԹԵՐԹԻԿՆԵՐԻ ՎՐԱՅ

*A1+*, 15:13

Արաբկիրի 4/09 տեղամասում այսօր իրականացուել է վերահաշուարկ, սակայն Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձն ու Ժառանգութեան ներկայացուցիչը յանկարծակիի են եկել, երբ տեսել են, թէ ճիշտ քուէարկած, սակայն հաշուարկի արդիւնքում անվաւեր ճանաչուած քուէարքթերթիկների վրայ լրացուցիչ նշաններ է արուած. մասնաւորապէս V դարձուած է W:
Նկատենք, որ քուէաթերթիկների պարկի վրայ կնքելու ժամանակ չեն ստորագրել Տէր-Պետրոսեանի վստահուած անձն ու Ժառանգութեան ներկայացուցիչը: Եւ նրանք *Ա1+*-ի հետ զրոյցում վստահեցնում էին, որ հաշուարկից յետոյ միջամտութիւն է եղել եւ նշաններ են աւելացրել քուէաթերթիկների վրայ:
Իրականում, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Արամազդ Զաքարեանի, Լեւոն Տէր-Պետրոսեանին տրուած ձայները 445 էին, Սերժ Սարգսեանին՝ 395, սակայն վերահաշուարկից յետոյ արձանագրուեց 407՝ Սերժ Սարգսեանի օգտին, 395՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ՍՄԲԱՏ ԱՅՎԱԶԵԱՆԻՆ

*A1+*, 15:26

Այսօր առաւօտեան, ժամը 9.45-ի սահմաններում Կորիւն-Տէրեան խաչմերուկում սեւ դիմակներով մարդիկ յարձակուել են ԱԺ նախկին պատգամաւոր, Հանրապետութիւն կուսակցութեան քաղխորհրդի անդամ Սմբատ Այվազեանին պատկանող աւտոմեքենայի վրայ եւ ձերբակալել նրան, վարորդին՝ Վարդան Կիրակոսեանին եւ աւտոմեքենայի մէջ գտնուող միւս երիտասարդին՝ Արտակ Սիսակեանին:
Նրանք այդ պահին վերադառնում էին Ազատութեան Հրապարակից: Այժմ Սմբատ Այվազեանը եւ ընդդիմութեան միւս երկու անդամները 6-րդ վարչութիւնում են: Նրանց փաստաբանն է Յովիկ Արսէնեանը, որը այս պահին 6-րդ վարչութիւնում է:
Իսկ Ազատութեան Հրապարակում մեկնարկել է հանրահաւաքը, հրապարակը լեփլեցուն է, այսօր աւելի շատ մարդ է եկել հրապարակ, քան նախորդ օրերին: Ի դէպ, մարդիկ գալիս են հնարաւոր բոլոր միջոցներով՝ սեփական աւտոմեքենաներով, տաքսիներով: Այս պահին հրապարակ ժամանեց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ԿԱՆԳՆԱԾ ԵՆ ՄԻՆՉԵՒ ՎԵՐՋ

*Lragir.am*, 15:34

Ազատութեան Հրապարակում մեկնարկեց հերթական հանրահաւաքը: Լեւոն Տէր-Պետրոսեանը մօտենալով բարձրախօսին, հարցրեց մասնակիցներին՝ կանգնա՞ծ էք մինչեւ վերջ: Ստանալով դրական պատասխան, Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, որ ինքն էլ

է կանգնելու մինչեւ վերջ: Ազատութեան Հրապարակը կրկին մարդաշատ է, եւ մարդկանց հոսքը շարունակւում է:

## ԽԱՉԱՏՈՒՐ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԸ ՉԻ ՀԵՌԱՑԵԼ

*Lragir.am*, 15:36

Երէկ եւ այսօր լուրեր էին տարածուել, թէ Լեւոն Տէր-Պետրոսեանին սատարող գործարար պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանը ընտանիքով հեռացել է Հայաստանից: Խաչատուր Սուքիասեանն այս պահին գտնւում է Ազատութեան Հրապարակում:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ԱՐԱՄ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻՆ (ԼՐԱՑՈՒԱԾ)

*A1+*, 15:53

Ժամը 15:30-ի սահմաններում Երեբունի փողոցում (Ունիվերսամի մօտ) ականատեսների վկայութեամբ ԱԱԾ պետհամարանիշներ կրող մեքենաներով մի խումբ դիմակաւոր անձինք առեւանգել են Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանին եւ նրան ուղեկցող անձանց ու տարել անյայտ ուղղութեամբ:

Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի՝ առեւանգման ընթացքում դիմակաւոր անձինք մահակներով ծեծի են ենթարկել Արամ Կարապետեանի թիկնապահներին:

Ի դէպ, երբ Ժառանգութիւն կուսակցութեան պատգամաւորները փորձել են պարզել, թէ որտեղ են գտնւում Սմբատ Այվազեանը եւ Արամ Կարապետեանը ու այցելել են 6-րդ վարչութիւն եւ այնտեղ ասել են, թէ տեղեակ չեն:

Պատգամաւոր Վարդան Խաչատրեանը խնդրել է որ իր հարցին պատասխանի որեւէ սպա. նրան պատասխանել են, որ բոլորը խորհրդակցութեան են:

## ԲՀԿ ԵՒ ՀՀԿ ԱՆԴԱՄՆԵՐԸ ՊԱՏՌԵՑԻՆ ԱՆԴԱՄԱՏՈՄՍԵՐԸ

*Lragir.am*, 16:19

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում ելոյթ է ունեցել Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան անդամ Արթուր Ալաւերդեանը: Նա յայտարարել է, թէ պատռել է ԲՀԿ անդամի իր տոմսը եւ կոչ արել կուսակիցներին միանալ Լեւոն Տէր-Պետրոսեանին: Նոյնը կրկնել է ՀՀԿ անդամ ներկայացած Հերմինէ Կիրակոսեանը: Իսկ տիկին Ագնէսը իր ՀՀԿ անդամատոմսը պատռել է հէնց հարթակում:

## «ՋՀԱՆԳԻՐԵԱՆԸ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՅԻ Է ՏԻՐԱՊԵՏՈՒՄ» (video)

*A1+*, 16:20

Ազատութեան Հրապարակում շարունակւում է հանրահաւաքը, որն այսօր վարում է ոչ թէ Նիկոլ Փաշինեանը, այլ Սուրէն Սուրէնեանցը: Մօտ երեք օր ու գիշեր արթուն լինելուց ու հանրահաւաքները վարելուց յետոյ Նիկոլ Փաշինեանի ձայնը խզուել է: Սակայն մինչ միկրոֆոնը Սուրէն Սուրէնեանցին փոխանցելը, նա յայտարարեց, որ դատախազ Գագիկ Ջհանգիրեանը առեւանգուած է իշխանութիւնների կողմից, քանի որ յայտնի է, թէ նա ինչ ինֆօրմացիայի է տիրապետում 27-ի գործով, ապա. «Ջհանգիրեանին առեւանգելը մեզ թոյլ է տալիս յայտարարել, որ նրան առեւանգելը աւելի է խորացնում այն համոզմունքը, որ Հոկտեմբերի 27-ը կազմակերպել են Սերժ Սարգսեանն ու Ռոբերտ

Քոչարեանը»:

Յիշեցնենք, որ պաշտօնապէս յայտարարուել է, որ Գագիկ Ջհանգիրեանը ոստիկանութիւնում է:

Նա նաեւ նկատեց, որ երբ դիւանագիտական կորպուսի 4 ներկայացուցիչներ Ազատութեան Հրապարակում յայտարարեցին շարժմանը միանալու մասին, 15 րոպէ յետոյ Քոչարեանի կողմից զրկուեցին իրենց դիւանագիտական աստիճաններից: Ըստ նրա՝ ամբողջ աշխարհին ականատես եղաւ, որ այս երկրում ժողովուրդն ու անգամ դիւանագիտական կորպուսի ներկայացուցիչները չեն կարող ենթարկուել այս իշխանութիւններին:

Անդրադառնալով այն հանգամանքին, որ երէկ Հանրային հեռուստատեսութեամբ յայտարարուեց, որ հանրահաւաքի մասնակիցներից ոմանք թմրանիւթ են օգտագործում, Նիկոլ Փաշինեանն ասաց, որ «եթէ այստեղ կոկաին լինէր, ապա կը ծածանուէին ՀՀԿ դրօշները»:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ԱՐԱՄ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻՆ

*Lragir.am*, 16:25

Այսօր ժամը 15:30-ի սահմաններում Երեբունի փողոցում (Ունիվերսամի մօտ) ականատեսների վկայութեամբ ԱԱԾ պետհամարանիշներ կրող մեքենաներով մի խումբ դիմակաւոր անձինք առեւանգել են Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանին եւ նրան ուղեկցող անձանց ու տարել անյայտ ուղղութեամբ: Առեւանգման ընթացքում դիմակաւոր անձինք մահակներով ծեծի են ենթարկել Արամ Կարապետեանի թիկնապահներին, տեղեկացնում են Տէր-Պետրոսեանի շտաբից:

## ՓԱՍՏԱԲԱՆԻՆ ԹՈՅԼ ՉԵՆ ՏԱԼԻՍ ՀԱՆԴԻՊԵԼ ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԻՆ

*A1+*, 16:52

Ոստիկանութեան Կազմակերպուած Յանցաւորութեան դէմ պայքարի գլխաւոր [6-րդ] վարչութիւն տարուած Գլխաւոր Դատախազի նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանին գիշերը այցելել է Մարդու Իրաւունքների պաշտպան Արմէն Յարութիւնեանը:

*Ա1+*-ին օմբուդսմէնը վստահեցրեց, որ նրա ու միւս բերման ենթարկուածների վիճակը նորմալ է. «Ծեծելու ինֆորմացիա ինձ չի տրուել»:

Օմբուդսմէնը յայտնեց, որ Գագիկ Ջհանգիրեանը 6-րդ վարչութիւնում է շարունակում մնալ իբրեւ կասկածեալ: Յիշեցնենք, որ դատախազի եղբայրը Վարդան Ջհանգիրեանը, որը ԿՀԴՊ ԳՎ աշխատակիցների կողմից նոյնպէս բերման է ենթարկուել, ձերբակալուած է:

Ի դէպ, Մարդու Իրաւունքների պաշտպանը պահանջել է, որ թոյլ տրուի նրանց հանդիպել փաստաբանի հետ, սակայն մինչ այս պահը, ինչպէս տեղեկացրին Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբից, փաստաբանին թոյլ չի տրուել հանդիպել իր պաշտպանեալների հետ:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆ ԱՆՑԵԼ Է ՀՈԳԵԲԱՆԱԿԱՆ ԳՐՈՀԻ

*Lragir.am*, 17:30

Լեւոն Տէր-Պետրոսեանն իր ելոյթում քիչ առաջ անդրադարձաւ վերջին ձերբակալութիւններին: Նրա խօսքով, որեւէ տագնապալի բան չկայ, որեւէ վտանգ գոյութիւն չունի ոչ մեր ժողովրդի, ոչ մեր ցոյցերի, ոչ էլ այն մարդկանց համար, ովքեր ձերբակալուել են: Խնդիրն այն է, որ դրանով իշխանութիւնը փորձում է հոգեբանական ճնշում գործադրել ժողովրդի վրայ: Հէնց դրանով է պայմանաւորուած Գագիկ Ջհանգիրեանի ձերբակալման ձեւը, օդ կրակելով, եղբօրը վիրաւորելով. դրա նպատակը հոգեբանական ճնշումն է, յայտարարել է Տէր-Պետրոսեանը: Նոյն կերպ, նոյն նպատակով ձերբակալուել են Սմբատ Այվազեանն ու Արամ Կարապետեանը, բայց դրանք ընդամէնը խղճուկ մարդու վերջին ջղաձգումներն են: Ջհանգիրեանի ձերբակալումից յետոյ, Տէր-Պետրոսեանի խօսքով, իրենք կապուել են մարդու իրաւունքի պաշտպանի հետ, ով արագ արձագանքել է: Իր հերթին, Ջհանգիրեանը իրաւաբան է եւ խնդիրներ չի ունենայ: Իսկ Ջհանգիրեանի եղբօր վէրքը վտանգաւոր չէ եւ գտնւում է հիւանդանոցում:

Ինչ վերաբերում է զանգուածային բռնութիւններին, Տէր-Պետրոսեանը յայտարարեց, թէ պէտք չէ հաւատալ դրանց: Նրա խօսքով, այս իշխանութեան մասին վատ բաներ են ասուել եւ էլի կարելի է ասել, բայց նրանք խելագար չեն եւ կշռել են, թէ ինչ հետեւանք կ'ունենայ բռնութիւնը: Քանի որ գիտեն, որ պարտուել են, չեն գնայ խելագարութեան, ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Եթէ Սերժ Սարգսեանը բռնութեամբ գայ իշխանութեան, չի կարող կառավարել երկիրը: Հնարաւոր է, որ Քոչարեանը եւ Սարգսեանը մէկը մէկի վրայ գցեն պատասխանատուութիւնը, բայց Քոչարեանն էլ խելագար չէ, նա հեռացող նախագահ է եւ վստահ եմ, իր խոհեմութիւնը չի կորցրել, որ բռնութեան դիմելով ջնջուի հայ ժողովրդի յիշողութիւնից կամ դասուի Վասակսիւնիների եւ Մերուժանարծրունիների շարքը: Սա ընդամէնը հոգեբանական գրոհ է, եւ դրա համար էլ ես գիշեր-ցերեկ այստեղ եմ, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ աւելացրել, որ թող Սերժն ու Քոչարեանը յոյս չունենան, թէ այստեղից ուրիշ տեղ կը գնայ, բացի նախագահի նստավայրից:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՉՈՐՐՈՐԴՆ Է

*Lragir.am*, 17:45

Այսօր Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ իրականութիւնն այն է, որ ժողովուրդը յաղթել է ազգի տականքին: Նրա խօսքով, իրենք ոչ միայն զանգուածային միջոցառումներ են կազմակերպում, այլ նաեւ կատարում են լուրջ իրաւաբանական աշխատանք: Նա ասում է, որ այս ընտրութեան ժամանակ աննախադէպ «թաթար-մոնղոլական բռնութիւն» է գործադրուել ժողովրդի հանդէպ: Լեւոն Տէր-Պետրոսեանը բերել է մէկ օրինակ: 1923 ընտրատեղամասերից 40-ում քուէատուփերը բացելու արդիւնքնում պարզուել է, որ 10 հազար ձայն Սերժ Սարգսեանին աւել են գրուած եղել, 7000 ձայն Լեւոն Տէր-Պետրոսեանին են պակաս գրել, 5000 ձայն էլ Արթուր Բաղդասարեանին են պակաս գրած եղել: Եթէ դիտարկենք 400 ընտրատեղամասի կտրուածքով, նշանակում է, որ Սերժ Սարգսեանը մաքսիմում 40 տոկոս ձայն է հաւաքել: 1000 ընտրատեղամասի դէպքում ստացւում է, որ Սերժ Սարգսեանն ընդամէնը չորրորդ տեղն է գրաւել: Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, ամէնից շատ ձայն ինքն է հաւաքել, 65 տոկոս,

երկրորդը Արթուր Բաղդասարեանն է, երրորդը՝ Վահան Յովհաննիսեանը:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. «ՄԻ ՄՏԱՀՈԳՈՒԷՔ»

*A1+*, 17:47

Այսօր տեղի ունեցած ձերբակալութիւնները Լեւոն Տէր-Պետրոսեանը գնահատում է սոսկ ուժի ցուցադրում, «որպէսզի կարողանան իրենց թիմը իրենց կողքին պահել»: Ըստ նրա՝ «ինչ ուզում էք ասէք՝ այս իշխանութիւններին՝ կոռումպացուած, յանցագործ, բայց նրանք խելագար չեն, իրենք կշռել են ամէն ինչ. երբեք հնարաւոր չէ մասսայական բռնութիւնների գնալ»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը կոչ է արել չմտահոգուել Արամ Կարապետեանի, Սմբատ Այվազեանի եւ միւսների ձերբակալութիւններով, «վաղը այդ ամբողջը Ձեզ համար անեկդոտ է դառնալու եւ ծիծաղելու ենք դրա վրայ»:

«Ես շատ բան ունեմ Ձեզ ասելու, այսօր գիշեր-ցերեկ Ձեզ հետ խօսելու եմ», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը, բայց այս անգամ այսքանով աւարտելով իր ելոյթը Ազատութեան Հրապարակում:

Այս պահին սկսուել է երթ Ազատութեան Հրապարակից: Երբ խաղաղ ցուցարարները շարժւում էին Մաշտոցի Պողոտայի ուղղութեամբ, ինչ-որ մէկը քար նետեց ոստիկանների ուղղութեամբ, սակայն, բարեբախտաբար, այն ոչ մէկին չդիպաւ: Ցուցարարներն անհանգստացած սկսեցին փնտրել «սադրիչին». երթի կազմակերպիչներն համարում են, որ քարը նետողը «ներմուծուած է իրենց շարքերը»:

## ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ ԵՆ

*Lragir.am*, 17:50

Այսօր Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ դիտորդների եզրակացութիւնը իրականում կոշտ եզրակացութիւն է, արտացոլում է ընտրութեան ընթացքում կատարուած բոլոր բռնութիւնները: Սակայն Լեւոն Տէր-Պետրոսեանն ասում է, որ նրանք ընդամէնը եզրակացութիւն են տուել, իսկ գնահատական չեն տուել: Նրանք պարզապէս կուլտուրական մարդիկ են, ովքեր առաջնորդւում են միջազգային չափանիշներով, սակայն երբ հայկական ընտրութիւնը համեմատում են եւրոպական չափանիշների հետ, դա պարզապէս սրբապղծութիւն է եւրոպական չափանիշների նկատմամբ, յայտարարել է նա: Լեւոն Տէր-Պետրոսեանը կարծում է, որ հայկական ընտրութիւնը կարելի է համեմատել Պակիստանի, Իրաքի եւ Աֆղանստանի ընտրութիւնների հետ:

## ԿԸՅ ԱՐՏԱՀԵՐԹ ՆԻՍՏ

*A1+*, 17:52

Այսօր, ժամը 18.00-ին, Հայաստանի Հանրապետութեան կենտրոնական ընտրական յանձնաժողովի վարչական շէնքում կը գումարուի յանձնաժողովի արտահերթ նիստը: Այդ մասին հէնց նոր հաղորդեց ԿԸՅ մամուլի քարտուղարը:

## ԱՀԱԶԱՆԳ ԱՆՅԱՅՏ ԱՆՁԻ՞Ց

*A1+*, 17:58

**Ոստիկանութիւնը հաղորդում է**

Փետրուարի 24-ին, ժամը 11-00-ին, ՀՀ ոստիկանութեան կազմակերպուած յանցաւորութեան դէմ պայքարի գլխաւոր վարչութիւնում անյայտ քաղաքացուց ահազանգ էր ստացուել, որ Երեւանի Տէրեան-Կորիւն փողոցների խաչմերուկում կայանուած սեւ գոյնի Լեքսուս մակնիշի 03 SU 003 պետհամարանիշի աւտոմեքենայի ուղեւորները զինուած են:

Անմիջապէս դէպքի վայր մեկնած օպերատիւ խումբը բերման է ենթարկել վերոյիշեալ աւտոմեքենան եւ մեքենայի մէջ գտնուող անձանց՝ ՀՀ պետեկամուտների նախկին նախարար, 1959 թ. ծնուած Սմբատ Այվազեանին, 1974 թ. ծնուած, ՀՀ հին քր. օր.-ի 232 յօդուածի յատկանիշներով նախկինում դատուած Արտակ Միսակեանին եւ 1961 թ. ծնուած Վարդան Կիրակոսեանին:

Անձնական խուզարկութեամբ Սմբատ Այվազեանի մօտից յայտնաբերուել եւ առգրաւուել է սեւ գոյնի բռնակով եւ նիկելապատ զսպանակով 1 մահակ, աւտոմեքենայի սրահից՝ Մակարով տեսակի 9 մմ տրամաչափի ատրճանակ՝ պահունակով եւ 9 մմ տրամաչափի 7 փամփուշտով:

Յայտնաբերուածներն ու առգրաւուածներն ուղարկուել են փորձաքննութեան: Հանգամանքները պարզւում են: Հետաքննութիւնը վարում է ՀՀ ոստիկանութեան ԿՀԴՊ գլխաւոր վարչութիւնը:

## ԺՈՂՈՎՐԴԻ ՄՈԲԻԼԻԶԱՑԻԱՆ ՈՒԺԵՂԱՆՈՒՄ Է

*Lragir.am*, 18:06

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է Ազատութեան Հրապարակում, որ իշխանութիւնը փորձում է երկու խնդիր լուծել, սակայն չի յաջողւում: Առաջին խնդիրը, Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, ժողովրդի մոբիլիզացիան քանդելն է, երկրորդն այն է, որ թոյլ չտան համակարգը ճաքեր տայ: Իշխանութիւնը չի կարող այս երկու խնդիրը լուծել, որովհետեւ ժողովրդի մոբիլիզացիան ուժեղանում է: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ հայ ազատամարտիկները միահամուռ ժողովրդի կողքին են, իսկ այն լուրերը, որ երկրապահները տատանւում են, իշխանութեան հերթական ապատեղեկատուութիւն է, եւ այդպիսի բան չի կարող լինել:

Երկրապահ կամաւորական միութեան փոխնախագահ Միասնիկ Մալխասեանի խօսքով, երկրապահների 90 տոկոսը ժողովրդի կողքին են, եւ շրջաններից շարունակում են գալ եւ միանալ շարժմանը: Առաջին նախագահը յայտարարել է, որ եօթ երկրապահ գեներալներ, ովքեր աւազակապետութեան յենասիւներն են, դիմում են գրել երկրապահից դուրս գալու համար: Նա նշել է երեք անուն՝ Հայկազ Բաղմանեան, Արշալույս Փայտեան եւ Սէյրան Օհանեան: Քաւ լիցի, յայտարարել է Տէր-Պետրոսեանը, մենք կարող ենք նրանց տալ Սերժին: Առաջին նախագահը նշել է, որ նրանք լաւ հրամանատարներ են, ուղղակի մոլորուել են, եւ ինքը վստահ է, որ նրանք կը միանան ժողովրդական շարժմանը: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ իրենց ստրատեգիան շարունակւում է, ժողովրդի մոբիլիզացիան ընդլայնւում է, համակարգի ճաքերը ընդլայնւում են, եւ վերջում Սերժ Սարգսեանի եւ Ռոբերտ Քոչարեանի կողքին մնալու են միայն Սերժ Սարգսեանի վարորդ Վաչոն, եղբայր Սաշիկը, Թոխմախի Միհրը եւ Նեմեց Ռուբոն:

## ԵՐԹԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ ՓԱԿԵԼ ԵՆ

*Lragir.am*, 18:08

Այսօր երիտասարդների երթը պէտք է անցնէր Նալբանդեան փողոցով, սակայն ոստիկանութիւնը փակել է փողոցը, եւ երթը Աբովեան փողոցով վերադարձել է Ազատութեան Հրապարակ:

## ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՀԱՄԱՐԱՆԻՇԵՐԸ ԳՐԱՆՑՈՒՄ ԵՆ

*Lragir.am*, 18:11

Տեղեկութիւններ կան, որ ճանապարհային ոստիկանները գրանցում են Ազատութեան Հրապարակի մօտակայքում կայանած մեքենաների համարները: Արդէն 3 դէպք կայ, երբ երեք հոգու դէմ քրէական գործ է յարուցուել այն հիմքով, թէ նրանց մեքենաներով յանցագործութիւն կամ վրաերթ է եղել:

## ՄԻԱՍՆԻԿ ՄԱԼԽԱՍԵԱՆԻ ԿՈՉԸ ՍՊԱՆԵՐԻՆ

*Lragir.am*, 18:30

Ելոյթ ունենալով Ազատութեան Հրապարակում, ԵԿՄ փոխնախագահ Միասնիկ Մալխասեանը կոչ է արել գեներալներին եւ սպաներին, թէ բանակի եւ թէ միւս իրաւապահ մարմինների, եթէ չեն ուզում կրել ժողովրդի անէծքը, թող միանան ժողովրդին:

## ՌԵՖՈՐՄՆԵՐ ԸՍՏ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ

ՀԵՐՄԻՆԷ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ

*Lragir.am*, 18:40

Այն ամէնը, ինչ կատարւում է Հայաստանում, շատ հետաքրքիր գործընթաց է: Ինչպէս ասում են ռուսները՝ момент истины: Բնականաբար, ճշմարտութիւններն այս դէպքում աւում են ոչ թէ հեռուստատեսութեամբ, այլ կուսակցութիւնների պերմամենտ տարուող քննարկումների ժամանակ: Յատկապէս «անկեղծ» խօսակցութիւններ են ընթանում Հայաստանի Հանրապետական Կուսակցութիւնում: Եւ քանի որ այդ կուսակցութիւնը շատ է ուռճացել վերջին տարիներին զանազան ռեսուրսներով, ըստ այդմ էլ բաժանուել է «ենթախմբերի», որոնցից իւրաքանչիւրն ունի իր շահը եւ հետեւապէս իր ճշմարտութիւնը եւ ապագայի իր տեսլականը:

Եւ այսպէս, ինչ են ուզում մեզանից հանրապետականները: Հանրապետականութեան գաղափարախօսութիւնն ընդհանրապէս ենթադրում է այն ամէնը, ինչ ողջ աշխարհում հասկանում են որպէս ժողովրդավարութիւն, իշխանութիւնների տարանջատում, հանրային մասնակցութիւն եւ նմանատիպ «ոչ ազգային» գաղափարները: Սակայն Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան գաղափարախօս է յայտարարուած ցեղակրօն Նժդեհը, կուսակցութեան հիմնադիրն է Աշոտ Նաւասարդեանը, ով ժամանակին ցանկանում էր Հայաստանում հիմնել գործարաններ, որոնք պէտք է չափէին հայերի գանգերը եւ որոշէին՝ ով է արիացի, իսկ այսօր էլ Հանրապետական Կուսակցութեան առաջնորդն է Սերժ Սարգսեանը, ով առանձնայատուկ թուլութիւն ունի Հայ Առաքելական եկեղեցու հանդէպ, ինչը հակասում է Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան հիմնադիր հայրերի համոզմունքներին: Ահա այսպիսի խառնաշփոթ: Եւ ըստ այդմ, սա այն խոհանոցն է, որտեղ ընթանում են «քննարկումներ» Հանրապետական Կուսակցութեան

տարբեր խմբաւորումների միջեւ:

Ըստ մերձհանրապետական շրջանակների, Հանրապետական Կուսակցութիւնում կան երեք հիմնական խմբաւորումներ՝ «ռեֆորմիստների», որոնց առաջնորդն է Կարէն Կարապետեանը, փոխվարչապետ Յովիկ Աբրահամեանի խումբը, որոնց կուսակցութեան ներսում պայմանականօրէն անուանում են «կոռուպցիոնէրների խումբ», որոնք ունեն հայ ժողովրդի էութեան խորքային ըմբռնում եւ փայլուն կազմակերպիչներ են, նրանց կարելի է նաեւ անուանել ազգային պահպանողականներ, եւ նժդեհական խումբը Գալուստ Սահակեանի գլխաւորութեամբ, որոնք երդուեալ նժդեհականներ են, ինչը յանգեցնում է երթուղային գծերի արդար բաշխմանը: Համարւում է, որ այս ուղղութիւնը չի կարող յանգեցնել քաղաքական զարգացման, քանի որ գծերն արդէն վաղուց բաժանուած են եւ որեւէ նոր զարգացում այստեղ չի կարելի սպասել:

Այսպիսով, միակ խումբը, որը կարող է նոր խօսք ասել քաղաքական դաշտում, դա Կարէն Կարապետեանի «ֆրակցիան է», որն ունի նոր գաղափարախօսութիւն եւ որին յարում են երիտհանրապետականները: Որն է նրանց գաղափարախօսութիւնը: Ըստ լաւատեղեակ աղբիւրների, այս խումբը ցանկանում է Հայաստանը տանել Ռուսաստանի ճանապարհով, այսինքն ջախջախել օլիգարխներին, սահմանափակել Յովիկ Աբրահամեանի խմբի ազդեցութիւնը, նրա փորձն օգտագործել միայն ծայրայեղ դէպքերում, իսկ դրան զուգահեռ անել այն, ինչ գրուած է Սերժ Սարգսեանի նախընտրական ծրագրի ենթատեքստում. սահմանափակել ազատութիւնները, ձեւական դարձնել ընտրական համակարգը եւ ձերբազատուել քրէական տարրերից, որոնք վարկաբեկում են կուսակցութիւնը որոշակի ազատութիւն տալ փոքր եւ միջին բիզնէսին եւ կառուցել երիտասարդ հանրապետականներից բաղկացած նոր բիւրոկրատական բուրգը: Սակայն երիտհանրապետականների խմբաւորումն իր ծրագրերի հիմնական խոչընդոտ է տեսնում ի դէմս Ռոբերտ Քոչարեանի, որն այդ համակարգում դերակատարում չունի եւ որը կարող է իր դերն ունենալ՝ հիմնուելով ուժայինների եւ հանրապետականանների ազգային-պահպանողական թեւի վրայ:

Եւս մի կարեւոր հանգամանք. այս մոդէլի յաղթանակի դէպքում, Հայաստանում գործող քաղաքական կուսակցութիւններն ուղղակի որեւէ դերակատարում չունեն, չունեն դերակատարում նաեւ հասարակական կազմակերպութիւնները, իսկ մտաւորականները կարող են անդրադառնալ Ցեղասպանութեանը եւ հայ-ռուսական հազարամեայ բարեկամութեան խնդիրներին: Կարելի է ենթադրել, որ ռեֆորմիստների թեւն այլընտրանք չունի, մնում է միայն այնտեղ մտածել մի որեւէ դերակատարութիւն Ռոբերտ Քոչարեանի համար:

## «ԲԵՐՄԱՆ ԵՆ ԵՆԹԱՐԿՈՒԵԼ» ՄԻՏԻՆԳԻ

*A1+*, 18:40

Ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի Վանաձորի Հայքի հրապարակում հանրահաւաք էին նախաձեռնել մարզային ու քաղաքային իշխանութիւնները: Հանրահաւաքին մասնակցում էին ԱԺ-ի պատգամաւորներ, պետական հիմնարկ-ձեռնարկութիւնների աշխատակիցներ: Վերջիններից շատերն, ի դէպ, մեզ հետ զրոյցում դժգոհում էին, որ իրենց «տնից-տեղից կտրել են, ու բերել անիմաստ հանրահաւաքի»: Մօտ 500 հոգանոց հանրահաւաքի ժամանակ, ելոյթ չունեցան Լոռու մարզպետ Արամ Քոչարեանն ու

Վանաձորի քաղաքապետ Սամուէլ Դարբինեանը: Փոխարէն՝ ելոյթ էին ունենում երիտասարդներ, որոնց խօսքից ակնյայտ էր, որ այնքան էլ լաւ չէին պատրաստուել ելոյթին: Հաւաքուածներից մի քանի երիտասարդ ամօթանք ստացան մի կնոջից, երբ անվայելուչ արտայայտութիւններ հնչեցրին առաջին նախագահի հասցէին:

Թիւ 3 պոլիկլինիկայի բուժքոյրերից մէկն էլ, մեզ հետ զրոյցում ասաց, որ իրեն երեկոյեան զանգահարել են ու սպառնացել, որ եթէ այսօր ներկայ չգտնուի հանրահաւաքին, ապա աշխատանքից կ՚ազատուի: Մի քանի այլ մասնակից էլ վստահեցրին, որ իրենց նոյնպէս «բերման» են ենթարկել:

«Սա ինչ խայտառակութիւն է: Եթէ ընտրուել են, ինչո՞ւ են այս էժանագին միջոցներին դիմում: Թքած ունեմ իրենց տուած 5000 դրամի վրայ, որ այսօր պիտի մեզ տան» , - ասաց ուսուցչուհի Ս.Գ.-ն:

Միայն Յովհաննէս Աբէլեանի անուան պետական դրամատիկական թատրոնի աշխատակիցներն էին, որ հրաժարուել էին մասնակցել «Ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի» կարգախօսը կրող հանրահաւաքին:

«Ամբողջ միջոցառումը ցոյց տուեց, որ վարչական ռեսուրսների լայնօրէն կիրառմամբ հերթական անգամ հանրահաւաքին «բերման էին» ենթարկել ընտրողներին, որոնք իրենց աշխատանքի եւ զբաղմունքի բնոյթով կախուածութեան մէջ են գտնւում իշխանութիւնների եւ տեղական ինքնակառավարման մարմիններից:

Սա հանդիսանում է քաղաքացիների խաղաղ ցոյցերի եւ միաւորումների ազատութեան կոպիտ ոտնահարում՝ մասնակցելուն պարտադրելու ձեւով: Վարորդներից կամ նախընտրական շտաբներից որեւէ բողոք չենք ստացել Լոռու մարզի այլ համայնքներից Վանաձոր տեղափոխելու ընթացքում ճանապարհային ոստիկանութեան աշխատակիցների կողմից խոչընդոտների մասին: Սա ակնյայտօրէն ցոյց է տալիս, որ իշխանական կուսակցութիւնը եւ նրա համակիրները գտնւում են արտօնեալ պայմաններում, ի տարբերութիւն ընդիմադիր ուժերի:

Տեղի ունեցածը վերստին վկայում է գործող իշխանութիւնների իրական բնոյթը, եւ այն, թէ ինչպիսի երկիր է մեզ առաջնորդում կեղծիքներով եւ բռնութիւններով զաւթած իշխանական ռեժիմը», - ասւում է ՀՔԱ Վանաձորի գրասենեակի յայտարարութեան մէջ:

**ՀԱՄԵՐԳ ԷՐ**

Փետրուարի 24-ին Արմաւիրի հրապարակը լիքն էր մարզի բնակիչներով ու համայնքապետերով:

Երբ հարթակ բարձրացան մարզային իշխանութիւնների ներկայացուցիչները պարզուեց, որ հանդիպումը բողոքի ակցիա չէր, այլ տօնական ու յաղթական հանդիպում էր, որի կողքով չէր կարելի անտարբեր անցնել ու ժողովրդին ճիշտ ընտրութիւն կատարելու համար չշնորհաւորել:

Արմաւիրի մարզպետարանի աշխատակազմի ղեկավար Փառանձեմ Կարապետեանը, ով առաջինը ողջունեց հաւաքուածներին, յորդորեց չտարուել քաղաքական բախումներով եւ զերծ մնալ միմեանց նկատմամբ անյարգալից վերաբերմունք դրսեւորելուց:

Այնուհետեւ իր օրհնութեամբ ու շնորհաւորանքներով հարթակ բարձրացաւ Արմաւիրի թեմի առաջնորդ Տէր Սիոն Եպիսկոպոս Ադամեանը եւ ժողովրդին խաղաղութեան ու համերաշխութեան կոչ արեց: Իսկ Արմաւիրի մարզպետ Աշոտ Ղահրամանեանը, յատուկ շնորհակալութիւն յայտնեց ընտրողներին եւ իր մաղթանքներն ուղղեց ինչպէս հանրու-

թեանն, այնպէս էլ Սերժ Սարգսեանին:

## «ԱԶԱՏ ԱՐՁԱԿԷՔ» (video)

*A1+*, 18:56

Ազատութեան Հրապարակ են վերադարձել բազմահազարանոց երթի մասնակիցները: Նրանք անցան Մաշտոցի Պողոտայով, Ամիրեան փողոցով, Հանրապետութեան Հրապարակով, Նալբանդեան, Թումանեան փողոցներով:

Այսօր երթի մասնակիցները պահանջում էին ազատ արձակել ձերբակալուածներ Արամ Կարապետեանին, Գագիկ Ջհանգիրեանին, Սմբատ Այվազեանին եւ միւսներին:

Ի դէպ, երթի մասնակիցներին չի յաջողուել հասնել ԱԱԾ, որտեղ գտնւում է Արամ Կարապետեանը: Նալբանդեան-Թումանեան խաչմերուկում կանգնած էին ոստիկաններ, որ թոյլ չեն տուել շարունակել երթը Նալբանդեան փողոցով: Ցուցարարները ենթարկուել են ոստիկանների հրահանգին:

## ԿԸՅ-Ն ՈՐՈՇԵՑ

*A1+*, 18:58

ԿԸՅ նախագահ համարեց Սերժ Սարգսեանին: Մանրամասներն աւելի ուշ:

## «ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՅԱՂԹԵԼ Է»

*A1+*, 19:06

«Ժողովուրդը յաղթել է տականքին», - այսօր իր ելոյթը Ազատութեան Հրապարակում այսպէս սկսեց ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

«Սա բարբարոսական, թաթար-մոնղոլական բռնութիւն է ժողովրդի դէմ, այսպիսի ընտրութիւններ Հայաստանում երբեւէ տեղի չեն ունեցել», - ասաց նա եւ տեղեկացրեց, որ իրենք ունեն 40 ընտրական տեղամասի արձանագրութիւնների համեմատութիւնը ԿԸՅ-ում գտնուող արձանագրութիւնների հետ. այդ 40 տեղամասում` 1923 տեղամասից, Սերժ Սարգսեանի ձայները աւելացուած են եղել 10 հազար քուէով, Տէր-Պետրոսեանի ձայները պակասեցուած են եղել 7 հազարով, Արթուր Բաղդասարեանինը` 5 հազարով: «Ընդամէնը 40 տեղամասի մէջ արդէն տեղի է ունեցել 1,5 տոկոսի յաւելում. եթէ 40 տեղամասը դառնում է 400, Սերժ Սարգսեանի ձայները հաւասարւում են իրենց իսկ տուեալներով 39-40 տոկոսի, եթէ դա դառնում է 1000, ուրեմն Սերժ Սարգսեանը գրաւել է 4-րդ տեղը», - ասաց Տէր-Պետրոսեանն ու նշեց, որ 1-ին տեղում ինքն է, երկրորդում Արթուր Բաղդասարեանը, երրորդում Վահան Յովհաննիսեանը, եւ միայն չորրորդ տեղում Սերժ Սարգսեանն է: «Սա է իրականութիւնը, ես յաղթել եմ 65-66 տոկոսով», - ասաց նա:

Լեւոն Տէր-Պետրոսեանը նաեւ տեղեկացրեց, որ այս խախտումներն արդէն ցոյց են տալիս, որ ընտրութիւններ Հայաստանում չեն կատարուել, «իսկ դիտորդներն արձանագրել են ընդամէնը պրոցէսը. ընտրութիւնների արդիւնքների եւ որակի մասին դիտորդները կարծիք չեն արտայայտել»: Իր ելոյթում Լեւոն Տէր-Պետրոսեանն ասաց, որ եւրոպացի դիտորդները կուլտուրական մարդիկ են եւ խօսում են միջազգային չափանիշների լեզուով, «սակայն եւրոպական ստանդարտներ եւ Հայաստանում կայացած վերջին ընտրութիւններ բառերի զուգահեռութիւնը պարզապէս սրբապղծութիւն է եւրոպական ստանդարտներ հասկացութեան նկատմամբ»:

Տէր-Պետրոսեանը բացայայտեց նաեւ իշխանութիւնների ստրատեգիան. «Դեռ արդիւնքները չեն ամփոփուել եւ դրանց ստրատեգիան ժողովրդի մոբիլիզացիան մաշեցնելն է, միւս կողմից իրենց ճաքեր տուող, ճեղքուածներ տուող իշխանական համակարգը պահելը եւ միասնութիւնը, ոգին ապահովելը. երկու ստրատեգիական խնդիրներն էլ լուծել չի յաջողւում: Ժողովրդի մոբիլիզացիան օր-օրի աճում է, իշխանական համակարգի քայքայումը օր-օրի աւելանում»:

Տէր-Պետրոսեանը վստահեցրեց, որ ազատամարտիկները իրենց հետ են, իսկ իշխանութեան կողմից պարբերաբար ստայօդ լուրեր են տարածւում, թէ երկրապահները տատանումների մէջ են, լքել են իրենց նախկին դիրքը. «Սա իշխանութիւնների հերթական դեզինֆորմացիան է, ստորութիւնը, ժողովրդի վստահութիւնը կոտրելու համար: Այդպիսի բան չկայ, չի կարող լինել»: Ապա տեղեկացրեց, որ այսօր ԵԿՄ-ից դուրս գալու դիմում են գրել մի քանի հրամանատարներ, եւ իրենք «առանց ափսոսանքի այդ 7-8 հոգուն նուիրում են Սերժ Սարգսեանին ու Ռոբերտ Քոչարեանին: Բայց անգամ դրանք լաւ հրամանատարներ են, Արցախեան պատերազմում վաստակ ունեցող մարդիկ եւ ես վստահ եմ, որ ընդամէնը չեն կողմնորոշւում իրականութեան մէջ, վաղը, միւս օրը այդ մարդիկ էլ են կանգնած լինելու մեր կողքին՝ Արշալոյս Փայտեանը, Հայկազ Բաղմանեան, Սէյրան Օհանեանը, հրաշալի զինուորականներ, ես համոզուած եմ, որ վաղը նրանք մեզ հետ են լինելու»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը ներկայացրեց նաեւ իրենց՝ համաժողովրդական շարժման ռազմավարութիւնը, որն ուղիղ հակառակն է. «Մենք շարունակում ենք հզօրացնել մեր շարժումը, դուք նկատած կը լինէք, օր-օրի աւելանում են մեր շարքերը, եւ շարունակում ենք, դա նաեւ ինքնաբուխ է, պետական մեքենայի ճաքերի լայնացումը, որը կը դառնայ մի լայնահուն գետ ամբողջ պետական ապարատը՝ իր ոստիկանութեամբ, անվտանգութեան ծառայութեամբ, նախարարութիւններով, գալու են, կանգնեն այս ժողովրդի կողքին եւ Սերժ Սարգսեանի կողքին մնալու է Սերժի վարորդ Վաչոն, Սերժի եղբայր Սաշիկը, Թոխմախի Միհրը ու Նեմեց Ռուբոն: Մի կողմից ազգի տականքն է, որը որքան գնայ, այնքան նուազելու է, միւս կողմից ողջ ժողովուրդն է, որը որքան գնայ, պէտք է ընդլայնուի ու հզօրանայ», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ԴՐՕՇՆԵՐ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*Lragir.am*, 19:38

Չնայած ուշ ժամին եւ ցուրտ եղանակին, Ազատութեան Հրապարակում մարդկանց թիւը չի պակասում, ընդհակառակը աւելանում է: Ընդ որում, արդէն հրապարակում ծածանւում են նաեւ Ուկրաինայի դրօշներ:

## ՄԻԱՑԱՆ ԱԳՆ 6 ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ

*Lragir.am*, 19:58

Դեսպանների եւ փոխարտգործնախարարի երէկուայ յայտարարութեանն այսօր միացել են Արտաքին Գործերի նախարարութեան եւս վեց բարձրաստիճան պաշտօնեաներ, ովքեր յայտարարել են, որ միանում են համաժողովրդական շարժմանը: Այս բարձրաստիճան պաշտօնեաներն են՝ ԱԳՆ մամուլի քարտուղար Վլադիմիր Կարապետեանը, միջազգային կազմակերպութիւնների վարչութեան ՄԱԿ-ի բաժնի վարիչ

Վարսենիկ Բաղդասարեանը, Ամերիկայի եւ Կանադայի բաժնի վարիչ Կարինէ Աֆրիկ-եանը, ԱԳՆ սպառազինութեան եւ անվտանգութեան հարցերի վարչութեան ՆԱՏՕ բաժնի վարիչ Մարթա Այվազեանը, Եւրոպայի վարչութեան խորհրդական Առաքել Սէմէրջեանը եւ Ամերիկայի վարչութեան Հարաւային Ամերիկայի բաժնի երկրորդ քարտուղար Էլէն Պետէյեանը:

Լեւոն Տէր-Պետրոսեանը ասում է՝ սա այն է, ինչ-որ ինքն ասում է, որ մեր պետական հիմնարկներում հիմնականում աշխատում են ազնիւ եւ բարեկիրթ մարդիկ, եւ միայն նրանց վերադասներն են ծառայում աւազակապետական համակարգին: Նա ասում է, որ նոյնը վերաբերում է նաեւ ոստիկանութեանը եւ անվտանգութեան միւս կառոյցներին: Լեւոն Տէր-Պետրոսեանն ասում է, որ նման մակարդակի յայտարարութիւնը միջազգային առումով չափազանց կարեւոր յայտարարութիւն է: Նրա խօսքով, զարգացած երկրներում հազուադէպ է պատահում, երբ 4-5 տարին մի անգամ մէկ դեսպան անհամաձայնութիւն յայտնի պետական համակարգին, եւ այդ դէպքում դեսպանը դառնում է հերոս: Առաջին նախագահն ասում է, որ իր կարծիքով մենք պէտք է հպարտանանք բոլոր այն մարդկան-ցով, ովքեր յայտարարել են համաժողովրդական շարժմանը միանալու մասին:

Լեւոն Տէր-Պետրոսեանը կոչ է արել հանրահաւաքի մասնակիցներին վանկարկել այսօր ձերբակալուած գործիչների անունները՝ Գագիկ, Արամ, Սմբատ: Նա ասել է, որ ովքեր ձերբակալւում են շարժմանը միանալու համար, նրանք հերոսանում են, եւ նրանց թւում են «պոտենցեալ ձերբակալուողները», եւ այժմ ինքը արդէն մրցակցութիւն է նկա-տում երիտասարդների շրջանում, կատակով աւելացրել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Ինչ վերաբերում է ԱԳՆ բարձրաստիճան պաշտօնեաներին, ովքեր միացել են շարժմանը, Լեւոն Տէր-Պետրոսեանը ասել է, որ իր համար մարդկութեան հիասթափու-թեան վերջին ճիչը կը լինի, եթէ Վարդան Օսկանեանը չմիանայ համաժողովրդական շարժմանը: Նա ասել է, որ միանալու դէպքում Վարդան Օսկանեանը կը քաւի իր 10 տարուայ մեղքերը, հակառակ դէպքում քամահրանքի կ՚արժանանայ: Աւելացնենք, որ այսօր Լեւոն Տէր-Պետրոսեանը էլի է ելոյթ ունենալու:

## ԱԳՆ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐԸ ՄԻԱՑԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ

*A1+*, 20:18

Համաժողովրդական շարժմանն են միացել ԱԳ-ի նախարարութեան մամուլի եւ տեղեկատուութեան վարչութեան պետ Վլադիմիր Կարապետեանը, ԱԳՆ միջազգային կազմակերպութիւնների վարչութեան ՄԱԿ-ի բաժնի վարիչ Վարսենիկ Բաղդասարեանը, ԱԳՆ-ի ԱՄՆ-ի վարչութեան ԱՄՆ-ի եւ Կանադայի բաժնի վարիչ Կարինէ Աֆրիկեանը, սպառազինութիւնների վերահսկման եւ միջազգային անվտանգութեան վարչութեան, ՆԱՏՕ-ի բաժնի վարիչ Մարթա Այվազեանը, Եւրոպայի վարչութեան խորհրդական Արտաշէս Երիցեանը եւ ԱԳ Ամերիկայի վարչութեան Հարաւային Ամերիկայի բաժնի երրորդ քարտուղար Էլէն Պետէյեանը:

Այս մասին հանրահաւաքի ժամանակ յայտարարեց ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

«Պաշտպանութեան երկու փոխնախարարի, դատախազի տեղակալի յայտարա-րութիւնից յետոյ, ԱԺ 10 ազատամարտիկ պատգամաւորի յայտարարութիւնից յետոյ Արտաքին Գործերի նախարարութեան այսպիսի բարձրաստիճան պաշտօնեաների

յայտարարութիւնը ցոյց է տալիս եւ ապացուցում է այն, ինչ երեք ամիս ապացուցում էի», - ասաց նա: Իսկ ապացուցում էր, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, որ իշխանութեան մէջ կան հիանալի մարդիկ, ովքեր ուղղակի գործող իշխանութեան պարագայում թակարդն են ընկել եւ չեն կարողանում դուրս գալ, «մի մասը յանցակից լինելով, մի մասը մոլորուած լինելով, երրորդ մասը չհասկանալով, թէ ինչ է կատարւում մեր երկրում»:

«ԱԳՆ բարձրաստիճան պաշտօնեաների յայտարարութիւնը միջազգային առումով կարեւորագոյն իրադարձութիւն է», - ասաց Տէր-Պետրոսեանը եւ աւելացրեց, որ այդպիսի բաներ ուրիշ, քաղաքակիրթ երկրներում լինում են շատ հազուադէպ, ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Կանադայում, Գերմանիայում, այլ տեղ, բայց եթէ որեւէ դեսպան, որեւէ դիւանագէտ իր անհամաձայնութիւնը յայտնի տարուող քաղաքականութեանը, նա դառնում է այդ երկրի մեծագոյն հերոսներից մէկը. «ՀՀ ԱԳՆ 10 բարձրաստիճան պաշտօնեաները հրապարակաւ, ի լուր աշխարհի յայտարարեցին իրենց քաղաքացիական դիրքորոշումը. մենք պէտք է հպարտանանք նրանցով: Նրանք բոլորը հերոսներ են»:

Ի դէպ, Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ վերջին քայլը կը լինի եթէ արտաքին գործերի նախարարութեան գլուխը՝ նախարար Վարդան Օսկանեանը լքի իր ընկերներին եւ միանայ այս կոչին. եւ այս պահին չլինի իր յայտարարութիւնը, կամ հրաժարական տայ իր պաշտօնից. «Սրանով Վարդան Օսկանեանը կարող է 10 տարուայ իր մեղքերը լիակատար քաւել եւ վերջապէս գալ, կանգնել ժողովրդի կողքին: Եթէ նրա մէջ աբուռի մի նշոյլ պահպանուել է, նա այդ քայլը կը կատարի, այլապէս կ'արժանանայ մեր ողջ ժողովրդի քամահրանքին»:

## ԸՍՏ ԿԸՅ-Ի՝ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՀՀ ՆԱԽԱԳԱՀ

*Ա1+*, 20:23

«ՀՀ նախագահ է ընտրուել Սերժ Ազատի Սարգսեանը» - այսօր բարձր տրամադրութեամբ յայտարարեց ՀՀ ԿԸՅ նախագահ Գարեգին Ազարեանը: Սերժ Սարգսեանի նախագահ ընտրուելու մասին որոշման տակ ստորագրեցին ԿԸՅ 6 անդամներ: ԿԸՅ-ի նիստն այսօր բոյկոտել էին ԿԸՅ-ում Ժառանգութիւն կուսակցութեան եւ ՕԵԿ ներկայացուցիչները, իսկ ՀՅԴ ներկայացուցիչ Համլէտ Աբրահամեանը հանրապետութեան նախագահ ընտրուելու մասին որոշման տակ ստորագրեց յատուկ կարծիքով:

Հանրապետութեան նախագահի ընտրութիւնների արդիւնքների վերաբերեալ ԿԸՅ-ի արձանագրութեան համաձայն փետրուարի 19-ին քուէարկութեանը մասնակցել է 1 միլիոն 671 հազար 27 մարդ, տեղամասային ընտրական յանձնաժողովներին յատկացուել է 2 միլիոն 390 հազար քուէաթերթիկ:

Ըստ ԿԸՅ-ի տուեալների Սերժ Սարգսեանը հաւաքել է 862 369, Լեւոն Տէր-Պետրոսեանը 351 222, Արթուր Բաղդասարեանը 272 427 ձայն, իսկ մնացած թեկնածուները՝ աւելի պակաս թուով ձայներ: ԿԸՅ-ի արձանագրութեան տակ այսօրուայ նիստին ներկայ 6 անդամների ստորագրութիւնից յետոյ Գարեգին Ազարեանը մէկ անգամ եւս յայտարարեց. «ՀՀ նախագահ է ընտրուել Սերժ Սարգսեանը: Բոլորիս շնորհաւորում եմ»:

ԿԸՅ նախագահի յայտարարութիւնը աւարտուեց առանց ծափահարութիւնների, փոխարէնը լրագրողներից մէկը հարցրեց. «Բա՞ յետոյ»: «Յետոյ ընտրութիւնները աւարտուեցին», - ժպտալով ասաց Գարեգին Ազարեանը: Իսկ ինչ էք պատրաստւում անել, եթէ հանրահաւաքի մասնակիցները շարժուեն ԿԸՅ. *Ա1+*-ի հարցին՝ Ազարեանը

պատասխանեց. «Այդ հարցը կարծում եմ, որ ինձ չպէտք է տայիք: Ի՞նչ եմ անելու՝ նոյն թուերն եմ կարդալու: Մենք շատ լաւ աշխատեցինք եւ մեր աշխատանքը գնահատուեց»: Գարեգին Ազարեանը նշեց ԵԱԿՀ դիտորդներն արձանագրել են, որ ՀՀ-ի պատմութեան մէջ սա լաւագուն ընտրութիւններն էին:

Նիստի աւարտին նա նաեւ նշեց, որ ՀՀ Վարչական դատարանի նախագահի գրութեան համաձայն՝ Վարչական դատարանում այս պահին չկան ընտրական իրաւունքի պաշտպանութեան վերաբերեալ անաւարտ գործեր: Ազարեանը նաեւ նշեց, որ այն ընտրական տեղամասերի արդիւնքները, որտեղ վերահաշուարկ է կատարուել, ընտրութիւնների վերջնական արդիւնների վրայ չեն ազդել:

Ի դէպ, ՀՀ նախագահի ընտրութիւնների վերաբերեալ ԿԸՅ-ն-ի արձանագրութեան հրապարակման ընթացքում ԿԸՅ-ն շրջապատուած էր զինուած ոստիկաններով:

## ՀՅԴ-Ն ԴԺԳՈՀ Է, ԲԱՅՑ ՍՏՈՐԱԳՐԵՑ

*A1+*, 20:28

Այսօր ԿԸՅ նիստում ներկայ անդամներից ՀՅԴ ներկայացուցիչ Համլէտ Աբրահամեանը միակն էր, որ թէեւ ստորագրեց ՀՀ նախագահի ընտրուելու մասին ԿԸՅ-ի որոշման տակ, համաձայն որի ՀՀ նախագահ է Սերժ Սարգսեանը, սակայն յատուկ կարծիք ներկայացրեց. «ՀՀ նախագահի 2008թ.-ի փետրուարի 19-ի ընտրութիւնների քուէրակութեան նախնական արդիւնքների ստորագրման ժամանակ իմ կողմից ներկայացուած յատուկ կարծիքում նշուած խախտումները. ինչպէս նաեւ ՀՀ ընտրական համակարգում դեռեւս 1995թ.-ից արմատաւորուած եւ մինչ օրս շարունակուող ընտրակաշառքը, տարբեր տեսակի բռնութիւնները եւ թերութիւնները ինձ բերել են այն համոզման, որ ՀՀ-ում գոյութիւն ունեցող ընտրական համակարգը լրջագոյն եւ արմատական բարեփոխումների կարիք ունի»:

Նիստից յետոյ Համլէտ Աբրահամեանը պատասխանեց *Ա1+*-ի հարցերին:

«Պարոն Աբրահամեան, ինքներդ ձեզ չէ՞ք հակասում, մի կողմից խօսում էք ընտրակաշառքների, կեղծիքների մասին, իսկ միւս կողմից՝ ստորագրում արդիւնքների մասին արձանագրութեան տակ», - հարցրեցինք:

«Դա իմ որոշելիքն է, - եղաւ նրա պատասխանը: - Ես առաջնորդուել եմ, Ընտրական Օրէնսգրքով: Այս համակարգը, որ կայ Հայաստանում՝ պէտք է փոխուի, այս յանձնաժողովները չպէտք է լինեն: Պիտի մէկը պատասխան տայ ընտրութիւնների համար՝ պետութիւնը, որ մէկը միւսի վրայ չգցի պատասխանատուութիւնը ու ասի՝ դու ես մեղաւոր, դու ես մեղաւոր»:

Համլէտ Աբրահամեանը չի կիսում ԿԸՅ նախագահ Գարեգին Ազարեանի այն տեսակէտը, թէ այս ընտրութիւնները լաւագոյն են նորանկախ ՀՀ պատմութեան մէջ եւ ասաց. «Ընտրութիւններն ընթացել են խախտումներով ու կեղծիքներով»:

## ՀՅԴ ՅԱՏՈՒԿ ԿԱՐԾԻՔԸ

*Lragir.am*, 20:34

Հայաստանի Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի նախագահ Գարեգին Ազարեանը հրապարակել է փետրուարի 19-ի ընտրութեան վերջնական արդիւնքը: Ըստ ԿԸՅ, քուէարկութեանը մասնակցել է 1 միլիոն 671 հազար 027 ընտրող: Ձայները բաշխուել

են այսպէս՝ Սերժ Սարգսեան՝ 862 հազար 369, Լեւոն Տէր-Պետրոսեան՝ 351 հազար 222, Արթուր Բաղդասարեան՝ 272 հազար 427, Վահան Յովհաննիսեան՝ 100 հազար 966: ԿԸՅ նիստին ներկայ չէին Ժառանգութիւն եւ Օրինաց Երկիր կուսակցութիւնների անդամները: Արձանագրութիւնը ստորագրել են նիստին ներկայ բոլոր 6 անդամները, այդ թւում ՀՅԴ, որը ներկայացնող Համլէտ Աբրահամեանը յատուկ կարծիք է ներկայացրել: ՀՅԴ այդ յատուկ կարծիքը թերեւս կը գրուի աւանդական կուսակցութեան պատմութեան ոսկէ մատեանում: «Իմ կողմից ներկայացուած յատուկ կարծիքում նշուած խախտումները, ինչպէս նաեւ Հայաստանի Հանրապետութեան ընտրական համակարգում դեռեւս 1995 թուականից արմատաւորուած եւ մինչ օրս շարունակուող ընտրակաշառքները, տարբեր տեսակի բռնութիւնները եւ թերութիւնները ինձ բերել են այն համոզման, որ Հայաստանի Հանրապետութիւնում գոյութիւն ունեցող ընտրական համակարգը լրջագոյն եւ արմատական բարեփոխումների կարիք ունի», ասել է ՀՅԴ ներկայացուցիչը, ըստ *Ազատութիւն* ռադիոկայանի:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԾՆՈՒԵՑ ՍԱԴԴԱՄ ՀՈՒՍԷՅՆ

*Lragir.am*, 20:39

Մօտ երկու ժամ առաջ իշխանութիւնը կատարեց եւս մի յիմարութիւն, փետրուարի 24-ին, ժամը 19-ի սահմաններում յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանն Ազատութեան Հրապարակի հանրահաւաքի մասնակիցներին, նրանց տեղեկացնելով, որ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը Սերժ Սարգսեանին հռչակել է Հայաստանի Հանրապետութեան նախագահ: Բայց ԿԸՅ վճիռը, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, հաւասարակշռուած է մէկ այլ վճռով, որպիսին նա համարել է համար 78 դպրոցի աշակերտ Առնոլդ Ջանեանից ստացուած մի նամակով, ուր Առնոլդ Ջանեանը ասում է, որ ինքը Լեւոն Տէր-Պետրոսեանին համարում է Հայաստանի նախագահ: Դա է հայ ժողովրդի վճիռը, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, ասելով, որ այդ աշակերտի շուրթերով խօսում է Աստուած:

Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, թէ կարելի է շնորհաւորել մեզ, որ աւազակապետական ռեժիմն ունեցաւ հերթական ոչ լեգիտիմ նախագահը: Բայց Սերժ Սարգսեանի յաղթանակը Լեւոն Տէր-Պետրոսեանը համարում է պիւռոսեան, ասելով, որ ի հակառակ ժողովրդի կամքի իրեն հռչակելով նախագահ, Սերժ Սարգսեանը չի կարողանալու կառավարել երկիրը, չի կարողանալու կառավարել հպարտ, քաջ, հերոսական հայ ժողովրդին: Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, Սերժ Սարգսեանի համար դա կարող է ընդամէնը լինել գիշերուայ վաղանցիկ երազ: Ես չեմ պատկերացնում, որ միջազգային դիտորդները, եթէ նրանք մտածում են իրենց հեղինակութեան մասին, ընդունեն այդ ընտրութեան արդիւնքը, ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Այդ առիթով, Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշել է իր երէկուայ խօսքը արեւմտեան կառոյցների ու տէրութիւնների հասցէին, թէ նրանք չեն ցանկանում Հայաստանում ունենալ դեմոկրատական իշխանութիւն, այլապէս չէին լռի խայտառակ ընտրութիւնների փաստին ականատես լինելուց յետոյ: Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ համաժողովրդական շարժումը որդեգրում է արեւմտեան արժէքներ, բայց ոչ Արեւմուտքի սիրոյն, այլ այն բանի համար, որ դրանք է համարում միջազգային ընտանիքի լիարժէք անդամ դառնալու, զարգացած ու քաղաքա-

կիրթ պետութիւն լինելու միջոցը: Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ իրենք այն խելօք աշակերտը չեն, որ ժողովրդավարութիւն են սովորում, եւ Արեւմուտքն էլ դրա համար պէտք է շոյի իրենց գլուխը: Ըստ Տէր-Պետրոսեանի, ի տարբերութիւն ներկայիս Արեւմուտքի, որը ժողովրդավարութիւնը ժառանգութիւն է ստացել իրենց նախնիներից, հայ ժողովուրդը ժողովրդավարութիւնը կառուցել է իր ձեռքով, 1988 թուականին, առնչուելով խորհրդային բանտերին: Այդ տեսակէտից Լեւոն Տէր-Պետրոսեանը նոյնիսկ անքաղաքական է համարել, երբ Արեւմուտքը ժողովրդավարութիւն է ուզում սովորեցնել իրենց, այն դէպքում, երբ իրենք իրենց ձեռքով են առնչուել ժողովրդավարութեան կառուցմանը այս երկրում: Մեզ պէտք չէ, որ Արեւմուտքը մեզ ժողովրդավարութիւն սովորեցնի, մեզ պէտք է, որ այն իր անկեղծ վերաբերմունքը ցուցաբերի խայտառակ ընտրութիւնների հանդէպ, ասում է Լեւոն Տէր-Պետրոսեանը, հակառակ պարագայում ասելով, թէ կը կասկածեն միջազգային հանրութեան անկեղծութեան վրայ:

Տէր-Պետրոսեանի խօսքով, աշխարհի տէրութիւնները հիմնականում նախընտրում են տարբեր երկրներում քաղաքական նպատակներով պահպանել ստատուս քուոն, այն բնորոշելով կայունութիւն հասկացութեամբ: Բայց ներկայիս վիճակը, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, այնպիսի կայունութիւն է, որը ծնում է Սադդամ Հուսէյն: Հայաստանում այսօր ծնուեց Սադդամ Հուսէյն, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա նշել է, որ ցանկանում է Եւրոպային զերծ պահել մոլորութիւնից, որպէսզի այդ Սադդամ Հուսէյնի ծննդի մասին լռելով, Եւրոպան յետոյ ստիպուած չլինի Հայաստանում տանկերով հաստատել դեմոկրատիա: Բայց միեւնոյն ժամանակ, Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ չի կասկածում, որ Արեւմուտքը կը տայ առկայ արտառոց երեւոյթին իր անկեղծ գնահատականը:

## 15 ՕՐ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԻ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՄԱՆ ՀԱՄԱՐ

*Lragir.am,* 20:43

Այն բանից յետոյ, երբ ԿԸՅ-ն փետրուարի 24-ին Հայաստանի նախագահ է հռչակել վարչապետ Սերժ Սարգսեանին, նախագահի թեկնածու, առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը Ազատութեան Հրապարակում յայտարարել է, որ դա փաստացի ոչինչ չի նշանակում համաժողովրդական պայքարի համար: Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ ժողովուրդը, տասնապատկելով իր շարքերը, Սերժ Սարգսեանին կը հասկացնի, որ չի ընդունում կեղծիքներով ընտրուած այդ նախագահին: Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, որ Սարգսեանը գուցէ ինքն էլ խելագար չէ, որ չհասկանայ ժողովրդի այդ վերաբերմունքը, բայց եթէ չհասկանայ, ապա ժողովուրդը իր պայքարի ալիքը տասնապատկելով, հանրահաւաքներին իր մասնակցութիւնն աւելացնելով, դա կը հասկացնի Սերժ Սարգսեանին:

Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ իր թիմը փետրուարի 25-ին դիմելու է Սահմանադրական Դատարան, ուր վիճարկելու է ընտրութեան արդիւնքը: Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ կայ այդ արդիւնքը վիճարկելու եւ Ազատութեան Հրապարակի իշխանութիւնը հաստատելու 10-15 օր ժամանակ: Թող ոչ ոք չկասկածի, որ մենք յաղթելու ենք, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Դրա համար նա քաղաքացիներին կոչ է արել աւելի մեծացնել հանրահաւաքի մասնակիցների թիւը, իսկ կոնկրէտ փետրուարի 24-ի գիշերուայ համար Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, որ պէտք է հրապարակում մնայ

առնուազն տասը հազար մարդ:

«Քանի դեռ այս հրապարակը կանգուն է, Սերժ Սարգսեանը նախագահ չի դառնայ», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա ժողովրդին կոչ է արել հանդարտութեան, ասելով, որ հինգ ամսուայ համաժողովրդական պայքարը տուել է չափազանց մեծ պտուղներ, եւ ժողովուրդը ուղղակի գրոսմայստէրական պայքար է մղել, չկատարելով որեւէ սխալ: Լեւոն Տէր-Պետրոսեանը կոչ է արել պահպանել արդիւնաւէտ պայքարի այդ բարձր մակարդակը:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԴԻՄՈՒՄ Է ՍԴ

*A1+*, 20:54

ԿԸՅ-ի կողմից Սերժ Սարգսեանին նախագահ ճանաչելուց յետոյ, նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը դիմում է Սահմանադրական Դատարան՝ փետրուարի 19-ի ընտրութիւնները արդիւնքներն անվաւեր ճանաչելու պահանջով:

«Եթէ ուզում ենք հասնել մեր նպատակին, երկրում հաստատել օրէնքի իշխանութիւն, տէր կանգնել մեր երկրին, ապրել հպարտ, արժանապատիւ կեանքով, այս գիշեր այս հրապարակում լինելու է տասը հազար մարդ՝ ինձ հետ միասին: Քանի դեռ այս հրապարակը կանգուն է, Սերժ Սարգսեանը այս երկրի տէրը չէ: Վաղուանից սկսած՝ մեր հանրահաւաքները պէտք է տասնապատկուեն, հարիւրապատկուեն: Ես կոչ եմ անում մեր բոլոր ուսանողներին, որ բոլոր ԲՈՒՀ-երի դռներն իրենց համար փակ համարեն մինչեւ այն ժամանակ, քանի դեռ մենք չենք տօնել մեր յաղթանակը», - երեկոյեան ելոյթում ասաց առաջին նախագահը:

Նա նաեւ յայտարարեց, որ վաղը ժամը 15.00-ին, ինչպէս միշտ, կը լինի հանրահաւաքի սկիզբը, որը կարող է բաղկացած լինել մի քանի հանրահաւաքներից: «Քանի որ աշխատանքային օր է, երեքին կը սկսենք, երթով կ'ընդմիջենք, եւ ժամը հինգին-հինգ անց կէս կը սկսենք հիմնական հանրահաւաքը, որը ես համոզուած եմ՝ այլեւս այս հրապարակը կարող է չտեղաւորել», - ասաց նա:

Լեւոն Տէր-Պետրոսեանը նաեւ իր գոհունակութիւնը յայտնեց ընտրութիւնների յաջորդ օրուանից սկսուած հանրահաւաքային շարժման մակարդակից. «Հինգ օրուայ ընթացքում մեր ժողովուրդը խաղացել է գրոսմայստէրական մակարդակով, ոչ մի շեղում, ոչ մի թերութիւն չի եղել: Հանրահաւաքի ազատագրական ոգին անպայման հասնելու է իր յաղթական աւարտին»:

Այս խօսքերի արանքում հրապարակը պայթում էր «յաղ-թա-նակ, պայքար, պայքար մինչեւ վերջ» վանկարկումներով:

## «ԲԱՆ ՉԵՄ ՈՒԶՈՒՄ, ԼԵՒՈՆԻՆ ՏԵՍՆԵՄ ՆԱԽԱԳԱՀ...»

*A1+*, 21:09

Այսօր Ազատութեան Հրապարակում հաւաքուածների թիւը կրկնապատկուել է: Իրականութեան ծանօթանալու համար մարդիկ գալիս են Ազատութեան Հրապարակ: Հաւաքուածներից շատերին Ազատութեան Հրապարակ է բերել հեռուստաընկերութիւններով տրամադրուած տեղեկատուութիւնը, յատկապէս *Հ1*-ի *Հայլուր*ի: Հրապարակում հաւաքուածներն այսօր նախքան լրագրողների հետ զրուցելը նրանցից պահանջում էին լրագրողի կամ օպերատորի վկայականը: «*Հայլուր*ը թող բարեհաճի գայ հրապարակ,

տեսնի, թէ ովքեր են հաւաքուած , ինչ պահանջներ ունեն եւ նոր տեսանիւթեր պատրաստի: Եթէ առաջ լռում էին, այսօր շատ աւելի մեծ հարուած են հասցնում ժողովրդին՝ ստում են, կեղծում: Բոլոր այն լրագրողները, որոնք ապատեղեկատուութիւն են տարածում՝ ընտրութիւնները կեղծելու, այս իշխանութիւնների յանցագործութիւնների մասնակից են», - *Ա1+*-ին ասաց հանրահաւաքի մասնակից Տիգրան Գրիգորեանը:

Այսօր Ազատութեան Հրապարակ ներկայացաւ նաեւ Արմաւիրի մարզի Նոր Ամասիա գիւղի մի բնակիչ եւ յայտարարեց, որ իր եղբօրը՝ Սամուէլ Յարութիւնեանին, որը Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձն է, այսօր առաւօտեան ոստիկանները բռնի ուժով տանից տարել են:

Այսօր Տէր-Պետրոսեանին միացան նաեւ մի շարք ուսանողներ՝ «Համաուսանողական շարժման նախաձեռնող խումբը»: Ուսանողները դիմելով ԱԺ պատգամաւորներին՝ պահանջում են միանալ ժողովրդի մասսայական դժգոհութիւններին. «Մենք կարեւորում ենք ձեր անմիջական մասնակցութիւնը այդ գործընթացին: Կոչ ենք անում միանալու ձեր այն գործընկերներին, որոնք իրենց քաղաքացիական պարտքն են համարել միանալ համաժողովրդական շարժմանը: Միայն այդ կերպ կը կարողանանք կատարել ձեր պարտականութիւնը ժողովրդի առջեւ եւ պաշտպանել ձեր ընտրողների շահերը»: Այսօր Ազատութեան Հրապարակ էր եկել նաեւ Ատոմակայանի նախկին տնօրէն Սուրէն Ազատեանը: Նա հարթակից 3 անգամ շնորհակալութիւն յայտնեց հաւաքուածներին, իսկ թէ ինչո՞ւ 3 անգամ՝ հիմնաւորեց իր ելոյթում: Տէր-Պետրոսեանին ուղղուած առաջին շնորհակալութիւնը՝ նրա համեստութեան եւ իմաստութեան համար էր, երկրորդը, որ նա առաջադրեց իր թեկնածութիւնը, իսկ երրորդը՝ Սուրէն Ազատեանի մօր անունից էր. «Մայրս մէկ տարի յետոյ կը դառնայ 90 տարեկան: Ասում է. «Բան չեմ ուզում Լեւոնին տեսնեմ նախագահ՝ նոր մեռնեմ»: Մայրս Լեւոնին գիտի 50 տարուց աւել, միշտ ասում էր. «Լեւոնին լաւ պահէք»: Սուրէն Ազատեանը յիշեցրեց նաեւ պատերազմի ընթացքում Տէր-Պետրոսեանի կարգախօսերից մէկը. «Արցախեան պատերազմում յաղթանակ, խաղաղութիւն եւ Ատոմակայանի վերագործարկում»: 1995թ. նոյեմբերի 5-ին ժամը 15.55-ին Սուրէն Ազատեանը զանգահարել է Տէր-Պետրոսեանին եւ զեկուցել, որ ատոմակայանի էներգաբլոկներից մէկը վերագործարկուեց. «Տէր-Պետրոսեանը ինձ երեք անգամ շնորհակալութիւն յայտնեց: Իմ կեանքում աւելի մեծ պատուի չեմ արժանացել»:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ ԹԻԿՆԱՊԱՀՆԵՐԻՆ

*A1+*, 21:17

Այսօր ժամը 20:15-ի սահմաններում Նար-Դոս փողոցի վրայ ձերբակալուել են Լեւոն Տէր-Պետրոսեանի Երեւանի քաղաքային շտաբի պետ, ԱԺ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանին ուղեկցող թիկնապահները եւ տարուել անյայտ ուղղութեամբ: Հաղորդում է Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը:

Ի դէպ, Խաչատուր Սուքիասեանին չեն ձերբակալել միայն այն պատճառով, որ նա անձեռնմխելի պատգամաւոր է, ստուգելուց յետոյ նրան ազատ են արձակել, իսկ աւտոմեքենան տարել են, պատճառաբանելով, թէ տանում են աւելի մանրամասն զննութիւն իրականացնելու նպատակով: Նշենք, որ անձեռնմխելիութիւնը տարածւում է նաեւ պատգամաւորին պատկանող աւտոմեքենայի վրայ եւ այն այսօր ապօրինաբար է տարուել առայժմ յայտնի չէ, թէ ուր:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԻՑ ՄԻԱՅՆ ՆԱԽԱԳԱՀԻ ՆՍՏԱՎԱՅՐ (video)

*A1+*, 21:18

Այսօր Ազատութեան Հրապարակում ընթերցուեց ՀՀԿ անդամ Վարդան Հրաչիկի Մելքոնեանի նամակը՝ ուղղուած ժողովրդին. նա տեղեկացրել է, որ քիչ առաջ է վերադարձել Մոսկուայից, եւ տեղեկանալով, թէ ինչ է կատարւում հանրապետութիւնում, գնացել է ՀՀԿ գրասենեակ, սակայն դուռը փակ է եղել: Մելքոնեանը իր ՀՀԿ անդամատոմսը ուղարկել էր հրապարակ՝ պատռելու, ինչը եւ մեծ հաճոյքով կատարեց Հանրապետութիւն Կուսակցութեան քաղխորհրդի անդամ Սուրէն Սուրէնեանցը:

Մինչ այդ Ազատութեան Հրապարակում իր անդամատոմսը պատռեց ՀՀԿ մէկ այլ անդամ Կարինէ Յովհաննիսեանը: Նա խնդրեց, կոչ արեց ժողովրդին մնալ հրապարակում, որովհետեւ մէկ հոգին ոչինչ չի կարող անել:

Այսօր ՀՀԿ-ից եւս մի քանի հոգի պատռեցին իրենց անդամատոմսերը:

Իսկ Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօր յայտարարեց, որ ինքը պարբերաբար խօսելու է, նա խօսում էր տարբեր թեմաների մասին. մասնաւորապէս՝ անդրադարձաւ հանրային լրագրողներին. Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ ինքը խղճում, բայց ինչ-որ տեղ նաեւ յարգում է լրագրող Տաթեւիկ Նալբանդեանին, քան նրա ղեկավարութեանը. «Ինձ համար նա աւելի բարոյական, աւելի քաջ, աւելի համարձակ, աւելի ազնիւ մարդ է, քան նրա վտիտ ուսերի յետեւում թաքնուած խղճուկ Ալեքսան Յարութիւնեանը, Ռոբերտ Քոչարեանը եւ Սերժ Սարգսեանը: Այդ աղջիկը, կարելի է ասել, որոշ առումով հերոս է, կարողանում է անպատուութիւններ կրել, կարողանում է դիմանալ ժողովրդի վրդովմունքին, եւ, ասում եմ, նա զոհ է, եւ սա գուցէ մեր երկրի ամենաողբալի իրականութիւնն է»: Տէր-Պետրոսեանը տեղեկացրեց, որ ինֆորմացիոն մոլորեցման տակտիկա են որդեգրել իշխանութիւնները եւ ցուցադրական ուժ են գործադրում, անընդհատ տեղեկութիւններ են տարածում զօրքերի տեղաշարժերի մասին. «Գիշերը օպերայի շուրջը գալիս են Ներսիկներ, ուրիշ ոստիկանապետեր, 10-20 մեքենայով շրջում են: Սա ուժի էժանագին ցուցադրում է, որի միջոցով ուզում են կոտրել ժողովրդի կամքը եւ ոգեւորել իրենց իւրայիններին, որովհետեւ վախենում են. նրանք հիմա աւելի շատ վախենում են ոչ թէ ժողովրդից, այլ իրենց կողքը գտնուող մարդկանցից, որովհետեւ բոլորին դաւաճանք են համարում, եւ այդ եղանակով ուզում են ցոյց տալ, որ հզօր են, եւ յանկարծ մտքներով չանցնի անցնել այս կողմ»:

Ի դէպ, առաջին նախագահը տեղեկացրեց, որ Մարդու Իրաւունքների պաշտպան Արմէն Յարութիւնեանը շատ արագ կատարել է իր պարտականութիւնները եւ հանդիպել է ձերբակալուած Գագիկ Ջհանգիրեանի հետ:

«Արմէն Յարութիւնեանին էլ թոյլ չեն տուել մտնել շէնք, բայց նա մտել է, հանդիպել է Ջհանգիրեանի հետ: Գագիկը հանգիստ է եղել, իսկ եղբայրը, (որին հրազէնային վնասուածքներ էին հասցրել իրաւապահները) հիւանդանոցում է: Նրանք այսօր օրէնքի պահպանութեան տակ են, նրանց ոչինչ չի սպառնում», - ասաց նա:

Ինչ վերաբերում է մասսայական բռնութիւններին, ապա այդպիսի բան չի լինի, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, «սրանց ինչ ասես կարող ենք անուանել, կոռումպացուած, յանցագործ իշխանութիւն, բայց Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը խելագար չեն, նրանք կարող են կշռել եւ արդէն կշռել են, իրենք գիտեն, որ պարտուած են եւ խելագա-

րութեան չեն գնայ: Նրանք հասկանում են, որ մասսայական բռնութիւնների գնով իշխանութեան եկած Սերժ Սարգսեանը չի կարող կառավարել, բռնութեամբ իշխանութեան եկած մարդը չի կարող կառավարել. Քոչարեանը գնացող նախագահ է, նրա հազարաւոր մեղքերի կողքին այդպիսի պատասխանատուութիւն էլ եթէ վերցնի, կը ջնջուի հայ ժողովրդի պատմութիւնից: Ոչ Սերժ Սարգսեանը կը գնայ այդպիսի խելագարութեան, ոչ Ռոբերտ Քոչարեանը: Եւ թող յոյս չունենան Ռոբերտ Քոչարեանը եւ Սերժ Սարգսեանը, որ մինչեւ նախագահական նստավայր չտեղափոխուեմ, ես այստեղից հեռացողը չեմ», - ասաց Տէր-Պետրոսեանը:

## ՏԵՂԵԿԱՏՈՒԱԿԱՆ ՇՐՋԱՓԱԿՈՒՄ՝ «ՊՐՈՖԻԼԱԿՏԻԿԱ» ԱՆՈՒԱՆ ՏԱԿ

*A1+*, 21:23

Հայաստանից Միր արբանեակային կապով արտասահմանեան հեռուստաընկերութիւններին տեսանիւթեր փոխանցելը դարձել է անհնար՝ ընտրութիւններից մէկ օր առաջ, փետրուարի 18-ին:

Արտասահմանեան հեռուստաընկերութիւնների ներկայացուցիչների խօսքերով, Միրի հայաստանեան մասնաճիւղում հրաժարուել են իրենց սպասարկել՝ նշելով, որ իրենց մօտ «պրոֆիլակտիկա» է:

Միրը այն հիմնական միջոցն է, որով Հայաստանից արբանեակային կապով տեսանիւթեր են փոխանցւում արտասահմանեան հեռուստաընկերութիւնների:

Միջազգային հեռուստաընկերութիւնների ներկայացուցիչները նշում են, որ իրենք, բուն ընտրութիւնների եւ դրան յաջորդող օրերին, օգտուել են EBU ընկերութեան արբանեակային կապից: Վերջիններս սակայն արդէն մէկնել են Հայաստանից, եւ արտասահմանեան հեռուստաընկերութիւնների լրագրողները տարակուսանքի մէջ են. ինչպէ՞ս փոխանցել տեսանիւթերը:

Միրի «պրոֆիլակտիկան» աւելի քան տարօրինակ է հնչում յատկապէս այս օրերին, երբ ընկերութիւնը հնարաւորութիւն ունէր լուրջ գումարներ վաստակել: Միրով տեսանիւթ փոխանցելու մէկ րոպէի արժէքը միջինը 200 դոլար արժէ:

## ԴԱՇՆԱԿՑԱԿԱՆՆԵՐԻՆ ԿՈՉ Է ԱՆՈՒՄ ՄԻԱՆԱԼ

*A1+*, 21:40

Այսօր Ազատութեան Հրապարակից Պահպանողական Կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը կոչ արեց Հայ Յեղափոխական Դաշնակցութեան շարքային անդամներին միանալ իրենց համաժողովրդական պայքարին: Դիմելով դաշնակցականներին՝ Միքայէլ Հայրապետեանն ասաց. «Ձեր աւելի քանի հարիւրամեայ պայքարը մի՞թէ հայ ժողովրդի համար չէ եւ արդեօ՞ք այստեղ հաւաքուածները հայ ժողովրդի զգալի մասը չեն: Ես դիմում եւ խնդրում եմ դաշնակցական իմ քոյրերին եւ եղբայրներին, այս գիշեր այստեղ լինելու պատիւը ձերն է նաեւ: Դուք, այսօրուայ դաշնակցականներդ իրաւունք չունէք մէկ հարուածով մաքրելու, սրբելու այն ամբողջ հերոսական պատմութիւնը, որ անցել է այդ կուսակցութունը յանուն իր ժողովրդի: Հիմա ժողովուրդն այստեղ է, եթէ կեղծ չեն ձեր բոլոր խօսքերը, ապա այս երեկոն նաեւ ձեր երեկոն է»:

Պահպանողական կուսակցութեան նախագահը խօսքն ուղղեց ոչ թէ ՀՅԴ-ի ղեկավար

մարմիններին, այլ շարքային անդամներին, քանի որ. «ՀՅԴ ներկայ ղեկավարութիւնն անշուշտ իրենց հաշուարկն ունեն», - ասաց Միքայէլ Հայրապետեանը:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՆ ԱՅՍՕՐ ԱՌԱՒԵԼ ՄԱՐԴԱՇԱՏ Է (video)

*A1+*, 21:47

Այս պահին հրապարակում հնչում է բարձր երաժշտութիւն: Հազարաւոր մարդիկ պարում են եւ անընդմէջ վանկարկում. «Լեւոն նախագահ», «Լեւոն նախագահ»: Ինչպէս միշտ ակտիւութեամբ աչքի են ընկնում երիտասարդները: Լեւոն Տէր-Պետրոսեանը նոյնպէս այսօր աչքի է ընկնում իր ակտիւութեամբ: Նա բարձր տրամադրութեամբ պարում է իրեն սատարողների հետ:

Իր վերջին ելոյթի ժամանակ Լեւոն Տէր-Պետրոսեանը բոլորին կոչ արեց իր հետ միասին գիշերն անցկացնել Ազատութեան Հրապարակում: Տէր-Պետրոսեանի կոչից յետոյ մարդիկ սկսեցին խարոյկ վառելու պատրաստութիւն տեսնել, իսկ ոմանք էլ գնացին տուն տաք հագուստ վերցնելու եւ կրկին հրապարակ վերադառնալու:

Քիչ աւելի ուշ Լեւոն Տէր-Պետրոսեանը խոստացել է դասախօսութիւն կարդալ ուսանողներին:

## ԱՄԵՆԱԱՊԱՀՈՎ ՏԵՂԸ

*A1+,* 22:26

Չնայած Երեւանում սկսել է թաց ձիւն մաղել, Ազատութեան Հրապարակը շարունակում է լեփ-լեցուն մնալ: Քիչ առաջ հրապարակ են եկել պատգամաւորներ Խաչատուր Սուքիասեանն ու Միասնիկ Մալխասեանը: Վերջինս, դիմելով ժողովրդին, ասել է, որ այսօր ամենապահով տեղը Ազատութեան Հրապարակն է ու ոչ ոք չի կարող բռնանալ այստեղ կանգնողների վրայ: Նա նշել է, որ այնքան են կանգնելու մինչեւ «Բաղրամեան փողոցից լսուի, որ ընտրուած նախագահը Լեւոն Տէր-Պետրոսեանն է»

## ՍԻՄ-Ը ՉԻ ԿԱՐՈՂ ԴԻՏՈՐԴ ՄՆԱԼ

*A1+*, 22:35

**ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔ ՄԻՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ**

**Նախագահական ընտրութիւնների յետընտրական զարգացումների վերաբերեալ**

Վերջին օրերին Հայաստանում հերթական անգամ ծայրայեղ լարուածութեան պայմաններում վիճարկւում են ընտրութիւնների արդիւնքները: Ըստ քուէարկութեան պաշտօնական արդիւնքների, չիրականացան յետընտրական կառուցողական գործընթացներ երաշխաւորող առաջարկուած տարբերակները: Քաղաքական բեւեռացման արդիւնքում ընտրողների ձայների մեծամասնութիւնը բաշխուեց այնպէս, որ առաջին երկու տեղերում յայտնուեցին իշխանական եւ խիստ հակաիշխանական թեկնածուները: Հանրապետութեան բնակչութեան բացարձակ մեծամասնութիւնը կասկածներ ունի քուէարկութեան արդիւնքների վերաբերեալ, թէկուզեւ նկատի ունենալով քուէարկութեան պաշտօնական արդիւնքներն ու ընտրախախտումների վերաբերեալ պաշտօնական տեղեկատուութիւնը եւ դրա մատուցման ոճը:

Ազատութեան Հրապարակում շարունակուող բազմահազարանոց շուրջօրեայ խաղաղ ցոյցերին մասնակցում են արդար եւ օրինական ընտրութիւնների պահանջին մշտապէս սատարող քաղաքացիներ ու բազմաթիւ երիտասարդներ, ովքեր առաջին անգամ են մասնակցում քաղաքական զանգուածային գործընթացների:

Յունուարի 24-ի կիրակնօրեայ զարգացումները մեզ յուշում են, որ կարող են կրկնուել իշխանութիւնների կողմից խաղաղ ցուցարարների նկատմամբ կիրառուող բռնութիւնների յայտնի նախադէպերը: Քրէական միջադէպերի մասին հաղորդագրութիւնների ֆոնի վրայ քաղաքական գործիչների ձերբակալութիւնների մասին տեղեկութիւնները դրա լուրջ նախանշաններն են:

Մեր անհամաձայնութիւնը ընդդիմութեան թեկնածուի մի շարք ծրագրային դրոյթների եւ վարքագծի հետ չի կարող պատճառ հանդիսանալ, որպէսզի մենք դիտորդի կարգավիճակում լռութեամբ հետեւենք, թէ ինչպէս են զարգանում քաղաքական գործընթացների ուժային լուծումները, յանձինս իշխանութեան ուժային օղակների օպերատիւ միջամտութեան:

ՍԻՄ կուսակցութեան նախագահութիւնը անտարբեր չէ երկրի ապագայի եւ Երեւանի Ազատութեան Հրապարակում հաւաքուած խաղաղ ցուցարարների անվտանգութեան եւ առողջութեան նկատմամբ եւ պահանջում է կասեցնել խաղաղ ցուցարարների նկատմամբ ուժ կիրառելու մտադրութիւնները: Մենք պահանջում ենք ազատ արձակել մեր քաղաքական գործընկերներին, կամ սպառիչ եւ հաւաստի տեղեկատուութիւն հաղորդել նրանց ձերբակալութեան պատճառների մասին: Մենք կանխաւ դատապարտում ենք մարդկանց նկատմամբ բռնութեան կիրառման ցանկացած փորձ, ում կողմից էլ որ դա կատարուի:

Ներքաղաքական փակուղիներում պէտք է փնտրել քաղաքական լուծումներ: ՍԻՄ կուսակցութիւնը յայտնում է իր պատրաստակամութիւնը մասնակցել այդ նպատակով հրաւիրուող ցանկացած միջոցառման:

ՍԻՄ կուսակցութեան նախագահ՝<br>
Հրանտ Խաչատրեան<br>
24 փետրուարի 2008թ.

## «ԵԹԷ ՄՆԱՔ ԵԻՍ ԵՐԿՈՒ ՕՐ...» (video)

*A1+*, 23:33

Ազատութեան Հրապարակում այսօր չորրորդ անգամ ելոյթ է ունենում Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա, անդրադառնալով այն փաստին, որ այսօր կարճ ժամանակով բերման են ենթարկել պատգամաւորներ Խաչատուր Սուքիասեանն ու Միասնիկ Մալխասեանը, նշեց, որ իշխանութիւնները չեն կարող կոտրել իրենց ուրախութիւնը:

«Մենք Սերժին ու Ռոբերտին յաղթելու ենք պարելով, - ասաց նա՝ դիմելով ժողովրդին՝ աւելացրեց, - Եթէ այստեղ մնաք եւս երկու օր, դուք կ՚ունենաք Ձեր ուզած նախագահը»:

Ի դէպ, քիչ առաջ յայտարարուեց, որ հրապարակում կան «պրովակատորներ», որոնք բենզինի շշեր են դնում ծառերի տակ ու խորհուրդ տուեց, երբ տեսնեն այդ շշերը, տեղեկացնեն:

# 25 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

## ԽՈՒԶԱՐԿՈՒԹԻՒՆ՝ ՊԵՏՐՈՍ ՄԱՔԷՅԵԱՆԻ ՏԱՆԸ

*A1+*, 00:44

Քիչ առաջ խուզարկութիւն է կատարուել Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մաքէյեանի տանը:

Ըստ խուզարկութեանը ներկայ Ֆորում իրաւունքի կենտրոնի նախագահ, փաստաբան Տիգրան Տէր-Եսայեանի, խուզարկութիւնը տեղի է ունեցել դատարանի որոշմամբ, որի համար հիմք է հանդիսացել Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածը, որով, Մաքէյեանին մեղադրանք է առաջադրուել

Ընտրական Յանձնաժողովին խանգարել-խոչընդոտելու համար:

Ըստ Տիգրան Տէր-Եսայեանի, խուզարկողները փնտրել են զէնք-զինամթերք, գումար եւ քուէաթերթիկներ, սակայն չգտնելով այն, ինչի համար եկել են, տարել են Պետրոս Մաքէյեանի անձնական արխիւից վերջինիս հրապարակային ելոյթներն ու մամուլում տպագրուած հարցազրոյցները:

## «ՀԱՂՈՐԴՈՒՄ՝ ՅԱՆՑԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ»

*A1+*, 00:47

Ազատութեան Հրապարակում հաւաքուած բազմահազարանոց հանրահաւաքի մասնակիցներին առաջարկուել է մի ծաւալուն փաստաթուղթ, վերնագրուած՝ «Հաղորդում յանցագործութիւնների մասին», որում ներառուել են ընտրութիւններին նախորդած օրերին, բուն քուէարկութեան օրը, ինչպէս նաեւ ընտրութիւններից յետոյ տեղի ունեցած ընտրախախտումների ու ընտրակեղծիքների մասին տուեալներ:

Քաղաքացիական նախաձեռնութեամբ կազմուած այդ փաստաթղթի ներքոյ այժմ ստորագրում են հանրահաւաքի մասնակիցները:

Ըստ Պահպանողական Կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանի, այս փաստաթուղթը ուղղուած է Հայաստանի Գլխաւոր Դատախազին, Հայաստանի Մարդու Իրաւունքների պաշտպանին, ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութեան ղեկավարին, եւ այլ պաշտօնեաների:

## ՕՊԵՐԱՅԻ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*A1+*, 02:03

Չնայած տեղացող ձեանը, այս պահի դրութեամբ Ազատութեան Հրապարակում նստացոյցին մասնակցողների թիւը չի պակասել: Հաւաքուածների տրամադրութիւնը բաւականին բարձր է, իսկ ժամանակ առ ժամանակ հարթակից նրանց է դիմում առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Քիչ առաջ նաեւ յայտնի դարձաւ, որ Լոս-Անջելէսում մեկնարկել է Լեւոն Տէր-Պետրոսեանի աջակցութեան ակցիա, ինչի մասին եւ տեղեկացուեցին հրապարակում հաւաքուածները:

Ազատութեան Հրապարակում կատակում են, պարում, մի խօսքով, տիրում է զուարթ մթնոլորտ:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԸ ԼՈՒՍԱԴԷՄԻՆ (video)

*A1+*, 04:51

ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, ինչպէս եւ խոստացել է, իր համակիրների հետ Ազատութեան Հրապարակում է: Տէր-Պետրոսեանը ժամանակ առ ժամանակ իջնում է հարթակից եւ շրջում մարդկանց մէջ, այցելում վրաններում հացադուլ յայտարարածներին: Ազատութեան Հրապարակում հաւաքուածները ոգեւորուած շրջապատում են Տէր-Պետրոսեանին՝ կատակում, անեկդոտներ պատմում Սերժ Սարգսեանի եւ Քոչարեանի մասին: Ի դէպ, ամբողջ գիշեր Տէր-Պետրոսեանը չի բացակայել հրապարակից: Այս պահին հաւաքուածները դիտում են *Իւան Վասիլեւիչը փոխում է մասնագիտութիւնը* ֆիլմը եւ ընդհանրութիւններ գտնում այսօր ՀՀ-ում իշխանութիւնը զաւթածների միջեւ:

## ԱԳՆ 6 ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ ՀԵՌԱՑՈՒԵԼ ԵՆ ԱՇԽԱՏԱՆՔԻՑ

*Հետք* , 09:00

Դեսպաններ Ռուբէն Շուգարեանի, Լեւոն Խաչատրեանի, Ռազմիկ Խումարեանի եւ փոխարտգործնախարար Արմէն Բայբուրդեանի՝ փետրուարի 23-ի յայտարարութեանը երէկ միացել են ՀՀ արտաքին գործերի նախարարութեան եւս վեց բարձրաստիճան պաշտօնեաներ՝ ԱԳՆ մամուլի քարտուղար Վլադիմիր Կարապետեանը, միջազգային կազմակերպութիւնների վարչութեան ՄԱԿ-ի բաժնի վարիչ Վարսենիկ Բաղդասարեանը, Ամերիկայի եւ Կանադայի բաժնի վարիչ Կարինէ Աֆրիկեանը, ԱԳՆ սպառազինութեան եւ անվտանգութեան հարցերի վարչութեան ՆԱՏՕ-ի բաժնի վարիչ Մարթա Այվազեանը, Եւրոպայի վարչութեան խորհրդական Առաքել Սեմերջեանը եւ Ամերիկայի վարչութեան Հարաւային Ամերիկայի բաժնի երկրորդ քարտուղար Էլէն Պետէյեանը:

Այսօր՝ փետրուարի 25-ին, արտգործնախարար Վարդան Օսկանեանը, մեկնաբանելով ԱԳՆ աշխատակիցների այս քայլը, ասել է. «Դիւանագիտական պաշտօն վարող մարդն իրաւունք չունի նման դիրքորոշում արտայայտել: Օրէնքը դա թոյլ չի տալիս»:

Նախարարը նշել է, թէ «...ցաւով է ստորագրել նրանց հեռացման մասին հրամանները, քանի որ դա հարուած էր համակարգին»:

«Ինչպէս էք պատկերացնում, որ այդ անձինք հանրապետութեան նախագահին ներկայացրել են միջազգային հանրութեանը, իսկ այժմ կանգնում են այն թեկնածուի կողքին, ով երկրի նախագահին անուանում է աւազակապետ», - լրագրողներին հարցրել է նախարարը:

Վարդան Օսկանեանի հաւաստմամբ՝ յիշեալ դիւանագէտները անձնական կամ գործնական կապեր են ունեցել նախկին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ: «Սակայն մենք խտրականութիւն չենք դրել նրանց միջեւ: Ես ցանկութիւն էլ չունեմ իմանալու, թէ այլ նման դիրքորոշում ունեցողներ կան արդեօք, թէ ոչ, քանի որ մենք վհուկների որսով չենք զբաղուելու», - եզրափակել է Վարդան Օսկանեանը:

## ԱԳՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐԻՆ ՄԻԱՑԱՆ ՆԱԵՒ ԱՌԵՒՏՐԻ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԻՑ

*Հետք*, 09:40

Ազատութեան Հրապարակում այսօր ժամը 3-ին մեկնարկած ու այս պահին շարու-

նակուող հանրահաւաքում յայտարարել են, որ Առեւտրի եւ տնտեսական զարգացման նախարարութեան երեք պաշտօնեաներ՝ Վահագն Ղազարեանը՝ Եւրամիութեան եւ Առեւտրի համաշխարհային կազմակերպութեան հետ համագործակցութեան վարչութեան պետ, Զօհրաբ Յովհաննիսեանը՝ արտաքին տնտեսական համագործակցութեան եւ ներդրումային քաղաքականութեան վարչութիւնում բաժնի պետ, եւ ակնագործութեան եւ ոսկեգործութեան գործակալութեան մասնագէտ Արման Սարուխանեանը միացել են Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած շարժմանը:

Պաշտօնեաների յայտարարութեան համաձայն՝ «իրենք ակնկալում էին, թէ նախագահի ընտրութիւնը կ'ընթանայ միջազգային եւ եւրոպական չափանիշներին համապատասխան, եւ կ'ապահովուի նախագահի օրինական ընտրութիւն, բայց տեղի ունեցան զանգուածային խախտումներ, եւ ընտրութիւնը չի կարող համարուել ազատ եւ արդար»:

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔ ԼՈՍ ԱՆՋԵԼԷՍՈՒՄ

*Lragir.am*, 09:51

2008թ փետրուարի 24-ին Լոս Անջելէսի Լիթըլ Արմենիա թաղամասում տեղի ունեցաւ բողոքի ցոյց-հանրահաւաք: Հանրահաւաքի նպատակն էր առաջին հերթին զօրակցել Հայաստանում թափ առած համաժողովրդական շարժմանը եւ կոչ անել ԱՄՆ-ի Պետդեպարտեմենտին լինել հետեւողական Հայաստանում ժողովրդավարութեան սկզբունքների պահպանման խնդրում, չճանաչել նախագահական ընտրութիւնների արդիւնքները, դատապարտել հայաստանեան իշխանութիւնների կողմից սանձազերծուած բռնութիւններն ու ապօրինի ձերբակալութիւնների շարքը եւ պահանջել նրանցից վերջ տալ քաղաքական հետապնդումներին: Հանրահաւաքում ելոյթ ունեցողները դատապարտեցին ընտրակեղծիքներով, բռնութիւններով, ահաբեկումներով ու այլ տեսակի ապօրինի գործողութիւններով անցկացուած ընտրութիւնները:

Հանրահաւաքը արձանագրեց, որ ընտրութիւնների արդիւնքները չեն համապատասխանում իրականութեանը եւ միացաւ Լեւոն Տէր-Պետրոսեանի պահանջին՝ անվաւեր ճանաչելու ընտրութիւնները: Հանրահաւաքը Հայաստանի կառավարութիւնից պահանջեց անյապաղ ազատ արձակել քաղբանտարկեալներին, անմիջապէս դադարեցնել քաղաքական հետապնդումները եւ վերջ տալ տեղեկատուական շրջափակմանը: Հանրահաւաքը աւարտուեց պայքարը շարունակելու պատրաստակամութեամբ եւ իր տրամաբանական աւարտին հասցնելու վճռակամութեամբ: Այս մասին տեղեկացնում է Լեւոն Տէր-Պետրոսեանի աջակցութեան ԱՄՆ կենտրոնի լրատուական ծառայութիւնը:

## ՄԻՇՏ ՉԷ, ՈՐ ՈՒԺԸ ՔԵԶ ՀԱՄԱՐ Է ԻՐԱՒՈՒՆՔ ԾՆՈՒՄ

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

*Lragir.am*, 10:38

Այս օրերին Երեւանում ամենաշատը շրջանառուող լուրն այն է, որ իշխանութիւնը կայացրել է Լեւոն Տէր-Պետրոսեանի կազմակերպած ժողովրդական բողոքի ցոյցը ուժով ցրելու որոշում: Շրջանառւում են խօսակցութիւններ Տէր-Պետրոսեանին տրուած տարբեր ժամկէտների մասին, որոնց սահմանում բողոքը չդադարեցնելու դէպքում իշխանութիւնն արդէն դիմելու է ուժի: Ընդ որում, իշխանութիւնն այդ լուրերի վրայ իւղ է լցնում, հեռուստատեսութեամբ պարբերաբար հրապարակելով ոստիկանութեան յայտարարութիւններ

այն մասին, թէ իբր Ազատութեան Հրապարակում թմրամոլներ են հաւաքուել, թէ իբր հրապարակը աղտոտուել է, թէ իբր հասարակական կարգին է խանգարում, շրջապատի բնակիչներն ամբողջ գիշեր հնչող աղմուկից չեն կարողանում քնել:

Բացի այդ յայտարարութիւններից, ուժային լուծման մասին խօսակցութիւնները խթանուեցին նաեւ այն ձերբակալութիւններով, որ իշխանութիւնն արեց Լեւոն Տէր-Պետրոսեանի մի քանի առանցքային կողմնակիցների շրջանում:

Ինչ խօսք, Հայաստանի որեւէ քաղաքացի երեւի թէ չի կասկածում, որ հասարակական բողոքի հետ յարաբերուելու մեր իշխանութեան ամէնից գործուն լծակը միշտ եղել է ուժայինը: Ընդ որում, զարմանալի է, բայց իշխանութիւնը կարծես թէ չի էլ մտածել որեւէ այլ լծակ կիրառելու հնարաւորութեան մասին անգամ: Եւ առաջին հերթին հէնց այդ հանգամանքն է երկրում ստեղծել այնպիսի վիճակ, որ այլեւս իշխանութիւնը որեւէ ռեսուրս չի գտնում հասարակական քիչ թէ շատ տեւական եւ բազմամարդ բողոքին արձագանքելու համար: Մինչդեռ այդ իրողութիւնը յանգեցրել է նրան, որ իշխանութիւնը դարձել է իր սովորոյթի գերին: Այսինքն, ինքն իրեն զրկելով հանրութեան հետ հակասութեան պարագայում որեւէ այլ ռեսուրսից, իշխանութիւնը յայտնուել է անկիւնում եւ այդպիսի հակասութեան դրսեւորման դէպքում կամ պէտք է ուժ կիրառի, կամ չկիրառելու դէպքում կանգնի անզօրութեան տպաւորութիւն թողնելու վտանգի առաջ, ինչը կարող է դառնալ իշխանական համակարգի արագ փլուզման պատճառ: Եւ թերեւս հէնց դա է պատճառը, որ իշխանութիւնը Երեւանի փողոցներում ցուցադրում է իր ոստիկանական հնարաւորութիւնը եւ նաեւ յայտարարում այն գործի դնելու վճռականութեան մասին, առանձին դէպքերում արդէն իսկ դնելով գործի:

Ամբողջ խնդիրը սակայն այն է, որ ուժը ունիվերսալ ռեսուրս չէ եւ այն հնարաւոր չէ կիրառել բոլոր դէպքերում, բոլոր ժամանակներում: Միշտ չէ, որ արդիւնքը կարող է լինել նոյնը: Կոնկրէտ այս դէպքում, կայ մի քանի հանգամանք, որը չի խօսում իշխանութեան ուժի օգտին: Նախ, Լեւոն Տէր-Պետրոսեանին յաջողւում է պահել հանրահաւաքների բազմութիւնը, իսկ օրուայ պասիւ ժամերին էլ ապահովել նուազագոյն անհրաժեշտ քանակը: Երկրորդ, Լեւոն Տէր-Պետրոսեանը դեռեւս իշխանութեանը չի տուել ուժի կիրառման հիմնաւոր առիթ: Երրորդ, իշխանութիւնն ամենեւին էլ այն մոնոլիտ բուրգը չէ արդէն, որ կար ընդամէնը երկու-երեք տարի առաջ: Աւելին, բուրգը ոչ միայն մոնոլիտ չէ, այլ նաեւ դարձել է երկգագաթ՝ ի դէմս Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի: Բանն այն է, որ ցուցարարների հանդէպ ուժի կիրառումը կարող է, նոյնիսկ արդիւնաւէտ լինելու պարագայում, նրանց կանգնեցնել բոլորովին այլ իրողութեան առաջ: Եթէ անգամ պատասխանատուութիւնը դրուի Ռոբերտ Քոչարեանի վրայ, իսկ Սերժ Սարգսեանն էլ հրապարակաւ «ձեռքերը լուանայ», եւ ասի որ ինքն անմասն է ժողովրդի արիւնից, միեւնոյն է, այդ արեան պատասխանատուութիւնն ընկնելու է իր վրայ, որովհետեւ Ռոբերտ Քոչարեանը եթէ դիմի ուժի, ապա դիմելու է Սերժ Սարգսեանի համար, ինչն էլ ցոյց էր տալիս այն ժամանակ, երբ հրաւիրել էր իր մօտ ԶՈՒ բարձրագոյն հրամկազմին, իսկ Սերժ Սարգսեանին էլ նստացրել իր կողքը: Այսինքն, Սերժ Սարգսեանը դժուար կացութեան մէջ է, ու մենք պէտք է օգնենք նրան: Թերեւս սա էր այդ տեսարանի լէյտմոտիւը, որը կարդացւում էր անգամ Սերժ Սարգսեանի հայեացքի մէջ: Այդ հայեացքից նաեւ զգացւում էր, որ Սարգսեան էլ երեւի թէ գիտակցում է, որ ինքն ամէն դէպքում արդէն Հայաստանի նախագահ չէ: Հայաստանի նախագահին արդէն կամ կը դառնայ Լեւոն Տէր-

Պետրոսեանը, կամ կը մնայ Ռոբերտ Քոչարեանը, որովհետեւ եթէ այդուամենայնիւ Ռոբերտ Քոչարեանին յաջողուի ինչ որ կերպ կոտրել Լեւոն Տէր-Պետրոսեանի շարժման թափը, ապա Սերժ Սարգսեանը Ռոբերտ Քոչարեանի իրեն մատուցած այդ «ծառայութեան» դիմաց անկասկած պէտք է «վճարի» իշխանութեամբ:

Այդ իսկ պատճառով, Սերժ Սարգսեանն ունի իշխանութիւն պահելու կամ ձեռք բերելու մի ճանապարհ՝ թոյլ չտալ, որ ուժ կիրառուի ցուցարարների հանդէպ: Դա իհարկէ դեռեւս չի երաշխաւորում իշխանութիւն, իսկ գուցէ նոյնիսկ ենթադրում է իշխանութեան ոչ միայն դէ ֆակտօ, այլ նաեւ դէ իւրէ կորուստ:

Սակայն տուեալ դէպքում կայ մի շատ կարեւոր առանձնայատկութիւն: Սերժ Սարգսեանն այդպիսով ինքն է դառնում իր ճակատագրի տէրը, ոչ թէ այն վստահում է որեւէ մէկին, թէկուզ իր ընկեր Ռոբերտ Քոչարեանին, որը քաղաքական դաշտում առաջնորդւում է սեփական շահով, եւ կրում սեփական ճակատագիրը: Ինչն, ի դէպ, միանգամայն բնական է ցանկացած քաղաքական գործչի համար:

## ՍՏԻՊՈՒԱԾ ԵՆՔ ՓԱԿԵԼ ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԴԱՇՏԵՐԸ

*Հետք*, 12:22

Սիրելի ընթերցողներ,

Վերջին օրերին *Հետք*ի մեկնաբանութիւնների դաշտում յայտնուել են մարդիկ, ովքեր տեղադրում են միայն հայհոյանքներ, տարբեր կոչեր եւ զանազան չճշտուած տեղեկութիւններ:

Այս դաշտը մենք ստեղծել ենք կարծիքների եւ գաղափարների քննարկում կազմակերպելու համար: Հաշուի առնելով, որ այդ տարածքի համար պատասխանատու է խմբագրութիւնը, ստիպուած ենք մեկնաբանութիւնների դաշտերի հիմնական մասը փակել:

*Խմբագրութիւն*

## ՎՐԱՆԱՅԻՆ ՔԱՂԱՔԸ ԱՐԹՆԱՑԵԼ Է

*A1+*, 12:23

Առաւօտեան ժամը 11:30-ին Ազատութեան Հրապարակում հարթակին շատ մօտ պարում էին երկու տղամարդիկ: Ու եթէ տեղեակ չլինէիր, որ մարդիկ ձեան տակ լուսացրել են, կը թուար, որ նրանք հէնց նոր են եկել այստեղ: Հրապարակում այդ ժամին դեռ վրանները հաւաքուած չէին, բայց տարածքն ամբողջութեամբ մաքրուած էր: Աղբը շրջակայքից հաւաքուել եւ լցուել էր մեծ պոլիէթիլենային տոպրակների մէջ: Մի խումբ մարդիկ էլ կարդում էին հրապարակում տեղադրուած Վահանակների վրայ փակցուած տեղեկատուութիւնը՝ հիմնականում էլեկտրոնային կայքերից:

«Քնած չենք, բայց լաւ ենք: Ամբողջ գիշեր պարել ենք ձեան տակ», - հրապարակ նոր եկողներին ասում էր ՀՀՇ վարչութեան անդամ Արամ Մանուկեանը: Հարթակում նա էր, ՀՀՇ նախագահ Արարատ Զուրաբեանը, Պահպանողական Կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը:

Ի դէպ, վերջինս որպէս կանոն այս ժամերին դասախօսութիւն է կարդում բուհում, բայց քանի որ նա հրապարակում էր ու այստեղ էին բազմաթիւ դասադուլ յայտարարած ուսանողներ, նա իր դասախօսութիւնը կարդաց ներկաների համար: Գրականագէտ

Միքայէլ Հայրապետեանը դասախօսութիւն կարդաց Մուշեղ Գալշոյեանի *Միայնակ ծառը* պատմուածքի մասին՝ զուգահեռներ անցկացնելով գիշերով կացինուող ծառի եւ այսօրւայ իրավիճակի մասին: Միքայէլ Հայրապետեանը նաեւ յայտարարեց, որ նրանք, ովքեր վաճառել են իրենց ձայնը մի քանի հազար դրամով, կարող են դեռ քաւել իրենց մեղքը, իսկ դրա համար անհրաժեշտ է գալ Ազատութեան Հրապարակը, քանզի այն նաեւ քաւութեան հրապարակ է:

Հրապարակում շարունակում էին իրենց հացադուլը 6 քաղաքացիներ: Նրանք վերմակների մէջ փաթաթուած նստած կամ պառկած էին կապոյտ վրանում: Ըստ նրանց՝ իրենց վիճակը լաւ է: Սակայն բժշկական հսկողութիւն դեռ չկար: Հացադուլաւորներն ասացին, որ այսօր Կարմիր Խաչից են գալու, նոյնը հաստատեց նաեւ Արամ Մանուկեանը:

Արարատցի Վահագն ասում էր, որ իրենց վրանում հինգ հոգով են եղել: Երիտասարդը վստահ էր, որ յաղթանակը Ազատութեան Հրապարակում կանգնածներինն է լինելու: Իսկ Մայիս անունով Արաբկիրի մի բնակիչ, որը եւս գիշերն անց էր կացրել հրապարակում, վստահեցրեց, որ իրենք դիմանալու են ու մնալու են այնքան, ինչքան անհրաժեշտ է. «Մինչեւ յաղթանակ»:

Ի դէպ, Ազատութեան Հրապարակում առաւօտեան ոստիկանների թիւն այնքան էլ մեծ չէր. նրանց թիւն աւելի մեծ էր Կառավարութեան շէնքին յարակից տարածքում:

## ՍՏԱՆՈՒՄ Է ՇՆՈՐՀԱՒՈՐԱՆՔՆԵՐ

*A1+*, 12:32

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ Սերժ Սարգսեանի անունով շարունակում են ստացուել բազմաթիւ շնորհաւորանքներ պետութիւնների ղեկավարներից, տեղի եւ արտերկրի կազմակերպութիւններից ու անհատներից:

Եգիպտոսի նախագահ Մուհամէդ Հոսնի Մուբարաքը իր շնորհաւորական խօսքում, մասնաւորապէս, նշել է.

«Մեծագոյն հաճոյքով Ձերդ գերազանցութեանն եմ յղում իմ սրտագին շնորհաւորանքները Հայաստանի Հանրապետութեան նախագահական ընտրութիւններում Ձեր տարած յաղթանակի կապակցութեամբ:

Օգտուելով այս առիթից, ցանկանում եմ ամենայն յաջողութիւններ Ձեր բոլոր մեծ ծրագրերի իրականացմանը՝ ի շահ բարեկամ հայ ժողովրդի առաջընթացի ու բարեկեցութեան»:

* * *

Սերժ Սարգսեանին շնորհաւորել եւ իր բարեմաղթանքներն է յղել Երուսաղեմի հայ պատրիարք Թորգոմ արքեպիսկոպոս Մանուկեանը.

«Փառք կու տանք Ամենակալին Աստուծոյ, որ անգամ մը եւս մեզ պարգեւեց հանդիսատես լինելու մեր հայրենեաց ազատ ու անկախ պետութեան նախագահական ընտրութեան:

Հայրենիքի եւ ի սփիւռս տարածուած հայութիւնը անգամ մը եւս ողջունեց նոր արշալոյս մը՝ լուսաւոր ապագայի խոստումով:

Որպէս Հայ Պատրիարք Երուսաղեմի եւ յանուն Սրբոց Յակոբեանց Միաբանութեան

եւ մեր ժողովուրդին, կը շնորհաւորենք Ձեր ընտրութիւնը եւ կը մաղթենք, որ Աստուծոյ օրհնութիւնը զօրավիգ եւ ուղեկից լինի Ձեզ, եւ Դուք ի գլուխ հայրենի պետութեան, իրագործէք մեր Հայրենիքի եւ ժողովուրդի առաջընթացի եւ բարգաւաճման համար ազգանուէր ձեր ծրագիրները», - ասուած է Երուսաղէմի պատրիարք Թորգոմ արքեպիսկոպոս Մանուկեանի շնորհաւորական խօսքում:

* * *

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձներ են յղել Ռամկավար Ազատական Կուսակցութեան արտերկրի մի շարք կազմակերպութիւններ:

ՌԱԿ Արեւելեան Ամերիկայի եւ Կանադայի շրջանային վարչութեան ատենապետ Բաբկէն Մկրեանի շնորհաւորական ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Մեծարգոյ վարչապետ,

Ձեր երկար տարիներու վաստակաշատ գործունէութիւնը հայրենիքի պաշտպանութեան դիրքերուն վրայ, ինչպէս նաեւ Ձեր վարչագիտական ձիրքերը վստահաբար լիովին պիտի արժեւորուին առաջիկայ տարիներուն ընթացքին` առաջնորդելու համար մեր հայրենիքը դէպի ապահով եւ բարեբեր ապագայ:

Յանուն Արեւելեան Ամերիկայի եւ Կանադայի մեր բոլոր շրջանակներուն, կու գանք յաջողութիւն մաղթելու Ձեր հայրենանուէր առաքելութեան»:

Իսկ Աւանդապահ Ռամկավար Ազատական Կուսակցութեան Համախմբումի յղած ուղերձում ասուած է. «Վերջերս Երեւանի մէջ Ձեզի հետ մեր հանդիպման ընթացքին Ձեր մէջ տեսանք հայ ժողովուրդի ապահով ապագայի կերտման հաւաստիքը տուող բացառիկ անձնաւորութիւնը, որ իր ամբողջ կարողութեամբ պիտի կարենայ առաջ տանիլ Հայաստանը` ամրապնդելով անոր տնտեսութիւնը, ապահովութիւնը եւ ժողովրդավարական հիմքերը:

Ռամկավար Ազատական Կուսակցութիւնը 1921 թուականէն սկսեալ միշտ ալ եղած է Հայաստանի եւ անոր պետականութեան եւ ժողովուրդին կողքին, եւ այժմ եւս մեր պատրաստակամութիւնը կը յայտնենք ամբողջովին աջակցելու Ձեր աշխատանքներուն Սփիւռքի թէ Հայրենիքի մէջ»:

Թէքէեան Մշակութային Միութեան Ամերիկայի եւ Կանադայի կեդրոնական վարչութեան ատենապետ Յարութիւն Արզումանեանը` Միութեան համատարած շրջանակների եւ անդամակցութեան անունից, ՀՀ նախագահի պաշտօնում ընտրուելու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին մաղթել է «ուժ ու կորով` ամրապնդելու համար մեր Հայրենիքի ազատ տնտեսութիւնը, ապահովելու Արցախի անկախութիւնը եւ արմատաւորելու Հայրենիք-Սփիւռք սերտագոյն յարաբերութիւնները` ի նպաստ հայ ժողովուրդին»:

Հայաստանի Հանրապետութեան նախագահ ընտրուելու կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Չինաստանի Ժողովրդական Հանրապետութեան նախագահ Խու Ցզինթաոն: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Մենք ուրախ ենք տեսնելու, որ Հայաստանի անկախութեան հռչակումից յետոյ Ձեր երկրում նկատւում են քաղաքական կայունութիւն, տնտեսութեան դինամիկ զարգացում, ժողովրդի կենսամակարդակի զգալի աճ, եւ նրա ազդեցութիւնը միջազգային

ասպարէզում շարունակաբար ընդլայնւում է: Վստահ եմ, որ Ձեր ղեկավարութեամբ աշխատասէր եւ իմաստուն հայ ժողովուրդն աւելի մեծ յաջողութիւնների կը հասնի իր երկրի կառուցման գործում:

Չինաստանի եւ Հայաստանի միջեւ դիւանագիտական յարաբերութիւնների հաստատումից ի վեր, անցած 16 տարիներին յարաբերութիւնները մեր երկրների միջեւ կայունօրէն զարգանում են՝ խաղաղ գոյակցութեան հինգ սկզբունքների հիման վրայ: Երկու երկրների ղեկավարների միջեւ պահպանուող սերտ շփումներն ամրապնդում են մեր ժողովուրդների փոխըմբռնումն ու բարեկամութիւնը, հետեւողականօրէն ընդլայնւում են կապերն ու համագործակցութիւնը տարբեր բնագաւառներում: Մենք արդիւնաւէտօրէն պահպանում ենք փոխադարձ հաղորդակցութիւնն ու համաձայնութիւնը ՄԱԿ-ի եւ միջազգային այլ կազմակերպութիւնների շրջանակներում:

Հայաստանը Կովկասի կարեւոր պետութիւն է Կովկասի տարածաշրջանում: Չինաստանը մեծ ուշադրութիւն է յատկացնում բարեկամութեան եւ համագործակցութեան հայ-չինական յարաբերութիւններին, յարգում է հայ ժողովրդի կողմից՝ իր երկրի իրական դրութեանը համապատասխան, ինքնուրոյնաբար ընտրուած զարգացման ուղին:

Ես պատրաստ եմ Ձեզ հետ շփումներ պահպանել բարձր մակարդակով, խորացնել գործնական համագործակցութիւնը բոլոր ոլորտներում եւ խթանել բարեկամութեան եւ փոխգործակցութեան հայ-չինական յարաբերութիւնների տեւական եւ կայուն զարգացումը:

Ցանկանում եմ Ձեզ քաջառողջութիւն, յաջողութիւններ աշխատանքում:

Ձեր երկրին մաղթում եմ բարգաւաճում, իսկ ժողովրդին՝ ամենայն բարիք»:

* * *

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ, Սերժ Սարգսեանին շնորհաւորել է Եւրոպական Ժողովրդական Կուսակցութեան նախագահ Վիլֆրիդ Մարտենսը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Ինձ համար մեծ հաճոյք է Եւրոպական Ժողովրդական Կուսակցութեան եւ անձամբ իմ անունից շնորհաւորել Ձեզ՝ Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ:

Համոզուած եմ, որ Ձեր ընտրութիւնը նոր խթան կը հանդիսանայ Հայաստանի որդեգրած քաղաքական ուղու համար. ուղի, որի նպատակը ժողովրդական Եւրոպայում ուրոյն տեղի ապահովումն է:

Թէեւ առաջիկայում, անկասկած, շատ խնդիրներ կան լուծելու, վստահ ենք, որ Ձեր համոզմունքներով, անաչառութեամբ եւ վճռականութեամբ Դուք կատարեալ ղեկավար կը լինէք Ձեր երկրի ու նրա բոլոր քաղաքացիների համար»:

* * *

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու եւ ժողովրդի բարձր վստահութեանն արժանանալու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է ԱՊՀ միջխորհրդարանական վեհաժողովի խորհրդի գլխաւոր քարտուղար Միխայիլ Կրոտովը: Շնորհաւորական ուղերձում, մասնաւորապէս, ասուած է. «Համոզուած եմ, որ պետութեան ղեկավարի բարձր պաշտօնում Ձեր գործունէութիւնը կը ծառայի Հայաստանի Հանրապետութեան տնտեսական եւ քաղաքական իրավիճակի

յետագայ ամրապնդմանը, ժողովրդի բարօրութեանն ու բարգաւաճմանը, ԱՊՀ շրջանակներում համագործակցութեան ընդլայնմանը»:

* * *

ՀՀ նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին ուղղուած մէկ այլ՝ Մոսկուայի քաղաքապետ Եուրի Լուժկովի շնորհաւորական ուղերձում նշուած է. «Խորապէս համոզուած եմ, որ Ձեր քաղաքական մեծ փորձը, քաղաքացիական յստակ դիրքորոշումը, մարդկային ու գործնական բարձր յատկանիշները կը ծառայեն Հայաստանի Հանրապետութեան համակողմանի զարգացմանը, նրա միջազգային հեղինակութեան ամրապնդմանը: Օգտուելով առիթից, հաստատում եմ Հայաստանի Հանրապետութեան հետ տնտեսական, սոցիալական եւ մշակութային ոլորտներում փոխշահաւէտ կապերն ընդլայնելու եւ խորացնելու՝ Մոսկուայի պատրաստակամութիւնն ու ձգտումը: Մաղթում եմ Ձեզ նորանոր յաջողութիւններ ու նուաճումներ Ձեր աշխատանքում՝ ի շահ Հայաստանի Հանրապետութեան եւ ժողովրդի»:

Հայաստանի Հանրապետութեան նախագահ ընտրուելու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան նախագահ Պերճ Սեդրակեանը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Ձեր ընտրութիւնը, հանդիսանալով ժողովրդային կամքի արտայայտութիւն, միաժամանակ դրսեւորում է հայրենի ժողովրդի ձգտումը՝ խաղաղ եւ հաւասարակշիռ գոյավիճակի, կառոյցների պահպանման եւ յառաջդիմութեան ուղղութեամբ, ինչ որ կ'երաշխաւորի տնտեսական աճի դրական ընթացքը եւ համաժողովրդային բարեկեցութեան աստիճանական տարածումը երկրով մէկ:

Անձամբ ճանաչելով Ձեզ, ծանօթ եմ եւ խորապէս գնահատում եմ Ձեր վարչական ձեռներեցութիւնն ու սկզբունքայնութիւնը՝ գործելակերպի եւ կողմնորոշումների մէջ: Համոզուած եմ, որ Ձեր ղեկավարութեան ներքոյ հայրենիքը պիտի շարունակի իր բարգաւաճումն ու հզօրացումը, պահպանելով երկրի անվտանգութիւնն ու ամենաթանկ զոհողութիւնների գնով ձեռք բերուած արժէքները՝ անկախութիւնը, պատիւն ու հպարտութիւնը:

Հայկական բարեգործական ընդհանուր միութեան անքակտելի կապերը եւ ներդրումը հայրենիքի մէջ, պատմականօրէն հին են, որքան Միութիւնը՝ սկսած ամենադժբախտ եւ քաղաքականապէս կնճռոտ ժամանակներից մինչեւ այսօրուայ դէպի լուսաշող ապագայի դժուար, բայց յուսալի ուղին: Այս օրերին մենք Հայաստանում ձեռնարկել ենք մեր Միութեան ամենածաւալուն եւ խիզախ ծրագիրներին, հիմնական նպատակ ունենալով ուժեղացնել սփիւռքահայութեան նոր սերնդի կապերը իրենց առաւել հզօրացած հայրենիքի հետ:

Համոզուած ենք, որ Ձեր աջակցութեամբ եւ բարձր հովանաւորութեամբ, այդ ծրագիրները պիտի իրականացուեն Ձեր իշխանութեան օրերին՝ ի փառս մեր հայրենիքին եւ ժողովրդին:

Ձեզ զօրավիգ լինելու եւ անվերապահ կերպով աջակցելու մեր Միութեան հաւաստիացումը յայտնելով՝ սրտանց մաղթում ենք Ձեզ արեւշատութիւն եւ յաջողութիւն»:

* * *

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է Ռամկավար Ազատական

Կուսակցութեան կեդրոնական վարչութիւնը: Ուղերձում, որը ստորագրել են ատենապետ Մայք Խարապեանը եւ ատենադպիր Յակոբ Անդրէասեանը, մասնաւորապէս, ասուած է.

«Ձեր փայլուն յաղթանակը խօսուն եւ անհերքելի ապացոյցն է մեր ժողովուրդին Ձեր վրայ ունեցած անսահման վստահութեան, որ, անտարակոյս, արգասիքն է Ձեր անբասիր հայրենասիրութեան, անձնուէր ծառայութիւններուն եւ բազմապիսի շնորհքներուն: Ռամկավար Ազատական Կուսակցութեան աշխարհասփիւռ անդամակցութեան ու համակիրներու լայն շրջանակին անունով սրտանց կ'ողջունենք Ձեր արժանաւոր նուաճումը ազգընտիր նախագահի կոչումին:

Խորապէս համոզուած ենք, որ ազգային նորագոյն մեր պատմութեան անկինադարձային այս հանգրուանին, Ձեր հմուտ ղեկավարութեամբ, մեր երկիրն ու ժողովուրդը պիտի յաղթահարեն բազմաթիւ դժուարութիւններ, կերտելու համար շողշողուն այն ապագան, զոր բոլորս անձկութեամբ կը բաղձանք:

Սրտաբուխ մեր շնորհաւորութիւններուն հետ Ձեզի կը յայտնենք նաեւ Ռամկավար Ազատական Կուսակցութեան շարքերուն եւ ղեկավարութեան ուխտեալ, վերանորոգ եւ անվերապահ պատրաստակամութիւնը ծառայելու հայ ժողովուրդին եւ սրբազան մեր հայրենիքին»:

## ԱՄԵՐԻԿԱԲՆԱԿ ՀԱՅԵՐԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ՊԵՏԴԵՊԱՐՏԱՄԵՆՏԻՑ

*A1+*, 12:43

2008թ փետրուարի 24-ին Լոս Անջելէսի Լիթըլ Արմենիա թաղամասում տեղի ունեցաւ բողոքի ցոյց-հանրահաւաք, որին մասնակցում էին 15 հազարից աւելի մարդ:

Հանրահաւաքի նպատակն էր առաջին հերթին զօրակցել Հայաստանում թափ առած համաժողովրդական շարժմանը եւ կոչ անել ԱՄՆ-ի Պետդեպարտեմենտին լինել հետեւողական Հայաստանում ժողովրդավարութեան սկզբունքների պահպանման խնդրում, չճանաչել նախագահական ընտրութիւնների արդիւնքները, դատապարտել հայաստանեան իշխանութիւնների կողմից սանձազերծուած բռնութիւններն ու ապօրինի ձերբակալութիւնների շարքը եւ պահանջել նրանցից վերջ տալ քաղաքական հետապնդումներին:

Հանրահաւաքում ելոյթ ունեցողները դատապարտեցին ընտրակեղծիքներով, բռնութիւններով, ահաբեկումներով ու այլ տեսակի ապօրինի գործողութիւններով անցկացուած ընտրութիւնները: Հանրահաւաքը արձանագրեց, որ ընտրութիւնների արդիւնքները չեն համապատասխանում իրականութեանը եւ միացաւ Լեւոն Տէր-Պետրոսեանի պահանջին՝ անվաւեր ճանաչելու ընտրութիւնները:

Հանրահաւաքը Հայաստանի կառավարութիւնից պահանջեց անյապաղ ազատ արձակել քաղբանտարկեալներին, անմիջապէս դադարեցնել քաղաքական հետապնդումները եւ վերջ տալ տեղեկատուական շրջափակմանը:

Հանրահաւաքը աւարտուեց պայքարը շարունակելու պատրաստակամութեամբ եւ իր տրամաբանական աւարտին հասցնելու վճռակամութեամբ: Տեղեկացնում է Լեւոն Տէր-Պետրոսեանի աջակցութեան ԱՄՆ-ի կենտրոնի լրատուական ծառայութիւնը:

## ԱՌԳՐԱՒՈՒԵԼ Է ՄԵԾ ՔԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԶԷՆՔ-ԶԻՆԱՄԹԵՐՔ

*Lragir.am*, 13:04

ՀՀ ոստիկանութեան հասարակայնութեան հետ կապի եւ լրատուութեան վարչութիւնը տարածել է հաղորդագրութիւն, որում ասւում է. «Փետրուարի 24-ին ՀՀ ոստիկանութեան կազմակերպուած յանցաւորութեան դէմ պայքարի գլխաւոր վարչութիւնում օպերատիւ տուեալներ էին ստացուել, որ Երեւանի Այնեաթ-Նովայի փողոցում կայանուած, մգեցուած ապակիներով երեք աւտոմեքենաների ուղեւորները զինուած են:

Ձեռնարկուած օպերատիւ-հետախուզական միջոցառումների շնորհիւ մայրաքաղաքի Ա. Մանուկեան եւ Վարդանանց փողոցների խաչմերուկից ոստիկանութեան ԿՀԴՊ գլխաւոր վարչութիւն աշխատակիցները բերման են ենթարկել Միցուբիշի Պաջեռօ մակնիշի 091 ՏԼ 01, 090 ՏԼ 01 եւ Ռենջ Ռովէռ մակնիշի 015 ՍՏ 01 պետհամարանիշերի աւտոմեքենաներն ու դրանցում գտնուող անձանց՝ 1978 թ. ծնուած Հայկազ Գալաջեանին, 1974 թ. ծնուած Մարատ Բաղդասարեանին, 1967 թ. ծնուած Արթուր Մանուկեանին, 1978 թ. ծնուած Հրայր Յովակիմեանին, 1980 թ. ծնուած Սամուէլ Աւետիսեանին, 1975 թ. ծնուած Սարգիս Արզումանեանին, 1983 թ. ծնուած Էդուարդ Ղուշչեանին, 1982 թ. ծնուած Ռոման Խանամիրեանին, 1978 թ. ծնուած Արսէն Ասատրեանին եւ 1986 թ. ծնուած Արտաշէս Պետրոսեանին:

Անձնական խուզարկութեամբ Հ. Գալաջեանի մօտից յայտնաբերուել եւ առգրաւուել է Սֆերա տեսակի զրահաբաճկոն, Միցուբիշի Պաջեռօ մակնիշի 091 ՏԼ 01 պետհամարանիշի աւտոմեքենայի սրահից՝ 7, 62 մմ տրամաչափի, ՎՈԼՖ տեսակի 9 փամփուշտ եւ ինքնաձիգի ծալովի խզակոթ, Մ. Բաղդասարեանի մօտից՝ 22 սմ երկարութեան, 10 սմ շեղբով գործարանային արտադրութեան ծալովի դանակ, Միցուբիշի Պաջեռօ մակնիշի 090 ՏԼ 01 պետհամարանիշի աւտոմեքենայի սրահից՝ Սայգա ՄԿ տեսակի ինքնաձիգ՝ 4 պահունակով, լիցքաւորուած 35 փամփուշտով, 7, 62 մմ տրամաչափի, ՎՈԼՖ տեսակի 30 փամփուշտ, ատրճանակի պատեան, 1 հակագազ, Տ-5420 տեսակի 2 ռադիոկապի միջոց, 1 հատ նուչակի, 18 սմ երկարութեան 9 սմ շեղբով դանակ, Ռենջ Ռովէռ մակնիշի 015 ՍՏ 01 պետհամարանիշի աւտոմեքենայի սրահից՝ Բերետտա տեսակի 1 ատրճանակ՝ լիցքաւորուած 9 մմ տրամաչափի 15 փամփուշտով, 2 հակագազ, Եամայկա տեսակի զրահաբաճկոն եւ Տ-5420 տեսակի ռադիոկապի միջոց, Ա. Ասատրեանի մօտից՝ Սֆերա տեսակի զրահաբաճկոն, Ա. Պետրոսեանի մօտից՝ 17,5 սմ երկարութեան, 7,5 սմ շեղբով ծալովի դանակ: Յայտնաբերուածներն ու առգրաւուածները ուղարկուել են փորձաքննութեան: Հանգամանքները պարզւում են:

Կատարւում է հետաքննութիւն»:

## ՈՐՔԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ ՄՐՑԱԿՑԱՅԻՆ Է, ԱՅՆՔԱՆ ԶԼՄ-ՆԵՐԸ ՎԱՏ ԵՆ ԼՈՒՍԱԲԱՆՈՒՄ

*Lragir.am*, 13:08

Երեւանի Մամուլի Ակումբն ու ԹԻՄ հետազօտութիւնների կենտրոնը, Բաց Հասարակութեան Ինստիտուտի օժանդակութեամբ հրապարակել են Հայաստանի նախագահի ընտրութեան պաշտօնական քարոզարշաւի ընթացքում հեռարձակող եօթ հեռուստաընկերութեան՝ *Հ1*, *Հ2*, *Արմենիա*, *Կենտրոն*, *ԱԼՄ*, *Շանթ*, *Երկիր մեդիա*, *Հանրային ռադիոյի* եթերի մոնիտորինգի տուեալները: Պատկերն ընդհանուր առմամբ շարունակում է մնալ

անփոփոխ: Կրկին հեռուստաեթերի առաջատարը վարչապետ Սերժ Սարգսեանն է, որին առաւելապէս կամ չէզոք են լուսաբանել, կամ լուսաբանել են դրական լոյսի ներքոյ: Երկրորդ տեղում Լեւոն Տէր-Պետրոսեանն է, որի պարագայում, սակայն, լուսաբանումների առումով, մեծ տոկոս է կազմում բացասական լուսաբանումների թիւը: Օրինակ, եթէ Սերժ Սարգսեանի 1384 յիշատակումից 264-ը դրական է, 1060-ը չէզոք եւ միայն 60 բացասական, ապա Լեւոն Տէր-Պետրոսեանի 1232 յիշատակումից չէզոք է 804-ը, իսկ ահա 406-ը բացասական, եւ դրական է միայն 22-ը: Նախագահի միւս թեկնածուների պարագայում յիշատակումները հիմնականում չէզոք բնոյթի են եւ դրականն ու բացասականը կազմում են շատ փոքր տոկոս: Փետրուար 25-ին Ուրբաթ ակումբում ներկայացնելով մոնիտորինգի այդ տուեալը, Երեւանի Մամուլի Ակումբի նախագահ Բորիս Նաւասարդեանն ասել է, որ իրավիճակը, նախորդ երկու համապետական ընտրութեան՝ 2003 եւ 2007 թուականի խորհրդարանի ընտրութեան համեմատութեամբ, ունեցել է յետընթաց: Խօսքը միայն պաշտօնական քարոզչութեան շրջանի մասին է, քանի որ նախորդ ընտրութիւններին ԵՄԱ-ն նախընտրական վիճակի ուսումնասիրութիւն չի իրականացրել: Բորիս Նաւասարդեանն այդ ամէնից եզրակացնում է, որ ըստ երեւոյթին, որքան ընտրական գործընթացը լինում է մրցակցային, այդքան լրատուամիջոցները վատ են լուսաբանում այն:

## ՀԱՒԱՏԱՔՆՆՈՒԹԻՒՆ ԲՈՒՀԵՐՈՒՄ

*Lragir.am*, 13:14

Մեր տեղեկութիւններով, Հայաստանի մի քանի բուհերի ռեկտորների հրամանով սկսել են բացատրութիւններ վերցնել ուսանողներից, թէ վերջիններս ինչու են ուրբաթ օրը բացակայել, եւ արդեօք եղել են Ազատութեան Հրապարակում անցկացուող հանրահաւաքում: Այս միջոցառումն այնքան էլ դրդուած չէ ուսանողների մասին ռեկտորների հոգատարութեամբ: Մեր տեղեկութիւններով, նրանք ուսանողներից պահանջում են յայտարարութիւն այն մասին, որ Ազատութեան Հրապարակում անցկացուող հանրահաւաքները սարսափեցրել են իրենց եւ ուսանողները վախից դուրս չեն եկել տներից: Փաստօրէն, սա ուսանողների միջոցով ուժի կիրառման համար եւս մէկ ալիքի կորզելու փորձ է:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆ. ԱՆԸՆԴՈՒՆԵԼԻ Է ՌՈՒԺԱՅԻՆ ՄԻՋԱՄՏՈՒԹԵԱՆ ՈՐԵՒԷ ՓՈՐՁ

*Lragir.am*, 13:18

Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը հանդէս է եկել յայտարարութեամբ, որում ասւում է. «Երէկ, ժամը 18:00-ին, Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը՝ հապճեպ հրաւիրելով ԿԸՅ-ի արտահերթ նիստ, հաստատեց նախագահական ընտրութիւնների արդիւնքները՝ նոյն այդ նիստի մասին տեղեակ պահելով դրանից ընդամէնը 30 րոպէ առաջ, այն դէպքում, երբ օրէնքով նախատեսուած էր 2 ժամ, նոյնիսկ առանց ծանուցելու նիստի օրակարգի մասին: ԿԸՅ նիստը գումարուեց ընտրատեղամասերում քուէարկութեան արդիւնքների վերահաշուարկի վերջնաժամկէտը լրանալուց անմիջապէս յետոյ, ըստ էութեան հնարաւորութիւն չտալով թեկնածուներին նոյնիսկ ծանօթանալ ընտրութիւնների բողոքարկման արդիւնքների հետ եւ համեմատել ընտրա-

կան փաստաթղթերը՝ իրական պատկերը վեր հանելու համար:

Անընդունելի համարելով նման պարտադրողական գործելաոճը՝ մենք յայտարարում ենք, որ դրանով իսկ բողոքարկուած բազմաթիւ տեղամասերում խեղաթիւրւում են ընտրութիւնների արդիւնքները, հաշուի չառնելով մեր բողոքները: Այս գործընթացին զուգահեռ երկրում տեղի ունեցան քաղաքական գործիչների ձերբակալութիւններ, ինչը միարժէք դատապարտելի է: Սրան զուգահեռ շարունակուեց Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմից 65 տոկոս ձայներով Ազատութեան Հրապարակում իրեն նախագահ հռչակելու գործընթացը, ինչը նոյնպէս անընդունելի է:

Յայտարարում ենք, որ իշխանութեան կողմից բիրտ եւ ուժային մեթոդների կիրառումը մեծացնելու է հասարակական անվստահութիւնը, խորացնելու է զանգուածային հասարակական առճակատումների իրական հնարաւորութիւնը, լուրջ ստուեր է գցելու երկրի միջազգային հեղինակութեան վրայ, կասկածի տակ է առնելու նախագահական ընտրութիւնների ողջ գործընթացը, այդպէս էլ չհանգուցալուծելով ստեղծուած իրավիճակը: Աւելին, նման գործելաոճի կիրառումը առաջիկայում առաջացնելու է բողոքի նորանոր զանգուածային դրսեւորումներ, այդպէս էլ չնպաստելով հիմնախնդրի լուծմանը: Հաւատարիմ մնալով այն շուրջ 300.000 մարդկանց ձայներին, ովքեր քուէարկեցին Արթուր Բաղդասարեանի օգտին, գիտակցելով նաեւ Սերժ Սարգսեանի եւ Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկած հարիւր-հազարաւոր քաղաքացիների առջեւ մեր պատասխանատուութիւնը, յայտարարում ենք որ անընդունելի եւ վտանգաւոր ենք համարում ուժային միջամտութեան ցանկացած փորձ եւ հանդէս ենք գալիս ստեղծուած բարդ ներքաղաքական իրավիճակը բացառապէս քաղաքական մեթոդներով հանգուցալուծելու դիրքերից:

Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակը այսօր, մինչեւ երեկոյ կ'աւարտի ընտրութիւնների արդիւնքների հետ կապուած իր փաստաթղթաւորուած ուսումնասիրութիւնները եւ վաղը՝ ժամը 14:00-ին, տեղի կ'ունենայ Արթուր Բաղդասարեանի մամլոյ ասուլիսը, որի ընթացքում նա կը տայ իր յստակ քաղաքական եւ իրաւական գնահատականները նախագահական ընտրութիւնների առնչութեամբ, կը տեղեկացնի ձեռնարկուելիք յետագայ քայլերի մասին»:

25 փետրուարի 2008թ.

## ԱՍԱ ՌՎ Է ՊԱՏՈՒԻՐԱՏՈՒՆ. ԱՍԵՆՔ ԻՆՉ Է ԼԻՆԵԼՈՒ ՊԱՏԿԵՐԸ

*Lragir.am*, 13:22

Երեւանի Մամուլի Ակումբը, Թիմ հետազօտական կենտրոնը տեւական ժամանակ է, ինչ Բաց Հասարակութեան Ինստիտուտի օժանդակութեամբ իրականացնում են Հայաստանի հեռարձակող լրատուամիջոցների մոնիտորինգ: Փետրուարի 25-ին, երբ նրանք Ուրբաթ ակումբում ներկայացրել են մոնիտորինգի նախընտրական պաշտօնական քարոզչութեան ժամանակաշրջանի տուեալը, լրագրողները ԵՄԱ նախագահ Բորիս Նաւասարդեանին հարցրել են, թէ ինչպէս է նա վերաբերւում նոյն ոլորտում այլ կազմակերպութիւնների իրականացրած մոնիտորինգի տուեալներին, որոնց զգալի մասը ներկայացնում է գործընթացի դրական լուսաբանման պատկեր, ասելով, թէ ԶԼՄ-ները հաւասարակշիռ են լուսաբանում բոլոր թեկնածուներին: Բորիս Նաւասարդեանը նշել է,

որ մոնիտորինգ իրականացրել է օրինակ ԵԱՀԿ/ԺՄԻԳ դիտորդական առաքելութիւնը, որը սակայն ԶԼՄ-ների մոնիտորինգի առանձին զեկոյց չի ներկայացրել, այլ արդիւնքը ներառել է ընտրութեան վերաբերեալ ընդհանուր զեկոյցի մէջ:

Բորիս Նաւասարդեանը յիշատակել է, որ օրինակ մոնիտորինգ է իրականացրել նաեւ նախագահի նստավայրը, յամենայն դէպս յայտարարել է այդ բանն անելու մասին: Բայց քանի որ արդիւնքի ընդհանուր հրապարակում չկայ, ապա Բորիս Նաւասարդեանը դժուարացել է այդ մասին ասել որեւէ բան:

Ինչ վերաբերում է յայտնի Էկօ Ռեսարչ կազմակերպութեանը, որը մէկ շաբաթ դիտարկել էր ԶԼՄ-դաշտը, ոչ միայն հեռարձակող, այլ նաեւ տպագիր, ու եզրահանգել, որ լուսաբանումը հաւասարակշիռ է ու երեւոյթը գնահատել լաւ, ապա Բորիս Նաւասարդեանն ասում է, որ այդ կազմակերպութիւնը PR ոլորտում գործող կազմակերպութիւն է, հետեւաբար պէտք է նայել, թէ ով է դրա մոնիտորինգի պատուիրատուն եւ ըստ այդմ եզրակացութիւն անել հրապարակուած արդիւնքի վերաբերեալ:

Բացի այդ, Բորիս Նաւասարդեանը նշել է, որ այդ կառոյցի իրականացրած մոնիտորինգը իր մէջ թերեւս պարունակել է անընդունելի մեթոդաբանութիւն: Բանն այն է, որ իրականացուել է տպագիր մամուլի եւ հեռարձակողների մոնիտորինգ եւ ներկայացուել է ընդհանուր արդիւնք, որի մէջ մօտ 53 տոկոսը կազմում է տպագիր մամուլի բաղադրութիւնը, իսկ մօտ 26 տոկոսը՝ հեռարձակողների: Այդ դէպքում իհարկէ պատկերը կարող է ստացուել հաւասարակշիռ, նշել է Բորիս Նաւասարդեանը, սակայն ասել, որ տպագիր ու հեռարձակող մամուլը պէտք է դիտարկել առանձին եւ դրանք ընդհանրացնելը անընդունելի մեթոդաբանութիւն է:

## ՆԺԿ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԲԱՆԴԻՏԻԶՄԻ ՆՈՐ ԴՐՍԵՒՈՐՈՒՄ

*Lragir.am*, 13:35

Նոր Ժամանակներ կուսակցութեան լրատուական ծառայութիւնը տարածել է հաղորդագրութիւն, որը ներկայացնում ենք նոյնութեամբ.

«Ս/թ փետրուարի 24-ին ՀՀ ԱԱԾ Ալֆա ջոկատի զինուած ու դիմակաւոր զրոհայինները մայրաքաղաքի Էրեբունու շուկայի մօտ, օրը ցերեկով, հանրութեան աչքի առջեւ յարձակուել են ՆԺԿ նախագահ Արամ Կարապետեանի ծառայողական մեքենաների վրայ: Նրանք կոպտօրէն, գոռում-գոչիւնով ու սպառնալիքներով գետնին են պառկեցրել Արամ Կարապետեանին, ՆԺԿ վարչութեան անդամ Սամուէլ Խաչատրեանին, թիկնազօրի տղաներին ու վարորդներին, այնուհետեւ նրանց տարել ՀՀ ԱԱԾ կենտրոնական մասնաշէնք: ՀՀ ԿԱ ԱԱԾ Քննչական Վարչութեան ՀԿԳ աւագ քննիչ, գնդապետ Մ. Մարուքեանի կողմից նոյն օրը կազմուած ձերբակալման արձանագրութեան մէջ նշուած է. «Արամ Կարապետեանը կասկածւում է յանցագործութեան մասին սուտ մատնութիւն կատարելու մէջ, որը զուգորդուել է ՀՀ Նախագահ Ռոբերտ Քոչարեանին եւ ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին առանձնապէս ծանր յանցագործութիւնների՝ պետական դաւաճանութեան եւ տեռորիստական ակտի կազմակերպման մէջ նրանց մեղադրելով»:

Յիշեցնենք, որ փետրուարի 12-ին ՆԺԿ նախագահը թողարկել էր իր երկրորդ լազերային սկաւառակը, որում մասնաւորապէս անդրադարձել էր հանրապետական մամուլում հրապարակուած (*Հայկական Ժամանակ*, թիւ 25, 09.02.2008թ.) իշխանութիւն-

ների այն նախագծին, ըստ որի՝ Մեղրին պէտք է յանձնուէր Ադրբէջանին, ինչպէս նաեւ անդրադարձ էր եղել այն տեղեկութեանը, ըստ որի՝ Մեղրին յանձնելու հրէշաւոր ծրագրի եւ 1999թ. հոկտեմբերի 27-ի միջեւ հնարաւոր կապ գոյութիւն ունի: Աւելին, խնդրի շուրջ իր մտահոգութիւններն Արամ Կարապետեանը նամակների միջոցով յայտնել էր ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանին, ՀՀ Գլխաւոր Դատախազ Աղուան Յովսէփեանին եւ ՀՀ ԱԱԾ տնօրէն Գորիկ Յակոբեանին:

Աւելացնենք, որ ձերբակալման վերոյիշեալ արձանագրութեան մէջ նշուած է նաեւ Արամ Կարապետեանի յայտարարութիւնը, ըստ որի՝ ՆԺԿ նախագահն իրեն մեղադրող արարքի հետ որեւէ առնչութիւն չունի, քանզի իր արարքում սուտ մատնութեան յատկանիշներ չկան: Փետրուարի 24-ի լոյս 25-ի գիշերը ԱԱԾ մի խումբ աշխատակիցներ խուզարկել են Նոր Ժամանակներ կուսակցութեան կենտրոնական գրասենեակը, կնքել եւ իրենց հետ տարել են համակարգիչները: Մի քանի ժամ տեւած խուզարկութեան արդիւնքում նրանք այդպէս էլ չեն գտել իրենց կասկածները հաստատող եւ Արամ Կարապետեանի գործունէութիւնը մերկացնող որեւէ իր կամ փաստաթուղթ»:

## ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԸՍՏ ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԻ

*Lragir.am*, 14:03

Հայաստանի արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանը, ինչպէս տեղեկացնում է Ռեգնումը, փետրուարի 25-ին լրագրողների հետ հանդիպմանը յայտարարել է, որ Հայաստանի լարուած ներքաղաքական իրադրութիւնը բացասաբար է անդրադառնում ինչպէս Հայաստանի վարկանիշի, այնպէս էլ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման վրայ:

Վարդան Օսկանեանը նշել է, թէ Ադրբէջանն արդէն իսկ փորձում է շահարկել Հայաստանի ներքաղաքական իրավիճակը: «Չէի ուզենայ օրինակներ բերել, բայց դիւանագիտական հարթութեան վրայ նրանք արդէն իսկ նկատել են պատուհան: Նրանց թւում է, որ Հայաստանի իշխանութիւնն ու հանրութիւնը երկփեղկուած են եւ իրենք կարող են իրականացնել որոշակի ծրագրեր», յայտարարել է ԱԳ նախարարը, ասելով, թէ իրավիճակը պէտք է կարգաւորուի հնարաւորինս սեղմ ժամկէտում:

Վարդան Օսկանեանը նշել է, որ եթէ բողոքի ցոյցերը ընթանում են, քանի դեռ Հայաստանի ԿԸՅ-ն չի հրապարակել վերջնական արդիւնքը, ապա դա հասկանալի է, բայց եթէ դրանք շարունակւում են նաեւ ԿԸՅ վերջնական արդիւնքի հրապարակումից յետոյ, ապա դա նշանակում է, թէ ընդդիմութիւնը ցանկանում է «ուժով փոխել ինչ որ բան եւ վերաբերմունքը դրան կը լինի այլ»: «Ընտրութիւնների յաղթողի հրապարակումից յետոյ բողոքի ակցիաները վատ կ'անդրադառնան երկրի վարկանիշի վրայ: Ես յուսով եմ, որ նրանք ուշքի կը գան ու կը գնան օրինական ճանապարհով: Նրանք կարող են բողոքարկել ընտրութեան արդիւնքը Սահմանադրական Դատարանում, աշխարհը դրան կը վերաբերի նորմալ, ես նոյնիսկ համարում եմ, որ դա դրական կ'անդրադառնայ մեր վարկանիշի վրայ», յայտարարել է Վարդան Օսկանեանը:

Խօսելով արտգործնախարարութեան մօտ տասը բարձրաստիճան աշխատակիցների այն քայլի մասին, որ նրանք յայտարարել են Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած համաժողովրդական շարժմանը միանալու մասին, Վարդան Օսկանեանն ասել է, թէ դրանք այն պաշտօնեաներն են, որոնք այս կամ այն կերպ կապ են ունեցել Տէր-

Պետրոսեանի հետ, կամ աշխատել են նրա օրօք, կամ ունեցել են նրա թիմի հետ հարազատական որեւէ առնչութիւն: Լրագրողների հարցին, թէ արդեօք չեն փորձելու պարզել, թէ ԱԳՆ աշխատակիցների շրջանում կան էլի մարդիկ, որոնք ունեն այդօրինակ առնչութիւն Տէր-Պետրոսեանի հետ, Վարդան Օսկանեանը նշել է, թէ չեն փորձելու պարզել եւ ԱԳՆ-ում չի լինելու վհուկների որս:

## ՓԵՏՐՈՒԱՐԻ 24. ԽՈՐՀՐԴԱՆՇԱԿԱՆ ՕՐ

ԳԷՈՐԳ ՍԱՐԳՍԵԱՆ

*Lragir.am*, 14:15

Ինչ որ խորհրդանշական բան կայ, որ հէնց փետրուարի 24-ը Հայաստանի ժամանակակից պատմութեան մէջ դառնում է ժողովրդի վճռական ընտրութեան օր: 1988թ. փետրուարի 24-ին ԽՄԿԿ Կենտկոմը առաջին որոշումը կայացրեց Հայաստանի հետ վերամիաւորուելու Լեռնային Ղարաբաղի հայերի պահանջի վերաբերեալ: Այն ժամանակ Ղարաբաղեան Շարժումը որակուեց որպէս «մի խումբ էքստրեմիստների» գործ: Հայաստանի եւ Ղարաբաղի ժողովուրդն այդ որոշումը գնահատեց որպէս ապտակ: Եւ հէնց այդ օրը ժողովրդական շարժումը վերաճեց անկախութեան համար պայքարի: Ժողովուրդն անտեսեց խորհրդային կենտրոնական իշխանութեան վոլիւնտարիզմը: Որոշ ժամանակ անց Հայաստանի այն ժամանակուայ Գերագոյն Խորհուրդն ինքնուրոյն որոշեց Շարժման ճակատագիրը, ընդունելով ԼՂԻՄ-ը Հայաստանին վերամիաւորելու որոշում: Յետոյ եղաւ ժողովրդի ձգտումների իրականացումը: Իսկ ԽՄԿԿ Կենտկոմը սնանկացաւ ինքն իրեն: 20 տարի անց, փետրուարի 24-ին Հայաստանի ԿԸՅ նախագահ հռչակեց Սերժ Սարգսեանին: Իսկ Հայաստանի իշխանութիւնը ժողովրդական շարժումը յայտարարեց «իշխանութեան ուժային զաւթման» ձգտում: Ժողովրդին էլ հրամայեցին դադարեցնել հանրահաւաքները եւ ցրուել տները: Հակառակ դէպքում, սպառնացին ուժ գործադրել: Յատկանշական է, որ հրամայեցին նրանք, ովքեր 1988թ. փետրուարին կանոնաւոր անդամավճար էին մուծում ԽՄԿԿ գանձարկղ:

## ՎԱՐՉԱԿԱՆ ՏՈՒԳԱՆՔ ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՎՍՏԱՀՈՒԱԾ ԱՆՁԻՆ՝ 500.000 ԴՐԱՄ

*Հետք,* 14:32

Քիչ առաջ ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի ծառայութիւնը տարածեց հետեւեալ հաղորդագրութիւնը.

«Լոռու մարզի ընդհանուր իրաւասութեան դատարանը հիմնաւորուած է համարել ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Էդմոն Գէորգեանին ՀՀ յատուկ քննչական ծառայութեան կողմից ներկայացուած մեղադրանքը եւ նրան յանցաւոր ճանաչել ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 1-ին մասով նախատեսուած արարք կատարելու, այն է՝ թիւ 32/53 ընտրական տեղամասի աշխատանքները խոչընդոտելու համար:

Էդ. Գէորգեանն ընդունել է ներկայացուած մեղադրանքը եւ խնդրել կիրառել արագացուած դատաքննութիւն, որի դէմ չի առարկել նաեւ մեղադրող կողմը:

Լոռու մարզի ընդհանուր իրաւասութեան դատարանի 25.02.08թ. դատավճռով Էդ. Գէորգեանը դատապարտուել է տուգանքի 500.000 դրամի չափով»:

## ՊԵՏՐՈՍ ՄԱԿԷՅԵԱՆԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ Է

*Lragir.am,* 14:33

Մեր տեղեկութիւններով, ձերբակալուել է Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան ղեկավար Պետրոս Մակէյեանը: Յիշեցնենք, որ այսօր գիշեր խուզարկութիւն է կատարուել նրա տանը, եւ տարել են Պետրոս Մակէյեանի անձնական արխիւից վերջինիս հրապարակային ելոյթներն ու մամուլում տպագրուած հարցազրոյցները:

## ՏԱՐԵԼ ԵՆ ՆԺԿ ՀԱՄԱԿԱՐԳԻՉՆԵՐԸ

*A1+,* 14:36

Փետրուարի 24-ին ՀՀ ԱԱԾ Ալֆա ջոկատի զինուած ու դիմակաւոր զրոհայինները մայրաքաղաքի Էրեբունու շուկայի մօտ, օրը ցերեկով, հանրութեան աչքի առաջ եւ յարձակուել են ՆԺԿ նախագահ Արամ Կարապետեանի ծառայողական մեքենաների վրայ: Նրանք կոպտօրէն, գոռում-գոչիւնով ու սպառնալիքներով գետնին են պառկեցրել Արամ Կարապետեանին, ՆԺԿ վարչութեան անդամ Սամուէլ Խաչատրեանին, թիկնազօրի տղաներին ու վարորդներին, այնուհետ եւ նրանց տարել ՀՀ ԱԱԾ կենտրոնական մասնաշէնք:

Ըստ Նոր Ժամանակներ կուսակցութեան լրատուական ծառայութեան՝ ՀՀ ԿԱ ԱԱԾ Քննչական վարչութեան ՀԿԳ աւագ քննիչ, գնդապետ Մ. Մարութեանի կողմից նոյն օրը կազմուած ձերբակալման արձանագրութեան մէջ նշուած է. «Արամ Կարապետեանը կասկածւում է յանցագործութեան մասին սուտ մատնութիւն կատարելու մէջ, որը զուգորդուել է ՀՀ Նախագահ Ռոբերտ Քոչարեանին եւ ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին առանձնապէս ծանր յանցագործութիւնների՝ պետական դաւաճանութեան եւ տեռորիստական ակտի կազմակերպման մէջ նրանց մեղադրելով»:

Յիշեցնենք, որ փետրուարի 12-ին ՆԺԿ նախագահը թողարկել էր իր երկրորդ լազերային սկաւառակը, որում մասնաւորապէս անդրադարձել էր հանրապետական մամուլում հրապարակուած (*Հայկական Ժամանակ*, թիւ 25, 09.02.2008թ.) իշխանութիւնների այն նախագծին, ըստ որի՝ Մեղրին պէտք է յանձնուէր Ադրբէջանին, ինչպէս նաեւ անդրադարձ էր եղել այն տեղեկութեանը, «ըստ որի՝ Մեղրին յանձնելու հրէշաւոր ծրագրի եւ 1999թ. հոկտեմբերի 27-ի միջեւ հնարաւոր կապ գոյութիւն ունի: Աւելին, խնդրի շուրջ իր մտահոգութիւններն Արամ Կարապետեանը նամակների միջոցով յայտնել էր ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանին, ՀՀ Գլխաւոր Դատախազ Աղուան Յովսէփեանին եւ ՀՀ ԱԱԾ տնօրէն Գորիկ Յակոբեանին»:

«Աւելացնենք, որ ձերբակալման վերոյիշեալ արձանագրութեան մէջ նշուած է նա եւ Արամ Կարապետեանի յայտարարութիւնը, ըստ որի՝ ՆԺԿ նախագահին իրեն մեղսագրուող արարքի հետ որեւէ առնչութիւն չունի, քանզի իր արարքում սուտ մատնութեան յատկանիշներ չկան», - ասւում է հաղորդագրութեան մէջ:

Փետրուարի 24-ի լոյս 25-ի գիշերը ԱԱԾ մի խումբ աշխատակիցներ խուզարկել են Նոր Ժամանակներ կուսակցութեան կենտրոնական գրասենեակը, կնքել եւ իրենց հետ տարել են համակարգիչները: Մի քանի ժամ տեւած խուզարկութեան արդիւնքում նրանք այդպէս էլ չեն գտել իրենց կասկածները հաստատող եւ Արամ Կարապետեանի գործունէութիւնը մերկացնող որեւէ իր կամ փաստաթուղթ:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ՊԵՏՐՈՍ ՄԱՔԷՅԵԱՆԻՆ

*A1+*, 14:52

Մօտ մէկ ժամ առաջ ձերբակալել են Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մաքէյեանին: Ըստ մեր տեղեկութիւնների՝ նրան տարել են դատախազութիւն: Յիշեցնենք, որ գիշերը խուզարկութիւն է կատարուել Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մաքէյեանի տանը:

Ըստ խուզարկութեանը ներկայ Ֆորում իրաւունքի կենտրոնի նախագահ, փաստաբան Տիգրան Տէր-Եսայեանի, խուզարկութիւնը տեղի է ունեցել դատարանի որոշմամբ, որի համար հիմք է հանդիսացել՝ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածը, որով, Մաքէյեանին մեղադրանք է առաջադրուել Ընտրական Յանձնաժողովին խանգարել-խոչընդոտելու համար:

Սակայն, ըստ Տիգրան Տէր-Եսայեանի, խուզարկողները փնտրել են զէնք-զինամթերք, գումար եւ քուէաթերթիկներ, որը չեն գտել:

Այս պահին փաստաբան Տիգրան Տէր-Եսայեանը փորձում է մտնել դատախազութիւն:

## ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԸ ԵՒ ՍՄԲԱՏ ԱՅՎԱԶԵԱՆԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ ԵՆ

*A1+,* 14:54

Ըստ ոստիկանութեան հասարակայնութեան հետ կապի եւ լրատուութեան վարչութեան՝ փետրուարի 23-ին ՀՀ ոստիկանութիւն բերման ենթարկուած ՀՀ Գլխաւոր Դատախազի նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը ձերբակալուած է:

Ձերբակալուած է նաեւ փետրուարի 24-ին ոստիկանութիւն բերման ենթարկուած ՀՀ պետեկամուտների նախկին նախարար Սմբատ Այվազեանը: Նրան մեղադրանք է առաջադրուած ՀՀ քր. օր.-ի 316 յօդուածի (իշխանութեան ներկայացուցչի նկատմամբ բռնութիւն գործադրելը) 1-ին մասով:

## ԳԱԳԻԿ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԸ ԵՒ ՍՄԲԱՏ ԱՅՎԱԶԵԱՆԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ ԵՆ

*Lragir.am*, 14:58

ՀՀ ոստիկանութեան հասարակայնութեան հետ կապի եւ լրատուութեան վարչութիւնը տարածել է հաղորդագրութիւն, որում ասւում է. «Փետրուարի 23-ին ՀՀ ոստիկանութիւն բերման ենթարկուած ՀՀ Գլխաւոր Դատախազի նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը ձերբակալուած է: Ձերբակալուած է նաեւ փետրուարի 24-ին ոստիկանութիւն բերման ենթարկուած ՀՀ պետեկամուտների նախկին նախարար Սմբատ Այվազեանը: Նրան մեղադրանք է առաջադրուած ՀՀ քր. օր.-ի 316 յօդուածի (ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԲՌՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾԱԴՐԵԼԸ) 1-ին մասով»:

## ՑՈՅՑԵՐ Ի ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ

*Lragir.am*, 15:02

Հայաստանի Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը Ազատութեան Հրապարակում քիչ առաջ յայտարարել է, թէ տեղեկութիւններ ունեն,

որ գիւղական դպրոցների աշակերտներին այսօր ուղարկել են տուն, իսկ ուսուցիչները հաւաքւում են շրջկենտրոններում, որտեղ պէտք է ցոյցեր անեն ի աջակցութիւն Սերժ Սարգսեանի: Միքայէլ Հայրապետեանը յայտարարել է նաեւ, թէ Սմբատ Այվազեանի հայրենի Յաղթանակ գիւղը շրջափակուած է, ուժային կառոյցները հսկում են մուտքն ու ելքը:

## ՀԱՄԱԼՍԱՐԱՆՆ ԷԼ ՑՈՅՑ Կ'ԱՆԻ

*Lragir.am*, 15:33

Գիւղական ուսուցիչներից հետ չեն ուզում մնալ նաեւ համալսարանները: Մասնաւորապէս, մեր ստացած տեղեկութիւնների համաձայն, համալսարանի ռեկտոր, ՀՀ ԳԱԱ թղթակից անդամ Արամ Սիմոնեանի հրահանգով համալսարանի աշխատակիցներին ցուցակագրում են վաղը կազմակերպուող ԵՊՀ միտինգին՝ ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի:

## ՀԱՅ ԱՐԻԱԿԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 15:40

Հայ Արիական Միաբանութիւնը, մի շարք ազգայնական ուժերի հետ, նախընտրական ժամանակահատուածում յայտարարութիւն էր տարածել, որով ներկայացրել էր իր չէզոքութիւնը փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութեան վերաբերեալ, միեւնոյն ժամանակ գնահատական տալով բոլոր 9 թեկնածուներին, նրանց գործունէութեանը: Հիմա, հետեւելով յետընտրական գործընթացներին, Հայ Արիական Միաբանութեան Գերագոյն Խորհուրդը, խորհրդակցելով իրեն սատարող ազգայնական կառոյցների ու խմբերի հետ, յայտարարում է, որ իշխանութեան եւ արմատական ընդդիմութեան հակամարտող անզիջում բնոյթի մարտավարութիւնը յանգեցրել է մի իրավիճակի, որը հետզհետէ խորացնում է հայ հանրութեան պառակտումն ու փոխադարձ անվստահութիւնը, ինչն էլ աններելի է ներկայիս պայմաններում, երբ միջազգային զարգացումները յատկապէս հիմա (երբ ՀՀ նախագահի օրինական ընտրութեան խնդիրն է լուծւում) ուղղակի կամ անուղղակի ազդելու են ՀՀ ներքին կեանքի ու ԼՂՀ հարցի քննարկման վրայ: Այսօր, երբ հայ հանրութիւնը իր իշխանութիւնների միջոցով Կոսովոյի անկախութեան նախադէպը պիտի միջազգային քննարկման դնէր Արցախի խնդիրը մէկ աստիճանով էլ բարձրացնելու համար, թաղուած է ներազգային հակամարտութեան մէջ: Այս իրավիճակի շարունակականութիւնը միանշանակ յանգեցնելու է բախումների, արիւնահեղութեան, որից գրեթէ միշտ կարողացել է խուսափել հայութիւնը, իհարկէ մասնակի դէպքեր եղել են, բայց չեն ծաւալուել կողմերից մէկի ըմբռնողականութեան արդիւնքում: Հիմա կարծես թէ չկայ որեւէ ըմբռնողականութիւն: Ուստի, Հայ Արիական Միաբանութիւնը հակամարտող կողմերին առաջարկում է.

1. Համատեղ դիմել ՀՀ Սահմանադրական Դատարան ՀՀ նախագահի ընտրութեան օրինականութեան հարցը լսելու եւ վերջնական վճիռ կայացնելու համար: Եթէ ընդդիմութիւնը չունի բաւարար վստահութիւն Սահմանադրական Դատարանի նկատմամբ, ապա հարցի քննարկմանը կարող են մասնակցել նաեւ բոլոր տեղական ու միջազգային դիտորդական առաքելութիւնները: Եթէ ընդդիմութիւնը հրաժարւում է դիմել Սահմանադրական Դատարան, ապա իշխանութիւններին առաջարկում ենք ցուցաբերել վեհութիւն եւ դիմել Սահմանադրական Դատարան հայութեան մի ստուար մասի կասկածները փարատելու

նպատակով: Եթէ իշխանութիւնները մտահոգուելու խնդիր չունեն, ապա հարցը իրաւական հարթութիւն տեղափոխելը կը բերի ամբողջ ժողովրդի վստահութեան վերականգնմանը:

2. Հայ Արիական Միաբանութիւնը իրեն աջակցող ազգային ուժերի հետ պատրաստ է նպաստել այս խնդրի փոխշահաւէտ քննարկմանը՝ եռակողմ բանակցութիւններում: Մեզ համար հայեր են ինչպէս ընդդիմութեան, այնպէս էլ իշխանութիւնների հարիւր հազարների հասնող համակիրները, եւ մեզ համար թանկ է ամէն հայի արեան ամէն մի կաթիլը: Մենք անհանգստացած ենք նաեւ մեր երկրի, պետութեան վարկով, որի միջազգային ասպարէզում բարձր լինելն այլեւս անհրաժեշտութիւն է:

3. Պատրաստ ենք միջնորդական առաքելութիւնը սկսելուց եւ յաջող ընթանալուց յետոյ հեռանալ բանակցութիւններից՝ այն թողնելով արդէն բանակցող կողմերի վրայ, որը կողմերին թոյլ կը տայ փոխադարձ խնդիրները ներփակել՝ առանց երրորդ կողմին դրանք ցուցանելու:

4. Կարեւորելով միջազգային դիտորդների գնահատականները եւ հնարաւոր մասնակցութիւնն ու դերակատարումը ՀՀ Սահմանադրական Դատարանում, այնուամենայնիւ, կարծում ենք, որ նրանց՝ միջազգային այդ դիտորդներին չպիտի տրուի միջնորդութիւնների ու միջամտութիւնների անհարկի իրաւունք, ակամայ արտաքին միջամտութիւն թոյլ չտալու եւ Սահմանադրական Դատարանի վճիռը հայոց անկախ պետականութեան ինքնուրոյնութեան դրսեւորում ցուցադրելու համար: Կողմերի արձագանքման պարագայում մենք կ՚անցնենք մեր միջնորդական առաքելութեան իրականացմանը:

Հայ Արիական Միաբանութեան Գերագոյն Խորհուրդ

## ՀՀԿ ԱՆԴԱՄԸ ՏՈՒԵՑ ՏՈՄՍԸ

*Lragir.am*, 15:41

Ազատութեան Հրապարակում մեկնարկած այսօրուայ հանրահաւաքում Հանրապետական Կուսակցութեան անդամ Ջեմմա Սահակեանը յանձնել է կուսակցական անդամատոմսը՝ հարթակում պատռելու համար:

## ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԸ ԲՈՂՈՔՈՒՄ ԵՆ *ՀԱՅԼՈՒԻ* ԴԷՄ

*Հետք*, 15:43

Վերջին օրերին բողոքի ակցիաներ են սկսուել նաեւ Հանրային հեռուստաընկերութեան դէմ: ՀՀ քաղաքացիների այս նամակը ուղարկուել է լրատուամիջոցներին, ինչպէս նաեւ՝ *Հայլուր*ին:

Սոյն նամակով արտայայտում ենք մեր բողոքը եւ դժգոհութիւնը հանրային հեռուստաընկերութեան լրատուական հաղորդումների ժամանակ բացայայտ իշխանամէտութեան, ճշմարտութեան աղաւաղման եւ քօղարկման, լրագրողական էթիկայի եւ անաչառութեան սկզբունքների խախտման, ժողովրդի համար նշանակալից իրադարձութիւնների անյարիր լուսաբանման դէմ:

Հանրային հեռուստառադիոընկերութիւնը ստեղծում է պետութիւնը՝ ապահովելու համար քաղաքացիների սահմանադրական իրաւունքը, այսինքն՝ ազատօրէն ստանալ քաղաքական, տնտեսական, կրթական […] եւ այլ տեղեկատուութիւն:

Մինչդեռ ժողովրդի ձայնն արտայայտող նախընտրական հանրահաւաքները, ինչպէս նաեւ՝ յետընտրական զանգուածային ցոյցերը կամ չեն լուսաբանուել ընդհանրապէս, կամ լուսաբանուել են խիստ բացասական երանգաւորմամբ, չեն ցուցադրուել ժողովրդի միասնական բողոքը ցուցադրող կադրերը: Չեն լուսաբանուել նաեւ ընտրական գործընթացի ժամանակ տեղ գտած բազմաթիւ խախտումները, բռնութիւնները եւ քաղաքացիների ազատութեան դէմ ոտնձգութիւնները: Ձեր լռութիւնը դարձնում է Ձեզ մեղսակից կատարուող յանցագործութիւններին:

Մենք պահանջում ենք լսելի դարձնել ժողովրդի ձայնը, ցուցադրել եւ յաւուր պատշաճի հեռուստադիտողին ներկայացնել Ազատութեան Հրապարակի նստացոյցը, բողոքի միւս ակցիաները եւ անաչառօրէն մեկնաբանել ՀՀ քաղաքական, տնտեսական, հասարակական կեանքի զարգացումները:

## ՆԺԿ-Ն ՅԱՅՏԱՐԱՐՈՒՄ Է

*Հետք*, 15:46

Այսօր Նոր Ժամանակներ կուսակցութեան լրատուական ծառայութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը.

Նրանք կոպտօրէն, գոռում-գոչիւնով ու սպառնալիքներով գետնին են պառկեցրել Արամ Կարապետեանին, ՆԺԿ վարչութեան անդամ Սամուէլ Խաչատրեանին, թիկնազօրի տղաներին ու վարորդներին, այնուհետեւ նրանց տարել ՀՀ ԱԱԾ կենտրոնական մասնաշէնք:

ՀՀ ԿԱ ԱԱԾ Քննչական Վարչութեան ՀԿԳ աւագ քննիչ, գնդապետ Մ. Մարուքեանի կողմից նոյն օրը կազմուած ձերբակալման արձանագրութեան մէջ նշուած է. «Արամ Կարապետեանը կասկածւում է յանցագործութեան մասին սուտ մատնութիւն կատարելու մէջ, որը զուգորդուել է ՀՀ Նախագահ Ռոբերտ Քոչարեանին եւ ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին առանձնապէս ծանր յանցագործութիւնների՝ պետական դաւաճանութեան եւ տեռորիստական ակտի կազմակերպման մէջ նրանց մեղադրելով»:

Յիշեցնենք, որ փետրուարի 12-ին ՆԺԿ նախագահը թողարկել էր իր երկրորդ լազերային սկաւառակը, որում մասնաւորապէս անդրադարձել էր հանրապետական մամուլում հրապարակուած (*Հայկական ժամանակ* թիւ 25, 09.02.2008թ.) իշխանութիւնների այն նախագծին, ըստ որի՝ Մեղրին պէտք է յանձնուէր Ադրբէջանին, ինչպէս նաեւ անդրադարձ էր եղել այն տեղեկութեանը, ըստ որի՝ Մեղրին յանձնելու հրէշաւոր ծրագրի եւ 1999թ. հոկտեմբերի 27-ի միջեւ հնարաւոր կապ գոյութիւն ունի: Աւելին, խնդրի շուրջ իր մտահոգութիւններն Արամ Կարապետեանը նամակների միջոցով յայտնել էր ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանին, ՀՀ Գլխաւոր Դատախազ Աղուան Յովսէփեանին եւ ՀՀ ԱԱԾ տնօրէն Գորիկ Յակոբեանին:

Աւելացնենք, որ ձերբակալման վերոյիշեալ արձանագրութեան մէջ նշուած է նաեւ Արամ Կարապետեանի յայտարարութիւնը, ըստ որի՝ ՆԺԿ նախագահն իրեն մեղսագրուող արարքի հետ որեւէ առնչութիւն չունի, քանզի իր արարքում սուտ մատնութեան յատկանիշներ չկան:

Փետրուարի 24-ի լոյս 25-ի գիշերը ԱԱԾ մի խումբ աշխատակիցներ խուզարկել են Նոր Ժամանակներ կուսակցութեան կենտրոնական գրասենեակը, կնքել եւ իրենց հետ տարել են համակարգիչները: Մի քանի ժամ տեւած խուզարկութեան արդիւնքում նրանք

այսպէս էլ չեն գտել իրենց կասկածները հաստատող եւ Արամ Կարապետեանի գործունէութիւնը մերկացնող որեւէ իր կամ փաստաթուղթ»:

## ՕՄԲՈՒԴՍՄԷՆԻ ԳՐԱՍԵՆԵԱԿԻ ԱՇԽԱՏԱԿԻՑՆԵՐՆ ԱՅՑԵԼԵԼ ԵՆ ՍՄԲԱՏ ԱՅՎԱԶԵԱՆԻՆ

*Lragir.am*, 15:46

Փետրուարի 25-ի առաւօտեան ժ. 09.30-ին, ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի գրասենեակ ստացուեց հաղորդում, որ Սմբատ Այվազեանը ոստիկանութեան աշխատակիցների կողմից ենթարկուել է ճնշումների եւ խոշտանգումների: Արմէն Յարութիւնեանի յանձնարարականով ստեղծուած աշխատանքային խումբն անմիջապէս այցելել է ՀՀ Ոստիկանութեան Կենտրոնի բաժանմունք, քննչական բաժնում հանդիպել եւ առանձնազրոյց է ունեցել վերջինիս հետ: Հանդիպման ընթացքում Սմբատ Այվազեանը հերքել է իր հանդէպ բռնութիւն գործադրելու կամ խոշտանգելու մասին տեղեկութիւնները: Սմբատ Այվազեանը նաեւ նշել է, որ ինչպէս իր առողջական վիճակի, այնպէս էլ համապատասխան քննչական գործողութիւնների հետ կապուած խնդիրներ չունի: Այս պահի դրութեամբ Սմբատ Այվազեանը ապահովուած է իր կողմից մատնանշուած փաստաբանով: Այս հաղորդագրութիւնը տարածել է ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի բաժինը:

## ԵՐԵՒԱՆԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 15:53

Արդէն 5-րդ օրն է, ինչ խախտելով «ժողովներ, հանրահաւաքներ, երթեր եւ ցոյցեր անցկացնելու մասին» ՀՀ օրէնքի պահանջները, Երեւանի Ազատութեան Հրապարակում առանց համապատասխան թոյլտուութեան կազմակերպւում են չարտօնուած հանրահաւաքներ, նստացոյց եւ երթեր:

Առանց սահմանուած իրազեկման եւ թոյլտուութիւնների իրականացուող զանգուածային հրապարակային միջոցառումները էապէս խաթարում են Երեւան քաղաքի բնականոն կեանքը, առաջացնում են խցանումներ եւ անանցանելի դարձնում կենտրոնական փողոցները, հրապարակներն ու խաչմերուկները, բարդութիւններ ու խոչընդոտներ առաջացնում քաղաքացիների ազատ տեղաշարժի, տրանսպորտի անվտանգ եւ անխափան երթեւեկութեան համար: Նշուած միջոցառումների անցկացման վայրերում ստեղծուել է հակահիգիենիկ եւ հակասանիտարական վիճակ:

Գիշերային ժամերին Ազատութեան Հրապարակում չեն պահպանւում նաեւ օրէնսդրութեամբ սահմանուած լռութեան կանոնները, որով խախտւում է յարակից շէնքերում բնակւող քաղաքացիների անդորրը եւ հանգիստը՝ առաջացնելով բնակչութեան արդարացի դժգոհութիւնը: Քաղաքապետարան են դիմում հազարաւոր երեւանցիներ՝ արտայայտելով իրենց անհանգստութիւնը եւ վրդովմունքը:

Ստեղծուած իրավիճակը համարելով անթոյլատրելի՝ Երեւանի քաղաքապետարանը կոչ է անում Երեւան քաղաքում վերջին օրերին անցկացուող զանգուածային միջոցառումների կազմակերպիչներին եւ մասնակիցներին՝ դադարեցնել չարտօնուած հանրահաւաքները, երթերը եւ նստացոյցը, չխոչընդոտել տրանսպորտի անխափան երթեւեկութեանն ու քաղաքացիների ազատ տեղաշարժին, չխանգարել Երեւանի բնակիչ-

ների անդորրն ու հանգիստը, վերականգնել մայրաքաղաքի կեանքի բնականոն ռիթմը:
ԵՐԵՒԱՆԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆ

## ԲԱ ՅԱՂԹՈՂՆ ԱՅԴՊԻՍԻ ԲԱՆ Կ'ԱՆԻ

*Lragir.am*, 16:01

Ազատութեան Հրապարակում այսօրուայ հանրահաւաքում ելոյթ ունենալով, Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Զաւէնի Սարգսեանը յայտարարել է, որ այն գործի համար, որ արւում է, կարեւորն այս հրապարակում լինելն է եւ հրապարակը պահելը: Նա ասել է, թէ եւս 2 օր, եւ այս իշխանութիւնը փլուզուելու է: Մեր հաւաքականութիւնը դա է ապահովում, ապահովում է ձերբակալուածների ազատուելը, ասել է Արամ Սարգսեանը: Իսկ ձերբակալուածների համար հանգիստ եղէք, նրանք աւելի լաւ պայմաններում են, քան վրաններում գիշերող միտինգաւորները, ասել է նա: Եւս 2 օր, եւ ամբողջ աշխարհը կը համոզուի, որ Սերժ Սարգսեանը չի յաղթել, ասել է Արամ Սարգսեանը եւ համեմատել Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ Սերժ Սարգսեանի տրամադրութիւնները. առաջինը պարում է, ուրախանում, իսկ երկրորդը նստում է որոշում, թէ ում ձերբակալեն: Բա յաղթողն այդպիսի բան կ'անի, հարցնում է Արամ Զաւէնի Սարգսեանը: Բանը հասել է այնտեղ, որ արդէն երկրապահներին են ուզում փչացնել, կանչում են՝ թէ դիմում գրի, որ երկրապահ չես, նկատի ունենալով գեներալներին, յայտարարել է Արամ Սարգսեանը:

## «ԱԺ-ՈՒՄ ԿԱՏԱՐՒՈՒՄ Է ԱՅՆ, ԻՆՉ ՓԵՏՐՈՒԱՐԻ 19-ԻՆ ՏԵՂԱՄԱՍԵՐՈՒՄ»

*A1+*, 16:05

«ՀՀ ԱԺ-ում արդէն ամէն օր կատարւում է այն, ինչ փետրուարի 19-ին կատարւում է 5 տարին մէկ՝ օրէնքների ոտնահարումներ, աշխատանքի ակնյայտ իմիտացիա. Հայաստանում քաղաքական համակարգը իսպառ սպանել են եւ այս մարմինը բացարձակապէս գոյութիւն չունի, իսկ դրանում իր մեղքի մեծագոյն բաժինն ունի ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանը», - *Ա1+*-ին ասաց ԱԺ նիստից վրդովուած դուրս եկած Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Ստեփան Սաֆարեանը:

Նա փետրուարի 19-ի հետ համեմատութիւնն արեց նաեւ ԱԺ-ի դահլիճում, եւ յայտարարեց, որ ԱԺ-ը քուէարկութիւնների քվորումը ապահովեց այնպէս, ինչպէս անցկացուեց փետրուարի 19-ի ընտրութիւնը: «Ձեր ասածները ոչ մի նշանակութիւն եւ ազդեցութիւն չունեն», - արձագանքեց ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանը:

Ի դէպ, այսօր ԱԺ հերթական նիստի ժամանակ ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանը յիշեցրեց, որ երէկ ԿԸՅ-ն հրապարակել է վերահաշուարկի արդիւնքները եւ ՀՀ երրորդ նախագահ հռչակել Սերժ Սարգսեանին, ինչի կապակցութեամբ յորդորեց շնորհաւորել ՀՀԿ նախագահին: Ծափահարեց ինքը եւ ՀՀԿ անդամները, ինչպէս նաեւ, ոչ այնքան բուռն, ԲՀԿ-ն: Ընդհանրապէս, չծափահարեցին ՀՅԴ-ն, Ժառանգութիւնը: ՕԵԿ պատգամաւորները նիստին չէին մասնակցում:

Տիգրան Թորոսեանը նիստի սկզբում տեղեկացրեց, որ ԱԺ փոխնախագահ Վահան Յովհաննիսեանից ստացել են հրաժարականի դիմում. «Ինչպէս գիտէք, այս դիմումը ստանալուց յետոյ մենք պէտք է սպասենք երեք օր, որից յետոյ վերջնականօրէն այս

դիմումի հետ կապուած հարցերը կը լուծուեն», - ասաց Տիգրան Թորոսեանը: Գրանցուած 88 պատգամաւորները քուէրակութեամբ հաստատեցին բոլոր օրինագծերը: Ի դէպ, քուէարկութիւնից առաջ ՀՅԴ խմբակցութեան ղեկավար Հրայր Կարապետեանը յայտարարեց, որ իրենք նախորդ քառօրեայից մնացած բոլոր քուէարկութիւններին ձեռնպահ են քուէարկելու: 13 դաշնակցական պատգամաւորները, կողմ չլինելով հանդերձ նպաստեցին բոլոր օրինագծերի ընդունմանը, ապահովելով քվորում:

Քառօրեայ նիստերի օրակարգում ընդգրկուած չէր Ժառանգութիւն խմբակցութեան հեղինակած օրինագիծը՝ Լեռնային Ղարաբաղի անկախութիւնը ճանաչելու վերաբերեալ: «Ինչո՞ւ չէք դնում օրինագիծը քննարկման, որ հասկանանք, թէ ով է կողմնակից Ղարաբաղը յանձնելուն եւ ով դէմ»՝ այսպիսի հարցադրում արեց պատգամաւոր Ստեփան Սաֆարեանը, իսկ Տիգրան Թորոսեանը տեղեկացրեց, որ դեռ չի լրացել կանոնակարգ-օրէնքով սահմանուած 90 օրեայ ժամկէտը: Ստեփան Սաֆարեանը պնդում էր, որ լրացել է, Թորոսեանը սովորեցնում էր հաշուել, եւ խորհուրդ էր տալիս կարդալ կանոնակարգ-օրէնքը:

Յիշեցնենք, որ օրինագծի ներկայացումից յետոյ 90 օրուայ ընթացքում յանձնաժողովը պէտք է նորից անդրադառնար այդ օրինագծին, կամ տար ոչ դրական, կամ դրական եզրակացութիւն, կամ օրինագծի հեղինակը հանդէս գար այլ առաջարկութեամբ ժամկէտների հետ կապուած: Այդպիսի բան չի եղել:

«Աւելին, այսօր օրակարգ է ներառուած մի պայմանագիր, Աբու-Դաբիից վարկային միջոցներ ներգրաւելու մասին, որով գլխադասային յանձնաժողովը արտաքին յարաբերութիւնների յանձնաժողովն է, ես անդամ եմ, բայց նիստ չի հրաւիրուել: Այսինքն, ապօրինաբար, առանց եզրակացութեան օրինագիծ է դրուած օրակարգում: Տուեալ պարագայում ապացոյցները, որ ԱԺ նախագահին անընդհատ ոտնահարում է ՀՀ օրէնքները, կարծում եմ բազմաթիւ են», - ասաց Ստեփան Սաֆարեանը:

## ՕՍԿԱՆԵԱՆԸ ՆԵՐԿԱՅԱՑՐԵՑ ՀԻՒՐԻ ԽՆԴՐԱՆՔՈՎ

*A1+*, 16:20

ՀՀ ԱԳ նախարար Վարդան Օսկանեանն ընդունեց Սլովակիայի ԱԳ նախարար, Եւրոպայի Խորհրդի նախարարների կոմիտէի նախագահ Եան Կուբիշի (Jan Kubis) գլխաւորած պատուիրակութեանը:

Հանդիպման ընթացքում կողմերն անդրադարձան Հայաստանում կայացած նախագահական ընտրութիւններին: Սլովակիայի ԱԳ նախարարը յայտնեց, որ իր այցի ժամկէտները պատահական չեն ընտրուած, իր ցանկութիւնն է եղել այցելել ընտրութիւններից մի քանի օր անց տեղում իրավիճակը ուսումնասիրելու եւ պատկերացում կազմելու համար: Հիւրի խնդրանքով, նախարար Օսկանեանը ներկայացրեց Հայաստանում յետընտրական զարգացումները, բողոքարկման եւ վերահաշուարկի գործընթացի արդիւնքները:

Այնուհետեւ կողմերն անդրադարձան երկկողմ յարաբերութիւններին: Երկուստեք նշուեց տնտեսական յարաբերութիւնների զարգացման մեծ ներուժը, եւ կարեւորուեց իրաւապայմանագրային դաշտի շուտափոյթ ընդլայնումը: Եան Կուբիշը տեղեկացրեց, որ այս տարուայ ընթացքում Հայաստան են ծրագրում այցելել Սլովակիայի կառավարութեան երեք անդամ, ինչը լուրջ խթան կը հանդիսանայ երկու երկրների միջեւ բազմաբնոյթ

յարաբերութիւնների յետագայ զարգացման համար:

Նախարարները քննարկեցին նաեւ Հայաստան-Եւրոպական Միութիւն յարաբերութիւնները եւ Եւրոպական Հարեւանութեան քաղաքականութեան Գործողութիւնների ծրագրի կատարման ընթացքը:

Հիւրի խնդրանքով նախարար Օսկանեանը ներկայացրեց հայ-թուրքական յարաբերութիւնների կարգաւորման վերաբերեալ ՀՀ մօտեցումները, ինչպէս նաեւ ԼՂ հիմնախնդրի կարգաւորման բանակցութիւնների ընթացքն ու հեռանկարները: Անդրադարձ կատարուեց նաեւ Կոսովոյի շուրջ զարգացումներին:

Հանդիպմանը յաջորդեց համատեղ մամուլի ասուլիս:

## ՆՈՐ ՈՐԱԿԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ

*Lragir.am,* 16:22

Ազատութեան Հրապարակում քիչ առաջ ելոյթ է ունեցել Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա դիմել է ուսանողութեանը, ասելով թէ ներկայ բացակայ է անում եւ նրանց համար կարդալու է դասախօսութիւն: Տէր-Պետրոսեանը խօսել է ժողովրդավարութեան, քաղաքացիական հասարակութեան թեմաներով, յայտարարելով, որ այս շարժման ընթացքում յաջողուեց ստեղծել նոր որակի հասարակութիւն: Նա ուսանողութեան կոչ արեց մէկ-երկու շաբաթ չգնալ իրենց բուհեր, եւ այդ ընթացքում կ'ապրեն նոր երկրում, արժանապատիւ կեանքով:

## ՍՈՒՐԷՆ ԱԲՐԱՀԱՄԵԱՆԸ ԴԻՄԵԼ Է ՍՊԱՆԵՐԻՆ

*Lragir.am*, 16:28

Ելոյթ ունենալով հանրահաւաքում, Հայաստանի ՆԳ նախկին նախարար Սուրէն Աբրահամեանը դիմել է սպաներին: Նրա խօսքով, հէնց սպաների անգործութեան հետեւանքով է, որ այսօր ժողովուրդը հրապարակում է: Եթէ նրանք պաշտպանէին օրինականութիւնը երկրում, ապա դրա կարիքը չէր լինի: Մենք հաւաքուել ենք անելու ձեր չարածը, յայտարարել է Սուրէն Աբրահամեանը: Դիմելով ԱԱԾ սպաներին, Սուրէն Աբրահամեանն ասել է, թէ հրապարակի հարթակին շպիոններ, երկրի թշնամիներ չեն, այլ պետութիւն կառուցած մարդիկ: Հայ սպայ, հաւսար, զգաստ, հաւասարութիւնը դէպի ժողովուրդ, կոչել է Սուրէն Աբրահամեանը:

## ԲՈՒՀԵՐՈՒՄ ՅԱՐԱԲԵՐԱԿԱՆ ԱՆԴՈՐՐ Է

*A1+,* 16:35

Երեւանեան բուհերում այսօր, ուսանողների խօսքերով՝ յարաբերական անդորր է: Ինչպէս մեզ հետ զրոյցում ասաց Երեւանի պետական տնտեսագիտական ինստիտուտի ուսանող. «Դեռ հանգիստ է այսօր, որը կասկածելի հանգիստ է, ինչպէս ասում են՝ մարմանդ գետից վախեցիր»:

Հայկական Պետական Մանկավարժական Համալսարանի (ՀՊՄՀ) ուսանողութիւնը մեր այցելած բուհերից ամենաանտարբերը թուաց: Նրանցից մեծ մասի հետ ունեցած զրոյցի ժամանակ կամ մօտաւոր տեղեկութիւններ ունէին Ազատութեան Հրապարակում տեղի ունեցողի մասին, կամ ընդհանրապէս տեղեակ չէին:

Այս բուհի պահակն ամենասրամիտն էր նրանցից: Նրա ներկայացմամբ՝ այստեղի

ուսանողներն հիմնականում մարզերից են գալիս եւ քաղաքականապէս ակտիւ չեն: «Որպէսզի ակտիւ լինեն, նախ պէտք է նրանց ընտանիքներում լինի այդ ակտիւութիւնը, որը չկայ: Իսկ ընդհանուր առմամբ աղջիկներն այստեղ գալիս են որպէս օժիտ՝ դիպլոմ ստանալու, իսկ տղաները՝ բանակից խուսափելու համար», - *Ա1+*-ի հետ զրոյցում վստահեցրեց ՀՊՄՀ պահակը:

Այստեղ, ըստ նրա՝ միշտ անդորր է եղել, միայն փետրուարի 20-ին ուսանողութիւն գրեթէ չի եղել:

Երեւանի Պետական Համալսարանի (ԵՊՀ) բակում հանդիպեցինք միջազգային յարաբերութիւնների բաժնի մագիստրատուրա 1-ին կուրսի մի խումբ ուսանողուհիների, որոնք ամէն կերպ փորձում էին համոզել, որ յայտարարուած դասադուլի հետ կապուած իրենց նկատմամբ որեւէ պարտադրանք դասի նստելու համար չի եղել: «Ես կարծում եմ, որ ովքեր ուզում են ցոյցի գնալ, ընդհանրապէս դասի չեն էլ գալիս: Որեւէ այլ ճնշում, ազնուօրէն եմ ասում, չկայ, բացակաների նկատմամբ խտրականութիւն էլ չի եղել. չի ասւում, որ կը հեռացուեն նրանք: Յամենայն դէպս մեր ֆակուլտէտում նման բաներ չկան», - համոզմունք յայտնեց ուսանողուհիներից մէկը:

Նոյն կարծիքին էր նաեւ ԵՊՀ պատմութեան ֆակուլտէտի մի ուսանողուհի:

Բայց մի տղայ արեւելագիտութեան բաժնի 1-ին կուրսից ասաց, որ այսօր իրենց ուղղակի ասուել է՝ անպայման դասի նստել: «Բայց ոչ մի ճնշում չի եղել, ընդամէնը զգուշացուել է, որ դասադուլի հետ կապուած չարժի: Դասադուլի մէջ ես անձամբ չկամ, քանի որ իբրեւ 1-ին կուրսեցի՝ ինձ համար, կարծում եմ՝ վատ կը լինի, վախենում ենք: Բայց ես լեւոնական եմ ու դրանից չեմ վախենում եւ ազատօրէն մասնակցում եմ Ազատութեան Հրապարակի միջոցառումներին», - *Ա1+*-ին ասաց 1-ին կուրսեցի տղան:

Հետաքրքրուեցինք նրանից, թէ ո՞վ է յատկապէս նման զգուշացում արել՝ դասախօսների՞ց, թէ բուհի ղեկավար կազմից: «Դէմքով գիտեմ, ազգանունով՝ ոչ, քանի որ ես 1-ին կուրս եմ ու բոլորին լաւ չեն ճանաչում՝ կամ փոխդեկանն էր, կամ դասախօսներից էր: Բայց երեւի փոխդեկանն էր, եթէ չեմ սխալւում: Դասախօսներից ոչ մէկը դասադուլի կամ տեղի ունեցող իրադարձութիւնների մասին չի խօսում», - նշեց նա:

Իր գաղափարների մասին համալսարանում նա խօսում է միայն իր ընկերների ու դասախօսների շրջանում: «Իսկ ուսանողական պաշտօնների հետ կապուած շրջանակներում՝ ուս. խորհուրդներում, խուսափում ենք, քանի որ նրանք բոլորը ՀՀԿ-ականներ են», - վստահեցրեց երիտասարդը:

Ֆիզիկական կուլտուրայի պետական ինստիտուտի ուսանողներից ոչ մէկը, նոյնիսկ առանց ներկայանալու պայմանով՝ չցանկացաւ խօսել՝ խուսափելով բոլոր տեսակի հարցերից:

## ՍՄԲԱՏ ԱՅՎԱԶԵԱՆԸ ՀԵՐՔԵԼ Է

*Ա1+*, 16:36

Այսօր առաւօտեան ժ. 09.30-ին ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի գրասենեակը ստացուել է հաղորդում, որ Սմբատ Այվազեանը ոստիկանութեան աշխատակիցների կողմից ենթարկուել է ճնշումների եւ խոշտանգումների: Ըստ ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի բաժնի հաղորդագրութեան՝ Արմէն Յարութիւնեանի յանձնարարականով ստեղծուած աշխատան-

քային խումբն անմիջապէս այցելել է ՀՀ Ոստիկանութեան Կենտրոնի բաժանմունք, քննչական բաժնում հանդիպել եւ առանձնազրոյց է ունեցել վերջինիս հետ:

«Հանդիպման ընթացքում Սմբատ Այվազեանը հերքել է իր հանդէպ բռնութիւն գործադրելու կամ խոշտանգելու մասին տեղեկութիւնները: Սմբատ Այվազեանը նաեւ նշել է, որ ինչպէս իր առողջական վիճակի, այնպէս էլ համապատասխան քննչական գործողութիւնների հետ կապուած խնդիրներ չունի: Այս պահի դրութեամբ Սմբատ Այվազեանը ապահովուած է իր կողմից մատնանշուած փաստաբանով», - ասւում է հաղորդագրութեան մէջ:

## ՄԵՂԱԴՐԱՆՔ ԴԵՌ ՉԻ ԱՌԱՋԱԴՐՈՒԵԼ

*A1+*, 16:38

Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանի փաստաբան Յարութիւն Բաղդասարեանը *Ա1+*-ին տեղեկացրեց, որ հանդիպել է իր պաշտպանեալի հետ եւ նրա առողջական վիճակը լաւ է, ոչ մի բռնութիւն նրա նկատմամբ չի եղել:

Արամ Կարապետեանը գտնւում է Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնում, եւ նրա նկատմամբ դեռեւս որեւէ մեղադրանք չի առաջադրուել:

«Դեռեւս սպասում են գործողութիւնների, իրադարձութիւնների ծաւալմանը: Առայժմ միայն այսքանը կարող եմ ասել», - աւելացրեց Բաղդասարեանը:

Յիշեցնենք, որ երէկ Երեւանի փողոցում ականատեսների վկայութեամբ ԱԱԾ պետհամարանիշներ կրող մեքենաներով մի խումբ դիմակաւոր անձինք բերման են ենթարկել Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանին եւ նրան ուղեկցող անձանց:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԱՊԱՒԻՆՈՒՄ Է ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԻՆ (video)

*A1+*, 16:48

Ազատութեան Հրապարակում ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը այսօրուայ իր առաջին ելոյթը ուղղեց առաջին հերթին երիտասարդներին՝ «բոլորովին չթերագնահատելով միջին տարիքի, 60 եւ աւելի տարիքի մարդկանց, որովհետեւ նրանց գնահատելու կարքի չկայ»:

«Այս մարդիկ 88թ.-ից սկսած ըստ էութեան շարունակում են այն պայքարը, որը մենք սկսել էինք 88-ին: Բայց այսօր էլ նպատակը նոյնն է: Մենք պայքարում էինք Հայաստանի Հանրապետութեան, ժողովրդավարութեան, ազատ շուկայական տնտեսութեան եւ Արցախի ազատագրման համար», - ասաց նա:

Լեւոն Տէր-Պետրոսեանը ցաւով նշեց, որ բոլոր այս նպատակները այսօր եւս նոյնքան այժմէական են եւ բախտորոշ, որքան 1988թ.-ին. «Մեր անկախութիւնը այսօր էլ վտանգուած է: Արցախի ազատութիւնը այսօր էլ վտանգուած է եւ կարող է այդ վտանգը շատ աւելի խորանալ, եթէ Սերժ Սարգսեանին յաջողուի ինչ-որ բիրտ ուժերով պահպանել թաթարմոնղոլական իշխանութիւնը»:

Այս յայտարարութիւնից առաջին նախագահը ներկաներին հանգստացնել է, վստահեցնելով, որ Սերժ Սարգսեանին դա չի յաջողուի. «Իհարկէ, չի յաջողուի: Բայց մէկ պայմանով, դա դուք չէք թոյլ տալու: Այս հրապարակը թոյլ չի տալու: Այս հրապարակի մոբիլիզացիան թոյլ չի տալու: Ամէն ինչ կախուած է ձեզանից»:

Այնուհետեւ Լեւոն Տէր-Պետրոսեանը նշեց, որ եթէ աւագ սերնդի ներկայացուցիչները արդէն պայքարի մեծ փորձ ունեն, ապա երիտասարդները դեռ նոր են ձեռք բերում այդ փորձը. «Այս հասարակութիւնը 88-ի հասարակութիւնը չէ: 88-ին, այն գաղափարները, որ այսօր համատարած են, շատ քչերի սեփականութիւնն էր: Մենք 70 տարի, կամ միգուցէ 1000 տարի պետականութիւն չէինք ունեցել, 88-ի սկզբներին պետական մտածողութիւն ունեցող մարդկանց Հայաստանում կարելի է մատների վրայ հաշուել: Ժողովրդավարութեան, ազատութեան, շուկայական տնտեսութեան մասին պատկերացում ունեցող 10-15 մարդ կար»:

Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի շարժման տարիները տուեցին իրենց արդիւնքը, սակայն 1998թ.-ից յետոյ իրավիճակը կրկին փոխուել է. «Այս 3-4 ամիսների ընթացքում մեզ Ձեզ հետ միասին յաջողուեց ստեղծել մի նոր հասարակութիւն, որտեղ 88-ի տասնեակ մտածողների կողքին այսօր նրանց թիւը հասել է տասնեակ հազարների: Կարելի է հասնել հարիւրաւոր հազարների: Սա մի այնպիսի հասարկութիւն է, որ այլեւս երբեք չի հանդուրժի այնպիսի բռնատիրութիւն, որը գոյութիւն է ունեցել վերջին 10 տարիների ընթացքում: Սերժ Սարգսեանը ինչ էլ անի, եթէ իրեն պատառոտի անգամ, չի կարող իշխել, այս նոր գիտակից հասարակութեանը եւ աշխարհում ոչ մի չարախինդ կամ անտարբեր օտարական այլեւս երբեք չի կարող ասել, որ հայ ժողովուրդը արժանի է այնպիսի իշխանութեան, ինչպիսին Սերժ Սարգսեանի եւ Ռոբերտ Քոչարեանի իշխանութիւնն է»:

Օպերայի Հրապարակը այս ելոյթից յետոյ մօտ 1 րոպէ վանկարկում էր «Լե-ւոն, Լե-ւոն»:

«Այս նոր հասարակութեան յենարանը, հիմքը շարժիչ ուժը այն երիտասարդութիւնն է, այն ուսանողութիւնը, որը անկախ Հայաստանի առաջին սերուցքն է, - շարունակեց առաջին նախագահը, - ես իմ խօսքը կրկին ուզում եմ ուղղել ուսանողութեանը, երիտասարդութեանը. ամէն ինչ կախուած է Ձեզանից: Դիմացէք 1-2 շաբաթ, մի այցելէք ձեր ԲՈՒՀ-երը: Ձեր ԲՈՒՀ-ը Ազատութեան Հրապարակն է: 1-2 շաբաթ յետոյ կ'ապրէք նոր երկրում, ազատ երկրում, հպարտ երկրում, արժանապատիւ երկրում», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ դասադուլի կոչ արեց հրապարակում ներկայ բազմահազար ուսանողներին, որոնք սկսեցին վանկարել. «Դա-սա-դուլ, դա-սա-դուլ»:

Յիշեցնենք, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը պատրաստւում է դիմել ՍԴ՝ ընտրութիւնների արդիւնքները անվաւեր ճանաչելու պահանջով:

## ԽՈՒԶԱՐԿՈՒՄ ԵՆ ՍԱՄՈՒԷԼ ԳԷՈՐԳԵԱՆԻ ՏՈՒՆԸ

*Lragir.am*, 16:55

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը յայտարարել է, որ այս պահին դատախազութեան աշխատակիցները խուզարկում են Ղարաբաղ Կոմիտէի անդամ Սամուէլ Գէորգեանի տունը: Սամուէլ Գէորգեանը երէկ հացադուլ է յայտարարել, եւ այժմ գտնւում է Ազատութեան Հրապարակում:

## ՍԿՍՈՒԵՑ ԵՐԹ

*A1+*, 16:57

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում ելոյթ ունեցաւ Հանրապետութիւն Կուսակցութեան քաղխորհրդի անդամ Սուրէն Աբրահամեանը, որն իր ելոյթում հիմնականում անդրադարձաւ սպաների, իրաւապահ մարմինների, ոստիկանների գործունէութեանը, որոնց աչքի առաջ են ընտրութիւնների ժամանակ տեղի ունեցել բոլոր անօրինութիւնները: Նա նշեց նաեւ, որ այսօր շատ է հանդիպում իր սպաներին, որոնք այսօր արդէն գեներալ-մայոր են դարձել: «Ինձ տեսնելիս նրանք գլուխները թեքում են, քանի որ վախենում եմ, որ յանկարծ Սերժը չիմանայ, որ բարեւ են տուել», - մասնաւորապէս ասաց Աբրահամեանը:

Մինչ այդ ելոյթ էին ունեցել ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանը եւ Հանրապետութիւն Կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը: Վերջինս հաւաքուածներին ասաց, պէտք չէ մտածել այս օրերին կալանաւորուածների մասին, «քանի որ նրանք նոյնքան ապահով տեղում են ու լաւ վիճակում, որքան այստեղ՝ Ազատութեան Հրապարակում հաւաքուածները»:

Հանրահաւաքի կազմակերպիչները յայտարարեցին, որ այսօր զօրավար Անդրանիկ Օզանեանի ծննդեան օրն է: Այդ առթիւ բեմահարթակին հնչեց յաղթական երաժշտութիւն: Հարթակին գտնուողները նշեցին, որ սա խորհրդանշանական է այն առումով, որ Անդրանիկը, Վազգէն Սարգսեանի պէս մեր ազատութեան խորհրդանիշն է եւ Ազատութեան Հրապարակում իրենք երգելով, պարելով են նշում ազատութեան տօնը:

Հանրահաւաքի առաջին մասից յետոյ սկսուեց երթ:

## ՀՅԴ ԲԱՆԱԿՑՈՒՄ Է ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՀԵՏ

*Lragir.am*, 17:03

Հայաստանի նախագահական ընտրութիւնից յետոյ գրեթէ բոլոր թեկնածուների շտաբները հանդէս են եկել այս կամ այն յայտարարութեամբ, բացի ՀՅԴ-ից: ՀՅԴ պատասխանատուները վերջին օրերին մի քանի անգամ հաւաստիացրին, թէ ուր որ է յայտարարութիւն կը լինի: Այդ յայտարարութիւնը, ըստ ՀՅԴ պատգամաւոր Հրայր Կարապետեանի, պէտք է լինի այսօր: Շատերն են հակուած կարծելու, որ նախագահի ընտրութիւնից յետոյ ծանր վիճակում յայտնուած կուսակցութեան ֆունկցիոներներն ամենայն հաւանականութեամբ առեւտրի կը գնան իշխանութեան հետ, ինչը վերջին տարիներին աւանդոյթ է դարձել: Տեղեկութիւններ կան, որ ներկայում հէնց այդ առեւտուրն է ընթանում, եւ նախնական տեղեկութիւններով, ՀՅԴ Ռոբերտ Քոչարեանի հետ արդէն համաձայնութեան է եկել նախարարական պաշտօնները պահպանելու շուրջ:

## ՀԵՐԹԱԿԱՆ ԽՈՒԶԱՐԿՈՒԹԻՒՆԸ

*A1+*, 17:08

Այս պահին դատախազութեան աշխատակիցները խուզարկում են Ղարաբաղ Կոմիտէի անդամ Սամուէլ Գէորգեանի տունը:

Յիշեցնենք, որ Սամուէլ Գէորգեանը երէկուանից հացադուլ է յայտարարել եւ գտնւում է Ազատութեան Հրապարակում:

Այս մասին Ազատութեան Հրապարակում յայտնեց Պահպանողական Կուսակցու-

թեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԱՆՐԱՀԱՒԱՔԸ ՏԱՊԱԼՈՒԵԼ Է

*Lragir.am*, 17:09

Ազատութեան Հրապարակում ելոյթ ունենալով, Հայաստանի պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը յայտնել է, որ Աշտարակում ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի հանրահաւաք են փորձել անել: Երբ հարթակից սկսել են խօսել, հաւաքուած ժողովուրդը սկսել է վանկարկել Լեւոն, Լեւոն: Հանրահաւաքի կազմակերպիչները փորձել են վիճակը հարթել ոստիկանների միջոցով, սակայն դա էլ չի օգուտ տուել: Երեւի ոստիկաններն էլ են իրենց մտքում Լեւոն, Լեւոն վանկարկել, ասել է Միքայէլ Հայրապետեանը:

## ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՊԵՏՐՈՍ ՄԱԿԷՅԵԱՆԻ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԵԱՆ ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ

*Lragir.am*, 17:30

ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութիւնը տարածել է հետեւեալ յայտարարութիւնը.

«ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում 21.02.08թ. յարուցուած քրէական գործի շրջանակներում 2008 թուականի փետրուարի 25-ին ձերբակալուել է Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մակէյեանը: Նա կասկածւում է թիւ 34/06 տեղամասային ընտրական յանձնաժողովի աշխատանքներին խոչընդոտելու մէջ:

Քրէական գործի նախաքննութեամբ պարզուել է, որ 19.02.08թ.՝ ժամը 14:30-ի սահմաններում, Գիւմրիի թիւ 34/06 ընտրատեղամաս են մտել Գիւմրի քաղաքի բնակիչներ, ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Գիւմրիի նախընտրական շտաբի պետ Մուրադ Գրիգորեանը եւ Գիւմրիի զինուորական ոստիկանութեան նախկին պետ Աշոտ Զաքարեանը: Վերջիններս տեղամասում աղմկել են ընտրողների անձնագրերում դրօշմակնքման հարցի շուրջ, ընտրողների ներկայութեամբ վիճաբանել տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահի եւ անդամների հետ, շուրջ 10 րոպէ խոչընդոտել յանձնաժողովի աշխատանքների իրականացմանը եւ սպառնացել: Դէպքից 1-2 րոպէ անց նոյն ընտրատեղամաս է մուտք գործել Շոթա Սաղաթէլեանը եւ, ներկայանալով որպէս ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ, նոյն հարցի շուրջ վիճաբանել յանձնաժողովի անդամների հետ եւ խոչընդոտել նրանց աշխատանքների կատարմանը:

Վերջինիս հեռանալուց յետոյ քիչ անց 34/06 տեղամաս է մուտք գործել Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մակէյեանը եւ կրկին նոյն հարցի շուրջ վիճաբանել յանձնաժողովի նախագահի հետ եւ շուրջ 10 րոպէ խոչընդոտել յանձնաժողովի աշխատանքների կատարմանը: Դէպքի առթիւ յատուկ քննչական ծառայութիւնում 21.02.08թ. յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ եւ 5-րդ կէտերի յատկանիշներով: Որպէս կասկածեալ ներգրաւուելու մասին արձանագրութիւնը ստորագրելիս Պետրոս Մակէյեանը ցանկութիւն է յայտնել օգտուել պաշտպանի ծառայութիւններից եւ նրա ցանկութեամբ նրա շահերի պաշտպանութիւնն իրականացնում է փաստաբան Տիգրան Տէր-Եսայեանը: Ձեռնարկւում են

անհրաժեշտ միջոցներ յանցագործութեան միւս մասնակիցներին յայտնաբերելու, դէպքի բոլոր հանգամանքները պարզելու ուղղութեամբ»:

## «ԿԱՐՈՂ ԵՆ ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ՆԱԵՒ ԻՆՁ», - ԱՍՈՒՄ Է ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ

*Հետք*, 17:23

«Ամէն ինչ շատ աւելի բարեյաջող է ընթանում, քան ես ծրագրել էի», - այսօր հանրահաւաքի ժամանակ յայտարարեց առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նրա խօսքերով՝ Ազատութեան Հրապարակում ժողովրդի գերմոբիլիզացիան զահավիժման տեմպ է հաղորդում պետական մեքենային:

«Մինչ այս պահին իշխանութունների սցենարը հակառակ իրենց է գործել: *Հայլուր*ով որքան հայհոյում են, այնքան հանրահաւաքի մասնակիցների թիւն աւելանում է: Սուտ ինֆորմացիա են տարածում, որ գիշերը յարձակուելու են Ազատութեան Հրապարակի վրայ, բայց վրանաբնակների քանակն աճում է: Երէկ 5-7 հազար մարդ է գիշերել այս հրապարակում», - ասաց Լ. Տէր-Պետրոսեանը՝ շեշտելով, թէ իշխանութիւնները չեն համարձակուի ժողովրդի դէմ զանգուածային բռնութիւն կիրառել, քանի որ, նախ՝ այդ ուժը չունեն, յետոյ՝ «նրանք խելագարներ չեն, եւ դա կը լինի իրենց վերջը»:

Առաջին նախագահի գնահատականով՝ հակառակ ազդեցութիւնն են թողնում նաեւ իշխանութիւնների սանձազերծած զանգուածային ձերբակալութիւնները:

«Այսօր նոյնիսկ իմ թիկնազօրի պետին են տարել վարչութիւն եւ պահանջել, որ զինաթափի թիկնազօրը: Իհարկէ, նա այդ պահանջին չի ենթարկուել, որովհետեւ ենթարկւում է օրէնքին: Թող փոխեն օրէնքը, յետոյ նոր նման պահանջ ներկայացնեն, - ասաց Լ. Տէր-Պետրոսեանը: - Կարող են ձերբակալել նաեւ ինձ. այդպիսի բան էլ է մտքներով անցնում: Ի՞նչ է եղել, թող ձերբակալեն»:

Առաջին նախագահը յիշեց, որ երբ 1988 թ. Գորբաչովը ձերբակալել է Ղարաբաղ կոմիտէի անդամներին, 10 ամիս յետոյ ինքը դարձել է նախագահ. «Իսկ եթէ Սերժիկն ինձ ձերբակալի, յաջորդ օրն եմ դառնալու նախագահ»:

Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօր եւս ընդգծեց, որ Ազատութեան Հրապարակից գնալու է միայն նախագահի նստավայր:

## ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱԽՄԲՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՂ ԽՈՐՀՐԴԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 17:37

Հայ ժողովուրդը ակտիւօրէն մասնակցելով երկրի համար ճակատագրական նշանակութիւն ունեցող նախագահական ընտրութիւններին, ի վերջոյ կարողացաւ արտայայտել իր հաւաքական կամքը եւ մերժեց ապօրինի իշխանութեան վերարտադրումը: Սակայն հոգեվարքի մէջ գտնուող յանցագործ ռեժիմը, կեղծելով ընտրութիւնները, այժմ էլ փորձում է ստոր ու նենգ հնարաւոր բոլոր միջոցներով կանխել չարիքի բուրգի վերջնական քանդուելը: Նրանք ցոյց են տալիս, թէ իբր տիրապետում են իրավիճակին: Բռնութիւնների, սպառնալիքի, շանտաժի միջոցով փորձում են ստորագրութիւններ կորզելով ետ պահել իրենց շարքերը լքող եւ համաժողովրդական շարժմանը միացող որոշ պաշտօնեաների ու պատգամաւորների: Եւ եթէ դա առայժմ իրենց մօտ ինչ-որ չափով

ստացւում է, ապա դա չպէտք է մեզ մտահոգի: Իհարկէ, իշխանական բուրգում գտնուող այն հայ մարդիկ, ովքեր քաջութիւն կ՚ունենան լքել հակահայ, անբարոյ վարչախումբը, մենք նրանց կ՚ողջունենք, բայց մեր ժողովուրդը մէկընդմիշտ պէտք է հասկանայ, որ անխուսափելի յաղթանակը բոլորովին կախուած չէ ոչ հակառակորդի ճամբարը լքողներից եւ ոչ էլ նոյն ճամբարը ետ վերադարձողներից:

Սիրելի ժողովուրդ, այսօր բոլորս ուզում ենք օր առաջ չարիքի բուրգը տեսնել խորտակուած: Բայց այդ բուրգի վերջնական խորտակումը եթէ նոյնիսկ ոչ օրեր, այլ շաբաթներ տեւի, դա չպէտք է մեզ մազաչափ անգամ մտահոգի կամ յուսահատեցնի, որովհետեւ մեր յաղթանակը անկասելի է: Մեր յոյսը ոչ օտար երկրների, ոչ այնտեղից եկած դիտորդների եւ ոչ էլ նրանց դիւանագիտական ներկայացուցիչների վրայ է: Մեր յոյսը Աստծոյ վրայ է, մեր յոյսը անզիջում պայքարի ելած խիզախ ու ազատատենչ հայ ժողովրդի վրայ է, մեր յոյսը համաժողովրդական առաջնորդ Լեւոն Տէր-Պետրոսեանի վրայ է, որին պէտք է անվերապահ հաւատալ, վստահել եւ կատարել նրա բոլոր առաջադրանքները: Յաղթանակը շատ մօտ է: Պայքար, պայքար, մինչեւ վերջ:

Հայ Կամաւորականների Համախմբման համակարգող խորհուրդ
Ժիրայր Սէֆիլեան
Վարդան Ա. Մալխասեան
Արմէն Եղեան
Սամուէլ Յարութիւնեան
Սարգիս Բաղումեան
Վարդան Քանքարեան
Ռոբերտ Հայրումեան
Վարդան Ե. Մալխասեան
Պետրոս Ջուռնաչեան

## ՀՀԿ-Ն ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՇՐՋԱՓԱԿՄԱՆ ՄԷ՞Ջ Է

*A1+*, 18:16

«Ես կարծում եմ, որ օրէնքից դուրս որեւէ ուժ, այդ թւում նաեւ իշխանութիւնը իրեն թոյլ չի տայ այլ մօտեցումներ ցուցաբերել», - քաղաքական գործիչների ձերբակալութիւնների վերաբերեալ *Ա1+*-ի հարցին պատասխանեց ՀՀԿ խմբակցութեան ղեկավար Կարէն Կարապետեանը: «Ես ինֆորմացիայի պակաս ունեմ, եւ տեղեակ չեմ, թէ ում են բերման ենթարկել եւ ինչու: Նման հարցերին կարող են պատասխանել իրաւապահ մարմինները», - ասաց Կարէն Կարապետեանը: Բայց մի բան պարոն Կարապետեանը վստահօրէն ասաց. «Ես չեմ կարծում, որ իրաւական հարթութեան մէջ գործելու պայմաններում է դա եղել, իսկ մնացած հիմքերը իրենք կ՚ունենան, կը ներկայացնեն, յետոյ մենք մեր մօտեցումները կը ներկայացնենք»: Մեր հարցին, թէ հնարաւո՞ր է, որ հասարակութեան զգալի հատուածի նման ինքը եւս կողմնորոշուի դէպի համաժողովրդական շարժումը, Կարէն Կարապետեանը պատասխանեց. «Ընտրութիւնները կայացել են, ժողովրդական լայն զանգուածները հաւաքուեցին յաղթող թեկնածուի շուրջ, եւ երեք անգամ աւելի շատ ձայն հաւաքեց, քան յաջորդ տեղում գտնուող թեկնածուն»:

Փոխարէնը Ժառանգութիւն խմբակցութիւնը մտահոգուած է քաղաքական գործիչների ձերբակալութիւններով եւ իրավիճակը քննարկելուց յետոյ կ՚որոշի անելիքը:

«Նաեւ ընտրութիւնների օրուայ հետ կապուած եւս մէկ գրութիւն կ’ուղարկենք Տիգրան Թորոսեանին, նախորդ ուրբաթ աշխատանքային խորհրդակցութեան ընթացքում իմ կողմից բարձրացուել է երկրում ստեղծուած իրավիճակը եւ ԱԺ-ի դերակատարման անհրաժեշտութիւնը. աջակցող ելոյթներ են եղել միւս խմբակցութիւնների անդամների կողմից: Տիգրան Թորոսեանը խոստացաւ, որ մեր գրաւոր հարցմանն ի պատասխան ինքը պարզաբանումներ կը պահանջի գործադիր իշխանութիւնից, պատգամաւորների եւ քաղաքացիների նկատմամբ ապօրինի գործողութիւնների ձեռնարկման եւ կատարման կապակցութեամբ: Որքանով Տիգրան Թորոսեանը կը լինի տէր ուրբաթ օրը տուած իր խոստմանը, կ’երեւայ աւելի ուշ», - ասաց Ժառանգութեան պատգամաւոր Ստեփան Սաֆարեանը:

## «ՄԻԱՑԷՔ»-ԻՆ ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԷԻՆ ԲՈԼՈՐԸ (video)

*A1+*, 18:19

Քիչ առաջ աւարտուեց միասնական ընդդիմութեան հերթական երթը Երեւանի կենտրոնի փողոցներով: Երթին մասնակցում էին մինչեւ 50 տարեկան հանրահաւաքի մասնակիցները եւ այն ու ղեկավարում էին Նիկոլ Փաշինեանն ու Հրանտ Բագրատեանը: Ըստ յայտարարութեան, երթի մասնակիցները կազմում էին հանրահաւաքին ներկաների 20 տոկոսը: «Միացէք», «հիմա», «Լեւոն» կոչերով նրանք անցան Մաշտոցի Պողոտայով, Ամիրեան փողոցով, ապա Հանրապետութեան Հրապարակով յետ եկան դէպի Ազատութեան Հրապարակ:

Երթը բուռն ողջունում էին կանգառներում կանգնած մարդիկ, միւսներն էլ խանութներից դուրս էին գալիս եւ ձեռքով անում: Հետաքրքրական է, որ երթի մասնակիցներին ողջունում էին եւ պատուհաններից ձեռքով անում նաեւ կառավարութեան շէնքի աշխատակիցները:

Հանրապետութեան Հրապարակում կառավարութեան դիմաց ոստիկանները շրջափակել էին շէնքը, իսկ Աբովեան փողոցի խաչմերուկին փակել էին ճանապարհը եւ պարբերաբար զգուշացնում էին, որ երթը արտօնագրուած չէ եւ մասնակիցները լաւ կ’անէին դադարեցնէին այն: Բայց երթի մասնակիցների թիւը քանի գնում աւելանում էր, իսկ երթը վարողները յորդորում էին զգոյշ լինել եւ սադրանքների չգնալ:

Ազատութեան Հրապարակ վերադառնալիս ժողովուրդը նրանց ջերմ եւ ծափողջոյններով դիմաւորեց:

## ՄԻԱՆՈՒՄ ԵՆ ՆՈՐ ՊԱՇՏՕՆԵԱՆՆԵՐ

*A1+*, 18:27

Այսօր Լեւոն Տէր-Պետրոսեանի շարժմանն են միացել նաեւ առեւտրի եւ տնտեսական զարգացման նախարարութեան բարձրաստիճան պաշտօնեաներ: Շարժմանը միացել են առեւտրի եւ տնտեսական զարգացման նախարարութեան Առեւտրի Միջազգային Կազմակերպութեան եւ Եւրամիութեան Համակարգման Վարչութեան պետ Վահագն Ղազարեանը, միջպետական եւ միջազգային յարաբերութիւնների համակարգման վարչութեան պետ Զօհրապ Յովհաննիսեանը եւ ակնագործութեան եւ ոսկեգործութեան գործակալութեան մասնագէտ Արման Սարուխանեանը:

Ազատութեան Հրապարակում ընթերցուել է յայտարարութիւն, ըստ որի իրենք

ակնկալում էին, թէ նախագահի ընտրութիւնը կ'ընթանայ միջազգային եւ եւրոպական չափանիշներին համապատասխան եւ կ'ապահովուի նախագահի օրինական ընտրութիւն, բայց տեղի ունեցան զանգուածային խախտումներ, եւ ընտրութիւնը չի կարող համարուել ազատ եւ արդար: Այդ պատճառով նրանք որոշում են կայացրել միանալ համաժողովրդական շարժմանը:

## ԵՐԹԻՑ ՅԵՏՈՅ ՄԱՐԴԿԱՆՑ ԹԻՒՆ ԱՒԵԼԱՑԱՒ

*A1+*, 18:46

Երեւանի կենտրոնական փողոցներով անցնող երթին մասնակցող հազարաւոր մարդիկ մտան հրապարակ: Նրանց ծափողջոյններով դիմաւորեցին հրապարակում «հերթապահող» մեծահասակները: Երթից յետոյ հասկանալի դարձաւ, որ հանրահաւաքի մասնակիցների թիւն աւելացել է: Նիկոլ Փաշինեանն իր հազիւ լսելի ձայնով յայտարարեց, որ թէեւ իր ձայնը խզուել է, բայց հաստատակամութիւնն աւելացել է: Նոյնը հաստատեցին նաեւ հրապարակում հազարաւոր մարդիկ: Այժմ Ազատութեան Հրապարակում բարձր երաժշտութիւն է հնչում, մարդիկ պարում են: Այսօր իրենց ակտիւութեամբ աչքի են ընկնում յատկապէս երիտասարդ աղջիկները:

## ՀՅԴ ԳԵՐԱԳՈՅՆ ՄԱՐՄՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am,* 19:03

Հայ Յեղափոխական Դաշնակցութեան Հայաստանի Գերագոյն Մարմինը հանդէս է եկել յայտարարութեամբ, որում ներկայացուած է կուսակցութեան դիրքորոշումը ՀՀ նախագահի ընտրութիւնների արդիւնքների եւ ստեղծուած ներքաղաքական իրավիճակի վերաբերեալ: Յայտարարութեան տեքստը բերւում է ստորեւ:

Հայրենակիցնե՛ր

2008թ. նախագահական ընտրութիւնները հերթական փորձութիւնն էին մեր երկրի յետագայ ժողովրդավարացման ճանապարհին: Մենք կարող ու պարտաւոր էինք այդ փորձութիւնից դուրս գալ էլ աւելի միասնական եւ ամրացած, ինչը հնարաւորութիւն կը տար լիարժէքօրէն դիմագրաւել ե՛ւ ներքաղաքական, ե՛ւ սոցիալ-տնտեսական, ե՛ւ արտաքին մարտահրաւէրները:

Այդպէս չեղաւ մի շարք պատճառներով. ընտրարշաւի ամբողջ ընթացքում գերակայեցին փոխադարձ թշնամանքն ու ատելութիւնը, անհանդուրժողականութիւնն ու սպառնալիքները:

Հասարակութիւնը արհեստականօրէն երկփեղկուեց ու բեւեռացուեց: Մի կողմից ցանկացած եղանակով իշխանափոխութիւն իրականացնելու՝ նախկինների մոլեռանդութիւնն էր, միւս կողմից՝ ամէն գնով սեփական դիրքերը պահպանելու՝ ներկաների ձգտումը:

ՀՅ Դաշնակցութեան թեկնածուն հնարաւոր ամէն բան արեց մրցակցութիւնը ծրագրային, գաղափարական հունի մէջ պահելու, երկրի զարգացումը առողջ մթնոլորտում շարունակելու համար, սակայն այս մօտեցումը, ցաւօք, լայն արձագանք չգտաւ: Մեր թեկնածու Վահան Յովհաննէսեանը ընտրարշաւի ողջ ընթացքում ցուցաբերեց սկզբունքային վարքագիծ ու դիրքորոշումներ եւ հարազատօրէն ներկայացրեց ՀՅ Դաշնակցութիւնը:

Բուն ընտրութիւնները եւս ուղեկցուեցին տարաբնոյթ խախտումներով: Համատարած, բացայայտ ու քօղարկուած ընտրակաշառքով զբաղուեցին առաջատար թեկնածուների կողմնակիցները, որոշ տեղամասերում կոպիտ բռնութեան, լցոնումների դէպքեր արձանագրուեցին, խախտումներով ընթացաւ նաեւ քուէների հաշուարկման փուլը: Արդիւնքում՝ ընտրութիւնների վերաբերեալ մեր քաղաքացիների գնահատականը միանշանակ չէ, եւ այսօր էլ առկայ է հասարակական լարուածութիւն, երկիրը կանգնած է ետընտրական բեւեռացումը կանխելու եւ համերաշխութեան մթնոլորտը վերականգնելու հրամայականի առաջ: Ներկայ իրավիճակում մենք պատրաստ ենք կամրջողի դեր ստանձնել: Կատարելով այս հաստատումները, ամփոփելով բոլոր մարզերից ու տեղամասերից ստացուած զեկոյցները, նկատի ունենալով Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի հրապարակած տուեալները եւ միջազգային հանրութեան՝ հիմնականում դրական արձագանքը՝ ՀՅԴ Հայաստանի Գերագոյն Մարմինը չի վիճարկում ընտրութիւնների վերջնական արդիւնքները եւ յաջողութիւն է մաղթում նորընտիր նախագահ Սերժ Սարգսեանին: Միաժամանակ, հաւատարիմ մնալով 2007թ. ստորագրած համագործակցութեան համաձայնագրին, մենք հանդէս ենք գալիս կուսակցութեան ստանձնած պետական պաշտօններից հրաժարուելու պատրաստակամութեամբ եւ դիմում ենք քաղաքական Կոալիցիային համագործակցութիւնը դադարեցնելու առաջարկով:

Սիրելի՛ հայրենակիցներ, առաջնորդուելով երկրի կայունութեան եւ առաջընթացի հրամայականներով՝ մենք նաեւ առաջարկում եւ պահանջում ենք.

ա. անաչառ ու ամբողջական քննութեան ենթարկել ընտրակեղծիքների բոլոր փաստերը եւ պատժել մեղաւորներին,

բ. դատապարտել իշխանութիւնը բռնի ուժով փոխելու, ինչպէս նաեւ ընտրութիւնների արդիւնքներից դժգոհողների հանդէպ բռնութիւն կիրառելու մտայնութիւնը,

գ. շուտափոյթ քայլեր ձեռնարկել Հայաստանի միջազգային հեղինակութիւնն ամրապնդելու, ներքին լարուածութիւնը մեղմելու ուղղութեամբ,

դ. ձեւաւորել ընտրական բոլոր գործընթացներում ընտրակաշառքը, ոչ քաղաքական, կիսաքրէական տարրերի մասնակցութիւնը, իշխանական ռեսուրսի կիրառումը բացառող ընտրական համակարգ,

ե. երկրում ապահովել իրական բազմակարծութիւն եւ խօսքի ազատութիւն,

զ. քաղաքական համակարգում ընդդիմութեան գործունէութեան համար ապահովել լիարժէք հնարաւորութիւններ,

է. քաղաքական երկխօսութեան եւ ազգային համաձայնութեան արդիւնքում այնպիսի կառավարութիւն ձեւաւորել, որն իր մասնագիտական, մարդկային-բարոյական որակներով ի վիճակի կը լինի երկիրը դուրս բերել ժողովրդավարութեան եւ սոցիալ-տնտեսական արագընթաց զարգացման մայրուղի:

Սիրելի՛ հայրենակիցներ, ՀՅ Դաշնակցութեան Հայաստանի Գերագոյն Մարմինը շնորհակալութիւն է յայտնում Ձեզ նախագահական ընտրութիւններին աննախադէպ ակտիւութեամբ մասնակցելու համար:

Մենք Ձեզ վստահեցնում ենք, որ շարունակելու ենք մնալ մեր սկզբունքային դիրքորոշումներին հաւատարիմ եւ հետեւողականօրէն աշխատելու ու պայքարելու ենք յանուն մեր ժողովրդի, մեր իւրաքանչիւր քաղաքացու իրաւունքների պաշտպանութեան, յանուն

մեր պետականութեան հզօրացման:
25 փետրուարի 2008թ.

## ՀԵՐԹԸ ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻՆՆ Է

*A1+*, 19:13

Քիչ առաջ Նիկոլ Փաշինեանին մօտեցել են մի քանի ոստիկաններ՝ ինչ-որ ծանուցագրով: Սակայն Նիկոլ Փաշինեանը, չկարդալով անգամ այն, չի ստորագրել ծանուցագիրը:

Ոստիկանները հեռացել են Ազատութեան Հրապարակի սուլոցների տակ:

Ի դէպ, ձերբակալուել է նաեւ Գիւմրիի զինուորական ոստիկանութեան նախկին պետ Աշոտ Զաքարեանը:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ԱՄԷՆ ԻՆՉ ԸՆԹԱՆՈՒՄ Է ՇԱՏ ՅԱՋՈՂ

*Lragir.am*, 19:23

Ազատութեան Հրապարակում քիչ առաջ ելոյթ է ունեցել Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա յայտարարել է, որ ամէն ինչ ընթանում է շատ աւելի բարեյաջող, քան ինքն է ծրագրել: Նա յիշատակել է երեք պաշտօնեաների այսօրուայ ակցիան, եւ յայտարարել, որ այդ գործընթացը շարունակուելու է ամէն օր: Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, հողը փախչում է Սերժ Սարգսեանի տակից, վաղն անգամ կրիմինալն է փախչելու:

Ինչ վերաբերում է օլիգարխներին, Տէր-Պետրոսեանի խօսքով, նրանք փորձում են կամուրջ գցել իր հետ, սակայն մենք փորձ ունենք, գիտենք, որ միշտ էլ կարող են յայտնուել պատեհապաշտներ, եւ ովքեր ժողովրդի դէմ յանցագործութիւններ են գործել ընտրութեան ժամանակ, թող յոյս չունենան, որ անպատիժ կը մնան: Լեւոն Տէր-Պետրոսեանը բերել է Ռուբէն Հայրապետեանի օրինակը, ով երկաթէ ձողով ծեծել է իր վստահուած անձին, եւ յիշատակել է գործարար Յարութիւն Փամբուկեանին, Տէր-Պետրոսեանի բնութագրմամբ՝ մանիկիւրշչիցայի կերպարով այդ երիտասարդ գործարարին, որը այնքան է իրեն դրութեան տէր զգում, որ երկուսով մէկի ձեռքերը պահում են, իսկ ինքը հրացանի կոթով խփում է նրա գլխին, ընտրութեան օրը: Այդպիսի որեւէ մէկը չի կարող անպատիժ մնալ եւ պատասխան են տալու օրէնքի առջեւ, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Տէր-Պետրոսեանը յիշեցրել է այսօրուայ յայտարարութիւնը՝ եւս 2-3 օր դիմանալու մասին. մեր շարքերը ընդլայնւում են ժամ առ ժամ, եւ պետական մեքենան ճաքեր է տալիս: Մեր մասին արդէն խօսում է միջազգային հանրութիւնը, Ազատութեան Հրապարակը դարձել է աշխարհի ուշադրութեան կենտրոնը, ասել է Տէր-Պետրոսեանը:

Նա տեղեկացրել է, որ վարում են ակտիւ արտաքին քաղաքականութիւն, այսօր հանդիպել է ԵԽԽՎ դիտորդական առաքելութեան ղեկավար Արենսի հետ, եւ քիչ յետոյ ԵԽ Նախարարների Խորհրդի նախագահ, Սլովակիայի ԱԳ նախարար Կուբիշի հետ, եւ շուտով ՆԱՏՕ-ն, ԵՄ-ն եւ ԵԽ հանդէս կը գան յայտարարութեամբ: Ինֆորմացիոն բլոկադան ճեղքուել է, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Խօսելով իշխանութեան հնարաւոր սցենարների մասին, Տէր-Պետրոսեանը յայտարարել է, թէ նրանք չեն համարձակուի զանգուածային ուժ կիրառել, քանի որ, նախ, չունեն այդ ուժը, եւ երկրորդ՝ դա կը լինի

իրենց վերջը: Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշեցրել է Գանդիի խօսքը՝ բանտերն իրենցով լցնելու մասին, որով յաղթեցին անգլիացիներին: Տէր-Պետրոսեանն ասել է, թէ թող նոյնիսկ ինձ ձերբակալեն, թող գնդակահարեն, ինչ են անելու յետոյ, յայտարարել է նա:

## ԶԱՆԳԷՔ, ԵԹԷ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԵՆ ՏԱՆՈՒՄ

*Lragir.am*, 19:26

**«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան յայտարարութիւնը**

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը ահազանգեր է ստանում ՀՀ տարբեր մարզերից, մասնաւորաբար Լոռու մարզի Ալաւերդի եւ Վանաձոր քաղաքներից, թէ պետական եւ տեղական ինքնակառավարման մարմինների մասնակցութեամբ, եւ պետական եւ մասնաւոր կազմակերպութիւնների եւ հաստատութիւնների աշխատակիցներին իրենց կամքին հակառակ, ստիպողաբար բերւում են մայրաքաղաք՝ մասնակցելու Սերժ Սարգսեանի օգտին հանրահաւաքին:

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը յայտարարում է, որ պատրաստ է պաշտպանել բոլոր քաղաքացիների իրաւունքները: Բոլոր նրանք, ովքեր պատրաստ են գրաւոր բողոք ներկայացնել իրենց կամքի վրայ բռնանալու փաստի վերաբերեալ, կարող են զանգահարել 080-080-804 հեռախօսահամարով:

## ՊԱՀԱՆՋԵԼ ԵՆ ՅԱՆՁՆԵԼ ԶԷՆՔԸ

*Lragir.am*, 19:31

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը փետրուարի 25-ի հանրահաւաքի ընթացքում յայտարարել է, թէ նոյն օրը իր թիկնազօրի պետին հրաւիրել են իրաւապահ մարմինները եւ ասել, որ Տէր-Պետրոսեանի թիկնազօրը պէտք է յանձնի զէնքը: Այդ պահանջը չի կատարուելու, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը ասելով, որ օրէնքն է իր համար նախատեսում զինուած թիկնազօր, հետեւաբար իրենք գործում են օրէնքով: «Թող օրէնքը փոխեն, ենթարկուենք օրէնքին», ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## «ՄԱՐԴԻԿ ԱՊՍՏԱՄԲԵԼՈՒ ԻՐԱՒՈՒՆՔ ՈՒՆԵՆ»

*A1+*, 19:35

«Պետութիւնը պէտք է պաշտպանի մարդու իրաւունքները, այդ թւում ազատ տեղաշարժի, հանրահաւաքների իրաւունքը, ազատ միաւորումների ազատութիւնը, խօսքի ազատութիւնը, կարծիքի արտայայտման իրաւունքը: Եւ եթէ այդ ամէնը պետութիւնը չի ապահովում, ապա պետութիւնը ֆիքսւում է որպէս բռնապետութիւն եւ մարդը իրաւունք ունի ապստամբելու եւ բռնապետութեան եւ ճնշումների դէմ», - *A1+*-ին տուած հարցազրոյցում ասել է Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակի ղեկավար Արթուր Սաքունցը:

Իր ասածը հիմնաւորելու համար Արթուր Սաքունցը մէջբերում է «Մարդու Իրաւունքների միջազգային բիլլ»-ի նախաբանի երրորդ պարբերութիւնը. «Անհրաժեշտ է օրէնքի իշխանութեամբ պաշտպանել մարդու իրաւունքները, որպէսզի նա, որպէս վերջին

միջոց, հարկադրուած չընդվզի բռնակալութեան ու ճնշման դէմ» եւ աւելացնում. «Այսօր ժողովրդի միակ տարբերակը ընդվզումն ու ապստամբելն է: Եւ ինչքան էլ դա անուանեն իշխանութեան զաւթման փորձ, իշխանութիւնն իրենք արդէն զաւթել են, եթէ անուանեն սահմանադրական կարգի դէմ բռնութեան փորձ, արդէն իրենք սահմանադրական կարգը խախտել են»: Ըստ նրա՝ ներկայ ռեժիմը որեւէ գաղափար չունի, բացի «ուժային մեթոդների սնանկութիւնից», եւ անգամ մոռացուել է նախընտրական «Առաջ, Հայաստան» կարգախօսը:

Արթուր Սաքունցը նաեւ տեղեկացնում է, որ այսօր Վանաձորի տարբեր հաստատութիւնների աշխատողներին վաղը ստիպելու են մասնակցել Երեւանում կայանալիք Սերժ Սարգսեանի հանրահաւաքին:

Արթուր Սաքունցը բոլորին կոչ է անում հարկադրաբար չգնալ: «Իսկ եթէ աշխատանքից հեռացնե՞ն», - *Ա1+*-ի դիտարկմանը՝ Արթուր Սաքունցը հակադարձեց. «Մէկին հեռացրեցին, երկուսին հեռացրեցին, հօ՞ բոլորին չեն կարող հեռացնել»:

Արդեօ՞ք ՀՀ քաղաքացիները կարող են վստահ լինել, որ հայ իրաւապաշտպանները կը կարողանան պաշտպանել մարդկանց իրաւունքները՝ այս հարցին Արթուր Սաքունցը պատասխանեց՝ անպայման, եւ օրինակ բերեց փետրուարի 21-ին տեղի ունեցած միջադէպը. «Վանաձորցիներին Երեւան հանրահաւաքի բերող մարդկանց մեքենան կանգնացրել էին պետաւտօտեսուչները ընդ որում առանց որեւէ հիմնաւորման, քաղաքացիները ահազանգել էին մեզ, մենք արդէն դիմել ենք դատախազութիւն»: Ու այսօր, ըստ նրա, Երեւան չհասած քաղաքացիները պատրաստ են ցուցմունք տալ, որ իրենց ազատ տեղաշարժուելու իրաւունքը ոտնահարուել է:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆՆ ԸՆԴՈՒՆԵԼ Է ԿՈՒԲԻՇԻՆ

*Lragir.am,* 19:48

ՀՀ կառավարութեան մամուլի ծառայութիւնը տեղեկացնում է, վարչապետ Սերժ Սարգսեանն այսօր ընդունել է Եւրոպայի խորհրդի նախարարների կոմիտէի նախագահ, Սլովակիայի Հանրապետութեան արտաքին գործերի նախարար Եան Կուբիշին եւ նրա գլխաւորած պատուիրակութեանը:

Հանդիպման ժամանակ կողմերը քննարկել են ինչպէս երկկողմ յարաբերութիւններին, այնպէս էլ եւրաինտեգրման գործընթացի յետագայ խորացման գործում Հայաստանին՝ ԵՄ անդամ Սլովակիայի կողմից հնարաւոր աջակցութեան, համագործակցութեան հետ կապուած հարցեր: Եան Կուբիշը նշել է իր համար հիմք համարուող միջազգային դիտորդական առաքելութիւնների կողմից ընտրութիւններին տուած գնահատականը, որտեղ դրականի հետ միասին նշուել են նաեւ դեռեւս առկայ խնդիրները: Նա ընդգծել է, որ հեղինակաւոր այդ կազմակերպութիւնները, որոնք վերջին 15 տարիներին աշխարհի բազմաթիւ երկրներում դիտորդական առաքելութիւններ են իրականացրել եւ շատ լաւ պատկերացնում են իրավիճակը, ՀՀ խորհրդարանական ընտրութիւններից յետոյ եւս մէկ քայլ առաջ են գնահատում նախագահական ընտրութիւնները, ինչը Հայաստանի համար շատ կարեւոր է: Նա գնահատելի է համարել քաղաքական ուժերին ուղղուած՝ Սերժ Սարգսեանի հանդուրժողականութեան, զսպուածութեան կոչը, ինչը, ըստ Եան Կուբիշի, խօսում է առկայ խնդիրները օրէնքի շրջանակներում եւ քաղաքական ճանապարհով լուծելու ՀՀ վարչապետի պատրաստակամութեան մասին:

## ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԴԻՄՈՒՄ Է ՌԻՍԿԻ

*Lragir.am*, 19:59

Այս օրերին իշխանութիւնը կրկին ձեռնամուխ է եղել Սերժ Սարգսեանի օգտին հանրահաւաքների կազմակերպմանը, որոնք տեղի են ունենում շրջաններում, իսկ վաղուանից էլ Երեւանում: Սակայն թերեւս արժէ, որ իշխանութիւնը զգոյշ լինի այդ հարցում: Բանն այն է, որ իրավիճակն առանց այն էլ լարուած է, քաղաքը լի է ոստիկաններով, որոնք կարծես թէ ցոյց են ման գալիս, որ ցրեն: Ցամենայն դէպս իշխանութիւնն ինքն է տարածում այդ յայտարարութիւնները, ընդ որում պաշտօնական մակարդակով: Մինչդեռ խնդիրն այն է, որ իշխանութիւնը եթէ կազմակերպում է, ապա թերեւս կ'անի աւելի մեծաքանակ, քան ընդդիմութիւնը: Իսկ ցրելու տրամաբանութիւնն այն է, որ ցրուի իշխանութեան համար առաւել վտանգաւոր ցոյցը:

Իսկ որ ցոյցն է առաւել վտանգաւոր: Տրամաբանութիւնը յուշում է, որ վտանգաւոր է առաւել մարդաշատ ցոյցը: Իսկ քանի որ իշխանութեան նպատակն էլ հէնց ընդդիմութիւնից աւելի շատ մարդ հաւաքելն է, ու դրա համար չեն խնայում վարչական միջոցները, ապա կարող է իշխանութիւնը դառնալ սեփական ոստիկանութեան թիրախը, որը կատարելով ցրել հրամանը, կ'առաջնորդուի տրամաբանութեամբ ու կը ցրի ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի կազմակերպած առաւել մարդաշատ ցոյցը:

## ԳԱՂՏՆԻ ՀՐԱՄԱՆ

*A1+*, 20:13

Հաւաստի աղբիւրներից տեղեկացանք, որ այսօր զինուած ուժերի գլխաւոր շտաբի պետ, գեներալ-գնդապետ Սէյրան Մուշեղի Օհանեանը հրաման է ստորագրել՝ պարտադրելով բանակի բոլոր զինուորականներին արգելել մասնակցել զանգուածային միջոցառումներին, շփուել հասարակական-քաղաքական կազմակերպութիւնների կամ դրանց ակտիւիստների հետ:

Իսկ Պաշտպանութեան նախարար Միքայէլ Յարութիւնեանի բանաւոր կարգադրութեամբ նախարարութիւնում արդէն երեք օր է՝ 24-ժամեայ հերթապահութիւն են իրականացնում բոլոր վարչութիւնների ու ծառայութիւնների պետերը: Բազմաթիւ զինուորականների ընտանիքների անդամներ ու հարազատներ այս առումով խիստ մտահոգ են, սակայն հասկանում են, որ նմանատիպ ակցիաները իրականում մարդկանց մէջ վախի ու աիաբեկման մթնոլորտը խորացնելն է:

Զանգուածային միջոցառումներին մասնակցելու արգելքի վերաբերեալ գաղտնի հրամանում գեներալ-գնդապետ Սէյրան Օհանեանը նշել է, թէ՝ անառողջ մարդկանց կողմից զինուորականների մասնակցութիւնը շահարկւում է:

Հետաքրքիր է, որ նա այսօր անառողջ է անուանում համաժողովրդական շարժման լիդերին, ով Սէյրան Օհանեանի առաջին գերագոյն գլխաւոր հրամանատարն է:

Ըստ մեր աղբիւրի՝ զինուած ուժերում այս հրամանն ընդունուել է ցաւով եւ միջին օղակներում ձեւաւորւում են համաժողովրդական շարժմանն աջակցողների խմբեր, որոնք պատրաստւում են միաւորուել եւ Ազատութեան Հրապարակում համատեղ յայտարարել Լեւոն Տէր-Պետրոսեանին միակ գերագոյն գլխաւոր հրամանատար ճանաչելու, միայն նրա հրամաններին ենթարկուելու պատրաստակամութեան մասին: Յայտարարութիւնն այսպէս է սկսւում. «Որպէս բացարձակ ճշմարտութիւն ընդունելով, որ մեր

նորաստեղծ բանակը կոչւում է հայկական ազգային, այլ ոչ մոնղոլ-թաթարական, պարտաւորուած ենք լինել այնտեղ, որտեղ հայ ազգի սերուցքն է եւ պայքարում է ողջ ժողովրդի ազատութեան ու բարօրութեան համար»:

Ի դէպ, այս զինուորականների յիշողութիւններում թարմ են հեռուստակադրերը, երբ Սերժ Սարգսեանի քարոզարշաւները կազմակերպում կամ դրան մասնակցում էին բազմաթիւ բարձրաստիճան զինուորականներ, եւ անձամբ նախարարը բոլոր առիթներին նրա օգտին քարոզչութիւն էր իրականացնում:

## «ՄԱՆՈՒԷԼԻ ՇԱՔԱՐԸ ԲԱՐՁՐԱՑԵԼ Է»

*A1+*, 20:13

Օրերս Ազատութեան Հրապարակում ԱԺ պատգամաւոր, ՀՀԿ անդամ Մանուէլ Ղազարեանը յայտարարեց, որ լիազօրուած է 7 պատգամաւորի անունից յայտարարել է, որ իրենք ժողովրդի հետ են: Յետոյ վերը նշուած խմբից մի քանի պատգամաւոր հրաժարուեց Մանուէլ Ղազարեանի արած յայտարարութիւնից: Նրանց թւում էր նաեւ ԱԺ պատգամաւոր, ԵԿՄ անդամ, ՀՀԿ խմբակցութեան անդամ Հրանտ Գրիգորեանը՝ գեներալ Մանուէլ Գրիգորեանի եղբօրորդին: Նա այսօր պատասխանեց լրագրողների հարցերին:

-Ինչո՞վ էր պայմանաւորուած ձեր անցումը նախ Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմը, յետոյ հակառակ ուղղութեամբ:

-Ոչ մի անցում չի եղել, Մանուէլ Ղազարեանը պէտք է յայտարարէր, կոչ անէր ժողովրդին, որ հանգստացէք, դա ելք չի, ինչ-որ դուք անում էք, խաղաղ ճանապարհով պէտք է լուծուի: Հիմա ես չգիտեմ, Մանուէլ Ղազարեանը ինչ ա յայտարարել, թէ իրենից յետոյ, մնացածն ինչ են յայտարարել:

-Ցուցարարները Ազատութեան Հրապարակում խաղաղ հանրահաւաք են անում: Կարծում էք ճանապարհի խաղաղութիւնը որոշողը այդ ժողովո՞ւրդն է, թէ՞ իշխանութիւնը:

-Չես կարայ ասես, որոշ մասը խաղաղ են նստած, որոշ մասը ոչ խաղաղ:

-Իսկ ձեր դիրքորորոշումը կարելի՞ է համարել Մանուէլ Գրիգորեանի դիրքորոշում:

-Եթէ ուզում էք, ըտենց համարէք:

-Այսինքն, լուրերը, որ Մանուէլ Գրիգորեանը յետ է կանգնել շարժումից, համապատասխանո՞ւմ է իրականութեանը:

-Ո՞ր շարժումից:

-Համաժողովրդական:

-Մանուէլ Գրիգորեանը երբեք էլ, համաժողովրդական էք ասում, ինչ էք ասում, շարժման մէջ չի եղել:

-Պարոն Գրիգորեանը յայտարարել է, որ արիւնահեղութեան դէպքում ինքը լինելու է ժողովրդի կողքին:

-Բոլորն էլ ժողովուրդ է, 3 մլն 300 հազար կը լինենք, 3 մլն կը լինենք, բոլորն էլ ժողովուրդ է, ինչ-որ մի մասը չէ:

-Իսկ այն խօսակցութիւնները, որ ձեզ ստիպել են, որ յետ կանգնէք յայտարարութիւնից չէ՞ն համապատասխանում իրականութեանը:

-Ամսի 19-ին ես եղել եմ թիւ 20 ընտրատարածքի պատասխանատուն Սերժ Սարգսեանի կողմից: Մեն-մենակ ես. ոչ մարզպետ, ոչ էլ էն: Ես եմ եղել Սերժ Սարգսեանի

ներկայացուցիչը: Թիւ 20 ընտրատարածքը բարձր արդիւքն ա տուել Սերժ Սարգսեանի համար: Ինչի՞ մասին ա խօսքը: Եթէ ես լինէի Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցը, Լեւոն Տէր-Պետրոսեանը 20 ընտրատարածքում կը յաղթէր: Եղա՞ւ: Բոլորի ձայները միասին Սերժ Սարգսեանի ձայների սկի կէսը չի եղել:

-Այսինքն, ժողովուրդը ընտրե՞լ է, թէ կեղծիքներ էք արել:

-Ոչ մի կեղծիք չի եղել, դիտորդներ են եղել, վստահուած անձինք են եղել բոլորի կողմից, մի հատ արձանագրութիւն չկայ, մի հատ խախտում չկայ, եթէ լինէր, ո՞նց ա միւս տեղերը, բացում են, չգիտեմ ինչ են անում, ոչ մէկի կողմից բողոք չի եղել:

-Դուք իրաւասո՞ւ էք Մանուէլ Գրիգորեանի անունից յայտարարելու, որ ինքը երբէք չի եղել այդ շարժման կողքին:

-Այո:

-Այդ դէպքում ինքը ինչո՞ւ որեւէ տեղ որեւէ կերպ չի հերքել, ինչո՞ւ անձամբ չի գալիս եւ հերքում արդէն 4-5 օր:

-Ինքը լրատուութեան հետ չի շփւում, գիտէք, ձեր հետ չի շփւում, գիտէք, միշտ էլ ըտենց ա էղել: Ով ինչ ուզում ա, թող յայտարարի, էդ իրանց խնդիրն ա:

-Պարոն Գրիգորեան, գեներալը մեզ հետ չի շփւում, բայց Ռոբերտ Քոչարեանի հետ էլ չի՞ շփւում, որովհետեւ նրա հրաւիրած խորհրդակցութեան ժամանակ ոչ Մանուէլ Գրիգորեանը, ոչ էլ Գագիկ Մելքոնեանը նստած չէին:

-Ես չգիտեմ, ով ա էլել, ով չի էլել, ես գիտեմ, որ մի 20 օր հիւանդ պառկած ա եղել:

-Ինքը արդէն մէկ շաբաթից աւելի գործի է գնում:

-Գործի ա գնում, բայց պառկած ա եղել, կոնկրէտ էդ շրջանում, հէնց հիմա էլ շաքարը 385 ա, հիւանդ պառկած ա:

-ԵԿՄ-ի դիմաց մի քանի օր աւտոմեքենաներ էին եռաշերտ-քառաշերտ կանգնած. առանց իր գիտութեա՞ն էին կանգնած:

-Որպէսզի ոչ մի տեղ չգնային, այլեւայլութիւններ չլինէին, էս տղաները հաւաքւում էին իրանց օջախում:

-Ինֆորմացիա կայ, որ Մանուէլ Գրիգորեանը Միասնիկ Մալխասեանին մի բան է ասում, իշխանութիւններին ուրիշ:

-Շատ սխալ ինֆորմացիա ունէք: Ես կոնկրէտ երկրապահ եմ, Միասնիկը իմ դիրքորոշումը գիտէր, որ ես Սերժ Սարգսեանին եմ պաշտպանում: Ինքն իրաւունք չունէր երկրապահների անունից յայտարարութիւն անելու. Միասնիկը շատ փոքր մարդ ա, որ մեր անունից յայտարարութիւն անի: Էղա՞ւ: Թող ինքն իրա ապարանցիների անունից յայտարարի:

-Բայց Մանուէլ Գրիգորեանը չի՞ խօսել Միասնիկ Մալխասեանի հետ:

-Ես չգիտեմ խօսել է, թէ ոչ:

-Մամուլում հրապարակումներ եղան, որ Սերժ Սարգսեանին եւ Լեւոն Տէր-Պետրոսեանին սատարելու հարցում ձեր եւ Մանուէլ Գրիգորեանի միջեւ հակասութիւններ են եղել:

-Ես չգիտեմ, չեմ կարդացել նման բան: Ես միայն կոչ եմ անում Լեւոն Տէր-Պետրոսեանին եւ Միասնիկ Մալխասեանին մեր անունից յայտարարութիւններ չանել:

-Բայց ինչո՞ւ ինքը չի խօսում, չի ասում:

-Խօսում եմ էլի, ի՞նչ պրոբլէմ կայ, տղայ եմ, եկել եմ, խօսում եմ: Ի՞նչ պրոբլէմ կայ: Չի

երեւո՞ւմ, որ տղայ եմ, 5 հատ երեխայ ունեմ, արի տանեմ տունս, ցոյց տամ:

-Իսկ Սէյրան Սարոյեանը կիսո՞ւմ է ձեր դիրքորոշումը:

-Նոյն դիրքորոշումը ունի Սէյրան Սարոյեանը: Ինքն էլ ա եղել պատասխանատուն Սերժ Սարգսեանի վերաբերեալ:

-Իսկ հնարաւո՞ր է, որ ինչ-որ փուլում ձեր դիրքորոշումը փոխուի եւ միանաք համաժողովրդական շարժմանը:

-Բացառւում է: Ես աւելի շուտ մանդատս ցած կը դնեմ, կը գնամ տուն, քան ես տղամարդ չեմ ըլնի: Ես սկզբունքային մարդ եմ, ես էս թիմով եկել եմ, ես սրանից 8 ամիս առաջ Սերժ Սարգսեանի հետ ընտրութեան եմ գնացել: Ես նաւերից, թիմերից ոչ փոխող եմ, ոչ փախնող եմ: Ես մի բան էլ ասեմ, ով որ իմ թիմակիցներից իմ ազնւութեան վրայ կասկածում ա, թող գնայ ինքը իրա մաման, իրա կինը, իրա երեխէն ստուգի, տենայ՝ ում են ընտրել, ու թող տենան իմ ընտանիքը ում ա ընտրել: Ով կասկածում ա իմ ազնւութեան վրայ, թող գնայ մի հատ իրանց նայեն, իրանց ձայները նայեն ու իմ ձայները նայեն:

## ՅԱՐՈՒՑՈՒԵԼ Է ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾ

*Lragir.am*, 20:34

ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը տեղեկացնում է, թէ 2008 թ. փետրուարի 23-ին *Ազատութիւն* ռադիոկայանը, անդրադառնալով թիւ 13 ընտրատարածքային ընտրական յանձնաժողովում թիւ 13/10 ընտրատեղամասի արդիւնքների վերահաշուարկին, տեղեկացրել է, որ ոմն Հրաչ Այվազեան թիւ 13 ԸԸՀ նախագահի սեղանից վերցրել է ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկուած քուէաթերթիկների ծրարը եւ հեռացել: Նոյն նիւթում հեղինակը նշել է, որ թիւ 10 ընտրատեղամասի վերահաշուարկի արդիւնքում պարզուել է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին քուէարկուած աւելի քան 100 քուէաթերթիկ եղել է Սերժ Սարգսեանի օգտին քուէարկուած քուէաթերթիկների ծրարի մէջ: Նկատի ունենալով, որ ԶԼՄ-ի նշուած նիւթում առկայ է ՀՀ Քրէական Օրէնսգրքի 150-րդ յօդուածով նախատեսուած յատկանիշներ՝ ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում 25.02.08թ. յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 150-րդ յօդուածով: Կատարւում է նախաքննութիւն, ասուած է հաղորդագրութեան մէջ:

## ՀԱՒԱՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ «ԱՒԱԶԱԿԱՊԵՏՈՒԹԻՒՆ» ԱՐՏԱՅԱՅՏՈՒԹԵԱՆԸ

*A1+*, 20:38

ՀՀ ԱԳ նախարար Վարդան Օսկանեանը խօսել է ԱԳ նախարարութեան այն աշխատակիցների մասին, ովքեր այս օրերին միացել են Տէր-Պետրոսեանը համաժողովրդական շարժմանը:

Լրագրողների հետ զրոյցում Վարդան Օսկանեանն իր անհանդուրժողականութիւնն է յայտնել հրաժարական տուած բարձրաստիճան դիւանագէտների նկատմամբ:

«Այս մարդիկ, ովքեր որ գնացին այս քայլին, վերջինը կը լինեն, իրօք, նման բան անելու. եթէ նախարարութեան ամբողջ ցուցակով անցնեմ՝ նրանք վերջինը պէտք է լինեն, որովհետեւ առաջին օրուանից նրանց քաղաքական հայեացքները մեր բոլորին շատ

յայտնի էր: Նրանք կամ նախկին բարձրաստիճան պաշտօնեաների հարազատներն էին կամ իրենք պաշտօններ ունէին նախորդ իշխանութիւններում», - ասաց Վարդան Օսկանեանը:

Ապա Վարդան Օսկանեանը աւելացրել է. «Բայց կարող էք հարցնել իրենց՝ այս տասը տարուայ ընթացքում բացարձակապէս որեւէ խտրականութիւն նրանց նկատմամբ չի եղել: Դրա համար, իսկապէս, ցաւում եմ, որ հէնց այդ մարդիկ նման քայլի գնացին»:

Միաժամանակ Օսկանեանը խոստովանել է, որ հեռացել են լաւագոյն դիւանագէտները. «Կադրերը հեշտ չեն ծնւում, դա երկար տարիների աշխատանք է, եւ ամէն դիւանագէտը թանկ է նախարարութեան համար: Ես ցաւով եմ ստորագրել այդ հրամանները, բայց պէտք է ստորագրէի: Նախագահը նոյնպէս, համոզուած եմ, որ ցաւով է ստորագրել»:

Լաւագոյն դիւանգետներին կորցնելու փաստը Օսկանեանը փորձել է այսպէս բացատրել. «Ո՞նց էք պատկերացնում՝ դեսպանը, որ նախագահին է ներկայացնում, իր կողմից է նշանակուած, միանում է մի շարժման, քաղաքական ուժի, որը համարում է, անուանել է այս պետութիւնը աւազակապետութիւն, եւ դրա գլուխը հանրապետութեան նախագահն է: Այդ դեսպանները ո՞նց են աշխատելու, երբ իրենց հաւանութիւնն են տալիս այդ որակաւորմանը»:

Բացի այդ, «Դիւանագիտական ծառայութեան մասին» օրէնքը թոյլ չի տալիս մեր դիւանագէտներին հրապարակային քաղաքական դիրքորոշում որդեգրել: Մեր աշխատակիցներից մի քանիսը որոշեցին այդ օրէնքը խախտել: Հետեւանքը այն պէտք է լինէր, որ նրանք աշխատանքից ազատուեցին»:

Օսկանեանը հերքեց այն փաստը, որ պետական մեքենան փլուզւում է. «Ընդդիմութիւնը փորձել է եւ շարունակում է փորձել դա անել, բայց դա չի աշխատել: Այն փաստը, որ ընդդիմութիւնը հիմա փորձում է նախարարութեան ցածր օղակներից շարքային դիւանագէտներին հաւաքագրել, ցոյց է տալիս, որ նրանց մարտավարութիւնը չի աշխատել»:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ԸՆԴՈՒՆԵԼ Է ԵԱՆ ԿՈՒԲԻՇԻՆ

*A1+*, 20:44

Ռոբերտ Քոչարեանն այսօր ընդունել է Սլովակիայի արտաքին գործերի նախարար, Եւրոպայի Խորհրդի նախարարների կոմիտէի նախագահ Եան Կուբիշին եւ նրան ուղեկցող պատուիրակութեանը:

Հանդիպման ընթացքում կողմերն անդրադարձել են Հայաստանում կայացած նախագահական ընտրութիւններին եւ յետընտրական զարգացումներին: Սլովակիայի արտաքին գործերի նախարարի խօսքով, ընտրութիւնները եւս մէկ դրական քայլ էին դէպի երկրի ժողովրդավարական զարգացում:

Ըստ Ռոբերտ Քոչարեանի մամուլի ծառայութեան՝ հիմնուելով միջազգային կառոյցների դիտարկումների եւ զեկոյցների վրայ, Ե. Կուբիշը նշել է, որ դրանցում արտացոլուած է ընտրութիւնների որակը եւ միջազգային դիտորդների գնահատմամբ, դրանք մէկ քայլ առաջընթաց էին անցած տարուայ մայիսին կայացած խորհրդարանական ընտրութիւնների համեմատ:

Նա ներկայացրել է յետընտրական զարգացումները, բողոքարկման եւ վերահաշուարկի գործընթացի արդիւնքները: ԵԽ նախարարների կոմիտէի նախագահը բարձր

է գնահատել այս օրերին իշխանութիւնների կողմից դրսեւորուող զսպուածութիւնը: Զրուցակիցները միակարծիք են եղել, որ ժողովրդավարութիւնն առաջին հերթին ենթադրում է յարգանք օրէնքի նկատմամբ:

Խօսելով երկկողմ յարաբերութիւնների մասին, կողմերը նշել են տնտեսական փոխգործակցութեան մեծ ներուժը եւ կարեւորել են գործարար կապերի ակտիւացումը: Եան Կուբիշը տեղեկացրել է, որ այս տարուայ ընթացքում նախատեսւում է Սլովակիայի կառավարութեան առնուազն երեք անդամների այցը Հայաստան, ինչը լուրջ խթան կը հանդիսանայ գործակցութեան յետագայ զարգացման համար:

## ՍՏՈՐԱԳՐԱՀԱՒԱՔ ՉԵՆ ԱՆԻ ՋՀԱՆԳԻՐԵԱՆԻ ՀԱՄԱՐ

*A1+*, 20:57

Այսօր խորհրդարանում զրուցեցինք ԱԺ ԲՀԿ խմբակցութեան պատգամաւորներ Կարօ Կարապետեանի եւ Տիգրան Ստեփանեանի հետ: Նրանցից առաջինը 6 տարի եղել է Գագիկ Ջհանգիրեանի օգնականը: Երբ *Ա1+*-ը հետաքրքրուեց, թէ ինչպէս է վերաբերում նրա ձերբակալման փաստին, Կարօ Կարապետեանը պատասխանեց. «Նախ ես Գագիկ Ջհանգիրեանի մօտ չեմ աշխատել, այլ 6 տարի աշխատել եմ, որպէս ՀՀ զինուորական դատախազի աւագ օգնական: Յետոյ, ես ի՞նչ կարամ ասեմ, թէ ինքն ինչ անօրինականութիւններ ա արել, խի՞ էք էդ հարցը ինձ տալիս»:

Իսկ հարցին, թէ միւս ընկեր Սմբատ Այվազեանի ձերբակալմանը ինչպէ՞ս է վերաբերում, պատասխանեց. «Մօտը զէնք ա եղել, ուրեմն օրինական են բռնել: Սմբատ Այվազեանը ես չգիտեմ ինչ ա արել, եթէ օրինական ա զէնքը, ուրեմն բաց կը թողնեն»:

Նա չի հետաքրքրուել եւ չի էլ պատրաստւում հետաքրքրուել. «Ոչ հետաքրքրուել եմ, ոչ էլ կը հետաքրքրուեն. մի հատ բան ես հարցնում, յելնում ասում են մեր կողմնակիցն են»: Իսկ հնարաւո՞ր է, որ ինչ-որ փուլում իրենք, որ հանդուրժողականութեան կոչ են արել, միանան համաժողովրդական շարժմանը. «Կեանքում սենց բան գոյութիւն չունի: Իսկ Ջհանգիրեանի հարցով դուք ընձի բան մի ասէք, մենք հարազատ ենք Ջհանգիրեանի հետ»: Հարազատաբար հնարաւո՞ր է, որ սկսէք ստորագրահաւաք նրան ստորագրութեամբ ազատ արձակելու միջնորդութեամբ դիմելու նպատակով հարցին Ջհանգիրեանի նախկին օգնականը պատասխանեց. «Ես որ չեմ սկսի ստորագրահաւաք»: Իսկ ինչո՞ւ հարցին յաջորդեց. «Չեմ ուզում»:

Իսկ Տիգրան Ստեփանեանին հարցրին, եթէ ձեր անունից են յայտարարութիւն արել, հնարաւո՞ր է, որ պատիւ պահանջէք. «Պատիւ կը պահանջենք, ժամանակը կը գայ, կը պահանջէք: Մենք ոչ մի կոչ չենք արել, մենք ասել ենք, որ սա ճանապարհ չի, որ դուք բռնել էք»:

Տիգրան Ստեփանեանն էլ էր պնդում, որ իրենք ընդամէնը բանաւոր զրոյց են ունեցել Մանուէլ Ղազարեանի հետ, որն ի դէպ, այսօր խորհրդարան չէր եկել: Տիգրան Ստեփանեանը, Կարօ Կարապետեանը եւ ՀՀԿ-ական Հրանտ Գրիգորեանը մէկ մարդու նման նոյն բառերն էին ասում. օրինակ՝ «Ես թիւ 16 ընտրատարածքի պատասխանատուն եմ եղել, ու առանց դիմում բողոքների մենք կրել ենք, առանց բռնութիւնների, չկայ մի հատ արձանագրութիւն, մի հատ բողոք, ընդդիմութիւնը զոհ ա եղել», - ասաց Տիգրան Ստեփանեան:

## ՍԱՄՈՒԷԼ ԳԷՈՐԳԵԱՆԻ ԳՈՐԾԸ

*Lragir.am*, 21:14

ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը. «2008 թուականի փետրուարի 19-ին՝ ժամը 17:30-ի սահմաններում Գեղարքունիքի մարզի Վարդաձոր գիւղի թիւ 22/37 ընտրատարածքի յանձնաժողովի անդամների կողմից արձանագրութիւն է կազմուել եւ ուղարկուել ոստիկանութեան Մարտունու բաժին, ըստ որի՝ 19.02.08՝ ժամը 12:50-ի սահմաններում ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Սամուէլ Գէորգեանը թուով 12 կողմնակի անձանց հետ խոչընդոտել է յանձնաժողովի աշխատանքները: Մասնաւորապէս՝ վերջիններս տեսախցիկով նկարահանելով մուտք են գործել Վարդաձոր գիւղի թիւ 22/37 ընտրական տեղամաս, որտեղ, քարոզչութիւն իրականացնելով ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին, Սամուէլ Գէորգեանը, առանց համապատասխան թոյլտուութեան, վերցրել է քուէարկութեանը մասնակցող ընտրողների անձնագրերը, խանգարել յանձնաժողովի անդամների բնականոն աշխատանքին:

Դէպքի առթիւ ՀՀ ոստիկանութեան Մարտունու քննչական բաժանմունքում 22.02.08թ. յարուցուել է քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 5-րդ կէտով: Քրէական գործն ուղարկուել է ՀՀ յատուկ քննչական ծառայութիւն՝ քննութիւն իրականացնելու»:

## ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՒՈՒՄ Է «ՀԱՐԿԱԴԻՐ» ՀԱՆՐԱՀԱՒԱՔ

*A1+,* 21:21

Հանրապետութեան Հրապարակում վաղը ժամը 14:30-ին տեղի է ունենալու ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի հանրահաւաք: Այդ մասին մարդիկ իմացել են, երբ օրինակ՝ տնօրէնը զանգել է ու ասել, թէ այդ հանրահաւաքին մասնակցելը պարտադիր է:

*Ա1+*-ն առաւօտից բազմաթիւ ուսուցիչներից ստանում է ահազանգեր ու նամակներ, որտեղ նրանք բողոքում են, որ իրենց՝ աշխատանքից ազատման սպառնալիքի տակ «բերելու են» հանրահաւաքի:

Օրինակ՝ Հարաւ-Արեւմտեան թաղամասի դպրոցներից մէկում տնօրէնն ուսուցիչներին յայտարարել է, որ վաղը պէտք է ՀՀ Կառավարութեան մօտ հաւաքուեն, որ շնորհակալական խօսքեր ուղղեն Սերժ Սարգսեանին: Կենտրոնի դպրոցներից մէկի տնօրէնն էլ 9-րդ եւ 10-րդ բարձր դասարանների աշակերտներին ասել է, որ վաղը հրապարակում ժամը 13:00-ին համերգ է տեղի ունենալու եւ անպայման պէտք է ներկայ գտնուեն: Իսկ ուսուցիչներին նոյն դպրոցի տնօրէնը կարգադրել է մի մարդու պէս հաւաքուել, քանի որ ներկայ-բացակայ է անելու, որ աւտօբուսով տեղափոխի Հանրապետութեան Հրապարակ: Նման ահազանգ ստացել ենք օրինակ՝ 118, 89 դպրոցներից:

Սա վաղուայ հետ կապուած, իսկ այսօր արդէն ՀՀ տարբեր մարզերում ու քաղաքներում տեղի են ունեցել նմանատիպ հանրահաւաքներ՝ ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի: *Ա1+*-ն այսօր Աշոտ անունով մի անձնաւորութիւնից էլեկտրոնային նամակ է ստացել այն մասին, որ Արտաշատում ստիպողաբար ցոյցի են տանում պետական հաստատութիւններից՝ դպրոցներից, մարզպետարաններից եւ այլն:

Իսկ մի խումբ ընթերցողներ խնդրում են մեր լրագրողին գնալ Կոտայքի մարզի Հրազդան քաղաք եւ տեսնել, թէ ինչպիսի «ճնշումներ են գործադրում իշխանութիւնները,

որ մարդիկ պարտադրաբար գնան յօգուտ Սերժ Սարգսեանի հանրահաւաքին»: «Բոլոր դպրոցները, գործարանները եւ այլ հաստատութիւններ փակուել են եւ աշխատակիցները բռնի կերպով ուղարկուել են Հրազդան: Ձեզ հաւաստի տուեալներ եմ ասում: Օգնէք արդարութիւնը հաստատենք այս անարդար երկրում», - մանաւորապէս նշուած է նամակում:

Իսկ Երեւանի թիւ 3 Շտապօգնութեան հիւանդանոցի վերաբերեալ ստացել ենք հետեւեալ նամակը. «Հիւանդանոցի ղեկավարութիւնը, որի տնօրէնն է Խոսրով Յարութիւնեանի եղբայրը, հրահանգել է իր աշխատակցներին վաղը մասնակցել Սերժ Սարգսեանի համար նախատեսուող հանրահաւաքին: Չմասնակցելու դէպքում սպառնացել են հեռացնել աշխատանքից»:

Դիմեցինք ՀՀ Կրթութեան եւ Գիտութեան Նախարարութիւն՝ պարզելու՝ արդեօք նրանք տեղեա՞կ են այս պարտադրանքների մասին եւ ի՞նչ քայլեր են կատարում: ԿԳՆ մամուլի պատախանատու Լիլիթ Գալստեանը մեզ ասաց, որ դրանք ընդամէնը խօսակցութիւններ են, որոնք իրականութեանը չեն համապատասխանում, քանի որ ոչ մի կոնկրէտ փաստ չկայ: «Եթէ կոնկրէտ նմանատիպ նամակներ կան, ապա դրանք կարող են ուղղել նաեւ ԿԳՆ-ին: Մենք նման բողոք-նամակներ, ահազանգեր չենք ստացել: Ես բանաւոր խօսակցութիւնների հենքի վրայ չեմ կարող ոչինչ ասել: Եթէ նման նամակներ կը լինեն, ապա բնականաբար մեր համապատասխան վարչութիւնները կը զբաղուեն դրանցով», - *Ա1+*-ին ասաց Լիլիթ Գալստեանը:

Մարդու Իրաւունքների պաշտպանի գրասենեակից էլ տեղեկացրին, որ իրենք եւս բողոքներ չեն ստացել: ՄԻՊ-ի տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ բաժնի ղեկավար Գրիգորի Գրիգորեանը մեզ խնդրեց՝ վերոնշեալ բոլոր նամակներն իրենց ուղարկել, որպէսզի «աւելի նիւթական ու առարկայական ուսումնասիրութիւն կատարեն»:

Իսկ գնահատական տալ չի կարող, քանի որ. «Իմ գնահատականները կարող են դուրս գալ իրաւական հարթութիւնից եւ անցնի քաղաքականի, որից մենք խուսափում ենք: Ստիպողաբար հանրահաւաքի տանելու թեման բազմիցս է քննարկուել, բայց առարկայական բողոք չի եղել, որ մենք էլ համապատասխան միջոցառումներ ձեռնարկէինք: Եթէ հիմա մի ուսուցիչ գայ մեզ մօտ ու մի բողոք-դիմում գրի այդ մասին, ապա մենք համապատասխան միջոցներ կը ձեռնարկենք: Այդ դէպքում տուեալ դպրոցի տնօրէնը ոչ միայն չի աշխատի, այլեւ համապատասխան պատիժ կը կրի: Կամ թէկուզ աշխատանքից ազատուելուց յետոյ կարող են դիմել մեզ, կամ էլ դիմեն դատարան», - տեղեկացրեց Գրիգորի Գրիգորեանը:

Իրաւապաշտպան Արթուր Սաքունցն էլ մեզ ասաց, որ մարդու անձնական իրաւունքն է՝ մասնկացե՞լ հանրահաւաքների, թէ՞ ոչ: «Եթէ չեն ուզում, կարող են չգնալ. այլ տարբերակ չկայ: Պէտք չէ վախենալ: Ոչ ոք անհիմն չի կարող որեւէ մէկին աշխատանքից ազատել», - աւելացրեց իրաւապաշտպանը:

Ի դէպ, Սերժ Սարգսեանի օգտին քուէարկած քաղաքացիները ցոյց են կազմակերպել Սիսիանում, որին մասնակցել է մօտ 300 հոգի, հիմնականում Ջրմուղ կոյուղու, հիւանդանոցի աշխատակիցներ, դպրոցի տնօրէններ: Գաւառում կազմակերպուած ցոյցին մասնակցել են հիմնականում աշխատանքով ապահովուած մարդիկ: Գաւառից նաեւ տեղեկացնում են, որ երկու օր առաջ Երեւան են մեկնել ոստիկանութեան աշխա-

տակիցների մի խումբ:

Ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի՝ հանրահաւաք է եղել նաեւ Գիւմրիում:

«Մենք մեր խօսքն ասել եւ զայրոյթը չարտայայտել չէինք կարող՝ կապուած երեւանեան եղբայրասպան իրադարձութիւնների հետ: Եկել ենք, որ ՀՀՇ-ին ասենք, ձեր վերադարձը մենք չենք ուզում». նման կոչով այսօր հանդէս է եկել Գիւմրիի քաղաքապետ Վարդան Ղուկասեանը՝ Թատերական Հրապարակում անցկացուած հանրահաւաքի ժամանակ: Ըստ նրա. «Եթէ Լեւոնն եկաւ, առաջին հրաժարական տուողն ես կը լինեմ, ես նրանց հետ չեմ աշխատի միանշանակ»: «Այնպէս որ՝ Առաջ Հայաստան, Առաջն Աստուած», - վստահեցրել է քաղաքապետը:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ՍՈՒՐԷՆ ՍՈՒՐԷՆԵԱՆՑԻՆ

*A1+*, 21:30

Քիչ առաջ անյայտ ուղղութեամբ տարել են Հանրապետութիւն կուսակցութեան անդամ Սուրէն Սուրէնեանցին: Նրա փաստաբանն այժմ փորձում է նրան գտնել:

## ՑԵՏՈՅ Ի՞ՆՉ ԵՆ ԱՆԵԼՈՒ...

*A1+*, 22:07

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը հանրահաւաքի ընթացքում յայտարարել է, թէ իր թիկնազօրի պետին հրաւիրել են իրաւապահ մարմինները եւ ասել, որ Տէր-Պետրոսեանի թիկնազօրը պէտք է յանձնի զէնքը: Այդ պահանջը չի կատարուելու, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը ասելով, որ օրէնքն է իր համար նախատեսում զինուած թիկնազօր, հետեւաբար իրենք գործում են օրէնքով: «Թող օրէնքը փոխեն՝ ենթարկուենք օրէնքին», - ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Նա յայտարարել է, որ ամէն ինչ ընթանում է շատ աւելի բարեյաջող, քան ինքն է ծրագրել:

Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, հողը փախչում է Սերժ Սարգսեանի տակից, վաղն անգամ կրիմինալն է փախչելու: Ինչ վերաբերում է օլիգարխներին, Տէր-Պետրոսեանի խօսքով, նրանք փորձում են կամուրջ ստեղծել իր հետ. «Սակայն մենք փորձ ունենք, գիտենք, որ միշտ էլ կարող են յայտնուել պատեհապաշտներ, եւ ովքեր ժողովրդի դէմ յանցագործութիւններ են գործել ընտրութեան ժամանակ, թող յոյս չունենան, որ անպատիժ կը մնան»:

Առաջին նախագահը յիշեցրել է այսօրուայ յայտարարութիւնը՝ եւս 2-3 օր դիմանալու մասին. «Մեր շարքերը ընդլայնւում են ժամ առ ժամ, եւ պետական մեքենան ճաքեր է տալիս: Մեր մասին արդէն խօսում է միջազգային հանրութիւնը, Ազատութեան Հրապարակը դարձել է աշխարհի ուշադրութեան կենտրոնը»: Նա տեղեկացրել է, որ վարում է նաեւ ակտիւ արտաքին քաղաքականութիւն, այսօր հանդիպել է ԵԽԽՎ դիտորդական առաքելութեան ղեկավարի հետ, հանդիպելու է ԵԽ Նախարարների Խորհրդի նախագահ, Սլովակիայի ԱԳ նախարար Կուբիշի հետ, եւ շուտով ՆԱՏՕ-ն, ԵՄ-ն եւ ԵԽ հանդէս կը գան յայտարարութեամբ: «Ինֆորմացիոն բլոկադան ճեղքուել է», - յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Խօսելով իշխանութեան հնարաւոր սցենարների մասին, Տէր-Պետրոսեանը յայտարարել է, թէ նրանք չեն համարձակուի զանգուածային ուժ կիրառել, քանի որ, նախ, չունեն

այդ ուժը, եւ երկրորդ՝ դա կը լինի իրենց վերջը: Նա յիշեցրել է Գանդիի խօսքը՝ բանտերն իրենցով լցնելու մասին, որով յաղթեցին անգլիացիներին: Լեւոն Տէր-Պետրոսեանն յայտարարել է՝ «թող նոյնիսկ ինձ ձերբակալեն, թող գնդակահարեն, ինչ են անելու յետոյ»:

## ԱՐԳԵԼՈՒՄ ԵՆ (video)

*A1+*, 22:14

Այսօր առաւօտուանից ստուգւում են գրեթէ բոլոր մեքենաները, որոնք փորձում են մտնել Երեւան: Մարդկանց, ինչպէս նախորդ օրերին, հարցուփորձ են անում՝ ուր են գնում, ինչի համար: Մայրուղիների վրայ կրկին յայտնուել են ոստիկանական անցակէտերը, որոնք նախորդ տարի ապրիլին ճանապարհային ոտիկանութեան համակարգում արուած բարեփոխումներից յետոյ անհետացել էին: Այսպէս կոչուած՝ «Գայի պոստերում» կանգնեցւում են աւտոմեքենաները եւ երեւանեան գրանցում չունեցող մեքենաներին թոյլ չի տրւում մտնել մայրաքաղաք:

Իսկ այս պահին Ազատութեան Հրապարակում շարունակւում է բազմամարդ բողոքի ակցիան: Հացադուլաւորների թիւն արդէն 11-է: Վերջիններիս առողջական վիճակին հետեւում են կամաւոր բժիշկները:

## ԳՏԱՆ ՊԱՏՃԱՌԸ

*A1+*, 22:21

**Դատախազութեան հաղորդագրութիւնը**

2008 թ. փետրուարի 19-ին՝ ժամը 17:30-ի սահմաններում, Գեղարքունիքի մարզի Վարդաձոր գիւղի թիւ 22/37 ընտրատարածքի յանձնաժողովի անդամների կողմից արձանագրութիւն է կազմուել եւ ուղարկուել ոստիկանութեան Մարտունու բաժին, ըստ որի՝ 19.02.08՝ ժամը 12:50-ի սահմաններում, ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Սամուէլ Գէորգեանը թուով 12 կողմնակի անձանց հետ խոչընդոտել է յանձնաժողովի աշխատանքները: Մասնաւորապէս՝ վերջիններս տեսախցիկով նկարահանելով մուտք են գործել Վարդաձոր գիւղի թիւ 22/37 ընտրական տեղամաս, որտեղ, քարոզչութիւն իրականացնելով ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի օգտին, Սամուէլ Գէորգեանը, առանց համապատասխան թոյլտուութեան, վերցրել է քուէարկութեանը մասնակցող ընտրողների անձնագրերը, խանգարել յանձնաժողովի անդամների բնականոն աշխատանքը:

Դէպքի առթիւ ՀՀ ոստիկանութեան Մարտունու քննչական բաժանմունքում 22.02.08թ. յարուցուել է քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 5-րդ կէտով: Նախաքննութիւնն իրականացնում է ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնը:

Յիշեցնենք, որ Ղարաբաղ Կոմիտէի անդամ Սամուէլ Գէորգեանը երէկուանից Ազատութեան Հրապարակում հացադուլ է անում, իսկ այսօր խուզարկուել է նրա տունը:

# 26 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

## ՍՈՒՐԷՆԵԱՆՑԸ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆՈՒՄ Է

*A1+*, 00:10

Սուրէն Սուրէնեանցը գտնւում է Կենտրոնի ոստիկանութիւնում: Այդ մասին յայտնել է ոստիկանութեան աշխատակից Յարութիւն Ղեւինեանը ԱԺ պատգամաւոր Զարուհի Փոստանջեանին, սակայն նրան եւ փաստաբան Գրիշա Մանուկեանին թոյլ չեն տուել տեսնել Սուրէնեանցին:

Յիշեցնենք, որ այսօր ժամը 21.20-ի սահմաններում Սուրէն Սուրէնեանցին ոստիկանները Ազատութեան Հրապարակի մօտակայքում տարել էին անյայտ ուղղութեամբ:

Ժառանգութեան խմբակցութեան պատգամաւոր Զարուհի Փոստանջեանը *Ա1+*-ին տեղեկացրեց, որ Կենտրոնի ոստիկանութիւն իրենց թոյլ չեն տուել մտնել: Յարութիւն Ղեւինեանը այդ պարզաբանել է նրանով, որ թոյլ չի տալիս իր վերադասը՝ Կենտրոնի ոստիկանապետ Արթուր Մեհրաբեանը: Սա օրէնքի խախտում է, քանի որ պատգամաւորը եւ փաստաբանը իրաւունք ունեն հանդիպելու ձերբակալուածների հետ:

## «ՊԱՏԿԵՐԱՑՐԷՔ՝ «ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄՆ» Է»

*A1+*, 00:32

Փորձագէտ Մեսրոպ Յարութիւնեանը խորհուրդ է տալիս բոլոր նրանց, ովքեր նեարդայնանում են Հայաստանի հեռուստաընկերութիւնների լրատուական թողարկումները նայելիս, խնայել նեարդերը:

«Պատկերացրէք, որ օրինակ՝ դիտում էք *Կենդանիների աշխարհում* կամ զաւեշտալի հաղորդում եւ ծիծաղէք», - ասում է փորձագէտը: Ըստ նրա՝ իրեն զանգում են ամենահեռաւոր մարզերից ու հարցնում, եթէ Սերժ Սարգսեանը յաղթել է, ինչու են «քէֆ» անելու փոխարէն, այդպիսի թատրոններ սարքում»: Յիշեցնենք, որ արդէն մի քանի օր է հանրապետութեան տարբեր քաղաքներում կազմակերպւում են ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի ցոյցեր, եւ երեւանեան գրեթէ բոլոր հեռուստաընկերութիւնները, ներառեալ Հանրայինը, ցոյց են տալիս համարեայ 10 րոպէանոց տեսանիւթեր, որոնցում ՀՀ քաղաքացիները աւելի շատ ոչ թէ ներկայացնում են իրենց ընտրեալի արժանիքները, այլ հակաքարոզչութիւն են անում Լեւոն Տէր-Պետրոսեանի դէմ: Անգամ ոչ պրոֆեսիոնալ աչքը նկատում է, որ հակաքարոզչութիւն անողները անգիր են արել իրենց տեքստը եւ բնաւ չեն յուզւում տեսախցիկից: Ի դէպ, նոյն տեսանիւթը ցուցադրւում է մի քանի հեռուստաընկերութիւններով:

Հակառակ սրա՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցները ներկայացւում են ամենավիրաւորական որոշիչներով: Ընդ որում, այս գործին լծուել է ոստիկանութեան տեղեկատուութեան եւ հասարակութեան վարչութիւնը:

Հետաքրքիր է նաեւ այն, որ ոստիկանակութեան հաղորդագրութիւնները, որոնք տարածւում են լրատուամիջոցներին ու դրւում ոստիկանութեան կայքում, յանկարծ այլ են դառնում եթերում՝ շաղախուած ամէն տեսակի ածականներով: Օրինակ՝ Գլխաւոր Դատախազի նախկին օգնական Գագիկ Ջհանգիրեանի բերման ենթարկելու մասին հաղորդագրութիւնը բոլորովին այլ տեսք էր ստացել հեռուստատեսային տարբերակում: Մասնաւորապէս՝ եթերից այդպէս էլ չինչեց, որ Գագիկ Ջհանգիրեանի եւ նրան ուղեկցող-

ների մեքենաների ստուգելու ժամանակ «ԿՀԴՊ ԳՎ յատուկ նշանակութեան վարչութեան աշխատակից Ռաֆիկ Մուրադեանի հաշուեցուցակային զէնքից անզգուշաբար կրակոցներ են արձակուել, ինչի հետեւանքով թեթեւ մարմնական վնասուածքներ են ստացել նոյն վարչութեան աշխատակից Գէորգ Մալխասեանը, 3-րդ վարչութեան աւագ օպերլիազօր Տիգրան Կարապետեանը եւ դիմադրութիւն ցուցաբերած Վարդան Ջհանգիրեանը»:

Մեր դիտարկմանն ի պատասխան՝ Մեսրոպ Յարութիւնեանը կրկնեց վաղուց արուած իր դիտարկումը, որ ոստիկանութեան տեղեկատուութեան եւ հասարակութեան վարչութիւնը չի տարբերում լրատուութիւնը քարոզչութիւնից, եւ այն ինչ արւում է քարոզչութիւն է:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. «ՎՍՏԱՀԷՔ ԻՆՁ»

*A1+*, 00:56

ՀՀ 10 քաղաքացիներ այսօր Ազատութեան Հրապարակում նշում էին իրենց ծննդեան տարեդարձը: Բոլորը շնորհաւորում էին յոբելեարներին: *A1+*-ի թղթակցի փոխանցմամբ՝ հրապարակում շատ մտերմիկ մթնոլորտ է՝ փոխադարձ վստահութեամբ լցուած: Օրինակ՝ ներկաներից մէկը կորցրել էր իր բջջային հեռախօսը, այն արագօրէն գտնուեց եւ վերադարձուեց տիրոջը:

Հրապարակում է նաեւ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, որը պարում է միւսների նման:

Քիչ առաջ նա յայտարարեց. «Վստահէք ինձ», իսկ յաղթանակի համար, ըստ նրա, ներկաներից ուրիշ բան չի պահանջւում՝ միայն սեղմել բռունցքները:

## ԱԶԱՏ ՄԵՔԵՆԱՅ ՉԳՏՆՈՒԵՑ

*A1+*, 02:32

Այդպէս էլ բուժօգնութիւն չի տրամադրուել Ազատութեան Հրապարակում հացադուլ անողներին: Փետրուարի 25-ի առաւօտեան քաղաքապետարանին տեղեկացուել է, որ Ազատութեան Հրապարակում ամսի 24-ից հացադուլ են սկսել 11 քաղաքացիներ: Ըստ կարգի՝ քաղաքապետարանը պէտք է անվտանգութիւնից զատ ապահովէր նրանց բուժօգնութիւնը՝ հացադուլի առաջին երեք օրերին՝ բժշկական բրիգադի երկանգամեայ այցելութեամբ, իսկ չորրորդ օրուանից սկսած՝ մշտական հերթապահութեամբ:

Ինչպէս տեղեկացրեց *Ա1+*-ին Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի մամլոյ խօսնակ Արման Մուսինեանը, բուժօգնութիւն չի տրամադրուել հացադուլաւորներին՝ պատճառաբանութեամբ, որ Շտապօգնութեան ազատ մեքենայ չկայ: Ըստ Մուսինեանի՝ սա մարդասիրական նորմերի եւ մարդու իրաւունքների կոպիտ ոտնահարում է:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԿՈՒԲԻՇԻ ՀԵՏ ՔՆՆԱՐԿԵԼ Է ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ

*Lragir.am*, 09:45

Փետրուարի 25-ին Լեւոն Տէր-Պետրոսեանը հանդիպել է պաշտօնական այցով Հայաստանում գտնուող Սլովակիայի Արտաքին գործերի նախարար, ԵԽ նախարարների կոմիտէի նախագահ պարոն Եան Կուբիշի հետ: Զրոյցի ընթացքում քննարկուեցին

Հայաստանի ներքաղաքական վիճակին, նախագահական ընտրութիւնների ընթացքին եւ յետընտրական զարգացումներին վերաբերող հարցեր: Փոխադարձաբար նշուեց խնդիրները քաղաքական միջոցներով լուծելու անհրաժեշտութիւնը եւ շեշտուեց ցուցարարների դէմ բռնութիւն կիրառելու անթոյլատրելիութիւնը:

## ԶԳՈՒՇԱՑԷՔ ԿԵՂԾ ՄԱՐԳԱՐԷՆԵՐԻՑ

*Lragir.am*, 09:52

**Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի յայտարարութիւնը, որ կոչուի Իններորդ Պատուիրանը՝ սուտ մարգարէների համար**

Փետրուարի 25-ին ժամը 15:18-ին, Գիւմրու թատերական հրապարակում հանրահաւաքի եկած եւ բերուած մի քանի հազար մարդու առաջ Գիւմրու քաղաքապետ Վարդան Ղուկասեանը ասաց. «...Մեր քաղաքում մի երկու քաղմաս է մնացել, որ ժողովուրդը զզւում է, դա «Գալա քաղմասն է», մէկ էլ «Ասպարէզ քաղմասը», որ գիշեր-ցերեկ զովերգում են սազերն առած՝ Լեւոն Տէր-Պետրոսեանին՝ ՀՀՇ-ի գումարներով, վերջապէս, մի քիչ թող նրանք էլ զգաստանան:...»:

Ժուռնալիստները Ասպարէզ ակումբը, իր հիմնական բանուգործը թողած, ստիպուած է յայտարարել հետեւեալը.

Ընդհանրապէս քաղմասներից (ենթադրաբար՝ ոստիկանութեան) Վարդան Ղուկասեանի զզուանքն ու ատելութիւնը հասկանում ենք, պատճառներ ունի մարդը, բան չի մնացել առանց քաղմաս Հայաստան ունենալու ճամփին: Որ, իր կարծիքով մեր քաղաքում ընդամէնը երկու քաղմաս է մնացել, դա էլ ենք հասկանում. քուէարկութեան օրը եւ նախորդ օրը՝ *ԳԱԼԱ* ՀԸ-ն եւ Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը իրաւապահների գործի մի մասն էին կատարում՝ նրանց ու դատախազութեան փոխարէն, որովհետեւ ընտրակաշառքի զանգուածային բաշխման, ընտրակեղծիքների եւ այլ ընտրախախտումների մասին փաստերի հաւաքումը լրագրողների պարտքն է այնպէս, ինչպէս՝ իրաւապահների. գուցէ շփոթել է մարդը:

Կարծում ենք, որ Վ. Ղուկասեանը օրհասական կարիք ունի ինչ-որ բացատրութիւն գտնելու, թէ ինչու Ս. Սարգսեանը ՀՀԿ խորհրդի անդամ հանդիսացող քաղաքապետով եւ իրեն պատուաւոր քաղաքացու կոչում տուած Գիւմրի քաղաքում, չնայած համատարած ընտրակաշառքին, զանգուածային ընտրակեղծիքներին եւ այլ օրինախախտումներին, հազիւ 38 տոկոս է ստացել. մարդը «մեղքը» հօ գիւմրեցիների արժանապատուութեան վրայ չէր գցելու: Այժմ, տպաւորութիւն է ստեղծւում, թէ մարդը մոռացել է, որ ինքն է առաջինը դատական գործ նախաձեռնել իր համար այդպէս զզուելի հեռուստատեսութեան դէմ, անտեսելով խնդիրների հարթման բանակցային միջոցները: Անցած 3 ամիսներին առնուազն 2 անգամ քաղաքապետին յիշեցրել ենք խաղաղութեան համաձայնութեան: Չի օգնել:

Կասկած ունենք, որ Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի նկատմամբ քաղաքապետի զզուանքը ծնուեց այն պահին, երբ ակումբը սկսեց իր կարեցածի չափով պաշտպանել ռեժիմի թիրախ դարձած հեռուստաընկերութիւնը: Այդ զզուանքը մեզ պատիւ է բերում: Մենք գիտենք, որ Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը վարկաբեկելու բոլոր փորձերը արժանանում են 1000 դրամով՝ դրօշ ու 5000 դրամով՝ պաստառ բռնողների հիացմունքին ու հանրութեան արհամարհանքին: Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը իր գործունէու-

թեան 8 տարուայ եւ 37 օրերի ընթացքում ֆինանսաւորուել է միայն հիմնադիրների անձնական միջոցներից, ԱՄՆ ՄԶԳ միջոցներից, ԱՄՆ Ժողովրդավարութեան յանձնաժողովից, Եւրասիա հիմնադրամից, Քաունթերփարթ Ինթերնեյշնլից, Համաշխարհային Ուսուցում կազմակերպութիւնից, Բաց Հասարակութեան Ինստիտուտի օժանդակութեան հիմնադրամից, Համաշխարհային Բանկից, Ալեքսանդրիա-Գիւմրի քոյր քաղաքների կոմիտէից: Այս ամէնը արտացոլուած է համապատասխան փաստաթղթերում, իսկ ակումբը այդ մասին պարբերաբար հաղորդագրութիւններ է տարածել հանրութեան համար: Այդ փաստաթղթերը բաց են ցանկացած գրաճանաչ մարդու առաջ: Ակումբը երբեք չի ֆինանսաւորուել քաղաքական ուժերից (հոսանքներից, կուսակցութիւններից, գործիչներից): Ակումբը մի քանի անգամ մերժել է նաեւ քաղաքապետի՝ ակումբին օգնելու բանաւոր առաջարկները:

Ժուռնալիստների Ասպարէզ ակումբից որեւէ մէկը անձնական թշնամանք չունի եւ չի ունեցել Վ. Ղուկասեանի նկատմամբ, մենք մեզ համարել ենք բոլոր նրանց գործընկերը ու բարեկամը, ով մեր քաղաքին, խօսքի ազատութեանը օգտակար է եղել, կամ օգտակարութիւն է յայտարարել: Մեզ համար անընդունելի, վիրաւորական ու մտահոգիչ են Վ. Ղուկասեանի՝ արտաբերած վերոյիշեալ նախադասութեան այն երկու վերջին հատուածները, որոնցով նա (1) հանրութեանը վստահաբար տեղեկացնում է, թէ Ասպարէզը ՀՀՇ գումարներով գովերգում է Լեւոն Տէր-Պետրոսեանին, եւ ապա՝ «...վերջապէս, մի քիչ թող նրանք էլ զգաստանան» արտայայտութեամբ հաւաքուած բազմութեանը որոշակի ուղերձ է հասցնում (2):

Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը համարում է, որ այդ արտայայտութիւններից մէկով Գիւմրու քաղաքապետ Վարդան Ղուկասեանը զրպարտել է Ակումբին, վիրաւորել է մեզ, իսկ միւսով՝ մի քանի հազար մարդու ներկայութեամբ սպառնալիք է յղել: Այս յայտարարութեան պատճենները, որպէս անհրաժեշտ իրազեկում, պատուիրուած նամակով փետրուարի 26-ին ուղարկուելու են ՀՀ Գլխաւոր Դատախազին եւ Դատախազութեան Շիրակի մարզային ստորաբաժանմանը:

Միաժամանակ հրաւիրում ենք իրաւապահների ուշադրութիւնը այն հանգամանքների վրայ, որ անցեալ տարիներին Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը եւ խորհրդի նախագահ Լ. Բարսեղեանը մի քանի հեռախօսային սպառնալիքներ են ստացել, իսկ վերջերս՝ յունուարի 18-19-ի գիշերը անյայտ անձինք հրդեհել են ակումբի գրասենեակի պատուհանը: Հրդեհը, բարեբախտաբար յանգել էր ինքնուրոյն:

Չնչին յոյս ունենք, որ Վ. Ղուկասեանը, մինչեւ քրէական գործի յարուցումը ժամանակ կը գտնի, կը վերլուծի իր խօսքը ու հրապարակայնօրէն մեր ներողամտութիւնը կը հայցի սեփական ելոյթում տեղ գտած վերոյիշեալ նախադասութեան համար: Հակառակ դէպքում, վստահ ենք, որ նա կը կարողանայ արժանապատուութեամբ պատասխանատուութիւն կրել մեր հասցէին նետած վիրաւորանքի եւ զրպարտութեան համար: Մենք կ'օգնենք:

Մինչ այդ Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը դադարեցնում է ցանկացած տեսակի շփում քաղաքապետ Վարդան Ղուկասեանի եւ նրա ներկայացուցիչների հետ, բացառութեամբ այն դէպքերի, երբ վերջինս իր խօսքի ազատութեան իրաւունքի պաշտպանութեան համար կը կամենայ օգտուել ակումբի հնարաւորութիւններից՝ մամլոյ ասուլիս հրաւիրել ակումբում, հանրային իրազեկում իրականացնել ակումբի միջոցներով եւ այլն:

«...Բարի չէ ոչ ոք, այլ միայն` Աստուած:... սուտ մի վկայիր...»: Աւետարան ըստ Մարկոսի 19, 18-19:

## ԿԵՆՏՐՈՆԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԻՆ ՅՈՐԴՈՐՈՒՄ ԵՆ ԲՈՂՈՔ ԳՐԵԼ

*Lragir.am*, 09:57

Մեր տեղեկութիւններով, Ազատութեան Հրապարակի յարակից շէնքերի բնակիչներին երէկ օրուայ ընթացքում այցելել են ոստիկանութեան աշխատակիցներ եւ յորդորել նրանց բողոքի դիմումներ գրել առ այն, որ հրապարակում ընթացող հանրահաւաքները խանգարում են իրենց անդորրը:

## ԵՐԲ ՄՏԱԾԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ ՍՈՒՂ Է

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

*Lragir.am*, 10:34

Պէտք էր սպասել, որ Հայաստանի իշխանութիւնը դիմելու էր եւս մի կանխատեսելի հնարքի, որով փորձ էր անելու զսպել Հայաստանի նախագահի ընտրութիւնից յետոյ տեղի ունեցող բողոքի տեւական ցոյցերը: Այդ քայլը Ադրբէջանի օգնութեանը «դիմելն» էր, ինչն էլ փետրուարի 25-ին Երեւանում արեց արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանը, յայտարարելով, թէ Հայաստանի ներքաղաքական իրավիճակից արդէն իսկ փորձում է դիվիդենտ քաղել Ադրբէջանը, նկատելով իր համար դիւանագիտական հնարաւորութիւնների պատուհան: Սակայն Վարդան Օսկանեանը չբերեց որեւէ օրինակ, թէ ինչպէս է Ադրբէջանն օգտւում Հայաստանում ստեղծուած իրավիճակից:

Երբ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը 10-ամեայ լռութիւնից յետոյ հանդէս եկաւ ելոյթով եւ խօսեց նաեւ Ղարաբաղի մասին, ասելով, որ Ադրբէջանի դիրքորոշումն աստիճանաբար կոշտանում է եւ յայտնի չէ, թէ ինչպէս է հնարաւոր լինելու Հայաստանի համար շտկել վիճակը, Վարդան Օսկանեանը մեկնաբանելով այդ յայտարարութիւնն ասաց, թէ պէտք է զգոյշ լինել այդպիսի բան ասելուց, քանի որ այդ խօսքն արդէն իսկ ազդել է Ադրբէջանի քաղաքականութեան վրայ: Այսինքն, իբրեւ թէ Ադրբէջանն այդ խօսքից յետոյ իսկապէս աւելի է կոշտացման գնում: Եւ զարմանալի է, բայց նոյն այդ զգուշաւոր արտգործնախարար Վարդան Օսկանեանը ելնում ու յայտարարում է, որ Հայաստանի ներքաղաքական վիճակից փորձում է օգտուել Ադրբէջանը: Եթէ Ադրբէջանի մտքով մինչ այդ չէր անցել նման բան, ապա Վարդան Օսկանեանի ելոյթից յետոյ ադրբէջանցիներն անկասկած կը փորձեն տեսնել, թէ ինչ հնարաւորութիւն կայ օգտուել Հայաստանի ներքաղաքական վիճակից: Որքան էլ ցաւալի է, բայց ստեղծուած իրավիճակի անցանկալի որեւէ հետեւանքից խուսափելու համար իշխանութիւնը ոչ միայն այլեւ ներքին անզգուշութիւններ է թոյլ տալիս, այլ արդէն նաեւ արտաքին: Մնում է, որ Վարդան Օսկանեանը ադրբէջանցիներին նաեւ յուշի, թէ նրանք յատկապէս ինչպէս կարող են օգտուել ներքաղաքական լարուած իրավիճակից:

Կարելի է հասկանալ Վարդան Օսկանեանին: Նա պարտաւորուած է իրավիճակի, իշխանութեան համար անցանկալի ընթացքը կանխելու գործում ունենալ սեփական լուման, քանի որ ինքն էլ երկար ժամանակ եղել է Հայաստանի իշխանութեան անբաժանելի մասը, ինչ որ չափով նաեւ պարտական է այդ իշխանութեանը, որ այն շատ խիստ չվարուեց արտգործնախարարի որդու հանդէպ, որը արտգործնախարարութեան պետա-

կան մեքենայով վրաերթի էր ենթարկել մի քաղաքացու: Սակայն արդեօ՞ք Վարդան Օսկանեանը չունէր համակարգին իր ծառայութիւնը մատուցելու այնպիսի ձեւ, որը գործին չխառնէր Ադրբէջանը: Երեւի թէ, եթէ մի փոքր երկար մտածէր, Վարդան Օսկանեանը կը գտնէր այդ ձեւը, որովհետեւ մտածելու պարագայում կարելի է ակնյայտ տեսնել, որ Ադրբէջանը, յատկապէս Հայաստանի իրավիճակի իշխանական մեկնաբանութեան տեսակէտից, չունի Հայաստանի ներքաղաքական իրավիճակից օգտուելու որեւէ հնարաւորութիւն:

Եթէ խօսքը դիւանագիտական հարթութեան վրայ օգտուելու մասին է, ինչպէս ասում է Վարդան Օսկանեանը, ապա դա ուղղակի բացառուած պէտք է լինի, որովհետեւ միջազգային հանրութիւնը, նոյն մեր իշխանութեան հաւաստիացմամբ, ողջունել է Հայաստանի նախագահի ընտրութիւնը: Այդ դէպքում ինչպէս է Ադրբէջանն օգտուելու: Չէ որ միջազգային կառոյցները, պետութիւնների նախագահները ճանաչել են մեր ընտրութիւնն ու շնորհաւորել պաշտօնապէս արդէն նախագահ ճանաչուած Սերժ Սարգսեանին: Այդ դէպքում ինչպէս է Ադրբէջանն օգտուելու:

Եթէ խօսքը կարող է գնալ սահմաններում անկայունութիւն հրահրելու մասին, ապա միթէ պաշտպանութեան նախարար Միքայէլ Յարութիւնեանը չէր յայտարարողը, որ Հայաստանի բանակն ամուր է ու պատրաստ կատարել իր գերագոյն գլխաւոր հրամանատարի առաջադրանքը: Եւ բացի այդ, Վարդան Օսկանեանը տասը տարի աշխատել է արտաքին գործերի նախարար, եւ գոնէ այդ հարցում պէտք է որ լինէր իրապէս տեղեկացուած, որ Ադրբէջանը, ինչպէս որ Հայաստանը, Վրաստանը, կամ այդ կարգի որեւէ այլ երկիր, շատ փոքր է որեւէ այլ երկրի դէմ ռազմական գործողութիւնների մասին որոշումն ինքնուրոյն կայացնելու համար:

Եթէ Վարդան Օսկանեանը մի փոքր մտածէր այդ հարցի մասին, ապա երեւի թէ ձեռնպահ կը մնար այդպիսի պարզունակ հնարք կիրառելուց, երբ ժողովրդին փորձում են սարսափեցնել Ադրբէջանով կամ Թուրքիայով: Բայց մտածելու ժամանակ գուցէ արդէն չկայ, պէտք է օգտագործել ձեռքի կամ լեզուի տակ ընկած ամէն ինչ, քանի դեռ ինչ որ բան կայ:

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ ԵՆ ԳԱՌՆԻԿ ՄԱՐԳԱՐԵԱՆՆ ՈՒ ՍԱՄՈՒԷԼ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԸ

*A1+*, 11:42

Ամբողջ Հայաստանի տարածքում երէկ երեկոյեան ոստիկանութիւնը համատարած խուզարկութիւն է սկսել Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի բոլոր ակտիւիստների, նախընտրական շտաբի պետերի տներում: Այս պահին ոստիկանները Հայրենիք եւ Պատիւ կուսակցութեան նախագահ Գառնիկ Մարգարեանի տանն են, որտեղ խուզարկութիւն են կատարում:

Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբից *Ա1+*-ին տեղեկացրեցին, որ ձերբակալուել են Հայրենիք եւ Պատիւ կուսակցութեան նախագահ Գառնիկ Մարգարեանը եւ Գորիսի նախկին քաղաքապետ Սամուէլ Յարութիւնեանը:

## ՍՈՒՐԷՆ ՍՈՒՐԷՆԵԱՆՑԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ Է

*Lragir.am*, 11:43

Հայաստանի Ոստիկանութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը. «Փետրրուարի 25-ին, ժամը 21.30-ին, ոստիկանութեան աշխատակիցները, օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ հրապարակային միջոցառում կազմակերպելու եւ անցկացնելու համար, Ազատութեան Հրապարակից ոստիկանութեան Կենտրոնականի բաժին բերման են ենթարկել 1975 թ. ծնուած Սուրէն Սուրէնեանցին, որը նոյն օրն Ազատութեան Հրապարակում կազմակերպել եւ անցկացրել էր հրապարակային միջոցառում՝ խախտելով «Ժողովներ, հանրահաւաքներ, երթեր եւ ցոյցեր անցկացնելու մասին» ՀՀ օրէնքի պահանջները, անմիջականօրէն կոչեր ուղղելով ամբոխին՝ ղեկավարել էր նրանց: Փաստի առթիւ ոստիկանութեան Կենտրոնի քննչական բաժնում ՀՀ քր. օր.-ի 225 պրիմ 1 յօդուածի առաջին մասով յարուցուել է քրէական գործ: Սուրէն Սուրէնեանցը ձերբակալուած է»:

## ԱՌԱՋ, ՀԱՅԱՍՏԱՆ

*Lragir.am*, 11:52

Փետրուարի 25-ին Գիւմրիում կայացաւ հանրահաւաք՝ ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի: Հանրահաւաքը, ըստ աւանդոյթի, բոցաշունչ ճառով բացեց մարզի մշակոյթի բաժնի վարիչ, շքանշանակիր Յասմիկ Կիրակոսեանը, որը Գիւմրիում յայտնի է որպէս «տղամարդ կնիկ»: Հաւաքի իսկական պսակը հանդիսացաւ, իհարկէ, քաղաքապետի ելոյթը: Մեդալակիր Վարդան Ղուկասեանը ներկաներին աւետեց, որ «...Մենք մեր ձայնը տուել ենք ոչ նրա համար, որ էս իշխանութիւնները ձիգ պահի իմ աթոռը: Փառք Աստծոյ, ես արդէն պատմութեան մէջ մտած մարդ եմ»: Իր եւ իշխանութեան հասցէին գովեստներ շռայլելուց, եւ, ըստ աւանդոյթի, Աստուածաշնչից մէջբերում անելուց յետոյ, աւարտեց. «Ձեր ցաւը տանիմ: Ջիգեարով»: Գիւմրիի քաղաքապետը, ինչ խօսք, իր ուրոյն տեղը մեր պատմութեան մէջ իրօք ունի: Հայաստանում դժուար թէ գտնուի մէկ այլ այդպիսի աւանդապաշտ գերդաստան, որը սերնդէ սերունդ, պապից մինչեւ թոռ ոստիկանութեան պահոցներում ունենայ այդքան հարուստ արխիւներ: Այդ առումով պատմական դէմք է նաեւ Յասմիկ Կիրակոսեանը, որին «տղամարդ կնիկ» տիտղոսը պատահական չէ կնքած: Մշակութասէր այս տիկինը այն հազուագիւտ հայ կանանցից է, որ ժամանակին դատարանի առաջ է կանգնել՝ մէկ այլ հայ տիկնոջ ծեծի ենթարկելու համար: Ողբամ զքեզ, Սերժ Ազատիչ, զի դորանք են պաշտպաններդ: Առաջ, Հայաստան:

## ՀՅԴ ԸՆՏՐԵԼ Է ԵՐՐՈՐԴ ՁԵՒԸ

*Lragir.am*, 12:23

ՀՅԴ ԳՄ ներկայացուցիչ Արմէն Ռուստամեանը եւ Բիւրոյի անդամ Վահան Յովհաննիսեանն այսօր Ազգային Ժողովում ներկայացրել են ՀՅԴ ԳՄ յայտարարութիւնը: Նրանք պարզաբանել են, որ Գերագոյն Մարմինն իր գնահատականում հիմնուել է բացառապէս միայն կուսակցութեան վստահուած անձանցից ստացուած տեղեկատուութեան վրայ: Նրանք նշել են, թէ չեն վիճարկում փետրուարի 19-ի ընտրութիւնը ընտրական համակարգի երկու հիմնական թերութիւնների պատճառով: Առաջին, չի ապահովուել քուէատուփում եղածի եւ իրական քուէների համապատասխանութիւնը, եւ երկրորդ՝

ընտրական գործընթացի արդարութիւնը վերահսկելը քաղաքական ուժերի եւ հասարակութեան ուժերից վեր է, քանի որ ընտրական օրէնսդրութիւնն անհրաժեշտ մեխանիզմներ չի ապահովում:

Ինչ վերաբերում է իշխող կոալիցիայի հետ ՀՅԴ կնքած համաձայնագրի ճակատագրին, ՀՅԴ ներկայացուցիչները նշել են, որ կոալիցիոն գործակցութիւնը դադարեցնելու երեք ձեւ կայ. առաջին, եթէ լինէին անյաղթահարելի տարաձայնութիւններ, երկրորդ, եթէ լինէր միակողմանի յայտարարութիւն՝ դադարեցնելու մասին, եւ երրորդ՝ գործակցութիւնը դադարեցուէր կողմերի համաձայնութեամբ: ՀՅԴ առաջարկել է կոալիցիոն գործակցութիւնը դադարեցնել երրորդ ձեւով, որ չստացուի, թէ «մենք կատարում ենք այնպիսի քայլ, որն ընդդէմ մէկի է եւ ի շահ՝ միւսի»:

Արմէն Ռուստամեանը եւ Վահան Յովհաննիսեանը յորդորել են մի կողմին՝ բռնի ուժով իշխանափոխութեան փորձ չանել, միւս կողմին էլ՝ յարգել նրանց կարծիքը, ովքեր բաւարար հիմք ունեն կասկածելու ընտրութեան արդիւնքներին: Եւ թող նրանց թշնամի չդիտեն:

ՀՅԴ ներկայացուցիչները կրկին յայտարարել են, թէ իրենք կարող են հանդէս գալ որպէս միջնորդ: Արմէն Ռուստամեանի խօսքով, կոալիցիոն գործակցութիւնը դադարեցնելու ՀՅԴ առաջարկը վերաբերում է նաեւ ՀՀԿ քվոտայով նշանակուած դաշնակցական նախարարներին, չնայած իրենց ընտրած երրորդ ձեւը ենթադրում է բանակցութիւններ եւ քննարկումներ: Իր հերթին, Վահան Յովհաննիսեանն ասել է, որ ինչպէս բոլոր նախորդ ընտրութիւններին, այս անգամ էլ վեց-եօթ-ութ ընտրատարածք խայտառակեցին ընտրութիւնը, եւ իշխանութիւնը պէտք է ռէալ քայլեր ձեռնարկի սա վերացնելու համար: Այս ամէնը հասկանալի է, ասում է Վահան Յովհաննիսեանը, սակայն անտրամաբանական էր ընտրակաշառք բաժանելը: Նա ասում է, թէ իրեն ոմանք ասել են, թէ ինքը պարտուել է, քանի որ Լեւոն Տէր-Պետրոսեանին բաւարար չի աջակցել, ուրիշներն էլ ասում են, թէ պարտուել է, որովհետեւ շատ է աջակցել: Վահան Յովհաննիսեանն ասել է, թէ շատը կամ քիչը կապ չունի, խնդիրն այն է, որ զանգուածային ընտրակաշառք է բաժանուել, եւ ինքը մեղադրում է երեք թեկնածուի կաշառք բաժանելու համար: Վահան Յովհաննիսեանը չի նշել նրանց անունները, սակայն ասել է, թէ դրանք երեք առաջատար թեկնածուներն են: Լրագրողները հարցրել են, թէ կարող են արդեօք ապացուցել, որին ի պատասխան Վահան Յովհաննիսեանն ասել է, թէ իրենք գիտեն, որ բաժանուել է, սակայն չեն կարող ապացուցել:

## ԵՐԹԸ ԴԵՌ ՉԻ ՍԿՍՈՒԵԼ, ՍԱԿԱՅՆ ՀՐԱՊԱՐԱԿԸ ԼԵՑՈՒՆ Է

*A1+*, 12:23

Ժամը 11:00 դեռ չկար, սակայն Ազատութեան Հրապարակում հասցրել էին հաւաքուել ուսանողները: Այն այս պահին գրեթէ լեփ-լեցուն է: Ուսանողութեան երթը մի փոքր ձգձգւում է: Առատ ձիւն էր գալիս, սակայն հրապարակը բազմամարդ էր:

Ազատութեան Հրապարակում, մինչեւ ընդդիմութեան ղեկավարների ներկայանալը՝ ի դէմս Նիկոլ Փաշինեանի, ոստիկանութիւնը որոշեց բարձրանալ հարթակ, ինչին հաւաքուածները արձագանքեցին սուլոցներով:

Դրանից յետոյ ոստիկանները իջան մարդկանց մէջ եւ ասացին երիտասարդներին, որ կազմակերպուելիք երթը անօրինական է եւ պահանջում են անպայման ցրուել: Իսկ

քանի որ իրենց ասածը անարձագանք մնաց, դրանից յետոյ յորդորեցին գոնէ բուհերի կողքերով չանցնեն: Մի փոքր ընդհարում եղաւ մարդկանց եւ ոստիկանների միջեւ, բայց մարդկանց յաջողուեց ի վերջոյ իրենց շարքերից դուրս հանել ոստիկաններին:

Այս ընթացքում բժշկական համալսարանի ուսանողները սպիտակ խալաթներով ներկայացան հանրահաւաքին: *Ա1+*-ի հարցին, թէ արդեօք չե՞ն վախենում այդպէս երեւալ, նրանք պատասխանել են. «Ժամը 14:30 Բաբաջանեանի արձանի մօտից փոքրիկ երթ ենք կազմակերպելու դէպի մեր համալսարան, որ ռեկտորին ասենք, որ չենք վախենում նրանցից»:

Նիկոլ Փաշինեանը ելոյթ ունեցաւ իր խզուած ձայնով եւ ասաց, որ այլեւս պէտք է օգտագործենք խուճապ բառը, որովհետեւ յաղթել ենք եւ խուճապ է առաջացել իշխանութիւնների մօտ, քանի որ մտածում են, որ Սերժ Սարգսեանի հանրահաւաքի մասնակիցները կարող են թողնել եւ միանալ մեզ:

Ի դէպ, հրապարակի կեղտոտ լինելու մասին ցուցադրուող կադրերը չի համապատասխանում իրականութեանը, քանի որ այն մաքրած է: Խաչատուր Սուքիասեանին պատկանող կազմակերպութեան աղբի մեքենաները ամբողջ աղբը հաւաքում եւ տանում են: Իսկ աղբահանութեան աշխատակիցներն էլ ասացին, որ հաւաքուածները աղբը միշտ տոպրակների մէջ են հաւաքում, իրենք տանում են:

## ՀՅԴ ՉԻ ՅԱՆՁՆՒՈՒՄ

*Lragir.am*, 12:35

Այսօր լրագրողները ցանկացել են պարզել, թէ ընդունելով հանդերձ զանգուածային կեղծիքների առկայութիւնը, ՀՅԴ ընդունել է ընտրութեան արդիւնքը, ՀՅԴ ԳՄ անդամ Արմէն Ռուստամեանն ասել է, թէ այո, եղել են համատարած ընտրակեղծիքներ, բայց լեգիտիմութիւնը իրաւական խնդիր է, որը պէտք է ապացուցել, իսկ ապացուցելու մեխանիզմներն անբաւարար են: Իր հերթին, ՀՅԴ Բիւրոյի անդամ Վահան Յովհաննիսեանն ասել է, որ ընտրութիւն է եղել 1923 տեղամասերում, 10-30-ում եղել է բռնութիւն. արդեօք դա հիմք է յայտարարել, թէ բռնութիւնը համատարած է եղել: Արմէն Ռուստամեանի խօսքով, այս ընտրութիւնից յետոյ շատ բան պարզուեց, եւ որեւէ նոր նախագահ չի կարող հաշուի չնստել դրա հետ, եթէ հաշուի չնստի՝ դա հասարակութեան մէջ նոր հիասթափութիւն կ՚առաջացնի, որի հետեւանքը ծանր կը լինի, եւ նման իշխանութիւնը չի կարող կառավարել այդ երկիրը: Վահան Յովհաննիսեանն, իր հերթին, յայտնել է, թէ ՀՅԴ չի յանձնւում, իրենց ծրագիրը լոկալ չէ, ընդգրկուն է, ընդդէմ չի, յանուն է, որի համար էլ յանձնուելու պատճառ չունի: Բացի դրանից, պարտութիւն լինում է արդար մարտում, իսկ անարդար մարտում պարտութիւն չի լինում, որովհետեւ չի լինում նաեւ յաղթանակ:

## ՀՅԴ ՓՈՐՁԵԼՈՒ Է ՁԵՒԱՒՈՐԵԼ ՆՈՐ ՈՐԱԿԻ ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 12:40

Այսօր ՀՅԴ Բիւրոյի անդամ Վահան Յովհաննիսեանը յայտարարել է, թէ հպարտ է այն հարիւր հազար քաղաքացիներով, ովքեր իրենց ձայնը տուել են իրեն, որովհետեւ նրանք այն մարդիկ չեն, ովքեր հարբած պարում են հրապարակում ու նաեւ այն մարդիկ չեն, ովքեր թեկնածուի տան մօտ ծաղկեպսակներ են դնում: Այս ընտրութիւնները պարզել են, որ Հայաստանում կայ 100 հազար նորմալ մարդ: ՀՅԴ փորձելու է ձեւաւորել նոր որակի

ընդդիմութիւն, ինչը հնարաւոր չի լինելու միանգամից անել, հեշտ չի լինելու, տարիներ են պահանջուելու, ասում է Վահան Յովհաննիսեանը:

## ԵԱՀԿ-ԻՑ ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ԱՒԵԼԻ ՕԲԻԵԿՏԻՒ ԼԻՆԵԼ

*A1+*, 12:55

Այսօր Հայաստանի մի խումբ սովորական քաղաքացիներ, հասարակական կազմակերպութիւնների ներկայացուցիչներ ԵԱՀԿ երեւանեան գրասենեակի մօտ բողոքում էին նախագահի ընտրութիւնների վերաբերեալ՝ միջազգային դիտորդական առաքելութեան գնահատականներից.

«Մեզ պէտք է ԵԱՀԿ գործող նախագահը ուշադրութիւն դարձնի, որ մենք ծայրայեղ դժգոհ ենք դիտորդական առաքելութիւնից եւ փաստօրէն մեր յայտարարութիւնները դրա մասին են վկայում: Մենք գտնում ենք, որ իրենց նախնական զեկոյցը իրենց խայտառակեց եւ իրենք փաստօրէն աւելի լարեցին, թէժացրին մթնոլորտը իրենց այդ գործերով: Նախ անտարբեր, երկրորդը բացարձակ սխալ եզրակացութիւններով այն աստիճանի, որ ուղղակի վարկաբեկւում է ամբողջ կազմակերպութիւնը» - այսօր ԵԱՀԿ երեւանեան գրասենեակի մօտ կազմակերպած բողոքի ակցիայի ժամանակ ասաց Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Հայաստանի կոմիտէի համանախագահ Անահիտ Բայանդուրը:

Ինչպէս նշում էին հաւաքուածները իրենք ցանկանում էին ԵԱՀԿ-ին յիշեցնել իրենց առաքելութեան կարեւորութիւնը եւ յորդորելու, որ աւելի օբիեկտիւ լինեն գնահատականների մէջ:

«Մենք ուզում ենք ասել, որ իրենց գնահատականը ուղղակի հրահրում է այս իրավիճակը, ու մեր իշխանութիւնները անում են ամէն ինչ, ինչ իրենց յարմար է: Իրականում այստեղ շատ խիստ ոտնահարւում են մարդու իրաւունքները, իրենց գնահատականի մէջ նրանք դա հաշուի չեն առնում», - ասաց քաղաքացի Լալա Ասլիկեանը:

Ի դէպ, նրանք փաստաթղթեր են ուղարկելու ԵԱՀԿ բոլոր երկրների ներկայացուցչութիւններին եւ կարծում են, որ սա անպայման ուշադրութիւն կը գրաւի, որովհետեւ արտերկրից արդէն զանգահարում են իրենց ու հետաքրքրւում, թէ ինչով կարող են օգտակար լինել:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԸ ԴԻՄԵԼ Է ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆ

*Lragir.am*, 12:59

Այսօր Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի մամուլի քարտուղար Արման Մուսինեանը տեղեկացրել է, որ իրենք դիմել են Սահմանադրական Դատարան՝ ընտրութեան արդիւնքն անվաւեր ճանաչելու համար: Դրա համար կան բոլոր իրաւական հիմքերը, ասել է նա: Արման Մուսինեանը հաւաստել է, որ պայքարը շարունակուելու է, եւ ամէն օր աւելանալու է պետական պաշտօնեաների թիւը, ովքեր միանում են Լեւոն Տէր-Պետրոսեանին:

Իշխանութիւնը չունի քաղաքական պայքարին ընդդիմանալու ձեւ եւ դիմել է բացայայտ բռնութիւնների, ասել է Արման Մուսինեանը: Մասնաւորապէս, այսօր ձերբակալուել են Գառնիկ Մարգարեանը, Սամուէլ Յարութիւնեանը եւ Տէր-Պետրոսեանի Եղուարդի շտաբի պետ Խաչիկ Սիմոնեանը: Տեղեկութիւններ կան, թէ այսօր կարող է

ձերբակալուել նաեւ Գուրգէն Եղիազարեանը: Արման Մուսինեանի խօսքով, ոստիկաններն առանց գրաւոր որեւէ փաստաթղթի այցելում են իրենց մարզային գրասենեակներ, նոյնիսկ Եկմալեան հասցէում գտնուող գրասենեակ եւ պահանջում փակել, պատճառաբանելով, թէ ընտրութիւնն աւարտուել է: Արման Մուսինեանն ասում է, թէ իշխանութիւնն ուզում է այդպիսով ջլատել շարժումը, հարթակից հեռացնել շարժման ղեկավարներին, սակայն դա չի ազդում Ազատութեան Հրապարակում հաւաքուողների վրայ, որոնք օրեցօր շատանում են: Արման Մուսինեանն ասում է նաեւ, որ քաղաքապետարանն ըստ օրէնքի պէտք է շտապ օգնութեան մեքենաներ ուղարկէր Ազատութեան Հրապարակում հացադուլաւորների համար, սակայն պատճառաբանել է, թէ ազատ մեքենաներ չկան:

## ԽՈՒԶԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՐԿՐԱՊԱՀՆԵՐԻ ԲՆԱԿԱՐԱՆՆԵՐՈՒՄ

*Lragir.am*, 13:10

Մեր տեղեկութիւններով, խուզարկութիւններ են կատարւում քիչ թէ շատ ակտիւ երկրապահների բնակարաններում, ինչպէս նաեւ երկրապահական գրասենեակներում, որոնք կնքւում են:

## ԻՍԿ ՆՐԱՆՔ ՇՆՈՐՀԱՒՈՐՈՒՄ ԵՆ

*A1+*, 13:15

Հայաստանի նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի կապակցութեամբ Սերժ Սարգսեանին շնորհաւորել են ԱՄՆ կոնգրէսի հայկական յանձնախմբի համանախագահներ Ֆրենկ Փալովնը եւ Ջօ Նոլենբերգը: Կոնգրէսականների շնորհաւորական խօսքում, մասնաւորապէս, ասուած է.

«Յարգելի նախագահ պարոն Սարգսեան,

Շնորհաւորում ենք Ձեզ 2008 թուականի փետրուարի 19-ին Հայաստանում կայացած նախագահական ընտրութիւններում Ձեր յաղթանակի կապակցութեամբ:

Հայաստանը շարունակում է ապացուցել արդար եւ ազատ ընտրութիւններ անցկացնելու իր յանձնառութիւնը: Միջազգային դիտորդական կազմակերպութիւնները, այդ թւում՝ Եւրոպայում անվտանգութեան եւ համագործակցութեան կազմակերպութիւնը, արձանագրել են թափանցիկ եւ ժողովրդավարական նախագահական մրցարշաւ: Ընտրութիւնների ճշգրիտ անցկացումը նպաստում է հայ-ամերիկեան յարաբերութիւնների խորացմանը եւ բարձրացնում է երկրի միջազգային հեղինակութիւնը՝ որպէս խաղաղ ժողովրդավարական երկիր:

Որպէս Ամերիկայի Միացեալ Նահանգների Ներկայացուցիչների պալատի հայկական հարցով կոնգրէսականների յանձնախմբի համանախագահներ՝ ակնկալում ենք աշխատել Ձեզ հետ՝ օժանդակելով Հայաստանի առջեւ ծառացած խնդիրների լուծմանը:

Յայտնում ենք Ձեզ մեր լաւագոյն բարեմաղթանքները՝ Ձեր նոր պաշտօնի ստանձնման կապակցութեամբ»:

* * *

Սերժ Սարգսեանին՝ նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ, շնորհաւորել է նաեւ Համաշխարհային Բանկի Հայաստանի, Բոսնիա-Հերցեգովինայի, Բուլղարիայի, Խորուաթիայի, Կիպրոսի, Վրաստանի, Իսրայէլի, Մակեդոնիայի, Մոնտենեգրոյի, Մոլդովայի, Նիդերլանդների, Ռումինիայի եւ Ուկրաինայի հարցերով գործադիր

տնօրէնի գրասենեակը: Տնօրէն Հերման Վիջֆելսի ստորագրութեամբ յղուած շնորհաւորագրում, մասնաւորապէս, ասուած է.

«Ցանկանում եմ շնորհաւորել Ձեզ Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ եւ մաղթել Ձեզ նորանոր յաջողութիւններ Ձեր նոր պաշտօնում:

Թոյլ տուէք, օգտուելով պատեհ առիթից, շնորհակալութիւն յայտնել Ձեզ Համաշխարհային Բանկի խմբի տարեկան ժողովին մասնակցութեան համար:

Ես ակնկալում եմ Ձեր եւ Հայաստանի կառավարութեան հետ համագործակցութեան շարունակութիւն»:

**ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹԵԱՆ ՀԵՏ ԿԱՊԵՐԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**
**DEPARTMENT OF INFORMATION AND PUBLIC RELATION**
**ՄԱՄԼՈՅ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ**
**PRESS RELEASE**

Երեքշաբթի, 26-ը փետրուարի, 2008թ.

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է ԱՊՀ գործադիր կոմիտէի նախագահ-գործադիր քարտուղար Սերգէյ Լեբեդեւը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Համոզուած եմ, որ Ձեր մասնագիտական եւ աշխատանքային հարուստ փորձը, խորը գիտելիքներն ու մեծ լաւատեղեակութիւնը կ'ուղղուեն երկրի սոցիալ-տնտեսական զարգացմանը, հանրապետութեան բնակչութեան կենսամակարդակի բարձրացմանը եւ միջազգային ասպարէզում ու Անկախ Պետութիւնների համագործակցութիւնում Հայաստանի դիրքերի ամրապնդմանը:

Վստահութիւն եմ յայտնում ԱՊՀ ամբողջ տարածքում ինտեգրման գործընթացների զարգացման հարցերի լուծմանն ուղղուած համագործակցութեան հարցում:

Ջերմութեամբ եմ յիշում մեր հանդիպումը Երեւանում՝ ընտրութիւնների նախօրէին:

Ամբողջ հոգով ցանկանում եմ Ձեզ՝ մեծարգոյ Սերժ Ազատի, քաջառողջութիւն, երջանկութիւն, բարօրութիւն եւ բոլոր մտայղացումների ու նախաձեռնութիւնների իրականացում՝ ի շահ Հայաստանի ժողովրդի»:

* * *

Հայաստանի Հանրապետութեան նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել ՌԴ դաշնային խորհրդի անդամ, ՌԴ դաշնային խորհրդի եւ ՀՀ Ազգային Ժողովի համագործակցութեան հարցերով միջխորհրդարանական յանձնաժողովի համանախագահ Նիկոլայ Ռիժկովը: Շնորհաւորական ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Թանկագին Սերժ Ազատի,

Սրտանց ուրախ եմ եւ ամբողջ հոգով շնորհաւորում եմ Ձեզ Հայաստանի Հանրապետութեան նախագահի ընտրութիւններում տարած համոզիչ յաղթանակի կապակցութեամբ: Ժողովրդի կողմից տրուած այդ բարձր վստահութիւնը արդիւնքն է մինչ այդ Ձեր ունեցած պետական գործունէութեան, երբ դժուարին պայմաններում յաջողուեց էական յաջողութիւնների հասնել՝ յանուն հայ ժողովրդի բարգաւաճման: Վստահ եմ, որ Հայաստանի եւ Ռուսաստանի միջեւ ժամանակի փորձութեանը դիմացած եղբայրական

կապերը կը դառնան աւելի ամուր, իսկ յարաբերութիւնները մեր ժողովուրդների միջեւ՝ աւելի բեղմնաւոր, բազմակողմանի ու արդիւնաւէտ: Ես գնահատում եմ մեր անձնական յարաբերութիւնների բարձր մակարդակը եւ յոյս յայտնում, որ տարեցտարի դրանք միայն կ'ամրապնդուեն:

Մաղթում եմ Ձեզ՝ թանկագին Սերժ Ազատի, յաջողութիւններ Ձեր դժուարին եւ պատասխանատու աշխատանքում՝ յանուն Հայաստանի աշխատասէր ու տաղանդաւոր ժողովրդի բարօրութեան եւ յետագայ բարգաւաճման: Քաջառողջութիւն, խաղաղութիւն եւ երջանկութիւն եմ ցանկանում Ձեզ»:

## ՀՀ ՔԱՂԱՔԱՑԻՆ ԱՌԱՋԱՐԿՈՒՄ Է

*Lragir.am*, 13:20

Հայի միակ թշնամին պատմութեան ամբողջ ընթացքում եղել է ներքին երկպառակտութիւնը, երբ հասարակութիւնը, ժողովուրդը բաժանուած է եղել երկու, կամ էլ միանգամից մի քանի հակադիր ճամբարների: Ի հակառակ դրա, բոլոր մեծ յաղթանակները տօնել ենք այն ժամանակ, երբ եղել ենք բռունցքուած եւ միասնական: Հայ մեծերից մէկը ժամանակին ասել է. «Հայ ժողովուրդ, քո փրկութիւնը միասնութեանդ մեջ է»:

Անշուշտ, աշխարհի շատ ժողովուրդներ են ապրել ճգնաժամային իրավիճակներում: Բայց դրանցից ամենամեծերը՝ բառիս իսկական իմաստով, դուրս են եկել այդ դրութիւնից աւելի իմաստուն, արժանապատուօրէն եւ դէպի ապագան ուղղուած հայեացքներով: Երկրի ներսում առաջացող բաժանարար գծերի արդիւնքում մենք յաղթողներ չենք ունենալու, կը լինեն միայն պարտուողներ: Իսկ յետադարձ հայեացքով մեղաւորներ որոնելու փոխարէն այսօր պէտք է համախմբուենք՝ ազգային գաղափարների շուրջ:

Կարծում եմ, կարիք չկայ այստեղ վերյիշելու մեր բոլոր համազգային յաղթանակները. դրանք բոլորս ենք յիշում: Բայց համոզուած եմ, որ սթափութեան կոչ է պէտք անել՝ ճակատագրի հեգնանքով բարրիկադների երկու կողմերում յայտնուած մեր հայրենակիցներին: Եւ յիշեցնել, որ թշնամիներ ամենեւին էլ հարկ չկայ որոնել երկրի ներսում, դրանք դրսում էլ բաւական են:

Ցաւօք, երկրի գլխաւոր պաշտօնի համար մրցապայքարը եւ յետագայ ընտրութիւնը վերածուեցին անհաշտ ճամբարների բախման, առանց լայն զանգուածների համար հասկանալի տեսլականների, մտքերի բախման եւ հանրօգուտ բանավէճերի: Ընտրութիւնը՝ ինչը շնորհուած է միայն ԱՔԱՏ եւ ԱՆԿԱԽ ժողովուրդներին, ԸՆՏՐԵԱԼ ժողովուրդներին, մեր իրականութեան մէջ դառնում են «ուժի» եւ «հզօրութեան», բայց ոչ գաղափարների բախման հարթակ:

Երբ զանգուածներին տանում են դէպի բախում, չի լինում այն սթափ ուժը, որը ետ պահի մեզ սխալ քայլերից: Դրա վառ օրինակի ականատեսը կարող ենք լինել եւ այսօր, եթէ այդ սթափ ուժը չգտնուի: Մինչդեռ այս հարցում, եղբայրասպան արիւնահեղութեան զարգացումներով յղի իրականութեան պայմաններում, կայ միակ ճիշտ եւ արդար լուծում. ստեղծել Ազգային Համաձայնութեան Կառավարութիւն՝ հասարակութեան բոլոր ուժերի ներկայացուցիչների մասնակցութեամբ:

Կարծում եմ, սա կը լինի արդարացի ճանապարհ՝ հանդարտեցնելու առկայ լարուածութիւնը եւ նայելու առաջ՝ դէպի լուսաւոր ապագայ: Եթէ մենք պատմութիւնից դասեր

առել ենք, ապա այս մէկը պէտք է լինի դրա առհաւատչեան:
Յարգանքներով՝
ԹԱԹՈՒԼ ՍԱՐԳՍԵԱՆ
ՀՀ քաղաքացի

## ՀԱՑԱԴՈՒԼԱՒՈՐԸ ԲԵՐԱՆՆ Է ԿԱՐԵԼ (video)

*A1+*, 13:38

Ընտրութիւնների արդիւնքները անվաւեր ճանաչելու պահանջով հացադուլ անողների թիւը Ազատութեան Հրապարակում դարձել է 17: Վանաձորցի 50-ամեայ Սարգիս Աւետեանն անգամ կարել է բերանը եւ յայտարարել է, որ չի պատրաստւում քանդել կարերը, քանի դեռ չի ընդունուել իր պահանջը:

Հանրահաւաքի մասնակիցները քիչ առաջ դիմել են առողջապահական միջազգային կազմակերպութիւններին, որպէսզի նրանք բժշկական օգնութիւն ցուցաբերեն հացադուլաւորներին: Հայաստանեան իշխանութիւններն արդէն երրորդ օրը հացադուլի մէջ գտնուող քաղաքացիներին այդ օգնութիւնը չեն տրամադրում:

## ՆՈՐ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ

*A1+*, 13:38

Այսօր առաւօտեան ժամը 5-ին ոստիկանութեան աշխատակիցները ներխուժել են Հանրապետութիւն կուսակցութեան անդամ, Կոտայքի մարզում Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի պատասխանատու Խաչիկ Սիմոնեանի բնակարան եւ նրան բերման ենթարկել բաժին: Ի դէպ, Խաչիկ Սիմոնեանը ոստիկանութիւնից ծանուցագիր չէր ստացել եւ չէր հրաւիրուել բաժին:

Այսօր ձերբակալուել է նաեւ Հանրապետութեան մէկ այլ անդամ Յուսիկ Բաղդասարեանը:

## ՆՐԱՆՑ ՍՊԱՍՈՒՄ ԵՆ ՀԱԿԱԳԱԶԵՐՈՎ

*A1+*, 13:39

Հանրապետութեան Հրապարակը պատրաստւում է Սերժ Սարգսեանի հանրահաւաքին: Դրօշակներ, աւտոբուսներ, ոստիկաններ՝ զինուած հակագազերով. ահա այս պատկերն է հիմա հրապարակում:

Ճանապարհային ոստիկանութեան աշխատակիցների կողմից փակուած են հրապարակ տանող բոլոր ճանապարհները, աւտոմեքենաները ստիպուած են շրջանցել կամ յետ դառնալ եկած ճանապարհով: Հրապարակի կէսից աւելին բեմահարթակ է տեղադրուած, իսկ շրջակայքում այս պահի դրութեամբ կան երեք աւտոբուս: Բարձր երաժշտութիւն է միացուած հրապարակում, սակայն մի պահ, երբ վերջացաւ երաժշտութիւնը միացաւ յաջորդը՝ Բեթհովէնի *Յաղթական* սիմֆՕոնիան, որը օգտագործւում է Լեւոն Տէր-Պետրոսեանի քարոզարշաւի ընթացքում: Մի քանի րոպէ հնչելուց յետոյ, միացնողները յանկարծ կռահեցին այդ ու անմիջապէս անջատեցին այն: Յատուկենտ մարդիկ կարելի է տեսնել այնտեղ:

Ի դէպ, կառավարութեան շէնքի յետնամասում սպասում են եօթից աւելի աւտոբուսներ՝ ոստիկաններով լցուած, ինչպէս նաեւ մի քանի ոստիկանական աւտոմեքենաներ:

Աւելացնենք, որ ամբողջ հանրապետութիւնն է զգում, որ Սերժ Սարգսեանը միտինգ է անելու. դպրոցներն ու մանկապարտէզները փակւում են, աշխատակիցներին ստիպում են գնալ հանրահաւաքի: Բուհերի առաջ կանգնած են ոստիկաններ, որոնք հսկում են ուսանողներին ու նրանց թոյլ չեն տալիս դուրս գալ: Իսկ աւտօբուսները պատրաստ սպասում են ուսանողներին տեղափոխելու միայն Հանրապետութեան Հրապարակ:

## ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇԱՐՔԵՐ ԲՈՒՀԵՐԻ ԱՌՋԵՒ

*Lragir.am*, 13:52

Այս պահին Երեւանում, բոլոր բուհերի մօտ կանգնած են ոստիկանութեան ստորաբաժանումները, որոնք կրում են մահակներ եւ վահաններ:

## ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 13:56

2007 թուականի Ազգային Ժողովի ընտրութիւններից յետոյ հասարակութեան համբերութեան բաժակը լցուած էր: Կար հնարաւորութիւն համախմբել մեր հասարակութիւնը, ընդդիմադիր դաշտը, համերաշխութեան մթնոլորտում եւ ազգային, ժողովրդավարական, օրինականութեան, արդարութեան գաղափարների վրայ հիմնուելով ձեւաւորել նոր որակի իշխանութիւն, նոր որակի Հայաստան: Երկիրը պատրաստ էր դրան: Բայց այդպէս չեղաւ: Օգտուելով համընդհանուր դժգոհութիւնից, որը կուտակուել էր հասարակութիւնում նախորդ 13 տարիների ընթացքում՝ ատելութեան ալիքի վրայ առաջ մղուեց նախկին նախագահը, ստանալով իր ստեղծած համակարգում մնացած եւ այդ համակարգից օգտուող մարդկանց որոշակի հատուածի օժանդակութիւնը: Հրապարակ եկաւ նոր բանաձեւ «ընտրէք չարեաց փոքրագոյնին», որից, իրենց կարծիքով, վարպետօրէն սկսեցին օգտուել նաեւ իշխանութիւնները: Այժմ երկու կողմերն էլ ծուղակի մէջ են, ծուղակը գցելով նաեւ ողջ հասարակութեանը: Արհեստականօրէն առաջ քաշուած բանաձեւը, որ ոչ թէ ընտրւում է երկրի նախագահ, ոչ թէ ընտրւում է երկրի ապագան, այլ ընտրւում է «չարեաց փոքրագոյնը», «հիմնաւորելով», որ միայն չարիքը կարող է կուտակել ուժ՝ շփոթութեան մէջ գցեց մեր հասարակութեանը: Ժողովրդին հոգեբանօրէն պարտադրուեց որոշել, թէ ում միջոցով ում չէզոքացնել: Այդպիսի մտածողութիւնը ոչ մի դէպքում չի կարող նպաստել երկրի զարգացմանը, օրինականութեան եւ արդարութեան հաստատմանը: Դա էապէս ազդեց այս ընտրութիւնների արդիւնքների վրայ: Այդ շփոթուածութիւնը շարունակւում է մինչ այժմ՝ բորբոքելով բոլոր այն ազնիւ մարդկանց, որոնք ուզում են տեսնել արդարութիւն մեր երկրում:

Այս մթնոլորտում տեղի ունեցան 2008 թ. նախագահական ընտրութիւնները, եւ ինչպէս մինչ այժմ եղած ընտրութիւնները, անցան մեզ արդէն ծանօթ բազմաբնոյթ, անընդունելի խախտումներով, որոնց երկիրը կործանող շղթան սկսուել է 1995 թուականից եւ ձգւում է մինչեւ այսօր: Մեր վստահուած անձինք արձանագրել են բազմաթիւ խախտումներ ընտրութիւնների ընթացքում: Մենք չպահանջեցինք վերահաշուարկել որոշ տեղամասերի արդիւնքներ, քանի որ միւս թեկնածուների կողմից արդէն ներկայացուած էր պահանջ 159 տեղամասերի վերաբերեալ, իսկ օրէնքով սահմանուած ժամկէտում աւելին բացել հնարաւոր չէր (իրականում 159-ից հասցրեցին կազմակերպել միայն 134-ի ստուգումը): Մեր ձեռքի տակ եղած բոլոր փաստերը ցոյց են տալիս թէ ինչ

անընդունելի խախտումներ են տեղի ունեցել ընտրութիւնների ընթացքում, բայց դրանք մեզ չեն տալիս բաւարար իրաւական հիմք՝ բողոքարկելու ընտրութիւնների արդիւնքները Սահմանադրական Դատարանում:

Այժմ յետընտրական պայքարը շարունակւում է: Մի կողմից ամէն գնով իշխանութիւնը պահելու ձգտումը, միւս կողմից կուրացնող ատելութեան ալիքի վրայ ամէն գնով իշխանութեան հասնելու մոլուցքը տանում են մեր հասարակութեանը դէպի փակուղի՝ վտանգելով մեր երկրի եւ մեր ժողովրդի ապագան: Հասունացել է պահը սթափ գիտակցելու ստեղծուած իրավիճակը: Իրական պայքարը յանուն ժողովրդավարական Հայաստանի առջեւում է, եւ ես շնորհակալութիւն յայտնելով ինձ ընտրողներին եւ համախոհներին, որոնց թիւը անհամեմատ մեծ է քան պաշտօնապէս արձանագրուած տուեալները, կոչ եմ անում միասին փնտրել ուղիներ դուրս բերելու մեր երկիրը այս փակուղուց դէպի իրական զարգացում:

Վազգէն Մանուկեան

## «ՍԱ ՈՒՂՂԱԿԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵՌՈՐ Է»

*A1+*, 14:13

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի մամուլի քարտուղար Արման Մուսինեանը չի կարողանում հասկանալ, թէ ինչ հիմնաւորումներով են ձերբակալում իրենց կողմնակիցներին. «Օրինակ, Խաչատուր Սուքիասեանի մեքենան խուզարկել են անօրինական ձեւով: Դա պատգամաւորի մեքենայ է եւ իրաւունք չունէին: Գտել են զէնք, որը օրինական է, գտել են զրահաբաճկոնը, որը մարդը իրաւունք ունի կրի եւ պաշտպանուի: Բայց նրանք նոյն այդ զրահաբաճկոնը շատ տարօրինակ ձեւով են ներկայացնում», - ասաց: Արման Մուսինեանը հաւաստիացրեց, որ միւս ձերբակալուածների մօտ յայտնաբերուած զէնքերը եւս օրինական են եղել:

Նախընտրական շտաբը, ըստ Մուսինեանի, դիմել է նաեւ Մարդու Իրաւունքների պաշտպանին. «Մի քանի հարցով դիմել ենք եւ որոշ դէպքերում արձագանք եղել է: Երէկ մենք դիմել ենք մեր նախընտրական շտաբերի փակման հետ կապուած: Պարոն Յարութիւնեանը խոստացել է արձագանքել:

Անդրադառնալով այն քաղաքապետրանի յայտարարութիւններին, թէ իբր Ազատութեան Հրապարակը աղտոտում են նստացոյցի մասնակիցները, Մուսինեանը ասաց. «Նախ մեր կամաւորները ամէն օր տարածքը մաքրում են: Բացի այդ տարածքը մաքրող համայնքային աշխատողներին ոստիկանութիւնը արգելում է մտնել տարածք: Այսինքն՝ ոստիկանութիւնը ցանկանում է, որ սանիտարահիգենիկ վիճակը լինի վատ: Բայց մեր կամաւորները ամէն առաւօտ մաքրում են տարածքը»:

Մուսինեանի կարծիքով շատ կարեւոր էր Լեւոն Տէր-Պետրոսեանի երէկուայ հանդիպումը ԵԽ Նախարարների կոմիտէի նախագահ Եան Կուբիշի հետ. «Ես կարծում եմ Եան Կուբիշը տիրապետում է Հայաստանում տիրող իրական իրավիճակին, նաեւ շնորհիւ Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ հանդիպման: Առաջին օրերին այն լրատուական բլոկադան, որ իշխանութիւնը ստեղծել էր, որ մենք արտաքին աշխարհին չկարողանանք հասցնել տեղակատուութիւն, ես կարծում եմ մենք այդ բլոկադան ճեղքեցինք եւ հիմա արդէն թէ եւրոպական, թէ ամերիկեան, թէ ռուսական պաշտօնական շրջանակներում արդէն տեղեկատուութիւնն առկայ է: Այն որ Եան Կուբիշը երէկ յայտարարեց, որ բռնութիւնը անթոյ-

լատրելի է, որ պէտք է բացառել ժողովրդի նկատմամբ բռնութեան որեւէ կիրառում, դա արդէն իսկ արձագանք էր»:

Մուսինեանը հաստատեց այն տեղեկատուութիւնը, որ ներկայումս հանրապետութիւնով մէկ խուզարկութիւններ են ընթանում. «Սա ուղղակի քաղաքական տեռոր է: Այս իշխանութիւնները օրէնքի առումով որեւէ սրբութիւն չունեն»: Ըստ մամուլի քարտուղարի ունեցած տեղեկութիւնների այս պահին շրջափակուած է ԱԱԾ-ի պետի նախկին տեղակալ, շարժման մասնակից Գուրգէն Եղիազարեանի բնակարանը:

## «ՄԻԱԿ ԵԼՔԸ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆՆ Է»

*A1+*, 14:34

«Ես հասկանում եմ, որ իրավիճակը այս պահին բաւականին բարդ է, ընտրութիւնները, որոնք տեղի ունեցան անցեալ շաբաթ բողոքարկւում են ընդդիմութեան լիդէրների կողմից: Իմ ուղերձն է, որ Հայաստանը պէտք է ելքն ապահովի քաղաքական երկխօսութեան միջոցով», - այսօր ՀՀ ԱԳՆ-ում յայտարարեց ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի ԱԳ նախարար Իլկա Կաներվան:

Լրագրողներն այսօր հետաքրքրուեցին, թէ ԵԱՀԿ նախագահը որքանով է տեղեակ ՀՀ-ում ընտրութիւններից առաջ, բուն ընտրութեան օրը եւ յետընտրական շրջանում տեղի ունեցած կեղծիքներին, բռնութիւններին, քաղաքական ձերբակալութիւններին: Կաներվան վստահեցրեց, որ բաւականին մանրամասն տեղեակ է ինչպէս ընտրութեան օրը տեղի ունեցած գործընթացներին, նաեւ նախընտրական շրջանում տեղի ունեցած իրադարձութիւններին եւ ասաց. «Քաղաքական մեծամասնութիւնը պէտք է գործի օրէնքի ոգով եւ յարգի այն: Կարծում եմ, որ սա միակ ճանապարհն է, որը կը բերի յաջողութեան»:

Իլկա Կաներվան ընդգծեց, որ ինքը հիմք է ընդունում ԵԱՀԿ դիտորդների զեկոյցը, որը դեռ նախնական է եւ աւելացրեց. «Լաւ չէ, որ վերջնական զեկոյցը կը լինի ընտրութիւններից 2 ամիս յետոյ, սակայն նախնական զեկոյցը պարունակում է ինչպէս դրական, այնպէս էլ բացասական տարրեր»: ԵԱՀԿ գործող նախագահը յիշեցրեց, որ վերջնական զեկոյցը կը լինի ապրիլի կէսերին՝ ասելով. «Մենք շատ հեշտութեամբ կը հետեւենք ընտրական զարգացումներին: Ես վստահ եմ, որ ԵԱՀԿ դիտրորդները շատ լաւ կը կատարեն իրենց աշխատանքը»:

ԵԱՀԿ նախագահը նաեւ նշեց, որ տեղեակ է, որ կոնկրէտ տեղամասերում ընտրութեան արդիւնքները վերահաշուարկելու համար Տէր-Պետրոսեանի շտաբը 300 դիմում է ներկայացրել, սակայն ընդամէնը 2-ն են բացել: Պարոն Կաներվան հաստատեց ընտրութիւններում կեղծիքների առկայութիւնը, այս մասին նա զրուցել է նաեւ ՀՀ պաշտօնեաների հետ հանդիպման ընթացքում. «Որոշ դիտողութիւններ եղել են այդ հարցի վերաբերեալ: Խնդիրն այն է, թէ այդ խախտումները որքանով են ազդել ընտրութիւնների արդիւնքների վրայ: Այդ հարցի վերաբերեալ յղումներ կը լինի ԵԱՀԿ դիտորդների վերջնական զեկոյցում»:

ԵԱՀԿ գործող նախագահ Իլկա Կաներվան ու ՀՀ ԱԳ նախարար Վարդան Օսկանեանն այսօրուայ հանդիպմանը քննարկել են հիմնականում 2 հարց՝ ՀՀ նախագահի ընտրութիւնները եւ ԼՂ հիմնախնդրի ներկայիս վիճակը եւ հնարաւոր զարգացումները: Նա ընդգծեց, որ ԵԱՀԿ-ն պատրաստ է աջակցել ԼՂ հիմնախնդրի կարգաւորման խաղաղ բանակցութիւններին երկու երկրների նախագահների մակարդակով: Ի դէպ, *A1+*-ն այսօր

հնարաւորութիւն չունեցաւ հարց ուղղել ԵԱՀԿ գործող նախագահին. Վարդան Օսկանեանը շատ սիրալիր ներողութիւն խնդրեց եւ ասաց, որ իրենց սպասում է Ռոբերտ Քոչարեանը:

## ՀՅԴ ԴՈՒՐՍ ԳԱԼՆ ԸՍՏ ԳԱԼՈՒՍՏ ՍԱՀԱԿԵԱՆԻ

*Lragir.am*, 15:01

ՀՀԿ փոխնախագահ Գալուստ Սահակեանն այսօր իր կարծիքն է յայտնել կօալիցիոն գործակցութիւնը դադարեցնելու Դաշնակցութեան յայտարարութեան մասին: Նա նշել է, թէ ընտրութիւնից յետոյ Հայաստանի քաղաքական դաշտն առողջացած է դուրս գալու: Յիշեցնենք, որ ՀՅԴ պատգամաւոր Ալվարդ Պետրոսեանն իր ասուլիսներից մէկում ասել էր, թէ վաղ թէ ուշ բոլորն իրենց դուռն են գնալու:

## ԳԱԼՈՒՍՏ ՍԱՀԱԿԵԱՆԸ ՀԱՐԹԱԿՈՒՄ ԿԱՆԳՆԱԾՆԵՐԻՆ ԱՆՈՒԱՆՈՒՄ Է ՀԱՅՐԵՆԱԴԱՒ

*Lragir.am*, 15:02

Այսօր յետընտրական իրավիճակը գնահատել է ՀՀԿ փոխնախագահ Գալուստ Սահակեանը: Նրա գնահատմամբ, կան որոշ անհասկանալիութիւններ, սակայն իրավիճակն ընդհանուր առմամբ լարուած չէ: Գալուստ Սահակեանն ասել է, թէ իրենք հասել են իրենց նպատակին եւ հաւաքել են 800 հազար ձայն: Ինչ վերաբերում է Ազատութեան Հրապարակի հանրահաւաքներին, Գալուստ Սահակեանը կարծում է, թէ հարթակին կանգնած են հայրենադաւներ, որոնք պէտք է հեռացուեն այնտեղից, եւ դրանցով պէտք է զբաղուեն համապատասխան լիազօրութիւն ունեցող մարմինները:

Լրագրողները հետաքրքրուել են ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի այսօրուայ հանրահաւաքի մասին, հարցնելով, թէ եթէ ասում են ժողովուրդն իրենց կողքին է, ումից են պաշտպանւում: Գալուստ Սահակեանը պատասխանել է, թէ իրենք ուզում են ժողովրդին պաշտպանել հրապարակի 5-6 հազար մարդկանցից, ովքեր նոյնպէս ժողովուրդ են, բայց մոլորուած են, պիցցա են բաժանում, դրա համար էլ գնում են: Գալուստ Սահակեանի խօսքով, Լեւոն Տէր-Պետրոսեանը չի ուզում նախագահ դառնալ, նա կատարում է գազի ու նաւթի մագնատների պատուէրը, որ ԼՂ հարցը շուտ լուծուի, եւ նրանց շահոյթն աւելանայ:

Լրագրողները Գալուստին յիշեցրել են, որ իրենց թեկնածուն էլ է յայտարարել Ղարաբաղի խնդիրը շուտափոյթ լուծելու մասին: Ընդ որում, լրագրողները Գալուստին երկու անգամ են յիշեցրել այդ բանը, սակայն նա կոնկրէտ պատասխան չի տուել: Փոխարէնը, նա Տէր-Պետրոսեանի թիմին անուանել է թալանի պրոֆեսորներ: Երբ լրագրողները յիշեցրել են Գալուստին, որ նրանք 1995-ին այդ պրոֆեսորների կողքին էին, Գալուստը իրենց այն ժամանակուայ դիրքը բացատրել է քաղաքացիական պատերազմից խույս տալու հրամայականով:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԱՆՐԱՀԱՒԱՔԻՑ ՄԱՐԴԻԿ ԳՆՈՒՄ ԵՆ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ

*Lragir.am*, 15:09

Երեւանի Հանրապետութեան Հրապարակում մեկնարկել է ի պաշտպանութիւն Սերժ

Սարգսեանի հանրահաւաքը, որի մասնակիցները սակայն երթով միանում են Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքին:

## ՈՒՍԱՆՈՂՆԵՐԻՑ ՎԱԽԵՆՈ՞ՒՄ ԵՆ (video)

*A1+*, 15:12

Այսօր առաւօտուանից Երեւանի ուսումնական բոլոր հաստատութիւնների մօտ ոստիկաններ են կանգնած, որոնց թիւը ամէն հաստատութեան մօտ անցնում էր 30-ից: Ոստիկանների մի մասը տեղաւորուած էր Գազէլների, աւտոմեքենաների մէջ, իսկ միւսներն էլ շրջում էին հաստատութիւնների կողքերով, իրենց խօսքերով, հասարակական կարգը պահպանելու համար: «Քանի որ երիտասարդները շատ դիւրագրգիռ են եւ կարող են կռիւ հրահրել», - ասաց ոստիկաններից մէկը:

Երեւանի պետական մանկավարժական համալսարանի ուսանողները նշում էին, որ ոչ-ոք չի կարող իրենց կամքին բռնանալ, նոյնիսկ ոստիկանները, որոնց թիւը, իրենց խօսքերով, անցնում է ուսանողներից:

Ուսանողները նշում էին, որ այս ոստիկանները հաւաքուել են այստեղ, որպէսզի այն ուսանողները, որոնք կը բոյկոտեն մասնակցել հանրահաւաքի, ստիպողաբար տանեն:

«Մեզ արգելում են մասնակցել Լեւոն Տէր-Պետրոսեանի կազմակերպած հանրահաւաքներին, սակայն Սերժ Սարգսեանի այսօրուայ կազմակերպած հանրահաւաքին զոռով են տանում: Իսկ եթէ չմասնակցենք այս հանրահաւաքին, ասել են, որ չենք ստանայ քննութիւն եւ ստուգարք», - ասաց ուսանող Աշոտը:

Ըստ նրա՝ իրենց նոյնիսկ այսօր ստիպել են գրանցել իրենց անունները յատուկ ցուցակում, որպէսզի պարզ լինի, թէ ով է իրենց կողմից եւ քանի ուսանող է լինելու հանրահաւաքին:

Իսկ Արմէն Խաչատրեանն էլ նշում է, որ իրենց ֆակուլտէտում շատ կան մարզերի ուսանողներ, սակայն նրանք չեն կարողանում դասի գալ միայն այն պատճառով, որ չեն թողնում մարզերից Երեւան գալ. «Նրանք վախենում են, որ ուսանողները Երեւան են գալիս առաջին նախագահի կազմակերպած հանրահաւաքներին մասնակցելու համար»:

Իսկ Պետական Համալսարանում շատ խիստ է դրուած բացակայութիւնների հարցը: Ուսանողները նշեցին, որ ցանկացած ժամանակ գալիս են ու ստուգում ուսանողներին՝ ներկայ-բացակայ անելով: Ինչպէս ուսանողներն էին նշում, իրենց նոյնիսկ ասել են, որ եթէ ընդդիմութեան մասնակցեն հանրահաւաքին, կը հեռացուեն համալսարանից:

Ֆիզկուլտինստիտուտի ուսանողներն էլ նշեցին, որ իրենց դասախօսներն են խնդրել մասնակցել Սերժ Սարգսեանի հանրահաւաքի՝ պատճառաբանելով, որ նրանց թուից է կախուած իրենց յետագայ աշխատանքը:

Ի դէպ, համարեայ բոլոր բուհերի ուսանողներն էլ նշում էին, որ չեն ցանկանում իրենց հայրենիքում ստրուկ լինել: Նրանցից ոմանք էլ նշեցին, որ թէեւ ստորագրել են, որ մասնակցելու են Սերժ Սարգսեանի հանրահաւաքին, բայց գնալու են Ազատութեան Հրապարակ՝ մասնակցելու իրենց «նախագահի» հանրահաւաքին:

## ՆԱՄԱԿ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԵՏԻՆ

*Lragir.am*, 15:20

Հայաստանի Մարդու Իրաւունքի պաշտպանի գրասենեակի լրատուական ծառայու-

թիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը. «Փետրուարի 25-ին ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի ներկայացուցիչը ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանին հասցէագրուած իր դիմումում յայտնել է, որ ս.թ. փետրուարի 25-ին, ժամը 16:00-ի սահմաններում Երեւան քաղաքի Եկմալեան 16 հասցէում գտնուող Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբ են այցելել ոստիկանութեան մի խումբ աշխատակիցներ եւ գրասենեակը փակելու բանաւոր պահանջ ներկայացրել: Դիմումատուն յայտնել է նաեւ, որ արդէն մի քանի օր է, ինչ հանրապետութիւնով մէկ հարկադրաբար փակւում են Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբերը եւ ենթաշտաբերը, մասնաւորապէս Բերդում (Տաւուշի մարզ), Վարդենիսում (Գեղարքունիքի մարզ), Երեւանում:

Ելնելով վերոգրեալից եւ ղեկավարուելով «Մարդու Իրաւունքների պաշտպանի մասին» ՀՀ օրէնքի 12-րդ յօդուածի 1-ին մասի 3-րդ կէտի պահանջներով, Արմէն Յարութիւնեանը դիմել է ՀՀ Ոստիկանութեան պետ Հ. Յարութիւնեանին առաջարկելով յանձնարարել ստուգել դիմումում նշուած տեղեկութիւնները եւ պարզաբանումներ տալ դրանց կապակցութեամբ»:

## ՄԱԼԵԱՆ-ՄԱԹԵՒՈՍԵԱՆԻ ԴԱՍԵՐԸ

**ԲԱԳՐԱՏ ԽԵՐՈՅԵԱՆ**

*Lragir.am*, 15:26

Հայաստի աղբիւրներից տեղեկացանք, որ Հանրապետութեան Հրապարակը այսօր պէտք է վերածուէր մարդկութեան պատմութեան ամենաբազմամարդ հաւաքատեղին եւ, փաստօրէն, եւս մէկ անգամ, համազգային շուրջպարից յետոյ, հայ ժողովուրդը ապացուցելու է իր համաշխարհային ազգ լինելու փաստը: Մեզ, ցաւօք, չյաջողուեց ճշտել, թէ արդեօք այս փառայեղ միջոցառմանը մասնակցելու են «Գինեսի գրքի» ներկայացուցիչները կամ, գոնէ, հոլիվուդեան շովներ կազմակերպող համաշխարհային դէմքերը՝ առաջինները միջոցառումը լեգիտիմացնելու, իսկ երկրորդները՝ փորձի փոխանակման, իմա, դասեր քաղելու նպատակով: Բայց եւ այնպէս, պէտք է նշել, որ մեր այս փառայեղ միջոցառման կազմակերպիչները դասեր քաղել են հէնց մեր դասականներից, մասնաւորապէս Մալեան–Մաթեւոսեան զոյգի գլուխգործոցից՝ «Մենք ենք, մեր սարերը» ֆիլմից: Կարծում եմ, պէտք չէ յիշեցնել հայ ժողովրդին այն հանճարեղ կադրերը, երբ ոչխարի հոտը քշւում էր քաղաք՝ մթերման, ինչպէս նաեւ այդ ճանապարհին քաշի կորուստի մասին Պաւլէի եզրայանգումները: Համաձայն մեր աղբիւրների, մեր այս փառայեղ միջոցառման կազմակերպիչները՝ դէպի մայրաքաղաք ճանապարհին կենդանի քաշի կորուստից խուսափելու նպատակով, պլան են դրել միջքաղաքային «գծերի» տէրերի վրայ պայմանով՝ կամ ապահովել բաւարար գլխաքանակ, կամ զրկուել խիստ շահութաբեր «գծերից»:

## ԱՐՄԷՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԸ ՀԱՆԴԻՊԵԼ Է ՀԱՑԱԴՈՒԼԱՒՈՐՆԵՐԻՆ

*A1+*, 15:32

ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի յանձնարարութեամբ ստեղծուած աշխատանքային խումբը Երեւան քաղաքի Ազատութեան Հրապարակում հանդիպել է փետրուարի 24-ից անժամկէտ հացադուլ յայտարարած թուով 10 անձանց: Հանդիպման

ընթացքում պարզուել է, որ հացադուլ յայտարարած անձանց մի մասը տառապում են տարբեր տեսակի հիւանդութիւններով եւ ցանկացած պահի կարող է առաջանալ շտապ բժշկական միջամտութեան կարիք:

Հաշուի առնելով այն հանգամանքը, որ ՀՀ Սահմանադրութեան 38 յօդուածի համաձայն, իւրաքանչիւր ոք ունի օրէնքով սահմանուած եղանակներով բժշկական օգնութեան եւ սպասարկում ստանալու իրաւունք, ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպան Արմէն Յարութիւնեանը պաշտօնական նամակով դիմել է Երեւանի Քաղաքապետին առաջարկելով յանձնարարել Երեւանի քաղաքապետարանի առողջապահութեան համապատասխան ստորաբաժանմանը կարգաւորել հացադուլ յայտարարած անձանց բժշկական օգնութիւն տրամադրելու հարցը, ինչպէս նաեւ սահմանել բժշկական հերթապահութիւն: Այս մասին յայտնում է օմբուդսմէնի գրասենեակի տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի բաժինը:

## ՕՄԲՈՒԴՍՄԷՆԸ ԴԻՄԵԼ Է ՈՍՏԻԿԱՆԱՊԵՏԻՆ

*A1+,* 15:32

ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի ներկայացուցիչը ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանին հասցէագրուած իր դիմումում յայտնել է, որ ս.թ. փետրուարի 25-ին, ժամը 16:00-ի սահմաններում Երեւան քաղաքի Եկմալեան 16 հասցէում գտնուող Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբ են այցելել ոստիկանութեան մի խումբ աշխատակիցներ եւ գրասենեակը փակելու բանաւոր պահանջ ներկայացրել:

Դիմումատուն յայտնել է նաեւ, որ արդէն մի քանի օր է, ինչ հանրապետութիւնով մէկ հարկադրաբար փակւում են Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբերը եւ ենթաշտաբերը, մասնաւորապէս Բերդում (Տաւուշի մարզ), Վարդենիսում (Գեղարքունիքի մարզ), Երեւանում:

Ելնելով վերոգրեալից եւ ղեկավարուելով «Մարդու Իրաւունքների պաշտպանի մասին» ՀՀ օրէնքի 12-րդ յօդուածի 1-ին մասի 3-րդ կէտի պահանջներով, Արմէն Յարութիւնեանը դիմել է ՀՀ Ոստիկանութեան պետ Հայկ Յարութիւնեանին առաջարկելով յանձնարարել ստուգել դիմումում նշուած տեղեկութիւնները եւ պարզաբանումներ տալ դրանց կապակցութեամբ: Այս մասին յայտնում է օմբուդսմէնի տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի բաժինը:

## ՄԻԱԿ-Ը ՅԱՅՏԱՐԱՐՈՒՄ Է

*Հետք*, 15:34

Միացեալ Ազատական Ազգային Կուսակցութիւնը (ՄԻԱԿ) շնորհաւորում է Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիներին՝ փետրուարի 19-ին կայացած ազատ, մրցակցային ե մասնակցային աննախադէպ ակտիւ նախագահական ընտրութիւնների կապակցութեամբ, որտեղ ընտրողների ազատ կամարտայայտման արդիւնքում ընտրութիւնների առաջին փուլում ՀՀ նախագահ է ընտրուել Սերժ Սարգսեանը:

ՄԻԱԿ-ը ողջունում է ընտրութիւնների կազմակերպման եւ անցկացման հարցում արձանագրուած էական առաջընթացը, ինչի մասին վկայում է նաեւ միջազգային դիտորդական առաքելութիւնների նախնական եզրակացութիւնը: Ընտրական համակարգի

յետայսու բարելաւումը համարելով առանցքային Հայաստանի յետագայ ժողովրդավարացման գործընթացներում, ՄԻԱԿ-ը կիսում է արձանագրուած բացերը շտկելուն ուղղուած յետագայ քայլերի անհրաժեշտութիւնը, ինչպէս նաեւ՝ գրանցուած խախտումների հեղինակներին օրէնքի ողջ ուժով պատասխանատուութեան ենթարկելու քաղաքական կարեւորութիւնը:

Շնորհաւորելով Սերժ Սարգսեանին ՀՀ բարձրագոյն պետական պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ՝ ՄԻԱԿ-ը համոզուած է, որ հանրային լայն վստահութիւնը, լեգիտիմութեան բարձր աստիճանը եւ նկատելի քաղաքական կամքը բաւարար նախապայման են Հայաստանը տանելու համարձակ բարեփոխումների ճանապարհով՝ արդիւնաւէտօրէն դիմագրաւելու ներքին եւ արտաքին բոլոր մարտահրաւէրները՝ գործողութիւնների կենտրոնում ունենալով ՀՀ քաղաքացու բարեկեցութիւնը եւ նրա անվտանգութիւնը: Մենք ողջունում ենք իր աջակիցների հրաւիրած հանրահաւաքում ՀՀ նորընտիր նախագահ Սերժ Սարգսեանի համագործակցութեան կոչը եւ պատրաստակամութիւնը՝ ներգրաւելու բոլոր առողջ քաղաքական ուժերին ու հասարակական միաւորումներին երկրի առջեւ ծառացած խնդիրների լուծման գործում՝ յանուն Հայաստանի առաջընթացի:

Ընտրութիւններում կրած պարտութիւնը ընդունելու քաղաքական կամքի բացակայութիւնը, հանդուրժողականութեան եւ այլակարծութեան մերժումը, քարոզուող ատելութիւնը եւ թշնամութիւնը, քաղաքական նեղ շահերից ելնելով հասարակութիւնը երկփեղկելու եւ երկրի կայունութիւնը խաթարելուն ուղղուած արհեստական քայլերն իրական մարտահրաւէր են հայաստանեան փխրուն ժողովրդավարութեանը: Ժողովրդավարութիւնը Հայաստանում այլընտրանք չունի: ՄԻԱԿ-ը, որպէս ապագայի քաղաքական ուժ, վստահ է, որ հասարակութեան եւ քաղաքական ուժերի ջանքերով պատուով կը յաղթահարենք ժողովրդավարութեանը նետուած այս լուրջ մարտահրաւէրը, եւ կոչ է անում քաղաքական ու հասարակական բոլոր դերակատարներին, մեր քաղաքացիներին առաջնորդուել ետընտրական բեւեռացումը կանխելու, ներքին լարուածութիւնը մեղմելու եւ հասարակական համերաշխութիւնը վերականգնելու հրամայականով:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԸՆՏՐՈՂԸ՝ ԴՐՕՇՆ ՈՒՍԻՆ

*A1+*, 15:42

Սերժ Սարգսեանին այսօր ամէնից առաջ, հանրահաւաքը սկսուելուց մօտ 2 ժամ առաջ, ներկայացել էր Սուսաննա Սարգսեանը ՀՀԿ-ի դրօշը ուսին եւ կանգնել Հանրապետութեան Հրապարակում: «Ես ընտրել եմ տարբեր յատկանիշներով մի մարդու: Դա Սերժ Սարգսեանն է»:

Իսկ ո՞րն է Սերժ Սարգսեանին յատկանիշները, որի համար դուք նրան ձայն էք տուել *Ա1+*-ի հարցին՝ տիկինը պատասխանեց. «Դա այն է, որ նա կանգնում է պրոբլէմներով լցուած բոլոր մարդկանց կողքին: 40 տարի ես աշխատել եմ մայրաքաղաքում, ես հաշուապահ, տնտեսագէտ, տարբեր օբիեկտների ղեկավար, տարբեր երկրների հետ պայմանագրեր կապած, հայ ազգի համար տարբեր սննդամթերքներ տեղափոխած, բայց երբ Տէր-Պետրոսեանը գումարս գողացաւ»: Իսկ ինչպէ՞ս գողացաւ՝ հարցին տիկին Սուսաննան ասաց. «Ես տենց միամիտ չեմ, որ ասեմ, թէ ոնց գողացաւ, իսկ Սերժ Սարգսեանը ինձ օգնեց»: Տիկին Սուսաննան հրաժարուեց նաեւ ասել, թէ Սերժ Սարգսեանը ինչպէս է

իրեն օգնել, իսկ մի քիչ մտածելուց յետոյ՝ ասաց. «Ինձ չօգնեց, ով սխալ է կատարում Սերժ Սարգսեանը անմիջապէս օգնում է»:

Սերժ Սարգսեանի համակիրը նաեւ մանրամասնեց, թէ ինչպէս է իր թեկնածուն օգնում մարդկանց. «Դրական, այնպէս ինչպէս մարդկութիւնն է պահանջում»: Տիկին Սուսաննայի խօսքերն աւելի հաւաստի լինելու համար՝ նրան խնդրեցինք մէկ օրինակ ներկայացնել. «Լաւ, որ ուզում էք մի բան կ'ասեմ: Ասենք՝ իմ երեխան, քննութիւն էր տուել համալսարան, իրա հետ սխալ էին վարուել, Սերժ Սարգսեանը միանգամից միջամտեց ու հարցը լուծուեց, եւ երեխան հիմա սովորում է պետական համալսարանում»:

Տիկին Սուսաննան հրաժարուեց յայտնել, թէ իր աղջիկն այսօր ԵՊՀ-ի որ ֆակուլտէտում եւ կուրսում է սովորում եւ հիմնաւորուեց իր աղջկան չբացայայտելը. «Քեզ ի՞նչ որտեղ ա սովորում, հիմա մարդիկ չգիտես որտեղից են, ինչի համար են ձայնագրում»: Համաձայնուելով, որ գաղտնի պահելը իր իրաւունքն է, տիկին Սուսաննան աւելի անկեղծացաւ. «Հա: Ես երկու ամսուայ հարս եմ եղել, ես հիմա մի հատ տղայ ունեմ: Տղաս Ղարաբաղում մեր թիկունքն է պաշտպանում»:

Իսկ վերջում տիկին Սուսաննան մի հարց էլ *Ա1+*-ին ուղղեց. «Ամէն ինչ լաւ ասացի»: Իսկ երբ նրան առաջարկեցինք լուսանկարուել՝ ասաց. «Երէկ ինձ արդէն նկարել են: Գնացել էին Լեւոն Տէր-Պետրոսեանի տան մօտ: Նենց բաներ ասացի, չես պատկերացնում: Էնքան նկարեցին: Լաւ մի հատ սպասի սիրունանամ, նոր նկարի»: Իսկ, թէ ինչո՞ւ էր տիկին Սուսաննան գնացել Տէր-Պետրոսեանի տան մօտ, նա ասաց. «Այ էդ մէկը չեմ ասի»:

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ ՔԱՅԼ ԱՌԱՋ

*Lragir.am*, 15:48

Հայաստանի նախագահական ընտրութիւնները հանրապետութեան համար դարձել են քայլ առաջ՝ գործող ժողովրդավարութեան ճանապարհին: Այս մասին երեքշաբթի տեղի ունեցած մամուլի ասուլիսի ժամանակ յայտարարեց ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի արտգործնախարար Իլկկա Կաներվան, տեղեկացնում է Նովոստի Արմենիան: «Հայաստանի նախագահական ընտրութիւնները հանրապետութեան համար դարձել են քայլ առաջ՝ գործող ժողովրդավարութեան ճանապարհին: Չնայած այն բանի, որ անցած նախագահական ընտրութիւններն անցել են ոչ այնքան պարզ, ընտրութիւնների որակը հանրապետութիւնում անընդհատ բարձրանում է», ասաց Կաներվան: ԵԱՀԿ գործող նախագահը գոհունակութեամբ նշեց այն փաստը, որ Հայաստանի իշխանութիւններն ընդունել են նախագահական ընտրութիւնների անցկացման գործընթացը վերահսկող ցանկացող բոլոր դիտորդներին: Ինչպէս հաւաստիացրեց Ֆինլանդիայի արտգործնախարարը, դիտորդների դրական գնահատականները եւ քննադատութիւնները կը դառնան պարտադիր՝ կառավարութեան կողմից բոլոր թերութիւնները ուղղելու համար: Նա տեղեկացրեց, որ ընտրութիւնների վերջնական գնահատականը կը հրապարակուի ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ ամփոփիչ զեկոյցում՝ ապրիլի կէսերին:

## ՊԷՏՔ Է ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆ ԼԻՆԻ

*Lragir.am*, 15:52

Հայաստանի իշխանութիւնները պէտք է կառուցողական երկխօսութիւն հաստատեն նախագահական ընտրութիւնների արդիւնքների դէմ բողոքող ընդդիմութեան հետ: Այս

մասին երեքշաբթի տեղի ունեցած մամուլի ասուլիսի ժամանակ յայտարարեց ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի արտգործնախարար Իլկկա Կաներվան, տեղեկացնում է Նովոստի-Արմենիա գործակալութիւնը:

«Ստեղծուած քաղաքական ճգնաժամից դուրս գալու համար Հայաստանի իշխանութիւնները պէտք է քաղաքական երկխօսութեան եւ օրինական գործողութիւնների ճանապարհ գտնեն: Հայաստանի քաղաքական մեծամասնութիւնը պէտք է կառուցողական գործի՝ յարգելով ժողովրդավարական քաղաքական ընթացակարգերը: Սա երկրում կայունութեան հաստատման միակ ճանապարհն է», ասաց Կաներվան:

Նրա խօսքով, նախագահական ընտրութիւններից յետոյ Հայաստանում ստեղծուած քաղաքական իրավիճակը բաւականին բարդ է, աւելին՝ որոշ ընդդիմադիր կուսակցութիւններ բողոքարկում են դրանց արդիւնքները: Միաժամանակ ԵԱՀԿ գործող նախագահը նշեց, որ տեղեկացուած է Հայաստանում ստեղծուած նախընտրական, ընտրական եւ յետընտրական իրավիճակի մասին:

«Իհարկէ, ես չգիտեմ դրութեան բոլոր մանրամասները: Անհրաժեշտ է սպասել նախագահական ընտրութիւնների վերաբերեալ ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդների ամփոփիչ զեկոյցի հրապարակմանը, որը պատրաստ կը լինի ապրիլի կէսերին», աւելացրեց նա:

## ԴԻՒԱՆԱԳԷՏՆԵՐԻ ՀԱՄԱՐ ԱԳՆ-Ի ՍԱՀՄԱՆԱԾ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԸ

*A1+*, 16:02

Տէր-Պետրոսեանին աջակցելու համար 10 դիւանագէտների պաշտօնանկութիւնը բաւականին լուրջ հետեւութիւնների տեղիք է տուել: Այսօր ՀՀ ԱԳ նախագահ Վարդան Օսկանեանի եւ ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի ԱԳ նախարար Իլկա Կաներվայի համատեղ ասուլիսում լրագրողները պարոն Օսկանեանին խնդրեցին յստակեցնել, թէ ինչ չափանիշներով են այսուհետ ընտրուելու դիւանագէտները՝ նշելով, բազմաթիւ դիւանագէտները մասնակցել են նաեւ թեկնածուների քարոզարշաւին: Որպէս օրինակ նշուեց նաեւ դեսպան Ռուբէն Յակոբեանի մասնակցութիւնը ՀՅԴ քարոզարշաւին:

«Ես չէի ցանկանայ կրկնուել: Հիմնական միտքը այն է, որ եթէ նոյնիսկ գիտենք, որ որոշ մարդկանց հայեացքները այս կամ այն կողմն է, նրանց նկատմամբ միջոցներ չի կիրառուելու, այնքան ժամանակ քանի դեռ նրանք հրապարակային գործունէութիւն չեն վարում: Կարող էք դրանում վստահ լինել: Նախկինում նման բան չի եղել, այսօր էլ չի լինի: Ես համաձայն չեմ այն տեսակէտի հետ, որ ասում են, թէ այդ մարդկանց մաքրումը հիմա պէտք է լինէր», - ասաց Վարդան Օսկանեանը:

Ինչ վերաբերում է Ռուբէն Յակոբեանին, որը մասնակցում էր ՀՅԴ հանրահաւաքներին, ապա Օսկանեանը տեղեկացրեց. «Ռուբէն Յակոբեանը աւարտել է իր ժամկէտը: Յունուարին արդէն եղել է նրան յետ կանչելու հրամանը: Այնպէս որ նա գիտի որ այլեւս հիւպատոս չէ: Այստեղ քաղաքական օրիենտացիայի խնդիր չկայ»:

Քանի որ Տէր-Պետրոսեանին միացած դեսպանները ընդամէնը յայտարարել են, որ իրենք մտահոգուած են ընտրութիւնների ընթացքով եւ արդիւնքներով, որոնք վտանգում են Հայաստանի հեղինակութիւնը, լրագրողները Վարդան Օսկանեանից նաեւ հետաքրքրուեցին, թէ արդեօ՞ք դա բաւարար էր այդ մարդկանց աշխատանքից ազատելու եւ դիւանագիտական աստիճաններից զրկելու համար: «Եթէ այդ դեսպանների յայտարարութիւնը լաւ կարդաք, ապա կը տեսնէք, որ շատ յստակ դիրքորոշում է յայտնուել

շարժման նկատմամբ եւ մենք դա մանրամասն նայել ենք եւ միայն դրանից յետոյ նրանց աշխատանքից հեռացնելու որոշում կայացուել: Այնպէս, որ մենք բաւարար հիմք ունենք նման որոշում կայացնելու համար», - ասաց նա:

Թէեւ հարցը ուղղուած էր Վարդան Օսկանեանին, սակայն իր տեսակէտը որոշ յայտնել նաեւ Իլկա Կաներվան եւ Վարդան Օսկանայնին յիշեցրեց, որ Հելսինկիում իրենց հանդիպման ժամանակ նա ասում էր, որ լաւ կը լինի որ շատ աւելի միջազգային դիտորդներ ներկայ լինեն ՀՀ նախագահի ընտրութիւններին:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԸ Կ'ԱՍԻ ԱՒԵԼԻ ՄԵԾ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆՆԵՐ

*Lragir.am*, 16:03

Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանը փետրուարի 26-ին տեղի ունեցած մամուլի ասուլիսի ընթացքում յայտարարել է, որ քաղաքական երկխօսութեան մէջ է Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ, սակայն խօսքը միաւորման մասին չէ: Նա յայտարարել է, որ չի կարող միաւորուել մի գործչի հետ, ով Ազատութեան Հրապարակում յայտարարում է, թէ նախագահ է դարձել 65 տոկոս քուէով: «Ուրեմն ես ընդհանրապէս ձայն չեմ տարել», ասում է Արթուր Բաղդասարեանը: Մինչդեռ նա նշում է, որ ինքն ունի առնուազն 300 հազար ձայն, իսկ եթէ Լեւոն Տէր-Պետրոսեանն էլ քարոզարշաւի վերջին օրերին իր հանդէպ վատ քաղաքականութիւն չվարէր, ապա ինքն անկասկած կը լինէր երկրորդ փուլում: Այդ դէպքում, ըստ Արթուր Բաղդասարեանի, յետընտրական զարգացումները գուցէ աւելի յստակ լինէին, կրէին այլ բնոյթ:

ՕԵԿ նախագահը նշում է, որ իր եւ Լեւոն Տէր-Պետրոսեանի միաւորում կարող է լինել նոր ընտրութեան խնդրի շուրջ, իսկ աւելի մանրամասն, նա երկխօսութեան մասին չի ցանկանում խօսել, ասելով, թէ դա կը լինի ոչ կոռեկտ: Արթուր Բաղդասարեանը նշում է, որ միակ գործիչն է, ով նախագահական ընտրութիւնների ընթացքում վարել է կոռեկտ քաղաքականութիւն, չի հայհոյել որեւէ մէկին, բայց փոխարէնը թէ իշխանութիւնից, թէ ընդդիմութիւնից, մասնաւորապէս Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմից, ստացել է հարուածներ: «Ես եւ իմ թիմը դեռ վիրաւորուած ենք», նկատել է Արթուր Բաղդասարեանը, խօսելով Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի իր հանդէպ վարած այդ քաղաքականութեան մասին: Սակայն, Արթուր Բաղդասարեանը համաձայն չլինելով Լեւոն Տէր-Պետրոսեանի մարտավարութեանը եւ նախագահ հռչակուելու մասին յայտարարութիւններին, ասում է նաեւ, որ Տէր-Պետրոսեանի թիմն այսօր պայքարում է եւ իրենք գտնւում ենք քաղաքական երկխօսութեան մէջ:

Արթուր Բաղդասարեանն ասում է նաեւ, որ դատապարտում է այն ձերբակալութիւնները, որ տեղի են ունենում Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների շրջանում, եւ նաեւ նշում, որ ցուցարարների հանդէպ բռնի ուժ կիրառելու ցանկացած փորձ դատապարտելի է եւ դրանով անհնար է Հայաստանում առկայ լարուածութիւնը թուլացնել, այլ դա էլ աւելի կը խորացնի այդ լարուածութիւնը: ՕԵԿ նախագահը նշում է, որ իրեն ձայն տուած մօտ 300 հազար ձայն տուած քաղաքացիներն իրենցից դիրքորոշում են ակնկալում, եւ ինքը չի կարող ջուր լցնել այժմ դիմակայող երկու ուժերի ջրաղացին: Մի քանի օր յետոյ ես կ'ասեմ նաեւ աւելի մեծ ճշմարտութիւններ, որոնք այժմ չեմ ասում, որովհետեւ չեմ ցանկանում դրանով լարել էլ աւելի լարուած իրավիճակը, նշել է Արթուր Բաղդասարեանը,

ասելով, թէ հանգուցալուծումը պէտք է լինի միմիայն քաղաքական, թէեւ այս պահին ինքը չունի այդ դեղատոմսը:

## ԻՆՉՈՒ Է ՈՒՇԱՑԵԼ ՕԵԿ ՆԱԽԱԳԱՀԸ

*Lragir.am*, 16:07

Փետրուարի 26-ին, ժամը 14-ին ՕԵԿ գրասենեակում նախատեսուած Արթուր Բաղդասարեանի մամուլի ասուլիսը սկսուել է մօտ մէկ ժամ ուշացումով: Գալով ասուլիսի սրահ, Արթուր Բաղդասարեանը նշել է, որ այդ ուշացման պատճառը եղել է այն, որ իր մեքենան կանգնեցրել են քաղաքացիական հագուստով անձինք եւ թոյլ չեն տուել առաջ գնալ: Դա տեղի է ունեցել Մետրոպոլ հիւրանոցի մերձակայքում: Պատճառաբանութիւնը եղել է այն, որ Հանրապետութեան Հրապարակում հանրահաւաք է, ու ճանապարհները փակ են: Արթուր Բաղդասարեանն ասում է, որ չնայած իրենց դէմքով անկասկած կը ճանաչէին, սակայն այդուամենայնիւ չեն թողել առաջ գնալ: ՕԵԿ նախագահը ճանապարհը շարունակել է բաւական տեւական ու տհաճ խօսակցութիւնից յետոյ, որ իր նշելով, ունեցել է այդ անձանց հետ:

## ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ՊԱՏԺԵԼ

*Lragir.am*, 16:10

**Ժառանգութեան պատգամաւորները պահանջում են քրգործ յարուցել ընտրակեղծարարների նկատմամբ**

Անցած շաբաթ օրը Ժառանգութիւն խորհրդարանական խմբակցութեան մի խումբ պատգամաւորներ եւ այդ կուսակցութեան ներկայացուցիչներ թիւ 5 ընտրատարածքային ընտրական յանձնաժողովում քուէարկութեան արդիւնքների վերահաշուարկման ժամանակ թոյլ տրուած կոպիտ խախտումների մասին հաղորդում են փոխանցել ՀՀ Գլխաւոր Դատախազութեանը՝ պատճէնը հասցէագրելով իրաւապաշտպան երկու կազմակերպութիւնների ու ԵԱՀԿ դիտորդական առաքելութեան ղեկավարներին: Ստորեւ ներկայացւում է հաղորդագրութեան ամբողջական տեքստը:

ՀՀ Գլխաւոր Դատախազ պարոն Աղուան Յովսէփեանին
ՀՀ Մարդու Իրաւունքերի պաշտպան պարոն Արմէն Յարութիւնեանին
ԵԱՀԿ դիտորդական առաքելութեան ղեկավար պարոն Գերտ Արանսին
Եւրոպայի խորհրդի Մարդու Իրաւունքների յանձնակատար պարոն Թոմաս Համարբերգին

**Հաղորդում յանցագործութեան մասին**

2008 թուականի փետրուարի 23-ին Երեւան քաղաքի Դաւիթաշէն համայնքի թիւ 5 Ընտրատարածքային Ընտրական Յանձնաժողովի (ԸԸՀ) նիստում տեղամասային յանձնաժողովներից ստացուած վերահաշուարկի դիմումների քննարկումը ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 40.2 յօդուածի համաձայն՝ պէտք է հրաւիրուէր ժամը 9:00-ին, սակայն նիստը հրաւիրուեց միայն 10:30-ին՝ յանձնաժողովի անդամներ Արտիոմ Ծատուրեանի, Ռազմիկ Բարֆեանի, Էդիկ Գէորգեանի, Գրիգոր Գաբրիէլեանի, Լիլիթ Մկրտչեանի ուշանալու պատճառով: Ի դէպ, փետրուարի 22-ին, խախտելով ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 40.2 յօդուածի 7-րդ կէտի պահանջները, վերոնշեալ անձինք միտումնաւոր չէին ներկայացել յանձնաժողովի նիստին:

Յանձնաժողովի նախագահը յայտարարեց, որ ըստ գործավարութեան մատեանում նշուած հերթականութեան, առաջնահերթ վերահաշուարկման պէտք է դրուէին 5/05 տեղամասի քուէարկութեան արդիւնքները: Հաշուարկման ընթացքում յանձնաժողովի նախագահը վատառողջ լինելու պատրուակով լքեց նիստը, որը շարունակեց վարել նախագահի տեղակալը: Պատշաճ կարգով վերահաշուարկն աւարտելուց յետոյ կազմուեց արձանագրութիւն, այնուհետեւ երբ ՀՀ ԿԸՅ անդամ Զոյա Թադեւոսեանը գործավարութեան մատեանում յայտնաբերեց, որ վերահաշուարկն ըստ գրանցման հերթականութեան պէտք է իրականացուէր 5/27 տեղամասի պարկերի վերաբերեալ, յանձնաժողովի անդամները տարբեր պատրուակներով լքեցին տեղամասը: Իրենց վարքագծով նրանք փաստօրէն փորձում էին կազմալուծել յանձնաժողովի նիստը՝ վերահաշուարկի գործընթացը:

Ղեկավարուելով ՀՀ ԿԸՅ-ի կանոնակարգի Գլուխ 7, 43 ժբ կէտում նշուած պահանջով, Զոյա Թադեւոսեանը յորդորեց յանձնաժողովի նախագահի տեղակալ Արտիոմ Ծատուրեանին՝ շարունակել յանձնաժողովի նիստը, որտեղ որոշուեց յաջորդը վերահաշուարկել թիւ 5/21 տեղամասի քուէարկութեան արդիւնքները:

Դրանից յետոյ ստանալով մի շարք հեռախօսազանգեր՝ Ա. Ծատուրեանն ակնյայտօրէն ահաբեկուած, օրէնքի կոպիտ խախտմամբ, առանց որեւէ պատճառաբանութեան հրաժարուեց շարունակել նիստը: Այդ ընթացքում նա անընդհատ հեռախօսազրոյցներ էր ունենում մեզ համար անյայտ անձանց հետ: Հեռախօսով խօսելիս՝ այլ արտայայտութիւնների շարքում, նա թոյլ տուեց նաեւ հետեւեալը. «Ինչ է, ես պիտի ուրիշի արածի պատասխանատուութիւնն ինձ վրա՞յ վերցնեմ»:

Այդ պահին յանձնաժողովի անդամներից ներկայ էին ՕԵԿ անդամ Մեդորա Չախմախչեանը, Ժառանգութեան անդամ Անահիտ Ներսիսեանը, Հանրապետական Կուսակցութեան անդամներ Ռազմիկ Բարֆեանը, Էդիկ Գէորգեանը, Լիլիթ Մկրտչեանը: Վերահաշուարկի գործընթացը սկսելուց յետոյ ՀՀԿ անդամներ Ռազմիկ Բարֆեանը, Էդիկ Գէորգեանը, Լիլիթ Մկրտչեանը, Գրիգոր Գաբրիէլեանը դուրս եկան տեղամասից: Այդ պահին Ա. Ծատուրեանը փորձեց գողանալ քուէարկութեան արդիւնքների պարկը, ինչը կանխուեց յանձնաժողովում Ժառանգութեան ներկայացուցիչ Անահիտ Ներսիսեանի կողմից:

Կրկին ստանալով հեռախօսազանգ՝ Ա. Ծատուրեանը դադարեցրեց իր ապօրինի գործողութիւնները եւ դուրս եկաւ տեղամասից: Քիչ անց ներս մտաւ յանձնաժողովի քարտուղար Ռազմիկ Բարֆեանը եւ յափշտակեց գործավարութեան մատեանը:

*Ազատութիւն* ռադիոկայանի լրագրող Կարինէ Քալանթարեանը յանձնաժողովի անդամներ Անահիտ Ներսիսեանին, Մեդորա Չախմախչեանին եւ ԿԸՅ անդամ Զոյա Թադեւոսեանին յայտնեց, որ ընտրատեղամասին յարակից սենեակում Լիլիթ Մկրտչեանը, Գրիգոր Գաբրիէլեանը, Արտիոմ Ծատուրեանը ինչ-որ բողոքներ են պատրաստում յանձնաժողովի միւս անդամների վերաբերեալ: Այդ ընթացքում ընտրատարածքի դռան մօտ Ա. Ծատուրեանի հրաւէրով խմբուել էր աւելի քան 50 մարդ, որոնց մի մասը ներկայանում էր որպէս ՀՀ ոստիկանութեան քննչական բաժնի աշխատակիցներ՝ առանց որեւէ փաստաթուղթ ներկայացնելու: Տուեալ անձանց մէջ էր նաեւ Դաւիթաշէնի թաղապետի տեղակալ Արթուր Գէորգեանը:

Յանձնաժողովի երկու անդամները՝ օգտուելով ՀՀ Ընտրական Օրէնսգրքի 39

յօդուածի 6-րդ կէտի երկրորդ պարբերութեամբ նախատեսուած լիազօրութիւններից, փորձեցին շարունակել նիստը՝ իրականացնելով վերահաշուարկի գործընթացը, սակայն ոստիկանութեան քննչական բաժնի աշխատակիցներ ներկայացող անձինք խոչընդոտեցին յանձնաժողովի բնականոն աշխատանքը: Նրանք յանձնաժողովի անդամներին դուրս հրաւիրեցին տեղամասից՝ հիմնաւորելով, որ պէտք է իրականացուի քննչական տեղազննութիւն: Յանձնաժողովի անդամների պահանջին՝ ներկայացնել գրաւոր հիմքեր ընտրատեղամաս ներխուժելու եւ քննչական գործողութիւններ իրականացնելու վերաբերեալ, նշուած անձինք շուրջ մէկ ժամ որեւէ կերպ չէին արձագանքում, փոխարէնը սպառնում էին հաշուեյարդար տեսնել յանձնաժողովի, լրագրողների, դիտորդների ու վստահուած անձանց նկատմամբ: Այդ սպառնալիքներն արագ իրականացուեցին: Տեղամաս ներխուժեցին 50-ից աւել սափրագլուխներ՝ ԱԺ պատգամաւոր Լեւոն Սարգսեանի եւ ՀՀ նախագահի թեկնածու, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանի օգնական Լեւոն Մարտիրոսեանի գլխաւորութեամբ: Սափրագլուխները սկսեցին ծեծի ենթարկել լրագրողներին, դիտորդներին, յանձնաժողովի անդամներին, վստահուած անձանց: Նրանք ջարդեցին լրագրող Գագիկ Շամշեանի եւ *Ա1+* լրատուական ծառայութեան տեսախցիկները, յարձակուեցին *Առաւօտ* թերթի լրագրող Նաիրա Մամիկոնեանի վրայ:

Փաստօրէն յանձնաժողովի անդամները, ԿԸՅ ներկայացուցիչը, լրագրողները, դիտորդներն ու վստահուած անձինք յայտնուեցին ՀՀ ոստիկանութեան աշխատակիցների եւ մի խումբ սափրագլուխների պատանդի կարգավիճակում:

Ապօրինութիւններին ականատես եղան Հայաստանի Հանրապետութիւնում ԱՄՆ դեսպանի պաշտօնակատարը, ԵԱՀԿ երկու դիտորդներ, լրագրողներ, ԱԺ ՕԵԿ խմբակցութեան անդամ պատգամաւորներ Յովհաննէս Մարգարեանը, Արտաշէս Աւոյեանը, Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորներ Զարուհի Փոստանջեանը եւ Արմէն Մարտիրոսեանը, որոնք ներկայ էին որպէս դիտորդ եւ ներկայացրել էին համապատասխան փաստաթղթեր, ինչպէս եւ այլ դիտորդներ:

Ծեծկռտուքի ու քաշքշուկի արդիւնքում յանձնաժողովի անդամները, վստահուած անձինք, դիտորդները եւ լրագրողները սափրագլուխների կողմից բռնի կերպով վտարուեցին ընտրատեղամասից՝ առանց փակի տակ դնելու առկայ փաստաթղթերը, պարկը եւ միւս պարագաները:

Հիմք ընդունելով վերոգրեալը՝ խնդրում ենք համապատասխան ընթացք տալ սոյն հաղորդմանը, յարուցել քրէական գործ եւ պատժել իրական մեղաւորներին:

ԿԸՅ անդամ Զոյա Թադեւոսեան թիւ 5
ԸԸՀ անդամ Անահիտ Ներսիսեան
ՀՀ ԱԺ Ժառանգութիւն խմբակցութեան անդամ, դիտորդ Արմէն Մարտիրոսեան
ՀՀ ԱԺ Ժառանգութիւն խմբակցութեան անդամ, դիտորդ Զարուհի Փոստանջեան
23 փետրուար 2008թ.
Երեւան

## ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆՆ ԸՆԴՈՒՆԵԼ Է ԵԱՀԿ ԳՈՐԾՈՂ ՆԱԽԱԳԱՀԻՆ

*Lragir.am*, 16:14

Նախագահի մամուլի գրասենեակը տեղեկացնում է, թէ Ռոբերտ Քոչարեանն այսօր ընդունել է ԵԱՀԿ-ի գործող նախագահ, Ֆինլանդիայի արտաքին գործերի նախարար

Իլկա Կաներվային եւ նրան ուղեկցող պատուիրակութեանը:

Ֆինլանդիայի արտաքին քաղաքական գերատեսչութեան ղեկավարն ասել է, որ իր երկրում մեծ տպաւորութիւններով են յիշում անցած տարուայ նոյեմբերին նախագահ Քոչարեանի պաշտօնական այցը: Նա բարձր է գնահատել Հայաստանի նախագահի ներդրումը հայ-ֆիննական յարաբերութիւնների, ինչպէս նաեւ ԵԱՀԿ-ի հետ համագործակցութեան զարգացման ուղղութեամբ: Հանդիպման ընթացքում կողմերն անդրադարձել են փետրուարի 19-ին կայացած նախագահական ընտրութիւններին եւ յետընտրական զարգացումներին: Հիմնուելով միջազգային դիտորդների զեկոյցների վրայ, ԵԱՀԿ-ի գործող նախագահն ասել է, որ այս ընտրութիւններում առաջընթացն ակնյայտ էր: Նշելով, որ նախնական զեկոյցը պարունակում է ինչպէս դրական, այնպէս էլ քննադատական կէտեր, նա համոզմունք է յայտնել, որ իշխանութիւնները կ՚աշխատեն թերութիւնները վերացնելու ուղղութեամբ:

Երկրի ղեկավարը ներկայացրել է յետընտրական զարգացումները: ԵԱՀԿ-ի գործող նախագահը գնահատել է համարել այս օրերին իշխանութիւնների կողմից դրսեւորուող զսպուածութիւնն ու պատասխանատու պահուածքը: Նա վստահութիւն է յայտնել, որ Հայաստանի իշխանութիւններն առաջիկայում եւս հանդէս կը բերեն ողջախոհութիւն եւ կը գործեն քաղաքակիրթ երկրներում ընդունուած մեթոդներով:

## ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆԻ ՀԱՐՑԸ ՄՆՈՒՄ Է ԱՆՈՐՈՇ

*Lragir.am*, 16:17

Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանի թիմն այժմ ուսումնասիրում է ընտրակեղծիքների փաստերը, որ տեղի են ունեցել փետրուարի 19-ի նախագահի ընտրութեան ժամանակ: Այդ մասին փետրուարի 26-ին յայտարարել է Արթուր Բաղդասարեանը, նշելով, որ այժմ համադրում են ստացուած փաստերը, լսում են բռնութեան ենթարկուածներին, նախապատրաստում են փաստաթղթերը: Արթուր Բաղդասարեանը նշել է, որ այն փաթեթը, որը ներկայացուելու է Սահմանադրական Դատարան, պէտք է լինի այնպիսին, որ քար ծակի, քանի որ այդ փաստերն, ըստ Արթուր Բաղդասարեանի, ոչ միայն ՍԴ են ներկայացուելու, այլ նաեւ ԵԱՀԿ եւ նաեւ արտասահմանեան երկրների դեսպաններին:

Արթուր Բաղդասարեանը նշել է, որ հանդիպելու է ԵԱՀԿ գործող նախագահին, եւ նաեւ մշտական կապի մէջ է Հայաստանում դեսպանների հետ: Ընդ որում, նա այդ շփումների ու կապի հիման վրայ ասում է, որ միջազգային հանրութիւնը բաւական մտահոգ է Հայաստանի յետընտրական վիճակի կապակցութեամբ, ինչի մասին են վկայում նաեւ արտասահմանեան մամուլի էջերը: Արթուր Բաղդասարեանն այդ տեսակէտից համաձայն չի եղել լրագրողների այն դիտարկմանը, որ միջազգային կառոյցներն ու տէրութիւնների ղեկավարները շնորհաւորում են նորընտիր նախագահին: Արթուր Բաղդասարեանը նշել է սակայն, որ երկու օրուայ ընթացքում թերեւս կ՚որոշեն, թէ արդեօք իսկապէս դիմելու են Սահմանադրական Դատարան, թէ ոչ: Դա էլ հէնց կախուած է նրանից, թէ արդեօք ինչպիսին կը լինի այն իրաւական փաթեթը, որ պատրաստում են ու այժմ դիտարկում:

Արթուր Բաղդասարեանը մատնանշել է այն, որ Հայաստանի դատական համակարգը անկախ չէ, իսկ իրենք էլ ունեն 2007 թուականի խախտումների մասին Սահմա-

նադրական Դատարան դիմելու փորձը: ԵԱՀԿ նախագահը սակայն նշել է, որ կասկածից վեր է այն, որ Հայաստանի նախագահի ընտրութիւնն անցել է զանգուածային կեղծիքներով, օրինախախտումներով, բռնութիւններով: Արթուր Բաղդասարեանը մի օրինակ է բերել, որ 42 ընտրատարածքներում ինքը ստացել է 0-ական, իսկ 129 ընտրատարածքներում՝ ընդամէնը 5-ական ձայն:

## ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՓՈԽԱՐԷՆ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ

*A1+*, 16:23

Սերժ Սարգսեանի հանրահաւաքին «բերման ենթարկուած» քաղաքացիների մի խումբ Հանրապետութեան Հրապարակի փոխարէն եկել էր Ազատութեան Հրապարակ՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքին: Նրանք փորձեցին վառել իրենց հետ բերած «Առաջ, Հայաստան» դրօշները, բայց հանրահաւաքի կազմակերպիչները թոյլ չտուեցին:

Ի դէպ, Ազատութեան Հրապարակում ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանը յայտարարել է, որ. «Մեր ձայնը շուտով կը հասնի Հանրապետութեան Հրապարակ»: Յիշեցնենք, որ երկու հանրահաւաքները սկսուել էին նոյն ժամին՝ ժամը 15.00-ին:

## ԳՆԴԱԿՆ Ո՞ՒՄ ԴԱՇՏՈՒՄ Է

*A1+*, 16:28

ՀՅԴ-ն չի վիճարկում ընտրութիւնների արդիւնքները, կասկածի տակ չի առնում ապագայ իշխանութեան լեգիտիմութիւնը, որովհետեւ, ըստ ՀՅԴ ԳՄ անդամ Արմէն Ռուստամեանի, հնարաւոր չէ պարզել քուէների իրական պատկերը, հասարակութեան իրական համակրանքը:

«Հիմնական պատճառը ընտրական համակարգն է, որն ունի երկու հիմնական բաց.

1. Այսօրուայ մեր ընտրական համակարգը չի ապահովում քուէատուփերում առկայ ձայների յարաբերակցութեան համապատասխանեցումը իրական համակրանքին եւ ժողովրդի քուէներին, իրական համոզումով քուէարկութեանը:

2. Ընտրական համակարգում առկայ միւս լուրջ բացթողումն է՝ վերահսկելը, ընտրակեղծիքները կանխելը, այնուհետեւ նաեւ դրանց համապատասխանութիւնը ապահովելը», - այսօր յայտարարեց ՀՅԴ ԳՄ անդամ Արմէն Ռուստամեանը: Նա յայտարարեց, որ ազատ ընտրութիւն ապահովելու համար քաղաքական ուժերի, քաղաքացիական հասարակութեան հնարաւորութիւնները խիստ սահմանափակ են, եւ դա հնարաւորութիւն չի տալիս ուղղակի իրականացնել վերահսկողութիւն:

ՀՅԴ-ն իշխանական կոալիցիայի հետ իր համագործակցութեան համաձայնագրի դադարեցման համար ընտրել է երկկողմանի համաձայնութեան ճանապարհը: Այս մասին, այսօր լրագրողներին յայտնեց ՀՅԴ ԳՄ ներկայացուցիչ Արմէն Ռուստամեանը, յաւելելով, որ հէնց դա է պատճառը, որ իրենք պատրաստակամութիւն են յայտնել հրաժարուել իրենց զբաղեցրած պաշտօններից եւ դիմել են իրենց գործընկերներին առաջարկելով դադարեցնել այդ համագործակցութիւնը: «Այժմ գնդակը իրենց դաշտում է», - *Ա1+*-ին ասաց Արմէն Ռուստամեանը, իսկ յետագայ քայլերը կը բխեն արդէն կոալիցիոն գործընկերների վարքագծից. «Դեռ վաղ է այդ մասին խօսելը: Դա կախուած է նաեւ նրանից, թէ ինչ ձեւով կը յաղթահարուի ներքաղաքական լարուածութիւնը երկրում: Ի դէպ, այդպէս էլ պարզ չդարձաւ, թէ նախարարները հրաժարական երբ են տալու, կամ

արդեօ՞ք իրենք ներգրաւուած են լինելու յաջորդ իշխանութեան մօտ:

Ռուստամեանը յստակեցրեց, որ իրենց համագործակցութիւնը դեռ ուժի մէջ է մինչեւ Ռոբերտ Քոչարեանի լիազօրութիւնների աւարտը:

Իսկ ապագայ իշխանութեան մէջ տեղ ունենալու վերաբերեալ ՀՅԴ Բիւրոյի անդամ, նախագահի թեկնածու Վահան Յովհաննիսեանը նկատեց. «Դա կախուած է նրանից, թէ զրուցակիցների մէջ որ տրամադրութիւնը յաղթող կը լինի. երկրի ճակատագրի նկատմամբ մտահոգութի՞ւնը, թէ՞ այն, որ որոշ մարդիկ մտածում են, որ նոր պաշտօններ են բացւում եւ այնտեղ տեղաւորուելու ցանկութիւն ունեն»:

Վահան Յովհաննիսեանի գնահատականը ընտրութիւնների վերաբերեալ աւելի սուր էր. նա ընդգծեց, որ առանձին տեղամասերում ուղղակի խայտառակ էր անցնում ընտրական գործընթացը: Յովհաննիսեանը նաեւ դժգոհում էր այն մարտավարութիւնից, որ որդեգրել էին «արհեստականօրէն սարքուած բեւեռները». «Մի մասն ասում էր դու գող ես, պայքար, պայքար մինչեւ վերջ, միւս մասն ասում էր, չէ, դու ես գողը, առաջ Հայաստան»:

Ներկայ քաղաքական իրավիճակում Դաշնակցութիւնը որպէս հնարաւոր ելք առաջարկում է իշխանութիւններին բացայայտել ընտրակեղծիքները եւ պատժել մեղաւորներին, ինչպէս նաեւ հակամարտող երկու կողմերին կոչ է անում ձեռնպահ մնալ չմտածուած գործողութիւններից: Ինչպէս լրագրողներին յայտնեց ՀՅԴ ԳՄ ներկայացուցիչ Արմէն Ռուստամեանը, իրենք յորդորում են ընդդիմութեանը որեւէ չմտածուած քայլ չձեռնարկել, իսկ իշխանութիւններին յարգել այն մարդկանց տեսակէտը, ովքեր իսկապէս հիմքեր ունեն եւ կարող են դժգոհել ընտրութիւնների արդիւնքներից: «Եկէք այդ դժգոհողներին մենք օտար չանուանենք, նոր թշնամութիւն չսերմանենք, այլ փորձենք հասկանալ նաեւ այն մոտիւացիան, որ գոյութիւն ունի այդ շրջանակում եւ չփորձենք դա խլացնել բռնի ուժով», - ասաց Արմէն Ռուստամեանն: Ի դէպ, Դաշնակցութիւնը պատրաստ է կամրջողի, միջնորդի դեր ստանձնել երկու կողմերի միջեւ:

Իսկ ինչ դիրքորոշում կ'որդեգրի ՀՅԴ-ն, եթէ բախումներ լինեն եւ արիւն յեղուի հարցին՝ Ռուստամեանը պատասխանեց. «Հէնց արիւն թափուեց, մենք բոլորս կը մտնենք այդ արեան ծանրութեան տակ: Դա ամէն գնով պէտք է կանխել: Մենք հէնց այդ առումով է, որ պատրաստ ենք ամենաանկեղծ երկխօսութեան, համագործակցութեան բոլորի հետ»:

## ՄԻ ՔԱՅԼ ԱՌԱՋ, ԵՐԿՈՒ ՔԱՅԼ ՀԵՏ (video)

*A1+*, 16:35

«Բոլորս միասին ուս-ուսի պէտք է Հայաստանը տանենք առաջ եւ միայն առաջ: Միանո՞ւմ էք, ժողովուրդ», - Հանրապետութեան Հրապարակի բեմահարթակից յայտարարում է հաղորդավար Գէորգը, իսկ ժողովուրդը անարձագանք է թողնում նրա ձայնը: Որոշ ժամանակ յետոյ վերջինս կրկին բարձրաձայնում էր. «Օտարին են յաղթում, թշնամուն են յաղթում, բայց մենք միասին ենք, առաջ Հայաստան», իսկ հաւաքուածները լուռ էին: Մի ուսուցչուհի էլ ծիծաղեց այդ պատկերից եւ նկատեց. «Դէ, լռութիւնը համաձայնութեան նշան է, ինչ ենենք, որ մարդիկ չեն արձագանքէ»:

«Լենինի պատմութիւնը գիտես. երկու քայլ առաջ, մի քայլ յետ: Հիմա մերն է, ուղղակի մի քիչ հակառակ՝ մի քայլ առաջ ենք անում դէպի հրապարակ, երկու քայլ յետ», - *A1+*-ին

ասաց Արմաւիրի էլցանցի աշխատակիցներից մէկը, որը իր երկու ընկերների հետ միասին իջել էր Արմաւիրի մարզից բերուած աւտօբուսից եւ յապաղում էր հրապարակ հասնել: «Եկել ենք, որ տեսնենք, թէ նորընտիր նախագահին ոնց են շնորհաւորում: Եկել ենք նրան տեսնելու, խոստումները լսելու, որ յետոյ ասենք դուք խոստում տուեցիք, իսկ ընտրուելուց յետոյ չկատարեցիք», - յաւելում է նա:

Երեւանի քաղաքապետարանից մինչեւ ՀՀ արդարադատութեան շէնքի մօտ հազարից աւելի աւտօբուսներ կային, որոնց մէջ կային մարդիկ, որոնք այդպէս էլ չէին իջել: *Ա1+*-ի հարցին, թէ ինչու էք եկել հանրահաւաք եւ չէք իջնում՝ Մասիս Տօբակոյի աշխատակիցներին բերած աւտօբուսի մէջ մնացած 5-ը պատասխանեցին, որ կ'իջնեն, ուղղակի սպասում են սկսուի, բայց այդպէս էլ չիջան: Նոյն պատկերն էր նաեւ Գիւմրիի գազէլի մէջ, որտեղ մի խումբ երիտասարդներ էին հաւաքուած, ուրախանում էին եւ հաց ըմբոշխնում: Օրինակ, Արմաւիրի մարզի ուսուցչուհիներից մի քանիսը, դեռ հանրահաւաքը չմեկնարկուած, շտապում էին իրենց աւտօբուսին հասնել, իսկ երբ տնօրէնը անձամբ զանգեց նրանց բջջային հեռախօսներին եւ հարցրեց, թէ ուր են, պատճառաբանեցին, թէ տարածքում կանգնած են, ուղղակի կորցրել ենք իրար, կը սպասեն աւտօբուսի մօտ: «Բոլոր ուսուցիչներին պարտադրելով բերել են, պարտադրում են տնօրէնին, իրա խաթր էլ գալիս ենք: Այ հիմի էլ չեմ ուզում, գնում եմ հակառակ ուղղութեամբ: Արմաւիրի մարզից շատ են, միայն դպրոցներին են ստիպել: Գիւղացուն չի հետաքրքրում, աշխատանք չունի, որ կորցնի: Նոյնիսկ նրանց, ովքեր ձայն չեն տուել», - դժգոհում են ուսուցչուհիները:

Ստիպողաբար բերուել են ինչպէս դպրոցների, մանկապարտէզների աշխատակիցները, այնպէս էլ բուժաշխատակիցները: Իսկ դասի կամ աշխատանքի չե՞ն արդեօք նրանք, *Ա1+*-ի հարցին վերջիններս կամ խուսափում էին պատասխանել, կամ էլ ասում էին, որ արդէն վերջացել է:

Աւտօբուսների այսչափ առատութիւնը խցանումներ էր առաջացրել մի քանի փողոցներում: Օրինակ, Արգաւանդի խճուղում այնպիսի խցանում էր, որը հասնում էր մինչեւ Աւտօկայան: Ու երբ հանրահաւաքի մեկնարկին մնացել էին մի քանի րոպէ: Կենտրոնին աւելի մօտ կանգնած աւտօբուսների ուղեւորներին ստիպել են ոտքով շարժուել մինչեւ հրապարակ: Ստիպողաբար Հանրապետութեան Հրապարակ են «հրաւիրուել» նաեւ նախարարութիւնների աշխատակիցները:

Ի դէպ, մարդկանց մի հոծ բազմութիւն Սերժ Սարգսեանի հանրահաւաքի անուան տակ մարզերից եկել էր Երեւան, սակայն շտապում էին Ազատութեան Հրապարակ լսելու Լեւոն Տէր-Պետրոսեանին:

## ՊԱՐՏԱԴԻՐ Է ՄԻՆՉԵՒ ՀՐԱՊԱՐԱԿԸ

*Ա1+*, 16:37

Հանրապետութեան Հրապարակ շարունակում են բերել նորանոր մարդկանց եւ քիչ առաջ շարժուեցին Հիւսիսային Համալսարանի ուսանողները, որոնց առաջնորդում էր բուհի ղեկավարութիւնն ու դասախօսական կազմը: Ճանապարհից շեղուողներին խիստ սաստում էին, իսկ մի քանի աղջիկներ էլ կատակում էին, թէ «մէկա ա սայլուտ ա լինելու», դասախօսների չարաճճի ուսանողներն էլ «Լեւոն, նախագահ» էին գոռում:

«Դէ ասել է բուհի ղեկավարութիւնը, եկել ենք, մեզանից ինչ է գնում», - ասաց մի աղջիկ, միւսն էլ հակաճառեց, թէ «եթէ քեզ հաճելի կամակատար լինել, ինձ դուր չի գալիս,

ինչի ես բոլորի անունից խօսում»:

Տղաները աւելի զուսպ էին, ասում էին, թէ ոչ ոք իրենց չի ստիպել գալ, թէեւ հարցնում էինք, թէ ուր էք գնում եւ ով է թոյլ տուել դասերի ժամին դուրս գալու հանրահաւաքի: Խօսեցինք նաեւ բուհի ռեկտոր Բորիս Մակիչեանի հետ, ով նախ ասաց, որ դասերը աւարտուել են եւ երկրորդ հերթն էլ դաս չի անում, ապա նշեց, որ գնում են շնորհաւորելու նախագահին եւ «իրենց իրաւունք չունեն չգնալու»:

«Մեր կողմից ճնշում չի եղել, ուսանողներն են ինքնակամ գալիս, ուսխորհրդի նախագահն ինքն է կազմակերպել», - *Ա1+*-ին ասաց բուհի ռեկտորը: Ապա նշեց, որ իրենք 800 հոգի են:

Նշենք, որ ահազանգեր ենք ստացել տարբեր բուհերի ուսանողներից, որոնց տանում են Հանրապետութեան Հրապարակ:

Բժշկական Ուսումնարանի ուսանողներից մէկը *Ա1+*-ին պատմեց, որ իրենց ասել են «մինչեւ հրապարակ հասէք, յետոյ ուր ուզում էք գնացէք»:

## ԱՐՄԷՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԸ ԵԱՀԿ ԳՈՐԾՕՂ ՆԱԽԱԳԱՀԻՆ

*Lragir.am*, 16:44

Փետրուարի 26-ին ՀՀ Մարդու Իրաւունքների պաշպան Արմէն Յարութիւնեանը հանդիպում է ունեցել ԵԱՀԿ գործող նախագահի դեսպան Իլկա Կանեռվաի եւ մի շարք ԵԱՀԿ բարձրաստիճան պաշտօնեաների հետ: Նրանց կազմում էին ԵԱՀԿ երեւանեան գրասենեակի տնօրէն դեսպան Սերգէյ Կապինոսը, Մինսկի Խմբի համանախագահ Անջէյ Կասպերչիկը եւ ԵԱՀԿ Խորհրդարանական վեհաժողովի նախագահ Գոռան Լեհմառկէռը, տեղեկացնում են ՄԻՊ գրասենեակից: Հանդիպման ընթացքում քննարկուել են երկրում մարդու իրաւունքների պաշտպանուածութեան մակարդակին վերաբերող հարցերը: Կողմերը անդրադարձել են նաեւ նախագահական ընտրութիւններին, մասնաւորապէս՝ յետընտրական քաղաքական գործընթացներին:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՄԷՋԲԵՐՈՒՄ Է ՍՈՒՐԲ ԳԻՐՔԸ. «ԱՄԷՆ ԻՆՉ ՈՒՆԻ ԻՐ ԺԱՄԱՆԱԿԸ»

*Ա1+*, 16:56

«Ես այս բարձր ամբիոնից դիմում եմ նախկին թեկնածուներին եւ նրանց սատարած քաղաքական ուժերին. եկէ՛ք համագործակցենք: Ընդհուպ մինչեւ կօալիցիոն կառավարութեան ձեւաւորում: Նպատակներիցս մէկն է՝ օգտագործել բոլոր կառուցողական, հիմնակազմիչ ուժերին՝ ի նպաստ Հայաստանի զարգացման», - Հանրապետութեան Հրապարակում հանրահաւաքի ժամանակ յայտարարել է Սերժ Սարգսեանը:

Ներկայացնում ենք նրա ելոյթն ամբողջութեամբ:

### ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԵԼՈՅԹԸ ՀԱՆՐԱՀԱՒԱՔՈՒՄ

Սիրելի հայրենակիցներ,

Ես ողջունում եմ բոլորիդ եւ շնորհաւորում ՀՀ նախագահի ընտրութիւնների յաջող անցկացման կապակցութեամբ: Հաւատացնում եմ ձեզ, մենք պատմական ժամանակներ ենք ապրում: Նորանկախ Հայաստանի պատմութեան մէջ առաջին անգամ մեզ յաջողուեց իրար յետեւից երկու ընտրութիւն կազմակերպել եւ երկու դէպքում էլ ստանալ դրական գնահատականներ: Այսօր մենք ունենք հիանալի հնարաւորութիւն լուծելու մեր առջեւ

ծառացած խնդիրները, այսօր մենք ունենք բոլոր անհրաժեշտ հիմքերը վստահօրէն առաջ նայելու եւ անհաշտ կռիւ սկսելու մեզանում առկայ բոլոր արատաւոր երեւոյթների դէմ:

Եւ այսօր մեզ մէկտեղել է թէ՛ յաղթանակի բերկրանքը, թէ՛ մտահոգութիւնը մեր երկրի ապագայի համար:

Այս պահին, երբ ես ասում եմ այս խօսքերը, մեր երկրի սահմանային դիրքերում մեր զինուորները պաշտպանում են հայրենիքը, մեր դպրոցներում ուսուցիչները սերունդ են կրթում, այս պահին մեր բժիշկներն ամոքում են մեր եղբայրների ու քոյրերի վէրքերը:

Այսօր մենք հաւաքուել ենք բժշկելու մէկ այլ վէրք, այն վէրքը, որ մեր ժողովրդի մարմնի վրայ բացեցին այս ընտրութիւնները: Մենք պէտք է յաղթահարենք այս փորձութիւնը, պէտք է կարողանանք անել այնպէս, որ այս վէրքն էլ արագ սպիանայ: Ես սա ասում եմ ցաւով: Ցաւով, որովհետեւ յոգնել եմ մեր ժողովրդի մարմնին միայն սպիներ տեսնելուց, ցաւով, որովհետեւ վաղուց ժամանակն է, որ մեր երկիրը, մեր ժողովուրդը գնայ առաջ: Ցաւով, որովհետեւ որոշ մարդիկ չեն կարողացել մինչեւ վերջ գիտակցել մեր այս ձեռքբերման արժէքը:

Ժողովրդավարութեան արժէքը:

Ընտրութիւնների միջոցով իշխանութեան ձեւաւորման արժէքը:

Մեծամասնութեան կարծիքի արժէքը:

Հայաստանի Հանրապետութեան սիրելի քաղաքացիներ,

Ես երախտապարտ եմ ձեզ իմ հանդէպ ցուցաբերած այս բարձր վստահութեան համար: Երդւում եմ, որ կ'անեմ ամէն ինչ՝ ձեր վստահութիւնն արդարացնելու եւ պարզ ճակատով հանդէս գալու համար:

Հաւատացնում եմ, որ դուք չէք ափսոսալու այն բանի համար, որ ընտրութիւններում ձեր ձայնը տուել էք Սերժ Սարգսեանին:

Շնորհակալութիւն եմ յայտնում նաեւ բոլոր նրանց, ովքեր քուէարկել են միւս թեկնածուների օգտին: Մենք յարգում ենք մեր քաղաքացիների տեսակէտներն ու չենք բաժանում հասարակութիւնը մերոնց ու նրանց, կամ ինչպէս որոշ վայ ժողովրդավարներ են այսօր անում՝ «մերոնց ու ազգի տականքի»: Ֆաշիզմն ու ռեւանշիզմը մեզ խորթ են:

Հաւաստիացնում եմ, որ մանրամասն վերլուծութեան կ'ենթարկուի նախընտրական շրջանում թեկնածուների կողմից հնչեցուած ողջ քննադատութիւնը: Առողջ քննադատութիւնը տարանջատուելու է մաղձից եւ անպայման հաշուի է առնուելու մեր քաղաքականութեան մէջ: Ես վստահ եմ՝ ընտրական գործընթացը, որի միջով անցանք միասին, միայն ուժեղացնելու է մեզ, միայն նպաստելու է մեր երկրի յետագայ վերելքին ու իրական ժողովրդավարութեան արմատաւորմանը:

Ես այս բարձր ամբիոնից դիմում եմ նախկին թեկնածուներին եւ նրանց սատարած քաղաքական ուժերին. եկէ՛ք համագործակցենք: Ընդհուպ մինչեւ կոալիցիոն կառավարութեան ձեւաւորում: Նպատակներիցս մէկն է՝ օգտագործել բոլոր կառուցողական, հիմնակազմիչ ուժերին՝ ի նպաստ Հայաստանի զարգացման:

Այսօր ես ուզում եմ խօսել մեր երկրում ժողովրդավարութեան ճակատագրի մասին, այսօր ձեր առաջ ուզում եմ խօսել մարդու, Հայաստանի Հանրապետութեան իւրաքանչիւր քաղաքացու արժանապատւութեան մասին: Այն արժանապատւութեան, որ կարող է լինել միայն երկրում, որտեղ իշխանութիւնը ձեւաւորւում է ընտրութիւնների միջոցով: Այն արժանապատւութեան, որի վատնելու իրաւունքը չունենք:

Այդ արժանապատուութեան տէրը դարձել էք դուք, ընտրութիւններին ձեր մասնակցութեամբ: Այսօր ես իմ շնորհակալական խօսքն եմ ասում ձեզ՝ Հայաստանի Հանրապետութեան բոլոր քաղաքացիներին: Ես շնորհակալ եմ, որ դարձաք մեր երկրում ժողովրդավարութեան զարգացման մասնիկն ու շարժիչ ուժը:

Իւրաքանչիւր յաղթանակ ինչ-որ հանգրուանի վերջն է: Բայց ինձ համար մեր բոլորի յաղթանակն ընդամէնը սկիզբն է: Սկիզբն է գալիք յաղթանակների, մեր պետութեան յաղթանակների, համազգային նոր յաղթանակների: Մեր միասնական ջանքերով է, որ հայ ժողովրդի պատմութիւնը մենք դարձնում ենք յաղթանակների պատմութիւն: Մեր սերունդները այս յաղթանակներով են հպարտանալու: Մեր պատմութեան այս էջերում, որոնք միասին ենք գրում, խօսելու ենք միայն յաղթանակներից:

Ես ձեզ խոստացել եմ յաղթանակներ, եւ մենք յաղթել ենք: Ես խոստանում եմ նոր յաղթանակներ, եւ մենք յաղթելու ենք:

Մենք յաղթելու ենք աղքատութեանը, մենք յաղթելու ենք չարութեանը, մենք յաղթելու ենք անտարբերութեանը:

Մեր երկրում յաղթելու է մարդասիրութիւնը, մեր երկրում յաղթելու է սրտացաւութիւնը, մեր երկրում յաղթելու է լաւատեսութիւնը:

Այսօր, սակայն, մենք ականատեսն ենք այլ երեւոյթի: Ականատեսն ենք հասարակութեան բաժանման ու տրոհման, ականատեսն ենք, թէ ինչպէս է ազրեսիւ խմբաւորումը ցանկանում ամէն գնով հասնել իր նպատակին, իր իսկ բնորոշմամբ՝ «հարամել»: Ականատեսն ենք վտանգաւորութեամբ աննախադէպ մի գործընթացի: Ինձ համար այսօր չկայ մերոնքական-ձերոնքականի խնդիր, չկայ իշխանութեան ու ընդդիմութեան խնդիր: Այսօր կայ Հայաստանի խնդիրը, մեր պետականութեան շարունակականութեան խնդիրը, մեր արժէքների պաշտպանութեան խնդիրը, խնդիր, որի լուծման համար ենք հաւաքուել այստեղ: Այդ պատճառով, ես կոչ եմ անում բոլորին, անկախ իրենց քաղաքական հայեացքներից, անկախ իրենց գաղափարախօսական մօտեցումներից, յաղթահարել մեր ժողովրդի միջեւ մտցուած այս արհեստական բաժանումը:

Մենք յաղթելու ենք նաեւ այս բաժանմանը:

Մենք յաղթելու ենք, յաղթելու է Հայաստանի Հանրապետութեան իւրաքանչիւր քաղաքացի, յաղթելու է համայն հայութիւնը:

Սիրելի հայրենակիցներ,

Ես յորդորում եմ ձեզ չլցուել չարութեամբ, քանի որ այնտեղ՝ միւս հրապարակում, մեր քոյրերն ու եղբայրներն են: Համոզուած եմ, նրանց հրապարակ է բերել աւելի լաւ Հայաստան ունենալու ցանկութիւնը, սակայն, աւաղ, նրանց արդէն թոյլ չեն տալիս նկատել, թէ ինչպէս են ակամայ դարձել մի քանիսի վրէժխնդրութեան ու աթոռապաշտական նկրտումների գործիքը: Ես գիտեմ, թէ դուք որքան էք վրդովուել այս օրերին, հետեւելով այն ամէնին, ինչ կատարւում է: Ես գիտեմ, որքան շատ են այսօր մարդիկ, որ պատրաստ են փողոց դուրս գալ, պաշտպանելու իրենց տուած քուէն: Ես այդ ամէնը շատ լաւ գիտեմ: Բայց ես խնդրում եմ ձեզ զսպել յոյզերը. թէ խօսք ունէք ասելու, ապա խնդրում եմ միայն իրականութիւնը տեսնելու յորդորներ թող լինեն դրանք, եթէ գործողութիւններ էք ուզում ձեռնարկել, ապա թող որ դրանք լինեն բարիքի ու հանդուրժողականութեան քայլեր: Խնդրում եմ, միշտ ու անընդհատ յիշէք, միւս հրապարակում մեր քոյրերն ու եղբայրներն են:

Յարգելի բարեկամներ,

Այս ընտրութիւնները ցոյց տուեցին, որ մենք կարողացել ենք շատ ու շատ խնդիրներ լուծել լաւ ընտրութիւնների կազմակերպման ճանապարհին: Այս ընտրութիւնները ցոյց տուեցին, որ մենք դեռ էլի ճանապարհ ունենք անցնելու. առաջին հերթին՝ ընտրական գործընթացի հանդէպ վստահութեան բարձրացման ճանապարհ:

Այս ընտրութիւնները ցոյց տուեցին, որ մենք կարողացել ենք մեզանում կայացնել «արժանապատիւ յաղթանակի» ինստիտուտը: Բայց այս ընտրութիւնները ցոյց տուեցին նաեւ, որ մենք դեռ երկար ճանապարհ ունենք անցնելու «արժանապատիւ պարտութեան» ինստիտուտի ձեւաւորման հարցում:

Այս ընտրութիւնները ցոյց տուեցին, որ եկել է «Առաջ Հայաստանի» ժամանակը, եկել է քրտնաջան աշխատանքի եւ մեր կեանքը պղտորող արատաւոր երեւոյթների դէմ պայքարի ժամանակը: Սա շատ լաւ հասկացան նաեւ մի քանի՝ մինչեւ ականջները կեղտի մէջ թաղուած մարդիկ, ովքեր շտապեցին յայտարարել, թէ չգիտես ինչ գաղափարների կողմնակից են եւ անցնում են, այսպէս ասած, պայքարի: Այս մարդկանց շատերն այսօր դաւաճան են կոչում, կոչում են ճամբար փոխած մարդիկ: Բայց ես շատ լաւ եմ հասկանում այդ մի քանի անձնաւորութիւններին. նրանք շատ լաւ են ճանաչում ինձ, գիտեն, որ ես այն անձնաւորութիւնը չեմ, ով թոյլ կը տայ շարունակել իրենց համար ընդունելի դարձած գործելաոճը, ով աչք կը փակի մեր իրականութեան ստուերոտ կողմերի վրայ: Գիտեն, որ ես արմատից կտրելու եմ լկտի պահուածքը, հարկ չտալը, զոռբայութիւնը, խմբապետութիւնը: Իսկ իրենց կեանքը միայն մութ անկիւններում պատկերացնողների համար ոչինչ չէր մնում, քան փախչել եւ հարթակներից խօսքեր ճամարտակել ժողովրդավարութեան մասին, ինչից իրականում իրենք այնքան հեռու են, որքան հեռու են մեր ժողովրդի հոգսերից ու խնդիրներից:

Այս ամէնի մէջ, սիրելի հայրենակիցներ, ինձ համար ամէնից անընդունելին իմ մի քանի մարտական ընկերների անվայել պահուածքն է, ում սատանան կարողացաւ գայթակղել խոստումներով ու զազրախօսութեամբ: Երկերեսանիութիւն, չպատճառաբանուած նկրտումներ, ոչ իրատեսական ցանկութիւններ, չհիմնաւորուած պահանջներ. սրանք ինձ համար անընդունելի երեւոյթներ են: Ես միշտ արել եմ եւ շարունակելու եմ սրտի ցաւով, բայց վայրկեան իսկ չվարանելով, իրենց տեղը դնել չափն անցածներին, իրատեսութիւնը կորցրածներին, անկախ անցած մարտական ուղուց, շնորհուած կոչումներից ու պարգեւներից: Հայաստանի շահը վեր է ամէն ինչից:

2008 թուականի նախագահական ընտրութիւններն այլեւս պատմութիւն են: Եւրոպական բոլոր կառոյցների, Անկախ Պետութիւնների համագործակցութեան, Միացեալ Նահանգների պետդեպարտամենտի դիտորդների ու պաշտօնեաների դրական եզրակացութիւնները մեր նախագահական ընտրութիւնների առնչութեամբ արդէն հրապարակուած են: Մենք ունեցանք նախընտրական, ընտրական եւ յետընտրական բաւական բարձր մակարդակով անցկացուած գործընթացներ: Հաւատացնում եմ ձեզ, այս ամէնն իսկապէս շատ կարեւոր էր Հայաստանի համար:

Ես նաեւ գոհ եմ, որ մեր երկրում մարդիկ բոլոր հնարաւորութիւններն ունեն յետընտրական շրջանում եւս ազատ արտայայտել իրենց մտքերն ու տեսակէտները, հանրահաւաքներ անցկացնել: Ցաւօք, մարդիկ կրկին չկարողացան յաւուր պատշաճի օգտուել իրենց ազատութիւններից եւ հերթական անգամ անցան կոռեկտութեան բոլոր

սահմանները, կորցրին չափի զգացողութիւնը: Չնայած այս ամէնին, ես շարունակելու եմ պաշտպանել մեր քաղաքացիների իրաւունքները:

Ես պաշտպանելու եմ խօսքի ազատութեան իրաւունքը: Սակայն ազատ խօսքը չի նշանակում զրպարտութեան եւ հայհոյանքի ազատութիւն:

Ես պաշտպանելու եմ հանրահաւաքների ազատութեան իրաւունքը: Սակայն հանրահաւաքների ազատութիւնը չի նշանակում, որ մայրաքաղաքի կեանքը պիտի կաթուածահար լինի:

Ես պաշտպանում եմ բողոքի իրաւունքը, սակայն բողոքի իրաւունքը չի նշանակում, որ մեր քաղաքացիների սահմանադրական այլ իրաւունքները պիտի ոտնահարուեն: Չի նշանակում, որ պիտի ոտնահարուի իշխանութիւն ձեւաւորելու մեծամասնութեան իրաւունքը:

Սիրելի հայրենակիցներ, քոյրեր եւ եղբայրներ,

Այս նախագահական ընտրութիւնները շրջադարձային եղան մեր նորանկախ պետութեան պատմութեան մէջ: Ընտրութիւնների արդիւնքում երկրում ստեղծուել է իրական ժողովրդավարութեան ամրապնդման բացառիկ հնարաւորութիւն: Հաւատում եմ՝ այս իրավիճակը լրջօրէն նպաստում է ամուր իշխանութիւն եւ ուժեղ կառուցողական ընդդիմութիւն ունենալու մեր նպատակների իրականացմանը:

Մենք չենք վախենում ուժեղ ընդդիմութիւնից: Ճիշտ հակառակը, համոզուած ենք, որ միայն կառուցողական ընդդիմութեան առկայութեամբ մենք կը կարողանանք ապահովել մեր երկրի առաջանցիկ զարգացումը:

Ես բարձր եմ գնահատում մեր ժողովրդի մեծագոյն տառապանքների գնով ձեռք բերուած կայունութիւնը՝ այն համարելով իրական պատմական ձեռքբերում, որին մենք հասել ենք տեւական քրտնաջան աշխատանքով:

Այո, տնտեսական աճն այնքան արագ չի անդրադառնում ժողովրդի կենսամակարդակի վրայ, որքան մենք կը ցանկանայինք: Այո, աղքատութեան յաղթահարումը ժամանակ է պահանջում: Այո, մենք խնդիր ունենք ապահովել երկրում մրցակցային տնտեսութիւն՝ վերջնականապէս ձերբազատուելով տնտեսութեան յետխորհրդային շրջանում անխուսափելիօրէն ձեւաւորուող օլիգարխիկ համակարգից: Բայց մենք այսօր շատ աւելի ուժեղ ենք այս խնդիրները լուծելու համար:

Ես համագործակցութեան կոչ եմ անում երկրի բոլոր քաղաքական ուժերին ու հասարակական միաւորումներին: Նորից ու նորից կրկնում եմ՝ իշխանութիւնը պատրաստ է համագործակցելու ընդդիմադիր բոլոր ուժերի հետ յանուն Հայաստանի զարգացման եւ ի բարեկեցութիւն Հայաստանի Հանրապետութեան ժողովրդի:

Միաժամանակ, ամենայն պատասխանատուութեամբ յայտարարում եմ, որ ամենավճռական քայլերը կը ձեռնարկուեն մեր երկրում առկայ քաղաքական կայունութեան ամրապնդման, հասարակական կարգուկանոնի պահպանման եւ հասարակութեան բնականոն կեանքի ապահովման ուղղութեամբ:

Սիրելի հայրենակիցներ,

Ճակատագրի կամօք, մեզ վիճակուել է ապրել պատմական բարդ, բայցեւ հետաքրքական ժամանակաշրջանում: Մեզ բաժին են հասել հիմնականում պարտադրուած ելք ունեցող երկընտրանքները, օրինակ՝ խաղաղութեան ու պատերազմի երկընտրանքը, որի արդիւնքում պատերազմեցինք ու յաղթանակեցինք՝ յանուն խաղաղութեան, յանուն

առաջընթացի:

Այսօր մենք կանգնած ենք միասնականութեան ու մասնատուածութեան երկընտրանքի առաջ: Այսօր ժողովրդավարութեան ու իշխանութեան բռնազաւթման երկընտրանքի առաջ ենք:

Մենք այսօր այդ ժողովրդավարութեան պաշտպաններն ենք:

Հաւատացնում եմ ձեզ, մեր երկրում ժողովրդավարութեան զինանոցը չի սպառուել: Չի սպառուել, քանզի քչերն են այն օգտագործելու խիզախութիւն ունեցել: Չի սպառուել, որովհետեւ ժողովրդավարութիւնը նշանակում է առանց վախենալու նայել սեփական ժողովրդի աչքերին, չի սպառուել, որովհետեւ ժողովրդավարութիւնը սուտ ու կեղծիք չի ընդունում, չի սպառուել, որովհետեւ ժողովրդավարութեան պայմաններում հնարաւոր չէր լինի վերադառնալ՝ առանց սեփական ժողովրդից ներողութիւն խնդրելու:

Ժողովրդավարութիւնը նշանակում է, որ մեր քաղաքացիների իրաւունքները պաշտպանուած են լինելու: Առաջին հերթին՝ ընտրութիւնների միջոցով իշխանութիւն ձեւաւորելու իրաւունքը: Այսօր մենք այդ իրաւունքն ենք պաշտպանում: Ես պաշտպանելու եմ մարդու հիմնարար իրաւունքները: Պաշտպանելու եմ իմ ողջ կեանքի ընթացքում:

Սիրելի քոյրեր եւ եղբայրներ,

Այսօր, ընտրութիւններից մէկ շաբաթ անց, ես ասում եմ, որ անցել է նախընտրական կարգախօսների ժամանակը, անցել է քարոզչութեան ժամանակը, անցել է մեղադրանքների ժամանակը: Այժմ մենք ուրիշ խնդիրներ ունենք: Պէտք է իրականութիւն դարձնենք մեր հայրենակիցների սպասելիքները, պէտք է անդրադառնանք նրանց դարդ ու ցաւին, պէտք է շարունակենք աշխատել ու արարել:

Սուրբ Գիրքն ասում է. «Ամէն ինչ ունի իր ժամանակը»:

Այսօր քարեր հաւաքելու ժամանակը չէ: Այսօր քարը փէշից թափելու ժամանակն է:

Այսօր քէն ու ոխակալութիւն խաղալու ժամանակը չէ: Այսօր խաղաղութեան ժամանակն է:

Այսօր նոր ջրբաժաններ քաշելու ժամանակը չէ: Այսօր միասնութեան ժամանակն է:

Այսօր աշխատանքի ժամանակն է:

Այսօր համազգային նոր յաղթանակների ժամանակն է:

Մարդու արժանապատուութեան ու ժողովրդավարութեան ժամանակն է:

Այսօր ժամանակն է յաղթահարելու մեր տարաձայնութիւնները, այսօր ժամանակն է, որ ազգովին ասենք.

«Մենք կարո՛ղ ենք յաղթահարել ցանկացած փորձութիւն», եւ յաղթահարելու ենք:

«Մենք կարո՛ղ ենք արագ շարժուել առաջ», եւ շարժուելու ենք:

«Մենք կարո՛ղ ենք ունենալ մեր երազած Հայաստանը», երդւում եմ. ունենալու ենք:

Ուրեմն առաջ,

Առա՛ջ, դէպի նոր յաղթանակների Հայաստան,

Առա՛ջ Հայաստան:

## ՍԿՍՈՒԵԼ Է ԵՐԹ

*Lragir.am*, 17:14

Ազատութեան Հրապարակից սկսուել է երթ: Կազմակերպիչները կոչ են արել երթին

մասնակցել մինչեւ 60 տարեկաններին: Երթը բաւական բազմամարդ է, որի սկիզբը անցնում է Խորենացի-Ամիրեան խաչմերուկով, իսկ վերջին շարքերը դեռ հրապարակում են: Երթի առջեւից ոստիկանութեան մեքենան է գնում եւ յայտարարում, թէ այն արտօնուած չէ, եւ կոչ է անում դադարեցնել երթը անկանխատեսելի հետեւանքներից խուսափելու համար: Նալբանդեան փողոցը փակ է, երթը անցնելով Հանրապետութեան Հրապարակով, թեքուեց դէպի Թումանեան փողոց եւ ուղղութիւն վերցրեց դէպի Ազատութեան Հրապարակ:

## ԵՐԿՈՒ ԵՐԹ ՄԻԱԺԱՄԱՆԱԿ (video)

*A1+*, 17:21

Ազատութեան Հրապարակում շարունակւում է հանրահաւաքը: Իսկ այս պահից սկսւում են երթեր երկու տարբեր ուղղութիւններով: Հանրապետութիւն կուսակցութեան քաղխորհրդի նախագահ Արամ Սարգսեանը ելոյթ է ունեցել եւ յայտարարել, որ իրենք իրական լուծում են առաջարկում այս իշխանութիւններին, որ հեռանան:

Դրա համար պատրաստել են երկու փաստաթուղթ, մէկը հասցէագրուած է ԿԸՅ-ին, որի տակ ստորագրել է 500 000 քաղաքացի: Այդ փաստաթղթով պահանջւում է չեղեալ համարել այդ խայտառակ ընտրութիւնները: Իսկ միւս դիմումը նախատեսւում է յանձնել Գլխաւոր Դատախազութեանը: Ցուցարարները պահանջելու են ազատ արձակել բոլոր ձերբակալուածներին, որոնք, ըստ Արամ Սարգսեանի, քաղբանտարկեալներ են:

## ԼԻ ԽՈՒԶԱՐԿՈՒԹԻՒՆ (video)

*A1+*, 17:21

Այսօր առաւօտեան ժամը 5:00-ին դիմակաւոր մարդկանց մի խումբ փորձել է խուզարկել Արմէն Սիրունեանի տունը: Նա ընդդիմութեան ակտիւիստներից է: Խուզարկողները ներկայացել են որպէս ԱԱԾ-ի աշխատակիցներ: Սիրունեանի կինը նրանց տեղեկացրել է, որ ամուսինը տանը չէ, իսկ այդ ընթացքում հաւաքուել են շէնքի բնակիչները:

Արմէն Սիրունեանը սպասել է մինչեւ լրագրողների եւ իր փաստաբանի գալը եւ միայն այդ ժամանակ ներս է թողել ԱԱԾ աշխատակիցներին: Դիմակաւոր մարդիկ ներկայացրել են ծանուցագիր, որում հասցէն եւ ամսաթիւը սխալ է նշուած եղել:

Շէնքի լիազօրը եւ մի քանի ականատեսներ *Ա1+*-ին յայտնել են, որ դիմակաւոր մարդիկ եկել են գիշերով, վախեցնելով բնակիչներին եւ Սիրունեանի երեխաներին: Ընդ որում Սիրունեանի մի երեխան նորածին է:

Արմէն Սիրունեանը տեղեկացրեց նաեւ, որ տան դիմաց նկատել է մօտ 5-6 աւտոմեքենայ, որոնցում նոյնպէս եղել են դիմակաւոր մարդիկ: Իսկ ԱԱԾ աշխատակիցները պատճառաբանել են տան խուզարկումը նրանով, որ Արմէն Սիրունեանը ընտրութիւնների ակտիւ մասնակից է: Դա նաեւ նշուած է եղել ծանուցագրում:

## ԿՈՉ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՆԴԱՄԵՐԻՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՆԴԱՄԻՑ

*Lragir.am*, 17:28

ՀՅԴ անդամ Արամ Մանուչարեանը կոչով դիմել է իր կուսակցական ընկերներին, որում նշում է, թէ այսքան ժամանակ սպասում էր, «յուսալով, որ վերջապէս ՀՅԴ-ն կը

գլխաւորի ժողովրդական շարժումն ի դէմս Վահան Յովհաննիսեանի: Ցաւօք, դա տեղի չունեցաւ: Կուսակցութեան մէջ ոչ ոք չի գտնուի, որ կ'ապացուցի, թէ աւելի շատ է ատել Լեւոն Տէր-Պետրոսեանի իշխանութիւնը, քան ես: Բայց դա անցեալ է: Այսօր ես սատարում եմ Լեւոն Տէր-Պետրոսեանին եւ իր առաջնորդած շարժումը, քանի որ դա է պահանջում մեր ազատութիւնը եւ հայրենիքը: Ընտրութիւնը ձերն է:

Ժամանակին, մեզ՝ ՀՅԴ անդամներիս, մատով էին ցոյց տալիս, եւ մենք հպարտանում էինք: Վաղը դա արդէն ամօթի զգացողութիւն է դառնալու: Երեկոները տուն գալով ինչ կ'ասէք ձեր զաւակներին. «ՀՅԴ-ն մեռաւ», թէ «ՀՅԴ-ն ոտքի կանգնեց»: Որոշումը ձերն է:

Կեանքում առաջնորդուել եմ երեք սկզբունքով: Առաջին՝ Սիրել հայրենիքը: Երկրորդ՝ հաւատալ Աստծուն: Երրորդ՝ Պաշտպանել ընտանիքը: Այս սկզբունքներն ինձ մղեցին դառնալ ՀՅԴ անդամ: 1991-ից ես մարտնչել եւ առաջնորդել եմ ՀՅԴ զինեալ ջոկատները, նախ որպէս Ղարաբաղի Ազատութեան Մարտիկներ կառոյցի անդամ, յետոյ ՀՅԴ մարտական պատասխանատու: Մնացածը կարող է ասել իմ ընկեր Հրանտ Մարգարեանը», ասւում է յայտարարութեան մէջ:

## ՎԱՐՉԱՊԵՏԻ «ԱԶԱԿԻՑՆԵՐԸ» ՄԻԱՑԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ

*Հետք*, 17:37

Այսօր Ազատութեան Հրապարակում շարունակուեց ժողովրդական շարժման մասնակիցների հանրահաւաքը: Սակայն ի տարբերութիւն նախորդ օրերի՝ այս անգամ մասնակիցների թիւը կտրուկ աւելացել էր:

Պատճառն այն էր, որ երէկ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել էր համաժողովրդական հանրահաւաք կազմակերպելու մասին՝ ի հեճուկս Սերժ Սարգսեանի, որը տարբեր մարզերից Հանրապետութեան Հրապարակում հաւաքել էր իր աջակիցներին:

Սակայն այդ աջակիցների մեծ մասը կարճ ժամանակում լքեցին Հանրապետութեան Հրապարակը եւ Հիւսիսային Պողոտայով եկան Ազատութեան Հրապարակ: Նրանց ողջունում էին «Միացում» վանկարկումներով: Փաստօրէն, Սերժ Սարգսեանը անուղղակի կերպով նպաստեց, որ ժողովրդական շարժման մասնակիցների թիւն աճի: Դրա համար էլ Լեւոն Տէր-Պետրոսեանը, որպէս ՀՀ նախագահ, յայտարարեց Սարգսեանին «Մարտական խաչ» շքանշանով պարգեւատրելու մասին: Նա նաեւ կոչ արեց հացադուլաւորներին դադարեցնել իրենց բողոքի ակցիան եւ միանալ երգ ու պարով յաղթանակը նշողներին: Ըստ Տէր-Պետրոսեանի՝ «սա երգ ու պարի յեղափոխութիւն է»: Հացադուլաւորները անսացին Լեւոն Տէր-Պետրոսեանի կոչը եւ դադարեցրին հացադուլը: Այնուամենայնիւ, հանրահաւաքը վարող Միքայէլ Հայրապետեանը նշեց, որ իրենք չեն մոռանայ այն, որ առողջապահութեան նախարարութիւնը եւ Կարմիր Խաչը այսպէս էլ բժշկական օգնութիւն չցուցաբերեցին հացադուլաւորներին: Տէր-Պետրոսեանը մէկ այլ «հրամանագրով» քաղաքացիութիւն շնորհեց Ֆրանսիայի քաղաքացի, հացադուլաւոր Սարգիս Հացպանեանին, որը նրանից խնդրել էր իրեն ՀՀ քաղաքացիութիւն շնորհել:

Այսօր հարթակից ելոյթ ունեցան նաեւ ոստիկանութիւնից ազատ արձակուած Սամուէլ Յարութիւնեանն ու Գառնիկ Մարգարեանը, որոնք ձերբակալուել էին ժամեր առաջ:

Շարժման մասնակից մինչեւ 60 տարեկան քաղաքացիները Մաշտոցի Պողոտա-

Ամիրեան փողոց-Հանրապետութեան Հրապարակ-Նալբանդեան-Թումանեան փողոց աւանդական երթուղով բազմահազարանոց երթ կազմակերպեցին: Դրան մասնակցում էին նաեւ Սերժ Սարգսեանի հաւաքին բերուած, բայց յետոյ Ազատութեան Հրապարակ եկած մարդիկ:

## «ՀԻՄԱՆ» ԼՍՈՒԵՑ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ (video)

*A1+*, 17:51

Այն պահին, երբ Սերժ Սարգսեանը իր ելոյթի վերջին բառերն էր արտասանում, իսկ նրա թիկունքում էին մարզպետները, ԱԺ նախագահը, ԱԺ ՀՀԿ եւ ԲՀԿ պատգամաւորները, «յանուն Սերժ Սարգսեանի պաշտպանութեան» հաւաքուած մարդիկ շտապում էին հեռանալ Հանրապետութեան Հրապարակից. մի մասը դէպի Ազատութեան Հրապարակ, միւս մասն ուղղակի անձրեւից պատսպարուելու համար:

Իսկ հայկական ժամանակակից էստրադայի աստղերն ապրեցին իրենց կեանքի թերեւս ամենամեծ ֆիասկոն. մարդաշատ դահլիճներ հաւաքող «աստղերն» այսօր երգում էին մի քանի հոգու համար. ՀՀԿ ղեկավարութեան բեմը լքելուց առաջ արդէն հրապարակը դատարկւում էր:

Իսկ համերգային ծրագիրը վարող Գէորգը երգիչների ոգին բարձրացնելու համար, փորձում էր դեռեւս հրապարակում մնացածներին ստիպել ողջունել աստղերին. «Այժմ ողջունում ենք Սիրուշոյին, այնպէս ենք ողջունում, ինչպէս պէտք է ուղեկցենք նրան դէ՞պի Եւրատեսիլ»: Եղիազարեանի այս կոչին ծափեր եւ ողջոյններ չհետեւեցին: «Այսպէ՞ս էք ողջունում Սիրուշոյին», - շարունակեց վարողը, բայց միայն հնչեց մի քանի տասնեակ մարդկանց ծափեր: Իսկ Սիրուշոն սկսեց երգել «Հիմա» անունը կրող երգը: Նկատենք, որ «հիմա»-ն վերջին օրերին Ազատութեան Հրապարակում առաւել յաճախ հնչող խօսքն է, եւ յատկապէս Նիկոլ Փաշինեանի կարգախօսը:

Սիրուշոն, Ֆորշը, Էմմա Պետրոսեանն ու Արամոն եւ ուրիշներ ստիպուած էին իրենց լսող մօտ 100 մարդու համար համերգ տալ անձրեւի տակ:

## ԱՆՅԱՅՏ Է ԽԱՉԱՏՈՒՐ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ ԹԻԿՆԱՊԱՀԻ ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ

*Lragir.am*, 18:01

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական գրասենեակից տեղեկացնում են, թէ երէկ երեկոյից անյայտ է Խաչատուր Սուքիասեանի թիկնազօրի անդամ Ասատուր Ասատրեանի գտնուելու վայրը: Երէկ երեկոյեան թիկնազօրը Խաչատուր Սուքիասեանին ուղեկցել է տուն, որից յետոյ Ասատուր Ասատրեանից տեղեկութիւն չկայ:

## ՈՐՏԵ՞Ղ Է ԹԻԿՆԱՊԱՀԸ

*A1+*, 18:05

Երէկ գիշերուանից անյայտ է ԱԺ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանի թիկնապահ Ասատուր Ասատրեանի գտնուելու վայրը: Նա տուն է ճանապարհել պատգամաւորին, որից յետոյ նրա գտնուելու վայրն անյայտ է:

Հաղորդում է Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը: Ի դէպ, առաւօտեան բերման ենթարկուած Գառնիկ Մարգարեանը եւ Սամուէլ Յարութիւնեանը ազատ են արձակուել:

## ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է ԱՀՄԱԴԻՆԵԺԱԴԸ

*A1+*, 18:09

Հայաստանի Հանրապետութեան նախագահական ընտրութիւններում տարած յաղթանակի առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Իրանի Իսլամական Հանրապետութեան նախագահ Մահմուդ Ահմադինեժադը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում Ձեր ընտրուելու կապակցութեամբ ջերմօրէն շնորհաւորում եմ Ձեզ, Հայաստանի կառավարութեանը եւ ժողովրդին:

Յուսով եմ, որ Ձեր պաշտօնավարութեան ընթացքում երկու երկրների ամուր, խորը եւ ընդլայնուող կապերն ու կառուցողական համագործակցութիւնը կը շարունակեն զարգանալ, ինչպէս նաեւ կը բազմապատկուեն երկու ժողովուրդների բարեկամական շփումները:

Մաղթելով Ձեզ քաջառողջութիւն եւ յաջողութիւններ, իսկ Հայաստանի ժողովրդին՝ երջանկութիւն եւ բարեկեցութիւն, հրաւիրում եմ Ձեզ այցելել Իրանի Իսլամական Հանրապետութիւն»:

## ԻՍԿ «ԶՈՌԲԱՅՈՒԹԵԱՄԲ» ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ՊԱՀՈ՞ՒՄ ԵՆ

*A1+*՛ 18:09

Մինչ Հանրապետութեան Հրապարակում Սերժ Սարգսեանը համագործակցութեան եւ կոալիցիա ձեւաւորելու կոչ էր անում, Ռոբերտ Քոչարեանը Հանրային հեռուստատեսութեամբ տալիս էր հարցազրոյց, իսկ աւելի ճիշտ ահաբեկում էր մարդկանց. «Ոչ մի երկիր չէր հանդուրժի մէկ օրից աւել ապօրինի ցոյցեր, նախադէպի խնդիր է առաջանում, վստահութեան խնդիր իրաւապահ ամբողջ համակարգի նկատմամբ: Համբերութիւնը համբերատարութեամբ, բայց ժամանակն է, որ բոլորը սթափուեն եւ հասկանան, որ զոռբայութեամբ իշխանութեան չեն գալիս: Իմ կոչը նաեւ հրապարակում գտնուող մարդկանց հետեւեալն է, յարգելի ժողովուրդ, գործիք մի դարձէք անպատասխանատու քաղաքական գործիչների ձեռքում, դա ձեր խաղը չի, այդ խաղից դուք չէք շահելու, միայն կորցնելու էք, եւ կորցնելու է երկիրը», - ասաց Ռոբերտ Քոչարեանը:

## ԳԱՌՆԻԿ ՄԱՐԳԱՐԵԱՆԸ ԵՒ ՍԱՄՈՒԷԼ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՆ ԱԶԱՏ ԵՆ ԱՐՁԱԿՈՒԵԼ

*Lragir.am*, 18:10

Ազատ են արձակուել Հայրենիք եւ Պատիւ կուսակցութեան նախագահ Գառնիկ Մարգարեանն ու Գորիսի նախկին քաղաքապետ Սամուէլ Յարութիւնեանը, որոնք ներկայում Ազատութեան Հրապարակում են: Սամուէլ Յարութիւնեանը ելոյթ է ունեցել եւ երգել:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԿՈՉ ԱՐԵՑ ԴԱԴԱՐԵՑՆԵԼ ՀԱՑԱԴՈՒԼԸ

*Lragir.am*, 18:14

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանը կոչ արեց հացա-

դուլ յայտարարածներին դադարեցնել հացադուլը, տաք հագնուել եւ միանալ երգ ու պարին: Իր հերթին, Միքայէլ Հայրապետեանը, ով վարում է հանրահաւաքը, ամօթանք տուեց Կարմիր Խաչին եւ Առողջապահութեան Նախարարութեանը, որոնք այդպէս էլ չայցելեցին հացադուլ յայտարարածներին: Հացադուլը դադարեցուել է:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ԵՐԿՈՒ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

*Lragir.am*, 18:25

Այսօրուայ հանրահաւաքում Լեւոն Տէր-Պետրոսեանը խօսել է իր երկու հրամանագրի մասին: Առաջին հրամանագրով նա Սերժ Սարգսեանին պարգեւատրել է Արիութեան Խաչ մեդալով՝ համաժողովրդական շարժմանը աջակցելու համար, ի նկատի ունենալով, որ մարդիկ Սերժ Սարգսեանի հանրահաւաքից միացել են իր հանրահաւաքին: Իսկ երկրորդ հրամանագիրը վերաբերում է ֆրանսահայ Սարգիս Հացպանեանին, ով դիմել է Ֆրանսիայի քաղաքացիութիւնից հրաժարուելու եւ ՀՀ քաղաքացիութիւն ստանալու խնդրանքով: Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, թէ Սարգիս Հացպանեանին շնորհում է իր օրօք քաղաքացիութիւն, եւ Հացպանեանը իր նոր նախագահութեան ժամանակաշրջանում Հայաստանի քաղաքացիութիւն ստացած առաջին սփիւռքահայն է: Ազատ Հայաստանի հաստատումից յետոյ այդ սփիւռքահայերի թիւը լինելու է հարիւր հազարաւոր:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԽՈՍՏԱՆՈՒՄ Է ԳՈՐԳ ՓՌԵԼ ՔՈՉԱՐԵԱՆԻ ԱՌԱՋ (video)

*A1+*, 18:44

Դիմելով Սերժ Սարգսեանին ու Ռոբերտ Քոչարեանին՝ Լեւոն Տէր-Պետրոսեանն Ազատութեան Հրապարակում յայտարարեց. «Ձեզ եմ դիմում ընկերական, բարեկամական վերաբերմունքով՝ խելքի եկէք, հասկացէք, թէ ինչ է կատարւում այս երկրում: Հիմա քաջութիւն ունեցէք այս պահին, մենք սիրով կ'ընդունենք ձեզ: Կարող էք ժողովրդի միջով չգալ, Օպերան ունի ետնամուտք, այնտեղից կարող էք գալ: Մենք էլ մի կարմիր գորգ կը փռենք ձեր առջեւ մինչեւ այս միկրոֆոնը եւ այստեղից տուէք ձեր հրաժարականն ու թողէք հեռացէք»: «Հիմա, հիմա», - սկսեցին գոռալ հաւաքուածները: Նոյն կերպ նա դիմեց ԱԺ-ի պատգամաւորներին՝ նրանց եւս հրաւիրելով Ազատութեան Հրապարակ: «Ձեր ժողովուրդն այստեղ է, լքէք ձեր շէնքն ու եկէք այստեղ՝ ահա ձեր Ազգային Ժողովը: Եթէ նրանք գան, ապա կ'ողջունուեն բոլորիս կողմից», - յայտարարեց նա՝ աւելացնելով, որ Ազատութեան Հրապարակում այս պահին կէս միլիոնից աւելի մարդ կայ:

Իր ելոյթում նա նաեւ նշեց, որ ՀՀ իշխանութիւնների մեծ մասն այսօր բանտում են՝ անդրադառնալով վերջերս իրեն սատարող ուժերի ներկայացուցիչների ձերբակալութիւններին: «Վաղը նրանք են, որ իշխելու են Հայաստանում: Թող շատ բանտարկեն, ձերբակալեն, ասում եմ՝ մեր «վէճը» չի: Սա խղճուկ մարդկանց վերջին մանր ժուլիկութիւնն է», - յայտարարեց նա:

Մինչ այդ հանդէս եկան Ժառանգութիւն կուսակցութեան, Իմպիչմենտ դաշինքի ներկայացուցիչներ:

Այդ ընթացքում հարթակ բարձրացան նաեւ ոստիկանները եւ հանրահաւաքի կազմակերպիչներին զգուշացրին, որ ոչ մի դէպքում որեւէ տեսակի երթ չկազմակերպեն: Ելոյթ ունեցաւ նաեւ ՀՀ ազգային հերոս, զոհուած ազատամարտիկ Ջիւան Աբրահամեանի

մայրը, որի տուն էին այսօր առաւօտեան մտել մի քանի զինուած անձինք եւ, ինչպէս նշեցին հանրահաւաքի կազմակերպիչները՝ «ձեռքը համբուրելու փոխարէն, աւտօմատի խզակներով հոշոտել են ձեռքը»: «Ժողովուրդ ջան, չխաբնուէք, բոլորդ միացէք, լաւ պահպանէք ձեր երկիրը», - իր ելոյթում ասաց հերոսի մայրը:

Հանրահաւաքին այսօր, ի դէպ, գերիշխում են երիտասարդներն ու ուսանողները: Այդ պատճառով էլ հանրահաւաքի կազմակերպիչներն յայտարարեցին, որ երբ Լեւոն Տէր-Պետրոսեանը դառնայ նախագահ, փետրուարի 26-ը հռչակուելու է երիտասարդների օր եւ ամէն տարի այդ օրը կը լինի ռոք համերգ, որին կը հրաւիրուեն աշխարհահռչակ երգիչ-երգչուհիներ: Անընդմէջ մաղող ձիւնախառն անձրեւը չէր խանգարում բարձր տրամադրութեամբ պարելուն: «Ես որ պարել չգիտեմ, թռչկոտում եմ: Թռչկոտենք միասին», - յայտարարեց Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը: Նիկոլ Փաշինեանի ձայնն էլ լրիւ խզուել էր ու նա չէր կարողանում խօսել: Նրա խօսքերի մեկնաբանն էր դարձել Միքայէլ Հայրապետեանը, որը բառ առ բառ հաւաքուածներին էր փոխանցում Փաշինեանի՝ շշուկով ասածները:

Լեւոն Տէր-Պետրոսեանը այդ առթիւ նշեց, որ «այսօր ամենադժբախտ մարդը ոչ թէ Սերժիկն է կամ Ռոբիկը, այլ Նիկոլը, որը, ձայնալարերի կտրուելու պատճառով, զրկուել է խօսելու ունակութիւնից»:

Հարթակից յայտարարեցին, որ մարդկանց մէջ պրովոկատորներ կան, որոնք խառնակութիւններ են գցում հաւաքուածների մէջ: Օրինակ՝ ականատեսն եղանք, որ թափթըփուած հագնուած մի կին մի խուրձ ծղօտ ձեռքին թափ տալով, հայհոյելով շրջում էր շարքերով: Մարդիկ միմեանց զգուշացնում էին, որ չենթարկուեն նրա պրովոկացիաներին: Մի երիտասարդի էլ ուղղակի հեռացրին շարքերից, քանի որ նա հարբած վիճակում էր: Նիկոլ Փաշինեանը, պարելով մէկ առ մէկ պատռում էր «Հանրապետական»-ի կուսակցական տոմսերը, որոնք պարբերաբար հանրահաւաքի կազմակերպիչներին էին փոխանցնում արդէն նախկին ՀՀԿ-ականներ: Ըստ ՀՀՇ վարչութեան ղեկավար Արարատ Զուրաբեանի՝ արդէն երեկոյեան ՀՀԿ-ի շարքերի կէսն իրենց տոմսերն այստեղ են բերելու պատռելու: Մարդիկ, բութ մատը ներքեւ՝ պարբերաբար գոռում էին «Հիմա, հիմա», «Սերժիկ հեռացիր»: Ի դէպ, հանրահաւաքի կազմակերպիչներից մէկն ասաց, թէ «երբ գոռում ես Լեւոն, երկար է հնչում, անընդհատ զնում է, իսկ Սերժ գոռալ չի լինի, քանի որ միանգամից վերջանում է»: «Չըր փորձէք գոռալ», - ասաց Հայրապետեանը: Հաւաքուածներն այլ կերպ չկարողացան արձագանքել, քան. «Սերժիկ հեռացիր»:

Հանրահաւաքի ընթացքում, երբ սկսեցին ապամոնտաժել Հիւսիսային Պողոտայի էլիտար շէնքերից մէկի վրայ գտնուող Սերժ Սարգսեանի մետաղեայ մեծ ցուցապաստառը, Ազատութեան Հրապարակում գտնուողները միահամուռ սկսեցին սուլել ու գոռալ: Հարթակին գտնուողները նոյնիսկ ցաւ յայտնեցին, որ, ափսոս, այդ նկարը ինչ-որ մի տեղ խորհրդանիշ էր. «Ո՞ւր էք տանում մեր սիրվոլին: Ժողովուրդ, ապամոնտաժեցին Սերժիկին»: Շատ չանցած բանուորներն իրենց աշխատանքները թողեցին ու հեռացան՝ թողնելով Սերժ Սարգսեանի ցուցապաստառը:

Որպէս յաղթանակի խորհրդանիշ երկինք բաց թողնուեցին խաղաղութեան աղաւնիներ, որոնք սկսեցին սաւառնել Ազատութեան Հրապարակի վրայ:

## ԱՅՍՕՐ ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԸ ՀԱՆԴԻՊԵՑ ԵԱՀԿ ԳՈՐԾՈՂ ՆԱԽԱԳԱՀԻ ՀԵՏ

*Lragir.am*, 18:46

Այսօր Ժառանգութիւն կուսակցութեան եւ համանուն խորհրդարանական խմբակցութեան ղեկավար Րաֆֆի Կ. Յովհաննիսեանը հանդիպեց Ֆինլանդիայի արտաքին գործերի նախարար, ԵԱՀԿ գործող նախագահ Իլկա Կաներվայի հետ: Հանդիպման ընթացքում քննարկուեցին ներքաղաքական եւ տարածաշրջանային վերջին զարգացումներին առնչուող հարցեր: Իսկ երէկ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորներ Ստիոպա Սաֆարեանը, Զարուհի Փոստանջեանը, Արմէն Մարտիրոսեանը եւ Անահիտ Բախշեանը Ազգային Ժողովում հանդիպում ունեցան Եւրոպայի խորհրդի նախարարների կոմիտէի նախագահ, Սլովակիայի ԱԳ նախարար Եան Կուբիշի հետ: Արծարծուեցին կուսակցութեան ծրագրային դրոյթներին եւ գաղափարախօսութեանը, փետրուարի 19-ին տեղի ունեցած նախագահական ընտրութիւններին ու դրանց ժամանակ կուսակցութեան, ինչպէսեւ Ժառանգութեան անդամ պատգամաւորների ծաւալած գործունէութեանը վերաբերող հարցեր: Կողմերը տեսակէտներ արտայայտեցին ԵԱՀԿ դիտորդական առաքելութեան՝ ընտրութիւններին նուիրուած միջանկեալ զեկոյցի շուրջ:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՀԱՆԴԻՊԵԼ Է ԵԱՀԿ ԳՈՐԾՈՂ ՆԱԽԱԳԱՀԻՆ

*Lragir.am*, 19:05

ՀՀ կառավարութեան մամուլի ծառայութիւնը տեղեկացնում է, թէ վարչապետ Սերժ Սարգսեանն այսօր ընդունել է ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի Հանրապետութեան արտաքին գործերի նախարար Իլկա Կաներվային եւ նրա գլխաւորած պատուիրակութեանը: Իլկա Կաներվան ջերմօրէն շնորհաւորել է Սերժ Սարգսեանին ՀՀ նախագահական ընտրութիւններում յաղթանակ տանելու կապակցութեամբ, նշելով, որ ապրիլի սկզբին հնարաւորութիւն կ՚ունենայ ՀՀ նախագահի երդմնակալութեան արարողութեանն ուղարկելու իր յատուկ ներկայացուցիչ Հայկէ Տալվիտիէին: Նա շնորհակալութիւն է յայտնել ՀՀ նախագահական ընտրութիւններին միջազգային դիտորդներ հրաւիրելու համար, որոնց ներկայութիւնը, ըստ ԵԱՀԿ գործող նախագահի, շատ կարեւոր է ընտրութիւնների գործընթացի եւ արդիւնքների օբիեկտիւ գնահատման տեսակէտից: Ըստ նրա, ԵԱՀԿ-ն եւ Եւրամիութիւնը մեծ կարեւորութիւն են տալիս մեր երկրի հետ համագործակցութեան զարգացմանը, յուսալով, որ Հայաստանն այսուհետ եւս կը շարունակի նոյն յաջողութեամբ բարեփոխումներ իրականացնել՝ ժողովրդավարութեան եւրոպական արժէքներին համապատասխան:

Յաջողութիւն մաղթելով Սերժ Սարգսեանին՝ ՀՀ նախագահի պատասխանատու պաշտօնում իր յետագայ գործունէութեան մէջ, Իլկա Կաներվան խնդրել է նրան առաջիկայ արտասահմանեան պաշտօնական այցերի ընթացքում չմոռանալ նաեւ հիւսիսային երկրները, այդ թւում՝ Ֆինլանդիան: Զրոյցի ընթացքում ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանը հաւաստել է ժողովրդավարութեան ուղղութեամբ Հայաստանը հետեւողական ու հաստատակամօրէն առաջ տանելու իր ցանկութիւնն ու վճռականութիւնը:

Նա բարձր է գնահատել ԵԱՀԿ դիտորդական առաքելութեան գործունէութիւնը, նշելով, որ ընտրութիւնների արդիւնքների վերաբերեալ ներկայացուած զեկոյցը հաւասարակշռուած եւ օբիեկտիւ էր: Ըստ նրա, ընտրութիւնների վերաբերեալ դիտորդական

առաքելութեան եզրակացութիւններն անգնահատելի ներդրում են մեր երկրում ժողովրդավարութեան զարգացման գործում, իսկ ներկայացուած զեկոյցում արծարծուած հիմնախնդիրներն ու առաջարկութիւնները ուշադրութեան կ՚առնուեն եւ համապատասխան քայլեր կը ձեռնարկուեն դրանց կարգաւորման ուղղութեամբ: ՀՀ վարչապետը նշել է, որ ընտրութիւնների անցկացման հետ կապուած բոլոր բողոքները հանգամանօրէն ուսումնասիրւում են, իսկ մի շարք փաստերի առնչութեամբ արդէն քրէական գործեր են յարուցուել: Նա համոզմունք է յայտնել, որ ձեռնարկուող քայլերը կ՚ամրապնդեն հասարակութեան վստահութիւնը ընտրական գործընթացի նկատմամբ, յայտնում է կառավարութեան մամուլի ծառայութիւնը:

## ՈՍՏԻԿԱՆԸ ՊԱՏՌԵՑ

*A1+*, 19:20

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում հէնց հարթակին իր ոստիկանական գրքոյկը պատռեց Կենտրոնի ոստիկանութեան աշխատակից Աշոտ Թադեւոսեանը: Նա յայտարարեց, ու ինքը արդէն մէկ շաբաթ է չի գնում աշխատանքի: Նա յայտնեց, ինքը ապաբանցի եւ ամաչում է իր համերկրացիների համար, Գլխաւոր Դատախազ Աղուան Յովսէփեանի փոխարէն:

## ԵՐԹԸ ՄԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆ ՍՏԱՑԱՒ (video)

*A1+*, 19:23

Քիչ առաջ աւարտուեց միասնական ընդդիմութեան հերթական երթը Երեւանի կենտրոնական փողոցներով, որը կազմակերպուել էր ի պաշտպանութիւն ընդդիմութեան անարդարացիօրէն ձերբակալուած համակիրների:

Երթը նախորդների համեմատ աննախադէպ բազմամարդ էր, քանի որ նրանց էին միացել մարզերից եկած բազմաթիւ քաղաքացիներ: Նրանց բերել էին Սերժ Սարգսեանի հանրահաւաքին մասնակցելու, բայց իրենք միացել էին Լեւոն Տէր-Պետրոսեանի համակիրների:

«Մէկ մտածում էի պատմութիւն սարքեմ, թէ ինչու են գիւղապետարանից տանում, յետոյ էլ ասացի աւելի լաւ, մանաւանդ քանի օր է գիւղում տրանսպորտը լաւ չի աշխատում», - պատմեց *Ա1+*-ին 56 ամեայ Գէորգը, ով իր ընկերների հետ եկել էր Կոտայքի մարզից:

Երթին ժողովրդին առաջնորդում էին Նիկոլ Փաշինեանը, Արարատ Զուրաբեանն ու Նորիկ Նորիկեանը ով եւ բարձրախօսով յորդորում էր մասնակիցներին պրովոկացիայի չգնալ: Իսկ պրովոկացիայի կարող էր լինել կառավարութեան շէնքի դիմաց: Այստեղ ոստիկանները փակել էին շէնքի մուտքը, իսկ ցուցարարները նեարդերը արդէն տեղի էին տալիս, բայց զսպում էին իրենց:

«Դուք էլ էք մեզ հետ, մենք գիտենք, որ մեզ հետ էք, միացում», - գոռում էին երթի մասնակիցները:

«Եկել եմ մօրս ու տատիկիս գտնելու, առաւօտից այստեղ են», - պատմեց *Ա1+*-ին Ռոմանը, ով ուսանող է: Նրա ընկերն էր ասաց, որ «քանի երկարում են հանրահաւաքների օրերը, այնքան աւելի է համոզւում յաղթանակի մէջ»:

Նշենք, որ երթի համար նախատեսուած էր սկզբնապէս երկու երթուղի՝ մէկը դէպի

Կենտրոնական ընտրական յանձնաժողով, միւսը՝ Գլխաւոր Դատախազութիւնը: Նախատեսւում էր նամակներ յանձնել այս գերատեսչութիւններին: Սակայն վերջում միեւնոյն երթուղին ստացաւ մէկ ուղղութիւն՝ Մաշտոցի Պողոտայով, Ամիրեան փողոցով դէպի Հանրապետութեան Հրապարակ, ապա հակառակը՝ նորից Ազատութեան Հրապարակ:

Իսկ Ազատութեան Հրապարակում հայրենասիրական ոգեւորիչ երաժշտութեամբ դիմաւորեցին «յաղթած ժողովրդի երթակիցներին»:

## ԿԱՆԵՐՎԱՅԻ ԿՈՉԸ

*A1+*, 19:38

Այսօր ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի արտգործնախարար Իլկա Կաներվան կոչ արեց բոլոր ներգրաւուած կողմերին երկխօսութիւն ծաւալելու՝ փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւններից յետոյ տեղ գտած լարուածութիւնը կարգաւորելու համար:

Երեւանում պաշտօնեաների հետ հանդիպման ժամանակ ԵԱՀԿ գործող նախագահը նշեց, որ ԵԱՀԿ-ն պատրաստ է շարունակել իր աջակցութիւնը պետութեանը՝ երկրում ժողովրդավարութեան կայացման եւ առկայ բացթողումների շտկման ջանքերում: Կազմակերպութիւնը դիտորդել է ընտրութիւնները եւ հիմնական թիմը շարունակում է մնալ երկրում՝ դիտորդելու յետընտրական գործընթացները՝ ներառեալ՝ բողոքների կարգաւորման ընթացքը:

«Մենք ուրախ ենք աջակցելու Հայաստանին՝ իր ընտրական գործընթացների ու օրէնսդրութեան յետագայ բարելաւման ընթացքում: Այդ ուղղութեամբ կոնկրէտ առաջարկութիւնները կը ներառուեն ԵԱՀԿ Ժողովրդավարական Հաստատութիւնների եւ Մարդու Իրաւունքների Գրասենեակի (ԺՀՄԻԳ) փետրուարի 19-ի ընտրութիւնների վերջնական համապարփակ զեկոյցում», - ասաց նա:

Նախագահն անդրադարձաւ ընդդիմութեան կողմից կազմակերպուած ցոյցերին, որոնք ընտրութիւնների աւարտից յետոյ շարունակւում են մի քանի օր: «Ես վստահ եմ, որ իշխանութիւնները կը շարունակեն յարգանքով վերաբերուել քաղաքացիների ազատ հաւաքների իրաւունքին եւ կ'երաշխաւորեն, որ հանրահաւաքների կազմակերպման ընթացքում խոչընդոտներ չլինեն», - նշեց նա:

Թէեւ նման ցոյցերը իւրաքանչիւր կենսունակ ժողովրդավարութեան մաս են կազմում՝ քաղաքական առաջընթաց կարելի է ձեռքբերել միայն բանակցութիւնների միջոցով՝ բոլոր կողմերի ներգրաւմամբ, ասաց նախագահը:

«Երկխօսութիւնը եւ համագործակցութիւնը ԵԱՀԿ հիմնասիւներն են, եւ ես կոչ եմ անում դիմել այս արդիւնաւէտ գործիքներին՝ դիմագրաւելու Հայաստանում առկայ մարտահրաւէրները», - ասաց նա:

Նա նաեւ կոչ արեց Հայաստանի ղեկավարներին ցուցաբերել քաջութիւն եւ պետական կառավարման հմտութիւն քաղաքական բանակցութիւններում, որոնք հետամուտ են Լեռնային Ղարաբաղի հիմնահարցի կարգաւորման առաջընթացին՝ նշելով, որ ԵԱՀԿ-ն կ'աջակցի Հայաստանի եւ Ադրբէջանի նախագահների կողմից նուաճուած բանակցութիւնների արդիւնքներին:

«Խաղաղութեան համաձայնագիրը կը լինի հիմնաքար, սակայն բացի այդ՝ երկու կողմերի բնակչութիւնը պէտք է պատրաստ լինի խաղաղութեան՝ խթանելով

բարեկամական եւ բնականոն հաղորդակցութիւն՝ համայնքների միջեւ», - ասաց նա, - «ԵԱՀԿ-ն պատրաստակամ է աջակցելու երկու կողմերին այս նախաձեռնութեան մէջ»:

Նախագահը եւ նրա պատուիրակութիւնը, որի կազմում է նաեւ ԵԱՀԿ խորհրդարանական վեհաժողովի նախագահ Գորան Լենմարկերը, չորեքշաբթի այց կը կատարեն Վրաստան եւ հինգշաբթի՝ Ադրբէջան:

## ՆՐԱՆՑ ԷԼ ԱԶԱՏԵՑԻՆ

*A1+*, 19:40

**ՀՀ առեւտրի եւ տնտեսական զարգացման նախարարութեան մամուլի ծառայութիւն յայտարարութիւնը**

Փետրուարի 25-ին ՀՀ առեւտրի եւ տնտեսական զարգացման նախարարութեան աշխատակազմի երեք աշխատակիցների՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի «շարժմանը» միանալու յայտարարութեան վերաբերեալ յայտնում ենք հետեւեալը.

Յայտարարութիւնը ստորագրած աշխատակիցները չեն հանդիսանում նախարարութեան բարձրաստիճան պաշտօնեաներ եւ որոշումների կայացման լիազօրութիւններ չունեն:

Եւրամիութեան եւ ԱՀԿ հետ համագործակցութեան վարչութեան պետ Վահագն Ղազարեանը, որի նկատմամբ 2007 թուականի ընթացքում կիրառուել է երկու կարգապահական տոյժ, 2007 թուականի հոկտեմբերի 29-ից չի ներկայացել աշխատանքի՝ տարբեր պատճառաբանութիւններով: Նախարարը միջնորդութիւն է ներկայացրել ՀՀ Քաղաքացիական ծառայութեան խորհուրդ՝ վերջինիս պաշտօնից ազատելու հետ կապուած ծառայողական քննութիւն անցկացնելու նպատակով: Վահագն Ղազարեանն ազատուած է աշխատանքից:

Արտաքին տնտեսական համագործակցութեան եւ ներդրումային քաղաքականութեան վարչութեան բաժնի պետ Զօհրապ Յովհաննիսեանը շուրջ տասը տարի աշխատել է նախարարութիւնում եւ ՀՀՇ կուսակցութեանը նրա անդամակցութիւնը խոչընդոտ չի հանդիսացել նրա պաշտօնավարման եւ առաջխաղացման համար: Հաստատելով Լեւոն Տէր-Պետրոսեանի քաղաքական պայքարին միանալու եւ ակտիւ քաղաքական գործունէութեանը ներգրաւուելու իր մտադրութեան մասին՝ նա խախտել է «Քաղաքացիական ծառայութեան մասին» ՀՀ օրէնքի 24 յօդուածի 1-ին մասի դ) կէտի պահանջները, ինչի արդիւնքում ազատուել է զբաղեցրած պաշտօնից:

Ակնագործութեան եւ ոսկեգործութեան զարգացման գործակալութեան աշխատակից Արման Սարուխանեանը յայտնել է, որ վերոնշեալ յայտարարութիւնը ստորագրել է առանց դրա բովանդակութեանը ծանօթանալու: Ծանօթանալուց յետոյ նա հրաժարուել է իր ստորագրած յայտարարութիւնից: Ներկայումս նախարարութիւնում ստեղծուել է յանձնաժողով, որը քննում է Ա. Սարուխանեանի վարքագիծը «Քաղաքացիական ծառայութեան մասին» ՀՀ օրէնքի դրոյթներին համապատասխանութեան տեսանկիւնից:

Կայացուած որոշումները բացառապէս բխում են «Քաղաքացիական ծառայութեան մասին» ՀՀ օրէնքի դրոյթներից:

ՀՀ ԱՌԵՒՏՐԻ ԵՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՄԱՄՈՒԼԻ ԾԱՌԱՅՈՒԹԻՒՆ

## ՀԱՑԱԴՈՒԼԸ ԴԱԴԱՐԵՑՐԻՆ

*A1+*, 19:43

Լեւոն Տէր-Պետրոսեանն Ազատութեան Հրապարակում քիչ առաջ յայտարարեց, որ ինչպէս խոստացել էր, մի քանի տասնեակի հասնող ելոյթներ է ունենալու, բայց նաեւ՝ կատակով աւելացրեց, որ «գլուխ է պահելու, քանի որ բոլոր յայտարարութիւնները լինելու են շատ պարզ»:

Այնուհետեւ՝ նա խնդրեց հացադուլաւորներին՝ դուրս գալ հացադուլից: Բոլոր հացադուլաւորն էլ, ենթարկուելով Տէր-Պետրոսեանի խնդրանքին, դուրս եկան հացադուլից, որին յաջորդեց ուրախ երգն ու պարը:

Մարդիկ այսօր էլ կը մնան գիշերելու Ազատութեան Հրապարակում: Իսկ յաջորդ քայլերի մասին դեռ ոչինչ չի ասւում:

Այնքան լաւ ու բարձր տրամադրութիւն է տիրում, որը նոյնիսկ մի կորցուած դրամապանակ էին գտել ու բերել հարթակի վրայ, որն այնուհետեւ վերադարձրին տիրոջը: «Տեսա՞ք, որ իսկապէս 1988-ն է եկել», - յայտարարեց Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը, որը, ըստ նրա՝ վկայում է այն մասին, որ այստեղ բոլորը համատարած միմեանց նկատմամբ շատ լաւ են տրամադրուած, եւ հրապարակում շատ ապահով է:

## ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ԻՐԵՆՑ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻՆ

*A1+*, 20:12

Վանաձորի թիւ 1, 4, 8, 10 եւ 11 դպրոցների մի քանի տասնեակ բարձր դասարանցիներ, ՀՀ դրօշը վեր պահած, այսօր երթի էին ելել քաղաքի փողոցներում, որոնց աստիճանաբար միանում էին հասակակիցներ այլ դպրոցներից: Երթի մասնակիցները պահանջում էին ետ բերել իրենց ուսուցիչներին, որոնց, երեխաների խօսքերով, բռնի ուժով տարել էին մայրաքաղաք՝ մասնակցելու ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի կայանալիք հանրահաւաքին: «Մեր պահանջն է քաղաքականութիւնը չխառնել կրթութեան հետ: Թէեւ մեր ուսուցիչը մեզ ոչինչ չասաց, սակայն յստակ երեւում էր, որ գնալու ցանկութիւն չունի եւ մէկնում է ոչ իր կամքով: Սրանում մենք վստահ ենք, քանի որ երբ ընտրութիւններից առաջ Սերժ Սարգսեանը եկել էր Վանաձոր, մեզ եւս ստիպողաբար տարան Հայքի հրապարակ», - ասաց 10-րդցի Սօնա Խաչատրեանը: Թիւ 10 դպրոցի աշակերտ Յարութիւն Յովհաննիսեանն էլ ասաց, թէ ուսուցչից տեղեկացել են, որ իրեն ստիպել են ընտրել տուեալ մարդուն, հիմա էլ տանում են պաշտպանելու: «Ճնշումների են ենթարկուել նաեւ մեր դպրոցի մանկավարժները, ուսուցիչներն իրենք պատմեցին մեզ», - փոխանցեց Յովհաննէս Տոնոյեանը թիւ 1 դպրոցից, յաւելելով, որ բոլոր սովորել ցանկացողներով պէտք է պայքարեն այս երեւոյթի դէմ մինչեւ վերջ:

## ԳՐԱՒԵԼՈ՞Ւ ԷԻՆ ՀԵՌՈՒՍՏԱԱՇՏԱՐԱԿԸ

*A1+*, 20:19

Ազգային Անվտանգութեան Ծառայութեան մամուլի կենտրոնը տարածել է մի հաղորդագրութիւն, ըստ որի ծառայութեանը օպերատիւ տեղեկութիւններ են հասել, որ Ազատութեան Հրապարակում՝ հանրահաւաքի ժամանակ տարբերակներ են քննարկուել Հայաստանի հեռուստաաշտարակը, Հանրային Հեռուստաընկերութիւնը գրաւելու եւ

ուղիղ եթեր կազմակերպելու նպատակով:

Երէկ բերման է ենթարկուել Կարէն Տէր-Ստեփանեանը, որը, ըստ հաղորդագրութեան, մասնակցել է Ազատութեան Հրապարակում կազմակերպուած հանրահաւաքներին եւ ցուցմունք է տուել այն մասին, որ իրենք պէտք է երթ կազմակերպէին դէպի Նորքի հեռուստաաշտարակ:

Հաղորդագրութեան համաձայն, ձերբակալուած են մի շարք անձինք: Յարուցուել է քրէական գործ:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ *ԱԶԱՏՈՒԹԻՒՆ* ԵՆ ԼՍՈՒՄ

*A1+,* 20:31

Ժամը 19-ից 20-ը Ազատութեան Հրապարակում գտնուող բազմահազար մարդիկ լսում էին *Ազատութիւն* ռադիոկայանի օրուայ գլխաւոր թողարկումը: «Մեր միակ ինֆորմացիայի աղբիւրը *Ազատութիւն*ն է ու *A1+*-ը, դրանք էլ չլինէին, մեր սիրտը կը պայթէր», - մեզ հետ զրոյցում ասաց թոշակառու մի կին, որը, հանրահաւաքի արդէն 4-րդ ժամին բաւականին առոյգ էր եւ չէր պատրաստւում հեռանալ հրապարակից:

Այդ ընթացքում ոստիկանները ուժեղացուած հսկողութիւն էին իրականացնում Հին Էրիւան ռեստորանի վրայ փակցրած Սերժ Սարգսեանի մեծադիր լուսանկարի շուրջ: Նրանք նկատել էին, որ հանրահաւաքի մասնակիցները փորձում են պատռել վարչապետի նկարը: «Այս նկարը եղել է փակցուած ընտրութիւններից առաջ եւ այն պէտք է մնայ այստեղ», - մեզ հետ զրոյցում ասաց բարձրաստիճան ոստիկաններից մէկը:

Թումանեան փողոցի մի մայթին ոստիկաններն էին, միւսին հանրահաւաքի մասնակիցներ, որ տեսնելով ոստիկանների առատութիւնը, բնազդաբար մղուել էին դէպի Թումանեան փողոցի կողմը: Թուացեալ լարուածութիւնը պահպանուեց մօտ 30 րոպէ, իսկ Արամ Սարգսեանը հարթակից կոչ արեց հանրահաւաքի մասնակիցներին չտրուել պրովոկացիաների: Ժամը 20-ի դրութեամբ Հիւսիսային Պողոտան էլ էր ազատ, ոստիկաններն էլ զգալիօրէն պակասել էին:

## ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՄԵՐԺԵՑ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԱՌԱՋԱՐԿԸ (video)

*A1+*, 20:32

Այսօր Ազատութեան Հրապարակից Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը տեղեկացրեց, որ Սերժ Սարգսեանը յայտարարել է, թէ իր մրցակիցներին, այսինքն՝ Տէր-Պետրոսեանին առաջարկել է կօալիցիոն իշխանութիւն կազմել: Քանի որ Տէր-Պետրոսեանին նախագահ է ընտրել Ազատութեան Հրապարակում հաւաքուածները, Արամ Սարգսեանը պատասխանի համար ժողովրդին դիմեց:

«Ոչ» մօտ 10 րոպէ վանկարկում էր Ազատութեան Հրապարակը: Սերժ Սարգսեանին առաջարկին «ոչ» ասելուց յետոյ, ժողովուրդը պահանջեց. «Սերժիկ հեռացիր, Սերժիկ հեռացիր»: Ժողովրդի պատասխանը ստանալուց յետոյ Արամ Սարգսեանը յայտարարեց. «Նիկոլը չի կարող Լֆիկ Սամօ աշխատել, ես էլ չեմ կարող Թոխմախի Միեր աշխատել»:

Այսօր հարթակից ելոյթ ունեցաւ նաեւ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանը, որ վերջին 2 օրուայ ընթացքում չէր խօսել: «Մենք հայ ենք, մենք ազատ ենք ապրելու», ժողովրդին վստահեցրեց ժողովրդի կողքին կանգնած գործարարը:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՑ ՄԵԴԱԼ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ (video)

*A1+*, 20:49

Ազատութեան հրապարկը երբեք այդքան մարդաշատ չի եղել։ Հայատանի մարզերից ժողովրդի մուտքը մայարքաղաք արգելող իշխանութիւններն այսօր իրենք էին ժողովրդին Երեւան բերել՝ Հանրապետութեան Հրապարակում Սերժ Սարգսեանի հանրահաւաքին մասնակցելու համար։ Օգտուելով անվճար տրանսպորտով Երեւան գալու հնարաւորութիւնից, հազարաւոր մարդիկ՝ ոմանք ոտքով, ոմանք էլ մետրոյով հեռացան Հանրապետութեան Հրապարակից եւ միացան Ազատութեան Հրապարակում հաւաքուածներին, որտեղ էլ «Լեւոն, նախագահ» կոչերով ՀՀ նախագահ հռչակեցին Լեւոն Տէր-Պետրոսեանին։

Վերջինս անցաւ գործի եւ միանգամից երկու հրամանագրեր հռչակեց՝ առաջինով՝ Սերժ Սարգսեանին պարգեւատրեց արիութեան մեդալով՝ ժողովրդին Ազատութեան Հրապարակ բերելու համար եւ երկրորդ հրամանագրով՝ դադարեցրեց հացադուլը։ Այդ պահին հրապարակում էին առաւօտեան բերման ենթարկուած եւ ազատ արձակուած Հայրենիք եւ Պատիւ Կուսակցութեան նախագահ Գառնիկ Մարգարեանը եւ Գորիսի նախկին քաղաքապետ Սամուէլ Յարութիւնեանը, Հանրապետութիւն կուսակցութեան անդամ Խաչիկ Սիմոնեանը։

«Ուզում եմ շնորհակալութիւն յայտնել։ Իմ ազատման որոշումը կայացրել է ՀՀ ընտրուած նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ դուք։ Իշխանութիւնը վերջին գործողութիւններ է անում ձեր կամքը կոտրելու համար, իսկ դա անհնարին է», - ժողովրդին դիմեց ազատ արձակուած Գառնիկ Մարգարեանը։ Ազատութեան Հրապարակից ժողովրդին ողջունեց նաեւ Սամուէլ Յարութիւնեանը։

## ԴԵՌ ՎԻՐԱՒՈՐՈՒԱԾ ԵՆ

*A1+*, 21:05

Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ, նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանը քաղաքական երկխօսութեան մէջ է Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ, սակայն խօսքը միաւորման մասին չէ։ Նա յայտարարել է, որ չի կարող միաւորուել մի գործչի հետ, ով Ազատութեան Հրապարակում յայտարարում է, թէ նախագահ է դարձել 65 տոկոս քուէով։ «Ուրեմն ես ընդհանրապէս ձայն չեմ տարել», ասում է Արթուր Բաղդասարեանը։

«Ես եւ իմ թիմը դեռ վիրաւորուած ենք», - շարունակել է Արթուր Բաղդասարեանը՝ խօսելով Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմից քարոզարշաւի ժամանակ ստացած հարուածներից։

Արթուր Բաղդասարեանը դատապարտել է Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների ձերբակալութիւնները՝ աւելացնելով, որ ցուցարարների հանդէպ բռնի ուժ կիրառելու ցանկացած փորձ դատապարտելի է եւ դրանով անհնար է Հայաստանում առկայ լարուածութիւնը թուլացնելը, այլ հակառակը։

«Մի քանի օր յետոյ ես կ'ասեմ նաեւ աւելի մեծ ճշմարտութիւններ, որոնք այժմ չեմ ասում, որովհետեւ չեմ ցանկանում դրանով լարել էլ աւելի լարուած իրավիճակը», - աւելացրել է նա։

Ի դէպ, Արթուր Բաղդասարեանը դեռ չի որոշել՝ դիմելո՞ւ է ՍԴ , թէ՞ ոչ։

## ՕԵԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԸ ՀԱՆԴԻՊԵՑԻՆ ԵԱՀԿ ԳՈՐԾՈՂ ՆԱԽԱԳԱՀԻ ՀԵՏ

*Lragir.am*, 21:15

ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի ներկայացուցիչներ՝ ՕԵԿ փոխնախագահ Միհեր Շահգելդեանը եւ ՕԵԿ խմբակցութեան անդամ Արտաշէս Աւոյեանը այսօր հանդիպեցին ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի արտաքին գործերի նախարար Իլկա Կաներվայի եւ նրա գլխաւորած պատուիրակութեան հետ: Հանդիպման ընթացքում քննարկուեցին նախագահական ընտրութիւնների եւ յետընտրական գործընթացներին վերաբերող հարցեր: Միհեր Շահգելդեանը եւ Արտաշէս Աւոյեանը բարձրաձայնեցին ներկայումս առկայ քաղաքացիական անհամաձայնութեան եւ հասարակական առճակատման իրավիճակի քաղաքական հանգուցալուծման հրամայականը: Իլկա Կաներվան մանրամասն հետաքրքրուեց Արթուր Բաղդասարեանի եւ նրա գլխաւորած Օրինաց Երկիր կուսակցութեան ծրագրային եւ արտաքին ու ներքին քաղաքական մօտեցումներով:

ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի նախընտրական գրասենեակ
26 փետրուարի 2008թ.

## ԽՈՐՀՐԴԱՐԱՆՈՒՄ, ԻՆՉՊԷՍ ՃԱԿԱՏԱՄԱՐՏՈՒՄ

*A1+*, 22:05

Այսօր խորհրդարանում կատարւում էր այն, ինչ փետրուարի 19-ից յետոյ կատարւում է ամբողջ հանրապետութիւնում:

ԱԺ-ում յայտարարութիւնների ժամին խորհրդարանը կիսուել էր երկու մասի. մի մասը յայտարարում էր, որ փետրուարի 19-ի ընտրութիւններն աննախադէպ էին խախտումների, կեղծիքների եւ բռնութիւնների առումով, միւս մասը՝ թէ աննախադէպ առաջընթաց էր ժողովրդավարութեան զարգացման տեսանկիւնից:

Բաւականին սուր էին Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորների յայտարարութիւնները: Սակայն «փոխհրաձգութիւնը» սկսուեց ՀՀԿ անդամ Ռաֆիկ Պետրոսեանից, որը, ցուցադրելով իր իրաւաբանական գիտելիքների ողջ պաշարը, կոչ արեց իշխանութիւններին. «Իշխանութիւնը ծայրայեղ անհրաժեշտութիւնից դրդուած իրաւունք ունի եւ պէտք է հարկադրանք կիրառելով վերջ տայ այս խժդժութիւններին, նրանց կազմակերպիչների նկատմամբ կիրառի վերը նշուած օրէնքների խստութիւնը, որովհետեւ բազմաթիւ զգուշացումները արդիւնք չեն տալիս»: Ապա Ռաֆիկ Պետրոսեանը տեղեկացրեց, որ երկիրը նոր-նոր է շտկել մէջքը, եւ «չպէտք է թոյլ տալ երկիրը ներքաշել անօրինութեան, ամբոխավարութեան, անիշխանութեան ու քաոսի ոլորտը: Ի միջիայլոց, դա պէտք էր վաղուց անել, բայց հիմա էլ ուշ չէ, վաղը, միւս օրը կարող է ուշ լինել: Անպատժելիութիւնը կարող է ծնել նոր յանցագործութիւններ»:

Նրանից յետոյ ամբիոնի մօտ բարձրացաւ Ժառանգութեան պատգամաւոր Վարդան Խաչատրեանը, նա անդրադարձաւ Ռաֆիկ Պետրոսեանի ելոյթին, որտեղ նա հանրահաւաքի մասնակիցների եւ կազմակերպիչների մասին անպատուաբեր արտայայտութիւններ էր թոյլ տուել, ասաց, որ ուղղակի շփում չունենալով չարժէ մտահայեցողական բնոյթի եզրայանգումների գալ, թէ ով իրեն ինչպէս է պահում:

Ապա աւելացրեց. «Մեզ խիստ անհանգստացնում է վերջին շրջանում Հայաստանում

սանձազերծուած ոստիկանական տեռորը, մարդկանց ոչ միայն առեւանգում են փողոցներից, առեւանգում են ուղղակի ինչպէս Բէն-Լադէնին, մի տեռորիստի, որին փնտրում են ամբողջ աշխարհով մէկ եւ տարիներ շարունակ չեն կարողանում գտնել, չնայած այն հանգամանքին, որ դրանք քաղաքական կազմակերպութիւնների ղեկավարներ են: Մեր բոլոր փորձերը պարզել, թէ որտեղ են այդ մարդիկ, ինչն է պատճառը, որ ձերբակալել են, հանդիպում է չինական պարսպի»: Այդ պարսպի անունը, ըստ Վարդան Խաչատրեանի, ոստիկանութեան հասարակայնութեան հետ կապերի վարչութեան պետ Սայադ Շիրինեան է, որը ցինիկաբար ասում է. «Ես գիտեմ, թէ նրանք որտեղ են, բայց չեմ ասի. սա ոչ այլ ինչ է, քան ուղղակի օրէնքի խախտում, օրէնքը ընտրովի կիրառման համար չի, ճիշտ կը լինի, որ մենք կարողանանք նաեւ վերահսկել օրէնքի կիրառումը այդ առումով»:

Վտանգաւոր գործընթաց է սկսուել ըստ պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանի, որը յայտարարեց, թէ «իշխանութիւնը տեսնելով, որ ոստիկանութիւնը եւ բանակը բռնութիւնների չեն գնայ հարազատ ժողովրդի նկատմամբ, իրենց իշխանութեան տարիներին բնորոշ կուսակցութիւնների ներսում երկպառակութիւններ սերմանելու իրենց արատաւոր փորձը ուզում են իրականացնել արդէն ամբողջ ազգի նկատմամբ՝ ի դէմս ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի հրաւիրուած միտինգների, որտեղ բազմաթիւ դպրոցների եւ ԲՈՒՀ-երի, պետական եւ տեղական մարմինների աշխատակիցների ստիպողաբար բերման են ենթարկում աշխատանքից ազատելու սպառնալիքով: Եւ այս ամէնը լուսաբանւում է հեռուստաընկերութիւնների, յատկապէս, *Հ1*-ի ապատեղեկատուութեան պայմաններում»: Ապա Մարտիրոսեանը դիմեց «պետական կարեւոր գործառոյթ ունեցող յարգելի լրագրողներին». «Տէր եղէք ձեր մասնագիտական պարտքին, մի հնազանդուէք յանցաւոր անտարբերութեանը եւ ծառայամտութեանը»: Նա դիմեց նաեւ ՀՀՌԸ նախագահ Ալեքսան Յարութիւնեանին. «Մի խախտէք օրէնքները, հարկատուներիս հաշուին սնուող *Հ1*-ը մի դարձրէք ձեր անձնական քաղաքական հայեացքների բոստանը»:

Իսկ Զարուհի Փոստանջեանն յիշեցրեց Ժառանգութեան պատգամաւորների նկատմամբ կիրառուած բռնութիւնների մասին, ապա նաեւ հնչեցրեց մականունաւոր պատգամաւորների եւ թաղապետերի անուններ, ովքեր բռնութիւններ են կիրառել անձամբ իր եւ Արմէն Մարտիրոսեանի նկատմամբ: Զարուհի Փոստանջեանը յայտարարեց, որ ընտրութիւնները կեղծուել են եւ «այսպէս մենք մեզ ենք խաբում»: Նա նկատեց, որ Ազատութեան Հրապարակում գուցէ կան մարդիկ, ովքեր իսկապէս ընտրել են Սերժ Սարգսեանին, բայց նրանք վիրաւորուած են կեղծիքների եւ բռնութիւնների համար. անգամ Սերժ Սարգսեանին պէտք չի կեղծուած ընտրութիւններով նախագահ դառնալը. «Նրան ընտրուացրել է Թոխմախի Միերն ու Ալրաղացի Լեովիկը», - ասաց Փոստանջեանը եւ դահլիճից սկսեցին ռեպլիկներ նետել Զարուհի Փոստանջեանի հասցէին եւ յայտարարել, որ ստում է, նման բան չի եղել. «Ես ունեմ ձայնագրութիւններ եւ տեսաերիզներ», - ասաց պատգամաւորը, իսկ Տիգրան Թորոսեանին այլ բան չէր մնում յայտարարել, քան կարգի հրաւիրել դահլիճը՝ «Ձեզ կարգին պահէք»:

Անահիտ Բախշեանն էլ կոչ արեց համերաշխութեան իր եւ հոկտեմբերի 27-ի ահաբեկչութեանը զոհ դարձած ամուսնու՝ Եուրի Բախշեանի անունից:

## ԴԱՍԱԴՈՒԼԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԵԼՈՒ Է (video)

*A1+*, 22:19

Ազատութեան Հրապարակում «եօթ օր, եօթ գիշերուայ քէֆը» շարունակւում է. վստահեցնում են հանրահաւաքի կազմակերպիչները: Այսօր հրապարակի մարդկանց թիւն աւելի մեծ է շնորհիւ Սերժ Սարգսեանի հանրահաւաքի համար մարզերից Երեւան բերուած մարդկանց: Քիչ առաջ ելոյթ ունեցան դասադուլին մասնակցող մի քանի ուսանողներ, որոնք կոչ արեցին բոլոր ուսանողներին ի հեճուկս իրենց ստիպողաբար Հանրապետութեան Հրապարակ տանող դասախօսների՝ վաղը շարունակել դասադուլը:

Այժմ հրապարակում շուրջպարի են բռնուել երիտասարդները:

## ԱԶԱՏ ԵՆ ԱՐՁԱԿԵԼ ԵՐԿՈՒ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾԻ

*A1+*, 22:25

Այսօր ազատ են արձակուել պետեկամուտների նախկին նախարար Սմբատ Այվազեանի հետ ոստիկանութիւն բերման ենթարկուած Հանրապետութիւն կուսակցութեան անդամներ Վարդան Կիրակոսեանը եւ Արտակ Միսակեանը:

Նրանց մեղադրանք չի առաջադրուել, իսկ ոստիկանութիւնում պահելու իրաւունք ունէին ընդամէնը 72 ժամ:

Յիշեցնենք, որ նրանց ձերբակալել էին փետրուարի 24-ի առաւօտեան:

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔԸ ՇԱՐՈՒՆԱԿՒՈՒՄ Է (video)

*A1+*, 23:48

Ազատութեան Հրապարակը կէսգիշերին մօտ դեռեւս լեփ-լեցուն է, եւ մարդկանց հոսքը չի դադարում: Քիչ առաջ հանրահաւաքի կազմակերպիչները ներկաներին կոչ արեցին խոստանալ, որ չեն օգտագործելու ոչ մի կաթիլ ոգելից խմիչք:

«Այո, այո», - գոչեցին ներկաները:

«Ես աւելացնեմ. ով որ խմի, Սերժի թիմից է», - ասաց ՀՀՇ նախագահ Արարատ Զուրաբեանը:

«Այո, այո», - կրկնեցին ներկաները:

Ի դէպ սա պատասխան էր ոստիկանութեան այն յայտարարութիւնների, թէ Ազատութեան Հրապարակում ցուցարարները զբաղուած են խմելով:

Նշենք, որ այսօր երէկուայ համեմատ, մօտ երեք անգամ շատ մարդ է հաւաքուած:

## ԽՕՍՔԻ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ԵՒ *ԳԱԼԱ* ՀԸ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՇՏԱԲԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*Հետք*

Փետրուարի 26-ին Շիրակի մարզի ընդհանուր իրաւասութեան դատարանի դատաւոր Ա. Խաչատրեանի նախագահութեամբ շարունակուեց «Գիւմրու քաղաքապետարանը ընդդէմ ՉԱՊ ՍՊԸ-ի եւ ՉԱՊ ՍՊԸ-ն ընդդէմ Գիւմրու քաղաքապետարանի» գործերը միացեալ դատաքննութիւնը:

Նախորդ օրը ՉԱՊ ՍՊԸ ներկայացուցիչ Կարէն Թումանեանը հանդէս էր եկել միջնորդութեամբ, որով դատարանից խնդրել էր դատատեխնիկական-շինարարական փորձաքննութիւն նշանակել՝ վիճարկուող հեռուստաաշտարակի կառուցուածքի, դրա վրայ

տեղադրուած սարքաւորումների, աշտարակի մատոյցների, դրա գրաւած տարածքի, տեղադրման վայրի եւ այլ հանգամանքները պարզելու համար: Դատաւոր Արմէն Խաչատրեանը ընդմիջում էր յայտարարել մինչեւ փետրուարի 26-ը ժամը 12-ը:

Այսօր վերսկսելով դատաքննութիւնը, դատաւորը հրապարակեց իր որոշումը միջնորդութեան մասին, որով մերժել էր միջնորդութիւնը:

ՉԱՊ ՍՊԸ ներկայացուցիչ Կարէն Թումանեանը միջնորդեց խնդրոյ առարկայ հեռուստաաշտարակը՝ իր վրայ առկայ սարքաւորումներով հետազօտել տեղում որպէս գործին առնչուող ապացոյցներ: Այս միջնորդութիւնը դատաւորը բաւարարեց: Քաղաքապետարանը այսօր ներկայացնող իրաւաբանական բաժնի պետ Արա Սարգսեանը միջնորդեց արագացուած դատաքննութիւն իրականացնել: Դատաւորը, չնայած մերժեց այս միջնորդութիւնը, բայց իր յետագայ գործողութիւններով ապացուցեց, որ աւելի արագացուած դատաքննութիւն բնութեան մէջ հազաղէպ է պատահում:

ՉԱՊ ՍՊԸ ներկայացուցիչը միջնորդեց դատարանին ներկայացնել Հեռուստաաշտարակի՝ սեփականութեան վկայականի բնօրինակը եւ աշտարակը քաղաքապետարանի սեփականութիւնը ճանաչելու դատական որոշումը ու այդ որոշման համար հիմք հանդիսացած այլ փաստաթղթերը: Դատաւորը, ինչպէս եւ սպասւում էր, մերժեց այս միջնորդութիւնը:

Նա ներկայացրեց դատաքննութեան կարգը, լսեց քաղաքապետարանի հայցուորին, ապա ՉԱՊ ՍՊԸ ներկայացուցիչը հարցեր յղեց Ա. Սարգսեանին, որը հարցերին պատասխանելու փոխարէն կարճ ելոյթներ էր ունենում ու մեկնաբանութիւններ էր անում: Մի քանի այդպիսի հարցերի արդիւնքում ՍՊԸ ներկայացուցիչը ստիպուած եղաւ դատաւորի ուշադրութիւնը հրաւիրել պատասխանողի ներկայացուցչի վարքի վրայ: Ապա, երբ դատաւորը հանեց Կարէն Թումանեանի հարցերից մէկը, փաստաբանը միջնորդեց 3 օր ժամանակ յատկացնել՝ դատաւորին ինքնաբացարկի միջնորդութիւն ներկայացնելու համար: Դատաւորը՝ ընդմիջում յայտարարեց ընդամէնը 30 րոպէ:

30 րոպէ անց, վերսկսուած դատաքննութեան ժամանակ ՉԱՊ ՍՊԸ-ից ստանալով ինքնաբացարկի միջնորդութիւնը եւս 30 րոպէ ընդմիջում յայտարարեց, ապա վերադառնալով ասաց, թէ միջնորդութեան հիմքերը սուբիեկտիւ են, ու այն մեժելու որոշում է կայացրել:

Այնուհետեւ ՍՊԸ ներկայացուցիչ Կարէն Թումանեանը ներկայացրեց ՍՊԸ պատասխանը եւ պատասխանեց քաղաքապետարանի ներկայացուցիչ Արա Սարգսեանի հարցերին:

Այսօրուայ նիստի աւարտին՝ 5-րդ ժամում դատաւորն անցաւ ապացոյցների ուսումնասիրմանը, այնուհետեւ յայտարարեց, որ նիստն ընդմիջւում է մինչեւ փետրուարի 28-ը ժամը 10:30-ը, իսկ փետրուարի 27-ին՝ ժամը 12:30-ին Գիւմրի, Վ. Սարգսեան փ., 6/1 հասցէում տեղի է ունենալու հեռուստաաշտարակի, դրա գտնուելու տարածքի եւ աշտարակի վայրի զննութիւնը: ՍՊԸ ներկայացուցիչը տարակուսանք յայտնեց, թէ կասկածում է, որ դատարանը կը կարողանայ ապահովել իր կողմից բաւարարուած միջնորդութեան պայմանները, մասնաւորաբար՝ զննութեանը ՀՌԱՀ մասնագէտի ներգրաւումը, զննութեան հեռուստանկարահանումը, լուսանկարահանումը եւ այդ նիւթերի կցումը զննութեան արձանագրութեանը: Դատաւորը պնդեց իրենը եւ ներկաների մօտ տպաւորութիւն թողեց, որ ինքը մետրը ձեռին ելնելու է աշտարակի կատարը եւ այն

չափագրելու է: Իսկ, թէ ինչպէս է զննելու եւ հաշուառելու դրա վրայ գտնուող սարքաւորումները, թէ ով է տեսագրելու եւ լուսանկարելու զննման պրոցէսը, հանելուկ մնաց:

Փետրուարի 27-ին ժամը 12:30-ին Գիւմրու հին հեռուստաաշտարակի տարածքում հետաքրքիր զարգացումներ են սպասւում. Հայաստանի պատմութեան մէջ առաջին անգամ մարդիկ հնարաւորութիւն են ունենալու տեսնելու, թէ ինչպէս է դատաւորը բարձրանում հեռուստաաշտարակի վրայ այն զննելու պարտականութեամբ: Իհարկէ դա տեղի չէր ունենայ, եթէ դատաւորը բաւարարէր նախորդ օրը ՉԱՊ ՍՊԸ ներկայացուցչի միջնորդութիւնը՝ դատատեխնիկական շինարարական փորձաքննութիւն անցկացնելու մասին. մասնագէտները խնդրոյ առարկայ գոյքը կը զննէին, կ'ուսումնասիրէին, կը փաստագրէին ու կը ներկայացնէին դատարանին:

26 փետրուարի, 2008

## ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԽՄԲԱԿՑՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՔԱՌՕՐԵԱՅՈՒՄ

*Հետք*

Յարգելի հայրենակիցներ եւ գործընկերներ,

2008թ. փետրուարի 17-ին Կոսովոյի խորհրդարանի արտահերթ նիստում ընդունուեց Կոսովոյի անկախութեան հռչակագիրը:

Փետրուարի 18-ից աշխարհի բազմաթիւ պետութիւններ, այդ թւում Ամերիկայի Միացեալ Նահանգները ճանաչեցին մինչ այդ դէ ֆակտօ անկախ երկրամասի անկախութիւնը եւ դրան հաղորդեցին դէ իւրէ բնոյթ: Կոսովոյի յաղթարշաւի գնացքն արդէն շարժուել է եւ, վաղ թէ ուշ, անգամ այն երկրները, ովքեր այսօր դիմադրում են, իրենք էլ ճանաչելու են այն: Կոսովոն յաջողեց, որովհետեւ այդ դէ ֆակտօ պետութեան գործադիր եւ օրէնսդիր իշխանութիւնները կանխամտածուած, հեռատեսօրէն, բանակցութիւններին զուգընթաց միջազգային հանրութեան շրջանում հասունացնում էին իրենց անկախութեան եւ խորհրդարանում ընդունելիք հռչակագրի ճանաչման խնդիրը:

Դեռեւս 2007թ. օգոստոսի 28-ին Ժառանգութիւն խմբակցութեան ղեկավար Րաֆֆի Յովհաննիսեանի կողմից ներկայացուեց եւ ապա Ազգային Ժողովի նախագահի կողմից շրջանառութեան մէջ դրուեց «Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան անկախութիւնը ճանաչելու մասին» օրինագիծը: Ազգային Ժողովի արտաքին յարաբերութիւնների մշտական յանձնաժողովը, որի անդամ եմ նաեւ ես, իր 2007թ. հոկտեմբերի 19-ի նիստում որոշում ընդունեց օրէնքի նախագծի քննարկումը 90 օրով յետաձգելու մասին: Հոկտեմբերի 22-ից 25-ի քառօրեայ նիստերի եւ նստաշրջանի օրակարգերի հաստատման ժամանակ Ժառանգութիւն կուսակցութիւնը դէմ քուէարկեց այդ օրինագծի քննարկումը 90-օրով յետաձգելու ԱԺ որոշմանը: Դա նշանակում էր, որ թէ գլխադասային նշանակուած արտաքին յարաբերութիւնների մշտական յանձնաժողովը, թէ Ազգային Ժողովը պէտք է օրինագծի հեղինակին յետագայում պատշաճ կերպով հրաւիրէին եւ յանձնաժողովի յաջորդ նիստերից մէկում քննարկէին այդ օրինագիծը: Սակայն դա չարուեց:

Այսօր 2008թ. փետրուարի 26-ն է: Հոկտեմբերի 22-ից անցել է 128 օր: Ըստ Ազգային Ժողովի կողմից տրամադրուած պաշտօնական տեղեկատուութեան, 90-օրեայ ժամկէտը լրանում է փետրուարի 29-ին, հետեւաբար այսօր լրանում է 87-րդ օրը: Իսկ փետրուարի 28-ին աւարտւում է քառօրեան: Այդ ժամկէտից անդին օրինագծի կարգավիճակը գոնէ

մեր համար անհասկանալի է: Մինչդեռ այս քառօրայի առաջին օրը ես ԱԺ նախագահի ուշադրութիւնը հրաւիրել էի այս փաստի վրայ: Նման կարեւորագոյն օրինագծի նկատմամբ այսպիսի վերաբերմունքն անթոյլատրելի է: Սա արհամարհանք է Լեռնային Ղարաբաղի ժողովրդի արդէն իսկ իրացուած կամքի նկատմամբ: Եւ ոչ մի կերպ գործող իշխանութիւնների վարքը չես համեմատի Կոսովոյի իշխանութիւնների նպատակասլաց ու յաջողութեամբ պսակուած գործելակերպի հետ: Ո՞վ է պատասխան տալու հերթական կորսուած հնարաւորութեան համար: Ո՞վ եւ ի՞նչ արդարացում է ներկայացնելու, թէ ինչո՞ւ մենք հերթական անգամ ետ մնացինք արդի զարգացումներից: Այստեղ էլ հօ՞ Ադրբէջանի, կամ Թուրքիայի մեկուսացման քաղաքականութիւնը չկայ: Ազգային Ժողովի ղեկավարութիւնից ակնկալում ենք, որ առաջիկայ օրերին ապահովուի այս օրինագծի քննարկումը: Պահն է հասկանալու, թէ ովքե՞ր են կողմ Լեռնային Ղարաբաղի անկախութեան դէ իւրէ եւ միջազգային ճանաչման գործընթացին, ովքե՞ր են թաքնւում դէմ քուէարկողների թիկունքում եւ ովքե՞ր են իրականում յանձնում Լեռնային Ղարաբաղը իրենց անգործութեամբ կամ բանակցութիւնների ժամանակ անբարոյ սակարկութեամբ:

Աւարտեմ հետեւեալով: *Հայոց աշխարհ* թերթի փետրուարի 17-ի թողարկման մէջ ԱԺ պատգամաւոր Գալուստ Սահակեանը յայտարարել է. «Ընդհանրապէս մի տեսակ խառնիճաղանջ ընդդիմութիւն ունենք: Արթուր Բաղդասարեանը եթէ միանար ԼՏՊ-ին, տեղն ու տեղը ազգային հերոս կը հռչակուէր: Եթէ չի միանում, նշանակում է՝ դաւաճան է: Ես կ'ասեի հակառակը: Միանալ ԼՏՊ-ին՝ նշանակում է միանալ Ղարաբաղը յանձնողներին: Սա դաւաճանութիւն է: Նոյնը կարելի է ասել Րաֆֆի Յովհաննիսեանի, միւսների մասին»: Իսկ նոյն թերթի փետրուարի 22-ի թողարկման մէջ ԱԺ պատգամաւոր Արմէն Աշոտեանը Ժառանգութիւն կուսակցութեան կապակցութեամբ յայտարարել է, թէ՝ «ոչ պակաս զաւեշտական է, որ խորհրդարանում խմբակցութիւն ունեցող քաղաքական ուժը այդքան հեշտութեամբ ենթարկւում է որոշ դեսպանատներից իջեցուած հրահանգներին»: ԱԺ մէկ այլ պատգամաւոր՝ Ռազմիկ Զօհրաբեանն էլ փետրուարի 14-ին նոյն թերթում յայտարարել է. «Ժառանգութեան ղեկավարն ուզում է իրագործել ԱՄՆ-ի իր պատուիրատուների հրահանգը եւ պատրանք ստեղծել, թէ Միացեալ Նահանգներում եւս Լ. Տէր-Պետրոսեանը աջակցութիւն ունի»: Եթէ մեր որոշ պատգամաւորներ կարծում են, որ Արեւմուտքի շատ երկրներ սատարում են մեր քայլերը, այդ թւում ԼՂ ճանաչման օրինագիծը, ապա դա իրենց կարծիքն է, եւ կարող են համարել, որ Արեւմուտքը պատրաստ է ճանաչել նաեւ ԼՂՀ անկախութիւնը: Սակայն մեր գործընկերները պարտաւոր են իրենց մատնանշած յանցագործութեան մասին տիրապետած փաստերը տրամադրել իրաւապահ մարմիններին: Իսկ վերջիններս էլ պարտաւոր են սեփական նախաձեռնութեամբ պարզել մեր գործընկերների կողմից պարտակուող յանցաւոր անտարբերութիւնը:
Շնորհակալութիւն:
ԱՆԱՀԻՏ ԲԱԽՇԵԱՆ

Մեզանում ընտրութիւններին նախորդող եւ յաջորդող գործընթացները ծայրաստիճան լարում են հասարակութիւնը, այն բաժանում սեւ եւ սպիտակի: Ժողովուրդը, որը միշտ սեղմուած զսպանակի է նման, այս ընթացքում իշխանութեան թեկնածուների կողմից աւելի է լարւում եւ սեղմւում, որովհետեւ, որպէս կանոն, իրեն տարբեր մեթոդներով (աշխատանքը կորցնելու սպառնալիք, հարազատների նկատմամբ բռնութիւն,

կաշառք, հարկային մարմինների ներխուժում եւ այլն) ստիպում են վերարտադրել իրեն, ընդդիմութեան թեկնածուի կողմից էլ հակառակն է տեղի ունենում՝ սեղմուած զսպանակը սկսում է բացուել, մեր քաղաքացիների մէջ կուտակուած վիրաւորանքը, իր երկրում նսեմացուած լինելու ինքնագիտակցութիւնն արթնանում է, մարդը փորձում է տէր կանգնել իր ընտրութեան իրաւունքին: Արդիւնքում այսօրուայ իրականութիւնն է՝ տխուր ու պայթիւնավտանգ: Առկայ է միայն բռնութեամբ, ուժով վերջնական նպատակին հասնելու կոյր մոլուցքը: Չկայ երկխօսութեան քաղաքական կամք, որը պէտք է դրսեւորվի իշխող վարչակազմի կողմից: Չի շահում ոչ ոք՝ թէ իշխանութեանն ընտրողները, թէ ընդդիմութեանը ձայն տուողները տանուլ են տալիս, որովհետեւ հեղինակազրկւում, թուլանում է պետութիւնը, որտեղ սեղմուած զսպանակի մէջ կուտակուած առաձգականութեան ուժը, որը ըստ Նիւտոնի 3-րդ օրէնքի, հաւասար է սեղմող ուժին, ամէն վայրկեան կարող է ենթարկուել այնպիսի ձեւափոխութեան, որի հաւանական ելքը դառնում է առճակատումը, բախումը:

Այսօրուայ յայտարարութիւնս հնչեցնում եմ իմ եւ Եուրի Բախշեանի անունից՝ մեր պետականութեանը նուիրուած, պետական շահը գերակայ համարող համախոհ քաղաքացիներիս մտահոգութեան մասին՝ կապուած նախագահական անիրաւ ընտրութիւնների հետեւանքով իշխանութիւնների նկատմամբ հասարակութեան մէջ խորացող անվստահութեան մթնոլորտի հետ:

Իր գրառումներից մէկում Եուրան գրել է. «Առաջնորդ լինել ժողովրդին՝ նշանակում է օրինակ ծառայել եւ քաջալերել նրան»: Եուրան՝ լինելով նուիրեալ հանրապետական, կողմնակից էր սառը գլխով, հաւասարակշիռ որոշումներ կայացնելուն, որոնք կը բխէին միայն ու միայն պետական շահերից: Եթէ այսօր Եուրան լինէր, ապա իր քաղաքացիական դիրքորոշմամբ կոչ կ'անէր Հանրապետական գործընկերներին՝ գնալ քաղաքական երկխօսութեան, լսել Ազատութեան Հրապարակում օրեր շարունակ վճռականօրէն կանգնած, խաղաղ ցոյցով իրենց կամքն արտայայտող մեր քաղաքացիներին, նստել բանակցութեան սեղանի շուրջ ընդդիմութեան հետ եւ ոչ թէ տարբեր հրապարակներում իրար դէմ լարել ժողովրդի երկու հատուածներին:

Իսկ ի՞նչ է անում գործող Հանրապետական վարչակազմն իր իշխանութիւնը պահելու համար, ի՞նչ է անում, որ ժողովուրդն իրեն վստահի, հաւատայ եւ հարկ եղած դէպքում նաեւ ների իր թերութիւններն ու բացթողումները:

Գործող վարչակազմի գործելակերպի մէջ իսպառ բացակայում է Սէրը սեփական ժողովրդի նկատմամբ, իսկ իշխանութիւնն առանց սիրոյ, մարդկանց դարձնում է բռնակալ:

Այսպէս շարունակել՝ նշանակում է ոչ միայն հիմնովին թաղել ժողովրդավարութիւնը մեր երկրում, նոր թափ հաղորդել արտագաղթին, հեղինակազրկել պետութիւնը, այլեւ կասկածի տակ դնել ազգի գոյութիւնը այս հողատարածքի վրայ:

ԱՐՄԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

Յարգելի Հայրենակիցներ,

2008 թուականի փետրուարի 19-ին անցկացուած նախագահական ընտրութիւնները տեղի ունեցան մինչ այժմ չտեսնուած ընտրակեղծիքներով եւ բռնութիւններով: Մինչքարոզչական շրջանից սկսուած խախտումները իրենց շարունակութիւնը գտան բուն

քարոզչաշրջանում եւ գագաթնակէտին հասան քուէարկութեան օրը: Ընտրախախտումները վերաճեցին՝ բառի բուն իմաստով այլանդակ բռնութիւնների, որոնք տրամաբանական աւարտ ունեցան, երբ բռնութիւններ կիրառուեցին դիտորդական պարտականութիւն իրականացնող Ժառանգութեան պատգամաւորների նկատմամբ:

Տեղի ունեցաւ ընտրական գործընթացի նախադէպը չունեցող ձեւախեղում՝ թէ օրէնսդրական, թէ կազմակերպչական եւ թէ հասարակութեան իրական տրամադրութեան նկատմամբ:

Այս ամէնը չէր կարող չյանգեցնել հարիւր հազարաւոր ազատ եւ ազնիւ քաղաքացիների ընդվզումի՝ իրականացնելով մեր Հայրենիքի հանդէպ անկաշառ տիրոջ պատասխանատուութիւնը: Ցաւօք սրտի, իշխանութիւնները, փոխանակ համապատասխան եզրակացութիւններ կատարէին եւ հնարաւորինս շուտ փորձէին շտկել ընտրակեղծիքների պատճառով ստեղծուած իրավիճակը, գնացին բռնութիւններն էլ աւելի խորացնելու ճանապարհով, որի արդիւնքում արդէն ունենք քաղաքական դրդապատճառներով բազմաթիւ ձերբակալուածներ: Չբաւարարուելով այսքանով, նրանք արդէն սկսել են շատ վտանգաւոր մի գործընթաց: Տեսնելով, որ ոստիկանութիւնը եւ բանակը բռնութիւնների չեն գնայ հարազատ ժողովրդի դէմ՝ իրենց իշխանութեան տարիներին բնորոշ՝ կուսակցութիւնների ներսում երկպառակութիւններ սերմանելու արատաւոր գործելակերպը փորձում են իրականացնել արդէն ամբողջ ազգի նկատմամբ, ի դէմս այսպէս կոչուած «ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի» հրաւիրուած հանրահաւաքների, որտեղ բազմաթիւ դպրոցների եւ բուհերի, պետական ու տեղական մարմինների աշխատակիցների եւ այլ քաղաքացիների ստիպողաբար բերման են ենթակում՝ աշխատանքից ազատելու սպառնալիքով:

Եւ այս ամէնը լուսաբանւում է հեռուստաընկերութիւնների եւ յատկապէս *Հ1*-ի յանցաւոր ու սադրիչ ապատեղեկատուութեան պայմաններում:

Պետական կարեւոր գործառոյթ ունեցող յարգելի լրագրողներ, հաւատարիմ եղէք ձեր մասնագիտական պարտքին, մի հնազանդուէք յանցաւոր անտարբերութեանը եւ ծառայամտութեանը, հասարակութեանը տրամադրէք իրապէս անաչառ լրատուութիւն:

Հանրային ռադիոհեռուստաընկերութեան յանձնաժողովի նախագահ պարոն Յարութիւնեան, մի խախտէք օրէնքները, հարկատուներիս հաշուին սնուող *Հ1*-ը մի դարձրէք ձեր անձնական քաղաքական հայեացքների խօսափողը:

26 փետրուարի 2008թ.
Երեւան

## 27 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

## ՍԱՐԳՍԻՆ ԷԻՆ ՓՆՏՐՈՒՄ

*A1+*, 02:44

Ոստիկանները որոշել են բերման ենթարկել Լեւոն Տէր-Պետրոսեանի հերթական համակիրին: Նրանք հարթակ բարձրացան եւ պահանջեցին ազատամարտիկ Սարգիս Հացպանեանին: Ի դէպ, վերջինս Ֆրանսիայի քաղաքացի է, սակայն այսօր հրապարակում յայտարարել է, որ հրաժարւում է Ֆրանսիայի քաղաքացիութիւնից:

Սարգիս Հացպանեանը հացադուլաւորներից մէկն էր, որն իր հացադուլն այսօր դադարեցրեց Լեւոն Տէր-Պետրոսեանի յորդորով:

Ոստիկանները հեռացել են ներկաների սուլոցների տակ՝ առանց Սարգիս Հացպանեանի: Յայտնի չէ, թէ կոնկրէտ ինչու են նրանք հետաքրքրւում Սարգիս Հացպանեանով:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՀԱՆԴԻՊԵԼ Է ԵԱՀԿ ԳՈՐԾՈՂ ՆԱԽԱԳԱՀԻՆ

*Lragir.am*, 09:54

Ինչպէս տեղեկացնում են Լեւոն Տէր-Պետրոսեանի գրասենեակից, փետրուարի 26-ին ՀՀ առաջին նախագահը հանդիպել է ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի արտաքին գործերի նախարար Իլկա Կաներվայի եւ նրա գլխաւորած պատուիրակութեան հետ: Հանդիպման ընթացքում քննարկուել են Հայաստանի ներքաղաքական իրադրութիւնը եւ ետընտրական զարգացումները:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԱՄԱՐ ՅԵՏԸՆԹԱՑ, ՔՈՉԱՐԵԱՆԻ ՀԱՄԱՐ ՅԱՂԹԱՆԱԿ

ՋԵՅՄՍ ՅԱԿՈԲԵԱՆ

*Lragir.am*, 10:34

Փետրուարի 19-ին, երբ Ռոբերտ Քոչարեանի քուէարկելուց մէկ ժամ անց Երեւանի նոյն 9/11 ընտրատեղամասում իր քաղաքացիական պարտքը կատարեց նախագահի թեկնածու, վարչապետ Սերժ Սարգսեանը, յետոյ պատասխանելով լրագրողների հարցերին, նա յայտարարեց, թէ կառավարութեան կազմը չի կրի էական փոփոխութիւն, որովհետեւ խորհրդարանի ընտրութիւնից յետոյ ձեւաւորուած կառավարութիւնն արդէն աշխատում է ինը ամիս եւ աշխատում է արդիւնաւէտ:

Փետրուարի 19-ից եօթ օր անց նոյն Սերժ Սարգսեանը ելոյթ ունենալով Հանրապետութեան Հրապարակում բեմադրուած հանրահաւաքին, յայտարարեց, թէ նախագահի բոլոր թեկնածուներին յայտնում է գործակցութեան, ընդհուպ կոալիցիոն կառավարութեան պատրաստակամութիւն: Իսկ նոյն օրը Հանրային հեռուստաընկերութեանը տուած բացառիկ հարցազրոյցի ընթացքում Ռոբերտ Քոչարեանը նշեց, որ հասարակական բեւեռացուածութիւնը յաղթահարելու քայլերից մէկը կը լինի այն, որ նոր նախագահը ձեւաւորի կառավարութիւն, ընդգրկելով դրա մէջ ոչ միայն ՀՀԿ եւ ԲՀԿ ներկայացուցիչներ, այլ նաեւ աւելի լայն քաղաքական սպեկտոր:

Ակնյայտ է, որ փետրուարի 19-ից յետոյ ընկած եօթ օրերի ընթացքում իշխանութեան մօտեցումների մէջ տեղի է ունեցել փոփոխութիւն, եւ եթէ մի քանի օր առաջ կառավարութեան կազմի էական փոփոխութիւն չէր սպասւում, ապա այժմ արդէն թէ նախագահը եւ թէ վարչապետը խօսում են կոալիցիոն կառավարութեան մասին: Իսկ դա նշանակում է էական փոփոխութիւն, քանի որ խօսքը չի կարող լինել այն մասին, որ բացի ՀՀԿ-ից ու ԲՀԿ-ից, կառավարութեան կազմում կարող են ներգրաւուած մնալ նաեւ Դաշնակցականները: Դա չի կարող համարուել հասարակական բեւեռացման մեղմացմանն ուղղուած քայլ, նոյնիսկ ձեւական, որովհետեւ Դաշնակցութիւնը մինչ այդ էլ կառավարութեան կազմում էր: Հետեւաբար խօսքը կամ Դաշնակցութեան փոխարէն նոր ուժի կամ ուժերի ներգրաւման մասին է, կամ Դաշնակցութիւնից բացի նոր ուժի կամ ուժերի ներգրաւման: Դա էլ իր հերթին վկայում է, որ եօթ օրերի ընթացքում տեղի է ունեցել ներքաղաքական

իրավիճակի զգալի փոփոխութիւն: Ցամենայն դէպս դրանով կարելի է հիմնաւորել այն, որ մինչեւ այդ կառավարութեան էական փոփոխութիւն չենթադրող Սերժ Սարգսեանն այժմ խօսում է լայն կոալիցիայի պատրաստակամութեան մասին: Սա իհարկէ Սերժ Սարգսեանի համար էական յետընթաց է, իսկ ահա Ռոբերտ Քոչարեանի համար, գոնէ այս պահին, բաւական զգալի ներիշխանական յաղթանակ:

Բանն այն է, որ նախագահի ընտրութեանը Հանրապետական Կուսակցութեան թեկնածուի յաղթանակը փաստացի պէտք է բիւրեղացնէր իշխանական բուրգը, եւ խորհրդարանի ընտրութիւնից առաջ որոշակի հակադիր շահերի իրողութիւնը յաղթահարելով պէտք է այն նորից վերածէր մոնոլիտ կառոյցի: Բնական է, որ դա ոչ մի կերպ չէր տեղաւորւում Ռոբերտ Քոչարեանի ծրագրերի մէջ, որովհետեւ նրա համար մոնոլիտ իշխանութիւնը լաւ է, երբ ինքն է այդ իշխանութեան դէ իւրէ գլուխը, իսկ երբ ինքն արդէն թողնում է նախագահի պաշտօնը, ապա մոնոլիտ բուրգը նրան կարող է խոչընդոտել իշխանական համակարգի վրայ ազդեցութիւն ունենալու գործում: Դա էր պատճառը, որ խորհրդարանի ընտրութիւնից առաջ Ռոբերտ Քոչարեանը նախանշում էր առնուազն քառանկիւն կոալիցիա՝ ՀՀԿ, ԲՀԿ, ՀՅԴ եւ ՄԱԿ: Սակայն Սերժ Սարգսեանը դա թոյլ չտուեց, ՄԱԿ-ին հանելով շարքից, իսկ ՀՅԴ-ին էլ ընդամէնը մօտ թողնելով երկու քայլ:

Նախագահի ընտրութեանը ՀՀԿ թեկնածուի յաղթանակը էլ աւելի պէտք է հեռացնէր Դաշնակցութեանը, եւ այդպիսով էլ աւելի բիւրեղացնէր իշխանական բուրգը, այդպիսով Ռոբերտ Քոչարեանին զրկելով այդ բուրգի հանդէպ ունեցած ազդեցութիւնից: Սակայն հիմա, փետրուարի 19-ից եօթ օր անց արդէն տեսանելի է, որ Սերժ Սարգսեանի այդ ծրագիրը չիրականացաւ եւ չի էլ իրականանալու, ու նա ստիպուած գալիս է Ռոբերտ Քոչարեանի նախանշած առնուազն քառանկիւն կոալիցիայի տարբերակին, որովհետեւ իրավիճակն արդէն այնպէս է դուրս եկել վերահսկողութիւնից, որ Սերժ Սարգսեանն այլեւս ի վիճակի չէ այն վերադարձնել իր տիրոյթ, հետեւաբար նա այլ ելք չունի, քան համաձայնուել կոալիցիոն այնքան անկիւնների, որքան որ կ'առաջարկի Ռոբերտ Քոչարեանը: Եւ այստեղ տեղին է յիշել բժիշկ, մարքսիստ, եւ թերեւս նաեւ մարգարէ Դաւիթ Յակոբեանի խօսքը, որ հնչեց 2006 թուականի յուլիսի 22-ից՝ ՀՀԿ պատմական համագումարից յետոյ, որ եթէ մինչեւ 2007-ի յունուար Սերժ Սարգսեանը չվերցնի նախագահի պաշտօնը, ապա դրանից յետոյ այն չի վերցնի երբեք:

## 118 ՏԱՐՈՒԱՅ ԱՆՎԵՐՋՈՒԹԻՒՆ

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

*Lragir.am*, 10:41

Դաշնակցութիւնը չի յանձնւում, փետրուարի 26-ին յայտարարել էր նախագահի ընտրութեանն ընդամէնը վեցից մի փոքր աւելի տոկոս ստացած, եւ այդ տոկոսը չվիճարկող նախագահի թեկնածու, Ազգային Ժողովի նախկին փոխնախագահ Վահան Յովհաննիսեանը, նա ում հետ կոչ էին անում լինել ժողովրդին դաշնակները: Բայց Դաշնակցութեան չյանձնուելու մասին արտայայտութիւնը Վահան Յովհաննիսեանը չէր անում այն թեթեւութեամբ, ինչ որ Լիւդովիկոսը գվարդիայի մասին՝ «գվարդիան մեռնում է, բայց չի յանձնւում»: Բայց դա նոյնպէս հասկանալի է: Լիւդովիկոսը թագաւոր էր, ոչ թէ թագաւորի ընտրութեանը չորրորդ տեղը գրաւած թեկնածու:

Բայց այդուամենայնիւ, իսկ ինչ է լինում Դաշնակցութիւնը, եթէ չի յանձնւում: Տրամա-

բանութիւնը յուշում է, որ եթէ խօսքը գնում է յանձնուել-չյանձնուել հարթութեան վրայ, ապա Դաշնակցութիւնը պայքարում է: Եթէ չի յանձնւում, ապա պայքարում է: Բայց զարմանալի է, որ Դաշնակցութիւնը ոչ յանձնւում է, ոչ պայքարում: Լիւդովիկոսը գերեզմանում շուռ կը գար: Այդ դէպքում հարց է առաջանում, իսկ ինչ է անում Դաշնակցութիւնը: Գործակցում է, գործակցում է նրանց հետ, ումից որ բողոքում է: Սա շատ հետաքրքիր, շատ նուրբ քաղաքական վարքագիծ է, որ կառուցուած է քրիստոնէական սկզբունքի վրայ՝ թշնամուն յաղթել հնազանդուելով, սիրելով նրան, մի ապտակին միւս այտը դէմ տալով: Երեւի ժամանակն է, որ Դաշնակցութիւնն արդէն փոխի իր Հայ Յեղափոխական անուանումը եւ որդեգրի Քրիստոնեայ-հակայեղափոխական Դաշնակցութիւն անուանումը, կամ պարզապէս միանայ Խոսրով Յարութիւնեանի Քրիստոնեայ-դեմոկրատական կուսակցութեանը: Դաշնակցութիւնն այդպիսով կ'ունենայ նաեւ վարչապետի փորձուած թեկնածու, եւ եթէ ՀՀԿ հետ պայմանաւորուի ոչ միայն չբողոքարկել ընտրութիւնը, այլ նաեւ այլեւս չխօսել այդ մասին, ապա գուցէ ՀՀԿ-ն էլ Բարգաւաճին համոզի, որ վարչապետի պաշտօնը տան Դաշնակցութեանը:

Երբ ՀՅԴ-ն յայտարարում էր, որ նախագահի ընտրութեանը մասնակցելու է սեփական թեկնածուով, ապա անմիջապէս ձեւաւորուեց հասարակական կարծիքի մի սեգմենտ, որը վստահ էր, որ Դաշնակցութեան թեկնածուն ընտրական գործընթացին մասնակցում է ընդամէնը Սերժ Սարգսեանի ջրաղացին ջուր լցնելու համար: Դաշնակցութիւնը եւ նրա թեկնածու Վահան Յովհաննիսեանը խիստ վիրաւորւում էին դրանից, խրոխտ յայտարարելով, որ իրենք մասնակցելու են ինքնուրոյն ու գնալու են մինչեւ վերջ: Տրամաբանութիւնը յուշում է, որ մինչեւ վերջը դա յաղթանակն է, կամ պարտութիւնը: Այսինքն, կամ յայտարարում ես, որ դու պարտուել ես, կամ յայտարարում, որ յաղթողն ես դու: Վահան Յովհաննիսեանը չի անում թէ մէկը, թէ միւսը:

Աւելին, յայտարարում է, որ պարտուող չկայ, քանի որ անարդար պայքարում յաղթող էլ չկայ: Այսինքն, Դաշնակցութիւնը չգնաց մինչեւ վերջ, այլ որոշեց ուղղակի վերջը փոշիացնել անորոշ ձեւակերպումներով: Այսինքն, երբ ասւում է, որ չի եղել յաղթանակ ու պարտութիւն, դրանով փորձ է արւում ցոյց տալ, որ չի եղել նաեւ վերջ, այդպիսով արդարացնելով մինչեւ վերջ չգնալու հանգամանքը: Ու բնական է, որ եթէ վերջ չկայ, ապա Դաշնակցութիւնը չի կարող յանձնուել: Եւ այդպէս անվերջ՝ արդէն 118-րդ տարին:

## ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՆ՝ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՆ ԵՆ ՈՒ «ԱՉՔ ՓԱԿՈՂՆԵՐԸ»

*A1+*, 12:41

Թրանսփարենսի Ինթերնեշնլ Հակակոռուպցիոն Կենտրոնը, Գիւմրիի Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը, Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակը տարածել են հաղորդագրութիւն, որով մեղադրում են «ՀՀ իշխանութիւններին հերթական կեղծուած ընտրութիւնների համար, որոնք ուղեկցուել են օրէնքի եւ մարդու իրաւունքների կոպիտ խախտումներով ինչպէս նախընտրական շրջանում, այնպէս էլ քուէարկութեան օրը եւ ետընտրական շաբաթուայ ընթացքում»:

«Մենք դատապարտում ենք.

զանգուածային ընտրակաշառքները, քուէատուփերի լցոնումները,

ընտրական յանձնաժողովների անդամների, վստահուած անձանց եւ տեղական

դիտորդների նկատմամբ ճնշումները եւ բռնութիւնները, ընտրողների կամքի արտայայտման նկատմամբ պարտադրանքները,

վարչական ռեսուրսի շարունակական չարաշահումները, լրատուամիջոցների կողմնակալութիւնը եւ փաստերի խեղաթիւրումը,

քաղաքական դիրքորոշում արտայայտելու համար քաղաքացիների հետապնդումները եւ ձերբակալութիւնները», - ասում են յայտարարութեան հեղինակները, որոնք յայտարարում են, որ «երկրում ծաւալուած բռնապետութեան դրսեւորումների պատասխանատուն այսօրուայ իշխանութիւններն են եւ նրանց յանցանքների վրայ «աչք փակող» միջազգային կազմակերպութիւնները»:

## ՕՄԲՈՒԴՍՄԷՆԸ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ Է ՀՐԱՒԻՐՈՒՄ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԽՕՍՔԻՆ

*Lragir.am*, 12:51

Մարդու Իրաւունքի պաշտպան Արմէն Յարութիւնեանը փետրուարի 27-ին Ուրբաթ ակումբում հանդիպելով լրագրողների հետ եւ խօսելով Հայաստանում առկայ յետընտրական իրավիճակի մասին, ասել է, որ կոչ է անում կողմերին երկխօսութեան, իրար լսելու: Արմէն Յարութիւնեանի խօսքով, Հայաստանում պէտք է նկատուի իրար լսելու պատրաստակամութիւն, անգամ այն դէպքում, եթէ համաձայն չենք այն կարծիքին, որ պէտք է լսենք:

Արմէն Յարութիւնեանն իր երկխօսութեան կոչն անելիս ընդգծել է, որ այդ առումով արժէ ելնել նորընտիր նախագահ Սերժ Սարգսեանի այն ելոյթից, որ հնչել է փետրուարի 26-ին, Հանրապետութեան Հրապարակի հանրահաւաքի ժամանակ, ուր վարչապետը խօսել է երկխօսութեան պատրաստակամութեան մասին: Հարցին, թէ արդեօք նորընտիր նախագահի այդ պատրաստակամութիւնը գնահատող Մարդու Իրաւունքի պաշտպանը փորձել է պարզել, թէ երկխօսութեան կոչ հնչեցնող նորընտիր նախագահի հանրահաւաքները չեն կազմակերպւում մարդու իրաւունքի խախտումով, երբ քաղաքացիներին պարտադրում են ներկայ գտնուել ու լսել այդ կոչերը, Արմէն Յարութիւնեանը պատասխանում է, թէ ինքը այդպիսի բողոքներ չի ստացել: Օմբուդսմէնն ասում է, որ մարդիկ իրեն չեն բողոքում այդ կապակցութեամբ, անգամ բանաւոր: Իսկ նախագահի ընտրութեան վերաբերեալ ստացած բողոքների թիւն, ըստ Արմէն Յարութիւնեանի, աւելի շատ չէ, քան խորհրդարանի ընտրութեանը: Դա կոնկրէտութիւն պարունակող բողոքների դէպքում, իսկ ահա ֆոն ստեղծող բողոքների առումով Արմէն Յարութիւնեանը տեսնում է քանակի աճ: Ֆոն ստեղծողը, ըստ նրա, այն բողոքներն են, որոնք պարունակում են ընդհանրական ահազանգ, ասենք այնպիսին, ուր գրուած է՝ «եկէք տեսէք, թէ ինչ է կատարւում Մալաթիայում»: Արմէն Յարութիւնեանն ասում է, որ կոնկրէտ բողոքներին արձագանքել են շատ արագ, իսկ այդօրինակ ընդհանրականներին, որոնք ստեղծում են ընտրութիւնների զանգուածային խախտման ֆոն եւ գուցէ ունեն քաղաքական նպատակ, իր գրասենեակը չի կարող արձագանքել, կոնկրէտ առարկայ չլինելու պատճառով:

## ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՆԵՐԻՑ ՏԵՂԻ Է ՏԱԼԻՍ ԱՐՄԷՆԸ

*Lragir.am*, 12:57

Մի քանի շաբաթ առաջ Հայելի ակումբից սկիզբ առաւ Արմէն եւ Ալեքսան Յարութիւն-

եանների մի հեռակայ բանավէճ, որը վերաբերում էր նախագահի ընտրութեան Հանրային հեռուստատեսութեան լուսաբանմանը: Արմէն Յարութիւնեանը Հայաստանի Մարդու Իրաւունքի պաշտպանն է, իսկ Ալեքսան Յարութիւնեանը հանրային հեռուստառադիոխորհրդի նախագահ:

Արմէն Յարութիւնեանը Հայելիում մի քանի շաբաթ առաջ յայտարարեց, թէ Հանրային հեռուստաընկերութիւնը չի կատարում իր պարտաւորութիւնը եւ չի ապահովում նախագահի ընտրութեան քարոզարշաւի անաչառ ու հաւասարակշիռ լուսաբանում: Մի քանի օր անց թերթերից մէկի միջոցով դրան պատասխանել էր Ալեքսան Յարութիւնեանը, ուղղակի մխիթարելով Արմէն Յարութիւնեանին՝ «տղայ ջան, լաւ կը լինի» արտայայտութեամբ: Յետոյ օմբուդսմէնն էր արձագանքել դրան, հեռակայ բանավէճին հաղորդելով շարունակութիւն:

Այդ բանավէճը փետրուարի 27-ին շարունակուել է Ուրբաթ ակումբում, ուր հիւրընկալուել էր Արմէն Յարութիւնեանը: Լրագրողները նրան հարցրել են, թէ ինչպէս է ինքը գնահատում Հանրային հեռուստաընկերութեան արդէն յետընտրական լուսաբանման անաչառութիւնն ու հաւասարակշռութիւնը: Արմէն Յարութիւնեանի պատասխանից թերեւս կարելի է եզրակացնել, որ նա սպիտակ դրօշ է բարձրացնում Ալեքսան Յարութիւնեանի առաջ, գուցէ կամաց կամաց, եւ հնարաւոր է առանց վրան «առաջ Հայաստան» կարգախօսի: Յամենայն դէպս, Արմէն Յարութիւնեանն ասել է, թէ նկատում է լուսաբանման հաւասարակշռութեան առումով առաջընթաց: Լրագրողները դրանից զարմացել են, ասելով, որ օրինակ Լեւոն Տէր-Պետրոսեանի յետընտրական հանրահաւաքները չեն լուսաբանւում: Արմէն Յարութիւնեանը սակայն նշել է, որ օրինակ, թէեւ քիչ, բայց ցուցադրւում են կադրեր, ու քանի որ մինչեւ այդ դա չկար, ապա պէտք է նկատել առաջընթացը եւ թերութեան մասին խօսելուց բացի, արձանագրել նաեւ այդ գրանցուած առաջընթացը:

## ԽՈՒԶԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐ ՆԱԵՒ ՎԱՆԱՁՈՐՈՒՄ

*A1+*, 13:02

Փետրուարի 26-ին վաղ առաւօտեան Վանաձորի 2 քաղաքացիների բնակարաններում խուզարկութիւններ են կատարուել: Այդ քաղաքացիներն արդէն մի քանի օր է, ինչ մասնակցում են Երեւանում կայացուող Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմից կազմակերպուած հանրահաւաքին:

Առաւօտեան 06:00-ին սկսուել է Վանաձորի բնակիչ Մերուժան Յարութիւնեանի բնակարանի խուզարկութիւնը: Մերուժան Յարութիւնեանը «Յատուկ գնդի» անդամ է, մասնակցել է ղարաբաղեան պատերազմին, իսկ արդէն մի քանի օր է, ինչ մասնակցում է Երեւանում կայացուող Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմից կազմակերպուած հանրահաւաքին:

Խուզարկութեան արձանագրութեան համաձայն՝ խուզարկութեան նպատակն է՝ բացայայտել Մ. Յարութիւնեանի յանցաւոր գործունէութեան վերաբերեալ փաստաթղթեր, առարկաներ՝ զէնք-զինամթերք: Խուզարկել են բնակարանը, բնակարանի տանիքը, բնակարանի նկուղը, աւտօտնակը, կից հողամասը:

Մ. Յարութիւնեանի յանցաւոր գործունէութիւնը բացայայտող ոչ մի փաստաթուղթ, սակայն, խուզարկութեան արդիւնքում չի յայտնաբերուել:

Նմանատիպ խուզարկութիւն է իրականացուել նաեւ նստացոյցին մասնակցող Արսէն Աւետիսեանի ծնողների բնակարանում: Տեղեկանալով, որ Ա. Աւետիսեանը նաեւ առանձին բնակարան ունի, խուզարկել են նաեւ այդ բնակարանը՝ բնակարանի բանալիները վերցնելով Ա. Աւետիսեանի կնոջ եղբօրից: Այնտեղ եւս յանցաւոր գործունէութեան մասին վկայող փաստթղթեր կամ առարկաներ չեն յայտնաբերուել:

Մնում է անհասկանալի, թէ ինչ յանցաւոր արարքի մէջ են կասկածւում այս քաղաքացիները:

Նրանց բնակարանների խուզարկութեան մասին որոշում է կայացուել Երեւան քաղաքի Կենտրոն եւ Նորք-Մարաշ համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարանի կողմից:

Խուզարկութիւնն իրականացուել է ոստիկանութեան պրոֆիլակտիկայի բաժանմունքի պետ, ոստիկանութեան փոխգնդապետ Հ. Էլինեանի, ոստիկանութեան Վանաձորի բաժնի ՔՀԲ բաժանմունքի աւագ օպէր լիազօր ոստիկանութեան մայոր Լ. Ե. Բրուտեանի, աւագ օպէր լիազօր ոստիկանութեան մայոր Ա. Նահապետեանի, ՁՊՎ-ի պետ Գ. Նազինեանի, տեղական տեսուչ ոստիկանութեան աւագ լէյտենանտ Ա. Գրիգորեանի, ՀՀ ԱԱԾ Լոռու մարզի Վանաձորի բաժնի աւագ օպէր լիազօր մայոր Արտակ Բաղդասարեանի, աւագ օպէր լիազօր մայոր Ռոբերտ Աւոյեանի, օպէր լիազօր Գ. Ժամհարեանի կողմից:

Հաղորդում է Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակը:

## ԽՈՇՏԱՆԳՈՒՄԸ ՉԻ ՀԱՍՏԱՏՈՒԵԼ

*Lragir.am*, 13:04

Մարդու Իրաւունքի պաշտպան Արմէն Յարութիւնեանը փետրուարի 27-ին Ուրբաթ ակումբում լրագրողների հետ հանդիպմանն անդրադարձել է յետընտրական շրջանում Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների ձերբակալութիւններին: Օմբուդսմէնը նշել է, թէ իրաւական տեսանկիւնից, իրաւապահների այդ գործողութիւնը միանգամայն հիմնաւոր է ու անխոցելի:

Քաղաքական գնահատականներ տալու մասին հարցերին Արմէն Յարութիւնեանը չի պատասխանել, ասելով, որ իր գործը իրաւական հարթութեան վրայ է: Օմբուդսմէնը նշել է, որ այդ առումով իր գրասենեակը գիշեր-ցերեկ աշխատում է, որպէսզի ձերբակալուածների հարցում չլինեն իրաւական գործընթացի շեղումներ եւ ընթանայ անաչառ քննութիւն:

Մարդու Իրաւունքի պաշտպանը նշել է նաեւ, որ տեղեկութիւն էր տարածուել, որ ձերբակալուած Սմբատ Այվազեանի հանդէպ խոշտանգում է իրականացուել: Մարդու Իրաւունքի պաշտպանի գրասենեակն արագ արձագանքել է դրան եւ հանդիպելով Սմբատ Այվազեանի հետ, պարզել, որ նրա հանդէպ խոշտանգում կիրառելու մասին տեղեկութիւնը չի համապատասխանում իրականութեանը:

Արմէն Յարութիւնեանին խնդրել են մեկնաբանել նաեւ պետական այն պաշտօնեաների աշխատանքից ազատման փաստը, որոնք յայտարարում են ընտրութիւնները կեղծուած լինելու մասին եւ միանում են համաժողովրդական շարժմանը: Արմէն Յարութիւնեանը նշել է, որ այդ պաշտօնեաներն, ըստ օրէնքի, իրաւունք չունեն զբաղուել քաղաքականութեամբ եւ յայտարարել այս կամ այն թեկնածուին սատարելու մասին, ու այդ

տեսանկիւնից նրանց ազատումը հիմնաւոր է: Բայց լրագրողները նշել են, որ այդ պաշտօնեաները չեն յայտարարել այս կամ այն գործչին սատարելու մասին, այլ նշել են, որ դէմ են ընտրակեղծիքներով անցած ընտրութիւններին: Արմէն Յարութիւնեանը դրան պատասխանել է, թէ եթէ այդպէս է, եթէ որեւէ մէկի յայտարարութեան մէջ չի եղել քաղաքական կողմնորոշման տարր, ապա թող դիմեն իրեն, եւ իր գրասենեակը կը զբաղուի այդ մարդկանց իրաւունքի պաշտպանութեամբ:

## ԻՆՉՔԱՆ ՇՈՒՏ, ԱՅԴՔԱՆ ՀԱՄՈԶԻՉ

*Lragir.am*, 13:12

Այն տեղեկութիւնները, թէ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը չի բաւարարում ձայների վերահաշուարկի վերաբերեալ դիմումները, չեն համապատասխանում իրականութեանը, փետրուարի 27-ին Ուրբաթ ակումբում յայտարարել է ԿԸՅ նախագահի տեղակալ Աբրամ Բախչագուլեանը: Նա նշել է, որ նախագահի թեկնածուները ներկայացրել են ձայների վերահաշուարկի 170 դիմում, որից չի բաւարարուել միայն 24-ը: Աբրամ Բախճագուլեանի ներկայացրած տուեալով, Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց ներկայացրած դիմումներից բաւարարուել է 62-ը, չի բաւարարուել 19-ը, Արթուր Բաղդասարեանի վերահաշուարկի դիմումներից 24-ը բաւարարուել է, մերժուել է 4-ը: Արման Մելիքեանը ներկայացրել է երկուսը, երկուսն էլ բաւարարուել են: Բաւարարուել են Վահան Յովհաննիսեանի եւ Սերժ Սարգսեանի վստահուած անձանց ներկայացրած բոլոր երեքական դիմումները, Արամ Յարութիւնեանի 4 դիմումը, իսկ նրա երեք դիմումն էլ մերժուել է: Ամբողջութեամբ բաւարարուել են Արտաշէս Գեղամեանի դիմումները, որոնց թիւը եղել է 6, եւ Տիգրան Կարապետեանի 11 դիմումները:

Հարցին, թէ ինչու է Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովը նախատեսուած եօթօրեայ ժամկէտից երկու օր շուտ Սերժ Սարգսեանին վերջնականապէս հռչակել Հայաստանի նորընտիր նախագահ, Աբրամ Բախչագուլեանը պատասխանել է, որ թէեւ Հայաստանի օրէնսդրութիւնը նշում է եօթօրեայ ժամկէտի մասին, բայց Եւրոպական կոնվենցիաներում մօտեցում կայ, որ ինչքան ԿԸՅ-ն արագ հրապարակի ընտրութեան վերջնական արդիւնքը, այդքան հասարակութեան համար այն կը լինի համոզիչ:

## ԲՈՂՈՔՆԵՐԸ՝ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵԽՆՈԼՈԳԻԱՆԵՐԻ ՖՈ՞Ն

*A1+*, 14:19

«Պէտք է ցաւով նշեմ, որ ընտրական այս երեւոյթները ցոյց են տալիս, որ տոտալիտար որոշակի արժէքներից դեռ ամբողջովին չենք ձերբազատուել եւ շատ ժամանակ պատրաստ չենք ոչ հանդուրժողականութեան, ոչ երկխօսութեան, ոչ էլ համագործակցութեան: Մինչդեռ ժողովրդավարութիւնը խարսխուած է այս ամէնի վրայ», - այսօր յայտարարեց ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպան Արմէն Յարութիւնեանը:

Ըստ Յարութիւնեանի՝ այսօր մեր թիւ մէկ թշնամին անհանդուրժողականութիւնն ու բեւեռացումն են:

«Համոզուած եմ, որ այսօրուայ երեւոյթների իրական պատճառների ու դրանց լուծումների վերաբերեալ քաղաքական կամք պարտադիր պէտք է դրսեւորուի: Այդ տեսակէտից ողջունում եմ ՀՀ նորընտիր նախագահի կոչը, որը խարսխուած էր հանդուրժողականութեան եւ երկխօսութեան վրայ: Կոչ եմ անում բոլորին ուղղորդուել նմանա-

տիպ արժէքահամակարգով, քանի որ այնպիսի տպաւորութիւնն է, որ մեզանից վերացել է սէրը, հաւատը: Ես պարզապէս կոչ եմ մեր բոլոր քաղաքական գործիչներին ու քաղաքացիներին մի պահ կանգ առնել եւ միմեանց լսել», - կոչ արեց նա՝ աւելացնելով, որ այս պարագայում ոչ ոք մեզ չի օգնելու եւ մենք միասին պէտք է այս հարցի լուծումը տանք: Նրա կարծիքով՝ այս պարագայում՝ նորընտիր նախագահի մեկնած ձեռքը, օդում չպէտք է մնայ:

Ինչ վերաբերում է Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ Արամ Կարապետեանի ձերբակալութեանը, ապա նա նշեց, որ նրա կուսակցութեան անդամները նոյն օրն են իր հետ կապուել: Յարութիւնեանի ասելով՝ իրենցից հասանելիքն արել են՝ փաստաբան են տրամադրել, հետեւել են, որ ճնշումներ չգործադրուի եւ այլն: «Մարդու Իրաւունքների պաշտպանը որեւէ մի երկրում սկզբնական փուլում չի կարող գնահատական տալ՝ նեկայացուած մեղադրանքները հիմնաւորուա՞ծ են, թէ ոչ», - աւելացրեց նա:

Ընտրակեղծիքների հետ կապուած օմբուդսմէնը խուսափեց որեւէ գնահատական տալ, սակայն նշեց, որ իրենց գրասենեակը ստացել է 24-25 բողոք: Ստացուած բողոքների մեծ մասը եղել են չհիմնաւորուած՝ «եկէք, տեսէք ինչ է կատարւում մեզ մօտ» տարբերակով: «Մենք դրա յետեւից չէինք գնայ, քանի որ մենք հնարաւոր էինք համարում, որ անհանդուրժողականութեան պայմաններում դա քաղաքական տեխնոլոգիա է՝ ֆոն ստեղծելու համար: Զբաղուել ենք այն բողոքներով, որտեղ կոնկրէտութիւն կար», - վստահեցնում էր Արմէն Յարութիւնեանը: Ձեռքի տալ ունեցած բոլոր փաստերը օմբուդսմէնը ներկայացրել է կամ ՀՀ դատախազութիւն, կամ այլ լիազօր մարմինների: Դրանց մի մասով քրէական գործ է յարուցուել, մի մասը պարզուել է, որ իրականութեանը չեն համապատասխանել: Յարութիւնեանի ասելով՝ ստացուած նամակների քանակը նոյնքան է, որքան ստացել են 2007թ. մայիսի խորհրդարանական ընտրութիւններին:

Ինչ վերաբերում է նրան, որ մարդկանց աշխատանքից ազատման սպառնալիքի տակ պարտադրում են գնալ, մասնակցել Սերժ Սարգսեանի հանրահաւաքին, ապա Յարութիւնեանը նշեց, որ իրենք նման բողոքներ չեն ստացել: «Մենք չենք կարող հիմնուել ինչ-որ խօսակցութիւնների վրայ: Եթէ իրօք նմանատիպ երեւոյթ կայ, ապա ցաւօք, մենք նման բողոքներ չենք ունեցել, որ հիմնաւորուած ասենք, որ նման բան եղել է: Մի քաղաքացի չի զանգել ու ասել, որ ձեզ տեղեակ եմ պահում, որ մեզ պարտադրուած հանրահաւաքի են տանում», - հաւաստիացրեց օմբուդսմէնը՝ աւելացնելով, որ եթէ հիմա ինքն առանց փաստերի որեւէ բան ասի, ապա դա կը նշանակի, որ այս ծայրայեղ իրավիճակում ինչ-որ մէկի ջրաղացին ջուր լցնել: Նշենք, որ *Ա1+*-ը երկու օր առաջ հէնց այս հարցի հետ կապուած օմբուդսմէնին ուղարկել էր նամակ-բողոքներ, որոնց մասին Յարութիւնեանն ասաց, որ ինքը դեռ տեղեակ չէ, ուսումնասիրութիւն է գնում:

Շահարկուող այն լուրերին, թէ Ազատութեան Հրապարակում ապրողները բողոքում են գիշերուզօր չդադարարող աղմուկից, ապա Յարութիւնեանը նշեց, որ իրենք նման բողոքներ բնակիչներից չեն ստացել: Ինչ վերաբերում է ընտրութիւններին լրագրողների նկատմամբ կիրառուած ճնշումներին, ապա նա նշեց. «Ճիշտն ասած՝ իբրեւ Մարդու Իրաւունքների պաշտպան, ես այլեւս չգիտեմ՝ ինչ անել, որ մեր իրաւապահ մարմինները լուրջ դրան արձագանքեն: Օրէնքով՝ լրագրողը պէտք է յատուկ պաշտպանուած լինի»:

## ՎՐԱՆՆԵՐԻ ԹԻՒԸ ԱՒԵԼԱՆՈՒՄ Է

*A1+*, 14:39

Այսօր Ազատութեան Հրապարակում վրանների թիւը 60 էր: Ամբողջ գիշեր նստացոյցի մասնակիցները խաղաղ շարունակել են բողոքի ցոյցը: Նրանց հետ այս գիշեր, ինչպէս նախորդ գիշերներն անցկացրել է նաեւ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ շարժման միւս առաջնորդները: Իսկ կէսօրին, երբ խաղաղ նստած էին ցուցարարները, մի խումբ ոստիկաններ բարձրացան հարթակ եւ սփիւռքահայ հասարակական գործիչ, մտաւորական, արցախեան պատերազմի ակտիւ մասնակից Սարգիս Հացպանեանին հրաւիրեցին ոստիկանութիւն: Հացպանեանը չստորագրեց եւ չստացաւ ծանուցագիրը: Բայց այդ ընթացքում, ընդամէնը մէկ րոպէում ամբողջ Հանրապետութեան Հրապարակով մէկ սփռուած զանգուածը կուտակուեց հարթակի առջեւի մասում եւ սկսեց բացականչել «Սար-գիս, Սար-գիս»:

Հացպանեանը ոստիկաններին ճանապարհելուց յետոյ ստիպուած եղաւ հանգստացնել ժողովրդին՝ ասելով, որ իրեն չեն կարող բերման ենթարկել, պէտք է դիմեն Ֆրանսիայի իշխանութիւններին, յետոյ արտաքին գործերի նախարարութեան միջնորդութեամբ իրականացուեն միւս գործողութիւնները: Ապա նկատեց, որ ինքը Հայաստանում օրէնք չի խախտել եւ յանցագործութիւն չի կատարել:

«Իմ տնից կարող են հանել 4000 հատ գիրք, գիրք, գիրք ու միայն գիրք: Երեւի յանցաւոր եմ, որ կրթութիւն եմ ստացել, որ գիրք եմ կարդացել, չէ՞ որ Քոչարեանը ասաց, որ գիրք կարդալ չի սիրում», - ասաց Սարգիս Հացպանեանը: Նա նաեւ տեղեկացրեց, որ ինքը շատ լաւ յարաբերութիւններ է ունեցել Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի հետ: Նրանք իրենից շնորհակալութիւն են յայտնել, երբ նա ապրում ու պայքարում էր թշնամու դէմ Ստեփանակերտում, երբ խրամատներում էր գիշերում. «Իսկ հիմա յանցանք եմ արել, որ ձեզ հետ եմ, իմ ժողովուրդ, հիմա ինձ ուզում են բռնել: Հայկ Յարութիւնեանը, Սերժ Սարգսեանը, Ռոբերտ Քոչարեանն ինչպէ՞ս են նայելու իմ աչքերին»: Արցախցի ժողովրդին քաջածանօթ Հացպանեանը յայտարարեց, որ Հայկ Յարութիւնեանն այսօր ինքն իր հետ քննարկելու եւ որոշելու խնդիր ունի՝ կամ Սարգիս Հացպանեանին ձերբակալելու են ու արտաքսեն, կամ ինքը հրաժարական է տալու:

Ի դէպ, Հացպանեանը թէեւ չէր ծանօթացել ծանուցագրի բովանդակութեանը, սակայն ենթադրում է, որ իրեն հրաւիրում են ոստիկանութեան նրա համար, որ օտարերկեայ քաղաքացի է, բայց խառնւում է ներքաղաքական զարգացումներին: «Ես սրանից մօտ 3 ամիս առաջ ասել եմ թերթերով, այդ ոնց է լինում, որ Ռուսաստանի հայերի միութեան նախագահը՝ Արա Աբրահամեանը, գալիս է այստեղ ոչ միայն հիմա, 10-20 տարի գալիս է, ու ասում է, որ մենք այս մարդուն ենք աջակցում, ինչը օրէնքով արգելւում է, ինքը Ռուսաստանի քաղաքացի է: Արա Աբրահամայնին կարելի՞ է, նրան, որ Հայաստանում իմ արածի 0,1 տոկոսը չի արել, ժողովուրդը գիտի, Արցախի ժողովուրդը յատկապէս, իսկ Սարգիս Հացպանեանին չի՞ կարելի : Անհասկանալի է»: Նա յիշեցրեց, որ ՀՅԴ բազմաթիւ անդամներ արտերկրի քաղաքացիներ են, որոնք մասնակցում են ՀՀ քաղաքականութեան իրականացմանը, ինչպէս նաեւ ՌԱԿ-ի անդամները:

Ի դէպ, Հացպանեանը Ֆրանսիայի քաղաքացի է, իսկ ՀՀ-ում ունի Կացութեան յատուկ կարգավիճակ. «Ես Հայաստան-Արցախում այսքան ժամանակ ինչ-որ արել եմ իրենք գիտեն, բայց անգամ այդ քայլը չեն արել, 1000 դոլար արժէ այդ անձնագիրը, ես մուծել եմ,

ես եւ երեխաներս Հայաստանում փող մուծելով ենք ապրում այսքան տարի»:

Յիշեցնենք, որ նա Ֆրանսիայից Հայաստան է վերադարձել 18 տարի առաջ:

Բազմաթիւ երիտասարդներ էին մօտենում այսօր Հացպանեանին եւ ասում, որ իրենք հպարտանում են Սարգիսով եւ օրինակ վերցնում նրանից:

## ԿԸ ԼԻՆԻ՞ ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*A1+*, 15:08

Դեռ չի սկսուել Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ նրան սատարող ուժերի հանրահաւաքը, բայց հրապարակը լեփ-լեցուն է: Ծածանւում են եռագոյն դրօշները, հնչում է հայկական երաժշտութիւնը, իսկ մարդիկ շուրջպար են բռնում:

Ինչպէս նշեց ՀՀՇ անդամ Արամ Մանուկեանը, իրենք օգտագործում են իրենց հզօր զէնքը՝ երգն ու պարը, որը քարուքանդ է անում իշխանական բուրգը:

Իսկ Պահպանողական Կուսակցութեան ղեկավար Միքայէլ Հայրապետեանը դիմեց հրապարակում հաւաքուած ուսանողներին եւ ճշտեց, թէ իրենք շարունակո՞ւմ են դասադուլը, թէ՞ ոչ: Իսկ ուսանողները արձագանքեցին՝ դասադուլ, նրանք նաեւ յաւելեցին, որ այնքան են շարունակելու դասադուլը, մինչեւ յաղթանակ տանեն:

«Ժողովրդի մեծամասնութիւնը գիտի, որ Սերժ Սարգսեանը անցել է ոչ ժողովրդի կամքով, անցել է գումարով, կեղծիքներով, վախով եւ բռնութիւններով: Երեկոյեան ժամը 6.30-ին մէկ քուէն գնում էին արդէն 50.000 դրամով: Մենք պատրաստւում էինք այնքան ժամանակ բողոքել, մինչեւ արդարութիւնը յաղթանակի», - ասաց Կոնսերվատորիայի ուսանող Արամ Խաչատրեանը:

Իսկ Մաթեւոս Պետրոսեանն էլ նշում է, որ եկել է Ազատութեան Հրապարակ, քանի որ ուզում է ապրել ազատ եւ անկախ հայրենիքում, իսկ Լեւոն Տէր-Պետրոսեանին տեսնել գերագոյն հրամանատարի պաշտօնում:

Հարցուածները նշում էին, որ խախտուել է ժողովրդի ազատութիւնը, ոտնահարուել էին մարդկանց իրաւունքները, ձայները հաշուել են իրենց հայեցողութեամբ:

Հրապարակում հաւաքուածները նաեւ բողոքում էին բարձր հարկերից, ոռոգման ու խմելու ջրերի գների բարձրացումից: Նրանք նաեւ նշում էին, որ իրենց թոշակների բարձրացումը ոչինչ չի տուել, այլ նոյնիսկ նրանց ընտանիքների բիւջէներն են պակասել, քանի որ բոլոր ապրանքների գները կրկնակի բարձրացել են:

Նրանք նշում էին, որ պահանջում են անվաւեր ճանաչել ընտրութիւնների արդիւնքները:

Ի դէպ, մեր համաքաղաքացիներից շատերը նշում էին, որ եթէ արդարութիւնը չվերականգնուի, իրենք դա կ՚որոնեն օտար ափերում:

## ԳԱԳԻԿ ԵՒ ՎԱՐԴԱՆ ՋՀԱՆԳԻՐԵԱՆՆԵՐԸ ԿԱԼԱՆԱՒՈՐՈՒԱԾ ԵՆ

*Lragir.am*, 15:10

Հայաստանի ոստիկանութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը. «Փետրուարի 23-ին ՀՀ ոստիկանութիւն բերման ենթարկուած ՀՀ Գլխաւոր Դատախազի նախկին տեղակալ Գագիկ Ջհանգիրեանը եւ նրա եղբայր Վարդան Ջհանգիրեանը կալանաւորուած են: Գագիկ Ջհանգիրեանին մեղադրանք է առաջադրուած ՀՀ քր. օր.-ի 235

յօդուածի (ԱՊՕՐԻՆԻ ԿԵՐՊՈՎ ԶԷՆՔ, ՌԱԶՄԱՄԹԵՐՔ, ՊԱՅԹՈՒՑԻԿ ՆԻՒԹԵՐ ԿԱՄ ՊԱՅԹՈՒՑԻԿ ՍԱՐՔԵՐ ՁԵՌՔ ԲԵՐԵԼԸ, ԻՐԱՑՆԵԼԸ, ՊԱՀԵԼԸ, ՓՈԽԱԴՐԵԼԸ ԿԱՄ ԿՐԵԼԸ) 1-ին եւ 316 յօդուածի (ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԲՌՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾԱԴՐԵԼԸ) 1-ին մասերով: Վարդան Ջհանգիրեանին մեղադրանք է առաջադրուած ՀՀ քր. օր.-ի 316 յօդուածի (ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԲՌՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾԱԴՐԵԼԸ) 2-րդ մասով»:

## ԱՆՄԻՋԱՊԷՍ ԶԱՆԳԱՀԱՐԷՔ՝ 080-080-804

*A1+*, 15:25

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան յայտարարութիւնը

Հանրապետութիւնում տեղի են ունենում բազմաթիւ ձերբակալութիւններ, խուզարկութիւններ, բռնութեան դէպքեր, հնչում են սպառնալիքներ:

«Իրաւական Նախաձեռնութիւն. Ընտրութիւններ-2008» նախաձեռնութեան գրասենեակը խնդրում է նման դէպքերում ամիջապէս զանգահարել 080-080-804 հեռախօսահամարով: Անհրաժեշտութեան դէպքում կը տրամադրուի անվճար իրաւաբանական օգնութիւն:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՆԿԱՐԸ ԿԸ ՊԱՀԷՆ (video)

*A1+*, 16:10

Արդէն մէկ շաբաթ է՝ ամէն օր, ժամը 15-ին Ազատութեան Հրապարակում մեկնարկում է Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքը: Ինչպէս նախորդ օրերին, այսօր եւս հանրահաւաքը բազմամարդ է: Քիչ առաջ ցուցարարներին միացան բժշկական համալսարանի ուսանողները՝ Լեւոն, Լեւոն վանկարկելով:

Հրապարակը նրանց ողջունեց «Յաղթանակ, յաղթանակ» կոչերով:

Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանն իր ելոյթում ասաց, թէ այսօր այլ քաղաքական իրավիճակ է, եւ «երէկուայ կէս միլիոնանոց հանրահաւաքով ապահովեցիք մեր երկրի ապագան»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը հարթակում ողջունեց ներկաներին փոքրիկ ելոյթով՝ ասելով, որ այսօր մի հարց են լուծում «կամ Սերժիկն է գնում, կամ ժողովուրդը»: «Սերժիկ, Սերժիկ», - գոռացին ներկաները: « Բայց այն նկարը մնալու է», - շարունակեց Լեւոն Տէր-Պետրոսեանը՝ ցոյց տալով Հին Երիւանի շէնքի վրայի Սերժ Սարգսեանի նկարը: «Ոչ, ոչ», - գոռացին ներկաները:

Լեւոն Տէր-Պետրոսեանը բացատրեց, բա «այստեղ երիտասարդ աղջիկներ կան, մայրեր, իրենք ո՞նց են իրենց երեխաներին վախեցնելու. մի բոբօ պէտք է լինի»:

Ի դէպ, հանրահաւաքային ելոյթները ընդմիջւում են պարային կատարումներով:

## ԽՄԵԼ ԵՆ ԱՅՆ ԲԱՆԻ ՀԱՄԱՐ, ՈՐ ՄԱՐԴ ՉՄՆԱՅ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*Lragir.am*, 16:11

Փետրուարի 27-ին Ազատութեան Հրապարակում մեկնարկած հանրահաւաքի սկզբում Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, որ մի քանի բան ունի ասելու, որ չէր ասել,

որովհետեւ ձայնը կտրուել էր:

Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, որ Ռոբերտ Քոչարեանի Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնը փորձում է ներկայացնել, որ երկրում կատարւում է պետական յեղաշրջում: Այո, կատարւում է պետական յեղաշրջում, եւ կատարւում է Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի կողմից, եւ մենք այստեղ հաւաքուել ենք այդ յեղաշրջումը կանխելու համար:

Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, որ Ռոբերտ Քոչարեանը եւ Սերժ Սարգսեանը ուզում են կրիմինալ յեղաշրջում կատարել, որովհետեւ իրաւապահները չեն կատարում իրենց օրէնքով վերապահուած լիազօրութիւնները քանի որ գտնւում են Նեմեց Ռուբոյի, Թոխմախի Միերի եւ Մխչեանի Մուկի հսկողութեան տակ:

Նիկոլ Փաշինեանն ասում է, որ Ռոբերտ Քոչարեանը եւ Սերժ Սարգսեանը ամէն օր իշխանութիւնը պահում են հետեւեալ կերպ: Նրանք ամէն օր յայտարարում են, որ այսօր վերջին օրն է, եւ վաղը հրապարակում մարդ չի մնալու: Նիկոլ Փաշինեանը ասում է, որ երէկ իշխանական վերնախաւի մօտ 40 ներկայացուցիչ հանրահաւաքին հետեւել են Հիւսիսային Պողոտայի շէնքի սեւ ապակիների յետեւից, ովքեր յետոյ, ըստ Նիկոլ Փաշինեանի, հաւաքուել են Ռուբէն Հայրապետեանի Հարսնաքար ռեստորանում «եւ դարդից մի լաւ խմել են»: Նիկոլ Փաշինեանը ասում է, որ վերջին կենացն էլ խմել են, որ վաղը հրապարակում մարդ չմնայ: Բայց Նիկոլ Փաշինեանն ասում է, որ մարդիկ հրապարակում կը մնան այնքան ժամանակ, քանի դեռ Ռոբերտ Քոչարեանն եւ Սերժ Սարգսեանը չեն հեռացել:

## 1 ՄԻԼԻՈՆ 300 ՀԱԶԱՐ ՄԱՐԴ ՄԱՍՆԱԿՑԵԼ Է ՀԱՆՐԱՀԱՒԱՔԻ

*Lragir.am*, 16:17

Փետրուարի 27-ին Ազատութեան Հրապարակում Նիկոլ Փաշինեանը յայտնել է վիճակագրական տուեալ: Նա ասել է, որ ըստ պաշտօնական վիճակագրութեան, Ազատութեան Հրապարակում արդէն 7 օր շարունակուող ակցիան ունեցել է 1 միլիոն 300 հազար մասնակից: Նիկոլ Փաշինեանը բացատրել է այս հաշուարկի մեխանիզմը: Կան մշտական մասնակիցներ, կան մարդիկ, ովքեր որոշակի ժամերի են գալիս Ազատութեան Հրապարակ եւ կան մարդիկ, ովքեր օրուայ ընթացքում մի քանի անգամ գալիս-գնում են հրապարակ: Մասնագիտական հաշուարկով, 1 միլիոն 300 հազար մարդ է մասնակցել ակցիային:

Նիկոլ Փաշինեանը յայտարարել է եւս մի ձեռքբերման մասին: Այսօր առաւօտեան ռուսական *ОРТ* ալիքը ցուցադրել է փետրուարի 26-ի հանրահաւաքը եւ երթը: Իսկ *CNN* յայտնել է, որ երէկուայ հանրահաւաքին մասնակցել է 400-500 հազար մարդ: Իսկ Արամ Զաւէնի Սարգսեանը յայտարարել է, որ մի երկրում, որն ունի երկու միլիոնից քիչ աւելի բնակչութիւն, եւ այդ բնակչութեան մէկ քառորդն էլ հաւաքուել է Ազատութեան Հրապարակում, այդ երկրում իշխանութիւնը չի կարող երկար մնալ: Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, որ համաժողովրդական շարժումն ունեցել է մի շատ կարեւոր բովանդակային վերափոխում: Շարժումն արդէն ոչ միայն նախագահական ընտրութեան վերաբերեալ է, այլ մեր հասարարական կեանքի գլոբալ վերափոխման վերաբերեալ է, հետեւաբար այն բոլոր մարդիկ, ովքեր իրենց համարում են ազնիւ քաղաքացի, պէտք է միանան շարժմանը, եւ սա իսկապէս համաժողովրդական շարժում է, որը գլխաւորում է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ՎԱՆՕ ՍԻՐԱԴԵՂԵԱՆԻ ԵՂԲՕՐԸ

*Lragir.am*, 16:20

Այսօր Կոթի գիւղում ձերբակալել են Վանօ Սիրադեղեանի եղբօրը՝ Սերիոժա Սիրադեղեանին տոզի (Տիրի) հրացան ունենալու համար: Փետրուարի 27-ին Նիկոլ Փաշինեանը Ազատութեան Հրապարակում յայտարարել է, որ Կոթի գիւղը հայ-ադրբէջանական սահմանից ընդամէնը 600 մ է հեռու, եւ մի երկու ամիս առաջ ադրբէջանցիները մտել են Կոթի, առեւանգել են հովուին եւ իրենց հետ տարել հօտը: Սերժ Սարգսեանը Կոթի գիւղի պատուաւոր քաղաքացի է, ինքը չի կարողանում պաշտպանել գիւղացիներին, հիմա էլ զինաթափում է գիւղացիներին, չթողնելով, որ իրենք իրենց պաշտպանեն, ասում է Նիկոլ Փաշինեանը: «Մենակ Սովետական ՕՄՕՆ-ը այդպէս կը վարուէր», աւելացրել է Նիկոլ Փաշինեանը:

## 27-Ի ԳՈՐԾԸ ԿԱՐՃԵԼ ԵՆ ԲԱՒԱՐԱՐՈՒԱԾ ՄԻՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՅՈՒՄ

*A1+*, 16:25

ՀՀ Գլխաւոր Դատախազութիւնը վերջերս իր տարակուսանքը յայտնեց այն կապակցութեամբ, որ զինդատախազ Գագիկ Ջհանգիրեանը հիմա է յայտարարում, որ օրէնքի խախտումով է կարճուել գործը, այն դէպքում, երբ անգամ տուժողները չեն բողոքարկել դատախազութեան որոշումը:

«Հոկտեմբերի 27-ի» գործով Դէմիրճեանների շահերի ներկայացուցիչ Աշոտ Սարգսեանից *A1+*-ը հետաքրքրուեց, թէ ինչու չեն բողոքարկել հոկտեմբերի 27-ի մայր գործից անջատուած մասի կարճման որոշումը:

«Իսկ Գլխաւոր Դատախազը կարո՞ղ է մի պաշտօնական փաստաթուղթ ցոյց տալ, որ ինքը տուժողներին տեղեակ է պահել անջատուած մասը կարճելու մասին: Եթէ ես պաշտօնական գրութիւն չեմ ստացել, ես ի՞նչ գիտեմ, թէ ինչ է կատարւում», - ասաց Աշոտ Սարգսեանը եւ տեղեկացրեց, որ իր վերջին միջնորդութիւնը՝ կապուած անջատուած մասի հետ Գլխաւոր Դատախազութեան քննիչ Ջոն Ֆարխոյեանը ժամանակին ընդունել է եւ դրա վերաբերեալ գործողութիւններ է նշանակել:

«Ես Նաիրի Բադալեանի հետ քննչական փորձարարութեան մասին միջնորդութիւնը ներկայացրել եմ ուրբաթ օրը, դատախազութիւնը ընդունել է միջնորդութիւնը եւ նշանակել է քննչական փորձարարութիւնը երեքշաբթի: Սակայն երկուշաբթի ինձ դատախազութիւնից տեղեկացրին, որ Նաիրի Բադալեանը բացակայում է Հայաստանից, գտնւում է ԱՄՆ-ում եւ կը վերադառնայ մայիսին, այսինքն, միջնորդութեանը կ'անդրադառնան մայիս ամսին: Խօսքը 2003 թուականի մասին է: Մենք մինչեւ հիմա սպասում ենք», - ասաց նա:

Աշոտ Սարգսեանը աւելացրեց, որ դատախազութեան հետ պաշտօնական վերջին յարաբերութիւնները վերաբերել են այդ բաւարարուած միջնորդութեանը:

Այսինքն, ըստ նրա, մի կողմից կայ բաւարարուած միջնորդութիւն, եւ նշանակուած գործողութիւն առանցքային վկայի մասնակցութեամբ, միւս կողմից դատախազութիւնը կոլեգիայի նիստ է հրաւիրում եւ որոշում կարճել անջատուած գործի վարոյթը, ընդ որում դրա մասին չտեղեկացնելով տուժողներին:

Իսկ նախկին զինդատախազ Գագիկ Ջհանգիրեանի հետապնդման հետ կապուած

Աշոտ Սարգսեանը ասաց. «Ջհանգիրեանը մի անգամ փորձեց 27-ի մասով բան ասել ԱԺ-ում եւ դէմն առան: Այս անգամ էլ երեւի փորձում էր ասել, էլի դէմն առան: Ես չգիտեմ՝ ինչ է ասելու, որ այդքան վախենալու է»:

Ի դէպ, այսօր առաւօտեան Հայաստանի Գլխաւոր Դատախազի նախկին տեղակալ՝ փետրուարի 23-ին ձերբակալուած նախկին զինդատախազ Գագիկ Ջհանգիրեանը տեղափոխուել է Վարդաշէն քրէակատարողական հիմնարկ: Նա մեղադրւում է «ապօրինի զէնք եւ զինամթերք պահելու, փոխադրելու, կրելու», ինչպէս նաեւ «իշխանութեան ներկայացուցչի նկատմամբ բռնութիւն գործադրելու համար» (Քր. Օր-ի 235 յօդուածի 1-ին մասով եւ 316 յօդուածի 1-ին մասով):

Նշենք, որ Քր. Օր-ի 235 յօդուածի առաջին մասով սահմանուած առաւելագոյն պատիժը ազատազրկումն է 3 տարով, 316 յօդուածի առաջին մասով՝ 5 տարով, նոյն յօդուածի երկրորդ մասով՝ մէկ տարով:

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ ԿԵՂԾԵԼ ԵՆ ԻՐԵՆՑ ՍԵՓԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՊԱՇՏՊԱՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Lragir.am*, 16:38

Փետրուարի 27-ին Արամ Զաւէնի Սարգսեանը ելոյթ է ունեցել Ազատութեան Հրապարակում եւ յայտարարել է, որ իշխանութեանը մօտ կանգնած շատ մարդիկ, օրինակ Յովիկ Աբրահամեանը, ընտրութիւնը կեղծել են ոչ թէ յանուն Սերժ Սարգսեանի կամ նրա գաղափարների, այլ իրենց սեփականութիւնը պաշտպանելու համար, իսկ նրանք մեծ սեփականութեան տէր են: Նա ասել է, որ դիմում է այդ մարդկանց ասելով, որ հիմա նոր իրավիճակ է: Արամ Զաւէնի Սարգսեանը կոչ է արել մտածել այն մասին, որ հիմա բոլորովին նոր քաղաքական իրավիճակ է ստեղծուել, եւ նրանք այս իշխանութեան յենասիւները չեն, ինչի մասին իր առաջին ելոյթում նշել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա յայտարարել է, որ հիմա նոր իրավիճակ է, նոր քաղաքական պրոցէս, եւ կոչ է արել չխառնուել այս պրոցէսին, քանի որ սա այն պրոցէսը չի, որին նրանք պէտք է խառնուեն:

## ԿԱՄ ՍԵՐԺՆ Է ՀԵՌԱՆՈՒՄ, ԿԱՄ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

*Lragir.am*, 16:40

Փետրուարի 27-ին Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ մենք մի խնդիր ենք լուծում՝ կամ Սերժն է հեռանում, կամ ժողովուրդը, եւ ուրիշ հարց չկայ: Այս յայտարարութիւնից յետոյ հանրահաւաքի մասնակիցները սկսել են վանկարկել «Սերժը, Սերժը»: Բայց, շարունակել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, այն մի նկարը պիտի մնայ, եւ մատնացոյց է արել Հիւսիսային Պողոտայի շէնքին փակցրած Սերժ Սարգսեանի պաստառը:

Լեւոն Տէր-Պետրոսեանը բացատրել է, թէ ինչու պիտի պաստառը մնայ: Այս հրապարակում շատ երիտասարդ աղջիկներ կան, ովքեր վաղը մայր են դառնալու, պէտք է մի բօբօ լինի, որ երեխային վախեցնեն: Հանրահաւաքի մեկնարկի սկզբում հրապարակը լեփ-լեցուն էր, եւ մարդկանց հոսքը շարունակւում է:

## ԳԵՂԱՄԵԱՆԸ Կ՚ԸՆԴՈՒՆԻ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԱՌԱՋԱՐԿԸ

*A1+*, 16:56

Երէկ Սերժ Սարգսեանը դիմեց նախագահի բոլոր նախկին թեկնածուներին՝ համագործակցութեան կոչով, որին դեռ մինչեւ այդ կոչը միանալու պատրաստակամութիւն էր յայտնել Արտաշէս Գեղամեանը։

Այսօր էլ նա *Ա1+*-ի հետ զրոյցում վերահաստատեց իր դիրքորոշումը, նշելով. «Ազգային Միաբանութիւնը պատրաստ է հայոց պետականութեան անառիկութիւնը ապահովող ցանկացած ոլորտում իր մասնակցութիւնը բերել»։

Յիշեցնենք, որ Ազգային Միաբանութեան նախագահ, նախագահի թեկնածու Գեղամեանն արդէն իսկ շնորհաւորել է Սերժ Սարգսեանին, եւ չի պատրաստւում դիմել Սահմանադրական Դատարան։

ՍԴ չի դիմելու նաեւ միւս թեկնածու Վազգէն Մանուկեանը, բայց ոչ թէ նրա համար, որ համաձայն է արդիւնքների հետ, այլ չունի իրաւական հիմքեր՝ բողոքարկելու արդիւնքները։

Յիշեցնենք, որ երէկ Սերժ Սարգսեանը յայտարարել էր. «Ես այս բարձր ամբիոնից դիմում եմ նախկին թեկնածուներին եւ նրանց սատարած քաղաքական ուժերին. եկէ՛ք համագործակցենք։ Ընդհուպ մինչեւ կոալիցիոն կառավարութեան ձեւաւորում»։

## ԽԱԽՏՈՒՄՆԵՐԸ ՊԷՏՔ Է ՍՏԱՆԱՆ ԻՐԱՒԱԿԱՆ ԳՆԱՀԱՏԱԿԱՆ

*Lragir.am*, 17:32

Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօրուայ հանրահաւաքում անդրադարձել է Ռոբերտ Քոչարեանի՝ երէկ Հանրային հեռուստաընկերութեանը տուած հարցազրոյցին։ Մինչ այդ նա ասել է, թէ այս համահանրապետական մոբիլիզացիայի պատճառն այն է, որ ժողովրդի համար յստակեցուել է խնդիրը եւ ժողովրդին բացատրուել է այն։ Յետոյ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, թէ Ռոբերտ Քոչարեանի իշխանութիւնը եղել է անօրինական առաջին իսկ առաջադրումից, Սահմանադրութեան խախտմամբ, եւ հիմա այդ մարդը խօսում է անօրինականութիւնից, իրենց մեղադրում անօրինական երթի ու ցոյցի համար։ Լեւոն Տէր-Պետրոսեանն ասում է, որ այդ մարդը իր նստավայրում նստած կոպտօրէն խախտում է Սահմանադրութիւնը, իսկ ժողովրդին մեղադրում է խուլիգանութեան համար։ «Եթէ մեր արածը խուլիգանութիւն է, ապա նրա արածը հազարապատիկ խուլիգանութիւն է», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը։ Ըստ Տէր-Պետրոսեանի, վերջերս Քոչարեանը էլի խախտեց Սահմանադրութիւնը, երբ շարժմանը միացած դիւանագէտներին ոչ միայն ազատեց աշխատանքից, այլեւ զրկեց նրանց դիւանագէտի կոչումից, ինչի իրաւունքը չունէր։ Այդ բոլոր խախտումներն, ըստ Տէր-Պետրոսեանի, յետագայում պէտք է ստանան իրաւական գնահատական։

## ԴԱՍԱԿԱՆ ԲՈՒՐԺՈՒԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 17:46

Ազատութեան Հրապարակում, այսօրուայ հանրահաւաքում Լեւոն Տէր-Պետրոսեանը կրկին անդրադարձել է օլիգարխների թեմային։ Նա կրկնել է իր թեզը, որ օլիգարխները համակարգի զոհն են, քանի որ զբաղւում են գործարարութեամբ, իսկ քանի որ մեր երկրում անհնար է այդ բանն անել առանց իշխանութեան հովանաւորութեան, ապա

նրանք ստիպուած են ենթարկուել համակարգին: Լեւոն Տէր-Պետրոսեանը ցաւ է յայտնել, որ օլիգարխները չհասկացան, որ ժողովրդի այս պայքարն իրենց համար է, իրենց ազատութեան համար, որ իրենք այլեւս չվճարեն ստուերային հարկեր, այլ օրինական հարկեր, որոնք շատ աւելի քիչ են, քան ստուերայինը:

Լեւոն Տէր-Պետրոսեանը, դիմելով հանրահաւաքի մասնակիցներին, ասել է, թէ գուցէ շատերին դուր չգայ իր բնորոշումը, բայց ինքը յայտարարում է, որ այս համաժողովրդական շարժումը դասական բուրժուադեմոկրատական յեղափոխութիւն է, որի նպատակն է տնտեսութիւնն ազատել ֆէօդալական ճիրաններից: Մինչեւ սեփականութիւնը չազատուեց ֆէօդալական լծից, չձեւաւորուեց մոդեռն Եւրոպա: Եւ այլ ճանապարհ չկայ, ասել է Տէր-Պետրոսեանը:

Նա յիշեցրել է իր մի արտայայտութիւնը, երբ ասել էր, թէ 10 տարի յետոյ Սերժը բումճ է դարձնելու օլիգարխներին, եւ ասել, թէ օլիգարխները չհասկացան իրեն: Լեւոն Տէր-Պետրոսեանը կրկնել է, որ եթէ Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանն այսպէս շարունակեն, իրենց հարազատ-բարեկամներին պաշտօններ տան հարստացնեն, Հայաստանում էլ ռեսուրս չկայ, նրանք խլելու են օլիգարխներից: Տէր-Պետրոսեանը ցաւ է յայտնել, որ օլիգարխները չհասկացան, որ այսօր իշխանութեան համար մարդ են ծեծում, վաղը զրկուելու են իրենց սեփականութիւնից: Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, այդ իրավիճակը հասկացել են անգամ նրանք, ովքեր թւում էր, թէ այս համակարգի առաւել նուիրուած ծառայողներն են՝ ոստիկանութեան, Ազգային Անվտանգութեան, բանակի համակարգում: Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, այդուամենայնիւ այդ մարդկանցից շատերն այսօր իրենց կողքին են՝ բացայայտ, կամ դեռեւս թաքուն: Սակայն Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, որ օլիգարխներն էլ դեռ ժամանակ ունեն այդ մասին մտածելու, իր խօսքը հասկանալու համար: Եթէ ոչ, ապա ինչ արած, թող իրենք իրենց խղճան, յայտնել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, ասելով՝ «մենք գիտենք մեր անելիքը»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ միեւնոյն է, հայ ժողովուրդն այլեւս չի ենթարկուի առաջ Հայաստան, կամ աջ դարձ Հայաստան, ձախ դարձ, յետ դարձ Հայաստան կարգախօսներին:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԵԼ Է ՂԱՐԱԲԱՂԻ ԽՆԴՐԻՆ

*Lragir.am*, 17:58

Ազատութեան Հրապարակի այսօրուայ հանրահաւաքում Լեւոն Տէր-Պետրոսեանն անդրադարձել է Ղարաբաղի խնդրին, եւ այդ համատեքստում 1998թ. իրադարձութիւններին, երբ ինքը հրաժարական տուեց: Նա ասել է, թէ իրեն այսքան տարի եւ այժմ էլ մեղադրում են Ղարաբաղը ծախելու մտադրութեան մէջ: Նրա խօսքով, ինքը հեռացել է 1998-ին, որովհետեւ պատմութեան մէջ լինում են պահեր, երբ խօսքը դժուար է տեղ հասցնել, եւ դրա համար էլ թողել է դաշտը, որ եկողներն իրենց ծրագիրն իրականացնեն:

Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշեցրել է Սեւրի դաշնագիրը, ասելով, որ այն ժամանակուայ հայկական էլիտան տոգորուեց մաքսիմալիզմով, յոյսը դրեց արտաքին աշխարհի աջակցութեան վրայ, թշնամացաւ թուրքերի հետ եւ ոչ միայն չստացաւ Սեւրը, այլեւ կորցրին Հայաստանի կէսը: 1998թ. էլիտան աւելի խելօք չէր, քան այն ժամանակուանը, եւ այսօր էլ Ղարաբաղի հարցում խօսում են ոչ թէ այն մասին, թէ ինչ ենք անելու, այլ

յոյսները դրել են արտաքին աշխարհի վրայ, որ աշխարհի ուշադրութիւնը Ղարաբաղի հարցի հանդէպ կը թուլանայ, որ Ադրբէջանում ինչ որ բաներ տեղի կ'ունենայ, որ Հայրը Ալիեւը կը մահանար, որ այս կամ այն կը լինէր, իսկ թէ Հայաստանն ինչ պէտք է անի, անէր, նրանք չէին նշում: Այդ բանն ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: 10 տարի այս իշխանութիւնն, ըստ Տէր-Պետրոսեանի, ունէր Ղարաբաղի հարցում իր մօտեցումները կեանքի կոչելու հնարաւորութիւն, մինչդեռ ստատուս քվոյի պահպանումն, ըստ Տէր-Պետրոսեանի, մեզ բերել է կորուստներ, կորցրել ենք մեր պետութեան բարոյականութիւնը, վերջին 10 տարում 500 հազար մարդ է հեռացել Հայաստանից, 15 հազար մարդ՝ Ղարաբաղից, որոնց բերել են այստեղ պաշտօններ ու բիզնէս տուել, ասում է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ԾԱՓԱՀԱՐՈՒԹԻՒՆ ՈՍՏԻԿԱՆՆԵՐԻՆ

*Lragir.am*, 18:00

Ազատութեան Հրապարակում փետրուարի 27-ի հիմնական հանրահաւաքից յետոյ տեղի է ունեցել արդէն աւանդական դարձած բազմամարդ երթ: Երթի մասնակիցների թիւը յընթացս աւելացել է: Երթն անցել է Աբովեան փողոցով, Գլխաւոր Դատախազութեան շէնքի դիմացով, քաղաքապետարանի շէնքի մօտից թեքուել է դէպի Մաշտոցի Պողոտայ եւ վերադարձել Ազատութեան Հրապարակ: Եթէ երթի սկզբում երկարութիւնը եղել է քաղաքապետարանից մինչեւ Հանրապետութեան Հրապարակ, ապա երբ երթի առաջին շարքերն արդէն մտել էին Ազատութեան Հրապարակ, վերջին շարքերը դեռեւս գտնւում են Մաշտոցի Պողոտայի շուկայի մօտ: Գլխաւոր Դատախազութեան շէնքի դիմացից անցնելիս, երթի մասնակիցները ծափահարում էին Գլխաւոր Դատախազութեան շէնքը շրջապատած ոստիկաններին:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ ՔՈՉԱՐԵԱՆԻՆ (video)

*A1+*, 18:12

«Ռոբերտ Քոչարեանի իշխանութիւնը առաջին իսկ օրուանից եղել է անօրինական. Սահմանադրութեամբ նրան ոչ 1998 թուականին, ոչ 2003 թուականին իրաւունք չունէր անգամ թեկնածու առաջադրուէր նախագահի պաշտօնի համար, - այսօր Ազատութեան Հրապարակում յայտարարեց ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, - դա կարող է չնչին բիւրոկրատական փնթիութիւն թուալ, բայց այդպէս չէ. սա կապուած է պետականութեան հիմքերի հետ. երբ նախագահն է Սահմանադրութիւն խախտում, սա պետութեան վերջն է, նախագահը Սահմանադրութեան առաջին եւ միակ երաշխաւորն է»: Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշեցրեց Քոչարեանի կատարած սահմանադրական այլ խախտումների մասին, որոնք, ըստ նրա, նոյնպէս պէտք է համաշխարհային արձագանք գտնող խայտառակութիւններ դիտուէին. «Նախագահը որեւէ նախարարի կարող է ազատել միայն այն ժամանակ, երբ նման առաջարկ է ստանում վարչապետից: Այդպիսի առաջարկ չստացած՝ Ռոբերտ Քոչարեանը աշխատանքից հեռացրել է պաշտպանութեան նախարար Վաղարշակ Յարութիւնեանին: Հիմա այդ մարդը խօսում է ինչ-որ մարդկանց կողմից խուլիգանութիւններ անելու, չարտօնուած միտինգներ անցկացնելու մասին: Նա, ով այդպիսի կոպտագոյն կերպով խախտել է Սահմանադրութիւնը, ընդհանրապէս որեւէ մէկին քննադատելու, մատ թափ տալու իրաւունք չունի: Եթէ մեր արածը

խուլիգանութիւն է, նրա արածը հազարապատիկ խուլիգանութիւն է»:

Շարունակելով սահմանադրական խախտումների թեման, Տէր-Պետրոսեանը նկատեց. «Ընդամէնը մի քանի օր առաջ նա եւս մէկ անգամ խախտեց Սահամանդրութիւնը, երբ մեր դիւանագէտները դրսեւորեցին իրենց քաղաքացիական դիրքորոշումը, նա, պետութիւն է, կարող էր նախարարի միջոցով նրանց հեռացնէր աշխատանքից, թէեւ սա էլ բարոյական առումով չտեսնուած դէպք է ողջ աշխարհի պատմութեան մէջ: Բայց նա նրանց զրկեց նաեւ դիւանագիտական կոչումներից, արտակարգ եւ լիազօր դեսպանի կոչումներից. այսպիսի իրաւասութիւն նախագահը չունի մեր Սահմանադրութեամբ: Այսօր այդ մարդը նստած իր Բաղրամեանի նստավայրում, ոտնահարում, ոչնչացնում, պղծում է մեր Սուրբ գիրքը, եւ դրանից յետոյ բարոյականութեան, բարձր գիտակցութեան կոչեր անում»: Այս խօսքերից յետոյ Ազատութեան Հրապարակը թնդաց «ամօթ» վանկարկումներով:

Լեւոն Տէր-Պետրոսեանը շեշտեց, որ այդ գործողութիւնները պէտք է ՍԴ-ում գտնեն իրենց իրաւաբանական գնահատականը: Այս իշխանութիւնը առաջին օրուանից բռնազաւթիչների իշխանութիւն է, «բայց իրենց սահմանադրական բռնազաւթումը քիչ էր, նրան պետք էր լրիւ ճզմել այս ժողովրդի կամքը, վերացնել բոլոր այն հակակշիռները, որոնք կը խանգարէին իրեն բացարձակ միապետութիւնը հաստատելու համար, դա իրականացրին օգտուելով 99 թուականի հոկտեմբերի 27-ի ոճրագործութիւնից: Եթէ Կարէն Դէմիրճեանը եւ Վազգէն Սարգսեանը չվերացուէին, նրանց երբեք չէր յաջողուի ստեղծել այնպիսի իշխանական բուրգ, որը այսօր գոյութիւն ունի»:

Ապա Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշեցրեց, որ երկրում հաստատուած է խանական իշխանութիւն եւ մէկ մարդու ձեռքում է կենտրոնացած ոչ միայն իշխանութիւնը, այլեւ ողջ տնտեսութիւնը: «Օլիգարխները ոչ թէ տնտեսութեան սիւներն են, այլ զոհերը», - ասաց առաջին նախագահը: Իսկ այժմ մեկնարկած պայքարը, ըստ էութեան, նոր փուլ է. «Դասական բուրժուադեմոկրատական յեղափոխութիւն է, որի էութիւնը տնտեսութեան եւ տնտեսավարման ազատագրումն է ֆէոդալական ճիրաններից: Մինչեւ տնտեսութիւնը, պետականութեան իրաւունքը չազատենք ֆէոդալական լծից, որպէս Եւրոպա գոյութիւն չենք ունենայ. մենք գնալու ենք այս ճանապարհով, ուրիշ ճանապարհ գոյութիւն չունի»:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 18:23

ՀՀ Ոստիկանութիւնը տարածել է յայտարարութիւն, որում ասւում է հետեւեալը. «Արդէն եօթ օր է, ինչ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ նրա կողմնակիցները, չնայած բազմաթիւ զգուշացումներին, շարունակում են չարտօնուած հանրահաւաքները, երթերն ու նստացոյցը: Հայաստանի Հանրապետութեան ոստիկանութիւնը ցուցարարներին կոչ է անում դադարեցնել ապօրինի գործողութիւնները, չխախտել հասարակական կարգն ու քաղաքացիների անդորրը եւ չկազմալուծել մայրաքաղաքի բնականոն կենսագործունէութիւնը: Ոստիկանութիւնը վճռական է եւ օրէնքով իրեն վերապահուած իրաւասութիւնների շրջանակում պաշտպանելու է երկրի սահմանադրական կարգն ու հասարակական անվտանգութիւնը»:

## ՍԱՐԳՍԵԱՆԸ ՏԵՂԵԿԱՏՈՒԱԿԱՆ ՇՐՋԱՓԱԿՄԱ՞Ն ՄԷՋ Է, ԹԷ՞ ՄԻԱՅՆ *ՀԴ* Է ՆԱՅՈՒՄ

*A1+*, 19:03

Այսօր խորհրդարանական հարց ու պատասխանից առաջ ԱԺ-ի նախագահ Տիգրան Թորոսեանը շնորհաւորեց Սերժ Սարգսեանին նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ եւ դահլիճը սկսեց ծափահարել, ընդ որում նոյն դահլիճը շատ աւելի պասիւ էր այդ հարցում երկու օր առաջ, իսկ այսօր վարչապետի ներկայութեամբ, ամէն մէկը փորձում էր աւելի ջերմեռանդ ծափահարել: Նրան նուիրեցին նաեւ ծաղիկներ, որոնք վարչապետը նուիրեց կին պատգամաւորներին:

Կառավարութեանը հարցեր տալու համար շտապել էին հերթագրուել հիմնականում ՀՀԿ պատգամաւորները, եւ նրանց հարցերից ընդհանրապէս չէր զգացւում երկրում տիրող մթնոլորտը:

Սակայն Ժառանգութիւն խմբկցութեան պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանի հարցն՝ ուղղուած Սերժ Սարգսեանին, պատկերը փոխեց. «Փետրուարի 19-ի ընտրութիւնների ժամանակ պատգամաւորների նկատմամբ կիրառուել են բռնութիւններ, վերջին օրերին քաղաքական հետապնդումների զոհ են դարձել մի քանի քաղաքական, հասարակական գործիչներ, հասարակ քաղաքացիներ եւ ուսանողներ, ձերբակալուել են տարբեր հիմնաւորումներով՝ ապօրինի զէնք կրելուց մինչեւ հակասահմանադրական կոչեր հնչեցնելը:

Սակայն մեզ յայտնի է նաեւ, որ գործարար աշխարհում, մեր գործընկերների մէջ, մեր ընկերների, եղբայրների մօտ կան թիկնազօրեր, որոնք ունեն զէնք, զինամթերք, երբեմն անօրինական, մենք գիտենք, որ հասարակ քաղաքացիները երբեմն շատ աւելի սուր յայտարարութիւններ են հնչեցնում, քան քաղաքական գործիչները, սակայն հետապընդումները ընտրովի են իրականացւում, ընդ որում պատգամաւորների նկատմամբ բռնութիւն կիրառած ոստիկանները ոչ միայն չեն ձերբակալուել, այլեւ պաշտօնավարում են իրենց բարձր պաշտօններում: Ինչպէ՞ս էք պատկերացնում օրէնքի առջեւ բոլորի հաւասարութիւնը կիրառելու սկզբունքը գործնական դաշտում»:

Սերժ Սարգսեանը, պատասխանելով պատգամաւորի հարցին, յայտարարեց, որ իսկապէս հսկայական գործ ունեն անելու, մեծ ջանքեր պէտք է գործադրեն, որպէսզի վերացնեն իրաւական անգրագիտութիւնը առաջին հերթին պետական պաշտօնեաների եւ պատգամաւորների մօտ: Ապա աւելացրեց.

«Հասարակ քաղաքացի եւ քաղաքական գործիչ. ես չեմ հասկանում դա ինչ է նշանակում, ինձ համար հանրապետութեան բոլոր քաղաքացիները հաւասար են: Ինձ համար անօրինական զէնքը անօրինական զէնք է համարւում անկախ նրանից, դա կը լինի պատգամաւորի, հասարակ քաղաքացու, թէ ԵԿՄ անդամի մօտ»: Անօրինական զէնքը, ըստ Սարգսեանի, մշտապէս առգրաւուել է, հիմա դրա ծաւալները մեծանում են, եւ գնալով մեր երկրում պէտք է իսպառ բացառուի անօրինական զէնքի առկայութիւնը:

Բայց աւելի հետաքրքրական էր այն, որ Սերժ Սարգսեանը տեղեակ չէր մեր երկրում տեղի ունեցող զարգացումներից:

«Ես գոնէ տեղեկութիւն չունեմ որեւէ, էապէս, պատգամաւորի նկատմամբ իրականացուած բռնութեան մասին իրաւապահ մարմիններ դիմելու փաստ: Չունեմ: Ես չգիտեմ՝ ո՞ւմ նկատմամբ է բռնութիւն իրականացուել, եթէ կը լինեն փաստեր, մենք անպայման

իրաւապահ մարմիններից կը պահանջենք, որպէսզի ընթացք տրուեն: Իսկ ձեր քաղաքական, թէ պոպուլիստական ելոյթը կարծում եմ, լաւ կը լինի հնչեցնէք համապատասխան տեղ, որտեղ հնչեցւում է: Դրանից մենք չենք տուժի», - եղաւ երկրի վարչապետի պատասխանը:

Արմէն Մարտիրոսեանը նրան նախ բացատրեց, թէ ինչով է տարբերւում հասարակ քաղաքացին քաղաքական գործչից, ապա տեղեկացրեց, որ բռնութեան ենթարկուած պատգամաւորներից մէկը ինքն է, միւսները՝ Վարդան Խաչատրեանը եւ Զարուհի Փոստանջեանը, իսկ քրէական գործ յարուցուած է, ուղղակի դանդաղ է քննութիւնն իրականացւում, յետոյ նաեւ աւելացրեց, որ բոլոր ձերբակալուածները փետրուարի 19-ից յետոյ են ձերբակալուել, երբ դրսեւորել են քաղաքական ակտիւութիւն:

Սերժ Սարգսեանը խոստացաւ ճշտել, թէ ինչ բռնութիւն է իրականացուել պատգամաւորների նկատմամբ եւ խնդրել ոստիկանութեանը՝ արագացնել քննութիւնը: «Ինչ վերաբերում է ձերբակալուած քաղաքական գործիչներին, ինձ համար Ջհանգիրեանը քաղաքական գործիչ չի», - ասաց Սերժ Սարգսեանը եւ չգիտես ինչու՝ բարութեան կոչ արեց պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանին:

## ՍՄԲԱՏ ԱՅՎԱԶԵԱՆԻՆ՝ 2 ԱՄՍՈՒԱՅ ԿԱԼԱՆՔ

*A1+*, 19:06

Փետրուարի 24-ին ոստիկանութիւն բերման ենթարկուած Սմբատ Այվազեանը կալանաւորուած է: Նրան մեղադրանք է առաջադրուած ՀՀ քր. օր.-ի 316 յօդուածի (ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԲՌՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾԱԴՐԵԼԸ) 1-ին մասով: Հաղորդում է ոստիկանութիւնը:

Ի դէպ, դատաւոր Գայեանէ Կարախանեանի վճռով Սմբատ Այվազեանը երկու ամսով զրկուել է ազատութիւնից (նախնական կալանք):

## ՍՄԲԱՏ ԱՅՎԱԶԵԱՆԻՆ ՄԵՂԱԴՐԱՆՔ Է ԱՌԱՋԱԴՐՈՒԵԼ

*Lragir.am*, 19:12

Հայաստանի Ոստիկանութեան հաղորդագրութեան համաձայն, «փետրուարի 24-ին ոստիկանութիւն բերման ենթարկուած Սմբատ Այվազեանը կալանաւորուած է: Նրան մեղադրանք է առաջադրուած ՀՀ քր. օր.-ի 316 յօդուածի (ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԲՌՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾԱԴՐԵԼԸ) 1-ին մասով»:

## ՏԻԳՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԸ ԴԻՄԵԼ Է ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆ

*Lragir.am*, 19:23

Ժողովրդական կուսակցութեան ղեկավար, Հայաստանի նախագահի թեկնածու Տիգրան Կարապետեանն այսօր դիմել է Հայաստանի Սահմանադրական Դատարան 19-ի նախագահի ընտրութեան արդիւնքը բողոքարկելու հայցով:

## ԱՍԱ ՈՎ Է ԱՌԱՋՆՈՐԴԸ, ԱՍԵՄ ԻՆՉ ՀՐԱՊԱՐԱԿ ՈՒՆԵՍ

*Lragir.am*, 19:25

Յարգելի ժողովուրդ, ես հասկացայ այս հրապարակի տրամաբանութիւնը,

փետրուարի 27-ին մօտենալով Ազատութեան Հրապարակի հարթակին, ասել է Հանրապետութիւն կուսակցութեան առաջնորդ Արամ Զաւէնի Սարգսեանը: Նա նշել է, թէ հրապարակի տրամաբանութիւնը հասկանալու համար պէտք է նայել հրապարակի առաջնորդին: Այդ իմաստով, Արամ Սարգսեանը համեմատութիւն է անցկացրել այն հրապարակի հետ, որի առաջնորդը Լեւոն Տէր-Պետրոսեանն է, եւ այն հրապարակի հետ, ուր երէկ նոյնպէս հանրահաւաք էր եւ որի առաջնորդի դերում էր Սերժ Սարգսեանը:

Լեւոն Տէր-Պետրոսեանի առաջնորդած Ազատութեան Հրապարակում, ըստ Արամ Սարգսեանի, տիրում է փոխադարձ սիրոյ, հանդուրժողութեան, ազատութեան մթնոլորտ: Այդ հրապարակում երբ որեւէ մէկը դրամապանակ է գտնում, ուղարկում է հարթակ, ասում է Արամ Սարգսեանը, որպէսզի յայտարարեն եւ կորցնողը գայ ու վերցնի իր դրամապանակը: Իսկ Սերժ Սարգսեանի առաջնորդած հրապարակում այնպիսի պարտադրանք է, Արամ Սարգսեանի գնահատմամբ, այնպիսի փակ մթնոլորտ է, որ այնտեղ հաւաքուած մարդիկ հանրահաւաքից անմիջապէս յետոյ հազարներով եկել են Ազատութեան Հրապարակ, որ բացեն իրենց հոգին: Արամ Սարգսեանի ելոյթից յետոյ խօսափողին է մօտեցել Լեւոն Տէր-Պետրոսեանը, որը հարթակ է բարձրացել կնոջ ու թոռնիկների հետ եւ հանրութեան հետ միասին վանկարկել յաղթանակ, իսկ յետոյ խօսափողը տուել է թոռնիկներից մէկին, ով նոյնպէս վանկարկել է յաղթանակ բառը:

## ԾԱՓԱՀԱՐՈՒԹԻՒՆ՝ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ (video)

*A1+*, 19:31

Նիկոլ Փաշինեանի գլխաւորած այսօրուայ երթը տարբերւում էր նախորդ օրուայ երթերից: Նախ երթուղին փոխուել էր. հազարաւոր մարդկանց շարքն այս անգամ անցաւ Վազգէն Սարգսեան, Գրիգոր Լուսաւորիչ փողոցներով եւ Մաշտոցի Պողոտայով վերադարձաւ Ազատութեան Հրապարակ: Մարդկանցից շատերի ձայնն այսօր կտրուել էր, այդ պատճառով էլ «Լեւոն, նախագահ», «Յաղթանակ» եւ «Սերժիկ, հեռացիր» վանկարկումներն այդքան էլ բարձր չէին հնչում:

Այսօր էլ Կառավարութեան շէնքի մօտ կազմ-պատրաստ սպասում էին մի քանի տասնեակ ոստիկաններ, սակայն երթի մասնակիցները նրանց անգամ չմօտեցան: Նոյնքան ոստիկաններ շարուած էին նաեւ Դատախազութեան շէնքի մօտ, որտեղ, ոստիկաններին «լաւ» աշխատելու համար մարդիկ «շնորհակալութիւն» յայտնեցին՝ ծափահարութիւններով եւ «Ջհանգիրեան» վանկարկելով՝ շարունակեցին երթը: Թէ քանի մարդ մասնակցեց երթին, հնարաւոր չէր հաշուել, սակայն Ազատութեան Հրապարակ հասած Նիկոլ Փաշինեանն արդէն 10 րոպէ ելոյթ էր ունենում, երբ երթից վերադարձող մարդկանց հոսքն աւարտուեց:

### «ՀԻՒԱՆԴՆԵՐՆ ԷԼ ԵՆ ԼԵՒՈՆ ԳՈՌՈՒՄ»

Երթի մասնակիցներին ծափահարութիւններով եւ «Յաղթանակ» վանկարկումներով ողջունում էին Մաշտոցի Պողոտայի եւ Գրիգոր Լուսաւորիչ փողոցի բնակիչները: Նրանցից մէկը պատուհանից ծածանում էր եռագոյն դրօշը եւ վանկարկում «Լեւոն-Լեւոն»: Երթին «մասնակցում» էին նաեւ կառուցուող էլիտար շէնքերի բանուորները: Իսկ երբ երթի մասնակիցները անցնում էին Մարգարեանի անուան հիւանդանոցի մօտով, հիւանդանոցի ոգեւորուած աշխատակիցներից մէկը բղաւեց. «Հիւանդներն էլ են Լեւոն գոռում»:

**ՓՈՐՁՈՒՄ ԷՐ «ԿՌԻՒ ՍԱՐՔԵԼ»**

Քաղաքապետարանի մօտից մի երիտասարդ «Առաջ Հայաստան» վզկալով միացաւ երթին: Նա փորձում էր բարկացնել երթի մասնակիցներին իր ռեպլիկներով: «Էս ո՞վքեր են», «Էս ի՞նչ ա», - փնփնթում էր տղան: Երբ *Ա1+*-ի թղթակիցը փորձում էր լուսանկարել նրան, նա հարուածեց ֆոտոխցիկին՝ բղաւելով «Մի նկարի, յետոյ ինչ որ սրանց հետ եմ քայլում, ես սրանց հետ չեմ»: Այնուհետեւ մօտեցաւ երթին մասնակցող երկու երիտասարդ տղաների եւ սկսեց վիճել նրանց հետ: Այս ամբողջ ընթացքում երկու ոստիկաններ քայլում էին «Առաջ Հայաստան» գրութեամբ վզկալով տղայի յետեւից: Վերջինս, որքան էլ փորձեց, չկարողացաւ մարդկանց հունից հանել, քանի որ մեծահասակներից մէկը երթի մասնակիցներին յորդորեց, հանգիստ թողնել նրան. «Էսի կռիւ սարքող ա, գործ չունէք»: Տղան դարձեալ փնթփնթալով հեռացաւ:

## ԳԵՂԱՄԵԱՆԻՆ ՉՄՈՌՈՒԱՆԱՔ

*Lragir.am*, 19:35

Այսօր խորհրդարանում վարչապետ Սերժ Սարգսեանն ասել է, թէ ընդդիմութիւնն արձագանքել է համագործակցութեան կոչին, որ նա արել էր երէկ Հանրապետութեան Հրապարակում: Այդ կոչը մեկնաբանելով, Սերժ Սարգսեանն ասել է, թէ իր ասածը վերաբերում է ընդհուպ կօալիցիոն կառավարութիւն ստեղծելը: «Խնդրում եմ բոլորին, ովքեր պատրաստ են համագործակցութեան, արձագանքել այդ կոչին, եւ այդ ժամանակ ամէն ինչ կը փոխադրուի գործնական դաշտ», ասել է Սարգսեանը: Թէ ում նկատի ունէր Սերժ Սարգսեանը՝ չի մանրամասնել: Այս կոչին առայժմ հրապարակային արձագանքել է հայկական ընդդիմութեան անկրկնելի ներկայացուցիչը՝ Ազգային Միաբանութիւն կուսակցութեան ղեկավար Արտաշէս Գեղամեանը, ով նախագահի ընտրութեանը ստացել էր 1 տոկոսից պակաս քուէ եւ ընդունել է ընտրութեան արդիւնքը:

## ԴՈՒՔ ԵՐԵՒԻ ԿԱՐԾՈՒՄ ԷՔ... ԿԱՄ ԿԱՐԴԱԼԸ ՎՆԱՍ ՉԷ

*Ա1+*, 19:55

**Հայաստանի Հանրապետութեան քաղաքացի Մեսրոպ Յարութիւնեանի յայտարարութիւնը, ի պատասխան ոստիկանութեան յայտարարութեան**

ՀՀ ոստիկանութիւնը տարածել է յայտարարութիւն, որում ասւում է հետեւեալը. «Արդէն եօթ օր է, ինչ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ նրա կողմնակիցները, չնայած բազմաթիւ զգուշացումներին, շարունակում են *չարտօնուած* հանրահաւաքները, երթերն ու նստացոյցը» (ընդգծումը՝ մերն է):

Յայտարարութիւն տարածելուց առաջ օրէնք կարդացէք եւ տերմինները ճշտէք. «Ժողովներ, հանրահաւաքներ, երթեր եւ ցոյցեր անցկացնելու մասին» ՀՀ օրէնքում (որպէսզի ուղեղներից հասնի՝ նշեմ նաեւ՝ ընդունուել է ՀՀ Ազգային Ժողովի կողմից 28. 04. 2004 թ.) չկայ *արտօնուած* կամ *չարտօնուած* հանրահաւաք հասկացութիւնը, ինչպէս նաեւ չկայ հրապարակային միջոցառումն *արտօնելու* կամ *չարտօնելու* պահանջ: Դուք, երեւի կարծում էք, թէ դեռ ապրում էք Սովետական Միութիւնում եւ առաջնորդւում էք սովետական՝ *արտօնուած եւ չարտօնուած* տերմիններով (բոլոր ընդգծումները տեսողական թուլութիւն ունեցող ոստիկանական քարոզիչների համար են):

Եւ ոչ միայն տերմիններով. ձեր՝ արդէն քանի օր ձգւող քարոզչական (ներողութիւն՝

ձեզ աւելի հարազատ՝ սովետական տերմինով ասեմ՝ *պրոպագանդիստական*) արշաւն ամբողջովին յիշեցնում է 37 թուականը՝ իր, ԿԲԳ-ական ստուկաչներով, վիշինսկիական, բերիական եւ մուղդուսիական քայլերով...

Յատուկ ձեզ համար՝ մէջբերում նաեւ ՀՀ Սահմանադրութիւնից.

«**Յօդուած 29**. Իւրաքանչիւր ոք ունի խաղաղ, առանց զէնքի հաւաքներ անցկացնելու իրաւունք»:

Կարդացէք մէկ-մէկ. կարդալը վնաս չէ:

Եւ էլի՝ յատուկ ձեզ համար, մէջբերում «Ժողովներ, հանրահաւաքներ, երթեր եւ ցոյցեր անցկացնելու մասին» ՀՀ օրէնքի 7-րդ յօդուածի 1. կէտի, վերջին պարբերութիւնից (մանրամասն եմ գրում, որ հեշտ գտնէք) «Ոչ ոք իրաւունք չունի պարտադրել քաղաքացուն մասնակցելու որեւէ հրապարակային միջոցառման»: Հասկացա՞ք, ի՞նչ եմ ակնարկում: Ինչո՞ւ Սերժ Սարգսեանի՝ օրէնքի այս պահանջի խախտմամբ անցկացուած հաւաքների մասին յայտարարութիւն չէք անում: Գուցէ մարդկանց իրաւունքների վրայ թքա՞ծ ունէք:

## ԳԱՂՏՆԱԼՍՈՒՄՆԵՐ

*A1+*, 20:16

Ըստ մեր տեղեկութիւնների՝ զինուած ուժերի գլխաւոր շտաբի պետ, գեներալ գնդապետ Սէյրան Օհանեանը ստորագրել է հերթական գաղտնի հրամանը, որով փորձ է արւում կանխել առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի ղեկավարած համաժողովրդական շարժմանը զինուորականների ակտիւ մասնակցութիւնը: Գեներալ Օհանեանը ՊՆ կապի վարչութեան պետ, գեներալ Կարէն Բաբուրեանին կարգադրել է գաղտնալսել բոլոր զինուորականների քաղաքային ու բջջային հեռախօսները:

Այս մասին իմանալով՝ առաւել համարձակ զինուորականները որոշել են հեռախօսազրոյցներում շատ աւելի բացայայտ արտայայտուել իրենց սկզբունքների, գաղափարների ու կողմնորոշումների մասին, իսկ զգուշաւորները պարզապէս փոխել են հեռախօսահամարները:

Ըստ մեր աղբիւրի՝ համակարգի աշխատողների բջջային համարները ՊՆ յատուկ ծառայութիւններում գրանցուած են, որպէսզի ուսումնական հաւաքների ժամանակ նրանց կարճ հաղորդագրութիւններ ուղարկուեն՝ ազդարարելով տագնապ ազդանշան, բայց արդէն այդ տուեալներն օգտագործւում են «այլախոհներին» որսալու եւ պատժելու համար:

## ՏԻԳՐԱՆ ԿԱՐԱՊԵՏԻՉԸ ԴԻՄԵԼ Է ՍԴ

*A1+*, 20:30

Այսօր, ժամը 17-00-ին, ՀՀ Սահմանադրական Դատարան է դիմել 2008թ. փետրուարի 19-ի ՀՀ Նախագահի ընտրութիւններում ՀՀ նախագահի թեկնածու Տիգրան Կարապետեանը՝ 2008 թուականի փետրուարի 19-ին կայացած ՀՀ նախագահի ընտրութիւնների արդիւնքով ՀՀ ԿԸՅ 2008թ. փետրուարի 24-ի՝ թիւ 24-Ա որոշումը վիճարկելու հարցով: Յայտնում է ՍԴ մամուլի ծառայութիւնը:

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔԸ ԱՅԼԵՒՍ ՎԱՐՈՒՄ Է ԺՈՂՈՎՈՒՐԴԸ (video)

*A1+*, 20:35

Այսօրուայ երթից յետոյ Ազատութեան Հրապարակում հաւաքուածների թիւը աւելացաւ: Մարդկանց բազմութիւնը լցրել է Հիւսիսային Պողոտան, հրապարակի յարակից բոլոր տարածքները: Հանրահաւաքի մասնակիցներն արդէն ապրում են յստակ համակարգուած կեանքով: Այսօր արդէն հանրահաւաքի մասնակիցներն էին վարում հանրահաւաքը. նրանք էին որոշում, թէ որ պահին ով պէտք է յայտնուի հարթակում, երբ պէտք է ծանօթանան լուրերին, լսեն *Ազատութիւն* ռադիոկայանի թողարկումը, պարեն եւ այլն:

Այսօր Տէր-Պետրոսեանին հարթակում միացան նրա 3 թոռնիկները: «Լսել էին, որ առանց իրենց եմ պարում, եկել են ինձ միանան», - կատակեց Տէր-Պետրոսեանը: Բացի պապիկի հետ պարելուց, երեխաները միացան Ազատութեան Հրապարակի հաւաքուածների պահանջին. «Յաղթանակ, յաղթանակ»:

**ՊԱՏՐԱՍՏ ԵՆ 100 ՕՐ ԷԼ ԿԱՆԳՆԵԼ**

«Յաղթանակի կոչերին իր ելոյթով միացաւ նաեւ Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը՝ կրկին ժողովրդի պահանջով:

Նա հանարահաւաքի մասնակիցներին վստահեցրեց. «Էստեղ կանգնած ձեզանից իւրաքանչիւրը, սիրելի ժողովուրդ ջան, հերոս է: Եթէ դուք էստեղ կանգնած չլինէիք, բանտում կը լինէր ոչ միայն Պետրոս Մաքէյեանը, Սմբատ Այվազեանը եւ միւսները, այլեւ էս երկրի իւրաքանչիւր քաղաքացի»: Ազատութեան Հրապարակի տրամաբանութիւնը բացատրելու համար Արամ Սարգսեանը համեմատեց երէկուայ Տէր-Պետրոսեանի եւ Սերժ Սարգսեանի հանարահաւաքները. «Իւրաքանչիւր հրապարակը առաջնորդում է այդ հրապարակի առաջնորդը: Մեր առաջնորդը Լեւոն Տէր-Պետրոսեանն է, եւ նա իր ամբողջ ունակութիւններն ու կարողութիւնները ներդրեց, որ այս հրապարակում, այս 7 օրուայ ընթացքում որեւէ մէկի քթից արիւն չգայ: Այս հրապարակում բարութեան մթնոլորտ է: Այս հրապարակում նոյնիսկ կորցրած դրամապանակն են գտնում ու տիրոջը տալիս:

Այս հրապարակում մարդիկ միմեանց սիրում են: Բոլորը իրար մէջ բարեկամ, համախոհ ու ընկեր են տեսնում: Այս հրապարակը հրաշք հրապարակ է»: Արամ Սարգըսեանը նշեց, որ պատահական չէ, որ իրենք կոչ են անում հայկական հեռուստաընկերութիւնների նորութիւններ չդիտել եւ աւելացրեց. «Այդ հեռուստաընկերութիւնները մարդկանց ստորացնում են, ասում են՝ ինչ ուզում էք արէք, մէկ ա տէրը մենք ենք: Իսկ այստեղ մարդիկ գալիս են իրականութիւնը տեսնելու, ճշմարիտ լրատուութիւն ստանալու: Այստեղ մարդիկ իրենց մարդ են զգում»:

Ինչ վերաբերում է երէկ Հանրապետութեան հարապարկում Սերժ Սարգսեանի հանրահաւաքի մասնակիցներին, ապա նա ասաց. «Այնտեղ էլ առաջնորդ էր ձեւաւորում իր հրապարակը: Եթէ առաջնորդը շարժւում է ստով, կեղծիքով, կաշառելով, ժողովրդին չսիրելով, ստիպողաբար փողով, աւտօբուսներով մարդկանց է բերում հրապարակ, այդ մարդիկ, երբ տեսախցիկը թեքում էին իրենց վրայ, ձեռքով թաքցնում էին դէմքերը, որ յանկարծ իրենց չտեսնէին Սերժ Սարգսեանի հանրահաւաքում: Այդ մարդիկ իրենց ոտնահարուած եւ ճնշուած էին զգում: Նրանք, ովքեր Հանրապետութեան Հրապարակից եկան այստեղ, այլեւս այստեղից չեն գնալու: Նոր Հայաստանը կերտւում է այս հրապարակում»:

Նրանց, ովքեր իրենց ճնշուած են զգում, Արամ Սարգսեանը կոչ արեց գալ Ազատութեան Հրապարակ. «Ես համոզուած եմ, որ եթէ մեր առաջնորդ Լեւոն Տէր-Պետրոսեանը մեզ ասի՝ 100 օր էլ է պէտք, որ կանգնենք, մենք կանգնելու ենք»:

## ԵՆԹԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*A1+*, 21:33

Ազատութեան Հրապարակում հաւաքուածներին Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի ակտիւիստներին ձերբակալելը ամենեւին չի վախեցնում: Նրանք նոյնիսկ սկսել են գրազ գալ, թէ յաջորդը ով է լինելու, անեկդոտներ պատմել դէպքերի վերաբերեալ: Ազատութեան Հրապարակում հաւաքուածները այսօր սկսեցին ենթադրել, որ իշխանութիւնները յաջորդը ձերբակալելու, այսինքն՝ առեւանգելու են Միքայէլ Հայրապետեանին, իսկ թէ ինչո՞ւ՝ ասացին. «Շատ լաւ ելոյթ ունեցաւ»: Շատ լաւ ելոյթում Հայրապետեանն ասաց. «ԿԳԲ-ի մեկուսարաններում պահում էք Պետրոս Մաքէյեանին, միւս քաղբանտարկեալներին: ԿԳԲ-ի մեկուսարանները ձեր տեղն է: Էդ Գորիկ է, ինչ է, իր տեղն է: Ձեզանով պէտք է կարողանանք այն սեւ մուրը, որ քսել էք մեր պատմութեան ճակատին, այդ զնդաններում պահելով Ստեփան Զատիկեանի նման լուսաւոր դէմքերի, մաքրել: Իմացէք՝ վաղը ձեզ ներել չի լինելու: Եթէ մենք ներենք անգամ, երկնքում ներում չի լինելու: Այդ ոստիկանները մեր եղբայրներն են, իսկ դուք ազգակիցներ չունէք Հայաստանում, ինչպէս, որ չունեն Ռոբիկ ու Սերժ երկգլխանի հրէշները»:

Ի դէպ, այսօր լրանում է որոշ քաղբանտարկեալների անազատութեան մէջ գտնուելու օրէնքով սահմանուած այն ժամկէտը, որից յետոյ նրանց կամ պէտք է ազատ արձակեն կամ կալանաւորեն: «Ազատութեան միակ օջախը, միակ լեգիտիմ օջախը, առայժմ միայն Ազատութեան Հրապարակն է՝ իր օրինական նախագահով», - ասաց Հայրապետեանը: Ի լուր աշխարհի նա յայտարարեց. «Հայաստանում տեղի է ունեցել պետական յեղաշրջում: Իսկ ազատութեան մարտիկները առեւանգւում են եւ գտնւում ԱԱԾ-ի մեկուսարաններում»:

### ԱՒԱՆՑԻՆԵՐԸ ԲՈՂՈՔՈՒՄ ԵՆ

Ազատութեան Հրապարակի յարակից շէնքերի բնակիչները՝ ի պատասխան ոստիկանութեան եւ Ռոբերտ Քոչարեանի այն յայտարարութիւնների, թէ հանրահաւաքի մասնակիցները խանգարում են իրենց անդորրը, նամակներ են յղել Նիկոլ Փաշինեանին, որոնք նա ընթերցեց Ազատութեան Հրապարակի հարթակից:

«Նրանք ասում են,որ շնորհակալ են, որ Սերժիկի ռեստորանի հայհոյանքներից, կռիւներից, կրակոցներից մեզ ազատել էք: Այս ռեստորոնում Սերժիկը խասեաթ ունի հաց ուտել (նկատի ունի Հին Էրիւանը - խմբ.): Հիմա նրա ախորժակը փակուել է: Նրանք խասեաթ ունեն ուտելուց յետոյ կրակելու, անցորդներին ծեծելու»:

Նիկոլ Փաշինեանի ուղղուած նամակի հեղինակները յայտնում են, որ իրենք այդ առիթով բազմիցս դիմել են ոստիկանութեանը, սակայն նրանց ասել են. «Յաջորդ անգամ չփորձէք բողոքել, որովհետեւ, այնտեղ, պոդումայեշ, Սերժիկն է հաց ուտում»: Փաշինեանը նաեւ նշեց, որ լաւութիւն անելով Ազատութեան Հրապարակի յարակից շէնքերի բնակիչներին՝ վատութիւն են արել Աւան համայնքի բնակիչներին, որոնք զանգահարել են Փաշինեանին եւ ասել. «Աւանի բնակիչները ինձ ասացին, որ Սերժիկենք այնտեղ, մանթոյից քէֆ են անում, սալիւտ են խփում, աւտօմատներից օդ են կրակում, որ երէկուայ

շոկը յաղթահարեն: Նրանք խնդրում էին, որ Ազատութեան Հրապարակում շրջող ոստիկաններին ուղարկենք Աւան, որովհետեւ այնտեղ շրջակայ բնակիչներին խանգարում են»: Իշխանութեան վարքագիծը Փաշինեանին թոյլ տուեց յայտարարել. «Պետական մարմինները կաթուածահար են: Նրանք չեն կարողանում աշխատել, որոշումներ կայացնել: Կառավարութեան մարմիններում երեւում են աշխատակիցներ, որոնք հանել են իրենց փողկապները եւ հագել դաշտային հագուստ: Նրանք լաւ գիտեն, դաշտերում, կանաչների մէջ թաքնուելու ձեւերը եւ մասկիրովկան արդէն սկսուել է»:

## 7 ՕՐ ՈՒ ԳԻՇԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ (video)

*A1+*, 22:46

Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքի հիմնական մասի աւարտից յետոյ հրապարակը չդատարկուեց. մարդիկ շարունակում էին մնալ հրապարակում եւ լսում էին *Ազատութիւն* ռադիոկայանի թողարկումը:

Ապա խօսեց Սարգիս Հացպանեանը, ում յամառօրէն հրաւիրում են ոստիկանութիւն. նա տեղեկացրեց, որ այս գիշեր Ֆրանսիայից լրագրողների խումբ է ժամանելու Հայաստան, ինչպէս նաեւ իր ընկերները: Եւ կոչ արեց հրապարակում հաւաքուածներին՝ մնալ ողջ գիշեր, որպէսզի հէնց տեղում լրագրողները տեսնեն, թէ ինչ համաժողովրդական շարժման հետ գործ ունեն:

Հացպանեանը մի կոչ էլ արեց Վարդան Օսկանեանին, որպէսզի հրաժարական տայ եւ միանայ շարժմանը, «եթէ մի փոքր նամուս է մնացել»: Նա նաեւ բացայայտեց Օսկանեանի ներկայիս վարքագծի գաղտնիքը. հաւաքուածներին տեղեկացրեց, որ մէկ տարի առաջ Հիւսիսային Պողոտայի առաջին շէնքը, որի վրայ այսօր տեղադրուած է Սերժ Սարգսեանի մեծադիր նկարը եւ որի վրայ գրուած է «Բիզնէս կենտրոն» նուիրել են Օսկանեանին:

Անմիջապէս Հացպանեանի հարթակից իջնելուց եւ հրապարակից հեռանալուց յետոյ ոստիկանները կրկին եկան նրա յետեւից եւ չգտան նրան: Իսկ Այլընտրանք հասարակական նախաձեռնութեան համակարգող Նիկոլ Փաշինեանը յիշեցրեց, որ այսօր լրանում է հրապարակում գտնուելու 7 օրը. «7 օր ու գիշեր է, ինչ մենք այստեղ ենք, ոստիկաններն էլ մեզ հետ հաւասար», - ասաց Նիկոլ Փաշինեանը եւ բոլորը ողջունեցին ոստիկաններին, 7 օր ու գիշեր Ազատութեան Հրապարակում անցկացնողներին:

Ապա վստահեցրեց, որ այն ոստիկանները, որոնք օրէնք չեն խախտել, կը շարունակեն իրենց գործունէութիւնը, իսկ Ազատութեան Հրապարակի տարածքում ծառայութիւն իրականացնող ոտիկանները ի պատիւ իրենց օրէնք չեն խախտել: Ապա կոչ արեց ժողովրդին ոստիկանների պատուին պար նուիրել, բայց մինչ այդ վանկարկել՝ «Մի-ացում»:

Եւ կրկին Ազատութեան Հրապարակում թեւածեց երգ-երաժշտութիւնը:

Ի դէպ, այսօր ժամը 21-ի դրութեամբ Ազատութեան Հրապարակում երեք անգամ աւելի շատ մարդ կար, քան բոլոր նախորդ օրերին: Կազմակերպիչները նկատում էին, որ այն մարդկանց, ում օրեր շարունակ արգելում էին գալ Երեւան՝ հանրահաւաքների, ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի միտինգի շնորհիւ հասան Ազատութեան Հրապարակ:

Փաշինեանը նաեւ յայտարարեց, որ գրեթէ ամէն օր Ազատութեան Հրապարակում

իրենց ծննդեան տօնն են տօնում շարժման մասնակիցները: Այսօր Բիշքէկից ժամանած Վոլոդեայի ծննդեան օրն էր, որը հարթակ ուղարկուած գրութեան մէջ խոստացել է տուն չգնալ մինչեւ Լեւոն Տէր-Պետրոսեանին չուղեկցի նախագահի նստավայր:

Խօսեց նաեւ Նոր Ժամանակներ կուսակցութեան քաղխորհրդի անդամ Հրաչեայ Սարգսեանը, որը Արամ Կարապետեանի ողջոյնները փոխանցեց հանրահաւաքի մասնակիցներին եւ նրա անունից կոչ արեց էլ աւելի համախմբման եւ պայքարի:

## «ՄՐՍՈՂ ՄԱՐԴՈՒՆ ՉԻ ԿԱՐԵԼԻ ԲԱՑԱՏՐԵԼ, ԹԷ ԻՆՉՈՒ Է ՄՐՍՈՒՄ»

*A1+*, 23:32

Լեւոն Տէր-Պետրոսեան այսօր Ազատութեան Հրապարակից խօսեց այն պատրուակի մասին, որի միջոցով ներկայիս ղեկավարները եկան իշխանութեան: Խօսքը ԼՂ հիմնախնդրի մասին էր. «Իբր թէ ես, իմ իշխանութիւնը ծախում էր Ղարաբաղը եւ նրանք եկան փրկելու: Այդպիսի տրամադրութիւն էին ստեղծել եւ իշխանութեան համակարգում, եւ այն անհաշտ ընդդիմութեան միջոցով, որ ԼՂ հարցի մասին որեւէ ռացիոնալ առաջարկ դիտում էր դաւաճանութիւն, սրիկայութիւն եւ այլն: Ես հասկացայ մթնոլորտը»: Տէր-Պետրոսեանը այսօր պատասխանեց այն հարցին, որ աւելի յաճախ են իրեն ուղղում՝ ինչո՞ւ գնացիր. «Ժողովուրդների պատմութեան մէջ լինում են իրադրութիւններ, երբ խօսքը տեղ չի հասնում: Եւ դա եմ բնական համարում, եւ իմ իշխանութիւնների շրջանը դժուար շրջան էր:

Մենք կրեցինք զրկանքներ, ցուրտ, մութ, այո, ամէն ինչ եղել: Մենք այն ժամանակ էլ էինք բացատրում. չլինէր Ղարաբաղի պատերազմը, այդ զրկանքները չէին լինի: Այդ ժամանակ այդ մեր խօսքը տեղ չէր հասնում: Մրսող մարդուն չի կարելի բացատել, թէ ինչու է մրսում: Ասում է՝ մրսում եմ եւ վերջ: Նրան պիտի ջերմութիւն տաս: Հիմա որ չէք մրսում, հասկանում էք, թէ այն ժամանակ ինչու էիք մրսում»:

«Լեւոն, Լեւոն», - երկարատեւ վանկարկումներից յետոյ Ազատութեան Հրապարակի հաւաքուածների եւ Տէր-Պետրոսեանի զրոյցը շարունակուեց:

«1998թ. հասկացայ, որ ժողովրդին հնարաւոր չէ հասկացնել այդ ռացիոնալ պահը, թէ ինչպէս պէտք է լուծել ԼՂ հարցը, եւ նաեւ հնարաւորութիւն տալ այն մարդկանց, որոնք ասում էին, որ կարելի է աւելի լաւ լուծել ԼՂ հիմնախնդիրը», -ասաց նա: Տէր-Պետրոսեանը նշեց, որ ԼՂ հիմնախնդիրը լուծելու այդ շանսը մենք կորցրեցինք, եւ նշեց մեր ժողովրդի մէկ այլ կորուստ. «Առաջին հանրապետութեան ժամանակ մենք ընկանք մի թղթի յետեւից՝ Սեւրի պայմանագրի, չգիտեմ քարտէզի, չհասկանալով ինչ կայ այդ թղթի յետեւում՝ տուեցին մեզ այդ թուղթը, տուեցին որպէս խոստում եւ ասացին՝ գնացէք տիրէք այդ երկրին, եթէ կարող էք:

Հայաստանը այդ ուժը չունէր: Այդ քարտէզը պահելու համար, մենք զօրք չունէինք: Դա մի թուղթ էր, որի յետեւում որեւէ ուժի ցուցադրում չունէր՝ անգլիական զօրքերը վերադարձել էին Հայաստանից, Անդրկովկասից, ֆրանսիական զօրքերը մասնակցում էին թուրքերի հետ, դէ արի ու տէր կանգնի այդ քարտէզին: Մեր խելօք բարեկամները, նոյնիսկ նրանք, ովքեր այդ քարտէզը մեզ տալիս էին, մեր ղեկավարներին ասում էին. «Չխաբուէք: Աւելի լաւ է գնացէք թուրքերի հետ լեզու գտէք, այն ինչ ռեալ ունէք, գոնէ դա պահէք»: Իսկ մենք այն ժամանակ ունէինք 60 հազար քառ. կմ Հայաստան: Մենք ընկանք

Սեւրի յետեւից՝ մտածելով, որ ամբողջ աշխարհը մեզ է պաշտպանելու, չհասկանալով, որ այդ թղթից բացի մեզ ոչինչ չեն տալիս: Սեւրը չստանալու մէջ ես մեր Առաջին Հանրապետութեան ղեկավարներին չեմ մեղադրում, դա հնարաւոր չէր ստանալ, բայց ունեցածը կորցնելու մէջ, սրանից աւելի մեծ անխոհեմութիւն պետական այրերի համար հնարաւոր չէ: Այդ անխոհեմութիւնը վերածուեց ազգային ողբերգութեան:

Մենք ընկնելով մի թղթի յետեւից՝ կորցրեցինք մեր ունեցած Հայաստանի ուղիղ կէսը, 24 հազար քառ. կմ-ն անցաւ թուրքերին, իսկ 6 հազարը՝ որպէս Նախիջեւան անցաւ Ադրբէջանին: Ահա սա է իրականութիւնը»: Տէր-Պետրոսեանը, վերադառնալով 1998թ.-ին եւ իր հեռանալուն, ասաց. «Քանի որ 1998թ.-ի մեր իշխանական էլիտան աւելի գիտակից չէր, քան 1919-20թթ. էլիտան, նոյն մակարդակն էր, թւում էր, թէ աշխարհը մեզ կ'աջակցի, Հեյդար Ալիեւը կը մեռնի, Ելցինը կը գնայ՝ ուրիշ նախագահ կը գայ: Այսինքն՝ բոլոր պատճառաբանութիւնները վերաբերում էր արտաքին աշխարհին, սակայն ոչ ոք չէր ասում, թէ մենք ինչ պէտք է անենք, մենք ինչպէս պէտք է զարգանանք, հզօրանանք, որպէսզի Ղարաբաղեան բանակցութիւններում աւելի հզօր կողմ դառնանք»:

Տէր-Պետրոսեանը նշեց, որ 10 տարի իշխանութիւնները ժամանակ ունէին այդ մասին մտածելու համար եւ հանրագումարի բերելով վերջին 10 տարիները՝ ասաց. «Այս 10 տարուայ ստատուս քվոյի պահպանումը մեզ բերել է միայն ու միայն կորուստների: Եթէ ուրիշ բան չլինի, մենք կորցրել ենք մեր պետականութեան բարոյականութիւնը, պետութիւնը վերածուել է աւազակապետութեան՝ օգտագործելով, շահագործելով Ղարաբաղի հարցը՝ ՀՀ-ն կորցրել է կէս միլիոն քաղաքացի: Այս երկու մարդու պատճառով ԼՂ-ն կորցրել է 15 հազար մարդ: Բոլորին բերել, տեղաւորել են պաշտօնների, նաեւ հիմա բիզնէսի աշխարհին է կամաց-կամաց նրանց տիրապետութեան տակ յայտնւում: Այն օլիգարխները, որոնք այսօր կրծքով պաշտպանում են այս իշխանութիւններին՝ մարդ են ծեծում, նուաստակացնում:

Վաղը այդ մարդիկ, կորցնելու ենք նաեւ իրենց բիզնէսը; Եթէ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը վաղը պիտի բարգաւաճման հնարաւորութիւն տան իրենց բոլոր ազգուտակին, հովանաւորեալներին, նրանք էլ իրենց հերթին իրենց ազգուտակին, ուրիշից վերցնելու բան արդէն չկայ, պիտի վերցնեն օլիգարխներից՝ նոյն Նեմեց Ռուբոյից, նոյն Դոդի Գագոյից: Երբ ասացի այդ մարդկանց, որ Սերժ Սարգսեանը 10 տարի յետոյ բոմժ է դարձնելու, նրանցից ոմանք նեղացան: Այդ մարդիկ չհասկացան, բայց այդպէս է լինելու: Նրանք այսօր դեռ ժամանակ ունեն հասկանալու»: Տէր-Պետրոսեանն իր խօսքը աւարտեց հետեւեալ տողերով. «Ինչ ասեմ, թող իրենք իրենց խղճան: Մենք գիտենք, թէ ինչ ենք անում: Մեր ժողովուրդն արդէն չի կարող մոլորուել «առաջ Հայաստան», «յետ Հայաստան», «աջ-ձախ Հայաստան» կարգախօսերից»:

## ՑՈՅՑԵՐ ԵՒ ՕՐԱՑՈՅՑԵՐ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*Lragir.am,* 23:40

Փետրուարի 27-ի գիշերը Ազատութեան Հրապարակում կը լինի շուրջօրեայ հանրահաւաքի եօթերորդ գիշերն է, որը նոյնպէս, ինչպէս առաւօտները, համաժողովրդական բողոքի մասնակիցները դիմաւորել են Տէրունական աղօթքով: Դրանից առաջ եւ յետոյ նրանք շարունակել են երգել, ուրախանալ, պարել: Միքայէլ Հայրապետեանը դիմել է հրապարակում գիշերող անձանց, յատկապէս նրանց, ովքեր հսկում են խարոյկները, որ

եթէ մօտենան մարդիկ, որոնք կը սկսեն Հռոմի Պապից աւելի կաթոլիկ պահել իրենց, անել հակասահմանադրական քայլերի կոչեր, ապա թող այդ մարդկանց պարզապէս խորհուրդ տան գնալ այդ կոչերն անել այնտեղ, որտեղից որ նրանց ուղարկել են այդպիսի սադրիչ քայլեր իրաիրելու յանձնարարականով:

Միքայէլ Հայրապետեանը նշել է, թէ իրենց նման հակասահմանադրական քայլեր, զէնքի կոչեր, զէնքեր ու զինամթերք պէտք չեն, որովհետեւ իրենց զէնքը իրենց միտքն է, հոգին, հաւատը եւ սէրն առ Հայաստան ու իրենց ընտրեալ նախագահ: Միքայէլ Հայրապետեանը ասել է նաեւ, որ առաւօտեան ցուցարարներին կը բաժանուեն օրացոյցեր, որոնց վրայ նրանք կարող են նշել այն օրերի թիւը, որ անցկացրել են հրապարակում: Իսկ հրապարակում բացուող վրանների թիւն աւելանում է եւ այն արդէն թերեւս հասնում է հինգ տասնեակի:

## 28 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

### ՀԵՐԹԱԿԱՆ ԱՆԳԱՄ ԾԵԾԻ ԵՆ ԵՆԹԱՐԿՈՒԵԼ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐ

*A1+*, 00:23

Այսօր ժամը 22.15-ի սահմաններում Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորները ահազանգ են ստացել, որ երեք երիտասարդներ Ազատութեան Հրապարակից բռնութեամբ տեղափոխուել են ոստիկանութեան Կենտրոնի բաժին, որտեղ եւ ենթարկուել են ծեծի:

Խմբակցութեան պատգամաւորները՝ Ստեփան Սաֆարեանն ու Զարուհի Փոստանջեանը, շտապել են ոստիկանութեան բաժին, պարզելու երիտասարդներին բերման ենթարկելու հիմքերը: Սկզբում նրանց ներս են թողել, նրանք զրուցել են երիտասարդների հետ, սակայն երբ հարցրել են, թէ ինչ է պատրաստւում անել ոստիկանութիւնը, պատգամաւորներին պատասխանել են, որ «Մեհրաբեանը կը գայ՝ յետոյ կ'որոշենք»:

Կենտրոնի ոստիկանապետ Արթուր Մեհրաբեանի բաժին ժամանելուց յետոյ մօտ 20 հոգանոց խումբ՝ քաղաքացիական հագուստներով, յարձակուել են պատգամաւորների եւ հասարակական կազմակերպութիւնների ներկայացուցիչների վրայ, բռնութեամբ, ծեծի ենթարկելով նրանց վռնդել են ոստիկանութեան շէնքից:

Ըստ Ստեփան Սաֆարեանի՝ Մեհրաբեանն այդպէս էլ չի հետաքրքրուել՝ ովքեր են այդ երիտասարդները եւ ինչ գործ ունեն ոստիկանութեան շէնքում՝ ակնյայտօրէն ցոյց տալով, որ գիտի նրանց ով լինելը:

Ոստիկանութեան երկրորդ յարկից դուրս են շպրտել *Ազատութիւն* ռադիոկայանի միկրոֆոնը՝ խոչընդոտելով լրագրողի մասնագիտական գործունէութիւնը: Դէպքի վայր են հրաւիրուել Մարդու Իրաւունքների պաշտպանի գրասենեակի ներկայացուցիչներ, ԵԱՀԿ դիտորդներ:

Մարդու Իրաւունքների պաշտպանի գրասենեակի աշխատակիցների ներկայութեամբ Կենտրոնի ոստիկանութիւնը հրաժարուել է յայտարարութիւն վերցնել Ստեփան Սաֆարեանից:

Պատգամաւոր Զարուհի Փոստանջեանն *Ա1+*-ին տեղեկացրեց, որ տեղի է ունեցել

երեք յանցագործութիւն, ծեծել են երիտասարդներին եւ առեւանգել նրանց Ազատութեան Հրապարակից, տեղի է ունեցել պաշտօնական դիրքի չարաշահում եւ բռնութիւն պատգամաւորի նկատմամբ:

Յիշեցնենք, որ ընդամէնը 4 ժամ առաջ ԱԺ-ում Սերժ Սարգսեանը խորհրդարանում վստահեցնում էր, թէ տեղեակ չի պատգամաւորների նկատմամբ արդէն պարբերաբար իրականացուող բռնութիւնների մասին:

Ի դէպ, երիտասարդներին թէեւ ազատ են ազատել, բայց արձանագրութիւն են կազմել եւ վարչական տոյժի ենթարկել՝ կրկին օրէնքի խախտմամբ:

Ի դէպ, երբ պատգամաւոր Ստեփան Սաֆարեանը ոստիկանութեան բակից յայտարարութիւն էր տալիս կատարուած յանցագործութեան մասին 1-02-ին, բացուեց դուռը եւ պատգամաւորներին ծեծի ենթարկածները դուրս վազեցին եւ նստեցին մեքենաները եւ փախան: Ներկաները հասցրեցին գրանցել նրանց մեքենաների համարներից մի քանիսը, օրինակ՝ մուգ գոյնի ԲՄՌԻ մակնիշի մեքենան՝ 68LL271 համարանիշով:

## ԲՌՆԵԼ ԵՆ ՊՐՈՎՈԿԱՏՈՐՆԵՐԻ (video)

*A1+*, 00:27

Ազատութեան հանրահաւաքի անվտանգութեան ծառայութեան կողմից քիչ առաջ մօտակայ սրճարան «բերման են ենթարկուել» երեք երիտասարդներ: Նրանք, ինչպէս յայտնեց Նիկոլ Փաշինեանը, խոստովանել են, որ ԱԱԾ ղեկավար Գորիկ Յակոբեանի յանձնարարութեամբ «ներմուծուել են» ցուցարարների շարքեր՝ պրովոկացիա անելու նպատակով:

Պրովակատորները պէտք է անէին իշխանութիւնը տապալելու կոչեր՝ դրանով հիմնաւորելու համար ընդդիմութեան ակտիւիստների ձերբակալութիւնները:Երբ բացայայտուել են պրովոկատորները, ու նրանց մօտ յայտնաբերուել ու առգրաւուել են յատուկ սարքեր, նրանց բջջային հեռախօսները, նրանց յետեւից եկել են ոստիկաններն ու տարել:

Իսկ Ազատութեան Հրապարակում հանրահաւաքը շարունակւում է:

Տեսանիւթը մեզ է տրամադրել դէպքի վայրից մասնաւոր անձ:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ... ԴԵՌ ԳԻՇԵՐ ՉԷ (video)

*A1+*, 01:42

Ազատութեան Հրապարակում շարունակւում է նստացոյցը: Հաւաքուածները, նստացոյցի մասնակիցները մինչեւ կէսգիշեր պարում էին, ուրախանում: Երբ արդէն դադարել էր երաժշտութիւնը, Լեւոն Տէր-Պետրոսեանը շրջեց մարդկանց մէջ, այցելեց վրանները:

Այնուհետեւ հարթակից դիմեց ներկաներին պահպանել քաղաքացիների անդորրը, եւ խորհուրդ տուեց ուշադրութիւն չդարձնել պրովոկատորներին:

Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտնեց, որ ինքն էլ է գիշերելու վրաններից մէկում: Մարդիկ խումբ-խումբ զրուցում են, կամ քայլում հրապարակով:

## ՇԱՐՈՒՆԱԿԵԼՈՒ Է ԳՈՐԾԵԼ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԱԿՆԵՐՈՒՄ

*Lragir.am*, 09:50

Փետրուարի 27-ին ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը հանդիպել է

Հարաւային Կովկասում Եւրամիութեան յատուկ ներկայացուցիչ Պիտէր Սեմնեբիին: Հանդիպման ընթացքում Լեւոն Տէր-Պետրոսեանը ներկայացրել է յետընտրական զարգացումների իր գնահատականը, եւս մէկ անգամ շեշտել, որ իր ղեկավարած շարժումը յետայսու եւս գործելու է Սահմանադրութեան եւ օրէնքների շրջանակներում, ինչպէս նաեւ ընդգծել է իր հաստատակամութիւնը՝ մինչեւ վերջ պայքարել գործող աւազակապետական համակարգի դէմ: Այս մասին տեղեկացնում է Տէր-Պետրոսեանի գրասենեակը:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԻՐԱՒԱԲԱՆՆԵՐԻ ԿՈՉԸ

*Lragir.am*, 10:09

Փետրուարի 19-ին Հայաստանի Հանրապետութիւնում տեղի ունեցան նախագահի հերթական ընտրութիւններ: Ընտրութիւնների կազմակերպման ու անցկացման ողջ գործընթացի՝ ՀՀ Սահմանադրութեանը եւ օրէնքներին չհամապատասխանելու եւ հրապարակուած արդիւնքների համոզիչ չլինելու վերաբերեալ հասարակութեան զգալի մասի մօտ ձեւաւորուած կարծիքը, ինչպէս նաեւ յետընտրական զարգացումները երկրում առաջացրել են ծայրայեղ լարուած քաղաքական մթնոլորտ, ինչը կարող է վտանգել Հայաստանի՝ որպէս իրաւական եւ ժողովրդավարական պետութեան ապագան:

Հայաստանի երիտասարդ իրաւաբանների ասոցիացիան, համոզուած լինելով, որ Հայաստանի ապագան պետութիւնների Եւրոպական ընտանիքին լիարժէք ինտեգրումն է, նպատակ ունենալով համակողմանիօրէն եւ անվերապահօրէն նպաստել Հայաստանի՝ որպէս իրաւունքի գերակայութեան վրայ հիմնուած, ժամանակակից ժողովրդավարական պետութեան կայացմանը, իր անդամների եւ մեր երկրի անկախացումից յետոյ ձեւաւորուած իրաւաբանների նոր սերնդի անունից ԿՈՉ Է ԱՆՈՒՄ Հայաստանի Հանրապետութեան իշխանութիւններին. ա) հաւատարիմ մնալ Հայաստանի Հանրապետութեան Սահմանադրութեամբ եւ միջազգային իրաւական փաստաթղթերով ամրագրուած մարդու եւ քաղաքացու իրաւունքների եւ ազատութիւնների ապահովման իրենց պարտականութիւնների կատարմանը. բ) ապահովել խօսքի ու տեղեկատուութեան ազատութեան իրաւունքի իրացումը. գ) անյապաղ ազատ արձակել քաղաքական ակտիւութեան ցուցաբերման, ընդդիմութեան յետընտրական հանրահաւաքներին աջակցելու կամ դրանց մասնակցելու, իրենց կարծիքի ազատ արտայայտման պատճառով ձերբակալուած բոլոր անձանց. դ) բացառել բռնի ուժի կիրառումը:

Հայաստանի Հանրապետութեան քաղաքական ընդդիմութեանը. ա) առկայ վէճերը լուծել իրաւունքի հիման վրայ եւ միայն իրաւական մեխանիզմներով. բ) ձեռնպահ մնալ ցանկացած գործողութիւնից, որը կարող է դուրս գալ օրինականութեան շրջանակներից եւ առաջացնել անբարենպաստ իրաւական հետեւանքներ: Հայաստանի Հանրապետութեան Սահմանադրական Դատարանին. ա) հնարաւորինս սեղմ ժամկէտներում քննութեան առնել նախագահի թեկնածու(ների) ընտրութիւնների արդիւնքների վիճարկման վերաբերեալ դիմումը(ները), բ) անկողմնակալ եւ անաչառ վերլուծելով ընտրական ամբողջ գործընթացը՝ կայացնել օբիեկտիւ եւ արդար որոշում:

Հայաստանի Երիտասարդ Իրաւաբանների Ասոցիացիա

## ԱՆՎԵՐԱՀՍԿԵԼԻ ՔԱՐՈԶՉՈՒԹԵԱՆ ԿԱՆԽԱՏԵՍԵԼԻ ԱՐԴԻՒՆՔԸ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

*Lragir.am*, 10:19

Երբ հետեւում ես իշխանութեան գործողութիւններին, տպաւորութիւնն այնպիսին է, որ ֆինանսական ամբողջ ռեսուրսը տրամադրուել է ընտրակաշառքին, ու քաղտեխնոլոգների վարձատրութեան համար ոչ մի կոպէկ չի մնացել: Յամենայն դէպս, իշխանութիւնն այժմ, ի պատասխան Լեւոն Տէր-Պետրոսեանի ծաւալած քաղաքականութեան, կատարում է այնպիսի քայլեր, որոնք կ'անցնէին բացառապէս փող չստացող քաղտեխնոլոգի մտքով, որպէսզի դրանով նրա վրէժ լուծէր իր աշխատավարձը չտուողներից: Եւ այդ իրողութիւնն ընդհանրապէս նոր չէ, որ առկայ է: Այն տեղի է ունենում խորհրդարանի ընտրութիւնից յետոյ, եւ նայելով Սերժ Սարգսեանի PR ամբողջ գործընթացին, յանգում ես եզրակացութեան, որ այն կառուցուել է՝ բացարձակապէս հաշուի չառնելով Հայաստանի իրականութիւնը, հասարակական տրամադրութիւնները, ընկալումները, երկրի տարածքը: Դա կարող է տեղի ունեցած լինել կամ մասնագիտական անբաւարար որակների պատճառով, կամ դիտաւորութեան:

Սերժ Սարգսեանի քարոզչութիւնը կառուցուել էր այնպէս, կարծես թէ այն վերաբերում էր մինչեւ այդ բացարձակապէս ոչ մի քաղաքական գործընթացի չառնչուած, իշխանութեան մէջ ոչ մի տարի չաշխատած, ամբողջ կեանքը իշխանական համակարգին ընդդիմադիր եղած մի գործչի: Երբ օրինակ Սերժ Սարգսեանը խօսում էր, եւ մինչեւ հիմա էլ խօսում է, որ Հայաստանում չպէտք է տեղ ունենայ հովանաւորչութիւնը, չպէտք է լինեն արտօնեալ խաւեր, արտօնեալ անձինք, մենաշնորհներ, որ տնտեսական աճը պէտք է բաշխուի արդարացի, հանրութիւնը դրան կարող էր համարժէք արձագանքել՝ չիմանալով, որ Սարգսեանը եղել է հէնց այդ իրողութիւնները մեր երկրում արմատաւորած համակարգի կարեւորագոյն գործիչներից մէկը:

Նրա քարոզիչները կարող են իհարկէ ներկայացնել, որ նա եղել է ընդամէնը պաշտպանութեան նախարար եւ նրա գործը բոլորովին այլ էր, ու նա չէր կարող ունենալ հովանաւորչութեան, կամ արտօնեալութեան դէմ որեւէ լծակ: Նախ, դա հէնց վկայում է այն մասին, որ նրա քարոզչութեան կազմակերպիչները բացարձակապէս հաշուի չեն առել Հայաստանի իրողութիւնը, Հայաստանի փոքր չափերը եւ այդ փոքր չափերի մէջ տեղեկատուութեան արագ շրջանառութեան հանգամանքը: Ինչքան էլ որ հանրութեանը փորձես ներկայացնել դէ իւրէ մի իրականութիւն, միեւնոյն է, անհնար է կոծկել դէ ֆակտօ իրականութիւնը: Հանրութիւնը գիտէ, թէ լինելով պաշտպանութեան նախարար, այդուամենայնիւ ինչ մեծ ազդեցութիւն է ունեցել Սերժ Սարգսեանն այդ երեւոյթների վրայ: Ու բացի այդ, նա ոչ միայն պաշտպանութեան նախարար էր, այլ Անվտանգութեան Խորհրդի քարտուղար, իսկ երկրում հովանաւորչութիւնը, անօրինականութիւնները, արտօնեալների օրէնքից վեր խաւի ձեւաւորումն ուղղակի ազգային անվտանգութեան հարց են, քանի որ դրանք բարոյալքում ու յուսալքում են հասարակութեանը:

Հետեւաբար, Սերժ Սարգսեանն, ի տարբերութիւն սկսնակ գործիչների, պէտք է ոչ միայն ապաւիներ խօսքին, այլ նաեւ գործեր, ձեռնամուխ լինէր քաղաքական համակարգի արդիականացման գործընթացին, տնտեսութեան իրական ազատականացմանը, հասարակական յարաբերութիւնների նոր մեխանիզմների ներդրմանը: Դրա համար նա ունէր

թէ ժամանակ, թէ իշխանութիւն, որ տրուած էր նոր Սահմանադրութեամբ:

Սերժ Սարգսեանը պէտք է գործով ցոյց տար, որ իրապէս ունի պետական համակարգի որակը փոխելու ցանկութիւն: Մինչդեռ ինչ գործ էր յաջորդում նրա խօսքերին: Նա յայտարարում էր ստուերի դէմ պայքարելու մասին, օլիգարխներին հարկային դաշտ բերելու մասին, բայց հարկային ծառայութիւնը սովորականի նման շրջանցելով խոշոր գործարարներին, գրոհում էր փոքր ու միջին բիզնէսը, նրանից քամելով վերջին լումաները, որպէսզի ապահովէն նախընտրական 2,5 միլիարդանոց բիւջէի կատարումը:

Սերժ Սարգսեանը խօսում էր աշխատավարձի ու թոշակների բարձրացման մասին, իսկ նրա կառավարութիւնը ոչինչ չէր անում Հայաստանում գների թռիչքաձեւ աճը կանխելու համար:

Սերժ Սարգսեանը խօսում էր, թէ իբր օրէնքի երկիր է ուզում կառուցել, մինչդեռ մարդկանց անօրինական ձեւով հետապնդում էին նրա քաղաքական մրցակիցների հանրահաւաքներին մասնակցելու համար, եւ նաեւ պարտադրում էին ներկայ լինել Սերժ Սարգսեանի հանրահաւաքներին, սպառնալով հակառակ դէպքում ազատել աշխատանքից:

Եւ Սերժ Սարգսեանի նկարներն էլ փակցրել էին քաղաքի ամէն մի անկիւնում, ամէն մի հրապարակում, ամէն մի բարձր կէտում, թերեւս նրա համար, որ մարդիկ երբեք չմոռանան, թէ ով է խօսքի ու գործի այդ հակասութեան պատասխանատուն:

Եւ այդ ամէնից յետոյ էլ կատարւում են նոյն քայլերը յետընտրական շրջանում, հրաւիրւում են նոյն պարտադրուած հանրահաւաքները, որոնց մասնակիցները յետոյ շարքերով գնում եւ միանում են Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքին: Ձերբակալւում են Տէր-Պետրոսեանի կողմնակիցները, ուղղակի ծիծաղելի մեղադրանքներով, պետական քարոզչամեքենայով ցուցադրւում են Տէր-Պետրոսեանի գործողութիւնների աղաւաղուած պատկեր մատուցող ռեպորտաժներ:

Ցանկացած քարոզչութիւն պէտք է երեւի թէ իր մէջ յարգանք պարունակի դէպի հասարակութիւնը: Սերժ Սարգսեանի նախընտրական ու յետընտրական քարոզչութիւնը, եթէ չի պարունակում հանրութեան հանդէպ անյարգալից վերաբերմունք, ապա առնուազն չի էլ փորձում նկատել այդ հանրութեանը: Իսկ Սերժ Սարգսեանն էլ, կարծես թէ, չի փորձում նկատել իր քարոզչութեան կազմակերպման այդ անբաւարար մակարդակը, որը ոչ միայն չի աւելացնում նրա վարկանիշը, այլ աստիճանաբար մաշում է եղածը՝ սկսած խորհրդարանի ընտրութիւնից: Պէտք չէ իհարկէ բացառել նաեւ, որ Սերժ Սարգսեանը պարզապէս չի տիրապետում իրավիճակին եւ նրա քարոզչութիւնը, այսպէս ասենք՝ «դուրս է եկել վերահսկողութիւնից»:

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՆ Է

*A1+*, 11:15

Թէեւ Հանրային եւ մասնաւոր հեռուստաընկերութիւնները գրեթէ չեն լուսաբանում, թէ ինչ է տեղի ունենում Ազատութեան Հրապարակում, այնուամենայնիւ արդէն մէկ շաբաթ շարունակուող նստացոյցը մշտապէս հանրութեան ուշադրութեան կենտրոնում է: Նստացոյցի մասնակիցներից շատերը գրեթէ 10 րոպէն մէկ զանգեր են ստանում արտասահմանում եւ մարզերում ապրող իրենց հարազատներից, որոնք հետաքրքրւում են, թէ ինչ է կատարւում Ազատութեան Հրապարակում:

Այս օրերին նստացոյցը քննարկման առարկայ է դարձել ամէնուր. տանը, աշխատավայրում, ուսումնական հաստատութիւններում, հանրային տրանսպորտում: *Ա1+*-ը փորձեց պարզել մարդկանց կարծիքները մետրոպոլիտէնի տարբեր կայարաններում: «Էս բոլոր պրոցէսների մէջ մի դրական բան ակնյայտ է. մարդիկ վերջապէս ազատ արտայայտում են իրենց կարծիքը եւ պատրաստ են պայքարել իրենց կարծիքի համար», - ասում է 21-ամեայ ուսանողուհի Տաթեւը:

Իսկ 42-ամեայ Յարութիւնը նշում է, որ թէեւ ինքը քաղաքականութիւնից հեռու է, սակայն չի կարող նստացոյցով չհետաքրքրուել. «Դէ լաւ է, որ հայ ժողովուրդը համախմբուած է, ես անձամբ նստացոյցերին չեմ մասնակցում, բայց մէկ-մէկ գնում նայում եմ, թէ ինչ է կատարւում հրապարակում»: Իսկ տիկին Ջեմմայի գնահատմամբ՝ նման իրադարձութիւններ Հայաստանում 90-ականների սկզբից չեն եղել. «Իրօք աննախադէպ իրադարձութիւններ են եւ ինձ համար ոչ թէ կարեւորն այն է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը նախագահ դառնայ, այլ այն, որ վերջապէս գոնէ մէկ անգամ մարդկանց ուզածով կը լինի էս երկիրը»:

Տիկին Ջեմմայի հետ չի համաձայնում քաղաքացիներից մէկը. «Շատ յաճախ ժողովուրդը սխալւում է, պէտք է նրան ճիշտ ուղղորդեն, իսկ հիմա խեղճ մարդկանց ամէն մէկը մի բան է ասում, մարդիկ չեն կարող մի քանի կէս լինել», - ասում է 26-ամեայ Արթուրը: Տիկին Դոնարան էլ *Ա1+*-ին պատմեց, որ ամէն օր որդիների հետ վիճում է նախագահի թեկնածուների պատճառով. «Երեխեքիս հետ վիճում ենք, թէ ով է լաւը ու չենք կարողանում մի յայտարարի գալ, մեծ տղես Սերժին է հաւանում, ես ու փոքր տղես Լեւոնին, մարդս էլ՝ Վազգէն Մանուկեանին, բայց ոնց որ տեսնում էք, իմ ընտրածն է յաղթում»:

20-ամեայ ուսանող Արամն էլ վատատեսօրէն է տրամադրուած քաղաքական իրադարձութիւնների նկատմամբ. «Վախենում եմ, որ ինչպէս միշտ ժողովուրդը կը տուժի կամ կը հիասթափուի, ես չեմ կարող լիովին վստահել Լեւոն Տէր-Պետրոսեանին: Իսկ եթէ նա մարդկանց երազանքների նախագահը չլինի, այդ դէպքում ի՞նչ պէտք է անենք»:

Այս հարցին պատասխանում է մէկ այլ քաղաքացի. «Կարեւոր չի Լեւոնն է, Վազգէնն է, թէ Արթուրը, կարեւոր է, որ ժողովուրդն իմանայ, որ իր ընտրած թեկնածուն պէտք է դառնայ նախագահ, զգայ, որ իր ուզածով է երկիրը կառավարւում: Եթէ այսօր ժողովուրդը յաղթի Սերժ Սարգսեանին, վաղը եթէ Լեւոն Տէր-Պետրոսեանի սխալներ անի, նրա դէմ էլ դուրս կը գայ ու կը յաղթի», - ասում է ուսանողուհի Անուշիկը:

## ՇՆՈՐՀԱՒՈՐՈՒՄ ԵՆ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

*Lragir.am,* 11:22

Հայաստանի կառավարութեան մամուլի ծառայութիւնը տեղեկացնում է, որ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձներ են յղել յղել Ղազախստանի Հանրապետութեան նախագահ Նուրսուլթան Նազարբաեւը, Թուրքմենստանի նախագահ Գուրբանգուլի Բերդիմուհամեդովը, Վլադիմիր եւ Սաթի Սպիվակովները, Համաշխարհային Բանկի Եւրոպայի եւ Կենտրոնական Ասիայի տարածաշրջանային փոխնախագահ Շիգեօ Կացուն:

## ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ ՄԻԱՒՈՐՄԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 11:48

ՀՀ նախագահի 2008 թ. ընտրութիւնների արդիւնքում առաջացած հակասութիւնը մտել է դիմակայութեան փուլ: Ցաւօք, ներկայ ընդդիմութիւնը, ցուցաբերելով քաղաքական անհեռատեսութիւն, ընդունելով իշխանութիւնների խաղի կանոնները եւ մասնակցելով խորհրդարանի ու նախագահի վերջին ընտրութիւններին, ակամայ մասնակից դարձաւ իշխանութիւնների վերարտադրութեանը: Միաժամանակ, ընտրութիւնների արդիւնքներն անընդունելի են հասարակութեան բացարձակ մեծամասնութեան համար, ինչն առաջ է բերել նրա ցասումն ու համախմբումը Լեւոն Տէր-Պետրոսեանի շուրջ:

Զանգուածային ցոյցերը ցնցում են իրեն իշխանութիւն հռչակած կլանի հիմքերը: Ներկայ իշխանութիւնները, յենուելով հայ հասարակութեան յետադիմական խաւերի՝ ձեռնասուն մտաւորականութեան, կղերական վերնախաւի, ընչաքաղց թշուառների, յանցագործ աշխարհի եւ դաւաճան տականքի վրայ, դիմել են կործանուող ռեժիմին բնորոշ յուսահատ քայլերի՝ հրապարակելով ընտրութիւնների ոչ մի կերպ չհիմնաւորուած արդիւնքներ, իրականացնելով առաջատար գործիչների ձերբակալութիւններ, հրահրելով չարտօնուած եւ սադրիչ հանրահաւաքներ ու երթեր, կոծկելով իրականութիւնը՝ տարածում են ստայօդ լուրեր: Կլանի նման պահուածքը յղի է աղէտալի հետեւանքներով: Դրանք են՝

- հասարակութեան պառակտում,
- բախումներ ճամբարների միջեւ,
- կարող ուժերի զանգուածային արտագաղթ,
- Հայաստանի Հանրապետութեան եւ հայ ժողովրդի միջազգային վարկի անկում,
- տնտեսական յետընթաց,
- Ղարաբաղի կորուստ,
- Հայաստանի ինքնիշխանութեան կորուստ:

Ժողովրդավարական Հայաստան միաւորումն իր պարտքն է համարում ի լուր հայ ժողովրդի եւ գալիք սերունդների յայտարարել, որ դիմակայութեան յետագայ խորացման, դէպքերի անցանկալի ընթացքի եւ դրա արդիւնքում սպասուելիք աղէտի ողջ պատասխանատուութիւնն ընկնում է ներկայ իշխանութիւնների վրայ՝ ի դէմս Ռ. Քոչարեանի եւ Ս. Սարգսեանի:

28.02.2008 թ.

## ՄԵՔԵՆԱՆԵՐԸ ՏԱՆՈՒՄ ԵՆ ՏՈՒԳԱՆԱՅԻՆ ՀՐԱՊԱՐԱԿ

*A1+*, 12:03

Ոստիկանները հանրահաւաքի մասնակիցների եւ մեքենաների թիւը կրճատելու նոր մեթոդ են գտել: Նրանք Օպերայի Հրապարակից դուրս եկող մեքենաներին կանգնեցնում են իբրեւ ստուգման համար, բայց տանում են տուգանային հրապարակ:

«Պատճառաբանութիւնը այն է, թէ տանում են ստուգման, բայց որեւէ հրաման ցոյց չեն տալիս, բացատրութիւն չեն տալիս, թէ ինչի են տանում հրապարակ եւ անժամկէտ թողնում են այնտեղ», - ասաց Այլընտրանք քաղաքական նախաձեռնութեան անդամ Արամազդ Մանուկեանը:

Ըստ նրա՝ առաւօտեան ժամը 8-ից արդէն 10 մեքենայ են տարել տուգանային հրապարակ:

Նրա խօսքերով՝ եթէ իրենք սխալ տեղ են կայանել, թող իրենց տուգանեն, այլ ոչ թէ մեքենաները տանեն տուգանային հրապարակ:

«Իսկ նրանք ասում են գնացէք ձեր ընկերներին համոզէք, որ բոլոր մեքենաները դուրս գան Օպերայի Հրապապարակից, այդ դէպքում մենք ձեր մեքենան բաց կը թողնենք: Այսինքն՝ իրենց նպատակն օրինապահութիւնը չի, տուեալ դէպքում մեքենան տուգանելը չի: Նրանց նպատակն է՝ մեքենաները հրապարակից հանել, քանի որ կոնկրէտ ֆունկցիա են կատարում», - եզրափակեց նա:

## ԽԱՉԱՏՈՒՐ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ ԹԻԿՆԱՊԱՀՆԵՐԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ ԵՆ

*Lragir.am*, 12:31

Մի քանի օր առաջ տեղեկացրել էինք, որ անյայտ է Խաչատուր Սուքիասեանի թիկնապահների գտնուելու վայրը: Այսօր ՀՀ Ոստիկանութիւնը տեղեկացրել է, թէ «ԱԺ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանի այսպէս կոչուած թիկնազօրից երկուսը՝ Արսէն Ասատրեանը եւ Մարատ Բաղդասարեանը, որոնք փետրուարի 24-ին Երեւանի Ա. Մանուկեան եւ Վարդանանց փողոցների խաչմերուկից բերման էին ենթարկուել ոստիկանութիւն, ձերբակալուած են»:

## ՇՆՈՐՀԱՒՈՐԱՆՔ

*A1+,* 13:03

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Արժոյթի Միջազգային Հիմնադրամի գործադիր տնօրէն Դոմինիկ Ստրաուս-Քանը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Յարգելի Պարոն Սարգսեան,

Խնդրում եմ ընդունէք իմ ջերմ շնորհաւորանքները Հայաստանի Հանրապետութեան նախագահ ընտրուելու կապակցութեամբ:

Տասնհինգ տարուց աւելի է, ինչ Արժոյթի Միջազգային Հիմնադրամը յաջող համագործակցում է Հայաստանի իշխանութիւնների հետ՝ տնտեսութեան արագ աճի խթան հանդիսանալով եւ նպաստելով աղքատութեան նուազեցմանը: Արժոյթի Միջազգային Հիմնադրամի կողմից հովանաւորուած ծրագրերի եւ տրամադրուած տեխնիկական օգնութեան միջոցով Հայաստանում իրականացուեցին հեռանկարային կառուցուածքային բարեփոխումներ, որոնք նկատելի տնտեսական աճի արդիւնք հանդիսացան:

Հիմք ընդունելով անցեալ տարի հոկտեմբերին Վաշինգտոնում կայացած մեր զրոյցը, ես համոզուած եմ, որ լաւ յարաբերութիւնները կը շարունակուեն նաեւ Ձեր պաշտօնավարման ժամանակ: Մեր կողմից, ես կը ցանկանայի հաստատել, որ մենք պատրաստ ենք շարունակելու Ձեր կառավարութեան հետ սերտ համագործակցութիւնը՝ տնտեսական աճի բարձրացման ուղղութեամբ:

Թոյլ տուէք ցանկանալ նորանոր յաջողութիւններ՝ Ձեր ստանձնած նոր պաշտօնում»:

ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹԵԱՆ ՀԵՏ ԿԱՊԵՐԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
DEPARTMENT OF INFORMATION AND PUBLIC RELATION
ՄԱՄԼՈՅ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
PRESS RELEASE

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Ղազախստանի Հանրապետութեան նախագահ Նուրսուլթան Նազարբաեւը: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Յարգելի Սերժ Ազատի,

Ընդունէք իմ անկեղծ շնորհաւորանքները Հայաստանի նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ:

Վստահ եմ, որ մեր երկրներն ու ժողովուրդները այսուհետ եւս կը շարունակեն ամրապնդել բարեկամութեան, գործընկերութեան կապերն ու ընդլայնել փոխշահաւէտ համագործակցութիւնը:

Թոյլ տուէք, յարգելի Սերժ Ազատի, ցանկանալ Ձեզ առողջութիւն եւ յաջողութիւններ պատասխանատու պետական պաշտօնում՝ ի բարօրութիւն Հայաստանի ժողովրդի»:

* * *

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է Թուրքմենստանի նախագահ Գուրբանգուլի Բերդիմուհամեդովը: Ուղերձում ասուած է.

«Յարգելի Սերժ Ազատի,

Ընդունէք իմ շնորհաւորանքները Հայաստանի Հանրապետութեան նախագահի ընտրութիւններում Ձեր յաղթանակի կապակցութեամբ:

Ամբողջ հոգով ցանկանում եմ Ձեզ քաջառողջութիւն եւ յաջողութիւններ պետական այդ բարձր պաշտօնում՝ յանուն բարեկամ Հայաստանի զարգացման ու բարգաւաճման»:

* * *

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորական նամակ են յղել Վլադիմիր եւ Սաթի Սպիվակովները: Նամակում, մասնաւորապէս, ասուած է.

«Ձեր յաղթանակը իրապէս կարեւոր, պատմական նշանակութիւն ունի Հայաստանի, եւ ոչ միայն նրա համար: Այն ոգեւորում է ամբողջ աշխարհի հայութեանը, Հայաստանի բոլոր բարեկամներին, հաստատում Հայաստանի հաւատարմութիւնը ժողովրդավարական արժէքներին, նուիրուածութիւնը համամարդկային իդէալներին եւ չափանիշներին:

Մենք համոզուած ենք, որ Ձեր ղեկավարութեամբ հայ ժողովուրդը կը տօնի նոր յաղթանակներ, կը հասնի իր առջեւ ծառացած բոլոր խնդիրների վերջնական լուծմանը, որոնք արդէն վաղուց եւ յաջողութեամբ իրենց լուծումն են ստանում Ձեր անմիջական ղեկավարութեամբ»:

Շնորհաւորական նամակում Վլադիմիր եւ Սաթի Սպիվակովները քաջառողջութիւն, երջանկութիւն եւ յաջողութիւններ են մաղթել Սերժ Սարգսեանին, ցանկանալով նրան՝ «նոր նուաճումներ՝ Հայաստանը բարգաւաճման, պետականութեան ամրապնդման եւ հզօրացման, մշակոյթի զարգացման ուղիով առաջնորդող պետական գործչի նուաճումներ»:

* * *

Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է Համաշխարհային Բանկի Եւրոպայի եւ Կենտրոնական Ասիայի տարածաշրջանային փոխնախագահ Շիգէօ Կացուն: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Թոյլ տուէք շնորհաւորել Ձեզ Հայաստանի Հանրապետութեան նախագահ ընտրուելու կապակցութեամբ:

Վստահ եմ, որ Ձեր ղեկավարութեամբ Հայաստանը կը շարունակի եւ կը խորացնի զարգացմանն ուղղուած իր ջանքերը: Հայաստանում աշխատող մեր աշխատակազմը՝ ի դէմս տարածաշրջանի տնօրէն տկն. Դոնա Դաուէթ-Կոիրոլոյի եւ Հայաստանի գրասենեակի տնօրէն պրն. Արիստոմենէ Վարուդակիսի, պատրաստ է աջակցել Ձեզ այդ նախաձեռնութիւնում: Անհամբեր սպասում ենք Ձեր կառավարութեան հետ այդ հարցերը, ինչպէս նաեւ առաջիկայ տարիներին Համաշխարհային Բանկի կողմից բարեփոխումների աջակցութեան ծրագրի նախագծման մոդէլներին առնչուող հարցերը քննարկելու հնարաւորութեանը»:

* * *

Հայաստանի Հանրապետութեան նախագահ ընտրուելու առիթով, ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանին շնորհաւորել է Ուկրաինայի նախագահ Վիկտոր Եուշչենկոն: Ուղերձում, մասնաւորապէս, ասուած է.

«Ուկրաինայի ժողովրդի եւ անձամբ իմ անունից անկեղծօրէն շնորհաւորում եմ Ձեզ՝ Հայաստանի Հանրապետութեան նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ:

Բարձր գնահատելով Ձեր անձնական ներդրումը մեր երկրների բարեկամութեան ու համագործակցութեան զարգացման գործում, վստահութիւն եմ յայտնում, որ Ուկրաինայի եւ Հայաստանի միջեւ յարաբերութիւններն այսուհետ եւս կը զարգանան փոխադարձ վստահութեան եւ աջակցութեան ոգով:

Օգտուելով առիթից, ցանկանում եմ Ձեզ՝ մեծարգոյ Սերժ Ազատի, քաջառողջութիւն եւ ծանրակշիռ յաջողութիւններ Ձեր պետական գործունէութեան մէջ, իսկ բարեկամ հայ ժողովրդին՝ խաղաղութիւն, բարօրութիւն եւ բարգաւաճում»:

## ՅԱՂԹԵԼ ԵՆՔ, ԻՍԿ ՄՆԱՑԱԾ ՀԱՐՑԵՐԸ ԴԱՏԱՐԱՆՈՒՄ

*Lragir.am*, 13:22

ՀՀԿ մամուլի քարտուղար Էդուարդ Շարմազանովը փետրուարի 28-ին Ուրբաթ ակումբում յայտարարել է, թէ Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած ընդդիմութիւնն այլ ելք չունի, քան ճանաչել նախագահի ընտրութեան արդիւնքը: Էդուարդ Շարմազանովի կարծիքով, Հայաստանի նախագահի ընտրութիւնը եղել է ժողովրդավարական, յաղթել է Սերժ Սարգսեանը, իսկ այն խախտումները, որ ինչ խօսք եղել եւ չէին կարող չլինել, կարող են իրենց արձագանքը գտնել միայն դատարանում: Շարմազանովը նաեւ յայտարարել է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը հանրութեանը բաժանելով իւրայինների ու օտարների, փաստացի վարում է ֆաշիստական գործելաոճին համահունչ:

## ԴՀՈԼԸ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՈՒՄ

*Lragir.am*, 13:24

Փետրուարի 28-ին Ուրբաթ ակումբում տեղի ունեցած մամուլի ասուլիսի ընթացքում

լրագրողները ՀՀԿ մամուլի քարտուղար Էդուարդ Շարմազանովին հարցրել են, թէ Սերժ Սարգսեանն Արտաշէս Գեղամեանին համեմատում էր դատարկ դիոլի հետ, իսկ այժմ գործակցութեան առաջարկ է արել, որ Գեղամեանն ընդունել է, արդեօք դա է հիմքը այն խօսակցութիւնների, որ Արտաշէս Գեղամեանին հաւանաբար կը վստահուի մշակոյթի նախարարի պաշտօնը: Էդուարդ Շարմազանովն ասել է, թէ պէտք չէ ասուլիսը վերածել կատակի:

## ՈՎ ՍՏԱՆՁՆԻ, ՈՒՐԵՄՆ ԴԱՒԱՃԱՆ Է

*Lragir.am*, 13:32

Կօալիցիոն կառավարութիւն կազմելու առաջարկը, որ հնչեցրել է Սերժ Սարգսեանը, Ժողովրդական կուսակցութեան առաջնորդ Տիգրան Կարապետեանին յիշեցնում է յետընտրական ընտրակաշառք: Այդ մասին նա խօսել է փետրուարի 28-ին, Հայելի ակումբում: Ըստ Տիգրան Կարապետեանի, եթէ այդ պատրաստակամութիւնը լուրջ է, ապա իշխանութիւնը այդպիսի գործակցութեան կոչ կ'անէր ոչ միայն այդօրինակ լարուած շրջանում, այլ միշտ:

Տիգրան Կարապետեանն ասել է, թէ ինքն արդէն չորս տարի յայտարարում է, որ երկրում պէտք է ընդդիմութիւնն ունենայ իր ներուժն իրացնելու հնարաւորութիւն: Ես ուրախ եմ, եթէ իշխանութեան այդ առաջարկը լուրջ է, ոչ թէ ձեւական, ասում է Տիգրան Կարապետեանը: Սակայն կոնկրէտ իր համար նշում է, որ ինքն առաջարկ չի ստացել գործակցելու մասին, եւ չի էլ ուզում ստանալ, քանի որ պաշտօն կ'ակնկալի միայն այն դէպքում, երբ դա լինի ժողովրդի ընտրութեան արդիւնքը: Իսկ այն գործիչներին, որոնք ստացել են իշխանութեան հետ գործակցելու առաջարկ ու կ'ընդունեն այն, Տիգրան Կարապետեանը մէկ ցանկանում է անուանել դաւաճան, բայց մէկ էլ ասում, թէ հանրութիւնը թող որոշի, ինչ ասել նրանց:

Այդ կապակցութեամբ Տիգրան Կարապետեանը նշում է, որ թեկնածուներից մէկն օրինակ երբ հարցնում են դիրքորոշման մասին, անընդհատ ասում է երկու օրից: «Տասը օր ա ասում է երկու օրից կ'ասեմ: Էդ երկու օրը չպրծաւ հլը: Երեւի սպասում ա, մինչեւ փողը նստի հաշուի վրայ», ասում է Տիգրան Կարապետեանը, ի պատասխան լրագրողի՝ «ինչքան փող» հարցին, նշելով. «դէ երեւի մի քսան միլիոն կը լինի, էլի»: Միւսներն էլ, ըստ Կարապետեանի, ձայն չեն հանում դեռ, որովհետեւ երեւի պաշտօն են սպասում, քանի որ եթէ այդ մասին պայմանաւորուած չլինէին, չէին սպասի:

## ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆՆ ԱՅՍՕՐ ԿԸ ՀՆՉԻ Ի ՊԱՏԻՒ ԱՅԴ ՕՐԵՐԻ

*A1+,* 13:32

Ազատութեան Հրապարակում այսօր մարդկանց տրամադրութիւնն արեւոտ եղանակին համահունչ շատ բարձր էր: Մարդիկ խմբեր կազմած զրուցում էին կամ հաւաքում, մաքրում իրենց վրանների շրջակայքը: ՀՀՇ վարչութեան անդամ Արամ Մանուկեանը հաւաքուածներին խնդրեց յարգանքով պահել-պահպանել Ազատութեան Հրապարակը, չաղտոտել այն աեւածաղկի սերմեր ուտելով, քանի որ դա այլ կերպ է դիտւում կողքից: Հաւաքուածները մի մարդու պէս դադարեցրին արեւածաղիկ ուտելը եւ հանգիստ սկսեցին կամ ուղղակի շրջել հրապարակով, կամ քննարկել վերջին իրադարձութիւնները:

Ի դէպ, մօտակայ դեռեւս չգործող սրճարաններից մէկի մետաղեայ ձողերին

փակցուած էին *Ազատութիւն* ռադիոկայանի եւ *A1plus.am*ի ինտերնէտային կայքերի տպագիր վերջին թարմ նորութիւնները: Մարդիկ, իրար հերթ չտալով, մօտենում, կլանուած կարդում էին դրանք, իսկ յետոյ միմեանց հետ քննարկում:

Քիչ հեռուում նկատեցինք Շտապօգնութեան մեքենան, որն այսօր առաւօտեան էր եկել հրապարակ: Ինչպէս *Ա1+*-ին ասաց ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանը՝ բժիշկներին իրենք են կանչել, քանի որ մի կնոջ ճնշումը բարձացել էր ու իրեն վատ էր զգացել: Բացի այդ՝ Յարութիւնեանի վստահեցմամբ՝ բժիշկները զննել են նաեւ գիշերը հրապարակում մնացած միւս մարդկանց՝ հաւաստիանալու համար նրանց առողջական վիճակի մասին:

Քանի որ այսօր Սումգայիթի զոհերի յիշատակի օրն էր, Արամ Մանուկեանը հարթակից յայտարարեց, որ իրենք յիշում եւ յարգում են անմեղ զոհերի յիշատակը եւ այսօրուայ ընթացքում այդ մասին ոչ միայն բազմիս կ'ասուի, այլեւ մէկ րոպէ լռութեամբ կը յիշուի: Նա նաեւ ասաց, որ սկզբում որոշել էին՝ այսօր ընդհանրապէս երգ-երաժշտութիւն չդնել, սակայն յետոյ հասկացել են, որ միայն դրանով չէ, որ պէտք է յարգել նրանց յիշատակը:

Մանուկեանը նաեւ նշեց, որ Սումգայիթի դէպքերին յաջորդեց նաեւ 1988թ. յաղթական օրերը հէնց այս հրապարակում: Այդ իսկ պատճառով երաժշտութիւնը կը հնչի ի պատիւ այդ օրերի:

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ Է ԵՒՐԱՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ

*A1+*, 13:35

Ռոբերտ Քոչարեանին այսօր իր հաւատարմագրերն է յանձնել Հայաստանում Եւրոպական Յանձնաժողովի պատուիրակութեան ղեկավար, դեսպան Ռաուլ դէ Լուցենբերգէրը:

Կարեւորելով Հայաստանում Եւրայանձնաժողովի մշտական առաքելութեան հիմնումը, Հանրապետութեան նախագահը ողջունել եւ յաջողութիւն է մաղթել նորանշանակ ղեկավարին:

Եւրամիութեան հետ յարաբերութիւնները գնահատելով արդիւնաւէտ, Ռոբերտ Քոչարեանը միաժամանակ նշել է, որ տեսանելի են դրանք ընդլայնելու հնարաւորութիւնները:

Դեսպան դէ Լուցենբերգէրի խօսքով, Եւրամիութիւնը հետաքրքրուած է Հայաստանի հետ կայուն գործակցութեան շարունակմամբ: Այդ առումով նա առանցքային է համարել նոր հարեւանութեան քաղաքականութեան շրջանակում գործողութիւնների ծրագրի լիարժէք իրականացումը:

Զրուցակիցները մտքեր են փոխանակել նաեւ Հայաստանի յետընտրական զարգացումների վերաբերեալ:

## ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԸ ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՈՎ

*Lragir.am*, 13:39

Նախագահի ընտրութեանն իմ վերաբերմունքն արտայայտւում է Սահմանադրական Դատարան ներկայացրած դիմումով, որով պահանջում եմ անվաւեր ճանաչել նախագահի ընտրութիւնը: Այդ մասին փետրուարի 28-ին Հայելի ակումբում յայտարարել է

նախագահի թեկնածու, ԺԿ նախագահ Տիգրան Կարապետեանը: Նա նշել է, որ նախագահի ընտրութիւնը պէտք է լինի բացառիկ մաքուր եւ կեղծիքների շատ կամ քիչ հասկացութիւնն անընդունելի է: Տիգրան Կարապետեանն ասում է, որ Սահմանադրական Դատարան ներկայացրած դիմումը հիմնուած է կեղծիքների ու խախտումների մասին միջազգային դիտորդների եւ նաեւ իրենց ունեցած տեղեկատուութեան վրայ: Տիգրան Կարապետեանն օրինակ ասում է, որ նոյնիսկ իշխանութեան համար հաւաստի ու վստահելի Պոպուլուս ընկերութիւնը յետընտրական հարցումների արդիւնք է ներկայացրել, ուր Կարապետեանն ունի 3 տոկոս: «Ուր է իմ երեք տոկոսը», հարցնում է Տիգրան Կարապետեանը: Նա ասում է, թէ չի կարծում, որ իր եօթնամեայ գործունէութեան ընթացքում կատարած աշխատանքի շնորհիւ ինքն օրինակ չէր կարող Գեղարքունիքի մարզում ստանալ ընդամէնը 200 ձայն:

## ՈՉ ՄԻ ԲԵՒԵՌ, ՄԻԱՅՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՈՂՔԻՆ

*Lragir.am*, 13:48

Ժողովրդական կուսակցութեան նախագահ, Հայաստանի նախագահի թեկնածու Տիգրան Կարապետեանը փետրուարի 28-ին անդրադառնալով ներքաղաքական յետընտրական իրավիճակին, նշել է, թէ ինքն ուրախ է, որ կողմերը երկուստեք ձեռնպահ են մնում ուժային գործողութիւնից ու բռնութիւնից: Եթէ դա յաջողուի պահպանել, ապա Տիգրան Կարապետեանը նշում է, որ հնարաւոր կը լինի իրավիճակը տանել բանակցային հունով:

Տիգրան Կարապետեանն ասում է, որ օրինակ Վրաստանում իշխանութիւնն ու ընդդիմութիւնը եկել են համաձայնութեան խորհրդարանի ընտրութեան կապակցութեամբ:

Այդ ինչպէս է ստացւում, որ իշխանութիւնն է միշտ լինում ընտրութիւնների յաղթողը, հարցնում է Տիգրան Կարապետեանը, եւ ասում, թէ ինքն ուրախ է, որ Հայաստանում կայ ուժեղ ընդդիմութիւն, որն ունի ազդեցութիւն: Տիգրան Կարապետեանը գործակցութեան մասին Սերժ Սարգսեանի յայտարարութիւնը համարում է հէնց ընդդիմութեան ազդեցութեան արդիւնք:

Ինչ վերաբերում է առկայ իրավիճակում կոնկրէտ իր եւ իր քաղաքական ուժի դերակատարման մասին, ապա Տիգրան Կարապետեանն ասում է, որ օրինակ իրեն պատկանող ԱԼՄ հեռուստաընկերութիւնը լուսաբանում է հանրահաւաքները, քանի որ համարում է, որ անկախ դրանցում հնչող մտքերի հետ համաձայն կամ անհամաձայն լինելուց, որպէս իրադարձութիւն անհրաժեշտ է այդ հանրահաւաքները լուսաբանել, ցոյց տալ, որ կայ այդպիսի երեւոյթ:

Կոնկրէտ դիրքորոշման առումով, Տիգրան Կարապետեանն ասում է, որ ձգտում է հաւասարաչափութեան: «Ես չեմ կարծում, որ իշխանութիւնն ունի իմ աջակցութեան կարիքը, բայց ես դատապարտում եմ բռնութեան ցանկացած դրսեւորում, եւ այդ մասին նաեւ եթերում եմ յայտարարել», ասում է Տիգրան Կարապետեանը: Նա նշում է, որ իր տեղը որեւէ բեւեռում չէ, այլ ժողովրդի կողքին, որովհետեւ ժողովուրդը բեւեռում չի լինում:

## ԴԱՏԻ ԵՆ ՏԱԼՈՒ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆԸ

*A1+*, 14:15

Այսօր կառավարութեան շէնքի առաջ բողոքի ակցիա էին անում Հիւսիսային եւ գլխաւոր պողոտաների, Դալմայի, Նորքի այգիների ներկայացուցիչները: Վերջիններս պահանջում էին վարչապետ Սերժ Սարգսեանից ընդունելութիւն, ինչը այդպէս էլ անարձագանք մնաց: Դրա փոխարէն նրանց լսելու էին եկել քաղաքապետարանից ներկայացուցիչներ, ինչը այնքան էլ չողջունուեց ցուցարանների կողմից:

«Հրապարակում վարչապետը ասաց, թէ այս ենք անելու, այն ենք անելու, եկանք եւս մէկ անգամ համոզուելու, թէ նրա ասածները իրականութիւն են, թէ խոստումներ: Եկել են քաղաքապետարանից, հրաւիրում են Դաւթեան Կարէնի մօտ, բայց մենք ասեցինք, որ չենք ուզում քաղաքապետին տեսնել, քանի որ նա այն նոյն յանցագործն է, որը այսքան բաներ բերեց մեր գլխին: Թող վարչապետը խոստումները գործողութեան վերածի», - դժգոհեց Սեփականութեան Իրաւունքի Պաշտպանութիւն ՀԿ նախագահ Վաչագան Յակոբեանը:

«Վարչապետը խօսք է տուել արժանապատիւ կեանք, թող ուրեմն տուն տայ: Թող կենտրոն չլինի, Չարբախ լինի, բայց տարածքիս չափով տուն տայ», - ասաց 40 տարուց աւելի Կենտրոնում բնակուող Ռոման Զառաֆեանի կինը:

Աբովեան 1/5 հասցէի նախկին բնակիչ Էդիկ Մեսրոպեանն էլ եկել էր վարչապետից պահանջելու իր քանդուած բնակարանի փոխարէն նոր բնակարան: «Ձմեռուայ կէսին տնից դուրս հանեցին, զոռով պայմանագիր կապել տուեցին: 68 տարի ապրել եմ Աբովեան փողոցի վրայ: Հիւսիսայինի անուան տակ իմ շէնքը քանդուեց: 9 շունչ էին, մի մասս ստիպուած ապրում է հանրակացարանում, իսկ մի մասս էլ՝ Բանգլադէշում», - ասում է նա:

Իսկ Ամիրեան 4/18 տան նախկին բնակիչ Գագիկին, ըստ նրա, Սերժ Սարգսեանն այսօր հրաւիրել է ընդունելութեան, մինչդեռ նրան եւս չընդունեց: Վերջինս այնքան է յոգնել այս իշխանութիւններից, որոնք խլել են իրենից տունն ու սեփականութիւնը, որ որոշել է թողնել եւ հեռանալ երկրից, սակայն դրա համար նրան չեն տալիս անգամ միգրացիոն քարտ: «Պահանջում եմ քաղաքացիութիւն չունեցող քաղաքացու անձնագիր: Կանչել էին, եկայ, հիմա էլ ասում են յաջորդ շաբաթ արի», - դժգոհում է Գագիկը:

Վաչագան Յակոբեանն էլ վստահեցրեց, որ իրենք նամակ են պատրաստում կառավարութեանը դատի տալու համար, քանի որ համոզւում են՝ վարչապետը էլ ոչ մի բան չի անում: «Եթէ երկու օրուայ մէջ հարցերը չլուծուի, մենք կը միանանք ընդդիմադիր մեր ընկերներին եւ կը պայքարենք: Պայքարելու ենք մինչեւ վերջ», - ասաց Վաչագան Յակոբեանը:

Ի դէպ, ցուցարարները վերահսկւում էին մի խումբ ոստիկանների կողմից:

## ԸՆԴՈՒՆԵՑԻՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԻ ՀՐԱԺԱՐԱԿԱՆՆ ՈՒ ՅԱՐԳԵՑԻՆ ԶՈՀԵՐԻ ՅԻՇԱՏԱԿԸ

*Lragir.am*, 14:23

Հայաստանի խորհրդարանը փետրուարի 28-ի նիստի մեկնարկին մէկ րոպէ լռութեամբ յարգել է Սումգայիթի ոճրագործութեան զոհերի յիշատակը, իսկ Ազգային Ժողովի նախագահ Տիգրան Թորոսեանն էլ ասել է, որ Սումգայիթում զոհ են դարձել անմեղ հայեր, թերեւս այդ մասին տեղեկացնելով խորհրդարանի պատգամաւորներից շատերին:

Փետրուարի 28-ի նիստի ընթացքում խորհրդարանականները ընդունել են նաեւ Ազգային Ժողովի փոխնախագահ Վահան Յովհաննիսեանի հրաժարականը, ով այդ մասին դիմում էր ներկայացրել երեք օր առաջ եւ փետրուարի 28-ին լրացել է օրէնքով նախատեսուած այն ժամկէտը, երբ դիմում ներկայացրած փոխնախագահը երեք օրուայ ընթացքում կարող էր յետ վերցնել այն, իսկ եթէ չի վերցնում, ապա դա նշանակում է, որ վերհաստատում է այն: Կրկին խօսել է Ազգային Ժողովի նախագահը եւ շնորհակալութիւն է յայտնել Վահան Յովհաննիսեանին արդիւնաւէտ աշխատանքի համար եւ յոյս է յայտնել, որ Վահան Յովհաննիսեանը կը շարունակի իր արդիւնաւէտ օրէնսդրական աշխատանքը:

## ԵՒ ՆՈՐԻՑ ՅԱՏՈՒԿ ՔՆՆՉԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

*Lragir.am*, 14:32

Կառավարութեան մամուլի ծառայութիւնը փետրուարի 28-ին տեղեկացնում է, որ տեղի ունեցած կառավարութեան նիստի ընթացքում, կայացուել է որոշում, ըստ որի, «Յատուկ քննչական ծառայութեան մասին» ՀՀ օրէնքին համապատասխան, գործադիրը հաստատել է յատուկ քննչական ծառայութեան մրցութային յանձնաժողովի աշխատակարգը, որով կանոնակարգւում են յիշեալ ծառայութեան գլխաւոր եւ առաջատար խմբի թափուր պաշտօններ զբաղեցնելու համար մրցոյթ անցկացնող մրցութային յանձնաժողովի աշխատանքների կազմակերպումն ու իրականացումը:

## ԻՆՉՊԷՍ Է ՄՈՌԱՑԵԼ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 14:37

Հայաստանի Ազգային Ժողովը փետրուարի 28-ի իր նիստը սկսել է Սումգայիթի ոճրագործութեան զոհերի յիշատակը յարգելով: Իսկ ահա նոյն օրը տեղի ունեցած մէկ այլ նիստ, կառավարութեան հերթական նիստը, ոչ սկզբում, ու ոչ էլ վերջում, Սումգայիթի զոհերի յիշատակ չի յարգել: Յամենայն դէպս այդ մասին որեւէ խօսք չի եղել կառավարութեան մամուլի ծառայութեան տարածած հաղորդագրութեան մէջ: Թէեւ դա կարող է գուցէ բացատրուել նրանով, որ ի տարբերութիւն Ազգային Ժողովի, կառավարութիւնը շատ աւելի բազմազբաղ է ու քիչ է յիշում քսանամեայ վաղեմութեան, թէկուզ ողբերգական իրադարձութիւնները:

## «ՉԷԻ ԱՍԻ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆ, ԴՈՒՔ ՈՐՈՇԷՔ...»

*A1+*, 14:41

«Նախագահը պէտք է ընտրուի բացառիկ արդար միջոցներով», - այսօր յայտարարեց նախագահի թեկնածու Տիգրան Կարապետեանը, որը դիմել է Սահմանադրական Դատարան՝ վիճարկելու նախագահական ընտրութիւնները, որպէսզի դրանք անվաւեր ճանաչուեն:

«Մենք լուրջ մտադրուած ենք բարձրաձայնել հրապարակաւ Սահմանադրական Դատարանում, որ ընտրութիւնները անցել են խախտումներով, - ասում է նա ու շարունակում, - Երբ ընտրւում է նախագահ եւ պէտք է արդար ձեւով ընտրուի, այդ է պատճառը, որ մենք դիմել ենք անբարոյ ճանաչել ԿԸՅ-ի 24 Ա որոշումը, որը անբարոյական է»:

Դիմումի հիմքում միջազգային դիտորդների արձանագրութիւնն է եւ իրենց դիտարկումները:

Ժողովրդական կուսակցութեան նախագահ Տիգրան Կարապետեանը պահանջել է վերահաշուարկ բազմաթիւ տեղամասերում, սակայն բացուել են 13 ընտրատեղամաս:

Իսկ օրերս Սերժ Սարգսեանի՝ ընդդիմութեանը արուած համագործակցութեան կոչը նա համեմատում է յետընտրական ընտրակաշառքի հետ. «Հէնց այնպէս չեն ասի համագործակցել, որովհետեւ դա լուրջ է»: Բայց նաեւ, Տիգրան Կարապետիչի խօսքերով, առաջարկն ինքնին լաւն է, եթէ չկայ յետին միտք. «Որովհետեւ եթէ այսօր ուզում են ձեւացնել, որ աշխատելու են ընդդիմութեան հետ, դա վատը է, բայց եթէ ընդունել են բանաձեւը, որը միշտ աշխատելու են, դա շատ լաւ է»: Չնայած շատ անարժան մարդիկ ըստ նրա, կը ստանան պաշտօններ:

Տիգրան Կարապետեանը համագործակցութեան ոչ մի առաջարկ չի ստացել եւ չի էլ ուզում ստանալ, բայց ոչ միայն այն առումով, որ չի ուզում իր ներուժը ներդնել. «Իսկ առաջարկ ընդունելը, այսօր ով էլ ընդունի դա կը դիտուի որոշակիօրէն չէի ասի դաւաճանութիւն, դուք որոշէք ինչպէս բնութագրէք»:

Տիգրան Կարապետեանը անդրադարձաւ նաեւ յետընտրական շրջանին եւ նշեց, որ մինչ այսօր երկուստեք ձգտում են, որ չլինեն բախումներ: «Եթէ այդպէս շարունակուի, սադրանք չձեւաւորի եւ չտանի բախմանը, որոշակիօրէն բանակցութիւնների միջոցով կը հարթուի»:

Տիգրան Կարապետեանը չար համարեց նրանց, ովքեր կաշառք են բաժանել, իսկ իր տեղը տեսնում է ժողովրդի հետ, այլ ոչ թէ բեւեռներում:

Ի դէպ, նա գտնում է, որ մենք ունենք հիւանդ հասարակութիւն, քանի որ նրանք 5000 դրամով ձայն են վաճառում, եւ մեր իշխանութիւնները հիմա պէտք է կերտեն քաղաքացիական հասարակութիւն:

## ՕՐԸ ԲԱՑՈՒԵՑ ԱՌԱՆՑ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ

*A1+*, 15:14

Ազատութեան հրապակում օրն այսօր բացուեց առանց Սերժ Սարգսեանի: Երէկ ուշ գիշերին, հրապարակի լոյսերն անջատելուց յետոյ դիմացի էլիտար բարձրայարկի վրայի Սերժ Սարգսեանի մեծ լուսանկարը հանուել է: Ազատութեան Հրապարակից այս պահին երեւում է միայն Հին Էրիւանի վրայի Սերժ Սարգսեանի ոչ պակաս մեծ նկարը, որտեղ նա երեւում է իր ամբողջ հասակով:

Այսօր արդէն ութերորդ օրն է, որ մարդիկ արեւածագը դիմաւորում են հրապարակում: Օրը սկսւում է նախաճաշով, սուրճով, շրջակայքը մաքրելով եւ թերթերի ընթերցանութեամբ:

«Թող իշխանութիւնները գան տեսնեն, թէ ինչպիսի մաքրութիւն է տիրում այստեղ: Նրանք նոյնիսկ չեն կարող կռահել, թէ գիշերը, որտեղ են խարոյկներ վառուել, առաւօտեան այնպէս ենք մաքրում, որ որեւէ հետք չմնայ», - ասաց ԵՊՀ երկրորդ կուրսի ուսանողներից մէկը, որը արդէն 8-րդ օրն է լուսացնում է հրապարկում եւ դասադուլ է անում: Նա վստահեցրեց, որ որեւէ բան չի կարող իրեն ստիպել հեռանալ հրապարակից՝ ոչ իշխանութիւնները եւ ոչ էլ եղանակային պայմանները»

Ազատութեան Հրապարակից արդէն 8 օր է՝ չի հեռացել նաեւ Վարդենիսի բնակիչ Գրիշա Ազոյեանը՝ իր ընտանիքի անդամների եւ հաշմանդամ եղբօրորդու՝ Միեր Մուրադեանի հետ. «Մենք պայքարելու ենք մինչեւ վերջ»:

Նրանց միացան նաեւ կողքի վրանների «բնակիչները»: «Դուք չէք պատկերացնում, թէ այս հրապարակում ինչ սէր է տիրում: Բոլորը ինչ հոգատար են միմեանց նկատմամբ, մարդիկ միմեանց հիւրասիրում են ինչ ունեն: Մեզ բոլորիս այստեղ է համախմբել մէկ նպատակ՝ արդարութեան վերականգնում», - ասացին նրանք:

Քանաքեռ-Զէյթուն համայնքի բնակիչ Սերգէյ Աղասարեանը հրապարակ է եկել զայրացած՝ իր ընտրական տեղամասի յանձնաժողովի նախագահի վարքը. «Ես մտայ ընտրական տեղամաս եւ ինձ հարցրեցին, թէ ում եմ ընտրելու, ես էլ պատասխանեցի՝ Տէր-Պետրոսեանին: Ինձ անմիջապէս դուրս հանեցին: Երկրորդ անգամ փորձեցի մտնել ընտրական տեղամաս եւ քուէարկել՝ ինձ կրկին ներս չթողեցին եւ հեռացրեցին:

Զէյթուն համայնքում Քեթրին տաքսի ծառայութեան տէրերը 5 հազար դրամ էին բաժանում բոլորին, որպէսզի իրենց ձայնը տան Սերժ Սարգսեանին: Իմ տատիկին էլ թոյլ չտուեցին ընտրել, քանի որ գիտէին, որ Տէր-Պետրոսեանին ենք ընտրելու: Ես եկել եմ ոչ թէ այս կամ այն թեկնածուի համար պայքարելու, այլ իմ իրաւունքների»: Երեւանի բնակիչ Յակոբ Միրզոյեանը դիմեց իշխանութիւններին եւ խորհուրդ տուեց. «Իշխանութիւններին խորհուրդ կը տամ գիշերները յատուկ մարդիկ չուղարկեն ստեղ՝ դատարկ օղու, գարեջրի շշերով: Բերում դնում են ու յետոյ էլ ասում, թէ թմրամոլ են»:

Թալինի շրջանի Արագածաւան գիւղի 70-ամեայ բնակիչ Ռաֆիկ Գալստեանն նշում է, թէ Սերժ Սարգսեանին ասում է, որ բարձրացրել է կենսաթոշակները:

«Ես իմ չբարձրացուած թոշակով երկու պարկ ալիւր էի գնում, իսկ հիմա իր բարձրացրածով չեմ կարող գնել: Հիմա բարձրացրե՞լ է: Մեզ խաբում են: Եթէ վարչապետը կամ երկրի նախագահը խաբում է, ուրեմն այդ երկիրը կործանուած է: Թող Սերժ Սարգսեանն ու Ռոբերտ Քոչարեանը հեռանան: Չենք ուզում իրենց հերիք է, երբ չենք դիմանում դրանց այլանդակութիւններին», - ասաց նա:

Ախուրեանից Մանուկեան Մանուէլը նախ յայտարարեց, որ ինքը որեւէ մէկից չի վախենում եւ աւելացրեց. «Ինչպէս կարելի է այսօր ձերբակալել հերոսներին: Չի կարելի, մենք ազատութեան համար ենք պայքարում: Նրանք ժողովրդի թշնամի՞ն են: Մեր համբերութեան բաժակը լցուել է»:

Ազատութեան Հրապարակում այսօր բազմաթիւ երեխաներ կային, որոնք եկել էին իրենց ծնողներին տեսնելու:

Ի դէպ, այսօր ՀՀԿ կենտրոնական գրասենեակի մօտ մի խումբ ոստիկաններ նախաճաշում էին, իսկ սննդի մնացորդները թափում շրջակայքում: Ի տարբերութիւն, Ազատութեան Հրապարակի, որտեղ ամէն առաւօտ հանրահաւաքի մասնակիցները մաքրում են, ՀՀԿ-ի յարակից տարածքի աղբը, որի հեղինակները կարգ ու կանոն պաշտպանող ոստիկաններն են, համապատասխան մարմինների ուշադրութիւնից վրիպել են:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ԿՐԿԻՆ ՅԱՐՁԱԿՈՒԵԼ ԵՆ ԼՐԱԳՐՈՂԻ ՎՐԱՅ

*A1+*, 15:29

Այսօր Ազատութեան Հրապարակում ոստիկանները յարձակուել են *Առաւօտ* եւ *Չորրորդ իշխանութիւն* թերթերի ֆոտօլրագրող Գագիկ Շամշեանի վրայ եւ խոչընդոտել նրա աշխատանքը: Շամշեանի վրայ յարձակուողն ու նրան սեռական բնոյթի հայհոյանք տուողը ոստիկանութեան փոխգնդապետ Արայիկ Պետրոսեանն էր, որը յայտնի է լրագրողների վրայ բազմաթիւ յարձակումներ գործելով: Ի դէպ, նա էր մի քանի ամիս առաջ

հարուածել *Չորրորդ իշխանութիւն* թերթի լրագրող Գոհար Վէզիրեանի գլխին:

Այսօր Գագիկ Շամշեանի վրայ նա յարձակուել է՝ իժգոհելով, թէ Շամշեանը իր լուսանկարներում միշտ անյաջող պահեր է որսում: «Ասում է՝ սպասում ես դէմքներս ծամածռուի, ձեռքներս յետեւներիս տանենք, որ նկարես», - պատմեց Գագիկը: Արայիկ Պետրոսեանը իր խօսքն աւարտել է հայհոյանքով, իսկ Շամշեանից համապատասխան պատասխան ստանալուց յետոյ յարձակուել է նրա վրայ, պատռել նրա բաճկոնը, վնասել դէմքը եւ փորձել ձեռքից խլել ֆոտոխցիկը, ինչը նրան չի յաջողուել: Փոխգնդապետ Արայիկ Պետրոսեանին է միացել նաեւ մէկ այլ ոստիկան՝ գնդապետ Ռոբերտ Մելքոնեանը:

«Մելքոնեանի մականունը Բազազ է: Ոստիկանի պատիւը արատաւորելու համար նա 1996թ.-ին հեռացուել է համակարգից: Այդ մասին ժամանակին յայտնեց նաեւ *02* շաբաթաթերթը եւ համանուն հաղորդաշարը: Նա այդ ժամանակ Մաշտոցի շրջանի ոստիկանութեան պետի տեղակալն էր եւ գումար էր տուել, որ իրեն պետ նշանակէին: Այդ մասին մի կին յայտնեց, որ Մելքոնեանը իրեն փող է տուել, որ միջնորդի եւ բարեխօսի նրան ոստիկանապետ նշանակելու համար», - ասաց Գագիկ Շամշեանը: Լրագրողը նաեւ տեղեկացրեց, որ յօդուած է գրել, թէ ինչպէս գնդապետ Ռոբերտ Մելքոնեանը համակարգից հեռացուելուց յետոյ զբաղուել է այլուրի բիզնէսով եւ ասաց. «Հիմա վերականգնուել է եւ շարունակում է ծառայութիւններ մատուցել իշխանութիւններին»:

Ի դէպ, այսօր Ազատութեան Հրապարակի տարածքում աւելացել է ոստիկանների թիւը: Ոստիկանութեան մեքենաները միմեանցից 10 մետր հեռաւորութեան վրայ շրջապատել են հրապարակը: Ոստիկանութեան մեքենաները փակել են Ազատութեան Հրապարակ տանող մուտքի ճանապարհները եւ այն անհատներին, որոնք մեքենայով սնունդ են բերում հանրահաւաքի մասնակիցներին, թոյլ չեն տալիս մտնել տարածք: «Դա խնդիր չէ, սնունդը կարող ենք ձեռքով տեղափոխել հրապարակ», - *Ա1+*-ին ասաց հանրահաւաքի մասնակիցներին սնունդ մատակարարող անհատներից մէկը: Այդ պահին նրա կողքին կանգնած ոստիկանութեան աշխատակիցը, որը հրաժարուեց ներկայանալ, ասաց. «Լաւ, երեկոյեան, կը թողնենք»:

## ԳՈՒԽ. ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ՆՇԱՆԱԿԵԼ ՆՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 16:14

Գիւմրու Ուսանողական Խորհուրդ ՀԿ նախագահութիւնը հանդէս է եկել յայտարարութեամբ, որում ասւում է.

«Սոյն թուականի փետրուարի 19-ին տեղի ունեցած նախագահական ընտրութիւնների ընթացքում Գիւմրու Ուսանողական Խորհուրդ ՀԿ-ն իրականացրել է ընտրական գործընթացի դիտարկում, մասնաւորապէս, Ալեանս քաղաքացիական նախաձեռնութեան շրջանակներում ԳՈՒԽ ՀԿ-ն Շիրակի մարզում իրականացրել է exit poll, որի արդիւնքները մենք Ալեանս քաղաքացիական նախաձեռնութեան շրջանակներում հրապարակել ենք անմիջապէս ընտրութիւնների աւարտից յետոյ:

Միաժամանակ ԳՈՒԽ ՀԿ անդամները իրականացրել են դիտորդական առաքելութիւն: ԳՈՒԽ ՀԿ դիտորդների կողմից արձանագրուել են բազմաթիւ ընտրախախտումներ, այդ թւում՝ կուտակումներ ընտրատեղամասերում, բացայայտ եւ համատարած ընտրակաշառքների բաժանում, պաշտօնական դիրքի չարաշահումներ, վարչական ապարատի

ամբողջ ներուժի կիրառում, լցոնումներ եւ այլն, որոնք մեր կարծիքով ազդել են ընտրութիւնների վերջնական արդիւնքների վրայ:

ԳՈՒԽ ՀԿ նախագահութիւնը գտնում է, որ անհրաժեշտ է անվաւեր ճանաչել սոյն թուականի փետրուարի 19-ին կայացած նախագահական ընտրութիւնները եւ օրէնքով սահմանուած կարգով նշանակել նոր ընտրութիւններ: ԳՈՒԽ ՀԿ նախագահութիւնը փետրուարի 29-ին հրաւիրել է արտահերթ խորհրդի նիստ, որի օրակարգում լինելու է ԳՈՒԽ ՀԿ յետագայ գործողութիւնների պլանի նախագծի մշակում, որը ներկայացուելու է հաստատման ԳՈՒԽ ՀԿ ուսանողական արտահերթ բաց համագումարին»:

## ՁԵՒԱՒՈՐԵԼ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԵԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 16:17

Համերաշխութիւն շարժում կազմակերպութեան Համակարգող Խորհուրդը յայտարարութիւն է տարածել, որով փաստում է, թէ «Համերաշխութիւն շարժումը քննարկելով եւ վերլուծելով փետրուարի 19-ի ՀՀ նախագահի ընտրութիւնների նախընտրական, ընտրական եւ յետընտրական գործողութիւնները, յատկապէս մտահոգուած լինելով յետընտրական լարուած իրավիճակով, որը կարող է անդառնալի դարձնել ժողովրդավարութեան զարգացումը եւ վտանգել մեր անկախ պետականութիւնը՝ կոչ է անում բոլոր կողմերին ցուցաբերել հանդուրժողականութիւն եւ համերաշխութիւն: Առաջարկում ենք ստեղծուած իրավիճակից դուրս գալու որպէս առաջին քայլ ձեւաւորել համերաշխութեան կառավարութիւն՝ Յանուն Համերաշխ Հայաստանի: Աստուած մեզ պահապան»:

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՒՈՒՄ ԵՆ

*A1+*, 16:20

Այսօր Մալաթիա Սեբաստիա համայնքի երկու բնակչի՝ Արմենակ Կարազէօզեանին եւ Գագիկ Եղիազարեանին՝ ոստիկանութեան աշխատակիցները բերման են ենթարկել: Առաւօտեան ներխուժել են նրանց բնակարանները եւ առանց բացատրութեան տարել: Երկուսն էլ Տէր-Պետրոսեանի ենթաշտաբի պետեր են եղել:

Նրանց ընկերները *Ա1+*-ին տեղեկացրեցին, որ Արմենակ Կարազէօզեանին եւ Գագիկ Եղիազարեանին բռնի ուժով մտցրել եւ տարել են 06 ՕՍ 293 համարանիշով Օպել մակնիշի աւտոմեքենայով:

## Ո՞Վ Է ԹՄՐԱՆԻՒԹ ԲԱԺԱՆՈՂԸ

*A1+,* 16:26

Մեծ գրող Ղազարոս Աղայեանի ծոռը՝ Դաւիթ Աղայեանը, որը առաջիններից մէկն էր, որ հացադուլ յայտարարեց, իսկ յետոյ Լեւոն Տէր-Պետրոսեանի խնդրանքով դադարեցրեց, իր կնոջ հետ արդէն 8-րդ օրն է՝ Ազատութեան Հրապարակում է: Նրանց զայրացնում է *Հ1*-ի եւ միւս հեռուստաընկերութիւնների այն տեսանիւթերը, թէ իբր Ազատութեան Հրապարակում թմրամոլներ, հարբեցողներ եւ անբարոյականներ կան:

«Նրանք, ովքեր ասում են, որ այստեղ թմրամոլներ կան, նման բան ասողներն են թմրամոլներ, եւ իրենց էլ թմրանիւթը Սերժ Սարգսեանն է տալիս, որի ազդեցութեան տակ նման նիւթեր են պատրաստում եւ խեղաթիւրում իրականութիւնը: Նրանք իրենց փչացածութեան սահմաններում են աշխատում: Ես այստեղ եմ իմ տիկնոջ, իմ ընկերների, իմ

հարազատների հետ: Թող գան, ստուգեն եւ իրենք կը համոզուեն», - ասաց Դաւիթ Աղայեանը:

Նա վստահեցրեց, որ Ազատութեան Հրապարակի տարածքում որեւէ մէկը ոգելից խմիչք չի ընդունում եւ մի դրուագ պատմեց. «Երէկ գիշեր, մեր ընկերներից մէկը շատ բարձր տրամադրութիւն ունէր եւ ուզում էր մի քիչ գարեջուր խմել: Մենք նրան տուն ուղարկեցինք: Այսօր նա կրկին հրապարակում է, սթափ վիճակում: Եթէ որեւէ մէկը մեր գործի մասնակիցն է, նա երբեք որեւէ սխալ բան թոյլ չի տայ»: Ի դէպ, երիտասարդ ընտանիքը տանն է թողել իրենց փոքրիկ տղային, որը դժգոհում է, որ իրեն երկար ժամանակով հրապարակ չեն բերում: Երիտասարդ ամուսինները վստահեցրեցին, որ չեն լքելու Ազատութեան Հրապարակը, քանի դեռ Լեւոն Տէր-Պետրոսեանը նախագահի նստավայրում չէ:

«Եթէ մենք մեր յարմարաւէտ ու տաք տունը թողել, եկել ենք եւ այստեղ վրանի տակ ենք քնում գետնին, ապա մեզ ոչ մի բան չի կարող ստիպել հեռանալ հրապարակից: Եթէ նոյնիսկ վրաններն էլ հանեն, մենք աստիճաններին նստած կը մնանք: Կը մնանք այնքան ժամանակ, որքան անհրաժեշտ է: Այս հրապարակում ազնուութիւն, բարութիւն, արդարութիւն, ազատութիւն է տիրում: Դա որեւէ բանի հետ համեմատել չի լինի», - ասաց Դաւիթը:

## ԳԵՐԽՆԴԻՐԸ ԿԱՏԱՐՈՒԵ՞Ց

*A1+*, 16:38

«Ես կարծում եմ, որ մեր հասարակութիւնը կատարեց իր առաջ դրուած գերխնդիրը: Այն է՝ կազմակերպել ժողովրդավարական չափանիշներին համապատասխան ընտրութիւններ», - ՀՀ նախագահի ընտրութիւնները գնահատեց ՀՀԿ խմբակցութեան անդամ, Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի մամուլի խօսնակ Էդուարդ Շարմազանովը:

Սակայն, ըստ նրա, դա չի նշանակում, որ թերութիւններ կամ խախտումներ չեն եղել. «Կարող եմ ասել, որ ի պատիւ ՀՀԿ եւ Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբի՝ առաջիններից մէկը դրանց արձագանքել ենք մենք ու դատապարտել բոլոր հակաօրինական խախտումները»:

ԱԺ պատգամաւորը յայտարարում է, որ Սերժ Սարգսեանը, բազմիցս ապացուցել է, որ «անձնական ամբիցիաներն ու շահը աւելի ցածր է դասում, քան երկրի շահը»:

Ինչ վերաբերւում է ժողովրդավարութեանը, ապա, ըստ Էդուարդ Շարմազանովի՝ դա միայն խօսքերով չի լինում, դրան հասնելու համար անհրաժեշտ է իրականացնել գործնական քայլեր: Վերջինս եւս մէկ անգամ նշել է, որ իրենք կողմնակից են, որ իրաւապահ մարմինների եւ քաղաքացիների գործողութիւններն իրականացուեն սահմանադրութեան եւ հանրապետութեան օրէնսդրութեան համաձայն:

Էդուարդ Շարմազանովը 1988-ի շարժման եւ այսօր Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող դէպքերի մէջ նմանութիւններ չի տեսնում, քանի որ, ԱԺ պատգամաւորի կարծիքով, այն ժամանակ հասարակութիւնը միասնական էր, կար համազգային գաղափար, 88-ի հասարակութիւնը իւրայինների ու տականքների չէին բաժանում, իսկ այսօր միասնութիւն չի նկատում հէնց ցուցարարների մէջ: Էդուարդ Շարմազանովին այսօրուայ իրադարձութիւնները յիշեցնում են 1933 թուականի Բեռլինը, իսկ ՀՀՇ գործիչներն ու Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբը՝ Հիտլերի եւ Գեբելսի նացիոնալ-սոցիալիստական

կուսակցութիւնը:

Ի դէպ, այսօր եւս մէկ անգամ Էդուարդ Շարմազանովը յայտարարեց, որ իրենց թեկնածուն բոլոր ուժերին եւ մասնաւորապէս ՀՅԴ-ին առաջարկում է համագործակցել ի շահ պետութեան ապագայի: Բացի այդ, նա հաւատում է, որ քաղաքական գործիչների մէջ եղած տարաձայնութիւնները չպէտք է կրեն անձնական բնոյթ եւ միայն համագործակցութեան շնորհիւ հնարաւոր կը լինի ստեղծել կայուն պետութիւն:

## ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑԵՐ ՆԱԵՒ ՄԱՐԶԵՐՈՒՄ

*Lragir.am*, 16:42

Փետրուարի 28-ին Ազատութեան Հրապարակում իրականացուող շուրջօրեայ հանրահաւաքի հիմնական մասը մեկնարկել է ինչպէս միշտ ժամը 15-ին: Հանրահաւաքի վարող Նիկոլ Փաշինեանը, ում ձայնը արդէն վերականգնուել է, յայտարարել է, որ այն պահին, երբ մեկնարկել է հանրահաւաքի հիմնական մասը, Ռոբերտ Քոչարեանը բացատրութիւն է պահանջում ուժային կառոյցների ղեկավարներից, որոնք նախօրէին նրան խոստացել են, որ այսօր արդէն հրապարակում բազմութիւն չի հաւաքուի:

Նիկոլ Փաշինեանի խօսքով, ուժային կառոյցների ղեկավարները երեւի թէ Ռոբերտ Քոչարեանին խոստովանում են, որ չեն վերահսկում իրավիճակը եւ չեն կարող հսկողութեան տակ առնել մի շարժում, որը համաժողովրդական է: Անգամ այն, որ առաւօտից, պետաւտոտեսչութեան աշխատակիցներն արգելել են մեքենաներ կայանել Օպերայի մերձակայքում, չի նուազեցրել հանրահաւաքի մասնակիցների թիւն ու նրանց վճռականութիւնը: Մարդիկ շարունակում են գալ Ազատութեան Հրապարակ եւ նրանց թիւը հանրահաւաքի մեկնարկից ի վեր, աստիճանաբար աւելանում է:

Նիկոլ Փաշինեանը յայտարարել է նաեւ, որ ցոյցեր են կազմակերպւում մարզերում: Նա նշել է, որ հէնց փետրուարի 28-ին, իրենց ունեցած տեղեկութեան համաձայն, բողոքի ցոյց է կազմակերպուել Նոյեմբերեանում, իսկ միւս մարզերում ցոյցեր կը կազմակերպուեն առաջիկայում: Նիկոլ Փաշինեանը նաեւ յայտնել է, որ այսուհետ ամէն ինչ անելու են մարզերի տեղեկատուութիւնն աշխուժացնելու համար:

## 50 ՀԱԶԱՐ ԴՐԱՄ ՏՈՒԳԱՆՔ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԻՑ ԴՈՒՐՍ ԵԿՈՂ ՄԵՔԵՆԱՆԵՐԻՆ

*Lragir.am,* 16:45

Փետրուարի 28-ի առաւօտեան ճանապարհային ոստիկանութեան աշխատակիցները սկսել են Ազատութեան Հրապարակի մերձակայքը ազատել այնտեղ կանգառած աւտոմեքենաներից: Ազատութեան Հրապարակի յարակից փողոցների մայթեզրերը, անգամ նրանք, որոնք նախատեսուած են կայանումների համար, փակ են, այնտեղ կայանել են ճանապարհային ոստիկանութեան մեքենաները եւ թոյլ չեն տալիս, որ այլ մեքենայ կայանի: Իսկ անմիջապէս Ազատութեան Հրապարակի տարածքում կայանած մեքենաներին, երբ նրանք դուրս են գալիս հրապարակից, ճանապարհային ոստիկանութիւնն անմիջապէս կանգնեցնում է եւ տուգանում: Վարորդներն ասում են, որ տուգանքը կազմում է 50 հազար դրամ:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆՆ ՀԱՆԴԻՊԵԼ Է ԱՐԵՆՍԻՆ ԵՒ ՍԵՄՆԵԲԻԻՆ

*Lragir.am*, 16:48

Արթուր Բաղդասարեանի գրասենեակից տեղեկացնում են, թէ այսօր ՕԵԿ նախագահ, ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանը ՕԵԿ գրասենեակում ընդունել է ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութեան ղեկավար, դեսպան Գերտ-Հենրիխ Արենսի գլխաւորած պատուիրակութեանը: Օրուայ երկրորդ կէսին Արթուր Բաղդասարեանը աշխատանքային ճաշ է ունեցել Հարաւային Կովկասում Եւրամիութեան յատուկ ներկայացուցիչ Պիտէր Սեմնեբիի հետ: Հանդիպումների ընթացքում քննարկուել են ՀՀ նախագահական ընտրութիւնների արդիւնքների ամփոփման եւ յետընտրական զարգացումներին առնչուող հարցերի լայն շրջանակ: Երկուստեք կարեւորուել է Հայաստանի Հանրապետութիւնում ներկայում առկայ իրավիճակի քաղաքական հանգուցալուծման հրամայականը:

## ԵԱՀԿ ԳՈՐԾՈՂ ՆԱԽԱԳԱՀԸ ՎԱՐՉԱՊԵՏԻ ՊԱՏՈՒՀԱՆԻ ՄՕՏ

*Lragir.am*, 16:53

Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած համաժողովրդական շարժմանը յաջողուել է արժանանալ միջազգային ուշադրութեան, փետրուարի 28-ի հանրահաւաքի ընթացքում յայտարարել է հանրահաւաքը վարող Նիկոլ Փաշինեանը: Նա ասել է, որ վերջին չորս օրերի ընթացքում Հայաստան են ժամանել միջազգային կառոյցների շատ բարձրաստիճան ղեկավարներ, որոնք հանդիպել են Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ: Փետրուարի 27-ին, Տէր-Պետրոսեանը մօտ մէկ ժամանոց հանդիպում է ունեցել Եւրամիութեան Հարաւային Կովկասի հարցերի յատուկ ներկայացուցիչ Պիտէր Սեմնեբիի հետ:

Նիկոլ Փաշինեանը բացայայտել է նաեւ իրենց մարտավարական փոքր խորամանկութիւններից մէկը, ասելով, որ Երեւանի փողոցներով բազմամարդ երթերը կազմակերպում են այն երթուղով եւ այն ժամանակացոյցով, որպէսզի դրանք համընկնեն միջազգային կառոյցների պաշտօնեաների կամ կառավարութիւնում գտնուելու, կամ Արմենիա Մարիոտ հիւրանոցում լինելու ժամանակի հետ:

Նիկոլ Փաշինեանն օրինակ նշել է, որ երբ Հայաստանում էր ԵԱՀԿ գործող նախագահ, Ֆինլանդիայի արտգործնախարար Կաներվան, ու երբ նա հանդիպում էր վարչապետ Սերժ Սարգսեանի հետ, այդ ժամանակ լսել է Հանրապետութեան Հրապարակով անցնող հուժկու եւ բազմամարդ երթի ձայնը ու չդիմանալով հետաքրքրութեանը, ԵԱՀԿ նախագահը հանդիպումն ընդհատել է ու մօտեցել պատուհանից դուրս նայելու:

Նիկոլ Փաշինեանի խօսքով, եւրոպացի պաշտօնեաներին ոչ միայն տպաւորում է երթերի ու ցոյցերի բազմամարդութիւնը, այլ առաջին հերթին դրանց խաղաղ ու կազմակերպուած ընթացքը, յատկապէս այդ մարդաշատութեան պարագայում, քանի որ Եւրոպայում երբ 500 մարդ դուրս է գալիս փողոց, ապա անպայման մի երկու ապակի է կոտրւում, իսկ Հայաստանի դէպքում փողոց է դուրս գալիս մօտ 500 հազար մարդ ու ամէն ինչ անցնում է խաղաղ ու կազմակերպուած, իսկ համաժողովրդական բողոքի մասնակիցները Ազատութեան Հրապարակի առաւօտը սկսում եւ գիշերը դիմաւորում են Տէրունական աղօթքով:

## ԻՆՉՊԷՍ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԱՐՈՂ Է ԴԱՌՆԱԼ ԳՈՐԾՕՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

*A1+*, 16:58

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում ելոյթ էր ունենում առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Վերջինս հաւաքուածներին հաւաստիացրեց, որ այսօր ոչ մի բան կախուած չէ Հայաստանից:

«Մենք կախուած ենք մեր բոլոր հարեւաններից, բոլորից, թէկուզ միայն արտաքին աշխարհի հետ կապ պահպանելու առումով: Չհաշուած տնտեսական յարաբերութիւնները՝ եթէ ուշադիր լինէք, մեր հարեւաններից ոչ մէկը ոչնչով մի միլիմետր անգամ մեզանից կախուած չէ, - ասաց առաջին նախագահը, ապա յաւելեց, - Մեր ճանապարհները նրանց չեն խանգարում իրար հետ հաղորդակցուելու, մեր հումքից, մեր էներգետիկայից նրանք կախուած չեն բացարձակապէս: Հայաստանը դադարել է քաղաքական եւ տնտեսական գործօն լինելու իր դերակատարութիւնից, եւ սա բացառապէս Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի սկսած աւազակախմբի գործունէութեան պատճառով»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը հաւաքուածներին պատմեց, թէ ինչպէս իր նշանաւոր ամերիկահայ բարեկամներից մէկը դժգոհել է, թէ ամերիկացի դեսպանը նրան ասել է՝ Հայաստանը աշխարհի համար հետաքրքրութիւն չի ներկայացնում: «Եւ իմ բարեկամը ինձ ասում էր. «Տեսար ինչ ըսաւ այդ սրիկան, Հայաստանը բան մը չէ, Հայաստանը գործօն ֆակտոր չէ: Ասի՝ բարեկամ, առաջին անգամ գտնուել է մի դիւանագէտ, որ անկեղծօրէն ասել է իրականութիւնը: Դու նրան պէտք է շնորհակալ լինես, նա հրաշալի մարդ է, որովհետեւ դիւանագէտները երբեք չեն ասում իրենց մտադրութիւնը: Դու պէտք է այդ մարդուն շնորհակալ լինես, որ քո աչքերը փորձել է բացել, թէ ինչ է կատարւում մեր երկրում», - պատմեց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Նա նկատեց, որ մենք այսօր դժուար կացութեան մէջ ենք միջազգային առումով եւ պէտք է վերադարձնենք Հայաստանը միջազգային ասպարէզ որպէս գործօն: «Միայն գործօնի հետ են հաշուի նստում: Տնտեսական աւերը, քաղաքական աւերը, որ այս իշխանութիւնները գործել են, այն տնտեսական, քաղաքական մեկուսացումը, որին այս իշխանութիւնները դատապարտել են Հայաստանը, Հայաստանի իշխանութիւններին, ես ոչ մի կասկած չունեմ, որ առաջնորդը ես եմ լինելու, շատ լուրջ մարտահրաւէրների առաջ են կանգնացնելու», - ասաց նա, եւ նրա ելոյթը ընդհատուեց «Լեւոն, Լեւոն» վանկարկումներով:

«Տնտեսական կամ քաղաքական գործօն դառնալը մեզանից ժամանակ է պահանջելու: Գուցէ մէկ, երկու, երեք տարի: Դա լրջագոյն խնդիր է», - շարունակեց առաջին նախագահը: Իսկ այդ ճանապարհին, ըստ նրա՝ կարեւորագոյն խնդիրը լինելու է Ղարաբաղի հարցի լուծումը եւ դրա հետեւանքով շրջափակման յաղթահարումը, թուրք-հայկական սահմանի բացումը եւ մեր բոլոր հարեւանների հետ բարիդրացիական համագործակցութեան հաստատումը: Առաջին նախագահի բնորոշմամբ՝ դրանից յետոյ է, որ Հայաստանը կարող է դառնալ լիիրաւ քաղաքական գործօն, այս դէպքում նաեւ մեր հարեւանները մեզանից կախուած կը լինեն:

«Տնտեսական կապերով կախուած լինելով՝ նրանց հետ արդէն փոխկապուածութիւն է, եթէ անգամ նոյնիսկ այսօր բոլոր ճանապարհները շրջանցում են Հայաստանը, Հայաստանից ճանապարհները նորից կը վերագտնեն իրենց նշանակութիւնը: Եթէ

կառուցուի Կարս-Ախալքալաք երկաթուղին, հայ-թուրքական սահմանի բացումից յետոյ իր նշանակութիւնը կ՚ունենայ եւ այդ երկաթուղուն լուրջ ալտերնատիւ այլընտրանք կը լինի Կարս-Գիւմրիի երկաթուղին: Անգամ եթէ Իրանից Ադրբէջանի միջոցով Ռուսաստան, Եւրոպա երկաթուղի կառուցուի, միեւնոյնն է՝ Թաւրիզ-Ջուլֆա-Երեւան երկաթուղին նորից կը վերագտնի իր տնտեսական նշանակութիւնը», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Սակայն, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, կայ մի հարց, որ Հայաստանը այսօր եւեթ կարող է դարձնել լրջագոյն քաղաքական գործօն ոչ միայն տարածաշրջանում, այլ նաեւ ամբողջ աշխարհում. դա այս ժողովրդի ներուժի օգտագործումն է: «Ժողովուրդը պատրաստ է, ժողովուրդը չի ընդունում այս իշխանութիւնը, հետեւաբար Հայաստանի մեկուսացումը եւ քաղաքական գործօն լինելու դադարեցման իրականութիւնը չի ընդունում: Ժողովուրդը պատրաստ է դառնալ լրջագոյն գործօն ժողովրդավարութեան, դեմոկրատիայի, իրաւական պետութիւն ստեղծելու: Դա օրերի հարց է», - ասաց նա: Լեւոն Տէր-Պետրոսեանը հաւաստիացրեց, որ եթէ ժողովուրդը տէր է կանգնում իր երկրին, դառնում է մի գործօն, որին ոչ մի երկիր չի կարող անտեսել:

«Սա, եթէ կ՚ուզէք, մեզ համար պայքար է, ձեզ համար քննութիւն՝ միջազգային հանրութեան համար, առաջին հերթին հայրենիքի համար, առաջին հերթին Եւրամիութեան համար», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ԻՐԱԴՐՈՒԹԵԱՆ ԵՐԵՔ ԼՈՒԾՈՒՄ, ԵՒ ԲԱՑԱՅԱՅՏՈՒԱԾ ԵՐԿՈՒ ԳՈՐԾԱԿԱԼ

*Lragir.am*, 17:07

Հայաստանում առկայ է քաղաքական ճգնաժամ, եւ այդ ճգնաժամն ունի երեք լուծման տարբերակ: Այդ մասին փետրուարի 28-ին տեղի ունեցած հանրահաւաքի ընթացքում յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի անդամ Նիկոլ Փաշինեանը: Նա նշել է, որ քաղաքական ճգնաժամը պէտք է յաղթահարուի քաղաքական քայլերով, յայտարարութիւններով, այդ թւում եւ միջազգային կառոյցների ու գերտէրութիւնների կողմից: Միւս տարբերակը իրաւականն է, ի դէմս Սահմանադրական Դատարանի: Իսկ եթէ այդ երկու տարբերակները չգործեն, ապա երրորդ լուծումը, ըստ Նիկոլ Փաշինեանի, հանրահաւաքի կարգախօսներից մէկն է:

Այդ ասելուց յետոյ նա եւ հանրահաւաքի մասնակիցները վանկարկել են այդ կարգախօսը՝ «հիմա», «հիմա»: Սակայն Նիկոլ Փաշինեանը նշել է, որ խօսքը ամենեւին էլ բռնութիւնների ու անօրինական գործողութիւնների մասին չէ, քանի որ իրենց գործողութիւնները լինելու են բացառապէս օրինականութեան հունով: Փաշինեանը նաեւ նշել է, որ իշխանութիւնը նոյնիսկ կը ցանկանար, որ իրենք կատարէին անօրինական քայլեր, եւ հէնց թերեւս դրա համար էլ համաժողովրդական շարժման Ազատութեան Հրապարակ են գործուղում սադրիչների: Նիկոլ Փաշինեանը յիշատակել է, որ երկուսին յայտնաբերել են նախորդ գիշեր եւ յանձնել ոստիկանութեանը: Ի դէպ, այդ երկուսը բացայայտուելուց յետոյ խոստովանել են, որ իրենք Ազգային Անվտանգութեան Ծառայութեան պատուէրն են կատարում, հէնց պետ Գորիկ Յակոբեանի պատուէրը: Նրանց յանձնել են ոստիկանութիւն, իսկ Անվտանգութեան ծառայութիւնն էլ փետրուարի 28-ին ընդունել է, որ այդ երկու անձն իսկապէս եղել են իրենց աշխատակիցները, որոնք աշխատանք էին

կատարում Ազատութեան Հրապարակում:

Նիկոլ Փաշինեանն ասում է, որ ինչքան իրեն է յայտնի, աշխարհի ոչ մի իրեն յարգող յատուկ ծառայութիւն չի խոստովանում, որ տապալուած գործակալները կատարել են իրենց հրահանգը: Նիկոլ Փաշինեանն այդտեղից եզրակացնում է, թէ ինչ ցածր մակարդակ է տիրում մեր Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնում, ուր կարողանում են միայն հեռախօսային խօսակցութիւններ լսել ու «ժուչոկներ» տեղադրել իշխանութեան քաղաքական հակառակորդների շրջապատում:

Լեւոն Տէր-Պետրոսեանն էլ, որ այդ հարցին անդրադարձել է իր հանրահաւաքային ելոյթի ժամանակ, ասել է, որ Գորիկ Յակոբեանը տասը տարի է իր հեռախօսն էր գաղտնալսում, իսկ հիմա էլ անգամ իր տասնամեայ թոռան հեռախօսը, որ նա նուէր է ստացել 10-ամեակի կապակցութեամբ:

Իսկ Նիկոլ Փաշինեանը հարց է տալիս, թէ ինչ էին անում այդ գործակալներն Ազատութեան Հրապարակում: Ինքն էլ պատասխանել է այդ հռետորական հարցադրմանն, ասելով, թէ նրանք գալիս են, ուզում են վրանների տակ, ծառերի ու թփերի տակ դնել բենզինով շշեր, գուցէ զէնք, եւ այդ կարգի այլ առարկաներ, յետոյ սադրանքներ կազմակերպելու համար: Սակայն հանրահաւաքի անվտանգութիւնը հսկող տղաները, ըստ Նիկոլ Փաշինեանի, արտաքուստ չերեւալով, այդուամենայնիւ աչալուրջ են ու հսկում են քաղաքացիների անվտանգութիւնը, ինչի համար էլ քաղաքացիները Փաշինեանի կոչով ծափահարել են այդ տղաներին:

Նիկոլ Փաշինեանը նաեւ նշել է, թէ տեղի ունեցածը վկայում է նաեւ մի լաւ բանի մասին: Նա ասել է, որ Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնում աշխատում են հիանալի պրոֆեսիոնալներ, որոնք իրենց գործի գիտակն են ու բարձր որակի մասնագէտ, եւ այն, որ Ազատութեան Հրապարակ են գործուղւում այդ ապաշնորհ դիլետանտները, որոնք բացայայտւում են անմիջապէս, վկայում է, որ իրական պրոֆեսիոնալ մասնագէտներն ուղղակի հրաժարւում են կատարել այդ հակաժողովրդական սադրանքների պատուէրը: Նիկոլ Փաշինեանը նոյնիսկ չի բացառել, որ Գորիկ Յակոբեանը հէնց ինքն էլ գիշերները լինում է Ազատութեան Հրապարակում եւ կատարում սադրիչ գործողութիւններ:

## ԱԶԱՏԵԼ ԱԶԱՏՈՂԻՆ, ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ՁԵՐԲԱԿԱԼՈՂԻՆ

*Lragir.am*, 17:10

Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած շարժման մասնակիցներից շատերին նրանց ուսումնական հաստատութիւններում կամ աշխատավայրերում սպառնում են, թէ կը հեռացնեն աշխատանքից կամ բուհից: Փետրուարի 28-ին տեղի ունեցած հանրահաւաքի մասնակիցների հետ խօսելով այդ մասին, հանրահաւաքը վարող Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, թէ դրանով իշխանութիւնը ոչնչի չի հասնելու: «Այո, ձեզ կ'ազատեն բուհից, կը հեռացնեն աշխատանքից, բայց դուք կը գաք այստեղ, եւ 15 օր յետոյ կը հեռացնէք ձեզ հեռացնողներին, կը ձերբակալէք ձեզ ձերբակալողներին», յայտարարել է Նիկոլ Փաշինեանն ու ասել նաեւ, որ դա չի նշանակում, թէ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախագահ դառնալու դէպքում լինելու է վրէժխնդրութիւն: «Օրէնք՝ այո, վրէժ՝ երբէք», յայտարարել է Նիկոլ Փաշինեանը:

## ԵՐԴՈՒՄՆ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*Lragir.am*, 17:11

Փետրուարի 28-ին տեղի ունեցած հանրահաւաքի ընթացքում վարող Նիկոլ Փաշինեանը նամակ է ստացել մասնակիցներից մէկից, ուր նշուած է եղել, որ նամակի հեղինակ կինն ու նրա ամուսինը աշխատում են Եգիպտոսում եւ Հայաստան են եկել կարճատեւ արձակուրդի, բայց նամակագիր կինը ասում է, որ լինելով համաժողովրդական շարժման ականատեսը, ինքը յետաձգել է իր վերադարձը Եգիպտոս, շարժման մասնակիցների հետ լինելու համար: Նամակագիրը միայն մի խնդրանք է յղել Լեւոն Տէր-Պետրոսեանին, ասելով, որ կը ցանկանար միայն ունենալ Լեւոն Տէր-Պետրոսեանի երդման արարողութեան մասնակցութեան հնարաւորութիւն: Նիկոլ Փաշինեանն ի պատասխան այդ նամակի յայտարարել է, որ Լեւոն Տէր-Պետրոսեանի երդման արարողութեանը մասնակցելու խնդիր չի լինի, քանի որ այդ արարողութիւնը լինելու է Ազատութեան Հրապարակում եւ «բոլոր քաղաքացիները ունենալու են այդ համաժողովրդական տօնախմբութեանը մասնակցելու հնարաւորութիւն»:

## ԵՈՒՇՉԵՆԿՈՆ ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ Է ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

*Lragir.am*, 17:18

Ինչպէս տեղեկացնում է Հայաստանի կառավարութեան մամուլի ծառայութիւնը, Սերժ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ է յղել Ուկրաինայի նախագահ Վիկտոր Եուշչենկոն:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԱՐԵՒՄՈՒՏՔԻՆ 10 ՕՐ ԺԱՄԱՆԱԿ ՏՈՒԵՑ

*A1+*, 17:21

ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանին չի գոհացնում միջազգային դիտորդական առաքելութիւնների պահուածքը: «Այդ պահուածքը ֆորմալիստական պահուածք է: Նրանք զբաղուած են ընդամէնը թուաբանութեամբ: Նրանք ընտրութիւնները չեն դիտում որպէս մի համակարգ, համակարգ, որը սկսուել է հոկտեմբերի 23-ից՝ բռնութիւններից իմ կողմնակիցների նկատմամբ, համակարգ, որն այսօր էլ չի դադարել: Այսօրուայ ձերբակալութիւնները, խուզարկութիւնները, ոստիկանութեան մանր, ԱԱԾ-ի մանր՝ Վանոյի լեզուով պիտի ասեմ, «մունդառութիւնները», ցոյց են տալիս, որ այդ մարդիկ սխալ պատկերացումներ ունեն մեր ժողովրդի մասին: Եւս մէկ անգամ հաստատում են, որ իրենք օտար են», - Ազատութեան հարթակից քիչ առաջ յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Բոլոր նրանց, ովքեր ասում են, որ ընտրութիւնների օրը շատ բան չենք տեսել, Տէր-Պետրոսեանը յիշեցրեց. «Ընտրութիւնը միայն ընտրութիւնների օրը չէր, այլ 4- ամսեայ պրոցէս էր: Մեր ընտրութիւնները պէտք է դիտարկել 4 -ամսեայ կտրուածքով: Ընտրութիւնները պէտք է դիտարկել նաեւ այսօրուայ խուզարկութիւններով, ձերբակալութիւններով»:

Նա յիշեցրեց, որ փետրուարի 19-ին ընտրութիւնների օրը բռնութիւններ են եղել վստահուած անձանց, դիտորդների նկատմամբ, նոյնիսկ միջազգային դիտորդների նկատմամբ բռնութիւնների փաստեր են եղել: Ըստ նրա՝ չտեսնել այս ամէնը, ուղղակի խայտառակութիւն է: Տէր-Պետրոսեանը անդրադարձաւ նաեւ ԵԱՀԿ-ին, որի դիտորդա-

կան առաքելութիւնն է դիտարկել ՀՀ Նախա՞գահի ընտրութիւնները։

«Որոշ պետութիւնների կողմից, մասնաւորապէս ԱՊՀ-ի լուրջ պրետենզիաներ կան։ Ես ցաւում եմ, որ այդ պետութիւնների շարքին միացել է Հայաստանը՝ Ռոբերտ Քոչարեանի ստորագրութեամբ։ Պետութիւնները դժգոհ են ԵԱՀԿ-ից, աւելի շուտ, իշխանութիւնները, կառավարութիւնները դժգոհ են, եւ նոյնիսկ պաշտօնական խնդիր են բարձրացրել ԵԱՀԿ-ի բարեփոխման մասին, - ասաց առաջին նախագահը։ - Բայց ԵԱՀԿ-ն եւ նրա դիտորդական առաքելութիւնները աւելի շատ պէտք է մտահոգուեն ոչ թէ կառավարութիւնների դժգոհութիւնից, այլ՝ ժողովրդի դժգոհութիւնից։ Մեր դժգոհութիւնը կարող է աւելի մեծ լինել, եւ դա մեծապէս կարող է հարուածել այդ դիտորդական առաքելութիւնների հեղինակութեանը։ Դիտորդական առաքելութիւնները, Արեւմուտքը այսօր ֆորմալ մօտեցում չպէտք է ցոյց տան այն ամէնի նկատմամբ, ինչ տեղի է ունենում Հայաստանում»։

Տէր-Պետրոսեանը կարծում է, որ նրանց, այսինքն՝ ԱՄՆ-ի, Եւրոպական Միութեան երկրների եւ եւրոպական կառոյցների՝ ԵԽ, ԵԱՀԿ-ի եւ նրանց ներկայացուցիչը հանդիսացող դիտորդների ձեռքում է Հայաստանի ժողովրդավարութեան փաստը։

«10 օրուայ ընթացքում թուարկածս ուժերը, երկրները, կազմակերպութիւնները հնարաւորութիւն ունեն Հայաստանում ունենալ կամ առնուազն Լիտվայի պէս օրինական, քաղաքակիրթ, ժողովրդավարական, ազատ շուկայական տնտեսութեամբ պետութիւն կամ Միջին Արեւելքի կամ Միջին Ասիայի տիպի ամենայետին պետութիւններից մէկը։ Սա է այլընտրանքը, - յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանը, - Սա այնպիսի իրականութիւն է, որը կարող է շատ հեշտութեամբ գործադրուել, կամ հասնել նպատակին ընդամէնը 10 օրուայ ընթացքում։ Դրա համար Արեւմուտքից պահանջւում է միայն յարգել այս ժողովրդին։ Ուրեմն Արեւմուտքը, Արեւմտաեւրոպական երկրները, որոնք միաւորուած են ԵՄ-ի մէջ, ԱՄՆ-ն, միջազգային կազմակերպութիւնները այսօր պէտք է կատարեն հետեւեալ վճիռը՝ կամ Հայաստանի ժողովրդի հետ են, իսկ դա նշանակում է, որ ժողովրդավարութեան, ազատ շուկայական տնտեսութեան հետ են, կամ Հայաստանի աւազակապետական, թաթար-մոնղոլական ռեժիմի հետ»։

## ԴԷՊԻ ԳՈՐԾՕՆ ՏԱՆՈՂ ԵՐԿԱՐ ՈՒ ԿԱՐՃ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐ

*Lragir.am*, 17:24

1988 թուականին համազգային շարժման շնորհիւ Հայաստանն ունեցաւ երկու խոշոր նուաճում, որոնք ունէին համաշխարհային նշանակութիւն՝ ժողովրդավարութիւն եւ Ղարաբաղի ազատագրում։ Այդ միտքը արտայայտել է Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, փետրուարի 28-ին հանդէս գալով Ազատութեան Հրապարակի հանրահաւաքի մասնակիցների առաջ։ Սակայն ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, 1998 թուականից յետոյ, այդ նուաճումները փաստացի մատնուել են կորստի, իսկ Հայաստանն էլ Ռոբերտ Քոչարեանի վարած քաղաքականութեան հետեւանքով վերածուել է խանական մի պետութեան, ուր նախագահը ամէն ինչ եւ ամէն ոքի, համարում է իր սեփականութիւնը։ «Այդ թւում եւ ինձ», ինքն իրեն մատնացոյց անելով ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը։ Նա նշել է, որ օրինակ եթէ խանական իշխանութիւնը որոշի Թոխմախի Միհերին դարձնել ԵՊՀ Խորհրդի նախագահ, ապա պէտք չէ զարմանալ դրանից։

Նրա խօսքով, Ռոբերտ Քոչարեանի իշխանութիւնը հասաւ այն բանին, որ Հայաս-

տանն այլեւ աշխարհի համար կորցրեց հետաքրքրութիւնը, որ Հայաստանից ոչինչ կախուած չէ, որ մեր ոչ մի հարեւան չունի Հայաստանի կարիքը: Հայաստանն այլեւս գործօն չէ, եզրակացնում է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Նրա խօսքով, այդ իրավիճակը շտկելու համար Հայաստանի ապագայ իշխանութիւնից կը պահանջուի երկար ժամանակ, շատ ջանք, գուցէ երկու-երեք տարի: «Իսկ ես կասկած չունեմ, որ այդ իշխանութեան առաջնորդը լինելու եմ ես», շարունակելով խօսքն ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա նշել է, որ գործօն դառնալու այդ ճանապարհի կարեւորագոյն քայլերից են Ղարաբաղի հարցի լուծումը եւ բլոկադայի վերացումը, որից յետոյ միայն Հայաստանը կարող է դառնալ գործօն եւ իր հարեւանների հետ լինել փոխկապակցուած: Տէր-Պետրոսեանի խօսքով, այդ ժամանակ, եթէ անգամ կառուցուած լինի Կարս-Ախալքալակ երկաթուղին, կամ այլ ճանապարհներ ու երկաթուղիներ, միեւնոյն է, Հայաստանի ճանապարհները, նոյն Կարս-Գիւմրի երկաթուղին, կը դառնան միանգամայն գործուն ենթակառուցուածքներ տարածաշրջանային նշանակութեամբ:

Բայց, Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, կայ մի հարց, որը կարող է լուծում ստանալու դէպքում Հայաստանն արդէն իսկ շատ կարճ ժամանակում, նոյնիսկ օրեր անց դարձնել լուրջ տարածշրջանային եւ միջազգային գործօն: Դա, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, Հայաստանում ժողովրդի իշխանութեան եւ ժողովրդավարութեան հաստատումն է: Երբ ժողովուրդը գայ իշխանութեան, ապա որեւէ երկիր այլեւս չի կարող հաշուի չնստել այդ գործօնի հետ, յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆՆ ԱՌԱՆՁՆԱՑՆՈՒՄ Է ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ

*Lragir.am*, 17:41

Փետրուարի 28-ին ելոյթ ունենալով արդէն ութերորդ օրը Ազատութեան Հրապարակում հաւաքուող համաժողովրդական շարժման մասնակիցների առաջ, Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, խօսելով շարժման հանդէպ աշխարհի վերաբերմունքի մասին, ասել է, թէ կը ցանկանար առանձնացնել Ռուսաստանի պարագան:

Լեւոն Տէր-Պետրոսեանի գնահատմամբ, Ռուսաստանն այսօր գերտէրութիւնների շարքում ունի ամենալուրջ դիրք: Ըստ Տէր-Պետրոսեանի, Ռուսատանը կանգնած է դիլեմայի առաջ, ընդ որում դիլեմա, որը ի յայտ է եկել հէնց ռուսական ռազմավարական, վերլուծական կենտրոնների աշխատանքի, վերլուծութիւնների ու եզրակացութիւնների հիմքով: Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, դիլեման հետեւեալն է՝ կամ Ռուսաստանը պէտք է պաշտպանի Հայաստանում գործող ռեժիմին եւ կորցնի հայ ժողովրդի համակրանքը, իսկ դա լուրջ կորուստ կը լինի Ռուսաստանի համար, կամ պէտք է կանգնի հայ ժողովրդի եւ Հայաստանի ժողովրդավարացման գործընթացի կողքին եւ այդպիսով ի դէմս մեր երկրի ձեռք բերի շատ արժէքաւոր, ռազմավարական գործընկեր:

Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշատակել է, որ Ռուսաստանն ունի Ուկրաինայի եւ Վրաստանի փորձը, իսկ այժմ իրականացնում է բաւական լուրջ եւ արդիական միջազգային քաղաքականութիւն: «Եւ ես վստահ եմ, որ Ռուսաստանը ճիշտ որոշում կը կայացնի», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ԱՐԵՒՄՈՒՏՔԸ ՈՒՆԻ 10 ՕՐ ԺԱՄԱՆԱԿ

*Lragir.am*, 17:46

Այն, ինչ տեղի է ունենում Հայաստանում, Ազատութեան Հրապարակում, յիրաւի քննութիւն է ժողովրդի համար, բայց դա ոչ միայն ժողովրդի համար է քննութիւն, այլ աւելի մեծ քննութիւն է Արեւմուտքի, եւրոպական կառոյցների, արեւմտեան պետութիւնների համար: Այդ մտքի հեղինակը առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանն է, ով Ազատութեան Հրապարակում տեղի ունեցած հանրահաւաքի ընթացքում, փետրուարի 28-ին էլ անդրադարձել է իր գլխաւորած շարժման հանդէպ արեւմտեան վերաբերմունքի խնդրին: Լեւոն Տէր-Պետրոսեանը նշում է, թէ իրեն զարմացնում է այն, որ Արեւմուտքը, ի դէմս Միացեալ Նահանգների, Եւրամիութեան, Եւրամիութեան երկրների ու ԵԱՀԿ-ի, Հայաստանում առկայ վիճակի հանդէպ հանդէս չի գալիս հրապարակային յայտարարութիւններով:

Տէր-Պետրոսեանի խօսքով, իհարկէ, կան շփումներ, կայ ներքին աշխատանք, եւ այն, որ իրենց խաղաղ ցոյցերն այսպէս շարունակւում են արդէն ութ օր եւ չեն դառնում ոստիկանութեան թիրախ, դա էլ միջազգային կառոյցների կողմից Հայաստանի իշխանութեան վրայ ճնշման շնորհիւ է նաեւ, բայց առաջին նախագահը զարմանում է, որ բացակայում են հրապարակային յայտարարութիւնները:

Լեւոն Տէր-Պետրոսեանը դժգոհել է նաեւ միջազգային դիտորդներից, ասելով, որ նրանք ընտրութիւնները դիտարկում են ոչ թէ որպէս պրոցէս, այլ որպէս քուէարկութիւն: Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, խայտառակութիւն է չտեսնել այն, ինչ կատարուել է ընտրութիւնից դեռ ամիսներ առաջ ու նաեւ հիմա, եւ ասել, թէ միայն տալիս են ընդհանուր գնահատական: Մինչդեռ, շարունակում է Լեւոն Տէր-Պետրոսեանը, Արեւմուտքի՝ Միացեալ Նահանգների, Եւրամիութեան երկրների, ԵԱՀԿ-ի եւ միջազգային այլ կառոյցների ձեռքում է Հայաստանի ժողովրդավարութեան բախտը: 10 օրուայ ընթացքում այդ պետութիւնները հնարաւորութիւն ունեն անել քայլեր եւ ի դէմս Հայաստանի ունենալ օրինակ Լիտվայի նման ժողովրդավարական, արդիական, զարգացած պետութիւն, կամ ունենալ ասիական պետութիւն: «Արեւմուտքից շատ բան չի պահանջւում, պահանջւում է միայն յարգել այս ժողովրդին», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, ասելով, թէ հակառակ պարագայում Արեւմուտքն ի դէմս Հայաստանի գործ է ունենալու մի նոր Սադդամ Հուսէյնի հետ, եւ յետոյ ստիպուած է լինելու երկրում տանկերով հաստատել ժողովրդավարութիւն:

«Միջազգային կառոյցները երկընտրանքի առաջ են՝ կամ ժողովրդի ու ժողովրդավարութեան հետ են, կամ թաթար-մոնղոլական ռեժիմի: Նրանցից պահանջւում է մէկ քայլ, անել ամէն ինչ, որպէսզի անվաւեր ճանաչուի փետրուարի 19-ի ընտրութեան արդիւնքը եւ նշանակուի նոր ընտրութիւն», յայտարարում է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Սակայն, եթէ աշխարհը չարձագանքի, ապա Լեւոն Տէր-Պետրոսեանը, ինչպէս ինքն է ասում, նրանց չի մեղադրի հայ ժողովրդին, Հայաստանի համաժողովրդական շարժմանը դաւաճանելու համար, որովհետեւ եթէ Եւրոպան չարձագանքի, ապա նա կը դաւաճանի ոչ թէ հայ ժողովրդին, այլ կը դաւաճանի ժողովրդավարութեանը, ազատական արժէքներին, եւրոպական քաղաքակրթութեանը:

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔՈՒՄ ՀՆՉԵՑ ՍԻՐԱԴԵՂԵԱՆԻ ԼԵԶՈՒՆ

*Lragir.am*, 17:50

«Մանր մունդառութիւններ»: Փետրուարի 28-ին Ազատութեան Հրապարակում ունեցած ելոյթի ընթացքում իշխանութեան գործողութիւնն այդպէս է որակել առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, ասելով, թէ այդ գործողութիւնները Վանօ Սիրադեղեանի բառով է, որ որակում է «մունդառութիւն»: Լեւոն Տէր-Պետրոսեանն այդպիսին է համարել այն ձերբակալութիւնները, որ կատարւում են իր կողմնակիցների շրջանում, անհեթեթ պատճառաբանութիւններով ու ձեւակերպումներով, հանրահաւաքի մասնակիցների մեքենաները տուգանելը, քրէական գործեր յարուցելն իբրեւ թէ պետական յեղաշրջման մեղադրանքով: Այդ բոլոր քայլերը, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, ունեն մէկ նպատակ՝ թուլացնել համաժողովրդական մոբիլիզացիան, բայց որքան անում են այդպիսի քայլեր, այդքան աւելի է ժողովրդի մոբիլիզացիան ուժեղանում ու ընդլայնւում: «Ղարաբաղցու կողը, 100 տարի էլ անցնի, չի մրցի մուսալեռցու կողի հետ», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## «ԱՄՕԹ, ԱՄՕԹ, ԱՄՕԹ» (video)

*A1+*, 18:41

«Մենք պայքարելու ենք այնքան ժամանակ, մինչեւ յաղթենք», - սա էր այսօրուայ երթի կարգախօսը, որը ժամանակ առ ժամանակ յայտարարում էին երթը գլխաւորողները: Այսօրուայ երթի մայրուղին նոյնպէս տարբերւում էր նախորդ օրուայ երթերից: Այսօր «Լեւոն նախագահ», «Սերժիկ, հեռացիր», «Պայքար, պայքար մինչեւ վերջ», - վանկարկումները լսուեցին Տէրեան փողոցում, մետրոյի Երիտասարդական կայարանի շրջակայքում, Աբովեան եւ Թումանեան փողոցներում:

Երբ երթի մասնակիցները հասան ՀՀ քաղաքացիական ծառայութեան խորհրդի շէնքի եւ ԵԱՀԿ երեւանեան գրասենեակի մօտ (դրանք կողք կողքի են գտնւում - խմբ) բղաւեցին. «Ամօթ, ամօթ, ամօթ»: Փորձեցինք պարզել, թէ այդ «ամօթ»-ը ում էր հասցէագրուած, սակայն երթի մասնակցիները այդպէս էլ յստակ չտարբերակեցին. «Երկուսին էլ ամօթ», - ասաց Սերգէյ պապիկը եւ աւելացրեց. «Եթէ Եւրոպան նման ընտրութիւնները ճանաչում է, ուրեմն նրանց էլ ամօթ»:

Ինչպէս միշտ, երթի մասնակիցերին ողջունում էին նշուած փողոցի բնակիչները եւ միանում նրանց: Թէեւ երթի մասնակցողները բաւականին շատ էին, յայտարարուեց, որ երթին մասնակցում են Ազատութեան Հրապարակի մարդկանց ընդամէնը 20 տոկոսը: «Մարդկանց մեծ մասը Ազատութեան Հրապարակում շարունակում է հանրահաւաքը», - յայտարարում էին երթը գլխաւորողները: Այսօր էլ հնչեցին ծափահարութիւններ ոստիկանութեան համար, որոնք մեքենայով անցնում էին երթի առջեւով՝ կրկնելով, որ երթի մասնակիցների գործողութիւնները անօրինական են: Սակայն հէնց այն պահին մարդիկ աւելի բարձր էին բղաւում «Սերժիկ, հեռացիր»՝ խլացնելով ոստիկանի ձայնը:

Երթի մասնակիցներն արդէն հասել էին Ազատութեան Հրապարակ եւ հասցրել էին մի քանի պար պարել, երբ միւս մասնակիցները դեռ Թումանեան փողոցում դրօշակներ էին ծածանում:

## ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ ՄՏԱՀՈԳՈՒԹԻՒՆ Է ՅԱՅՏՆՈՒՄ

*Lragir.am*, 18:44

Քիչ առաջ տարածուել է հետեւեալ հաղորդագրութիւնը.

Մենք՝ քաղաքացիական հասարակութեան ներկայացուցիչ ներքոստորագրեալ կազմակերպութիւններս, մեր խորին մտահոգութիւնն ենք յայտնում 2008 թ. փետրուարի 19-ի ՀՀ նախագահական ընտրութիւնների, նախընտրական շրջանի, ընտրարշաւի եւ յետընտրական գործընթացների վերաբերեալ:

Միջազգային դիտորդների գնահատականը, որը կառավարութեան եւ վերջինիս կողմից վերահսկուող լրատուամիջոցների կողմից փորձ է արւում ներկայացնել դրական լոյսի ներքոյ, քննադատական էր: Սակայն զեկոյցի առաջին երկու նախադասութիւնների եւ գնահատականի փաստերի միջեւ առկայ այս ակնյայտ հակասութեան արդիւնքը դարձաւ այն, որ կառավարութիւնը մէջբերում է միջազգային դիտորդների գնահատականի միայն առաջին պարբերութիւնը՝ լեգիտիմիզացնելու ընտրութեան արդիւնքները: Մինչդեռ միջազգային դիտորդները զեկոյցում մատնանշել են լրատուութեան գրաքննութեան, ընտրողներին վախեցնելու, քուէներ գնելու, ինչպէս նաեւ այլ փաստեր եւ իրենց այցելած 16 տոկոս ընտրատեղամասերի քուէների հաշուարկը անուանել են «վատ» կամ «շատ վատ»: Նման պրակտիկան որպէս «մի քայլ առաջ» եւ «ազատ ու արդար ընտրութիւններ անցկացնելու պարտաւորութիւններին համահունչ» որակելը հարցականի տակ է դնում ժողովրդավարութեան, ժողովրդավարական չափանիշների եւ սկզբունքների գաղափարը եւ աւելի է նուազեցնում ժողովրդավարական բարեփոխումների չափանիշները:

Ներքոստորագրեալ կազմակերպութիւններից մի քանիսը որպէս դիտորդ են հանդէս եկել ընտրութեան օրը եւ հետեւել են ընտրական գործընթացներին մինչ փետրուարի 19-ը, ինչպէս նաեւ դրանից յետոյ ընկած ժամանակահատուածում: Այդ կազմակերպութիւնների զեկոյցներում փաստագրուած են բռնութիւնների բազմաթիւ դէպքեր եւ խախտումներ:

Մեզ համար առանձնայատուկ մտահոգութիւն են առաջացնում Լրատուամիջոցների ազատութեան, լրատուութեան մատչելիութեան, բռնութիւնների, կոռուպցիայի եւ վարչական ռեսուրսների օգտագործման եւ հասարակական գործիչների ձերբակալութեան երեւոյթները:

Կարեւոր կէտերից մէկը, որ ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ի դիտորդական առաքելութիւնը մատնանշել է իր միջանկեալ զեկոյցում, վերաբերում է ընտրական գործընթացի հանդէպ հասարակական վստահութիւն ձեւաւորելուն: Խորը անվստահութիւնը եւ յաճախ արծարծուող հասարակական ապատիան ոչ այլ ինչ է, քան Հայաստանի ժողովրդի ինքնապահպանման հակազդեցութիւնն ընդդէմ անպատժելիութեան մթնոլորտի նրանց շուրջ, որոնք ընտրակեղծիքներ են իրականացրել նախկին բոլոր ընտրութիւնների ժամանակ: Ընտրութիւններից յետոյ տեղի ունեցող գործընթացները տագնապալի են եւ անկասկած կը խորացնեն հասարակութեան անվստահութիւնը:

Մենք հաւատացած ենք, որ քանի դեռ ընտրական կեղծիքները չեն հետաքննւում եւ պատժւում, վստահութիւն չի լինի ընտրական գործընթացի, ինչպէս նաեւ դատաիրաւական համակարգի նկատմամբ:

Մենք կարծում ենք, որ վերոյիշեալ խնդիրների շուրջ միայն բաց եւ լայն զանգուած-

ներին ներառող հասարակական քննարկումների միջոցով է հնարաւոր վերականգնել հասարակական վստահութեան մթնոլորտը:

Ելնելով վերը նշուածից՝ մենք գտնում ենք, որ այս ընտրութիւնները չեն իրականացուել ժողովրդավարական արժէքների եւ գործընթացների վերաբերեալ մեր ունեցած պատկերացումներին համահունչ:

Մենք համոզուած ենք, որ այն մօտեցումը, որն իշխանութիւնները կը կիրառեն ընտրախախտումները հետաքննելիս ցոյց կը տայ վերջիններիս վճռականութիւնը՝ գործել ժողովրդավարական ազատ եւ արդար ընտրութիւններ անցկացնելու կանոնների համաձայն:

Մենք կոչ ենք անում Հայաստանի կառավարութեանը դադարեցնել քաղաքական դրդապատճառներ ունեցող ձերբակալութիւնները: Սրանք անպատժելիութեան կոչեր չեն, այլ կոչ կառավարութեանը՝ օրինակ ծառայել Հայաստանի ժողովրդի համար եւ գործել օրէնքի շրջանակներում:

Մենք կոչ ենք անում միջազգային հանրութեանը տէր կանգնել Հայաստանի կառավարութեան՝ ընթացակարգերին հետեւելու պարտականութեան կատարմանը եւ պահանջել հետաքննութեան յստակ փաստաթղթագրում եւ պատշաճ պատիժ օրէնքը խախտողների նկատմամբ:

Մենք կոչ ենք անում միջազգային հանրութեանը կատարել օբիեկտիւ եզրակացութիւններ՝ հիմնուած սեփական փաստերի դիտարկումների վրայ եւ չվարկաբեկել ժողովրդավարութեան գաղափարը, ժողովրդավարական չափանիշներն ու սկզբունքները, ինչպէս նաեւ չպատուազրկել դիտորդական առաքելութիւն իրականացնող միջազգային կազմակերպութիւնները:

Ասպարէզ ժուռնալիստների ակումբ
Խօսքի Ազատութեան Պաշտպանութեան Կոմիտէ
Հայաստանի Հելսինկեան Կոմիտէ
Հայաստանի Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակ
Ինտերնիւս մամուլի աջակցութեան ՀԿ
Մամուլի Բազմազանութեան Ինստիտուտ
Բաց Հասարակութեան Ինստիտուտի օժանդակութեան հիմնադրամ - Հայաստան
Թրանսփարենսի Ինթերնեշնլ Հակակոռուպցիոն Կենտրոն
Երեւանի Մամուլի Ակումբ

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՀԱՆԴՈՒՐԺՈՂ ԿԸ ԼԻՆԻ ՄԻՆՉԵՒ ԱՅՆ ՊԱՀԸ

*Lragir.am*, 18:54

ՀՀ կառավարութեան մամուլի ծառայութիւնը տեղեկացնում է, թէ Սերժ Սարգսեանն այսօր ընդունել է Հարաւային Կովկասի հարցերով Եւրամիութեան յատուկ ներկայացուցիչ Պիտէր Սեմնեբիին եւ նրա գլխաւորած պատուիրակութեանը, որի կազմում են Հայաստանում Եւրոպական յանձնաժողովի ներկայացուցչութեան ղեկավար Ռաուլ Լուցենբերգէրը, Եւրայանձնաժողովի պատուիրակութեան ներկայացուցիչ Սիլվի Բաւելարը, Հարաւային Կովկասի հարցերով ԵՄ յատուկ ներկայացուցչի քաղաքական խորհրդատու Անդրէյ Դիդենկոն, ինչպէս նաեւ Հայաստանում Ֆրանսիայի արտակարգ եւ լիազօր դեսպան Սերժ Սմեսովը:

ԵՄ յատուկ ներկայացուցիչը, Հայաստանում կայացած ընտրութիւնների կապակցութեամբ, շնորհաւորել է ՀՀ վարչապետին՝ ընտրութիւնները համարելով ժողովրդավարութեան ամրապնդման կարեւորագոյն գործօն: Տեղի ունեցած մրցակցային նախագահական ընտրութիւնները, ըստ Պիտէր Սեմնեբիի, ցոյց են տալիս, որ Հայաստանում, իրօք, բազմակարծութիւնը կայացել է, եւ դա ուրախալի փաստ է: Նշելով, որ Եւրամիութիւնը, կարեւորելով հայաստանեան ընտրութիւնները, հետեւել է դրանց ընթացքին եւ յետընտրական գործընթացները եւս պահելու է ուշադրութեան կենտրոնում, ԵՄ յատուկ ներկայացուցիչը տեղեկացրել է, որ անցած շաբաթուայ ընթացքում մեծ թուով հանդիպումներ է ունեցել եւ կառավարութեան, եւ ընդդիմադիր քաղաքական ուժերի ներկայացուցիչների հետ ու այդ հանդիպումներում փոխանցում է ԵՄ-ի ու նաեւ անձամբ ԵՄ ընդհանուր արտաքին քաղաքականութեան եւ անվտանգութեան հարցերով գերագոյն յանձնակատար Խաւիեր Սոլանայի ուղերձը բոլոր կողմերին՝ խուսափել դէպի բռնութիւն տանող քայլերից, գործել օրինականութեան սահմաններում եւ քաղաքական էներգիան երկրում ուղղորդել կառուցողական դիրքերի ուղղութեամբ: Այս առումով, նա չափազանց գնահատելի է համարել համագործակցութեան, հանդուրժողականութեան վերաբերեալ օրերս Սերժ Սարգսեանի կողմից արուած կոչը:

ՀՀ վարչապետը վերահաստատել է այդ պատրաստակամութիւնը՝ համագործակցել բոլոր նրանց հետ, ովքեր պատրաստ են իրենց ներուժն ի սպաս դնել մեր ժողովրդի եւ պետութեան բարեկեցութեան ու հզօրացման գործին, նշելով, որ արդէն որոշակի դրական արձագանքներ կան: Սերժ Սարգսեանը վստահեցրել է, որ իշխանութիւնները շահագրգիռ են եւ անում են ամէն ինչ, որպէսզի յետընտրական գործընթացները չվնասեն ինչպէս մեր երկրի քաղաքացիներին, այնպէս էլ պետութեան հեղինակութեանն, առհասարակ, եւ այդ նպատակով կը ձեռնարկուեն անհրաժեշտ միջոցներ. «Մենք լինելու ենք չափազանց հանդուրժողական, մինչեւ այն պահը, երբ այդ հանդուրժողականութիւնը կը փորձեն չարաշահել, եւ դա կարող է բերել վատ հետեւանքների», ասել է Սերժ Սարգսեանը, տեղեկացնում է կառավարութեան մամուլի ծառայութիւնը:

## ԱՍՈՒՄ ԵՆ՝ ՀՀԿ-ԻՑ ՈՒ ԲՀԿ-ԻՑ ԵՆ (video)

*A1+*, 19:19

Լեւոն Տէր-Պետրոսեանի տան մօտ այսօր շարունակւում էր մի խումբ անձանց նստացոյցն ընդդէմ ՀՀ առաջին նախագահի: Առանձնատան մօտ կար երկու վրան, որոնցից մէկը՝ դատարկ: Միւս վրանում նստած էին երեք կին, որոնք ծխում էին, կատակներ անում: Իսկ վրանների շուրջ շատ քիչ մարդկանց տեսանք, որոնք կամ պտտւում էին վրանների շուրջբոլորը, կամ կանգնած սպասում: Դրսում էր նաեւ ակցիայի կազմակերպիչ, կենսաթոշակառու Սոկրատ Յովսէփեանը: Յիշեցնենք, որ 1988թ. եղել է Սպիտակ քաղաքի դատախազ, այնուհետեւ աշխատել է հանրապետութեան դատախազութեան քննչական վարչութիւնում, իսկ 1996թ.-ին, երբ նախագահ էր Լեւոն Տէր-Պետրոսեանը, Արդարադատութեան Խորհրդի որոշմամբ դուրս է մնացել դատախազական համակարգից, իսկ 2,5 տարի յետոյ վերականգնուել է:

Կանանցից մէկը՝ մտածելով, թէ իրենց ակցիայի մասնակիցներից մէկն եմ, ոչ թէ լրագրող, հրաւիրեց իրենց վրան:

Կանանցից մէկը պատմեց, որ Թոխմախից է, կուսակցական ու պարծեցաւ, որ ինքն

ու միւսներն ունեն համապատասխան շարֆեր։ Որպէս ապացոյց՝ անմիջապէս բերեցին ՀՀԿ-ականների եռագոյն շարֆը՝ «Առաջ Հայաստան» կարգախօսով։ Կանայք ասացին, որ ՀՀԿ-ական են եւ հինգ օր է՝ գիշերում են Լեւոն Տէր-Պետրոսեանի առանձնատան մօտ։

Ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի ստացած քուէների ակցիայի մասնակիցները բողոքում էին, որ իրենք չունեն նաւթավառ, ուտելիքի մեծ պաշար, ինչպէս «Լեւոնի մարդիկ», որոնք ցոյց են անում ի պաշտպանութիւն Տէր-Պետրոսեանի Ազատութեան Հրապարակում։

Հետաքրքրուեցինք նրանցից, թէ ի՞նչ միտք ունի իրենց այս ակցիան, եթէ հաւաստացած են, որ իրենց թեկնածուն՝ Սերժ Սարգսեանը յաղթել է։ «Ոչ, մենք, տուն-տեղ թողել ենք, եկել ենք եւ ուզում ենք ասել, որ մեր թեկնածուն անցել է։ Մենք քիչ ենք, բայց հաւատարիմ ենք», - ասաց միւս կինը, որը կէս-լուրջ, կէս-կատակ տեղեկացրեց, որ եթէ մի քիչ էլ երկար մասնակցի այս նստացոյցին, ապա նորից կ՚ամուսնանայ։

Կանանց մի պահ սկսեց մտահոգել այն, որ ներքեւում՝ Հրազդան տօնավաճառի մօտերքում մի մեծ բազմութիւն է հաւաքուել։ «Կարո՞ղ ա Սումգայիթի համար են հաւաքւել, էսօր էտ օրն է, չէ՞», - ասաց կանանցից մէկը։ Քիչ անց սկսեցին միմեանց հանգստացնել, որ «դրանք մերոնք են՝ միտինգ են գալիս անեն ու գնան»։ Այդ նոյն կինը խումապի մատնուելով՝ ասաց. «Մտքերս թղթին գրեմ, որ չխառնուեմ իրար ելոյթ ունենալուց»։

Եւ իսկապէս՝ դէպի Լեւոն Տէր-Պետրոսեանի առանձնատուն մօտ հարիւր հոգանոց բազմութիւն էր բարձրանում՝ բաղկացած հիմնականում կանանցից։ Մօտեցանք նրանց ու հարցրինք, թէ ովքեր են ու ուր են գնում։ Կանայք պատասխանեցին, որ իրենք Հանրապետական ու Բարգաւաճ Հայաստան կուսակցութիւնների տարբեր շտաբերի անդամներ են ու եկել են իրենց ձայնին տէր կանգնելու։

Հրազդան տօնավաճառի շէնքերից մէկի բնակիչներից մեզ ասացին, որ տեսել են, թէ ինչպէս այդ մարդկանց բերել են 22LO77 համարանիշով Գազէլով, որին առաջնորդում էր 06LO567 համարանիշով սպիտակ գոյնի Գազ 2410 մակնիշի մի մեքենայ։ Ականատեսներից մէկը ճանաչել է այս մեքենան, որը, ըստ նրա՝ պատկանում է Հարկային Պետական Ծառայութեան մի աշխատակցի։ Իսկ երթի մէջ այս նոյն մարդը նոյնպէս տեսել է ՀՊԾ աշխատակիցների։

Մէկ ժամ յետոյ այս մարդիկ հեռացան՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի առանձնատան մօտ թողնելով նստացոյց անող մօտ 5 կանանց եւ մէկ տղամարդուն։

## ՎԱՀԱՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԸ ՈՂՋՈՒՆՈՒՄ Է ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՆԿԵՂԾ ԿՈՉԵՐԸ

*Lragir.am*, 19:59

ՀՅԴ Բիւրոյի անդամ Վահան Յովհաննէսեանը հանդէս է եկել յայտարարութեամբ, որում ասւում է.

«Սիրելի հայրենակիցներ,

Յետընտրական մթնոլորտը շարունակում է մնալ շիկացած, ինչը ստիպում է ինձ մէկ անգամ եւս դիմել Ձեզ, դիմել քաղաքական բոլոր ուժերի ներկայացուցիչներին։

Ստեղծուած փակուղային իրավիճակը կարող է ձեռնտու լինել ում ասես, բացի մեզանից։ Մենք ուղղակի պարտաւոր ենք լիցքաթափել մթնոլորտը, պարտաւոր ենք ելք գտնել։

Այլապէս՝ ներազգային թոյլ համակարգով, այսպէս բաժան-բաժան՝ ոչ միայն մեր երկրում առկայ խնդիրները չենք կարողանայ լուծել, այլեւ ընդունակ չենք լինի դիմակայել արտաքին մարտահրաւէրները։ Եկէք չմոռանանք, որ մենք նոյնն ենք՝ հայի նոյն տեսակը։

Առճակատումը, տրոհումը, անհանդուրժողականութիւնը խնդիրներ լուծելու ճանապարհ չեն։ Ընդհակառակը՝ ներկայ վիճակի ձգձգումը խորացնում է անվստահութիւնը, բաժանում է մեր քաղաքացիներին. արդիւնքում՝ թուլանում է երկիրը։

Ո՞րն է ելքը։

Նախ՝ ես ողջունում եմ այս օրերին հնչող՝ հանդուրժողականութեան եւ համագործակցութեան բոլոր անկեղծ կոչերը։

Երկրորդ՝ մենք ուղղակի պարտաւոր ենք բացառել հնարաւոր բախումները։ Մենք պէտք է գիտակցենք, որ հակադիր տեսակէտներ կրողները նոյն ժողովրդի մասնիկն են, եւ քաղաքական ուժերի գերխնդիրը ներքին պառակտում թոյլ չտալն է։ Անցանկալի զարգացումները կարող են կանխուել միայն բանակցութիւնների միջոցով։

Եւ ես առաջարկում եմ բանակցութիւնների այնպիսի օրակարգ, որը կարող է մեղմել լարուածութիւնը, համաձայնութեան յանգեցնել եւ երկրում ժողովրդավարացման խորքային գործընթացի նոր սկիզբ դնել։

Իմ պատկերացմամբ, առաջնահերթ երեք հարց կայ.

Առաջին՝ համախոհութեամբ ընտրական այնպիսի նոր համակարգի ձեւաւորում, որը կը բացառի բոլոր տեսակի ընտրախախտումների հնարաւորութիւնը, կտրուկ կը բարձրացնի սեփական կամքով իշխանութիւն ձեւաւորելու ժողովրդի ինքնավստահութիւնը։ Չեւերից մէկն, օրինակ, ընտրական համակարգի լիարժէք ինքնուրոյնութիւնն ու անկախութիւնն ապահովելն է։

Երկրորդ՝ երկրում իրական բազմակարծութեան, խօսքի ազատութեան պայմաններ ստեղծել։ Առաջին քայլը, օրինակ, կարող է լինել, քաղաքական ուժերի համախոհութեամբ, Հեռուստատեսութեան եւ Ռադիոյի Ազգային Յանձնաժողովի եւ Հանրային Հեռուստատեսութեան ղեկավարութեան ձեւաւորումը։

Երրորդ՝ այնպիսի պայմաններ ստեղծել, որ ընդդիմութեան համար քաղաքական համակարգում լիարժէք գործելու երաշխիքներ ապահովուեն։ Այս առումով՝ բազմաթիւ քայլերից մէկը Ազգային Ժողովի կանոնակարգում համապատասխան փոփոխութիւններ կատարելը կարող է լինել։

Ուզում եմ ընդգծել, որ այս երեք ուղղութիւններով ես եւ իմ կուսակցութիւնը կոնկրէտ եւ մանրամասն առաջարկներ ունենք, որոնք պատրաստ ենք ներկայացնել բանակցութիւնների ժամանակ։

Սիրելի բարեկամներ,

Իբրեւ քաղաքացի, իբրեւ ազգային կուսակցութեան ներկայացուցիչ՝ ես առաջարկում եմ կենտրոնանալ այս խնդիրների վրայ, ազդեցիկ քաղաքական ուժերի ընդգրկումով բանակցութիւններ սկսել՝ հրաժարուելով մաքսիմալիզմից եւ ոչ մի տեղ չտանող առճակատումից։»

## ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑ ՆՈՅԵՄԲԵՐԵԱՆՈՒՄ

*A1+*, 20:01

Փետրուարի 28-ի կէսօրից Նոյեմբերեանի Ազատութեան Հրապարակում, ոստիկա-

նութեան շէնքի դիմաց հաւաքուել էր մօտ 300 մարդ:

Սահմանամերձ Կոթի գիւղի, Նոյեմբերեան քաղաքի բնակիչները բողոքում էին Կոթիի 72-ամեայ բնակիչ Սերիոժա Սիրադեղեանի եւ Նոյեմբերեան քաղաքի 63-ամեայ բնակիչ Եուրիկ Մամեանի ձերբակալման դէմ: Կենսաթոշակառու Սերիոժա Սիրադեղեանը Վանօ Սիրադեղեանի հարազատ եղբայրն է, իսկ Նոյեմբերեանի անտառտնտեսութեան 64-ամեայ անտառապահ Եուրիկ Մամեանը՝ քրոջ ամուսինը: Փետրուարի լոյս 26-ի գիշերը, ժամը 5-ի սահմաններում Ազգային Անվտանգութեան եւ ոստիկանութեան աշխատակիցները խուզարկութիւն էին կատարել, Սերիոժա Սիրադեղեանի տանը յայտնաբերել ՏՕԶ տեսակի հրացան, իսկ Եուրիկ Մամեանի տանը՝ ինքնաձիգի փամփուշտներ: Սերիոժա Սիրադեղեանը եւ Եուրիկ Մամեանը ձերբակալուել էին եւ տեղափոխուել Երեւան՝ Ազգային Անվտանգութեան Ծառայութեան մեկուսարան:

Նոյեմբերեան քաղաքի Ազատութեան Հրապարակում հաւաքուածները բողոքում էին, որ սահմանագօտում չի ապահովւում մարդկանց ապահովութիւնը, իսկ գիւղացիներին զինաթափում են: Ադրբէջանի հետ 38 կմ սահման ունեցող Կոթիից բազմաթիւ անասուններ են առեւանգուել, 2007թ. նոյեմբերի 18-ին գիւղում գտնուել էր 72-ամեայ Յովսէփ Սարուխանեանի դին, նրա պահած ոչխարի հօտն առեւանգուել էր: Այդ սպանութիւնը դեռեւս բացայայտուած չէ: Բողոքի հանրահաւաքի մասնակիցները ստորագրեցին Ազգային Անվտանգութեան Ծառայութեան պետ Գորիկ Յակոբեանին եւ ՀՀ Գլխաւոր Դատախազ Աղուան Յովսէփեանին ուղղուած նամակի տակ, որով առաջարկւում էր Ս. Սիրադեղեանի եւ Ե. Մամեանի խափանման միջոցը փոխել, նրանց ստորագրութեամբ ազատ արձակել: Նամակի տակ ստորագրողները երաշխաւորում էին, որ գործի քննութեան ընթացքում նրանք հանրապետութիւնից չեն բացակայի: Հաւաքուածներից ոմանք կոչ էին անում փակել միջպետական ճանապարհը կամ Բագրատաշէնի մաքսակէտը: Հրապարակում էր գտնւում նաեւ ոստիկանութեան

Նոյեմբերեանի բաժնի պետ Երուանդ Չիլինգարեանը, ով մարդկանց զսպուածութեան կոչ էր անում: Նամակի օրինակներից մէկը Սերիոժա Սիրադեղեանի որդի, Կոթիի միջնակարգ դպրոցի տնօրէն Մուշեղ Սիրադեղեանը տարել է ԱԱԾ Նոյեմբերեանի բաժանմունք, սակայն բաժանմունքի պետը հրաժարուել է այն վերցնել, պատճառաբանելով, որ յարուցուած քրէական գործը արդարադատութեան նախարարութեան վարոյթում է: Ժամը 17-ն անց 30-ի դրութեամբ նամակի միւս օրինակը դատախազութիւն դեռ յանձնուած չէր, քանզի Տաւուշի մարզի դատախազի տեղակալ Սպարտակ Անտոնեանը գտնւում էր Իջեւանում: Հանրահաւաքի մասնակիցների մի մասը պատրաստւում է գիշերել Նոյեմբերեանի Ազատութեան Հրապարակում, սպասել մինչեւ փետրուարի 29-ի ժամը 15-16-ը, երբ կը լրանայ ձերբակալուածների նախնական կալանքի 72 ժամը եւ դրանից յետոյ դիմել համարժէք քայլերի:

Նոյեմբերեանի Քամուտ ՀԸ

## ԸՆՏՐԱԿԱՇԱՌՔ ՉԷ՞Ն ԲԱԺԱՆԵԼ

*A1+*, 20:06

Գիւմրի քաղաքի բնակիչ, Գիւմրիի թիւ 33/78 ընտրատեղամասում ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ Մարտին Ղարիբեանը 2008 թուականի փետրուարի 19-ին դիմում էր ներկայացրել 33/78 ընտրատեղամասի մօտակայքում

առանց պետհամարանիշի աւտոմեքենաներից ընտրակաշառք բաժանելու մասին:

Դիմումի հիման վրայ՝ ՀՀ ոստիկանութեան Շիրակի մարզի քննչական բաժնում նիւթերի նախապատրաստման ընթացքում Մ. Ղարիբեանը բացատրութիւն է տուել, որ նախագահական ընտրութիւնների ընթացքում եղել է Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձը թիւ 33/78 ընտրատեղամասում եւ նրա մորեղբօր տղան է: Քուէարկութեան օրը գտնուել է ընտրատեղամասում եւ սխալներ, խախտումներ չի յայտնաբերել, քուէաթերթիկների լցոնման դէպքեր չի արձանագրել: Մ. Ղարիբեանը փաստել է, որ նշուած ընտրատեղամասում ընտրութիւններն անցել են նորմալ, առանց խախտումների եւ որ այդպիսիք նկատելու դէպքում անպայման մատեանում նշումներ կ'անէր: Քուէարկութեան ամբողջ ընթացքում ընտրատեղամասից դուրս չի եկել եւ դիմումը գրել է դրսից լսած խօսակցութեան հիման վրայ, սակայն ինքն անձամբ չի տեսել եւ որեւէ փաստ չի կարող ներկայացնել: Մ. Ղարիբեանը յայտնել է նաեւ, որ ընտրութիւններից յետոյ հարցրել է իր հարազատներին, բարեկամներին, ընկերներին, սակայն նրանք բոլորն էլ յայտնել են, որ իրենց ոչ ոք ընտրակաշառք չի առաջարկել եւ քուէարկել են իրենց կամքով:

Բացատրութիւններ են տուել նաեւ նոյն տեղամասի յանձնաժողովի անդամներ՝ Ս. Սիմոնեանը, Զ. Աղաբաբեանը եւ միւսները, որոնք նոյնպէս ոչ մի ընտրախախտում չեն արձանագրել: Իսկ ընտրութիւնների արդիւնքների ամփոփման մասին արձանագրութիւնը ստորագրել են յանձնաժողովի բոլոր 8 անդամները:

Նախապատրաստուած նիւթերով ՀՀ ոստիկանութեան Շիրակի մարզի քննչական բաժնում 24.02.08թ. որոշում է կայացուել քրէական գործի յարուցումը մերժելու մասին:

## ԱԶԱՏ ԽՕՍԱՓՈՂ

*A1+*, 20:13

*Ցայգ* հեռուստաընկերութեան, *Շիրակ* հանրային հեռուստաընկերութեան, *Ռադիո-Հայ Գիւմրի* եւ *Շիրակ* հանրային ռադիոկայանների համատեղ նախաձեռնութեամբ, այսօր առաջին անգամ Շիրակի մարզում իրականացւում է հեռուստակամուրջ, որի ժամանակ իրազեկուելու եւ ազատ արտայայտուելու բացառիկ հնարաւորութիւն է տրւում Շիրակի մարզի բնակիչներին: Տասներկու ժամ անընդմէջ երկու հեռուստատեսութիւնների խօսափողները բաց են ցանկացած կարծիք ունեցողների համար: Առաւօտեան 9.30-ից սկսուած հեռուստակամուրջի աւարտին մնացել են հաշուած ժամեր:

Ընտրութիւններ, թէ անօրինական գործընթաց, արդեօ՞ք կարողացանք ճիշտ ընտրութիւններ կատարել, յետընտրական զարգացումներ, թէ զանգուածային օրինախախտումներ, բռնութիւննե՞ր, թէ անվտանգութեան անհրաժեշտ միջոցառումներ, հնարաւո՞ր էր խուսափել այս իրավիճակից: Սրանք են բաց խօսափողի շուրջ պտտուող հարցերը, հարցեր, որոնք շիկացրել են յետընտրական քաղաքական մթնոլորտը:

Ինչ անել, ինչպէս կողմնորոշուել, որն է ճիշտ, որը սխալ:

Չպարտադրելով կարծիք՝ հեռուստաընկերութիւնները պարզապէս հնարաւորութիւն են տուել լսել այս կամ այն կողմին, վերջիններիս վերլուծութիւնները ու փորձել յանգել ճիշտ եզրակացութեանը:

Տասներկու ժամ անընդմէջ երկու TV-ների խօսափողները բաց են ցանկացած կարծիք ունեցող գիւմրեցու համար: Ուղիղ եթերից երկու հեռուստաընկերութիւնների տարբեր կողմնորոշումներ ունեցող հիւրերը հարցեր են ուղղում միմեանց:

Ի դէպ, եթերի մեկնարկից 4 ժամ յետոյ, հեռուստաաշտարակը հոսանքազրկուեց: Բայց ոչ միտումնաւոր: Աւելին, տեղական իշխանութիւնները, ողջունելի համարելով հեռուստակամուրջը, արագ միջամտեցին եւ էլեկտրական հոսանքը վերականգնուեց:
Գիւմրի
Ցայգ իր

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔԱՅԻՆ ԴՐՈՒԱԳՆԵՐ (video)

*A1+*, 20:31

Այսօր Ազատութեան Հրապարակը լեփ-լեցուն էր ու մարդկանց հոսքը չէր դադարում ամբողջ հանրահաւաքի ընթացքում: Հանրահաւաքի ամենաթունդ պահին յանկարծ սկսեցին բարձր ազդանշանային աղմուկ անել ոստիկանութեան աւտոմեքենաները: Ու չնայած Նիկոլ Փաշինեանի՝ «ոչինչ, թող անեն» յորդորին, հանրահաւաքի բոլոր մասնակիցները միահամուռ սկսեցին վանկարկել «Լե-տոն, Լե-տոն», որից յետոյ, տեսնելով, որ չեն դադարեցնում ազդանշանները, շրջուեցին դէպի Սայեաթ-Նովա փողոցը եւ սկսեցին սուլել, ապա վանկարկել «Հի-մա»:

Մինչ այդ, Նիկոլ Փաշինեանը անդրադարձաւ երէկ Ազատութեան Հրապարակում յայտնաբերուած սադրիչների թեմային. նրանք խոստովանել են, որ ԱԱԾ աշխատողներ են եւ կատարում են ԱԱԾ պետ Գորիկ Յակոբեանի հրամանները. դրանցից մէկը «ժուչոկ կպցնելն է, միւսը ժողովրդին հրահրելը, կոտրել ռեստորանների ապակիներն ու դռները, գրաւել նախագահականն ու թաղապետարանը եւ այլն»: Նիկոլ Փաշինեանը նկատեց, որ ԱԱԾ-ն այնքան է հեռացել իր հիմնական նպատակից, որ հարեւան երկրի ԱԱԾ-ն կարողանում է մտնել ԱԳՆ-ի համակարգիչների մէջ եւ յոյժ գաղտնի տեղեկատուութիւնը ձեռք բերել, իսկ ՀՀ ԱԱԾ-ականները դարձել են ընդդիմադիր գործիչների սեղանների տակ, կօշիկների մէջ ժուչոկ կպցնող. «Գեներալի ուսադիրները դրել ես, մտել ես սեղանների ու աթոռների տակ ու ասում ես խօսքիս տէրն եմ, դուրս չեմ գալո՞ւ»: Ապա նկատեց, որ եթէ շարժման անվտանգութիւնը հսկող տղաները կարողացել են յայտնաբերել ու վնասազերծել ԱԱԾ-ական սադրիչներին, ուրեմն մի քանի անգամ աւելի պրոֆեսիանալ են, քան այսօրուայ ԱԱԾ-ականները: Ապա Նիկոլ Փաշինեանը վստահեցրեց, որ պրոֆեսիոնալներ էլ կան, ուղղակի նրանք իրենց պատուից ցածր են համարում ժուչոկ կպցնողի գործ անել:

Երիտասարդների անունից խօսեց 2004 թուականի ապրիլի 12-13-ի դէպքերի ժամանակ պլաստիկէ շշով ոստիկանի գլխին հարուածած եւ 1,5 տարուայ ազատազրկման դատապարտուած Էդգար Առաքելեանը: Նա կոչ արեց երիտասարդներին շարունակել Կարէն Դեմիրճեանի եւ Վազգէն Սարգսեանի անաւարտ թողած գործը: Նա յիշեցրեց, որ մէկ տարի առաջ, Կարէն Դեմիրճեանի 75-ամեակի օրը ապօրինի իշխանութիւնների դէմ պայքարող երիտասարդները գնացել են Պանթէոն եւ գերեզմանին երդուել: «Կատարենք մեր երդումը, շարունակենք նրանց կիսատ թողած գործը», - ասաց Էդգար Առաքելեանը:

Այսօրուայ հանրահաւաքում ելոյթ ունեցաւ նաեւ Ազգային Միաբանութեան Նաիրիի տարածքային կազմակերպութեան նախկին նախագահ Մարիետա Պետրոսեանը, ով նկատեց, որ այսօրուայ իշխանութիւնը դաստիարակուել է ապազգային միջավայրում, դաստիարակուել ալիեւական մեթոդներով: Նա յիշեցրեց ադրբէջանական ասացուածք,

որով կրթուել են այսօր իշխանութիւնը զբաղեցնող մարդիկ. «Ներքեւում եմ՝ ոտքերդ կը լիզեմ, բարձրանամ՝ գլուխդ կը կոտրեմ»: Յետոյ «ալբանացու» վերաբերեալ տեսաերիզը յիշեցնելով նկատեց, որ այն ժամանակ Քոչարեանը ներքեւում էր, եւ մի կտոր շաքարի համար, տուեալ դէպքում վարչապետի պաշտօնի, ամէն ինչի պատրաստ էր, յետոյ բարձրացաւ ու եկաւ գլուխները կոտրելու ժամանակը»:

Հանրահաւաքի ընթացքում հնչեց կոչ իսկական ՀՀԿ-ականներին: Կոչի հեղինակը Աշոտ Նաւասարդեանի հիմնադրած կուսակցութեան, Նաւասարդեանի ընկեր, եւ ՀՀԿ հիմնադիր Հայկ Գէորգեանն էր. նա կոչ էր անում իրական հանրապետականներին միանալ ժողովրդական շարժմանը:

Յետոյ յայտարարուեց երթի ուղեգիծը, հերթական յորդորն արուեց չենթարկուել որեւէ սադրանքի եւ կազմակերպուած շրջել Երեւանի փողոցներով, ու Ազատութեան Հրապարակում գտնուողների մի մասը երթի գնաց: Ի դէպ, Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, որ երէկուայ երթի ժամանակ հանդիպման է եղել ԵԱՀԿ նախագահը եւ լսելով երթի մասնակիցների ոտքերի ձայնը, չի դիմացել եւ մօտեցել է պատուհանին. տեսնելով խաղաղ երթի մասնակիցներին, զարմանքով արձանագրել է, որ եթէ իրենց երկրում 500 հոգանոց բողոքի ակցիա է լինում, անպայման ինչ-որ բաներ են կոտրւում, աւտոմեքենաներ են շուռ գալիս: Նա խիստ զարմացել է հայ ցուցարարների կարգապահութիւնից:

Մինչ երթը կը վերադառնար Ազատութեան Հրապարակ, մնացածները պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանի եւ Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանի գլխաւորութեամբ Տէրունական աղօթք ասացին, ապա սկսեցին երաժշտութիւն լսել:

## ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ՃԻՇՏ ՈՐՈՇՈՒՄ ԿԸ ԿԱՅԱՑՆԻ

*A1+*, 21:05

ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօրուայ իր ելոյթում առանձնացրեց Ռուսաստանի դիրքորոշումը. «ՌԴ-ն այսօր պետութիւնների միջազգային ընտանիքում, գերտէրութիւնների շարքում զբաղեցրել է ամենալուրջ դիրքը, ամենալուրջ: Ես գիտեմ. Ռուսաստանի ամենաբարձրագոյն իշխանութեան սեղանին հիմա դրուած է հետեւեալ ֆորմուլան, հետեւեալ դիլեման, հետեւեալ երկընտրանքը. իրենք են վերլուծել, իրենց ստրատեգիական կենտրոնների, տեղեկատուական մարմինների, անալիտիկ կենտրոնների միջոցով վերլուծել եւ հասել են հետեւեալ բանաձեւին. Ռուսաստանը կամ պիտի պաշտպանի ռեժիմին, եւ այդ դէպքում ստանալու է ողջ հայ ժողովրդի հակակրանքը, որը նրանց համար շատ կարեւոր գործօն է, (որովհետեւ Հայաստանը աւանդաբար եղել է ՌԴ-ի դաշնակիցը, առնուազն արժանապատիւ գործընկերը եւ չի հակադրուել Ռուսաստանի շահերին), կամ կանգնել ժողովրդի կողքին, պաշտպանել մեր ժողովրդական շարժումը եւ դէմս Հայաստանի ունենալ լուրջ արժանապատիւ, ստրատեգիական գործընկեր»:

«Ռուսաստանը ունի փորձ Ուկրաինայի եւ Վրաստանի ընտրութիւնների հարցում, որոնք տեղի են ունեցել վերջերս, Ռուսաստանն այսօր շատ լուրջ, պետական քաղաքականութիւն իրականացնող եւ արդէն միջազգային կոնտեքստով մտածող պետութիւն է եւ շատ լաւ է հասկանում, թէ ինչ է կատարւում այստեղ, եւ ես վստահ եմ, որ Ռուսաստանը ճիշտ որոշում կը կայացնի, առանց կասկածի որեւէ նշոյլի», - ասաց առաջին նախագահը:

## ՀՐԱՊԱՐԱԿ ԵՆ ԳԱԼԻՍ ՆԱԵՒ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ (video)

*A1+*, 21:15

Երթից յետոյ Ազատութեան Հրապարակում այս պահին շարունակւում է հանրահաւաքը:

Քիչ առաջ Նիկոլ Փաշինեանը հարթակից կոչ արեց հանրահաւաքի մասնակիցներին չստորագրել ոստիկանութեան ներկայացրած որեւէ ծանուցագիր, որում նշուած լինի, որ նրանք կատարել են օրէնքի որեւէ խախտում: Նա նորից զգուշացրեց, որ շատ պրովոկացիաներ են լինում, ուստի պէտք է լինել շատ ուշադիր եւ զգոյշ:

Հարթակից ելոյթ ունեցաւ բանաստեղծ Արտաշէս Ղազարեանը: Նա որակեց նախագահական վերջին ընտրութիւնները խայտառակութիւն: Նա կոչ արեց իր բոլոր մտաւորական ընկերներին եւ գրչակիցներին, որ եթէ նրանք իսկապէս մտաւորական են, ապա իրենց տեղը այսօր Ազատութեան Հրապարակում է ժողովրդի հետ, այլապէս վաղը նրանց ստեղծագործութիւնները ոչ մի արժէք չեն ունենայ:

Ազատութիւն կուսակցութեան նախագահ Հրանտ Բագրատեանը նշեց, որ կազմակերպիչները ստանում են բազմաթիւ նամակներ աշխարհի տարբեր ծայրերից, որտեղ նամակների հեղինակները յայտնում են իրենց աջակցութիւնը հայ ժողովրդին եւ կոչ են անում ժողովրդին պաշտպանել իրենց ձայները:

Հարթակից ելոյթ ունեցաւ նաեւ ֆրանսիահայ ազատամարտիկ Սարգիս Հացպանեանը, որը ասաց, որ նա հարցազրոյց է տուել մի շարք միջազգային լրատուամիջոցների՝ տեղեկացնելով, որ հայ ժողովուրդը ուզում է ժողովրդավարական ընտրութիւններ եւ դրանց արդիւնքում ընտրուած նախագահ: Նա նաեւ նշեց, որ շարունակելու է տեղեկացնել միջազգային լրատուամիջոցներին Ազատութեան Հրապարակում եւ Հայաստանում կատարուող իրադարձութիւնների մասին:

Ի դէպ, այսօր սովորոյթի համաձայն՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի թոռները մանկապարտէզից յետոյ միացել էին պապիկին Ազատութեան Հրապարակի հարթակում եւ պահանջում են նրանից իրենց հետ պարել: Այսօր առաջին նախագահի թոռները բերել էին իրենց հետ աղաւնիներ, որոնց օդ բաց թողեցին հարթակից: Հանրահաւաքին այսօր անմիջապէս դպրոցից յետոյ միացել էր մօտ տասներկու տարեկան մի աղջնակ: Նա հրապարակում կորցրել էր իր դպրոցական պայուսակը եւ ջութակը: Հարթակից դրա մասին յայտարարելուց յետոյ աղջկայ իրերը գտնուեցին, իսկ հանրահաւաքի կազմակերպիչները շնորհակալութիւն յայտնեցին աղջնակին, որը ի տարբերութիւն մեծերի, համարձակութիւն ունի եւ միանում է իրենց պայքարին:

## ԳԱՂՏՆԱԼՍՈՒՄ ԵՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ 10 ՏԱՐԵԿԱՆ ԹՈՌՆԻԿԻ ՀԵՌԱԽՕՍԸ

*A1+*, 22:11

Ազատութեան Հրապարակում այսօրուայ իր ելոյթի ընթացքում Լեւոն Տէր-Պետրոսեանը անդրադարձաւ իշխանութիւնների վարքագծին, որը բացատրեց ուղղակի ցայտոնտային տրամադրութիւններով: Նա յայտարարեց, որ քրէական գործ է յարուցուած՝ «Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած պետական յեղաշրջում» անունով, եւ բոլոր խուզարկութիւնները, որ կատարւում են, յղում է արւում այդ գործին. «Գնում են Սերիոժա Սիրադեղեանի տուն, երկու փամփուշտ են գտնում, կողքն էլ դնում են Տէր-Պետրոսեանի

ընտրանին, փամփուշտները դնում են ընտրանու վրայ, նկարում, արդէն պարզ է Սերոժ Սիրադեղեանի տունը Լեւոն Տէր-Պետրոսեանի պետական յեղաշրջման կարեւորագոյն շտաբներից մէկն է դառնում: Մի ուրիշ գիւղում կօշկակարի մի մախաթ են գտնում, յետոյ իմ ելոյթների գրքոյկներից մի երկուսը դնում են, նկարում, որ այնպիսի ծանրագոյն փաստ է, որ եւրոպական ցանկացած դատարանում սա կը համարուի ոչ միայն պետական յեղաշրջման, այլ համաշխարհային յեղաշրջման մի փորձ: Ահա այսպիսի մեթոդներով նրանք ընդամէնը մի խնդիր են լուծում. նրանք սարսափում են մեր մոբիլիզացիայից, օր-օրի ահագնացող շարժումից, եւ նման գործողութիւններով, ուղղակի փորձում են վախեցնել մարդկանց»:

Այսօր Ազատութեան Հրապարակին յարող ամբողջ տարածքում կանգնած էին պե-տաւտոտեսչութեան աւտոմեքենաները, որոնք արգելում էին այդտեղ կայանել, իսկ արդէն կանգնած աւտոմեքենաներից հանել էին պետհամարանիշները: «Կարծես Երեւանում պետաւտոտեսչութիւնը ուրիշ գործ չունի, ոչ ոք քաղաքի երթեւեկութիւնը չի խանգարում, այս մարդիկ են խափանում ամէն ինչ: Չկայ այս երկրում ուրիշ գործ, խեղճ մարդիկ՝ գնդապետները, բարձրաստիճան ոստիկանները, մեզ հետ չեն քնում, իսկ չքնող ոստի-կանն ինչպէ՞ս պէտք է պայքարի գողերի, յանցագործների, աւազակների դէմ», - իր ելոյ-թում անդրադարձաւ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

«Ինչո՞ւ է յանցագործութիւնը այսքան ծաղկած Հայաստանում, ճակատամարտեր են տեղի ունենում ՏԷՑ-ի կրուգում, Մերգելեանի մօտ, Կոմիտասի շուկայի մօտ, ճակատա-մարտեր. հազարաւոր փամփուշտներ են պարպւում, ոստիկան չկայ, հետապնդում չկայ, դատախազութիւն չկայ, հարեւան հանրապետութիւնը թափանցում է գերգաղտնի մեր ԱԳՆ, դուրս քաղում ամբողջ ինֆորմացիան, իսկ այդ մարդը (Գորիկ Յակոբեան-խմբ) զբաղուած է ժուչոկներ դնելով, արդէն 10 տարի իմ հեռախօսները լսելով, թոռիս 10-ամեակի կապակցութեամբ հեռախօս եմ նուիրել, արդէն թոռիս հեռախօսն է գիշեր ցերեկ Գորիկը լսում. սա մի խայտառակութիւն է: Այս բոլոր կառոյցները Ռոբերտ Քոչարեանին ծառայող գործիքներն են. Ռոբերտ Քոչարեանին այսօր եթէ պէտք լինի, նա կը դատարկի ադրբէջանադարաբաղեան սահմանն էլ, բանակը կը բերի, որ իր հարցերը լուծի, - ասաց առաջին նախագահն ու աւելացրեց, - Թող հասկանայ, ղարաբաղցու կողը հազար տարի էլ անցնի չի կարող մրցել մուսալեռցու կողի հետ, եւ մեր ճանապարհը շատ յստակ է, մենք մեր անելիքը շատ լաւ գիտենք, միջազգային հանրութեանն էլ բացատրեցինք. եթէ միջազգային հանրութիւնը չարձագանքի, արեւմուտքը չարձագանքի, ես չեմ մեղադրի Եւրոպային: Մենք նրանց չեն մեղադրի, որ մեզ դաւաճանել են, որովհետեւ այդ դէպքում Եւրոպան կը դաւաճանի իրեն, կը դաւաճանի իր դաւանած սկզբունքներին, Եւրոպան կը դաւաճանի դեմոկրատիային, իրաւական պետութեանը, Եւրոպան կը դաւաճանի Վոլտէ-րին, Դիդրոյին, Բեթհովէնին, Գէօթէին, եւրոպական, արեւմտեան, համաշխարհային քաղաքակրթութեանը»:

Ի դէպ, այսօր Սումգայիթի տարելիցն էր եւ Ազատութեան Հրապարակը 1 րոպէ քար լռութեամբ յարգեց զոհուածների յիշատակը:

## ՆՈՅՆ ՊԱՏԿԵՐԸ (video)

*A1+*, 22:20

Ազատութեան Հրապարակում այսօր աւելի շատ մարդ կայ, քան երէկ երեկոյեան:

Երաժշտութիւնը կը հնչի մինչեւ կէսգիշեր: Իսկ առայժմ ներկաները պարում են: Լեւոն Տէր-Պետրոսեանը այս պահին հրապարակում է: Այսօր նա առաւել շփւում է հրապարակում ներկայ երեխաների հետ:

Ի դէպ, երեխաներն այսօր «գրաւել են» հարթակը եւ, ի տարբերութիւն նախորդ օրերի՝ ընդդիմութեան առաջնորդների փոխարէն իրենք են հարթակում պարում:

## ԲԵՐՄԱՆ ԵՆ ԵՆԹԱՐԿԵԼ «ՉԱՐՏՕՆՈՒԱԾ» ՀԱՆՐԱՀԱՒԱՔԸ ԼՈՒՍԱԲԱՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*A1+,* 23:26

Այսօր առաւօտեան ոստիկանութեան Աւանի բաժին բերման են ենթարկուել Հանրապետութիւն կուսակցութեան քաղխորհրդի անդամ Լիովա Եղիազարեանը եւ նրա որդին՝ *Հայք* օրաթերթի թղթակից Արտակ Եղիազարեանը: Ոստիկանութիւնը նրանց մեղադրում է «չարտօնուած» հանրահաւաքներին պարբերաբար մասնակցելու համար: Արտակ Եղիազարեանից ուղիղ երկու ժամ է պահանջուել ոստիկաններին բացատրելու համար, որ ինքը լրագրող է եւ իրաւունք ունի գտնուելու ցանկացած վայրում եւ լուսաբանելու իրադարձութիւնները՝ իր մասնագիտական գործունէութեան շրջանակներում:

Իսկ Լիովա Եղիազարեանին մեղադրանք է առաջադրուել Վարչական իրաւախախտումների վերաբերեալ օրէնսգրքի 180 յօդուածի 1-ին մասով: Լիովա Եղիազարեանը իր բացատրագրի մէջ գրել է, որ հրաժարւում է բացատրութիւն տալ, քանի որ իր նկատմամբ շարունակւում է քաղաքական հետապնդումը:

Գործն, այնուամենայնիւ, յարուցուել է եւ ուղարկուել դատարան: Լրագրողների նկատմամբ «չարտօնուած» հանրահաւաք լուսաբանելու համար բարեբախտաբար գործ չի յարուցուել:

Ի դէպ, այսօր Ազատութեան Հրապարակում Նիկոլ Փաշինեանը, նկատելով, որ վերջերս մամուլում էլ է հնչում իշխանութիւնների կողմից նետուած «չարտօնուած հանրահաւաք» բառակապակցութիւնը, մէջբերեց քաղաքացի Մեսրոպ Յարութիւնեանի դիտարկումն այն մասին, որ ՀՀ իշխանութիւնները հաւանաբար տեղեակ չեն, որ ՀՀ ոչ մի օրէնսգրքում գոյութիւն չունի արտօնուած կամ չարտօնուած հանրահաւաք հասկացութիւնները: Աւելին, արգելւում է բռնի ուժով կամ ստիպելով մարդկանց տանել հանրահաւաքի, ինչը պարբերաբար անում է Սերժ Սարգսեանը: «Չնայած, որ ճիշտ ասեմ, դէմ չեմ լինի, որ մի հատ էլ հանրահաւաք կազմակերպեն ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի», - ասաց Նիկոլ Փաշինեանը՝ ակնարկելով այն փաստը, որ հազարաւոր մարդիկ, որ ցանկութիւն ունէին միանալ Ազատութեան Հրապարակի շարժմանը, զրկուած էին մայրաքաղաք հասնելու հնարաւորութիւնից, եւ Սերժ Սարգսեանի շնորհիւ հասան իրենց ուզածին:

## 29 ՓԵՏՐՈՒԱՐ 2008

### ՆՈՅԵՄԲԵՐԵԱՆՈՒՄ ԲՈՂՈՔԻ ԱԿՑԻԱՆ ՇԱՐՈՒՆԱԿՒՈՒՄ Է

*A1+*, 02:02

Այս պահին Նոյեմբերեանի Ազատութեան Հրապարակում դեռ շարունակւում է բողոքի ակցիան: Մի խումբ մարդիկ ի նշան բողոքի շարունակում են հաւաքուած մնալ հրապարակում: Բողոքի ակցիան սկսուել էր դեռ առաւօտեան: Յիշեցնենք, որ սահմանամերձ Կոթի գիւղի, Նոյեմբերեան քաղաքի բնակիչները բողոքում էին Կոթիի 72-ամեայ բնակիչ Սերիոժա Սիրադեղեանի եւ Նոյեմբերեան քաղաքի 63-ամեայ բնակիչ Եուրիկ Մամեանի ձերբակալման դէմ:

Մարդիկ մտադիր են գիշերել Նոյեմբերեանի Ազատութեան Հրապարակում, սպասել մինչեւ փետրուարի 29-ի ժամը 15-16-ը, երբ կը լրանայ ձերբակալուածների նախնական կալանքի 72 ժամը եւ դրանից յետոյ դիմել համարժէք քայլերի:

### ԴԷ ՄՆԱԼԸ ՀԻՄԱ ԴՈՒ ՏԵՍ

*Lragir.am*, 09:54

Երէկ, փետրուարի 28-ին, Հիւսիսային Պողոտայի Նորդ Բիզնէս համալիրի տանիքից հանուել է Սերժ Սարգսեանի լուսանկարով քարոզչական պաստառը: Այդ հանգամանքը ուշագրաւ է նրանով, որ դրանից ընդամէնը մէկ օր առաջ Լեւոն Տէր-Պետրոսեանը Ազատութեան Հրապարակում յայտարարել էր, որ Սերժ Սարգսեանը պէտք է հեռանայ, բայց նկարը պէտք է թողնել, որպէսզի երիտասարդ մայրերը ունենան իրենց երեխաներին վախեցնելու «բօբօ»: Երեւի թէ ի հեճուկս Լեւոն Տէր-Պետրոսեանի այդ ցանկութեան, կայացուել է Սերժ Սարգսեանի լուսանկարով պաստառը հանելու քաղաքական որոշում, որն էլ արագ ի կատար է ածուել:

### ՄԵՐ ՄԱՆՐՈՒԹԵԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՆ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

*Lragir.am*, 10:02

Կօալիցիոն կառավարութեան մասին առաջարկը, ներքաղաքական գրեթէ բոլոր դէպքերում, ինչ խօսք գովելի է, այն իմաստով, որ դա նպաստում է հասարակական երկխօսութեանը եւ կանխում, կամ յաղթահարում է քաղաքացիական անհամաձայնութիւնները: Այդ իմաստով, նախագահի բոլոր թեկնածուների հետ կօալիցիա կազմելու Սերժ Սարգսեանի առաջարկը կարող էր լինել ողջունելի, եթէ իր մէջ իրականում չպարունակէր այն վտանգը, որից թւում է, թէ քաղաքական դաշտը նախագահի ընտրութիւնից յետոյ ազատուել էր վերջնականապէս:

Մինչեւ այդ վտանգի մասին խօսելը, նախ արժէ նկատել, որ այդուամենայնիւ, տուեալ պարագայում Հայաստանի ներքաղաքական իրավիճակն իր մէջ քաղաքացիական անհամաձայնութիւն չի պարունակում, ինչի մասին վկայեց այն զանգուածային արտահոսքը, որ տեղի ունեցաւ Սերժ Սարգսեանի համար կազմակերպուած հանրահաւաքից դէպի Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաք: Դա վկայեց, որ քաղաքացիների միջեւ անհամաձայնութիւն կարծես թէ չկայ: Իշխանութիւնն իհարկէ փորձեց ի պաշտպանութիւն Սերժ Սարգսեանի հանրահաւաքների միջոցով ստեղծել ներքաղաքացիական անհամաձայ-

նութեան տպաւորութիւն, որպէսզի յետոյ էլ իր վրայ վերցնի այդ անհամաձայնութիւնը յաղթահարելու դափնին, սակայն այդ փորձը շատ արագ ձախողեցին հէնց իրենք քաղաքացիները, Երեւանում միանալով իրար: Եւ դրանից յետոյ կոալիցիայի առաջարկը փաստացի դառնում է իմաստազուրկ, որովհետեւ ակնյայտ է, որ անհամաձայնութիւնն այս դէպքում խիստ կոնկրէտ է: Այն առկայ է քաղաքացիների ու իշխանութեան միջեւ:

Այս դէպքում, գործակցութեան վերացական, ընդհանրական առաջարկը ոչինչ է, ու առաւելապէս դառնում է ձեւականութիւն, որն անգամ չունի տպաւորութիւն թողնելու էներգետիկա: Այլ կը լինէր իրավիճակը, եթէ Սերժ Սարգսեանը խիստ կոնկրէտ առաջարկ անէր Լեւոն Տէր-Պետրոսեանին, դէպի ուր որ գնացին իր հանրահաւաքին «բերման» ենթարկուած քաղաքացիները:

Այժմ ուղղակի անհնար է չհամաձայնել, որ Լեւոն Տէր-Պետրոսեանն իրապէս գլխաւորում է մի ժողովրդական շարժում, որն արդէն ութ օր շարունակ աշխոյժ, բայց խաղաղ պահելը վեր է Հայաստանի որեւէ այլ քաղաքական գործչի ուժից: Դա գուցէ թուայ կատեգորիկ գնահատական, բայց քաղաքական ուժերն իրենք են ապացուցել, որ բացի ակնթարթային բռնկումներից, որեւէ գործընթաց նախաձեռնելու ունակութիւն չունեն: Այլ է խնդիրը, թէ արդեօք Լեւոն Տէր-Պետրոսեանն ինչպէս կ'արձագանքէր Սերժ Սարգսեանի առաջարկին: Գուցէ լսելու ցանկութիւն անգամ չունենար: Բայց բոլոր դէպքերում, գոնէ այդ կոնկրէտ առաջարկի պարագայում պարզ կը լինէր, որ Սերժ Սարգսեանն իրապէս ունի անհամաձայնութիւնը եւ լարուածութիւնը հանգուցալուծելու ցանկութիւն: Մինչդեռ, կոալիցիոն առաջարկի շեշտը կարծես թէ դրւում է նրանց վրայ, ովքեր նախագահի ընտրութեանը հաւաքել են 0 ամբողջ որոշակի տասնորդական տոկոսներ:

Թւում էր, որ խորհրդարանի ընտրութեան գործընթացից յետոյ այդ ուժերին ցոյց տալով իրենց իրական տեղն արեւի տակ, նախագահի ընտրութեան գործընթացով պէտք է կնիք խփուէր այդ տեղի վրայ: Նախագահի ընտրութեան արդիւնքը կարծես թէ վկայեց, որ զրօ ամբողջականների վրայ կնիքն իսկապէս դրուեց, եւ քաղաքացիներն այլեւս ձերբազատուեցին նրանցից, իսկ քաղաքական դաշտն էլ որոշակիօրէն մաքրուեց յաւերժական թեկնածուներից, ժողգործիքներից, կցորդներից ու մնացորդներից: Եթէ այդ մարդիկ յետոյ էլի որոշեն առաջադրուել Հայաստանի նախագահի թեկնածու, ինչն անկասկած այդպէս էլ կը լինի, ապա նրանց առաջադրման մասին արդէն հանրութիւնը չպէտք է իմանար էլ, այլ պէտք է տեղեակ լինէին միայն նրանց ընկերները, հարազատները, բարեկամները եւ գուցէ առաւելագոյնը ծանօթները՝ մի 5-10 հազար մարդ:

Աւելին, ընտրութիւնների այն «որակը», որ «ապահովեց» իշխանութիւնը փետրուարի 19-ին, երեւի թէ ունէր մի «նրբացուցիչ դէպք յանցանաց»: Դա հէնց այն էր, որ զրօ ամբողջները ստացան իրենց գնահատականը: Բայց ահա նոյնիսկ իր արած այդ մի դրականը իշխանութիւնը հիմա ցանկանում է վերացնել, զրօ ամբողջներին ներգրաւելով ինչ որ գործընթացի մէջ, որի անունը դրուելու է կոալիցիոն համաձայնութիւն: Այսինքն, նրանք նորից բերւում են հրապարակ: Ցիրաւի, սովորոյթը ամենամեծ բռնակալն է: Երբ վարժւում ես ամէն դրական բան չէզոքացնելուն, չես խնայում նաեւ քո արած դրականը:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ. ԻՆՉ ՉԻ ՈՒԶՈՒՄ ՏԵՍՆԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 10:40

Հայաստանի պաշտօնական քարոզչութիւնը Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող իրադարձութիւնների վերաբերեալ ունի հետեւեալ տեսակէտը՝ Լեւոն Տէր-Պետրոսեանն իր թիմի հետ ձգտում է ռեւանշի, իսկ հրապարակում հաւաքուածներն էլ մոլորեալներ են: Դիմելով ահա այս «մոլորեալներին», Ռոբերտ Քոչարեանն ասում է, թէ «դա ձեր խաղը չէ»: Ըստ այդմ, կոչ անում ցրուել, հեռանալ հրապարակից, այլոց ձեռքին խաղալիք չդառնալու համար:

Ահա այստեղ է իշխանական քարոզչութեան ամենամեծ բացթողումներից մէկը: Բանն այն է, որ կամ չհասկացան, կամ թերեւս իրենց համար ամենաանցանկալին էր իրողութիւնը, որ այդ մարդիկ, այդ տասնեակ հազարաւոր մարդիկ Լեւոնի համար չէ, որ հաւաքուել են Ազատութեան Հրապարակում: Մարդիկ հաւաքուել են այս տարիներին իրենց վիրաւորուած արժանապատուութիւնը վերականգնելու, իրենց իրաւունքները պաշտպանելու, իրենց նուաստացումը յաղթահարելու համար: Եւ, թերեւս ամենակարեւորը՝ այս տարիների իրենց յարմարուողականութեան, կատարուող յանցագործութիւնների հանդէպ անտարբերութեան մեղքը քաւելու համար: Զուր չէ, որ Ազատութեան Հրապարակը համեմատում են նաեւ Քաւարանի հետ: Ահա սա է, թերեւս, որ ամենաանցանկալին է իշխանութեան համար՝ Հայաստանի քաղաքացու աստիճանական ազատագրումը ստրկամտութիւնից, վախից, համատարած պարտադրուող անբարոյականութիւնից: Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանի տեղում կարող էր լինել մէկ ուրիշը, ցանկացած ոք, ով կարող էր հասկանալ այս խնդիրը եւ նպաստեր դրան: Զուր չէ, որ առաջին նախագահը չի երկնչում մեր հասարակութեանը համակած ողջ անբարոյականութիւնը ցուցանելուց, եւ չի երկնչում դա ասել մարդկանց երեսին: Իսկ մարդիկ հասկանում են: Նրանք միշտ էլ հիանալի հասկացել են ամէն ինչ, պարզապէս այժմ դա դառնում է որակ:

Ճիշտ էր ասում Տէր-Պետրոսեանը՝ այս վերջին մի քանի ամիսների շարժման արդիւնքը նոր որակի՝ քաղաքացիական գիտակցութեան հասարակութեան կայացումն է: Դրա ցուցանիշն են այն զրոները, որոնք ընտրութեանը ֆիքսուեցին Հայաստանի իշխանութեան ձեռնասուն քաղաքական առեւտրականների անունների դիմաց: Դրա ցուցանիշն է այն, որ փողոցներում քրէական բանդաների հետեւորդ դարձող պատանիները գնում են Ազատութեան Հրապարակ, լսում ելոյթները եւ վերափոխւում որպէս մարդ: Դրա ցուցանիշն է այն, որ այսօր խիստ դրական իմաստով սեւ-սպիտակի իրավիճակ է, ընտրութիւն սեւի ու սպիտակի միջեւ, երբ միջնորդութեան, երկխօսութեան եւ նմանատիպ կոչերն այլեւս կաւատութեան պէս մի բան են: Որովհետեւ չկայ բեւեռների պայքար, այլ մի կողմում կայ հասարակութիւն, ժողովուրդ, իսկ միւսում իշխանութեան խմբաւորումն է՝ իր յայտնի բաղկացուցիչներով: Ցանկացած հանրութիւն պէտք է կարողանայ ժամանակ առ ժամանակ ստեղծել այդպիսի սեւ-սպիտակ վիճակ՝ լճացումից եւ բարոյալքումից խուսափելու համար: Այս շարժումը տուեց հասարակութեանն այդ հնարաւորութիւնը: Եւ էլի շատ բաներ, որոնք ակնյայտ կը դառնան ժամանակի հետ:

## ԽՈՒԶԱՐԿՈՒՄ ԵՆ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԻ ՏՈՒՆԸ

*A1+*, 12:06

Այս պահին խուզարկութիւն է ընթանում ԱԺ պատգամաւոր Յակոբ Յակոբեանի տանը: Յայտնում է Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը:

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԸ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԵՏ Է

*A1+*, 13:23

Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ, նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանն այս պահին համագործակցութեան յուշագիր է ստորագրում Սերժ Սարգսեանի հետ: Նրան առաջարկուել է ՀՀ անվտանգութեան խորհրդի քարտուղարի պաշտօնը, որն էլ Արթուր Բաղդասարեանն ընդունել է: Այդ մասին *A1+*-ին ասաց ՕԵԿ մամուլի քարտուղար Սուսաննա Աբրահամեանը: Յայտարարութիւն կը տարածուի աւելի ուշ: Յիշեցնենք, որ երկու օր առաջ Սերժ Սարգսեանը ԱԺ-ում յայտարարել էր, որ կան ընդդիմադիր թեկնածուներ, որոնք համաձայնել են իր հետ համագործակցելու առաջարկին:

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻՆ ԱՌԱՋԱՐԿԵԼ Է ԱԽ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ ՊԱՇՏՕՆ

*Lragir.am*, 13:28

Հայաստանի վարչապետ Սերժ Սարգսեանը Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանին առաջարկել է զբաղեցնել ՀՀ նախագահին առընթեր Անվտանգութեան Խորհրդի քարտուղարի պաշտօնը: Այդ մասին այսօր կառավարութիւնում Սերժ Սարգսեանը եւ Արթուր Բաղդասարեանը ստորագրել են յուշագիր: Սերժ Սարգսեանն ասել է, թէ յոյս ունենն ՀՅԴ հետ նոյնպէս հասնել պայմանաւորուածութիւնների: Իր հերթին, Արթուր Բաղդասարեանն ասել է, թէ այդ համաձայնութեանն ինքը գնում է յանուն երկրի շահի:

## ՄԱՐԴՈՒ ԻՐԱՒՈՒՆՔԻ ՊԱՇՏՊԱՆԸ ԴԻՄԵԼ Է ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 13:34

2008թ. փետրուարի 28-ին ՀՀ ԱԺ պատգամաւորներ Զարուհի Փոստանջեանն ու Ստիոպա Սաֆարեանը, հասարակական կազմակերպութիւնների ներկայացուցիչներ Սեդա Մելիքեանն ու Լալա Ասլիկեանը ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանին հասցէագրուած յանցագործութեան մասին հաղորդմամբ յայտնել են, որ 2008թ. փետրուարի 27-ին ՀՀ ոստիկանութեան Երեւան քաղաքի վարչութեան Կենտրոնական բաժնի հերթապահ մասում նրանց նկատմամբ կատարուել են բռնութիւններ, Զ. Փոստանջեանին քարշ տալով գցել են գետնին, խլել են *Ազատութիւն* ռադիոկայանի լրագրողի միկրոֆոնը, դրսեւորել անյարգալից վերաբերմունք ինչպէս ԱԺ պատգամաւորների, այնպէս էլ իրաւապաշտպան հասարակական կազմակերպութիւնների ներկայացուցիչների նկատմամբ:

Բացի այդ, ըստ դիմումատուների, ԱԺ պատգամաւոր Ս. Սաֆարեանը ցանկացել է այս ամէնի մասին, յայտարարութիւն ներկայացնել ՀՀ ոստիկանութեան Կենտրոնական բաժնին, սակայն բաժնի հերթապահ մասում հրաժարուել են այն ընդունել:

Ելնելով «Մարդու Իրաւունքների պաշտպանի մասին» ՀՀ օրէնքի 12-րդ յօդուածի 1-ին

մասի 4-րդ կէտով պաշտպանին վերապահուած լիազօրութիւններից Արմէն Յարութիւնեանը դիմել է ՀՀ Ոստիկանութեան Երեւան քաղաքի վարչութեան պետին առաջարկելով ստուգել դիմումում նշուած փաստերը եւ դրանց վերաբերեալ տալ իր պարզաբանումները հնարաւորինս սեղմ ժամկէտներում: Այս տեղեկատուութիւնը տարածել է ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի բաժինը:

## ԱՊԱԳԱՅ ԿՕԱԼԻՑԻՈՆԵՐԸ ԿԱՐԴՈՒՄ Է ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ

*Lragir.am*, 14:04

Նախագահի նախկին թեկնածու, Ազգային Համաձայնութիւն կուսակցութեան նախագահ Արամ Յարութիւնեանը փետրուարի 29-ին Փաստարկ ակումբում անակնկալ է մատուցել հայ հասարակութեանը: Նա իր մամուլի ասուլիսը սկսել է ընթերցելով Լեւոն Տէր-Պետրոսեանի ելոյթների ժողովածուի մի հատուած: Իհարկէ, Արամ Յարութիւնեանն ընտրել է 1997 թուականին ՀՀՇ 9-րդ համագումարի ելոյթի այն հատուածը, ուր Լեւոն Տէր-Պետրոսեանը խօսում է իշխանութեան ու ընդդիմութեան պայքարի մասին, ասելով, որ ընդդիմութիւնը տուրք է տալիս ամբոխավարութեանը, կեղծիքին, իշխանութիւնը պառակտելու փորձ է անում, սակայն այդ ամէնը նորմալ է, ամէն ինչ տեղի է ունենում ինչպէս ժողովրդավարական երկրներում, ուր ընդդիմութիւնը փորձում է իր գործը անել, իսկ իշխանութիւնն էլ շարունակում է իր գործը: Արամ Յարութիւնեանն այդպիսով փորձել է Լեւոն Տէր-Պետրոսեանի 11-ամեայ վաղեմութեան խօսքով գնահատել Հայաստանի ներկայիս իրավիճակը, ասելով, որ մեկնաբանութիւններն այստեղ աւելորդ են:

Ինչ վերաբերում է յետընտրական զարգացումներում իր տեղին, ապա Արամ Յարութիւնեանը ողջունում է կօալիցիա կազմելու մասին Սերժ Սարգսեանի առաջարկը եւ ասում, որ իրենք քննարկել են այն ու համաձայն են դրա շուրջ բանակցութիւն վարելու եւ յետագայ քայլերը քննարկելու:

Հարցին, թէ նախագահի ընտրութեանն իր ստացած մէկ տոկոսից էլ պակաս քուէով Արամ Յարութիւնեանն ինչ ծաւալ է ակնկալում կօալիցիոն կառավարութեան մէջ, նախագահի արդէն նախկին թեկնածուն պատասխանել է, թէ իրականում իրենց ներուժը շատ աւելին է, քան ստացած քուէն: Արամ Յարութիւնեանն այդ կապակցութեամբ մի ուշագրաւ բան է ասել, նշելով, որ ընտրարշաւի կէսից ինքն անում էր այնպէս, որ ամէն պատահած մարդ նախագահ չդառնայ: Արամ Յարութիւնեանը նկատի ունի Լեւոն Տէր-Պետրոսեանին, ասելով, որ իր ընտրողները հասկացել են, որ ինքն ամէն ինչ անում է հնի վերադարձ թոյլ չտալու համար եւ մարդիկ հասկանալով դա, շատ դէպքերում իրեն ձայն տալու փոխարէն ձայն են տուել Սերժ Սարգսեանին: Ըստ Արամ Յարութիւնեանի, հնի վերադարձը կանխելու համար Սերժ Սարգսեանին են գնացել ոչ միայն իր պոտենցիալ ընտրողների, այլ նաեւ Վազգէն Մանուկեանի, ՀՅԴ պոտենցիալ ձայները: Իսկ հարցին, թէ արդեօք դա նշանակում է, որ եթէ չլինէր հնի վերադարձի վտանգ, ապա Սերժ Սարգսեանը ձայն չէր հաւաքի, Արամ Յարութիւնեանը պատասխանում է, թէ ինքն այդպիսի բան չի ասել, եւ ընդհանրապէս այսօր դժուար է ասել, թէ ով ինչքան վարկանիշ ունի եւ ինքը այդ իսկ պատճառով էլ միշտ առաջարկել է քուէարկութեան բալային համակարգ: Բալայինի դէպքում իմ շանսերը աւելի մեծ կը լինէին, ասում է նախագահի

ընտրութեանը վերջին տեղը գրաւած թեկնածուն:

## ԱՐՄԱՆ ՄԵԼԻՔԵԱՆԸ ՁԱՆԳԱՀԱՐԵԼՈՒ Է ԵՐԿՈՒՍԻՆ ԷԼ

*Lragir.am*, 14:16

Ընտրութեանը պէտք է յաղթի ոչ թէ այս կամ այն թիմը, այլ ամբողջ հանրութիւնը, փետրուարի 29-ին Տեսակէտ ակումբում տրամաբանել է նախագահի թեկնածու Արման Մելիքեանը, ասելով, թէ այդ տեսանկիւնից ակնյայտ է, որ Հայաստանի նախագահի ընտրութիւնից յետոյ պահպանւում է ճգնաժամը, չնայած երկխօսութեան մասին Սերժ Սարգսեանի հնչեցրած կոչին: Այդ կոչը Արման Մելիքեանը համարում է առաջ գնալու կարեւոր քայլ, բայց ոչ լուծում, որովհետեւ Լեւոն Տէր-Պետրոսեանը դրան երբեք չի միանայ, քանի որ դա սխալ կ'ընկալուի նրան սատարող քաղաքացիների շրջանում:

Սակայն իրավիճակը, ըստ Արման Մելիքեանի, մռայլ չէ: Նա նոյնիսկ կարծում է, որ քաղաքական առաջընթացի առումով իրավիճակը առաւել քան բարենպաստ է: Արման Մելիքեանը նշում է, որ անառողջ է, երբ բոլոր քաղաքական ուժերը մշտապէս համախմբւում են միայն իշխանութեան շուրջ: Մելիքեանը համարում է, որ ժամանակն է, որպէսզի Հանրապետական Կուսակցութիւնը ձերբազատուի իր շուրջը համախմբուած քաղաքական տարատեսակ տզրուկ կուսակցութիւններից, այդ թւում եւ մարդ-կուսակցութիւններից, ու լիարժէք ստանձնի երկրի կառավարման պատասխանատուութիւնը:

Արման Մելիքեանի խօսքով, Հայաստանին անհրաժեշտ է նաեւ հզօր ու գործուն ընդդիմութիւն, եւ այդ ընդդիմութեան առաջացման նախադրեալ նա տեսնում է Լեւոն Տէր-Պետրոսեանի թեւում: Արման Մելիքեանն ասում է, որ կօալիցիոն կառավարման այն տարբերակը որ կայ, դա չաշխատող է եւ իրավիճակից առաջ գնալու նոր ուղիներ են պէտք: Այդ տեսանկիւնից ներկայիս իրավիճակն Արման Մելիքեանը համարում է բարենպաստ: Նա կարծում է, որ յաջող ընթացքի դէպքում կ'ունենանք երկու հզօր քաղաքական ուժ, որոնք առաջ կը տանեն երկիրը: Արման Մելիքեանը համարում է, որ լաւ կը լինի, եթէ Լեւոն Տէր-Պետրոսեանի շուրջ համախմբուած ուժերը ձեւաւորեն հզօր, արեւմտեան արժէքների կրող, լիբերալ ընդդիմութիւն:

Արման Մելիքեանն ասում է, որ ինքը հանդիպման առաջարկ է անում թէ Լեւոն Տէր-Պետրոսեանին, թէ Սերժ Սարգսեանին: Այդ առաջարկն արուելու է ուղղակի հեռախօսազանգերի միջոցով: Մելիքեանը ասում է նաեւ, թէ դա միջնորդութեան փորձ չէ, այլ ունի ուղղակի նրանց դիրքորոշումները ճշգրտելու նպատակ:

Իսկ առկայ ճգնաժամի անկիւնաքարը հանդիսացող ընտրութեան կեղծիքների առումով Արման Մելիքեանն ասում է, որ Հայաստանի օրինականութեան մակարդակը թոյլ չի տալիս կարծել, թէ խնդիրը կարող է գտնել օրէնքի, իրաւունքի դաշտում գտնուող լուծում: Նախագահի նախկին թեկնածուն կարծում է, որ լուծումը քաղաքական է, եւ այդ քաղաքական լուծումը պէտք է լինի թափանցիկ գործընթացի միջոցով:

## ԴՈՒԽԸ ԿԱՆԱՆՑ ԾԵԾԵԼՈՒ ՄԷ՞Ջ Է

*A1+*, 14:17

Երէկ գիշեր ժամը 1-ի սահմաններում Նալբանդեան-Թումանեան փողոցների խաչմերուկում երկու ոստիկաններ ծեծել են Սիսիանից եկած եւ Ազատութեան Հրապարակում հանրահաւաքի մասնակից բանաստեղծուհի ու ժողովրդական արտիստ Անահիտ

Դանիէլեանին:

«Դուխը քեզ հելէ ուտում ա, էս ժամին փողոցում ես, հիմի վախ էլ չունէք ու աւել պակաս խօսելով, հայհոյելով հարուածեց դէմքիս, երբ փորձեցի դէմքս պահել, նրանք ատրճանակի պոչով հարուածեցին գլխիս՝ ամենավերջին հայհոյանքներով», - լացակումած պատմում է տիկին Անահիտը, որի ձեռքերը կապտուկներով են պատուած: Նա ձեռքերով է փորձել է պաշտպանուել:

Տիկին Անահիտին, սակայն, ցաւացրել է ոչ թէ հարուածը, այլ թէ ինչպէս կարելի է իջնել այն մակարդակին, որ հարուածեն հայ կնոջը եւ յետոյ հայհոյանքներ տեղան:

«Նրանց բարոյական կանայք, բարոյական դէմքեր պէտք չեն, նրանց ընդամէնը պէտք են փողոցային աղջիկներ», - ասաց նա:

«Ես յաղթողի իրաւունքով մինչեւ վերջին օրը կը մնամ այս հրապարակում եւ ընտրած նախագահին կը նստեցնեմ գահին, դա է իմ որոշումը, թէկուզ կորցնեմ ամէն ինչ», - ասում է Անահիտ Դանիէլեանը:

Բանաստեղծուհին ասում է, որ հրապարակում գտել է իր տաս տարուայ կորցրած ազատութիւնը. «Ես կը յարգեմ այն նախագահին, որը իմ ժողովրդի քուէն է ստացել»:

Անահիտ Դանիէլեանը ոստիկանութիւն չի դիմել՝ համոզուած լինելով, որ դա արդիւնք չի տայ. «Այն ոստիկանութեանը դիմեմ, որը ինձ հարուածո՞ւմ ու հայհոյո՞ւմ է»:

## ԱՀԱ ԹԷ ԻՆՉ Է ՍՏՈՐԱԳՐԵԼ ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԸ

*A1+*, 14:20

Այսօր ՀՀ կառավարութիւնում ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանն ընդունել է ՀՀ նախագահի թեկնածու, Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանին: Հանդիպումից յետոյ նրանք ստորագրել են Քաղաքական Համագործակցութեան համաձայնագիր, այնուհետեւ ստորագրման արարողութեանը ներկայ լրատուամիջոցների ներկայացուցիչներին ներկայացրել համաձայնագրի շրջանակներում նախատեսուող համագործակցութիւնը:

**Քաղաքական համագործակցութեան համաձայնագիր**

2008թ. փետրուարի 19-ին կայացած ՀՀ նախագահի ընտրութիւնները փուլային նշանակութիւն ունեն մեր երկրի համար

- կարեւորելով Հայաստանի Հանրապետութիւնում քաղաքական համակարգի զարգացման եւ արդիականացման, երկրի առջեւ ծառացած ներքին եւ արտաքին մարտահրաւէրները յաղթահարելու, կոռուպցիայի եւ ստուերային տնտեսութեան դէմ պայքարի, երկրում անվտանգութեան համակարգի ամրապնդման ու զարգացման հրամայականները, - միջազգային հանրութեանն առաւել ինտենսիւ կերպով ինտեգրուելու, տնտեսութեան ազատ եւ մրցակցային զարգացման, հասարակական առողջ յարաբերութիւնների եւ դէպի զարգացում տանող քաղաքական գործընթացների անհրաժեշտութիւնը, - ժողովրդավարական սկզբունքների հիման վրայ արդիւնաւէտ գործող քաղաքական ինստիտուտների ձեւաւորման, առողջ մրցակցային ու գործընկերային յարաբերութիւնների մշակոյթի արմատաւորման անհրաժեշտութիւնը, հիմք ընդունելով ՀՀ նախագահի 2008 թուականի փետրուարի 19-ի ընտրութիւնների արդիւնքները, նկատի ունենալով, որ ՀՀ նորընտիր նախագահ Սերժ Սարգսեանի եւ ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանի՝ նախագահական ընտրութիւններում ստացած հանրային վստահու-

թեան քուէն համագումարով գերազանցում է աւելի քան 1.100.000 ձայնը, որը կազմում է քուէարկութեանը մասնակից քաղաքացիների շուրջ 70%-ը, - ողջունելով եւ համաձայնութիւն արտայայտելով ՀՀ նորընտիր նախագահ, ՀՀԿ նախագահ Սերժ Սարգսեանի առաջարկութիւնն ուղղուած ՀՀ նախագահի թեկնածու, ՕԵԿ նախագահ Արթուր Բաղդասարեանին՝ համագործակցելու պետութեան ռազմավարական ղեկավարման համակարգում, եւ ստանձնելու ՀՀ Անվտանգութեան Խորհրդի քարտուղարի պարտականութիւնները, ՀՀ նորընտիր նախագահ Սերժ Սարգսեանը եւ ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեանը կնքում են քաղաքական գործակցութեան համաձայնագիր կօալիցիոն կառավարութիւն կազմաւորելու ձեւաչափով՝ այլ համագործակից ուժերի հետ միասին ի նպաստ երկրի եւ ժողովրդի զարգացման եւ անվտանգութեան:

ՀՀ նորընտիր նախագահ Սերժ Սարգսեան

ՀՀ նախագահի թեկնածու Արթուր Բաղդասարեան

## ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԸ ԲԱՑԱՅԱՅՏԵ՞Ց, ԹԷ՞ ԲԱՑԱՅԱՅՏՈՒԵՑ

*A1+*, 15:07

Արթուր Բաղդասարեանի ղեկավարած Օրինաց Երկիր կուսակցութեանը Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան եւ Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան հետ միասին կը կազմի կօալիցիոն կառավարութիւն, իսկ Արթուր Բաղդասարեանը կը ղեկավարի Հայաստանի Հանրապետութեան նախագահին կից Անվտանգութեան Խորհրդի քարտուղարի պաշտօնը:

«Անվտանգութեան խորհրդի քարտուղարի պաշտօնը բարձր պաշտօն է՝ մեր հանրապետութեան երրորդ-չորրորդ պաշտօնը, եւ այստեղ նոյնիսկ կարեւոր չէ պաշտօնի մեծ լինելը: Ես վստահ եմ, որովհետեւ այդ մասին խօսել ենք պարոն Բաղդասարեանի հետ, կարեւորն այն է, որ այդ պաշտօնը հնարաւորութիւն է տալիս տիրապետելու ողջ ինֆորմացիային, հնարաւորութիւն է տալիս գործուն մասնակցութիւն ունենալ բոլոր բնագաւառներում տեղի ունեցող գործընթացներին, - ասել է այսօր Սերժ Սարգսեանը, - Կարծում եմ, որ լաւ է նաեւ այն առումով, որ հնարաւորութիւն կ'ունենանք մեր երկրում, երեւի առաջին անգամ, ձեւաւորելու Անվտանգութեան Խորհուրդ՝ իր ապարատով, ողջ լիազօրութիւններով, ինչը, անշուշտ, շատ դրական ազդեցութիւն կ'ունենայ մեր պետական, հասարակական, քաղաքական կեանքում»:

Արթուր Բաղդասարեանը, որը դժգոհում էր ՀՀ նախագահի ընտրութիւններից եւ չէր բացառում ՍԴ դիմելը՝ դրանք անվաւեր ճանաչելու պահանջով, այսօր լրագրողներին յայտնել է, որ իր համար կարեւոր բացայայտում է արել. «Մեր բանակցութիւնների ընթացքում ինձ համար շատ կարեւոր մի բացայայտում եղաւ, որ կայ լուրջ պատրաստակամութիւն, կայ վճռականութիւն նորընտիր նախագահի կողմից՝ համադրելու նաեւ մեր նախընտրական ծրագրերը, կայ ցանկութիւն, իրօք, երկրում իրականացնել մեծ դրական փոփոխութիւններ»:

«Ուզում եմ ասել, որ մեր քաղաքական որոշումը, մեր թիմի՝ փաստարկուած է, այն ամբողջութեամբ 100 տոկոս հաւանութեան է արժանացել մեր երկու ղեկավար կառոյցների կողմից, մեր քաղաքական խորհրդի կողմից, վարչութեան կողմից եւ մենք սեղմում ենք մեզ մեկնած ձեռքն արժանապատուօրէն, որովհետեւ մենք գտնում ենք, որ այս համագործակցութեան արդիւնքում շահելու է մեր հայրենիքը, մեր երկիրը: Մենք վստահ

ենք, որ ազնիւ հայրենանպաստ գործակցութիւն ենք սկսում՝ ի նպաստ մեր երկրի զարգացման եւ մեր ժողովրդի բարեկեցութեան», - նշել է Արթուր Բաղդասարեանը, որը Սերժ Սարգսեանին շնորհակալութիւն է յայտնել Անվտանգութեան Խորհրդի քարտուղարի պաշտօնը ղեկավարելու առաջարկի համար:

«Ես զգում եմ իմ չափով իմ պատասխանատուութիւնը իմ օգտին քուէարկած 300 հազար քաղաքացիների նկատմամբ եւ պարտաւոր եմ իմ գործունէութեամբ կարողանալ նաեւ այնպէս անել, որ ժողովուրդը տեսնի մեր այս համատեղ որոշումը, դաշինքը, եթէ կ'ուզէք ասել ուղղուած Հայաստանի հզօրացմանը եւ զարգացմանը՝ փաստարկուած է, հիմնաւորուած է բոլոր ուղղութիւններով եւ նպաստելու է մեր երկրի զարգացմանը», - ասել է Արթուր Բաղդասարեանը, սակայն ոչինչ չասելով այն մասին, որ իրեն քուէ տուած քաղաքացիներն իրեն ուզում էին տեսնել երկրի նախագահ՝ իբրեւ Սերժ Սարգսեանի մրցակից, ոչ թէ վերջինիս հետ կօալիցիա կազմող ուժ:

Յիշեցնենք, որ Արթուր Բաղդասարեանը, որը ԱԺ նախագահ էր, 2006թ դուրս էր եկել կօալիցիայից:

Ի դէպ, ՕԵԿ-ի հետ կօալիցիա կազմելը, ըստ Սերժ Սարգսեանի, սա չի նշանակում, որ Դաշնակցութիւնը չի մասնակցելու այդ կօալիցիային:

«Եւ քանի որ գիտէք առաջարկութիւնների, յայտարարութիւնների շարքը, ես կարծում եմ, որ պաշտօնապէս Դաշնակցութիւնից էլ կը ստանանք պատասխան, այն ժամանակ շատ հնարաւոր է, եւ ես շատ ուրախ կը լինեմ, որ կօալիցիան լինի քառակողմ», - աւելացրել է Սերժ Սարգսեանը:

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԵՒ ԿԱԼԱՆՔՆԵՐԻ ՊԱՏԿԵՐԸ

*Lragir.am*, 15:27

Յետընտրական շրջանում սկսուած շարժմանը զուգահեռ, Հայաստանում սկսուել են ձերբակալութիւններ, կալանքներ, եղել են մարդկանց տեղի-անտեղի ոստիկանութիւն տանելու դէպքեր: Հանրապետութիւն կուսակցութիւնից ստացուած տեղեկութիւնների համաձայն, փետրուարի 28-ի դրութեամբ պատկերը հետեւեալն է:

Այս բոլոր քաղաքացիները կամ ընդդիմադիր կուսակցութիւնների անդամներ են, կամ նրանց հարազատներ, բարեկամներ, ընկերներ:

Արամ Կարապետեան, Նոր Ժամանակներ կուսակցութեան նախագահ, կալանաւորուած է սուտ մատնութիւն մեղադրանքով:

Պետրոս Մակէյեան, Ժողովրդական Հայրենիք կուսակցութեան նախագահ, կալանաւորուած է ընտրական յանձնաժողովի աշխատանքը խոչընդոտելու համար:

Սմբատ Այվազեան, Հանրապետութիւն կուսակցութեան անդամ, կալանաւորուած է ապօրինի զէնք զինամթերք պահելու համար:

Գագիկ Ջհանգիրեան, կալանաւորուած է ապօրինի կերպով զէնք, զինամթերք, պայթուցիկ նիւթեր պահելու, իրացնելու կամ կրելու եւ իշխանութեան ներկայացուցչի նկատմամբ բռնութիւն գործադրելու համար:

Գառնիկ Մարգարեան, Հայրենիք ու Պատիւ կուսակցութեան նախագահ մօտ 20 ժամ պահուել է ոստիկանութիւնում առանց որեւէ պատճառի:

Սուրէն Սուրէնեանց, կալանաւորուել է «Հանրահաւաքներ, երթեր, ցոյցեր կազմակերպելու մասին» օրէնքը խախտելու համար:

Վարդան Կիրակոսեան եւ Արտակ Միսակեան, երկու օր պահուել են ոստիկանութիւնում, յետոյ ազատ արձակուել, հիմա պարբերաբար կանչւում են ոստիկանութիւն:
Աշոտ Զաքարեան, տարել են ոստիկանութիւն, մի քանի ժամ պահել, բաց թողել:
Արսէն Սարգսեան, տարել են ոստիկանութիւն, մի քանի ժամ պահել, բաց թողել:
Վահան Յարութիւնեան, տարել են ոստիկանութիւն, մի քանի ժամ պահել, բաց թողել:
Արտակ Սարգսեան, տարել են ոստիկանութիւն, մի քանի ժամ պահել, բաց թողել:
Գուրգէն Եղիազարեան, տարել են ոստիկանութիւն, մի քանի ժամ պահել, բաց թողել:
Յուսիկ Բաղդասարեան, կալանաւորուել է:
Սերիոժա Միրաղեղեան, կալանաւորուել է:
Եուրիկ Մամեան, կալանաւորուել է:
www.hra.am

## ՈՉԻՆՉ ՉԵՆ ԳՏԵԼ

*A1+*, 15:45

Ժամը 13:30-ի սահմաններում ԱԺ պատգամաւոր Յակոբ Յակոբեանի տան դռները փակ էին, իսկ փողոցում խումբ-խումբ կանգնած մարդկանց կարելի էր հանդիպել: Ժամը 13:30-ի սահմաններում պատգամաւորի տանը խուզարկութիւնն արդէն աւարտուել էր: Դրսում հաւաքուած մարդիկ միայն յայտնեցին, թէ քանից աւելի մարդիկ են եկել, խուզարկել են տունը ու հեռացել:

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբից տեղեկացրեցին, որ խուզարկութիւնը տեւել է մի քանի ժամ: Յայտնաբերուել է 4 միաւոր զէնք, որոնք, սակայն, եղել են օրինական է, որից յետոյ խուզարկողները հեռացել են:

Նշենք, որ ԱԺ պատգամաւոր Յակոբ Յակոբեանը հրապարակաւ յայտարարել է, որ սատարում է առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանին:

## ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՈՒ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐԻ ՈՒՂԵՐՁԸ

*Lragir.am*, 15:49

Փետրուարի 29-ին Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնում տեղի է ունեցել Հայ Առաքելական Եկեղեցու թեմակալ առաջնորդների եւ եպիսկոպոսների ժողով: Մտահոգութիւն յայտնելով Հայաստանում յետընտրական զարգացումների հետեւանքով ստեղծուած ներքաղաքական իրավիճակի առիթով Հայ Եկեղեցու առաջնորդներն ուղերձով դիմեցին ժողովրդին, յայտնում են Մայր Աթոռի տեղեկատուական համակարգից: Ուղերձում ասւում է.

«Սիրելի բարեպաշտ ժողովուրդ,

Խորապէս մտահոգ եւ անհանգստացած ենք նախագահական ընտրութիւններից յետոյ մեր երկրի ներքաղաքական լարուած իրավիճակով:

Յուզումների ալիքները անհանդուրժողութեան եւ մեր ժողովրդի զաւակների միջեւ առճակատման սերմեր են պարունակում իրենց մէջ: Ստեղծուած իրավիճակը յղի է երկրի ներքին խաղաղութեանն ու կայունութեանը, մեր պետութեան վարկին սպառնացող վտանգներով:

Անկախութեան ճանապարհին մեր ժողովուրդը բազմաթիւ դժուարութիւններ ու խոչընդոտներ է յաղթահարել` յոյսով ու հաւատով աւելի զօրացող տեսնելու իր երկիրը

եւ ոչ՝ բաժանումներից, բախումներից ու ցնցումներից տարուբերուող ու անհաստատ: Պառակտեալ ժողովուրդը դատապարտուած է ձախողման իր իղձերի իրականացման մէջ, առաջընթաց ու զարգացած երկիր եւ հզօր պետականութիւն հաստատելու իր ձգտումների մէջ, ինչպէս մեր տէրը՝ Քրիստոսն է ասում. «Ինքն իր մէջ բաժանուած ամէն թագաւորութիւն աւերւում է» (Մատթ. ԺԲ .25):

Սիրելի հաւատաւոր հայորդիք,

Մեր յորդորն է ձեզ պահպանել ողջամտութեան ու խոհեմութեան ոգին, լինել զգօն, օրինապահ, անարձագանք թողնել ատելութիւն եւ թշնամանք հրահրող ամէն ձայն, իւրաքանչիւր քայլ կատարել մեր երկրի հեղինակութեան, մեր ներկայի եւ ապագայի հանդէպ լուրջ մտահոգութեամբ:

Կոչ ենք բերում ընդդիմութեան ներկայացուցիչներին, ովքեր չեն ընդունում ընտրութիւնների արդիւնքները, գործել օրէնքի շրջանակներում, որպէսզի անխաթար մնայ մեր երկրի կայունութիւնը, չվտանգուեն մեր ժողովրդի ձեռքբերումները եւ կեանքի անդորրը: Հանրահաւաքներն ու երթերը բարւօք ճանապարհը չեն վիճարկելու կայացած ընտրութիւնների վերջնական արդիւնքները:

Հայրենի իշխանութեանը կոչ ենք անում առաւելագոյն ջանքեր բերել խաղաղ գործընթացներով լուծման առաջնորդելու յուզող հարցերն ու մարտահրաւէրները: Աղօթում ենք առ Ամենակարողն Աստուած, որ Իր բարի հայեացքի ներքոյ անխռով պահի մեր երկիրը, անսասան՝ Առաքելական մեր Սուրբ Եկեղեցին եւ խաղաղութեան մէջ՝ աշխարհասփիւռ մեր ժողովրդին:

Շնորհք, սէր եւ խաղաղութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եղիցին ընդ ձեզ եւ ընդ ամենեսեան. ամէն»:

## ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐԻ ՄԷՋ ՄԱՐԴԿԱՅԻՆՆ Է ԱՐԹՆԱՆՈՒՄ

*Lragir.am*, 16:10

Ազատութեան Հրապարակում մեկնարկել է հերթական բազմամարդ հանրահաւաքը: Ելոյթ ունենալով հանրահաւաքին, Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի անդամ Լեւոն Զուրաբեանը տեղեկացրել է, որ ԵԱՀԿ ամերիկեան դիւանագէտները զարմացած են, թէ ինչպէս է հնարաւոր այսքան զանգուածներ հաւաքել եւ անցկացնել խաղաղ, կարգապահ հանրահաւաքներ:

Իր հերթին, Նիկոլ Փաշինեանն ասել է, որ ամերիկացիները չգիտեն, որ հրապարակում ոչ թէ զանգուած է հաւաքուել, այլ անհատներ, քաղաքացիներ, օրինապահ քաղաքացիներ: Նիկոլ Փաշինեանն անդրադարձել է Հայաստանի Ոստիկանութեան պետ Հայկ Յարութիւնեանի հրաժարականի մասին տարածուած խօսակցութիւններին, որոնց վերաբերեալ մամուլն այսօր պարզաբանումներ է տուել: Ըստ այդ պարզաբանումների, բողոքի ցոյցերի առաջին օրը Ռոբերտ Քոչարեանը հրահանգել է Հայկ Յարութիւնեանին ցրել հանրահաւաքները, եւ Հայկ Յարութիւնեանը պահանջել է գրաւոր հրաման: Քոչարեանը չի տուել գրաւոր հրաման, եւ ոստիկանապետն էլ հրաժարուել է կատարել բանաւոր հրամանը: Հանրահաւաքն այս խօսքի վրայ ծափահարել է Հայկ Յարութիւնեանին:

Նիկոլ Փաշինեանը յայտարարել է նաեւ, որ Ազատութեան Հրապարակը դառնում է մաքրագործման տեղ, երբ նոյնիսկ ամենավատ պաշտօնեաների մէջ արթնանում են նուիրական զգացմունքներ:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ ՊԱՏՌՈՒԵՑ ՕԵԿ ԱՆԴԱՄԱՏՈՄՍ

*Lragir.am*, 16:13

Այսօր Ազատութեան Հրապարակում ընթացող հանրահաւաքում Նիկոլ Փաշինեանը պատռել է ՕԵԿ մի անդամի կուսակցական անդամատոմսը, որ վերջինս փոխանցել էր հարթակ:

## ԱՅԴՊԷՍ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆ ՉԻ ԿԱՅԱՆՈՒՄ

*Lragir.am,* 16:17

Մենք անհանգստացած ենք իշխանական մարմինների կողմից իրականացուող ամենաթողութեան համար եւ դիմում ենք ՀՀ գործող նախագահին պահանջով՝ սանձել իրաւապահ մարմինների անօրինական գործողութիւնները, ինչպէս նաեւ դադարեցնել ՀՀ հասարակութեան ինֆորմացիոն ապակողմնորոշումը եւ թշնամական մթնոլորտի ձեւաւորումը:

Մենք համարում ենք, որ ՀՀ քաղաքացիներին ստիպողաբար տանելը իշխանութեան կողմից կազմակերպուող միջոցառումներին ոչ միայն մարդու իրաւունքների կոպիտ խախտում է, այլեւ մարդկային արժանապատուութեան ոտնահարում: Նման մեթոդները կարող են հիմք հանդիսանալ երկրում հնարաւոր բռնատիրական կարգերի հաստատման համար:

Անհանգստութեան տեղիք է տալիս նաեւ գործող նախագահի վերջնագրի տեսք ունեցող հրապարակային այն ելոյթները, որոնք աւելի են թէժացնում մթնոլորտը եւ խրախուսում իրաւապահ մարմինների անօրինական գործողութիւնները: Մենք համարում ենք, որ զանգուածային ձերբակալութիւնները, խուզարկութիւնները, որոնց ժամանակ անտեսւում են ՀՀ օրէնքները եւ մարդու իրաւունքները, չեն նպաստում երկրում քաղաքական երկխօսութեան մթնոլորտի ձեւաւորմանը: Մենք դեռեւս յոյս ունենք, որ Ռ. Քոչարեանը կը կատարի սահմանադրական պարտականութիւնները իր բարձր դիրքը լքող նախագահին վայել կերպով:

Համագործակցութիւն Յանուն Ժողովրդավարութեան Կենտրոն

## ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆՈՒՄ ՉԵ՞Ն ՏԻՐԱՊԵՏՈՒՄ ԻՐԱՎԻՃԱԿԻՆ

*Հետք*, 16:19

ՀՀ Ոստիկանութեան պաշտօնական կայքէջում տեղադրուած է մի հաղորդագրութիւն, որը մէջբերում ենք նոյնութեամբ.

«Ի պատասխան Մեդիամաքս լրատուական գործակալութեան հարցման՝ յայտնում ենք, որ Ազատութեան Հրապարակում Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ նրա համախոհների հրաւիրած հանրահաւաքին փետրուարի 27-ին մասնակցել է 8 հազար, փետրուարի 28-ին՝ 7 հազար, փետրուարի 29-ին՝ 6.200-ից 6300 մարդ: Նշուած հանրահաւաքները Երեւանի քաղաքապետարանի կողմից արտօնուած չեն եղել»:

Այս հաղորդագրութիւնից յետոյ որեւէ մէկը կարո՞ղ է հաւատալ ՀՀ ոստիկանութեան հաղորդագրութիւններին: Ո՞ւմ է հասցէագրուած այս ակնյայտ ոչ ճիշտ տեղեկատւութիւնը. երեւանցիներն ամէն օր տեսնում են տասնեակ հազարաւոր մարդկանց երթերը Երեւանի փողոցներում, օտարերկրեայ հեռուստաընկերութիւնները ցոյց են տալիս

Ազատութեան Հրապարակի հարիւր հազարաւոր ցուցարարների հէնց հաղորդագրութեան մէջ նշուած օրերին: Իսկ իրենք իրենց խաբում են: Եթէ իրենք հաւատում են այդ թուերին, ինչո՞ւ է ոստիկանական ողջ անձնակազմը հաւաքուել քաղաքի կենտրոնում:

## ՉԵՆ ՃԱՆԱՉՈՒՄ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

*A1+*, 16:44

«Ընտրութիւններն անցել են ժողովրդավարական ազատ եւ թափանցիկ սկզբունքների կոպիտ ոտնահարմամբ, իսկ ընտրախախտումների թիւն այնքան մեծ է, որ թոյլ չի տալիս ճանաչել ընտրութիւնների արդիւնքները: Մենք չենք ճանաչում փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնների արդիւնքները», - այսօր յայտարարեց Գիւմրիի Ասպարէզ ժուռնալիստների միութեան խորհրդի նախագահ Լեւոն Բարսեղեանը:

Արդիւնքները չեն ճանաչում նաեւ Տրանսփարենսի-Ինթերնեյշնլ-Հայաստան կազմակերպութեան նախագահ Ամալեա Կոստանեանը, ՀՔՆ Վանաձորի գրասենեակի ղեկավար Արթուր Սաքունցը (որը թէեւ ներկայ չէր-խմբ), Խօսքի Ազատութեան Պաշտպանութեան Կոմիտէի նախագահ Աշոտ Մելիքեանը, Հայաստանի Հելսինկեան Կոմիտէի նախագահ Աւետիք Իշխանեանը: Վերջինս յայտարարեց, որ չի ճանաչում 1995 թուականից տեղի ունեցող բոլոր ընտրութիւնների արդիւնքները: Մինչ այս եզրակացութիւնը սակայն հասարակական կազմակերպութիւնների ղեկավարները ներկայացրին ընտրութիւնների վերաբերեալ իրենց դիտարկումները: Նախ ներկայացուեց *Գալա* հեռուստաընկերութեան տեսանկարահանած նիւթերը ընտրակաշառքի բաժանելու դէպքերի մասին, ապա Լեւոն Բարսեղեանը ցուցադրեց լուսանկարներ, որոնք արուել էր իրենց ակումբի կողմից ընտրութիւններին նախորդած եւ քուէարկութեան օրը:

Լուսանկարներում Սերժ Սարգսեանի նախընտրական շտաբերն էին, իսկ առջեւում իսկայական հերթեր: Իսկ տեսանիւթում մարդիկ մտնում էին այդ շտաբերը, տալիս անձնագիրը, ստանում 5 հազար դրամ ներսում, եւ դուրս գալիս: Լեւոն Բարսեղեանը տեղեկացրեց, որ *Գալա* եւ *Յայզ* հեռուստաընկերութիւնները ժամը մէկ ներկայացրել են բոլոր փաստերը, ընտրակաշառքի բաժանման մասին նկարահանուած նիւթերը, միայն ընտրութիւնների օրը 250 ահազանգ է ստացուել, սակայն դատախազութիւնը չի արձագանքել: Միայն ընտրութիւնների օրը դատախազութիւնից քննիչը պահանջել է հեռուստատեսութիւնից տեսանիւթերը, նրան տեղեկացրել են, որ ծանրաբեռնուածութեան պատճառով հնարաւոր չէ այդ օրը, եւ խնդրել են նիւթերի յետեւից այցելել յաջորդ օրը: Մինչ օրս դատախազութիւնը չի տարել այդ նիւթերը:

«Գիւմրին վերածուել էր ընտրական տօնավաճառի», - ասաց Աւետիք Իշխանեանը, եւ աւելացրեց, որ փող էին վերցնում բոլորը, ոչ միայն կարիքաւորներն, կամ անինտելեկտ մարդիկ, այլ բոլորը. «ես նրանց մէջ տեսայ բոլորիս, ինձ տեսայ», - ասաց Իշխանեանը: Նաեւ նկատեց, որ ընտրակաշառքի բաժանման դէպքերը տեսանելի են եղել միայն դրսում, իսկ տեղամասերում, որտեղ դիտորդական առաքելութիւն են իրականացրել տարբեր միջազգային կառոյցների ներկայացուցիչներ, ընտրախախտումները մեծամասամբ տեսանելի չեն եղել: Հէնց դրանով բացատրեց Աւետիք Իշխանեանը դիտորդների բաւականին մեղմ, դրական նախնական գնահատականը:

Տրանսփարենսի Ինթերնեյշնլ-Հայաստան կազմակերպութեան նախագահ Ամալեա Կոստանեանը նկատեց, որ անկատար է օրէնսդրութիւնը, յստակ սահմանում չկայ, թէ

որն է քարոզչութիւն համարում, եւ նաեւ դրա հետ են կապուած կոռուպցիայի դէպքերը: Կոստանեանը ընդգծեց նաեւ, որ երկու թեկնածու իրենց հաշուարկներով քարոզարշաւի համար օգտագործել են աւելի շատ գումար նախընտրական հիմնադրամից, քան սահմանուած է օրէնքով. դա Սերժ Սարգսեանն ու Վահան Յովհաննիսեանն են:

Երեւանի Մամուլի Ակումբի նախագահ Բորիս Նաւասարդեանը յայտարարեց, որ ընտրութիւնների լուսաբանումը կատարուել է օրէնքի բազմաթիւ խախտումներով, որոնք կարող էին լուրջ ազդեցութիւն ունենալ քուէարկութեան արդիւնքների վրայ: Պարոն Նաւասարդեանը, խօսելով միջազգային կառոյցների տուած գնահատականի մասին, շեշտեց, որ նրանք չեն օգտագործել ազատ, արդար, ժողովրդավարական ընտրութիւններ բառակապակցութիւնն, այլ ասել են «անցկացուեցին մրցակցային ընտրութիւններ», ապա յաւելեց, որ հէնց առաջանում է մրցակցային թեկնածու, լրատուամիջոցները գործունէութիւնն ուղղակի խայտառակութեան է վերածւում: Բորիս Նաւասարդեանը տարակուսում է՝ այդ դէպքում լա՞ւ է մրցակցային ընտրութիւնը, թէ՞ վատ: Բայց յիշեցնում է բոլոր լրագրողներին ու լրատուամիջոցների ղեկավարներին. «Այդ կարգի լուսաբանման պայմաններում առողջ երկիր, առողջ հասարակութիւն հնարաւոր չի ունենալ, մտածէք մեր երկրի ապագայի մասին»:

Իսկ Խօսքի Ազատութեան պաշտպանութեան կոմիտէի նախագահ Աշոտ Մելիքեանը յայտարարեց, որ ընտրութիւնների լուսաբանման օբիեկտիւութեան մասին խօսք լինել չի կարող: Նա նաեւ ընթերցեց մի շարք կազմակերպութիւնների անունից յայտարարութիւն, որում կոչ է արւում միջազգային կառոյցներին՝ չվարկաբեկել ժողովրդավարութեան գաղափարը:

Այս հանդիպմանը ներկայ էին նաեւ եւրոպական կառոյցների ղեկավարներ:

## ՎԱՆԱՁՈՐՈՒՄ ՀԱՆՐԱՀԱՒԱՔ ԷՐ

*A1+*, 16:48

«Մեր պայքարն է արդարութիւն, մեր պայքարն է յաղթանակ», - այսօր Վանաձորում վանկարկում էին հանրահաւաքի մասնակիցները:

Վանաձորի Արցախ պուրակում կայացաւ հանրահաւաք՝ *Ընտրական խախտումների կանխարգելման հնարաւորութիւնները 2008թ. նախագահական ընտրութիւնների ժամանակ*: Հանրահաւաքին մասնակցում էին մօտ 2000 Վանաձորցիներ, որոնք իրենց բողոքն էին արտայայտում ընտրակեղծիքների եւ անարդարութեան դէմ:

Հանրահաւաքի կազմակերպիչն էր Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակը, որը 2008թ. նախագահական ընտրութիւնների ժամանակ ակտիւ դիտորդական առաքելութիւն է իրականացրել, համապատասխան միջոցներ ձեռնարկել ընտրախախտումները կանխարգելելու նպատակով:

Կազմակերպութեան ղեկավար Արթուր Սաքունցը հաւաքուածներին ներկայացրեց նախագահական ընտրութիւնների դիտորդութեան ընթացքում արձանագրուած խախտումները, դրանց ուղղութեամբ համապատասխան իրաւասու մարմինների կողմից ձեռնարկուած միջոցառումները: Արթուր Սաքունցի ելոյթին միացան նաեւ Ժառանգութիւն կուսակցութեան ԱԺ պատգամաւորներ Զարուհի Փոստանջեանն ու Վարդան Խաչատրեանը:

Իր ելոյթում Արթուր Սաքունցն անդրադարձաւ նաեւ դպրոցականների նկատմամբ

տնօրինութեան կողմից կիրառուող ճնշումներին: Վանաձորի հանրակրթական դպրոցների աշակերտները 2008թ. փետրուարի 26-ին երթով պաշտպանել էին իրենց ուսուցիչների իրաւունքները, որոնց ստիպողաբար տարել էին Երեւան Սերժ Սարգսեանի հաւաքին մասնակցելու:

Նոյն ուսուցիչների եւ դպրոցի տնօրէնների կողմից այսօր աշակերտները խիստ հրահանգ էին ստացել իրենց նկատմամբ կիրառուած ճնշումների մասին չյայտարարել հանրահաւաքի ժամանակ:

Երբ Արթուր Սաքունցն անդրադարձաւ այս փաստին, հանրահաւաքին մասնակից դպրոցի տնօրէնները եւ նրանց համախոհները աղմուկ բարձրացրեցին՝ խանգարելով Արթուր Սաքունցի ելոյթը:

Վանաձորի թիւ 8 եւ թիւ 24 դպրոցների տնօրէնները՝ Կարինէ Ստեփանեանը եւ Յասմիկ Յովսէփեանը նոյնիսկ բեմահարթակ բարձրացան՝ ելոյթ ունենալու եւ այս փաստերը հերքելու ակնկալիքով: Արթուր Սաքունցի խնդրանքով, սակայն, հանրահաւաքին կարգ ու կանոն պահպանող ոստիկանները նրանց ցած իջեցրեցին: Հանրահաւաքի մասնակիցները ծափերով ողջունեցին ոստիկանների այս քայլը, որին Արթուր Սաքունցն աւելացրեց. «Թո՛ղ ոստիկանները կատարեն միայն իրենց պարտականութիւնները»: Արթուր Սաքունցի կողմից քուէարկութեան օրուայ ընտրախատումների, տեղամասային եւ ընտրատարածքային յանձնաժողովների գործողութիւնների վերաբերեալ ներկայացուող փաստերը հանրահաւաքի մասնակիցների կողմից պարբերաբար ընդմիջւում էին «արդարութիւն» վանկարկումներով:

Հանրահաւաքի մասնակիցները Զարուհի Փոստանջեանի ելոյթը ողջունեցին ծափերով ու «յաղթանակ» գոչելով: Զարուհի Փոստանջեանը նշեց, որ ՀՀ նախագահական ընտրութիւնների արդիւնքում ձեւաւորուած իշխանութիւնների գործունէութիւնը մեզ կը տանի դէպի փակուղի: «Մեր պահանջն արդարացի է՝ իրականացնել նոր արդար ընտրութիւններ», - եզրափակեց Զարուհի Փոստանջեանը:

ԱԺ պատգամաւոր Վարդան Խաչատրեանը հանրահաւաքի մասնակիցներին տեղեկացրեց, որ ստեղծուած շարժման պահանջը շարունակական արդարութեան վերահաստատումն է Հայաստանում: «Ժողովրդի համար խնդիրը թեկնածուն չէ, այլ արդար ընտրութիւնները: Կոչ եմ անում պայքարել մինչեւ վերջ», - իր ելոյթը եզրափակեց Վարդան Խաչատրեանը:

Երբ Արթուր Սաքունցը շարունակեց ընտրախախտումների ցանկը, Արցախ պուրակում յայտնուած Վանաձորի քաղաքապետի «թիմակիցները» բազմիցս փորձեցին խանգարել հաւաքը:

Իրաւապահ համակարգի աշխատակիցներն ջանում էին նրանց կարգի հրաւիրել, սակայն ապարդիւն: Շուտով հաւաքին մասնակից քաղաքացիներն իրենք սկսեցին դիտողութիւններ անել խռովարարներին՝ փորձելով կարգի հրաւիրել նրանց: Տեսնելով, որ հանրահաւաքը խանգարելու իրենց առաքելութեան իրականացումն այս եղանակով դառնում է գրեթէ անհնար՝ Վանաձորի քաղաքապետի «թիմակիցները» հոսանքազրկեցին գեղեցկութեան սրահը, որտեղից միացուած էր բարձրախօսը:

«Մենք առանց բարձրախօսի էլ կարող ենք Ձեզ լսել: Ժողովրդի ձայնը ոչ ոք չի կարող լռեցնել», - Արթուր Սաքունցին դիմեցին հանրահաւաքի մասնակիցները:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ԵՒՐԱՄԻՈՒԹԵԱՆ ԼՐՋՈՒԹԻՒՆԸ ԴԵՌ ՉԻ ՆԿԱՏԻՈՒՄ

*Lragir.am*, 17:07

Քիչ առաջ ելոյթ ունենալով Ազատութեան Հրապարակում այսօրուայ հանրահաւաքում, Լեւոն Տէր-Պետրոսեանն ընդգծել է, որ համաժողովրդական շարժումը հասել է կարեւոր հանգրուանի եւ լոկալից դարձել է միջազգային գործօն: Շարժումը նուաճել է մի բնագիծ, որ արդէն օրինակ է այլ երկրների ժողովուրդների համար, թէ ինչպէս ժողովուրդը կարող է համախմբուել եւ հակադրուել բռնատիրական եւ աւազակապետական ռեժիմներին եւ քշել նրանց երկրից:

Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշեցրել է երէկուայ իր ելոյթը, երբ նշել էր Արեւմուտքի երկրների եւ կառոյցների անլրջութիւնը եւ Ռուսաստանի հաւասարակշիռ, լուրջ դիրքորոշումը: Տէր-Պետրոսեանը նշել է, թէ ԱՄՆ նոյնպէս լուրջ դիրքորոշում է որդեգրել, ինչի մասին վկայում է թէ Պետքարտուղարութեան յայտարարութիւնը Հայաստանի նախագահի ընտրութիւնների վերաբերեալ, թէ ԵԱՀԿ ամերիկացի դիւանագէտի տեսակէտը Հայաստանում տեղի ունեցող բողոքի ցոյցերի վերաբերեալ, որ այսօր հանրահաւաքում յայտնել էր Տէր-Պետրոսեանի թիմի անդամ Լեւոն Զուրաբեանը: Սա, ըստ Տէր-Պետրոսեանի, վկայում է, որ ԱՄՆ չի հաւատում կայացած ընտրութիւններին: Սա մի գործօն է, որ Հայաստանի իշխանիկները չեն կարող անտեսել, ասում է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Լեւոն Տէր-Պետրոսեանը, խօսելով Եւրամիութեան մասին, նշել է, թէ առայժմ չի նկատում նրա լրջութիւնը: Եւրոպական դիտորդները ճիշտ չեն նկատում Հայաստանում կատարուածը: ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ այսօր ճգնաժամ է ապրում, նշել է Տէր-Պետրոսեանը, եւ դա զգացւում է ոչ միայն Հայաստանի, այլեւ Վրաստանի դէպքում, այդ մասին հրապարակումներ կան միջազգային մամուլում: Եթէ նախկինում իշխանութիւնները, կառավարութիւններն էին դժգոհում նրանցից, հիմա դժգոհում են ժողովուրդները, ժողովրդական շարժումները, եւ եթէ այսպէս շարունակեն, ապա մի քիչ էլ որ անցնի, ժողովուրդները կարող են պահանջել դիտորդներից դադարեցնել փարիսեցիութիւնն իրենց երկրներում: Իրենք ճիշտ չեն հասկանում իրենց առաքելութիւնը, ասում է Տէր-Պետրոսեանը: Նրանք պահանջում են, որ մեր երկրները կատարեն իրենց առջեւ ստանձնած պարտաւորութիւնները, բայց նրանք իրենց պարտաւորութիւնները ժողովուրդների, այս հրապարակում հաւաքուածների հանդէպ չեն կատարում: Այդ պարտաւորութիւններն են Հայաստանում ապահովել ժողովրդավարութեանը եւ հասարակական համակեցութեան կանոններին ուղղուած քայլերի կատարումը:

Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, թէ հոկտեմբերի 23-ից սկսած մինչ այսօր իր կողմնակիցների հանդէպ կիրառւում են բռնութիւններ, իրենց առջեւ փակել են հեռուստաեթերը, եւ մինչ այժմ եւրոպական դիտորդները չեն նկատում այս ամէնը, այլ միայն քուէարկութեան օրն են դիտարկել: Այդ օրն էլ բռնութիւններ նրանց աչքի առաջ են եղել, եւ այդքանից յետոյ խօսում են ընտրութիւնից: Եթէ իրենց երկրներից որեւէ մէկում նման բան լինէր, ապա երեւի թէ տեղի կ'ունենար ֆրանսիական նոր յեղափոխութիւն: Ուրեմն դա իրենց երկրներին չի կարելի, իսկ մեր երկրներին կարելի է: Դա, եթէ ուզում էք, ռասիզմ է իր տեսակով, ասում է Լեւոն Տէր-Պետրոսեանը, աւելացնելով, թէ այն, ինչ ուրեմն իրենց մօտ անբարոյական է, մեզ մօտ համարում են բարոյական:

Լեւոն Տէր-Պետրոսեանը Ազատութեան Հրապարակից դիմեց դիտորդներին՝ եթէ

ուզում էք անաչառ գնահատել մեր ընտրութիւնները, մի կողմ թողէք ձեր հաշուապահութիւնը եւ գնահատէք փաստերը: Այն բռնութիւնները, որոնք այնպիսին էին, ինչպիսիք Սադդամ Հուսէյնը կիրառում էր իր ժողովրդի հանդէպ»:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԹՈՅԼ ՉՏՈՒԵՑ ԱՅՐԵԼ ՏՈՄՍԸ

*Lragir.am*, 17:20

Այսօրուայ հանրահաւաքում Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, նկատի ունենալով այսօր կնքուած յուշագիրը Արթուր Բաղդասարեանի եւ Սերժ Սարգսեանի միջեւ, թէ այսքան ժամանակ ՕԵԿ նախագահը զբաղուած է եղել ժողովրդին խաբելով, բայց աւելի շատ խաբուել են ՕԵԿ անդամները: Դրանից յետոյ հարթակ է բարձրացել ՕԵԿ անդամ ներկայացած Համլէտ Գրիգորեանը: Նա ասել է, թէ այդ յուշագրի մասին ռեպորտաժը դիտել է հեռուստատեսութեամբ եւ յայտարարել, թէ այրում է անդամատոմսը: Սակայն Լեւոն Տէր-Պետրոսեանը կանխել է, ասելով, թէ խնդրում է չայրել, որովհետեւ երբ այդպիսի դէպք է լինում, կուսակցութիւնները յայտարարում են, թէ այդպիսի անդամ չունեն: Դրա համար էլ խնդրում է, որ տոմսը չայրի: Նշենք, որ այսօր սա արդէն երրորդ դէպքն է:

## ՍԿՍՈՒԵԼ Է ԲԱԶՄԱՄԱՐԴ ԵՐԹ

*Lragir.am,* 17:24

Այս պահին Ազատութեան Հրապարակից սկսուել է երթ: Առջեւից գնում են կանայք: Երթը Հիւսիսային Պողոտայով անցնում է դէպի Հանրապետութեան Հրապարակ, Գլխաւոր Դատախազութեան առջեւով դէպի Միասնիկեանի արձան, այնուհետեւ Իտալիայի դեսպանատան մօտով, Վազգէն Սարգսեան փողոցով, հրապարակով դէպի Թումանեան փողոց եւ Ազատութեան Հրապարակ: Երթի մասնակիցները ծափահարել են պետական հաստատութիւնների առջեւ շարուած ոստիկաններին:

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔ ՎԱՆԱՁՈՐՈՒՄ

*Lragir.am*, 17:29

«Մեր պայքարն է արդարութիւն, մեր պայքարն է յաղթանակ», վանկարկում էին հանրահաւաքի մասնակիցները: Փետրուարի 29-ին Վանաձորի Արցախ պուրակում կայացաւ հանրահաւաք *Ընտրական խախտումների կանխարգելման հնարաւորութիւնները 2008թ. նախագահական ընտրութիւնների ժամանակ*:

Հանրահաւաքին մասնակցում էին մօտ 2000 Վանաձորցիներ, որոնք իրենց բողոքն էին արտայայտում ընտրակեղծիքների եւ անարդարութեան դէմ: Հանրահաւաքի կազմակերպիչն էր Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակը, որը 2008թ. նախագահական ընտրութիւնների ժամանակ ակտիւ դիտորդական առաքելութիւն է իրականացրել, համապատասխան միջոցներ ձեռնարկել ընտրախախտումները կանխարգելելու նպատակով:

Կազմակերպութեան ղեկավար Արթուր Սաքունցը հաւաքուածներին ներկայացրեց նախագահական ընտրութիւնների դիտորդութեան ընթացքում արձանագրուած խախտումները, դրանց ուղղութեամբ համապատասխան իրաւասու մարմինների կողմից ձեռնարկուած միջոցառումները:

Արթուր Սաքունցի ելոյթին միացան նաեւ Ժառանգութիւն կուսակցութեան ԱԺ

պատգամաւորներ Զարուհի Փոստանջեանն ու Վարդան Խաչատրեանը: Իր ելոյթում Արթուր Սաքունցն անդրադարձաւ նաեւ դպրոցականների նկատմամբ տնօրինութեան կողմից կիրառուող ճնշումներին: Վանաձորի հանրակրթական դպրոցների աշակերտները 2008թ. փետրուարի 26-ին երթով պաշտպանել էին իրենց ուսուցիչների իրաւունքները, որոնց ստիպողաբար տարել էին Երեւան Սերժ Սարգսեանի հաւաքին մասնակցելու: Նոյն ուսուցիչների եւ դպրոցի տնօրէնների կողմից այսօր աշակերտները խիստ հրահանգ էին ստացել իրենց նկատմամբ կիրառուած ճնշումների մասին չյայտարարել հանրահաւաքի ժամանակ:

Երբ Արթուր Սաքունցն անդրադարձաւ այս փաստին, հանրահաւաքին մասնակից դպրոցի տնօրէնները եւ նրանց համախոհները աղմուկ բարձրացրեցին՝ խանգարելով Արթուր Սաքունցի ելոյթը: Վանաձորի թիւ 8 եւ թիւ 24 դպրոցների տնօրէնները Կարինէ Ստեփանեանը եւ Յասմիկ Յովսէփեանը նոյնիսկ բեմահարթակ բարձրացան ելոյթ ունենալու եւ այս փաստերը հերքելու ակնկալիքով: Արթուր Սաքունցի խնդրանքով, սակայն, հանրահաւաքին կարգ ու կանոն պահպանող ոստիկանները նրանց ցած իջեցրեցին: Հանրահաւաքի մասնակիցները ծափերով ողջունեցին ոստիկանների այս քայլը, որին Արթուր Սաքունցն աւելացրեց. «Թո՛ղ ոստիկանները կատարեն միայն իրենց պարտականութիւնները»:

Արթուր Սաքունցի կողմից քուէարկութեան օրուայ ընտրախատումների, տեղամասային եւ ընտրատարածքային յանձնաժողովների գործողութիւնների վերաբերեալ ներկայացուող փաստերը հանրահաւաքի մասնակիցների կողմից պարբերաբար ընդմիջւում էին «արդարութիւն» վանկարկումներով:

Հանրահաւաքի մասնակիցները Զարուհի Փոստանջեանի ելոյթը ողջունեցին ծափերով ու «յաղթանակ» գոչելով: Զարուհի Փոստանջեանը նշեց, որ ՀՀ նախագահական ընտրութիւնների արդիւնքում ձեւաւորուած իշխանութիւնների գործունէութիւնը մեզ կը տանի դէպի փակուղի: «Մեր պահանջն արդարացի է իրականացնել նոր արդար ընտրութիւններ», եզրափակեց Զարուհի Փոստանջեանը:

ԱԺ պատգամաւոր Վարդան Խաչատրեանը հանրահաւաքի մասնակիցներին տեղեկացրեց, որ ստեղծուած շարժման պահանջը շարունակական արդարութեան վերահաստատումն է Հայաստանում: «Ժողովրդի համար խնդիրը թեկնածուն չէ, այլ արդար ընտրութիւնները: Կոչ եմ անում պայքարել մինչեւ վերջ», իր ելոյթը եզրափակեց Վարդան Խաչատրեանը:

Երբ Արթուր Սաքունցը շարունակեց ընտրախախտումների ցանկը, Արցախ պուրակում յայտնուած Վանաձորի քաղաքապետի «թիմակիցները» բազմիցս փորձեցին խանգարել հաւաքը: Իրաւապահ համակարգի աշխատակիցներն ջանում էին նրանց կարգի հրաւիրել, սակայն ապարդիւն: Շուտով հաւաքին մասնակից քաղաքացիներն իրենք սկսեցին դիտողութիւններ անել խռովարարներին, փորձելով կարգի հրաւիրել նրանց: Տեսնելով, որ հանրահաւաքը խանգարելու իրենց առաքելութեան իրականացումն այս եղանակով դառնում է գրեթէ անհնար՝ Վանաձորի քաղաքապետի «թիմակիցները» հոսանքազրկեցին գեղեցկութեան սրահը, որտեղից միացուած էր բարձրախօսը: «Մենք առանց բարձրախօսի էլ կարող ենք Ձեզ լսել: Ժողովրդի ձայնը ոչ ոք չի կարող լռեցնել», Արթուր Սաքունցին դիմեցին հանրահաւաքի մասնակիցները:

Արդէն մօտ 30 րոպէ էր անցել, երբ Արթուր Սաքունցն աւարտել էր իր ելոյթը, սակայն

մասնակիցների ոգեւորութիւնը դեռ շարունակւում էր: Վանաձորի Արցախ պուրակը կարծես վերածուել էր բաց ամբիոնի, որտեղից իրենց դժգոհութիւնը տեղական լրատուամիջոցների, Գիւմրիի *Գալա* հեռուստաընկերութեան տեսախցիկների, *Ազատութիւն* ռադիոկայանի թղթակցի բարձրախօսի առջեւ համարձակօրէն արտայայտում էին Վանաձորցիները:

## ԵՐԲ ԵՆ ՄԵՔԵՆԱՆ ՏԱՆՈՒՄ ՅԱՏՈՒԿ ՏԱՐԱԾՔ

*Lragir.am*, 17:35

Վերջին օրերին մամուլում տեղեկութիւններ կային, թէ ՀՀ ոստիկանութիւնը յատուկ տարածք՝ տուգանային հրապարակներ է տանում Ազատութեան Հրապարակի մատոյցներում կայանած բոլոր աւտոմեքենաները՝ սխալ վայրում կայանելու համար: Սակայն ինչպէս տեղեկացանք Աքիլէս հասարակական կազմակերպութիւնից, սխալ կայանելու համար տրանսպորտային միջոցը յատուկ տարածք տանելու իրաւունք ոստիկանութիւնը չունի: «Ճանապարհային երթեւեկութեան անվտանգութեան ապահովման մասին» օրէնքով է կարգաւորում տրանսպորտային միջոցների նկատմամբ ոստիկանութեան այս կամ այն գործողութիւնը: Համաձայն նշուած օրէնքի 18, 18-1, 18 պրիմ յօդուածներով են սահմանուած այն դէպքերը, երբ կարելի է տրանսպորտային միջոցի երթեւեկութիւնը արգելել, կամ տրանսպորտային միջոցի վրայ արգելք դնել: Դրանք են.

Ոչ սթափ վիճակում վարելը

Մեքենայ վարելու իրաւունքից զրկուած լինելով վարելը

Տուեալ կարգի տրանսպորտային միջոց վարելու իրաւունք չունենալը

Վարորդը իր մօտ վարորդական վկայական չունի

Վարորդական վկայականը կեղծ է կամ՝ ուժը կորցրած

Առանց վարորդական վկայականում նշուած պարագաների կամ փաստաթղթերի վարելը

Կեղծ հաշուառման վկայագրով կամ առանց վկայագրի վարելը

Կեղծ, փոխուած կամ ստանդարտին չհամապատասխանող համարանիշներով վարելը

Առանց օրէնսդրութեամբ սահմանուած փաստաթղթերի վարելը

Մեքենայում գտնուող անձը հետախուզման մէջ է

Հիմնաւոր կասկածներ կան, որ մեքենայում գտնուող անձը հետախուզման մէջ է

Մեքենայ պատճառ է դարձել ճանապարհատրանսպորտային պատահարի եւ մարդկանց վնաս է հասցուել

Առանց թոյլատրութեան առկայծող փարոսիկներ են տեղադրուած

Կահաւորուած է կեղծուած, փոփոխուած, ջնջուած համարներ ունեցող ագրեգատներով:

www.hra.am

## ՅԱՐՁԱԿՈՒԵԼ ԵՆ ԼՐԱԳՐՈՂԻ ՎՐԱՅ

*Lragir.am,* 17:42

ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի բաժինը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը. «Փետրուարի 29-ին

ՁԼՄ-ների հրապարակումներից պարզուել է, որ Ազատութեան Հրապարակում երկու բարձրատիճան ոստիկան յարձակուել են *Առաւօտ* եւ *Չորրորդ իշխանութիւն* թերթերի ֆոտոլրագրող Գագիկ Շամշեանի վրայ եւ խոչընդոտել նրա աշխատանքին: Այդ ընթացքում ոստիկաններից մէկը փորձել է խլել Գ. Շամշեանի ֆոտոխցիկը, իսկ այնուհետեւ յարձակուել է նրա վրայ եւ պատռել վերջինիս բաճկոնը:

Մէկ այլ հաղորդմամբ, ՀՀ ոստիկանութեան Երեւան քաղաքի վարչութեան Աւանի բաժանմունք բերման են ենթարկուել Հանրապետութիւն կուսակցութեան քաղխորհրդի անդամ Լիովա Եղիազարեանն ու նրա որդին՝ *Հայք* օրաթերթի թղթակից Արտակ Եղիազարեանը: Վերջինից պահանջել են որպէսզի ինքը չմասնակցի չարտօնուած հանրահաւաքներին:

Հաշուի առնելով վերոգրեալը եւ ղեկավարուելով «Մարդու Իրաւունքների պաշտպանի մասին» ՀՀ օրէնքի 12-րդ յօդուածի 1-ին մասի 4-րդ կէտով Պաշտպանին վերապահուած լիազօրութիւններից, Արմէն Յարութիւնեանը դիմել է ՀՀ Ոստիկանութեան Երեւան քաղաքի վարչութեան պետին առաջարկելով յանձնարարել ստուգելու դիմումում նշուած փաստերը եւ յայտնել, արդեօք նշուած փաստերի կապակցութեամբ ներկայումս նախապատրաստւում են նիւթեր, եւ արդիւնքների մասին հնարաւորինս սեղմ ժամկէտում յայտնել նաեւ իրեն, միաժամանակ խնդրելով՝ որպէսզի այն պահուի վարչութեան պետի անմիջական հսկողութեան տակ»:

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑ 2 ՏԱՐՈՒԱՅ ԱԶԱՏԱԶՐԿՄԱՆ

*Lragir.am*, 17:50

ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութիւնը տեղեկացնում է, թէ Երեւան քաղաքի Կենտրոն եւ Նորք Մարաշ համայնքների ընդհանուր իրաւասութեան դատարանը հիմնաւորուած է համարել քուէարկութեան արդիւնքները կեղծելու համար թիւ 9/31 ընտրատեղամասի յանձնաժողովի նախագահ Էդուարդ Աղաջանեանին ներկայացուած մեղադրանքը: Էդ. Աղաջանեանն ընդունել է ներկայացուած մեղադրանքը եւ խնդրել կիրառել արագացուած դատաքննութիւն, որի դէմ մեղադրող կողմը չի առարկել: Դատարանի 29.02.08թ. դատավճռով Էդ. Աղաջանեանը յանցաւոր է ճանաչուել ՀՀ Քրէական Օրէնսգրքի 150-րդ յօդուածով եւ դատապարտուել 2 տարուայ ազատազրկման:

## ՊԵՏՐՈՍ ՄԱԿԷՅԵԱՆԻ ԳՈՐԾԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Lragir.am*, 17:54

ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը.

«ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում շարունակւում է թիւ 34/06 տեղամասային ընտրական յանձնաժողովի աշխատանքներին խոչընդոտելու դէպքի առթիւ յարուցուած քրէական գործի նախաքննութիւնը:

Նախաքննութեամբ ձեռք բերուած ապացոյցների հիման վրայ՝ 2008 թուականի փետրուարի 19-ին թիւ 34/06 տեղամասային ընտրական յանձնաժողովի աշխատանքները խոչընդոտելու համար Պետրոս Մակէյեանին եւ Շոթա Սաղաթէլեանին մեղադրանք է առաջադրուել ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ կէտով

(ընտրական յանձնաժողովի աշխատանքները խոչընդոտելը՝ զուգորդուած բռնութեան գործադրմամբ կամ բռնութիւն գործադրելու սպառնալիքով), իսկ Աշոտ Զաքարեանին՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 149-րդ յօդուածի 2-րդ մասի 3-րդ եւ 5-րդ կէտերով (ընտրական յանձնաժողովի աշխատանքները խոչընդոտելը՝ զուգորդուած բռնութեան գործադրմամբ կամ բռնութիւն գործադրելու սպառնալիքով, մի խումբ անձանց կողմից): Նրանց նկատմամբ որպէս խափանման միջոց, դատարանի որոշմամբ, կիրառուել է կալանքը:

Նախաքննութեամբ պարզուել է, որ 19.02.08թ.՝ ժամը 14:30-ի սահմաններում, Գիւմրիի թիւ 34/06 ընտրատեղամաս են մտել Գիւմրի քաղաքի բնակիչներ, ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի Գիւմրիի նախընտրական շտաբի պետ Մուրադ Գրիգորեանը եւ Գիւմրիի զինուորական ոստիկանութեան նախկին պետ Աշոտ Զաքարեանը: Վերջիններս տեղամասում աղմկել են ընտրողների անձնագրերում դրօշմակնքման հարցի շուրջ, ընտրողների ներկայութեամբ վիճաբանել տեղամասային ընտրական յանձնաժողովի նախագահի եւ անդամների հետ, շուրջ 10 րոպէ խոչընդոտել յանձնաժողովի աշխատանքների իրականացմանը եւ սպառնացել: Դէպքից 1-2 րոպէ անց նոյն ընտրատեղամաս է մուտք գործել Շոթա Սաղաթէլեանը եւ, ներկայանալով որպէս ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ, նոյն հարցի շուրջ վիճաբանել յանձնաժողովի անդամների հետ ու խոչընդոտել նրանց աշխատանքների կատարմանը: Վերջինիս հեռանալուց յետոյ քիչ անց 34/06 տեղամաս է մուտք գործել Ժողովրդավարական Հայրենիք կուսակցութեան նախագահ Պետրոս Մակէյեանը եւ կրկին նոյն հարցի շուրջ վիճաբանել յանձնաժողովի նախագահի հետ եւ շուրջ 10 րոպէ խոչընդոտել յանձնաժողովի աշխատանքների կատարմանը: Միջոցներ են ձեռնարկւում Մուրադ Գրիգորեանին յայտնաբերելու ուղղութեամբ»:

## ՕԵԿ-ԱԿԱՆՆԵՐԸ ՊԱՏՌՈՒՄ ԵՆ ԻՐԵՆՑ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՏՈՄՍԵՐԸ

*A1+*, 18:03

Այսօր Ազատութեան Հրապարակի հանրահաւաքը կրկին վարում էր Այլընտրանք հասարակական-քաղաքական նախաձեռնութեան անդամ Նիկոլ Փաշինեանը: Բազմահազարանոց հանրահաւաքի մասնակիցների մի մասը վերջինից տեղեկացան ՕԵԿ առաջնորդ Արթուր Բաղդասարեանի ՀՀԿ առաջնորդ Սերժ Սարգսեանի հետ համաձայնագիր ստորագրելու վերաբերեալ նորութիւնը, ինչը ներկաները ընդունեցին «Ամօթ, ամօթ» վանկարկումներով:

Նիկոլ Փաշինեանը յայտարարեց, թէ իշխանութիւնները 10 տարի է խաբում են ժողովրդին, բայց փառք Աստծոյ, ժողովուրդը այլեւս խաբուող չէ եւ ընդդիմութեան ականները մէկը միւսից յետոյ պայթում են: «Սա մեր ժողովրդական շարժման արդիւնքն է: Մի տեղ իմ ելոյթում ասել եմ, էլի են ուզում ասել: Լեւոն Տէր-Պետրոսեանի իշխանութեան տարիներին մենք բոլորս քննադատաբար ենք վերաբերուել, բայց Լեւոն Տէր-Պետրոսեանը կեղծ ընդդիմութիւն չի ստեղծել: Սա աւազակապետութեան ամենակարեւոր յանցագործութիւններից մէկն է. խաղալ ժողովրդի գիտակցութեան հետ, խաղալ, խաբէութեամբ մոլորեցնել սեփական ժողովրդին: Սա ամենամեծ յանցագործութիւնն է: Եւ յատկանշական է, որ Արթուրիկը անվտանգութեան խորհրդի քարտուղար է նշանակւում Արմէնչիկի փոխարէն՝ սրանից բխող բոլոր հետեւանքներով», - յայտարարեց Նիկոլ

Փաշինեանը:

Վերջինս յայտարարեց, թէ իշխանութիւնները ուզում էին ամէն ինչ անել, որ ընտրութիւնների արդիւնքում երկրորդ տեղը զբաղեցնի Արթուր Բաղդասարեանը. «Իշխանութիւնը այս ընտրութիւններում կեղծիքներ արել է հաւասարապէս թէ Սերժ Սարգսեանի, թէ Արթուրիկի համար», - ասաց Նիկոլ Փաշինեանը, ապա յաւելելով, թէ մի շարք քաղաքներում գերակշիռ մեծամասնութիւնը պէտք է քուէարկէր Սերժ Սարգսեանի օգտին, միւսը՝ Արթուր Բաղդասարեանի: «Բայց ամբողջ ընտրակեղծիքներով, ընտրական ռեսուրսներով, նրանք չկարողացան կանգնել ժողովրդի կամքի առաջ եւ իրականացնել իրենց գծած սցենարը: Արթուր Բաղդասարեանի քայլը ձեր եւ մեր յաղթանակն է: Մենք Հայաստանը պէտք է ազատենք գեղամեանասերժանտական մոլախոտից, որը խաղում է մեր ժողովրդի գիտակցութեան, բարոյական արժէքների հետ», - ասաց նա: Վերջինս հաւաքուածներին յիշեցրեց, թէ «Արթուր Բաղդասարեանը այս ամբիոնից կոկորդիլոսի արցունք էր թափում, թէ Սերժ Սարգսեանը ուզում է սպանել: Այո, նա քեզ սպանեց, բայց աւելի լաւ էր ֆիզիկապէս սպանէր, քան այդպէս բարոյապէս ոչնչացնէր եւ դարձնէր զրօ: Դու այլեւս սպանուած ես, գոյութիւն չունես որպէս քաղաքական գործիչ եւ քաղաքացի: Դու սովորական սերժանտ ես»:

Ի դէպ, Նիկոլ Փաշինեանի ելոյթից յետոյ բեմահարթակում երկու ՕԵԿ-ականներ պատռեցին իրենց կուսակցական տոմսերը՝ հիասթափուած իրենց առաջնորդի վարմունքից: Օրինակ՝ ՕԵԿ անդամ Համլէտ Գրիգորեան պատմեց, թէ երբ Արթուր Բաղդասարեանը հրաժարական տուեց, իրենց կուսակցութիւնից շատերը հեռացան, իսկ ինքը մնաց, իսկ այսօր երբ հեռուստացոյցով տեսել է Արթուր Բաղդասարեանին Սերժ Սարգսեանի հետ երջանիկ համաձայնագիր ստորագրելիս, անմիջապէս որոշել է լքել այդ կուսակցութիւնը:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ՈՐՈՇԵԼ Է ՕԳՆԵԼ «ՄՈԼՈՐՈՒԱԾՆԵՐԻ՞Ն»

*A1+*, 18:39

Ռոբերտ Քոչարեանը այսօր երկրում ստեղծուած յետընտրական իրավիճակի զարգացումների վերաբերեալ՝ հնչեցրել է չորս տարբերակ ընդդիմութեան եւ երկուսը՝ իշխանութեան համար:

Դրանք նա ներկայացրել է Երեւանի Պետական Համալսարանի ուսանողների հետ հանդիպման ժամանակ:

Անդրադառնալով այն հանգամանքին, որ Ազատութեան Հրապարակում շարունակւում է ընդդիմութեան հանրահաւաքները, նա նշել է. «Ինչքան շատ շարունակուեն այդ միջոցառումները, ինչքան շատ եւ ակտիւ փորձեն մարդկանց անընդհատ պահել Թատերական Հրապարակում, այնքան աւելի մեծ է լինելու յետագայում այդ նոյն մարդկանց հիասթափութիւնը... Մարդիկ որոշակի սթրես են ապրում եւ յետոյ չեն ներում նրանց, ում մեղքով այդ ապրումները ունեցել են: Սա փակուղի է, եւ այդ փակուղին, առաջին հերթին, ժամանակի մեջ վարկաբեկելու է նրանց, ովքեր այդ գործիքը այսօր փորձում են կիրառել»:

Քոչարեանի գնահատմամբ՝ երկրորդ տարբերակը կը լինի սա. «Յուսահատութեան պատճառով փորձել անել այն, ինչ արուել է 96 թուականին՝ գրոհել պետական մարմինները: Միանգամից կազմակերպիչները յայտնուելու են օրէնքից դուրս՝ բոլոր այս կարգավիճակից բխող հետեւանքներով: Իրաւապահ մարմինները ունեն բաւարար ուժ,

բաւարար հնարաւորութիւն սահմանադրական կարգը պահպանելու համար... Բայց դրանից յետոյ հարթակում կանգնած շատ-շատերը երկար տարիներ անց են կացնելու բանտերում»:

Երրորդ սցենարի դէպքում, Ռոբերտ Քոչարեանի խօսքով՝ շնորհակալութիւն է յայտնւում «այդ զանգուածին» աջակցութեան համար ու մարդկանց ուղարկում են տուն՝ «պահպանելով ազդեցութիւնը այդ մարդկանց վրայ եւ պահպանելով նաեւ կոշտ ընդդիմութիւն լինելու կեցուածքը, պատրաստւում են յաջորդ ընտրութիւններին»:

Չորրորդ՝ ամենամեղմ սցենարը, Քոչարեանի խօսքով, այն է, որ կրկին մարդկանց ուղարկում են տուն, շնորհակալութիւն են յայտնում աջակցութեան համար եւ շնորհաւորում են նորընտիր նախագահին. - «Խնդրում են մեղմ վերաբերուել այն մարդկանց, ովքեր օրէնքը խախտել են այս կամ այն պատճառներով, եւ գնում են գրելու հերթական գիտական աշխատանքը»:

Իսկ ինչ վերաբերում է իշխանական երկու տարբերակներին, ապա «Առաջինը՝ համբերատար սպասել, երբ է այդ թատերական բեմադրումը Թատերական Հրապարակում ինքը իրենով մարուելու... Երկրորդ տարբերակը՝ ոստիկանական գործողութիւններ կիրառելով մաքրել այդ հրապարակը եւ այդ նաեւ ժողովրդին հնարաւորութիւն տալ աւելի հանգիստ ապրել»:

«Ես կարծում եմ, այսօր դա մեծ աջակցութիւն կը լինի առաջին հերթին այն մարդկանց, որոնք մոլորուած եւ հոգեբանական բաւական ապրումների մէջ գտնւում են այդ հրապարակում: Որովհետեւ տարբեր հնարքներով ուղղակի իրենց այնտեղ պահում են, - ասել է Ռոբերտ Քոչարեանն՝ աւելացնելով, որ ոստիկանութիւնը ուժը կիրառում է այն ժամանակ, երբ դիմադրութիւն է հանդիպում. «Եթէ օրինական պահանջը չի կատարւում՝ միայն այդ դէպքում»:

Ի դէպ, Ռոբերտ Քոչարեանն այսօր ուսանողներին ասել է, թէ հանգիստ խղճով է թողնում նախագահի աթոռը եւ դեռ չգիտի ինչ է անելու:

## ԺՈՂՈՎՐԴԻ ԵՒ ՈՍՏԻԿԱՆՆԵՐԻ ՀԱՇՏՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 18:42

Քիչ առաջ Ազատութեան Հրապարակում, երթի աւարտից յետոյ Նիկոլ Փաշինեանը պատմել է երթի ժամանակ տեղի ունեցած մի իրադարձութեան մասին: Անցեալ տարուայ հոկտեմբերի 23-ին տեղի ունեցած երթի ժամանակ, որ նպատակ ունէր մարդկանց տեղեկացնել Լեւոն Տէր-Պետրոսեանի հանրահաւաքի մասին, մի ոստիկան հարուածել էր երթի մասնակիցներից մէկին: Այսօրուայ երթի ժամանակ այդ քաղաքացին ոստիկանների շարքում նկատել է այդ նոյն ոստիկանին, մօտեցել նրան եւ կատակով թփթփացրել փորին: Ոստիկանը ճանաչել է քաղաքացուն, ժպտացել, եւ նրանք ողջագուրուել են:

Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, թէ ոստիկանների եւ ժողովրդի միջեւ տարաձայնութիւններ չկան: Եթէ նախկինում երթերի ժամանակ ոստիկանները լարուած էին լինում, ապա հիմա նրանց դէմքին հանգստութիւն կայ, ասում է Նիկոլ Փաշինեանը:

## ԸՆԴՈՒՆԵԼ ԵՆ, ՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՀԵՌՈՒ ԷԻՆ ԿԱՏԱՐԵԱԼ ԼԻՆԵԼՈՒՑ

*A1+*, 18:59

ԵԱՀԿ-ում ԱՄՆ-ի առաքելութիւնը ողջունել է Հայաստանի կառավարութեան եւ ընդդիմութեան ջանքերը, որոնց շնորհիւ հնարաւոր է եղել խուսափել բռնութիւնից, եւ կոչ է արել պահպանել խաղաղ իրավիճակը:

«Մենք ողջունում ենք եւ Հայաստանի իշխանութիւններին, եւ ընդդիմութեանը՝ երկու առաջատար թեկնածուների օգտին լայնածաւալ քաղաքական հանրահաւաքների շրջանակներում բռնութեան ցանկացած փորձից յաջողութեամբ խուսափելու համար: Հանրահաւաքների ազատ անցկացման իրաւունքի այս խաղաղ կենսագործումը՝ մարդկանց մեծաթիւ խմբերի արդիւնաւէտ, ոչ բռնի կառավարման հետ մէկտեղ, նշանակալի նուաճում է եւ ժողովրդավարական առաջընթացի նշան: Մենք կոչ ենք անում բոլոր կողմերին երաշխաւորել այս խաղաղ իրավիճակի շարունակումը», - ասուած է ԵԱՀԿ-ում ԱՄՆ-ի առաքելութեան՝ երէկ Վիեննայում հրապարակած յայտարարութեան մէջ:

Փաստաթղթում շեշտւում է. - «Միացեալ Նահանգները դրական է գնահատում Հայաստանի որոշումը՝ իրական ջանքեր գործադրել նախորդ ընտրութիւններում արձանագրուած բացթողումները, այդ թւում օրէնսդրական դաշտի թերութիւնները շտկելու համար: Մենք նաեւ ողջունում ենք Հայաստանի յանձնառութիւնը՝ համագործակցել ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ի առաքելութեան եւ ԵԱՀԿ-ի խորհրդարանական վեհաժողովի հետ այս ընտրութիւնների դիտարկման գործընթացում»:

Միաժամանակ ԵԱՀԿ-ում ԱՄՆ-ի առաքելութիւնը փաստում է. - «Մենք պէտք է նաեւ ընդունենք, որ այս ընտրութիւնները շատ հեռու էին կատարեալ լինելուց: Թէեւ ընտրական գործընթացի կառավարումը հիմնականում համապատասխանեց ԵԱՀԿ-ի չափանիշներին, այդուամենայնիւ, ԵԱՀԿ-ի հիմնական պարտաւորութիւնները՝ ժողովրդավարական ընտրութիւնների ծրագրման եւ իրականացման առումով, Հայաստանում մնացին չկատարուած, ինչպէս նշուած է ԵԱՀԿ-ի նախնական զեկոյցում: Մենք կոչ ենք անում Հայաստանի կառավարութեանն ու ժողովրդին արձագանքել այս մարտահրաւէրներին»:

«Ընտրութիւնների յաջորդ օրը՝ միջազգային այլ դիտորդների հետ, Միացեալ Նահանգների ներկայացուցիչները ուշադրութեամբ քննել են դիտորդների՝ այդ թւում նաեւ մեր սեփական, ինչպէս նաեւ ընդդիմադիրների ու հասարակական կազմակերպութիւնների ներկայացուցիչների դիտարկումները: Մտահոգութիւնները հիմնականում վերաբերում էին հետեւեալ ոլորտներին. քուէարկութիւնից առաջ իշխանութեան թեկնածուի նկատմամբ նպաստաւոր վերաբերմունքը, այդ թւում՝ քարոզարշաւին պետական ծառայողների ներգրաւումը, քուէատուփերի լցոնման դէպքերը, քուէների գնման, բազմակի քուէարկութեան եւ ընտրողների նկատմամբ սպառնալիքի կիրառումը, որոշ շրջաններում մասնակցութեան անսովոր բարձր աստիճանը, ինչը որոշ դէպքերում կարող է խախտումների մասին վկայել:

Վերջերս մտահոգիչ խախտումներ արձանագրուեցին որոշ ընտրատեղամասերում ձայների վերահաշուարկի, ինչպէս նաեւ ԵԱՀԿ-ի նշած մամուլի ազատութեան սահմանափակման հետ կապուած:

Մեզ շատ մտահոգում են յետընտրական փուլում ընդդիմադիր քաղաքական

գործիչների ձերբակալութիւններն ու իշխանութիւնների կողմից ընդդիմութեան գրասենեակները բռնի ուժով փակելու մասին հաղորդումները: Այսօրինակ գործողութիւնները չեն համապատասխանում ժողովրդավարութեան չափանիշներին, եւ մենք կոչ ենք անում Հայաստանի կառավարութեանը այս դէպքերի առնչութեամբ հիմնուել օրէնքի իշխանութեան ու միջազգային Ժողովրդավարական չափանիշների վրայ:

Այսպիսի իրական եւ որպէս այդպիսին ընկալուած խախտումների պատճառով, մենք մնում ենք մտահոգուած այն հանգամանքով, որ հայաստանեան ընտրազանգուածի շրջանում սեփական ընտրական գործընթացների նկատմամբ վստահութեան ցուցանիշը մնում է վտանգաւոր աստիճանի ցածր»:

Մենք քաջալերում ենք Հայաստանի իշխանութիւններին թափանցիկ, արագ հետաքննութեան ենթարկել բոլոր բողոքները՝ որպէս ընտրական գործընթացի բարեփոխումների եւ հասարակութեան վստահութեան վերականգնման գործընթացի մաս», - նշուած է յայտարարութեան մէջ:

«Մենք աջակցում ենք ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ-ի առաքելութեան ջանքերին՝ գրանցել իր կողմից ստացուած բողոքները, եւ սպասում ենք ընտրութիւնների վերաբերեալ նրանց միջանկեալ եւ վերջնական զեկոյցներին ու յանձնարարականներին: Միացեալ Նահանգները պատրաստակամ է այստեղ եւ Երեւանում աշխատել բոլոր կողմերի հետ՝ այս խնդիրների լուծման ուղղութեամբ», - ասուած է ԵԱՀԿ-ում Միացեալ Նահանգների առաքելութեան յայտարարութիւնում: Հաղորդում է *Ազատութիւն* ռա□դիոկայանը:

## ՀՀԿ-Ն ԾԱՅՐԱՅԵՂԱԿԱՆՈՒԹԵԱՆԸ ԴԷՄ Է

*A1+*, 19:09

«Բանակցութիւնները լարուածութեան դէպքում դառնում են անհրաժեշտութիւն, եւ եթէ երկրի ղեկավարն առաջարկել է բանակցութիւններ, ուրեմն բոլորը պէտք է առաջնորդուեն այդ սկզբունքով՝ երկրում ստեղծուած անհանդուրժողականութեան տարածումը կանխելու համար», - այսօր ԱԺ խումբ-խմբակցութիւնների ճեպազրոյցների ժամանակ ասաց ՀՀԿ խմբակցութեան անդամ Մկրտիչ Մինասեանը՝ պատասխանելով յետընտրական լարուածութեան կանխմանն ու ընդդիմութեան եւ իշխանութեան համագործակցութեանն ուղղուած Սերժ Սարգսեանի եւ ՀՅԴ-ի առաջարկների վերաբերեալ հարցին: Իսկ ՀՅԴ խմբակցութեան անդամ Վահան Յովհաննիսեանի առաջարկութիւններն, ըստ նրա, ՀՀԿ-ն կը քննարկի:

Մկրտիչ Մինասեանի կարծիքով՝ ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանն ինքը պէտք է առաջարկի, թէ ինչ քննարկել, քանի որ ՀՀԿ-ն արդէն համագործակցութեան առաջարկ արել է՝ ընդհուպ մինչեւ կօալիցիոն կառավարութիւն կազմել ընդդիմութեան հետ: Պարոն Մինասեանը գտնում է, որ քաղաքականութեան մէջ պէտք է առաջնորդուել քաղաքական կատեգորիաներով:

Անդրադառնալով յետընտրական զարգացումներին եւ առաջարկներին՝ ՀՅԴ խմբակցութեան ղեկավար Հրայր Կարապետեանը նշեց, որ ՀՅԴ անդամ Վահան Յովհաննիսեանը յայտարարութեան մէջ ողջունել է յետընտրական լարուածութեան վերացմանն ուղղուած բոլոր առաջարկները:

Պարոն Կարապետեանը գտնում է, որ պէտք է բացառուի եւ իշխանութեան, եւ ընդդիմութեան կողմից ուժի կիրառումը: ՀՅԴ-ն առաջակում է քաղաքական ուժերին բանակցել

համակարգային փոփոխութիւնների շուրջ: Պարոն Կարապետեանի գնահատմամբ՝ անհրաժեշտ է փոփոխել ընտրական համակարգը, քանի որ այն հնարաւորութիւն չի ընձեռում ազատ, արդար եւ թափանցիկ ընտրութիւններ անցկացնել: Խմբակցութեան ղեկավարի համոզմամբ՝ խօսքի ազատութեան պատկերացումները չեն համապատասխանում իրականութեանը: Նա առաջարկում է ընդդիմութեանը անհրաժեշտ քվոտաներ տրամադրել, հնարաւորութիւն ընձեռել մասնակցելու քաղաքական գործընթացներին:

Իսկ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Անահիտ Բախշեանը նշեց, որ դժուարանում է ասել, թէ վարչապետի առաջարկը ընդդիմութեան ո՞ր մասին է ուղղուած: Ըստ տիկին Բախշեանի՝ իշխանութիւններից պահանջւում է քաղաքական կամք՝ երկրում ստեղծուած քաղաքական լարուածութիւնը հանդուրժողականութեան եւ երկխօսութեան ճանապարհով լուծելու համար: Ժառանգութեան քարտուղար Ստեփան Սաֆարեանը նշեց, որ թէ ընդդիմութիւնը, եւ թէ իշխանութիւնը գտնւում են փակուղային իրավիճակում:

Ժառանգութեան պատգամաւոր Լարիսա Ալաւերդեանը նկատեց, Հայաստանի օրէնսդրութիւնը չունի արտօնուած կամ չարտօնուած, թոյլ տրուած կամ թոյլ չտրուած հանրահաւաք հասկացութիւնը եւ կոչ արեց իշխանութիւններին զերծ մնալ «չարտօնուած հանրահաւաք» յայտարարութիւններից:

Խօսելով ընդդիմութեան կազմակերպած հանրահաւաքներից՝ ՀՀԿ անդամ Մկրտիչ Մինասեանը նշեց, որ ՀՀԿ-ն ծայրայեղականութիւնն անընդունելի է համարում: Պարոն Մինասեանը դատապարտեց պատգամաւորների նկատմամբ ոստիկանների կիրառած բռնութիւնները:

ՀՅԴ խմբակցութեան ղեկավար Հրայր Կարապետեանի կարծիքով՝ ազգի ճակատագրով մտահոգ քաղաքական ուժերը պէտք է հասկանան, որ կարեւոր խնդիր է երկրի միջազգային հեղինակութիւնը, անգամ նրանք, ովքեր դժգոհ են ընտրութիւնների արդիւնքներից, պետական շահը պէտք է գերադասեն անձնական շահից:

## ԵԱՀԿ-Ն ՆԱԵՒ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՌՋԵՒ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՈՒՆԻ

*A1+*, 19:24

Առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը երէկուայ եւ այսօրուայ իրադարձութիւններից համոզուել է, որ Հայաստանի ժողովրդական շարժումը, որի հրապարակը Ազատութեան Հրապարակն է, տեղական գործօնից վերածւում է միջազգային գործօնի: «Այն ինչ կատարւում է այսօր Հայաստանում, այս հրապարակում, դուրս է եկել Հայաստանի սահմաններից, դարձել միջազգային հարց, միջազգային կարեւորագոյն քաղաքական գործօն: Սա օրինակ է ծառայելու բոլոր երկրների համար, օրինակ է ծառայելու, որ ժողովուրդը կարող է, ի վիճակի է կոռումպացուած, բռնապետական, աւազակապետական ռեժիմին թելադրել իր կամքը եւ պարտադրել, որ հեռանայ մեր երկրից», - հանրահաւաքին յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Երէկ առաջին նախագահը ներկայացրեց միջազգային հանրութեան վերաբերմունքը իրենց շարժմանը, որի ընթացքում վրդովմունք արտայայտեց նրանց նկատմամբ՝ առանձնացնելով միայն Ռուսաստանը, որը «լրջօրէն պետական մտածողութեամբ աւանդական, դասական պետութեան կեցուածքով է վերաբերւում մեր շարժմանը եւ

Հայաստանում կատարուող իրադարձութիւններին»: Այսօր ընդգծեց նաեւ ԱՄՆ լրջութիւնը, որի մեծ վկայութիւնը, ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի՝ նրանց ԱՄՆ դեպարտամենտի առաջին յայտարարութիւնն էր, երկրորդը՝ ԱՄՆ ԵԱՀԿ-ում ներկայացուցչի յայտարարութիւնը: «Սա լուրջ մօտեցում է: Ապացուցում է, որ ԱՄՆ-ը չեն հաւատում կայացած ընտրութիւններին: Եւ կարծում եմ, որ այսպիսի գործօն է, որ ՀՀ իշխանիկները չեն կարող անտեսել», - ասաց նա:

Լեւոն Տէր-Պետրոսեանը կենտրոնացաւ ԵՄ վրայ՝ նշելով, թէ այդ նոյն լրջութիւնը չի նկատում նրանց մէջ. «Եւրոպական կառոյցները, մասնաւորապէս ԵԱՀԿ-ն եւ նրա դիտորդական առաքելութիւնը, այսօր ճգնաժամ են ապրում, եւ այդ ճգնաժամը այսօր նկատելի է ոչ միայն մեզ մօտ, այլ նաեւ Վրաստանում, եւրոպական մամուլում»: Ի՞նչն է խնդիրը: Մինչեւ հիմա, Լեւոն Տէր-Պետրոսեանի հաւաստմամբ, ԵԱՀԿ-ից եւ նրա առաքելութիւնից դժգոհում էին կառավարութիւնները, նրանք էին արգելքներ յարուցում նրանց գործունէութեան հարցում, սահմանափակում դիտորդների թիւը իրենց երկրներում, նոյն վերաբերմունքը ունէր նաեւ մեր կառավարութիւնը: «Այսօր բոլորովին այլ բան է տեղի ունենում: ԵԱՀԿ-ից այսօր դժգոհում է ժողովուրդը, ընդդիմութիւնը, դա տեղի ունեցաւ Վրաստանում, հիմա Հայաստանում: Վաղ թէ ուշ կը գայ այն պահը, որ ժողովուրդները կը պահանջեն, որ այդպիսի փարիսեցիական գործունէութիւն չծաւալեն մեր երկրներում», - նշեց առաջին նախագահը:

Ի դէպ, Լեւոն Տէր-Պետրոսեանը հաւաքուածներին յայտնեց, թէ դիտորդները նաեւ մեր առջեւ պարտաւորութիւններ ունեն. «Այս կազմակերպութիւնների առջեւ պարտաւորութիւններ են ստանձնել ՀՀ կառավարութիւնը, ինչպէս ցանկացած երկրի կառավարութիւն: Էական կողմը, որ չեն ըմբռնում այդ մարդիկ, որ այդ կազմակերպութիւններն էլ պարտաւորութիւն են ստանձնել մեր ժողովրդի նկատմամբ: Կառավարութիւնից պահանջում են, իսկ իրենք բարի չեն լինում, կամ պատշաճ չեն համարում կատարել իրենց պարտաւորութիւնները այս հրապարակում կանգնած իւրաքանչիւրի նկատմամբ»: Ապա յաւելում, որ նրանց պարտաւորութիւնն է ապահովել, զարգացնել ժողովրդավարութիւնը, իրաւական պետութեան հիմքերը, ժողովուրդների անվտանգութիւնը այս երկրում. «Եթէ նման բան լինէր իրենց երկրներից մէկում, նոր ֆրանսիական յեղափոխութիւն կը լինէր: Իրենց չի կարելի, իսկ մեր նման երկրում կարելի է հանդուրժել: Դա եթէ կ'ուզէք իմանալ, ռասիզմի երեւոյթ է, չգիտակցուած ռասիզմ է մեր տիպի ժողովրդի նկատմամբ: Այն, ինչ որ իրենց մօտ անբարոյական է, մեզ մօտ համարում են բարոյական, այն ինչ անօրինական է, այստեղ կարող են աչք փակել դրա վրայ»:

Ապա յորդորեց ԵԱՀԿ դիտորդներին եթէ գնահատում են մեր ընտրութիւնները, պէտք է դրանք գնահատեն ֆիզիկական բռնութիւնների փաստով: «Դրանք ոչնչով չեն տարբերւում այն բռնութիւններից, որ կիրառում էր Սադամ Հուսէյնը», - աւարտեց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

## ՀԻՄԱ ՕԵԿ-ԱԿԱՆ ՄԻԱՅՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԱՆԴԱՄՆԵ՞ՐՆ ԵՆ

*A1+*, 19:27

«Ես կը խնդրեմ չայրել կուսակցական տոմսը, որովհետեւ հէնց այսպիսի դէպք է լինում, կուսակցութիւնը պաշտօնապէս յայտարարում է, թէ մենք այդպիսի անդամ չունենք», - այսօր Ազատութեան Հրապարակում ՕԵԿ կուսակցականներին ասաց առաջին

նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, որոնք ՕԵԿ-ից հեռանալով՝ ցանկանում էին այրել իրենց տոմսերը:

Աւելի ուշ ՕԵԿ մամուլի ծառայութիւնը տարածեց հաղորդագրութիւն, որում մասնաւորապէս ասւում է. «Այսօր Ազատութեան Հրապարակում երկու քաղաքացիներ ելոյթ են ունեցել Օրինաց Երկիր կուսակցութեան անունից՝ ի ցոյց դնելով անդամատոմսերը: Անհրաժեշտ ենք համարում հասարակութեանը իրազեկել, որ դրանք ՕԵԿ անդամներ չեն, քանի որ ՕԵԿ անդամատոմսերի հին նմուշները դեռեւս Արթուր Բաղդասարեանի ԱԺ նախագահի պաշտօնից հրաժարուելուց յետոյ, ճանաչուել են անվաւեր, իսկ նոր նմուշի կուսակցական տոմսեր ստացել են առայժմ միայն վարչութեան անդամները: Դատապարտում ենք հերթական անգամ կեղծիքի եւ շանտաժի քաղաքականութեան կիրառումը՝ յիշեցնելով, որ այն չի կարող յաջողութիւն ունենալ»:

## ՄԻ ԱՆՁՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄԻ ՉՆՉԻՆ ՊԱՇՏՕՆ ՍՏԱՑԱՒ

*Lragir.am*, 19:28

Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօր հանրահաւաքում յայտնել է, թէ շատ լրագրողներ են փորձել, որ ինքը մեկնաբանի օրուայ խայտառակ նորութիւնը, որ ինչ որ մի անձնաւորութիւն չնչին մի պաշտօն ստացաւ (նկատի ունենալով Արթուր Բաղդասարեանին): Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, ինքը երբեք նրա անունը չի տալու, նրա գործունէութեանը չի անդրադառնալու, պարզապէս մարդ էր, ով դաւաճանեց իր ազգին եւ կանգնեց Թոխմախի Մհերի ու Նեմեց Ռուբոյի կողքին:

## ՕԵԿ ՄԱՄՈՒԼԻ ԾԱՌԱՅՈՒԹԻՒՆԸ ՀԵՐՔՈՒՄ Է

*Lragir.am*, 19:32

ՕԵԿ մամուլի ծառայութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը. «Այսօր Ազատութեան Հրապարակում երկու քաղաքացիներ ելոյթ են ունեցել Օրինաց Երկիր կուսակցութեան անունից՝ ի ցոյց դնելով անդամատոմսերը: Անհրաժեշտ ենք համարում հասարակութեանը իրազեկել, որ նրանք ՕԵԿ անդամներ չեն, քանի որ ՕԵԿ անդամատոմսերի հին նմուշները դեռեւս Արթուր Բաղդասարեանի ԱԺ նախագահի պաշտօնից հրաժարուելուց յետոյ, ճանաչուել են անվաւեր, իսկ նոր նմուշի կուսակցական տոմսեր ստացել են առայժմ միայն վարչութեան անդամները: Դատապարտում ենք հերթական անգամ կեղծիքի եւ շանտաժի քաղաքականութեան կիրառումը՝ յիշեցնելով, որ այն չի կարող յաջողութիւն ունենալ»:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՀԱՇՈՒԱՐԿԵԼ Է ԱՄԷՆ ՄԻ ՔԱՅԼԸ

*A1+*, 19:38

Ազատութեան Հրապարակում այսօր Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը շնորհաւորեց Արթուր Բաղդասարեանին նրա համար, որ «հասաւ իր կեանքի նպատակին եւ Արմէնչիկի աթոռին՝ ստանձնելով Անվտանգութեան Խորհրդի քարտուղարուհու պաշտօնը», ապա աւելացրեց. «Մենք մտնում ենք մեր պայքարի նոր փուլ, որը մտնում ենք նախկին կատարած գործողութիւններով յաղթանակած»:

Նա եւս մէկ անգամ յիշեցրեց, որ այսպիսի գործընթացները կարող են ունենալ տեւական բնոյթ կրել: Օրինակ՝ Ուկրաինայում այն տեւեց երկուս ու կէս շաբաթ, իսկ մենք 9

որ ենք կանգնել, բայց «իշխանական բուրգն արդէն ճօճւում է»: «Տէր-Պետրոսեանը հաշուարկել է բոլոր քայլերը, դուք տեսնում էք այդ մի ամէն քայլը», - ներկաներին ասաց Արամ Սարգսեանը:

Հարթակ բարձրացաւ 101 տարեկան Նշան Տրդատեանը: Հաւաքուածները բուռն ծափողջոյններով դիմաւորեցին նրան: Նա նաեւ մուսալեռցի է, ու Տէր-Պետրոսեանը հարթակից յայտնեց, որ պապիկը կարող է իր հարազատ բարբառով խօսել, ինքը կը թարգմանի նրան: Նշան պապիկը, օգտուելով առիթից, սկսեց երգել իր հարազատ երգերից: Այնուհետեւ՝ ելոյթ ունեցաւ նրա հարսը՝ ասելով, որ Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան անդամ է, որի համար ամաչում է: «Կուսակցական տոմս չունեմ, որ ճղեմ, շպրտեմ», - յայտարարեց նա:

ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանն էլ նշեց, որ իրեն մի մարդ է մօտեցել ու ասել, որ այլեւս չի վախենում Լեւոն Տէր-Պետրոսեանի մասին DVD-երը նայել: «Ես ցանկացայ ելոյթ ունենալ, որ խօսքս հասնի այն տկարամիտներին, որ եթէ մի քանի ամիս առաջ մարդկանց կարող էին պահել ստրկական վիճակում, ապա հիմա իրենց կարծիքով այդ ստրուկները ոտքի են ելել: Մեր ժողովուրդը ձեր պատկերացրած ստրուկները չեն», - յայտարարեց նա:

Հաւաքուածներից մէկն էլ գրաւոր մի առաջարկ արեց, ըստ որի՝ ապակողմնորոշող բոլոր հեռուստաընկերութիւնների դէմ պայքարելու համար կազմակերպել երթ սեւ ժապաւէններով փաթաթուած հեռուստացոյցներով:

## ԿՑՄՑԱԾ ԿՕԱԼԻՑԻԱ ՄԱՍՇՏԱԲԱՅԻՆ ԲԼԷՖԻ ՎՐԱՅ

ԳԷՈՐԳ ՍԱՐԳՍԵԱՆ

*Lragir.am*, 19:46

Երեւում է, Հայաստանի իշխանութիւնը վերջապէս հասկացել է, որ երկրում ծաւալւող ժողովրդական շարժումն արդէն անհնար է կանգնեցնել: Յոյսերը, թէ ուժի կիրառմամբ կարելի է իրագործել նախագահական իշխանութիւնը Սերժ Սարգսեանին փոխանցելու ծրագիրը, մարում են օրեցօր:

Թերեւս սպասելի էր, որ գործող եւ յայտարարուած նախագահներն ինչ որ պահի կը դիմեն զանազան քաղաքական հնարքների՝ հնարաւոր ամէն ինչի համար լրացուցիչ ռեսուրսի տիրապետելու նպատակով: Տեղեկութիւնն այն մասին, որ Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանին առաջարկում են Անվտանգութեան խորհրդի քարտուղարի պաշտօնը, կարելի է դասել այդ հնարքների վառ օրինակների շարքը: Եթէ Բաղդասարեանին առաջարկուէր Ազգային Ժողովի նախագահի պաշտօնը, այդ պաշտօնը նրան կը տրուէր արդէն այսօր (նոր խօսնակ կարելի է ընտրել մէկ օրում), եւ կարելի էր ենթադրել, որ իշխանութիւնն ընդամէնը փորձում է կցմցել կօալիցիա: Բաղդասարեանի տրամաբանութիւնը հասկանալի կը լինէր: Սակայն Հայաստանի Անվտանգութեան խորհրդի քարտուղարի պաշտօնում յայտնուելը կարող է միայն նշանակել, որ նրա թեկնածութիւնը դիտարկւում է որպէս նախագահի նոր իշխանական թեկնածու այն դէպքում, եթէ ՀՀ Սահմանադրական Դատարանը չեղեալ յայտարարի Հայաստանի նախագահի ընտրութեան արդիւնքը: Ամենայնդէպս, իշխանութիւնը երեւի հէնց այդ է ներշնչել Արթուր Բաղդասարեանին: Դժուար թէ նա իշխանութեան հետ այլ խաղի գնար: Այն, որ Բաղդասարեանին ոչ ոք չի պատրաստւում նախագահ դարձնել,

ակնյայտ է բոլորին: Բայց որ կօալիցիան պատրաստւում են կազմաւորել նման մասշտաբային բլէֆի հիման վրայ, նշանակում է Հայաստանի իշխանութիւնը լիակատար խուճապի մէջ է: Սպասենք, թէ Դաշնակցութեան հետ ինչ բլէֆ կը խաղարկեն:

## ԵՐԹԸ ԱՌԱՋՆՈՐԴՈՒՄ ԷԻՆ ԿԱՆԱՅՔ

*A1+*, 19:49

Այսօրուայ երթի առանձնայատկութիւնն այն էր, որ այն առաջնորդում էին կանայք, որոնց գլխաւորում էր Սոցիալ Դեմոկրատակ Հնչակեան Ըուսակցութեան ատենապետ Լիւդմիլա Սարգսեանը: Երթի ժամանակ վիրաւորական արտայայտութիւններ հնչում էին ինչպէս Սերժ Սարգսեանի, այնպէս էլ Արթուր Բաղդասարեանի հասցէին. «Արթուր դաւաճան», «Արթուր դաւաճան»: Երթը գլխաւորողները յայտարարում էին, որ «Արթուր Բաղդասարեանը ոչնչով չի տարբերւում Արտաշէս Գեղամեանից»: «Եւ ուրեմն՝ ոչ թէ Արթուր դաւաճան, այլ Արթուր Գեղամեան, Արթուր Գեղամեան»:

Ինչպէս վերջին օրերի երթերի ժամանակ, այսօր էլ Կառավարութեան եւ Դատախազութեան շէնքերը «հսկող» ոստիկանները արժանացան ծափողջոյնների: Ոստիկաններն էլ իրենց հերթին ժպտում էին եւ բջջայիններով լուսանկարում մարդկանց: Երթի մասնակիցները անցան նախկին Կոմայգու յարակից փողոցներով, առաջին շարքերը արդէն հասցրել էին այգու մի ծայրից միւսը հասնել, երբ վերջին շարքերը դեռ այգու սկզբում էին: Այնուհետեւ Վազգէն Սարգսեան, Նալբանդեան, Թումանեան փողոցներով վերադարձան Ազատութեան Հրապարակ:

## ՀԱՂՈՐԴՈՒՄ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

*Lragir.am*, 19:51

Փետրուարի 29-ին Վանաձորի Արցախ պուրակում կայացած հանրահաւաքը Վանաձորի մի խումբ բնակիչների կողմից խանգարելու փաստի կապակցութեամբ Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակը հաղորդում է ուղարկել Վանաձորի ոստիկանութիւն: Հաղորդման մէջ նշւում է, որ Վանաձորի Արցախ պուրակում կազմակերպուած հանրահաւաքի ժամանակ միեւնոյն անձանց խումբը մի քանի անգամ փորձ է արել խոչընդոտել հանրահաւաքի անցկացումը:

«Հանրահաւաքին ներկայ քաղաքացիների հաւաստմամբ՝ անկարգութիւն անող քաղաքացիների խմբում էր Վանաձորի քաղաքապետ Ս. Դարբինեանի վարորդը: Մեր բազմաթիւ ահազանգերին արձագանքելով՝ հանրահաւաքին մասնակցող ոստիկանութեան աշխատակիցները կարողացան որոշ չափով սաստել այդ խմբի անդամների անօրինական գործողութիւնները: Սակայն խումբը շարունակեց եւս մի քանի անգամ գոռգներով, անյարգալից արտայայտութիւնների բացականչմամբ խոչընդոտել հանրահաւաքի խաղաղ ընթացքը, որը որոշ պահերին լարուածութիւն էր առաջացնում հանրահաւաքի մասնակիցների մօտ:

Խմբի գործողութիւնների պարբերականութիւնը հիմք է տալիս կարծելու, որ նրանք գործում էին ծրագրաւորուած եւ նպատակ ունէին ոչ միայն խոչընդոտել հանրահաւաքի անցկացմանը, այլեւ առաջացնել հրահրումներ ու առճակատումներ հանրահաւաքի մասնակիցների հետ: Նման գործողութիւնները ՀՀ Քրէական Օրէնսգրքի 163 յօդուածի յատկանիշներով ենթակայ են քրէական պատասխանատուութեան: Վերստին շնորհա-

կալութիւն յայտնելով հանրահաւաքին ներկայ ոստիկաններին նրանց աշխատանքի համար, որը էական ներդրում եղաւ հանրահաւաքի խաղաղ անցկացման համար, միաժամանակ յայտնում եմ, որ համոզմունք էր ձեւաւորւում, որ խումբը այնուամենայնիւ իրեն զգում էր անպատիժ, այլապէս մէկ անգամ զգուշացնելուց յետոյ նրանք չէին շարունակի իրենց անօրինական գործողութիւնները: Սոյնով դիմում եմ Ձեզ՝ բացայայտելու խմբի անձանց իսկութիւնը եւ քրէական պատասխանատուութեան ենթարկելու նրանց: Կարծում եմ, որ դրանով իրապէս կը նպաստէք իրաւապահ մարմինների նկատմամբ վստահութեան եւ յարգանքի ձեւաւորմանը քաղաքացիների կողմից», ասուած է Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակից ոստիկանութիւն ուղարկուած հաղորդման մէջ:

## ԴԻՄՈՒՄ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻՆ

*Lragir.am*, 19:41

Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի ղեկավար Ալեքսանդր Արզումանեանն այսօրուայ հանրահաւաքում դիմել է Կարմիր Խաչի Հայաստանի գրասենեակի ղեկավար Ջեյմս Ռեյնոլդսին: Ալիկ Արզումանեանի խօսքով, գիշերը անհնար է դարձել Ազատութեան Հրապարակում գտնուողներին սնունդ եւ վառելափայտ հասցնելը, քանի որ իշխանութիւնը պատերազմական վիճակի նման կիրառում է շրջափակման քաղաքականութիւն: Ալեքսանդր Արզումանեանը խնդրում է Կարմիր Խաչին տրամադրել մեքենաներ, որոնցով հնարաւոր լինի սնունդ եւ վառելափայտ հասցնել Ազատութեան Հրապարակ: Իր հերթին, Նիկոլ Փաշինեանը յայտարարել է, թէ մեր յոյսը Կարմիր Խաչի վրայ չէ, այլ ժողովրդի հաւաքականութեան:

## ՉՈՐՍ ՏԱՐԲԵՐԱԿ ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻՑ

*Lragir.am*, 20:12

Հայաստանի նախագահ Ռոբերտ Քոչարեանը փետրուարի 29-ին այցելել է Երեւանի Պետական համալսարան եւ հերթական հանդիպումն ունեցել ուսանողների հետ: Բնականաբար հանդիպման հարցերի թւում առաւել հետաքրքրականը եղել է ներկայիս ներքաղաքական իրավիճակին նախագահ Քոչարեանի տուած գնահատականը: Նա ներկայացրել է իրադարձութեան զարգացման չորս հնարաւոր սցենար:

Առաջին տարբերակի առումով Ռոբերտ Քոչարեանը նշել է, որ մարդիկ ինչքան շատ մնան Ազատութեան Հրապարակում, այդքան աւելի մեծ է լինելու նրանց հիասթափութիւնը, քանի որ այդ ընթացքում մարդիկ սթրէս են ապրում եւ չեն ներում այն մարդկանց, ում պատճառով ապրել են այդ սթրէսը: Ռոբերտ Քոչարեանը նշել է, թէ դա փակուղի է եւ այն ժամանակի ընթացքում վարկաբեկելու է նրանց, ովքեր կիրառում են այդ մարտավարութիւնը:

Ինչ վերաբերում է երկրորդ սցենարին, ապա դա, ըստ Ռոբերտ Քոչարեանի, կարող է լինել այն, որ ընդդիմութիւնը յուսահատութիւնից դիմի այն գործողութիւններին, ինչի որ դիմեց 1996 թուականի ընդդիմութիւնը: Այդ դէպքում, ըստ Ռոբերտ Քոչարեանի, ընդդիմութիւնը կը յայտնուի օրէնքից դուրս եւ կը կրի դրանից բխող բոլոր հետեւանքները: Ռոբերտ Քոչարեանի խօսքով, իրաւապահ մարմիններն ունեն սահմանադրական կարգը պահելու ուժ եւ վճռականութիւն: Նախագահի խօսքով, այդ դէպքում, Ազատութեան

Հրապարակի հարթակի վրայ գտնուող գործիչներից շատերը հարկադրուած կը լինեն երկար տարիներ անցկացնել բանտերում:

Երրորդ սցենարով, Ռոբերտ Քոչարեանը պատկերացնում է, որ Ազատութեան Հրապարակի ընդդիմութիւնը մարդկանց շնորհակալութիւն է յայտնում աջակցութեան համար, նրանց ուղարկում է տուն եւ դառնալով կոշտ ընդդիմութիւն, սկսում է պատրաստուել յաջորդ ընտրութեանը:

Չորրորդ սցենարը, որ ներկայացրել է Ռոբերտ Քոչարեանը, խօսելով իրադարձութեան յետագայ զարգացման հնարաւոր տարբերակների մասին, շատ նման է երրորդին: Ըստ այդմ, մարդկանցից կրկին շնորհակալութիւն են յայտնում, ուղարկում են տուն եւ շնորհաւորում են նորընտիր նախագահին, «խնդրում են նրան մեղմ վերաբերուել այն մարդկանց հանդէպ, ովքեր օրէնք են խախտել, եւ գնում են հերթական գիտական աշխատանքը գրելու»:

Ինչ վերաբերում է իշխանութեան գործողութիւններին, ապա Ռոբերտ Քոչարեանի խօսքով, առաջինը համբերատար սպասելու տարբերակն է, մինչեւ որ Ազատութեան Հրապարակի հանրահաւաքներն ինքնաբերաբար կը մարեն, իսկ երկրորդը՝ հրապարակը ոստիկանների միջոցով ազատելն ու շրջապատի մարդկանց հանգիստ ապրելու հնարաւորութիւն տալը: Ի դէպ, Ռոբերտ Քոչարեանը ասել է, թէ ոստիկանութիւնն այն դէպքում է ուժ կիրառում, երբ հանդիպում է դիմադրութեան:

## ՁԵՐԲԱԿԱԼԵՑԻՆ 73 ՏԱՐԵԿԱՆ ԿՈԹԵՑՈՒՆ

*A1+*, 20:12

Այսօր Կենտրոն եւ Նորք-Մարաշ համայնքների առաջին ատեանի դատարանը բաւարարեց դատախազութեան միջնորդութիւնը՝ քաղաքացիներ Եուրի Մամեանի եւ Ժորա Սիրադեղեանի նկատմամբ 2 ամսով կալանքը որպէս խափանման միջոց ընտրելով: Ֆորում իրաւունքի կենտրոնի նախագահ փաստաբան Տիգրան Տէր-Եսայեանի կարծիքով՝ որոշումը կանխատեսուած էր. «Քանի գործը իրաւական հարթութեան մէջ չէ, նրանց նկատմամբ շարունակուելու է բռնի ուժ կիրառուել»:

Տաւուշի մարզի բնակիչներ՝ 73-ամեայ Ժորա Սիրադեղեանը (Կոթի գիւղ) եւ 65-ամեայ Եուրի Մամեանը (Նոյեմբերեան քաղաք) ձերբակալուել էին երկու օր առաջ ապօրինի զէնք պահելու կասկածանքով: Նրանց բնակարանում խուզարկութեամբ յայտնաբերուել էր զէնք եւ փամփուշտներ:

«Ըստ էութեան գործընթացում իրաւական ձեւակերպում չկայ, դատարանը միանշական է գործում՝ առանց որեւիցէ բան հաշուի առնելու, օրինակ՝ որ յայտնաբերուածը փամփուշտ էր: Եւ կապուած տարիքի հետ կասկածեալը փախչող չէ, որ նա որպէս այդպիսին իր գործողութիւններով չի կարող խանգարել քննչական մարմնի գործողութիւններին», - *Ա1+*-ին յայտնեց Տէր-Եսայեանը՝ նշելով, որ դա նուազագոյնը «հրահանգ է, որ այդ երկու քաղաքացիները անազատութեան մէջ լինեն»:

Նրանց բնակարանները խուզարկել էին Լեւոն Տէր-Պետրոսեանի՝ իրենց մարզում քարոզարշաւին հանդիպմանը մասնակցելուց յետոյ: Ի դէպ, Ժորա Սիրադեղեանը Վանօ Սիրադեղեանի եղբայրն է, իսկ միւս ձերբակալուածը՝ նրա ազգականը:

Ժորա Սիրադեղեանն ու Եուրի Մամեանը այժմ գտնւում են Ազգային Անվտանգութեան Ծառայութեան մեկուսարանում: Ժորա Սիրադեղեանի վիճակը ձերբակալման

առաջին իսկ օրուանից լաւ չէ եւ նա դեղեր է ընդունում:

Նրանք մեղադրւում են Քրէական Օրէնսգրքի 235-կէտի առաջին մասով՝ զէնք, զինամթերք ապօրինի պահելու համար:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՊԱՏԱՍԽԱՆԵՑ ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻՆ

*A1+*, 20:20

Երթից յետոյ Ազատութեան Հրապարակում շարունակուող հանրահաւաքի ժամանակ հարթակ բարձրացաւ Լեւոն Տէր-Պետրոսեանը՝ թոռանը գրկած: Առաջին նախագահը յայտարարեց, որ բարձրացել է հարթակ՝ պարզապէս պատասխանելու իրեն մօտեցած բազմաթիւ լրագրողներին, ովքեր հարցնում են, թէ ինչպէս կը մեկնաբանի «օրուայ գլխաւոր խայտառակ իրադարձութիւնը մի անձնաւորութեան կողմից, որը արժանացաւ մի չնչին պաշտօնի»: (Արթուր Բաղդասարեանն այսօր յուշագիր էր ստորագրել Սերժ Սարգսեանի հետ՝ համաձայնելով ստանձնել Անվտանգութեան Խորհրդի քարտուղարի պաշտօնը-խմբ) «Ես այս անունը այլեւս չեմ արտասանելու, նրա հետ կապուած ոչինչ չեմ մեկնաբանելու: Պարզապէս մարդ էր, որը դաւաճանեց իր ազգին եւ կանգնեց Թոխմախի Միերի եւ Նեմեց Ռուբոյի կողքին», - ասաց նա:

Նշենք, որ հրապարակում արդէն ծածանւում էին «Արթուր դաւաճան» եւ «Յօրինածի օրինաց անդամներ, միացէք» պաստառներ:

Իսկ Արթուր Բաղդասարեանի այս քայլը աւելի վաղ իր ելոյթում մեկնաբանել էր նաեւ Նիկոլ Փաշինեանը, ով ասաց, որ «այս մարդը ամիսներ առաջ հէնց նոյն Քոչարեանի կողմից ազգի դաւաճան որակուեց, մնացածը արդէն պարզ է»:

Յիշեցնենք, որ անցած տարեվերջին Ազգային Անվտանգութեան մարմինների իրականացրած միջոցառման արդիւնքում պարզուեց, որ այսօր Անվտանգութեան Խորհրդի քարտուղարի պաշտօնին յաւակնող Արթուր Բաղդասարեանը հանդիպում է ունեցել դիւանագիտական կորպուսի ներկայացուցչի հետ եւ խնդրել, որ բացասական գնահատական տրուեն եւ ճնշումներ գործադրուեն իշխանութիւնների նկատմամբ: Ռոբերտ Քոչարեանը նրա այս քայլը համարեց դաւաճանութիւն:

«Դա դաւաճանութեան դրսեւորում է, այդ դրսեւորումը աւելի այլանդակ տեսք ունի այն պատճառով, որ սեփական նախաձեռնութեամբ է դա արուել. մէկ անգամ դաւաճանողը ընդունակ է դա անել, երկրորդ, երրորդ, չորրորդ անգամ: Դա աւելի շուտ մարդու խառնուածք է», - ասել էր Ռոբերտ Քոչարեանը:

## ԿԸՅ ՆԻՒԹԵՐՈՎ ՅԱՐՈՒՑՈՒԵԼ Է 9 ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾ

*Lragir.am*, 20:25

ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութիւնը տեղեկացնում է, թէ 2008 թուականի փետրուարի 28-ին ՀՀ Գլխաւոր Դատախազութիւնը ՀՀ Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովից ստացել է թւով 9 տեղամասերի վերաբերեալ նիւթեր, որոնցով յայտնաբերուել են անհամապատասխանութիւններ փետրուարի 19-ին տեղի ունեցած ընտրութիւնների արդիւնքների վերաբերեալ արձանագրութիւնների եւ դրանց քաղուածքների միջեւ: Անհամապատասխանութիւններ են յայտնաբերուել մասնաւորապէս թիւ 9/18, 17/05, 20/04, 22/21, 22/22, 22/30, 24/18, 24/19, 38/62 ընտրական տեղամասերում քուէարկութեան արդիւնքների ԿԸՅ ներկայացուած ամփոփիչ արձանա-

գրութիւնների եւ դրանց քաղուածքների միջեւ: Ստացուած նիւթերը նոյն օրը ՀՀ Գլխաւոր Դատախազն ուղարկել է ՀՀ յատուկ քննչական ծառայութիւն, որտեղ դրանց հիման վրայ յարուցուել է թուով 9 քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 150-րդ յօդուածի յատկանիշներով, կատարւում է նախաքննութիւն, նշւում է հաղորդագրութեան մէջ:

## ՄԵՂՔՆ ԸՆԴՈՒՆԵԼ Է

*Lragir.am*, 20:42

ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը.

«ՀՀ թիւ 33 ընտրատարածքային ընտրական յանձնաժողովի նախագահի ստորագրութեամբ Շիրակի մարզի դատախազութիւնում ստացուել է թուով 10 դիմում-բողոք՝ ներկայացուած ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի նոյն ընտրատարածքի 10 տեղամասերում գրանցուած վստահուած անձանցից:

Միեւնոյն ձեւաթղթով եւ ձեւակերպումներով թիւ 33/64, 33/77, 33/75, 33/71, 33/78, 33/79, 33/63, 33/72, 33/65, 33/76 ընտրատեղամասերում Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց կողմից ներկայացուած դիմում-բողոքներում նշւում էր, որ իրենց ընտրատեղամասերում տեղի են ունեցել քաղաքացիների ազատ կամքի արտայայտման կոպիտ խախտման դէպքեր, մասնաւորապէս ընտրութիւններն անցել են համատարած ընտրակաշառքներով, ընտրողների նկատմամբ ճնշումներ գործադրելով, բաց քուէարկութիւններով եւ լցոնումներով:

Շիրակի մարզի դատախազ Դ. Սարգսեանի յանձնարարութեամբ ՀՀ ոստիկանութեան Շիրակի քննչական բաժնում ստուգուել են դիմում-բողոքներում մատնանշուած հանգամանքները, որի ընթացքում բացատրութիւններ են տուել նաեւ դիմումներ ներկայացրած Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձինք, նրանց թւում Լ. Տէր-Պետրոսեանի ազգական (մօրեղբօր որդի) Մարտին Ղարիբեանը: Վերջիններս չեն պնդել իրենց իսկ դիմումներում մատնանշուած փաստերը, հակառակը՝ ընդգծել, որ քուէարկութեան օրը չեն բացակայել ընտրատեղամասից ու հետեւել են ինչպէս քուէարկութեան ընթացքին, այնպէս էլ արդիւնքների ամփոփմանը եւ որեւէ ընտրախախտում՝ բաց քուէարկութեան, քուէաթերթիկների լցոնման, ընտրակաշառք բաժանելու դէպքեր չեն արձանագրել:

Վերը յիշատակուած ընտրատեղամասերում Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձանցից մի քանիսն իրենց բացատրութիւններում նշել են, որ համատարած ընտրակաշառք բաժանուելու մասին դիմում-բողոքը ներկայացրել են «դրսից լսած խօսակցութիւնների հիման վրայ» եւ իրականում որեւէ փաստ չեն կարող մատնանշել, իսկ մի մասն էլ յայտնել է, որ բողոքները գրել են ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի թիւ 33 ընտրատարածքի շտաբի պետ Կարէն Իգիթեանի դրդմամբ: Վերջինս, վստահուած անձանցից տեղեկանալով, որ Լեւոն Տէր-Պետրոսեանը քիչ ձայներ է հաւաքել, գիտակցելով իր տրամադրած տեղեկութեան սուտ լինելու հանգամանքը, վստահուած անձանց դրդել է սուտ մատնութեան՝ թիւ 33 ընտրատարածքում համատարած ընտրակաշառք բաժանելու մեղադրանքի արհեստական ապացոյցներ ստեղծելու նպատակով:

Նշուած փաստի առթիւ ՀՀ ոստիկանութեան Շիրակի քննչական բաժնում յարուցուել է քրէական գործ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 333-րդ յօդուածի 2-րդ մասի 2-րդ կէտով: Կ. Իգիթեանին 29.02.08թ. առաջադրուել է մեղադրանք՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 333-րդ

յօդուածի 2-րդ մասի 2-րդ կէտով նախատեսուած արարք կատարելու համար, նրա նկատմամբ որպէս խափանման միջոց է ընտրուել ստորագրութիւն՝ չհեռանալու մասին: Որպէս մեղադրեալ հարցաքննուելիս Կ. Իգիթեանն ընդունել է առաջադրուած մեղադրանքը եւ տուել խոստովանական ցուցմունքներ»:

## ՈՎ ԱՍԱՑ, ԹԷ ՇԱՏ ԼԱՒ ԳՆԱՀԱՏԱԿԱՆ Է ԵՂԵԼ

*Lragir.am*, 20:50

ԵԱՀԿ-ի Ժողովրդավարական Հաստատութիւնների եւ Մարդու Իրաւունքների գրասենեակի երկարաժամկէտ դիտորդական առաքելութեան ղեկավար Գերտ Արենսը այսօր *Ազատութիւն* ռադիոկայանին տուած բացառիկ հարցազրոյցում հերքել է պնդումները, թէ Հայաստանի նախագահական ընտրութիւններին միջազգային դիտորդները շատ լաւ գնահատական են տուել: «Կան մարդիկ, ովքեր յղում են կատարում մեր նախնական զեկոյցին եւ յայտարարում են, որ այն ընտրութիւններին տրուած հրաշալի գնահատական է պարունակում: Դա այդպէս չէ», ասել է Արենսը: «Խորհրդարանական ընտրութիւններին տուած մեր գնահատականում մենք ասել ենք՝ այս ընտրութիւնները մեծամասամբ համապատասխանել են եւրոպական չափանիշներին, այստեղ ասում ենք՝ ընտրութիւնները հիմնականում անցկացուել են երկրի ստանձնած միջազգային պարտաւորութիւններին համապատասխան: Երբ անցած տարի՝ խորհրդարանական ընտրութիւնների դէպքում օգտագործում էինք «մեծամասամբ» բառը, ի նկատի ունէինք՝ 80-90 տոկոսով համապատասխանել են ընդունուած չափանիշներին, իսկ այս անգամ օգտագործուած «հիմնականում» բառը կարող է նշանակել 51 տոկոս են համապատասխանել, 70 տոկոս, բայց՝ ոչ աւելին», փաստել է դեսպան Արենսը: Նրա վկայութեամբ՝ «Գնահատականը կարող է փոխուել՝ պայմանաւորուած այն հանգամանքով, թէ մենք ինչ կը յայտնաբերենք առաջիկայում: Յաջորդ փաստաթուղթը երրորդ միջանկեալ զեկոյցն է լինելու: Այն հիմնուած կը լինի փաստերի վրայ, որոնք նաեւ քննադատութիւն կը պարունակեն: Առաքելութեան վերջնական զեկոյցը կը հրապարակուի մայիսին»:

«Երբ մենք ասում ենք, որ Հայաստանի նախագահական ընտրութիւնները անցկացուել են հիմնականում երկրի ստանձնած միջազգային պարտաւորութիւններին համապատասխան, դա հաճոյախօսութիւն չէ: Մենք դիտարկում ենք անցկացնում շատ երկրներում, եւ պէտք է ասեմ, որ շատ աւելի վատ դէպքերի ենք ականատես եղել: Կան երկրներ, որտեղ տեսել ենք, թէ ինչպէս է ոստիկանութիւնը ծեծում մարդկանց: Հայաստանում նման բան չենք տեսել», յայտարարել է ԵԱՀԿ երկարաժամկէտ դիտորդական առաքելութեան ղեկավարը:

*Ազատութիւն* ռադիոկայանի հարցին, թէ հետեւում են արդեօք դիտորդները հայաստանեան հեռուստաընկերութիւնների աշխատանքին, երբ Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող իրադարձութիւնները հիմնականում ծաղրանքով են լուսաբանւում, ինչած քաղաքական գնահատականներն ուղղակի չեն հեռարձակւում, իսկ Տէր-Պետրոսեանի տան մօտ հաւաքուած ցուցարարների կարծիքը լրատուական ծրագրերը կարեւոր են համարում եթեր հեռարձակել, Գերտ Արենսը պատասխանել է. «Կարծում եմ, ձեր ասածի մէջ ճշմարտութիւն կայ: Անձամբ ես մի քանի անգամ միացրել եմ հեռուստացոյցը, որ տեսնեմ՝ ցուցադրւում են արդեօք Տէր-Պետրոսեանի կազմակերպած այդ հանրահաւաքները, սակայն հանրահաւաքի մասին պատմող տեսանիւթ չեմ յայտնաբերել: Այս դէպքում

տեսնում ենք միանգամայն միակողմանի լուսաբանում, եւ դա լաւ չէ», հաղորդում է *Ազատութիւն* ռադիոկայանը:

## ԴԵՍՊԱՆԸ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ ԽՈՒԼԻԳԱՆՆԵՐ ՉԻ ՏԵՍԵԼ

*A1+*, 20:54

ԵԱՀԿ-ի Ժողովրդավարական Հաստատութիւնների եւ Մարդու Իրաւունքների Գրասենեակի երկարաժամկէտ դիտորդական առաքելութեան ղեկավար Գերտ Արենսը այսօր հերքել է այն պնդումները, թէ Հայաստանի նախագահական ընտրութիւններին միջազգային դիտորդները շատ լաւ գնահատական են տուել:

«Կան մարդիկ, ովքեր յղում են կատարում մեր նախնական զեկոյցին եւ յայտարարում են, որ այն ընտրութիւններին տրուած հրաշալի գնահատական է պարունակում: Դա այդպէս չէ», - *Ազատութիւն* ռադիոկայանին տուած հարցազրոյցում ասել է նա:

Ըստ նրա՝ «Խորհրդարանական ընտրութիւններին տուած մեր գնահատականում մենք ասել ենք՝ այս ընտրութիւնները մեծամասամբ համապատասխանել են եւրոպական չափանիշներին, այստեղ ասում ենք՝ ընտրութիւնները հիմնականում անցկացուել են երկրի ստանձնած միջազգային պարտաւորութիւններին համապատասխան:

Երբ անցած տարի՝ խորհրդարանական ընտրութիւնների դէպքում օգտագործում էինք «մեծամասամբ» բառը, ի նկատի ունէինք՝ 80-90 տոկոսով համապատասխանել են ընդունուած չափանիշներին, իսկ այս անգամ օգտագործուած «հիմնականում» բառը կարող է նշանակել 51 տոկոս են համապատասխանել, 70 տոկոս, բայց՝ ոչ աւելին»:

«Շատ դժուար է այս երկու ընտրութիւնների միջեւ համեմատութիւն անցկացնելը: Բայց, ընդհանուր առմամբ, այո, կարելի է ասել, որ այս ընտրութիւններին տրուած մեր գնահատականը տարբերւում է խորհրդարանականին տրուած գնահատականից: Եթէ անգամ դիտարկէք բառերի տարբերութեան առումով, ակնյայտ կը դառնայ, որ «մեծամասամբ» բառը, որը հնչեցուեց խորհրդարանական ընտրութիւններին տրուած գնահատականում, շատ աւելի դրական իմաստ ունի, քան «հիմնականում» բառը, որը օգտագործուեց այս ընտրութիւններին տրուած նախնական զեկոյցում», - նշել է Գերտ Արենսը:

Նրա վկայութեամբ՝ «Գնահատականը կարող է փոխուել՝ պայմանաւորուած այն հանգամանքով, թէ մենք ինչ կը յայտնաբերենք առաջիկայում: Յաջորդ փաստաթուղթը երրորդ միջանկեալ զեկոյցն է լինելու: Այն հիմնուած կը լինի փաստերի վրայ, որոնք նաեւ քննադատութիւն կը պարունակեն: Առաքելութեան վերջնական զեկոյցը կը հրապարակուի մայիսին»:

Նա յաւելեց, որ այս պահին իրենք ամբողջութեամբ համակարծիք են ընտրութիւններին տրուած նախնական գնահատականին՝ ընտրութիւնները հիմնականում անցկացուել են երկրի ստանձնած միջազգային պարտաւորութիւններին համապատասխան:

Հարցին, թէ հետեւու՞մ են արդեօք դիտորդները հայաստանեան հեռուստաընկերութիւնների աշխատանքին, երբ Ազատութեան Հրապարակում տեղի ունեցող իրադարձութիւնները հիմնականում ծաղրանքով են լուսաբանւում, հնչած քաղաքական գնահատականներն ուղղակի չեն հեռարձակւում, իսկ Տէր-Պետրոսեանի տան մօտ հաւաքուած ցուցարարների կարծիքը լրատուական ծրագրերը կարեւոր են համարում

եթեր հեռարձակել, Գերտ Արենսը պատասխանեց. - «Կարծում եմ, ձեր ասածի մեջ ճշմարտութիւն կայ: Անձամբ ես մի քանի անգամ միացրել եմ հեռուստացոյցը, որ տեսնեմ՝ ցուցադրու՞մ են արդեօք Տէր-Պետրոսեանի կազմակերպած այդ հանրահաւաքները, սակայն հանրահաւաքի մասին պատմող տեսանիւթ չեմ յայտնաբերել: Այս դէպքում տեսնում ենք միանգամայն միակողմանի լուսաբանում, եւ դա լաւ չէ»:

«Ես իրաւունք չունեմ խորհուրդներ տալու, բայց մի անձնական դիտարկում. մենք տեսել ենք, որ մարդիկ իսկապէս օրինապահ են այդ հրապարակում, եւ չեմ կարծում, որ այնտեղ խուլիգաններ կան: Ու յատկապէս երիտասարդները մտահոգուած են ժողովրդավարական ընտրութիւններով: Սա մի շարժում է, որին պէտք է մեծ պատասխանատուութեամբ վերաբերեն այս երկրի քաղաքական գործիչները: Նաեւ կարծում եմ, որ ճիշտ ձեւով պէտք է վարուել այս շարժման հետ», - եզրափակեց Գերտ Արենսը:

## «ՔԱՂԲԱՆՏԱՐԿԵԱԼՆԵՐԻ ԹԻՒԸ ԳՆԱԼՈՎ ԱՒԵԼԱՆՈՒՄ Է»

*A1+*, 21:02

**Ժառանգութիւն կուսակցութեան յայտարարութիւնը**

2008թ. փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնները դարձան գործող իշխանութեան պաշտօնավարման տարիների կոպտագոյն օրինախախտումների գագաթնակէտը եւ մեր պետականութեան կարճ կենսագրութեան մէջ հերթական խոր վէրքը թողեցին Հայաստանի ազատատենչ ժողովրդի հոգում:

Քուէարկութեան օրը հասարակական եւ քաղաքացիական իրենց պարտքը, պաշտօնական պարտականութիւնները կատարելիս յարձակումների թիրախ դարձան ՀՀ բազմաթիւ քաղաքացիներ, այդ թւում՝ Ժառանգութիւն խմբակցութեան 3 պատգամաւորներ, ընտրական յանձնաժողովների բազմաթիւ անդամներ, անկախ լրատուամիջոցների լրագրողներ, ընդդիմադիր թեկնածուների վստահուած անձինք, շարքային ընտրողներ, որոնց քաղաքական կամքի նկատմամբ գործադրուեցին տարաբնոյթ բռնութիւններ:

Ընտրութիւններին յաջորդած՝ կեղծիքների ու ապօրինութիւնների հանդէպ համաժողովրդական ընդվզման գործողութիւններին իշխանութիւնները հակազդեցին իրենց վերահսկողութեան տակ գտնուող զանգուածային տեղեկատուութեան բոլոր միջոցներով սփռած միակողմանի, աչքառու քարոզչութեամբ, ապաեւ՝ ակնյայտօրէն քաղաքական դրդապատճառներով իրականացուած կալանաւորումներով: Ցաւով փաստում ենք, որ քաղբանտարկեալների թիւը Հայաստանում գնալով աւելանում է եւ արդէն հասել է ահագնացող չափերի:

Մտահոգիչ է նաեւ այն փաստը, որ ընտրութեան յաջորդ օրը ԵԱՀԿ/ԵԽԽՎ դիտորդական առաքելութիւն իրականացնողներն իրենց հերթին փորձեցին նախնական յայտարարութեամբ օրինականացնել «նախագահական ընտրութիւն» անուան տակ ամենաթողութիւնը լռելեայն խրախուսած եւ ընտրախախտումները գործնականում համակարգած Կենտրոնական Ընտրական Յանձնաժողովի հրապարակած ցուցանիշները՝ աւելի խորացնելով Հայաստանի հասարակութեան անվստահութիւնը ոչ միայն ընտրական գործընթացի, այլեւ միջազգային հանրութեան ու առաջադէմ միջազգային կազմակերպութիւնների հանդէպ, որոնք 2007-2008թթ. ընթացքում այս էլ երկրորդ անգամ կիրառում են երկակի չափանիշներ:

Ժառանգութիւն կուսակցութիւնը խորհրդարանում մեծ ջանքեր է գործադրել

օրէնսդրութեան բարելաւման միջոցով ազատ եւ արդար ընտրութիւնների անցկացման նախադրեալներ ստեղծելու, նախընտրական շրջանում քաղաքական ուժերի համախմբում ու համաժողովրդական միասնութիւն ապահովելու, ընտրական յանձնաժողովներում օրինականութիւն հաստատելու եւ ընտրութիւնների ընթացքում հասարակական վերահսկողութիւն սահմանելու ուղղութեամբ: Ցաւօք սրտի, Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիների ազատութիւնների եւ իրաւունքների դէմ դուրս եկած իշխանութիւնները հերթական անգամ փորձում են պարտութեան մատնել սեփական ժողովրդին:

Ժառանգութիւնը պահանջում է իշխանութիւններից՝ դադարեցնել քաղաքական հետապնդումները եւ ձեռնպահ մնալ խաղաղ հանրահաւաքների հանդէպ ցանկացած տեսակի ուժի գործադրումից:

Հայաստանի Հանրապետութեան պատմութեան այս բախտորոշ հանգրուանում իւրաքանչիւր քաղաքական ուժ, ով զգում է իր պատասխանատուութիւնը ստեղծուած իրավիճակի համար եւ ի զօրու է դրանից արժանապատուօրէն դուրս գալու ելքեր առաջարկել, պէտք է համակողմանի վերանայման ենթարկի իր յետագիծը, համահասարակական երկխօսութիւն սկսի յանուն երկրի ապագայի: Նման վերանայման ձեւերից մէկն էլ կարող է դառնալ ՀՀ Սահմանադրական Դատարանի արդարացի վճիռը ՀՀ նախագահի նախկին թեկնածուների հայցերի կապակցութեամբ: Ժառանգութիւնը Սահմանադրական Դատարանից ակնկալում է այդ հայցերի քննութեանը մօտենալ երկրի ապագայի առջեւ պատասխանատուութեան գիտակցմամբ եւ օրէնքի տառի յարգմամբ՝ կատարելով համալիր եւ ամբողջական քննութիւն: Թէ՛ ընտրութիւնների օրը տեղամասային ընտրական յանձնաժողովներում եւ դրանց շուրջ տեղի ունեցած ընտրակեղծիքների ու բազմապիսի այլ խախտումների քանակական եւ որակական յատկանիշները, թէ՛ քուէների վերահաշուարկի ընթացքում կատարուած խայտառակ միջադէպերը աներկբայօրէն վկայում են դրանց համակարգային բնոյթի մասին, ինչը յանգեցրել է ընտրութիւնների եւ, մասնաւորապէս, քուէարկութեան պաշտօնական արդիւնքների նկատմամբ հասարակական վստահութեան բացակայութեան: Յուսով ենք, որ Սահմանադրական Դատարանի անկողմնակալ վճիռը Հայաստանի ապագայի առջեւ կը բացի օրինականութեան, ժողովրդավարութեան եւ քաղաքացիական իրաւունքի դռները:

Ժառանգութիւնը վստահեցնում է, որ միշտ կանգնած է լինելու ժողովրդի ու ճշմարտութեան կողքին եւ, պաշտպանելով Հայաստանի պետականութեան հիմնարար սկզբունքները, երբեք չի նահանջելու համակարգային ընդդիմութեան իր դիրքերից: Մեր բոլոր անդամներին ու համակիրներին, մեր ձայնին սպասող քաղաքացիներին կոչ ենք անում չընկրկել ապօրինութիւնների ու անարդարութեան դէմ-հանդիման, անվարան առաջ ընթանալ՝ իրացնելով իրենց սահմանադրական իրաւունքը:

## ԳԱԼԱՆ Կ'ԵԹԵՐԱԶՐԿԵ՞Ն

*A1+*, 21:19

Այսօր Շիրակի մարզի ընդհանուր իրաւասութեան դատարանը բաւարարել է Գիւմրիի քաղաքապետարանի հայցն ընդդէմ *Գալա* հեռուստաընկերութեան սեփականատէր ՉԱՊ ՍՊԸ-ի: Դատաւոր Ա. Խաչատրեանը երկուսուկէս բոպէում հրապարակեց իր վճիռը ՉԱՊ ՍՊԸ-ի եւ «ՉԱՊ ՍՊԸ-ն ընդդէմ Գիւմրու քաղաքապետարանի» միացեալ գործերի վերաբերեալ:

Ըստ դատարանի վճռի՝ *Գալա* հեռուստարընկերութիւնը պարտաւորւում է ապամոնտաժել քաղաքապետարանի սեփականութիւն հանդիսացող հեռուստաաշտարակի վրայ գտնուող դեցիմետրային հաղորդակը:

*Գալա*յի գործադիր տնօրէն Կարինէ Յարութիւնեանը *Ա1+*-ին տեղեկացրեց, որ իրենք դատարանի վճիռը բողոքարկելու են Վերաքննիչ Դատարանում: «Գնալու ենք մինչեւ վերջ», - ասում է Կարինէ Յարութիւնեանը, ում բնութագրմամբ՝ դատարանի նման վճիռը «իշխանութիւնների ձեռքի գործն է»:

Թէեւ դատարանի վճիռը ուժի մէջ է մտել հրապարակման պահից, *Գալա*յի գործադիր տնօրէնը պնդում է, որ իրենք չեն սկսելու ապամոնտաժման աշխատանքները մինչեւ բոլոր դատարաններին չդիմեն:

Կարինէ Յարութիւնեանը նաեւ տեղեկացրեց, որ դատարանի վճռի հրապարակումից յետոյ հեռախօսազանգերը չեն լռում: «Գիւմրեցիները, ինչպէս նաեւ բազմաթիւ այլ մարդիկ իրենց աջակցութիւնն են յայտնում մեզ», - ասում է *Գալա*յի գործադիր տնօրէնը:

Յիշեցնենք, որ *Գալա*յի «ձախորդութիւնները» սկսուեցին այն բանից յետոյ, երբ այս հեռուստարընկերութիւնը համարձակութիւն ունեցաւ եթեր տալու Լեւոն Տէր-Պետրոսեանի նախորդ տարուայ սեպտեմբերի 21-ի ելոյթը:

## ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆ, ԿԱՄ ՀԱՄԱԴԱՇՆՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 21:25

Ղարաբաղեան հակամարտութիւնը կարող է լուծուել միայն Լեռնային Ղարաբաղին անկախութիւն տրամադրելու կամ էլ դաշնութեան կամ համադաշնութեան սկզբունքներով նրա՝ Հայաստանի կազմի մէջ մտնելու ճանապարհով, յայտարարել է նախագահ Ռոբերտ Քոչարեանը ԵՊՀ ուսանողների հետ հանդիպմանը: «Հակամարտութիւնը կարգաւորելու այլ ճանապարհ չկայ: Ղարաբաղեան հակամարտութեան կարգաւորման բանակցային գործընթացում շատ բան է փոխուել. մինչեւ 1998 թուականը բոլոր պաշտօնական առաջարկութիւնները ենթադրում էին Ղարաբաղի մուտքը Ադրբէջանի կազմ», յայտարարել է Ռոբերտ Քոչարեանը, տեղեկացնում է Նովոստի-Արմենիան: Միաժամանակ նա յիշեցրել է, որ 1998 թուականից յետոյ նման առաջարկութիւններ եւ նոյնիսկ ակնկարկներ չեն եղել: Քոչարեանը փաստեց, որ ԼՂՀ անկախութեան ճանաչման համար դեռ երկար պայքար պէտք է մղուի: «Ոչ մէկը եւ երբեք ԼՂՀ անկախութիւնը ափսէի մէջ չի մատուցի: Մենք պէտք է ամուր եւ հաստատուն լինենք մեր պայքարում», յայտարարել է Ռոբերտ Քոչարեանը:

## «ԹԱԼԻԱԹՆ ՈՒ ԷՆՎԷՐՆ ԷԼ ԴԻՊԼՈՄ ՈՒՆԷԻՆ»

*A1+*, 22:03

Այսօր երթից յետոյ շարունակուող հանրահաւաքին հաւաքուածներին ոգեւորեցին Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը, Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը, ԱԺ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանը, դերասան Երուանդ Մանարեանը:

Արամ Սարգսեանը ասաց, որ հպարտութիւն, բերկրանք է զգում՝ բեմից մարդկանց տեսնելիս: «Այստեղից տեսնում եմ՝ թէ ինչ լաւ ժողովուրդ ենք, թէ ոնց ենք ամէն օր այսքան հաւաքւում եւ ամէն օր յոյսով ապրում, որ երկիրը երկիր դարձնենք, նոյնիսկ

Մեղրիում, Ագարակում, Նոյեմբերեանում այդ մարդիկ հպարտանում են ձեզանով եւ իրենք գիշերը քնելուց աղօթում են ձեզ համար, իրենք մտածում են, որ այստեղ կայ մարդ, ով պայքարում է իր երեխաների, իր թոռների համար», - ասաց Արամ Սարգսեանը: Ապա ասաց, որ հաւատում է, որ իրենց կողքին են շատ մարդիկ՝ անկախ նրանից իրենց տներում են, թէ հրապարակում:

«Փողոցը փակելով, սննդի ճանապարհը փակելով, ձերբակալութիւններով չէք կարող ժողովրդին ճնշել, ախր այդքան ոստիկան էլ չունէք, որ 200 հազար մարդու կալանաւորէք», - ասաց նա:

Պահպանողական կուսակցութեան նախագահ Միքայէլ Հայրապետեանը իր ելոյթը ուղղեց մտաւորականութեանը եւ ոչ մտաւորականներին՝ նշելով, որ «այն, ինչ գաւառամիտները փորձում են մեր երկրում իրականացնել, բնորոշում չունի»:

«Նրանք անգամ փորձում են մեր մէջ սերմանել, որ ամէն դիպլոմաւոր մտաւորական է, դիպլոմ ունէին Թալիաթն ու Էնվէրը, դոկտոր Նազմբէյը, մեր ցեղասպանութեան գաղափարախօսները», - ասաց նա ապա աւելացրեց. «Ինչպէս կարելի է մտաւորական անուանել ասենք՝ Հենրիկ Իգիթեանին, Զօրի Բալայեանին»: Ապա նա մէկ առ մէկ թուարկեց բուհերի ղեկավարներին, ովքեր ճնշում էին ուսանողներին եւ ամէն անունը արտասանելիս ժողովուրդը գոռում էր՝ ամօթ:

Ապա հանրագումարի բերելով հանրահաւաքի 8-րդ օրը, խօսեց ձեռքբերումների մասին, որ ժողովուրդն արդէն ունի:

«Յիշում էք առաջին օրին, երբ ասում էին «հիմա», «հիմա», ասում էի՝ սպասէք, մենք ունեցել ենք ծանր օրեր, մեր մասին ոչ ոք չէր խօսում, բոլոր երկրները լռում էին: Երէկ ես ինտերնէտում էին նայում եւ 40-ից աւել նիւթեր գտայ միայն ռուսական լրատուամիջոցներում», - ասաց նա:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ՕՐԷՆՔՆԵՐԻՆ ԱՆՏԵՂԵԱ՞Կ Է

*A1+*, 22:14

Ինչո՞ւ Լեւոն Տէր-Պետրոսեանին հեռուստաեթեր չի տրամադրւում, - այսօր Ռոբերտ Քոչարեանից փորձել է պարզել ԵՊՀ ուսանողներից մէկը համալսարանում Քոչարեանի հետ հանդիպման ժամանակ:

Ռոբերտ Քոչարեանը նախ յայտարարել է, որ քարոզարշաւի ընթացքում 7 անգամ նրան հրաւիրել են հեռուստաբանավէճի, բայց նա մերժել է, «հաւանաբար պատրաստ չի եղել հեռուստաբանավէճի. միգուցէ անսպասելի կամ տհաճ հարցերի պատասխանելու», իսկ հիմա, ըստ Քոչարեանի, հեռուստաեթեր չեն տրամադրում ապօրինի հանրահաւաքների կազմակերպիչներին. «Ես կարծում եմ՝ ճիշտ են անում, եւ դա տուեալ հեռուստաընկերութեան խորհրդի որոշումն է, եթէ անկախ հեռուստաընկերութիւնները ուզում են հրաւիրել՝ իրենց գործն է, ես կարող եմ միայն հանրայինի մասին ասել, որովհետեւ հանրայինի խորհրդի կազմը ես եմ ձեւաւորում, բայց իրենք ունեն իրենց վերաբերմունքը, որովհետեւ իրենց խորհրդի նախկին նախագահ Տիգրան Նաղդալեանին սպանել են եւ իրենք համարում են, որ այդ սպանելու որոշման կայացմանը մասնակցել է այդ հարթակում կանգնածներից մէկը, թէկուզ այսօր նստած է իր եղբայրը»:

Այս յայտարարութիւնից յետոյ Ասպարէզ ժուռնալիստների ակումբի խորհրդի նախագահ Լեւոն Բարսեղեանը նկատեց. «Յանցագործ կա՞յ հարթակում կանգնած, տարէք

դատէք, ինչու չէք դատում, եւ ի վերջոյ օրէնք կայ հեռուստատեսութեան եւ ռադիոյի մասին, որտեղ հանրային հեռուստարնկերութեան գործունէութիւնը յստակ սահմանում է. քաղաքական կողմնորոշում չունենալ, համակրանք, հակակրանք չդրսեւորել: Աբսուրդ է: Մեր փողերով աշխատող հեռուստարնկերութիւնը պիտի մեզ կողմնորոշի ու ինքը կողմնորոշուի նրանով, թէ չգիտեմ ով, չգիտեմ երբ, չգիտեմ ում է սպանե՞լ: Ցիմարութիւն է»:

## 1 ՄԱՐՏ 2008

### ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԴԻՄԵՑ ՍԴ

*A1+*, 00:06

ՀՀ նախագահի թեկնածու, առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօր դիմել է Սահմանադրական Դատարան: Առայժմ յայտնի չէ, երբ կը լսուի նրա հայցը:

Լեւոն Տէր-Պետրոսեանը պահանջում է անվաւեր ճանաչել նախագահի փետրուարի 19-ի ընտրութիւնների արդիւնքները:

### ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԴԻՄԵՑ ՈՒԺԻ

*Lragir.am*, 08:29

Մարտի 1-ի առաւօտեան, մօտաւորապէս ժամը 7-ի սահմաններում ոստիկանութիւնը եւ ներքին զօրքերը ուժով ցրել են Ազատութեան Հրապարակում արդէն տասներորդ օրը շարունակուող բողոքի ցոյցը, որ նախաձեռնել էին նախագահի ընտրութեան արդիւնքը վիճարկող Լեւոն Տէր-Պետրոսեանն ու նրա համախոհները: Ինչպէս տեղեկացնում է Ռզնումը, ցոյցը ցրելու պահին հրապարակում է եղել առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, ով դրանից քիչ առաջ, ինչպէս տեղեկացնում է գործակալութիւնը, կոչ է արել հրապարակում եղած մի քանի հազար մարդկանց, չմտնել ոստիկանութեան հետ հակամարտութեան մէջ: Ականատեսների վկայութեամբ, ոստիկանութիւնը կիրառել է մահակներ եւ այլ յատուկ միջոցներ, իսկ օպերացիան տեւել է 10-15 րոպէ: Այժմ ոստիկանութիւնը եւ ներքին զօրքերը փակել են քաղաքի կենտրոնը: Ռեգնումը փոխանցում է, որ Ազատութեան Հրապարակում ոստիկանութիւնը հաւաքում է վրանները, որոնցում գիշերում էին հաւաքուածները: Գործակալութեան փոխանցմամբ, հրապարակում նկատելի են արեան հետքերը:

### ՓՈՐՁԵԼ ԵՆ ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ

*Lragir.am*, 08:53

Մարտի 1-ի առաւօտեան, շտապ հաղորդագրութիւն է տարածել Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը, կապուած խաղաղ ցուցարարների հանդէպ ոստիկանութեան գործողութիւնների հետ: «Այսօր առաւօտեան ժամը 7:30-ին մօտ հինգ հազար ոստիկան ներխուժել են Ազատութեան Հրապարակ եւ ցրել խաղաղ ցուցարարներին: Ոստիկանական ուժերը՝ Ռոբերտ Քոչարեանի թիկնազօրի պետ Գրիշա Սարգսեանի գլխաւորութեամբ, փորձել են ձերբակալել ՀՀ առաջին նաագահ Լեւոն Տէր-Պետրոսեանին: Վերջինս պահանջել է ցոյց տալ ձերբակալման սանկցիան, ինչը նրանք չեն արել: Այս պահին Լեւոն Տէր-Պետրոսեանը ոստիկաններով շրջապատուած գտնւում է Ազատու-

թեան Հրապարակում: Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմակիցների որոշ մասի գտնուելու վայրը յայտնի չէ: Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ փորձելու են այսօր ժամը 15:00-ին շարունակել բողոքի խաղաղ ցոյցը», ասուած է հաղորդագրութեան մէջ:

## ՅԱՐՁԱԿՈՒԵՑԻՆ ԵՒ ՈՒԺ ԿԻՐԱՌԵՑԻՆ ԽԱՂԱՂ ՑՈՒՑԱՐԱՐՆԵՐԻ ՎՐԱՅ (video)

*A1+*, 09:14

Այսօր առաւօտեան ժամը 6.20-ի սահմաններում ոստիկանութեան մի ջոկատ յարձակուել է Ազատութեան Հրապարակում նստացոյց յայտարարած խաղաղ մարդկանց վրայ: Մահակներով սաղաւարտաւոր ոստիկանները Հիւսիսային Պողոտայի կողմից յարձակման են անցել, սակայն ստանալով արժանի պաշտպանութիւն, նահանջել են: Սակայն աւելի ուշ, արդէն 6.45-ի սահմանում բազմապատկած ուժերով կրկին յարձակուել են եւ դաժան ծեծի ենթարկել խաղաղ ցուցարարներին:

««Հիմա» էի՞ր ասում. բա ինչի՞ չես ասում», - ասելով ծեծում էին իրենց ընտրութիւնը պաշտպանող, արդար ընտրութիւններ պահանջող մարդկանց: Մէկ ժամուայ ընթացքում ոստիկանութիւնը «ազատել» է Ազատութեան Հրապարակը: Այրել են վրանները, ծեծել մարդկանց: Մեր ունեցած տեղեկութիւններով, մարդկանց մի մասը, որին յաջողուել է դուրս գալ «օղակից» շտապել է դէպի տարբեր երկրների դեսպանատների մօտ: ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը միայնակ մնացել էր կանգնած Ազատութեան Հրապարակում եւ յայտարարել, որ ոչ մի տեղ չի հեռանայ, եթէ ուզում են կարող են իրեն ձերբակալել:Այդ ժամանակ մեծ քանակի զօրքեր շրջապատել էին հրապարակը եւ նրա ողջ յարող տարածքը:

Քոչարեանի թիկնազօրի պետ Գրիշա Սարգսեանը անձամբ բռնի ուժով խցկել է մեքենայի մէջ եւ բռնի տեղափոխել Լեւոն Տէր-Պետրոսեանին իր առանձնատուն: Ձերբակալուածների մասին առայժմ տեղեկութիւններ չկան: Օպերային յարող տարածքը՝ ՀԺԿ գրասենեակից սկսած շրջափակուած է ոստիկանական ուժերով: Կրկին բռնութեան է ենթարկուել *Չորրորդ իշխանութիւն* եւ *Առաւօտ* թերթերի ֆոտօլրագրող Գագիկ Շամշեանը:

Յիշեցնենք, որ երէկ Ռոբերտ Քոչարեանը նշելով դէպքերի հնարաւոր զարգացումը, բացառել էր ուժային լուծումը, իսկ ԵԱՀԿ-ում ԱՄՆ քարտուղարութիւնը հէնց երէկ կոչ էր արել իշխանութիւնների խաղաղ ցուցարարների նկատմամբ ուժ չկիրառել, ինչպէս դա չէր արուել մինչ օրս:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ՇԱՐՈՒՆԱԿԵԼՈՒ Է ԲՈՂՈՔԻ ՑՈՅՑԸ

*Lragir.am*, 09:23

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը տեղեկացնում է, որ մարտի 1-ին ժամը 15-ին շարունակելու է բողոքի ցոյցը, որը նոյն օրն առաւօտեան լուսաղէմին ուժով ցրել են ոստիկանութեան զօրքերը: Ցոյցը նախատեսւում է շարունակել Ազատութեան Հրապարակում, որն այժմ շրջապատուած է ոստիկանութեան զօրքերով: Եթէ Ազատութեան Հրապարակում հանրահաւաքն անցկացնելը չյաջողուի, ապա այն տեղի կ'ունենայ Հիւսիսային Պողոտայում, իսկ եթէ այդտեղ էլ չստացուի, ապա Հանրապետութեան Հրապարակում, իսկ եթէ այնտեղ էլ չյաջողուի, ապա Շահումեան Հրապարակում: Մեր

տեղեկութիւններով, Լեւոն Տէր-Պետրոսեանն այս պահին Ազատութեան Հրապարակից տեղափոխուել է իր տուն: Տէր-Պետրոսեանի կողմնակիցների շրջանում ձերբակալուածների մասին կոնկրէտ տեղեկութիւններ դեռեւս չկան:

## ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԻՐԱՒԱՊԱՀՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ՇԱՐՈՒՆԿՒՈՒՄ ԵՆ

*Ա1+*, 09:34

Այս պահին Մաշտոցի Պողոտան, Օպերային յարող տարածքը լեփ-լեցուն է ոստիկաններով, մարդիկ, որպէս բողոքի նշան շարունակում են վանկարկել «Լե-ւոն, Լե-ւոն», իսկ ոստիկանները դաժանաբար ծեծի են ենթարկում բողոքողներին բոլորի աչքի առաջ: Հիւանդանոցները լեցուն են վիրաւորներով, հրապարակում արեան հետքեր են: *Ա1+*-ի եւ բոլոր օպերատորների տեսանկարահանած երիզները ոստիկանները առգրաւել են:

Հէնց նոր Թումանեան-Մաշտոց խաչմերուկում Ֆորդ մեքենայից իջած Օմոնի ներկայացուցիչները ծեծելով ձերբակալել են Մանուկ Գասպարեանի երկու որդիներին:

## ՇՐՋԱՓԱԿՈՒԱԾ Է ՏՈՒՆԸ

*Ա1+*, 09:37

Այս պահին շրջափակուած է Լեւոն Տէր-Պետրոսեանի տունը ոստիկանութեան կողմից: Նա հիմա ներսում է:

## ԱՅՍՕՐ ԺԱՄԸ 15-ԻՆ՝ ՀԱՆՐԱՀԱՒԱՔ

*Ա1+*, 09:46

Այսօր ժամը 15:00-ին տեղի կ'ունենայ հանրահաւաք Ազատութեան Հրապարակում: Եթէ հնարաւոր չլինի այնտեղ մտնել զօրքեր շրջապատուած լինելու դէպքում, հանրահաւաքը կը կայանայ Հիւսիսային Պողոտայում, եթէ այնտեղ էլ հնարաւոր չլինի, ապա Հանրապետութեան Հրապարակում կամ Շահումեան Հրապարակում: Հաղորդում են նստացոյցի կազմակերպիչները:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԱՍՈՒԼԻՍ Է ՏԱԼԻՍ

*Ա1+*, 10:00

Ժամը 11-ին Լեւոն Տէր-Պետրոսեանը իր Ծիծեռնակաբերդում գտնուող տանը ասուլիս է տալիս: Իսկ այս պահին Հիւսիսային Պողոտայում ցուցարարներին ոստիականները ծեծում են մահակներով:

## ԾԵԾՈՒՄ ԵՆ ՊԱՏԱՀԱԿԱՆ ԱՆՑՈՐԴՆԵՐԻ

*Ա1+*, 10:08

«Մենք պատահական անցնում էինք Մաշտոցի Պողոտայով, յանկարծ յարձակուեցին մեզ վրայ, ինձ հրեցին եւ սկսեցին հայհոյել. տղաս փորձեց ինձ պաշտպանել, բայց նրան սկսեցին դաժանաբար ծեծել», - հէնց նոր խմբագրութիւն ահազանգեց Մաշտոցի Պողոտայով անցնող Միլանօ խանութի մօտ բռնութեան ենթարկուած Ջեմֆիրա Ղազարեանը: Նրա որդուն՝ Արթուր Միրումեանին ծեծելուց յետոյ անյայտ ուղղութեամբ են տարել:

Այժմ Արթուրի հայրը փորձում է գտնել որդուն: Տիկին Ջեմֆիրան վստահեցրեց, որ ինքը ոչ մի կապ չունի հանրահաւաքի հետ, եւ դա չի կարողացել հասկացնել մակաւոր

եւ սաղաւարտաւոր ոստիկաններին: Նրա վկայութեամբ խմբով զօրքը վազում էր այս ու այն կողմ ու ծեծում էր՝ ում պատահի:

Ի դէպ, մեր տեղեկութիւններով, Շտապ Օգնութեան 3-րդ, Նորքի Զանգուածի հիւանդանոցում տարբեր մարմնական վնասուածքներով գտնւում են 5 հոգի, իսկ Նաիրի բժշկական կենտրոնից հրաժարուեցին պատասխանել, թէ քանի հոգի են իրենց մօտ բերուել Ազատութեան Հրապարակից: Յիշեցնենք, որ այդ հիւանդանոցը պատկանում է Ռոբերտ Քոչարեանի կնոջ՝ ՀՀ առաջին տիկին Բելլային:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԱՍՈՒԼԻՍ Է ՀՐԱՒԻՐՈՒՄ ԻՐ ՏԱՆԸ

*Lragir.am*, 10:09

Լեւոն Տէր-Պետրոսեանը ասուլիս է հրաւիրում իր տանը, ժամը 11-ին:

## ՇՐՋԱՓԱԿԵԼ ԵՆ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ ՏՈՒՆԸ (լրացուած)

*A1+*, 10:13

Այս պահին շրջափակուած է ԱԺ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանի տունը: Ոստիկանական 20 մեքենաներ շրջափակել են նրա տունը: Այս պահին հաւաքուել են նաեւ սովորական մարդիկ տան մօտ, որոնց աւտօմատաւոր ոստիականները թոյլ չեն տալիս մօտենալ: Խուզարկում են պատգամաւորի տունը:

## ԲԱՑ ՆԱՄԱԿ

*Lragir.am*, 10:30

Հայաստանի Հանրապետութեան հարիւր հազարաւոր ազատ քաղաքացիներին ու նրանց վստահած առաջնորդներին, որոնք օրեր շարունակ չեն լքում մեզանից շատերի համար ջերմ ու հարազատ Ազատութեան Հրապարակը,

Սիրելի հայրենակիցներ, այսօր մենք մեր խօսքն ենք յղում ձեզ՝ ոչ միայն որպէս նախկին կամ ներկայ համաքաղաքացիներ, ոչ միայն որպէս ազգակիցներ կամ նախկին համադասարանցիներ, այլ նաեւ որպէս մարդու եւ քաղաքացու անքակտելի իրաւունքների եւ հիմնարար ազատութիւնների, ժողովրդավարական հասարակութեան կարեւորագոյն արժէքների ջատագով գաղափարակիցներ:

Դուք այսօր պատմութիւն էք կերտում: Սա ոչ միայն ներկայիս Հայաստանի, այլ ողջ մարդկային քաղաքակրթութեան պատմութեան կարեւորագոյն էջերից մէկն է, այն է՝ անհատի ազատութեան եւ ժողովրդավարական հասարակութեան կերտման փառաւոր էջը: Սա դժուար եւ ցաւալի պայքար է: Այս պայքարն արդէն անձնաւորուած չէ, այն մղւում է ոչ յանուն որեւէ անհատի կամ կուսակցութեան եւ ոչ էլ ընդդէմ քաղաքական ուժերի: Սա զուտ գաղափարական պայքար է յանուն ձեր քաղաքացիական իրաւունքների: Ձեր պայքարը ժողովրդավարական հասարակութեան հիմնարար սկզբունքներից մէկի՝ ընտրութեան միջոցով իշխանութիւն փոխելու իրաւունքի համար է:

Այս առիթով թոյլ տուէք մեր խորին հիացմունքն արտայայտել ձեր ցոյցերի ու երթերի բացառապէս խաղաղ բնոյթի հանդէպ: Անշուշտ, ազատական եւ սահմանադրական ժողովրդավարութիւն հաստատելու թանկ գինը վճարել են այսօր բարեկեցութեան չափանիշ համարուող գրեթէ բոլոր երկրները: Մեր իսկ ժողովրդին խորթ չէ պայքարն ամէն գնով, նա չի մոռացել Սովետական Միութեան յանցագործ ապարատի լծի թօթափման,

ինչպէս նաեւ Արցախի ազատագրման համար տարուած ցաւոտ, բայց յաղթական պայքարները։ Վստահ եղէք։ Դուք արդէն իսկ յաղթել էք։ Թէեւ տեղեկատուական զգալի սահմանափակման մէջ, այնուամենայնիւ հաւատացած եղէք, որ դուք այսօր ոգեշնչման աղբիւր էք ծառայում համայն աշխարհին։

Անշուշտ, դժուարութիւններ դեռ կը լինեն՝ բռնութիւնների, հալածանքների, ձերբակալութիւնների եւ մարդու իրաւունքների խայտառակ ոտնահարումների տեսքով։ Ինչ խօսք, բռնութիւնն ու դաւաճրութիւնը թոյլերի եւ ստախօսների սիրուած միջոցներն են։ Սակայն, ձեր այսօրուայ սկզբունքայնութիւնն ու հաստատակամութիւնը ձեր զաւակներին կ՚ազատի իրենց ժամանակակիցներին նման նամակներ գրելու կարիքից։ Ձեզ յիրաւի բախտ է վիճակուել հայոց նորագոյն պետութեան հիմնաքարերից մէկը դնելու գործը։

Կարող էք վստահ լինել, որ աւելին քան որեւէ այլ բան, աւելին քան որեւէ նախագահ կամ կուսակցութիւն, ձեր որդիները կը գերադասեն ժառանգել անձի եւ ընտրութեան ազատութեան իրաւունքը պաշտպանող հարազատ երկիր։ «Ապահով» եւ «բարեկեցիկ» հնազանդութիւնը, խաբուսիկ եւ կարճաժամկէտ լինելուց բացի, արժանի չէ ձեր անկախութեան փոքրագոյն իսկ մասնիկին։ Պատմութիւնը կրկին անգամ տուել է հնազանդ ապահովութեան եւ ազատութեան երկընտրանքի պատասխանը։ Յիրաւի է ասուել, որ նրանք, ովքեր կը գերադասեն հնազանդ, թէկուզ եւ ապահով գոյատեւումը անկախութեանը, չեն արժանանայ ոչ առաջինին, ոչ երկրորդին։ Դուք ձեր ընտրութիւնն արդէն կայացրել էք։

Սիրելիներս, թոյլ տուէք արտագաղթած ձեր հայրենակիցների անունից ձեզ ողջունել որպէս հերոսների եւ ձեզ միանալ գոնէ հոգեպէս։ Այս օրերին, ի շնորհիւ ձեզ, մենք առաւել հպարտ ենք հայ լինելու։ Իւրաքանչիւր օր ձեզանով անչափ հիանում են ձեր մանկութեան ընկերներն ու հարազատները, ինչպէս նաեւ ձեր նախկին հարեւանները, որոնց բնակարանների բանալիները դեռ ձեզանից շատերի մօտ են։ Հրապարակի մատոյցներից հազարաւոր կիլոմետրեր հեռու գտնուող բազմաթիւ արտագաղթած ձեր հայրենակիցների անունից թոյլ տուէք յայտնել մեր խորին շնորհակալութիւնը։ Մենք աղօթում ենք ձեզանից իւրաքանչիւրի համար։ Հաւատացէք, որ այս օրերին հեռու գտնուելով Հայաստանից, մենք երազում ենք Ազատութեան Հրապարակում ձեզ հետ գետնին գիշերելու ու մեր ձայնալարերը բղաւելուց խզելու մասին։

Ձեր եւ մեր յաղթանակի մաղթանքներով՝ Նանէ Յովհաննիսեան (Մեծ Բրիտանիա, Լոնդոն) եւ Վահէ Յովհաննիսեան (Միացեալ Նահանգներ, Նիւ Եորք)

## ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՇՐՋԱՓԱԿԵԼ Է ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՏՈՒՆԸ ԵՒ ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻՆ ԹՈՅԼ ՉԵՆ ՏԱԼԻՍ ՄՏՆԵԼ ԱՍՈՒԼԻՍԻ

*Lragir.am*, 10:42

Այս պահին ոստիկանութեան ստորաբաժանումները շրջապատել են Լեւոն Տէր-Պետրոսեանի տունը, եւ լրագրողներին թոյլ չեն տալիս գնալ ասուլիսի։ Ժամը 11-ին նախատեսուած է Լեւոն Տէր-Պետրոսեանի ասուլիսն իր տանը, Ազատութեան Հրապարակում այսօր առաւօտեան տեղի ունեցածի վերաբերեալ։

## ՊՐԻՄԻՏԻՒ ՍՑԵՆԱՐ (video)

*A1+*, 10:49

Առաւօտեան 6.20-ի սահմանում, երբ ոստիկանութիւնը՝ փոքր խմբով, մօտեցել է ցուցարարներին եւ յայտարարել, որ թողնեն հեռանան, նրանց հետ է եղել իրենց օպերատորը, որը նկարահանել է այդ ոստիկանութեան «խաղաղասիրական քայլը»: Այդ ժամանակ մարդիկ պաշտպանուել են, եւ սաղաւարտաւոր ու մահակաւորների օպերատորը նկարահանել է այդ իրավիճակը: Ապա երբ յարձակուել են արդէն տարբեր կողմերից եւ սկսել դաժանաբար ծեծել, օպերատորը բնականաբար արդէն դէպքի վայրում չի եղել, իսկ Ազատութեան Հրապարակում աշխատող լրագրողների տեսաերիզները առգրաւուել են: Հէնց նոր պարզ դարձաւ, որ ֆոտոլրագրող Գագիկ Շամշեանին ոչ միայն ծեծի են ենթարկել ու ձեռքից վերցրել ֆոտոապարատը, այլեւ բերման են ենթարկել նախ Կենտրոնի ոստիկանութիւն, ապա Քանաքեռի բաժին:

Իշխանութեան սցենարը պարզ է. փորձում են ստեղծել պատկեր, որ իբր իրենք խաղաղ կոչ են արել ցրուելու (որն, ի դէպ, իրականում չի եղել), իսկ ցուցարարները բռնութիւնների են դիմել ոստիկանների նկատմամբ, ինչի արդիւնքում «հասարակական կարգը պաշտպանելու» նպատակով սկսել են «տարածքը մաքրել»: Բայց բազմաթիւ են ոչ միայն խաղաղ ցոյցարարների ծեծի ու բռնութիւնների դէպքերը, այլեւ պատահական անցորդների եւ սա չի կարող աննկատ մնալ:

## ԼՐԱԳՐՈՂՆԵՐԻՆ ԱՅՆՈՒԱՄԵՆԱՅՆԻՒ ԹՈՅԼ ՏՈՒԵՑԻՆ

*Lragir.am*, 10:50

Քիչ առաջ ոստիկանները լրագրողներին այնուամենայնիւ թոյլ տուեցին մտնել Լեւոն Տէր-Պետրոսեանի տուն, որտեղ նախատեսուած է առաջին նախագահի ասուլիսը: Յիշեցնենք, որ Տէր-Պետրոսեանի տան մօտ ոստիկանական ուժեղ հսկողութիւն է:

## ԱԿԱՆԱՏԵՍՆԵՐԸ ՊԱՏՄՈՒՄ ԵՆ

*A1+*, 10:53

Այսօր առաւօտեան Ազատութեան Հրապարակում ծեծի ենթարկուածներն ասում էին, որ իրենց վրայ յարձակուողները հաստատ ոստիկաններ չէին: Ըստ նրանց՝ դա «սպեցնազն» էր:

«Լեւոն Տէր-Պետրոսեանը հանգստացնում էր մարդկանց, ասում էր՝ պրովոկացիայի մի ենթարկուէք, ոչ մէկին թոյլ չի տուել, որ իրենք նախայարձակ լինեն», - պատմեց յարձակման ենթարկուածներից տիկին Յասմիկը ու յայտարարեց, որ մէկ է՝ «մենք կանգնած ենք»:

Մի տարեց տղամարդ էլ, որ գիշերն անցկացրել էր Ազատութեան Հրապարակում, պատմեց. «Ես դուրսն եմ եղել էդ ժամին: Եկել եմ տեսել, որ ցեպնազը ցեպ տուած կանգնած է ու ոչ մէկին չէին թողնում ո՛չ ներս մտնել, ո՛չ դուրս գալ: Ներսում առնուազն մի 5-6 հազար մարդ կար: Իրանք էլ շատ-շատ էին: Ներսում չէր երեւում թէ ինչ է կատարւում, լոյսներն անջատուած էին: Յետոյ Օպերայի շրջակայքում հաւաքուածներից շատերին քցեցին մեքենայի մէջ ու տարան»:

Ի դէպ, ժամը 9-ի կողմերը ոստիկանութեան յատուկ ջոկատայինները մահակներով ցրում էին նաեւ Մաշտոցի Պողոտայի եւ Թումանեան փողոցի խաչմերուկներում հաւաքուած մարդկանց:

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

*Lragir.am*, 11:10

Այս պահին Ազատութեան Հրապարակում տեղի են ունենում «մաքրման աշխատանքներ»: Հրապարակում եղած վրանները քանդուել են եւ բարձուել ոստիկանական բեռնատարները: Հրապարակը եւ յարակից փողոցներն առայժմ փակ են: Հիւսիսային Պողոտայի մօտ բազմութիւն է հաւաքուել, որոնց պարբերաբար կոչեր են անում ցրուել:

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄՕՏ. Լրացուած

*Lragir.am*, 11:27

Այս պահին բաւական բազմութիւն է հաւաքուել Ֆրանսիայի դեսպանատան մօտ: Հաւաքուածներն իրենց աջակցութիւնն են յայտնում Լեւոն Տէր-Պետրոսեանին: Ազատութեան Հրապարակից հաւաքուած վրանները եւ ցուցապաստառները բերուել են այստեղ եւ լցուել գետնին: Ոստիկանները մարդկանց յորդորում են ցրուել:

## «10 ՀՈԳՈՎ ՄԻ ՀՈԳՈՒ ԷԻՆ ԾԵԾՈՒՄ»

*A1+*, 11:40

Լուսաղէմին ծեծի ենթարկուած ցուցարարները, նրանց միացած սովորական քաղաքացիներ հաւաքուել են Ֆրանսիական դեսպանատան մօտ: Նրանց են միանում են նաեւ երթով եկող նոր քաղաքացիներ:

Ցուցարարներն այստեղ կը մնան մինչեւ ժամը 15-ին, որից յետոյ նրանք միասին երթ ու հանրահաւաք կ՚անցկացնեն:

«Ով է գիշերով յարձակւում խաղաղ ցուցարարների վրայ: Միայն թուրքը», -զայրացած ասաց մի ցուցարար: Ազատութեան Հրապարակում ականատեսներից մէկը՝ Յաղթանակ գիւղի մի բնակիչ՝ Վարդուհին պատմեց, որ հերիք չէ Օպերայի Հրապարակում յարձակուեցին իրենց վրայ, իսկ մի քիչ առաջ. «Պրոսպեկտում, կնոջը գետնին գցած երեք հոգի դուբինկաներով ծեծում էին»: Նրա խօսքերով՝ Թուրքիայից պահանջում ենք Հայոց Ցեղասպանութիւնը ճանաչել, բայց «Ռոմնը Քոչարեանի հրամանով ցեղասպանութիւն է անում»:

«Մի երիտասարդի 10 հոգով ծեծեցին, գցեցին, երեւի մահացաւ ինքը», - պատմեց մի այլ ականատես:

«Առանց զգուշացնելու չորս կողմից վրայ տուեցին, սկզբում ոստիկանութիւնը, յետոյ՝ այստեղի զօրքերը, յետոյ միացաւ, ոնց որ Ղարաբաղի սպեցնազը: Ոնց որ նրանց հագուստի վրայ այդ էր գրուած: Յետոյ առանց խնայելու կանանց, երեխաներին, ծեծեցին: Կանանց նոյնիսկ գցելով աւտոմեքենաների դէմը՝ դուբինկաներով խփել են», - ասաց մի այլ ականատես Մկրտիչ Աբրահամեանը, որը մասնակցում էր դէպի Ֆրանսիական դեսպանատուն երթին: «Եթէ մենք չյաղթենք, ես այս երկրից պարզապէս շատ հեռու կը գնանք», - ասաց նա:

Իսկ առայժմ Ֆրանսիական դեսպանատան մօտ ցուցարարները գոռում են «Ա-զատու-թիւն», «Լեւոն-նախագահ»

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*A1+*, 11:47

Սոյն թուականի մարտի 1-ին, առաւօտեան ժամը 6 անց 45 րոպէին, ներքին զօրքերի ստորաբաժանումները մահակներով, վահաններով եւ էլեկտրաշոկերով զինուած, առանց զգուշացնելու յարձակուեցին Ազատութեան Հրապարակում նստացոյց անող շուրջ 4000 ցուցարարների վրայ։ Նստացոյցի մասնակիցների մէջ կային ծերեր, կանայք, նաեւ երեխաներ, քանի որ շատերը նստացոյցին մասնակցում էին ընտանիքներով։ Այդ պահին մարդկանց մեծ մասը քնած էր վրաններում։ Չնայած մօտ 20 րոպէ ցուցարարների՝ մերկ ձեռքերով ցոյց տուած դիմադրութեանը, վայրենաբար գործող զինուորներին յաջողուեց դաժան ծեծնուջարդի, էլեկտրաշոկի եւ արցունքաբեր գազի միջոցով մարդկանց դուրս քշել հրապարակից եւ հիմնահատակ աւերել վրանային աւանը։ Վիրաւորների ու զոհերի մասին տեղեկութիւններն առայժմ ճշտւում են։ Կան բազմաթիւ ձերբակալուածներ։

Այդ պահին հրապարակում գտնուող եւ ժողովրդին ու զինուորներին սթափութեան կոչ անող Լեւոն Տէր-Պետրոսեանը շրջափակուել է գործող նախագահի թիկնազօրի պետ Գրիշա Սարգիսեանի գլխաւորած մի խմբի կողմից, որոնք նրանից պահանջել են լքել հրապարակը։ Լեւոն Տէր-Պետրոսեանը հրաժարուել է կատարել այդ պահանջը՝ յայտարարելով, որ իր տեղը Ազատութեան Հրապարակն է, եւ ինքը ոչ մի տեղ չի գնայ։ Շուրջ երկու ժամ նա հրաժարուել է կատարել հրապարակից հեռանալու պահանջը, որից յետոյ նրան ձերբակալել եւ բռնի ուժով տեղափոխել են իր բնակարան։ Նրա բնակարանն այժմ շրջափակուած է զինուորներով, որոնք յայտարարում են, որ իրենց հրամայուած է ոչ մէկին թոյլ չտալ ներս ու դուրս անել, այսինքն՝ առաջին նախագահը գտնւում է տնային կալանքի մէջ։

Լեւոն Տէր-Պետրոսեանը ժամը 11-ին հրաւիրել է մամուլի ասուլիս։

ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ՇՏԱԲ

## ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ ԴԷՄ ՔՐԷԱԿԱՆ ԳՈՐԾ

*A1+*, 12:16

Այն պահին, երբ ոստիկանութիւնը շրջապատել էր Խաչատուր Սուքիասեանի տունը եւ սկսել խուզարկութիւն կատարել, ժողովուրդը հաւաքուել էր Խաչատուր Սուքիասեանի տան մօտ եւ վանկարկում էր «Լեւոն նախագահ», «Յաղթանակ»։

Զինուած ոստիկանները թոյլ չէին տալիս ժողովրդին մտնել բակ, ինչն աւելի բորբոքեց ժողովրդին։ Նրանք միայն յայտնեցին, որ քրէական գործ է յարուցուած Սուքիասեանի նկատմամբ, իսկ թէ ինչ մեղադրանքով կամ առիթով՝ չպարզաբանեցին։ «Մենք վախենալու բան չունենք։ Մենք ազատ մարդիկ ենք։ Դուք էք ստրուկը, որ եկել էք ստեղ ու դրանց հրամաններն էք կատարում», - բղաւում էին հաւաքուածները եւ «Խաչատուր, Խաչատուր» վանկարակելով պահանջում հեռանալ ոստիկաններին։

«Ձեզ Արթուրիկներ են պէտք, որ պաշտօն ստանան, հանգստանան, քարտուղարուհի դառնան», - զայրացած ասում էին Սուքիասեանների տան մօտ հաւաքուած ժողովուրդը։ Ժողովրդին փորձեց հանգստացնել Խաչատուր Սուքիասեանի հայրը՝ Ալբերտ Սուքիասեանը, եւ ասաց. «Մի անհանգստացէք, հիմա կը գնան, ոչինչ չի պատահել»։ Ոստիկանները դեռ Սուքիասեանների տան մօտ են, իսկ ժողովուրդն էլ չի հեռանում։

## ԿՈՐՑՐԵԼ Է ԵՂԲՕՐԸ

*A1+*, 12:17

Առաւօտեան 9-ի սահմաններում Օպերայի մօտ կարելի է հանդիպել արտասուող կանանց, որոնք անընդմէջ ասում էին. «Սրանք թուրքից էլ բեթար են, մարդ չեն»: Կանայք չէին կարողանում զսպել իրենց զայրոյթը եւ նրանցից մէկը մի փոքր հանգստանալով ասաց. «Ես նման բան չեմ տեսել: Ինչպէս կարելի է մեր ժողովրդի նկատմամբ այսպէս դաժան վերաբերուել: Մի՞թէ աշխարհը չի տեսնում, թէ ինչ է կատարւում»:

Ծեծուածներից մէկը` Հայկ Երիցեանը, պատմեց հետեւեալը. «Ժամը 7-ի կողմերը զօրք շրջափակել էր մեզ: Մարդիկ քնած էին կամ կիսաքնած: Առանց որեւէ նախազգուշացումի յարձակուեցին` զինուած մինչեւ ատամները եւ սկսեցին դաժանաբար ծեծել: Նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը ասեց, սպասէք տեսնենք ինչ է ասում զօրքը, բայց նրանք ոչինչ չասացին` այլ յարձակուեցին: Իսկ այժմ փնտրում եմ եղբօրս` Սողոմոն Երիցեանին: Արդէն 2 ժամ է փնտրում եմ եղբօրս»:

Հիւսիսային Պողոտայում կային նաեւ այլ անձինք, որոնք իմանալով ջարդերի մասին շտապում էին Թումանեանի փողոց, որտեղ մօտ 200 անձիք վանկարկում էին «Լե-ւոն, Լե-ւոն»:

«Սա տեռոր է: Այլ կերպ սա բնութագրել հնարաւոր չէ: Անպաշտպան քնած մարդկանց նման դաժան ծեծի են ենթարկել եւ ուզում են, որ այս երկրում օրէնք հաստատուի», - ասաց մօտ 50 տարեկան մի տղամարդ:

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄՕՏ. Այս պահին

*Lragir.am*, 12:30

Ֆրանսիական դեսպանատան մօտ, Գրիգոր Լուսաւորիչ փողոցը երկու կողմից փակել են տրոլեբուսներով, որոնց միջեւ կանգնած են ցուցարարները: Փողոցի մէջտեղում բեռնատարով բերել են Ազատութեան Հրապարակից հաւաքուած աղբը եւ ներքնակներ ու զանազան պարագաներ, թափել փողոցում: Ինչ-որ մարդիկ դատարկ շշերով եւ վառե-լափայտով պարկերը դատարկեցին եւ մարդկանց կոչ էին անում դրանցով հարուածել ոստիկաններին: Ոստիկաններն էլ մահակով հարուածել էին մի երիտասարդի ոտքին, մի ուրիշ երիտասարդի գլուխն էր վիրաւորուել եւ արիւն էր գալիս, որին արագ տաքսիով տարան բժշկի: Այս երիտասարդը բղաւում էր, որ ոսիկանները հարուածել են նաեւ մի 20 տարեկան աղջկայ:

## ՄԹՆՈԼՈՐՏԸ ԼԱՐՈՒԱԾ Է

*A1+*, 12:39

Այս պահին Գրիգոր Լուսաւորիչ փողոցը երկու կողմից փակ է երկու տրոլեյբուսնե-րով: Ֆրանսիական դեսպանատան մօտ են բերել Ազատութեան Հրապարակից աղբա-տար մեքենան, որի մէջ լցուած են հրապարակում գիշերողների ներքնակները:

Դրանց վրայ արեան հետքեր կան: Գիշերը երկու ծեծուածներներին Ֆրանսիական դեսպանատան մօտից տեղափոխեցին հիւանդանոց: Հիւանդանոցում գտնուող վիրաւոր-ներից մէկը յայտնել է, որ գիշերը ծեծուածներին հիւանդանոցում վերաբերուել են արհա-մարհանքով եւ շատ վատ:

Ի դէպ, քիչ առաջ Ֆրանսիական դեսպանատան մօտ էին եկել Ժառանգութիւն

կուսակցութեան պատգամաւոր Անահիտ Բախշեանը եւ օմբուդսմէն Արմէն Յարութիւնեանը: Նրանք փորձել են մեղմել լարուած մթնոլորտը. այս պահին այնտեղ ոչ միայն ցուցարարներ են, այլեւ զինուած իրաւապահներ: Օմբուդսմէնը յայտնել է, որ կը գնայ բանակցելու զօրքը հանելու հարցով:

Ի դէպ, Հայաստանում Ֆրանսիական Համալսարանի ուսանողները բոյկոտել են դասերը, եւ երթով բողոքի նամակներ են պատրաստում յանձնել դեսպանատներին, ՄԱԿ-ին:

## ՁԵՐԲԱԿԱԼԵԼ ԵՆ ԲԱԳՐԱՏԵԱՆԻՆ

*A1+*, 12:40

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի մամուլի քարտուղար Արման Մուսինեանը քիչ առաջ տեղեկացրեց, որ ձերբակալուած է ՀՀ նախկին վարչապետ Հրանտ Բագրատեանը: Ըստ ականատեսների՝ նա նաեւ դաժան ծեծի է ենթարկուել:

Տեղեկութիւններ էին տարածուել, որ ձերբակալուած է նաեւ Նիկոլ Փաշինեանը, սակայն, ըստ շտաբի, այդ տեղեկութիւնը չի համապատասխանում իրականութեանը:

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ
## (լրացուած 13.14-ի դրութեամբ)

*A1+*, 12:56

Քիչ առաջ Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը տարածեց այսօր Ազատութեան Հրապարակում ձերբակալուածների նախնական ցուցակը.

1. Դաւիթ Մաթեւոսեան
2. Արմէն Օհանեան
3. Դաւիթ Առաքելեան, Կենտրոնի ոստիկանութիւն
4. Վահագն (Վարդգէս) Հայոցեան, Կենտրոնի ոստիկանութիւն
5. Արամ Մանուկեան, Կենտրոնի ոստիկանութիւն
6. Մասիս Այվազեան
7. Լեւիկ Խաչատրեան
8. Հրանտ Բագրատեան
9. Գագիկ Շամշեան (լրագրող), Քանաքեռի ոստիկանութիւն

10 Կորիւն Միհրեան (Մարտունի)

11 Վեմիր Մխիթարեան (Վարդենիս)

ԱՆՅԱՅՏ Է ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ

1. Վահագն Խաչատրեան
2. Ալեքսանդր Արզումանեան
3. Արարատ Զուրաբեան
4. Քրիստ Մանուկեան (Մանուկի)
5. Մանուէլ Մանուկեան (Մանուկի)
6. Տիգրան Բաղդասարեան (Արաբկիր)

ՎԻՐԱՒՈՐՆԵՐ

1. Արամ Բարեղամեան, Հանրապետութիւն
2. Բաբկէն Աթոյեան, Հանրապետութիւն

3. 3 հոգի Շտապ Օգնութեան
4. 6 քաղաքացի 1 ոստիկան վերակենդանացման բաժնում Մասիւի հիւանդանոց

## ՎԵՐԱԿԵՆԴԱՆԱՑՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՈՒՄ ԵՆ

*A1+*, 13:05

Քիչ առաջ վերադարձանք Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ բժշկական կենտրոնից, որտեղ Ազատութեան Հրապարակից տեղափոխել էին 7 վիրաւորների:

Կենտրոնի վերակենդանացման բաժանմունքի վարիչ Գագիկ Մանուկեան *Ա1+*-ին յայտնեց, հիմա հիւանդանոցում գտնուող 7 վիրաւորների վիճակը բաւարար է: Նա յայտնեց, որ շտապ օգնութեան մեքենայով 2 վիրաւորների բերել են առաւօտեան ժամը 7:40-ին, ապա 2 վիրաւոր էլ բերել են 7:45-ին, ապա 8.05-ին նորից մէկ հիւանդ, իսկ 10:10 րոպէ 2 հիւանդ եւս բերել են:

«Ընդունած հիւանդները բոլորը տղամարդիկ են, մենք անմիջապէս տազնապ արեցինք, բժիշկներով խորհրդակցեցինք ու հետազօտումից յետոյ համապատասխան բաժանմունքներում օգնութիւն ցոյց տուեցինք», - պատմեց բժիշկը:

Ըստ նրա՝ 4-ի մօտ կայ գլխներին՝ վէրքեր, որոնք արդէն մշակուել ու կարուել են, 2-ի մօտ կոտրուածքներ կան, մէկը բրոնխիալ ասթմայով հիւանդ է, ով բժշկի հաւաստմամբ նախօրէին եւս դիմել էր իրենց եւ վիճակը կայունացրել էին:

«Որեւէ մէկը գիտակցութեան կորուստ չի ունեցել, որովայնի խոռոչում արիւն կամ հեղուկ չենք յայտնաբերել, դեռ մնալու են բժշկական հսկողութեան ներքոյ», - յայտնեց Գագիկ Մանուկեանը:

Վիրաւորներից Գառնիկ Հայրապետեանը պատմեց, որ յարձակումը Ազատութեան Հրապարակում եղել է ժամը 6.20-ի կողմերը:

«Հանգիստ քնած էինք, ասացին գրաժդանսկի մարդիկ են եկել, բայց միւս կողմից հասան, սկսեցին ծեծել, կողքիս կին կար, ինքն գետնին թպրտում էր, երեխան էլ, էլ չեմ յիշում ինչ եղաւ», - պատմեց նա:

Ազատամարտիկ, 2-րդ կարգի հաշմանդամ Քաջիկ Յարութիւնեանն էլ պատմում է, որ յարձակման ժամանակ «մի հոգուն մի քանի հոգով էին ծեծում, քնած էինք, չհասցրեցինք անգամ պաշտպանուել, ինչ դիմադրութիւն»:

Ազատամարտիկի կողքին մահճակալին պառկած էր նաեւ 25-ամեայ Արթուր Միրումեանը, ով Ազատութեան Հրապարակում չի եղել եւ ամենեւին էլ կապ չի ունեցել ընդդիմութեան հետ:

«Առաւօտեան շուտ պապան խանութ էր գնացել, մենք իմացանք, որ քաղաքում վիճակը խառն ա, պապան էլ հա չկար, իջանք պապային գտնելու, Աբովեան փողոցի վրայ մեզ վրայ յարձակուեցին, մամային հայհոյեցին, ես էլ ասացի, թէ ինչու էք հայհոյում, քաշեցին գցեցին գետնին ու սկսեցին ծեծել», - պատմեց նա:

Հիւանդանոցից դուրս գալիս հանդիպեցինք Արթուրի ծնողներին, ովքեր վրդովուած դէս ու դէն էին անում, տեղեկութիւն չունէին որդու վիճակից:

«Չէի ուզում, որ տղաս գայ, մանաւանդ, որ հանգիստ քնած էր իր համար, յարձակւում դաժան ծեծում էին բոլորին, մենք կապ չունէինք», - պատմեց մայրը Զեմֆիրա Ղազարեանը:

## ՀՀ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 13:15

Հայաստանի Ոստիկանութիւնը տարածել է հաղորդագրութիւն մարտի 1-ի իրադարձութիւնների վերաբերեալ, որը ներկայացնում ենք նոյնութեամբ.

«Փետրուարի 19-ի ՀՀ նախագահական ընտրութիւններից յետոյ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ նրա թիմը նստացոյց սկսեցին Օպերայի Հրապարակում եւ ձեռնարկեցին ամէնօրեայ ապօրինի հանրահաւաքներ ու երթեր, նպատակ ունենալով ապակայունացնել իրավիճակը մայրաքաղաքում:

Հանրահաւաքներում հնչում էին սադրիչ յայտարարութիւններ ու կոչեր: Չնայած ոստիկանութեան բազմաթիւ նախազգուշացումներին, որ այդ գործողութիւնները հակաիրաւական են, նրանք շարունակում էին կոպտօրէն խախտել հասարակական կարգն ու վտանգել հասարակութեան անվտանգութիւնը:

Փետրուարի 29-ին օպերատիւ տեղեկութիւններ ստացուեցին, որ ցուցարարներին պէտք է բաժանուեն մեծ քանակութեամբ հրազէն, նռնակներ, պայթուցիկ նիւթեր մետաղեայ ձողեր եւ մահակներ: Տուեալներ կային, որ մարտի 1-ին մայրաքաղաքում պէտք է ձեռնարկուեն սադրիչ գործողութիւններ, հրահրուեն զանգուածային անկարգութիւններ: Նոյնպիսի օպերատիւ տուեալներ էին ստացուել նաեւ Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնում:

Ոստիկանութեան աշխատակիցները, այդ նիւթերն առգրաւելու եւ իրավիճակը վտանգազերծելու նպատակով, ցուցարարներին կոչ արեցին համապատասխան զննութիւն կատարելու հնարաւորութիւն տալ: Այս կոչին անսպասելիօրէն յաջորդեց նստացոյցի մասնակիցների յարձակումը ոստիկանների վրայ: Ցուցարարները սկսեցին նրանց վրայ նետել քարեր, փայտի կտորներ, մետաղեայ ձողեր, բռնկուն նիւթերով շշեր եւ այլն: Իշխանութիւնը բռնութեամբ տապալելու եւ իրաւապահների արժանապատուութիւնը վիրաւորող կոչեր էին հնչում: Օրինախախտների ագրեսիւութիւնը աճում էր:

Ստեղծուած իրավիճակի անկանխատեսելիութիւնից եւ իրաւախախտումների բնոյթից ելնելով, օպերատիւ որոշում կայացուեց՝ օրէնքով նախատեսուած շրջանակներում համապատասխան միջոցներ ձեռնարկել: Իրաւախախտները սկսեցին դիմադրութիւն ցոյց տալ մահակներով, սուր ծակող-կտրող գործիքներով, մետաղեայ ձողերով:

Բախման հետեւանքով ոստիկանների մէջ կան վիրաւորներ, որոնք տեղափոխուել են հիւանդանոց:

Անկարգութեան կազմակերպիչների ու մասնակիցների մի մասը բերման են ենթարկուել ոստիկանութեան բաժիններ: Կան ձերբակալուածներ: Կազմակերպիչներից ոմանք դիմել են փախուստի: Ոստիկանութիւնը որոնողական աշխատանքներ է իրականացնում անկարգութիւնների մասնակիցներին եւ դրդողներին յայտնաբերելու ուղղութեամբ:

Կատարւում է քննութիւն՝ բերման ենթարկուածների ինքնութիւնը ճշտելու եւ պատասխանատուութեան հարցը լուծելու նպատակով:

Յարուցուած քրէական գործի շրջանակներում ընթանում են խուզարկութիւններ: Զննութեամբ Օպերայի Հրապարակում յայտնաբերուել է 2 հատ ձայնալուսային նռնակ, 10 հատ Ֆ-1, ՌԳ-42, ՌԳԴ-5, ԱՊ-92 տեսակի նռնակներ՝ պայթուցիչներով, ՏՏ ատրճանակ՝ 1 հատ, իսպանական արտադրութեան Աստրա ատրճանակ՝ 1 հատ, չեխական

արտադրութեան, 6,35 մմ տրամաչափի ատրճանակ՝ 1 հատ, աւտոմատի լիցքաւորուած պահունակ՝ 2 հատ, մէկ հատ 200 գրամանոց տրոտիլային պայթազլանիկ, ՄՌԻՎ հարուածային մեխանիզմ՝ 1 հատ, 7,62 մմ տրամաչափի փամփուշտներ՝ 25 հատ, կարաբինի փամփուշտ՝ 25 հատ, մէկ տուփ՝ 30 հատ 5,45 մմ տրամաչափի փամփուշտ, գազի բալոն՝ 13 կգ կշռով, վրան գրուած՝ «քլորոդիքլոմեթան», մեծ քանակութեամբ երկաթէ ձողեր, փայտէ մահակներ, երկու հատ ներարկիչ՝ օգտագործուած, 48 հատ «տրիստալին» տեսակի հոգեմէտ դեղահաբ, 10 հատ «ցիկլադոլ», մի քանի տասնեակ, երկաթէ ամրաններից պատրաստուած «ոզնիներ», մէկ կանիստր բենզին եւ դիւրավառ հեղուկով շշեր:

Հանրապետութիւն կուսակցութեան գրասենեակի մօտ յայտնաբերուել է ԵրԱՉ մակնիշի աւտոմեքենայ՝ բարձուած մեծ քանակութեամբ փայտէ մահակներով եւ մետաղեայ ձողերով: Մեքենայի մէջ յայտնաբերուել են նաեւ այլ պետհամարանիշներ: Միջոցներ են ձեռնարկւում վարորդի ինքնութիւնը ճշտելու եւ նրան յայտնաբերելու ուղղութեամբ:

Հայաստանի Հանրապետութեան ոստիկանութիւնը հաւաստիացնում է, որ իրավիճակը մայրաքաղաքում լիովին վերահսկւում է, արւում է առաւելագոյնը անկարգութեան կազմակերպիչներին արագօրէն յայտնաբերելու եւ պատասխանատուութեան կանչելու, անկարգութիւնների հետեւանքները շուտափոյթ վերացնելու համար»:

## ՄԱՐԴԿԱՆՑ ԱՐԳԵԼՈՒՄ ԵՆ ԻՐԱՐ ՄՕՏԵՆԱԼ

*A1+*, 13:26

Մարդու Իրաւունքների պաշտպան Արմէն Յարութիւնեանը քիչ առաջ բանակցել է ոստիկանութեան հետ եւ Ֆրանսիայի դեսպանատան մօտ հաւաքուած բազմաթիւ մարդկանց յայտարարել է, որ ոստիկանները թոյլ կը տան նրանց միանալ նաեւ միւս ցուցարարներին եւ երթով շարժուել դէպի Վազգէն Սարգսեանի անուան մարզահամալիր եւ այնտեղ անցկացնել հանրահաւաք:

Քաղաքապետարանի եւ Ֆրանսիական դեսպանատան մօտ հաւաքուած մարդկանց միջեւ ոստիկաններ են կանգնած, որոնք արգելում են մարդկանց մօտենալ իրար: Սակայն մարդկանց այդքան էլ դուր չի եկել օմբուդսմէնի առաջարկը: Ելոյթ է ունեցել նաեւ Երջանիկ Աբգարեանը, ով Լեւոն Տէր-Պետրոսեանի անունից կոչ է արել ժողովրդին հանդարտուել եւ շարժուել դէպի Վազգէն Սարգսեանի անուան մարզահամալիր: Արմէն Յարութիւնեանը նաեւ խոստացել է, որ անձամբ կ’ուղեկցի մարդկանց դէպի մարզահամալիր եւ որ ոչ մի ոստիկան նրանց չի խոչընդոտի: Բանակցութիւնները շարունակւում են:

## ԱՌԱՋԻՆ ՆԱԽԱԳԱՀԸ ՈՉ ՖՈՐՄԱԼ ՏՆԱՅԻՆ ԿԱԼԱՆՔԻ ՏԱԿ

*Lragir.am*, 13:43

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը գտնւում է Ծիծեռնակաբերդի իր տանը, գրեթէ տնային կալանաւորի կարգավիճակում: Այդ կարգավիճակը ֆորմալ չէ, բայց ինչպէս մարտի 1-ին, առաւօտեան ժամը 11-ին տեղի ունեցած մամուլի ասուլիսի ընթացքում լրագրողներին ասել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, իրեն ոչ թոյլ են տալիս դուրս գալ իր տնից, եւ ոչ էլ թոյլ են տալիս որեւէ մէկին ընդունել: Լրագրողներին էլ ոստիկանութեան զօրքերի ներկայացուցիչներն ու պետական պահպանութեան ծառայութեան աշխատակիցները ներս են թողել միայն մի քանի րոպէ սպասեցնելուց յետոյ,

նախ ասելով, թէ չի թոյլատրւում, իսկ յետոյ հեռախօսային պարզաբանումներ ունենալով թերեւս իրենց ղեկավարների հետ, ուղեկցել են նրանց առաջին նախագահի տուն:

Ի դէպ, երբ լրագրողները մտել են տուն, Լեւոն Տէր-Պետրոսեանի տան մօտ նրա դէմ կազմակերպուած պիկէտի մասնակիցները եղել են դեռ այնտեղ, իսկ ահա երբ լրագրողները դուրս են եկել, պիկէտաւորները, որ առաջին նախագահի տան դիմաց էին արդէն մի քանի օր, այլեւս այնտեղ չեն եղել:

Լեւոն Տէր-Պետրոսեանը մամուլի ասուլիսի ընթացքում ներկայացրել է կատարուածի պատկերը, որին ինքն ականատես է եղել, տուել է դրա քաղաքական գնահատականը եւ խօսել որոշակի անելիքների, իր հնարաւոր յետագայ քայլերի մասին: Ըստ Լեւոն Տէր-Պետրոսեանի, ինքը Ազատութեան Հրապարակի իր վրանում քնած է եղել, երբ առաւօտեան վեցին, սովորական ժամից մէկ ժամ առաջ, իրեն արթնացրել են, տեղեկացնելով, թէ նկատւում է ներքին զօրքերի շարժ՝ Փարաքարի եւ Դաւիթաշէնի զօրամասերից: Խօսքը եղել է միայն մարդուժի, ոչ տեխնիկայի մասին:

Լեւոն Տէր-Պետրոսեանը նշում է, թէ այդպիսի շարժերի մասին տեղեկութիւններ իրենք ստացել են նաեւ նախորդ գիշերներին, ընդ որում ամէն գիշեր մի քանի անգամ, եւ կարծել են, թէ սա հերթական այդօրինակ տեղեկութիւնն է: Թէեւ չէին կարծում, որ ուժ կը լինի, բայց ամէն դէպքում մենք միացրինք խօսափողերը, որպէսզի անհրաժեշտութեան դէպքում դիմեն ժողովրդին: Այդ ընթացքում ոստիկանութեան զօրքերը մօտեցել են հրապարակին, մտել են հրապարակ, ուր արդէն հաւաքուած է եղել ժողովուրդը, եւ շարուել ժողովրդի դիմաց:

Լեւոն Տէր-Պետրոսեանն ասում է, որ ինքը խօսափողով դիմել է ժողովրդին, ասելով, որ ոստիկանների հետ որեւէ շփման, որեւէ բախման չգնան, մինչեւ իրենք պարզեն, թէ ոստիկանութիւնն ինչ է ուզում իրենցից: Սակայն Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, դրանք եղել են իր վերջին բառերը, եւ մի քանի վայրկեան անց ոստիկանութիւնը մահակներով ու էլեկտրահարիչներով յարձակուել է Ազատութեան Հրապարակում գտնուող ժողովրդի վրայ, իսկ մի քանի վայրկեան անց էլ Լեւոն Տէր-Պետրոսեանին են մօտեցել պետական պահպանութեան ծառայութեան աշխատակիցները, ծառայութեան ղեկավար Գրիշա Սարկիսեանի գլխաւորութեամբ եւ նրան փորձել են հեռացնել հրապարակից:

Ինչպէս Լեւոն Տէր-Պետրոսեանն է պատմել, Գրիշա Սարկիսեանն ու էլի ինչ որ մի աշխատակից մօտեցել են նրան, մտել են թեւերը եւ իջեցրել հարթակից ու մօտեցրել իր մեքենային, ասելով, որ պէտք է ինքը հեռանայ հրապարակից: Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, որ ինքը կը հեռանայ միայն այն դէպքում, երբ իրեն ուժով հեռացնեն, կամ ձերբակալեն: Այդ ընթացքում արդէն ոստիկանները հրապարակն ազատած են եղել այնտեղի մարդկանցից, եւ ձեռնամուխ են եղել ձայնային տեխնիկան ու վրանները աւերելով, ինչպէս պատմել է Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա ասել է, թէ տեսել է, որ ոստիկանները իրենց հետ բերել են մետաղէ ձողեր, հաւանաբար յետոյ դրանք իրենց հետ բերած տեսախցիկներով նկարելու եւ որպէս ցուցարարների զէնք ներկայացնելու համար: Յետոյ, երբ Լեւոն Տէր-Պետրոսեանը հրաժարուել է դուրս գալ հրապարակից, նրան մօտ երկու ժամ այլեւս որեւէ մէկը չի մօտեցել:

Երկու ժամ անց կրկին մօտեցել է Գրիշա Սարկիսեանը եւ նորից ասել, որ առաջին նախագահը պէտք է թողնի հրապարակը: Լեւոն Տէր-Պետրոսեանը կրկին ասել է, որ միայն իրեն ձերբակալելու կամ ձեռքերը ոլորելով տանելու դէպքում: Մի քանի անգամ

պահանջը կրկնելուց յետոյ, Գրիշա Սարկսեանի գլխաւորութեամբ իր ձեռքերը ոլորել են ու նստեցրել ոստիկանական մի մեքենայ եւ տարել իր տուն, ուր եւ լրագրողներին հանդիպել է Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Լրագրողներից բացի, հանդիպմանը ներկայ են եղել արտասահմանցի դիտորդների ներկայացուցիչներ, ինչպէս նաեւ մէկ-երկու օտարերկրեայ լրագրող: Լեւոն Տէր-Պետրոսեանը կարեւոր է համարել նշել այն հանգամանքը, որ ոստիկանները ուժի են դիմել առանց ժողովրդին որեւէ նախազգուշացում, որեւէ պահանջ ներկայացնելու: «Եթէ զգուշացնէին, ժողովուրդը գուցէ գնար», ասում է Լեւոն Տէր-Պետրոսեանը, նշելով, որ չի եղել բացարձակ որեւէ նախազգուշացում, ինչը նա համարում է կարեւոր հանգամանք:

Լեւոն Տէր-Պետրոսեանը տուել է նաեւ կատարուածի գնահատականը, ասելով, թէ իշխանութիւնն ըստ էութեան հանրահաւաքների երկրորդ օրից արդէն յայտնուել է անելանելի վիճակում, քանի որ ժողովրդի մոբիլիզացիան եղել է անկասելի եւ աւելացել է օրեցօր: Տէր-Պետրոսեանը նշում է, որ ինքը մնում էր հրապարակում, քանի որ թէ պարտական էր ժողովրդի կողքին լինել, եւ թէ դա համարում էր ուժի վտանգը նուազեցնելու պարագայ: Սակայն, ինչպէս նշել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, տեղի ունեցածը ցոյց տուեց, որ այդ պարագան չի գործել:

Տէր-Պետրոսեանն ասում է, որ իշխանութիւնը բռնութիւն կիրառելու մասին տարաբնոյթ տեղեկութիւններ կիրառելով, սակայն գործնական քայլ չանելով, ըստ էութեան բթացրել է իրենց զգօնութիւնը, ինչպէս նաեւ խաբել է արտաքին աշխարհին, որին հաւաստիացնում էր, թէ չի լինի խաղաղ ցուցարարների դէմ ուժի որեւէ կիրառում: Թէեւ Լեւոն Տէր-Պետրոսեանը նշում է, որ եթէ անգամ իմանային ուժի կիրառման հաւանականութեան մասին, ապա միեւնոյն է, հրապարակից չէին գնայ: Գուցէ կը հեռացնէին կանանց ու երեխաներին, բայց իրենք չէին գնայ:

Առաջին նախագահը նաեւ ասել է, որ իշխանութիւնները ըստ էութեան ցինիկ ձեւով խաբեցին նաեւ արտաքին աշխարհին, ի պատասխան արտաքին աշխարհից եկած յորդորների, որ պէտք չէ խաղաղ ցուցարարներին ենթարկել բռնութեան, ասելով, թէ նման բան չի լինի, բայց մարտի 1-ին դիմելով այդ բռնութեանը:

Լեւոն Տէր-Պետրոսեանը ասել է, որ լաւ իմանալով այս իշխանութեանը, հինգ ամիս շարունակ ներկայացնելով դրա էութիւնը, նկատի ունենալով, «թէ ինչ յանցաւոր բազմ» ունի այս իշխանութիւնը, ինքը պատկերացնում է, որ այս մարդիկ չէին կարող իշխանութիւնից հեռանալ այնպէս հանգիստ, ինչպէս հեռացան իրենք: Ինչ վերաբերում է իր յետագայ քայլերին, Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, թէ շարունակելու են օրէնքի շրջանակում տարուող պայքարը: Դիմելու են քաղաքապետարան, ցոյցերի, երթերի, պիկէտների թոյլտուութեան համար: Եթէ դրանք չտրամադրեն, ապա միեւնոյն է, անելու են այդ երթերը, ցոյցերն ու պիկէտները, քանի որ դրանք քաղաքացիների Սահմանադրական իրաւունքն են եւ կարող են կանխուել միայն արտակարգ դրութեան դէպքում:

## «ԾԵԾՈՒԱԾ ԵՐԵԽԱՅԻՆ ԳՐԿԻՑՍ ԽԼԵՑԻՆ»

*A1+,* 13:47

Այս պահին Ֆրանսիական դեսպանատան մօտ շարունակւում են բանակցութիւնները ոստիկանութեան հետ, այնտեղ են գտնւում Ժառանգութեան խմբակցութեան ԱԺ պատգամաւորներ Ստեփան Սաֆարեանը, Անահիտ Բախշեանը, Արմէն Մարտիրոսեանը եւ

Զարուհի Փոստանջեանը: Նրանք ցանկանում են հանդիպել Ֆրանսիայի դեսպանի հետ, սակայն վերջինս դեռեւս չի արձագանքել պատգամաւորների կոչին:

Անահիտ Բախշեանը ոստիկանութեանը առաջարկել է թոյլ տալ մարդկանց հանրահաւաք անցկացնել Ազատութեան կամ Հանրապետութեան Հրապարակում, ոստիկաններն էլ իրենց հերթին առաջարկում են Վազգէն Սարգսեանի անուան մարզահամալիրում կամ կայարանում անցկացնել հանրահաւաքը, ինչի հետ մարդիկ չեն համաձայնել: «Մեզ ուզում են քաղաքի կենտրոնից ցրեն, որ մարդիկ չտեսնեն, թէ ինչ է կատարւում», - այսպէս են ոստիկանների առաջարկը մեկնաբանում մարդիկ:

ԱԺ պատգամաւորները *Ա1+*-ին տեղեկացրել են, որ Կենտրոնի ոստիկանութիւն են բերուել բազմաթիւ մարդկանց: «Նոյնիսկ 12-13 տարեկան ծեծուած երեխային խլեցին գրկիցս ու տարան ոստիկանութեան բաժանմունք», - ասաց Զարուհի Փոստանջեանը:

## ՄԱՅՐ ԱԹՈՌԸ ՀԱՆԴԱՐՏՈՒԹԵԱՆ ԿՈՉ Է ԱՆՈՒՄ ԺՈՂՈՎՐԴԻՆ

*Lragir.am*, 13:52

Մարտի 1-ին Մայր Աթոռ Սուրբ Էջմիածինը ներքաղաքական կեանքում ստեղծուած իրավիճակի առիթով կոչով դիմել է ժողովրդին, որում ասւում է.

«Մայր Աթոռ Սուրբ Էջմիածինն իր անհանգստութիւնն է արտայայտում մարտի 1-ին Երեւանի Ազատութեան Հրապարակում տեղ գտած իրադարձութիւնների առիթով:

Մայր Աթոռը յորդորում է մեր ժողովրդի զաւակներին հանդարտութեան եւ զսպուածութեան, զերծ մնալ ընդհարումներից, նպաստել կայունութեանը, որպէսզի հնարաւոր լինի խաղաղ պայմաններում երկխօսութեան ճանապարհով լուծում գտնել ստեղծուած քաղաքական իրավիճակին»:

Ամենայն Հայոց Հայրապետը յանձնարարել է եկեղեցականներին այցելել տուժած անձանց հիւանդանոցում:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԶԳՈՒՄ Է, ՈՐ ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆՆ ՈՒ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ «ՉԵՆ ԶԳԻ ՏԱՍԸ ՕՐ»

*Lragir.am*, 13:58

«Ես ժամանակ չեմ ունեցել իրավիճակը վերլուծելու համար, եւ դրա համար նաեւ չկայ բաւարար տեղեկատուութիւն, որովհետեւ ես անգամ իմ ընկերներից շատերի հետ կապից եմ զրկուած, բայց իմ զգացողութեամբ Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը վերջացած են: Իմ զգացողութեամբ, նրանք տասը օր չեն դիմանայ Հայաստանում», մարտի 1-ին, իր տանը, փաստացի՝ ոչ դէ իւրէ, բայց դէ ֆակտօ, տնային կալանքի պայմանում հրաւիրած մամուլի ասուլիսի ընթացքում յայտարարել է առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, ներկայացնելով մարտի 1-ի լուսադէմին իր գլխաւորած խաղաղ ցոյցի մասնակիցների դէմ կիրառուած ոստիկանական գործողութեան մանրամասներն ու գնահատականը:

Ես չեմ պատկերացնում, որ այս խայտառակ ընտրութիւններից յետոյ Սերժ Սարգսեանը լինի լեգիտիմ նախագահ եւ կարողանայ ղեկավարել այս ժողովրդին, որը չի հանդուրժում նրան, ասուլիսի ընթացքում յայտարարել է առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա նշել, թէ կը զարմանայ, եթէ արտաքին աշխարհին ընդունի այն, ինչ Հայաստանի իշխանութիւնն արել է մարտի 1-ի լուսադէմին, բռնութեամբ ցրելով

Ազատութեան Հրապարակի ցուցարարներին, վիրաւորելով հարիւրաւոր մարդկանց, նրանց ենթարկելով մահակներով դաժան ծեծի։ Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքով, անգամ ԿԸՅ-ն ստիպուած կը լինի վերանայել ընտրութեան արդիւնքի վերաբերեալ իր որոշումը, անկախ Սահմանադրական Դատարանի վճռից։

«Ես չեմ հասկանայ, թէ ինչպէս է միջազգային հանրութիւնը հանդուրժելու այս գիշեր տեղի ունեցածը», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը։ Նրա խօսքով, ժողովուրդը հաստատ չի հանդուրժելու, եւ եթէ «հրաշք պատահի ու Սերժ Սարգսեանը մնայ նախագահ», ապա Լեւոն Տէր-Պետրոսեանը չի պատկերացնում, թէ նա ինչպէս է կառավարելու ազատութեան օդը շնչած ժողովրդին։ Լեւոն Տէր-Պետրոսեանն ասում է նաեւ, որ Ռոբերտ Քոչարեանը այդպիսով մարտահրաւէր է նետել արտաքին աշխարհին, որին հաւաստիացնում էր, որ խաղաղ ցուցարարների հանդէպ ուժ չի կիրառուի, բայց արեց հակառակը։

Լեւոն Տէր-Պետրոսեանն ասել է, որ իշխանութիւնը երեւի թէ փորձեց օգտուել այն պահից, երբ այլեւս Հայաստանում չէին բարձրաստիճան եւրոպացի դիւանագէտները, դիտորդների զգալի մասը, օտարերկրեայ լրագրողները, որ համաշխարհային մամուլի ուշադրութիւնը բեւեռուել է մարտի 2-ին Ռուսաստանի նախագահի ընտրութեան վրայ։

Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է նաեւ, թէ իշխանութիւնը ստայօդ լուրեր էր տարածում, անգամ միջազգային դիւանագէտների մօտ, որ բանակցութեան մէջ է Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ։ Երկու օր առաջ հեռախօսազրոյց է տեղի ունեցել Պուտինի եւ Ռոբերտ Քոչարեանի միջեւ, պատմել է Տէր-Պետրոսեանը, որի ընթացքում Ռոբերտ Քոչարեանը, ըստ Տէր-Պետրոսեանի պատմածի, Պուտինին հաւաստիացրել է, որ ուժ չի կիրառուի խաղաղ ցուցարարների հանդէպ։ Ըստ Տէր-Պետրոսեանի, Պուտինն էլ ասել է, որ ուժի կիրառումն անթոյլատրելի է։ Բացի այդ, Ռոբերտ Քոչարեանը, ինչպէս նշել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, Պուտինին վստահեցրել է, որ ինքը լուրջ բանակցութեան մէջ է Տէր-Պետրոսեանի հետ։ Լեւոն Տէր-Պետրոսեանը նշում է, թէ ահա ինչպէս են Հայաստանի իշխանութիւնները խաբել անգամ Ռուսաստանին։

Լեւոն Տէր-Պետրոսեանը հերքել է իր հետ բանակցութեան մասին տեղեկութիւնը, ասելով, որ նման առաջարկ չի եղել, եւ որ լինելու դէպքում էլ ինքը դրան կը համաձայնէր պայմանով, որ ձերբակալուած ընկերները բոլորն ազատ արձակուէին։ «Մնացեալը քննարկման հարց էր», յայտարարել է Լեւոն Տէր-Պետրոսեանը։ Ինչ վերաբերում է յետագայ երկխօսութեան հնարաւորութեանը, ապա Լեւոն Տէր-Պետրոսեանը դա բացառելու մասին լրագրողների հարցին ասել է, թէ քաղաքականութիւնն այդպէս չէ, կարող է լինել նոր իրավիճակ։ «Քաղաքականութիւնը կոմպրոմիսի արուեստ է», ասել է առաջին նախագահը։

## «ՈՐ՞ԻՐ ԷԻՔ, ՄԱՐԴՈՒ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆ»

*A1+*, 13:58

Ժամը 10:30-ից սկսած Ազատութեան Հրապարակից լուսադէմին ուժի կիրառմամբ դուրս բերուած մարդիկ, եւ ձերբակալուածների ու անհետ կորածների հարազատները, նաեւ շարքային քաղաքացիներ, որոնց ոստիկանութեան աշխատակիցներն ու յատուկ ջոկատայինները ծեծում էին որտեղ որ պատահի, տարերայնօրէն հաւաքուեցին ՀՀ-ում Ֆրանսիայի դեսպանատան դիմաց։ Այստեղ ոստիկանութիւնն արդէն խիտ շարքերով

կանգնած էր:

Հաւաքուածները, որոնք չեն էլ թաքցնում իրենց վրդովմունքը, գնալով աւելանում էին ու վանկարկում՝ «Լեւոն, նախագահ», «Ազատութիւն», «Պայքար, պայքար մինչեւ վերջ», «Սերժիկ, հեռացիր»:

Դեսպանատան ներկայացուցիչներից որեւէ մէկը դեռեւս չի հանդիպել ցուցարարներին: Փոխարէնը ցուցարարներին արդէն 40 րոպէ անց միացել են Հիւսիսային Պողոտայով երթ կազմակերպածների եւ քաղաքացիների նոր խմբեր: Քիչ անց ժամանեցին նաեւ ոստիկանութեան սաղաւարտաւոր, վահաններով եւ մահակներով զինուած աշխատակիցներ ու յատուկ ջոկատայիններ, որոնք փորձում են շրջափակման մէջ առնել ցուցարարներին, բայց նրանք շարունակում են վանկարկել՝ «Հայեր, միացէք»:

Գրիգոր Լուսաւորիչ փողոցի երթեւեկութիւնը գրեթէ կանգնած է, մարդիկ երթուղային տաքսիներից իջնում եւ միանում են հաւաքուածներին, անցնող մեքենաների վարորդները ազդակներով եւ բռունցքներով իրենց համերաշխութիւնն էին յայտնում ցուցարարներին:

Երկու տրոլեյբուսներ փակել են աւտոմեքենաների ճանապարհը, դրանց վրայ ցուցարարները փակցրեցին «Յաղթելու ենք» մակագրութեամբ պաստառներ: Կենտրոնի համայնքին պատկանող մի աղբատար բերեց եւ հէնց փողոցի կենտրոնում թափեց այն ամէնը, ինչ ոստիկանութեան գրոհից յետոյ մնացել էր Ազատութեան Հրապարակում եւ դուրս էր բերուել որպէս աղբ՝ վրաններ, արիւնոտ ներքնակներ, երեխայի կօշիկ, սնունդ եւ այլն: Դրանից յետոյ ցուցարարներից ոմանք զսպում էին հաւաքուածներին՝ ոստիկանութեան վրայ չգրոհելու համար, որոնք գոռում էին՝ յաղթելու ենք եւ «Արթուր, դաւաճան»:

Դեսպանատան առջեւ հաւաքուածների թւում էր նաեւ ԱԺ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Անահիտ Բախշեանը, եկաւ նաեւ ՀՀ օմբուդսմէնը: Մարդիկ նրան հարցնում էին, թէ՝ Մարդու Իրաւունքների պաշտպան էք, ո՞ւր էիք, Մարդու Իրաւունքների պաշտպան էիք: «Էն ինչ կատարուեց Օպերայում, հիմա էստեղ շարունակւում է», - օմբուդսմէնին նախազգուշացնում էին մարդիկ:

Յիշեցնենք, որ ժամը 15:00-ին ՀՀ-ում Ֆրանսիայի դեսպանատան մօտ նախատեսուած էր հանրահաւաք:

## ԼՍՈՒԵԼ Է ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ԲԱՐԲԱՌ

*Lragir.am*, 14:01

Մարտի 1-ին Լեւոն Տէր-Պետրոսեանի տանը տեղի ունեցած մամուլի ասուլիսի ընթացքում լրագրողները նրան հարց են ուղղել կապուած այն բանի հետ, որ լուսադէմին խաղաղ ցուցարարների դէմ կիրառուած ուժի ընթացքում քաղաքացիներից շատերը լսել են, որ ոստիկանութեան զօրքերի մէջ կան մարդիկ, որոնք խօսում են Ղարաբաղի բարբառով: Լրագրողները խնդրել են Լեւոն Տէր-Պետրոսեանին մեկնաբանել այդ հանգամանքը, նկատի ունենալով, որ խաղաղ ցուցարարներին ճնշելու համար թերեւս Հայաստան են բերուել Ղարաբաղի յատուկ ջոկատայինները: Լեւոն Տէր-Պետրոսեանն ի պատասխան այդ հարցի ասել է, թէ իրեն էլ քաղաքացիներից շատերը տեղեկացրել են, թէ իսկապէս լսուել են ղարաբաղեան բարբառով բղաւոցներ ու հայհոյանքներ: Սակայն Տէր-Պետրոսեանն ասում է, որ ինքը չունի այդ փաստը հաստատող որեւէ տեղեկութիւն, որովհետեւ

անձամբ նման բանի չի եղել ականատես։ Սակայն եթէ այդ տեղեկութիւնները համապատասխանում են իրականութեանը, ապա դա չափազանց վատ է, նշել է Լեւոն Տէր-Պետրոսեանը, ասելով, որ դա կարող է այնպիսի սեպ խրել Հայաստանի ու Ղարաբաղի հասարակութիւնների միջեւ, որը հանելը յետագայում կարող է լինել անհնար։

## ՇԱՏԵՐԸ ՊԱՏՍՊԱՐՈՒԵԼ ԵՆ ՄՕՏԱԿԱՅ ՇԷՆՔԵՐՈՒՄ, ԻՍԿ ԵՐԿՈՒՍԻՆ ԷԼ ՕԳՆԵԼ Է ԱՌԱՋԻՆ ՆԱԽԱԳԱՀԻ ԹԻԿՆԱԶՕՐԸ

*Lragir.am*, 14:06

Այն բանից յետոյ, երբ մարտի 1-ի լուսաղէմին Հայաստանի ոստիկանութեան զօրքերը ուժ են կիրառել ու ցրել են Ազատութեան Հրապարակում գիշերող խաղաղ ցուցարարներին, նրանցից շատերը ոստիկանութեան մահակների հետապնդումից խուսափել են ստանալով շրջակայ շէնքերի բնակիչների օգնութիւնը։ Այդ բնակիչները փախչողներին պատսպարել են իրենց բնակարաններում, քանի որ ոստիկանութիւնը նրանց հետապնդել է նաեւ հրապարակի տարածքից դուրս։ Այդ մասին իր մամուլի ասուլիսի ընթացքում յայտնել է առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանն, ով մինչեւ վերջ մնացել է Ազատութեան Հրապարակում, մինչեւ որ նրան այնտեղից ուժով տեղափոխել են իր տուն։

Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է, որ ինքը անգամ տեսել է, թէ ինչպէս են յարակից շէնքերի բնակիչներից շատերը, պատշգամբներից, գիշերային հագուստով, իրենց ընդվզումն արտայայտում ոստիկանութեան գործողութիւնների դէմ։ Լեւոն Տէր-Պետրոսեանը ասել է նաեւ, թէ իր թիկնազօրի տղաները ոստիկանութեան մահակներից փրկել են երկու երիտասարդի, որոնք փախչել են «սխալ» ուղղութեամբ ու յայտնուել ոստիկանների շրջապատում եւ նրանց ուղղակի գցել են գետին ու սկսել հարուածել ոտքերով ու մահակներով։

## ՀԱՆՐԱՀԱՒԱՔԸ ԿԱՐՈՂ Է ԼԻՆԵԼ ԻՆՔՆԱԲՈՒԽ

*Lragir.am*, 14:08

Մարտի 1-ին տեղի ունեցած մամուլի ասուլիսի ընթացքում Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարել է, որ իր շտաբը մարտի 1-ին ժամը 15-ին հանրահաւաք հրաւիրելու մասին որոշում չի կայացրել, որ իրենք այժմ ունակ չեն հանրահաւաք կազմակերպելու եւ ժողովրդի հաւաք եթէ լինի, ապա դա կարող է լինել ինքնաբուխ։ Լեւոն Տէր-Պետրոսեանը նշել է սակայն, որ այդ ինքնաբուխ հաւաքը լինելու պարագայում իրենք պարտաւոր են առաջնորդել ու վերահսկել այն, իսկ անձամբ ինքն այդ հաւաքին անպայման կը միանայ, առանց երկրորդ կարծիքի, եթէ կարողանայ իր տանից դուրս գալ, ինչը թոյլ չեն տալիս պետական պահպանութեան ծառայութեան աշխատակիցները, որոնք հսկում են Լեւոն Տէր-Պետրոսեանի տան մուտքը, թոյլ չտալով նրան դուրս գալ տանից եւ հիւր ընդունել։

## ՊԱՏԳԱՄԱՒՈՐԸ ՏԵՍԵԼ Է ԾԵԾՈՒԱԾ ԵՐԵԽԱՅԻ

*Lragir.am*, 14:10

Ժառանգութիւն կուսակցութեան խմբակցութեան անդամ, պատգամաւոր Ստեփան Սաֆարեանը լրագրողների հետ զրոյցում տեղեկացրել է, թէ առաւօտից Կենտրոնի ոստիկանութեան բաժանմունք են բերւում ձերբակալուած քաղաքացիներ, որոնք Ազատութեան Հրապարակում ենթարկուած են եղել դաժան ծեծի։ Պատգամաւորը նաեւ նշել

է, որ իր գործընկեր Զարուհի Փոստանջեանը նոյնիսկ տեսել է ծեծի ենթարկուած մօտ 12-ամեայ մի երեխայի:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀԱՅԵԱՑՔՈՎ

*A1+*, 14:16

Լեւոն Տէր-Պետրոսեանն ամենաերկարն է գտնուել Ազատութեան Հրապարակում, եւ այսօր տնային կալանքի պայմաններում ասուլիս անցկացրեց, որին ներկայ էին նաեւ միջազգային լրագրողներ: Դէպքի մասին մանրամասն պատմում է ՀՀ առաջին նախագահը.

«Ինչ եմ անձամբ տեսել. առաւօտեան ժամը 6-ին ինձ արթնացրին ու ասացին, որ շարժ կայ Փարաքարից եւ Դաւիթաշէնից, ներքին զօրքերի եւ յատուկ զօրամասի, բայց առանց զինտեխնիկայի, այսինքն, ոչ ջրցան մեքենաներ, ոչ զրահապատ մեքենաներ, եւ այլն, հիմնականում մարդատար մեքնենաներով, որոնց յետեւից բեռնատար մեքնենաներով զինուորներ՝ կարմիր բերետաւորներ, կանաչ կապոյտ: Ինձ արթնացրին, ես խօսեցի մարդկանց հետ, մենք չէինք կարծում, որ որեւէ բան տեղի կ'ունենայ, որովհետեւ նրան ահազանգեր ամէն գիշեր ստանում էինք, շարժուեցին, ետ գնացինք, տեղաշարժ կայ, տեխնիկա են հանում. ամէն գիշեր 10-20 ահազանգ էինք ստանում, ու թուաց, թէ հերթական ահազանգն է եւ հանգիստ էինք, բոլոր դէպքերում մենք միացրինք միկրոֆոնները, որպէսզի եթէ տեսնենք լրջանում է, կարողանանք ժողովրդի հետ խօսել: Շատ արագ մօտաւորապէս 6.30-40 երեւացին, նախ շրջակայ փողոցներում պտտուեցին, յետոյ միանգամից յայտնուեցին հրապարակում շարքերով, ես տեսայ աջ կողմից եւ ձախ կողմից, դիմացից չեմ տեսել: Եկան շարուեցին ժողովրդի առջեւ. իսկ ժողովուրդը հրապարակում էր, դէմ դիմաց 5 մետրի վրայ: Ես միկրօֆոնից ժողովրդին ասացի հետեւեալը. ես խնդրում եմ համբերութիւն, հանգստութիւն, ոչ մի ընդվզում, ոչ մի բողոք, ոչ մի գոչիւն, ասացի՝ սպասէք, ասացի՝ ոչ մի կոնտակտ, ոչ մի շփում: Տեսնենք՝ ոստիկանութիւնը մեզնից ինչ է ուզում: Սա եղել է իմ վերջին խօսքը: Շարքերը ոստիկանական շարժուեցին առաջ եւ սկսեցին ջարդել ժողովրդին, երկու բան եմ տեսել. մահակներ եւ էլեկտրոշոկի կայծեր, անընդհատ կապոյտը կայծերն էին, ուրիշ բան չի եղել, ոչ հրազէն, ոչ խլացուցիչ արկեր, ոչ գազ, ոչ արցունքաբեր գազ, ոչ ջրցան մեքենայ: Այս երկու գործիքն է կիրառուել պաշտպանական: Իհարկէ, ժողովրդի կողմից եղաւ դիմադրութիւն, ծեծկռտուք, ես տեսել եմ միայն աջ մասից: Մի քանի վայրկեան յետոյ հարթակում յայտնուեցին նախագահի պահպանութեան ծառայութեան աշխատակազմի սպաները՝ Գրիշա Սարկիսովի գլխաւորութեամբ: Իմ թիկնապահներն ինձ պաշտպանում էին, 5 թիկնապահ օրինական, որոնք նոյն այդ ծառայութեան բաժանմունքն է, եւ նրանք ենթարկւում են Գրիշա Սարկիսովին եւ իմ ծառայութեան պետը զնդապետ Սմբատ Գասպարեանը, իմ տղաները ինձ պաշտպանեցին, բայց նրանք յաղթանդամ էին, ու կարողացան իմ տղաներին մեկուսացնել, իմ թեւերը ոլորելով մի թեւս մտաւ Գրիշա Սարկիսովը, միւս թեւս մէկ ուրիշը եւ իջեցրին հարթակից, եւ փորձեցին դուրս հրաւիրել հրապարակից, իմ տղաները եկան ինձ շրջապատեցին, ես ասացի, որ դուրս չեմ գայ հրապարակից, ինձ ձերբակալէք, ես կը գամ միայն ձեռնաշղթաներով, կամ ձեռքերս ոլորելով, խնդրեմ, ասացի, դիմէք Աղուան Յովսէփեանին, թող սանկցիա տայ, եթէ սա համարում էք անօրինական հանրահաւաք, ապա այդ անօրինական հաւաքը ես եմ կազմակերպել, ուրիշ պատասխանատու չկայ

եւ միայն այս պայմանով դուրս կը գամ հրապարակից: Շատ կարճ տեւեց, 10-15 րոպէ յետոյ հրապարակը մաքուր էր, մարդ չկար եւ լցուած էր ամբողջութեամբ ոստիկաններով, բացի այն ոստիկաններից, ովքեր բուն գործողութիւնն էին կատարել, նաեւ մի քանի շարքով շրջափակուած էր օպերան, փողոցում էլ կար այդպիսի շարքեր, սկսեցին աւիրել դինամիկները հարթակի, բոլոր վրանները կործանեցին, անմիջապէս սկսեցին ինչ-որ բաներ փնտրել, ինչ-որ ձողեր, տեսայ, որ իրենք էլ են այդ ձողերը լցնում, իրենք օպերատորներ ունէին, նկարում էին, ձեռքները բռնած, սպաների, գնդապետների, փոխգնդապետների այդ տեսակ բաներ տեսայ հրապարակ մտնելիս. օպերատորներն այդ ամէնը նկարում էին, մէկը նոյնիսկ ինձ փորձեց նկարել, ես նրան ձեռքով ողջոյն ուղարկեցի, անմիջապէս ամաչեց, շրջուեց: Ես այդտեղ մնացի մինչեւ 8.35՝ մօտ 2 ժամ: Ես նստեցի ծխեցի, ջուր խմեցի, ոչ ոք այլեւս ինձ չմօտեցաւ, նորից Սարկիսովը մօտեցաւ ինձ, թէ պէտք է գնաք այստեղից, ես ասացի, որ նոյն պայմանով, ուրիշ ոչ մի պայմանով ես այստեղից չեմ գնայ. մի քանի անգամ էլ գնաց-եկաւ, երեւի խորհրդակցում էր վերեւների հետ, յետոյ եկան շարքով իմ թիկնապահներին շարքով մի կողմ հրեցին, ես մնացի մենակ. ինձ հրաւիրեցին մեքենայ, ոստիկանական մեքենայ էին բերել, ես ասացի չեմ նստում, խնդրեմ, ձեռքերս ոլորի տար, նա այդպէս էլ արեց, նստեցրեց մեքենայ շատ արագ բերեց տուն, յետոյ պարզուեց, որ իմ երկու դարպասները փակել են: Երբ դա իմացայ, իմ թիկնազօրի պետին ուղարկեցի, ճշտելու, թէ ինչ կարգավիճակով եմ, տնային կալանք է, թէ ոչ: Ասացին, որ այդպիսի սանկցիա չկայ, բայց իրենց ասել են, որ ես իրաւունք չունեմ տնից դուրս գալու, սա մէկ, եւ երկրորդ, ասել են, որ ոչ ոք իրաւունք չունի իմ տուն գալու: Իմ մի քանի ընկերներ փորձել են գալ, նրանց չեն թողել: Ստեփան Դէմիրճեանն է փորձել գալ, կրկին չեն թողել: Սա է ամբողջ պատմութիւնը: Հրապարակից նոյնիսկ փորձեցինք կապ հաստատել մեր ընկերների հետ, 4-5 հոգու հետ կարողացել եմ կապուել, մնացածների հետ ոչ: Կան վիրաւորներ՝ արիւնլուայ, իմ աչքով եմ տեսել, մի երիտասարդի, որը փախել էր ոչ այն ուղղութեամբ, որ պէտք էր, այլ ուղիղ ոստիկանների մօտ, նրան 7-8 ոստիկան քացիներով ու մահակներով ուղղակի կը սպանէին, եթէ իմ տղաները չփրկէին, նրանք երկու հոգու փրկեցին»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը նաեւ տեղեկացրեց շատ կարեւոր մի փաստի մասին, ոչ մի զգուշացում չի եղել ոստիկանութեան կողմից. «Եթէ զգուշացնէին, գուցէ մարդիկ ցրուէին, բայց ոչ մի բառ չեն ասել, իմ խօսքերից 10-15 վայրկեան անց իմ թեւերը ոլորելով իջեցրին հարթակից, եւ սկսեցին յարձակումը»:

## ՑՈՒՑԱՐԱՐՆԵՐԻՆ ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ ԵՆ ԲԵՐՄԱՆ ԵՆԹԱՐԿԵԼ

*A1+*, 14:20

Այսօր առաւօտուանից Կենտրոնի Ոստիկանութեան բաժին են բերման են ենթարկւում խաղաղ ցուցարարները:

Ժառանգութիւն կուսակցութեան պատգամաւորներին թոյլ չեն տալիս մտնել ոստիկանութեան շէնք: Փոխոստիկանապետ Արարատ Մահտեսեանը պատգամաւորներին յայտնել է, որ պատգամաւորներին ոստիկանութեան բաժիններ մուտք գործելը արգելելու հրահանգ չի եղել, սակայն ոստիկանութիւնում նոյնիսկ դուռը բաց չեն անում նրանց առաջ:

Առաւօտեան, երբ պատգամաւոր Զարուհի Փոստանջեանը ոստիկանութեան մուտքի

մօտ է եղել, բերել են մօտ 15 մարդու արդէն ձերբակալուած: Ապա Կենտրոնի Ոստիկանութիւնից դուրս են հանել եւ տարել տարբեր ուղղութիւններով եւ ոչինչ չեն յայտնել: «Դրանից յետոյ նորից մարդկանց բերեցին ոստիկանութիւն՝ մօտ 15 հոգու եւ թոյլ չտուեցին իմանալ, թէ ովքեր են: Կենտրոնի ոստիկանութեան բաժնից բարձրաստիճան պաշտօնեաներից Մխիթարեան ազգանունով մէկը մեզ խոստացել է, որ կէս ժամից ներս կը մտնանք, սակայն կէս ժամը վաղուց անցել է եւ մեզ ոչինչ չեն ասում», - *Ա1+*-ին ասաց Ժառանգութիւն պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանը:

*Ա1+*-ի այնտեղ գտնուելու պահին ոստիկանութեան մուտքի մօտ Շտապօգնութեան մեքենայ էր կանգած եւ շէնքից բժիշկ դուրս եկաւ: Բժիշկը հրաժարուեց ներկայանալ եւ որեւէ տեղեկատուութիւն յայտնել, թէ ներսում քանի մարդ կայ: «Ես չեմ եկել, որ մարդկանց հաշուեմ», - ասաց նա եւ փորձեց հեռանալ, սակայն հաւաքուածները բժիշկին թոյլ չտուեցին հեռանալ եւ հետաքրքրուեցին ներսում գտնուողների առողջական վիճակով:

«Շատ ծանր վնասուածքներ չեն», - դժկամութեամբ ասաց նա, եւ նշեց, իրեն կանչել Գարիկ անունով 60-ն անց մի տղամարդու համար, որի ճնշումը բարձրացել է: Երբ բժիշկն ուզում էր հեռանալ, ոստիկանութիւնից նրան կրկին յետ կանչեցին ներս եւ այս անգամ նա արդէն դուրս եկաւ երկու ոստիկանի ուղեկցութեամբ եւ այն ցուցարարի հետ, որի համար բժիշկ էին կանչել: Ցուցարարը դժուարութեամբ բարձրացաւ Շտապօգնութեան մեքենան եւ մեր այն հարցին, թէ ինչպէս է՝ դժուարութեամբ գլուխը շարժեց:

## ՀՈՍԱՆՔԱԶՐԿՈՒԵՑԻՆ

*A1+*, 14:21

Գիւմրիի *Ցայգ* հեռուստաընկերութիւնը, որն ուղիղ կապ էր հաստատել եւ հեռարձակել էր այժմ Երեւանում տեղի ունեցող իրադարձութիւնները, քիչ առաջ «եթերազրկուել» է: Հոսանքազրկուել է հեռուստաընկերութեան շէնքը, ինչի պատճառով հեռուստաընկերութեան աշխատանքները դադարեցուել են: Նշենք, որ նոյն շէնքում գործում է նաեւ *Ռադիօ հայ*ի Գիւմրիի մասնաճիւղը:

Գիւմրիի *Գալա* հեռուստաընկերութիւնից քիչ առաջ *Ա1+*-ին տեղեկացրին, որ իրենց հեռուստաընկերութեան շէնքը եւս ամբողջովին հոսանքազրկուել է:

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄՕՏ, ԱՅՍ ՊԱՀԻՆ

*Lragir.am*, 14:27

Քիչ առաջ Ֆրանսիայի դեսպանատան մօտ հաւաքուածների առջեւ ելոյթ է ունեցել Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամ Լեւոն Զուրաբեանը եւ յայտարարել, որ իրենք հաւաքուած կը մնան, մինչեւ չգայ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա ասել է նաեւ, որ Տէր-Պետրոսեանն այս պահին տնային կալանքի մէջ է, իրենք կապի մէջ են Տէր-Պետրոսեանի հետ, եւ բանակցում են ոստիկանների հետ, որպէսզի թոյլ տան Լեւոն Տէր-Պետրոսեանին գալ Ֆրանսիայի դեսպանատան մօտ հաւաքուած ժողովրդի մօտ:

Ըստ մեր թղթակցի, այս պահին մարդկանց հոծ բազմութիւնը Ֆրանսիայի դեսպանատնից ձգւում է մինչեւ աւելի վերեւ գտնուող Ռուսաստանի դեսպանատուն, եւ մարդկանց հոսքը մեծանում է: Ոստիկանները, որոնք մինչ այդ բաժանարար շարք էին կազմել ժողովրդի երկու հատուածի միջեւ, մի կողմ են քաշուել եւ ժողովրդի երկու հատուածները

միացել են իրար: Ոստիկանների բերած մի զրահամեքենան կարծես թէ պատրաստւում են հեռացնել դեսպանատան մատոյցներից:

## ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 14:37

Այսօր վաղ առաւօտեան ժամը 6.30-ի սահմաններում ոստիկանութիւնը՝ գործող վարչախմբի դիմագծին յարիր դաժանութեամբ, ի խախտումն ՀՀ սահմանադրութեան եւ մարդու իրաւունքների ու հիմնարար ազատութիւնների մասին միջազգային կոնվենցիաների դրոյթների, յարձակուել է Ազատութեան Հրապարակում հաւաքուած խաղաղ ցուցարարների վրայ եւ ցրել 10 օր տեւող նստացոյցի հազարաւոր մասնակիցներին:

Կան բազմաթիւ վիրաւորներ եւ, նախնական տեղեկութիւնների համաձայն, նաեւ զոհեր ու անյայտ ուղղութեամբ տարուած բազմաթիւ քաղաքացիներ: Ժառանգութիւն կուսակցութիւնը խստօրէն դատապարտում է բռնութիւնների լեզուով ժողովրդի հետ հաղորդակցուելու գործելակերպը, որով իշխանութիւնները հերթական անգամ իրենց դուրս դրեցին օրէնքից եւ, ի տես աշխարհի, եւս մէկ անգամ ցուցադրեցին իրենց բռնատիրական էութիւնը:

2008թ. նախագահական խայտառակ, աննախադէպ խախտումներով անցկացուած ընտրութիւններից յետոյ սա հերթական յանցագործութիւնն էր, որը սեփական ժողովրդի հանդէպ կատարեցին գործող իշխանութիւնները: Նման պայմաններում Հայաստանի Հանրապետութիւնում նախագահի լեգիտիմ հանրակարգի կայացման մասին խօսելն իսկ աւելորդ է: Այսօրինակ աշխատաոճն անպայման մեծ խնդիրներ կ'առաջացնի Հայաստանի Հանրապետութեան առջեւ՝ թէ ներքին եւ թէ արտաքին մարտահրաւէրներին դիմակայելու առումով:

Սա միաժամանակ իշխանութիւնների երկակի բարոյականութեան վառ դրսեւորում է՝ Ազատութեան Հրապարակում հաւաքուած «քոյրերին ու եղբայրներին» ուղղուած համագործակցութեան կոչերի լոյսի ներքոյ:

Ժառանգութիւն կուսակցութիւնը Հայաստանի Հանրապետութեան ազատ քաղաքացիներին կոչ է անում չընկրկել բիրտ գործողութիւնների առջեւ, շարունակել պայքարը յանուն սեփական քաղաքացիական իրաւունքների եւ մարդկային արժանապատւութեան: Հայաստանի Հանրապետութիւնն արժանի է օրինական, ժողովրդի վստահութիւնը վայելող իշխանութեան, եւ վաղ թէ ուշ ժողովրդի ոգեղէն միակամութիւնն ու արդար ոգորումները կը ծնեն այդպիսի իշխանութիւն:

1 մարտի 2008թ.
ք. Երեւան

## ՍՊԱՍՈՒՄ ԵՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ

*A1+*, 14:43

Ֆրանսիական դեսպանատան մօտ հաւաքուած բազմաթիւ մարդկանց միջեւ կանգնած ոստիկանները մի կողմ քաշուեցին եւ մարդկանց երկու խմբերը ծափահարութիւնների ներքոյ միացան իրար: Այս պահին մարդկանց նոր խմբեր են միանում նրանց:

Բանակցութիւնների արդիւնքում ոստիկանները թոյլատրել են հանրահաւաք անցկացնել Մատենադարանի մօտ, սակայն մարդիկ դեռ չեն ցանկանում գնալ այնտեղ,

այլ սպասում են Լեւոն Տէր-Պետրոսեանին: «Թող մեր նախագահը անձամբ գայ յայտարարի, նոր տեղներիցս կը շարժուենք», - ասում են դեսպանատան առջեւ հաւաքուած մարդիկ: Մարդկանցից շատերն էլ ցանկանում են վերադառնալ այս օրերին արդէն հարազատ դարձած Ազատութեան Հրապարակ:

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐ, ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ ԱՆՅԱՅՏ ԱՆՁԻՆՔ ԵՒ ՎԻՐԱՒՈՐՆԵՐ. Ժամը 14:23-ի դրութեամբ

*Lragir.am*, 14:53

ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐ

1. Դաւիթ Մաթեւոսեան (Ղեւոնդի)
2. Արմէն Օհանեան
3. Դաւիթ Առաքելեան, Կենտրոնի ոստիկանութիւն
4. Վահագն (Վարդգէս) Հայոցեան, Կենտրոնի ոստիկանութիւն
5. Արամ Մանուկեան, Կենտրոնի ոստիկանութիւն
6. Մասիս Այվազեան
7. Լեւիկ Խաչատրեան
8. Հրանտ Բագրատեան
9. Գագիկ Շամշեան (լրագրող), Քանաքեռի ոստիկանութիւն
10. Կորիւն Միհրեան (Մարտունի), Մարտունու ոստիկանութիւն
11. Երուանդ Աւէյեան (Մարտունի), Մարտունու ոստիկանութիւն
12. Վեմիր Մխիթարեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն
13. Գէորգ Սիմոնեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն
14. Ծատուր Սեւոյեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն

ԱՆՅԱՅՏ Է ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ

1. Վահագն Խաչատրեան
2. Ալեքսանդր Արզումանեան
3. Արարատ Զուրաբեան
4. Քրիստ Գասպարեան (Մանուկի)
5. Մանուէլ Գասպարեան (Մանուկի)
6. Տիգրան Բաղդասարեան (Արաբկիր)
7. Մարտին Պետրոսեան
8. Աւետիք Իշխանեան

ՎԻՐԱՒՈՐՆԵՐ

1. Արամ Բարեղամեան, Հանրապետական
2. Բաբկէն Աթոյեան, Հանրապետական
3. 3 հոգի Շտապ Օգնութեան
4. 6 քաղաքացի 1 ոստիկան վերակենդանացման բաժնում Մասիւի հիւանդանոց

## ԸՍՏ ՌՈՒԲԷՆ ԹՈՐՈՍԵԱՆԻ, ՄԵՂԱՒՈՐԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԻՏՈՐԴՆԵՐՆ ԵՆ

*Lragir.am*, 15:02

Հայաստանի նախագահի ընտրութեան գործընթացի ժամանակ, եւ նաեւ մասնաւո-

րապէս մարտի 1-ին լուսաղէմին խաղաղ ցուցարարների հանդէպ ուժի կիրառման դէպքի կապակցութեամբ նոյն օրը յայտարարութիւն է տարածել իրաւապաշտպան, Գերագոյն Խորհուրդ. Պատգամաւորական Ակումբ ՀԿ նախագահ Ռուբէն Թորոսեանը, ով կատարւածի համար մեծ է համարում ԵԱՀԿ դիտորդների մեղքը:

«Հայաստանում քաղաքական ու քաղաքացիական իրաւունքների մասսայական խախտումները, իրենց ընտրական իրաւունքը պաշտպանող խաղաղ քաղաքացիների դէմ իշխանութիւնների բռնութիւնը, առայժմ այսպէս ասենք՝ միջազգային դիտորդների, եւ առաջին հերթին ԵԱՀԿ/ԺՄԻԳ, անպատասխանատու եւ անգրագէտ գործունէութեան արդիւնք է: - Ընտրութեան դիտարկման ընթացքում ԺՄԻԳ ղեկավարութեան կոպիտ խախտումներ - Զեկոյցների մէջ կեղծիքներ ու սուտ - Անգործութիւն. Ահա այն հիմնական գործողութիւնները, որոնց օգնութեամբ եւրոպական դիտորդները տապալել են Հայաստանի ընտրութիւնները, այս անգամ նախագահական: Հարկ եղաւ նոյնիսկ դիմել հանրապետութեան դատախազութիւն, որպէսզի քրէական պատասխանատուութեան ենթարկուեն ԵԱՀԿ/ԺՄԻԳ նախնական զեկոյցի մէջ կեղծիքների մեղաւորները: Իրադարձութիւնները, որ այսօր տեղի են ունենում Երեւանում, պէտք է դառնան անյետաձգելի քննարկման առարկայ ԵԱՀԿ ղեկավարութեան շրջանում, հակառակ դէպքում, դժուար է լինելու հաւատալ, թէ ԵԱՀԿ/ԺՄԻԳ-ը փաստերը կեղծել է միայն անգրագիտութեան հետեւանքով», յայտարարել է Ռուբէն Թորոսեանը:

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄՕՏ. ՄԱՐԴԻԿ ՍՊԱՍՈՒՄ ԵՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ

*Lragir.am*, 15:54

Ֆրանսիայի դեսպանատան մօտ մարդկանց հոծ բազմութիւն է հաւաքուած. յարակից բոլոր փողոցները լցուած են ցուցարարներով: Քիչ առաջ այդտեղ են ժամանել Նիկոլ Փաշինեանը եւ Դաւիթ Շահնազարեանը եւ մարդկանց փորձել համոզել, որ գնան Մատենադարանի մօտ, սակայն մարդիկ ասել են, թէ մինչեւ Լեւոն Տէր-Պետրոսեանը չգայ, իրենք չեն շարժուի այդտեղից:

Այդ տարածքից զօրքերը հանուել են: Մի ոստիկանական մեքենայ՝ Վիլիս, հարուածել է մի կնոջ, եւ մարդիկ այրել են այդ մեքենան: Ժամանել են հրշէջներ: Ի դէպ, Հայաստանում Ֆրանսիայի դեսպան Սերժ Սմեսոֆը մի հոգու ուղեկցութեամբ դեսպանատնից հեռացել է Ոսկու շուկայի ուղղութեամբ:

## ԲԱԳՐԱՏԵԱՆԻ ՓԱՍՏԱԲԱՆՆԵՐԻՆ ՉԵՆ ԹՈՂՆՈՒՄ

*Lragir.am*, 16:01

Ինչպէս յայտնեցին Հրանտ Բագրատեանի փաստաբանները՝ Նարինէ Ռշտունին եւ Արթուր Գրիգորեանը, նրանց ներս չեն թողել ՀՀ Ոստիկանութեան Կենտրոն բաժին, որտեղ ենթադրաբար գտնւում է Հրանտ Բագրատեանը: Փաստաբանների պնդմանը, որ ոտիկանները պարտաւոր են իրենց ներս թողնել պաշտպանեալի մօտ, հնչել են հեգնալից եւ առհամարական պատասխաններ: Հրանտ Բագրատեանի բարեկամների հաւաստմամբ, Բագրատեանին դաժան ծեծի են ենթարկել: Այս մասին տեղեկացնում է *hra.am* կայքը:

## ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶՈՒԹԵԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 16:07

ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը. «2008թ. փետրուարի 19-ին կայացած ՀՀ նախագահի ընտրութիւնների նախնական արդիւնքների հրապարակումից յետոյ ՀՀ նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը, ՀՀ ԱԺ պատգամաւորներ Խաչատուր Սուքիասեանը, Սասուն Միքայէլեանը, *Հայկական ժամանակ* օրաթերթի գլխաւոր խմբագիր Նիկոլ Փաշինեանը եւ այլոք, օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ, Երեւանի Ազատութեան Հրապարակում, առանց ընդհատումների, կազմակերպել եւ անցկացրել են զանգուածային հրապարակային միջոցառումներ եւ կոչ արել չենթարկուել օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ անցկացուող միջոցառումները դադարեցնելու վերաբերեալ ոստիկանութեան պահանջներին: Բացի այդ՝ զանգուածային միջոցառման մի շարք մասնակիցներ ապօրինի պահել եւ կրել են ապօրինի ձեռք բերուած զէնք եւ ռազմամթերք:

2008թ. մարտի 1-ին՝ ժամը 06-ի սահմաններում, սահմանուած կարգի խախտմամբ անցկացուող հրապարակային միջոցառումները ՀՀ ոստիկանութեան աշխատակիցների կողմից «Ժողովներ, հանրահաւաքներ, երթեր եւ ցոյցեր անցկացնելու մասին» ՀՀ օրէնքի 14-րդ յօդուածի պահանջների պահպանմամբ հարկադիր դադարեցնելու նպատակով ձեռնարկուած գործողութիւնների ընթացքում, միջոցառման կազմակերպիչներն ու մասնակիցները, չենթարկուելով իրենց ծառայողական պարտականութիւնները կատարող իշխանութեան ներկայացուցիչ հանդիսացող ՀՀ ոստիկանութեան աշխատակիցների՝ զանգուածային միջոցառումները դադարեցնելու մասին օրինական պահանջներին, նախապէս իրենց մօտ պահուող մահակների, մետաղաձողերի եւ այլ յարմարեցուած գործիքների օգտագործմամբ, կեանքի եւ առողջութեան համար վտանգաւոր բռնութիւն են գործադրել վերջիններիս նկատմամբ՝ ՀՀ ոստիկանութեան աշխատակիցներին պատճառելով տարբեր աստիճանների ծանրութեան մարմնական վնասուածքներ: Մարմնական վնասուածքներ են ստացել նաեւ սահմանուած կարգի խախտմամբ անցկացուող հրապարակային միջոցառման մասնակիցներ:

Դէպքի առթիւ ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում յարուցուել է քրէական գործ՝ ՀՀ Քրէական Օրէնսգրքի 225 1 –րդ յօդուածի 1-ին եւ 2-րդ մասերի, 235-րդ յօդուածի 1-ին եւ 2-րդ մասերի, 316-րդ յօդուածի 2-րդ մասի յատկանիշներով: Ստեղծուել է օպերատիւ-քննչական խումբ, կատարւում է նախաքննութիւն: Տեղանքի զննութեամբ յայտնաբերուել են նռնակներ, հրազէն, սառը զէնք, մետաղեայ ձողեր, մարմնական վնասուածքներ պատճառելու համար յարմարեցուած այլ իրեր:

Յարուցուած քրէական գործի շրջանակներում կատարւում են օպերատիւ-որոնողական, քննչական գործողութիւններ, որոնց արդիւնքների մասին կը յայտնենք լրացուցիչ»:

## ՍՊԱՍՈՒՄ ԵՆ ԼԵՒՈՆԻՆ

*Lragir.am*, 16:24

Այս պահին մարդկանց թիւը Ֆրանսիայի դեսպանատան մօտ աւելանում է: Աւտոբուսներով եւ տրոլէյբուսներով փակուել են շրջակայ փողոցների մուտքերը: Այստեղ են Ստեփան Դէմիրճեանը, Միասնիկ Մալխասեանը, Խաչատուր Սուքիասեանը: Միասնիկ Մալխասեանը բարձրախօսով յայտարարեց, թէ սպասում են Լեւոն Տէր-Պետրոսեանին:

Մարդիկ լսում են *Ազատութիւն* ռադիոկայան, որն այդ պահին պատմում էր, թէ ինչպէս են ոստիկանները հետապնդել մի յղի կնոջ, ով ուշաթափուել է:

## ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՇՏԱԲԻ ԿՈՉԸ

*Lragir.am*, 16:26

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը տարածել է հաղորդագրութիւն, որում ասւում է. «Ի գիտութիւն մեր համակիրներին եւ բոլոր ոչ անտարբեր քաղաքացիներին: Այս պահին հանրահաւաքը տեղի է ունենում Ֆրանսիական դեսպանատանը յարող տարածքում: Բոլորը դէպի Ֆրանսիական դեսպանատանը յարող տարածք»:

## «ԻՄ ԶԳԱՑՈՂՈՒԹԵԱՄԲ ՆՐԱՆՔ 10 ՕՐ ՉԵՆ ԴԻՄԱՆԱՅ»

*A1+*, 16:31

«Ես ժամանակ չեմ ունեցել իրավիճակը վերլուծելու համար, եւ դրա համար նաեւ չկայ բաւարար տեղեկատուութիւն, որովհետեւ ես անգամ իմ ընկերներից շատերի հետ կապից եմ զրկուած, բայց իմ զգացողութեամբ Ռոբերտ Քոչարեանն ու Սերժ Սարգսեանը վերջացած են: Իմ զգացողութեամբ, նրանք տասը օր չեն դիմանայ Հայաստանում», - այսօր իր տանը հրաւիրած մամուլի ասուլիսի ընթացքում յայտարարեց ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Տէր-Պետրոսեանը նկատեց, որ դիմելու են օրէնքով եւ սահմանադրութեամբ թոյլատրուած բոլոր միջոցներին, կրկին դիմելու են քաղաքապետարան եւ հանրահաւաքներ, երթեր, ցոյցեր անցկացնելու համար իրազեկելով քաղաքապետին, եթէ իրազեկումը մերժեն, իրենք կ'անեն ինքնաբուխ միջոցառումներ:

Ի դէպ, Լեւոն Տէր-Պետրոսեանը չբացառեց, որ գործը կարող է անգամ ՍԴ չհասնել եւ ԿԸՅ-ն ստիպուած լինի վերանայել ընտրութեան արդիւնքների վերաբերեալ իր որոշումը: Սահմանադրական Դատարանի հետ էլ Լեւոն Տէր-Պետրոսեանը յոյսը չի կորցնում, ընդգծելով, որ կարող է իրենց դիմումը բաւարարուել եւ ընտրութիւնները ճանաչուեն անվաւեր:

Տէր-Պետրոսեանը պատասխանելով *Ա1+*-ի հարցին, թէ ով է կրում պատասխանատուութիւն մարտի 1-ի դէպքերի համար, ասաց, որ հաւասարապէս պատասխանատու են եւ գործող եւ «ընտրեալ» նախագահները. «Եթէ ես լինէի «ընտրեալ» նախագահ, ես ոչ մի մի լծակ չէի ունենայ, բայց Սերժ Սարգսեանը վարչապետ է եւ նրան են ենթարկւում բոլոր ուժային կառոյցները»: Ըստ նրա՝ Սերժ Սարգսեանը չի կարող ամբողջ աշխարհի կողմից ընդունուել, որպէս նախագահ, եթէ նա ինչ-որ հրաշքով մնայ այդ պաշտօնում, ապա չի կարող համարուել լեգիտիմ նախագահ: «Ես չեմ պատկերացնում, որ այս խայտառակ ընտրութիւններից յետոյ Սերժ Սարգսեանը լինի լեգիտիմ նախագահ եւ կարողանայ ղեկավարել այն ժողովրդին, որը չի հանդուրժում նրան», - ասուլիսի ընթացքում յայտարարեց առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նա կը զարմանայ, եթէ արտաքին աշխարհին ընդունի Հայաստանի իշխանութիւնների մարտի 1-ի իրականացրած բռնութիւնները՝ խաղաղ ցուցարարների նկատմամբ, յատկապէս այն յորդորներից ու կոչերից յետոյ, որ տարբեր միջազգային կառոյցներ յղել են ՀՀ իշխանութիւններին:

«Ես չեմ հասկանայ, թէ ինչպէս է միջազգային հանրութիւնը հանդուրժելու այս գիշեր

տեղի ունեցածը», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը: Նրա կարծիքով Ռոբերտ Քոչարեանն այսօր մարտահրաւէր է նետել միջազգային հանրութեանը, այն կառոյցներին, ովքեր յորդորում էին ուժ չկիրառել:

Լեւոն Տէր-Պետրոսեանի կարծիքով, իշխանութիւնն օգտուեց այն հանգամանքից, որ Հայաստանում չեն բարձրաստիճան եւրոպացի դիւանագէտները, դիտորդների զգալի մասը, օտարերկրեայ լրագրողները, որ համաշխարհային մամուլի ուշադրութիւնը կենտրոնացել է Ռուսաստանի նախագահի ընտրութիւնների վրայ ու այսօր Հայաստանը, որպէս «իզգոյ պետութիւն» ուշադրութիւնից դուրս է գտնւում: Առաջին նախագահը տեղեկացրեց նաեւ, որ դիւանագիտական կորպուսը տեղեկացուել է կատարուող դէպքերի, վայրագութիւնների մասին:

Ի դէպ, Լեւոն Տէր-Պետրոսեանը նշեց, թէ միջազգային դիւանագէտների հետ զրոյցներում Ռոբերտ Քոչարեանը վստահեցնում է, թէ բանակցութիւնների մէջ է Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ. նման բան չկայ, չի եղել. «Երկու օր առաջ հեռախօսազրոյց է տեղի ունեցել Պուտինի եւ Ռոբերտ Քոչարեանի միջեւ, որի ընթացքում Ռոբերտ Քոչարեանը Պուտինին հաւաստիացրել է, որ ուժ չի կիրառուի խաղաղ ցուցարարների հանդէպ: Պուտինն ուժի կիրառումն անթոյլատրելի է համարել: Բացի այդ, Ռոբերտ Քոչարեանը Պուտինին վստահեցրել է, որ ինքը լուրջ բանակցութեան մէջ է ինձ հետ», - պատմեց Տէր-Պետրոսեանը: Նա տեղեկացրեց, որ իր հետ որեւէ բանակցութիւն չի եղել, բայց դա չի նշանակում, որ եթէ լինէր, ինքը կ'արձագանքէր դրան:

Ի դէպ, Տէր-Պետրոսեանն այսօր ասաց՝ շատ կ'ուզէր, որ գործող իշխանութիւնն այնքան մաքուր լինէր, որ կարողանար հեռանալ այնպէս, ինչպէս հեռացան իրենք. «Ես երջանիկ կը լինէի, որ իրենք այդպէս խրուած չլինէին եւ այսպէս ժողովրդի արիւնը թափելու գնով չփորձէին պահպանել իրենց իշխանութիւնը»:

Ըստ նրա՝ բայց «նրանք այնպիսի յանցաւոր բագաժ ունեն, գումարած հոկտեմբերի 27-ի համար իրենց պատասխանատուութիւնը, որ չեն կարող հանգիստ հեռանալ»:

## ԹԷՐԻ ԴԵՒԻՍԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ Է ԱԶԱՏ ԱՐՁԱԿԵԼ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐԻՆ

*A1+*, 16:36

«Ես շատ անհանգստացած եմ վիրաւորների մասին հաղորագրութիւններով, երբ անվտանգութեան աշխատողները փորձեցին ցրել ցուցարարներին Երեւանում այս առաւօտ: Եթէ այս հաղորդագրութիւնները հաստատուեն, բոլոր յայտարարութիւնները չափից աւելի զինուած ուժերը օգտագործելու վերաբերեալ պէտք է հետաքննել: Շատ կարեւոր է նաեւ կանխել յետագայ բռնութիւնները», - յայտարարել է Եւրոպայի Խորհրդի գլխաւոր քարտուղար Թէրի Դեւիսը:

«Ես նաեւ անհանգստացած եմ այն յայտարարութեամբ որ նախագահական թեկնածու, նախկին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը գտնւում է տնային կալանքի տակ: Եթէ դա ճիշտ է, ապա նա անմիջապէս պէտք է ազատ արձակուի: Եթէ նա մեղադրւում է յանցանք կատարելու մէջ, նա պէտք է համապատասխան պատասխանատուութեան ենթարկուի եւ մեղաւոր ճանաչուի դատարանի կողմից ինչպէս բոլորը: Ժողովրդարարութեան մէջ չի կարելի ձերբակալել քաղաքական ընդդիմադիրների կամայականօրէն», - ասւում է նրա յայտարութեան մէջ:

## ԵԱՀԿ ԳՈՐԾՈՂ ՆԱԽԱԳԱՀԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒՄ Է ՈՒԺԻ ԳՈՐԾԱԴՐՈՒՄԸ

*Lragir.am*, 16:55

ԵԱՀԿ Գործող Նախագահ, Ֆինլանդիայի արտգործնախարար Իլկա Կաներվան դատապարտել է այսօր Երեւանում ուժի գործադրումը ցուցարարների դէմ: «Ես յորդորում եմ իշխանութիւններին ցուցաբերել մաքսիմալ զսպուածութիւն: Ես անհանգստացած եմ այն փաստով, որ տեղեկութիւնների համաձայն կան վիրաւորներ: Յորդորում եմ իշխանութիւններին ազատ արձակել ձերբակալուածներին եւ կրկին երկխօսութեան կոչ եմ անում իշխանութիւններին եւ ընդդիմութեանը», յայտարարել է Կաներվան, ով վերջերս գտնւում էր Հայաստանում:

## ՀՐԱՆՏ ԲԱԳՐԱՏԵԱՆՆ ԱԶԱՏ Է ԱՐՁԱԿՈՒԵԼ

*Lragir.am*, 17:00

Քիչ առաջ Հրանտ Բագրատեանի փաստաբանները ֆաքսով նամակ ուղարկեցին ՀՀ Ոստիկանութեան պետ Հայկ Յարութիւնեանին: Ի դէպ նրանք յայտնեցին, որ ՀՀ Գլխաւոր Դատախազութեան ֆաքսը անջատած էր: Նամակը ուղարկելուց մօտ 20 րոպէ անց, Հրանտ Բագրատեանը ազատ է արձակուել: Ստորեւ բերւում է փաստաբանների նամակը ամբողջութեամբ:

**ՀՀ Գլխաւոր Դատախազ՝ պարոն Ա. Յովսէփեանին պատճէնը՝ ՀՀ ոստիկանութեան պետ՝ պարոն Հ. Յարութիւնեանին**

Մեծարգոյ Պարոնայք,

Այսօր՝ 2008 թուականի մարտի 1-ին ժամը 09:00-ի սահմաններում, մեր վստահորդ՝ պարոն Հրանտ Բագրատեանը բերման է ենթարկուել ոստիկանութեան Կենտրոնի բաժին եւ, մեր ունեցած տուեալներով, ենթարկուել է խոշտանգման եւ/կամ դաժան եւ/կամ անմարդկային վերաբերմունքի: Ժամը 13:30-ի սահմաններում փորձել ենք ոստիկանութեան Կենտրոնի բաժնում տեսնել մեր վստահորդին, սակայն մեր մուտքը սանձարձակ կերպով արգելուել է, իսկ ոստիկանութեան բաժնի դուռը՝ փակուել: Մեր բոլոր օրինական պահանջները՝ ապահովել մեր պաշտպանեալին տեսնելու մեր հնարաւորութիւնը, պարզապէս արհամարհուել են:

Ակնկալում ենք Ձեր շտապ միջամտութիւնը՝ իրականացուող ռեպրեսիան իսկոյն եւեթ դադարեցնելու, պարոն Հրանտ Բագրատեանի հետ շփման մէջ մտնելու մեր հնարաւորութիւնն ապահովելու, ինչպէս նաեւ նրան խոշտանգման եւ/կամ դաժան եւ/կամ անմարդկային վերաբերմունքի ենթարկելու հետ կապուած տուեալները արագօրէն պարզելու, իսկ այդ տեղեկութիւնները հաստատուելու դէպքում՝ նման արարքների կատարման մէջ մեղաւոր՝ ոստիկանութեան պաշտօնատար անձանց պատասխանատուութեան հարցը լուծելու առումով:

Յարգանքներով՝ Արթուր Գրիգորեան, Նարինէ Ռշտունի

www.hra.am

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐ, ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ ԱՆՅԱՅՏ ԱՆՁԻՆՔ ԵՒ ՎԻՐԱՒՈՐՆԵՐ. ժամը 16:27-ի դրութեամբ

*Lragir.am*, 17:05

ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐ

1. Դաւիթ Մաթեւոսեան (Ղեւոնդի)
2. Արմէն Օհանեան
3. Դաւիթ Առաքելեան, Կենտրոնի ոստիկանութիւն
4. Վահագն (Վարդգէս) Հայոցեան, Կենտրոնի ոստիկանութիւն
5. Արամ Մանուկեան, Կենտրոն (ազատուել է)
6. Մասիս Այվազեան, Կենտրոն
7. Լեւիկ Խաչատրեան, Կենտրոն
8. Աշոտ Մանուկեան, Կենտրոն
9. Մուշեղ Սաղաթէլեան, Կենտրոն
10. Հրանտ Բագրատեան, Կենտրոն (ազատուել է)
11. Գագիկ Շամշեան (լրագրող), Քանաքեռի ոստիկանութիւն
12. Կորիւն Միհրեան (Մարտունի), Մարտունու ոստիկանութիւն
13. Երուանդ Աւէլեան (Մարտունի), Մարտունու ոստիկանութիւն
14. Վեմիր Մխիթարեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն
15. Գէորգ Սիմոնեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն
16. Ծատուր Սեւոյեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն

ԱՆՅԱՅՏ Է ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ

1. Քրիստ Գասպարեան (Մանուկի)
2. Մանուէլ Գասպարեան (Մանուկի)
3. Տիգրան Բաղդասարեան (Արաբկիր)
4. Մարտին Պետրոսեան

ՎԻՐԱՒՈՐՆԵՐ

1. Արամ Բարեղամեան, Հանրապետական հիւանդանոց
2. Բաբկէն Աթոյեան, Հանրապետական հիւանդանոց
3. 3 հոգի Շտապ Օգնութեան հիւանդանոց
4. 6 քաղաքացի 1 ոստիկան վերակենդանացման բաժնում Մասիւի հիւանդանոց
5. 6 վիրաւոր 3 հիւանդանոց (Հետք)
6. Գառնիկ Մովսիսեան, Գրիգոր Լուսաւորիչ
7. Ռաֆայէլ Բալբուրեան, Գրիգոր Լուսաւորիչ
8. Յովհաննէս Մարգարեան, Գրիգոր Լուսաւորիչ
9. Անդրանիկ Կէտիկեան, Գրիգոր Լուսաւորիչ
10. Յարութիւն Կարապետեան, Գրիգոր Լուսաւորիչ
11. Քաջիկ Յարութիւնեան, Գրիգոր Լուսաւորիչ
12. Արթուր Միրումեան, Գրիգոր Լուսաւորիչ
13. Նարեկ Ղազարեան, Գրիգոր Լուսաւորիչ
14. Դաւիթ Յակոբեան Գրիգոր Լուսաւորիչ
15. Ալբերտ Եղիազարեան, 8-րդ հիւանդանոց (տարուել է Արաբկիրի ոստիկանութիւն)
16. 2 հոգի (1 դուրս է գրուել, միւսը՝ հետազօտւում է գլխի վնասուածքի մասով), Էրեբունի

բժշկական կենտրոն

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐ, ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ ԱՆՅԱՅՏ ԱՆՁԻՆՔ ԵՒ ՎԻՐԱՒՈՐՆԵՐ. ժամը 17:05-ի դրութեամբ

*Lragir.am*, 17:53

ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾՆԵՐ

1. Դաւիթ Մաթեւոսեան (Ղեւոնդի)
2. Արմէն Օհանեան
3. Դաւիթ Առաքելեան, Կենտրոնի ոստիկանութիւն
4. Վահագն (Վարդգէս) Հայոցեան, Կենտրոնի ոստիկանութիւն
5. Արամ Մանուկեան, Կենտրոն (ազատուել է)
6. Մասիս Այվազեան, Կենտրոն
7. Լեւիկ Խաչատրեան, Կենտրոն
8. Աշոտ Մանուկեան, Կենտրոն
9. Մուշեղ Սաղաթէլեան, Կենտրոն
10. Հրանտ Բագրատեան, Կենտրոն (ազատուել է)
11. Գագիկ Շամշեան (լրագրող), Քանաքեռի ոստիկանութիւն
12. Կորիւն Միհրեան (Մարտունի), Մարտունու ոստիկանութիւն
13. Երուանդ Աւէյեան (Մարտունի), Մարտունու ոստիկանութիւն
14. Վեմիր Մխիթարեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն
15. Գէորգ Սիմոնեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն
16. Ծատուր Սեւոյեան (Վարդենիկ), Մարտունու ոստիկանութիւն

ԱՆՅԱՅՏ Է ԳՏՆՈՒԵԼՈՒ ՎԱՅՐԸ

1. Քրիստ Գասպարեան (Մանուկի)
2. Մանուէլ Գասպարեան (Մանուկի)
3. Տիգրան Բաղդասարեան (Արաբկիր)
4. Մարտին Պետրոսեան
5. Վահան Ասլանեան
6. Նարեկ Շահինեան (15 թաղամաս)

ՎԻՐԱՒՈՐՆԵՐ

1. Արամ Բարեղամեան, Հանրապետական հիւանդանոց
2. Բաբկէն Աթոյեան, Հանրապետական հիւանդանոց
3. 3 հոգի Շտապ Օգնութեան հիւանդանոց
4. 6 քաղաքացի 1 ոստիկան վերակենդանացման բաժնում Մասիւի հիւանդանոց
5. Իշխան Այվազեան, 3 հիւանդանոց (սրտային)
6. Գագիկ Պետրոսեան, 3 հիւանդանոց (սրտային)
7. Արմէն Պաւլիկի Մարտիրոսեան, 3 հիւանդանոց (ծակած վէրք)
8. Սուրէն Վարդանի Վարդանեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
9. Վարդան Արայիկի Յարութիւնեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
10. Արմէն Գրիգորեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
11. Գոռ Գնելի Աղաջանեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
12. Գնել Գարեգինի Աղաջանեան, 3 հիւանդանոց (չի պառկել)

13. Նաիրա Աղաջանեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
14. Ռոման Մնացականեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
15. Արման Ռուբէնի Թադեւոսեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
16. Արթուր Գոռի Ստեփանեան, 3 հիւանդանոց (չի պառկել)
17. Արթուր Յարութիւնեան (Վանաձոր), 2 հիւանդանոց (գլխի վնասուածք, չի պառկել)
18. Գուիդոն Անտոնեան, 2 հիւանդանոց (գլխի վնասուածք, չի պառկել)
19. Արմէն Ազարեան, 2 հիւանդանոց (նեւրոլոգիայի բաժանմունք)
20. Գառնիկ Մովսիսեան, Գրիգոր Լուսաւորիչ
21. Ռաֆայէլ Բալբուրեան, Գրիգոր Լուսաւորիչ
22. Յովհաննէս Մարգարեան, Գրիգոր Լուսաւորիչ
23. Անդրանիկ Կէտիկեան, Գրիգոր Լուսաւորիչ
24. Յարութիւն Կարապետեան, Գրիգոր Լուսաւորիչ
25. Քաջիկ Յարութիւնեան, Գրիգոր Լուսաւորիչ
26. Արթուր Միրումեան, Գրիգոր Լուսաւորիչ
27. Նարեկ Ղազարեան, Գրիգոր Լուսաւորիչ
28. Դաւիթ Յակոբեան, Գրիգոր Լուսաւորիչ
29. Ալբերտ Եղիազարեան, 8-րդ հիւանդանոց (տարուել է Արաբկիրի ոստիկանութիւն)
30. 2 հոգի (1 դուրս է գրուել, միւսը՝ հետազօտւում է գլխի վնասուածքի մասով), Էրեբունի բժշկական կենտրոն
31. Իշխան Այվազեան

## «ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄՕՏԻՑ ՉԳՆԱՔ»

*A1+*, 17:59

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախկին մամլոյ քարտուղար Լեւոն Զուրաբեանը Հայաստանում Ֆրանսիայի դեսպանատան դիմաց հաւաքուած ցուցարարներին քիչ առաջ կոչ է արել՝ չհեռանալ այնտեղից: «Սիրելի ժողովուրդ, ես հէնց նոր հանդիպեցի Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ, կանգնում ենք այստեղ, տեղից չենք շարժւում, մինչեւ չլինի իր հրահանգը, որը դուք կը լսէք անձամբ իրենից», - ասել է Զուրաբեանը:

Այս պահին դեսպանատան մօտ են եկել Ստեփան Դէմիրճեանը, Նիկոլ Փաշինեանը, Խաչատուր Սուքիասեանը, Արամ Սարգսեանը:

## ՅԱՐՁԱԿՈՒԵԼ ԵՆ ՅՂԻ ԿՆՈՋ ՎՐԱՅ

*A1+*, 18:00

«Երբ լսեցինք, որ մարդկանց դաժանաբար ծեծի են ենթարկել, ամուսնուս եւ երեխայիս հետ գնացինք այնտեղ (Մաշտոցի Պողոտայ) եւ ականատես եղանք այդ բռնութիւններին», - պատմում է Էդիտա Դոլունցը, ով այսօր *Ա1+*-ին է տրամադրել իր տեսախցիկով նկարահանած տեսանիւթը: «Աւտոբուսներով յատուկ ծեծողներ էին բերում, դրանք խառնւում էին խաղաղ մարդկանց մէջ ու ջարդի էին ենթարկում նրանց», - յուզուած պատմում է յղի կինը, ով քիչ էր մնում դառնար իշխանութիւնների դաժանութեան զոհը:

«Երբ ոստիկաններից մէկը նկատեց, որ ես նկարահանում եմ, մի հաստավիզ «եզի» ուղարկեցին, որ խլի տեսախցիկս, ես շարունակեցի նկարահանել, նա ձեռքը գցեց որ տեսախցիկս վերցնի, ես շրջուեցի եւ փախայ», - պատմում Էդիտա Դոլունցը, ով ընտա-

նիքի հետ միասին տաս օր անցկացրել է Ազատութեան Հրապարակում:

«Երեք հաստավիզներ վազում էին իմ յետեւից, յետոյ ընկերուհիս ոստիկաններին գոռաց, թէ ընկերուհիս յղի է, չդիպչէք նրան», - արցունքների միջից արտաբերում է յղի կինը, - չծեծեցին, բայց քաշքշեցին, ուզում էին տեսախցիկը խլել»: Էդիտան հասցրել է տեսախցիկը փոխանցել մի պատահական մարդու, ում ձեռքից տեսախցիկն ընկնելով կոտրուել է, սակայն տեսագրութիւնը պահպանուել է:

«Ոստիկանները կարծեցին, թէ խցիկի կոտրուելուց յետոյ, տեսանիւթը ջնջուելու է եւ չվերցրեցին այն, մարդկանցից մէկը յետոյ ինձ փոխանցեց կոտրուած տեսախցիկը», - պատմում է Էդիտա Դոլունցը, ով չի վախեցել տեղի ունեցածից յետոյ եւ պատրաստւում է մասնակցել կայանալիք հանրահաւաքին:

## ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆ «ԱՆՑԵԼ Է» ՑՈՒՑԱՐԱՐՆԵՐԻ ՄԻՋՈՎ

*A1+*, 18:01

Հէնց նոր լուր ստացանք, որ Արարատ գինու գործարանի կողմից սլացող ոստիկանական ՎԱԶ 69 մակնիշի մեքենան մխրճուել է Հայաստանում Ֆրանսիայի դեսպանատան մօտ հաւաքուած ցուցարարների մէջ. կան վրաերթի ենթարկուածներ:

Քիչ առաջ տեղեկացանք, որ փակ է Գիւմրի-Երեւան մայրուղին. թոյլ չեն տալիս գալ Երեւան:

## ՏԵՌՈՐ ԵՒ ՄԱՐԴԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ ԵՐԵՒԱՆՈՒՄ. ՎԿԱՅՈՒՄ ԵՆ ՑՈՒՑԱՐԱՐՆԵՐԸ

*Հետք*, 18:21

Այսօր վաղ առաւօտեան՝ ժամը 6-7-ն ընկած հատուածում, Ազատութեան Հրապարակում ոստիկանութեան աշխատակիցները եւ յատուկ ջոկատայինները յարձակուել են խաղաղ ցուցարարների վրայ:

Ոստիկանների ձեռքից ճողոպրած ցուցարարները պատմում են, թէ ինչպէս է տեղի ունեցել նախագահ Քոչարեանի կազմակերպած գործողութիւնը: Գրոհը սկսուել է ամբողջական ճակատով՝ առանց որեւէ նախազգուշացման, յանկարծակի: Յարձակումը սկսուել է Տէրեան, Թումանեան, Հիւսիսային եւ Մաշտոցի Պողոտաներից, որտեղ իրար յետեւից կանգնել են աւտօբուսները, եւ զօրքը դուրս է թափուել: Ցուցարարներից մէկը լսել է, որ մի հրամանատար բղաւել է. «Վրայ տուէք»: Մթնշաղի այդ ժամին ցուցարարների մեծ մասը վրաններում քնած է եղել: Նրանց թիւը, իրենց իսկ վկայութեամբ, յարձակուողներից մի քանի անգամ քիչ է եղել: Տուեալ պահին քնած ցուցարարները եղել են մի քանի հարիւր հոգի, իսկ յարձակուող զօրքը՝ մի քանի հազար:

Ցուցարար տղաներից ոմանք պատմում են, որ Սպենդիարեանի արձանի ուղղութեամբ գրոհող ոստիկանները իրենց կոչ էին անում վայր գցել փայտերը, որոնցով իրենք պաշտպանւում էին: Սպենդիարեանի արձանի շրջակայքում են եղել ԵԿՄ անդամների վրանները, եւ այդ կողմից գրոհող ոստիկանները հանդիպել են փոքրաթիւ երկրապահների ու քաղաքացիների դիմադրութեանը:

Ամենաուժեղ գրոհը եղել է Թումանեանի արձանի կողմի մուտքից: Ժողովրդական շարժմանը մասնակցող Յատուկ Գնդի մարտիկներից մէկը նկատել է, որ այդ մուտքից հրապարակ մտնողները տարբերուել են միւսներից՝ նրանք եղել են սեւ հագուստով,

մահակները եղել են ուղիղ, առանց բռնակի, կոթերը՝ կարմիր գոյնի: Ըստ ականատեսի՝ դա եղել է Ղարաբաղի «սպեցնազը»: Մինչ այդ լուրեր էին տարածուել, որ Քոչարեանը յատուկ գործողութիւն իրականացնելու համար ԼՂՀ-ից Երեւան է բերել ղարաբաղցի յատուկ ջոկատայիններին:

Գրոհողներից մի քանիսի մօտ տղաներից մէկը աւտօմատներ է տեսել: Ոստիկանները մօտ տարածութեան վրայ սրուակներից արցունքաբեր գազ են ցայտեցրել մարդկանց դէմքերին: Մեր զրուցակից տղաներից մէկի աչքերը մրմռում էին գազից: Կիրառուել է նաեւ էլեկտրաշոկ: Ցուցարարների պնդմամբ՝ գրոհայինների մէջ նորակոչիկներ, 18-20 տարեկան երիտասարդներ չեն եղել, բոլորը մարզուած, փորձուած մարտիկներ են եղել: Փաստօրէն, ՀՀ քաղաքացիների դէմ դուրս է եկել կազմակերպուած զօրք: Իսկ դեռ մի քանի ժամ առաջ՝ երէկ, նախագահ Քոչարեանն ասում էր, որ իրաւապահները բռնութեան չեն դիմելու:

Հայհոյանքներ տալով մասնակիցների եւ շարժման կազմակերպիչների հասցէին՝ գրոհող զօրքը շրջել է վրանները, մահակներով ցրել խաղաղ ցուցարարներին: Մեր զրուցակից տղաները նկատել են, թէ ինչպէս է մի մարդու աջ քունքից առատօրէն արիւն հոսում: Իսկ հէնց իրենք՝ տղաները, վնասուածք ունէին դէմքերին, ձեռքերին:

Նստացոյցի մասնակիցներին ցրելուց յետոյ ՊՊԾ-ն՝ ՀՀ ոստիկանութեան պահակապարեկային ծառայութիւնը, սկսել է մարդաորսը: Ազատութեան Հրապարակից դուրս եկած ցուցարարներին ՊՊԾ-ականները շարունակել են հետեւել: Ցուցարարները թաքնուել են շէնքերի բակերում, մուտքերում, ապաստան խնդրել բնակիչներից: Մեր զրուցակիցները նրանց թւում էին:

Նրանք պատմում էին, որ Ազատութեան Հրապարակից փախած մարդկանցից մինչեւ պետկրկես է հասել 50-100 հոգանոց մի խումբ, իսկ իրենց հետապնդողները եղել են մի քանի անգամ շատ: Փախչողները նպատակ են ունեցել հասնել Արշակունեաց փողոցում գտնուող ԵԿՄ վարչութեան շէնք, սակայն ստիպուած ցրուել են տարածքի շէնքերի բակերում ու փորձել ապաստան գտնել:

Մենք անձամբ ականատես եղանք, թէ ինչպէս էին երկու ՊՊԾ-ական երկու քաղաքացու պառկեցրել Արշակունեաց 6 փողոցի անկիւնում եւ խուզարկում էին նրանց: Քիչ անց մօտեցան ՊՊԾ-ի երեք մեքենայ, որտեղից դուրս եկան ոստիկանները: Քաղաքացիներից մէկն ինչ-որ բան ասաց ոստիկաններին, որոնցից մէկը ապտակեց նրան եւ հրեց մեքենայի մէջ: ՊՊԾ-ականները քաղաքացիներին տարան անյայտ ուղղութեամբ:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆՆ ԱՆՁԵՌՆՄԽԵԼԻ Է

*A1+*, 18:35

«Այս իշխանութիւններն ընդունակ են ամէն ինչի, բայց քանի դեռ արտակարգ դրութիւն չի յայտարարուել, ցանկացած բռնութիւն այս մարդկանց վրայ ապօրինութիւն է», - այսօր իր տանը հրաւիրած ասուլիսի ընթացքում յայտարարեց ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Քանի դեռ արտակարգ դրութիւն չի յայտարարուել եւ պարէտային ժամ չի հաստատուել, ինքնաբուխ հաւաքները սահմանադրական երեւոյթներ են, ըստ Տէր-Պետրոսեանի. «Եւ մենք պարտաւոր ենք դա վերահսկել, կառավարել, ղեկավարել. եթէ ինձ հնարաւորութիւն տրուի այստեղից դուրս գալու, ես ժողովրդի հետ պիտի լինեմ»:

Իսկ կը յաջողուի՞ դուրս գալ: «Տնային կալանքն այսօր, վաղը կը վերացնեն եւ չգիտեմ, կը ձերբակալեն, կը տանեն չգիտեմ ուր», - ասաց առաջին նախագահը եւ վստահեցրեց, որ ինքն այսօր ազատութեան մէջ է բացառապէս այն բանի շնորհիւ, որ երէկ դիմել են ՍԴ եւ վերականգնուել է իր անձեռնմխելիութիւնը: Իսկ յետոյ ի՞նչ է լինելու. «Կը գնանք, էլի կը ծեծեն՝ թող ծեծեն, էլի կը ջարդեն՝ թող ջարդեն, էլի կը ձերբակալեն, խնդիր չկայ»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը տեղեկացրեց, որ եւրոպացի դիտորդների նախնական զեկոյցը շատ վատն է եղել. եթէ ձեզ թւում է, թէ դրական է եղել գնահատականը՝ սխալւում էք, դրական մի քանի խօսք էր ասուած ընտրութիւնների նախապատրաստման, օրէնսդրութեան կատարելագործման եւ կազմակերպչական հարցերի մասին, իսկ ամբողջ ընթացքը գնահատուած էր բացասական, իսկ ընտրութիւնների արդիւնքների մասին ընդհանրապէս գնահատական չկայ:

«Չեմ կարծում, թէ ինչպէս, մանաւանդ այս դէպքից յետոյ կարելի է համարել, որ Հայաստանում ընտրութիւն է տեղի ունեցել: Հայաստանում տեղի ունեցածը ամենակոպիտ, ցինիկ, լկտի բռնութիւն է ոչ միայն կամքի, այլեւ մարմնի վրայ, ֆիզիկական բռնութիւն: Մեր ժողովուրդը, որ չի ընդունելու այս ընտրութիւնների արդիւնքները, ամէն յարմար պահի ընդվզելու է: Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ իրենք միշտ կոշտ ֆիզիկական շփումից խուսափել են, կարգադրուած է եղել որեւէ շփում չունենալ իրաւապահների հետ:

Ի դէպ, Տէր-Պետրոսեանը պատասխանելով հարցին, թէ ճի՞շտ է, որ ժողովրդի վրայ բռնութիւն կիրառածները Ղարաբաղի յատուկ նշանակութեան գնդից են եղել, պատասխանեց, որ ծեծի ենթարկուած մարդիկ կան իր մտերիմներից, վիրաւոր, որոնք մասնաւոր բժիշկների հսկողութեան տակ են, նրանք հարցազրոյցներ տուել, որտեղ ասում են, որ իրենց ծեծողները խօսում եւ հայհոյում էին ղարաբաղցու բարբառով: «Բայց ասում եմ, որ ես չեմ լսել, եթէ այդպէս լինի, դա ինձ համար ամենացաւալին կը լինի, որովհետեւ այն սեպը, որ կար, այն ճեղքը, որ կար անլցնելի կը լինէր», - ասաց Լեւոն Տէր-Պետրոսեանը:

Նա յայտարարեց, որ քաղաքական գործունէութեանը խանգարելու համար նախ պէտք է քրէական գործ յարուցուի իր դէմ. «Հաստատուի, որ ես յանցագործ եմ, դրանից յետոյ չգիտեմ, կա՞ն նման սանկցիաներ, օրինակ Ֆրանսիայում կայ, ասենք 5 տարով քաղաքականութեամբ զբաղելու իրաւունք չունեն, գիտեմ, այստեղ կա՞յ նման բան»:

«Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած պետական յեղաշրջման փորձ»՝ այս անունով քրէական գործ է յարուցուել եւ այս մէկ շաբաթուայ ընթացքում փորձում էին նիւթեր հաւաքել այդ գործի տակ, այստեղ յանցակազմ չկայ, նախ դրել են վերնագիրը, յարուցել են քրէական գործ, ապա տուել հարիւրաւոր սանկցիաներ եւ այդ սանկցիաներում գրել են, որ ասենք, Սերիոժա Սիրադեղեանը մեղադրւում է Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորած յեղաշրջման փորձի մէջ, այսինքն, յղում են կատարում մի թղթի, որի տակ նիւթ գոյութիւն չունի, նրանց խնդիրն էր որեւէ բիզ, դատարկ պարկուճ գտնել եւ դնել Լեւոն Տէր-Պետրոսեանի անուան կողքին: Գործը յարուցուել է ընտրութիւններից յետոյ», - ասաց նա:

## ՄԻԺԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 18:37

Արդէն 2007թ. դեկտեմբերին, ՄԻԺԻ-ն իր յստակ դիրքորոշումով է հանդէս եկել եւ համապարփակ վերլուծել Հայաստանի Հանրապետութեան անցեալ 16 տարիների

զարգացումները եւ 2008թ. նախընտրական կացութիւնը (տես՝ *Տեսակէտ-ՄԻԺԻ* թիւ 24-ի խմբագրականը www.idhr.am):

Իբրեւ հայ եւ հայաստանեան ինքնուրոյն եւ անկախ քաղաքացիական գործօն՝ մենք ցաւով ենք արձանագրում, որ այս վերլուծութիւններն ու կանխատեսումներն արդարանում են:

Սոյն թուականի մարտի 1-ի վաղ առաւօտեան Երեւանի Ազատութեան Հրապարակում խաղաղ ցոյցի բռնի ցրումը, չնայած իր կանխատեսելիութեանը, կրկին անգամ փաստում է, որ իշխանութիւնները եւ նրանց հետ համագործակից բոլոր քաղաքական կուսակցութիւնները, քաղաքական ուժերը, պաշտօնական մտաւորականութիւնն ու արուեստագէտները, նրանց սատարող այլ ուժերը գործում են ոչ քաղաքական եւ Սահմանադրական կարգով եւ մեթոդներով: Հայաստանի Հանրապետութեան ու հայ ժողովրդի պաշտօնական պատասխանատու ուժերը կրկին անգամ փորձում են վերարտադրել իրենց՝ ոչ քաղաքական խաղի օրէնքներով, մանիպուլացիաներով, հակաիրաւական ու անպատասխանատու գործելաոճով: Ներկայումս առաւել եւս հանդէս եկաւ քաղաքական ուժերի, վարչարար-իշխանաւորների անվստահելիութիւնը, անպատասխանատուութիւնը եւ անկարողութիւնը՝ քաղաքական եւ իրաւական սկզբունքներով առաջնորդուելու, կառավարելու մեր հասարակութեանն ու ժողովրդին:

Վառ վկայութիւնն են փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնները, որոնք նախընտրական, ընտրական եւ յետընտրական ժամանակահատուածում ուղեկցուեցին բազմաթիւ խախտումներով, կեղծումներով եւ բռնարարքներով, ընտրակաշառքներով, Հանրային հեռուստատեսութեան կողմնակալ վերաբերմունքով, ընտրական խախտումների նկատմամբ իրաւապահ մարմինների անգործութեամբ ու կաշկանդուածութեամբ, քաղաքական ուժերի ոչ սկզբունքային, անբարոյական գործելաոճով եւ մանրառեւտրի մէջ մտնելով: Այս ամէն գործողութիւնները քօղարկւում են յայտարարութիւններով, թէ իբր ազգը պառակտուած է, թէ ազգային խնդիրների հարցում դաւադրութիւններ են եղել, թէ յանուն քաղաքացիական պատերազմից խուսափելու քաղաքական ուժերը միաւորւում այսօրուայ իշխանութիւնների շուրջ: Սակայն մեր ազգը պառակտուած չէ, իսկ եթէ պնդում են, որ Արցախի հարցում ու պետական այլ գործերում կան դաւաճաններ ու յանցագործներ, ապա դրանք պէտք է ժամանակին օրինական կերպով, օրէնքի շրջանակում դատապարտուէին կամ դատապարտուեն:

Մեր հասարակութիւնը եւ ժողովուրդը պառակտուած չէ, այլ կայ սոցիալական եւ տնտեսական հսկայական բեւեռացում, չկայ քաղաքացիական պատերազմի վտանգ, այլ կայ լուրջ վտանգ պետականութեան եւ հասակարութեան ճգնաժամի ու քայքայման՝ շնորհիւ նոյն այդ անպատասխանատու եւ վարկաբեկուած քաղաքական, «մտաւորական» ու «հոգեւոր» ուժերի անմարդկային եւ ապազգային, անպատասխանատու եւ անբարոյական վարքագծի ու գործելաոճի:

Վարկաբեկուած է իշխանութիւնը, վարկաբեկուած են պաշտօնական «մտաւորականութիւնը», քաղաքական դաշտը եւ ուժերը, Հայ Առաքելական Մայր Աթոռի ղեկավարութիւնը...

Ինչպէս արդէն իսկ հանդէս ենք եկել մեր դիրքորոշմամբ՝ ՄԻԺԻ-ն չի կիսում Հայոց Համազգային Շարժման՝ ՀՀՇ-ի եւ Լեւոն Տէր-Պետրոսեանի գաղափարները եւ չի համակրում դրանք եւ մինչեւ օրս էլ շարունակում ենք մնալ այդ նոյն գծի վրայ: Սակայն

գտնում ենք, որ իշխանութիւնները եւ նրանց հետ համագործակցող ուժերը իրաւունք չունէին բռնութիւն գործադրելու Ազատութեան Հրապարակի ցուցարարների դէմ, որոնք քաղաքական եւ Սահմանադրական ձեւով էին իրենց դժգոհութիւնը եւ քաղաքացիական պահանջն արտայայտում: Քաղաքակիրթ մարդկային ու ազգային քաղաքական եւ հասարակական ուժերը պարտաւոր են յանուն իրենց հասարակութեան, ազգի եւ պետութեան զարգացման, առաջնորդուել եւ բոլոր խնդիրները լուծել միայն ու միայն Քաղաքական ճանապարհով եւ Սահմանդրութեան շրջանակում:

ՄԻԺԻ-ն դատապարտում է ՀՀ իշխանաւորների կողմից ծրագրուած եւ կիրառուած յանցագործ բռնատիրական գործելաոճը, որը վտանգում է քաղաքացիական եւ հասարակական համերաշխութիւնը՝ ի յաւելումն իրենց կողմից մինչ օրս իրականացուող սոցիալ-տնտեսական անարդար քաղաքականութեան, որի հետեւանքով բեւեռացուել եւ թուլացուել է մեր երկիրն ու պետութիւնը, եւ որի հետեւանքով ճաշակում ենք այս ըմբոստացումն ու ընդվզումը:

Մեր գերակայ քաղաքական ուժերի մէջ բացակայում է քաղաքական, բարոյական, ազգային եւ մարդասէր ուղեգիծը, մշակոյթն ու գործելաոճը. բացակայում է նաեւ այս յատկանիշներով տոգորուած ՈՐԱԿԱԿԱՆ քաղաքական երրորդ ուժը: Այդ իսկ պատճառով ցաւով ենք ականատես, որ մեր երիտասարդութեան, հասարակութեան եւ ժողովրդի դժգոհութիւնն ու քաղաքական պահանջարկը ուղղորդւում եւ առաջնորդւում է ՀՀ առաջին նախագահի՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի վերադարձով: ՄԻԺԻ-ն գտնում է, որ հայ ժողովրդի, ՀՀ հասարակութեան խաւերի ցուցաբերած դժգոհութիւնն ու ըմբոստութիւնն ունեն արդարացի եւ իրաւացի արմատներ:

Ազգային եւ մարդկային հաւաքական շահերը իր անձնական, հատուածական յանցագործ կամ ոչ յանցագործ շահերից գերադասող իւրաքանչիւր ուժ եւ իշխանաւոր պարտաւոր է հաշուի նստել այս արդարացի դժգոհութեան եւ պահանջի հետ՝ ճշմարիտ ինքնաքննադատութեան ենթարկելով իրենց եւ իրենց քայլերը. յանուն հայ երիտասարդութեան, ՀՀ հասարակութեան, բովանդակ հայ ժողովրդի մեծամասնութեան հաւաքական բարօրութեան եւ համերաշխութեան՝ պարտաւոր են որակական եւ արմատական քաղաքական բարեփոխումներ կատարել իրենց կեցուածքի, ուղեգծի, քաղաքականութիւնների եւ գործունէութեան մէջ:

Հայաստանի Հանրապետութիւնը իր Սահմանադրութեամբ Ժողովրդավարական, իրաւական եւ սոցիալական պետութիւն է, որտեղ իշխանութիւնը պատկանում է ժողովրդին:

Մենք սթափութեան կոչ ենք անում հայ երիտասարդութեան, հասարակութեան եւ ժողովրդի գիտակից, ինքնուրոյն, անկախ գործօններին՝ անհատ եւ կառոյց, վեր կանգնել ամբոխային եւ ամբոխավարական մանիպուլացիաներից եւ սթափուել, լիարժէք տէրը լինել մեր ժողովրդի եւ հայրենիքի, թոյլ չտալ, որ մեր հասարակութիւնը եւ ժողովուրդը նորից յուսահատութեան, անտարբերութեան, յարմարուողութեան եւ ստրկութեան ուղին բռնի: Դիմե՛նք քաղաքական եւ քաղաքացիական ակցիաների, արհամարհե՛նք եւ ամօթանքի մատնե՛նք հատուածական, յանցագործ, անբարոյական, քաղաքական եւ քաղաքացիական մանրավաճառութեամբ զբաղուող թէ՛ հովանաւորողներին եւ թէ՛ նրանց գործիքներին՝ քաղաքական, հասարակական ու մշակութային գործիչներին, «մտաւորականներին», լրագրողներին...՝ դպրոցներում, համալսարաններում, աշխատավայրերում,

հարեւանութեան մէջ, հանրային վայրերում, ամէնուր, մեր ամէնօրեայ քաղաքացիական վերաբերմունքով ու վարքագծով, տարբեր քաղաքական-քաղաքացիական ակցիաների միջոցով:

Կոչ ենք անում Հայաստանի Հանրապետութեան հասարակութեան եւ հայ ժողովրդի իւրաքանչիւր գիտակից անհատի ու կառոյցի՝ ինքնակազմակերպուել, քաղաքական եւ հասարակական սահմանադրական, իրաւական համարձակ, անվախ գործունէութիւն ծաւալել՝ անյապաղ: Գիտակցելով եւ յարգելով ՀՀ Սահմանադրութիւնը՝ տէրը լինենք սահմանադրական կարգի եւ իրաւունքի գերակայութեանը մեր հայրենիքում, չթողնելով որ այն մանիպուլացուի այս կամ այն իշխանաւորի կամ գործիչի հատուածապաշտ ձգտումներով:

Հասարակական եւ սահմանադրական կարգը պաշտպանելու համար բռնութեան հրահանգ տուող եւ իրականացնող իւրաքանչիւր ոք պարտաւոր կը լինի հաշուետըւութիւն տալ իր որոշումների եւ գործողութիւնների օրինականութեան համար. մենք՝ ժողովուրդս, պահանջում ենք այդ հաշուետուութիւնը:

Մարդու Իրաւունքների եւ Ժողովրդավարութեան Ինստիտուտ՝ ՄԻԺԻ Երեւան, 1 մարտի 2008թ.

## ՄԻԱՅՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԸ ԿԱՐՈՂ Է ՀԱՆԴԱՐՏԵՑՆԵԼ ՅՈՅԶԵՐԸ

*Lragir.am*, 18:40

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը տարածել է յայտարարութիւն, որում ասւում է հետեւեալը. «Այսօր, վաղ առաւօտեան բիրտ ուժի կիրառմամբ խաղաղ ցուցարարները վտարուել են Ազատութեան Հրապարակից: Այս պահից ՀՀ առաջին նախագահ, նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանը գտնւում է անօրինական կալանքի տակ: Կան բազմաթիւ ծանր վիրաւորներ, ձերբակալուածներ եւ, ըստ որոշ լրատուամիջոցների հաղորդման, նաեւ զոհեր: Վրդովուած ցուցարարները եւ նրանց միացած մեր բիւրաւոր համաքաղաքացիները ինքաբուխ կերպով հաւաքուել են Միասնիկեանի հրապարակում եւ յարակից տարածքում: Խաղաղ ցուցարարերի պահանջն է անմիջապէս ազատ արձակել ՀՀ առաջին նախագահ, նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանին: Սոյնով մենք յայտարարում ենք, որ միայն Լեւոն Տէր-Պետրոսեանի անձնական ներկայութիւնը կարող է հանդարտեցնել յոյզերը եւ թոյլ չտալ իրավիճակի յետագայ սրում: Ստեղծուած պայթունավտանգ իրավիճակում, եթէ Լեւոն Տէր-Պետրոսեանը անյապաղ ազատ չարձակուի եւ նրան հնարաւորութիւն չտրուի անմիջականօրէն դիմել մեր համաքաղաքացիներին, ապա իրավիճակի յետագայ զարգացումների ողջ պատասխանատուութիւնը ընկնում է Հայաստանի ներկայ իշխանութիւնների եւ անձամբ Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի վրայ»:

## ՇՏԱԲԻ ՇՏԱՊ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*A1+*, 18:40

Ի գիտութիւն մեր համակիրներին եւ բոլոր ոչ անտարբեր քաղաքացիներին: Այս պահին հանրահաւաքը տեղի է ունենում ֆրանսիական դեսպանատանը յարող տարածքում:

ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ՇՏԱԲ

## «ԾԵԾՈՂ ՅԱՏՈՒԿ ԽՈՒՄԲ ԿԱՅ»

*A1+*, 18:46

Միասնիկեան արձանի յարակից հրապարակը այս պահին լիքն է մարդկանցով: Բացի այս հրապարակից լիքն են նաեւ յարակից Կոմայգին, Երեւանի քաղաքապետարանի շրջակայքն ու ֆրանսիական եւ իտալական դեսպանատների շրջակայքը: Քիչ առաջ հարթակ բարձրացրին բարձրախօսներն ու միկրոֆոնները, որոնց ետեւից գնացել էր Նիկոլ Փաշինեանը: Հարթակին այս պահին Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանն է, ԱԺ պատգամաւոր Խաչատուր Սուքիասեանը, ՀԺԿ քարտուղար Գրիգոր Յարութիւնեանը, Նիկոլ Փաշինեանը:

Հարթակին գտնուողները հանգստութեան կոչ էին մարդկանց, պարբերաբար յորդորում նրանց սաղրանքների չենթարկուել: Մարդկանց մէջ հանդիպեցինք մի աղջկայ, որին առաւօտեան դասի գնալուց ոստիկանները յարձակուել ու ծեծել էին, իսկ յետոյ արցունքաբեր գազ փչել աչքերին: Նա ամբողջովին դողում էր ու անընդմէջ լաց լինում:

Ոչ մի ոստիկան այս պահի դրութեամբ Միասնիկեանի արձանի մօտ չկայ: Նրանց խիտ շարքերը կամաց-կամաց ցրուել ու գնացել էին: Ի դէպ, ոստիկաններից մի քանիսը մեզ խոստովանեցին, որ առաւօտեան յարձակումը Ազատութեան Հրապարակում գտնուող խաղաղ ցուցարարների վրայ իրենք չեն արել: Իսկ նրանցից մէկն ասաց. «իրենք ծեծող չեն, եթէ ծեծող լինէին հիմա գործի կ'անցնէին»: «Ծեծող յատուկ խումբ կայ, իրենք են արել», - ասաց նրանցից մէկը:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ՇՏԱԲԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 18:52

«Այսօր առաւօտից ՀՀ իշխանութիւնները, ուժ կիրառելով խաղաղ ցուցարարների դէմ եւ նրան նկատմամբ գործելով տարատեսակ եւ դաժան բռնութիւններ, փորձում են ամէն ինչ անել, որ այս մասին հայաստանեան հասարակութիւնը տեղեկացուի հնարաւորինս քիչ: Մի կողմից հայկական հեռուստաընկերութիւնները հանրութեանն են ներկայացնում ամբողջովին միակողմանի տեղեկատուութիւն (մասնակի բացառութիւն է կազմում *Երկիր մեդիա* հեռուստակայանը): Միւս կողմից՝ այսօր ողջ օրուայ ընթացքում ՀՀ իշխանութիւնների հրահանգով եւ բացայայտ միջամտութեամբ չեն ցուցադրւում արտասահմանեան հեռուստաընկերութիւնների հեռարձակած հաղորդումների այն հատուածները, որոնք առնչւում են այսօր Հայաստանում ընթացող իրադարձութիւններին: Խօսքը մասնաւորապէս վերաբերում է համառուսաստանեան *OPT 1*-ին, *Եւրոնիւզ* եւ *CNN* հեռուստաալիքին: Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը սա գնահատում է որպէս քաղաքացիների՝ տեղեկութիւններ ստանալու հիմնարար իրաւունքի խախտում, ինչպէս նաեւ սեփական ժողովրդի նկատմամբ սանձազերծուած տեղեկատուական ահաբեկչութիւն եւ բլոկադա:

01.03.2008թ

Ժամը 18.35»

## ԵՒՐԱՄԻՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՆԵՐԸ ՀԱՒԱՔՈՒԵԼ ԵՆ

*Lragir.am*, 19:22

Միասնիկեանի արձանի հրապարակում, Ֆրանսիայի դեսպանատան եւ Երեւանի քաղաքապետարանի դիմացն ընկած տարածքում շարունակւում է ժողովրդի ինքնաբուխ հանրահաւաքը, այն բանից յետոյ, երբ ոստիկանութեան զօրքերը մարտի 1-ի առաւօտեան ցրեցին Ազատութեան Հրապարակի խաղաղ ցոյցը:

Ինքնաբուխ հանրահաւաքը սկսել են վարել Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի անդամները, Արամ Զաւէնի Սարգսեանը ի պատասխան մի քանի տասնեակ հազար քաղաքացիների պահանջին, գնալ ու ազատել տնային կալանքի տակ գտնուող Լեւոն Տէր-Պետրոսեանին, յայտարարել է, թէ Լեւոն Տէր-Պետրոսեանի տուն կը գնան, երբ ինքը կանչի, ոչ թէ ինչպէս անկոչ հիւրեր: Իսկ առայժմ, Լեւոն Տէր-Պետրոսեանը, ըստ Արամ Զաւէնի Սարգսեանի, յորդորել է քաղաքացիներին մնալ հաւաքուած Միասնիկեանի արձանի հրապարակում եւ սպասել, մինչեւ ինքը գայ ու բարձրանայ հարթակ: Լեւոն Տէր-Պետրոսեանը նաեւ յորդորել է բոլորին չձաւալել որեւէ ինքնագործունէութիւն:

Հանրահաւաքի ժամանակ հարթակ են բարձրացել առաւօտեան ձերբակալուած, բայց արդէն ազատ արձակուած Հրանտ Բագրատեանն ու Արամ Մանուկեանը: Հրանտ Բագրատեանն ասել է, որ այս իշխանութիւնը բացարձակապէս կորցրել է իրականութեան զգացումը եւ չի ընկալում, թէ ինչ երկրում է կառավարում: Տեղեկութիւնները, թէ իրեն ոստիկանութիւնում ծեծել են, Հրանտ Բագրատեանի խօսքով, չի համապատասխանում իրականութեանը: Հրանտ Բագրատեանը ասել է, որ ինքն ու Արամ Մանուկեանը, ազատ արձակուելուց յետոյ, հանդիպել են Հայաստանում Եւրամիութեան երկրների դեսպանների հետ, որոնք հաւաքուել են Գերմանիայի դեսպանատանը: Այնտեղ են եղել նաեւ Պիտէր Սեմնեբիի ներկայացուցիչը, ինչպէս նաեւ Հայաստանում ՄԱԿ ներկայացուցիչը: Հրանտ Բագրատեանը նշում է, որ իրենք դեսպաններին մանրամասն ներկայացրել են, թէ ինչ է իրականում տեղի ունեցել, թէ խաղաղ ցուցարարներն իրականում որեւէ նռնակով կամ այլ զէնքով զինուած չեն եղել, ինչպէս ներկայացնում է իշխանութիւնը:

Հրանտ Բագրատեանի խօսքով, դեսպանները մտահոգութիւն են արտայայտել ստեղծուած իրավիճակով եւ անթոյլատրելի են համարել յետագայ լարումը, ուժի յետագայ կիրառումը: Դեսպաններն ասել են, թէ Եւրոպայի Խորհուրդը հիմա նամակ է պատրաստում Հայաստանի կառավարութեանը, ուր յորդորելու է բացառել ուժի յետագայ կիրառումը: Հրանտ Բագրատեանը նշել է, թէ Եւրամիութեան դեսպաններն այդ կապակցութեամբ մտահոգ են այն առումով, որ ունեն տեղեկատուութիւն, որ անգամ հրահանգ կայ բանակի զինուած միջամտութեան կապակցութեամբ: Այդ իսկ պատճառով, Արամ Մանուկեանն ու Հրանտ Բագրատեանը պահանջ են դրել Եւրամիութեան դեսպանների հետ հանդիպմանը, որ նրանք ամէն ինչ անեն Հայաստանի կառավարութեանն ուժի հերթական կիրառումից հետ պահելու, եւ նաեւ Լեւոն Տէր-Պետրոսեանին տանից դուրս գալու հնարաւորութիւն ապահովելու համար:

## ՅԱՏՈՒԿ ՋՈԿԱՏԱՅԻՆՆԵՐԸ ԵՂԵԼ ԵՆ ԴԱԺԱՆ

*Lragir.am*, 19:36

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի անդամ Արամ Մանուկեանը, որին

առաւօտեան ձերբակալել էին Ազատութեան Հրապարակում ընդդիմութեան ցոյցը ցրելուց յետոյ, ազատ արձակուելուց յետոյ մարտի 1-ի կէսօրից, Միասնիկեանի արձանի մօտ գոյացած ինքնաբուխ հանրահաւաքի մի քանի տասնեակ հազար մասնակիցներին տեղեկացրել է, թէ ինչ էր կատարւում Կենտրոնի ոստիկանութիւնում, ուր բերման էին ենթարկում ձերբակալուածներին, խաղաղ ցոյցը ցրելու ոստիկանական օպերացիայի տուժածներին:

Արամ Մանուկեանն ասում է, որ յատուկ ջոկատայինները քաղաքացիներին ծեծել են առանձնակի դաժանութեամբ, մահակներով խփելով նրանց գլխին: Ինքը գլխին մահակի հարուած չի ստացել միայն այն պատճառով, որ բեռնատարի մէջ, ուր խցկել էին քաղաքացիներին ոստիկանութիւն տանելու համար, իր վրայ են ընկած եղել եւս երեք քաղաքացի: Արամ Մանուկեանն ասում է, որ Կենտրոնի ոստիկանութիւն էին բերման ենթարկում դաժանօրէն ծեծուած մարդկանց, որոնցից շատերի վիճակն այնպիսին էր, որ անգամ կարելի էր մտածել, որ ամէն ինչ կ'աւարտուի մահուան ելքով: Բուն ոստիկանութիւնում, ըստ Արամ Մանուկեանի, ոստիկաններն իրենց նոյնիսկ լաւ են պահել, շատ դէպքերում եղել են քաղաքավարի, որեւէ մէկին չեն ծեծել: Արամ Մանուկեանն ասում է, որ ծեծող յատուկ ջոկատայինների մէջ ինքը ղարաբաղեան ակցենտ չի լսել: Արամ Մանուկեանը հաւաքուածներին հաւաստիացրել է, որ ձերբակալուածներին շուտով անպայման բաց կը թողնեն, ոմանց գուցէ մէկ-երկու օր պահելով, որովհետեւ նրանց վրայ կան ծեծի հետքեր եւ այդպէս հաւանաբար բաց չթողնեն այդ վիճակում:

Արամ Մանուկեանը նաեւ խօսել է Եւրամիութեան դեսպանների հետ իր եւ Հրանտ Բագրատեանի հանդիպման մասին, ասելով, որ երբ իրենց ազատ են արձակել, իրենք ցանկութիւն են յայտնել հանդիպել Գերմանիայի դեսպանին եւ ընդամէնը 15 րոպէ անց այդ հանդիպումը յաջողուել է կազմակերպել, ինչը բաւական առանցքային է, նկատի ունենալով, որ դեսպանները որպէս կանոն, շաբաթ օրերը չեն աշխատում: Երբ Մանուկեանն ու Բագրատեանը գնացել են դեսպանատուն, ապա տեսել են, որ այնտեղ են հաւաքուած Եւրամիութեան անդամ երկրների գրեթէ բոլոր դեսպանները՝ Գերմանիա, Ֆրանսիա, Մեծ Բրիտանիա, Յունաստան, Բուլղարիա եւ այլն: Արամ Մանուկեանն ասել է նաեւ, թէ Հրանտ Բագրատեանն այդ հանդիպմանը անգլերէնով հիանալի կերպով ներկայացրել է իրավիճակը, որ առկայ է այժմ Հայաստանում:

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՎԵՐԱԾՈՒԵԼ Է ԶՕՐԱՆՈՑԻ

*Lragir.am*, 19:38

Հայաստանի կառավարութեան շէնքի մօտ նկատելի է մեծ քանակի զինուժի կուտակում: Կառավարութեան շէնքի դիմաց են յատուկ ջոկատայինները, ոստիկանութեան զօրքերը վահանով ու մահակներով, բանակի աւտօմատաւոր զինծառայողներ: Իսկ այդ զօրախմբի մի զգալի մասը գտնւում է կառավարութեան շէնքի յետեւի մասում:

## ԹԵՐԻ ԴԵՒԻՍԸ ՄՏԱՀՈԳՈՒԹԻՒՆ Է ԱՐՏԱՅԱՅՏԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՐԱՎԻՃԱԿԻՑ

*Lragir.am*, 19:46

Եւրոպայի Խորհրդի գլխաւոր քարտուղար Թերի Դեւիսը մարտի 1-ին Երեւանում առկայ իրադրութեան կապակցութեամբ հանդէս է եկել յայտարարութեամբ, ուր ասում

է, որ մտահոգ է իրադարձութիւնների զարգացմամբ եւ խաղաղ ցուցարարների հանդէպ ուժի կիրառմամբ: Նրա խօսքով, եթէ հաստատուեն ուժի կիրառման փաստերը, ապա անհրաժեշտ կը լինի մանրամասն հետաքննել դրանք, պարզելու համար՝ արդեօք ուժի կիրառումը եղել է թոյլատրելիից աւելի շատ:

Թերի Դեւիսի խօսքով, անհրաժեշտ է կանխել ուժի յետագայ կիրառումը: «Ես նաեւ մտահոգ եմ այն տեղեկատուութեամբ, որ Հայաստանի նախագահի թեկնածու, առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը գտնւում է տնային կալանքի տակ: Եթէ դա համապատասխանում է իրականութեանը, ապա նա պէտք է անյապաղ ազատ արձակուի: Եթէ նրան մեղադրում են յանցագործութեան համար, ապա մեղադրանքը պէտք է ներկայացուի օրէնքի համաձայն: Ժողովրդավարական երկրում չպէտք է տեղ լինի քաղաքական մրցակիցների կամայական ձերբակալութիւններին», յայտարարել է Թերի Դեւիսը, տեղեկացնում է Արմինֆոն:

## ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԻ «ՀԱՄԱՐՁԱԿՈՒԹԻՒՆԸ»

*Հետք*, 20:00

«Ես կարծում եմ՝ մենք դեռ շատ ռէալ շանս ունենք՝ օգտուելու այսօրուայ ստեղծուած իրավիճակից: Քաղաքական գործչի հմտութիւնը, նրա հեռատեսութիւնը նման կրիտիկական պահերին է դրսեւորւում: Եթէ մենք այս պահը կորցնենք եւ աւելի խորացնենք իրավիճակը, իսկապէս բոլորս կը տուժենք դրանից», - Երեւանում ստեղծուած իրավիճակի կապակցութեամբ ասաց արտգործնախարար Վարդան Օսկանեանը:

Նա լրագրողների հետ նախագահական նստավայրում հանդիպել էր նախագահ Ռոբերտ Քոչարեանի յանձնարարականով:

«Ես չեմ վարանում ասելուց՝ գնդակը Լեւոն Տէր-Պետրոսեանի դաշտում է: Ինը թեկնածուներից ինքն է, որ իր ձեռքը չի մեկնում, չի ուզում քաղաքական դաշտ տեղափոխուել... Տէր-Պետրոսեանը, իրօք, իր ծրագրի մի մասն իրականացրեց. հանդիսացաւ քաղաքական գործօն: Ինքն ունի մի ընտրազանգուած, որոնք ունեն լուրջ դժգոհութիւններ Հայաստանում այսօր առկայ երեւոյթների նկատմամբ: Ինքը քաղաքական դաշտում մեծ օգտակարութիւն կարող է բերել այդ խնդիրներն աւելի համարձակ եւ պայմաններով դնելով կոալիցիոն կառավարութեան առաջ: Ես կարծում եմ, որ եթէ այս կրիտիկական պահին քաղաքական գործիչները բոլորը ճիշտ կողմնորոշուեն, մենք ողջ հայութեամբ շահելու բան ունենք, - յայտարարեց արտգործնախարարը եւ աւելացրեց, - երբ ինձ առաջարկուեց այս մամուլի ասուլիսն անել, ես համաձայնուեցի, որպէսզի նման քաղաքական յայտարարութիւններ անեմ: Ես ինֆորմացիայի տիրապետող անձը չեմ, բայց ես քաղաքական պահն եմ զգում եւ, իսկապէս, համարձակութիւն վերցրեցի կամերաների առաջը կանգնել եւ ասել, որ ես զգում եմ, որ կրիտիկական պահ է: Եթէ լինի ճիշտ կողմնորոշում, մենք շահում ենք»:

## ՕՍԿԱՆԵԱՆ. ԵԹԷ ՎԻՃԱԿԸ ԿՐԻՏԻԿԱԿԱՆ ԼԻՆԻ, ԿԸ ՄՏՑՈՒԻ ՅԱՏՈՒԿ ԴՐՈՒԹԻՒՆ

*Lragir.am*, 20:10

Հայաստանի արտգործնախարար Վարդան Օսկանեանը, ով ասուլիս է տուել Ռոբերտ Քոչարեանի փոխարէն, յայտարարել է, թէ Հայաստանի նախագահը ձգտում է

իրավիճակի քաղաքական լուծման, սակայն եթէ այն վերածուի կրիտիկականի, ապա Քոչարեանը պատրաստ է հրամանագիր ստորագրել երկրում յատուկ դրութիւն յայտարարելու մասին:

## ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԸ ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ Է ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 20:15

Ընդդիմութեան հանրահաւաքը ցրելու համար ոստիկանութեան ուժի կիրառումը համարժէք է եղել իրավիճակին: Դա Հայաստանի արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանի գնահատականն է մարտի 1-ի լուսադէմից Երեւանում ծաւալուած իրադարձութիւններին:

Արտաքին գործերի նախարարը յայտարարել է, թէ ցոյցը ցրելու պահին Ազատութեան Հրապարակում եղել է մօտ հազար մարդ: Ինչպէս նշել է Օսկանեանը, առաջին մօտեցման ժամանակ ոստիկանութիւնը չի ունեցել համապատասխան պաշտպանական միջոցներ, քանի որ չի ունեցել ցոյցը ցրելու նպատակ: «Հիմնական նպատակը եղել է զէնքի առկայութեան մասին տեղեկատուութեան ստուգումը: Ակցիայի մասնակիցների կողմից ուժի կիրառումից յետոյ, ոստիկանները նահանջել են եւ նրանց փոխարինել են արդէն առաւել պատրաստուած ոստիկանները», յայտարարել է Վարդան Օսկանեանը:

Անդրադառնալով Լեւոն Տէր-Պետրոսեանի տնային կալանքի թեմային, նա ասել է, թէ այդպիսի բան չկայ, պարզապէս օրէնքը Տէր-Պետրոսեանին նախատեսում է թիկնազօր, եւ այն, ելնելով իրավիճակից, չի կարող նրան ուղեկցել այնպիսի միջոցառումների, որտեղ կարող է սպառնալիք լինել նրա անվտանգութեանը: «Նա ունի իրաւունք հրաժարուել թիկնազօրից, եւ նրան այդ մասին տեղեկացրել են, սակայն Տէր-Պետրոսեանը տուեալ պահին չի հրաժարուել թիկնազօրից: Այս պահին, Լեւոն Տէր-Պետրոսեանի զինակիցների շրջանում, յայտնի մարդկանցից, որեւէ մէկը ձերբակալուած չէ», յայտարարել է Վարդան Օսկանեանը:

## ԸՍՏ ՆԱԽԱՐԱՐԻ, ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆՆ ԱՐԵԼ Է ԻՐԵՆԻՑ ԿԱԽՈՒԱԾ ԱՄԷՆ ԻՆՉ

*Lragir.am*, 20:29

Հայաստանի իշխանութիւնն ընդդիմութեանը առաջարկում է վերադառնալ քաղաքական դաշտ եւ կարգաւորել ստեղծուած բարդ իրավիճակը: Այդ մասին մարտի 1-ին տուած մամուլի ասուլիսում յայտարարել է արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանը, տեղեկացնում է Ռեգնումը:

Մեկնաբանելով հարցը, թէ ինչու գործող նախագահ Ռոբերտ Քոչարեանը անձամբ չի նախաձեռնում Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ երկխօսութիւն, Վարդան Օսկանեանը նկատել է, որ Ռոբերտ Քոչարեանը ապրիլի 9-ին վայր է դնում իր լիազօրութիւնները, եւ աւելի նպատակայարմար է, որ բանակցողը լինի Սերժ Սարգսեանը: Իսկ վարչապետը, ըստ Վարդան Օսկանեանի, արել է իրենից կախուած ամէն ինչ, գործակցութեան եւ կառավարութիւն կազմելու կոչ անելով բոլոր թեկնածուներին առանց բացառութեան: Վարդան Օսկանեանը նշել է, թէ Տէր-Պետրոսեանը միակն էր, որ կտրականապէս մերժել է այդ առաջարկը:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ՝ ԳԼԱՁՈՐ ՀԱՄԱԼՍԱՐԱՆՈՒՄ

*A1+*, 20:48

Գլաձորի Համալսարանի ուսանողուհիներից երկուսը պատմում էին, թէ ինչպէս են ականատես եղել, երբ ոստիկանները ներխուժել են համալսարան ու անխնայ ծեծի ենթարկել համալսարանի տղայ ուսանողներին:

Ոստիկանները համալսարան են ներխուժել այն բանից յետոյ, երբ Ֆրանսիական դեսպանատան շրջակայքում ժամը 12-ի կողմերը հաւաքուած մի խումբ տղաների փորձել են ցրել: Տղաները դիմադրել են, այնուհետեւ պատսպարուել Գլաձոր Համալսարանում: Ոստիկանները հետեւել են նրանց, ու համալսարան մտնելով, յարձակուել այնտեղ գտնուող բոլոր տղայ ուսանողների վրայ:

Ուսանողուհիները պատմում են, որ երբ մարդիկ նոր էին հաւաքւում, ոստիկանները անխնայ ծեծում էին բոլորին:

ԱԿԱՆԱՏԵՍԻ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ. ծեծում էին ինչպէս թշնամիներին

Վարդենիսի Ակունք գիւղի բնակիչ Պետրոսեան Յովհաննէսը, թէեւ ոստիկանների մահակներից տուժել է, բայց այնուամենայնիւ այսօր միացել է այն տասնեակ հազարաւոր մարդանց, ովքեր Ֆրանսիական դեսպանատան շրջակայքում հաւաքուել են, իրենց բողոքը արտայայտելու վաղ առաւօտեան տեղի ունեցածի վերաբերեալ:

Յովհաննէսը պատմում է, որ առաւօտեան ժամը 6:10-ին վրանում են եղել, երբ տեղեկութիւն են ստացել, որ ոստիկանները յարձակւում են: «Մենք սկսեցինք այնտեղ եղած նստարաններով պաշտպանուել: Պաշտպանուեցինք, յետոյ լեզու գտանք էդ առաջին խմբի հետ: Յետոյ Ղարաբաղի զօրքը յարձակուեց մեզ վրայ: Ղարաբաղցի էին, որովհետեւ իրանց բարբառով էին խօսում»:

Ըստ Յովհաննէսի, հրապարակում այդ ժամանակ մօտ 500 հոգի է եղել:

«Բոլորը քնած էին, ծեծում էին տատիկներին, պապիկներին, մերերին, էրեխեքին, ախր դրանք մենակ քնած մարդու վրայ կարան ուժ ցոյց տան, պալատկեքն էին վառում», - ասաց նա:

Յովհաննէսի աչքի առաջ իր համագիւղացիներից երեքին, առաւօտեան ժամը 7-ի կողմերը, ծեծելով նստեցրել են ոստիկանական մեքենայ ու տարել: Մինչ այս պահը նա չգիտէ թէ որտեղ են իր համագիւղացիները՝ Մանգասարի Դաւիթ, Աղաս Մերուժ եւ Միեր:

ԱԿԱՆԱՏԵՍԻ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ. ՈՍՏԻԿԱՆԸ ԲԱՀԻ ԿՈԹՈՎ ԾԵԾՈՒՄ ԷՐ ԿՆՈՋԸ

Ականատեսի վկայութեամբ, Պեժօ 101 ՈՍ 02 պետհամարանիշներով աւտոմեքենայի վարորդ-ոստիկանը, Թումանեան Մաշտոց խաչմերուկում ժամը 8:30-ի կողմերը, բահի կոթով հարուածներ էր տեղում մօտ 50-ին մօտ կնոջը, ով փորձում էր տեղեկութիւններ ստանալ, թէ որտեղ են իր հարազատները, ովքեր գիշերը եղել են Ազատութեան Հրապարակում:

## ՅՈՒՑԱԴՐՈՒՄ ԵՆ ՄԻԱԿՈՂՄԱՆԻ ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԻՒՆ

*A1+*, 20:48

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբի

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսօր առաւօտից ՀՀ իշխանութիւնները, ուժ կիրառելով խաղաղ ցուցարարների դէմ եւ նրան նկատմամբ գործելով տարատեսակ եւ դաժան բռնութիւններ, փորձում են ամէն

ինչ անել, որ այս մասին հայաստանեան հասարակութիւնը տեղեկացուի հնարաւորինս քիչ: Մի կողմից հայկական հեռուստաընկերութիւնները հանրութեանն են ներկայացնում ամբողջովին միակողմանի տեղեկատուութիւն (մասնակի բացառութիւն է կազմում *Երկիր մեդիա* հեռուստակայանը): Միւս կողմից՝ այսօր ողջ օրուայ ընթացքում ՀՀ իշխանութիւնների հրահանգով եւ բացայայտ միջամտութեամբ չեն ցուցադրւում արտասահմանեան հեռուստաընկերութիւնների հեռարձակած հաղորդումների այն հատուածները, որոնք առնչւում են այսօր Հայաստանում ընթացող իրադարձութիւններին: Խօսքը մասնաւորապէս վերաբերում է համառուսաստանեան *ОРТ 1*-ին, *Եւրոնիւզ* եւ *CNN* հեռուստաալիքին:

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախընտրական շտաբը, սա գնահատում է որպէս քաղաքացիների՝ տեղեկութիւններ ստանալու հիմնարար իրաւունքի խախտում, ինչպէս նաեւ սեփական ժողովրդի նկատմամբ սանձազերծուած տեղեկատուական ահաբեկչութիւն եւ բլոկադա:

## ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԸ ՆՈՐԻՑ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ Է ԽԱԽՏՈՒՄ

*A1+*, 20:49

Այս պահին կառավարութեան շէնքը, ֆինանսների նախարարութիւնը եւ ՀՀԿ-ի կենտրոնական գրասենեակը հսկում են ՀՀ ԶՈՒ զօրքերը՝ պաշտպանութեան փոխնախարար Եուրի Խաչատուրովի, բանակի երկրորդ կորպուսի հրամանատար Հայկազ Բաղմանեանի, սահմանապահ զօրամասի հրամանատար Մուրադ Աբրահամեանի գլխաւորութեամբ: Նոյն վայրում ծառայութիւն է իրականացնում ռազմական ոստիկանութիւնը՝ պետի տեղակալ Հայկ Ստեփանեանը:

Նկատենք, որ ՀՀ սահմանադրութեամբ եւ օրէնսդրութեամբ, ՀՀ զինուած ուժերը օգտագործւում են միայն արտաքին թշնամու ագրեսիայի դէպքում, ներքին սպառնալիքի պարագայում օգտագործւում են ոստիկանութեան ուժերը:

Ընդգծենք, որ այս պահին սահմանադրութեան եւ օրէնքների կոպիտ ոտնահարմամբ, խաղաղ բնակչութեան դէմ է հանուել բանակը, ու բանակն է պաշտպանում կառավարութեան շէնքը:

Երեւան են բերուել ոստիկանական բոլոր ուժերը հանրապետութեան ողջ տարածքից: Զօրքերը շրջապատել են Հանրապետութեան Հրապարակը՝ Տիգրան Մեծ պողոտայից սկսած՝ Մելիք Ադամեան եւ Նալբանդեան փողոցներով վերջացրած:

Աւելի ուշ կառավարութեան շէնքի մօտ են բերուել նաեւ ռազմական ինստիտուտի ուսանողները՝ կուրսանտները, կարճ ասած՝ հանրապետութեան ամբողջ համազգեստ կրող զանգուածը պաշտպանում է Սերժ Սարգսեանին:

Ի դէպ, բանակայինները մօտեցել են «վերնիսաժ»-ի առեւտրականներին, հայհոյել են եւ պահանջել հեռանալ այնտեղից: Այդ մասին պատմում էր իրերն արագ-արագ հաւաքող առեւտրականներից մէկը, որ վախեցած շտապում էր հեռանալ վերնիսաժից:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ԽԱԽՏԵԼ ԵՆ ԱՆՄԵՂՈՒԹԵԱՆ ԿԱՆԽԱՎԱՐԿԱԾԸ

*A1+*, 20:50

Այսօր ոստիկանութիւնը տարածեց կադրեր, որտեղ ոստիկաններն արդէն խաղաղ ցուցարարներից «մաքրած» Ազատութեան Հրապարակում իբր ծառերի ու թփերի տակից

յայտնաբերում էին երկաթեայ ձողեր, մեխեր, ատրճանակներ, որսորդական հրացաններ եւ այլն:

Նախ յիշեցնենք, որ Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօր հրաւիրած ասուլիսում յայտարարեց, որ ինքը տեսել է, թէ ինչպէս են ոստիկանութեան սպաներն իրենց ձեռքով բերում լցնում, ապա նկարահանում զէնք զինամթերքը: Իսկ որ նրա ասածը իրականութիւն է, ապացուցին հէնց ոստիկանութեան տարածած կադրերը. ոստիկանները դէպքի վայրում յայտնաբերուած զէնքերը վերցնում էին առանց ձեռնոցի եւ իրենց մատնահետքերը թողնում դրանց վրայ:

Միջազգային կանոններով, ոստիկաններն իրաւունք չունեն զէնքը վերցնել առանց ձեռնոցի: Յետոյ, իհարկէ, հայ ոստիկանները կը փորձեն ապացուցել, որ այդ ոստիկանական մատնահետքերը պատկանում են խաղաղ ցուցարարներին:

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*A1+*, 20:50

Գերծանրաբեռնուածութեան եւ հակերային յարձակումների պատճառով մեր կայքն այսօր շատ դժուարութեամբ է բացւում: Առաջարկում ենք մեր տեսանիւթերը դիտել դիտել *Ա1+*-ի պաշտօնական youtube-ում՝ http://http://a1plus.blogsome.com/ եւ ընտրութիւնների վերաբերեալ յատուկ էջում՝ http://http://elections.a1plus.am/:

Հայցում ենք Ձեր ներողամտութիւնը:

## «ԱՐԹՈՒՐ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԸ ԵՒՍ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆ Է ԿՐՈՒՄ»

*A1+*, 20:52

**ՀՀ նախագահի նախկին թեկնածու Արման Մելիքեանի գնահատականը 2008թ. Մարտի 1-ին Երեւանում կատարուած ոստիկանական գործողութեան վերաբերեալ**

Խորը ցաւով ստիպուած ենք արձանագրել, որ երկխօսութիւն սկսելու վերաբերեալ արուած առաջարկները մնացին անհետեւանք, փոխարէնը Երեւանի կենտրոնում իշխանութիւնը ուժ կիրառեց ցուցարարների նկատմամբ: Մեր գնահատմամբ հարցը խաղաղ բանակցութիւնների միջոցով լուծելու ռեսուրսը սպառուած չէր, ուստի իշխանութիւնների կողմից ուժի կիրառումը անհամարժէք էր եւ կարող է էապէս ապակայունացնել ներքաղաքական իրավիճակը: Մեր դիտարկմամբ դէպքերի նման զարգացումը պայմանաւորուած էր նաեւ ՀՀ նախագահի նախկին թեկնածու Արթուր Բաղդասարեանի իշխանութիւնների հետ համագործակցութիւն հաստատելու ժամանակավրէպ որոշմամբ, որով վերջնականապէս խախտուեց քաղաքական հաւասարակշռութիւնը: Դատապարտելով գործադրուած բռնութիւնները՝ կոչ եմ անում բոլոր քաղաքական ուժերին դրսեւորել պատշաճ պատասխանատուութիւն երկրի ճակատագրի նկատմամբ:

Երկխօսութեան այլընտրանքը բռնութիւնն է, իսկ բռնութիւնը բռնութիւն է ծնում:

Մենք պարտաւոր ենք գտնել քաղաքացիական համաձայնութեան հասնելու ուղիներ:

## «1996-ԻՆ ԷԼ Է ԺՈՂՈՎՐԴԻ ՎՐԱՅ ԿՐԱԿԵԼ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ»

*A1+*, 20:52

Լեւոն Տէր-Պետրոսեանն այսօր պատասխանելով *Ազատութիւն* ռադիոկայանի

թղթակցի հարցին, ըստ էութեան՝ բացայայտեց 1996 թուականի ռազմական գործողութիւնների կազմակերպչին: Իսկ հարցը հետեւեալն էր. քանի որ Տէր-Պետրոսեանը բազմիցս դատապարտել է 1996 թուականին ԱԺ-ի նախագահի եւ տեղակալի դէմ բռնութիւնները, «արդեօ՞ք այսօր դատապարտում է այն ժամանակ տանկերը փողոց հանելը, կալանավայրերի վարչութեան պետի կողմից քաղաքական գործիչների դէմ բռնութիւնները»:

Լեւոն Տէր-Պետրոսեանը ասաց. «Ոչ, չեմ դատապարտում, ես համաձայն եմ Քոչարեանի հետ, եթէ մենք, ես՝ ժողովրդով գրաւէինք որեւէ շէնք, նա իրաւունք ունէր ցրելու մեզ, այդ թւում՝ միջազգային օրէնքներով սահմանուած բոլոր տեխնիկական հնարաւորութիւններով. այո, այդ իրաւունքը ունէր. ցանկացած պետութիւն չպէտք է թոյլ տայ զանգուածի կողմից մասսայական անկարգութիւններ, պետական շէնքերի գրոհներ, պետական պաշտօնեաների առեւանգումներ, գլուխներ ջարդել: Եթէ մենք գրոհէինք որեւէ շէնք, ու Ռոբերտ Քոչարեանը անէր այն, ինչ արեց, դա կը լինէր լրիւ օրինական»: Լեւոն Տէր-Պետրոսեանը յիշեցրեց, որ այսօր առաւօտեան յարձակուել են ոչ թէ շէնքեր գրոհած զանգուածի, այլ խաղաղ նստացոյցի մասնակիցների վրայ:

Նա յիշեցրեց 1996թ դէպքերը, թէ ինչպէս էին ծեծի ենթարկել ԱԺ նախագահի տեղակալներին, իսկ նախագահին տարել անյայտ ուղղութեամբ. «Իսկ ամբողջ օպերացիան ղեկավարում էր Սերժ Սարգսեանը: Վանօ Սիրադեղեանը եւ Վազգէն Սարգսեանն ընդհանրապէս կապ չունէին այդ գործողութիւնների հետ: Սերժ Սարգսեանի տակ էին դրուած բոլոր անվտանգութեան ուժերը, եւ ազգային անվտանգութեան, եւ ոստիկանութեան, նոյնիսկ իմ թիկնազօրի ուժերը: Երբ տեղի ունեցաւ յարձակումը ԱԺ-ի վրայ, Սերժ Սարգսեանը ասաց. «Պէտք է կրակել. ես 10 վայրկեան եմ տատանուել եւ ասել եմ՝ օդ»: Նա յիշեցրեց, որ այդ ժամանակ հրազէնից վիրաւորուած ոչ մի մարդ չի եղել:

## ԴԱՆԱԿԱՀԱՐԵԼ ԵՆ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԻ

*A1+*, 20:52

ԱԺ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանին դանակահարել են: Նա այժմ գտնւում է Պռօշեան փողոցի՝ Շտապ Օգնութեան առաջին հիւանդանոցում: Լուրը հաստատեցին հիւանդանոցում. նրա վիճակը բաւարար է:

«Ժամը չեմ կարող ասել: Երեւանի քաղաքապետարանում, երբ ոստիկանները մտան ներս, մի քանի ոստիկաններ մնացին դրսում», - պատմեց Մարտիրոսեանը: - «Պրովոկատորներ էին միանաշանակ, որովհետեւ, երբ մարդիկ ուզում էին մտնել քաղաքապետարանի շէնքը, մենք կանգնեցինք՝ չթողեցինք: Ու զգացինք, որ ոստիկաններից մի քանիսի վրայ յարձակւում են: Բոլորով վազեցինք այնտեղ, որ թոյլ չտանք, որ այդ պրովոկատորները հարուածեն ոստիկաններին: Փոխգնդապետ էր, որին հարուածում էին, ես միանգամից պառկեցի իր մէջքի վրայ՝ այնպէս, որ իր գլուխը եւ մէջքը ապահով լինեն, հարուածներ չստանայ: Եւ այդ պահին ծակոցը զգացի»:

## ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՍՊԱՍՈՒՄ Է ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀՐԱՀԱՆԳԻՆ

*A1+*, 20:54

Միասնիկեանի արձանի շուրջ մարդկանց թիւը գնալով աւելանում է: Ֆրանսիայի, ՌԴ-ի դեսպանատների միջեւ ընկած հատուածում, շրջակայ այգիներում, ինչպէս ասում

են, ասեղ գցելու տեղ չկայ: Այսօր առաւօտեան Ազատութեան Հրապարակում իշխանութիւնների կողմից դաժան ծեծի ենթարկուած խաղաղ ցուցարարները չեն պատրաստւում հեռանալ եւ պահանջում են իրենց առաջնորդ Լեւոն Տէր-Պետրոսեանին:

Ցուցարարները առաջարկում էին երթով գնալ առաջին նախագահի տուն եւ նրան բերել հրապարակ, սակայն Նիկոլ Փաշինեանը, որին ժողովուրդը ձեռքերի վրայ հարթակ բարձրացրեց, յայտարարեց, որ անձամբ խօսել է Տէր-Պետրոսեանի հետ, որի ժողովրդին կոչ է անում չենթարկուել սադրանքների եւ մնալ Միասնիկեանի արձանի մօտ, մինչեւ առաջին նախագահը կը կարողանայ միանալ իր ընտրողներին: «Բերէք մեր նախագահին, Լեւոն նախագահ», - պահանջում են ցուցարարները: Բացի Տէր-Պետրոսեանին պահանջելուց՝ հաւաքուածները կրկին վանկարկում են. «Սերժիկ հեռացիր, Սերժիկ մարդասպան»:

Ժողովուրդը չի բացառում, որ զինուած ոստիկանները իշխանութիւնների հրահանգով կարող են կրկին յարձակուել սեփական ժողովրդի վրայ, եւ ցուցարարները նաեւ հսկում են դէպի Միասնիկեանի արձան տանող բոլոր մուտքերը:

Փաշինեանը հաւաքուածներին պատմեց, թէ այսօր վաղ առաւօտեան ինչպէս են զինուած ոստիկանները յարձակուել խաղաղ ցուցարարների վրայ, իսկ Ռոբերտ Քոչարեանի թիկնազօրը մեկուսացրել առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանին եւ նրան տարել տուն՝ ենթարկելով տնային կալանքի: Ցուցարարները յայտարարեցին, որ չեն պատրաստւում հեռանալ իրենց տեղից, քանի դեռ ՀՀ նախագահ չի ճանաչուել Լեւոն Տէր-Պետրոսեանը: «Իշխանութիւնը արեց կոպիտ սխալ եւ այդ սխալից մենք օգտուելու ենք՝ ջարդելու ենք իրենց գլխին», - խոստացաւ Նիկոլ Փաշինեանը: Ընդդիմութեան առաջնորդները շնորհակալութիւն յայտնեցին այն 50 ցուցարարների, որոնք Ազատութեան Հրապարակից եկել էին ՀՀ-ի Ֆրանսիայի դեսպանութեան մօտ եւ կարողացել համախմբել միւս ցուցարարներին: Այս պահին ցուցարարները շարունակում են իրենց խաղաղ հանրահաւաքը:

Հանրահաւաքին միացան նաեւ Արամ Մանուկեանն ու Հրանտ Բագրատեանը, որոնք այսօր առաւօտեան ձերբակալուել էին ոստիկանների կողմից:

Ժողովրդին դիմեց նաեւ Արամ Սարգսեանը եւ ժողովրդի նկատմամբ իշխանութեան կողմից ուժի կիրառումը գնահատեց՝ «Ախմախութեան կանխավարկած»: Ի դէպ, այսօր բացի «Սերժիկ հեռացում, Սերժիկ մարդասպան», ժողովուրդը նաեւ վանկարկում էր. «Արթուր դաւաճան, Արթուր դաւաճան»:

Արթուր Բաղդասարեանի հասցէին հնչող վանկարկումները ընդհուպ հայհոյանքներ էին պարունակում: «Արթուրիկն իր պատիւն ու յարգանքը փոխեց Սերժիկի քարտուղարուհու պաշտօնի հետ: Արթուրիկը իր կնիքը դրեց այսօր առաւօտեան ժողովրդի դէմ իրականացուած խայտառակութեան վրայ: Այս ամէնը նաեւ նրա խղճի վրայ, որի համար դեռ պատասխան է տալու», - ասաց այսօր Ազատութեան Հրապարակում ծեծի ենթարկուածներից մէկը:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ԿԱՐՈՂ Է ԱՐՏԱԿԱՐԳ ԻՐԱՎԻՃԱԿ ՅԱՅՏԱՐԱՐԵԼ

*A1+*, 21:03

Արտգործնախարար Վարդան Օսկանեանն այսօր ասուլիս է տուել Ռոբերտ Քոչարեանի փոխարէն: Նախապէս յայտարարուած էր, որ նա պէտք է վարի ասուլիսը, սակայն

լրագրողներին, ընդ որում, ոչ բոլորին՝ *Ա1+*-ը տեղեկացուած չի եղել ասուլիս մասին, ներկայացել է Վարդան Օսկանեանը: Նա յայտարարել է, թէ Հայաստանի նախագահը ձգտում է իրավիճակի քաղաքական լուծման, սակայն եթէ այն վերածուի կրիտիկականի, ապա Քոչարեանը պատրաստ է հրամանագիր ստորագրել երկրում յատուկ դրութիւն յայտարարելու մասին:

Հայաստանի իշխանութիւնն ընդդիմութեանը առաջարկում է վերադառնալ քաղաքական դաշտ եւ կարգաւորել ստեղծուած բարդ իրավիճակը:

Մեկնաբանելով հարցը, թէ ինչու Ռոբերտ Քոչարեանը անձամբ չի նախաձեռնում Լեւոն Տէր-Պետրոսեանի հետ երկխօսութիւն, Վարդան Օսկանեանը նկատել է, որ Ռոբերտ Քոչարեանը ապրիլի 9-ին վայր է դնում իր լիազօրութիւնները, եւ աւելի նպատակայարմար է, որ բանակցողը լինի Սերժ Սարգսեանը: Իսկ վարչապետը, ըստ Վարդան Օսկանեանի, արել է իրենից կախուած ամէն ինչ, գործակցութեան եւ կառավարութիւն կազմելու կոչ անելով բոլոր թեկնածուներին առանց բացառութեան: Վարդան Օսկանեանը նշել է, թէ Տէր-Պետրոսեանը միակն էր, որ կտրականապէս մերժել է այդ առաջարկը:

Վարդան Օսկանեանը յայտարարեց, որ ընդդիմութեան հանրահաւաքը ցրելու համար ոստիկանութեան ուժի կիրառումը համարժէք է եղել իրավիճակին: Արտաքին Գործերի նախարարը յայտարարել է, թէ ցոյցը ցրելու պահին Ազատութեան Հրապարակում եղել է մօտ հազար մարդ: Ինչպէս նշել է Օսկանեանը, առաջին մօտեցման ժամանակ ոստիկանութիւնը չի ունեցել համապատասխան պաշտպանական միջոցներ, քանի որ չի ունեցել ցոյցը ցրելու նպատակ: «Հիմնական նպատակը եղել է զէնքի առկայութեան մասին տեղեկատուութեան ստուգումը: Ակցիայի մասնակիցների կողմից ուժի կիրառումից յետոյ, ոստիկանները նահանջել են եւ նրանց փոխարինել են արդէն առաւել պատրաստուած ոստիկանները», յայտարարել է Վարդան Օսկանեանը:

Անդրադառնալով Լեւոն Տէր-Պետրոսեանի տնային կալանքի թեմային, նա ասել է, թէ այդպիսի բան չկայ, պարզապէս օրէնքը Տէր-Պետրոսեանին նախատեսում է թիկնազօր, եւ այն, ելնելով իրավիճակից, չի կարող նրան ուղեկցել այնպիսի միջոցառումների, որտեղ կարող է սպառնալիք լինել նրա անվտանգութեանը: «Նա ունի իրաւունք հրաժարուել թիկնազօրից, եւ նրան այդ մասին տեղեկացրել են, սակայն Տէր-Պետրոսեանը տուեալ պահին չի հրաժարուել թիկնազօրից: Այս պահին, Լեւոն Տէր-Պետրոսեանի զինակիցների շրջանում, յայտնի մարդկանցից, որեւէ մէկը ձերբակալուած չէ», - յայտարարել է Վարդան Օսկանեանը:

## ԵԱՀԿ ՆԱԽԱԳԱՀԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒՄ Է

*Ա1+*, 21:04

ԵԱՀԿ Գործող Նախագահ, Ֆինլանդիայի արտգործնախարար Իլկա Կաներվան դատապարտել է խաղաղ ցուցարարների հանդէպ ուժի կիրառումը այսօր Երեւանում:

«Ես յորդորում եմ իշխանութիւններին ցուցաբերել մաքսիմալ զսպուածութիւն: Ես անհանգստացած եմ այն փաստով, որ տեղեկութիւնների համաձայն կան վիրաւորներ: Յորդորում եմ իշխանութիւններին ազատ արձակել ձեռբակալուածներին եւ կրկին երկխօսութեան կոչ եմ անում իշխանութիւններին եւ ընդդիմութեանը», ասաց նախարարը:

Երեւանում փետրուարի 26-ին հայկական պաշտօնեաների հետ ունեցած հանդի-

պումների ժամանակ նախարարը նշել էր, որ ԵԱՀԿ-ն պատրաստ է շարունակելու աջակցել Հայաստանին ժողովրդավարութեան ամրապնդման եւ ԵԱՀԿ եւ այլ դիտորդների կողմից ս.թ. փետրուարի 19-ին Հայաստանում անցկացուած նախագահական ընտրութիւնների ընթացքում արձանագրուած թերութիւնների շտկման հարցերում:

«ԵԱՀԿ-ն կարեւորում է երկխօսութեան դերը կայունութեան համար: Հայաստանի զարգացման համար այս կարեւոր ժամանակաշրջանում պէտք է անել ամէն ինչ առկայ լարուածութեան սրումից խուսափելու համար», ասաց նախարար Կաներվան, որն այս շաբաթ այցելել է նաեւ Ադրբէջան եւ Վրաստան իր Հարաւային Կովկաս կատարած այցի շրջանակներում:

## ԿՐԱԿՈՑՆԵՐ ԵՒ ԱՐՑՈՒՆՔԱԲԵՐ ԳԱԶ

*Ա1+*, 21:15

Երեւանում լսւում են կրակոցներ: Զօրքը կրակում է օդ: Արդէն արցունքաբեր գազ են բաց թողել:

Հանրապետութեան Հրապարակում զօրք է լցուել: Քիչ առաջ այնտեղ մտան ռազմական ոստիկանութեան 4 հետեւակի մարտական մեքենաներ:

Միասնիկեանի արձանի մօտ հազարաւոր մարդիկ շարունակում են կանգնած մնալ: Նրանք անգամ պատրաստ են դիմադրութիւն ցոյց տալ:

Ինչպէս հաղորդում է *Ա1+*-ի թղթակիցը՝ մինչեւ զօրքի՝ ժողովրդին հասնելը՝ աւտոբուսներ ու բարիկադներ կան:

Իսկ դրանից առաջ Միասնիկեանի արձանի մօտ արդէն կրակներ են վառում, որ մարդիկ կարողանան տաքանան: Քիչ առաջ Նիկոլ Փաշինեանը յայտարարեց Լեւոն Տէր-Պետրոսեանի ուղերձը, որով նա կոչ էր անում չկոտրուել եւ մնալ հրապարակում:

Ցուցարարների մի մեծ խումբ, ոստիկանների դիմաց կանգնած, անընդմէջ վանկարկում էր. «Լեւոն, Լեւոն», «Ամօթ, ամօթ»:

Ի դէպ, զինուած զօրքը թաքնուել է ժամկէտային զինծառայողների յետեւում՝ նրանց կանգնեցնելով առաջին շարքերում:

## ՑՈՅՑԻ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐՆ ԱՍՈՒՄ ԵՆ, ԹԷ ԳԱԶ ԵՆ ԿԻՐԱՌԵԼ

*Lragir.am*, 21:29

Ֆրանսիայի դեսպանատան մօտ շարունակւում է ինքնաբուխ հանրահաւաքը: Հանրահաւաքի մասնակիցների պնդմամբ, ոստիկանութիւնն արցունքաբեր գազ է կիրառել, շատերն են բողոքում աչքերի ցաւից: Իր հերթին, լսւում են օդ կրակոցներ:

## ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ. ՆԵՐԴՐՈՒԵԼ ԵՆ ՍԱԴՐԻՉՆԵՐ

*Lragir.am*, 22:24

Ժառանգութիւն կուսակցութիւնը խստագոյնս դատապարտում է ս.թ. մարտի մէկի առաւօտեան Ազատութեան Հրապարակում տեղի ունեցած դէպքերը եւ դրանց շարունակուող զարգացումները: Անթոյլատրելի համարելով խաղաղ նստացոյցի մասնակիցների հանդէպ իրագործուած բռնութիւնները, մենք փաստում ենք, որ չբաւարարուելով դրանով՝ ոստիկանութիւնը շարունակեց իր ապօրինի բռնարարքները արդէն ՀՀ-ում Ֆրանսիայի դեսպանատան առջեւ հաւաքուած խաղաղ ցուցարարների հանդէպ՝ նոր

յարձակում գործելով նրանց վրայ: Դէպքի վայրում են գտնուել նաեւ Ժառանգութիւն կուսակցութեան պատգամաւորներ Անահիտ Բախշեանը, Ստեփան Սափարեանը, Արմէն Մարտիրոսեանը, Զարուհի Փոստանջեանը եւ Վարդան Խաչատրեանը, որոնք կանգնել են ժողովրդի եւ ոստիկանութեան միջեւ՝ փորձելով սթափեցնել իրականութեան զգացողութիւնը կորցրած «օրէնքի պահապաններին»:

Մենք մեր հիացմունքն ենք յայտնում ժողովրդի զսպուածութեան եւ սադրանքներին չենթարկուելու պատրաստակամութեան կապակցութեամբ: Սակայն մեզ համար նաեւ ակնյայտ է, որ ցուցարարների մէջ իշխանութիւնների կողմից ներդրուել են բազմաթիւ սադրիչ-գաղտնի գործակալներ, որոնք պարբերաբար փորձեր են կատարում սադրել բախում ոստիկանութեան հետ, սակայն դա կանխւում է ժողովրդի, Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի եւ Ժառանգութեան ակտիւիստների կողմից: Նման սադրանքների փորձերից մէկն էր քաղաքացիական հագուստներով մի խումբ անձանց կողմից Երեւանի քաղաքապետարանի առջեւ փոխգնդապետի կոչում ունեցող մի ոստիկանի հանդէպ դաժան ծեծը, որը կանխուել է Ժառանգութիւնից ԱԺ պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանի կողմից: Ժողովրդական պատգամաւորը ստիպուած է եղել սեփական մարմնով փակել ոստիկանին, որից յետոյ սադրիչներից մէկը դանակահարել է նրան եւ դիմել փախուստի: Արմէն Մարտիրոսեանը տեղափոխուել է շտապօգնութեան 3-րդ հիւանդանոց, ուր նրան ցոյց է տրուել շտապ վիրաբուժական օգնութիւն: Ի դէպ, սադրիչ խմբի անդամներից մէկը, ըստ ականատեսների, մինչեւ դանակահարութիւնը գոռացել է, որ «էս էն դեպուտատն ա, որ Սերժին հարց էր տալիս»:

Քանի որ նման կարգի սադրանքները ակնյայտօրէն լաւ պլանաւորուած են՝ մենք մեծ վտանգ ենք զգում դրանց կրկնութեան, որի կապակցութեամբ եւս մէկ անգամ զգօնութեան կոչ ենք անում խաղաղ ցոյցի մասնակիցներին: Սադրանքների կազմակերպուածութեան հանգամանքը ակներեւ է նաեւ այն փաստից, որ իշխանութիւնների վերահսկողութեան տակ գտնուող հեռուստաընկերութիւնները Արմէն Մարտիրոսեանի հարցազրոյցը մոնտաժելով՝ այս իրադարձութիւնն այնպէս են ներկայացրել, կարծես թէ ցուցարարներն են նրան դանակահարել՝ ակնյայտօրէն հող նախապատրաստելով խաղաղ ցուցարարների հանդէպ նոր սադրանքների եւ բռնութիւնների համար:

Մենք խստօրէն դատապարտում ենք նաեւ իշխանութիւնների կողմից ժողովրդի դէմ սանձազերծուած գործողութիւններին Հայաստանի սահմանները պաշտպանելուն կոչուած ՀՀ ազգային բանակի ներքաշումը եւ երիտասարդ շարքային զինուորականներին՝ որպէս պատնէշ օգտագործելը:

Մենք ցնցուած ենք ոստիկանների կողմից՝ առանց շտապ բուժօգնութիւն տրամադրելու՝ բազմաթիւ վիրաւոր քաղաքացիների, այդ թւում արնածոր վէրքերով անչափահասների ձերբակալման փաստի կապակցութեամբ, որի ականատեսներն են եղել առաւօտեան ժ 9:00-ի շրջակայքում ՀՀ Ոստիկանութեան Կենտրոն բաժանմունքի առջեւ ՀՀ ԱԺ Ժառանգութիւն կուսակցութեան պատգամաւորները:

Ժառանգութիւնը համարում է, որ իշխանութիւնների այս յանցագործ գործողութիւնները իրենց բնոյթով սադրիչ են եւ միտուած են իրավիճակի յետագայ շիկացմանը: Յայտարարում ենք, որ այս գործողութիւնների անկանխատեսելի հետեւանքների համար ողջ պատասխանատուութիւնն ընկնում է գործող իշխանութիւնների վրայ եւ պահանջում ենք անյապաղ դադարեցնել զանգուածային բռնութիւնները խաղաղ ցուցարարների հանդէպ:

01.03.2008թ., ք. Երեւան

## ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՊԱՇՏՊԱՆՈՒՈՒՄ Է ՇԷՆՔԵՐԻՑ ԻՋՆԵԼՈՎ

*A1+*, 21:41

Այս պահին Պարոնեան փողոցում շէնքերի բնակիչներն իրենց ցասումն են արտայայտում՝ իջել եւ վիճում են զինուորականների հետ: Նրանք պահանջում են հեռանալ իրենց փողոցից:

## ԿՐԿԻՆ ԾԵԾԵԼ ԵՆ ՑՈՒՑԱՐԱՐՆԵՐԻՆ

*A1+*, 21:48

Այս պահին մի քանի խիզախ մարդ, որ փորձել են ի նշան բողոքի բարձրանալ կառավարութեան շէնքի ուղղութեամբ, դաժան ծեծի են ենթարկուել մահակաւոր ոստիկանների կողմից, իսկ այս երեւոյթին կանգնած հետեւել են ՀՀ փոխվարչապետ Յովիկ Աբրահամեանը, եւ Էրեբունու թաղապետ Միհր Սեդրակեանը:

## ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՅԵՏ ՄՂԵՑ ԱՌԱՋԻՆ ՅԱՐՁԱԿՈՒՄԸ

*A1+*, 22:00

Գրիգոր Լուսաւորիչ փողոցն այսօր ժամը 21-ի սահմաններում մարտի դաշտ էր յիշեցնում: ՀՀ զինուած ուժերը յարձակուեցին սեփական ժողովրդի վրայ, որը փորձում էր ինքապաշտպանուել ձեռքի տակ եղած փայտերով, քարերով: Մօտ մէկ ժամ տեւած յարձակման ընթացքում ժողովրդի վրայ լուսատու փամփուշտներ, արցունքաբեր գազ եւ պայթուցիկներ էին նետում: Ժողովուրդը «Լեւոն նախագահ» վանկարկելով, փայտ ու քարերով մինչեւ Մաշտոցի փողոց քշեց զինուած ուժերին: Այդ ընթացքում ընդդիմութեան առաջնորդները իրար յաջորդելով ելոյթներ էին ունենում եւ վստահեցնում, որ իրենք արդէն յաղթել են: «Եթէ մենք այստեղից չհեռանանք յաղթանակով, մենք չենք կարողանալու նայել մեր երեխաների աչքերին», - ասաց Արարատ Զուրաբեանը:

Ժողովուրդը յետ մղելով զինուած ուժերի առաջին յարձակումը, նախապատրաստւում է նոր ինքնապաշտպանութեան՝ համոզուած չլինելով, որ իշխանութիւնները այսօր արդէն երրորդ, չորրորդ անգամները ուժ չեն գործադրի իրենց նկատմամբ: Բացի Լեւոն Տէր-Պետրոսեանից, նրա շուրջ հաւաքուած բոլոր ուժերը հարթակում են եւ քաջալրում են իշխանութիւններին: «Եթէ նրանք փորձեն կրկին յարձակուել, այնպիսի հակայարձակ կը տանք, որ մինչեւ Բաքու կը հասնեն», - յայտարարեց Միասնիկ Մալխասեանը:

## ԱՅՐՒՈՒՄ ԵՆ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐ

*A1+*, 22:00

Մաշտոցի Պողոտայի խաչմերուկից մինչեւ կամրջի մօտ կայանուած ոստիկանութեան բոլոր մեքենաները ջարդուփշուր են արուած, այրւում են երկու վիլիս, չորս մարդատար մեքենայ, մեծ քանակութեամբ մարդիկ են հաւաքուած: Այստեղ տեղակայուած են եղել նաեւ ռազմական ուժեր, որոնք մարդկանց դիմադրութիւնից վախեցած փախուստի են դիմել, ըստ շրջանառուող լուրերի, դիրքաւորուել են դէպի Պռօշեան հատուած, սակայն կամրջի վրայ շատ մարդիկ կան հաւաքուած, իսկ երիտասարդները մարտական տրամադրուած շարունակում են դիմադրութիւնը:

Այս պահին մեծ թուով զինուորական ստորաբաժանումներ են կուտակուած

կառավարութեան շէնքի մօտ: Հայաստանի սահմանազօտում պայմանագրային զինծառայութիւն իրականացնողները եւ ռազմական ուսումնական հաստատութեան կուրսանտները հաւաքուած են կառավարութեան շէնքի մօտ:

Ի դէպ, Լէօի փողոցի վրայ ժամը 22-ի սահմաններում տղամարդու դիակ է եղել՝ ջլուխը ջախջախուած:

Բազմաթիւ շտապ օգնութեան աւտոմեքենաներ են սլանում դէպքի վայր: Կան բազմաթիւ վիրաւորներ եւ դիմադրող ցուցարարների եւ ոստիկանների շրջանում:

## ԱՐՏԱԿԱՐԳ ԴՐՈՒԹԻՒՆ

*A1+*, 22:30

Նախագահ Ռոբերտ Քոչարեանը մարտի 1-ին հրամանագիր է ստորագրել արտակարգ դրութիւն յայտարարելու մասին.

«Հայաստանի Հանրապետութիւնում սահմանադրական կարգին սպառնացող վտանգը կանխելու եւ բնակչութեան իրաւունքներն ու օրինական շահերը պաշտպանելու նպատակով, ղեկավարուելով Հայաստանի Հարապետութեան Սահմանադրութեան 55-րդ յօդուածի 14-րդ եւ 117-րդ յօդուածի 6-րդ կէտերով՝ **որոշում եմ**.

1. Երեւան քաղաքում 2008 թուականի մարտի 1-ից 20 օր ժամկէտով յայտարարել արտակարգ դրութիւն:

2. Արտակարգ դրութիւն յայտարարելու համար հիմք ծառայող հանգամանքների վերացման եւ այլ հրատապ հարցերի կանոնակարգման եւ իրականացման ղեկավարումը վերապահել Հայաստանի Հանրապետութեան Նախագահին:

3. Արտակարգ դրութեան իրաւական ռեժիմի ապահովումը վերապահել Հայաստանի Հանրապետութեան կառավարութեանն առընթեր Հայաստանի Հանրապետութեան ոստիկանութեանը եւ Հայաստանի Հանրապետութեան պաշտպանութեան նախարարութեանը:

4. Սահմանել արտակարգ դրութիւն յայտարարուած տարածքում հետեւեալ ժամանակաւոր սահմանափակումները՝

1) ժողովների, հանրահաւաքների, ցոյցերի, երթերի եւ այլ զանգուածային միջոցառումների իրականացման արգելում.

2) գործադուլների եւ կազմակերպութիւնների գործունէութիւնը դադարեցնող կամ կասեցնող այլ միջոցառումների արգելում.

3) իրաւապահ մարմինների կողմից, անհրաժեշտութեան դէպքում, անձանց, տրանսպորտային միջոցների տեղաշարժի սահմանափակում եւ զննութեան իրականացում.

4) զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պետական մարմինների պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում.

5) առանց համապատասխան պետական մարմինների թոյլտուութեան՝ թռուցիկների եւ այլ ձեւով քաղաքական քարոզչութեան իրականացման արգելում.

6) արտակարգ դրութիւն յայտարարելու համար հիմք ծառայող հանգամանքների վերացմանը խոչընդոտող կուսակցութիւնների եւ այլ հասարակական կազմակերպութիւնների գործունէութեան ժամանակաւոր կասեցում.

7) արտակարգ դրութեան իրաւական ռեժիմը խախտած եւ տուեալ տարածքում

չբնակուող անձանց վտարում՝ նրանց միջոցների հաշուին, իսկ միջոցներ չլինելու դէպքում՝ Հայաստանի Հանրապետութեան պետական բիւջէի միջոցների հաշուին՝ կատարուած ծախսերի յետագայ փոխհատուցման պայմանով:

5. Հայաստանի Հանրապետութեան կառավարութեանը՝ ձեռնարկել անհրաժեշտ միջոցառումներ սոյն հրամանագրի իրականացումն ապահովելու ուղղութեամբ:

6. Սոյն հրամանագիրն ուժի մէջ է մտնում տեղեկացման պահից»:

## ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՈՒՂԵՐՁԸ ԺՈՂՈՎՐԴԻՆ

*Lragir.am*, 22:39

Յարգելի հայրենակիցներ,

Հայաստանի Հանրապետութեան Նախագահի 2008 թուականի ընտրութիւններում պարտութիւն կրած՝ ինքնաառաջադրուած թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանն ու իրեն շրջապատող արկածախնդիրների մի խումբ, չհաշտուելով կրած պարտութեան իրողութեան հետ, դիմել են ապօրինի գործողութիւնների: Դրանց թւում են՝ զէնքի եւ զինամթերքի կուտակումն ու տեղափոխումը մարդաշատ վայրեր, որտեղ դրանց առկայութիւնը կարող է լուրջ վտանգ ներկայացնել քաղաքացիների կեանքին եւ առողջութեանը, առանց իրազեկման հանրահաւաքների եւ երթերի անցկացումը:

Չնայած նրան, որ 2008 թուականի նախագահական ընտրութիւններին մասնակցող թեկնածուների կողմից պահանջուած վերահաշուարկները որեւէ լուրջ խախտումներ չեն յայտնաբերել, չի ներկայացուել որեւէ գանգատ Հայաստանի Հանրապետութեան վարչական դատարաններ, իսկ Սահմանադրական Դատարանում Ընտրական Օրէնսգրքով նախատեսուած կարգով ընթանում է ընտրութիւնների արդիւնքների գանգատարկման ուսումնասիրութիւն, թեկնածու Տէր-Պետրոսեանի կողմնակիցները շարունակում են վիճարկել ընտրութիւնների ելքն ապօրինի միջոցներով: Ընդդիմութեան ներկայացուցիչների մի խումբ մարտի 1-ին անկարգութիւններ են իրականացրել Երեւանի կենտրոնում՝ պատճառելով վնաս քաղաքացիների եւ պետութեան գոյքին, ինչպէս նաեւ ստեղծելով ուղղակի սպառնալիք քաղաքացիների անվտանգութեան համար, ինչը վիճակը դարձնում է անվերահսկելի:

Այդ գործողութիւնների թիրախը Հայաստանի Հանրապետութեան ձեռք բերած կայունութիւնն է, իսկ հետեւանքը՝ միջազգային հեղինակութեան խաթարումը: Որպէս Հայաստանի Հանրապետութեան Սահմանադրութեան պահպանման երաշխաւոր՝ որեւէ մէկին չեմ թոյլատրելու վտանգել մեր պետութեան սահմանադրական կարգը:

Հայաստանի Հանրապետութեան սահմանադրական կարգին սպառնացող անմիջական վտանգը կանխելու նպատակով, ղեկավարուելով Սահմանադրութեան 55-րդ յօդուածի 14-րդ կէտի դրոյթներով, ես խորհրդակցել եմ Ազգային Ժողովի նախագահի եւ վարչապետի հետ, որից յետոյ ստորագրել եմ հրամանագիր, որով Երեւան քաղաքում մարտի 1-ից 20 օր ժամկէտով յայտարարել եմ արտակարգ դրութիւն:

Հրամանագրով նախատեսուած են արտակարգ դրութեան հետեւեալ միջոցառումները.

1) ժողովների, հանրահաւաքների, ցոյցերի, երթերի եւ այլ զանգուածային միջոցառումների իրականացման արգելում.

2) գործադուլների եւ կազմակերպութիւնների գործունէութիւնը դադարեցնող կամ

կասեցնող այլ միջոցառումների արգելում.

3) իրաւապահ մարմինների կողմից, անհրաժեշտութեան դէպքում, անձանց, տրանսպորտային միջոցների տեղաշարժի սահմանափակում եւ զննութեան իրականացում.

4) զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում.

5) առանց համապատասխան պետական մարմինների թոյլտուութեան թռուցիկների եւ այլ ձեւով քաղաքական քարոզչութեան իրականացման արգելում.

6) արտակարգ դրութիւն յայտարարելու համար հիմք ծառայող հանգամանքների վերացմանը խոչընդոտող կուսակցութիւնների եւ այլ հասարակական կազմակերպութիւնների գործունէութեան ժամանակաւոր կասեցում.

7) արտակարգ դրութեան իրաւական ռեժիմը խախտած եւ տուեալ տարածքում չբնակուող անձանց վտարում՝ նրանց միջոցների հաշուին, իսկ միջոցներ չլինելու դէպքում՝ Հայաստանի Հանրապետութեան պետական բիւջէի միջոցների հաշուին՝ կատարուած ծախսերի յետագայ փոխհատուցման պայմանով:

Բոլորին զսպուածութեան եւ խոհեմութեան կոչ եմ անում: Այս իրավիճակում աւելի քան երբեւէ անհրաժեշտ է դրսեւորել համախմբուածութիւն, անշեղօրէն կատարել օրէնքի պահանջները: Վստահեցնում եմ, որ արտակարգ դրութիւնը կը դադարեցուի դրա յայտարարելու համար հիմք ծառայող հանգամանքների վերացումից անմիջապէս յետոյ:

## Կ’ԱՇԽԱՏԵՆՔ ՅԱՏՈՒԿ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՎ

*A1+*, 23:15

Յարգելի ընթերցողներ, Երեւանում յայտարարուած է յատուկ դրութիւն, եւ այդ պայմաններում օրէնքի համաձայն արգելւում է տեղեկատուութիւն տրամադրել քաղաքական իրավիճակի եւ զարգացումների մասին: Յատուկ դրութիւնը կը տեւի 20 օր, այդ ընթացքում մեր կայքում կարող էք կարդալ միայն մշակութային, սպորտային լուրեր ու պաշտօնական լրատուութիւն: Հայցում ենք ձեր ներողամտութիւնը:

## ՀՀ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 23:25

ՀՀ Ոստիկանութիւնը տարածել է հետեւեալ յայտարարութիւնը.

«Երեւանի քաղաքապետարանի շրջակայքում հաւաքուած բազմութիւնը վերջին ժամերին դարձել է անկառավարելի: Սկսուել են զանգուածային անկարգութիւններ: Ամբոխը հրկիզել է աւտոմեքենաներ, այդ թւում՝ եւ ոստիկանական: Աւերուել եւ թալանուել է Մոսկուայի Տունը: Աւերւում են շրջակայ գրասենեակներն ու խանութները: Յարձակումներ են կատարուել ոստիկանութեան զօրքերի վրայ, ինչի հետեւանքով 8 ծառայողներ ստացել են հրազէնային վնասուածքներ, որոնցից՝ եւ ծանր: Անկառավարելի ամբոխի յարձակումները շարունակւում են: ՀՀ ոստիկանութիւնը քաղաքացիներին կոչ է անում ցուցաբերել ողջամտութիւն եւ զսպուածութիւն, անառարկելիօրէն կատարել արտակարգ դրութեամբ սահմանուած պահանջներն ու պայմանները»:

# ՄԱՐՏԻ 1. ԻՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԸՆԹԱՑՔԸ

*Հետք*, 09:10

**7 հոգի վերակենդանացման բաժնում են**

Մեր աղբիւրը յայտնեց, որ Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ հիւանդանոցում այս պահին 6 քաղաքացի եւ 1 ոստիկան գտնւում են վերակենդանացման բաժնում:

Ժամը 11:00-ին Լեւոն Տէր-Պետրոսեանը մամլոյ ասուլիս էր յայտարարել իր առանձնատանը: Թէեւ ոստիկանները շրջափակել էին առաջին նախագահի առանձնատունը, լրագրողներին մի քանի կէտէրում ստուգելուց յետոյ, այնուամենայնիւ, թոյլ են տուել մտնել: Ներկայ են մօտ 40 լրագրող եւ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորները եւ ԵԱՀԿ դիտորդներ: Այս պահին առաջին նախագահը ներկայացնում է տեղի ունեցածի մանրամասները: Ըստ Տէր-Պետրոսեանի՝ օգտագործուել են մահակներ եւ էլեկտրաշոկ:

10.20

Այսօր Ազատութեան Հրապարակում ոստիկանութեան եւ յատուկ ջոկատայինների իրականացրած գործողութեան արդիւնքում տուժել են տասնեակ խաղաղ ցուցարարներ: Նրանց հիմնականում տեղափոխել են Գրիգոր Լուսաւորիչ հիւանդանոց: Մեր թղթակիցը այժմ այնտեղ է եւ փորձում է տեղեկութիւններ ստանալ: Մէկ այլ աղբիւրի հաղորդմամբ վիրաւորներին տեղափոխել են նաեւ Կոնգրէս հիւրանոց: Այժմ ցուցարարների մի խումբ գտնւում է Ֆրանսիական դեսպանատան դիմաց:

Պարզուել է նաեւ խաղաղ ցուցարարների ցրելու գործողութիւնը ղեկավարել է Ռոբերտ Քոչարեանի թիկնազօրի պետ Գրիշա Սարգսեանը: Հէնց նա է փորձել ձերբակալել Լեւոն Տէր-Պետրոսեանին:

10:30

Մեր թղթակիցները այժմ գտնւում են Ազատութեան Հրապարակին յարող փողոցներում:

Նրանց հաղորդմամբ ոստիկանները դիտմամբ միջադէպեր են սարքում անցորդների հետ, այնուհետեւ նրանց ծեծում են: Իսկ մարդիկ տարբեր փողոցներով շարժւում են դէպի Ազատութեան Հրապարակ: Քիչ առաջ կարմիր բերետաւորները մօտ 10 ցուցարարների, Պուշկին-Մաշտոց փողոցների խաչմերուկում ծեծելով, լցրել են մեքենաները եւ տեղափոխել անյայտ ուղղութեամբ:

Մեր թղթակիցը լսել է երկու ոստիկանների հետեւեալ խօսակցութիւնը Թումանեան փողոցում: Ծիծաղող ոստիկանին յանդիմանեց մէկ այլ ոստիկան. «Արա երեք զոհ կայ, դու բերանդ բացում ես»: Այս տեղեկութիւնը հնարաւոր չեղաւ ճշտել պաշտօնական աղբիւրներից: Առայժմ որեւէ պաշտօնական հաղորդագրութիւն չի տարածուել:

Մինչ այդ մեր տարբեր աղբիւրներ հաղորդում էին, որ եղել է մէկ զոհ:

11:00

Մեր թղթակիցը յայտնում է, որ ժամը 11:00-ին Մաշտոց-Թումանեան խաչմերուկում՝ SAS խանութի հարեւանութեամբ, ոստիկանները յարձակուել են կանգառում կանգնած խաղաղ քաղաքացիների վրայ: Ժողովուրդը բղաւել է՝ ի՞նչ էք անում: Կանգառում է

գտնուել նաեւ մի արտասահմանցի զոյգ, ոստիկանների յարձակման ժամանակ արտասահմանցի կնոջ ուշքը գնացել է: Ուշադրութիւն է եղել նաեւ մի երիտասարդ աղջկայ մօտ: Երիտասարդ տղաներից մէկն այդ պահին բղաւել է ոստիկանների վրայ:

**Ծեծուել է Գրիգոր Խաչատրեանը**

Ժամը 12:00-ին Մաշտոց-Թումանեան խաչմերուկի մօտ գտնուող STAR խանութի մօտ ծեծի է ենթարկուել նկարիչ Գրիգոր Խաչատրեանը:

Լեւոն Տէր-Պետրոսեանի առանձնատանը գտնուող մեր թղթակիցը յայտնում է, որ ՀՀ նախկին վարչապետ Հրանտ Բագրատեանը ձերբակալուած է, իսկ Տէր-Պետրոսեանին զգուշացրել են՝ տանից դուրս չգալ:

13:25

Արշակունեաց պողոտայից դէպի Ֆրանսիայի դեսպանատուն է շարժւում զօրքը՝ զինուած զրահապատ տեխնիկայով եւ մէկ զրահապատ մեքենայով: Հաւաքուած բազմութիւնը փակել է զօրքի դիմացը եւ վանկարկում՝ Լեւոն, Լեւոն:

14:05

Մեր թղթակիցը, որն այս պահին գտնւում է Ֆրանսիայի դեսպանատան մօտ, հաղորդում է, որ քաղաքի տարբեր հատուածներից մարդկանց հոսքը դէպի դեսպանատուն շարունակւում է: Արդէն հաւաքուել է մի քանի տասնեակ հազար մարդ: Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի ներկայացուցիչ Լեւոն Զուրաբեանը հաւաքուած ժողովրդին տեղեկացրել է, որ շտաբը քննարկում է առաջիկայ ժամերի գործողութիւնների պլանը: Ժողովուրդը պահանջում է իրենց մօտ բերել Լեւոն Տէր-Պետրոսեանին եւ վանկարկում է՝ «Արթուր, դաւաճան»:

Յիշեցնենք, որ երէկ Արթուր Բաղդասարեանը քաղաքական համագործակցութեան համաձայնագիր է կնքել Սերժ Սարգսեանի հետ եւ համաձայնել ստանձնել Անվտանգութեան խորհրդի քարտուղարի պաշտօնը: Երէկ երեկոյեան Հանրային հեռուստատեսութեան *Հայլուր* լրատուական թողարկմամբ ցոյց էին տալիս, թէ ինչպէս նրանք շամպայնի բաժակները չխկացնելով՝ շնորհաւորեցին միմեանց:

Մեր թղթակցի հաղորդմամբ՝ դեսպանատան դիմաց տեղակայուած զօրքի մի մասը հանուել է: Ոստիկանների կուտակումներ կան Մատենադարանի, Օպերայի եւ Զաքեան փողոցի հարեւանութեամբ գտնուող այգու մօտ:

**Ժողովուրդը պահանջում է Լեւոն Տէր-Պետրոսեանին**

Տասնեակ հազարաւոր մարդիկ, որոնք հաւաքուած են ՀՀ-ում ֆրանսիական դեսպանատան մօտ, բղաւում են՝ «Սերժիկ մարդասպան»: Ժողովուրդը պահանջում է իրենց մօտ բերել Լեւոն Տէր-Պետրոսեանին, որին իշխանութիւնները թոյլ չեն տալիս դուրս գալ իր առանձնատնից:

**Զօրքը հանուել է**

Մեր թղթակիցը 14:50 հաղորդեց, որ Ֆրանսիայի դեսպանատան մօտ տեղակայուած զօրքը հանուել է, Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի ներկայացուցիչ Լեւոն Զուրաբեանը

գնացել է առաջին նախագահի առանձնատուն:

**Պայթիւն Այրարատ կինօթատրոնի հարեւանութեամբ**

ՀՀ փրկարար ծառայութեան մամուլի պատասխանատու Նիկոլայ Գրիգորեանը յայտնել է, որ ժամը 14.48-ին փրկարար ծառայութիւնը ահազանգ է ստացել, որ Այրարատ կինօթատրոնի մօտ կրպակ է այրւում: 14.49-ին փրկարարները դուրս են եկել եւ արդէն 14.51-ին առաջին մեքենան դէպքի վայրում է եղել:

Ըստ Նիկոլայ Գրիգորեանի՝ նախապէս յայտնել էին, թէ մեծ տարածք է այրւում, եւ դէպքի վայր է մեկնել 4 մեքենայ, որտեղ եւ պարզուել է, որ այրւում է 8 տաղաւար՝ 150 քմ տարածքով: Նախնական տուեալներով տուժել է տաղաւարի մէկ աշխատակից:

**Ոստիկանական մեքենայ՝ ժողովրդի մէջ**

16:00-ին մեր թղթակիցը յայտնեց, որ ոստիկանական մի մեքենայ արագ ընթացքով մխրճուել է Ֆրանսիայի դեսպանատան մօտ հաւաքուած ժողովրդի մէջ, հասնելով Սունդուկեանի անուան թատրոնի մօտ՝ հարուածել է մայթեզրի ծառերին ու բռնկուել: Տուժել է մի կին, որին շտապօգնութեան մեքենայով տեղափոխել են հիւանդանոց: Մեքենայի վարորդը, դուրս գալով մեքենայից, փախել է: Հրշէջ մեքենաները, հասնելով դէպքի վայր, մարել են կրակը:

17:00

Այս պահին Հանրապետութեան Հրապարակից մինչեւ Այրարատ կինօթատրոն 20-ից աւելի բեռնատար մեքենայ է կանգնած՝ լի զինուորականներով:

17:14

Մեր թղթակիցը 17:14 Ֆրանսիայի դեսպանատան տարածքից հաղորդեց, որ ելոյթ է ունեցել Նիկոլ Փաշինեանը եւ նկարագրել գիշերը տեղի ունեցածը: Նիկոլ Փաշինեանի խօսքերով՝ իրենք ցանկացել են դեսպանատան մօտ հաւաքուած ժողովրդին առաջնորդել դէպի առաջին նախագահի առանձնատուն, որտեղ նա, ըստ էութեան, տնային կալանքի մէջ է, սակայն նախագահն ասել է, որ այս պահին ամենաապահով տեղը դեսպանատան տարածքն է, որտեղ ժողովուրդը բարիկադներ է կառուցել: Ըստ Նիկոլ Փաշինեանի՝ իրենք հիմա երեք խնդիր պէտք է լուծեն՝ 1) հնարաւորինս մեծ բազմութիւն հաւաքել դեսպանատան մօտ, 2) ամրացնել բարիկադները, 3) պահանջել իրենց մօտ բերել Լեւոն Տէր-Պետրոսեանին:

**Արտակարգ դրութեան մասին հրամանագիրը պատրաստ է**

Քիչ առաջ մեր թղթակիցը Ֆրանսիայի դեսպանատան մօտ ընթացող հանրահաւաքից հաղորդեց, որ մի քանի տասնեակ հազար մարդ բարիկադաւորուել են եւ որոշել են գիշերել այդտեղ: Թղթակիցը զօրքի կուտակումներ է նկատել Մաշտոցի Պողոտայի սկզբնամասում:

Մեծ թւով զինուորներ կան նաեւ Հանրապետութեան Հրապարակում, կառավարութեան շէնքի ետնամասում՝ Հանրապետութիւն կուսակցութեան մօտ, Ազատութեան Հրապարակում:

Քիչ առաջ *Հ2* հեռուստաընկերութիւնը ցուցադրեց ՀՀ արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանի մամուլի ասուլիսը: Նախարարի հաղորդմամբ՝ չի բացառւում, որ երկրի նախագահ Ռոբերտ Քոչարեանը ստորագրի արտակարգ դրութիւն յայտարարելու հրամանագիր:

**Վիրաւորուել է 3 ցուցարար**

Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբից ճշտում են, որ երբ քաղաքապետարանի հարեւանութեամբ ոստիկանական մեքենան միրճուել է բազմութեան մէջ, վրաերթի է ենթարկել ոչ թէ մէկ, այլ երեք ցուցարարի: Վիրաւորները շտապ օգնութեան մեքենաներով տեղափոխուել են հիւանդանոց:

**Ժողովուրդը բարիկադներ է սարքում**

Մեր թղթակիցը քիչ առաջ հաղորդեց, որ Ֆրանսիայի դեսպանութեան առաջ հաւաքուած ժողովուրդը հարեւան այգիներից պոկում է նստարանները եւ դրանցով բարիկադներ սարքում: Բարիկադների համար օգտագործւում են նաեւ աւտոբուսներ, տրոլէյբուսներ եւ այլ միջոցներ:

Այս պահին Միասնիկեանի արձանի հարթակ են բերուել բարձրախօսներ եւ այլ անհրաժեշտ տեխնիկա հանրահաւաք անցկացնելու համար:

**Խուզարկել են Խաչատուր Սուքիասեանի տունը**

*Երկիր մեդիա* հեռուստաընկերութեան հաղորդմամբ՝ այսօր առաւօտեան խուզարկուել է ԱԺ պատգամաւոր, Լեւոն Տէր-Պետրոսեանի Կենտրոն համայնքի շտաբի պետ Խաչատուր Սուքիասեանի բնակարանը: Պատգամաւորը ոստիկանութեան գործողութեան պահին Ազատութեան Հրապարակում չի եղել: Խաչատուր Սուքիասեանի վկայութեամբ՝ խուզարկողները վերցրել են իրեն պատկանող եւ օրինական գրանցում ունեցող զէնքը: Առգրացման ենթակայ այլ իր չի գտնուել:

## 2 ՄԱՐՏ 2008

## 8 ԶՈՀ ԵՒ 131 ՎԻՐԱՒՈՐ

*Հետք*, 11:00

ՀՀ առողջապահութեան նախարարութեան՝ այս առաւօտ տարածած հաղորդագրութեան համաձայն՝ 2008թ. մարտի 1-ին Երեւանի հիւանդանոցներում բժշկական օգնութիւն են ստացել 131 մարդ:

Ընդ որում, ժամը 06:00-ից մինչեւ 21:30 տուժածների թիւը կազմել է ընդամէնը 42 մարդ, որից 14-ը զինուորականներ, իսկ 28-ը՝ քաղաքացիներ: Մահուան դէպքեր վերոյիշեալ ժամանակահատուածում չեն գրանցուել:

Ժամը 21:30-ից մինչեւ 01:00 տուժածների ընդհանուր թիւը կազմել է 89 մարդ, որից 58-ը զինուորականներ, 31-ը՝ քաղաքացիներ:

Տուժած 72 զինուորականներից 16-ը եւ 59 քաղաքացիներից 18-ը ստացել են հրազէնային եւ բեկորային վնասուածքներ: Հրազէնային վնասուածքներից 8 մարդ մահացել է:

02.03.2008թ. ժամը 11:00 դրութեամբ 41 տուժածներ դուրս են գրուել հիւանդանոցներից:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԿՈՉ Է ԱՆՈՒՄ ԿԱՏԱՐԵԼ ԱՐՏԱԿԱՐԳ ԴՐՈՒԹԵԱՆ ՊԱՀԱՆՋՆԵՐԸ

*Lragir.am*, 11:27

Հայաստանի Ոստիկանութիւնը հանդէս է եկել յայտարարութեամբ, որում ասւում է.

«Մարտի 1-ի կէսօրից Երեւանի քաղաքապետարանի շրջակայքում հաւաքուած բազմութիւնը աստիճանաբար անկառավարելի էր դառնում, եւ երեկոյեան նրանց գործողութիւնները վերջնականապէս վերածուեցին ջարդարարութեան ու թալանի: Ժամեր շարունակ շուրջ 7 հազարանոց ամբոխից պարբերաբար անջատուող մեծ ու փոքր աւազակախմբերը զանգուածային անկարգութիւնների ընթացքում շրջակայ փողոցներում հրկիզել են երկու տասնեակից աւելի անձնական օգտագործման, ինչպէս եւ ոստիկանական աւտոմեքենաներ, նոյնիսկ «շտապ օգնութեան» մեքենաներ, ջարդուփշուր են արել աւտօբուսներ ու տրոլէյբուսներ: Աւերուել ու թալանուել է Մոսկուայի Տունը, շրջակայ խանութներն ու գրասենեակները, փշրուել են քաղաքապետարանի եւ Վիւասէլի վարչական շէնքի ապակիները: Հարբած աւազակախմբերը յարձակումներ են գործել ոստիկանութեան զօրքերի ծառայողների եւ ոստիկանութեան աշխատակիցների վրայ: ՀՀ ոստիկանութեան հոսպիտալ է ընդունուել ոստիկանութեան 33 զինծառայող եւ աշխատակից, որոնցից 11-ը՝ բեկորային վնասուածքներով, 13-ը՝ տարբեր ծանրութեան տրաւմաներով, 8-ը՝ գազերից թունաւորումով, 1-ը՝ ուշագնացութեամբ:

Ոստիկանութեան զօրքերի 7 զինծառայողների, այդ թւում՝ 4-ը բեկորային վնասւածքներով, օգնութիւն է ցուցաբերուել ամբուլատոր կարգով՝ յետագայ բուժումը զօրամասում շարունակելու պայմանով: Այլ բուժհաստատութիւններ դիմածների թիւը ճշտւում է: Ըստ առողջապահութեան նախարարութեան տուեալների՝ դէպքի պահին զոհուել է 8 հոգի, որոնց մահուան հանգամանքները պարզւում են ՀՀ Գլխաւոր Դատախազութեան կողմից:

Սանձարձակութիւնները շարունակւում էին, եւ միայն ՀՀ նախագահի հրամանագրով մայրաքաղաքում արտակարգ դրութիւն մտցնելուց յետոյ, ոստիկանութեան, Ազգային Անվտանգութեան Ծառայութեան եւ բանակի փոխհամաձայնեցուած գործողութիւնների ճնշման տակ ջարդարարները տեղի տուեցին, դադարեցրին զանգուածային անկարգութիւններն ու հեռացան: Ձեռնարկւում են միջոցառումներ կազմակերպիչների եւ մասնակիցների ինքնութիւնը ճշտելու, նրանց յայտնաբերելու եւ օրէնքով սահմանուած կարգով պատասխանատուութեան ենթարկելու համար:

ՀՀ ոստիկանութիւնը քաղաքացիներին կոչ է անում ցուցաբերել զգօնութիւն եւ զսպուածութիւն, անվերապահօրէն կատարել արտակարգ դրութեան պահանջները, աջակցել իրաւապահ մարմիններին՝ զանգուածային անկարգութիւնների հետեւանքները վերացնելու գործում»:

02.03.2008

## ԱԺ ՅԱՏՈՒԿ ՆԻՍՏԸ ՀԱՒԱՆՈՒԹԻՒՆ ՏՈՒԵՑ ՆԱԽԱԳԱՀԻ ՀՐԱՄԱՆԱԳՐԻՆ

*Lragir.am*, 11:36

ՀՀ ԱԺ Հասարակայնութեան հետ կապերի վարչութիւնը հաղորդագրութիւն է տարածել ՀՀ ԱԺ յատուկ նիստի մասին, որը ներկայացնում ենք նոյնութեամբ.

«Մարտի 2-ին ՀՀ Ազգային Ժողովը գումարեց յատուկ նիստ: ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանն ասաց, որ մարտի 1-ին Երեւանում տեղի ունեցած իրադարձութիւնների հետ կապուած ՀՀ նախագահը խորհրդակցելով Ազգային Ժողովի նախագահի եւ վարչապետի հետ յայտարարել է արտակարգ դրութիւն: Սահմանադրութեան 55-րդ յօդուածի 14-րդ կէտի համաձայն արտակարգ դրութիւն յայտարարելու դէպքում իրաւունքի ուժով անյապաղ գումարւում է Ազգային Ժողովի յատուկ նիստ: Մինչ քննարկուող հարցին անդրադառնալը Ազգային Ժողովը որոշում ընդունեց Ազգային Ժողովի յատուկ նիստը Հանրային ռադիօընկերութեան ուղիղ եթերով չհեռարձակելու վերաբերեալ:

Պարոն Թորոսեանը նշեց, որ հարցը ներկայացնելու համար ՀՀ նախագահի պաշտօնական ներկայացուցիչ է նշանակուել արդարադատութեան նախարար Գէորգ Դանիէլեանը:

Արդարադատութեան նախարարը՝ ներկայացնելով արտակարգ դրութիւն յայտարարելու մասին ՀՀ նախագահի հրամանագիրը, նշեց, որ արտակարգ դրութիւն յայտարարուած տարածքում սահմանուել են հետեւեալ սահմանափակումները. ժողովների, հանրահաւաքների, ցոյցերի, երթերի եւ այլ զանգուածային միջոցառումների իրականացման արգելում, գործադուլների եւ կազմակերպութիւնների գործունէութիւնը դադարեցնող կամ կասեցնող այլ միջոցառումների արգելում, իրաւապահ մարմինների կողմից, անհրաժեշտութեան դէպքում, անձանց, տրանսպորտային միջոցների տեղաշարժի սահմանափակում եւ զննութեան իրականացում, զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում, առանց համապատասխան պետական մարմինների թոյլտուութեան թռուցիկների եւ այլ ձեւով քաղաքական քարոզչութեան իրականացման արգելում, արտակարգ դրութիւն յայտարարելու համար հիմք ծառայող հանգամանքների վերացմանը խոչընդոտող կուսակցութիւնների եւ այլ հասարակական կազմակերպութիւնների գործունէութեան ժամանակաւոր կասեցում, արտակարգ դրութեան իրաւական ռեժիմը խախտած եւ տուեալ տարածքում չբնակուող անձանց վտարում՝ նրանց միջոցների հաշուին, իսկ միջոցներ չլինելու դէպքում՝ ՀՀ պետական բիւջէի միջոցների հաշուին՝ կատարուած ծախսերի յետագայ փոխհատուցման պայմանով:

Հարցը ներկայացնելուց յետոյ արդարադատութեան նախարարը պատասխանեց պատգամաւորների հարցերին: Եղան բազմաթիւ ելոյթներ, որոնցում հնչում էր խիստ մտահոգութիւն ստեղծուած իրավիճակի կապակցութեամբ:

Պատգամաւորները ՀՀ նախագահի հրամանագիրը գնահատում էին որպէս պարտադրուած, բայց նաեւ անհրաժեշտ քայլ եւ միակ ելքը ստեղծուած իրավիճակից դուրս գալու համար: Նրանց խօսքով վտանգուած է Հայաստանի կայունութիւնը եւ միջազգային հեղինակութիւնը, եւ իւրաքանչիւրը իր կողմից պէտք է անի առաւելագոյնը հանգուցալուծելու ստեղծուած աննախադէպ իրավիճակը:

ՀՀԿ խմբակցութեան անդամ Մկրտիչ Մինասեանը, ներկայացնելով խմբակցութեան տեսակէտը նշեց, որ առաջարկուող միջոցառումները նպատակ ունեն կայունացնելու ստեղծուած իրավիճակը եւ կոչ արեց կանգնել պետութեան եւ պետականութեան կողքին ստեղծուած իրավիճակից դուրս գալու համար:

Արտահերթ ելոյթ ունենալով՝ ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանն ասաց, որ լաւ կը լինէր ոչ նման քննարկում լինէր, ոչ էլ նման հրամանագրի անհրաժեշտութիւն. «Մի քանի պարզաբանում: Հրամանագիրը ուժի մէջ է արդէն, հրամանագիրը հրապարակուելուց յետոյ գործում է: Ասուեց՝ մեզ նայում էք թշնամու նման: Կարծում եմ՝ արժանի խօսք չէ, որեւէ մէկն այստեղ թշնամու նման չի նայել միւսին: Դժբախտաբար մէկ անգամ չէ, որ այս դահլիճում ինչ-ինչ դրսեւորումներ են եղել: Եթէ հետեւողական եւ անկեղծ լինենք միմեանց հետ, պիտի երբեմն նայենք մեր, մեր գործընկերների արածին եւ կանխենք նման ծայրայեղ դէպքերի դրսեւորումը: Նման բաներ, այո, եղել են, աւելի խայտառակ բաներ են եղել՝ այս դահլիճում ծեծել են մարդկանց, պատգամաւորների եւ այն, ինչ այսօր կատարուել է, դրա շարունակութիւնն է: Այն նոյն ատելութիւնը, որ այս դահլիճում դրսեւորեցին 1996 թուականին, այդ ատելութիւնն է հիմա շարունակւում: Ասում էք՝ 30 տոկոսն է վատը, մնացածը նորմալ մարդիկ են, ու թողեց այդ 30 տոկոսին, որ մտնեն այդ նորմալ մարդկանց մէջ: Ոնց էր 88-89 թթ. հաւաքուած հասարակութիւնն իրենց դուրս մղում նման տիպի մարդկանց, ինչու այն ժամանակ նման բաներ չէին լինում: Սրա մասին պէտք է խօսել: Ասւում է, որ սա ճանապարհ չէ: Ցաւօք սրտի՝ սա մնացած միակ ճանապարհն է: Սա այս իրավիճակում մնացած միակ քայլն է: Այլ բան հնարաւոր չէր անել այլեւս: Նման որոշումն այդքան հեշտութեամբ չի ընդունուել, ինչպէս ոմանց կարող է թուալ, որոշումն ամբողջ օրուայ ընթացքում օդի մէջ կախուած է եղել ու փորձ է արուել սպասել քիչ թէ շատ կարգաւորման: Այստեղ ասում են՝ եկէք այդ մարդուն ասենք՝ թող գայ, ի՞նչ ասենք այդ մարդուն: Եթէ որեւէ մէկն այդ մարդուն ասելիք ունէր, թող այն ժամանակ ասէր: Ես համաձայն եմ՝ կատարւում է այն, ինչ այդ մարդը՝ Լեւոն Տէր-Պետրոսեանը, նախապատրաստեց... Ասելիք ունէիք, այն ժամանակ ասէիք: Այն ժամանակ ասէինք՝ ինչ ես ատելութիւն, սուտ, կեղծիք, վրէժ մտցնում այս մարդկանց մէջ, մեղք չեն այս մարդիկ... Ինչ ես 9 օր շարունակ օրէնքը խախտելով՝ այս մարդկանց այստեղ հաւաքում ու վտանգի տակ դնում: Ասելու բան ունէիք՝ ասէիք... Այդ ձողերը մէկը պատրաստել-բերել-բաժանել է, չէ: Եթէ ուզում ենք լուրջ քննարկում անել, անկեղծ լինենք միմեանց հետ: Ասւում է՝ երկու կողմն էլ մեղաւոր են, ես նման յայտարարութիւններ, յատկապէս նման դժուար պահերին, չեմ ընդունում: Սա ուղղակի խուսափում է նշանակում: Եթէ մի կողմում մի սխալ կայ, եկէք այդ սխալի մասին խօսենք, եթէ միւս կողմում մի այլ սխալ կայ, եկէք այդ սխալի մասին խօսենք, ոչ թէ ուղղակի հաւասարութեան նշան դնենք:

Այո, իհարկէ, Հայաստանում ժողովրդավարութիւնը կայացած չէ, ցաւօք սրտի: Այո, դժբախտաբար, այս ամբողջ ժամանակահատուածում մենք չկարողացանք հասնել այն բանին, որ ապօրինի զէնք կրող մարդ չլինի այս երկրում, չկարողացանք բազմաթիւ բաներ անել, չկարողացանք ապահովել օրէնքի լիարժէք գերակայութիւնը: Սրանք իսկապէս խնդիրներ են եւ չափազանց լուրջ խնդիրներ են: Բայց ինչ կապ ունի դա այն բանի հետ, որ ամբոխի միջից հրազէնով կրակում են ոստիկանների վրայ, սա ինչ արդարացում ունի, այդ փայտերը ինչ արդարացում ունեն, այդ ձողերը բռնողները կարգին մարդիկ են: Ես

ամօթալի եմ համարում, եթէ նման մարդկանց մենք համարում ենք մեր ժողովուրդը: Չեմ ասում, որ այնտեղ կարգին մարդիկ չկան, բայց ամէն ինչ խառնել իրար, յուզական ելոյթներ ունենալ՝ ես դէմ եմ դրան: Բան ունենք ասելու, շիտակ ասենք: Ինչու մէկդ չդատապարտեց այդ մարդկանց, որ այդ բաներն անում են: Ասում էք՝ առաւօտեան էս են արել-էն են արել, չէք տեսել այդ կադրերը, թէ այդ փայտերը պատահաբար այնտեղ յայտնուեցին, այդ ռռնակներն ու զէնքերը պատահաբար այնտեղ յայտնուեցին: Թէեւ կարող է այնքան միամիտ լինենք, որ մտածենք, թէ հաւաքների 9 օրուայ ընթացքում կազմակերպիչները տեղեակ չեն եղել այդ մասին: Դա կը լինի երեսպաշտութիւն, եթէ մտածենք, որ մարդիկ այնտեղ հանրահաւաք են անում եւ տեղեակ չեն այդ ամէն ինչից: Եթէ մենք ազնիւ ենք եւ անկեղծ մեր ժողովրդի նկատմամբ, պիտի այս ամէնի մասին խօսենք: Ասում էք՝ առաջնորդ են փնտրում այդ մարդիկ, ոնց 10 տարի առանց այդ առաջնորդի ապրեցին, հիմա առաջնորդ են փնտրում: Ասում էք՝ վստահութիւն չկայ, ատելութիւն կայ... Իհարկէ կայ այս ամէնը մեր հասարակութիւն մի մասի մէջ, որովհետեւ շատ յաճախ անկեղծութիւնն ու շիտակութիւնն է պակասում, որովհետեւ շատ յաճախ խմբակային շահն է գործում: Սա է իրողութիւնը: Այդ մարդն անընդհատ յայտարարում է սուտ, կեղծ տուեալներ, այդ մարդն անընդհատ ատելութեան կոչ էր անում, մարդ, որ յայտարարում էր՝ ես դուրս կը գամ այս ամէն ինչից, եթէ մի մարդ չմասնակցի, այսինքն՝ թքած ունի ամէն ինչի վրայ. երկրի վրայ էլ, ապագայի վրայ էլ, ժողովրդի վրայ էլ: Ասում էր՝ ինքը գործիք է: Ու այդ խեղճ մարդկանց դարձրեց իր պարզունակ գործիքը: Դրանից ինքը չի տուժել: Իհարկէ, մարդիկ կային որոնք հրահիրել ու հիմա էլ հրահիրում են: Թողնենք մեծամասնութեանը մի կողմ, երբ ձեր ընդդիմադիր գործընկերներին վերջին խօսքով հայհոյում էին եւ հրապարակում էին հազարաւոր տպաքանակով, մի բառ ասացի՞ք՝ էս ի՞նչ էք անում, ինչո՞ւ էք վարկաբեկում: Մարդը չի կիսում քո հայեացքները, բայց կարելի՞ է այլանդակ արտայայտութիւններով հայհոյել: Մի անգամ ասացի՞ք՝ ոնց ես յայտարարում՝ ով էստեղ չի կանգնած, դաւաճան է, տականք է: Ասէիք մի անգամ, այդ ատելութեան նկատմամբ անտարբերութիւնն է, որ այդ մարդկանց հասցրեց այդ վիճակին: Ասում էք՝ մեր ժողովուրդն է, այո, ես համաձայն եմ, որ այդ հազարաւոր մարդկանց մէջ կան անմեղ եւ շիտակ մարդիկ, բայց ես չեմ կարող ժողովուրդ համարել նրանց, ովքեր մեքենաներ են այրում, ովքեր յարձակւում են ոստիկանների ու զինուորների վրայ, ովքեր ամէն ինչը ջարդում ու փշրում են: Մեր գործընկերների մի մասն ասում է, որ տեսել է, որ այնտեղ ձողերով մարդիկ են կանգնած, ո՞ր կարգին մարդն է փողոցում կանգնում, որ մէկի գլուխը ջարդի: Դուք կանէ՞ք այդ բանը: Պիտի շիտակ լինել, պիտի անկեղծ լինել: Յուզախառն ելոյթների տեղը չէ, շիտակ վերաբերմունքի տեղն է: Այստեղ յայտարարւում է՝ եկէք այս անենք, այն անենք, մենք հիմա մի բան ունենք անելու՝ քննարկել նախագահի հրամանագիրը եւ մեր վերաբերմունքը արտայայտել: Սա է մեր անելիքը եւ սա է ամենակարեւորը:

Պատահական չէ, որ դա վերապահուած է Ազգային Ժողովին: Ուշացնել միջոցառումները, նշանակում է թոյլ տալ, որ այդ 30 տոկոսն իր այլանդակութիւնները շարունակի մեր քաղաքում: Սա է իրականութիւնը: Ամէն ինչ արուել է՝ արդէն այլ ելք չունենալով: Ես կարծում եմ՝ իրաւապահ մարմինները պիտի վճռական լինեն եւ պիտի թոյլ չտան մեր երկրում նման բաներ: Սա ծանր հետեւանքներ է ունենալու յետագայի համար: Այդ մարդիկ հասան իրենց նպատակին՝ այդ մարդը եւ իր շրջապատի մի խումբ մարդիկ: Որ

յետագայում նման բան չլինի, որ սա չշարունակուի, մէկ բան է պէտք միայն՝ ազնիւ ու շիտակ վերաբերմունք այս ամէնին, ոչ թէ այս երկրի 17 տարուայ ու 1700 տարուայ բոլոր խնդիրներն ու դժուարութիւնները բերենք, սուաղենք ու հաւասարեցնենք եւ ասենք՝ բոլորն էլ մեղաւոր են, այնպէս անենք, որ արիւն չթափուի: Արիւն չթափուելու համար պարզ ու շիտակ վերաբերմունք է պէտք: Թացն ու չորն իրարից տարբերել է պէտք: 9 օր մարդիկ օրէնք էին խախտում, ինչու այդ ժամանակ մէկը չգնաց այդ խեղճ մարդկանց, որ այնտեղ հաւաքուած էինք, խորհուրդ չտուեց, որ չի կարելի սա անել, որովհետեւ դուք օրէնք էք խախտում:

Այն ինչ տեղի է ունեցել, պիտի դաս լինի եւ ընդամէնը մէկ բան պէտք է անել՝ լինել պարզ ու շիտակ, անկեղծ ու ազնիւ: Ժողովրդի նկատմամբ միշտ չէ, որ դա արել են եւ այդ պատճառով էլ սա պատահեց: Ես կարծում եմ՝ հանրապետութեան նախագահի հրամանագիրը միանգամայն տեղին է եւ խորհրդարանը, նոյնպէս պատասխանատուութիւն կրելով երկրի եւ իրավիճակի ու ապագայի համար, պիտի անպայման իր վերաբերմունքով աջակցութիւն յայտնի այս հրամանագրին: ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանը նշեց, որ քանի որ միջոցառումների իրականացումը չեղեալ յայտարարելու մասին Ազգային Ժողովի որոշման նախագծի գրաւոր տեքստ որեւէ պատգամաւոր չի ներկայացրել Ազգային Ժողովի նախագահին, Սահմանադրութեան 55-րդ յօդուածի 14-րդ կէտով նախատեսուած կարգով եւ ԱԺ կանոնակարգի 52-րդ եւ 92-րդ յօդուածների համաձայն, ապա ՀՀ նախագահի հրամանագիրը համարւում է հաւանութեան արժանացած եւ յատուկ նիստը համարւում է փակուած»:

## ՄԱՐՏԻ 2-Ի ԺԱՄԸ 01-Ի ԴՐՈՒԹԵԱՄԲ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵԼ Է 15 ԱՆՁ

*Lragir.am*, 12:06

ՀՀ Գլխաւոր Դատախազի մամուլի քարտուղարը տարածել է հետեւեալ յայտարարութիւնը. «Օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ անցկացուող հրապարակային միջոցառումները դադարեցնելու վերաբերեալ պահանջներին չենթարկուելուն ուղղուած կոչեր անելու եւ իշխանութեան ներկայացուցչի կեանքի կամ առողջութեան համար վտանգաւոր բռնութիւն գործադրելու կասկածանքով, ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում քննուող քրէական գործի շրջանակներում, 2008 թուականի մարտի 2-ի՝ ժամը 01-ի դրութեամբ, ձերբակալուել է 15 անձ: ՀՀ քաղաքացիներ Արտակ Սարգսեանը, Լեւիկ Խաչատրեանը, Մուշեղ Սաղաթէլեանը, Դաւիթ Առաքելեանը, Վարդգէս Վայոցեանը, Մասիս Այվազեանը, Աշոտ Մանուկեանը, Դաւիթ Մաթեւոսեանը, Պետրոս Շահբազեանը, Տիգրան Բաղդասարեանը, Յովհաննէս Ղազարեանը, Սամուէլ Յարութիւնեանը, Իսահակ Մալխասեանը, Խաչիկ Գասպարեանը, Աւետիք Ներսիսեանը կասկածւում են ՀՀ Քրէական Օրէնսգրքի 225 1-րդ յօդուածի 2-րդ մասի եւ 316-րդ յօդուածի 2-րդ մասի յատկանիշներով նախատեսուած արարք կատարելու մէջ: Նախաքննութիւնը շարունակւում է, ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնը միջոցներ է ձեռնարկում դէպքի բոլոր հանգամանքները պարզելու, յանցագործութիւն կատարած, օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ հրապարակային միջոցառումներ կազմակերպած եւ դրանց իրականացմանը այլ քաղաքացիներին ներգրաւած, իրենց պարտականութիւնները կատարող ոստիկանութեան աշխատակիցների նկատմամբ բռնութիւններ գործադրած բոլոր անձանց յայտնաբերելու ուղղութեամբ»:

## ՀԵՌԱԽՕՍԱԶՐՈՅՑ ՖՐԻԴԻ ԵՒ ԲՐԱՅԶԱՅԻ ՀԵՏ

*Lragir.am*, 14:07

ՀՀ Կառավարութեան մամուլի ծառայութիւնը տեղեկացնում է, թէ մարտի 1-ին ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանը հեռախօսազրոյցներ է ունեցել ԱՄՆ Պետքարտուղարի Եւրոպայի եւ Եւրասիայի գծով տեղակալ Դենիէլ Ֆրիդի եւ նրա օգնական, ԵԱՀԿ Մինսկի խմբի ամերիկեան համանախագահ Մեթիու Բրայզայի հետ: Ինչպէս պարոն Ֆրիդը, այնպէս էլ պարոն Բրայզան յոյս են յայտնել, որ Հայաստանում ստեղծուած ներքաղաքական իրավիճակը կը հանգուցալուծուի քաղաքական երկխօսութեան եւ բռնութիւններից խուսափելու ճանապարհով: Ֆրիդն ու Բրայզան նաեւ յոյս են յայտնել, որ Հայաստանի իշխանութիւններին կը յաջողուի արագօրէն վերականգնել երկրի կայունութիւնն ու հասարակական կարգը: Վարչապետ Սերժ Սարգսեանը վստահեցրել է զրուցակիցներին, որ ՀՀ կառավարութիւնն ամէն ինչ կ'անի բռնութիւններից խուսափելու եւ հասարակական կարգն ու կայունութիւնը վերականգնելու ուղղութեամբ: Վարչապետը նաեւ շնորհակալութիւն է յայտնել ամերիկեան գործընկերներինª զօրակցութեան համար:

## ԶՈՀՈՒԱԾՆԵՐԻՑ 4-Ի ԻՆՔՆՈՒԹԻՒՆԸ ՊԱՐԶՈՒԵԼ Է

*Lragir.am*, 14:33

ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութեան հաղորդագրութեան համաձայն, «ՀՀ Նախագահի 2008 թ. մարտի 1-ի հրամանագրով Երեւան քաղաքում յայտարարուած արտակարգ դրութեան պահանջներին չենթարկուելու եւ 2008 թ. մարտի 1-ի լոյս 2-ի գիշերը ՀՀ Նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ նրա համախոհների կողմից, օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ, կազմակերպուած հանրահաւաքի մասնակիցների կողմից ոստիկանութեան մարմիններին ցուցաբերուած դիմադրութեան հետեւանքով առաջացած ընդհարման ժամանակ զոհուել է 8 մարդ: ՀՀ յատուկ քննչական ծառայութեան, Ազգային Անվտանգութեան Ծառայութեան, ոստիկանութեան եւ հարկային մարմինների քննիչներից եւ օպերատիւ աշխատողներից ձեւաւորուած քննչական-օպերատիւ խմբի ձեռնարկած միջոցառումների արդիւնքում առայժմ յաջողուել է պարզել զոհուած անձանցից 4-ի ինքնութիւնը՝ Գոռ Քլոյեան, Համլէտ Թադեւոսեան, Դաւիթ Պետրոսեան, Զաքար Սարիբեկի Յովհաննիսեան: Միւս զոհերի ինքնութիւնը ճշտւում է, միջոցներ են ձեռնարկւում նրանց մահուան, ինչպէս նաեւ մայրաքաղաքում տեղի ունեցած անկարգութիւնների հանգամանքները պարզելու ուղղութեամբ: Անկարգութիւնների հետեւանքով վնասուել է երկու տասնեակից աւելի անշարժ ու շարժական գոյք: Քննչական-օպերատիւ խմբի ձեռնարկած միջոցառումների արդիւնքների մասին կը յայտնենք լրացուցիչ», ասւում է հաղորդագրութեան մէջ:

# 3 ՄԱՐՏ 2008

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Հետք*, 10:00

Յարգելի ընթերցողներ,

Խմբագրութիւնը հնարաւորութիւն չունի անդրադառնալ պետական եւ ներքաղա-

քական հարցերին, քանի որ յայտարարուած է արտակարգ դրութիւն: Այդ պատճառով դրանք կը ներկայացուեն միայն պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում:

Ներողութիւն ենք հայցում նաեւ մեր գովազդատուներից, եթէ ստեղծուած պայմաններում չկարողանանք ապահովել ընթերցողների թիւը:

## ՀՀ ՎԱՐՉԱՊԵՏ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԽՕՍՔԸ 01.03.2008 ԹՈՒԱԿԱՆԻՆ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԻՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Հետք*, 12:00

Սիրելի հայրենակիցներ,

Վերջին օրերին տեղի ունեցած իրադարձութիւնների հետեւանքով մեր ժողովուրդը ծանր կորուստներ կրեց:

Կրեց անդառնալի կորուստներ. եղան մարդկային զոհեր թէ՛ ծառայողական պարտքը կատարող ոստիկանութեան աշխատակիցների, թէ՛ մի խումբ մարդկանց ազդեցութեան տակ ընկած ցուցարարների շարքերում: Հարիւրաւոր քաղաքացիներ են տուժել արմատական ընդդիմադիրների անօրինական գործողութիւնների հետեւանքով:

Այսպէս կոչուած «շարժման» յեղափոխական պարագլուխները հասարակական կարգը պահպանողներին ու սեփական աջակիցներին դարձրեցին իրենց անյագուրդ նկրտումների պարպման թիրախ: Այդ ամէնի համար անկարգութիւնների կազմակերպիչներն ու հրահրողները դեռ պատասխան պիտի տան օրէնքի, պատմութեան ու սերունդների առաջ: Ցաւով եմ նշում, որ մեր հայրենակիցները դարձան որոշ մարդկանց կոյր ատելութեան զոհը:

Այսօր ես կիսում եմ իւրաքանչիւրիդ վիշտն ու բոլորիդ մաղթում եմ կամք, ուժ եւ հոգեկան կորով՝ այս արհաւիրքը յաղթահարելու համար:

## ՀՐԿԻԶՈՒԵԼ Է 36 ՏՐԱՆՍՊՈՐՏԱՅԻՆ ՄԻՋՈՑ

*Հետք*, 13:00

Մարտի 2-ին ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը.

«Զանգուածային անկարգութիւնների հետեւանքով պետութեան եւ մասնաւոր գոյքին պատճառուած վնասների չափերը ճշտւում են: Ձեռնարկուած միջոցառումների արդիւնքում պարզուել է, որ իրականում մայրաքաղաքում մարտի 1-ին եւ լոյս 2-ի գիշերը տեղի ունեցած անկարգութիւնների մասնակիցները հրկիզել են 36 տրանսպորտային միջոց՝ ոստիկանութեան 13 աւտոմեքենայ, 3 աւտոբուս, մասնաւոր սեփականութիւն հանդիսացող 13 աւտոմեքենայ եւ հասարակական տրանսպորտի միջոցներից 3 տրոլեյբուս եւ 4 աւտոբուս:

Հասարակական տրանսպորտին պատճառուած միւս վնասները ճշտւում են:

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՀԱՆԴԻՊԵԼ Է ՀԵՅԿԻ ՏԱԼՎԻՏԻԷԻՆ

*Հետք*, 15:12

ՀՀ կառավարութեան պաշտօնական կայքէջը տեղեկացնում է, որ ՀՀ նորընտիր նախագահ, վարչապետ Սերժ Սարգսեանը մարտի 2-ին ընդունել է ԵԱՀԿ գործող նախագահի յատուկ ներկայացուցիչ Հեյկի Տալվիտիէին:

Հանդիպման սկզբում նա նախ շնորհաւորել է Սերժ Սարգսեանին՝ ՀՀ նախագահի պաշտօնում ընտրուելու կապակցութեամբ եւ մաղթել յաջողութիւններ: Այնուհետ զրուցակիցներն անդրադարձել են Հայաստանում ընթացող յետընտրական գործընթացներին, այդ թւում՝ ընդդիմութեան չարտօնուած հանրահաւաքի պատճառով նախորդ օրը մայրաքաղաքում ստեղծուած չափազանց լարուած իրավիճակին եւ այդ լարուածութեան հանգուցալուծման հնարաւոր ուղիներին: Հէյկի Տալվիտիէն տեղեկացրել է, որ Հայաստանում գտնուելու այս օրերին ունենալու է հանդիպումների բաւականին խիտ գրաֆիկ՝ զրուցելով նաեւ ընդդիմադիր ուժերի հետ: Նա ընդգծել է, որ ե՛ւ ԵԱՀԿ գործող նախագահի, ե՛ւ իր ցանկութիւնն է, որպէսզի երկրում աւելի չսրուի իրավիճակը եւ կողմերն անեն ամէն հնարաւորը՝ առկայ լարուածութիւնը թուլացնելու համար:

Սերժ Սարգսեանը վստահեցրել է, որ իշխանութիւնները նոյնքան շահագրգիռ են այդ հարցում եւ ի սկզբանէ կոչ էին անում գործել բացառապէս օրինականութեան սահմաններում, լինել հանդուրժողական եւ պատրաստակամութիւն յայտնում համագործակցութեան, սակայն չարտօնուած հանրահաւաք հրահրողները, ակնյայտօրէն, անում էին ամէն ինչ այնպիսի ելք ունենալու համար, ինչպիսին եղաւ մարտի 1-ին: Նա ընդգծել է, որ երկրում հասարակական կարգի եւ կայունութեան հաստատմամբ ու պահպանմամբ շահագրգիռ իշխանութիւնները շարունակելու են այդ ուղղութեամբ ջանքերը:

## ՄԻԱՍՆԻԿ ՄԱԼԽԱՍԵԱՆԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ Է

*Հետք*, 16:00

Մարտի 2-ին, ժամը 05.00-ի սահմաններում, Երեւանի Շահումեան Հրապարակի մերձակայքից տաքսի մեքենայով դէպքի վայրից փախուստի դիմելիս, ՀՀ ոստիկանութիւն բերման է ենթարկուել մարտի 1-ի լոյս 2-ի գիշերը մայրաքաղաքում տեղի ունեցած զանգուածային անկարգութիւններ հրահրելու մէջ կասկածուող ՀՀ ԱԺ պատգամաւոր, ԵԿՄ փոխնախագահ, 1961 թուականին ծնուած Միասնիկ Մալխասեանը, որի մօտից անձնական խուզարկութեամբ յայտնաբերուել է 55,5 սմ երկարութեան մետաղաձող:

Միասնիկ Մալխասեանը ձերբակալուել է ՀՀ Քրէական Օրէնսգրքի 300 յօդուածի (Պետական իշխանութիւնը իւրացնելը) յատկանիշներով եւ տեղափոխուել ձերբակալուածների պահման մեկուսարան:

# 4 ՄԱՐՏ 2008

## ԺԱՌԱՆԳՈՒԹԵԱՆ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐԸ ԴԻՄՈՒՄ ԵՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՆՐՈՒԹԵԱՆԸ

*Հետք*, 15:00

3 մարտի 2008թ., Երեւան: Երէկ՝ մարտի 2-ին, ինչպէս արդէն հաղորդուել է, ընդդիմութեան զանգուածային ցոյցերի ժամանակ անկարգութիւններ հրահրելու կասկածանքով ձերբակալուել են Ազգային Ժողովի երկու պատգամաւոր՝ Միասնիկ Մալխասեանը եւ Յակոբ Յակոբեանը:

Ժառանգութիւն խորհրդարանական խմբակցութեան պատգամաւորներ Լարիսա Ալաւերդեանի եւ Զարուհի Փոստանջեանի բոլոր փորձերը՝ այցելել ՀՀ ոստիկանութեան

6-րդ վարչութեան նախնական կալանավայր, որտեղ, ըստ պաշտօնական հաղորդագրութեան, պահւում են պատգամաւորները, ինչպէս նաեւ յաճախել Երեւան քաղաքի դիահերձարանները, բախուեցին իշխանութեան համապատասխան ներկայացուցիչների յարուցած խոչընդոտներին, ինչը ՀՀ ԱԺ պատգամաւորների իրաւունքներն ու լիազօրութիւնները կարգաւորող օրէնքի կոպիտ խախտում է:

Այնինչ որոշ ձերբակալուածների փաստաբաններից ստացուած տեղեկութիւնները թոյլ են տալիս պնդել, որ նախնական կալանքի վայրում ներկայումս պահւում են ակնյայտօրէն ֆիզիկական բռնութեան հետքերն իրենց վրայ կրող մեծ թւով մարդիկ, ինչն էլ, ըստ երեւոյթին, Ժառանգութեան ներկայացուցիչներին նախնական կալանավայր չթողնելու բուն պատճառն է:

Մենք անհանգստացած ենք ձերբակալուածների հետ կապուած իրավիճակով, որը հաստատում է այն մտավախութիւնները, որ հանրապետութեան իրաւապահ մարմինները մտադրութիւն չունեն անկանխակալ ու անաչառ քննութիւն ապահովել ինչպէս այս, այնպէս էլ մահացու ելքով աւարտուած միւս դէպքերում:

Ելնելով վերոշարադրեալից, դիմում ենք միջազգային հանրութեանը՝ ի դէմս ԵԱՀԿ-ի եւ ԵԽԽՎ-ի դիտորդական առաքելութեան, կոչ անելով ապահովել յետագայ քննչական միջոցառումներին միջազգային փորձագէտների մասնակցութիւնը:

ՀՀ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԽՄԲԱԿՑՈՒԹԻՒՆ

## ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԽՄԲԱԿՑՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Հետք*, 16:15

Ժառանգութիւն խմբակցութիւնը խստագոյնս դատապարտել է մարտի 1-ի վաղ առաւօտեան Երեւանի Ազատութեան Հրապարակում, ապա՝ նոյն օրն ու լոյս 2-ի գիշերը Երեւանի կենտրոնում խաղաղ ցուցարարների նկատմամբ ոչ համարժէք ու անթոյլատրելիօրէն ծայրայեղ ուժի գործադրումը:

Փաստացի՝ վաղ առաւօտեան խաղաղ ցուցարարների նկատմամբ զանգուածային բռնութիւնների կիրառումը յանգեցրեց նոր, էլ աւելի լայնածաւալ բռնութիւնների եւ զոհերի: Նոյն օրը երեկոյեան գործող նախագահի կողմից Երեւան քաղաքում յայտարարուեց արտակարգ դրութիւն՝ դէմ գնալով Եւրոպայի խորհրդի առջեւ Հայաստանի ստանձնած պարտաւորութիւններին եւ Մարդու Իրաւունքների եւրոպական հռչակագրի, այդ թւում՝ 15-րդ յօդուածի պահանջներին:

Մարտի 1-ի լոյս 2-ի գիշերը Ազգային Ժողովում գումարուած յատուկ նիստում Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորները Երեւան քաղաքում արտակարգ դրութիւն մտցնելու հրամանագիրը, դրանում ամրագրուած, իրավիճակն էլ աւելի շիկացնող միջոցառումները, մասնաւորապէս՝ քաղաքական կուսակցութիւնների, հասարակական կազմակերպութիւնների եւ զանգուածային լրատուութեան միջոցների, քաղաքական ու քաղաքացիական բազում իրաւունքների եւ ազատութիւնների նկատմամբ դրուած արգելքը որակեցին ծայրայեղ եւ լարուածութիւնն էլ աւելի մեծացնող քայլ:

Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորները կարեւորեցին իրավիճակի հանգուցալուծման քաղաքական քայլերի նախաձեռնումը, արիւնահեղութեանն ու բռնութիւններին վերջ դնելը, բոլոր յանցագործութիւնների բացայայտումն ու մեղաւորներին պատժելը:

Սակայն այսօր գումարուած արտահերթ նիստում, լսելով մեր չորս գործընկերներին պատգամաւորական անձեռնամխելիութիւնից զրկելու եւ նրանց նկատմամբ քրէական հետապնդում իրականացնելու մասին ՀՀ Գլխաւոր Դատախազի միջնորդագիրը վկայում է, որ մենք չենք գիտակցում իրավիճակի ողջ լրջութիւնը եւ իշխանութեան այս՝ իրադրութիւնն ապակայունացնող հերթական քայլի հնարաւոր հետեւանքները:

Մենք արձանագրում ենք, որ այդ մարդկանց նկատմամբ իրականացուող նախաքննութիւնը քաղաքական հաշուեյարդար է, որից ձեռնպահ մնալու կոչով, ի թիւս այլոց, հանդէս է եկել ԵԽ գլխաւոր քարտուղար Թերի Դեւիսը: Այս 2 օրերի ընթացքում զբաղուած լինելով մեր 4 գործընկերների եւ բազում այլ ձերբակալուածների փնտրտուքով եւ բազմիցս բախուելով մեր պատգամաւորների կողմից նրանց գտնուելու վայրը պարզելու ու նրանց հետ տեսակցութիւն ունենալը խափանող փաստերին ու պաշտօնեաներին, մենք հաւաստում ենք, որ նրանց նկատմամբ իրականացուող նախաքննութիւնը անկողմնակալ, անաչառ չէ եւ դուրս է օրէնքից: Այդ մասին է վկայում նաեւ փաստը, որ նշուած անձանցից շատերի փաստաբաններին արգելուել է տեսակցել իրենց պաշտպանեալի հետ: Իսկ մեր գործընկերների ու բազում այլ ձերբակալուածների ֆիզիկական ու առողջական վիճակը իսկապէս մտահոգիչ է, քանի որ նրանցից ոմանք ենթարկուել են բռնութիւնների: Մեր 4 գործընկերներին պատգամաւորական անձեռնամխելիութիւնից զրկելն ու նրանց նկատմամբ քաղաքական հետապնդում իրականացնելը գնահատում ենք իբրեւ մեր երկրին, մեր հասարակութեանն ու միջազգային հանրութեանը մարտահրաւէր նետելու հերթական անխոհեմ քայլը:

Մենք կոչ ենք անում Ազգային Ժողովի մեր բոլոր գործընկերներին՝ չխորացնել վրդովուած հայ ժողովրդի եւ իշխանութեան միջեւ անջրպետը եւ դէմ կանգնել այս միջնորդութեանը, ինչը յղի է անկանխատեսելի հետեւանքներով: Անթոյլատրելի է, որ մենք, լինելով ՀՀ իշխանութեան օրէնսդիր օղակը, դուրս դնենք մեր երկիրն ու մեզ միջազգային իրաւունքի եւ պարտաւորութիւնների շրջանակներից: Անթոյլատրելի է իշխանութեան որոշ շրջանակների՝ այս իրավիճակում ամէն գնով յաղթող դառնալու մոլուցքը: Մենք յորդորում ենք ՀՀ Գլխաւոր Դատախազին՝ գիտակցելու իր այս միջնորդագրի վտանգաւորութիւնը եւ կոչ ենք անում ետ վերցնել այն: ՀՀ Գլխաւոր Դատախազի միջնորդութեան բաւարարումն ունենալու է բումերանգի էֆեկտ եւ այստեղ գտնուող պատգամաւորներից որեւէ մէկը չի կարողանալու պաշտպանել իրեն այդ բումերանգի յետադարձ հարուածից, քանի որ քաղաքացիական համբերութեան բաժակը լցուել է:

Յարգելի գործընկերներ, մեր պետութեան համար այս բախտորոշ պահին սրտով, մտքով, խղճով խնդրում ենք ձեզ՝ չդառնալ մեր ժողովրդի վերջնական վիհի անդառնալի խորացման մասնակիցը:

4 մարտի 2008թ.
ք. Երեւան

## 5 ՄԱՐՏ 2008

### ՀՀ ՄԱՐԴՈՒ ԻՐԱՒՈՒՆՔՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆ՝ ԱՐՄԷՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄԸ ԵՐԿՐՈՒՄ ՍՏԵՂԾՈՒԱԾ ԻՐԱՎԻՃԱԿԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Հետք*, 14:00

1. Դեռեւս նախընտրական քարոզչութեան ընթացքում, տարբեր քաղաքական ուժերի հրապարակային գործունէութիւնը յանգեցրեց հասարակութիւնում անհանդուրժողականութեան մթնոլորտի ձեւաւորմանը:

Միջազգային հեղինակաւոր կազմակերպութիւնների, ինչպէս նաեւ Պաշտպանի հանդուրժողականութեան կոչերը, ցաւօք սրտի, մնացին անարձագանք: Աւելին, անհանդուրժողականութեան մթնոլորտը մարտի 1-ի ողբերգական իրադարձութիւններից յետոյ վերաճեց փոխադարձ ատելութեան:

2. Մարտի 1-ի իրադարձութիւնները սկսեցին Ազատութեան Հրապարակում խաղաղ նստացոյցը բռնի կերպով դադարեցնելուց: Ըստ պաշտօնական մօտեցման՝ Ազատութեան Հրապարակում զէնքի կուտակում է եղել, իսկ ոստիկանները փորձել են ընդամէնը խուզարկել եւ կատաղի դիմադրութիւն են ստացել:

Մարդու Իրաւունքների պաշտպանը գտնում է, որ իշխանութիւնները պէտք է պատասխանեն որոշակի հարցերի: Մասնաւորապէս, ո՞վ, ե՞րբ եւ ի՞նչ հանգամանքներում է որոշում կայացրել խաղաղ նստացոյցը մարտի 1-ի վաղ առաւօտեան ուժի գործադրմամբ հարկադիր դադարեցնելու վերաբերեալ, արդեօք նստացոյցի մասնակիցներին ներկայացուել է խուզարկութիւն իրականացնելու հրապարակային պահանջ եւ արդեօք քաղաքացիները հրաժարուել կամ դիմադրութիւն են ցուցաբերել, արդեօք ուժի կիրառումը համարժէք է եղել ստեղծուած իրավիճակին:

Վերոյիշեալ հարցադրումները պայմանաւորուած են ցուցարարների այն յայտարարութեամբ, որ վաղ առաւօտեան առանց նախազգուշացման նրանք ենթարկուել են յարձակման եւ դաժան ծեծի: Մեզ համար դժուար է իրականութիւնը բացայայտել, բայց մէկ հարց մնում է անպատասխան: Ինչն էր պատճառը, որ Ոստիկանութիւնը խոչընդոտեց լրագրողների մասնագիտական գործունէութեան իրականացմանը, ինչը հնարաւորութիւն կ'ընձեռէր ստանալ լիարժէք եւ անաչառ տեղեկատուութիւն: Իսկ այն, որ իրենց լրագրողական գործունէութեանը խոչընդոտել են, պաշտօնապէս յայտարարել են *Երկիր մեդիա* եւ *ԱԼՄ* հեռուստաընկերութիւնները:

3. Ֆրանսիայի դեսպանատան մօտ հաւաքուած մարդիկ մեր հասարակութեան մի մասն են, նրանք աւազակներ եւ թալանչիներ չեն, այլ՝ իրաւապահ մարմինների կողմից, իրենց պատկերացմամբ, ապօրինաբար բռնութեան ենթարկուած ՀՀ քաղաքացիներ: Ոստիկանութիւնը առաջարկել է երթ կազմակերպել եւ Մատենադարանի մօտ հանրահաւաք անցկացնել: Ինչն էր պատճառը, որ մարդիկ, ովքեր կարող էին ուղղորդել ցուցարարներին, չարեցին դա, այլ վերջին պահին յայտարարեցին, որ ցուցարարները իրենց չեն ենթարկւում: Վերջին հաշուով ինչով էր պայմանաւորուած ցուցարարների անհամաձայնութիւնը թէ իրաւապահների, թէ Լեւոն Տէր-Պետրոսեանի շտաբի ներկայացուցիչներ հետ: Գուցէ, դրա պատճառը հէնց առաւօտեան տեղի ունեցած իրադարձութիւններն էին: Թերեւս այդ անհամաձայնութեան հետեւանքն էր, որ եղան բազմաթիւ վիրաւորներ եւ 8

զոհեր:

Պաշտպանն իր խորը վշտակցութիւնն է յայտնում զոհուածների հարազատներին:

4. Ներկայումս առնուազն տարակուսանք է առաջացնում որոշ ԶԼՄ-ների, առաւելապէս հեռուստաընկերութիւնների՝ ատելութեան մթնոլորտի շիկացմանն ուղղուած գործունէութիւնը: Մասնաւորապէս, հեռուստատեսութեան եթերից շարունակաբար հնչում են իշխանութեան ներկայացուցիչների յայտարարութիւնները բացառապէս ցուցարարների շարքից մարտի 1-ի իրադարձութիւնների մեղաւորներին պատասխանատուութեան ենթարկելու, պատժելու վերաբերեալ: Ինչու չի քննարկւում իրաւապահ մարմինների ներկայացուցիչների կողմից հնարաւոր ապօրինութիւնների եւ նրանց պատասխանութեան ենթարկելու հարցը:

5. ՀՀ Նախագահի «Արտակարգ դրութիւն յայտարարելու մասին» 01.03.2008թ. հրամանագրով սահմանուել են Երեւան քաղաքում մարդու եւ քաղաքացու սահմանադրական իրաւունքների մի շարք սահմանափակումներ:

Այսպէս, Հրամանագրի 4-րդ կէտի 4-րդ ենթակէտի համաձայն՝ զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պետական մարմինների պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում: Մինչդեռ Պաշտպանի կողմից ստացուած տեղեկատուութեան համաձայն՝ *Ա1+*, *Պանարամա*, *Լրագիր* տեղեկատուական ինտերնէտային կայքերի գործունէութիւնը դադարեցուել է: Այս կապակցութեամբ, ԱԱԾ ղեկավարը Մարդու Իրաւունքների պաշտպանին յայտնել է, որ այդպիսի ծայրայեղ միջոց ձեռնարկելու պատճառը՝ համապատասխան տեղեկատուական ինտերնէտային կայքերի պրովայդերների հանրապետութիւնից դուրս գտնուելն է: Վերջիններս, ըստ ԱԱԾ ղեկավարի յայտնած տուեալների, զգուշացուել են Նախագահի հրամանագրով նախատեսուած սահմանափակումների մասին, սակայն հրաժարուել են պահպանել դրանք՝ պատճառաբանելով, որ իրենք գտնւում են սեփական պետութեան օրէնսդրութեան գործողութեան ներքոյ:

ՀՀ Նախագահի վերոնշեալ հրամանագրի 4-րդ կէտի 3-րդ ենթակէտով նախատեսուել է իրաւապահ մարմինների կողմից, անհրաժեշտութեան դէպքում, անձանց, տրանսպորտային միջոցների տեղաշարժի սահմանափակման եւ զննութեան իրականացման հնարաւորութիւն: Պաշտպանի կողմից ստացուած դիմում-բողոքները վկայում են այն մասին, որ մէջբերուած դրոյթին տարածական մեկնաբանութիւն տալու հետեւանքով անհամաչափ սահմանափակւում է, մասնաւորապէս, Երեւան քաղաք մուտք գործելու քաղաքացիների իրաւունքը:

Բացի այդ, Պաշտպանի գրասենեակ ստացւում են հաղորդումներ քաղաքացիների զանգուածային ձերբակալումների եւ ոստիկանութեան բաժանմունքներ նրանց բերման ենթարկելու վերաբերեալ, ինչը, ըստ դիմումատուների, զուգորդւում է քրէադատավարական նորմերի խախտումներով: Այս հարցի կապակցութեամբ Պաշտպանը հեռախօսազրոյց է ունեցել ՀՀ Գլխաւոր Դատախազի հետ, որը պատրաստակամութիւն է յայտնել Պաշտպանի գրասենեակ ներկայացնել բոլոր ձերբակալուած անձանց ցուցակը:

Այդուհանդերձ, իրաւապահ մարմինների որոշ ներկայացուցիչներ խոչընդոտներ են ստեղծում Պաշտպանի կողմից իրեն վերապահուած լիազօրութիւնների իրականացման համար: Այսպէս, նման դէպք է տեղի ունեցել ՀՀ Ոստիկանութեան Երեւան քաղաքի

վարչութեան Քանաքեռ-Զէյթուն բաժանմունքում:

6. Մեր կարծիքով, ստեղծուած իրավիճակը պայմանաւորուած է կոշտ կառավարման համակարգով, իշխանութեան գերկենտրոնացմամբ, հակակշիռների ձեւական բնոյթով, սոցիալական եւ տնտեսական բեւեռացմամբ, բիզնէսի եւ իշխանութեան միահիւսմամբ, իշխանութեան նկատմամբ հասարակութեան վերահսկողութեան բացակայութեամբ, քաղաքացիական ազատութիւնների ոչ լիարժէք լինելով: Այսինքն, սա այն իրավիճակն է, որի կապակցութեամբ ես, որպէս Մարդու Իրաւունքների պաշտպան, բազմաթիւ անգամ նշել եմ՝ մարդու իրաւունքների պաշտպանութեան տեսանկիւնից ունենք համակարգային խնդիրներ: Այս ամէնը բերել է նրան, որ հասարակութեան մի ստուար զանգուած իրեն օտարուած է զգում իշխանութիւնից, տոտալ անվստահութիւն ունի հանրային ինստիտուտների, ընտրական մեխանիզմների, արդարադատութեան եւ ԶԼՄ-ների նկատմամբ:

Քաղաքական ուժերի մի հատուած փորձեց օգտուել ստեղծուած իրավիճակից եւ այն օգտագործել իր նեղ քաղաքական շահերի համար՝ գնալով ոչ թէ երկխօսութեան, այլ՝ առճակատման ճանապարհով: Ձեւաւորուած իրավիճակում, իհարկէ, մեղքի իրենց բաժինն ունեն նաեւ իշխանութիւնները:

Այս իրավիճակի լուծման երկու ճանապարհ կայ՝ ոչ իրաւական՝ փակուղային եւ իրաւական: Փակուղայինը կը լինի, եթէ քաղաքական դաշտը ամայացուի եւ տոտալ վախի մթնոլորտ ձեւաւորուի: Միւս ճանապարհը՝ իրօք հիմնուել Ժողովրդավարութեան մեխանիզմների վրայ, անկիւնաքար վերցնել մարդու իրաւունքները՝ որպէս բարձրագոյն արժէք եւ գնալ երկխօսութեան եւ համագործակցութեան ճանապարհով:

Յուսադրող է, որ հէնց այս ճանապարհին է նախապատուութիւն տուել նորընտիր նախագահը: Դա ցոյց է տալիս, որ նոր ձեւաւորուող իշխանութիւնը փորձում է գնալ իրաւական ճանապարհով: Յատկանշական է, որ համագործակցութեան առաջարկ է անում մի քաղաքական առաջնորդ, որի գլխաւորած քաղաքական ուժը Ազգային Ժողովում մեծամասնութիւն է կազմում:

Համոզուած եմ, որ նոյնիսկ այս իրավիճակում դեռեւս չեն սպառուել երկխօսութեան եւ խնդրի քաղաքական ճանապարհով խաղաղ լուծման հնարաւորութիւնները:

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ ԸՆԴՈՒՆԵՑ ՀՀ ԳԼԽԱՒՈՐ ԴԱՏԱԽԱԶԻ ՄԻՋՆՈՐԴԱԳԻՐԸ

*Հետք*, 16:00

ԱԺ կայքէջը տեղեկացնում է.

Մարտի 4-ին տեղի ունեցաւ Ազգային Ժողովի արտահերթ նիստ:

Ազգային Ժողովի նախագահ Տիգրան Թորոսեանը տեղեկացրեց, որ ՀՀ նախագահ Ռոբերտ Քոչարեանի նախաձեռնութեամբ Ազգային Ժողովը արտահերթ նիստ է գումարում, որի օրակարգում մէկ հարց է. «Ազգային Ժողովի պատգամաւորներ Յակոբ Վարդանեսի Յակոբեանին, Միասնիկ Ժորայի Մալխասեանին, Սասուն Մեխակի Միքայէլեանին, Խաչատուր Ալբերտի Սուքիասեանին որպէս մեղադրեալ ներգրաւելու եւ նրանց նկատմամբ կալանքը որպէս խափանման միջոց կիրառելու թոյլտուութիւն տալու վերաբերեալ ՀՀ Գլխաւոր Դատախազի միջնորդագրի մասին»:

Պարոն Թորոսեանը տեղեկացրեց նաեւ, որ ԱԺ կանոնակարգի համաձայն՝

միջնորդագիրն ստանալուց յետոյ նշուած չորս պատգամաւորներին ուղարկուել է ծանուցագիր, որն ստանալու մասին տեղեակ են պահել միայն Միասնիկ Մալխասեանն ու Յակոբ Յակոբեանը, իսկ պատգամաւորներ Սասուն Միքայէլեանի ու Խաչատուր Սուքիասեանի գտնուելու վայրը յայտնի չէ, ուստի ծանուցագիրը յանձնուել է ընտանիքի անդամներին:

ՀՀ Ազգային Ժողովի պատգամաւորներ Յակոբ Վարդանեսի Յակոբեանին, Միասնիկ Ժորայի Մալխասեանին, Սասուն Մեխակի Միքայէլեանին, Խաչատուր Ալբերտի Սուքիասեանին որպէս մեղադրեալներ ներգրաւելու եւ կալանաւորելու համաձայնութիւն տալու մասին միջնորդագիրը ներկայացրեց ՀՀ Գլխաւոր Դատախազ Աղուան Յովսէփեանը: Նա նշեց, որ սկսած 2008 թ. փետրուարի 20-ից՝ Լեւոն Տէր-Պետրոսեանը եւ նրան իբրեւ ընտրուած նախագահ հռչակած իր համախոհներն ու աջակիցները, Երեւանի Ազատութեան Հրապարակում կազմակերպել եւ 10 օր տեւողութեամբ անընդմէջ անցկացրել են մայրաքաղաքի կենսագործունէութիւնը, ճանապարհատրանսպորտային երթեւեկութիւնը, պետական հիմնարկների բնականոն գործունէութիւնն ու ազգաբնակչութեան հանգիստն ու անդորրը խանգարող չարտօնուած զանգուածային հրապարակային միջոցառումներ, երթեր, շուրջօրեայ հանրահաւաքներ, որոնց ընթացքում զանգուածային հոգեխանգարմունքի ձեւաւորման տարատեսակ հնարքների կիրառմամբ հանդէս են եկել քաղաքացիական անհնազանդութիւն ցուցաբերելու, պետական մարմինների, մասնաւոր ձեռնարկութիւնների եւ ուսումնական հաստատութիւնների բնականոն գործունէութիւնը խաթարելու, իրաւապահ մարմինների օրինական պահանջներին չենթարկուելու հրապարակային կոչերով, որոնք զուգորդուել են ապատեղեկատուական բնոյթի սադրիչ ելոյթներով եւ յայտարարութիւններով, հասարակական կարգի պահպանութիւնն իրականացնող պետական ծառայողների բացայայտ շանտաժով:

Գլխաւոր Դատախազը նշեց նաեւ, որ ցուցարարները զաղտնի զինուել են փայտէ մահակներով, երկաթեայ ձողերով, որպէս զէնք օգտագործելու համար յարմարեցուած այլ առարկաներով, ինչպէս նաեւ դիւրավառ ու պայթուցիկ նիւթերով, ապօրինի հրազէնով ու ռազմամթերքով՝ նախապատրաստելով յատուկ գրոհային խմբեր՝ իրաւապահ մարմինների հետ բախումներ սադրելու, ոստիկանութեանը դիմադրութիւն ցուցաբերելու, օրինաչափ միջամտութիւնը բռնութեամբ յաղթահարելու նպատակով:

Իրավիճակը վտանգազերծելու նպատակով մարտի 1-ի վաղ առաւօտեան ոստիկանութիւնը ձեռնարկել է հանրավտանգ այդ նիւթերն առգրաւելուն ուղղուած օպերատիւ միջոցառում, սակայն նստացոյցի մասնակիցները կատաղի յարձակում են գործել իրենց ծառայողական պարտականութիւնները կատարող իրաւապահների նկատմամբ. ոստիկանութեան աշխատակիցներին յաջողուել է յաղթահարել զինուած դիմադրութիւնը: Ազատութեան Հրապարակում սկիզբ առած զանգուածային անկարգութիւնները շարունակուել են Գրիգոր Լուսաւորիչի Պողոտայում, կրկէսի, Ֆրանսիայի դեսպանատան, Երեւանի քաղաքապետարանի եւ Մետրոպոլ հիւրանոցի միջեւ ընկած տարածքում, վնասուել են պետական ու մասնաւոր սեփականութիւն հանդիսացող շինութիւններ, մեքենաներ: Առնուազն 160 անձ, այդ թւում աւելի քան 100 ոստիկաններ եւ զինծառայողներ ստացել են ծանրութեան տարբեր աստիճանի մարմնական վնասուածքներ: Զոհուել է 8 մարդ:

Անկարգութիւնները դադարեցուել են միայն ՀՀ նախագահի 2008 թ. մարտի 1-ի

հրամանագրով Երեւան քաղաքում արտակարգ դրութիւն յայտարարելուց յետոյ ոստիկանութեան, ազգային անվտանգութեան եւ զինուած ուժերի համատեղ ձեռնարկած միջոցառումների արդիւնքում:

Փաստի առթիւ յարուցուած է քրէական գործ, կատարւում է նախաքննութիւն:

Ձեռք բերուած ապացոյցները բաւարար հիմք են տալիս այն մասին, որ հրապարակային կոչերով բռնարարքներ հրահրելուն, անմիջական մասնակցութեամբ, դրդումներով, տարաբնոյթ օժանդակութիւններով, այդ թւում զրոհայինների հաւաքագրումներով եւ նրանց զինելով զանգուածային անկարգութիւնները կազմակերպելուն ակտիւ մասնակցութիւն են ունեցել նաեւ ԱԺ վերը նշուած չորս պատգամաւորները, որոնք ՀՀ Սահմանադրութեան խախտմամբ պետական իշխանութիւնը բռնութեամբ իւրացնելուն ուղղուած զանգուածային անկարգութիւններ են կազմակերպել: Նրանց նկատմամբ որպէս խափանման միջոց կալանաւորումը կիրառելու օրէնքով նախատեսուած հիմք են հանդիսանում նրանց կատարած արարքների բնոյթն ու վտանգաւորութեան աստիճանը, ինչի մասին վկայում են նախաքննութեամբ ձեռք բերուած բազմաթիւ ապացոյցները: Գլխաւոր դատախազը նշեց, որ նրանք կատարել են հանրօրէն վտանգաւոր արարքներ՝ նախատեսուած ՀՀ Քրէական Օրէնսգրքի 225 յօդուածի 3-րդ մասով եւ 300 յօդուածի 1-ին մասով:

Իրենց ելոյթներում ԱԺ պատգամաւորներ Յակոբ Վարդանեսի Յակոբեանը եւ Միասնիկ Ժորայի Մալխասեանը հաւաստիացրին, որ իրենք չէին կարող մեր երկրի անվտանգութիւնը խարխլող քայլեր անել, իրենց գործողութիւնները բացառապէս խաղաղ բնոյթ են կրել, իսկ հանրահաւաքներում հնչած իրենց ելոյթները, կոչերը սադրիչ գործողութիւնները կանխելու, ժողովրդին բախումներից հեռու պահելու նպատակ են հետապնդել: Նրանք յոյս յայտնեցին, որ քննութեամբ կը պարզուի իրենց անմեղութիւնը: Յակոբ Յակոբեանը նաեւ յայտարարեց, որ պատրաստ է կալանքը ընդունել որպէս խափանման միջոց, միայն թէ պարզուի ճշմարտութիւնը:

Հարցի վերաբերեալ ելոյթ ունեցան Ժառանգութիւն խմբակցութեան վեց պատգամաւորները՝ այդ թւում եւ խմբակցութեան ղեկավար Րաֆֆի Յովհաննիսեանը: Նրանց գնահատմամբ, չորս պատգամաւորների նկատմամբ իրականացւում է քաղաքական հետապնդում, եւ դատախազի ներկայացրած միջնորդութիւնը չունի բաւարար հիմքեր, ոմանք էլ յայտարարեցին, որ իրենք էլ պատրաստ են կալանաւորուել:

Արտահերթ ելոյթում Ազգային Ժողովի նախագահ Տիգրան Թորոսեանն ասաց.

«Յարգելի գործընկերներ: Մինչ այսօր քննարկուող հարցին անդրադառնալը, ես ուզում եմ կոչ անել մեր գործընկերներին զգոյշ եւ զուսպ լինել: Կորածների, մահացածների վերաբերեալ անպատասխանատու յայտարարութիւններ չանել: Եթէ կան յայտարարութիւններ կորածների վերաբերեալ, ապա պիտի անպայման դրանք ուղղուեն համապատասխան պետական մարմիններին, որպէսզի պարզուի՝ ովքեր են կորել, փորձել բացայայտել եւ ճշգրիտ պատասխաններ տալ: Պատգամաւորներն ունեն մեծ պատասխանատուութիւն, լիովին համաձայն եմ, բայց պատգամաւորները չէ, որ պիտի զբաղուեն այս հարցերով: Նրանք կարող են աջակցել, օգնել, փորձել պարզել, բայց շատ կարեւոր է տեղեկութիւնները ներկայացնել համապատասխան մարմիններին, ճշտումներ անել եւ դրանից յետոյ միայն յայտարարութւններ անել: Առաջին քայլը, որ այսօր պիտի արի, դա զուսպ վերաբերմունքն է տեղի ունեցածին, ինչքան էլ ցաւը խորն է,

իսկապէս՝ անդարմանելի: Իսկապէս այսպէս է, որովհետեւ տեղի ունեցաւ մի երեւոյթ, որը բացառիկ է մեր նորանկախ երկրի ողջ պատմութայն ընթացքում: Ցաւալի երեւոյթ: Դաժան երեւոյթ ու դատապարտելի երեւոյթ: Եւս մի քանի՝ այստեղից հնչած յայտարարութիւնների մասին: Ես չեմ ուզում գնահատական տալ այդ յայտարարութիւններին, ուղղակի ուզում եմ յուսալ, որ սայթաքում է, երբ յայտարարւում է, թէ կարեւոր է՝ երբ է զոհուել ոստիկանութեան գնդապետը. քաղաքացիական անձանցից յետո՞յ, թէ՞ առաջ: Մարդը զոհուել է եւ զոհուել է, որ աւելի մեծ թւով մարդիկ չզոհուեն: Մի՞թէ ճիշտ եւ արդարացի է նման հարցադրումներ ներկայացնելը: Մեր գործընկերոջ կատարած քայլի մասին այստեղ խօսուել է: Երբ այստեղ յատուկ նիստ էինք գումարել, մենք տեղեկութիւններ չունէինք զոհուած մարդկանց մասին: Դժբախտաբար, ողբերգութիւնը շատ աւելի խորն էր, քան անգամ յատուկ նիստ գումարելու ժամանակ հնարաւոր էր պատկերացնել: Ես համարում եմ ակնյայտ շահարկում, երբ այստեղից ասւում է, որ անհամապատասխան էր եւ իրաւաչափ չէր հանրապետութեան նախագահի յատուկ դրութիւն մտցնելու վերաբերեալ հրամանագիրը: Ի՞նչ պիտի լինէր այլեւս: Բացի նրանից, ինչ տեղի ունեցաւ: Մարդիկ զոհուեցին: Ութ մարդ, ութ հայ մարդ զոհուեց Հայաստանի մայրաքաղաքում: Վանդալիզմ տեղի ունեցաւ, մի բան, որ այս քաղաքում տեղի չէր ունեցել: Ջարդարարութիւն տեղի ունեցաւ, որ այս քաղաքում տեղի չէր ունեցել: Ես անցած անգամ եւս ասացի, որ կար այդ հրամանագիրը, բայց նաեւ մեծ յոյս կար, որ բանը նման իրավիճակների ու նման գործողութիւնների չի հասնի: Ու փորձ էր արւում ինչքան հնարաւոր է յետաձգել պահը: Բայց մարդկանց զոհուելուց հետ, ջարդարարութիւնից յետոյ է՞լ միթէ չպիտի մտցուէր այդ յատուկ դրութիւնը: Ազատութիւն, ժողովրդավարութիւն, քաղաքացիական պարտք եւ այլն, գեղեցիկ խօսքեր են: Բայց, անկեղծ ասեմ, այսօր դրանք բոլորովին այլ հարթութիւնում եւ այլ ենթատեքստով են հնչեցւում, բոլորովին այլ տպաւորութիւն է ստեղծւում. այստեղ ոչ մի կապ չունի ոչ ազատութիւնը, ոչ ժողովրդավարութիւնը: Համատեղելի՞ է ժողովրդավարութեան եւ ազատութեան հետ, երբ մարդիկ են զոհւում: Երբ ջարդարարութիւն է տեղի ունենում ակնյայտօրէն բոլորի աչքի առջեւ: Սա՞ է ժողովրդավարութիւնն ու ազատութիւնը: Ցաւօք սրտի, կայ նաեւ շփոթմունք: Մարդիկ աւելի շատ խօսում էին, թէ ինչ է տեղի ունեցել, անգամ յայտարարւում էր, թէ ես էլ այս եմ արել, միւսն էլ այն է արել, ինչու դրա մասին այստեղ չկայ: Մենք այսօր այստեղ այդ ողբերգական ժամերի գնահատականը չենք տալիս: Այսօր բոլորովին այլ հարց է ներկայացուած: Եւ հարցի շեղումը, կարծում եմ, բոլորովին էլ արդարացուած չէ, յարգելի գործընկերներ, եւ ոչ էլ այստեղ մրցակցութիւն է, թէ ինչի մասին ասուեց եւ ինչի մասին չասուեց: Այստեղ՝ այս քննարկման ժամանակ, գնահատական չի տրւում այն երեւոյթին, որը տեղի ունեցաւ: Դա տրւում էր երբ մենք յատուկ նիստ, արտահերթ նիստ էինք անում: Ի դէպ, ուզում եմ յիշեցնել, որ որեւէ մէկը ներկայ 91 պատգամաւորներից, ընդ որում՝ բոլոր խմբակցութիւնների մասին է խօսքը, չներկայացրեց ԱԺ որոշման նախագիծ՝ մերժելու համար հանրապետութեան նախագահի մտցրած արտակարգ դրութեան այդ հաստատումը: Սա է իրականութիւնը եւ կը ներէք, գոնէ այսօրուան դա յարիր չէ: Եկէք գոնէ այսօր, մօտակայ ժամանակշրջանում անենք քայլեր, որոնք դուրս են սովորական քաղաքական մոլորութիւններից: Այսօր քննարկւում է մէկ հարց ընդամէնը: Քննարկւում է, թէ մենք ինչպիսի դիրքորոշում պէտք է ունենանք Գլխաւոր Դատախազի միջնորդութեան նկատմամբ: Անկեղծօրէն պիտի ասեմ, որ ես ամէն ինչ կը տայի, որ նման քննարկում չլինէր այս

դահլիճում: Ոչ միայն այն պատճառով, որ չորս մարդկանց հետ, չորս պատգամաւորների հետ ես այս դահլիճում աշխատել եմ ինը տարի, դեռ չեմ ասում այն մնացած մեր յարաբերութիւնների մասին, որ եղել են այս դահլիճից դուրս: Սակայն մէկ բան կայ, որը մենք չենք կարող չտեսնել: Դա այն է, ինչ տեղի է ունեցել, դա ողբերգութիւնն է, այն ցաւն է, որ այսօր կայ: Աւելին, դա այն ամօթն է, որ այսօր կայ: Ամօթ, որը վերացնելու համար շատ ժամանակ է պէտք լինելու: Ամօթ, որ մեր երկրում նման բան է տեղի ունեցել: Մի բան, որը բացարձակապէս որեւէ կապ չունի ոչ ընտրութեան, ոչ էլ քաղաքական գործընթացների հետ: Ընտրութիւններ եղել են, կան եւ կը լինեն: Ի՞նչ կապ ունի վայրագութիւնը, ի՞նչ կապ ունի մարդկանց զոհուելը ընտրութեան հետ: Մի՞թէ սեփական կարծիքի ազատութեան ու իրաւունքների համար նման ձեւով են պայքարում: Չկայ, չի եղել մարդկութեան պատմութեան մէջ նման ձեւերով պայքար այդ արժէքների համար: Ճիշտ հակառակը: Նրանք, ում համար թանկ են այդ արժէքները, երբեք նման ձեւեր չեն ընդունում, երբեք նման քայլեր չեն անում: Եկէք շիտակ խօսենք. տեղի է ունեցել մի բան, որը բացարձակապէս դուրս է այն քաղաքական հարցադրումներից, որոնք այստեղ ներկայացուեցին: Իհարկէ, կարելի է գեղեցիկ խօսքեր, արտայայտութիւններ, յուզական ելոյթներ ունենալ, բայց կայ այսօրուայ դաժան իրողութիւնը, եւ պէտք է այստեղից ելք գտնել: Ասւում է՝ եկէք դնենք ամէն ինչ մի կողմ, հիմա երկխօսութիւն անենք եւ լուծումներ գտնենք: Երկխօսութիւնը ոչ մէկին արգելուած չէ, ճիշտ հակառակը՝ բազմաթիւ երկխօսութեան կոչեր հնչեցին: Ցաւօք սրտի, դրանք ոմանց կողմից կտրականապէս մերժուեցին եւ պայմաններ դրուեցին դրա համար: Երկխօսութիւնը խնդիրներ լուծելու համար է, ոչ թէ պայման թելադրելու համար: Բայց ես դրան էլ չեմ ուզում անդրադառնալ: Կարեւորը մէկն է. տեղի է ունեցել այդ դաժան իրադարձութիւնը, եւ այսօր շատ կարեւոր է պարզել՝ ովքեր էին դրա մեղաւորները, ով ուզում է լինի՝ անկախ իրենց կուսակցական պատկանելութիւնից, դիրքից, ազգեցութիւնից՝ այդ մարդիկ պիտի պատասխան տան, որովհետեւ որեւէ մէկին՝ անկախ իր նպատակներից ու իր դիրքորոշումից, այս քաղաքում ջարդարարութիւն անելու, այս քաղաքում մարդ սպանելու իրաւունք վերապահուած չէ: Եւ որեւէ երկխօսութեամբ չի կարելի դարմանել այդ վէրքը: Պիտի ամենայն խստութեամբ պատժուեն մարդիկ: Դա ասելով ես նկատի չունեմ մեր գործընկերներին, որոնք այստեղ են եւ երկուսը այստեղ չեն: Տպաւորութիւն էր ստեղծւում, թէ իբր մենք այստեղ դատարան ենք եւ որոշում ենք մեր գործընկերները մեղաւոր են, թէ չէ: Մենք նման իրաւասութիւն չունենք, յարգելի գործընկերներ: Այո, կարեւոր է պատգամաւորի դիրքը, բայց մենք որեւէ մէկին դատապարտելու կամ մեղադրելու իրաւունք չունենք: Եւ մեզանից չեն էլ խնդրում այստեղ որեւէ մէկին համարել որեւէ յանցագործութիւն կատարող, դա դատարանի իրաւասութիւնն է: Քննութիւնն է պարզում՝ որեւէ մէկը մեղաւոր է, թէ ոչ: Ես բարձր եմ գնահատում Յակոբ Յակոբեանի ելոյթն այստեղ եւ իր յայտարարութիւնը: Եւ ես յիշեցի մեր հանգուցեալ գործընկերոջը՝ Մուշեղ Մովսիսեանին, երբ հոկտեմբերի 27-ի հետ կապուած նա այստեղ ասաց գրեթէ նոյն խօսքերը: Մենք պիտի հնարաւորութիւն ստեղծենք, որ լիարժէքօրէն բացայայտուի, թէ ինչ է կատարուել: Սա է խնդիր եւ ես հէնց այսպէս եմ գնահատում Յակոբ Յակոբեանի խօսքերը եւ գնահատում եմ որպէս արժանապատուութիւն ունեցող մարդու խօսք: Եւ ես անկեղծօրէն շատ ուրախ էի, երբ մեր գործընկեր Մուշեղ Մովսիսեանը վերադարձաւ եւ պարզուեց, որ որեւէ յանցանք չի կատարել մարդը, եւ մենք սիրով եւ ուրախութեամբ նորից իր հետ աշխատեցինք այս դահլիճում: Մենք մէկ խնդիր ունենք,

ստեղծել հնարաւորութիւններ: Գլխաւոր դատախազը եկել է այդ առաջարկով: Ստեղծել հնարաւորութիւններ, որ քննութիւնը թոյլ տայ պարզելու, թէ ինչ է կատարուել այդ ժամանակ: Կ'անե՞նք դա, թէ չէ. սա է խնդիրը: Գիտէք, ես անկեղծ պիտի լինեմ: Յայտարարութիւնները, թէ մեր գործընկերները քաղբանտարկեալներ են, թէ մենք էլ ենք պատրաստ... Ներողութիւն, յարգելի, գործընկերներ, ես ձեզ չեմ հաւատում: Մի մարդ էլ յայտարարեց, որ ինքն է լինելու միակ զոհը. տեսանք, թէ ովքեր զոհ եղան: Սա է իրականութիւնը եւ մենք պարտաւոր ենք այդ իրականութեանը շիտակ նայել: Եւս մէկ անգամ ուզում եմ ընդգծել՝ ինձ համար շատ աւելի բարձր է, շատ աւելի մարդկային եւ շատ աւելի ժողովրդավարական Յակոբ Յակոբեանի յայտարարութիւնը, որ այո, ես պատրաստ եմ, որ կալանքը լինի խափանման միջոցը՝ միայն թէ պարզուի իրականութիւնը, քան թէ կեղծ յայտարարութիւնները ազատութեան եւ ժողովրդավարութեան մասին»:

Եզրափակիչ ելոյթում Գլխաւոր Դատախազն անդրադարձաւ մի քանի հարցադրումների. մասնաւորապէս իրաւապահ մարմինների գործողութիւնների համարժէքութեան խնդրին: Գլխաւոր Դատախազի համոզմամբ, հետեւանքներն աւելի ծանր ու անկանխատեսելի կը լինէին՝ մարտի 1-ի լոյս 2-ի գիշերը, եթէ իրաւապահ մարմիններն աւելի հանդուրժող, խելամիտ չլինէին եւ իրենց լիազօրութիւնների շրջանակներում համապատասխան միջոցառումներ չիրականացնէին: Կանխուեց աւելի ողբերգական հետեւանքներ, եզրափակիչ ելոյթում ասաց Աղուան Յովսէփեանը: Ձերբակալուած անձանց հետ տեսակցութիւն ունենալու խոչընդոտների մասին Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորների հարցին ի պատասխան Գլխաւոր Դատախազը յայտատարեց, որ այդ պահանջները չեն բխում օրէնքից եւ այսուհետ չի թոյլատրուելու ձերբակալուածների հետ որեւէ պատգամաւորի հանդիպում:

ԱԺ ժամանակաւոր հաշուիչ յանձնաժողովի նախագահ Սամուէլ Նիկոյեանը խորհրդարանին ներկայացրեց քուէարկութեան արդիւնքները: Ձայները բաշխուել էին հետեւեալ կերպ. Խաչատուր Ալբերտի Սուքիասեան՝ կողմ 85, դէմ 22 դէմ, Յակոբ Վարդանեսի Յակոբեան՝ կողմ 84, դէմ 20, Միասնիկ Ժորայի Մալխասեան՝ կողմ 84, դէմ 22, Սասուն Մեխակի Միքայէլեան՝ կողմ 86, դէմ 20:

ԱԺ նախագահ Տիգրան Թորոսեանը նշեց, որ քուէարկութեան արդիւնքների համաձայն Ազգային Ժողովը համաձայնութիւն տուեց ՀՀ ԱԺ պատգամաւորներ Միասնիկ Ժորայի Մալխասեանին, Սասուն Մեխակի Միքայէլեանին, Յակոբ Վարդանեսի Յակոբեանին եւ Խաչատուր Ալբերտի Սուքիասեանին որպէս մեղադրեալներ ներգրաւելու եւ կալանքը որպէս խափանման միջոց կիրառելու թոյլտուութիւն տալու վերաբերեալ ՀՀ Գլխաւոր Դատախազի միջնորդագրին:

## «ԱՆԿԱԽ ԼՐԱՏՈՒԱԿԱՆ ԼՈՒՍԱԲԱՆՄԱՆ ԱՐԳԵԼՈՒՄԸ ԴԷՄ Է ԵԱՀԿ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ», - ԱՍՈՒՄ Է ԵԱՀԿ ՄԱՄՈՒԼԻ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԵՐՈՎ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

*Հետք*, 18:00

ՎԻԵՆՆԱ, 4 մարտի 2008թ. - ԵԱՀԿ մամուլի ազատութեան հարցերով ներկայացուցիչ Միկլոշ Հարաստին այսօր կոչ է արել Հայաստանի իշխանութիւններին հանել անկախ լրատուական լուսաբանման սահմանափակումները, որոնք մտցուել էին մարտի 1-ից, երբ երկրում յայտարարուեց արտակարգ իրավիճակ:

«Արտակարգ իրավիճակը չպէտք է օգտագործուի պետութեան կողմից՝ հանրութեանը տարբեր աղբիւրներից նորութիւններ ստանալու իրաւունքից զրկելու համար: Բազմակարծիք լրատուութիւնը օգնում է ապահովել իշխանութիւնների գործողութիւնների թափանցիկութիւնը նոյնիսկ ծանր ժամանակներում», - ասաց Հարաստին:

Նա յղում արեց մարտի 1-ին ՀՀ նախագահ Ռոբերտ Քոչարեանի Հայաստանում արտակարգ իրավիճակը մտցնելու մասին որոշմանը, որի համաձայն՝ ներքաղաքական լուսաբանման ժամանակ լրատուամիջոցները կարող են օգտուել միայն պաշտօնական աղբիւրներից: Արդիւնքում հանրութեանը ներկայացւում է միայն միակողմանի լրատուութիւն:

Ոչ պետական լրատուամիջոցները սահմանափակուած են հեռարձակելու միայն պաշտօնական նորութիւններ եւ ծրագրեր: Փակուել են մի քանի անկախ եւ ընդդիմադիր վէբ կայքեր, իսկ արտասահմանեան ԶԼՄ-ների ռադիոյով եւ հեռուստատեսութեամբ հեռարձակումը սահմանափակուած է:

Որպէս բողոք առկայ սահմանափակման դէմ՝ որոշ հիմնական հայկական թերթեր այսօր լոյս չեն տեսել:

«Չնայած չարտօնուած ցոյցերի ալիքին եւ նոյնիսկ բռնութեան՝ իրավիճակի անկախ լուսաբանումը ԶԼՄ-ների օրինաւոր իրաւունքն է, որին Հայաստանը պարտաւորուել է հետեւել որպէս ԵԱՀԿ անդամ», - ասաց Հարաստին:

«Բռնութեան հրահրման կանխմանն ուղղուած առկայ իրաւական դաշտը պէտք է բաւարար լինի խօսքի ազատութեան իրաւունքի որեւէ հնարաւոր չարաշահմանը հակազդելու համար եւ չպէտք է փոխարինուի կանխարգելիչ գրաքննութեամբ»:

## 6 ՄԱՐՏ 2008

## ՀԵՏԱԽՈՒԶՒՈՒՄ ԵՆ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐ ԽԱՉԱՏՈՒՐ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԸ ԵՒ ՍԱՍՈՒՆ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԸ

*Հետք*, 15:00

Գլխաւոր Դատախազութեան կայքէջը տեղեկացնում է, որ հետախուզում է յայտարարուել ՀՀ ԱԺ պատգամաւորներ Խաչատուր Սուքիասեանի եւ Սասուն Միքայէլեանի նկատմամբ:

Հաղորդագրութեան մէջ նշուած է. «2008 թուականի փետրուարի 20-ից մարտի 2-ն ընկած ժամանակահատուածում Երեւան քաղաքում տեղի ունեցած, Հայաստանի Հանրապետութեան սահմանադրութեան խախտմամբ պետական իշխանութիւնը բռնութեամբ իւրացնելուն ուղղուած զանգուածային անկարգութիւններ կազմակերպելու համար, ինչը զուգորդուել է բռնութեամբ, ջարդերով, հրկիզումներով, պետական, հանրային եւ մասնաւոր գոյքի ոչնչացմամբ, իշխանութեան ներկայացուցիչներին զինուած դիմադրութիւն ցոյց տալով, հրազէնի, պայթուցիկ նիւթերի, որպէս զէնք օգտագործելու համար յարմարեցուած տարատեսակ առարկաների գործադրմամբ, սպանութիւններով, ՀՀ յատուկ քննչական ծառայութեան վարոյթում քննուող քրէական գործի շրջանակներում մարտի 6-ի դրութեամբ մեղադրանք է առաջադրուել 46 անձի եւ նրանց նկատմամբ որպէս խափանման միջոց է ընտրուել կալանքը: Եւս 20 անձ որպէս կասկածեալ ձերբակալուել է:

Կալանաւորուած անձանց մեղադրանք է առաջադրուել ՀՀ Քրէական Օրէնսգրքի տարբեր յօդուածներով՝ զանգուածային անկարգութիւնների, օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ հրապարակային միջոցառում կազմակերպելու, անցկացնելու, այն դադարեցնելու վերաբերեալ պահանջներին չենթարկուելուն ուղղուած կոչեր անելու, իշխանութեան ներկայացուցչի նկատմամբ բռնութիւն գործադրելու, պետական իշխանութիւնը իւրացնելու համար:

Միջոցներ են ձեռնարկւում ՀՀ ԱԺ պատգամաւորներ Խաչատուր Սուքիասեանին եւ Սասուն Միքայէլեանին յայտնաբերելու ուղղութեամբ: ՀՀ Ազգային Ժողովը 04.03.08թ. բաւարարել էր ՀՀ Գլխաւոր Դատախազի միջնորդագիրը՝ պատգամաւորներ Խ. Սուքիասեանին, Ս. Միքայէլեանին, Հ. Յակոբեանին եւ Մ. Մալխասեանին որպէս մեղադրեալ ներգրաւելու եւ նրանց նկատմամբ որպէս խափանման միջոց կալանքը կիրառելու համաձայնութիւն տալու մասին:

Յ. Յակոբեանը եւ Մ. Մալխասեանը կալանաւորուած են, իսկ Խ. Սուքիասեանն ու Ս. Միքայէլեանը թաքնւում են քննութիւնից եւ դատարանի 05.03.08թ. որոշմամբ նրանց նկատմամբ որպէս խափանման միջոց է ընտրուել կալանքը եւ յայտարարուել հետախուզում:

ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում նախաքննութիւնը շարունակւում է, արդիւնքների մասին կը յայտնենք լրացուցիչ»:

## 9 ՄԱՐՏ 2008

### ՍԱՍՈՒՆ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԸ ՀՐԱՀԱՆԳԵԼ Է «ԱՄԷՆ ԳՆՈՎ ՋԱԽՋԱԽԵԼ» ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

*Հետք*, 16:00

*Մեր ընթերցողներին ուզում ենք նորից յիշեցնել, որ յայտարարուած արտակարգ դրութեան պատճառով սահմանափակուած է մեր աշխատանքը եւ չենք կարող ներկայացնել այլ կարծիք, տեսակէտ՝ բացի պաշտօնականից:*

Մարտի 8-ին Գլխաւոր Դատախազութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը.

«ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում շարունակւում է իշխանութիւնը բռնի իւրացնելու, սահմանադրական կարգը խախտելուն ուղղուած զանգուածային անկարգութիւնների դէպքի առթիւ յարուցուած քրէական գործի նախաքննութիւնը:

Նախաքննութեամբ արդէն իսկ կատարուել է մեծածաւալ աշխատանք եւ ձեռք բերուած ապացոյցների արդիւնքում պարզուել են զանգուածային անկարգութիւններ հրահրած, կազմակերպած առանցքային գործող անձանց ինքնութիւնը, մեթոդոլոգիան, բացայայտուել են մի շարք կառոյցներ, որոնց միջոցով կազմակերպուել, համակարգուել են երկրի ներքաղաքական իրավիճակն ապակայունացնելուն ուղղուած գործողութիւնների իրականացումը:

Օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ Ազատութեան Հրապարակում կազմակերպուած զանգուածային միջոցառումների մասնակիցների վկայութեամբ, կազմակերպիչների կողմից բնակչութեան մասնակցութիւնը խրախուսուել է նիւթապէս: Օրինակ՝

Ազատութեան Հրապարակում գիշերը մնալու համար անձին վճարուել է 5-10 հազար դրամ, ապահովուել՝ սնունդով եւ խմիչքով: Աւելին՝ նրանց տրամադրուել են նաեւ մետաղեայ ձողեր, բենզին՝ 20 լիտրանոց տարաների մէջ, ինչպէս նաեւ դիւրավառ «կապոյտ գոյնի մի քիչ պինդ հեղուկ»՝ շշալցուած:

Իւրաքանչիւր մարզ, տարածք ունեցել է իր պատասխանատուն, ով հոգացել է անհրաժեշտ բոլոր ծախսերը: Ձեռք բերուած ապացոյցների համաձայն՝ Հրազդանի եւ նրա յարակից տարածքների բնակիչների՝ Ազատութեան Հրապարակում ներկայութիւնն ապահովելու համար անհրաժեշտ գումարային յատկացումները կատարել է ՀՀ ԱԺ պատգամաւոր, ներկայումս հետախուզման մէջ գտնուող Սասուն Միքայէլեանը, իսկ հաւաքագրմամբ զբաղուել է վերջինիս համախոհ ոմն Գոռ:

Հանրահաւաքների անմիջական մասնակից, Ծաղկաձորի բնակիչ Արմէն Ալեքսանեանի վկայութեամբ, մէջբերում ենք. «Օպերայի բակում գտնուելով հասկացայ, որ Հրազդանից եւ նրա շրջակայ գիւղերից եկած ժողովրդին պահում եւ կերակրում էր Սասուն Միքայէլեանը: Նա էր ֆինանսաւորում Բարեղամեանին, որն էլ Գոռի միջոցով գիշերը մնալու համար հրազդանցիներին, մօտակայ գիւղերի բնակիչներին վճարում էր 5 հազար դրամ»:

Վկայութիւնների համաձայն՝ Ս. Միքայէլեանը երկրի ապակայունութեանը միտուած՝ օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ կազմակերպուող զանգուածային միջոցառումների մասնակիցներին ֆինանսաւորելուց բացի, նաեւ յստակ հրահանգներ է տուել իշխանութիւնն «ամէն գնով զաւթելու մասին»:

Նախաքննութեամբ պարզուել է Բարեղամեանի եւ Գոռի ինքնութիւնը, որոնք ձերբակալուել են, Սասուն Միքայէլեանը դիմել է փախուստի եւ միջոցներ են ձեռնարկւում նրան եւ նրա միւս յանցակիցներին յայտնաբերելու ուղղութեամբ:

Նախաքննութեամբ ձեռնարկուած միջոցառումների արդիւնքում պարզուել է նաեւ 2008 թուականի մարտի 1-ին մայրաքաղաքում տեղի ունեցած զանգուածային անկարգութիւնների ժամանակ, ՀՀ ոստիկանութեան Գուգարքի քրէական հետախուզութեան բաժնի պետ, ոստիկանութեան փոխգնդապետ Մարատ Մանուկեանին դաժան ծեծի ենթարկածներից մէկի ինքնութիւնը: Նախաքննութեան տուեալներով՝ փոխգնդապետի ծեծին ակտիւ մասնակցութիւն է ունեցել ոստիկանութեան նախկին աշխատակից Քրիստափոր Էլազեանը, ում 08.03.08թ. առաջադրուել է մեղադրանք եւ նրա նկատմամբ, դատարանի որոշմամբ, որպէս խափանման միջոց կիրառուել է կալանաւորում:

Ձեռնարկւում են քննչական-օպերատիւ միջոցառումներ ինչպէս փոխգնդապետ Մ. Մանուկեանի ծեծին անմիջական մասնակցութիւն ունեցած միւս անձանց, այնպէս էլ զանգուածային անկարգութիւնների մնացած մասնակիցներին, կազմակերպիչներին յայտնաբերելու ուղղութեամբ:

Մարտի 8-ի դրութեամբ՝ զանգուածային անկարգութիւնների ժամանակ տարբեր աստիճանի ծանրութեան մարմնական վնասուածքներ են ստացել 180 ոստիկան, զինծառայող եւ 48 քաղաքացի, տուժուած անձանց թուերը ճշտւում են: ՀՀ յատուկ քննչական ծառայութեան վարոյթում քննուող քրէական գործի շրջանակներում մեղադրանք է առաջադրուել 59 անձի»:

## 10 ՄԱՐՏ 2008

## ՍԱՀՄԱՆԱՓԱԿՈՒՄՆԵՐԻ ԿՐՃԱՏՈՒՄ

*Հետք*, 14:00

Նախագահ Ռոբերտ Քոչարեանը մարտի 1-ին հրամանագիր էր ստորագրել Երեւանում 20 օրով «Արտակարգ դրութիւն հաստատելու մասին»: Այսօր նախագահի որոշմամբ այդ հրամանագրի 4-րդ կէտի 6-րդ եւ 7-րդ ենթակէտերը համարուել են ուժը կորցրած:

Այդ ենթակէտերով սահմանուել էր.

6. Արտակարգ դրութիւն յայտարարելու համար հիմք ծառայող հանգամանքների վերացմանը խոչընդոտող կուսակցութիւնների եւ այլ հասարակական կազմակերպութիւնների գործունէութեան ժամանակաւոր կասեցում:

7. Արտակարգ դրութեան իրաւական ռեժիմը խախտած եւ տուեալ տարածքում չբնակուող անձանց վտարում՝ նրանց միջոցների հաշուին, իսկ միջոցներ չլինելու դէպքում՝ ՀՀ պետական բիւջէի միջոցների հաշուին՝ կատարուած ծախսերի յետագայ փոխհատուցման պայմանով:

Նախագահի մամուլի քարտուղար Վիկտոր Սողոմոնեանի խօսքերով՝ Ռ. Քոչարեանն այս հրամանը ստորագրել է հաշուի առնելով այն հանգամանքից, որ մարտի 1-ից մինչ օրս Երեւանում ՍԴ ռեժիմի որեւէ խախտում չի արձանագրուել, իսկ ներքաղաքական իրավիճակը կայունանում է:

«Այս պահի դրութեամբ նախագահի աշխատակազմում համապատասխան մասնագէտների կողմից աշխատանքներ են տարւում՝ ԶԼՄ-ների աշխատանքի սահմանափակումներին առնչուող կէտի վերաբերեալ այլ իրաւական լուծումներ գտնելու ուղղութեամբ, ինչը թոյլ կը տայ մեղմել սահմանափակումների սահմանուած աստիճանը», - աւելացրեց Վ. Սողոմոնեանը:

Յիշեցնենք, որ վերոյիշեալ հրամանագրի 4-րդ կէտի 4-րդ ենթակէտով սահմանուել էր.

4. Զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պետական մարմինների պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում:

## 14 ՄԱՐՏ 2008

## ԱՀԱԶԱՆԳՈՒՄ ԵՆ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԸ

*Հետք*, 11:00

Երեւանում արտակարգ դրութիւն յայտարարելու յաջորդ օրը՝ մարտի 2-ին, Ազգային Անվտանգութեան Ծառայութեան (ԱԱԾ) աշխատակիցներն այցելեցին թերթերի խմբագրութիւններ՝ ներկայացնելով անստորագիր եւ չկնքուած մի երկտող, որով զգուշացւում էր, որ եթէ թերթերի հրապարակումները պարունակեն պաշտօնականից տարբերուող տեղեկատուութիւն, ապա տուեալ թերթի գործունէութիւնը կը դադարեցուի: Նոյն գիշեր տպարան տարուած թերթերի նիւթերը մանրակրկիտ ստուգել են ԱԱԾ աշխատակիցները եւ բանաւոր հրահանգով արգելել տպագրութիւնը:

Նկատի ունենալով, որ պաշտօնական կոչուող տեղեկատուութիւնն առնուազն միակողմանի է, չի արտացոլում կատարուածի ամբողջական պատկերը եւ առանց ընդհատումների եթեր է սփռւում շուրջ մէկ տասնեակ հեռուստաալիքներով՝ առանձին թերթեր պարզապէս հրաժարուեցին լոյս տեսնել, միւսներն էլ յայտնուեցին հարկադիր պարապուրդի մէջ:

Սա մեզ հիմք է տալիս յայտարարելու, որ ՀՀ իշխանութիւնները պարզապէս արգելել են իրենց համար անցանկալի լրատուամիջոցների գործունէութիւնը: Մանաւանդ որ, արտակարգ դրութեան պայմաններում հրատարակուող «իւրային» պարբերականների վրայ ամենեւին էլ չէր տարածուել բացառապէս պաշտօնական լրատուութիւն հրապարակելու պահանջը:

Տեղեկատուական տեռորը լիակատար դարձնելու համար արգելափակուել են նաեւ ինտերնէտային կայքէջերը: Աւելին, *CNN* ու *Euronews* հեռուստաալիքների թողարկումները, որոնք անդրադառնում են Հայաստանում կատարուող իրադարձութիւններին, ընդհատւում են, եւ փոխարէնը հեռարձակւում են գովազդային հոլովակներ, իսկ *Ազատութիւն* ռադիոկայանի հեռարձակումը ընդհանրապէս դադարեցուեց:

Մենք յայտարարում ենք, որ այս ամէնը ոչ միայն չի նպաստում հասարակութեան մէջ առկայ լարուածութեան թուլացմանը, այլեւ խորացնում է ատելութեան ու թշնամանքի մթնոլորտը: Պաշտօնական կոչուող տեղեկատուութիւն սփռող լրատուամիջոցների ճնշող մեծամասնութիւնը եւ մանաւանդ մամուլի խօսնակները իրենց ագրեսիայով ընդամէնը նպաստում են անառողջ տրամադրութիւնների բորբոքմանը եւ խորացնում են անվստահութիւնը պետութեան նկատմամբ:

Ստեղծուած իրավիճակում ոտնահարուել է տեղեկութիւններ տարածելու եւ ստանալու մեր սահմանադրական իրաւունքը, խախտուել են խօսքի եւ մամուլի ազատութեան համընդհանուր ճանաչուած սկզբունքները, լրատուամիջոցները կրում են նիւթական կորուստներ, Հայաստանում իրականացւում է գրաքննութիւն, եւ մեր երկիրը յայտնուել է տեղեկատուական լիակատար շրջափակման մէջ:

*Ա1+*-ի նախագահ՝ Մեսրոպ Մովսիսեան
*Առաւօտ* օրաթերթի գլխաւոր խմբագիր՝ Արամ Աբրահամեան
Երեւանի Մամուլի Ակումբի նախագահ՝ Բորիս Նաւասարդեան
*Ժամանակ Երեւան* օրաթերթի խմբագիր՝ Այդին Մորիկեան
Ինտերնիւս կազմակերպութեան ղեկավար՝ Նունէ Սարգսեան
*Լրագիր* կայքէջի գլխաւոր խմբագիր՝ Հայկազն Ղահրիեան
*Հայկական ժամանակ* օրաթերթի գլխաւոր խմբագրի տեղակալ՝ Հայկ Գէորգեան
*Հայք* օրաթերթի գլխաւոր խմբագիր՝ Վասակ Դարբինեան
*168 ժամ* թերթի գլխաւոր խմբագիր՝ Սաթիկ Սէյրանեան
*Հետք* էլեկտրոնային թերթի գլխաւոր խմբագիր՝ Էդիկ Բաղդասարեան
*Հրապարակ* օրաթերթի գլխաւոր խմբագիր՝ Արմինէ Օհանեան
*Չորրորդ իշխանութիւն* թերթի գլխաւոր խմբագիր՝ Շողեր Մաթեւոսեան
*Տարեգիր* թերթի գլխաւոր խմբագիր՝ Վասակ Դարբինեան
*Արմենիա նաու* էլեկտրոնային հանդէսի խմբագիր՝ Ջոն Հիւզ

## ԳԷՈՐԳ ԴԱՆԻԷԼԵԱՆ. «ԱՄԲՈՂՋ ԽՆԴԻՐԸ ԱՆՀԱՐԿԻ ԲԱԽՈՒՄՆԵՐԸ, ԱՆՀԱՐԿԻ ՋԱՆԳՈՒԱԾԱՅԻՆ ԱՆԿԱՐԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԿԱՆԽԵԼՆ Է»

*Հետք*, 12:00

Հայաստանի արդարադատութեան նախարար Գէորգ Դանիէլեանը երէկ *Ազատութիւն* ռադիոկայանի հետ հարցազրոյցում որոշ պարզաբանումներ տուեց երկրի նախագահի՝ ինչպէս արտակարգ դրութիւն մտցնելու մասին, այնպէս էլ, մասնաւորապէս, լրատուամիջոցների գործունէութեան սահմանափակումների որոշակի մեղմացում նախատեսող հրամանագրերի վերաբերեալ:

Ըստ արտակարգ դրութեան մասին հրամանագրի, պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող էին իրականացուել բացառապէս պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում: Հարցին, թէ արդեօ՞ք այս դրոյթին ենթարկուել են բոլոր լրատուամիջոցները, արդեօ՞ք բոլորն էին հաւասար հրամանագրում նշուած պահանջի առջեւ, Դանիէլեանը պատասխանեց. - «Բնականաբար՝ բոլորը»:

Իսկ դիտարկմանը, թէ չի՞ խախտուել արդեօք հրամանագրի պահանջը, երբ որոշ հեռուստաընկերութիւններ ցուցադրել են փողոցում վերցրած հարցազրոյցները, արձագանքեց. - «Ոչ, չի խախտուել: Ցանկացած հեռուստաընկերութիւն կարող էր փողոցում վերցնել [հարցազրոյցներ] եւ այլն: Խօսքը վերաբերում է պաշտօնական տեղեկատուութեան շրջանակներին: Պաշտօնական տեղեկատուութեան շրջանակ հասկացութիւնը բնաւ չի ենթադրում, որ դուք պէտք է կրկնէք բառացի այն տեղեկատուութիւնը, որը պաշտօնական տեղեկատուութեամբ արդէն իսկ կայ: Խօսքը վերաբերում է այն տեղեկատուութեանը, որը շրջանակներում է տեղաւորւում պաշտօնական տեղեկատուութեան: Այսինքն՝ սա չի նշանակում, որ չէր կարող լինել բազմակարծութիւն. փառք Աստծոյ, եղել է: Սա չի նշանակում, որ չեն կարող լինել տարաբնոյթ մեկնաբանութիւններ. դարձեալ եղել են: Սա նշանակում է՝ միայն պաշտօնական տեղեկատուութեան շրջանակներում պէտք է այս ամէն ինչը արուի»:

Արտակարգ դրութեան մասին հրամանագրում նախագահ Ռոբերտ Քոչարեանի՝ երէկ կատարած փոփոխութիւնից յետոյ լրատուամիջոցները պարտաւոր են ոչ թէ բացառապէս պաշտօնական տեղեկատուութիւն հրապարակել, այլ նրանց «արգելւում է պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ ակնյայտ սուտ կամ իրավիճակը ապակայունացնող տեղեկատուութիւն կամ առանց իրազեկման, այսինքն (ապօրինի) միջոցառումների մասնակցութեան կոչեր, ինչպէս նաեւ նման տեղեկատուութիւն կամ կոչեր որեւէ այլ եղանակով եւ ձեւով հրապարակելը կամ տարածելը»:

Հարցին, թէ արդեօ՞ք ոչ արտակարգ դրութեան պայմաններում կարելի է ակնյայտ սուտ տեղեկատուութիւն տարածել կամ սադրիչ յայտարարութիւններ անել, Դանիէլեանը արձագանքեց. - «Իհարկէ, ոչ: Սրանք արգելքներ են, որոնք միշտ գործում են: Բայց նախ անդրադառնանք արգելքների իրաւական հետեւանքներին: Եթէ այս դէպքում մենք ասում ենք, որ հրամանագրով արգելւում է սա անել, նշանակում է, որ պետութիւնը իր վրայ վերցնում է լիազօրութիւն, որ պարզապէս թոյլ չի տալիս այդպիսի հրապարակումներ»: «Այլ դէպքերում՝ հրամանագրից յետոյ, արդէն լրիւ այլ խնդիր է», - շարունակեց Գէորգ Դանիէլեանը: - «Կան յստակ, թէ ինչ է արգելւում լրատուամիջոցներին՝ չճշտուած տուեալներ եւ այլն, եւ այլն: Սրա համար արդէն կը գնայ զուտ քաղաքացիաիրաւական

պատասխանատուութիւն»:

Պարզաբանելով, թէ ինչ է նշանակում ակնյայտ սուտ կամ սադրիչ յայտարարութիւններ, նախարարը ասաց. - «Նկատենք, որ չափազանց բարդ է այս կամ այն հասկացութիւնը մեկնաբանել... Իհարկէ, կարելի է տարաբնոյթ մեկնաբանութիւններ տալ: Դրա հետ մէկտեղ, որքան էլ փորձէք իրաւական ակտը յստակ ձեւակերպել, միեւնոյն է, տարակարծութիւնների եւ տարամեկնաբանութիւնների տեղ մնալու է: Այս դէպքում մենք, կարծես թէ, օգտագործել ենք այնպիսի հասկացութիւններ, որոնք քիչ պէտք է տարակարծութիւնների տեղիք տան: Ակնյայտ սուտ տեղեկատուութիւնը, ինձ թւում է, լրացուցիչ մեկնաբանութեան կարիք չունի: Սա այն է, որ դուք ունէք մի քանի աղբիւրներից յստակ պաշտօնական տեղեկատուութիւն, գիտէք ինչպիսին է այս կամ այն տուեալը, եւ ձեզ ներկայացւում է մէկ այլ տեղեկատուութիւն, որը ոչ թէ պարզապէս ճշտուած չէ, այլեւ չի համապատասխանում եղած տուեալներին որեւէ կերպ»:

Իսկ հարցին, թէ որն է համարւում «իրավիճակը ապակայունացնող տեղեկատուութիւն», նախարարը պատասխանեց. - «Եթէ լուրը, լրատուութեան կոնկրէտ այդ աղբիւրը չի յանգեցնում նրան, որ տեղի ունենան բախումներ, այլ ընդամէնը քաղաքակիրթ եղանակով, ինչ-ինչ հարցեր կը ծագեն, սրա հետ կապուած որեւէ խնդիր չկայ: Ամբողջ խնդիրը անիարկի բախումները, անհարկի զանգուածային անկարգութիւնները կանխելն է: Որեւէ այլ խնդիր դրուել չի էլ կարող»:

Հարցին, թէ կա՞յ արդեօք մարմին, որը կը զատորոշի «ակնյայտ սուտ» եւ «իրավիճակը ապակայունացնող» տեղեկատուութիւնը, Գէորգ Դանիէլեանը արձագանքեց. - «Հրամանագիրը ընդամէնը հնարաւորութիւն է տալիս կառավարութեանը: Կառավարութիւնը, իր հերթին, արդէն լիազօրում է կոնկրէտ մարմինների, որպէսզի նրանք արգելեն, կանխեն հրապարակումները»:
www.azatutyun.org

## ՂԱՐԱԲԱՂԻ ԵՐԿՈՒ ԹԵՐԹԵՐԻ ԽՄԲԱԳԻՐՆԵՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Հետք*, 13:00

Ուշիուշով հետեւելով մայր Հայաստանի ներքաղաքական ցաւալի զարգացումներին եւ տեղեկատուական դաշտում դրանց անդրադարձներին՝ խոր մտահոգութիւն ենք յայտնում անհանդուրժողականութեան առկայ դրսեւորումների կապակցութեամբ եւ համոզուած ենք, որ միայն երկրի ու ժողովրդի ճակատագրի շուրջ շահագրգիռ ու պատասխանատու երկխօսութեան միջոցով կարելի է ելք գտնել ստեղծուած վտանգաւոր իրավիճակից, ինչը հնարաւոր չէ առանց տեղեկատուական դաշտի բնականոն գործունէութեան:

Ծանօթանալով խնդրոյ առարկայի շուրջ ՀՀ Մարդու Իրաւունքների պաշտպանի եւ հայաստանեան մի շարք լրատուամիջոցների ու լրագրողական կազմակերպութիւնների ղեկավարների յայտարարութիւններին՝ մենք եւս կիսում ենք նրանց մտահոգութիւնը եւ ՀՀ իշխանութիւններին կոչ անում բեկանել արտակարգ դրութեան մասին հրամանագրով նախատեսուած լրատուամիջոցների գործունէութեան սահմանափակումները, առաւել եւս, որ դրանք փաստացիօրէն կիրառւում են անկախ ու ընդդիմադիր լրատուամիջոցների նկատմամբ միայն:

Կատարուածը գնահատելով որպէս քաղաքացիների՝ տեղեկութիւններ տարածելու եւ ստանալու սահմանադրական իրաւունքի, ինչպէս նաեւ խօսքի եւ մամուլի ազատութեան համընդհանուր ճանաչուած սկզբունքների խախտում, ՀՀ իշխանութիւններին կոչ ենք անում վերանայել իրենց որոշումը:
Գեղամ Բաղդասարեան, *Դէմօ* հանրային թերթի գլխաւոր խմբագիր
Նաիրա Հայրումեան, *Karabakh-open* էլեկտրոնային թերթի գլխաւոր խմբագիր
ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ, 12 մարտի

## ՍՏԵՂԾՈՒԱԾ ԻՐԱՎԻՃԱԿԻ ՀԱՄԱՐ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ ԵՆ ՆԱԵՒ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐԸ

*Հետք*, 21:00

Մարտի 1-ին նախագահ Քոչարեանի՝ արտակարգ դրութեան մասին հրամանագրի հրապարակումից յետոյ հայաստանեան լրատուական դաշտում տեղի ունեցան կտրուկ փոփոխութիւններ: Հրամանագրի 4-րդ կէտի 4-րդ ենթակէտով՝ «զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում»:

Մարտի 2-ին Ազգային Անվտանգութեան Ծառայութեան (ԱԱԾ) աշխատակիցներն այցելեցին թերթերի խմբագրութիւններ՝ ներկայացնելով անստորագիր եւ չկնքուած մի երկտող, որով զգուշացւում էր, որ եթէ թերթերի հրապարակումները պարունակեն պաշտօնականից տարբերուող տեղեկատուութիւն, ապա տուեալ թերթի գործունէութիւնը կը դադարեցուի: Նոյն գիշեր տպարան տարուած որոշ թերթերի (*Հայկական ժամանակ*, *Չորրորդ իշխանութիւն*) նիւթերը մանրակրկիտ ստուգել են ԱԱԾ աշխատակիցները եւ բանաւոր հրահանգով արգելել տպագրութիւնը: Մի շարք ինտերնէտային թերթեր եւ կայքեր արգելափակուեցին, թերթերի մի մասն էլ չհրատարակուելու որոշում կայացրեց: Դրանցից մէկն էլ *168 ժամ*ն է:

«Սա դիրքորոշում է որոշ լրատուամիջոցների կողմից, քանի որ յստակ չի տարանջատւում, թէ որն է պաշտօնական եւ որը ոչ պաշտօնական տեղեկատուութիւնը, - ասում է *168 ժամ* թերթի գլխաւոր խմբագիր Սաթիկ Սէյրանեանը: - Անիմաստ ենք համարում պարզապէս ոստիկանութեան կամ դատախազութեան հաղորդագրութիւններն առանց հակառակ կողմի դիրքորոշման յաջորդ օրը տպագրելը, որովհետեւ դրանք ամէն օր, ամէն ժամ հեռարձակւում են բոլոր հեռուստաալիքներով:

Ինչո՞ւ անիմաստ տպագրական ծախս անենք»:

*168 ժամ*ի կայքն, այնուամենայնիւ, աշխատում է: Կայքում տեղադրւում է պաշտօնական լրատուութիւն, հրապարակուել են նաեւ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորների ելոյթներն ԱԺ-ում, ՍԴ-ում նախագահի թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի ներկայացուցիչների ելոյթները:

«Չգիտեմ՝ ինչքանով են այդ ելոյթները պաշտօնական համարւում, այնուամենայնիւ, դրանք հնչել են ԱԺ-ում, ՍԴ-ում եւ յստակ ինֆորմացիա են, - նշում է Ս. Սէյրանեանը՝ աւելացնելով, որ խմբագրութիւնը որոշ անդրադարձներ է քաղում նաեւ արտասահմանեան լրատուամիջոցների հրապարակումներից:

Հայաստանի լրատուական դաշտի ներկայիս վիճակի մասին *168 ժամ*ի գլխաւոր

խմբագիրն ասում է. «Որքան էլ սահմանափակումներ լինեն, ինֆորմացիան ճեղքում է պատը եւ տարածւում է: Փաստը՝ ինտերնէտային կայքերը: Որքան էլ խանգարեն կամ արգելափակեն, այնուամենայնիւ, տեսնում ենք, որ կայքերը բացւում են, եւ ինֆորմացիայի հոսք լինում է: Միակողմանի լրատուութիւն գնում է տպագիր մամուլով եւ հեռուստաընկերութիւններով: Միայն այս միջոցներով ինֆորմացիա ստացողն այսօր զրկուած է անաչառ, հաւասարակշիռ տեղեկատուութիւն ստանալու, երկու կողմի տեսակէտը լսելու հնարաւորութիւնից: Այժմ, սակայն, ոչ միայն ինֆորմացիայի պակաս կայ, այլեւ համատարած ապատեղեկատուութիւն է: Որոշ ընդդիմադիր կայքէջեր ծայրայեղ են, դիտմամբ որոշակի ինֆորմացիա է նետւում ցանց, ապատեղեկատուութիւն է տարածւում, եւ դա էլ շատ վատ է: Կեղծ լուրերի տարածումն ու զարգացումը տեխնոլոգիա է, բայց դա էլ իր վատ հետեւանքը կարող է ունենալ»:

*168 ժամ*ի գլխաւոր խմբագիրը շեշտում է մի փաստ, որը, ըստ նրա, մարտի 1-ի իրադարձութիւնների պատճառներից էր. «Լրատուամիջոցները հաւասար ժամանակ չէին տրամադրում ընդդիմութեան եւ իշխանութեան ներկայացուցիչներին: Եթէ հեռուստաընկերութիւնները, տպագիր եւ էլեկտրոնային մամուլը կարողանային պահել այդ հաւասարութիւնը, չէր լինի նաեւ մարտի 1-ը, որովհետեւ ինֆորմացիայի պակասից էր նաեւ, որ շատ մարդիկ գնում էին Ազատութեան Հրապարակ՝ տեղեկատուութիւն ստանալու, տեսնելու, թէ ինչ է կատարւում այնտեղ»:

*Հայաստանի Հանրապետութիւն* օրաթերթի գլխաւոր խմբագիր Տիգրան Ֆարմանեանը չի կարծում, թէ կարելի էր առանց այդ 4-րդ ենթակէտի արտակարգ դրութիւն յայտարարել, որովհետեւ «այդ դէպքում կարելի է ասել, որ զինուոր էլ չպիտի երեւար, քաղաք մտնող մեքենաները չպիտի ստուգուէին, այսպէս եթէ շարունակենք, ամէն ինչ էլ կարելի էր չանել: Այսինքն՝ ստեղծուած դրութեան մէջ ես ուրիշ ելք չէի տեսնում»: Ֆարմանեանը նաեւ համոզուած է, որ նախագահի հրամանագրի 4-րդ կէտը «որեւէ բանով Մարդու Իրաւունքների եւրոպական կոնվենցիային չի հակասում, դա երկրի ներքին օրէնքն է»:

Ինչ վերաբերում է *ՀՀ*-ի աշխատանքներին, գլխաւոր խմբագիրն ասում է, որ արտակարգ դրութեան պայմաններում թերթը ստիպուած որոշ նիւթեր չի տպում. «Աշխատում ենք պահպանել օրէնքի պահանջը: Հիմա աւելի շատ անցել ենք ոչ քաղաքական՝ մշակութային, սոցիալ-տնտեսական թեմաներին: Տալիս ենք պաշտօնական ինֆորմացիա, մեկնաբանութիւններ չեն եղել: Նոյնիսկ այն պահն է գալիս, որ ուզում ես մի բան ասել, բայց զսպում ես քեզ»:

Արտակարգ դրութեան սահմանափակ պայմաններում աշխատելը, ըստ Ֆարմանեանի, «այնքան էլ հաճելի չէ, բայց եթէ օրէնքի պահանջ է, պիտի ենթարկուես: Օրէնքը մնում է օրէնք»: *ՀՀ*-ի գլխաւոր խմբագիրը չի կարծում, որ «եթէ ընդդիմադիր լրատուամիջոցները պահպանեն օրէնքի բոլոր դրոյթները, որեւէ մէկը նրանց բան կ՚ասի»:

Ընդդիմադիր ԶԼՄ-ը պնդում են, որ իշխանութիւններն արտակարգ դրութեան հրամանագրի 4-րդ կէտի 4-րդ ենթակէտով լրատուական դաշտը միաբեւեռ են դարձրել, եւ ազատ կերպով մասսայականօրէն հրապարակւում են բացառապէս հակընդդիմադիր նիւթեր: Միակողմանիութեան մասին այս բողոքի վերաբերեալ Տ. Ֆարմանեանն ասում է. «Այդ դէպքում պէտք է նաեւ բողոքեն, որ փողոցում զինուոր կայ: Արտակարգ դրութիւն է, որը վերաբերում է բոլորին, այդ թւում եւ՝ ԶԼՄ-ին»:

Այս օրերին չի տպագրւում նաեւ *Առաւօտ* օրաթերթը: Մարտի 3-ին ՀՀ Ազգային Անվտանգութեան Ծառայութեան Երեւանի վարչութեան աշխատակից Ռուբէն Յարութիւնեանն այցելել է *Առաւօտ*ի գլխաւոր խմբագիր Արամ Աբրահամեանին եւ յիշեցրել արտակարգ դրութեան հրամանագրի 4-րդ ենթակէտի սահմանափակումների մասին: Ա. Աբրահամեանը յայտնել է, որ պատրաստւում են թերթը տպագրել սպիտակ էջերով: Յարութիւնեանը դրան դէմ է արտայայտուել՝ նշելով, որ դա քաղաքական ակցիա է: Միայն պաշտօնական լրատուութիւն ներկայացնելու փոխարէն Ա. Աբրահամեանը որոշել է ժամանակաւորապէս դադարեցնել *Առաւօտ*ի տպագրումը:

Նման խնդրի առջեւ չի կանգնել *Գոլոս Արմենիի* թերթը: Վերջինիս գլխաւոր խմբագրի տեղակալ Լեւոն Ղազարեանն ընդհանրապէս կարեւորում է այն հանգամանքը, որ շատ-շատ հարցերում իրենց դիրքորոշումը տարբերւում է ընդդիմադիր թերթերի կեցուածքից: «Մենք 15 տարի ՀՀՇ-ի ամենահետեւողական հակառակորդն ենք եւ այսօր մեր դիրքորոշումը փոխելու առիթ չենք տեսնում, ընդհակառակը՝ մենք համոզուած ենք, որ ճիշտ էինք, եւ վերջին դէպքերը հաստատում են մեր մեկնաբանութիւնները», - ասում է Լեւոն Ղազարեանը: Նրա փոխանցմամբ՝ աշխատանքի կազմակերպման տեսանկիւնից *ԳԱ*-ն գործում է սովորական ռեժիմով, իսկ բովանդակային առումով այլ է:

«Աշխատում ենք պահպանել պաշտօնական ինֆորմացիայի սահմաններում մնալու պահանջը», - նշում է նա՝ խոստովանելով, որ թոյլատրելիի եւ անթոյլատրելիի սահմանները, այդուհանդերձ, այնքան էլ յստակ չեն:

Լ. Ղազարեանի փոխանցմամբ՝ աշխատաոճի վերաբերեալ իրենք լրագրողներին ցուցումներ չեն տուել: Պաշտօնական հաղորդագրութիւններից զատ *Գոլոս Արմենիի*ում տպւում են նաեւ մեկնաբանութիւններ, որովհետեւ «առանց դրա հնարաւոր չէ եւ անիմաստ է թերթ հրատարակել»:

Նախագահի կողմից արտակարգ դրութիւն յայտարարելու եւ հրամանագրով ԶԼՄ-ի աշխատանքում որոշակի սահմանափակումներ մտցնելու կէտի վերաբերեալ *Գոլոս Արմենիի*ի գլխաւոր խմբագրի տեղակալն ասում է. «Նախագահն օգտագործել է Սահմանադրութեամբ իրեն տրուած իրաւունքը»: Ըստ նրա՝ այլ հարց է, որ ընդդիմադիր լրատուամիջոցները տարբեր ձեւերով արտայայտել են իրենց բողոքն այդ առիթով. «Դա նրանց իրաւունքն է: Ես նորմալ եմ վերաբերւում դրան, բայց ընթերցողի համար թերթի լոյս չտեսնելը, իհարկէ, լաւ չէ»:

Լեւոն Ղազարեանը կարծում է, որ մենք այսօր գրաքննութիւն չունենք: Ըստ նրա՝ գրաքննութեան օրինակ է այն դէպքը, երբ տուեալ մարմինը թերթի հրատարակումից առաջ թոյլ է տալիս կամ արգելում է տպագրել որեւէ նիւթ. «Մենք նման բան չունենք: Պարզապէս թերթերը ուսումնասիրւում են տպուելուց յետոյ, այնուհետեւ որոշում է կայացւում: Մենք հետաքրքրուել ենք, թէ ինչ կը լինի, եթէ տպենք իրենց կարծիքով ոչ թոյլատրելի մի նիւթ: Մեզ ասացին՝ «եթէ առաջին անգամ լինի, կը նախազգուշացնենք, երկրորդ անգամ արդէն կը տեսնենք»»:

Ղազարեանն ասում է, թէ քաղաքականապէս թերեւս ճիշտ կը լինէր, որ ընդդիմադիր թերթերը տպէին իրենց քննադատական նիւթերը եւ դուրս գային վաճառքի, որից յետոյ կը փակուէին: Այդ դէպքում, սակայն, ըստ խմբագրի տեղակալի, «քաղաքականապէս յստակ կը լինէր, որ թերթերը փակուել են հէնց այդ նիւթերի պատճառով»:

*Ազատութիւն* ռադիոկայանի հաղորդման եւ կայքի արգելափակման մասին *Գոլոս*

*Արմենիի*ի աշխատակիցն ասում է. «*Ազատութիւն* ռադիոկայանը արտասահմանեան լրատուամիջոց է: Արտասահմանեան լրատուամիջոցը իրաւունք չունի մասնակցել մեր ընտրական գործընթացներին: Նա ընդհանրապէս իրաւունք չունէր անդրադառնալ այդ խնդիրներին: Սա շատ մեղմ եմ ասում»:

Արտակարգ դրութեան յայտարարումից յետոյ արգելափակուել են նաեւ *Ա1+* եւ *Լրագիր* էլեկտրոնային թերթերը: Ըստ Լեւոն Ղազարեանի՝ եթէ արգելափակումից առաջ կարգը խախտուել է, ապա օրէնքի կիրառում է եղել, իսկ եթէ լրատուական կայքերը կարգը չեն խախտել, ապա իրաւապահների «շտապողականութիւնը սխալ էր, որովհետեւ դու շատ լաւ գիտես, թէ *Ա1+*-ն ինչ է ասելու: Սպասիր, թող խօսի»:

Հրամանագրի հրապարակումից յետոյ *Ա1+*-ը խօսել էր, բայց ոչ այն թեմայով, որը նրան փակելու առիթ կարող էր տալ: Սա փաստեց նաեւ նախագահի մամլոյ խօսնակ Վիկտոր Սողոմոնեանը, որը մարտի 7-ին՝ լրագրողների հետ հանդիպման ժամանակ, ասաց. «Շատ կայքերում, օրինակ՝ *Ա1+*-ի, նոյն օրը, երբ արտակարգ դրութիւն յայտարարուեց, տեղեկատուութիւն կար, որ չեն տեղադրելու քաղաքական նիւթեր, խօսելու են միայն սպորտի եւ մշակոյթի մասին: Թերեւս թեմաներ չեն գտել: Կայքերի՝ փակ կամ բաց լինելու հարցով չեմ հետաքրքրուել, բայց տեղեկատուութիւն ունեմ, որ շատ լրատուամիջոցներ իրենք են հրաժարւում լոյս տեսնել, որովհետեւ հրամանագրի համապատասխան դրոյթը չեն կարողանալու պահպանել տարբեր պատճառներով»:

Ահա թէ ինչ է ասում *Ա1+*-ի տնօրէն Մեսրոպ Մովսէսեանը. «Երբ Ռոբերտ Քոչարեանը յայտարարեց արտակարգ դրութեան մասին, *Ա1+*-ի կոլեկտիւը որպէս նորմալ երեւոյթ ընդունեց նախագահի ինստիտուտի եւ ոչ թէ կոնկրէտ անձի որոշումը: Մենք կայքում տեղադրեցինք յայտարարութիւն այն մասին, որ տուեալ իրավիճակում պարտաւոր ենք միակողմանի աշխատանք վարել, ինչը, իհարկէ, չենք ուզում: Այսօր այդ յայտարարութիւնը շահարկւում է երկրի ղեկավարութեան կողմից, իբր թէ հէնց ինքը՝ *Ա1+*-ը, այսպէս ասած, օրինապաշտ կերպով ընդունել է հրամանագիրը եւ անջատել է իր կայքը: Սակայն մենք ունենք փաստաթղթեր եւ հաստատումն այն մտքի, որ *Ա1+*-ի կայքն անջատուել է բոլոր պրովայդէրներին արուած հրահանգով: Աւելացնեմ, որ մեր կայքը ոչ միայն անջատուել է, այլեւ ինտերնէտից ընդհանրապէս ջնջուել է նրա հասցէն»: *Ա1+*-ի տնօրէնը հաւաստում է, որ այժմ Հայաստանում առկայ է ինֆորմացիոն վակուում, ինչն ունենալու է իր վատ հետեւանքները. «Գործող ղեկավարութիւնը խեղդուելու է վակուումի մէջ, որովհետեւ ժողովրդին հասնող ինֆորմացիան, լիովին տարբերուելով նրանց տեղեկատուութիւնից, հակասութեան մէջ է մտնում եւ կոնֆլիկտային իրավիճակ է ստեղծում: Իշխանութիւնները դրա հետեւանքներն աւելի ուշ նորից բարդում են հակառակ կողմի վրայ, սակայն դա երկար չի կարող տեւել: Այս վակուումային վիճակը մօտեցնում է իշխանութեան պաշտօնանկութեան պահը: Գործող իշխանութիւններն աշխատում են կոպիտ, բռի ուժի մեթոդներով: Այսպէս են նրանք ուզում փոխել մարդկանց միտքը: Բայց բռի ուժով մարդկանց միտքը միայն պայծառանում է: Դա հասկանալու համար մի քիչ խելք է պէտք»:

Ամէն դէպքում, *Ա1+*-ն այսօր շարունակում է աշխատել, կուտակում է ինֆորմացիան, որի մի մասն էլ տարբեր ձեւերով սփռում է աշխարհով մէկ: Մեսրոպ Մովսէսեանը կարեւորում է հետեւեալ փաստը. «Այդ ինֆորմացիան իր մէջ պարունակում է անաչառութիւն, իսկ դրանից հետեւութիւններ անելն արդէն կարդացողի մօտեցման խնդիրն է,

մենք ընթերցողի վզին ոչինչ չենք փաթաթում: Եթէ մեզ ինչ-որ չափով մեղադրում են կոչեր անելու մէջ, ապա ես ինֆորմացիան որպէս կոչ երբեք չեմ ընդունել: Եթէ կայ ինֆորմացիա, այն անպայման պէտք է տեղ հասնի»:

Մ. Մովսէսեանն ասում է, որ Ռոբերտ Քոչարեանը պարտաւոր էր առանց 4-րդ ենթակէտի հրամանագիր հրապարակել. «Խօսքի ազատութիւն հասկացութիւն գոյութիւն ունի, օրէնքը նախատեսում է մամուլի աշխատանքն արտակարգ իրավիճակների ժամանակ… Ձեւաւորուել է միաբեւեռ դաշտ, որը գիշեր ու զօր միայն մի գործով է զբաղուած՝ լուանալ-մաքրել մեր իշխանաւորների դէմքը»:

*Ա1+*-ի տնօրէնի համոզմամբ՝ «վերջին 7-8 տարիներին Հայաստանի լրատուական դաշտում նորմալ վիճակ չի եղել եւ չի էլ նախատեսւում, քանի որ այստեղ ժողովրդի հետ աշխատում են միայն բռի ուժով եւ ինֆորմացիոն միակողմանի դաշտը ուզում են երկար պահել: Բայց պատմութիւնը ցոյց է տուել, որ ուժով երբեք պետութիւն չի կայանում, ուժով երբեք չես կարող կառավարել»:

Իշխանամէտ ՁԼՄ-ի, նրանց տարածած լրատուութեան ու այսօրուայ միաբեւեռ դաշտի մասին փակուած լրատուամիջոցի տնօրէնն ասում է. «Երբ լրատուութիւնը մի կէտից է դուրս գալիս եւ մի քանի կէտերով սփռւում է, դա չի նշանակում, որ կան լրատուամիջոցներ: Կայ մի կէտ, որն ունի իր ամբիոնները: Քանի այդպիսի վիճակ է, ինձ թւում է, որ լրատուական դաշտում ոչինչ չի փոխուի: Երբ քաղաքական զարգացումները տեղի են ունենում մի ուղղութեամբ եւ ցուցադրւում են միւս ուղղութեամբ, այդ հակասութիւնը լրատուական դաշտին երբեք չի թողնի զարգանալ, ընդհակառակը՝ դա մահացնում է լրատուութիւնը»:

««Մենք պարտադրուած հացադուլի մէջ ենք», - ես այսպէս եմ բնութագրել հայ լրագրողներիս վիճակը եւրոպացի մի գործընկերոջ: Նա ինձ հարցրեց՝ իսկ ի՞նչ էք անում դուք՝ լրագրողներդ: Պատասխանցի՝ այն, ինչ որ դուք կ՚անէիք: Մի կողմից՝ ենթարկւում ենք օրէնքին, միւս կողմից՝ պայքարում դրա դէմ: Սակայն առայժմ արդիւնք չունենք, - ասում է *Հետք* ինտերնէտային թերթի գլխաւոր խմբագիր Էդիկ Բաղդասարեանը: - Մեր դիմաց ասես «լցրել են» ամէն տեսակ ուտեստներ, սակայն արգելուած է նոյնիսկ նայել դրանց ուղղութեամբ: Մեզ պարտադրում են ձայն չհանել, չխախտել օրէնքը: Իսկ օրէնքը, պարզւում է, վերաբերում է միայն մի կողմին: Դժբախտաբար, այն լրատուամիջոցները, որոնց «թոյլատրուած է գրել ամէն ինչ», իրականում շարունակում են իրենց բնականոն աշխատանքը: Արտակարգ դրութիւնը նրանց վրայ չի տարածուել: Նրանց ոչ ոք չի խանգարում, նրանք կարիք չունեն ինչ-որ հրահանգներ կատարել: Տրամաբանութիւնը յուշում է, որ նախ եւ առաջ այդ լրատուամիջոցները պէտք է մտածէին անհաւասարութիւնը վերացնելու մասին: Ցաւօք, նրանք դրա անհրաժեշտութիւնը չեն զգում:

Երկրում ստեղծուած իրավիճակի պատասխանատուն, ինչպէս երեք ամիս առաջ, այնպէս էլ այսօր համարում եմ լրատուամիջոցները, որոնք դարձել էին իշխանութեան եւ քաղաքական ուժերի գերին: Նախընտրական եւ ետընտրական շրջանում լրատուամիջոցները քաղաքականացուեցին մինչեւ վերջին պտուտակը՝ բաժանուելով թշնամական ճամբարների: Հանրային հեռուստատեսութիւնը ղեկավարում էր այդ շքերթը: Այն հասարակութեան պառակտման եւ բեւեռացման առաջամարտիկն էր եւ այսօր էլ շարունակում է մնալ նոյնը՝ իր յետեւից տանելով միւս հեռուստաընկերութիւններին: Եւ վիճակը չի փոխուի, քանի դեռ այդ հեռուստաընկերութիւնները քաղաքականապէս ակտիւ

հասարակութեան մի հատուածին ընկալում են որպէս թշնամի»:

Արտակարգ դրութեան 12-րդ օրը 13 լրատուամամիջոցների ղեկավարներ յայտարարութեամբ հանդէս եկան՝ արձանագրելով, որ «ՀՀ իշխանութիւնները պարզապէս արգելել են իրենց համար անցանկալի լրատուամիջոցների գործունէութիւնը»: Իշխանութիւնների այս քայլը որակելով որպէս տեղեկատուական տեռոր՝ նրանք յայտարարել են. «...այս ամէնը ոչ միայն չի նպաստում հասարակութեան մէջ առկայ լարուածութեան թուլացմանը, այլեւ խորացնում է ատելութեան ու թշնամանքի մթնոլորտը: Պաշտօնական կոչուող տեղեկատուութիւն սփռող լրատուամիջոցների ճնշող մեծամասնութիւնը եւ մանաւանդ մամուլի խօսնակները իրենց ազրեսիայով ընդամէնը նպաստում են անառողջ տրամադրութիւնների բորբոքմանը եւ խորացնում են անվստահութիւնը պետութեան նկատմամբ: Ստեղծուած իրավիճակում ոտնահարուել է տեղեկութիւններ տարածելու եւ ստանալու մեր սահմանադրական իրաւունքը, խախտուել են խօսքի եւ մամուլի ազատութեան համընդհանուր ճանաչուած սկզբունքները, լրատուամիջոցները կրում են նիւթական կորուստներ, Հայաստանում իրականացւում է գրաքննութիւն, եւ մեր երկիրը յայտնուել է տեղեկատուական լիակատար շրջափակման մէջ»:

Լրագրողները պատրաստւում էին արտակարգ դրութեան մասին հրամանագրի՝ ԶԼՄ-ի իրաւունքների սահմանափակման դրոյթը բողոքարկել Սահմանադրական Դատարան եւ նիւթական փոխհատուցում պահանջել հարկադիր պարապուրդի հետեւանքով կրած կորուստների համար: Սակայն մարտի 13-ին նախագահ Ռոբերտ Քոչարեանը հրամանագիր ստորագրեց, ըստ որի՝ ուժը կորցրած ճանաչուեց արտակարգ դրութեան մասին հրամանագրի 4-րդ կէտի 5-րդ ենթակէտը՝ «Առանց համապատասխան պետական մարմինների թոյլտուութեան թռուցիկների եւ այլ ձեւով քաղաքական քարոզչութեան իրականացման արգելում»:

Նոյն հրամանագրով 4-րդ կէտի 4-րդ ենթակէտը, որը վերաբերում է ԶԼՄ-ի սահմանափակումներին, վերաշարադրուեց հետեւեալ կերպ. «Արգելւում է զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ ակնյայտ սուտ կամ իրավիճակը ապակայունացնող տեղեկատուութիւն կամ առանց իրազեկման, ապօրինի միջոցառումների մասնակցութեան կոչեր, ինչպէս նաեւ նման տեղեկատուութիւն կամ կոչեր որեւէ այլ եղանակով եւ ձեւով հրապարակելը կամ տարածելը»:

Այս հրամանագրից յետոյ չտպագրուող, հիմնականում ընդդիմադիր թերթերը որոշեցին մտնել տպարան: Սակայն Տիգրան Մեծ եւ Գինդ տպարաններում Ազգային Անվտանգութեան Ծառայութեան աշխատակիցներն արգելել են թերթերի տպագրումը: *Հայկական ժամանակ*, *Հայք*, *Հրապարակ*, *Չորրորդ իշխանութիւն* եւ *Ժամանակ Երեւան* թերթերը մերժում են ստացել Գինդ տպարանում, որտեղ ԱԱԾ-ի աշխատակիցը որեւէ հիմնաւորում չի ներկայացրել: *Հրապարակ*ի գլխաւոր խմբագիր Արմինէ Օհանեանը յայտնեց, որ ԱԱԾ-ի աշխատակիցը պարզապէս ասել է. «Թերթը չպէտք է լոյս տեսնի»: Նոյն պատասխանն է տրուել նաեւ միւս թերթերին: *Ժամանակ Երեւան* օրաթերթի խմբագիր Այդին Մորիկեանի տեղեկացմամբ՝ թերթի աշխատակիցները փորձել են իմանալ, թէ ո՞րն է մերժման պատճառը: ԱԱԾ-ի աշխատակիցը ոչ բանաւոր, եւ ոչ էլ գրաւոր հիմնաւորում չի տուել: Մորիկեանի ներկայացմամբ՝ այս ամէնից յետոյ իրենք կը սպասեն մինչեւ արտակարգ դրութեան վերացումը:

*Հայկական ժամանակ*ի պատասխանատու Հայկ Գէորգեանը չբացառեց միւս շաբաթ նորից տպարան մտնելը:

*Առաւօտ*ի գլխաւոր խմբագիր Արամ Աբրահամեանը պատմեց, որ Տիգրան Մեծ տպարանում ԱԱԾ-ի աշխատակիցը նայել է թերթի համարի պարունակութիւնը, որտեղ, մասնաւորապէս, եղել են Լեւոն Տէր-Պետրոսեանի ասուլիսները եւ մէկ ռեպորտաժ հիւանդանոցից: Վերջինիս հերոսը պատմել է, որ Օպերայի Հրապարակի հարեւանութեամբ 10 ոստիկան յարձակուել են իր վրայ եւ անտեղի ծեծել: *Առաւօտ*ը ռեպորտաժի հետ տեղադրել էր նաեւ այդ մարդու նկարը: ԱԱԾ-ի աշխատողն այդ նիւթերը համարել է «բացայայտ սուտ» եւ արգելել տպագրումը: Արամ Աբրահամեանի կարծիքով՝ նախագահի հրամանագրում արուած փոփոխութիւնն «անիմաստ մի բան էր»: *Առաւօտ*ը նոյնպէս կը սպասի արտակարգ դրութեան ռեժիմի վերացմանը:

## 15 ՄԱՐՏ 2008

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Հետք*, 14:00

Մենք՝ ներքոստորագրեալ հասարակական կազմակերպութիւններս, հասկանալով իրավիճակի լարուածութիւնը, յարգելով օրէնքի տառը՝ թոյլ չտուեցինք Երեւան քաղաքում արտակարգ դրութիւն յայտարարելու մասին Հայաստանի Հանրապետութեան նախագահի Հրամանագրի որեւէ դրոյթի խախտում եւ մինչեւ Հրամանագրի մէջ փոփոխութիւններ մտցնելը ձեռնպահ էինք մնում որեւէ հրապարակային գնահատականից:

Սակայն այդ նոյն ժամանակաշրջանում (2008 թուականի մարտի 1-ից 13-ը) տեղեկատուական ոլորտում եղան օրինականութեան եւ արտակարգ դրութեան ռեժիմի բազմաթիւ խախտումներ, որոնց համար պատասխանատուութիւնն ընկնում է մի շարք պետական կառոյցների վրայ: Այդ խախտումները ոչ միայն չէին ծառայում Հրամանագրի բուն նպատակի իրականացմանը, այն է՝ արտակարգ դրութիւն յայտարարելու համար հիմք ծառայած հանգամանքների վերացմանը, այլեւ հասարակութեան յետագայ բեւեռացման, անհանդուրժողականութեան եւ ատելութեան խորացման վտանգ էին պարունակում:

Մասնաւորապէս, մի շարք լրատուամիջոցներ, խախտելով Հրամանագրի 4-րդ կէտի, 4-րդ ենթակէտի՝ «զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պետական մարմինների պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում» պահանջը, հրապարակում/հեռարձակում էին ոչ միայն պաշտօնական տեղեկատուութիւն, այլեւ՝ քաղաքական քարոզչութիւն, որի մեծ մասը միակողմանի էր, ընդդիմութեանը վարկաբեկող ու վիրաւորող: Բացի Հրամանագրի խախտումից, սա, փաստօրէն, հակասում էր նաեւ համաձայնութեան եւ համերաշխութեան հասնելու իշխանութիւնների կոչերին:

Նման անընդունելի լուսաբանման ամենացցուն օրինակը տալիս էր Հայաստանի հանրային հեռուստաընկերութեան 1-ին ալիքը (*Հ1*), որը ոչ միայն անտեսում էր Հրամանագրի դրոյթը, այլեւ հերթական անգամ կոպտօրէն խախտում էր «Հեռուստա-

տեսութեան եւ ռադիոյի մասին» ՀՀ օրէնքի 28-րդ յօդուածի պահանջը, այն է՝ «Հանրային հեռուստառադիոընկերութիւնում՝ (...) հեռարձակուող հաղորդումներում քաղաքական դիրքորոշման գերակշռութիւնը (...) արգելւում է»:

Հեռուստատեսութեան եւ Ռադիոյի Ազգային Յանձնաժողովը (ՀՌԱՀ), որն ըստ օրէնքի անկախ կարգաւորող մարմին է եւ կոչուած է «վերահսկել հեռուստաընկերութիւնների եւ ռադիոընկերութիւնների գործունէութիւնը» («Հեռուստատեսութեան եւ ռադիոյի մասին» ՀՀ օրէնք, յօդուած 37, մաս 1-ին), չկատարեց իր հիմնական գործառոյթներից մէկը եւ չկանխեց ոչ միայն *Հ1*-ի, այլեւ մասնաւոր հեռարձակողների մեծ մասի կողմից Հրամանագրով սահմանուած դրոյթների խախտումները:

Հրամանագրի համապատասխան դրոյթի խախտումներ են արձանագրուել նաեւ մի շարք տպագիր ԶԼՄ-ներում, սակայն դրանց չհետեւեց ՀՀ արդարադատութեան նախարարութեան արձագանքը: Նախարարութիւնը պարտաւոր էր, իր լիազօրութիւնների շրջանակներում, խախտումները վերացնելու միջոցներ ձեռնարկել:

Չնայած Հրամանագրով մտցուած սահմանափակումները գրաքննութիւն չէին նախատեսում, ինչը նաեւ արգելուած է «Զանգուածային լրատուութեան մասին» ՀՀ օրէնքի 4-րդ յօդուածով, այդ օրերին ոչ միայն Երեւանում, այլեւ ողջ երկրում փաստացի կիրառւում էր նախնական գրաքննութիւն: Դրա հետեւանքով որոշ համերկրային թերթերի տպագրութիւնն արգելուել էր բովանդակութեան պատճառով: Մի շարք հրատարակութիւններ, բախուելով անօրինական խոչընդոտների, հրաժարուեցին աշխատելուց, որովհետեւ հնարաւորութիւն չունէին ներկայացնելու ընդդիմադիր եւ քննադատական տեսակէտներ, այն դէպքում, երբ ընդդիմութեանը վարկաբեկող եւ վիրաւորող, յաճախ՝ ազրեսիւ արտայայտութիւնների հրապարակումը այլ թերթերում որեւէ կերպ չէր սահմանափակւում: Ըստ ԶԼՄ-ներից ստացուած տեղեկութիւնների, նախնական գրաքննութիւնն իրականացնում էին անձինք, ովքեր ներկայանում էին իբրեւ Ազգային Անվտանգութեան Ծառայութեան աշխատակիցներ:

Հրամանագրին անմիջապէս յաջորդեց մի շարք ինտերնէտային լրատուական կայքերի (որոնք դեռ չէին հասցրել անգամ որեւէ անդրադարձ կատարել իրավիճակին) արգելափակումը: Նման գործողութիւնն ընդհանրապէս ապօրինի է, իսկ առանց որեւէ հիմքի արգելամիջոցների կիրառումն այս պարագայում՝ մենք գնահատում ենք անմեղութեան կանխավարկածի սկզբունքի խախտում: Այստեղ եւս դրսեւորուել էր քաղաքական խտրականութիւն, քանի որ արգելափակուել էին այն կայքերը, որոնք նախկինում իրենց թոյլ էին տալիս իշխանութիւնների հասցէին քննադատական հրապարակումներ տարածել:

Քաջատեղեակ լինելով, թէ վերջին ժամանակներս ինչպիսի ճնշումների են ենթարկւում ԶԼՄ-ները, մենք ընդգծում ենք, որ այդ խախտումների համար պատասխանատուութիւնն ընկնում է ոչ այնքան լրագրողների, խմբագրութիւնների, որքան իրաւասու կառոյցների վրայ: Վերջիններիս գործողութիւնները (կամ անգործութիւնը) յանգեցրել են այն բանին, որ Հրամանագրի «զանգուածային լրատուութեան միջոցների կողմից պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ հրապարակումները կարող են իրականացուել բացառապէս պետական մարմինների պաշտօնական տեղեկատուութեան սահմաններում» դրոյթը ծառայեցուել է ոչ թէ հասարակութեանը հանդարտեցնելու նպատակին, այլ՝ վերածուել է խօսքի, լրատուամիջոցների ազատութեան հիմքերն էլ աւելի խարխլելու, տոտալիտար համակարգերին բնորոշ միակողմանի

քարոզչութեան աւանդոյթները վերականգնելու միջոցի:

Թերթերի մի մասի լոյս չտեսնելը՝ ստեղծուած պայմաններում աշխատելուց հրաժարուելու կամ տպագրութիւնն արգելելու պատճառով, յանգեցրել է նաեւ տնտեսական հետեւանքների, անհաւասար մրցակցութեան: Եւ դա տեղի է ունեցել քաղաքական հողի վրայ: Թերթերի տպագրութեան ընդհատումն արդէն անդրադարձել է, իսկ յետագայում՝ էլ աւելի խիստ կ'անդրադառնայ նրանց լսարանի վրայ:

ԶԼՄ-ների մանիպուլեատիւ օգտագործման պայմաններում խեղաթիւրուած էին ներկայացւում նաեւ միջազգային կառոյցների եւ պաշտօնեաների յայտարարութիւնները, ինչը ապակողմնորոշում էր հասարակութեանը եւ Հայաստանի միջազգային հեղինակութեան վրայ բացասաբար ազդող լրացուցիչ գործօն էր դառնում:

Քանի որ արտակարգ դրութեան պայմաններում տեղեկատուական ոլորտում անօրինական դրսեւորումներն անմիջականօրէն առնչւում էին ընտրութիւններին, ուստի դրանց համար պատասխանատուութեան ենթարկելը նոյնքան կարեւոր է, որքան ընտրական գործընթացում խախտումներ իրականացրած անձանց պատժելը:

Սպասւում էր, որ «Արտակարգ դրութիւն յայտարարելու մասին» հրամանագրի՝ ԶԼՄ-ներին վերաբերող դրոյթի փոփոխութիւնը ուղղուած կը լինէր ընթացիկ իրադարձութիւնները լուսաբանելու աւելի շատ ազատութիւններ ընձեռելուն: Սակայն մարտի 14-ից ուժի մէջ մտնելուց յետոյ էլ վերոյիշեալ խնդիրներից ոչ մէկը չլուծուեց: Աւելին, փոփոխութիւնն ունի կամայական մեկնաբանութիւնների տեղիք տուող ձեւակերպումներ. մասնաւորապէս՝ «արգելւում է (...) պետական եւ ներքաղաքական հարցերի առնչութեամբ ակնյայտ սուտ կամ իրավիճակը ապակայունացնող տեղեկատուութիւն (...) հրապարակելը կամ տարածելը»: Ընտրովի իրաւակիրառման եւ հակաօրինական գործողութիւնների (որոնց տեղեկատուական ոլորտը բախուեց վերջին շրջանում) պայմաններում այն ԶԼՄ-ներին բաւականին խոցելի է դարձնում:

Ելնելով վերոշարադրեալից՝ մենք պահանջում ենք՝

- պատասխանատուութեան ենթարկել ՀՌԱՀ-ին եւ Հանրային հեռուստառադիոընկերութեան խորհրդին՝ հեռարձակուող ԶԼՄ-ներում անընդունելի իրավիճակի համար,
- հետաքննել ապօրինի գրաքննութիւն կիրառելու, ինտերնէտային կայքերը արգելափակելու հանգամանքները եւ պատասխանատուութեան ենթարկել այդ հակաօրինական գործողութիւններն իրականացնողներին ու նման հրահանգ տուողներին,
- անյապաղ վերանայել «Արտակարգ դրութիւն յայտարարելու մասին» ՀՀ նախագահի հրամանագրի 4-րդ կէտի 4-րդ ենթակէտը:

Միեւնոյն ժամանակ, գիտակցելով, որ ստեղծուած իրավիճակի եւ օրինականութեան կոպիտ խախտումների համար պատասխանատու՝ այս յայտարարութեան մէջ յիշատակուած մարմինները գործում էին իշխանութիւնների վարած ընդհանուր քաղաքականութեան համատեքստում, մենք շեշտը դնում ենք ոչ թէ պատժի խստութեան, այլ խախտումների եւ պատասխանատուների իրական արձանագրման վրայ: Օրէնքի գերակայութիւնը եւ իրական նախադէպը յատկապէս կարեւոր են ապագայում խօսքի ազատութեան ոտնահարման որեւէ դրսեւորում բացառելու համար:

Երեւանի Մամուլի Ակումբ
Խօսքի Ազատութեան Պաշտպանութեան Կոմիտէ
Բազմակողմանի Տեղեկատուութեան Ինստիտուտ - Հայաստան

ՁԼՄ-ների աջակցութեան Ինտերնիւս ՀԿ
Ժուռնալիստների Ասպարէզ ակումբ
Վանաձորի Մամուլի Ակումբ
Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակ
Թրանսփարենսի Ինթերնեշնլ Հակակոռուպցիոն Կենտրոն
14 մարտի, 2008 թ.

## 18 ՄԱՐՏ 2008

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԽՄԲԱԿՑՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԸՆՏՐԱԿԱՆ ԵՒ ՅԵՏԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎԻՃԱԿԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Հետք*, 10:00

Ժառանգութիւն խմբակցութիւնը համարում է, որ ս.թ. մարտի 1-ին Երեւանում արտակարգ դրութիւն հաստատելով՝ գործող նախագահը ընտրութիւնների արդիւնքները եւ դրան նախորդող ողջ գործընթացը դուրս բերեց օրինականութեան շրջանակներից՝ խախտելով ՀՀ սահմանադրութեան 53.1 յօդուածը:

Մեր պետականութեան կարճատեւ ընթացքում՝ անգամ ամենադժուարին պահերին ու օրերին, սկսած 1991-1994թթ. Արցախեան ազատագրական պատերազմից մինչեւ 1999թ. հոկտեմբերի 27-ի ահաբեկչութեամբ պետութեան գլխատումը եւ դրանից յետոյ, երկրում կամ մայրաքաղաքում արտակարգ դրութիւն չի յայտարարուել, հրամանագրով չեն սահմանափակուել անձի քաղաքական ու քաղաքացիական իրաւունքները: Համոզուած լինելով, որ նախագահի այդ որոշումը համարժէք չէ իրավիճակին եւ հակասում է Հայաստանի միջազգային պարտաւորութիւններին, մասնաւորապէս Մարդու Իրաւունքների եւրոպական կոնվենցիայի 6-10 կէտերին, Ժառանգութիւնը պահանջում է անյապաղ վերացնել արտակարգ դրութիւնը:

ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութեան միջանկեալ զեկոյցներում արձանագրուած, ընտրական գործընթացի ժամանակ տեղ գտած համակարգային բնոյթի կոպտագոյն ընտրական խախտումների անառարկելի փաստերի մեծ մասը համընկնում է քուէարկութեան օրն ու դրան յաջորդած շրջանում Ժառանգութեան գրասենեակում եւ ընդդիմութեան շտաբներում հաւաքագրուած՝ խախտումներն արձանագրող փաստերի հետ:

Ցաւալի է, որ ՀՀ Սահմանադրական Դատարանը չկարողացաւ իրականացնել նախագահական ընտրութիւնների արդիւնքները բողոքարկող թեկնածուների ներկայացրած, ինչպէսեւ ԵԱՀԿ/ԺՀՄԻԳ դիտորդական առաքելութեան միջանկեալ զեկոյցներում մատնանշուած փաստերի համակողմանի, համալիր եւ անկաշկանդ քննութիւնը: Ժառանգութիւնը այդ վճիռն ընդունում է ի գիտութիւն՝ միաժամանակ փաստելով, որ սոյն վճիռը, ի հեճուկս այն իրողութեան, որ հանդիսանում է ընտրական գործընթացի բաղկացուցիչ մաս, ընդունուել է արտակարգ դրութեան պայմաններում: Մենք մէկ անգամ եւս հաստատում ենք ընտրական գործընթացի, քաղաքացիների իրաւունքների ու ազատութիւնների օրէնսդրական բարելաւման հարցում մեր անսասան վճռականութիւնը: Այդ տեսակէտից

միանգամայն անընդունելի ենք համարում Ազգային Ժողովի մարտի 17-ի արտահերթ նիստով, արագացուած ընթացակարգով եւ ԱԺ կանոնակարգ օրէնքի պահանջների խախտումով ընդունուած՝ «Ժողովներ, հանրահաւաքներ, երթեր եւ ցոյցեր անցկացնելու մասին» օրէնքի փոփոխութիւնները, որոնք աւելի են սրում ներկայ քաղաքական ճգնաժամը, խեղում են ժողովրդավարական գործընթացն ու բովանդակութիւնը, հակասում են միջազգային նորմերին ու չափանիշներին, աւելին՝ մեր երկրում խօսքի ազատութեան, հաւաքների, տեղեկատուութիւն ստանալու եւ տարածելու իրաւունքների ոտնահարման նոր դրսեւորում են:

Իշխանութիւնները ողջամտութեան շրջանակներում հաշուի չնստեցին երկրում տիրող անօրինականութիւնների, սոցիալական անարդարութիւնների եւ դրանց անքակտելի շարունակութիւնը հանդիսացող՝ կեղծուած ընտրութիւնների հետեւանքով ժողովրդի մի ստուար հատուածի ըմբոստութեան ալիքի հետ: Փորձ արուեց բիրտ ուժի գործադրմամբ եւ պաշտօնական լիազօրութիւնների գերազանցման միջոցով ճնշել 9 օր տեւած խաղաղ հանրահաւաքների, երթերի եւ նստացոյցի ընթացքում զարթօնք ապրող ժողովրդի քաղաքացիական շարժումը, ինչը դարձաւ պետութեան ժողովրդավարական հիմքերի խարխլման, երկրի միջազգային վարկանիշի անկման պատճառ:

Ժառանգութիւնը գործող իշխանութիւններից պահանջում է պարզաբանել, թէ ով է մեր երկրում իրեն վեր դասում գլխաւոր օրէնքից՝ սահմանադրութիւնից եւ ինչպէս կարող էին զինուած ուժերը մինչեւ արտակարգ դրութեան հաստատումը խառնուել ներքաղաքական կեանքին: Հայաստանի Հանրապետութեան իրաւապահ մարմիններից պահանջում ենք բացայայտել եւ օրէնքով սահմանուած կարգով պատասխանատուութեան ենթարկել մարտի 1-ին ՀՀ քաղաքացիների հանդէպ իրականացուած ոճրագործութեան հեղինակներին:

Մենք կարեւորում ենք մարտի 1-ի դէպքերի լիարժէք բացայայտումը, սակայն չենք վստահում ՀՀ իրաւապահ մարմիններին: Այդ անվստահութեան հիմքը վերջիններիս կողմնակալ եւ շահախնդիր պահուածքն է: Այսպէս՝ ս.թ. մարտի 8-ին նախքան ԱԺ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորների հարցաքննումը ՀՀ Գլխաւոր Դատախազ Աղուան Յովսէփեանը լրատուամիջոցներով կանխակալ կարծիք յայտնեց, թէ պատգամաւորների խօսքերը սուտ են: Ժառանգութիւնը ՀՀ նախագահի եւ Ազգային Ժողովի ուշադրութիւնը հրաւիրում է այն փաստին, որ պատգամաւորների քաղաքական ելոյթներին Աղուան Յովսէփեանի նոյնկերպ պատասխանելը ոչ այլ ինչ է, քան քաղաքականութեամբ զբաղուելու ապացոյց, ինչն արգելուած է օրէնքով եւ պաշտօնական լիազօրութիւնների գերազանցում է: Աւելին՝ Յովսէփեանը ԱԺ մարտի 4-ի նիստի ժամանակ խեղաթիւրուած է ներկայացրել Արմէն Մարտիրոսեանի տուած ցուցմունքը՝ ասելով, թէ Արմէն Մարտիրոսեանը սադրիչների մասին ոչինչ չի ասել: Մենք վերը նշուածը գնահատում ենք իբրեւ կուսակցութեան նկատմամբ քաղաքական հետապնդման դրսեւորում եւ պահանջում ենք վերջ տալ նման արատաւոր գործելակերպին:

Անկախ, անաչառ, բազմակողմանի քննութիւն իրականացնելու եւ առկայ բոլոր փաստերով, տեսաժապաւէններով ու լուսանկարներով յանցագործութեան ողջ պատկերը վերականգնելու նպատակով Ժառանգութիւնը ՀՀ իշխանութիւններից պահանջում է հրաւիրել միջազգային փորձագէտներ, անյապաղ ազատ արձակել քաղաքական դրդապատճառներով ձերբակալուածներին եւ կոչ է անում համարձակութիւն ունենալ

երկխօսութիւն սկսելու ներքաղաքական ճգնաժամի յաղթահարման ուղիների շուրջ:

Ժառանգութիւնը ողջունում է Հայաստանի քաղաքացիների, հասարակական կազմակերպութիւնների, միջազգային հանրութեան ներկայացուցիչների ջանքերը՝ ուղղուած մեր երկրում ներքաղաքական ճգնաժամի յաղթահարմանը: Սակայն դատապարտելին այն է, որ խորհրդային 30-ական թուականների ոճով ու ոգով ձերբակալւում, ոստիկանութեան բաժանմունքներ են բերման ենթարկւում ՀՀ քաղաքացիներ, որոնցից շատերի դատապաշտպանական իրաւունքները չեն յարգւում, եւ նրանք դառնում են քաղաքական հաշուեյարդարի զոհեր:

Վերստին ցաւակցութիւն յայտնելով մարտի 1-ի արիւնոտ գարնանամուտի զոհերի ընտանիքներին ու հարազատներին, ինչպէսեւ մեր զօրակցութիւնը յայտնելով վիրաւորներին՝ պահանջում ենք այս իրավիճակի պատասխանատու իշխանութեան տարբեր օղակներից՝ լրատուականից մինչեւ դատական, անյապաղ դադարեցնել անխոհեմ գործողութիւններով եւ միակողմանի ու սադրիչ քարոզչութեամբ կրքերի բորբոքումը:

Ժառանգութիւնը ստեղծուած իրավիճակից ելքը տեսնում է հանրային նոր, իրական ու ազնիւ երկխօսութեան մէջ, որը կը յանգեցնի ոչ միայն ազգային առաջընթացի, այլեւ գործելակերպի ու մտածողութեան նոր որակի:

18 մարտի 2008թ.
Երեւան

## ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԽՄԲԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ 2008Թ. ՄԱՐՏԻ 18-Ի ՆԻՍՏՈՒՄ

*Հետք*, 12:00

**Զարուհի Փոստանջեան**

Յարգելի հայրենակիցներ,

Վերջին մէկ տարուայ ընթացքում Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիների գերակշիռ մեծամասնութիւնը, միջազգային հանրութիւնը եւ մեր հայրենակիցները, որոնք ճակատագրի բերումով յայտնուել են օտար երկրներում, մեծ ուշադրութեամբ հետեւում են մեր երկրում տեղի ունեցող իրադարձութիւններին՝ հասարակական եւ քաղաքական կեանքին:

Մեր հասարակութիւնում առկայ են խորը եւ անյապաղ լուծում պահանջող խնդիրներ: Իհարկէ, այս խնդիրներն առաջացել են ոչ թէ մէկ օրում, կամ մի մարդու կողմից, այլ հետեւողական, տարիներ շարունակ մեր պետութեան իշխանութիւնների կողմից իրականացուած ոչ հայանպաստ քաղաքականութեան հետեւանք են:

Տեւական խաղաղ երթերի, ցոյցերի եւ հանրահաւաքների միջոցով բազմահազար քաղաքացիներ արտայայտեցին իրենց դժգոհութիւնը մեր պետութեան իշխանութիւնների հանդէպ: Այս սահմանադրական իրաւունքի իրականացումը իշխանութիւնների կողմից արժանացաւ բռնութեամբ ցրելու հրամանի:

1988 թուականի ազգային ազատագրական պայքարը գրեթէ բոլոր հայերին համախմբեց մեր վաղեմի երազանքի շուրջ, անկախ նրանից՝ նրանք որտեղ էին ապրում՝ Հայաստանում, թէ Հայաստանի սահմաններից դուրս: Ներշնչեցին հաւատ, որ իրապէս

հնարաւոր է հազարամեակների ընթացքում շարունակ պատմական հայրենիքը կորցնելուց՝ մեծ հայրենազրկումից, այն է՝ Ցեղասպանութիւնից, մշակութային ժառանգութեան կորստից յետոյ ունենալ ազատագրուած Հայրենիք: Հաւատն իր յետեւից բերեց յաղթանակ՝ անկախ պետականութիւն եւ ազատագրուած Արցախ: Մեր երազանքի՝ նորանկախ պետականութեան ամրապնդման եւ զարգացման յաջորդ քայլը մեր հաւատն էր, որ կառուցելու ենք պետականութիւն, որտեղ մարդը պէտք է ունենայ ազատ խօսք, տարբերուող տեսակէտ, կարծիքի եւ խօսքի ազատ արտայայտում: Այս ամէնի եւ մարդու իրաւունքների պաշտպանման ու իրացման համար մեր երկիրը՝ եօթ տարի առաջ դառնալով Եւրոպայի խորհրդի անդամ, ստանձնեց մի շարք պարտաւորութիւններ, որոնցից է Մարդու Իրաւունքների եւ հիմնարար ազատութիւնների Եւրոպական կոնվենցիան: Արցախեան պատերազմի յաղթանակից առաջ եւ յետոյ ընկած ժամանակաշրջանում ծանր օրեր ապրած հայ հասարակութիւնը լցուեց մեծ հաւատով, որ իրօք կառուցում է հզօր պետութիւն: Ցաւօք, յատկապէս վերջին իրադարձութիւնները մեծ կասկածի տակ են դնում մեր բոլոր ձեռքբերումները: Մենք ականատես ենք, որ մեզանում մարդու իրաւունքները եւ ազատութիւնները տարբեր ձեւերով՝ հակասահմանադրական օրէնքների ուժով եւ այլ իրաւական ակտերով, ՀՀ նախագահի հակասահմանադրական հրամանագրով, իրաւապահ մարմինների կամայական եւ անօրինական գործելաոճով ոտնահարւում են: Ինչի հետեւանքն են սահմանադրական կարգի այլափոխումը, քաղաքական եւ հասարակական համակարգի շեշտակի յետընթացը:

**Անահիտ Բախշեան**

Յարգելի հայրենակիցներ,

Երէկ վարչապետի քաղաքական յենարանի նախաձեռնութեամբ Ազգային ժողովում ընդամէնը 6 դէմ ձայնով ընդունուեց մի անհեղինակ օրէնք, որը զրկեց մեր հասարակութեանը հանրահաւաքների, ցոյցերի միջոցով իր ընդվզումն ազատ արտայայտելու սահմանադրական իրաւունքից: Երէկ քննարկուեց նաեւ օրինագիծ, որն ակնյայտօրէն Հանրապետութեան առաջին նախագահին դարձնում է առաւել խոցելի՝ պահպանութեան առումով: Այս օրէնքների ընդունմանը զուգահեռ գործող վարչապետը շարունակում է յայտարարել երկխօսութեան, քաղաքացիական համաձայնութեան մասին: Յիշեցնեմ, որ փետրուարի 26-ին Հանրապետութեան Հրապարակում իր հրաւիրած, չգիտեմ որքանով օրինական, հանրահաւաքում նա ասաց, որ Ազատութեան Հրապարակում հանրահաւաք անողները մեր քոյրերն ու եղբայրներն են, եւ ինքը բոլորի նախագահն է եւ երկխօսութեան է հրաւիրում ընդդիմութեանը: Ինչպէս ես, այնպէս էլ հասարակութիւնը, այդ օրուայ կոչն ընկալեցինք որպէս այդ քոյրերին եւ եղբայրներին, այսինքն՝ իրական ընդդիմութեանն ուղղուած կոչ: Սակայն իշխանութիւնների յետագայ գործունէութիւնն ի ցոյց դրեց խօսքի եւ գործի միջեւ ընկած հսկայական վիհը, որի արդիւնքում՝

ա) պարզուեց, որ երկխօսութեան կոչը ուղղուած էր, ինչպէս վարչապետը որակեց *Ազատութիւն* ռադիոկայանին տուած հարցազրոյցում, միայն այն «յաճախորդներին», որոնց իրենք «լաւ են ճանաչում»: Այդ երկխօսութեան հետեւանքով աննկաշկանդ իրականացրեցին իրենց «քոյրերի եւ եղբայրների» ծեծն ու ջարդը, որոնք համարձակուել էին մասնակցել ընդդիմադիր թեկնածուի անօրինական որակուած հանրահաւաքին՝ արտայայտելու համար իրենց բողոքը կեղծուած ընտրութիւնների վերաբերեալ եւ անհամաձայ-

նութիւնը ԿԸՑ-ի որոշման հետ.

բ) ծեծուած ու ջարդուած, մինչեւ հոգու խորքը վիրաւորուած, անզէն հազարաւոր «քոյրերն ու եղբայրներն» այս անգամ հաւաքուեցին ֆրանսիական դեսպանատան մօտակայքի հրապարակում եւ սկսեցին պաշտպանել իրենց քաղաքացիական դիրքորոշումը՝ հակառակ ոստիկանութեան կողմից կիրառուած մահակածեծերին եւ ուժի ցուցադրմանը: Մինչեւ ուշ գիշեր հանրահաւաքի ժողովուրդը մնաց նոյն տեղում եւ չցրուեց, իսկ հանրահաւաքի անցկացման վայրին զուգահեռ՝ 1-2 կմ այն կողմ, զինուած ոստիկանութեան եւ հանրահաւաքի հետ կապ չունեցող մարդկանց բախման արդիւնքում զոհուեցին 7 երիտասարդներ.

գ) սկսուեց 37 թուականին յատուկ իսկական ահաբեկչութիւն քաղաքական այլակարծութիւն դրսեւորած նոյն քոյրերի ու եղբայրների նկատմամբ՝ անօրինական որակուած հանրահաւաքներին մասնակցելու համար:

Ի դէպ, յիշեցնեմ, որ այդ նոյն անօրինական որակուած հանրահաւաքում կեղծուած ընտրութիւնների մասին իր բողոքի ձայնը հնչեցրեց նաեւ երկխօսութեան իրաւունքից օգտուած քաղաքական «յաճախորդներից» մէկը, որը երէկ կողմ քուէարկեց հանրահաւաքներն արգելափակող օրինագծին:

Այս ամէնը հիմք է տալիս յայտարարելու, որ երկխօսութեան, քաղաքացիական համաձայնութեան, վստահութեան, հանդուրժողութեան մթնոլորտը ձեւաւորելու փոխարէն իշխանութիւնների գործողութիւնները խորացնում են իշխանութիւն- ժողովուրդ անվստահութեան անդունդը, որը յատկապէս ձեռնտու չէ մի քանի օր յետոյ երդման պատրաստուող Սերժ Սարգսեանին:

**Լարիսա Ալաւերդեան**

Շնորհակալութիւն:

Ես կը ցանկանայի սկսել նրանից, որ, յիրաւի, չկայ առանձին ներքին եւ առանձին արտաքին քաղաքականութիւն: Երկուսն էլ խարսխուած պէտք է լինեն նոյն սկզբունքների՝ նախեւառաջ արդարութեան եւ օրինականութեան սկզբունքների վրայ: Եւ երբ որ մենք որեւէ անգամ անտեսում ենք այդ սկզբունքները ներքին քաղաքականութեան մէջ, պէտք է յստակեցնենք մեզ համար, որ դա անպայման տեղի է ունենալու նաեւ արտաքին քաղաքականութեան մէջ: Պատահական չէ, որ արցախեան երկարատեւ պայքարի մէջ մենք փաստօրէն այսօր ոչ թէ տանուլ ենք տալիս, այլ ուղղակի ապացուցում ենք, որ մեր օրէնսդիր ու գործադիր մարմինները եւ դիւանագիտական միտքը պարզապէս անտարբեր են մնում բաւականին յստակ ձեւաւորուած եւ իրաւական հենքի վրայ դրուած արցախեան հիմնահարցի հանդէպ: Պատահական չէ, որ այսօր մենք ստանում ենք այն փաստաթղթերը եւ մօտեցումները, որոնք ուղղակի վկայում են, որ աւելի քան 15 տարի է՝ հայաստանեան քաղաքական եւ պետական էլիտան պարզապէս չի զբաղւում այդ հարցով, աւելին՝ այդ էլիտան նպաստել է արցախեան հիմնահարցի բոլորովին այլասերուած, այլափոխուած պատկեր ստեղծելուն՝ նախեւառաջ միջազգային հանրութեան առաջ:

Ես պէտք է յստակեցնեմ, որ եթէ մեր իրականութիւնը ցոյց է տալիս, որ մենք չենք խարսխում մեր ներքին քաղաքականութիւնը օրինականութեան եւ արդարութեան սկզբունքների վրայ՝ նոյնը շարունակում ենք անել եւ արտաքին քաղաքականութեան մէջ: Դա սկսուեց դեռ առաջին նախագահի օրօք, ով լռելեայն համաձայնութիւն էր տալիս

համապատասխան միջազգային հաստատութիւնների ցանկացած առաջարկութիւններին, որոնք բերւում եւ մատուցւում էին Հայաստանին:

Ցաւօք սրտի, գործող իշխանութիւնները եւս չեն յաղթահարել, աւելին՝ փաստօրէն այսօր ունենք բաւականին ծանր մի իրավիճակ, երբ մենք պէտք է համոզենք աւելի քան 150 պետութիւնների, որ արցախեան հիմնահարցում ոչ թէ պէտք է ղեկավարուել Կոսովոյի նախադէպով, այլ Արցախը առաջինն է այդ բոլոր նախադէպերի մէջ, ժամանակակից պատմութեան մէջ, որը ապացուցել է՝ միայն իրական հիմքերով կարող է եւ պէտք է կայանայ նոր ստեղծուած պետութիւնը: Մենք այսօր պարզապէս այդ հարցը թողել ենք բոլորովին այլ ուժերի յոյսին, որոնք նրա հետ վարուել են այնպէս, ինչպէս վարուել են:

Իրենց հերթին ԱԺ Ժառանգութիւն խմբակցութեան պատգամաւորներ Ստիոպա Սաֆարեանը եւ Արմէն Մարտիրոսեանը շարունակաբար ընթերցեցին Ժառանգութիւն կուսակցութեան յայտարարութիւնը Հայաստանի անցեալի, ներկայի եւ ապագայի վերաբերեալ»:

Այն կարող էք կարդալ՝ այցելելով http://www.heritage.am/pr/170308arm.htm կայքէջ:

## 19 ՄԱՐՏ 2008

### ՄԵԿՆԱՐԿԵՑ *ԳԱԼԱ* ՀԸ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՀԵՌՈՒՍՏԱՄԱՐԱԹՈՆ ԴՐԱՄԱՀԱՒԱՔԸ

*Հետք*, 10:00

Գիւմրիում մեկնարկեց *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեանը ֆինասապէս աջակցելու դրամահաւաք-մարաթոնը:

Գիւմրուայ ժամանակով ժամը 10-ի դրութեամբ Հեռուստաընկերութիւնում հարցազրոյցներով արդէն ելոյթ են ունեցել Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի խորհրդի նախագահ Լեւոն Բարսեղեանը, Ա. Դ. Սախարովի անուան Մարդու Իրաւունքների պաշտպանութեան հայկական կենտրոնի Շիրակի մարզային մասնաճիւղի ղեկավար Մէյրան Մարտիրոսեանը, Երազգաւորս գիւղից Մելիքսեթ Գաբոյեանը, Նարեկ հոգեբանական կենտրոնի տնօրէն, հոգեբան Արմինէ Գմիւր-Կարապետեանը, հեռուստամարաթոնը շարունակւում է:

Կան դրամական օժանդակութեան պատրաստակամութեան հեռախօսազանգեր ԱՄՆ-ից՝ Լոս-Անջելէսից, Մոսկուայից, Փարիզից: Հայաստանեան իրադարձութիւնները լուսաբանող բլոգներն ու բլոգէրները մեծ ակտիւութեան լուսաբանում են դրամահաւաք-մարաթոնը, իրենց կայքէջերում տեղադրել են *ԳԱԼԱ ՀԸ* աջակցութեան համար: Մարաթոնի էլեկտրոնային յայտարարութիւնները տարածուել են աշխարհով մէկ՝ աւելի քան 3500 էլեկտրոնային հասցէներով, դրանց տարածումն ու վերատարածումը շարունակւում է երկրաչափական պրոգրեսիայով, ու արդէն անհսկելի է:

**Արդէն մարտի 18-ին արուած դրամական նուիրատուութիւնները.**

Գործարար գիւմրեցի՝ 200.000 դրամ
Գիւմրեցի հաշուապահ՝ 10.000 դրամ
Կարէն Բարսեղեան՝ 10.000 դրամ
Գիւմրեցի գործարար՝ 10 դոլար

Հայկ (ուսանող)՝ 10.000 դրամ
3 գիւմրեցի ընկերներ՝ 30.000 դրամ
Հռիփսիմէ Մարտիրոսեան՝ 10.000 դրամ
Գիւմրեցի դասախօս՝ 20.000 դրամ
Գիւմրեցի «գործարար համար 1» (այսպէս է ներկայացել)՝ 50.000 դրամ
Սվետլանա Արզումեան՝ դերասանուհի 5000 դրամ
Կարինէ Աթանեսեան, հոգեբան՝ 10.000 դրամ
Մանուկ Կիրակոսեան՝ 3000 դրամ

**Մարտի 19-ին՝ հեռուստամարաթոնի մեկնարկից սկսած եւ յայտարարուած.**
Խաչիկ Վլադիմիրի Սահակեան, թոշակառու՝ 15.000 դրամ
Սօնա Գէորգեան, ուսանողուհի՝ 5.000 դրամ
Կարէն Կոշտոյեան, աշակերտ 5.000 դրամ
Ժաննա, 10 ամերիկեան դոլար
Կարէն, գործարար, 200 ԱՄՆ դոլար
Սեդրակ Յարութիւնեան, 5.000 դրամ
Սարգիս Մելիքսեթի Գաբոյեան, Երազգաւորս գիւղ՝ 3.000 դրամ
Լեւոն Բարսեղեան՝ գումարի չափը չի հրապարակւում
Հրանտ Մարգարեան, թոշակառու, Արթիկից՝ փոխանցումով՝ 5000 դրամ

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան շտաբն ու *ԳԱԼԱ ՀԸ* աշխատակազմը երախտագիտութիւն է յայտնում բոլոր նուիրատուներին:

Ստորեւ՝ այն բանկային հաշիները, որոնցով Հայաստանից եւ արտերկրից մարդիկ կարող են իրենց նուիրատուութիւնները կատարել ու այդպիսով օգնել հեռուստաընկերութեանն ու պահպանել այն:

Յիշեցնում ենք, որ զանազան գերատեսչութիւնների ճնշումների երկու դատական գործերի հետեւանքով *ԳԱԼԱ ՀԸ*-ն 2007 թուի նոյեմբերի 1-ից աշխատում է առանց առեւտրային գովազդային պատուէրների, իր ծրագրերում ունենալով ու պահպանելով բոլոր լրատուական եւ վերլուծական հաղորդաշարերը վերածուել է իսկական հանրային հեռուստաընկերութեան:

***ԳԱԼԱ ՀԸ* օգնելու դրամական հաշուի համար**
Վահան Խաչատրեան
ՅՈՒՆԻԲԱՆԿ ՓԲԸ, ԳՅՈՒՄՐԻ Մասնաճիւղ
h/h 2410 3101 2610
Դոլարային հաշուի համար
For transfers in USD
Intermediary Bank:
Deutsche Bank Trust Company Americas, New York
SWIFT: BKTR US 33
Beneficiary's bank:
UNIBANK, Armenia, SWIFT: UNIJ AM 22
Acc: 0443 7920
UNIBANK CJSC GYUMRI BRANCH

Beneficiary: Khachatryan Vahan
Account: 2410 3111 2618

Չնայած այն հանգամանքին, որ դրամահաւաքի կոչը տարածուել է մարտի 17-ի առաւօտնից, Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան շտաբը եւ Հեռուստա-ընկերութիւն տնօրինութիւնը արդէն մի քանի հարիւր հեռախօսազանգ են ստացել աջակցութեան պատրաստակամութիւն յայտարարութիւններով:

*ԳԱԼԱ ՀԸ* հեռուստաեթերում մարտի 17-ին հիւրընկալուել է Շտաբի համակարգող Լեւոն Բարսեղեանը եւ հանրութեանը հանգամանօրէն բացատրել ստեղծուած կացութիւնը եւ հեռուստաընկերութեա եթերազրկման իրական ռիսկը, ապա պատասխանել է աւելի քան 50 հեռուստադիտողների հարցերին: Հաղորդումից յետոյ մինչեւ գիշերուայ ժամը 1-ը չէին լռում Լ. Բարսեղեանի եւ *ԳԱԼԱ ՀԸ* հեռախօսները: Մարդիկ զանգում եւ իրենց աջակցութիւնն էին յայտնում հեռուստաընկերութեանը, պատրաստակամութիւն էին յայտնում 1000 դրամից մինչեւ 1500 դոլարի նուիրատուութիւն կատարել հեռուստա-ընկերութեանը:

Լոս-Անջելէսից, Փարիզից, Մոսկուայից մի քանի հեռախօսազանգեր են եղել Շտաբ եւ հեռուստաընկերութեան հիմնադիր Վահան Խաչատրեանին, մարդիկ ինտերնէտից ծանօթանալով տեղի ունեցածին, եւ պլանաւորուող դրամահաւաքի հեռուստամարա-թոնին, պատրաստակամութիւն էին յայտնում մասնակցել դրամահաւաքին, յորդորում էին չյուսահատուել եւ վստահեցնում, որ կը կարողանան հաւաքել այնքան գումար, որ բաւարարի հարկայինի «նկարած» տուգանքը փակելուն:

Մարտի 17-ի կէսօրից մինչեւ այս պահը մի քանի տասնեակ հեռախօսազանգեր են եղել Երեւանից, Վանաձորից եւ Շիրակի մարզի համայնքներից՝ ուղղուած Շտաբի համակարգող Լ. Բարսեղեանին եւ *ԳԱԼԱ ՀԸ* հիմնադիր Վահան Խաչատրեանին՝ նոյն առաջարկութիւններով եւ դիրքորոշումներով: Մարդիկ հարցնում էին բանկային հաշուի որեւէ համար, ինչն արդէն այս հաղորդագրութեամբ տարածւում է:

Գիւմրեցի բանաստեղծ Յաբեթ Մուրադեանը իր հեղինակած գրքի 200 օրինակ նուիրելու պատրաստակամութիւն յայտնեց, որ վաճառուի ու ստացուած հասոյթը տրա-մադրուի *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեանը:

Բազմաթիւ մարդիկ զանգում եւ յայտարարում են, որ իրենք «ամէն ձեւ» կանգնած են *ԳԱԼԱ*-ի կողքին ու թոյլ չեն տալու, որ հեռուստատեսութեանը յանկարծ «փողով կրեն»:

Ահա Լ. Բարսեղեանի ստացած SMS-ներից մէկը. «Սիրելի Լեւոն ջան, 62 տարեկան եմ, աշխատանք չունեմ, թոշակ չեմ ստանում, 1000 դրամ ունեմ, սիրով կը տամ»:

Ահա մէկ ուրիշ SMS. «Ես ողջունում եմ ձեզ, ես չեմ պատկերացնում, որ *ԳԱԼԱ* հեռուստաընկերութիւնը չգործի, որովհետեւ բացի այդ ալիքից մենք դիտում ենք *OPT*-ն եւ *PTP*-ը: Ուզում էի, որ *ԳԱԼԱ*-ն գործեր ամբողջ Հայաստանում, որ բոլորն էլ գիտենային, ինչ է իրականում կատարւում, ես էլ եմ ձեզ հետ եւ պայքարելու եմ մինչեւ վերջ, ցանկանում եմ мес յաջողութիւն»:

Չնայած այն հանգամանքին, որ հեռուստամարաթոնի մեկնարկը յայտարարուած է Գիւմրուայ ժամանակով մարտի 19-ին, առաւօտեան ժամը 9:00-ին, այսօր, մարտի 18-ին օրուայ ընթացքում արդէն մի քանի տասնեակ անհամբեր գիւմրեցիներ այցելել են հեռուստաընկերութիւն եւ իրենց նուիրատուութիւնները թողել այստեղ, մի հաշուապահ, երեք ընկերներ բոլորովին չեն ներկայացել, մի գործարար թողել է 200.000 դրամ: Ժամը

18:00-ի դրութեամբ հաւաքուած գումարը կազմում էր 295.000 դրամ: Այս պահին հեռուստաընկերութիւնը արդէն վազող տողով հաղորդում է նուիրատուների եւ նուիրաբերած գումարների մասին:

**Յիշեցնում ենք.**

***Հեռուստամարաթոնի մեկնարկը լինելու է.***

Լոս-Անջելէսի ժամանակով, մարտի 18, ժամը 21:00
Վաշինգտոն, ԿՕ Ժամանակով, մարտի 19, ժամը 00:00
Մոսկուայի ժամանակով, մարտի 19, ժամը 08:00
Լոնդոնի ժամանակով, մարտի 19-ին, ժամը 05:00
Փարիզի, Վիեննայի, Ամստերդամի, Բրիւսէլի ժամանակով մարտի 19, ժամը 06:00
Ստամբուլի ժամանակով մարտի 19, ժամը 07:00
Սիդնէյի եւ Մելբուրնի ժամանակով, մարտի 19, ժամը 16:00
Հեռուստամարաթոնի աւարտը. 25.665.100 դրամ (կամ մօտ 84.000 ամերիկեան դոլար, մօտ 58.000 եւրօ)

Խնդրում ենք, բոլոր նրանց, ովքեր հնարաւորութիւն ունեն բանկային փոխանցումներով մասնակցել *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան մարաթոնին, հնարաւորութեան դէպքում փոխանցումը կատարելուց անմիջապէս յետոյ տեղեկացնել *ԳԱԼԱ ՀԸ* + 374.31231819, + 374.31231889, կամ Հեռուստաընկերութեան հիմնադիր Վահան Խաչատրեանին՝ + 374.91435563, կամ Պաշտպանութեան շտաբի համակարգող Լեւոն Բարսեղեանին՝ + 374.91821363, կամ levon@asparez.am էլեկտրոնային հասցէով:

**ԳԱԼԱ ՀԸ օգնութեան դրամահաւաքի կոչը հանրութեանը**

Մարտի 19-ին Գիւմրուայ ժամանակով առաւօտեան ժամը 9-ին մեկնարկում է *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեանը ֆինանսական աջակցութիւն ցոյց տալու համար նախաձեռնուած հեռուստամարաթոնը: Հեռուստամարաթոնը ցուցադրուելու է *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան եթերում Շիրակի մարզում: Նպատակը՝ 1 օրուայ ընթացքում խօսքի ազատութիւնը եւ *ԳԱԼԱ ՀԸ* աշխատանքը գնահատողների օգնութեամբ հաւաքել 25 միլիոն 665 հազար հարիւր դրամ: Սա այն գումարն է, որ Հայաստանի հարկային մարմինները որպէս տոյժուտուգանք կազմել են առանց պատշաճ հիմքերի: Նոյն օրը ժամը 16-ի ՀՀ Վարչական Դատարանի Գիւմրու նստավայրի դատաւոր Էդ. Նահապետեանը հրապարակելու է ՀՀ Կառավարութեանն առընթեր Հարկային Պետական Ծառայութեան Գիւմրու Հարկային Տեսչութիւն-*ԳԱԼԱ ՀԸ* հիմնադիր ՉԱՊ ՍՊԸ դատական միացեալ գործերով վճիռը: Մենք պարտաւոր ենք պատրաստ լինել ցանկացած տարբերակի: Եթէ դատաւորը բաւարարի հարկայինի հայցը, ինչ շատ հաւանական է, *ԳԱԼԱ ՀԸ*-ն կամ ստիպուած կը լինի անմիջապէս վճարել գումարը եւ շարունակել պայքարը վնասի փոխհատուցում ստանալու համար՝ մնալով եթերում եւ շարունակելով աշխատել, կամ ուղղակի ստիպուած կը լինի եթերազրկուել, որովհետեւ այդ գումարը բռնագանձելու համար պետութիւնը աճուրդի կը հանի հեռուստաընկերութեան գոյքը: Դրա հետեւանքով ՍՊԸ-ն կը կորցնի իր ունեցած հեռարձակման լիցենզին, որ գործունէութեան ժամկէտը սպառում է 2012 թուին միայն: Իսկ եթերում մնալով սեփական իրաւունքների համար պայքարելը շատ աւելի շահեկան ու նպատակայարմար է քան՝

եթերազրկուած:

Յարգելի Ժողովուրդ,

Խնդրում ենք Ձեր հնարաւորութիւնների եւ կարեցածի չափով մասնակցել մարաթոն-դրամահաւաքին. նուիրաբերուող կամ պարտքով տրուող իւրաքանչիւր լուման եւ իւրաքանչիւր դրամը կարող են վճռական լինել:

Պահը վճռական է ոչ միայն հեռուստաընկերութեան, այլեւ մեզ բոլորիս համար. խնդիրը միայն հեռուստաընկերութիւնը չէ, խնդիրը մեր բոլորի խօսքի, մտքի, տեղեկատուութեան, արտայայտման, կարծիքի եւ տեսակէտի Ազատութիւնն է: Մենք թոյլ չպիտի տանք, որ հեռուստաընկերութիւնը եթերազրկուի: Խօսքի ազատութիւնը թանկարժէք հաճոյք է: Ազատութիւնը գին ունի: Մենք պարտաւոր ենք վճարել այդ գինը:

Առանց մեր խօսքի ազատութեան մենք չկանք, միացէ՛ք մեզ:

Դրամական ուղղակի նուիրատուութիւններ իրականացնելու համար հարկաւոր կը լինի այցելել *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան գրասենեակ Գիւմրի, Վ. Սարգսեան փ., 4/1 հասցէով. Շարլ Ազնաւուրի հրապարակ, արեւմտեան շէնք, մուտքը բակի կողմից:

Բանկային փոխանցումների եւ պարտքով դրամական օժանդակութեան համար հարկաւոր է զանգահարել հեռուստաընկերութիւն հետեւեալ հեռախօսահամարներով. +374.31231819, +374.31231889, կամ զանգահարել ուղիղ *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան հիմնադիր Վահան Խաչատրեանին հետեւեալ բջջային հեռախօսահամարով. + 374.91435563:

Բանկային կորդինատներ եւ հաշուի համարը կը հաղորդուի լրացուցիչ:

Բոլոր նուիրատուութիւններն ու պարտքով տրուող գումարները կը ստանան պատշաճ իրաւաբանական գրանցում:

Յարգանօք՝ Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան պաշտպանութեան շտաբի համակարգողներ Լեւոն Բարսեղեան, Վահան Թումասեան, Արթուր Աւլանեան

Այս հաղորդագրութիւն-կոչի հետ կապուած բոլոր պարզաբանումների համար կարող էք դիմել Լեւոն Բարսեղեանին +374.91821363 հեռախօսահամարով, levon@asparez.am էլեկտրոնային հասցէով:

Այս ամբողջ պատմութիւնը հանգամանօրէն ներկայացուած է www.asparez.am կայքում:

## ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐԸ ՄԻԱՆՈՒՄ ԵՆ ԴՐԱՄԱՀԱՒԱՔ-ՄԱՐԱԹՈՆԻՆ

*Հետք*, 11:00

*Հետք* ինտերնէտային շաբաթաթերթի խմբագրութիւնը մարաթոնին մասնակցում է 50.000 դրամ օգնութեամբ: Նոյն չափի աջակցութեան մասին են յայտնել նաեւ *Առաւօտ* օրաթերթի գլխաւոր խմբագիր Արամ Աբրահամեանը եւ *168 ժամ* թերթի գլխաւոր խմբագիր Սաթիկ Սէյրանեանը:

*Հետք*ը իր բոլոր ընթերցողներին կոչ է անում մասնակցել ազատ խօսքի պաշտպանութեանն ուղղուած այս դրամահաւաք-մարաթոնին:

## 20 ՄԱՐՏ 2008

### ԲՈՒՌՆ ԿԵՐՊՈՎ ՇԱՐՈՒՆԱԿՈՒՈՒՄ Է *ԳԱԼԱ* ՀԸ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՀԵՌՈՒՍՏԱՄԱՐԱԹՈՆ ԴՐԱՄԱՀԱՒԱՔԸ

*Հետք*, 12:00

Մարտի 19-ին Գիւմրուայ ժամանակով ժամը 16-ին ՀՀ Վարչական դատարանի Գիւմրու նստավայրի դատաւոր Էդ. Նահապետեանը հրապարակեց Գիւմրու Հարկային Տեսչութիւն-ՉԱՊ ՍՊԸ միացեալ դատական գործերով վճիռը, եւ հաստատեց այն հիմնաւոր ենթադրութիւններն ու կանխատեսումները, որ պիտի բաւարարի Հարկային Տեսչութեան հայցն ընդդէմ *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան:

Դատաւորը վճռել էր, որ ընկերութիւնից պիտի բռնագանձուի հարկայինի հայցով պահանջուած ամբողջ գումարը՝ բացառութեամբ՝ 95.000 դրամի: Այդ 95.000 դրամը այն տուգանքի չափն է, որ նկարուել էր հարկայինի կողմից որպէս առանց լիցենզաւորման Բենզալեան կրակների արտադրութեան համար տուգանք: Դատաքննութեան ընթացքում դատաւորը ՍՊԸ կողմից արուած մօտ 1 տասնեակ միջնորդութիւններից բաւարարել էր ընդամէնը 2 միջնորդութիւն. մէկը Հարկայինի դէմ հակընդդէմ հայցը վարոյթ ընդունելու մասին որոշումն էր, միւսը Բենզալեան կրակների ծագման վայրն ու ժամանակը պարզելու փորձաքննութիւան միջնորդութիւնը: Իսկ այդ փորձաքննութեան արդիւնքում անհնարին էր եղել ապացուցել, որ այդ արտադրանքը ՉԱՊ ՍՊԸ-ինն է: Այսպիսով Հարկայինի կազմած առանց պատշաճ հիմքերի ակտի 25.665.100 դրամ տուգանային գումարը նուազելով կազմեց 25.570.100 դրամ:

**Այսպիսով *ԳԱԼԱ* ՀԸ պաշտպանութեան հեռուստամարաթոնի թիրախը 25.570.100 դրամ հանգանակելն է:**

Գիւմրիում ժամը 20-ի դրութեամբ շարունակւում է *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեանը ֆինանսապէս աջակցելու դրամահաւաք-մարաթոնը: Մարաթոնին մասնակցում են Գիւմրու, Արթիկի, Մարալիկի, Շիրակի մարզի մի քանի տասնեակ գիւղական համայնքների, Վանաձորի, Երեւանի եւ Հայաստանի մի շարք այլ բնակավայրերի գնակիչներ, ընկերութիւններ, գործընկերներ: Հեռախօսային իրազեկումներ կան Մոսկուայից, Աթենքից, Ստոկհոլմից, Ամստէրդամից, որ այնտեղից մի շարք դրամական փոխանցումներ են եղել *ԳԱԼԱ* ՀԸ պաշտպանութեան համար հիմնադիր Վահան Խաչատրեանի անունով բացուած հաշուեհամարին: Արթնացող Լոս Անջելէսից մի քանի զանգեր կան, որ բանկերը բացուելուն պէս սկսելու են փոխանցումներ կատարել Հեռուստաընկերութեան հաշուին:

Յիշեցնում ենք, որ զանազան գերատեսչութիւնների ճնշումների երկու դատական գործերի հետեւանքով *ԳԱԼԱ* ՀԸ-ն 2007 թուի նոյեմբերի 1-ից աշխատում է առանց առեւտրային գովազդային պատուէրների, իր ծրագրերում ունենալով ու պահպանելով բոլոր լրատուական եւ վերլուծական հաղորդաշարերը վերածուել է իսկական հանրային հեռուստաընկերութեան:

Գիւմրուայ ժամանակով ժամը 18-ի դրութեամբ Հեռուստաընկերութիւնում հարցազրոյցներով ելոյթ են ունեցել մօտ 50 հոգի մշակոյթի, արուեստի, հոգեւոր դասի ներկայացուցիչներ, հիւրեր Շիրակի մարզի այլ բնակավայրից, Երեւանից, Վանաձորից եւ այլք:

Ժամը 18-ի դրութեամբ արդէն հանգանակուել էր 6,5 մլն դրամից աւելի, ինչը պահանջուող գումարի 25 տոկոսից աւելին է:

Ստորեւ բերուող տողերում արտացոլւում այն սոցիալական եւ հասարակական տրամադրութիւնները որ կան հանգանակութեան շուրջ: Գիւմրիում կարծես տօն լինի, չնայած մթնշաղին մարդիկ *ԳԱԼԱ* հեռուստաընկերութիւնում հերթ են կանգնած իրենց լուման ներդնելով հեռուստաընկերութեան հեռարձակման լիցենզիան փրկելու համար:

Բազմաթիւ գիւղաբնակներ զանգում, ճշտում են թէ արդեօ՞ք շարունակուելու է մարաթոնը, ճամփայ ընկնե՞ն դէպի Գիւմրի, թէ՞ թողնեն վաղուան, իմանալով, որ մարաթոնը անընդմէջ շարունակուելու է այնքան ժամանակ, քանի դեռ չի հանգանակուել անհրաժեշտ գումարը, ճանապարհ են ընկնում դէպի Գիւմրի:

**Մարտի 19-ին՝ հեռուստամարաթոնի մեկնարկից սկսած եւ յայտարարուած.**

Խաչիկ Վլադիմիրի Սահակեան, թոշակառու՝ 15.000 դրամ,
Սօնա Գէորգեան, ուսանողուհի՝ 5.000 դրամ
Կարէն Կոշտոյեան, աշակերտ 5.000 դրամ
Ժաննա, 10 ամերիկեան դոլար,
Կարէն գործարար - 200 ԱՄՆ դոլար
Սեդրակ Յարութիւնեան - 5.000 դրամ
Սարգիս Մելիքսեթի Գաբոյեան, Երազգաւորս գիւղ - 3.000 դրամ
Լեւոն Բարսեղեան - գումարի չափը չի հրապարակւում
Հրանտ Մարգարեան, թոշակառու, Արթիկից - փոխանցումով՝ 5000 դրամ
Մէյրան Մարտիրոսեան - 10.000 դ.
Լիդա Մեսրոպեան - 10.000 դ.
Անդրանիկ Դաւթեան - 1000 դ.
Սերգէյ Գասպարեան - 5000 դ.
Բոյաջեանների ընտանիք - 20.000 դ.
Անուշ Աւոյեան - 3000 դ.
Արտիոմ Բաղոյեան - 1000 դ.
Սվետլանա Կարապետեան - 1000 դ.
Ռոման Ջիլբերշտեյն - 5000 դ.
Դաւիթ Սերոբեան (գ. Մայիսեան) - 10.000 դ.
Սուսաննա Տոնոյեան (Մոսկուա) - 5000 դ.
Յովհաննէս (ուսանող) - 5000 դ.
Քաղաքացի (չի ներկայացել) - 10.000 դ.
Անդրանիկ Գաբրիէլեան - 5000 դ.
Գայեանէ Գաբրիէլեան - 3000 դ.
Աիդա (թոշակառու) - 10.000 դ.
Ռիմա - 20 ԱՄՆ դոլար
Գաէտանօ Գմիւր (8 տարեկան) - 620 դ.
Հրանտ Մարգարեան (թոշակառու, ք. Արթիկ) - 5000 դ.
Գրիշա Գրիգորեան - 5000 դ.
Յովհաննէս Սիմոնեան (փորագրիչ) - 10.000 դ.
Յովհաննէս Դէմիրճեան (80 տարեկան) - 10.000 դ.
Ստեփան Մանուկեան - 30.000 դ.

Յովիկ - 10.000 դ.
Ազատամարտիկ - 20.000 դ.
Գործարարներ - 20.000 դ.
Գէորգ (գործարար) - 5000 դ.
Արմէն Մկրտչեան - 5000 դ.
Սերոբ Սարեան (արհեստաւոր) - 10.000 դ.
Յովիկ Մխիթարեան (Գետքի համայնքապետ) - 10.000 դ.
Կարինէ Առաքելեան (տնային տնտեսուհի) – 5000 դ.
Ալեքսան Արզումանեան
Աշոտ Պապոյեան (ՀՊՃՀ առաջատար դասախօսներ) - 20.000 դ.
Ֆելիքս եւ Ֆրեդի Մարկոսեաններ (1,5 տարեկան զոյգ, Շուէդիա) - 5000 դ.
Վարդան Վարդանեան - 5000 դ.
Սամուէլ Գէորգեան (ՀԿ աշխատակից) - 5000 դ.
Վարդան Մուրադեան (ՀԿ աշխատակից) - 5000 դ.
Համլէտ Մոսինեան (լրագրող) - 10.000 դ.
Գեղեցիկ Ներսիսեան - 2000 դ.
Միեր Աւագեան (4 տարեկան) - 3000 դ.
Սերիոժա Մարտիրոսեան (14 տարեկան) - 5000 դ.
Արտուշ Մուրադեան - 5000 դ.
Թամարա Բարսեղեան (11 տարեկան)
Արամ (9 տարեկան) - 10 ԱՄՆ դոլար
Անահիտ Բաղդասարեան - 5000 դ.
Տիգրանուհի Անդրէասեան (թոշակառու) - 15.000 դ.
Ժաննա Ժամակոչեան - 10 ԱՄՆ դոլար
Արմէն Նահապետեան - 5000 դ.
Վարդանեանների ընտանիք - 50 ԱՄՆ դոլար
Բաբկէն Բագրատեան (7 տարեկան) - 2000 դ.
Անդրանիկ Գէորգեան - 5000 դ.
3 ընկերներ (չեն ներկայացել) - 100.000 դ.
Վահան Յարութիւնեան (թոշակառու մանկավարժ) - 1000 դ.
Արա Գէօդակեան (ուսանող, Երեւան) - 100 ԱՄՆ դոլար
Քաղաքացի (չի ներկայացել) - 10.000 դ.
Ինգա եւ Ինեսա Յարութիւնեաններ (6 եւ 10 տարեկան) - 5000 դ.
Հրանտ Մարգարեան (թոշակառու, Երեւան) - 5000 դ.
Արմինէ Վարդանեան - 1000 դ.
Աշոտ Մկրտչեան - 5000 դ.
Լալա եւ Վալենտինա Թորոսեաններ (3 եւ 5 տարեկան) - 6000 դ.
Ռուզաննա (տնային տնտեսուհի) - 2000 դ.
Յարութիւնեանների ընտանիք - 100 ԱՄՆ դոլար
Ռաֆիկ Մուրադեան (ուսանող, Երեւան) - 1000 դ.
Թամարա Սիմոնեան (դասախօս) - 5000 դ.
Ռոզա - 10.000 դ. Սեդա - 2000 դ. Յոլակ - 3000 դ.

Վոլոդեա Ալաւերդեան (թոշակառու) - 6000 դ.
Ալբերտ, Աշոտ, Համլէտ, Մխիթար, Գարիկ (ընկերներ) - 25.000 դ.
Անժելիկա (8 տարեկան) - 500 դ.
Շողիկ Պետրոսեան - 10 եւրօ
Քոյր եւ եղբայր՝ Աննա, Արման - 920 դ.
Արա Տիգրանեան - 40.000 դ.
Խաչիկ Խաչատրեան - 15.000 դ.
Մարիամ եւ Սարգիս - 10.000 դ.
Նարեկ Պրիմեան - 15.000 դ.
Գիւմրեցի գործարար - 50.000 դ.
Տիգրան (1 տարեկան) - 2000 դ.
Ժորա Մուրադեան - 1000 դ.
Ազատ Դաւթեան - 5000 դ.
Լիպարիտ Բարսեղեան - 5000 դ.
Յովհաննէս Բայբուրթեան - 20.000 դ.
Աննա Յովհաննիսեան - 5000 դ.
Թոշակառու - 2000 դ.
Ազնիւ Աբրահամեան (83 տարեկան, գ. Ձորակապ) - 10.000 դ.
Շիրազ Աբրահամեան (թոշակառու, գ. Ձորակապ) - 10.000 դ.
Լեոնիկ Մնացականեան (70 տարեկան, գ. Ձորակապ) - 5000 դ.
Յովհաննէս Յակոբեան (թոշակառու, գ. Ձորակապ) - 5000 դ.
Տիգրան Պետրոսեան - 12.000 դ.
Նարէ Գալստեան (2 տարեկան, գ. Ձորակապ) - 5000 դ.
Թելլի Ալեքեան (ք. Մարալիկ) - 1000 դ.
Սուսաննա եւ Լիաննա Պապոեաններ (գ. Ձորակապ) - 5000 դ.
Աստղիկ Վարդանեան (թոշակառու) - 3000 դ.
Ժող. Ինստիտուտի ուսանող - 10.000 դ.
Էդգար Առաքելեան (Նոր Ծոեր) - 60.000 դ.
Պայծառ Պետրոսեան (թոշակառու) - 1000 դ.
Մկրտիչ Բաղդասարեան - 1000 դ.
Մկրտիչ եւ Գիաննա Կարապետեաններ - 10.000 դ.
Արուսեակ Սերոբեան - 3000 դ.
Լեւոն Գրիգորեան - 20.000 դ.
Վանիա Նաւասարդեան (թոշակառու) - 10.000 դ.
Ռաֆիկ Հեքիմեան - 3000 դ.
Աշոտ Մխիթարեան (տաքսու վարորդ) - 5000 դ.
Թերեզա Գալստեան - 5000 դ.
Կազմակերպութեան հանրոյթ - 30.000 դ.
Միշա Գէորգեան (շինարար) - 5000 դ.
Մարտին Մաթոսեան (ՌԴ քաղաքացի) - 5000 դ.
Արամ եւ Միհրան (ընկերներ) - 10.000 դ.
Լուսինէ Յարութիւնեան (Ժող. ինստիտուտի ուսանող) - 10.000 դ.

Սամուէլ Դարբինեան (թոշակառու) - 1000 դ.
Համբարձում Պապոյեան - 2000 դ.
Էդիկ Բաղդասարեան (*Հետք* Էլ. հանդէս) - 50.000 դ.
Սաթիկ Սէյրանեան (*168 ժամ* թերթ) - 50.000 դ.
Արամ Աբրահամեան (*Առաւօտ* օրաթերթ) - 50.000 դ.
Ռոզա (3 տարեկան, ք. Արթիկ) - 1000 դ.
Ժող. Ինստիտուտի ուսանողներ - 5000 դ.
Գիւմրեցի գործարարներ - 25.000 դ.
Վարուժան Յարութիւնեան (թոշակառու) - 3000 դ.
Լուսիկ Պետրոսեան - 15.000 դ.
Շուշան Նիկողոսեան - 3000 դ.
Յասմիկ Նահապետեան - 2000 դ.
Անդրանիկ Մարտիրոսեան - 10.000 դ.
Անժիկ Ջանոյեան (թոշակառու) - 1000 դ.
Սվետլանա Պօղոսեան (թոշակառու) - 1000 դ.
Վրէժիկ, Գոռիկ, Գագիկ, Գարիկ (երեխաներ) - 20.000 դ.
Ռուզաննա Մուրազեան - 1000 դ.
Արտուշ Նահապետեան (թոշակառու, Վրաստան) - 10 լարի + 5000 դ.
Վարդան Զաքարեան - 5000 դ.
Եղոյեանների ընտանիք - 20 եւրօ
Մերուժան (դպրոցական) - 50.000 դ.
Գիւմրեցի գործարար - 20.000 դ.
Ղազարեանների ընտանիք - 5000 դ.
Կարէն Պետրոսեան - 5000 դ.
Յարութիւն Թովմասեան (գ. Գետք) - 5000 դ.
Յովհաննէս (ուսանող) - 2000 դ.
Ասեա Սարոյեան - 1000 դ.
Ռաֆիկ (թոշակառու) - 1000 դ.
Մկրտիչ (թոշակառու) - 500 դ.
Հրաչ (թոշակառու) - 1000 դ.
Լուսեա Հարոյեան - 5000 դ.
Գործազուրկ քաղաքացի - 2000 դ.
Լիլիթ եւ Արթուր Յովհաննիսեաններ (9 եւ 5 տարեկան) - 2000 դ.
Անժելա եւ Աննա Կարա-Գէորգեաններ (11 եւ 10 տարեկան) - 6000 դ.
Սաթենիկ Կաղզուանցեան - 10.000 դ.
Մարտուն Հատէթեան - 2000 դ.
Ռաֆայէլ Գրիգորեան - 10 ԱՄՆ դոլար
Սամուէլ - 4000 դ.
Շիլլէր Յակոբեան - 6000 դ.
Մինասեանների ընտանիք - 5000 դ.
Հերմինէ Մինասեան - 2000 դ.
Հայկ Յովհաննիսեան (ք.Արմաւիր) - 5000 դ.

Նիկոլ Մարգարեան - 5000 դ.
Յակոբ Մխիթարեան - 3000 դ.
Կառլէն Ճղրիկեան (գ. Ազատան) - 5000 դ.
Լաուրա Չոմարեան (թոշակառու) - 2000 դ.
Մանէ Մելքոնեան (2,5 տարեկան) - 5000 դ.
Աշիկ եւ Անդրէյ Անդրէյեաններ (4 եւ 2 տարեկան) - 10.000 դ.
Վլադիմիր (3 տարեկան) - 1000 դ.
Արամայիս Ազոյեան - 3000 դ.
Արթուր Ստեփանեան (12 տարեկան) - 2000 դ.
Կարինէ Մարտիրոսեան - 2000 դ.
Բժիշկ Մխիթարեան - 50 ԱՄՆ դոլար
Արտաշէս Յակոբեան - 10.100 դ. երիտասարդական ՀԿ - 5000 դ.
Լիլիթ Յովհաննիսեան եւ Սամուէլ Մկրտչեան (գ. Ախուրեան) - 10.000 դ.
Գոհար (մանկավարժ) - 10.000 դ.
Տիգրան (1 տարեկան) - 2000 դ.
Աշոտ Միրզոյեան (ճարտարապետ) - 5000 դ.
Բելլա Կարապետեան (թոշակառու) - 5500 դ.
Լիաննա Մկրտչեան (3 տարեկան) - 5000 դ.
Արմէն Յովհաննիսեան - 2000 դ.
Գիւմրեցի ուսանող - 1000 դ.
Վահագն Մովսիսեան - 2000 դ.
Բժիշկ Խաժակ - 10.000 դ.
Կամօ Մարտիրոսեան (գ. Մայիսեան) - 5000 դ.
Դաւթեանների ընտանիք - 10.000 դ.
Նարինէ եւ Ռուբիկ Մանուկեաններ (10 եւ 12 տարեկան) - 1000 դ.
Արմինէ Թումիկեան (14 տարեկան) - 2000 դ.
Անահիտ (տնային տնտեսուհի) - 5000 դ.
Լենա եւ Արթուր (թոշակառու, Ուկրաինա) - 10.000 դ.
Մի խումբ դպրոցականներ - 7000 դ.
Գիւմրեցի մանկավարժ - 12.000 դ.
Խաչատրեանների ընտանիք - 9000 դ.
Ֆլորա եւ Գոհար Սողոյեաններ - 30 ԱՄՆ դոլար
Գիւմրիի թիւ 26 դպրոց - 50.000 դ.
Ֆոտոն վարժարանի 9-րդ դասարան - 1000 դ.
Վարդգէս Մարգարեան (գ. Իսահակեան) - 5000 դ.
Կատեա Մխիթարեան (թոշակառու) - 1000 դ.
Գրիգորեանների ընտանիք - 5000 դ.
Մանուկեանների ընտանիք - 15.000 դ.
Սաթենիկ, Աշոտ եւ Լեւոն - 8000 դ.
Արմէն Փահլեւանեան - 5000 դ.
Գեղեցիկ Յարութիւնեան (գ. Մարմաշէն) - 2000 դ.
Դիանա եւ Էդմոն Խաչատրեաններ - 2000 դ.

Լուսինէ եւ Էդգար Սաւդալեաններ - 2000 դ.
Էմին Խաչատրեան - 5000 դ.
Ազատատենչ փոքրիկ Գիւմրեցի - 5000 դ.
Ցոլակ - 5000 դ.
Աննա (1.5 տարեկան) - 5000 դ.
Հենրիկ Իգիթեան (ինժեներ-շինարար) - 10.000 դ.
Ռոզա Մկրտչեան (թոշակառու) - 2000 դ.
Մերի Արեւշատեան (աշակերտ) - 4000 դ.
Ալբերտ Առաքելեան (գ. Ազատան) - 5000 դ.
Ռուբիկ Չախմախչեան (թոշակառու) - 5000 դ.
Յովիկ Այվազեան - 1000 դ.
Ռաֆիկ Ասատրեան - 5000 դ.
Էմմա Յակոբեան - 5000 դ.
Սամուէլ Աղամիրեանի ընտանիք - 10.000 դ.
Աշիկ Մարտիրոսեան (հաշմանդամ ազատամարտիկ) - 3000 դ.
Միսակ Յակոբեան - 3000 դ.
Էլեա Արշալուսեան - 1 ԱՄՆ դոլար + 500 դ.
Գէորգ Խաչատրեան (10 տարեկան) - 1000 դ.
Սուրէն Խաչատրեան - 1000 դ.
Սուրէն Խաչատրեան (շինարար) - 5000 դ.
Սահրադեան (ուսանող) - 1000 դ.
Անուշաւան Խաչատրեան (նկարիչ-օպերատոր) - 5000 դ.
Մուշեղ եւ Շուրա Սիմոնեաններ - 10.000 դ.
Պատուական Սիմոնեան - 2000 դ.
Գէորգ եւ Արման Մանուկեաններ - 5000 դ.
Յակոբեան (թոշակառու) - 5000 դ.
Օսաննա (թոշակառու) - 1000 դ.
Թամարա (թոշակառու) - 1000 դ.
Գրիգոր (թոշակառու) - 1000դ.:
Կարինէ Կարապետեան (մանկավարժ, Երեւան) - 2000 դ.
Յարութիւն - 5000 դ.
Աղուան (թոշակառու) - 5000 դ.
Հենրիկ Յարութիւնեան - 20.000 դ.
Լիլիթ եւ Արսէն - 20 ԱՄՆ դոլար
Անի եւ Տաթեւիկ - 10.000 դ.
Գիւմրեցի թոշակառու - 1000 դ.
Էդգար (գ. Ձորակապ) - 10.000 դ.
Արտիոմ Թովմասեան - 10.000 դ.
Տիգրան Մկրտչեան - 10.000 դ.
Ստեփան - 5000 դ.
Երեւանցի թոշակառու - 1000 դ.
Հայաստան եւ Ռուբիկ Կիրակոսեաններ - 2000 դ.

Վիկտորիա Սահակեան եւ Սպարտակ - 10.000 դ.
Էմմա եւ Էլմիրա Թումանեաններ - 2000 դ.
Ռոկան Կիրակոսեան եւ Մարիամ - 3000 դ.
Միսակ Մուրադեան - 3000 դ.
Վահէ եւ Լեւոն Պետրոսեաններ - 10.000 դ.
Տիգրան, Միրանուշ, Արման, Դաւիթ Սարգսեաններ - 10.000 դ.
Գիւմրեցի գործարար - 10.000 դ.
Լիա Աղաքարեան (ք. Արթիկ) - 50.000 դ.
Կարէն Յովհաննիսեան եւ ընկերներ - 10.000 դ.
Համլէտ Յարութիւնեան (1 տարեկան, Մոսկուա) - 10.000 դ.
Մի խումբ մանկավարժներ - 20.000 դ.
Էրիկ Յովհաննիսեան (10 ամսական) - 5000 դ.
Կարինէ - 5000 դ.
Մի խումբ գործընկերներ - 23.000 դ.
Լուսինէ Ալիխանեան - 2000 դ.
Նարինէ Յարութիւնեան (դպրոցական) - 1000 դ.
Վրէժ Մարգարեան (թոշակառու, գ. Կապս) - 5000 դ.
Մարինա Բաբայեան - 1000 դ.
Վահան եւ Վարդուհի Գաբոյեաններ - 10.000 դ.
Ալբերտ Խաչատրեան (գործազուրկ) - 3000 դ.
Սիլվա Զամբազեան (մանկավարժ) - 10.000 դ.
Աննա Յովհաննիսեան (դպրոցական) - 5000 դ.
Սօնա Յարութիւնեան (թոշակառու մանկավարժ) - 5000 դ.
Գուրգէն Քոչարեան (թոշակառու) - 5000 դ.
Աստղիկ (թոշակառու) - 5000 դ.
Աիդա (թոշակառու) - 2000 դ.
Վարդան - 3000 դ.
Գիւմրեցի գործարար - 100 ԱՄՆ դոլար,
Վոլոդեա (թոշակառու) - 2000 դ.
Ինեսա (ուսանողուհի) - 3000 դ.
Յովհաննէս (հեռուստատեսութեան աշխատող) - 2000 դ.
Յովիկ Մկոյեան (դպրոցական) - 2000 դ.
Գոռ Ալեքսանեան (ուսանող) - 15.000 դ.
Յովհաննէս Գէորգեան - 3000 դ.
Գէորգ Յակոբեան - 4000 դ.
Վելենկա Ասատրեան (5 ամսական, գ. Քեթի) - 2130 դ.
Յովհաննիսեանների ընտանիք - 1000 դ.
Արտիոմ Բաղդասարեան (4 տարեկան) - 10.000 դ.
Մառլէն Վարդանեան (թոշակառու) - 5000 դ.
Գիւմրեցի գործարար - 100 ԱՄՆ դոլար
Լիլիթ Արզումանեան - 5000 դ.
Փառանձէմ Սահակեան (14 տարեկան) - 5000 դ.

Պապ եւ թոռ Սաշա Խաչատրեաններ - 2000 դ.
Տիգրան Յարութիւնեան (ուսանող, Մոսկուա) - 5000 դ.
Լենա Պօղոսեան (միայնակ թոշակառու, գ. Կապս) - 2000 դ.
Հռիփսիմէ Սարգսեան (հաշմանդամ, գ. Կապս) - 2000 դ.
Մանեա Եղոյեան (գ. Կապս) - 2000 դ.
Բաղդասար Իսրայէլեան (գ. Վահրամաբերդ) - 2000 դ.
Գիւմրեցի ուսանողուհի - 2000 դ.
Սուսաննա Յովսէփեան (4 տարեկան) - 5000 դ.
Ալվարդ Եղոյեան - 2000 դ.
Արա Աւագեան - 5000 դ.
Արթուր - 500 դ.
Ստեփան (գործարար) - 10.000 դ.
Արմէն (գործարար) - 5000 դ.
Սարգիս  (գործարար) - 10.000 դ.
Արթուր  (գործարար) - 5000 դ.
Դաւիթ Ստեփանեան եւ Աղուան -1500 դ.
Նարինէ Աւետիսեան (Վանաձորի ԼՕՌԻ հեռուստաստուդիա) - 50.000 դ.
Գրիշա Ասատրեան - 10 ԱՄՆ դոլար
Կարէն Ալեքսանեան (դպրոցական) - 2000 դ.
Լաուրա եւ Ռաֆիկ Միսակեաններ - 10.000 դ.
Ռուզան Գալոյեան (1 տարեկան) - 2000 դ.
Ալինա Մարտիրոսեան (2 տարեկան) - 2000 դ.
Գոհարիկ Գիւրջեան  (2.5 տարեկան) -1000 դ.
Նիկոլայ Յարութիւնեան (4 տարեկան) - 100 ԱՄՆ դոլար
Էդիկ Պետրոսեան - 5000 դ.
Արտաշէս Բոյաջեան - 5000 դ.
Յակոբեանների ընտանիք - 5000 դ.
Անահիտ Հայրապետեան (թոշակառու) - 3000 դ.
Միկրոյի շուկայի մի քանի խանութներ - 23.500 դ.
Ասատուր Գրիգորեան (9 տարեկան) - 3000 դ.
Գիւմրեցի դասախօսներ - 12.000 դ.
Կարէն Սարոյեան (10 տարեկան)- 1000 դ.
Կարէն եւ Գայեանէ Գասպարեաններ - 5000 դ.
Լիւդա Սարգսեան (գործազուրկ) - 5000 դ.
Լաուրա Շմաւոնեան (մանկավարժ, ք. Արթիկ) - 5000 դ.
Կարապետ Ռաֆայէլեան - 100 ԱՄՆ դոլար
Ասքանազ Սահակեան - 5000 դ.
Սեդրակ - 10.000 դ.
Սարգիս Պետրոսեան - 100.000 դ.
Ռոստոմ Յովհաննիսեան (1-ին կարգի հաշմանդամ) - 5000 դ.
Նարէ Յովհաննիսեան (8 տարեկան) - 5000 դ.
Սամուէլ եւ Արմէն - 2000 դ.

Մանէ (4 տարեկան) - 2000 դ.
Գոռ (6 տարեկան) - 10.000 դ.
Կարէն Խաչատրեան (դպրոցական) - 2000 դ.
Յակոբ եւ Ալիսա (2 եւ 3 տարեկան) - 2000 դ.
Արտաշէս Սարգսեան - 10.000 դ.
Յարութիւն Բաղոյեան - 1000 դ.
Վալտէր Պետրոսեան - 1000 դ.
Շուշաննա Արիստակէսեան – 1000 դ.
Համլէտ Մխիթարեան - 1000 դ.
Անժելա եւ Աննա Կարա-Գէորգեաններ - լրացուցիչ 10.000 դ.
Ռիմա Մելոյեան (թոշակառու մանկավարժ) - 5000 դ.
Թելման Յովհաննիսեան (11 տարեկան) - 3000 դ.
Մի խումբ գործընկերներ - 25.000 դ. + 10 ԱՄՆ դոլար
Լեւոն -10 ԱՄՆ դոլար
Բժշկուհի Դիանա Սուքիասեան - 15.000 դ.
Գիւմրեցի գործարար - 100.000 դ.
Արեւշատ գիւղի ազատ խօսքի մի խումբ կողմնակիցներ - 34.000 դ.
Օֆիկ Սարգսեան (թոշակառու) - 1000 դ.
Գէորգ Փահլեւանեան - 5000 դ.
Հայկ Դաւթեան - 1500 դ.
Քրիստինէ եւ Հերմինէ Գալստեաններ - 5000 դ.
Ջեյմս Մանուկեան - 10.000 դ.
Ալբերտ Յովհաննիսեան (12 տարեկան) - 5000 դ.
Էրիկ Սաղոյեան - 1000 դ.
Աշոտիկ Պետրոսեան - 1000 դ.
Ջուրաբ Գիւիրիձէ - 11.110 դ.
Սեւակ Խաչատրեան (գ. Կառնուտ) - 10.000 դ.
Հենրիկ Դաւթեան (գ. Մեծ Մանթաշ) - 5000 դ.
Անահիտ Պետրոսեան - 1000 դ.
Անեա Գէորգեան - 1000 դ.
Լիդա Մկրտչեան - 1000 դ.
Համեստ Յովհաննիսեան - 2000 դ.
Անտոնեան (թոշակառու) - 1000 դ.
Սիլվա, Արմանուշ Ղազարեաններ (թոշակառուներ) - 3000 դ.
Իւետա Ամիրեան - 5000 դ.
Համատիրութեան նախագահ - 5000 դ.
Արա եւ Արտիոմ Յակոբեաններ - 1000 դ.
Լիլիթ Սիմոնեան (ուսանողուհի) - 1000 դ.
Հայկ եւ Ելենա Նորեաններ (3 եւ 8 տարեկան) - 5000 դ.
Գարեգին, Տիգրան, Լենա,Գրիգոր Ազարեաններ - 5000 դ.
Ֆելիքս եւ Լիովա (եղբայրներ) - 30.000 դ.
Արմէն Մկոյեան - 5000 դ.

Լարիսա Առաքելեան՝ 2 եղբայրների հետ - 2000 դ.
Հրաչ Վարդանեան - 10.000 դ.
Արմէն Գրիգորեան - 5000 դ.
Ամալեա Զաքարեան (5-րդ դասարան) - 1000 դ.
Վոլոդեա Գրիգորեան (փականագործ) - 10 ԱՄՆ դոլար
Նազելի Յակոբեան - 2000 դ.
Անժելա Մարտոյեան - 2000 դ.
Արթուր Փահլեւանեան - 1000 դ.
Հենրիկ Գալստեան - 2000 դ.
Լաուրա Մարեան՝ թոռնիկների հետ - 10.000 դ.
Վոլոդեա Սարգսեան (թոշակառու) - 5.000 դ.
Մի խումբ բուժաշխատողներ - 50.000 դ.

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան շտաբն ու *ԳԱԼԱ ՀԸ* աշխատակազմը երախտագիտութիւն է յայտնում բոլոր նուիրատուներին:

## 21 ՄԱՐՏ 2008

### ՄԱՐՏԻ 21-Ը՝ ՍԳՈՅ ԱԶԳԱՅԻՆ ՕՐ

*Հետք*, 09:23

Հայաստանի մի շարք հասարակական կազմակերպութիւններ հանդէս են եկել յայտարարութեամբ, որտեղ ասւում է.

«Մարտի 21-ին լրանում է Հայաստանի գործող իշխանութիւնների կողմից պարտադրուած, այսպէս կոչուած, արտակարգ դրութեան ժամկէտը: Հանրահաւաքների եւ խօսքի ազատութիւնը սահմանափակող այդ արտակարգ դրութիւնը մտցուեց մարտի 1-ին, երբ իշխանութիւնները բռնի ուժ գործադրեցին կեղծուած նախագահական ընտրութիւնները բողոքարկող խաղաղ ցուցարարների դէմ:

Սեփական ժողովրդի դէմ կիրառուած այդ բռնութիւնների հետեւանքով առնուազն 8 հոգի զոհուել է, կան հարիւրաւոր վիրաւորներ, ձերբակալուել եւ քաղաքական հետապնդումների են ենթարկուել ընդդիմութեան հարիւրաւոր ներկայացուցիչներ:

Անտեսելով մարտի 1-ի ողբերգութիւնը՝ իշխանութիւններն անգամ սգոյ օր չյայտարարեցին: Մենք կոչ ենք անում մարտի 21-ը ազգովին նշել որպէս սգոյ ազգային օր: Հրաւիրում ենք բոլոր ցանկացողներին մարտի 21-ին, ժ. 15.00-ին Ազատութեան Հրապարակ, որտեղ տեղի կ'ունենայ մոմավառութիւն՝ ի յիշատակ յանուն ազատութեան իրենց կեանքը զոհաբերած մեր համաքաղաքացիների: Յարգանքի տուրք մատուցելով՝ ե՛ւ ազատութեան մարտիկների, ե՛ւ վարչախմբի ձեռքում զոհ դարձած զոհուած ոստիկանի յիշատակին՝ մեր այս ակցիան կը նպաստի ազգային համերաշխութեան ամրապնդմանը: Այն նաեւ կը խորհրդանշի մեր հասարակութեան եւ ժողովրդի պատրաստակամութիւնը՝ շարունակելու պայքարը յանուն ազատութեան եւ ժողովրդավարութեան հաստատման»:

## «ԳԱՅԼԻՑ ԳԱՅԼԱՄՈՐԸ ՉԵՆ ԲՈՂՈՔՈՒՄ»

**ԼԱՐԻՍԱ ՓԱՐԵՄՈՒԶԵԱՆ**

*Հետք*, 11:00

Մարտի 1-ին արտակարգ դրութիւն յայտարարելու մասին նախագահ Քոչարեանի հրամանագրից յետոյ Լոռու մարզում սկսուեցին նախագահի նախկին թեկնածու Լեւոն Տէր-Պետրոսեանի կողմնակիցների հետապնդումները:

Մարզի իրաւապահ մարմինները Երեւանում կայացած հանրահաւաքների մասնակիցների, ինչպէս նաեւ Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձանց հետ սկսեցին «անհատական» աշխատանք տանել:

Օձունի գիւղապետ Մելիք Այվազեանի (մականունը՝ Ալաբաշ Մելօ) յատուկ ջանքերի շնորհիւ քաղաքական հետապնդումներից առաւել տուժել են օձունցիները: Օձունցի Ալբերտ Նալբանդեանի (8 անձ) եւ Դաւիթ Մակիչեանի (4 անձ) ընտանիքները հանրահաւաքներին մասնակցելու համար զրկուել են բնական գազից: Հայռուսգազարդի Թումանեանի ծառայութեան պետն էլ Ալաբաշ Մելոյի «Քոլի Սաքօ» մականունով եղբայրն է՝ Սարգիս Այվազեանը:

Հանրահաւաքների ակտիւիստ Սերիոժա Բարսեղեանը չի արձագանքել ոստիկանութիւն ներկայանալու՝ Թումանեանի ՆԳ բաժնի բանաւոր կանչերին: Ինչպէս բացատրեցին գիւղում, ոստիկանների կողմից ծեծի ենթարկուելու վախից թաքնուել է, ոստիկանութիւնը մարտի 10-ին խուզարկել եւ նրա անասնագոմում «յայտնաբերել է» աւտոմատի 30 փամփուշտ: Օձունի գիւղապետ Մելիք Այվազեանի պահանջով եւ Լոռու մարզպետ Արամ Քոչարեանի յանձնարարութեամբ մարտի 13-ին Օձունի միջնակարգ դպրոցի տնօրէն Սուրիկ Ալաւերդեանը դադարեցրել է դպրոցի ուսմասվար, մաթեմատիկայի ուսուցչուհի Ալվարդ Շերմազանեանի՝ ուսմասվարի պարտականութիւնների կատարումը: Վերջինս եղել է Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձը: Ի նշան բողոքի՝ դպրոցի մանկավարժները նոյն օրը դադարեցրել են ուսումնական պարապմունքները: Յաջորդ օրը՝ մարտի 14-ին, ժամը 13:30-ին ուսուցիչները հրաւիրել են կոլեկտիւի ժողով եւ պահանջել, որ գիւղապետ Մելիք Այվազեանը նոյնպէս ներկայանայ, սակայն վերջինս չի ներկայացել, իսկ դպրոցի տնօրէն Սուրիկ Ալաւերդեանը ձախողել է կոլեկտիւի ժողովը: Չորս ուսուցիչներ գիւղապետարանում գիւղապետից պահանջել են դադարեցնել անօրինական հետապնդումները ուսմասվարի նկատմամբ: «Մելիքը խոստացել է չհանել, սակայն յաջորդ օրը դպրոցի տնօրէն Սուրիկ Ալաւերդեանն ինձ հրաւիրեց իր մօտ եւ ասաց. «Դիմում գրիր դուրս արի, երկու ամիս յետոյ նորից կ'ընդունեմ»: Ես պատասխանել եմ. «Ես չեմ կարող դիմում գրել, դուք ազատէք եւ հրամանը դրէք ձեռքս, յետոյ կը տեսնենք»», - պատմեց Ալվարդ Շերմազանեանը: Նա նաեւ ասաց, որ դպրոցի ողջ կոլեկտիւը եւ ամբողջ գիւղն իր կողքին են:

Մարտի 8-ի լոյս 9-ի կէսգիշերին Լոռու մարզի Օձուն գիւղում հրդեհուել է Լեւոն Տէր-Պետրոսեանի վստահուած անձ, անկուսակցական Լորիս Աղուանեանին եւ նրա եղբօրը՝ ՀԺԿ-ական Եզեկ Աղուանեանին պատկանող ալրաղացը: Ըստ Աղուանեան եղբայրների՝ հրդեհի պատճառած վնասը կազմում է շուրջ 1 մլն դրամ: «Համոզուած ենք, որ սա իշխանութիւնների կողմից մեր նկատմամբ քաղաքական հաշուեյարդար է Լ. Տէր-Պետրոսեանի վստահուած անձ լինելու եւ Երեւանում մի քանի հանրահաւաքների մասնակցելու համար», - ասացին Եզեկ եւ Լորիս Աղուանեանները:

Աղուանեանների՝ ժամում 500 կգ արտադրողականութեամբ շուրջ 15 տարի

աշխատող ալրաղացը սպասարկում է ոչ միայն Օձունի 5 հազար բնակչութեանը, այլեւ ենթաշրջանի 7 եւ Ստեփանաւանի Կողես, Լեջան, Ագարակ գիւղերի գիւղացիներին: «Մեր սեփական ձեռքերով ենք կառուցել ալրաղացը, մասնագէտներ չենք կանչել: Լեւոն Տէր-Պետրոսեանի ղեկավարման էն ծանր, ինչպէս ասում են՝ «ցուրտ ու մութ տարիներին» էլ մեզ երկաթգծից լոյս են տուել, որ ջաղացը գիւղացիներին սպասարկի», - ասաց Եզեկ Աղուանեանը: Ընդդիմադիր տնտեսվարողների նկատմամբ մեր երկրի պետական տնտեսական քաղաքականութեան սիմվոլիկ պատկերն է ներկայացնում այրուած ալրաղացը: Այն ամբողջութեամբ շրջապատուած է Օձունի գիւղապետ Մելիք Այվազեանի ու նրա եղբայրների սեփականութիւնը հանդիսացող օբիեկտներով: Ալրաղացի մուտքի դիմաց՝ 40-50 մետրի վրայ, գտնւում է Մելիք Այվազեանի՝ բարձր պարիսպներով շրջափակուած հսկայ դղեակը: Աջ կողմում՝ հազիւ 5 մետրի վրայ, գտնւում է գիւղապետի Գրուրա կաթի արտադրամասը, նրա հարեւանութեամբ՝ գիւղապետի ալրաղացը, կովաբուծական ու խոզաբուծական ֆերմաները, յարակից դաշտերն էլ հիմնականում Մելիք Այվազեանի անծայրածիր վարելահողերն են: Ալրաղացից ձախ՝ կառուցւում է Մելիքի եղբօր՝ Սարգիս Այվազեանի գազի լցակայանը, որտեղ ամէն օր քափ ու քրտինքի մէջ աշխատում են նրա ղեկավարած ծառայութեան տեխնիկան ու աշխատողները:

Այրուած ալրաղացի կողքին գիւղապետի սեփական ձեռնարկութիւնները կանգնած են անառիկ ու անխոցելի: Աղուանեանների ալրաղացը հրդեհուել էր վարելահողերի կողմից, հրդեհի երկու օջախով, գիւղապետի հիմնարկներին յարող կից պատից ու վերջինից 15 մ հեռու գտնուող ետնամասի պատուհանից, որից կարելի է ենթադրել, որ հրդեհը միտումնաւոր է: Այս կապակցութեամբ արտակարգ իրավիճակների Լոռու մարզային տեսչութեան առաջատար մասնագէտ Գարիկ Հախինեանն ասաց. «Հետաքննութիւն պէտք է գնայ, տեղազննութիւն կը կատարենք, մի կողմում տոկեր կան, սակայն միւս կողմից էլ են վառել, տեղազննութիւնից յետոյ կարող ենք կոնկրէտ ասել»:

Գիւղացիները պատմեցին, որ գիւղապետն իր սեփականութիւնը հսկելու համար եւ պահակներ ունի, եւ մի երեք-չորս ալաբաշ շներ, որոնք մնացած օրերին էստեղ մարդ են ուտում: Հրդեհից յետոյ շները չկային: Հրդեհի գիշերուայ պահակ Արտակ Նալբանդեանն էլ ասաց. «Հա, ըտի պահակ եմ եղել, դէ գոմի մէջին եմ եղել, կով կա՛ր հիւանդ, ապրանքի ջնջլի (շղթայ) չխկոց-թխկոցից բան չեմ լսել»: Թէ կովի վրայ ջնջիլն ի՞նչ է անում, Արտակը չբացատրեց, սակայն շարունակեց. «Շներն էլ բաց թողած են եղել, ամէն գիշեր էլ հաչում են, ես կարա՞մ ամէն հաչոցի վրայ դուրս գամ»:

«Չի բացառւում, որ շները հրդեհողին օտար չեն եղել, այլապէս պատառ-պատառ կ՚անէին», - բացատրում էին ալրաղացի մօտ հաւաքուած գիւղացիները:

«Մելիքի տերիտորիայում մենք ենք աշխատում՝ ես ու հէրս: Համ տուարած ենք, համ էլ գիշերները պահակութիւն ենք անում: Գոմի մէջից ես ի՞նչ տէի իմանալ: Գոմից երբ դուրս եկայ, արդէն յանգցրել էին», - ասաց պահակ Արտակը:

«Գայլից գայլամօրը չեն բողոքում», - ասաց ալրաղացի մօտ կանգնած միջահասակ օձունցի մի տղամարդ, ով խնդրեց չիարցնել իր ազգանունը: «Տղատէր եմ, կը տանեն ջէբը բան-ման կը գցեն, յետոյ ինչի՞ տէր եմ», - ասաց նա:

Լորիս եւ Եզեկ Աղուանեաններն իրենց քրտինքով ու ձեռքերով կառուցած ալրաղացը հրդեհելու համար ոստիկանութիւն չեն դիմել, այդ մասին ոստիկաններին տեղեկացրել են հրշէջները: Նրանց տառապանքը փորձ ունի: Ամիսներ առաջ իրենց կուսակցական

ընդդիմադիր ընկերոջ բնակարանը նոյն ձեռագրով հրդեհելուց յետոյ առ այսօր ոստիկանութիւնը մատը մատին չի տուել՝ պատճառաբանելով, թէ նման հրդեհները, որպէս կանոն, կամ չեն բացայայտւում, կամ էլ դժուար են բացայայտւում: Աղուանեանները երկրում տիրող իրավիճակը հասկացել են...

## ՅԱՐԳԵԼԻ ԸՆԹԵՐՑՈՂ

*Lragir.am*, 13:59

Յարգելի ընթերցող,

Հայաստանում արտակարգ դրութեան հաստատումից յետոյ, մարտի 2-ին, *Lragir.am* կայքը, ի թիւս հայաստանեան այլ ինտերնէտ կայքերի, ըստ պրովայդէրների, արգելափակուեց Ազգային Անվտանգութեան Ծառայութեան միջամտութեամբ: ԱԱ Ծառայութիւնը, այնուհետեւ նախագահի աշխատակազմի պաշտօնեաները դա պայմանաւորել էին Հայաստանում արտակարգ դրութեան հաստատմամբ, որի մասին նախագահի հրամանագրի կէտերից մէկն էլ վերաբերում էր զանգուածային լրատուամիջոցների գործունէութեանը, ներքաղաքական հարցերի վերաբերեալ թոյլատրելով միայն պաշտօնական տեղեկութեան հրապարակումը: Թէեւ *Lragir.am*-ը չէր խախտել նախագահի հրանագիրը եւ մտադրութիւն էլ չունէր այն խախտելու, քանի որ անկախ օրէնքի հանդէպ մեր վերաբերմունքից՝ այն մեզ համար ենթակայ է պարտադիր կատարման, այդուամենայնիւ մեր կայքէջի աշխատանքը արգելափակուեց:

Հայաստանում մարտի 21-ից այլեւս արտակարգ դրութիւնը վերացուած է, եւ *Lragir.am*-ը վերսկսում է իր աշխատանքը: Հարկադիր պարապուրդի համար ներողութիւն ենք խնդրում մեր ընթերցողից, եւ տեղեկացնում, որ մարտի 21-ից կարող էք հետեւել մեր աշխատանքին, մեր կայքէջի միջոցով տեղեկանալով Հայաստանում կատարուող հասարակական, քաղաքական, տնտեսական անցուդարձին:

## ԱՅՍՕՐ ՍՏՈՐԱԳՐՈՒԵՑ ԿՕԱԼԻՑԻՈՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ

*Lragir.am*, 14:14

Ինչպէս տեղեկացնում է ՀՀ Կառավարութեան մամուլի ծառայութիւնը, այսօր ՀՀ կառավարութիւնում քաղաքական չորս ուժեր ստորագրել են քաղաքական կօալիցիայի համաձայնագիր: Փաստաթուղթն ստորագրել են Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան նախագահ Սերժ Սարգսեանը, Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան նախագահ Գագիկ Ծառուկեանը, Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանը եւ ՀՅԴ գերագոյն մարմնի ներկայացուցիչ Արմէն Ռուստամեանը:

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՅԻ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ**

1. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՅԻ ՆՊԱՏԱԿՆԵՐԸ

Հիմք ընդունելով 2008 թուականի փետրուարի 19-ի նախագահական ընտրութիւնների արդիւնքները, նպատակ հետապնդելով երաշխաւորել Հայաստանի Հանրապետութեան առաջընթաց զարգացումը, հասարակութեան ներսում սոցիալական գործընկերութեան եւ համերաշխութեան մթնոլորտի ձեւաւորումը, 2007 թուականի մայիսի 12-ին կայացած խորհրդարանական ընտրութիւնների արդիւնքում Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովում ներկայացուած ներքոստորագրեալ կուսակցութիւնները (այսուհետ՝ քաղաքական կօալիցիայի կողմեր) Հայաստանի Հանրապե-

տութեան նախագահի աջակցութեամբ ստեղծում են քաղաքական կոալիցիա յանուն՝

- հասարակութեան գերակշիռ մեծամասնութեան վստահութիւնը վայելող եւ արդիւնաւէտ գործող իշխանութիւն ձեւաւորելու,

- ժողովրդավարական բարեփոխումները խորացնելու եւ մարդու իրաւունքների պաշտպանութեան մեխանիզմները կատարելագործելու,

- իրենց նախընտրական ծրագրերի համադրմամբ կառավարութեան գործունէութեան միասնական ծրագիր մշակելու եւ իրականացնելու,

- նախընթաց տարիների ձեռքբերումների կայուն, շարունակական զարգացման, մեր քաղաքացիների կեանքի որակի էական բարելաւման, համարձակ եւ իրատեսական բարեփոխումների իրականացման,

- Հայաստանի Հանրապետութեան առջեւ ծառացած արտաքին եւ ներքին մարտահրաւէրներն արդիւնաւէտ դիմակայելու:

Քաղաքական կոալիցիայի կողմերը հաւաստում են իրենց կամքը եւ վճռականութիւնը կոալիցիայի նպատակների իրագործման համար եւ ստանձնում են քաղաքական պատասխանատուութիւն՝ իշխանութեան գործունէութեան համար:

2. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Քաղաքական կոալիցիայի կողմերը, առաջնորդուելով փոխադարձ յարգանքի, փոխըմբռնման, հանդուրժողականութեան, համերաշխութեան, տարաձայնութիւնները բանակցութիւնների ու քննարկումների միջոցով լուծելու սկզբունքներով, պարտաւորւում են գործել սոյն համաձայնագրի տառին ու ոգուն համապատասխան, իրականացնել միասնական քաղաքականութիւն՝ միմեանց եւ Հայաստանի Հանրապետութեան նախագահի հետ համագործակցութեամբ: Քաղաքական կոալիցիայի կողմերը գործելու են որոշումների ընդունման գործընթացներում քաղաքացիական հասարակութեան ներգրաւման, պետական մարմինների գործունէութեան հրապարակայնութեան եւ թափանցիկութեան ապահովման, բարձրաստիճան պետական պաշտօնեաների հաշուետուութեան արդիւնաւէտ մեխանիզմների կիրառման հիման վրայ:

3. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՅԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԾՐԱԳՐԱՅԻՆ ԱՌԱՋՆԱՀԵՐԹՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Քաղաքական կոալիցիայի հիմնական ծրագրային առաջնահերթութիւններն են՝

- սահմանադրական փոփոխութիւններին օրէնսդրութեան համապատասխանեցման աւարտը, եւրոպական չափանիշներին համապատասխան օրէնսդրութեան ձեւաւորումը,

- իշխանութեան թեւերի միջեւ հակակշիռների եւ զսպումների լիարժէք համակարգի ձեւաւորման սահմանադրական երաշխիքների արմատաւորումն օրէնսդրութիւնում եւ քաղաքական համակարգում,

- արդիւնաւէտ քաղաքական մրցակցութիւն ապահովող, ժողովրդավարական սկզբունքների հիման վրայ արդիւնաւէտ գործող լիարժէք բազմակուսակցական համակարգի զարգացումը, խորհրդարանական ընդդիմութեան գործունէութեան հնարաւորութեան ընդլայնումը եւ ամրապնդումը,

- քաղաքացիական հասարակութեան կայացման համար նպաստաւոր պայմանների ապահովումը եւ հասարակական միաւորումների ու կառոյցների գործունէութիւնը խրախուսող ծրագրերի իրականացումը,

- խօսքի ազատութեան ամրապնդումը, զանգուածային լրատուամիջոցների գործու-

նէութեան անկախութիւնն ու անաչառութիւնը մեծացնելուն ուղղուած, լիարժէք բազմակարծութիւն ապահովող միջոցառումների մշակումը եւ իրականացումը,

- ընտրական գործընթացների նկատմամբ հանրութեան վստահութեան էական բարձրացում ապահովող միջոցառումների մշակումը եւ հետեւողական իրագործումը, մասնաւորապէս, քաղաքական ուժերի դերակատարութեան հետեւողական մեծացումը,

- պետական իշխանութեան համակարգում Ազգային Անվտանգութեան խորհրդի գործունէութեան բարձր արդիւնաւէտութիւն ապահովող մեխանիզմների ներդրումը եւ կիրառումը,

- պետական կառավարման համակարգի արդիւնաւէտութեան մեծացումը, այդ համակարգի նկատմամբ քաղաքացիական հասարակութեան վերահսկողական գործառոյթների ընդլայնումը, պաշտօնեաների նշանակման ժամանակ բարձր մասնագիտական կարողութիւնների եւ բարոյական որակների պահանջների կիրառումը, նրանց գործունէութեան հրապարակայնութեան եւ հաշուետուութեան ապահովումը,

- պետական ծառայութեան բարեփոխումների աւարտումը՝ ձեւաւորելով ազնիւ եւ արդիւնաւէտ գործող կառավարման համակարգ, ապահովելով քաղաքական եւ տնտեսական շահերի տարանջատումը,

- տնտեսութեան կայուն եւ անվտանգ զարգացումը ստուերային տնտեսութեան դէմ պայքարի, բնակչութեան եկամուտների զգալի մեծացման եւ բաշխման առաւել արդարացի մեխանիզմների կիրառմամբ, ազատ տնտեսական մրցակցութեան լիարժէք պայմանների ապահովմամբ, հակամենաշնորհային գործուն քաղաքականութեան իրականացմամբ,

- արտահանման կողմնորոշում ունեցող արտադրութեան խրախուսումը,

- փոքր եւ միջին ձեռներեցութեան զարգացման հետեւողական խթանումը,

- գիւղատնտեսութեան զարգացման Ազգային ծրագրի մշակումն ու իրագործումը,

- աղէտի գօտու վերականգնման աշխատանքների աւարտը,

- պետութեան կողմից նոր աշխատատեղերի ստեղծման խթանման միջոցով գործազրկութեան ծաւալների էական կրճատումը, կենսաթոշակների, նպաստների եւ աշխատավարձերի շարունակական բարձրացումը,

- աղքատութեան յաղթահարմանն ուղղուած սոցիալական քաղաքականութեան իրականացումը՝ որպէս աղքատութեան շեմ ընդունելով կենսաապահովման նուազագոյն բիւջէի չափը,

- Երեւան քաղաքում տեղական ինքնակառավարման եւ պետական կառավարման մարմինների առանձնայատկութիւնների սահմանումն օրէնքով եւ այդ մարմինների ձեւաւորումը,

- դատական օրէնսգրքի ներդրումը՝ համակարգի գործունէութիւնը եւրոպական չափանիշներին լիարժէքօրէն համապատասխանեցնելու, համակարգի անաչառութեան ու անկախութեան նկատմամբ հասարակութեան վստահութեան էական մեծացման նպատակով,

- համընդգրկուն եւ արդիւնաւէտ պայքարը կոռուպցիայի դէմ՝ քաղաքացիական հասարակութեան լիարժէք ներգրաւմամբ,

- օրէնքի գերակայութեան, հասարակական կարգ ու կանոնի լիարժէք ապահովումը, անպատժելիութեան բացառումը, բարոյահոգեբանական մթնոլորտի առողջացումը,

- միջազգային հանրութեանն առաւել արդիւնաւէտ ինտեգրումը,

- Հայաստան-Սփիւռք կապերի յետագայ ամրապնդման միջոցով համազգային ներուժի ամբողջական հաշուառման եւ կիրառման մեխանիզմների արդիւնաւէտութեան էական մեծացումը՝ ի շահ Հայաստանի Հանրապետութեան եւ ողջ հայ ժողովրդի:

4. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՅԻ ԱՆԴԱՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Քաղաքական կօալիցիայի կողմերը պարտաւորւում են՝

ա) ամէն ջանք գործադրել կօալիցիոն կառավարութեան ծրագրի արդիւնաւէտ իրականացման համար,

բ) ապահովել կօալիցիայի շրջանակներում ձեռք բերուած պայմանաւորուածութիւնների իրագործումն իշխանութեան օղակներում քաղաքական ու հայեցողական պաշտօններ զբաղեցնող՝ իրենց երաշխաւորած անձանց կողմից,

գ) չձեռնարկել այնպիսի քայլեր, որոնք կարող են ուղղակիօրէն կամ անուղղակիօրէն վտանգել սոյն յուշագրում ամրագրուած կօալիցիոն նպատակների իրագործումը:

5. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԿԱՐԳԸ

Հայեցակարգային եւ ռազմավարական նշանակութեան փաստաթղթերի նախագծերը ենթակայ են նախնական քննարկման քաղաքական կօալիցիայի կողմերի միջեւ: Կողմերը պէտք է ամէն ջանք գործադրեն միասնական դիրքորոշում ձեւաւորելու համար: Քաղաքական կօալիցիայի կողմերից մէկի առաջարկութեամբ, միասնական դիրքորոշման ձեւաւորման նպատակով կարող է քննարկման առարկայ դառնալ Ազգային Ժողովի եւ կառավարութեան գործունէութեանը վերաբերող ցանկացած հարց: Քաղաքական կօալիցիայի գործունէութեան արդիւնաւէտութեան ապահովման, փոխադարձ հետաքրքրութիւն ներկայացնող հարցերի քննարկման, միջկուսակցական շփումների ապահովման եւ միասնական դիրքորոշումների ձեւաւորման նպատակով կողմերը, հաւասար ներկայացուածութեամբ, ստեղծում են կօալիցիայի համաղրող խորհուրդ: Համաղրող խորհրդի գործունէութիւնն իրականացւում է կանոնաւոր պարբերականութեամբ հրաւիրուող նիստերի միջոցով:

6. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՕԱԼԻՑԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ԺԱՄԿԷՏԸ

Սոյն համաձայնագիրը սկսում է գործել ստորոգրման պահից եւ ուժի մէջ է ՀՀ չորրորդ գումարման Ազգային Ժողովի լիազօրութիւնների ժամկէտում: Համաձայնագիրը վաղաժամկէտ կարող է դադարեցուել անյաղթահարելի սկզբունքային անհամաձայնութեան առկայութեան դէպքում, կողմերից մէկի յայտարարութեամբ կամ կողմերի միջեւ կայացած համաձայնութեամբ:

## ԿՕԱԼԻՑԻԱՆ ՉԻ ՓՐԿԻ ԻՐԱՎԻՃԱԿԸ, ԱՍՈՒՄ Է ՆԱԽԱԳԱՀԻ ԹԵԿՆԱԾՈՒՆ

*Lragir.am*, 14:16

Քառակողմ կօալիցիան, որ կնքում են ՀՀԿ-ն, ԲՀԿ-ն, ՕԵԿ-ն ու ՀՅԴ-ն, ելք չէ այն քաղաքական ճգնաժամից, որ առկայ է Հայաստանի նախագահի ընտրութիւնից յետոյ ստեղծուած իրավիճակում: Այդ մասին մարտի 21-ին Հայելի ակումբում յայտարարել է Հայաստանի նախագահի նախկին թեկնածու, ԼՂՀ նախագահի նախկին խորհրդական Արման Մելիքեանը: Մելիքեանը յայտարարել է, որ այն ուժերը, որոնք կազմել են այդ

կոալիցիան, արդէն տասը տարի է, ինչ ղեկավարում են Հայաստանը եւ նրանք փաստօրէն ունակ չեն նոր որակի յարաբերութիւնների հաստատման Հայաստանում: Արման Մելիքեանը կոալիցիան համարում է զուտ ձեւական, թուաբանական, կարճաժամկէտ լուծում: Մելիքեանի խօսքով, Հայաստանի քաղաքական ճգնաժամը յաղթահարել հնարաւոր է միայն իրական, բովանդակային երկխօսութեան պարագայում: Արման Մելիքեանը համարում է, որ հակառակ դէպքում, եթէ իշխանութիւնը շարունակի ճգնաժամի յաղթահարման միայն ռեպրեսիվ մեթոդների իրականացումը, ապա յետոյ թող ոչ ոք չզարմանայ, որ Հայաստանում սկսեն ահաբեկութիւններ, քաղաքական սպանութիւններ: Արման Մելիքեանը նշել է, թէ ինքը նաեւ նախագահի ընտրութիւնից առաջ էր նախազգուշացնում, որ իրավիճակը կարող է հասնել այնպիսի կէտի, երբ արդէն լինեն արիւնալի բախումներ:

## ՔՈՉԱՐԵԱՆԸ ՍՏՈՐԱԳՐԵԼ Է ՕՐԷՆՔԸ

*Lragir.am*, 14:18

Նախագահի մամուլի գրասենեակը տեղեկացնում է, թէ Ռոբերտ Քոչարեանը մարտի 21-ին ստորագրել է Ազգային Ժողովի կողմից ընդունուած «Յատուկ պետական պաշտպանութեան ենթակայ անձանց անվտանգութեան ապահովման մասին» ՀՀ օրէնքում լրացում եւ փոփոխութիւն կատարելու մասին օրէնքը:

## ԻՐԵՆ ՉԻ ԶԳՈՒՄ ԱՆՎՏԱՆԳ

*Lragir.am*, 14:22

Հայաստանի նախագահի նախկին թեկնածու Արման Մելիքեանը մարտի 21-ին Հայելի ակումբում յայտարարել է, որ իրեն անվտանգ չի զգում այն պարագայում, երբ Հայաստանի անվտանգութեան խորհրդի նախագահ է Արթուր Բաղդասարեանը:

Արման Մելիքեանը նաեւ նշել է, թէ Արթուր Բաղդասարեանին էլ համարում է պատասխանատու մարտի 1-ին ցուցարարների դէմ ուժի կիրառման համար, նշելով, թէ այդ գործողութիւնը իշխանութիւնը կատարեց այն բանից յետոյ, երբ փետրուարի 29-ին Բաղդասարեանի հետ կնքած կոալիցիոն յուշագրով իր համար լուծեց լեգիտիմութեան թուաբանական խնդիրը, ապահովելով 70 տոկոս ձայնի առկայութիւնը: Արման Մելիքեանի խօսքով, Հայաստանում անվտանգութեան խորհրդի քարտուղարի պաշտօնը միշտ էլ թերեւս եղել է ձեւական եւ իր համար զարմանալի է, որ Արթուր Բաղդասարեանն այդ հանգամանքը հաշուի չառնելով համաձայնեց գնալ այդ քայլին, չհաշուարկելով դրա հետեւանքը: Փետրուարի 29-ին ստորագրուեց այդ յուշագիրը, իսկ յաջորդ օրը՝ մարտի 1-ին, տեղի ունեցան յայտնի իրադարձութիւնները, կատարուածի ժամանակագրութիւնը փաստում է Արմէն Մելիքեանն ու ասում, թէ միւս եզրայանգումները ինքն անում է այդ ժամանակագրութեան վրայ հիմնուած իր վերլուծութիւնների միջոցով: Ընդհանրապէս, Արման Մելիքեանն ասում է, որ տեղի ունեցածի համար մեղաւոր են բոլորը:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆ ԱԶԱՏԱԶՐԿՈՒԵՑ 7 ՏԱՐՈՎ

Կ. Տ.

*Հետք*, 14:25

Առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի՝ Անիի տարածքային նախընտրական շտաբի պետ Յարութիւն Ուռուտեանը դատապարտուել է 7 տարուայ ազատազրկման:

Նախագահական ընտրութիւնների քուէարկութեան օրը՝ փետրուարի 19-ին, ՀՀ Գլխաւոր Դատախազութիւնը յայտնել էր, թէ ժամը 14-ին մօտ Մարալիկ քաղաքի թիւ 36/34 ընտրական տեղամասի մօտ այլոց ներկայութեամբ Ուռուտեանը ծեծել եւ մարմնական վնասուածքներ է պատճառել Սերժ Սարգսեանի վստահուած անձ Սուրէն Աւետիսեանին եւ խոչընդոտել վերջինիս լիազօրութիւնների կատարմանը:

Դէպքի առթիւ նոյն օրը յարուցուել էր քրէական գործ՝ ՀՀ Քր. օր.-ի 149-րդ յօդուածի («Ընտրական իրաւունքի իրականացմանը, ընտրական յանձնաժողովների աշխատանքներին կամ ընտրութեանը մասնակցող անձանց լիազօրութիւնների իրականացմանը խոչընդոտելը») 2-րդ մասի 3-րդ կէտով:

Մարտի 13-ին Հիւսիսային Քրէական Դատարանի դատաւոր Յարութիւն Մովսիսեանը կայացրեց վճիռը: Բայց մինչ այդ՝ նիստի ժամանակ, յայտարարութեամբ հանդէս եկաւ Յ. Ուռուտեանը: Նա նշեց. «Օրէնք չկայ այսօրուայ մեր իշխանութիւնների մօտ, ինչ ուզում, անում են մեր քաղաքացիների հանդէպ… Ես ակտիւօրէն մասնակցել եմ սահմանամերձ գօտիներում ընթացող կռիւներին: Բայց այսօր բացայայտ նկատում եմ, որ սխալ եմ արել: Սխալ եմ արել այն պատճառով, որ սխալ պետութիւն ենք կառուցել: Չենք տեսնում պետութեան կայունութիւնը, չենք լսում մարդու ազատ ձայնը: Մէկ է՝ ես ասելու եմ, որ ձածունը սպիտակ է, իսկ յարգելի դատախազը պէտք է պնդի, որ սեւ է: Եօթ օր մենք ապացուցում ենք, որ մեղաւոր չենք… Իմ խօսելն անիմաստ է, որովհետեւ ինչ էլ ասեմ, միեւնոյն է՝ իմ հանդէպ լինելու է այն, ինչ որ նախատեսել էք քսան օր առաջ»:

Ուռուտեանի փաստաբան Թամարա Եայլոյեանը դատարանում ասաց, որ պաշտպանական կողմը բազմաթիւ օրէնքներ վկայակոչեց եւ, գիտենալով մեր ներպետական օրէնսդրութեան թերի կողմերը, մէջբերեց նաեւ Եւրադատարանի որոշումներն ու Մարդու Իրաւունքների եւրոպական կոնվենցիայի դրոյթները: «Դրանք անիմաստ եւ զուր եղան, ու այսօր ստիպուած վկայակոչում ենք դատարանի խիղճը», - նշեց Եայլոյեանը:

Նիստի աւարտին վերջին խօսքով պէտք է հանդէս գար ամբաստանեալ Յարութիւն Ուռուտեանը, սակայն վատառողջ լինելու պատճառով նա չկարողացաւ վերջին խօսք ասել եւ խնդրեց ընդմիջել նիստը: Շտապօգնութեան աշխատակիցներին չյաջողուեց իջեցնել Ուռուտեանի ճնշումը, իսկ այդ ընթացքում դատաւոր Մովսիսեանը մի քանի անգամ ընդմիջեց ու վերսկսեց նիստը: Նա շարունակ փորձում էր Յ. Ուռուտեանից կամ վերջին խօսք, կամ դրանից հրաժարուելու որոշում լսել:

«Չեմ կարող ասել, վատ եմ զգում, յարգելի դատարան», - ասում էր Ուռուտեանը, որը նաեւ չէր ուզում հրաժարուել իր իրաւունքից: «Երկու խօսք չես կարո՞ղ ասել», - հարցնում էր դատաւորը:

Դատաւորի այս կեցուածքի վերաբերեալ Թամարա Եայլոյեանը մէջբերեց Եւրոպական կոնվենցիայի 3-րդ կէտը՝ նշելով, որ իր պաշտպանեալը ենթարկւում է անմարդկային եւ արժանապատուութիւնը նուաստացնող վերաբերմունքի:

Ի վերջոյ, դատաւոր Յարութիւն Մովսիսեանը հերթական անգամ դիմեց ամբաստանեալին եւ ասաց, թէ բժիշկների եզրակացութեամբ՝ վերջինս ի վիճակի է վերջին խօսք ասելու: Դատաւորը գտաւ, որ Ուռուտեանը հրաժարւում է վերջին խօսքի իրաւունքից: Փաստօրէն, դատարանը Յարութիւն Ուռուտեանին կամայականօրէն զրկեց վերջին խօսքի իրաւունքից: Նիստի վերջում դատաւոր Հ. Մովսիսեանը հրապարակեց վճիռը՝ առանց նախապէս տեղեկացնելու հրապարակման ժամի մասին: Ընդ որում՝ այդ ժամանակ այլեւս դահլիճում չէին մեղադրող դատախազը եւ տուժող Սուրէն Աւետիսեանը:

Նախորդ նիստում մեղադրող կողմը միջնորդել էր Ուռուտեանին ազատազրկել 8 տարով: Սակայն Հիւսիսային Քրէական Դատարանը Յարութիւն Ուռուտեանին մեղաւոր ճանաչեց ՀՀ Քր. Օր.-ի 149 յօդուածի 2-րդ մասի 3-րդ կէտով եւ 112 յօդուածի («Դիտաւորութեամբ առողջութեանը ծանր վնաս պատճառելը») 2-րդ մասի 2-րդ կէտով: Առաջին յօդուածով ամբաստանեալը դատապարտուեց 2, իսկ երկրորդով՝ 6 տարի ազատազրկման: Սակայն պատժաչափերի մասնակի գումարման արդիւնքում վերջնական պատիժ նշանակուեց 7 տարի ազատարկումը:

## ՀԱՒԱՔԵԼ ՓԱՍՏԵՐՆ ՈՒ ՆԻՒԹԵՐԸ ԵՒ ԴՐԱՆՔ ՆԵՐԿԱՅԱՑՆԵԼ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆԸ

*Lragir.am*, 15:00

Լեւոն Տէր-Պետրոսեանի թիմի անդամ Լեւոն Զուրաբեանը մարտի 21-ին Մամուլի Ազգային ակումբում լրագրողների հետ հանդիպմանն ասել է, որ իշխանութիւնն ամենեւին շահագրգռուած չէ մարտի 1-ի իրադարձութիւնների ճշմարտացի պատկերը բացայայտելու հարցում: Այդ առումով Լեւոն Զուրաբեանը անհրաժեշտ է համարել միջազգային անկախ հետաքննութեան անցկացումը: Լեւոն Զուրաբեանն ասում է, որ եթէ իշխանութիւնը չունի որեւէ խնդիր ճշմարտութեան բացայայտման կապակցութեամբ, ապա պէտք է համաձայնի միջազգային անկախ հետաքննութիւն անցկացնելուն: Լեւոն Զուրաբեանը նաեւ ասել է, որ իրենք այժմ հաւաքում են տեղի ունեցածի կապակցութեամբ վկայութիւններն ու փաստերը, որպէսզի դրանք ներկայացնեն հասարակութեանը:

## «ԷՆՔԱՆ ՆԿԱՐԷՔ, ՄԻՆՉԵՒ ԴՈՒՔ ՅՈԳՆԷՔ» (video)

*A1+*, 15:01

Այս պահին Կառավարութեան շէնքի բակը, Հիւսիսային Պողոտայից Ազատութեան Հրապարակ տանող ճանապարհը լցուած են ոստիկանութեան աշխատակիցներով: Ինչպէս յայտնի է՝ այսօր ժամը 15.00-ին Ազատութեան Հրապարակում մարտի 1-ի զոհերի յիշատակին մոմավառութեան միջացառում է նախատեսուած, որը պէտք է շարունակուի ժամը 17.00-ից մինչեւ 19.00-ն: Բողոքի ակցիան սկսուելու է Ազատութեան Հրապարակից:

Ակցիայի մասնակիցները պատրաստւում են միմեանցից մէկ մետր հեռաւորութեան վրայ մոմերը ձեռքերին շարք կազմել Ազատութեան Հրապարակից մինչեւ Միասնիկեանի արձան այս ուղիով՝ Հիւսիսային Պողոտայով-Աբովեան փողոցով-Հանրապետութեան Հրապարակով-Վազգէն Սարգսեան-Իտալիայի փողոցներով: Հէնց այս ճանապարհներն էլ լցուած են ոստիկաններով, որոնց ձեռքներին կան մահակներ:

Հիւսիսային Պողոտայում *A1+*-ի օպերատորի աշխատանքը խոչընդոտել է ռազմական ոստիկանութեան ներկայացուցիչներից մէկը, սակայն երբ նա զեկուցել է իր վերա-

դասներից մէկին, թէ նկարահանումներ են կատարում՝ նրան հրահանգել են չխոչընդոտել նկարահանումները։ Մինչ այդ *Ա1+*-ի աշխատանքը խոչընդոտող ոստիկանը իր վերադասի հրամանը ստանալուց յետոյ ասել է. «Էնքան նկարէք, մինչեւ դուք յոգնէք»։

Ազատութեան Հրապարակում *Ա1+*-ի թղթակիցը տեղեկացնում է, որ այս պահի դրութեամբ ոստիկանութեան եւ զինուած ուժերի միւս ներկայացուցիչների թիւը գերազանցում է մարդկանց թուին, սակայն որեւէ տհաճ միջադէպ տեղի չի ունեցել։ Ոստիկանները առայժմ բաւականին յարգալից են մարդկանց նկատմամբ, սակայն արգելում են մոմավառութիւն իրականացնել։

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Lragir.am*, 15:13

Ամերիկայի Հայկական Համագումարի, Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան, Հայ Դատի Ամերիկայի Յանձնախմբի, Հայաստանեաց Առաքելական Եկեղեցու Արեւելեան ու Արեւմտեան Թեմերի եւ Մեծի Տան Կիլիկիոյ Կաթողիկոսութեան Արեւելեան ու Արեւմտեան Թեմերի համատեղ յայտարարութիւնը Հայաստանում վերջին իրադարձութիւնների վերաբերեալ

Որպէս Ամերիկայի առաջատար հայկական կազմակերպութիւններ, մեր համերաշխութիւնն ենք յայտնում Հայաստանի պետութեան ու ժողովրդի հետ այս դժուարին պահին, երբ երկիրը դիմակայում է ներկայիս քաղաքական ճգնաժամին։

Խորապէս վշտացած ենք ընտրութիւններից յետոյ մայրաքաղաքի փողոցներում անկարգութիւնների ժամանակ դրսեւորուած բռնութիւններից, հակասութիւններից ու մարդկային զոհերից, եւ մեր խորին ցաւակցութիւնն ենք յայտնում բոլոր զոհուածների ընտանիքներին։ Մենք քննադատում ենք բոլոր բռնի գործողութիւնները, այդ թւում յարձակումները, խուլիգանութիւնը, կողոպուտը, եւ ակնկալում, որ կազմակերպիչներն ու յանցագործները կը կանգնեն արդարադատութեան առջեւ՝ օրէնքի տառին համապատասխան։

Կոչ ենք անում բոլոր կողմերին իրենց տարաձայնութիւնների լուծմանը հետամուտ լինելու նպատակով գործել խաղաղ՝ Հայաստանի քաղաքացիական ու իրաւական կառոյցների շրջանակներում, եւ հնարաւորինս արագ ու ամենայն պատասխանատուութեամբ Հայաստանի քաղաքական միջավայրում վերականգնել նորմալ վիճակը։ Միանում ենք բոլոր հայերին վերահաստատելու մեր ժողովրդի ընդհանուր հաստատակամութիւնը՝ հակամարտութիւններով լի ու յաճախ վտանգաւոր այս տարածաշրջանում, Հայաստանի ու Արցախի անվտանգութիւնն ապահովելու հարցում, ինչպէս նաեւ համագործակցելու ի նպաստ ընդհանուր նպատակի, որն է օրէնքի գերակայութեան, սոցիալական ու տնտեսական արդարութեան վրայ հիմնուած, ԶԼՄ-ների ու խօսքի ազատութիւնը յարգող, բոլորի համար հաւասար հնարաւորութիւններ ընձեռող բաց ու ժողովրդավարական հայրենիքի հզօրացումը։

Որպէս ամերիկահայեր՝ հայ ազգի ապագայի հպարտ ու կարեւոր գործընկերներ, մենք պատրաստ ենք համագործակցել նորընտիր նախագահի եւ կառավարութեան հետ։ Մեր կողմից վերահաստատում ենք մեր հաւատարմութիւնը հայրենիքին ու Հայոց Ազգին ծառայելուն, ինչպէս դա արել ենք մեր երկար պատմութեան ողջ ընթացքում։ Հայաստանը շարունակելու է ոգեշնչել եւ կեանքի կոչել հայերի ապագայ եւ իր սահմաններից դուրս

ապրող սերունդներին, ինչպէս մենք ենք այսօր ապրում:
17 մարտի, 2008թ.

## ՀՐԴԵՀԵԼ ԵՆ ՄԵՔԵՆԱՆ

*A1+*, 15:28

Գիւմրիում գիշերը հրդեհել են Գիւմրիի Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի նախագահ Նաղեժդա Յակոբեանին պատկանող աւտոմեքենան, որն արդէն մօտ մէկ շաբաթ վարում էր ակումբի խորհրդի նախագահ, Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան պաշտպանութեան շտաբի համակարգող Լեւոն Բարսեղեանը:

Ըստ ակումբի հաղորդագրութեան՝ ժամը 23-ին մարաթոնի 2 օրերի մասին Գիւմրիի *ԳԱԼԱ ՀԸ* եթերում տեղեկատուութիւն յայտնելուց յետոյ Լեւոն Բարսեղեանը վերադարձել է Ասպարէզ ակումբի գրասենեակ: Մեքենան հրդեհուել է գիշերը ժամը 1:05-ին: Այդ պահին գրասենեակում էին նաեւ ակումբի երկու հերթապահները,որոնք տեսել են, որ 2 անյայտ անձինք, բենզինը լցնելով մեքենայի վրայ, այրել են: Հրդեհումը տեւել է մօտ 10 վայրկեան: Հերթապահները այդ պահը տեսել են հսկիչ մոնիտորով եւ անմիջապէս դուրս վազել հրդեհը հանգցնելու: Լեւոն Բարսեղեանը 1:06-ին ահազանգել է ոստիկանութիւն:

Մեքենան հրդեհուել է եւ բենզինի բաքի կողմից եւ շարժիչի կողմից, ենթադրաբար 1-2 լիտր բենզինի միջոցով:

Ահազանգից 20 րոպէ անց՝ 1:26-ին ժամանել են ոստիկանները եւ եւս 2 րոպէից՝ հրշէջները: Հնարաւոր էր եղել հրդեհից փրկել մեքենայի սալոնը, փաստաթղթերը, թափքը եւ պահախուցը: Հասցուած վնասը, նախնական գնահատմամբ՝ կազմում է մօտ 900.000 դրամ:

Ի դէպ, երէկ ժամը 21-ին մօտ, հիւրընկալուելով Գիւմրիի *Շանթ* հեռուստաընկերութիւնում, Գիւմրիի քաղաքապետ Վարդան Ղուկասեանը գիւմրեցիներին յորդորել է չմասնակցել *ԳԱԼԱ*ին օգնելու դրամահաւաք մարաթոնին՝ ասելով թէ իրենց դիտաւորեալ քամում են ու դատարկում:

Աւելացնենք, որ հանգանակուել է 11.673.570 դրամ: Նուիրատուների թիւն անցնում է 1500-ից:

## ԱՐԳԵԼՈՒՄ ԵՆ ՄՏՆԵԼ ՀՐԱՊԱՐԱԿ (video)

*A1+*, 15:51

Այս րոպէներին Ազատութեան Հրապարակի մերձակայքում աստիճանաբար աւելանում է մարդկանց թիւը, որոնք գալիս են մասնակցելու 17:00-ից նախատեսուած բողոքի քայլերթին՝ նուիրուած մարտի 1-ի զոհերի յիշատակին: *Ա1+*-ի թղթակիցը յայտնեց, որը Ազատութեան Հրապարակը շրջափակուած է ոստիկաններով, որոնք թոյլ չեն տալիս որեւէ մէկին մտնել հրապարակ:

Յատկապէս աչքի են ընկնում ռազմական ոստիկանութեան աշխատակիցները, որոնք բաւական մեծ թիւ են կազմում հրապարակի մերձակայքում:

Կարապի Լճի մօտ ոստիկան Վլադիմիր Օսիպեանը մի խումբ կանանց հետ վիճաբանութեան մէջ է մտել՝ պահանջելով, որ նրանք հեռանան: Ոստիկանները նոյնիսկ թոյլ չեն տալիս մարդկանց կանգնել, իսկ կանայք պահանջում են յարգել իրենց իրաւունքները, քանի որ նրանք որեւէ անօրինական քայլ չեն կատարում: Իրաւապահ մարմինների այն

յայտարարութեանը, թէ մարդիկ ագրեսիւ են, մի կին, ի նշան հակառակի, նոյնիսկ ծնկի է իջել՝ ապացուցելու, որ միանգամայն խաղաղ նպատակներով է եկել միջոցառմանը մասնակցելու համար: Ոստիկանները նաեւ արգելել են կանանց իրենց հետ բերած կարմիր մեխակները դնել Ազատութեան Հրապարակում: Կանայք էլ մեխակները դրեցին Ազատութեան Հրապարակի ճաղավանդակների վրայ՝ դրանց վրայ կապելով նաեւ սեւ ժապաւէններ:

Առնօ Բաբաջանեանի արձանի մօտ էլ վառել են մոմերը: Չնայած այս ամէնին մարդիկ չեն լքում հրապարակի մերձակայքը, եւ նրանց թիւը աճում է: Ի դէպ, հնարաւորութիւն չունենալով մտնել հրապարակ, ներկաները կանգնել են փողոցում:

Այստեղ է նաեւ Լեւոն Տէր-Պետրոսեանի կինը՝ Լիւդմիլա Տէր-Պետրոսեանը:

## ՅԵՏԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ, ՍԱՀՄԱՆԱՓԱԿՈՒՄՆԵՐԸ ԵՒ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԻՄՆԱԽՆԴԻՐԸ

*Հետք*, 16:24

Հայաստանում յետընտրական զարգացումները շարունակւում են: Մարտի 1-ից յայտարարուած արտակարգ դրութեան շրջանակներում մի շարք սահմանափակումներին զուգահեռ շարունակւում են հանրահաւաքների կազմակերպիչների եւ մասնակիցների ձերբակալութիւնները:

Լրատուամիջոցների համար սահմանուած սահմանափակումների պարագայում ՀՀ եւ ԼՂՀ բնակիչների գերակշիռ մեծամասնութիւնը տեղեկատուութիւն են ստանում հիմնականում հեռուստատեսութիւնից, որտեղ ներկայացւում են միայն պաշտօնական տեսակէտ ու դիրքորոշում: Բնականաբար, եթէ մարդիկ հնարաւորութիւն չունեն այլ տեսակէտներ լսելու՝ նրանց մօտ ձեւաւորւում է «միտեսակէտային» դիրքորոշում: Իսկ յետընտրական զարգացումների ողջ ներկապնակին ծանօթ մարդիկ էլ հասկանում են, որ ամէն ինչ չէ, որ տեղաւորւում է «սեւ ու սպիտակի» եւ «բարու ու չարի» շրջանակներում, եւ որ խախտումները տարբեր «հասցէներ» ունեն: Եւ առաջինների, եւ երկրորդների համար ամենացաւալին այն է, որ զոհեր ու վիրաւորներ եղան:

Սակայն մեզ եւս մէկ կարեւոր հարց է հետաքրքրում, մի երեւոյթ, որ կարող է բացասական նախադէպ դառնալ: Պաշտօնական քարոզչութիւնը տասնեակ հազարաւոր մարդկանց մասնակցութեամբ հանրահաւաքներն ամէն կերպ փորձում է ներկայացնել որպէս մի խումբ անձանց կողմից հիպնոսացուած թափթփուկների, «բոմժերի», քրէածին տարրերի «ժամանց»: Դա այն դէպքում, երբ անգամ իշխանութեան բազմաթիւ ներկայացուցիչներ էին ընդունում, որ ցուցարարների շարքերում բաւականին թուով կիրթ ու նորմալ մարդիկ կան, ծանօթներ ու ընկերներ: Բայց ոչ ոք չի ուզում պարզել, թէ ինչն է այդ նորմալ մարդկանց բերել Ազատութեան Հրապարակ, որ միգուցէ այլ որակի ընտրութիւնների պարագայում այդ մարդկանց թիւը շատ քիչ լինէր: Ի վերջոյ, ընտրութիւնների հարցում լուրջ դիտողութիւններ ունէին ոչ միայն միջազգային դիտորդները, այլեւ նախագահի մի շարք թեկնածուներ, քաղաքական ուժեր, լրատուամիջոցներ ու հասարակական կազմակերպութիւններ: Ինչ որ է, պաշտօնական քարոզչամեքենան ցուցարարներին դասում է խառնամբոխի շարքը, այստեղից էլ՝ նրանց նկատմամբ ձեռնարկուած միջոցների եւ արդիւնքում արտակարգ դրութեան ռեժիմ մտցնելու անհրաժեշտութիւնը հիմնաւորումը:

Հէնց այս նախադէպն է մեզ մտահոգում: Ղարաբաղում բնակչութեան շրջանում կարծիքները տարբեր են այդ զարգացումների վերաբերեալ, սակայն, գերակշռողն այն տեսակէտն է, որ իշխանութիւնների քայլերը իրավիճակին համարժէք են: Սոյն տեսակէտը կրողները քիչ նշանակութիւն են տալիս այն ճշմարտութեանը, որ անկախ մարդկանց թուաքանակից՝ նրանց հետ երկխօսելը ցանկալի է, քանի որ նրանք մեր հայրենակիցներն են եւ սեփական կարծիք ու այդ կարծիքը պաշտպանելու իրաւունք ունեն: Կատարուածին միանշանակ հաւանութիւն տուողների մտքով անգամ չի անցնում, որ այս նախադէպը կարող են զգալ նաեւ իրենց մաշկի վրայ:

Դիցուք, մի իրավիճակ, որ, ցաւօք սրտի, ամենեւին էլ ֆանտաստիկայի ժանրից չէ: Խօսքը ղարաբաղեան կարգաւորման գործընթացի շրջանակներում հնարաւոր զարգացման մասին է: Ասենք, իշխանութիւնները (Հայաստանի եւ Ղարաբաղի) միջազգային ճնշումների տակ համաձայնւում են վերադարձնել ազատագրուած տարածքները (հաւանաբար, ոչ ոքի համար արդէն գաղտնիք չէ, որ բանակցային սեղանին դրուած առաջարկութիւնների փաթեթում նաեւ տարածքների հարցը կայ), իսկ արցախեան հանրութեան մի զգալի մասը դէմ է դրան եւ իր բողոքն է արտայայտում, փորձելով կանխել ոչ բարենպաստ որոշումը: Ի՞նչ էք կարծում՝ ինչպիսի՞ն է լինելու այդ մարդկանց նկատմամբ վերաբերմունքը: Կռահել պէտք չէ՝ նախադէպն արդէն կայ:

Ուշագրաւն այն է, որ սոյն նախադէպը վտանգաւոր է ոչ միայն հանրութեան համար, այլեւ իշխանութիւնների: Ի վերջոյ, իշխանութիւններն էլ անսխալական չեն եւ որոշակի պարագայում կարող են զգալ հանրութեան սաստիչ դերի խիստ անհրաժեշտութիւնը: Յանուն համազգային շահերի: Կարող է պահը գալ, երբ իշխանութիւններն իրենք ունենան հէնց նման աջակցութեան կարիք, իսկ ժողովուրդը վախենայ արդէն առկայ նախադէպից:

Այս մասին արժէ խորհել: Իսկ խորհելու համար հարկ է լսել բոլոր կարծիքները, այլ ոչ թէ դրանց վրայ տաբու դնել:
demo.ktsurf.net

## ՀՅԴ-Ն ՈՉ ԹԷ ԴՈՒՐՍ ԵԿԱՒ, ԱՅԼ ՄՏԱՒ ԿՕԱԼԻՑԻԱ

*A1+*, 16:27

Այսօր ՀՀ կառավարութիւնում քաղաքական չորս ուժեր ստորագրել են քաղաքական կօալիցիայի Համաձայնագիր: Փաստաթուղթն ստորագրել են Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան նախագահ Սերժ Սարգսեանը, Բարգաւաճ Հայաստան կուսակցութեան նախագահ Գագիկ Ծառուկեանը, Օրինաց Երկիր կուսակցութեան նախագահ Արթուր Բաղդասարեանը եւ ՀՅԴ Գերագոյն մարմնի ներկայացուցիչ Արմէն Ռուստամեանը: Յիշեցնենք, որ ՀՅԴ-ն մօտ մէկ ամիս առաջ՝ ՀՀ նախագահի ընտրութիւններից յետոյ յայտարարում էր, թէ ուզում է հրաժարուել կօալիցիոն գործընկերոջ կարգավիճակից:

## ՀՐԿԻԶԵԼ ԵՆ Լ. ԲԱՐՍԵՂԵԱՆԻ ՎԱՐԱԾ ԱՒՏՕՄԵՔԵՆԱՆ

*Հետք*, 16:34

**ԳԱԼԱ ՀԸ պաշտպանութեան հեռուստամարաթոնի թիրախը 25.120.100 դրամ հանգանակելն է**

Գիւմրիում մարտի 20-ին ամբողջ օրը շարունակւում էր *ԳԱԼԱ* Հեռուստաընկերու-

թեանը ֆինանսապէս աջակցելու դրամահաւաք-մարաթոնը: Մարաթոնին մասնակցում են Հայաստանի մօտաւորապէս 60 համայնքների բնակիչներ, այդ թւում վանաձորցիներ, երեւանցիներ, եղեգնաձորցիներ:

Օրուայ ընթացքում *ԳԱԼԱ ՀԸ* եթերում մշտապէս ընթերցուելով եւ վազող տողով հաղորդուել են նուիրատուների անունները: Ստուդիա այցելած մարդկանց մի մասը, յատկապէս երիտասարդներն ու երեխաները իրենց կարծիքներն էին յայտնում *ԳԱԼԱ ՀԸ* մասին, բացատրում էին, թէ ինչու են որոշել անպայման նուիրատուութիւններ կատարել հեռուստաընկերութիւնը եթերազրկումից փրկելու համար:

Օրուայ ընթացքում Ինեկոբանկից ստացուեցին մարտի 19-ի ընթացքում եւ մարտի 20-ին մինչեւ ժամը 14-ի դրութեամբ դրամական փոխանցումների վիճակագրութիւնը: Մօտ 300 նուիրատուների ցուցակը ներկայացւում է www.asparez.am կայքում:

Ժամը 13:50-ին առձեռն գումարի եւ բանկում դրամային հաշուի վրայ եղած գումարի հանրագումարը հասաւ 10 մլն դրամի՝ հարկայինի նկարած ակտի եւ դատաւորի վերանկարած գումարի 40 տոկոսին:

Բանկային դոլարային հաշուի վրայ այդ պահին դեռ 110 դոլար կար, արտերկրից այդ հաշուին փոխանցումների վիճակագրութիւնը կը յստականայ 2-3 օրուայ ընթացքում:

Մարտի 20-ին ժամը 22:30-ի դրութեամբ հանգանակութեան հանրագումարային թիւը հասաւ 11.673.570 դրամի, ինչը կազմում է «պահանջուող գումարի» 46,47 տոկոսը:

Օրուայ ընթացքում լուրեր ստացուեցին այն մասին, որ ԴԱՀԿ-ն արդէն պատրաստ ունի կատարողական թերթիկը, եւ կարող է հեռուստաընկերութիւն այցելել արդէն մարտի 21-ին՝ ուրբաթ օրը եւ ներկայացնել իր պահանջները: Մնացած մօտ 13 մլն դրամի հանգանակութիւնը դառնում է օրախնդիր:

Ժամը 21-ին մօտ, հիւրընկալուելով Գիւմրու *Շանթ* հեռուստաընկերութիւնում, Գիւմրու քաղաքապետ Վարդան Ղուկասեանը գիւմրեցիներին յորդորել է չմասնակցել դրամահաւաք մարաթոնին, ասելով թէ իրենց դիտաւորեալ քամում են ու դատարկում: Այս պարոնը *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան մարաթոնին իր համեստ միջոցներով մասնակցելու փոխարէն իր խելքով բոլորին «բացատրում էր», թէ *ԳԱԼԱ*-ն *ՀՀՇ*-ից փողերը ստացել է ու հիմա, խաբելով բոլորին դրամահաւաք է անում:

Այդ պահից ի վեր, *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան եւ Խօսքի Ազատութեան պաշտպանութեան շտաբի բոլոր հեռախօսահամարները չէին լռում գրեթէ 2 ժամ, մարդիկ զանազան արտայայտութիւններով, վիրաւորանքներով ու հայհոյանքներով իրենց վրդովմունքն էին արտայայտում Ղուկասեան Վարդանի յիշեալ յայտարարութեան մասին: Շատերը, ասելով, թէ իրենք արդէն մասնակցել են դրամահաւաքին, բայց Վ. Ղուկասեանին հակառակ, վաղն էլի են գալու եւ էլի են դրամ բերելու հեռուստաընկերութիւն:

Ժամը 23-ին մարաթոնի 2 օրերի մասին մասին հարցազրոյց տալով *ԳԱԼԱ ՀԸ* եթերում, Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան շտաբի համակարգող Լեւոն Բարսեղեանը տեղեկացրեց, որ այդ պահի դրութեամբ հանգանակուել է 11.673.570 դրամ, որից 1.880.000-ը՝ գտնւում է բանկային դրամային հաշուի վրայ: Նուիրատուների թիւն արդէն անցնում է 1500-ից: Որոշ նուիրատուներ ներկայացնում են մի քանի հոգու, կազմակերպութիւններ: Ստուդիա այցելած եւ նուիրատուութիւններ կատարած անձանց ցուցակները ներկայացւում են այստեղ (մարտի 19) եւ այստեղ (մարտի 20):

Ուղիղ եթերում ընթացող հարցազրոյցի ժամանակ մի քանի տասնեակ հեռուստա-

դիտողներ զանգում եւ իրենց զայրոյթն էին յայտնում քաղաքապետ Ղուկասեան Վարդանի վերոյիշեալ յայտարարութիւնների առթիւ, պնդում էին, որ նրան հակառակ, իրենք եւ ուրիշներ լրացուցիչ նուիրատուութիւններ են կատարելու: Լ. Բարսեղեանն անդրադառնալով Ղուկասեանի յայտարարութիւններին, ասաց, թէ՝ մարդ է, այսպէս է մտածում, իր գործն է, պատահում է, նա էլ է օգտւում սահմանադրութեան ընձեռած իրաւունքներից: Աւելացրեց նաեւ, որ ինքն ու իր ընկերներն այնքան պարապ չեն, որ մեկնաբանեն Ղուկասեանի մտքերը, դրա ոչ տեղն է, ոչ էլ ժամը: Իսկ բոլոր այն հեռախօսային հաղորդագրութիւններին, թէ Վ. Ղուկասեանի անընդունելի յայտարարութիւնները իրենց ստիպում են լրացուցիչ հանգանակութիւններ անել *ԳԱԼԱ ՀԸ* համար, Լ. Բարսեղեանը արձագանքում էր «Շնորհակալութիւն Վարդան Ղուկասեանին», բառակապակցութեամբ: Հաղորդումն աւարտուեց ժամը 00:20-ին:

Հաղորդման աւարտից 40 րոպէ յետոյ, գիշերը ժամը 1:05-ին, եւ Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի գրասենեակ էր վերադարձել Լ. Բարսեղեանը, եւ այստեղ էին երկու հերթապահները, 2 անյայտ անձինք, բենզինը լցնելով ակումբի այն մեքենայի վրայ, որով Խորհրդի նախագահը ժամանել էր գրասենեակ, հրդեհեցին այն եւ փախան: Մէկը կրեմագոյն բաճկոնով էր, միւսը՝ սեւ: Հրդեհումը տեւել է մօտ 10 վայրկեան: Հերթապահները այդ պահը տեսել են հսկիչ մոնիտորով եւ անմիջապէս դուրս վազել հրդեհը հանգցնելու: Լ. Բարսեղեանը 1:06-ին ահազանգել է ոստիկանութիւն ու միացել հրշիջման աշխատանքներին: Մեքենան հրդեհուել է եւ բենզինի բաքի կողմից եւ շարժիչի կողմից, ենթադրաբար 1-2 լիտր բենզինի միջոցով: Արագ միացուած ակումբի ջրի պոմպի եւ ռետինէ խողովակի միջոցով, աւելի քան 20 րոպէ ակումբի աշխատակիցները յանգցնում էին կրակը, որը բորբոքուել էր յատկապէս շարժիչի մասում՝ փակ կապոտի տակ եւ անցնում էր սալոն: Ահազանգից 20 րոպէ անց՝ 1:26-ին ժամանեցին ոստիկանները եւ եւս 2 րոպէից՝ հրշէջները: Այդ պահին հնարաւոր էր եղել արդէն հրդեհից փրկել մեքենայի սալոնը, փաստաթղթերը, թափքը եւ պահախուցը: Հրշէջները եւ փրկարարները ջրի շիթով մօտ 15 րոպէ սառեցնում էին շարժիչն ու ապարդիւն ջանքերով փորձում ուժով բացել կապոտը: Չունենալով համապատասխան գործիքներ, լինգերով եւ մի փականագործական բանալիով բացեցին այն ու հրդեհը վերջնականապէս յանգցրին: Աւելի ուշ ժամանեցին փորձագէտները եւ համապատասխան արձանագրութիւններ կազմեցին: Հրկիզուած մեքենան պատկանում է Ակումբի նախագահ Նաղեժդա Յակոբեանին, որի թոյլտուութեամբ արդէն մօտ 1 շաբաթ է մեքենան վարում էր Լ. Բարսեղեանը. վերջինիս մեքենան նորոգւում էր: Հասցուած վնասը, նախնական գնահատմամբ կազմում է մօտ 900.000 դրամ:

**Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի նախագահի հրկիզուած աւտոմեքենան ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

Ժուռնալիստների Ասպարէզ ակումբը այս դիտաւորեալ կանխամտածուած հրկիզումը բացայայտող բոլոր ոստիկաններին երաշխաւորում է երկու հատ OPEL-VECTRA 2.0, 1994 թ. մեքենայ:

*ԳԱԼԱ ՀԸ* եւ Խօսքի Ազատութեան պաշտպանութեան Մարաթոնը, այսպիսով նոր զարգացումներ է ստանում, այս իրավառութիւնը պատահական չէ, Լ. Բարսեղեանի համոզմամբ ուղղակի կապ ունի ինչպէս *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան, այդ եւ այլ առիթներով

իշխանութիւնների հասցէին նրա հնչեցրած կոշտ քննադատութեան, յունուարի 18-ի գիշերը Ակումբի պատուհանի հրդեհման եւ մի քանի անգամ հեռախօսային ահազանգերով իր եւ ակումբի հասցէին հնչեցուած ահաբեկումների հետ: Ակումբի պատուհանի հրկիզման նախաքննութեան հարցաքննութիւնների ընթացքում նախկինում ակումբի եւ իր հասցէին հնչեցուած անստորագիր ահաբեկումների մասին Լ. Բարսեղեանը տեղեկացրել էր իրաւապահներին: Փետրուարի 25-ին Ս. Սարգսեանի պաշտպանութեան համար Գիւմրու Թատերական Հրապարակում կազմակերպուած վարչական հանրահաւաքի ժամանակ, Վ. Ղուկասեանը վիրաւորել ու զրպարտել էր ակումբին, իր խօսքի վերջում զգաստացման կոչելով վերջինիս ու *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեանը. «...Մեր քաղաքում մի երկու քաղմաս է մնացել, որ ժողովուրդը զզւում է, դա «Գալա քաղմասն է», մէկ էլ «Ասպարէզ քաղմասը», որ գիշեր-ցերեկ գովերգում են սազերն առած՝ Լեւոն Տէր-Պետրոսեանին՝ ՀՀՇ-ի գումարներով, վերջապէս, մի քիչ թող նրանք էլ զգաստանան:...»: Ոստիկանութիւնը, մի քանի շաբաթ հետաքննելով Ժուռնալիստների Ասպարէզ ակումբի դիմումը այդ նախադասութեամբ իրեն վիրաւորելու, զրպարտելու եւ ապա՝ սպառնալու մասին, բացատրութիւններ ստանալով Վ. Ղուկասեանից, 3 օր առաջ գտել էր, որ. «յանցակազմի բացակայութեան պատճառով քրէական գործ չի յարուցւում»: Քաղմասներից զզւող այս պարոնը իր բացատրութեան մէջ նշել է, որ այդ նախադասութեամբ ինքը որեւէ մէկին վիրաւորելու կամ զրպարտելու ցանկութիւն չի ունեցել եւ արտայայտել է իրեն հասած հազարաւոր գիւմրեցիների կարծիքը: Իսկ ոստիկանութեան վերոյիշեալ եզրակացութիւնը այլեւս լիարժէքօրէն թոյլ է տալիս ամէնքին փոփոխել Վ. Ղուկասեանի վերոյիշեալ նախադասութեան մէջ անձանց անունները իրենց կամեցած անուններով եւ համարձակութեամբ արտասանել այդ «միտքը» ինչքան կամենան. յանցակազմ չկայ: Իբր: Եւ այլն:

Անկախ ամէն ինչից Լ. Բարսեղեանը, Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան շտաբը շարունակում են Մարաթոն-դրամահաւաքը. ռեժիմը չի յաջողելու *ԳԱԼԱ ՀԸ* փակել, նահանջի տեղ չկայ. NO PASARAN:

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան շտաբն ու *ԳԱԼԱ ՀԸ* աշխատակազմը երախտագիտութիւն է յայտնում բոլոր նուիրատուներին:

Յիշեցնում ենք, որ զանազան գերատեսչութիւնների ճնշումների երկու դատական գործերի հետեւանքով *ԳԱԼԱ ՀԸ*-ն 2007 թուի նոյեմբերի 1-ից աշխատում է առանց առեւտրային գովազդային պատուէրների, իր ծրագրերում ունենալով ու պահպանելով բոլոր լրատուական եւ վերլուծական հաղորդաշարերը վերածուել է իսկական հանրային հեռուստաընկերութեան:

## ԵՐԵՒԱՆԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՓՈՂՈՑՆԵՐՈՒՄ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ ԶՕՐՔԵՐ

*Lragir.am*, 16:36

Երեւանի Կենտրոնական փողոցներում այս պահին կանգնած են Ոստիկանութեան զօրքերը, վահաններով եւ ռետինէ մահակներով: Նրանք տեղակայուած են Ազատութեան Հրապարակից մինչեւ Միասնիկեանի արձան ձգուող մայթերին, Կառավարութեան եւ Ֆրանսիայի դեսպանատան շէնքերի մօտ: Ըստ ԱՌԿԱ գործակալութեան, մի քանի հարիւր մարդիկ հաւաքուել են Ազատութեան Հրապարակի մատոյցներում՝ յարգելով

մարտի 1-ի դէպքերի զոհերի յիշատակը, ձեռքներին սեւ ժապաւէններ եւ մոմեր:

## ԵՐԵՒԱՆՈՒՄ ԱՀԱԲԵԿՉՈՒԹԻՒՆՆԵ՞Ր ԵՆ ՍՊԱՍՈՒՄ

*A1+*, 16:43

Այսօր երկրում ստեղծուած իրավիճակը ՀՀ նախագահի նախկին թեկնածու Արման Մելիքեանը համարում է խիստ մտահոգիչ: Նա գտնում է, որ ցանկացած ճնշում, եթէ համազդուելու հնարաւորութիւն չի թողնում, դրան հակազդում են անօրինական ճանապարհով. «Այս իրավիճակը մեզ մօտ ծնելու է ահաբեկչութիւն: Ես այդ մասին այսօր եմ ասում: Եթէ քաղաքական ուժերի միջեւ չլինի երկխօսութիւն, թող ոչ մէկ չզարմանայ, որ Երեւանում տեղի ունենան պայթիւններ, քաղաքական սպանութիւններ եւ պէտք է չէ դրա վրայ աչք փակել: Եթէ քաղաքական գործիչները քաղաքականապէս այնքան զրագէտ չեն, որ իմանան, թէ այսօրուայ իրենց քայլերը վաղը ինչ հետեւանքներ կարող են ունենալ, ապա մենք բոլորս մեծ խնդիր ունենք»:

Իշխանութիւնների կողմից կոալիցիա ձեւաւորելու փորձերը նա համարում է անիմաստ: «Բովանդակութիւնը մնում է նոյնը: 10 տարի շարունակ այդ քաղաքական ուժերն են եղել երկրի կառավարման ղեկին: Չեմ կարող ասել, որ արդիւնքները գոհացուցիչ են: Ուստի այսօր որեւէ վստահութիւն չի կարող լինել, որ կոալիցիա կազմելով՝ նրանք նոր որակներ ձեռք կը բերեն», - կարծում է Արման Մելիքեանը: Ստեղծուած իրավիճակում կոալիցիաի ստեղծումը նա չի համարում ելք. «Եթէ չկայ ճգնաժամից դուրս գալու իրական ճանապարհը, կոալիցիաները անպտուղ են: Կոալիցիաները կարող են լրացուցիչ բռնաճընշման միջոց դառնալ:

Այսօր ԱԺ-ում 7 հոգուց բաղկացած մի ընդդիմադիր հատուած կայ՝ Ժառանգութիւն խմբակցութիւնը, եւ իշխանական մեքենան ամէն ինչ անում է, որ այդ ընդդիմադիր հատուածը բռնաճնշուի եւ որեւէ հնարաւորութիւն չունենայ»:

Ստեղծուած իրավիճակից դուրս գալու միակ ելքը Մելիքեանը համարում է երկխօսութիւնը՝ թէ քաղաքական ուժերի եւ թէ հասարակութեան միջեւ. «Ես գիտեմ, որ մինչեւ մարտի 1-ը կոնտակտներ կային Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ Սերժ Սարգսեանի թիմերի միջեւ: Դրանք գաղտնի կոնտակտներ էին, եւ մէկը միւսին ասում էր՝ դու պիտի զիջես: Դրանք բանակցութիւններ չէին: Սրանք վերջնագրեր էին, որը չէր կարող արդիւնաւէտ լինել»: Մելիքեանը դժուարացաւ ասել, թէ Լեւոն Տէր-Պետրոսեանի եւ Սերժ Սարգսեանի թիմերի միջեւ ինչ մակարդակով է հաղորդակցութիւնը եղել եւ նշեց, որ իրեն այդ մասին ասել են, իսկ երբ ինքն անձամբ է փորձել զրուցել Տէր-Պետրոսեանի եւ Սերժ Սարգսեանի հետ՝ երկխօսութիւն սկսելու համար, իրեն չի յաջողուել: «Այսօր կոտրուած է բոլոր կողմերին սատարող ժողովուրդը, որովհետեւ ժողովուրդը չէր պատկերացնում, որ քաղաքական գործիչները կարող էին այնքան հեռու գնալ, որ գործը հասնի մարդասպանութեան»: Ընդգծելով, որ իշխանաւորը պէտք է պատասխանատու լինի իր ընտրողի առաջ՝ Մելիքեանն ասաց. «Մենք բոլորս սխալներ ենք գործել, եւ ես չեմ ուզում մեղքը բարդել կոնկրէտ մարդկանց վրայ: Մենք պէտք է իրավիճակ ստեղծենք, որտեղ նուազագոյնի կը հասցուի այդ մեղաւորների առաջացման հնարաւորութիւնը: Պետական կառավարման մեքենան պէտք է գործի թափանցիկ եւ հաշուետու լինի հասարակութեանը: Ես չեմ պատկերացնում, թէ բարձր վարկանիշ ունեցող պետական գործիչը ինչպէս կարող է ստել»: Իսկ թէ ո՞ւմ նկատի ունի Արման Մելիքեանը, նա չմանրամասնեց, եւ նորից ընդգծեց. «Բարձր

պետական գործիչը իրաւունք չունի ստել: Սուտն ու կեղծիքը պետական կառավարման զինանոցից պէտք է վերացուեն: Եթէ պետական գործիչը չի կարողանում փաստարկների ուժով իր շուրջը համակիրներ հաւաքագրել, նա պէտք է հեռանայ ասպարէզից»:

Այսօր օրէնքին կատարուող յղումներին Մելիքեանը անլուրջ է վերաբերւում. «Մենք պէտք է մեզ անցեալից բաժանող մի գիծ քաշենք: Քանի մենք սուտը մեր կեանքից չենք հանել մենք ընտրութիւնից ընտրութիւն անընդհատ բախումներ ենք ունենալու»: Ինչ վերաբերում է կոնկրէտ մարտի 1-ի դէպքերին, ապա Մելիքեանը նշեց, որ ջարդից ու զոհերից անկասկած կարելի էր խուսափել, եթէ քաղաքական կամք լինէր. «Բացառապէս շեշտը դրւում էր ուժային, քանակային մեթոդների վրայ՝ այ մեր թիմը աւելի շատ է, ուրեմն մենք ենք յաղթել:

Իրավիճակը հարթելու ճանապարհը եղել է, կայ եւ կը լինի առաջիկայում, սակայն այն երկար չի: Այսինքն՝ կը գայ մի պահ, երբ ուժային բռնաճնշման կողմնակիցները յաղթանակ տօնեն իշխանութեան օղակներում, դա կը նշանակի, որ Հայաստանը ընկղմւում է երկարատեւ մղձաւանջի մէջ»: Ինչ վերաբերում է Ռոբերտ Քոչարեանի այն յայտարարութեանը, որ ցանկացած երկրում էլ ընտրութիւններից յետոյ, միշտ էլ պարտուող կողմը չի ընդունում ընտրութիւնների արդիւնքները, ապա Արման Մելիքեանն ասաց. «Ցանկացած երկրում խնդիր չի կանգնում, թէ արդեօք արժանահաւա՞տ են պետական ատեանների յայտարարութիւնները ընտրութիւնների արդիւնքների մասին: Մեր երկրում պարբերաբար նոյն խնդիրն է առաջանում, եւ պետական ատեանները չեն կարողանում համապատասխան արժանահաւատութիւն ապահովել»: Մելիքեանն անդրադարձաւ նաեւ ընտրական գործընթացում եւ դրանից յետոյ իրականացուած ձերբակալութիւններին եւ խոստացաւ այս մասին ամփոփ գնահատական տալ ապրիլի 6-ին կամ 7-ին՝ բացատրելով, որ լրացուցիչ ինֆորմացիայի կարիք ունի, որը կը ստանայ մօտ օրերս:

Ի դէպ, արտերկրից մի շարք իրաւաբանական ընկերութիւններ Արման Մելիքեանին առաջարկել են հետաքննութիւն անցկացնել տեղի ունեցածի վերաբերեալ: Այս պահին նա զբաղուած է այդ հետաքննութեամբ:

## ՔՆՆՉԱԿԱՆ ՄԱՐՄԻՆԸ ՓՆՏՐՈՒՄ Է ՍԱԴՐԱՆՔԻ ՀԵՂԻՆԱԿԻՆ

*Lragir.am*, 17:48

ՀՀ Գլխաւոր Դատախազութեան մամուլի ծառայութիւնը տարածել է հետեւեալ յայտարարութիւնը. «Մարտի 1-ին, Ֆրանսիայի դեսպանատանը յարող տարածքում, օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ տեղի ունեցած հանրահաւաքի ժամանակ, հանրահաւաքի մասնակիցների շարքերում շրջանառուել են սադրիչ լուրեր՝ նպատակ հետապնդելով բորբոքել ցուցարարներին եւ նրանց մէջ ատելութիւն սերմանել ոստիկանների նկատմամբ: Նման սադրիչ լուրերից մէկն էլ եղել է այն, թէ իբր մարտի 1-ի առաւօտեան Ազատութեան Հրապարակում ոստիկանութիւնը սպանել է 12-ամեայ մի երեխայի, ինչը դարձել է որոշ ցուցարարների կողմից ոստիկանների նկատմամբ բռնի գործողութիւնների դիմելու ազդակներից մէկը: ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում յարուցուած քրէական գործի նախաքննութեամբ պարզուել է, որ 12-ամեայ երեխայի սպանութեան մասին ակնյայտ կեղծ լուրը մարտի 1-ին Ֆրանսիայի դեսպանատանը յարող տարածքում, օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ տեղի ունեցած զանգուածային միջոցառման ժամանակ, տարածել է մի կին՝ հանրահաւաքի կազմակերպիչների

նախաձեռնութեամբ եւ դրդմամբ նշուած տարածքում թափուած աղբի միջից վերցնելով երեխայի մի կօշիկ: Ականատեսների վկայութեամբ ստայօդ լուրի հեղինակը նկարում պատկերուած կինն է: Քրէական գործի քննութեան բազմակողմանիութիւնն ու օբիեկտիւութիւնն ապահովելու նպատակով քննչական մարմինը միջոցներ է ձեռնարկում յիշատակուած կնոջը յայտնաբերելու ուղղութեամբ: Խնդրում ենք բոլոր քաղաքացիներին, ովքեր կը ճանաչեն լուսանկարում պատկերուած տիկնոջը, այդ մասին տեղեկացնեն քննչական մարմնին հետեւեալ հեռախօսահամարներով՝ 52-12-51, 56- 37- 86, կամ դիմեն մօտակայ ոստիկանութեան բաժանմունք»:

## ԵՐԵՒԱՆԻ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ ՄԵԾԱՔԱՆԱԿ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ԶՕՐՔ Է

*Lragir.am*, 17:51

Մարտի 21-ին, Երեւանում արտակարգ դրութեան աւարտից յետոյ քաղաքի փողոցներում աստիճանաբար նուազած ոստիկանութեան քանակը նկատելիօրէն աւելացել է: Այդ հանգամանքը թերեւս պայմանաւորուած է այն երթի սպասումով, որի մասին քաղաքացիների շրջանում տեղեկութիւններ էին տարածուել բջջային հեռախօսների եւ էլփոստերի հաղորդագրութիւնների տեսքով: Դրանցով տարածուել էին Ազատութեան Հրապարակում հանրահաւաքի հրաւէր եւ նաեւ ի յիշատակ մարտի 1-ի իրադարձութիւնների զոհերի, կազմակերպուած սգոյ երթ: Թերեւս այդ միջոցառումների սպասումով էլ ոստիկանական զօրքերը մարտի 21-ի կէսօրից շրջապատել են Ազատութեան Հրապարակը, ընդ որում շրջապատել են ոչ միայն բուն հրապարակը, այլ նրան յարող փողոցների մայթերը, թոյլ չտալով քաղաքացիների կուտակումներ: Ոստիկանութեան զօրքեր էին տեղակայուել նաեւ Հանրապետութեան Հրապարակում, Շահումեան եւ Միասնիկեան հրապարակներում: Միասնիկեան հրապարակում զօրքերը շրջապատել էին Միասնիկեանի արձանը, դէպի ուր եւ ուղղուելու էր, ըստ էլփոստերով տարածուած հաղորդագրութիւնների, սգոյ երթը:

## ԾԵԾԵՑԻՆ

*A1+*, 18:59

ՀՀ Արտաքին Գործերի նախարարութեան, Արմենիա-Մարիոթ հիւրանոցի, ՀՀ Դատախազութեան շէնքերի ամբողջ երկարութեամբ մոմերը ձեռքներին ու սգոյ սեւ ժապաւէնները թեւերին կապած կանգնած էին բազմաթիւ մարդիկ, որոնք այսօր եկել էին յարգելու մարտի 1-ի դէպքերի զոհերի յիշատակը: Մարդկանց այս շարքը յետոյ շարժուեց դէպի Միասնիկեանի արձան:

Բողոքի այս լուռ ակցիային ակամայ մասնակցեցին նաեւ ոստիկանները, որոնք թէեւ Հանրապետութեան Հրապարակում մի շարքով՝ վահանները պատրաստ պահած, կանգնել էին բոլորովին այլ նպատակով:

Ակցիայի մասնակիցներն այստեղ եկել էին Ազատութեան Հրապարակից, ուր նրանց այդպէս էլ ոստիկանները թոյլ չտուեցին մտնել:

Ի դէպ, մինչ մարդիկ կամաց-կամաց հաւաքւում էին Հիւսիսային Պողոտայում՝ Նորդ էլիտար համալիրի մօտ ընդհարում տեղի ունեցաւ ոստիկանութեան եւ մարդկանց միջեւ: Ինչպէս *Ա1+*-ին պատմեցին համալիրի ներսում գործող սրճարանի յաճախորդները, երբ մի երիտասարդ փորձել է անցնել գազոնը, ոստիկանները յարձակուել են նրա վրայ ու

սկսել անխնայ ծեծել ու էլեկտրաշոկով խփել: Մարդկանց մէջ այս դէպքից յետոյ մեծ խուճապ է առաջացել, որից ոստիկանութեան աշխատակիցներն սկսել են էլ աւելի կատաղել եւ հարուածել աջ ու ձախ: Նրանց հարուածներից չխուսափեց նաեւ Ֆիրդուսի փողոցի մի բնակչուհի, որին մեր աչքի առաջ ոստիկանները գցեցին գետնին ու սկսեցին հարուածել: Աւելի ուշ՝ կնոջ հետ զրուցելու ընթացքում նա պատմեց, որ ինքը փորձել էր պաշտպանել տղային, իսկ արդիւնքում ընկել ոստիկանների մահակների տակ:

Փորձեցինք նաեւ իմանալ ՀՀ ոստիկանութեան Երեւանի քաղաքային վարչութեան պետ Ներսիկ Նազարեանի կարծիքն այս դէպքի առնչութեամբ: Նա խուսափեց որեւէ կոնկրէտ բան նշել՝ ասելով, որ տղան ինքն է յարձակուել ոստիկանի վրայ: Ինչ վերաբերում է դէպքի հանգամանքներին, ապա դրանք, ըստ նրա՝ կը պարզուեն աւելի ուշ:

Մարդիկ քաղբանտարկեալների նկարները ձեռքերին, փորձում էին ոստիկաններին բացատրել իրենց բողոքի ու զայրոյթի պատճառները: Իսկ ոստիկաններից ոմանք հեգնանքով հարցնում էին նրանց՝ արդեօք ճանաչո՞ւմ են այն մարդկանց, ում նկարները բռնել են:

Ի դէպ, արտակարգ իրավիճակը թէեւ հանուել է, սակայն ՀՀ Ֆինանսների Նախարարութեան նկուղում «ապրում են» բանակայինները, որոնք ժամանակ առ ժամանակ ռեպլիկներ են բաց թողնում անցնող-դարձողների հասցէին:

## ՍԳՈՅ ԵՐԹԸ ԿԱՅԱՑԱՒ

*Lragir.am*, 19:22

Ազատութեան Հրապարակ, Հիւսիսային Պողոտայ, Հանրապետութեան եւ Շահումեան Հրապարակներով Միասնիկեանի հրապարակ: Մարտի 21-ին այդ երթուղով տեղի ունեցաւ սգոյ երթը, որը կազմակերպուել էր էլեկտրոնային փոստերի միջոցով տարածուած նամակներով ու բջջային հաղորդագրութիւններով: Մօտ երեք հազար մարդ, մոմերով ու մարտի 1-ի իրադարձութիւններից յետոյ եւ դրանից առաջ ձերբակալուած անձանց լուսանկարներով, Ազատութեան Հրապարակից շարժուեցին դէպի Միասնիկեանի արձան, ուր եւ տեղի էին ունեցել ողբերգական իրադարձութիւնները:

Սակայն երթը, որի եզրափակիչ մասն անցաւ առանց միջադէպերի, սկսուեց ոստիկանների հետ քաղաքացիների հրմշտոցով, Ազատութեան Հրապարակում: Ժամը 15-ի մօտակայքում արդէն հրապարակի մատոյցներում մոմերով ու նկարներով հաւաքուած կանանց ոստիկանները թոյլ չտուեցին մուտք գործել Ազատութեան Հրապարակ ու այնտեղ մոմավառութիւն իրականացնել: Ազատութեան Հրապարակը լի էր ոստիկանութեան զօրքերով: Մարդկանց թիւն աւելանալու հետ մէկտեղ աւելանում էր նաեւ աղմուկը եւ ոստիկանները քաղաքացիներին արդէն ոչ միայն չեն թողել Ազատութեան Հրապարակ, այլ հեռացրել են հրապարակից Հիւսիսային Պողոտայի ուղղութեամբ: Այդ ընթացքում ոստիկանութիւնը, ականատեսների վկայութեամբ, կիրառել է էլեկտրահարիչներ:

Դրանից յետոյ քաղաքացիներն արդէն Հիւսիսային Պողոտայով շարժուեցին դէպի Միասնիկեանի արձան: Շատերը մոմերով ու բանտարկեալների նկարներով կանգնել էին Հանրապետութեան Հրապարակից մինչեւ Միասնիկեանի արձան, իսկ քաղաքացիների հիմնական մասը երթով անցնում էր այդ տարածութիւնը, հասնում ոստիկաններով շրջապատուած Միասնիկեանի արձանի մօտ, քիչ կանգ առնում, եւ հեռանում, կուտակումներ չառաջացնելու համար:

Այդ ամէնը տեղի էր ունենում առանց երթեւեկութիւնը խոչընդոտելու: Ոստիկանական զօրքերի հետ կանգնած սպաներն էլ ընթացքում մօտենում էին եւ քաղաքացիներին պարզապէս խորհուրդ տալիս չմնալ մայթին եւ կուտակում ու լարուածութիւն չստեղծել:

## ԲԵՐՄԱՆ Է ԵՆԹԱՐԿՈՒԵԼ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՋԱՐՄԻԿԸ

*A1+*, 19:39

Այս պահին ոստիկանութեան Կենտրոնի բաժանմունքում է Լեւոն Տէր-Պետրոսեանի քրոջորդին՝ Առաքել Սեմիրջեանը, որը բերման է ենթարկուել մի քանի ժամ առաջ օպերայի մերձակայքի սրճարաններից մէկից:

Նա մէկն է ԱԳՆ այն աշխատակիցներից, որը ստորագրել էր համաժողովրդական շարժմանը միացած դիւանագէտների յայտարարութեան տակ:

## ԵՐԹԻ ԱՒԱՐՏԻՆ ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ՑՐԵՑԻՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

*A1+*, 20:22

Այսօր մի շարք հասարակական կազմակերպութիւնների կողմից մարտի 1-ի զոհերի յիշատակին կազմակերպուած սգոյ երթը ոստիկանութեան կողմից դադարեցուեց Մաշտոցի Պողոտայում՝ Մարգարեանի անուան հիւանդանոցի մօտ: Այստեղ ոստիկանները պատ կազմեցին եւ բարձրախօսով յայտարարուեց. «Ձեր երթը անօրինական է, դադարեցրէք»: Երբ ոստիկանները տեսան, որ երթի մասնակիցները շարունակում են առաջ քայլել, նրանց առաջարկեցին անցնել դիմացի մայթ, իսկ մինչ այդ հասցրեցին փակել նաեւ դիմացի մայթը:

Ոստիկանների առաջնորդող հրամանատարը, որի ձեռքին էլեկտրաշոկ կար, հրամայեց քշել ժողովրդին: Ենթարկուելով նրա հրամանին՝ ոստիկանները սկսեցին հրելով կանանց ետ մղել, որոնք առաջին շարքում էին: Երթի մասնակիցներից մի տղամարդ առաջ անցաւ եւ զայրացած ասաց. «Ի՞նչ է՝ տարածք էք գրաւում»: Նրա այդ արտայայտութիւնը պատճառ դարձաւ, որպէսզի ոստիկանների հրամանատարը հրամայի. «Սրան տարէք բաժին»: Հէնց նոյն պահին երթի մասնակից տղամարդու ձեռքերը ոլորեցին եւ մտցրեցին ոստիկանութեան մեքենան՝ հրամանատարի հրամանը կատարելու համար:

Այդ ընթացքում կանայք սկսեցին բղաւել. «Սերժի ու Ռոբիկի ստրուկներ: Մենք մեր քաղաքում քայլելու իրաւունք չունե՞նք»: Երթի մասնակիցներից մի կին էլ բղաւում էր. «Դիտմամբ են անում՝ մեզ վախեցնելու եւ երթը դադարեցնելու համար»: Ոստիկանութեան որոշ աշխատակիցներ առանձնացել էին շարքից եւ խնդրում էին կանանց հեռանալ: Բազմաթիւ խմբերի բաժանելով երթի մասնակիցներին՝ ոստիկաններն այսօր նրանց ցրեցին՝ երթի աւարտին: Երթի մասնակիցները Մաշտոցի Պողոտայով փորձում էին վերադառնալ օպերայի շէնքի մօտ, որտեղից էլ սկսել էին տարերային երթը:

Ի դէպ, երթի մասնակիցներին, որոնք սեւ ժապաւէններով եւ մոմերով Ազատութեան Հրապարակից Հիւսիսային Պողոտայով, ԱԳ նախարարութեան, դատախազութեան շէնքերի մօտով հասել էին Միասնիկեանի արձանի մօտ, չկարողացան մօտենալ արձանին՝ ոստիկանական արգելքի պատճառով:

Նշենք, որ երբ երթի մասնակիցների մի մասը Մարգարեանի հիւանդանոցի մօտ էր, միւս ծայրը դեռ ԱԳ նախարարութեան մօտ էր: «Մեզ ոչ ոք չի կարող ընկճել: Սա Լեւոն Տէր-Պետրոսեանի հարցը չէ: Մենք պայքարում ենք մեր համար: Ես ուզում եմ ազատ

քայլել իմ երկրում», - բղաւում էր երթի մասնակիցներից մէկը: Այսօր յատկապէս ակտիւ էին կանայք, որոնք անցնելով ոստիկանների մօտով նրանց ամօթանք էին տալիս. «Մրա համա՞ր են ձեզ լոյս աշխարհ բերել»:

Դատախազութեան մօտ, երբ ոմանք հետաքրքրւում էին, թէ ինչ առիթով է երթը, կանանցից մէկը զայրացած ասաց. «Սերժիկն է մեռել, երթ ենք անում»: Երթի միւս մասնակիցները հանգստացրեցին կնոջը եւ շարունակեցին ճանապարհը:

Յիշեցնենք, որ այսօր բողոքի ակցիա նախաձեռնած կազմակերպութիւնները կոչ էին անում «մարտի 21-ը ազգովին նշել որպէս սգոյ ազգային օր, քանի որ անտեսելով մարտի 1-ի ողբերգութիւնը՝ իշխանութիւններն անգամ սգոյ օր չյայտարարեցին»: Մարտի 1-ին զոհերի թիւր պաշտօնապէս 8 է, կան բազմաթիւ վիրաւորներ:

Ի դէպ, այսօր նախատեսւում էր լուռ բողոքի շարք կազմել Ազատութեան Հրապարակից մինչեւ Միասնիկեանի արձան, սակայն այն չյաջողուեց ոստիկանական բազմաքանակ զօրքերի առկայութեան պատճառով:

## ԱՐԱՄ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՀԱՐՑԱՔՆՆՈՒԵԼ Է

*A1+*, 20:47

Այսօր ՀՀ յատուկ քննչական ծառայութիւն է հրաւիրուել Հանրապետութիւն կուսակցութեան նախագահ Արամ Սարգսեանը:

Նա որպէս վկայ հարցաքննուել է սահմանադրական կարգի խախտմամբ պետական իշխանութիւնը իւրացնելու նպատակով Երեւան քաղաքում զանգուածային անկարգութիւններ հրահրելու եւ կազմակերպելու փաստի առթիւ ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում յարուցուած քրէական գործով: Մի քանի ժամ դատախազութիւնում հարցաքննուելուց յետոյ Արամ Սարգսեանը ազատ է արձակուել: Այդ մասին *A1+*-ին յայտնեց Գլխաւոր Դատախազի մամլոյ խօսնակը:

Յիշեցնենք, որ մարտի 1-ի լոյս մարտի 2-ի գիշերը Արամ Սարգսեանն է Միասնիկեանի արձանի մօտ հաւաքուածներին փոխանցել Լեւոն Տէր-Պետրոսեանի խօսքը՝ խնդրելով ժողովրդին տուն գնալ՝ յետագայ բախումները կանխելու եւ արիւնահեղութիւնը դադարեցնելու համար:

## ԿԱԼԱՆԱՒՈՐՈՒԵԼ Է 106 ԱՆՁ

*Հետք*, 21:21

Սահմանադրական կարգի խախտմամբ պետական իշխանութիւնը իւրացնելու նպատակով Երեւան քաղաքում զանգուածային անկարգութիւններ հրահրելու եւ կազմակերպելու փաստի առթիւ ՀՀ յատուկ քննչական ծառայութիւնում քննուող քրէական գործի շրջանակներում մարտի 19-ի դրութեամբ կալանաւորուել է 106 անձ, որոնց մեղադրանքներ են առաջադրուել ՀՀ Քրէական Օրէնսգրքի տարբեր յօդուածներով՝ օրէնքով սահմանուած կարգի խախտմամբ զանգուածային միջոցառումներ կազմակերպելու եւ անցկացնելու, իշխանութեան ներկայացուցիչների օրինական պահանջներին չենթարկուելու կոչեր անելու, իշխանութեան ներկայացուցիչների նկատմամբ բռնութիւններ գործադրելու, պետական իշխանութիւնը սահմանադրական կարգի խախտմամբ, բռնութիւններով իւրացնելուն ուղղուած գործողութիւններ անելու, ապօրինի զէնք-զինամթերք ձեռք բերելու եւ պահելու, յանցագործութիւն պարտակելու համար:

Ստորեւ ներկայացնում ենք այն մեղադրեալների անուն-ազգանունները, որոնց նկատմամբ որպէս խափանման միջոց է ընտրուել կալանքը՝

Մանուկեան Աշոտ (ծնուած՝ 1947թ), Աբրահամեան Համլէտ (1978թ.), Համբարձումեան Դաւիթ (1947թ.), Մաթեւոսեան Դաւիթ (1960թ.), Մխիթարեան Վահրամ (1980թ.), Երիցեան Սողոմոն (1966թ.), Ջհանգիրեան Գագիկ (1955թ.), Ջհանգիրեան Վարդան (1960թ.), Այվազեան Սմբատ (1959թ.), Սուրէնեանց Սուրիկ (1975թ.), Գասպարեան Տաթեւ (1967թ.), Յարութիւնեան Սամուէլ (1961թ.), Մալխասեան Իսահակ (1963թ.), Գասպարեան Խաչիկ (1967թ.), Ներսիսեան Աւետիք (1962թ.), Ղազարեան Յովհաննէս (1959թ.), Բաղդասարեան Տիգրան (1952թ.), Զաքարեան Մեսրոպ (1942թ.), Սաղաթէլեան Մուշեղ (1950թ.), Խաչատրեան Լեւիկ (1958թ.), Առաքելեան Դաւիթ (1964թ.), Հայոցեան Վարդգէս (1946թ.), Այվազեան Մասիս (1956թ.), Յովակիմեան Միսակ (1941թ.), Գասպարի Վարդգէս (1957թ.), Աւագեան Արմէն (1965թ.) Պետրոսեան Ռաջի (1978թ.), Գրիգորեան Սեդրակ (1982թ.), Պարունակեան Սարգիս (1961թ.), Միքայէլեան Գուրգէն (1974թ.), Շահինեան Արման (1977թ.), Գրիգորեան Յակոբ (1976թ.), Սարգսեան Արմէն (1976թ.), Ստեփանեան Նուէր (1960թ.), Աղամալեան Գրիգոր (1979թ.), Մալխասեան Միասնիկ (1961թ.), Դաւթեան Լեւոն (1959թ.), Պետրոսեան Գարիկ (1983թ.), Ղազարեան Վահէ (1979թ.), Առաքելեան Վլադիմիր (1955թ.), Ռուբինեան Կարապետ (1957թ.), Եղիազարեան Գուրգէն (1948թ.), Յարութիւնեան Գեղամ (1958թ.), Աբգարեան Երջանիկ (1940թ.), Գէորգեան Սօս (1974թ.), Ստեփանեան Ֆրունզէ (1969թ.), Յակոբեան Յակոբ (1957թ.), Մխիթարեան Վեմիր (1957թ.), Վարդանեան Ալեքսան (1950թ.), Մխիթարեան Յովիկ (1967թ.) Սարգսեան Ստեփան (1987թ.), Ոսկանեան Ռուբէն (1959թ.), Մանուչարեան Կառլէն (1957թ.), Մկրտչեան Յարութիւն (1953թ.), Մարգարեան Արման (1984թ.), Սերոբեան Միքայէլ (1987թ.), Սարգսեան Միեր (1967թ.), Մկրտչեան Սարգիս (1984թ.), Մարգարեան Արթուր (1984թ.), Գեղամեան Արման (1985թ.), Աւագեան Կարէն (1975թ.), Գրիգորեան Էդիկ (1972թ.), Թարխանեան Կարէն (1981թ.), Էլազեան Քրիստափոր (1976թ.), Բագրատեան Արայիկ (1972թ.), Յակոբեան Տիգրան (1987թ.), Սիմոնեան Խաչատուր (1954թ.), Շահնազարեան Արթուր (1964թ.), Անտոնեան Ահարոն (1987թ.), Հարէյեան Վահագն (1977թ.), Աւետիսեան Ասլան (1955թ.), Սարգսեան Նուէր (1972թ.), Պետրոսեան Արթուր (1979թ.), Ներսիսեան Ալբերտ (1981թ.), Բարեղամեան Արամ (1963թ.), Գրիգորեան Արմէն (1984թ.), Ղուկասեան Եուրիկ (1985թ.), Ոսկերչեան Գրիգոր (1956թ.), Փենինեան Հրայր (1975թ.), Մնացականեան Ռոման (1971թ.), Յարութիւնեան Նորիկ (1971թ.), Կիտեսով Ալեքսանդր (1980թ.), Սիմոնեան Եուրիկ (1966թ.), Սիրունեան Սուրէն (1971թ.), Աբովեան Սամուէլ (1972թ.), Զուրաբեան Արարատ (1963թ.), Արզումանեան Ալեքսանդր (1959թ.), Մկրտչեան Աղասի (1964թ.), Ասրեան Ռաֆայէլ (1955թ.), Սարգսեան Ստիոպա (1962թ.), Մինասեան Սուրէն (1988թ.), Բարսեղեան Գրիգոր (1983թ.), Ղազարեան Անդրանիկ (1959թ.), Միքայէլեան Սասուն (1957թ.), Ղազարեան Գէորգ (1972թ.), Մխոյեան Յովհաննէս (1962թ.), Յովսէփեան Արտակ (1961թ.), Գրիգորեան Մելիք (1960թ.), Աբրահամեան Մկրտիչ (1971թ.), Նահապետեան Արտակ (1960թ.), Նորիկեան Նորայր (1978թ.):

Ապօրինի զէնք-զինամթերք ձեռք բերելու եւ պահելու մէջ մեղադրուող Մամեան Եուրիկի, Բաղդասարեան Յուսիկի, Ղռեջեան Աւետիքի, Սիրադեղեան Սերիոժայի, Յարութիւնեան Յովհաննէսի վերաբերեալ մասերն անջատուել են առանձին վարոյթ եւ ուղարկուել ՀՀ կառավարութեանն առընթեր Ազգային Անվտանգութեան Ծառայութիւն,

որտեղ աւարտուել է նրանց մասով նախաքննութիւնը եւ 18.03.08թ. քրէական գործերն ուղարկուել են Տաւուշի, Գեղարքունիքի, Արարատի եւ Վայոց Ձորի, Արաբկիրի եւ Քանաքեռ-Զէյթունի ընդհանուր իրաւասութեան դատարաններ՝ ըստ էութեան քննելու համար:

Եւս երեք մեղադրեալի՝ Ասլանեան Գուրգէնի, Արմէն Մովսիսեանի եւ Համլէտ Յովհաննիսեանի նկատմամբ որպէս խափանման միջոց է ընտրուել ստորագրութիւն՝ չհեռանալու մասին:

19.03.08թ. դրութեամբ հետախուզման մէջ է գտնւում 4 անձ՝ Նիկոլ Փաշինեան, Խաչատուր Սուքիասեան, Արմէն Վարդանեան, Լենդրուշ Տոնոյեան, որոնց յայտնաբերելու ուղղութեամբ իրականացւում են օպերատիւ-որոնողական աշխատանքներ:
www.genproc.am

## 22 ՄԱՐՏ 2008

### ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ ԵՆ ԲԵՐՄԱՆ ԵՆԹԱՐԿԵԼ

*A1+*, 15:14

Մարտի 1-ի զոհերի յիշատակին նուիրուած երէկուայ սգոյ երթի ընթացքում ոստիկանութիւնը բերման է ենթարկել 6 մարդու: Աժ ժառանգութիւն խմբակցութեան անդամներ Զարուհի Փոստանջեանը, Լարիսա Ալաւերդեանը եւ Անահիտ Բախշեանը երէկ մինչեւ ուշ երեկոյ ոստիկանութեան կենտրոնի բաժնի մօտ էին՝ պարզելու համար, թէ ինչ հիմնաւորմամբ են սգոյ երթի մասնակիցներին բերման ենթարկել:

Այսօր Զարուհի Փոստանջեանը *Ա1+*-ին տեղեկացրեց, որ բերման ենթարկուածներից 4-ին, ոստիկանութիւնում օրէնքով սահմանուած ժամանակից երկար պահելուց յետոյ, յայտնել են որ վարչական տոյժի են ենթարկուել անօրինական միջոցառման մասնակցելու համար, իսկ 2-ին՝ Սառաջանեան էդուարդին եւ Սեմիրջեան Յակոբին տարել են Դատախազութիւն՝ մեղադրանք առաջադրելու համար:

«Մօտ 40 րոպէ Դատախազութիւնում նրանց պահելուց յետոյ ազատ արձակեցին՝ առանց հարցաքննելու: Այսօր նրանց կրկին հրաւիրել են Դատախազութիւն՝ որպէս վկայ հարցաքննելու համար», - ասաց տիկին Փոստանջեանը: Նա նաեւ տեղեկացրեց, որ Սառաջանեան էդուարդին եւ Սեմիրջեան Յակոբին բերման էին ենթարկել ոչ թէ երէկուայ սգոյ երթին, այլ մարտի 1-ի հանրահաւաքին մասնակցելու համար. «Նրանց պատրաստւում են հարցաքննել մարտի 1-ին Երեւանի քաղաքապետարանի մօտ ոստիկանութեան աշխատակցին ծեծելու կապակցութեամբ»: Զարուհի Փոստանջեանը նշեց, որ երէկ ոստիկանութեան աշխատակիցները սգոյ երթի ժամանակ շարունակում էին նկարահանել երթի մասնակիցներին, որպէսզի պարզէին, արդեօ՞ք նրանք մասնակցել են մարտի 1-ի միջոցառմանը, թէ՝ ոչ:

Ոստիկանութիւն բերման ենթարկուած այն քաղաքացիները, ովքեր վարչական տոյժի են ենթարկուել, պէտք է տուգանուեն 50-ից 100 հազար դրամով: Ի դէպ, վարչական տոյժի է ենթարկուել նաեւ երէկ ոստիկանութեան կենտրոնի բաժին բերման ենթարկուած Լեւոն Տէր-Պետրոսեանի քրոջորդին՝ Առաքել Սեմիրջեանը, որը ոստիկանութիւնում պահուել է 9 ժամ եւ ազատ է արձակուել միայն երեկոյեան:

## «ԴՈՒՔ ՃԱՆԱՉՈ՞ՒՄ ԷՔ ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ»

*A1+*, 16:09

ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի քրոջորդին՝ Առաքել Սեմիրջեանը, երէկ ոստիկանութեան կենտրոնի բաժին բերման է ենթարկուել Օպերայի մերձակայքում գտնուող Մեղեդի սրճարանից: «Սրճարանում ընկերներիս հետ թէյ էինք խմում, երբ ինձ ձերբակալեցին: Առանց որեւէ փաստաթուղթ, արձանագրութիւն ներկայացնելու ինձ հէնց հրապարակի կենտրոնում խուզարկեցին: Հարցրեցի, թէ ինչի՞ համար էք ինձ տանում՝ ասացին. «Կը պարզենք: Դու դեռ կը տեսնես: Դու լեւոնական ես ու բոլոր լեւոնականներին պիտի պատժենք», - *Ա1+*-ին պատմեց Առաքել Սեմիրջեանը:

Մօտ 1 ժամ Ազատութեան Հրապարակում մեքենայի մէջ պահելուց յետոյ նրան տարել են ոստիկանութեան Կենտրոնի բաժին: «Կենտրոնի բաժնում մի հատ էլ ինձ խուզարկեցին, յետոյ առանձնացրեցին մի սենեակում: 3 ժամ անցնելուց յետոյ ես ասացի՝ կամ ինձ բացատրէք, թէ ինչո՞ւ էք բերման ենթարկել կամ էլ ազատ արձակէք: Անընդհատ ասում էին. «10 տարի կը գնաս կը նստես: Դուք՝ լեւոնականներդ, դեռ կը տեսնէք»: Ես ասում էի, եթէ յանցանք եմ գործել, խնդիր չկայ, բայց նախ յանցանքս ասէք: Ինձ միայն երեկոյեան ժամը 22.00-ին ասացին, որ ոստիկանութեան աշխատակցին դիմադրութիւն եմ ցոյց տուել: Երբ ասացի, որ ցոյց տուէք մի ոստիկանի, որը կարող է ասել, որ իրեն դիմադրել եմ, նրանք ժամը 22.30-ից յետոյ ասացին, որ վարչական տոյժի եմ ենթարկուել», - ասաց Առաքել Սեմիրջեանը:

Ի դէպ, ոստիկանութիւնում նրան նոյնպէս ասել են, որ կասկածւում է հանրահաւաքների մասնակցելու մէջ եւ նրան փորձել են հարցաքննել. «Ես ասացի, որ հրաժարւում եմ հարցաքննութեան մասնակցել առանց պատճառաբանութեան, քանի որ փաստաբան չունեմ՝ պատճառաբանութիւնս ներկայացնելու համար: Պահանջեցի փաստաբան, սակայն չտրամադրեցին»: Տէր-Պետրոսեանի քրոջորդուն ուղղուած հարցերից ամենահետաքրքիրն այն է եղել, որ ոստիկանութեան քննիչները նրան հարցրել են. «Դուք ճանաչո՞ւմ էք Լեւոն Տէր-Պետրոսեանին: Նրանից յանձնարարութիւններ ունէք»:

«Ես հրաժարուեցի հարցին պատասխանել՝ ասելով, որ Դուք շատ լաւ գիտէք, որ ես ազգակցական կապ ունեմ այդ մարդու հետ: Ես էլ նրանց հարցրեցի՝ դուք ձեր ընտանիքի անդամներին ճանաչո՞ւմ էք: Ես արձանագրութեան մէջ գրեցի, որ հրաժարւում եմ պատասխանել հարցերին եւ նաեւ նշեցի, որ ժամը 15.00-ին են ինձ ձերբակալել եւ միայն ժամը 22.00-ին են ասել, թէ ինչու են ձերբակալել», - ասաց նա:

Առաքել Սեմիրջեանին երէկ երեկոյեան 22.30-ից յետոյ տարել են Կենտրոնի ոստիկանապետ Արթուր Մեհրաբեանի մօտ, որը նրանից հարցրել է, թէ իր նկատմամբ ուժ չե՞ն գործադրել, չե՞ն հայհոյել, իսկ յետոյ ազատ են արձակել՝ առանց տոյժի մասին որշումը տալու եւ ասել են, որ այն կը տրամադրեն երկուշաբթի: Յիշեցնենք, որ Առաքել Սեմիրջեանը մէկն է ԱԳՆ այն աշխատակիցներից, որը ստորագրել էր համաժողովրդական շարժմանը միացած դիւանագէտների յայտարարութեան տակ:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ՆԿԱՐԱՀԱՆՈՒՄ ԵՆ ՄԱՐԴԿԱՆՑ (video)

*A1+*, 19:36

**«ՔԱՂԱՔԱԿԱՆ» ԶԲՕՍԱՆՔՆԵՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՒՈՒՄ ԵՆ**

ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ՆԿԱՐԱՀԱՆՈՒՄ ԵՆ ՄԱՐԴԿԱՆՑ

Թէեւ արտակարգ իրավիճակը հանուած է, սակայն Ազատութեան Հրապարակն ու մայրաքաղաքի միւս կենտրոնական վայրերը շարունակւում են շրջապատուած մնալ ոստիկաններով:

«Սա չէ օպերայի ծառայողական մուտքը», - այսօր ասացին ոստիկանները եւ թոյլ չտուեցին *Ա1+* ի օպերատորին եւ լրագրողին Հիւսիսային Պողոտայի դիմացից մտնել Ազատութեան Հրապարակ: Պարզուեց, որ Օպերայի «ծառայողական մուտքը» Մաշտոցի Պողոտայից է: Իսկ, երբ օպերատորը փորձեց նկարահանել ոստիկանների շարասիւնը՝ նրանցից մէկն ասաց. «Ես չեմ ուզում, որ ինձ նկարէք: Կարող է, ես երկու կին ունեմ ու չեմ ուզում, որ ինձ տեսնեն»: Ոստիկանների սրամիտ պատասխաններին զուգահեռ բարձրաստիճան սպաների հետ շրջում էր տեսախցիկով մի երիտասարդ, որը նրանց յանձնարարութեամբ նկարահանում էր Ազատութեան Հրապարակի շրջակայքում կանգնած մարդկանց, նոյնիսկ պատահական անցորդների:

Ոստիկանութեան բարձրաստիճան սպաները խմբերով անձամբ մօտենում էին Օպերայի շուրջ հաւաքուած մարդկանց եւ զգուշացնում. «Ի զուր տեղը մի հաւաքուէք: Գնացէք տուն: Մէկ ա թոյլ չենք տալու հաւաքուէք»:

Հիւսիսային Պողոտայի վրայ հիմնականում կանայք էին, որոնք ոստիկաններին անընդհատ ասում էին. «Որտեղ ուզենք, այնտեղ էլ կը կանգնենք: Սա մեր քաղաքն է, եւ դուք չպէտք է որոշէք, թէ մենք որտեղ կանգնենք կամ զբօսնենք»: Տեսնելով, որ հաւաքուած մի քանի տասնեակ կանայք չեն հեռանում, ոստիկանների մի խումբ Ազատութեան Հրապարակից անցաւ Հիւսիսային Պողոտայ եւ քայլելով հաւաքուածներին սկսեց իջեցնել դէպի Աբովեան փողոց:

Ժամը 18.30-ին ոստիկանները Հիւսիսային Պողոտայում զբօսնող մարդկանց յայտարարեցին, որ եթէ 10 րոպէի ընթացքում չհեռանան, ապա իրենք կը ցրեն ժողովրդին: Չնայած այդ յայտարարութեանը մարդիկ շարունակում են զբօսնել օպերայի շուրջ եւ Հիւսիսային Պողոտայի երկայնքով եւ անընդհատ նշել, որ սեփական քաղաքում զբօսնել արգելող օրէնք չկայ, եւ ոստիկանների պահանջը անօրինական է: Այսօր զբօսնող գրեթէ բոլոր մարդիկ բարեւում էին ոստիկաններին, զրուցում նրանց հետ, նոյնիսկ նրանց *Հայկական ժամանակ*, *Առաւօտ*, *Հայք* օրաթերթեր տալիս՝ իրականութեանը իրազեկուելու համար:

Ի դէպ, այսօր ոստիկանների թիւը մի անգամ գերազանցում էր հաւաքուած մարդկանց թուին:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐՆ ԱՌՋԵՒԻՑ ԷԻՆ ՎԱԶՈՒՄ (video)

*A1+*, 19:52

Ժամը 18.55-ի մօտ Աբովեան փողոցի խանութների ու սրճարանների աշխատակիցները դուրս էին թափուել, անցորդները զարմացած իրար էին հարցնում՝ այդ ինչ է պատահել: Մի խումբ ոստիկաններ սաղաւարտները գլխներին, վահանները ձեռքներին վազում էին Աբովեան փողոցի սկզբնամաս: Առանձնապէս ոչինչ չէր պատահել.

պարզապէս ոստիկանները գլխի էին ընկել, որ Հիւսիսային Պողոտայում իրենց «ցրած» երթի մասնակիցները յայտնւում են Հանրապետութեան Հրապարակում, իսկ նրանց առջեւ ոստիկանական պատ չկայ։

Ու մինչ խաղաղ ակցիայի մասնակիցները կը յայտնուէին Աբովեան փողոցի սկզբնամասում, ոստիկանները արագօրէն այնտեղ պատ կազմեցին՝ թոյլ չտալով քաղաքացիներին մտնել հրապարակ, այլ՝ ճանապարհը շարունակել դէպի աջ հատող փողոցով։ Այստեղ փոքրիկ լեզուակռիւ սկսուեց ոստիկանների եւ կանանց միջեւ։ Վերջիններս զարմանում էին, թէ ինչու պէտք է խոչընդոտուի իրենց ազատ շարժուելու իրաւունքը։ Ի դէպ, բարձրաստիճան ոստիկաններից մէկը կանանցից մէկին անբարոյական անուանեց, իսկ կանգնած ոստիկաններին հրահանգում էր ցրել երթի մասնակիցներին, իսկ ով որ չցրուի՝ բերման ենթարկել։ Հետաքրքիր է, որ հէնց ոստիկանների շնորհիւ էին քաղաքացիները յայտնուել Աբովեան փողոցում. ոստիկանները նախ նրանց ցրեցին Հիւսիսային Պողոտայի սկզբնամասից՝ ասելով, որ կը դիմեն այլ միջոցների, իսկ յետոյ, երբ նրանք պողոտայի միջնամասում երգում էին, սկսեցին գալ նրանց ուղղութեամբ։ Մարտի 1-ի զոհերի յիշատակի հերթական երթի մասնակիցներն էլ սկսեցին արագ քայլերով պողոտայից հեռանալ Հրապարակի ուղղութեամբ։

Այսօր, Քրիստոսի Յարութեան տօնին՝ ոստիկաններից մէկը յանգցրեց մի քաղաքացու մոմը, որը բռնած նա նստել էր Հիւսիսային Պողոտայում։ Ոստիկանը այդ տղամարդուն հրահանգեց հեռանալ։ Ակցիայի մասնակիցները մէկ-մէկու ասում էին, որ վաղը ժամը 12-ին բողոքի ակցիա է լինելու Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցու մօտ։ Ակցիայի մասնակիցները ոստիկաններին հարցնում էին՝ արդեօք վաղն էլ են ցրելո՞ւ։

Ի դէպ, թէեւ այսօր երթի մասնակիցները չհասան Միասնիկեանի արձանի մօտ, սակայն նրա առջեւ ոստիկաններ էին շարուած։ Ոստիկանական պատ էր նաեւ Հանրապետութեան Հրապարակում՝ Լենինի արձանի նախկին տեղում։

## ԿՈՉ ԱԶԱՏՈՒԹԻՒՆԸ ԳՆԱՀԱՏՈՂ ՄԱՐԴԿԱՆՑ

*Հետք*, 22:00

**ԳԱԼԱ ՀԸ Պաշտպանութեան հեռուստամարաթոն դրամահաւաքը դառնում է Համահայկական Մարաթոն. Արդէն հանգանակուել է 15 մլն 550 հազար դրամ**

Շարունակւում է Գիւմրիում գործող *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան պաշտպանութեանն ուղղուած դրամահաւաք մարաթոնը։ Հայաստանի պատմութեան մէջ առաջին անգամ հազարաւոր մարդիկ կամաւոր կերպով դրամահաւաք են իրականացնում Գիւմրի քաղաքում գործող այս հեռուստաընկերութեանը ծանրագոյն ճգնաժամից դուրս բերելու համար։

Ճգնաժամային իրադրութիւնը ստեղծուել է հեռուստաընկերութեան դէմ ՀՀ գործադիր իշխանութեան մի քանի ճիւղերի եւ Գիւմրու քաղաքապետարանի համատեղ վարչական յարձակման հետեւանքով, ապա դատարանների կողմնակալ դատավարութիւններով կայացուած վճիռների արդիւնքում։

Ըստ ՀՀ Վարչական դատարանի մարտի 19-ի վճռի *ԳԱԼԱ* ՀԸ հիմնադիր ՉԱՊ ԱՊԸ-ն պարտաւոր էր անյապաղ պետբիւջէ վճարել 25 մլն 116 հազար 700 դրամ, եւ մօտ 500 հազար դրամ, որպէս դատական ծախսեր։ 2007 թուի դեկտեմբերի 3-ից Գիւմրու Հարկային Տեսչութեան հայցով արդէն արգելանք էր դրուել ընկերութեան սարքաւորումների,

բանկային եւ դրամարկղային միջոցների վրայ: 4,5 ամիս շարունակ հեռուստաընկերութիւնը որեւէ գովազդային պատուէր չի ունեցել: Հեռուստաընկերութեան հիմնադիր Վահան Խաչատրեանը այդ ընթացում իր դրամական խնայողութիւններով պահպանել է հեռուստաընկերութիւնը, աշխատակազմը եւ բոլոր հաղորդաշարերը, այդ թւում, լրատուական ծաւալուն թողարկումները, հարցազրոյցների շարքերը, մանկական եւ այլ ժամանցային, մշակութային հաղորդաշարերը: Հեռուստաընկերութիւնը հնարաւոր մանրամասներով եւ օպերատիւութեամբ լուսաբանել է նախընտրական պաքարը, ընտրութիւնների ընթացքում տեղի ունեցած զանգուածային խախտումները, յետընտրական զարգացումները, համաժողովրդական յուզումներն ու հանրահաւաքները:

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան Շտաբի եւ հեռուստաընկերութեան նախաձեռնութեամբ մարտի 19-ին Գիւմրու ժամանակով ժամը 9-ին մեկնարկած հեռուստատեսային մարաթոնը նպատակ ունէր կարճ ժամկէտում հանգանակել հարկային նկարած գումարը, վճարել պետբիւջէ, այդպիսով պաշտպանել հեռարձակման լիցենզիան ու շարունակել վիճարկել այդ վճիռը հայաստանեան եւ եւրոպական դատական ատեաններում, այդ թւում պահանջել հեռուստաընկերութեանն ու հիմնադրին հասցուած վնասի լիակատար հատուցում:

Հանգանակութեան մարաթոնի մասին լուրերը մեծ արագութեամբ տարածուեցին Հայաստանով մէկ, ապա՝ մօտ 6-10 ժամում ամբողջ աշխարհի հայութիւնն ու այս խնդրով շահագրգիռ մարդիկ իմացան մեկնարկելիք աննախադէպ միջոցառման մասին: Վէբ կայքերի կառավարիչները, բլոգերները, ֆորումների եւ չաթերի «մշտական բնակիչները», ԶԼՄ-ների, ՀԿ-ների հասարակական շարժումների, պաշտօնական ու ոչ-պաշտօնական միաւորումների տեղեկատուական հոսքերի կառավարիչները աննախադէպ օպերատիւութեամբ տարածեցին ու տարածում են տեղեկութիւն մարաթոնի մասին:

Հանգանակութեան մարաթոնի առաջին օրը՝ մարտի 19-ին (ստուդիա բերուած կանխիկ դրամով եւ ԻՒՆԻԲԱՆԿ-ի դրամային հաշուին) հանգանակուեց 8 մլն 75 հազար դրամ՝ կամ «պահանջուող» գումարի 32 տոկոսը:

Հանգանակութեան մարաթոնի առաջին օրը՝ մարտի 20-ին հանգանակուեց 3 մլն 598 հազար դրամ՝ կամ «պահանջուող» գումարի մօտ 14 տոկոսը:

Հանգանակութեան մարաթոնի երրորդ օրը՝ մարտի 21-ին հանգանակուեց 3 մլն 876 հազար դրամ՝ կամ «պահանջուող» գումարի 15 տոկոսը:

Հանգանակութեան 3 առաջին օրերի ընթացքում, մինչեւ մարտի 21-ը, ժամը 21:30-ը Կանխիկ եւ Բանկային դրամային հաշուի վրայ եղած գումարի հանրագումարը կազմում է 15 մլն 549 հազար դրամ՝ անհրաժեշտ մայր գումարի 61,91 տոկոսը:

Առայժմ տեղեկութիւններ չկան Վահան Խաչատրեանի անունով Իւնիբանկում բացուած դոլարայի հաշուին արտերկրից արուած եւ արուող օժանդակութիւնների մասին, բանկային գործի մասնագէտների խօսքով՝ այդ հանգանակութիւնները կարող են տեղ հասնել մի քանի օր ուշացումով, ինչը կարող է լրջագոյնս խոչընդոտել ամբողջական գումարը գոնէ մինչեւ երկուշաբթի հանգանակելուն:

Մարտի 21-ին ՉԱՊ ՍՊԸ այցելեցին Դատական Ակտերի Հարկադիր Կատարման Ծառայութեան աշխատակիցները՝ կատարողական թերթիկով: Նրանք նախ ուսումնասիրեցին դեկտեմբեր 3-ից արգելանքի տակ գտնուող գոյքը եւ դրամական միջոցները (որոնք մի քանի հազար դրամով աւելացել էին 4,5 ամսուայ ընթացքում, եւ որոնք

ընկերութիւնը չէր կարող ծախսել)։ Համոզուեցին, որ ամէն ինչ տեղում է, ոչինչ չի պակասել։

Ապա ընկերութեան սեփականատէր Վահան Խաչատրեանի հետ քննարկումներից յետոյ, գանձեցին համաժողովրդական հանգանակութեամբ հաւաքուած եւ այդ պահին ստուդիայում գտնուող ամբողջ գումարը՝ 15 մլն 21 հազար 500 դրամ՝ մետաղադրամներն էլ հետը։

ԴԱՀԿ աշխատակիցները տեղեկացրին, որ իրենց ծառայութեան համար բռնագանձելու են դատարանի վճռով սահմանուած գումարի եւս 5 տոկոսի չափով գումար (մօտ 1,2 մլն դրամ), այն բանի համար, որ դատական վէճում պարտուած կողմը՝ ՉԱՊ ՍՊԸ-ն անյապաղ չի վճարել պահանջուած գումարը պետբիւջէ, եւ Հարկայինը դիմել է ԴԱՀԿ միջամտութեանը։

Բացի այդ Դատարանի վճռով հաստատուել է 500.000 դրամ դատական ծախս՝ ի վնաս պարտուած կողմի։

Այսպիսով Հայաստանում գործող վարչական ռեժիմը իր ամբողջ հզօրութիւնը գործի դնելով ջանում է քամել Հեռուստաընկերութիւնը, հաշուի չառնելով թերեւս մէկ բան. հանրութիւնը աննախադէպ պատրաստակամութիւն է ցուցաբերում իր ազատութիւնները պաշտպանելու, իր ունեցած Ազատ հեռուստաընկերութեան  այդ բացառիկ նմուշը պաշտպանելու եւ այդպիսով էլ աւտօրիտարիզմի դէմ պայքարում իր ներդրումն ունենալու գործում։

Հանգանակութեան հեռուստամարաթոնը շարունակւում է։ Այն ուշագրաւ եւ մասամբ սպասուած ձեւեր է ստանում, եթէ առաջին օրերին մարդիկ հեռաւոր գիւղական համայնքներից անձամբ գալիս հասնում էին ստուդիա, հիմա համայնքներում հանգանակում են, ցուցակ են կազմում եւ 1-2 հոգով գումարը բերում են հեռուստաընկերութիւն։ Հետզհետէ ու անշեղօրէն աճում է Երեւանից, Վանաձորից եւ Հայաստանի այլ համայնքներից  հանգանակութիւններ կատարողների թիւը։ Աճում է բանկային փոխանցումներով կատարուող հանգանակութիւնների թիւն ու մասը հանգանակուող գումարի մէջ։ Մօտաւորապէս կարող ենք ասել, որ նման է ձնագնդի էֆեկտին։ Երեւանից մի քանի գործարարներ կատարել են մի քանի 100.000, 200.000-ական դրամի նուիրատուութիւններ, մէկ այլ գործարար հանգանակութեան առաջին երեկոյեան բերել էր 1 մլն դրամ, իսկ մարտի 21-ին մէկ այլ գործարար՝ էլի երեւանից նուիրաբերեց մէկուկէս մլն դրամ։

Վիճակագրութիւնը ցոյց է տալիս, որ որքան մեծ է նուիրաբերուող գումարը, նուիրաբերողներն այնքան աւելի շատ են կամենում գաղտնի մնալ՝ հրաժարւում են իրենց անձը հանրութեանը յայտնի դարձնելուց։ Պատճառը Հայաստանում հաստատուած աւտօրիտար ռեժիմի հալածանքներից հեռու մնալու ցանկութիւնն է։

Յարգելի հայրենակիցներ, եւ Ազատ խօսքը գնահատող մարդիկ, շարունակում ենք դիմել Ձեր զօրակցութեանն ու աջակցութեանը.

Եթէ մինչեւ երկուշաբթի՝ մարտի 24-ը չկարողանանք հանգանակել եւս 10 մլն 66 հազար 7 հարիւր դրամ, *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան գոյքը կ'առգրաւուի եւ կը դրուի էլեկտրոնային աճուրդի, որպէսզի ՀՀ Վարչական Դատարանի վճիռը բռնագանձման մասին կատարուի։

Աջակցութիւնը կարող է լինել ինչպէս նուիրատուութեան տեսքով, այնպէս էլ *ԳԱԼԱ* ՀԸ հիմնադիր Վահան Խաչատրեանին տրուող դրամական պարտքի կամ վարկի տեսքով։

Այդ ամէնը պատշաճ իրաւաբանական գրանցում կը ստանայ:

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան պաշտպանութեան շտաբը դիմում է բոլորի օգնութեանը, խնդրում է հնարաւոր բոլոր աջակցութիւնները: Մենք թոյլ չենք տալու, որ Հայաստանում եթերազրկուի եւս մէկ հեռուստաընկերութիւն:

Յարգանօք՝

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան պաշտպանութեան շտաբի համակարգողներ Լեւոն Բարսեղեան, Վահան Թումասեան, Արթուր Ասլանեան

Այս հաղորդագրութիւն-կոչի հետ կապուած բոլոր պարզաբանումների համար կարող էք դիմել Լեւոն Բարսեղեանին
+374.91.821363 հեռախօսահամարով,
levon@asparez.am էլեկտրոնային հասցէով:

## 24 ՄԱՐՏ 2008

### ԱԶԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

*Հետք*, 10:00

Երէկ Ազգային Զարթօնք հասարակական կազմակերպութիւնների միութիւնը տարածել է հետեւեալ հաղորդագրութիւնը.

«Մարտի 21-ին մենք նախատեսել էինք մոմավառութիւն անցկացնել Ազատութեան Հրապարակում՝ ի յիշատակ վարչախմբի կողմից սանձազերծուած մարտիմէկեան բռնութիւնների զոհերի: Սակայն իշխանութիւնները նորից ցոյց տուեցին իրենց դէմքը: Ժողովրդի փորձերը՝ նշել այդ օրը որպէս ազգային սգոյ օր (մի բան, որ յանցանք գործած իշխանութիւնն անամօթաբար հրաժարուեց անել), խափանուեցին բազմահազար ոստիկանական զօրքի կողմից:

Այսուհետ պարզ է, որ իշխանութիւններն իրականում չեն հանել արտակարգ դրութիւնը եւ շարունակում են կապանքի տակ պահել մեր ազատութեան խորհրդանիշը՝ Ազատութեան Հրապարակը: Որպէս մեր երկրում ազատութեան եւ Ժողովրդավարութեան վերականգնման առաջին քայլ՝ մենք պէտք է վերականգնենք մեր սիրուած հրապարակն ազատօրէն այցելելու եւ այնտեղ զբօսնելու մեր իրաւունքը:

Մենք միանում ենք ժողովրդի որոշմանը՝ ամէն օր ժամը 18.00-ից սկսած՝ ժողովրդական զբօսանք անցկացնել Ազատութեան Հրապարակում, որտեղ հնարաւոր կը լինի հանդիպել նաեւ ժողովրդականութիւն վայելող քաղաքական գործիչների, որոնց առջեւ փակուած են վարչախմբին սպասարկող հեռուստատեսութիւնների դռները:

Թող վարչախումբը նորից ոստիկաններով փակի մեր հրապարակը, մենք կը գանք միւս օրը: Սակայն մենք ամբողջ աշխարհին կ՚ապացուցենք, որ այս իշխանութիւնների միակ հենքը սուիններն են: Մենք աւելի յամառ կը լինենք մեր խաղաղ ճնշման իրականացման մէջ, քան ռեպրեսիւ մեքենան իր անպտուղ զօրաշարժերով եւ բռնի գործողութիւններով: Իրականացնելով հրապարակներում զբօսնելու մեր իրաւունքը, որն արգելուած չէ անգամ իշխող ռեժիմի կողմից վերջերս ընդունուած հակասահմանադրական օրէնքներով, մենք հերթական կարեւոր քայլը կ՚անենք մեր ազատութիւնների վերականգնման ճանապարհին»:

## «ՕՊԵՐԱՆ ՄՆՈՒՄ Է ԲԱՆՏԱՐԿՈՒԱԾ»

*A1+*, 12:47

Այսօր առաւօտեան Դաւիթ Շահնազարեանը հրաւիրուել էր Կենտրոնի ոստիկանութիւն: Վերջինս ներկայացել է ոստիկանութիւն իր իրաւաբանի հետ եւ հրաժարուել է որեւէ ցուցմունք տալ: «Այն, ինչ կատարւում է ինձ հետ, ես համարում եմ քաղաքական հետապնդում, դրա համար հէնց այդպէս էլ գրել եմ: Մօտ 30-45 րոպէ տեւեց այդ ողջ գործընթացը: Ուզում էին վարչական տոյժի ենթարկել», - *A1+*-ին ասաց Դաւիթ Շահնազարեանը:

Նա կարծում է, որ ոստիկանութիւնը, իրաւապահները ամէն օր պրովակացիաներ են անում անհատ քաղաքացիների դէմ, ինչը հակաօրինական գործողութիւն է: «Ժողովրդի պայքարը Քոչարեանի դէմ է, իսկ նա տեղափոխում է բանակի եւ ժողովրդի դէմ պայքարի, բայց չի յաջողուի: Իրաւապահները հակաօրինական են վարւում ժողովրդի հետ», - ասում է նա՝ աւելացնելով, որ թէ ամէն օր՝ ժամը 18:00-ից, մարդիկ գալիս են Ազատութեան Հրապարակ զբօսանքի, սակայն ոստիկանները ամէն ինչ անում են նրանց արգելելու համար. «Երէկ արտառոց դէպքեր չեն գրանցուել, բայց օպերան մնում է բանտարկուած, կալանաւորուած, այսինքն՝ արտակարգ դրութիւնը շարունակւում է: Իշխանութիւնները սարսափում են ժողովրդից»:

## «ԵԹԷ ՈՒԶԵՆ, ԿԸ ՆԿԱՐԵՆ»

*A1+*, 14:03

ԱԺ պատգամաւոր, ՀՀԿ-ական Ռաֆիկ Պետրոսեանը այսօր Հայելի ակումբում բանավիճելով Ժառանգութեան ներկայացուցիչ Լարիսա Ալաւերդեանի հետ, փորձում էր համոզել, որ ԱԺ-ի արտահերթ նիստով ընդունած «Հանրահաւաքների, հաւաքների, ցոյցերի ու երթերի մասին» օրէնքի փոփոխութիւնները խիստ անհրաժեշտ էին յետագայ բախումները կանխելու համար: Դրանցով փաստացի արգելւում է երթերի եւ ցոյցերի անցկացումը:

Ռաֆիկ Պետրոսեանը նշեց նաեւ, որ միշտ չէ որ իշխանութիւնները ճիշտ են եղել. «Օրինակ, եթէ յիշում էք այդ դէպքերից 4 օր առաջ ասացի, որ պէտք է շուտ կանխուի այս ընթացքը: Որպէս տարիքով մարդ ես զգում էի, որ դա գնում է դրան եւ վերջանալու է ողբերգութեամբ եւ ասեցի շուտ կանխէք: Չկանխուեց եւ այդ 4 օրերի ընթացքում աւելի մեծ բարդութիւններ ստեղծուեցին»: Պետրոսեանը յղում անելով դատախազութեանը ասաց, որ Ազատութեան Հրապարակում յայտնաբերուել են զէնք, ձողեր, թմրանիւթեր եւ այլ իրեր: Լրագրողների այն դիտարկմանը, որ նման իրերով կադրեր կարող են նկարել ցանկացածի տանը, Ռաֆիկ Պետրոսեանը նախ անկեղծ պատասխան տուեց. «Եթէ ուզեն, կը նկարեն»: Ապա զգալով, որ մատնում է իրաւապահներին միանգամից ուղղեց իրեն. «Եթէ կայ, կը նկարեն»:

Լարիսա Ալաւերդեանը ընդգծեց, որ դէմ է ցանկացած օրէնքի, որը ընդունւում է առանց փորձաքննութեան. «Այսպիսի օրէնքի փոփոխութիւնը եղել է խիստ իրավիճակային, այսինքն իրավիճակի թելադրանքով, որ բաւական արագ նման փոփոխութիւններ են մտցուել: Դա կատարուել է արտահերթ նիստով, իսկ մինչ այդ որեւէ պատգամաւոր չի ունեցել նախագիծը, որեւէ մէկը, որին վերաբերւում է այս օրէնքը, իսկ այն վերաբերւում է լայն զանգուածներին, նրանք տեղեակ չեն եղել: Որեւէ հասարակական կազմա-

կերպութիւն կամ ԶԼՄ տեղեակ չէ եղել»:

Ռաֆիկ Պետրոսեանը օրէնքի փոփոխութիւնները համեմատել էր Ֆինլանդիայի, Էստոնիայի, Լատվիայի եւ այլ երկրների հետ: Լարիսա Ալաւերդեանը նկատեց, որ այդ երկրներից ոչ մէկում այսպիսի դէպքերում զոհեր չեն եղել. «Այս տարիների ընթացքում միանշանակ զոհեր չեն եղել: Այսինքն մենք պէտք է համեմատենք ոչ միայն օրէնսդրական դաշտերը եւ օրէնքները, այլեւ իրաւակիրառական պրակտիկան: Հարցն այն է, որ Հայաստանը տարբերւում է բոլոր այդ թուարկուած եւ այլ երկրներից, իրաւակիրառական պրակտիկայի կիրառումից»: Ժառանգութեան պատգամաւորը նշեց նաեւ, որ այսօր հասարակութիւնը վստահութիւն չունի իրաւապահների նկատմամբ. «Եթէ օրինակի համար նշենք Վրաստանը, ապա 3 տարի առաջ, երբ Սահակաշվիլին եկաւ իշխանութեան, նա գրեթէ 90 տոկոսով փոխեց ոստիկանական համակարգը եւ մարդկանց վստահութիւնը դէպի ոստիկանութիւն կտրականապէս աճել է»:

Լարիսա Ալաւերդեանը ընդգծեց, որ այս օրերին խախտւում է անմեղութեան կանխավարկածը. «Մենք չգիտենք՝ ով է ում սպանել: Մենք այսօր կարծես թէ նախապէս գտնում ենք, որ սպանողները եղել են ցուցարարները, իսկ զոհերը էլի ցուցարարներ են եւ մի ոստիկան: Բայց այսօր ոչ ոք չգտի, թէ ինչ է տեղի ունեցել: Ես կոչ եմ անում ոստիկանութեանը, ազգային անվտանգութեանը եւ դատախազութեանը նախապէս չտարածել բաւականին կասկածելի լուրեր»:

## ԵՐԵՔԻ ՎԻՃԱԿԸ ԾԱՆՐ Է

*A1+*, 14:32

Մարտի 1-ի իրադարձութիւններից տուժած 8 մարդ շարունակում է մնալ հիւանդանոցներում: Նրանցից երեքի վիճակը ծանր է եւ գտնւում են վերակենդանացման բաժանմունքներում: Հիւանդներից 6-ը քաղաքացիներ են, մէկը՝ զինծառայող, միւսը՝ ոստիկան: *Ա1+*-ին յայտնեցին Առողջապահութեան Ննախարարութեան լրատուական ծառայութիւնից:

Նշենք, որ այս ողջ ընթացքում առողջապահութեան նախարարութեան տարբեր բուժհաստատութիւններում բուժօգնութիւն են ստացել 131 մարդ՝ 72 զինուորական եւ 59 քաղաքացի: Նրանցից 34-ը ստացել են հրազէնային եւ բեկորային վնասուածքներ: Մարտի 1-ին մահացել է 8 մարդ:

## *ԳԱԼԱ* ՕԳՆՈՒԹԵԱՆ ԿԱՐԻՔ ՈՒՆԻ

*A1+*, 16:28

**Մարտի 24-ի ժամը 13-ի դրութեամբ ի պաշտպանութիւն *ԳԱԼԱ* ՀԸ հանգանակուել է ընդամէնը 22 մլն 218 հազար 650 դրամ: 15.021.500 դրամը ԴԱՀԿ-ն տարել է արդէն ուրբաթ երեկոյեան**

Մարտի 24-ի առաւօտեանից մինչեւ ժամը 13-ը արդէն հանգանակուել է 3.319.350 դրամ, որից 1 մլն դրամ նուիրող զոյգ երիտասարդները ներկայացել են որպէս Երեւանցի Ախպէրութիւն:

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ* ՀԸ պաշտպանութեան Շտաբը յայտնում է, որ լրջագոյն ահազանգեր ունենք առ այն, որ արտերկրից արուած մի քանի հարիւր դրամական փոխանցումները տեղ չեն հասնում, կամ դեռ տեղ չեն հասել. «Մեր ձեռքի տակ ունենք

փոխանցումների անդորրագրեր, որոնց հետքերով բանկեր այցելելիս, պատասխանում են, թէ այդ գումարը դեռ չկայ: Երեւանից մի քանի ահազանգեր ունենք, առ այն, որ մի քանի բանկերից արդէն ուրբաթ օրը փոխանցումներ կատարելիս, մերժել են ընդունել դրամը, ասելով, թէ այդ հաշուին չենք կարող վերցնել»:

Փաստացի արտերկրից կայ առայժմ ընդամէնը 3 հանգանակութիւն, ահա.

Մովսէս Անդիկեան, ԱՄՆ-ից, 250 ԱՄՆ դոլար,

Դիաննա Զաքարեան, Իսպանիա, 50.000 դրամ,

Լաուրա Բալասանեան, ԱՄՆ-ից, 100 դոլար՝ «Գագիկ Թէրզեան» գրասենեակի միջոցով:

**Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ* ՀԸ պաշտպանութեան շտաբի հաղորդագրութիւնը եւ կոչը**

Եթէ մինչեւ երկուշաբթի՝ մարտի 24-ը չկարողանանք հանգանակել եւս 6 մլն 846 հազար 200 դրամ, *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան գոյքը կ՚առգրաւուի եւ կը դրուի էլեկտրոնային աճուրդի, որպէսզի ՀՀ Վարչական Դատարանի վճիռը բռնագանձման մասին կատարուի:

Աջակցութիւնը կարող է լինել ինչպէս նուիրատուութեան տեսքով, այնպէս էլ *ԳԱԼԱ* ՀԸ հիմնադիր Վահան Խաչատրեանին տրուող դրամական պարտքի կամ վարկի տեսքով: Այդ ամէնը պատշաճ իրաւաբանական գրանցում կը ստանայ:

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան պաշտպանութեան շտաբը դիմում է բոլորի օգնութեանը, խնդրում է հնարաւոր բոլոր աջակցութիւնները: Մենք թոյլ չենք տալու, որ Հայաստանում եթերազրկուի եւս մէկ հեռուստաընկերութիւն:

Դրամական ուղղակի նուիրատուութիւններ իրականացնելու համար հարկաւոր կը լինի այցելել *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան գրասենեակ Գիւմրի, Վ. Սարգսեան փ., 4/1 հասցէով. Շարլ Ազնաւուրի հրապարակ, արեւմտեան շէնք, մուտքը բակի կողմից:

Բանկային փոխանցումների եւ պարտքով դրամական օժանդակութեան համար հարկաւոր է զանգահարել հեռուստաընկերութիւն՝ հետեւեալ հեռախօսահամարներով. +374 312 31819, +374 312 31889, կամ զանգահարել ուղիղ *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութեան հիմնադիր Վահան Խաչատրեանին հետեւեալ բջջային հեռախօսահամարով. + 374 91 43 55 63: Փոխանցումներ կատարելուց անմիջապէս յետոյ խնդրում ենք զանգել եւ տեղեակ պահել այդ մասին:

Դրամական հաշուի համար.

Վահան Խաչատրեան

ԻՒՆԻԲԱՆԿ ՓԲԸ, ԳԻՒՄՐԻ Մասնաճիւղ

h/h 2410 3101 2610

Դոլարային հաշուի համար

For transfers in USD

Intermediary Bank:

Deutsche Bank Trust Company Americas, New York

SWIFT: BKTR US 33

Beneficiary’s bank:

UNIBANK, Armenia, SWIFT: UNIJ AM 22

Acc: 0443 7920

UNIBANK CJSC GYUMRI BRANCH

Beneficiary: Khachatryan Vahan

Account: 2410 3111 2618

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՇՆՈՐՀԱԿԱԼ Է

*A1+*, 16:31

Այսօր առաւօտեան սկսուել է Սերժ Սարգսեանի աշխատանքային այցը ՌԴ: Սերժ Սարգսեանը հանդիպում է ունեցել ՌԴ նորընտիր նախագահ, ՌԴ կառավարութեան նախագահի առաջին տեղակալ Դմիտրի Մեդվեդեւի հետ:

Ընդգծելով, որ Հայաստանում պարոն Մեդվեդեւին ճանաչում են իբրեւ հմուտ քաղաքական եւ պետական գործչի, Սերժ Սարգսեանը վստահութիւն է յայտնել, որ նրա կողմից ՌԴ նախագահի պաշտօնը ստանձնելուց յետոյ եւս երկու պետութիւնների միջեւ համագործակցութիւնը կը շարունակուի ռազմավարական գործընկերութեան նոյն ոգով:

Հանդիպման ժամանակ Սերժ Սարգսեանը վերահաստատել է Դմիտրի Մեդվեդեւի այցի հրաւէրը Հայաստան՝ նրան յարմար ժամկէտում, ինչը շնորհակալութեամբ ընդունուել է: ՌԴ նորընտիր նախագահը նշել է, որ երկրի ղեկավարի պաշտօնը ստանձնելուց յետոյ առաջիններից մէկը կայցելի Հայաստան:

Սերժ Սարգսեանը եւ Դմիտրի Մեդվեդեւը քննարկել են երկկողմ յարաբերութիւններին վերաբերող հարցերի լայն շրջանակ: Անդրադարձ է եղել նաեւ Հայաստանի ետընտրական զարգացումներին, ներքաղաքական իրավիճակին: ՀՀ վարչապետ Սերժ Սարգսեանը շնորհակալութիւն է յայտնել ՌԴ իշխանութիւններին՝ ընտրութիւններից յետոյ Հայաստանի համար դժուարին օրերին սատար լինելու, ըմբռնման եւ դժուարութիւնների յաղթահարման գործում աջակցութեան համար:

Սերժ Սարգսեանի եւ Դմիտրի Մեդվեդեւի հանդիպման ժամանակ քննարկուել են տարածաշրջանային հարցեր, ինչպէս նաեւ տարբեր կազմակերպութիւնների, այդ թւում՝ ԱՊՀ-ի, Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի կազմակերպութեան, ՄԱԿ-ի, ԵԱՀԿ-ի եւ այլ կազմակերպութիւնների շրջանակներում Հայաստանի եւ Ռուսաստանի համագործակցութիւնը: Երկուստեք բաւարարուածութիւն է յայտնուել հայ-ռուսական տնտեսական յարաբերութիւնների ներկայիս մակարդակից: Ընդգծուել է, որ տնտեսական կապերը երկու երկրների միջեւ դինամիկ զարգանում են, Ռուսաստանի Դաշնութիւնը վստահօրէն առաջին տեղն է զբաղեցնում Հայաստանի առեւտրատնտեսական գործընկերների շարքում, ինչին մեծապէս նպաստում է նաեւ Տնտեսական Համագործակցութեան Հարցերով հայ-ռուսական միջկառավարական յանձնաժողովի ակտիւ աշխատանքը:

Նրանք խօսել են նաեւ ԼՂ հակամարտութեան կարգաւորման բանակցային գործընթացի մասին: Սերժ Սարգսեանն ընդգծել է, որ Հայաստանը պատրաստ է ԵԱՀԿ Մինսկի խմբի շրջանակներում շարունակել բանակցութիւնները եւ վստահեցրել, որ՝ իբրեւ ՀՀ նորընտիր նախագահ, պատրաստ է ադրբէջանական կողմի հետ վերսկսել բանակցութիւնները:

Հանդիպման ընթացքում Դմիտրի Մեդվեդեւը Սերժ Սարգսեանին՝ ՀՀ նախագահի պաշտօնն ստանձնելուց յետոյ, հրաւիրել է մասնակցելու Սանկտ-Պետերբուրգում յունիսի 6-8-ը կայանալիք Տնտեսական Համաժողովին, որը շնորհակալութեամբ է ընդունուել:

Օրուայ ընթացքում սպասւում են նաեւ Սերժ Սարգսեանի հանդիպումները Մոսկուայի քաղաքապետ Եուրի Լուժկովի, ՌԴ նախագահ Վլադիմիր Պուտինի եւ ՌԴ կառավարութեան նախագահ Վիկտոր Զուբկովի հետ:

## ԱՄԵՆԱՄԵԾ ՅԱՆՑԱՆՔԸ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻՆ ՃԱՆԱՉԵ՞ԼՆ Է

*A1+*, 16:42

ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի քրոջորդի Առաքել Սեմիրջեանը այսօր առաւօտեան գնացել էր ոստիկանութեան Կենտրոնի բաժին՝ իրեն վարչական տոյժի ենթարկելու մասին փաստաթղթերը ստանալու համար: Յիշեցնենք, որ նրան բերման էին ենթարկել ոստիկանութիւն մարտի 22-ին:

«Ինձ ասել էին՝ կը գաս մարտի 24-ին ժամը 9-ին, յետոյ ասացին, պատրաստ չէ, կը գաս 12.00-ին: Գնացի իրենց նշած ժամին, ասացին պատրաստ չի եւ չգիտենք, թէ երբ պատրաստ կը լինի», - *Ա1+*-ին այսօր պատմեց Առաքել Սեմիրջեանը:

Նա նշեց, որ ոստիկանութիւնը ընդամէնը 3 օր ժամանակ ունէր իրեն համապատասխան փաստաթղթեր ներկայացնելու համար, ինչը չի արել: Իրեն օպերային մերձակայ Մեղեդի սրճարանից բերման ենթարկելու փաստի առիթով Սեմիրջեանը ստիպուած է ենթադրութիւններ անել, քանի որ իրաւապահներից որեւէ յստակ բացատրութիւն չի ստացել:

«Կամ իմացել են իմ եւ Տէր-Պետրոսեանի ազգակցական կապը, կամ էլ տեսել են Օպերայի բակում: Հաշուի առնելով այն փաստը, որ Օպերայի բակում մօտ 500 հազար մարդ է հաւաքուել, դա նշանակում է, Հայաստանի ամէն մի երկրորդ, երրորդ քաղաքացուն կարող են բերման ենթարկել եւ նոյն մեղադրանքով՝ որպէս հանրահաւաքների մասնակից տանել ոստիկանութիւն: Եթէ որեւէ բան կը ստացուի, կը ստացուի, չի ստացուի, չի ստացուի: Բիւջէն լցնելու այլ ձեւ չունեն: Սա միակ միջոցն է մնացել», - ասաց Սեմիրջեանը՝ նկատի ունենալով վերջին շրջանում բազմաթիւ մարդկանց վարչական տոյժի ենթարկելու փաստը:

Սեմիրջեանը իրեն բերման ենթարկածներին նաեւ խնդրել է յստակեցնել, թէ ի՞նչ է նշանակում «մասնակցութիւն ունենալ»՝ իրեն ներկայացուած մեղադրանքը հասկանալու համար. «Օպերայի սրճարանում նստելը մասնակցութի՞ւն է, փողոցով քայլե՞լը, լուսանկարե՞լը, ընդհանրապէս Երեւան քաղաքում զբօսնե՞լը միտինգների, հանրահաւաքների մասնակցե՞լը: Շատերը հանրահաւաքին ներկայ են եղել զուտ հետաքրքրութիւնից: Մի հատ թող պարզեն, թէ ինչ է նշանակում մասնակից, իսկ յետոյ որոշեն, թէ ով է մասնակիցը եւ ինչին»:

Ըստ էութեան Առաքել Սեմիրջեանին ամենայստակ մեղադրանքը ոստիկանները տուել են մարտի 22-ին Մեղեդի սերճարանում՝ նրան ձերբակալելիս:

«Դու լեւոնական ես: Բոլոր լեւոնականներին պիտի սատկացնենք, որովհետեւ դուք բոլորդ դաւաճաններ էք, - ասաց Սեմիրջեանը, - Այսինքն՝ իրենց հաշուարկներով ազգի 1/3-ը դաւաճաններ են, իսկ իմ հաշուարկով մեծամասնութիւնը: Այսինքն՝ դաւաճա՞ն են նրանք, ովքեր կիսում են Տէր-Պետրոսեանի հայեացքները կամ նրա հետ ազգակցական կապ ունեն»:

Նա գտնում է, որ երկրում ստեղծուած բարոյահոգեբանական վիճակը կարող է փոխուել միայն այն դէպքում, եթէ իշխանութիւնները ընդունեն իրենց. «Մենք նոյնպէս այս ազգի մասնիկն ենք կազմում, անկախ նրանից, որ չեն ընդունում մեր տեսակէտը: Քանի դեռ նրանք մեզ դաւաճան են համարում, այս երկրում ոչինչ չի փոխուի: Ես իրենց մէջ դաւաճան չեմ տեսնում: Դաւաճանը նա է, որ հայ լինելով՝ հայի վրայ ձեռք է բարձրացնում. որեւէ տարբերութիւն չունի 10 հոգով ոստիկան են ծեծում, թէ սովորական

քաղաքացի, եւ թէ 70 տարեկան կնոջ էլեկտրաշոգով են հարուածում: Ինձ համար դաւաճանը ոչ թէ իր հայեացքներով է, այլ՝ կոնկրէտ քայլերով»:

Ի դէպ, Սերժ Սարգսեանը իր քարոզարշաւի ընթացքում պարբերաբար յայտարարում էր, որ նա ոչ միայն իրեն ընտրողների, այլեւ իրեն չընտրողների նախագահն է պատրաստւում դառնալ եւ պաշտպանել նրանց իրաւունքները:

«Ես չեմ կարծում, որ Սերժ Սարգսեանը հրահանգում է, որ միլպետերը էշեկտրաշոկի ենթարկեն 70 տարեկան ծեր կնոջը: Հռոմի Պապից աւելի կաթոլիկ երեւալու համար հիմա շանս է տրուած ոստիկանութեան պետերին, շանս է տրուած իրենց ուժը ցուցադրելու, մանկութեան բարդոյթները յաղթահարելու եւ փող աշխատելու համար », - *Ա1+*-ին ասաց Առաքել Սեմիրջեանը:

## ՈՍՏԻԿԱՆՆԵՐԸ ՊԱՐԱՊ ՉԵՆ ՄՆՈՒՄ

*Ա1+*, 18:28

Հէնց նոր ոստիկանները Հիւսիսային Պողոտայից բերման են ենթարկել 22-23 տարեկան երկու երիտասարդների եւ տարել Կենտրոն ոստիկանութիւն: Ընդորում՝ նրանցից մէկը հանգիստ նստած է եղել պողոտայի նստարաններից մէկին: Այսօր ժամը 18-ին սկսուել է հերթական «քաղաքական զբօսանքը», որին մասնակցում են մի քանի տասնեակ մարդ: Ինչպէս *Ա1+*-ին յայտնել է ականատես 70-ամեայ մի կին, նստած երիտասարդը ոստիկաններից ասել է, որ ինքը հոգեւորական է, պարզապէս եկել է, սակայն ոստիկանները ուշադրութիւն չեն դարձրել:

Ի դէպ, ոստիկանների հետ շրջում են օպերատորներ, որոնք նկարում են ակցիայի մասնակիցների դէմքերը: Մասնակից կանայք ամօթանք են տալիս ոստիկաններին:

## ՀԱՑԱԴՈՒԼ Է ՅԱՅՏԱՐԱՐԵԼ

*Ա1+*, 18:31

Այսօր առաւօտեան ժամը 8-ից Նուբարաշէն քրէակատարողական հիմնարկում հացադուլ է սկսել Հանրապետութիւն Կուսակցութեան քաղխորհրդի անդամ Սուրէն Սուրէնեանցը: Նա յայտարարել է, որ իր նկատմամբ անօրինական, մտացածին քրէական հետապնդում է իրականացւում եւ ինքը պահանջում է անյապաղ իրեն ազատ արձակել, քանի որ ինքն ընդամէնը իր քաղաքացիական դիրքորոշումն է արտայայտել, իսկ գաղափարների համար չեն դատապարտում:

Յիշեցնենք, որ Սուրէն Սուրէնեանցին ձերբակալելուց յետոյ նախ մեղադրանք առաջադրեցին Քրէական Օրէնսգքրի 225 պրիմ յօդուածով. անօրինական հանրահաւաք կազմակերպելու եւ վարելու համար դատապարտեցին 20 օր ազատազրկման, ապա մարտի 1-ի դէպքերի առնչութեան յարուցուած քրէական գործի շրջանակներում նրան նաեւ մեղադրանք առաջադրուեց 300 յօդուածով (իշխանութիւնը զաւթել):

«Մարդը մեկուսարանում նստած պարզւում է իշխանութիւն է զաւթել», - *Ա1+*-ի հետ զրոյցում ասաց նրա պաշտպան, փաստաբան Յովիկ Արսէնեանը: Նա նաեւ տեղեկացրեց, որ Սուրէն Սուրէնեանցը պահանջում է քննչական վարոյթն իրականացնող մարմնի ներկայացուցչին: Մինչ այս պահը որեւէ մէկը հացադուլ յայտարարած Սուրէն Սուրէնեանցին չի այցելել՝ ոչ քննչական խմբից, ոչ Կարմիր Խաչից ու ոչ էլ մարդու իրաւունքների պաշտպանութեամբ զբաղուող կազմակերպութիւններից: Գլխաւոր Դատախազի մամլոյ

խօսնակ Սօնա Տռուզեանը *Ա1+*-ին տեղեկացրեց, որ առաջիկայում քննիչը կը հանդիպի Սուրէն Սուրէնեանցին:

## ԱՊԱԳԱՅ ԼՐԱԳՐՈՂՆԵՐԸ ՀՐԱԺԱՐՒՈՒՄ ԵՆ

*Ա1+*, 19:23

«Այն, ինչ դուք անում էք այսօր՝ ճշմարիտ տեղեկատուութիւնը թաքցնելը եւ օրուայ իշխանութիւններին հաճոյ միակողմանի ինֆորմացիայի մատուցումը, դուրս է լրագրողի առաքելութեան մասին մեր պատկերացումների, լրագրողական էթիկայի եւ բարոյականութեան սահմաններից», - ասւում է ԵՊՀ ժուռնալիստիկայի ֆակուլտէտի մի խումբ ուսանողների՝ *Հայլուր*ին ուղղուած բաց նամակում:

Նամակում ասւում է. «Իրականութիւնը ձեզ կարեւոր երկընտրանքի առաջ է կանգնեցրել՝ մաքրել լրատուութիւնը պատուիրուած, շինծու բեմադրութիւններից եւ մատուցել անաչառ, երկկողմանի լրատուութիւն կամ վերջնականապէս եւ անդառնալիօրէն կորցնել մարդկանց հաւատն ու վստահութիւնը ոչ միայն ձեր, այլ առհասարակ լրագրողի մասնագիտութեան նկատմամբ, ինչի ականատեսն ենք այսօր: Լաւ յիշէք Գարեգին Նժդեհի խօսքերը. «Եղիր ազատ... Գիտակից ստրուկի եւ յանցագործի միջեւ ոչ մի տարբերութիւն չկայ»»:

Ուսանողները յայտարարում են, որ իրենք հրաժարւում ենք *Հայլուր*ի մատուցած կողմնակալ լրատուութիւնից:

## ՉԵՆ ԿԱՐՈՂ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ ՄՏՆԵԼ

*Ա1+*, 19:45

Այսօր Երեւանի Բրիւսովի լեզուաբանական համալսարանի բարձր կուրսերի մի խումբ ուսանողներ չեն կարողացել մասնակցել դասերին: Ընդ որում՝ նրանք չեն կարողացել անգամ մտնել բուհ, քանի որ նրանց՝ մուտքի քարտերը սառեցուած են եղել ռեկտորատի հրահանգով: Բուհի անվտանգութեան ծառայութիւնից ուսանողներին յայտնել են, որ իրենք չեն կարող բուհ մտնել, քանի որ չեն վճարել ուսման վարձը: Ինչպէս տեղեկացրեց ուսանողներից մէկը, իրենք կարծում էին, որ կարող են վճարել ուսման վարձը մինչեւ մայիս, այսինքն մինչեւ քննաշրջանի սկիզբը. յամենայնդէպս այդպէս է եղել նախորդ տարիներին:

Շաբաթ օրը որոշ դեկանատներ ուսանողներին տեղեկացել են ռեկտորատի կոշտ որոշման մասին, սակայն, բնականաբար, ուսանողները չեն հասցրել մէկ օրուայ ընթացքում ուսման վարձի համար անհրաժեշտ գումարը հայթայթել: Ի դէպ, ուսանողները ենթադրում են, որ սա իւրատեսակ ճնշում է իրենց նկատմամբ՝ ի պատասխան իրենց որոշ մասի՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի հրաւիրած հանրահաւաքներին մասնակցութեան:

Վաղը բուհի ուսանողները պատրաստւում են դասադուլ յայտարարել:

## ՑՈՅՑ Ի ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ ՍԱՍՈՒՆ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ (video)

*Ա1+*, 19:56

Վանատուրցիները պահանջում են ազատ արձակել պատգամաւոր Սասուն Միքայէլեանին, որը ձերբակալուել է մարտի 12-ին:

Այսօր կէսօրին Հրազդանի Վանատուր թաղամասում տեղի ունեցաւ ցոյց ի պաշտպա-

նութիւն ԱԺ պատգամաւոր Սասուն Միքայէլեանի: Ակցիային մասնակցում էին 100-ից աւելի մարդիկ՝ կանայք, տարեցներ: Ցուցարարներին միացել էին նաեւ դպրոցականներ՝ վանկարկելով՝ «Ազատութիւն Սասունին»:

Ցուցարարները կրում էին՝ «Ազատութիւն մեր գոյամարտի հերոսին», «Ազատութիւն Սասունին» գրութեամբ պաստառներ: Նրանք բողոքում էին նաեւ, որ մարտի 1-ի իրադարձութիւններից յետոյ Սասուն Միքայէլեանի հետ նաեւ ձերբակալուել են նրա ջոկատի մի քանի անդամներ:

Ցոյցը շարունակուել է մինչեւ ժամը 16:00-ը եւ ոստիկանութեան կողմից չի խոչընդոտուել:

Յիշեցնենք, որ Սասուն Միքայէլեանին մեղադրանք է առաջադրուել սպանութիւններով զուգորդուած զանգուածային անկարգութիւններ կազմակերպելու եւ սահմանադրութեան խախտմամբ պետական իշխանութիւնը բռնութեամբ զաւթելուն ուղղուած գործողութիւններ անելու համար:

Սասուն Միքայէլեանը մէկն է չորս պատգամաւորներից, որոնք պաշտպանում էին առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանին եւ ԱԺ՝ մարտի 4-ի որոշմամբ զրկուեցին անձեռնմխելիութիւնից:

## «ՍԵՆՑ ՈՐ ՉԱՂԱՑԵԼ ԵՍ, ԱՐՏՕՆԱԳԻՐ ՈՒՆԵ՞Ս» (video)

*A1+*, 20:41

«Լեւոն նախագահ, Լեւոն նախագահ», - այսօր վանկարկում էր Հիւսիսային Պողոտայից ներքեւ իջնող մարդկանց բազմութիւնը, որոնց փորձում էին ցրել ոստիկանները: «Թուրքեր, դուք ի՞նչ իրաւունք ունէք մեզ ցրել մեր սեփական քաղաքում, ի՞նչ իրաւունք ունէք մեզ արգելել քայլել մեր քաղաքում», - ասում էին «քաղաքական» զբօսանքի մասնակից կանայք, որոնք խոստանում են ամէն օր ժամը 18.00-ից գալ եւ զբօսնել Ազատութեան Հրապարակի շրջակայքում, քանի դեռ ոստիկանները չեն հեռացել հրապարակից եւ յարակից տարածքներից:

Այսօրուայ զբօսանքը առանց միջադէպերի կ՚անցնէր, եթէ ժամը 18.15-ի սահմաններում ոստիկանները չյարձակուէին երկու երիտասարդի վրայ եւ նրանց ձեռքերը ոլորած չտանէին բոլորի ներկայութեամբ: Երիտասարդներից մէկը, որին ձերբակալեցին նստած էր Հիւսիսային Պողոտայի նստարաններից մէկի վրայ, նա ընդամէնը հասցրեց մի քանի մետր վազել, երբ նրա վրայ յարձակուեցին մօտ 5 ոստիկան եւ ձեռքերը ոլորած տարան: «Այդ տղան իմ կողքին էր նստած: Ոչինչ չէր անում: Երբ նրան ոստիկանները մօտեցան եւ փորձեցին ձեռքերը ոլորել, նա ասաց, որ հոգեւորական է, սակայն ոչ ոք նրան չլսեց: Խեղճ տղան վեր կացաւ, որ փախնի, բայց չհասցրեց», - պատմեց ձերբակալուած տղայի հետ նոյն նստարանին նստած մի տարեց կին, որը խնդրեց իր անունը չնշել: Ականատես կանանցից մէկն էլ ասաց. «Այդ անմեղ տղաներին ձերբակալում են մեզ վախեցնելու համար, սակայն մենք վախեցողը չենք: Այնքան ժամանակ ենք գալու, մինչեւ իրենք չգան:

Մենք հօ զերի չե՞նք մեր սեփական քաղաքում»: Իսկ թէ ինչո՞ւ տարան երիտասարդներին, լրագրողների հարցին՝ Արաբկիր-Զէյթուն համայնքի ոստիկանութեան պետի տեղակալ Վալերի Օսիպեանն ասաց. «Կարգ էր խախտել:

Չէ՞ք հասկանում, ասում եմ՝ կարգ էր խախտել»: Դէպքին ականատեսները միջամտեցին

եւ աւելացրեցին. «Ոչ մի կարգ էլ չեն խախտել»: Զայրացած ոստիկանապետի տեղակալը ընդհատեց կանանց. «Կուլտուրա ունեցէք, ցածր խօսէք»: Հիւսիսային Պողոտայով զբօսնողներից մի քանիսը խորհուրդ տուեցին չենթարկուել ոստիկանների սադրանքներին եւ շարունակել զբօսանքը: Այսօր զբօսնողները միմեանց կողքով անցնելիս տարբեր բացայայտումներ էին անում, օրինակ. «Կարծես թէ անօրինական ես ժպտում: Մենց որ չաղացել ես, արտօնագիր ունէ՞ր», եւ այլն:

Մօտ կէս ժամ յետոյ ոստիկանները յայտարարեցին, որ 10 րոպէ ժամանակ են տալիս զբօսնողներին Հիւսիսային Պողոտան ազատելու համար, հակառակ դէպքում խոստացան օգտուել իրենց վերապահուած լիազօրութիւններից՝ առանց մանրամասնելու այդ լիազօրութիւնները: Խոստացած ժամանակը լրանալուց յետոյ ոստիկանները պատ կազմած սկսեցին քայլել Հիւսիսային Պողոտայով դէպի ներքեւ՝ միաժամանակ փակելով Աբովեան Պողոտայ տանող ճանապարհը: Հիւսիսային Պողոտայով իջնելիս մարդիկ կրկին սկսեցին վանկարկել «Լեւոն նախագահ, Սերժիկ հեռացիր: Մեր նախագահը Տէր-Պետրոսեանն է»: Երբ հաւաքուածները հասան փողոց, ոստիկանները նրանց թոյլ տուեցին քայլել մինչեւ առաջին հանդիպակած բակի մուտքը եւ փակեցին Պուշկինի փողոցից Մաշտոցի Պողոտայ տանող ճանապարհը: Այդ ընթացքում ժողովրդի մասը արդէն հասցրել էր դուրս գալ բակի մուտքից, իսկ միւս հատուածին թոյլ չտուեցին եւ նրանց համար ճանապարհ բացեցին դէպի Մաշտոցի Պողոտայ՝ ժողովրդին ցրելու համար: «Դուք բռնապետեր էք: Դուք օրէնքից մի խօսէք», - բղաւում էր կալանաւորուած Ալեքսանդր Արզումանեանի կինը՝ Մելիսա Բրաունը: Ժողովրդին բաժանելով մի քանի հատուածների՝ ոստիկանները նրանց շարունակեցին մասնատել նաեւ Մաշտոցի Պողոտայում:

Եթէ ոստիկանները պատ կազմած մարդկանց չիջեցնէին Հիւսիսային Պողոտայից, ապա այսօրուայ զբօսանքը չէր վերածուի փոքրիկ երթի:

Հեռանալուց առաջ մարդիկ միմեանց հաղորդեցին, որ կը հանդիպեն վաղը ժամը 18.00-ին Հիւսիսային Պողոտայում եւ կը շարունակեն «քաղաքական» զբօսանքը:

## ՀԱՆԳԱՆԱԿՈՒԵԼ Է 22 ՄԼՆ 218 ՀԱԶԱՐ

*Հետք*, 23:00

***ԳԱԼԱ* ՀԸ Պաշտպանութեան հեռուստամարաթոն դրամահաւաքը դարձել է Համահայկական մարաթոն. Արդէն հանգանակուել է 22 մլն 218 հազար, որից 15.021.500 դրամը ԴԱՀԿ-ն տարել է արդէն ուրբաթ երեկոյեան**

Մարտի 23-ին Սուրբ Զատկի տօնին մարդիկ շարունակում էին այցելել *ԳԱԼԱ* Հեռուստաընկերութիւն եւ իրենց հոգու պարտքը կատարում՝ իրենց դրամը հանգանակում Հեռուստաընկերութեան պաշտպանութեան գործին: Օրուայ ընթացքում անձնական նուիրատուութիւնների տեսքով հանգանակուեց 628.800 դրամ՝ ամբողջը կանխիկ:

Մարտի 24-ի՝ երկուշաբթի առաւօտնից վերսկսեց մարդկանց բուռն հոսքը հեռուստաընկերութիւն: Կիրակի եւ երկուշաբթի ստուդիա եկող մարդկանց մի մասն արդէն նախորդ օրերին իրենց հանգանակութիւններն արել էին, բայց լաւ տեղեկացուած լինելով իրավիճակին ու կամենալով մինչեւ վերջ հասցնել գործը, մասամբ ի հեճուկս մի քանի հատուկենտ չարամիտների, նորից էին գալիս ու նուիրաբերում իրենց դրամը:

Մարտի 24-ի ժամը 13-ի դրութեամբ *ԳԱԼԱ* ՀԸ պաշտպանութեան գործին հանգա-

նակուել է ընդամէնը 22 մլն 218 հազար 650 դրամ, որից այդ պահին Ինիբանկի դրամային հաշուին կայ 236.000 դրամ: Մարտի 24-ի առաւօտնից մինչեւ ժամը 13-ը արդէն հանգանակուել է 3.319.350 դրամ, որից 1 մլն դրամ նուիրող զոյգ երիտասարդները ներկայացան որպէս Երեւանցի Ախպէրութիւն:

Խօսքի Ազատութեան եւ *ԳԱԼԱ ՀԸ* պաշտպանութեան Շտաբը յայտնում է, որ լրջագոյն ահազանգեր ունենք առ այն, որ արտերկրից արուած մի քանի հարիւր դրամական փոխանցումները տեղ չեն հասնում, կամ դեռ տեղ չեն հասնում: Մեր ձեռքի տակ ունենք փոխանցումների անդորրագրեր, որոնց հետքերով բանկեր այցելելիս, պատասխանում են, թէ այդ գումարը դեռ չկայ: Երեւանից մի քանի ահազանգեր ունենք, առ այն, որ մի քանի բանկերից արդէն ուրբաթ օրը փոխանցումներ կատարելիս, մերժել են ընդունել դրամը, ասելով, թէ  այդ հաշուին չենք կարող վերցնել:

Փաստացի արտերկրից ունենք առայժմ ընդամէնը 3 հանգանակութիւն, ահա.
Մովսէս Անդիկեան, ԱՄՆ-ից, 250 ԱՄՆ դոլար
Դիաննա Զաքարեան, Իսպանիա, 50.000 դրամ
Լաուրա Բալասանեան, ԱՄՆ-ից, 100 դոլար՝ Գագիկ Թէրզեան գրասենեակի միջոցով:

## 26 ՄԱՐՏ 2008

### ՀԱՒԱՔՈՒԵՑ ԳԱԼԱԻՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԱՒԵԼԻ ՔԱՆ 26 ՄԼՆ ԴՐԱՄԸ

*Հետք*, 14:00

Երէկ աւարտուեց Գիւմրիի *ԳԱԼԱ* հեռուստաընկերութեան պաշտպանութեանն ուղղուած դրամահաւաք-մարաթոնը, որը սկսուել էր մարտի 19-ին:

Յիշեցնենք, որ մարտի 19-ին *ՀՀ* վարչական դատարանը Գիւմրու Հարկային Տեսչութիւն-ՉԱՊ ՍՊԸ գործով կայացրեց վճիռ՝ յօգուտ առաջինի: *ԳԱԼԱ*-ի հիմնադիր ՉԱՊ ՍՊԸ-ն պարտաւորուեց տեսչութեանը վճարել աւելի քան 26 մլն դրամ: Եթէ այդ գումարը չվճարուէր, Դատական ակտերի հարկադիր կատարման ծառայութիւնը բռնագանձելու էր *ԳԱԼԱ*-ի գոյքը եւ, փաստօրէն, դադարեցնելու վերջինիս գործունէութիւնը:

Այսպիսով՝ դրամահաւաք-մարաթոնի շնորհիւ հաւաքուեց անհրաժեշտ 26.899.986 դրամը, որն ազատ խօսքի կողմնակիցների եւ պաշտպանների իւրօրինակ յաղթանակն է: Սակայն ՉԱՊ ՍՊԸ-ն պատրաստւում է աւելի բարձր դատական ատեաններում բողոքարկել վերաքննիչ դատարանի վճիռը եւ յետ բերել բռնագանձուած 26 մլն դրամը:



Մարտ 1-ի զոհերու յիշատակին նուիրուած մոմավառութիւն
Միասնիկեանի արձանին առջեւ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

2016

Յաւելուած Ա.
*Չորս հարցազրոյց Հրանդ Տինքի հետ*

Յաւելուած Բ.
Հայր Լեւոն Զէքիեան, *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր (դասախօսութիւն)*

Յաւելուած Գ.
*Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*, խմբագիր՝ Հ. Աւագեան

Յաւելուած Դ.
Հայկ Աւագեան, *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը*

2017

Յաւելուած Ե.
*Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած Զ.
*Աղեքսանդրիոյ հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած Է.
*Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած Ը.
*Դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրու-*

*թիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած Թ.
*Ուրուագիծ Գոհար Գասպարեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1940-1948)*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած Ժ.
*Տիրան Կարապետեան. յօդուածներ իր մասին, նկարներու ալպոմ, (ծննդեան 135-ամեակին առիթով),* հաւաքեց՝ Հ. Աւագեան

Յաւելուած ԺԱ.
*Վանիա Էքսէրճեան. բազմերանգ աշխարհ մը համակ կենսունակութեամբ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան

2018

Յաւելուած ԺԲ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Ա.- Հայկ Աւագեան, *Արփիար Արփիարեանի սպանութիւնը*

Յաւելուած ԺԳ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Բ.- *Արփիար Արփիարեանի լոնտոնեան թղթածրարը Գահիրէի մէջ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած ԺԴ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Գ.- *Մարդը ընդդէմ մարդու. մահափորձեր եւ սպանութիւններ հայկական օրինակով (1890-1908)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան

Յաւելուած ԺԵ.
*2008 Մարտ 1-ը ըստ* Lragir.am-*ի,* A1+-*ի եւ Հետքի (10-ամեակին առիթով)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան